

ЭМИНСКІЙ ЭТНОГРАФИЧЕСКІЙ СБОРНИКЪ
ИЗДАВАЕМЫЙ
при Лазаревскомъ Институтѣ Восточныхъ Языковъ
**Выпускъ IV.**
Армянскія народныя сказки, собранныя С. Айкуни.

# ԷՄԻՆԵԱՆ

## ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ

ՀԱՏՈՐ Դ.



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԷՔԵԱԹ

ՀԱՒԱՔԵՑ

Ս. ՀԱՅԿՈՒՆԻ.



ՄՈՍԿՈՒԱ—ՎԱՂԱՐՇԱՊԱՏ.
ՌՅԾԱ—1902.

„Recueile ethnographique

# d'ÉMINE"

**publié par l'Institut Lazareff des langues orientales à Moscou, sous la direction du *Prof. G. Khalathiantz.***

---

**Vol. I.** Matériaux ethnographiques, recueillis par. *A. Mkhitharianiz* dans le district d'Alexandropol (ancien Chirak), gouvernement d'Erivan.

1-re partie: Littérature populaire arménienne, recueillie d'après la tradition: contes, récits, proverbes, dictons, énigmes, etc.

2-me partie: Croyances et superstitions, moeurs, coutumes et professions. Glossaire du dialecte de Chirak. Moscou—Alexandropol. XII+338 p. in 8°. Prix **1** r. (**2** fr. **50** c.).

**Vol. II.** Epopées populaires et contes en différents dialectes, recueillis dans l'Arménie de Turquie par *S. Haïkouni* 1-re partie. Moscou—Vagharchapat. X+447 p. in 8°. Prix **1** r. **25** cop. (**3** fr.).

**Vol. III.** Mots turcs empruntés par l'arménien, étudiés et rangés dans l'ordre alphabétique par *H. Atcharian.*

En regard de chaque mot turc, imprimé en caractères turcs et en caractères arméniens, le glossaire donne la transcription en caractères latins et la traduction française, afin de rendre le travail accessible aux savants européens. Moscou — Vagharchapat. IV+381 p. in 8°. Prix **1** r. **50** cop. (**4** fr.).

**Vol. IV.** Contes arméniens populaires en différants dialectes, récueillis par *S. Haïkouni* (2-me partie). Moscou—Vagharchapat. IV+462 p. in 8°. Prix **1** r. **25** cop. (**3** fr.).

**Tous ces ouvrages se vendent à l'Institut Lazareff des langues orientales, Moscou (Russie).**

---

**ЭМИНСКІЙ ЭТНОГРАФИЧЕСКІЙ СБОРНИКЪ**

ИЗДАВАЕМЫЙ

при Лазаревскомъ Институтѣ Восточныхъ Языковъ

**Выпускъ IV.**

Армянскія народныя сказки, собранныя С. Айкуни.



# ԷՄԻՆԵԱՆ

# ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ.

---

## ՀԱՏՈՐ Դ.

---

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԵԱԹ

ՀԱՒԱՔԵՑ

Ս. ՀԱՅԿՈՒՆԻ.

ՄՈՍԿՈՒԱ—ՎԱՂԱՐՇԱՊԱՏ.

*ՌՅԾԱ—1902.*

На основаніи опредѣленія Совѣта Спеціальныхъ Классахъ Лазаревскаго Института восточныхъ языковъ отъ 23 мая 1902 г. печатать дозволяется.

Директоръ *Вс. Миллеръ*.

Обложка и предисловіе настоящей книги напечатаны въ Москвѣ, остальная же ея часть—стр. 1—462—въ Вагаршапатѣ, въ типографіи Эчміадзинскаго монастыря.

Типографія Варвары Гатцукъ, Москва, Арбатъ, Б. Афанасьевскій пер. д. Ефремовой.

# Отъ редакціи.

Какъ было обѣщано нами въ Предисловіи къ второму выпуску «Эминскаго этнографическаго сборника», въ настоящемъ, четвертомъ, выпускѣ заканчиваемъ мы отдѣлъ собранныхъ почтеннымъ этнографомъ С. Айкуни народныхъ армянскихъ *сказокъ,* значительная часть которыхъ также записана на различныхъ областныхъ нарѣчіяхъ Турецкой Арменіи и которыя не менѣе предыдущихъ представляютъ интересъ по своему содержанію.

Въ концѣ сказокъ, въ приложеніи, въ дополненіе къ армянскому народному эпосу, помѣщены варіанты извѣстнаго эпическаго сказанія «Давидъ и Мхеръ», а именно *Шатахскій* и *Араратскій* — съ новыми любопытными подробностями. Такимъ образомъ вмѣстѣ съ *Мокскимъ,* напечатаннымъ во второмъ выпускѣ, мы имѣемъ въ «Эминскомъ этнографическомъ сборникѣ» *три* новыхъ варіанта того же сказанія.

Третья книга этнографическихъ матеріаловъ г. Айкуни будетъ посвящена, какъ было сказано, передаваемому у турецкихъ армянъ *Курдскому эпосу,* въ которомъ не послѣднее мѣсто занимаютъ и герои иранскаго или персидскаго эпоса. Нѣкоторыя изъ такихъ эпическихъ сказаній будутъ сопровождаться курдскими пѣснями, а также, если удастся напѣвами, положенными на ноты.

*Г. Х.*

1 Сентября 1902 г.
Москва,
Лазаревскій Институтъ
Восточныхъ языковъ.

# Содержаніе.

## ПРИЛОЖЕНIЕ.

### **Народный армянскiй эпосъ.**

# ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ.

---

*Ինչպէս խոստացել էինք «Էմինեան Ազգագրական Ժողովածուի» Բ. հատորի Յառաջաբանում,—ներկայ Դ. հատորում աւարտում ենք մեր անխոնջ ազգագրագէտ Ս. Հայկունու ժողոված հայ ժողովրդական հէքեաթների բաժինը, որոց մեծագոյն մասը դարձեալ Տաճկահայաստանի այլ և այլ գաւառական բարբառներով են գրի առնուած՝ նախընթացներից ոչ պակաս գրաւիչ բովանդակութեամբ։*

*Հէքեաթների վերջում դրած է և մի Յ ա ւ ե լ ո ւ ա ծ՝ իբրև լրացուցիչ մասն հայ ժողովրդական վէպերի, և յատկապէս՝ ծանօթ «Դաւիթ և Մհեր» վէպի Շատախու և Արարատեան ճիւղերը (վարիանտ) ուշագրաւ նոր մանրամասնութիւններով։ Այսպէս ուրեմն Բ. հատորում հրատարակուած Մոկաց ճիւղի հետ՝ նոյն վէպի երեք նոր ճիւղեր կունենանք «Էմինեան Ազգագրական Ժողովածուի» մէջ։*

*Պ. Ս. Հայկունու ազգագրական նիւթերի երրորդ գիրքը՝ ինչպէս ասել ենք, կը նուիրուի հայ ժողովրդի բերանում շրջող Քրդական վէպին, որի մէջ բաւական մեծ տեղ ունին գրաւած և Իրանական կամ Պարսկական վիպասանութեան գլխաւոր դիւցազները։ Մի քանի վէպերին կը կցուին քրդերէն ե ր գ ե ր, նաև՝ եթէ յաջողուի, ձայնագրած ե ղ ա ն ա կ ն ե ր։*

Գ. Խ.

1 Սեպտեմբերի, 1902 թ.
Լազարեան Ճեմարան Արևելեան Լեզուաց.
Մոսկուա

---

# ՆԻՒԹԵՐԻ ՑԱՆԿ.



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԷՔԵԱԹ.

(ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ).

## ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ.

Ինչպէս խոստացել էինք «Էմինեան Ազգագրական Ժողովածուի» Բ. հատորի Յառաջաբանում,—Ներկայ Դ. հատորում աւարտում ենք մեր անխոնջ ազգագրագէտ Ս. Հայկունու ժողոված հայ ժողովրդական հէքեաթների բաժինը, որոց մեծագոյն մասը պարձեալ Տաճկահայաստանի այլ և այլ գաւառական բարբառներով են գրի առնուած՝ նախընթացներից ոչ պակաս գրաւիչ բովանդակութեամբ:

Հէքեաթների վերջում դրած է և մի Յաւելուած՝ իբրև լրացուցիչ մասն հայ ժողովրդական վէպերի, և յատկապէս՝ ծանօթ «Դաւիթ և Մհեր» վէպի Շատախու և Արարատեան ճիւղերը (վարիանտ) ուշագրաւ նոր մանրամասնութիւններով: Այսպէս ուրիմն Բ. հատորում հրատարակուած Մոկաց ճիւղի հետ՝ նոյն վէպի երեք նոր ճիւղեր կունենանք «Էմինեան Ազգագրական Ժողովածուի» մէջ:

Պ. Ս. Հայկունու ազգագրական նիւթերի երրորդ գիրքը՝ ինչպէս ասել ենք, կը նուիրուի հայ ժողովրդի բերանում շրջող Քրդական վէպին, որի մէջ բաւական մեծ տեղ ունին գրաւած և Իրանական կամ Պարսկական վիպասանութեան գլխաւոր դիւցազները: Մի քանի վէպերին կը կցուին քրդերէն երգեր, նաև՝ եթէ յաջողուի, ձայնագրած եղանակներ:

Գ. Խ.

1 Սեպտեմբերի, 1902 թ.
Լազարեան Ճեմարան Արեւելեան Լեզուաց.
Մոսկուա:

# ՆԻՒԹԵՐԻ ՑԱՆԿ.

---



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԷՔԵԱԹ.

(ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ).

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ.

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՎԷՊԵՐ.

# Ժ Ո Ղ Ո Վ Ր Դ Ա Կ Ա Ն

# ՀԷՔԻԱԹՆԵՐ

Типографія Эчміадзинскаго монастыря.
Вагаршапатъ

Տպարան Մ. Աթոռոյ Ս. Էջմիածնի.
Վաղարշապատ

1902



# I

# ՀՈՎԻԻ ԱԽՊԷՐ

**Ծաւրիճարի Ջաճարապաթ գիւղի բարբառով** *

Ըլնի՛-չըլնի, ժամանակով մէ՛ մարդ կըլնի՝ մէ կնիկ։
Աստուած կը քաղցրանայ, էդ մարդին մէ տղայ կտայ։
Տղէն ծնունելուն՝ մէրը կը մեռնի, տղէն կմնայ որբ։
Էդ մարդ չատ օխչար կունենայ, էլ բան չունենար։
Էդ մարդ իրա տղէն, օխչար կը վերցնէ, կերթայ սար։
Մէ ժամանակ կը մնայ, էդ մարդ մէ օր կը հիւանդանայ։
Տենըմ ա պտի մեռնի, կը կանչայ չոպաններին, կասայ.
—Իմ տղէն ձեզ էմ տայըմ. ձեզ էլ ձեր Աստուծուն։
Է՛, էդ մարդի ժամանակ թըմեր էր, մեռաւ։
Տղէն մնաց որբ—չոպաններին մուխթեճին։
Չոպաններ էս տղէն պախին, չախին, մեծացրին։
Էս տղէն իրա աչքը բացեց, բոլորը չոպան տեհաւ։
Մէկի հետ որ խօսըմ էր, «չոպան ախպէր» էր ասըմ։
Մէ օր տեհաւ մէ մարդի. իչկաց իրան, իչկաց էդ մարդին։
Գնաց էդ մարդի մօտ, ասաւ.—Բարո՛վ, չոպան ախպէր. քու օխչարներ ո՛ր տեղ էն. դու ընչի էս էդենց մէ թավուր. մեզի նման չես, կուլաք չունե՛ս, դակեանակ չունե՛ս. գլխիդ քօլոզ չունես, պա՛ ո՞ւր ա չարխըներդ։
Էս մարդը ալպահալը իմացաւ էս չոպան չտես ա։
Դառցաւ չոպանին ասաւ.—Տնաչէ՛ն, աշխար կա՛յ. թագաւոր կա՛յ, թագաւորին աղջիկ կա՛յ, մա՛րդ որ ուզի՛ Ասու կուս կողմանով թագաւորի աղջիկը կառնէ։

---

* Պատմած է Արիստակէս վարդապետ Զուլոյեան. տես մանրամանութիւնը էջ 26:

Պզտիկ չոպանն ասաւ.—Չոպան, որ ես ուզեմ Աստու կուս կողմանով Թագաւորի աղջիկը, կառնեմ։

Ասաւ.—Պա, ինչ կանես։

Չոպանն դարձաւ իրա ընկերներին, ասաւ.—Որ էդենց ա, էս օխչարներն էլ ձեզի, ես կերթամ։

Վերցրեց հապանը, կուլապը, դակեանակը գնաց։

Չո՛լ չոլստան (անապատ երկիր) պահրի եապան (անծանօթ ծովեր) կուշ ուչմաղ (թռչուն անկարող թռչելու), բերվան բօչմազ (կարաւան իջևան չանէր), գնաց ու գնաց։

Շատ ու քիչ Աստուած գիտայ, բռաստ էկաւ մէ քաղաքի, մտաւ քաղաքի մէջ, տեհաւ, ինչ.—աչքդ հազ՚ր բարին տենայ. ըսենց անօրինակ բաներ որ իրա աչքով ըսկի չի տեհե, էս եանէր իչկըմ, էն եանէր իչկըմ զարմացած, խլուչտ-խլուչտ էր ընըմ։

Մէ մարդ տեհաւ էդ չոպանին, ալպահալ իմացաւ որ եապանի մարդ ա. մօտ էկաւ, ասաւ.—Չոպա՛ն ախպէր, ո՛ր տեղից էս էկե, ու՛ր էս էթըմ։

Ասաւ.—Իմ օխչարների մօտից էմ էկե, որ Աստու կուս կողմանով Թագաւորի աղչիկն առնեմ։

Էդ մարդն ասաւ,—«Որ ուզըմ էս Թագաւորի աղչիկն առնես, իչկայ, տե՛ս էն մեծ դարկեանը, Թագաւորի տուն ա. աչ ու ցախ կողմից քարեր կայ դրած. աչ եանի քարի վրէն նստողը աղչիկը կառնի. ցախ եանի քարի վրէն նստողը օղորմութիւն կառնի։» Ցըմեն սովըրցրեց չոպնին, ղրկեց Թագաւորի դուռը։

Չոպան ախպէր դուզ-դուզ գնաց, աչ եանի քարի վրէն նստաւ։ Որ նստաւ, խապարը գնաց Թագաւորին։

Վաքիլ, վազիր ասին.—Թագաւոր ապրած կենայ, մէ՛ չոպան ա էկե, խնամաքարի վրէն նստեր ա։

Թագաւոր ասաւ.—Է՛, վնաս չունի, խամ մարդ ա. առէք էդ մէ մանէթը, տարէք, տուէք օղորմութեն, թօ էթայ։

Վազիրը մանէթը առաւ, բերեց, տուեց չոպանին. չոպանը չառաւ, ասաւ։—Ես օղորմութիւն չեմ ուզըմ, էկերիմ Աստու կուս կողմանով Թագաւորի աղչիկը պտի առնիմ։

Վազիրը վազէ վազ գնաց Թագաւորի մօտ, ասաւ.—Թագաւորն ապրաս կենայ, փողը չառաւ. ասաւ «էկերիմ Աստու կուս կողմանով Թագաւորի աղչիկը պտի առնիմ։»

Թագաւորն ասաւ.—Գնացէք, կանչէք, գայ վերև։

Թագաւորը խելօք մարդ էր, ալպահալը իմացաւ որ էս խօսքերի մէջը մէ բան կայ։

Չոպան ախպէր տարան վերև, ո՛չ գլօխ տալ, ոչ բան անել, համա դռնէն մտնելու բաշտան, Թագաւորին ասաւ.—Բար յաջողում ձեզի. չոպա՛ն ախպըրտանք։

Վազիր, Նազիր, վաքիլ զարմացան, ինչկըմին։

Թագաւորը բարեն առաւ, ասաւ.—Աստու բարին, բարով,—չո՛պան ախպէր, ինչ կայ։

Ասաւ։—Չօ՛պան ախպէր, էկերիմ Աստու կուս կողմանով Թագաւորի ախչիկը առնեմ։

—Լա՛ օ, ասաւ Թագաւորը, որ էդենց ա, մա՛ռ էս խաս կտորը, տար, ընդըրանից մէ մինթանացու բեր, որ Թագաւորի ախչիկը կարի, հագնի՝ պտտկուի քու վրէն։

Թագաւորը չոպանին ճանփայ դրեց.

Թո չոպանը իրան ճանփովը էթայ, մենք գանք Թագաւորի մօտ։

Թագաւոր իրա վաքիլ ու վազիրին ասաւ.

—Էս չոպանը ինչ օր խօսըմ էր, «Աստու կուս կողմանովն» էր խօսըմ, անպատճառ էս իմ ախչիկը կտանի։

Չոպանը քաղաքից դո՛ւս էլաւ, ու գնաց։

Շատ ու քիչ Աստուած գիտայ, մէ քաղաքի բռասց էկաւ, մտաւ քաղաքի մէջ. էդ կտորը ո՛ր ցուֆեանքն չանց տուեց, ասին։—Էդ կտորից չկայ ըս տեղըրանք։

Համայ, լաւ մարդի բան Աստուած յաջողի, ամեն տեղ էլ լաւ մարդ կայ։ Մէ ցուֆեան էլ մտաւ, մէ բարի մարդի բռասց էկաւ. կտորը չանց տուեց, ասաւ.—Չոպան ախպէ՛ր, էս կտորից չունե՞ս.

—Չոպան ախպէ՛ր, չունեմ, ասաւ։

Էդ բարի մարդը հարցրեց չոպանին, ասաւ.—Չոպան ախպէ՛ր, ինչ պտի անես էդ կտորը։

—Չոպան ախպէր, ասաւ.—Աստու կուս կողմանով Թագաւորի աղջիկ առերեմ. Թագաւորն ընձի ղրկեր ա որ էս կտորից մէ մինթանացու առնեմ. տանեմ, որ կարէ, հագնի հետը պտակուեմ։

—Է՛, չոպա՛ն ախպէր, ասաւ, Թագաւորը քեզի գլխից բռա՛ց արե, էդ կտորից ո՛չ մէ տէրութենի մէջ չկայ. մենակ պարսիկ Թագաւորի հողին մէջ մէ քաղաք կայ, անունը Հալապ. քաղաքի մէջ մէ մե՛ծ մեյցան կայ. մեյցանի ցախ կողմին մէ բարակ ֆիւչայ կայ, ֆիւչէն կը բռնես, կեթաս, տասը ցիւֆեան կընցնիս, կը հարցնես Խօճա Ցուսէփի ցուֆեանը. դուզ կը մտնես ցիւֆեանը, էդ կտորը չանց կտաս՝ ընտեխ կայ։

Չոպան ախպէր էս մարդու ցիւֆեանից դուս էկաւ, գլօխը Թեքեց Հալապ քաղաքը, դուզ դպա էկաւ։ Էկաւ գտաւ։

Մտաւ ներս, ասաւ ցիւֆեանճուն.

—Չոպան ախպէր, բար յաջողում քե։

—Աստու բարին քե, չոպան ախպէր, ասաւ ցիւֆեանճին։

Ամեն տեղ էլ խելօք մարդ կայ, ալպեալը իմացաւ էս մարդը չես մարդ ա, հարցրեց, ասաւ.

—Ի՞նչ կայ, չոպան ախպէր, խէր ա էս տեղ գալդ։

Չոպան ախպէ՛ր, խէր ա, ինչ պտի էղի, Աստու կուս կողմանով Թագաւորի ախչիկ առելեմ, էկերեմ որ էս կտորից մինքանացու տանեմ. հագնի, իմ հետ պսակուի։ Իմացիրեմ որ քու մոտը կայ, էկերեմ տանեմ։

Հանեց կտորը չանց տուեց.—Ինչքան ա հարկաւոր, ասաւ։

Ասաւ։—Ութը կեազ, չոպան ախպէ՛ր, ըստոր կեազը ածի հարիր ոսկի։

Ասաւ.—Շա՛տ լաւ, կտրայ։

Կտրեց, ծալեց, տուեց չոպնին։

Չոպան ախպէրն էլ ծալեց, դրեց հապանը, յետ դարձաւ։

Էդ մարդն ասաւ.—Չոպան ախպէ՛ր, պա՛ փողերը։

Չոպան ախպէր ասաւ.—Եփոր կերթամ, Աստու կուս կողմանով պսակուեմ, վատա առաջի Աստուն, առաջ փողերդ բերեմ,ետոյ Թագաւորի աղջկան առնեմ։

Էս մարդը տուեց, էս չոպան ախպէր առաւ, ընկաւ ճանապար, էկաւ դպա Թագաւորի քաղաքը, բերեց կտորը հասցրեց։ Թո Թագաւորի ախչիկը իրան համար դէյրա կարի, Թագաւորն էլ հարսանիքի թաւտարիֆ տենայ, մենք գանք էն կտոր ծախողին։

Էն վախտից որ Չոպան ախպէր հեռացաւ իրանից՝ մտածեց թէ էս ի՞նչ արեցի, էսքան փողը տուի մէ չոպանի, առաւ գնաց, որ չկայ, ի՞նչ պտի անեմ։

Էն մարդ խելքը թռցրեց, ալըմաղն առաւ ձեռը, գնաց ծովի կռաղը նստաւ, մաղը թաթխըմէր ջրի մէջ, ջրով լըցուըմէր ու ասըմ. «Որ Աստուած մարդու տա՛յ, էսպէսդ կտայ»։ Դուս էր հանըմ ջրից, մաղը դարդըկուըմ էր, ասըմ, «Որ առնի էլ, էսենց կառնի»։

Էս մարդը ամեն օր ծովի կռաղը էդ բանն էր անըմ։

Ըդրա կնիկն, ախչիկը ամեօր դալըմին ծովի կռաղը՝ լալըմին, մղկըտըմ, թողըմ դառնըմ։

Թո ըստոնք լան, մղկտան, մենք գանք Չոպան ախպօր։

Չոպան ախպէր Աստու կուս կողմանով պսակուաւ Թագաւորի ախչկայ վրայ. էն գշերը որ Չոպան ախպէր, Թագաւորի ախչիկ պառկէին իրար մօտ, Չոպան ախպէր կայնաւ ոտի վրայ։ Ախչիկն ասաւ.—Հա, Չոպան, իմ ընչի՞ն չես հաւնըմ։

Ասաւ.—Թագաւորի ախչիկ, քե հաւնըմեմ, հըմա մէ ուխտ ունեմ, էն էլ Աստու կուս կողմանով կատարեմ. նո՛ր գամ, մարդ ու կնիկ ըլենք։

Ասաւ.—Ասա՛, տենամ ինչ ա քու ուխտը։

Չոպանն ասաւ.—Ես մէ չոպան, կոպէկ չկար իմ ձեռը. պա՛

էդ ծօթը որ տեղէց բերեցի, ըղըւ փողը պտի տաս, տանեմ, տամ՝ նոր գամ։

Ասաւ.—Ջո՛պան, էս գչեր մնայ, առաւօտուն գնա,

Ասաւ,—Չէ՛, ուխտերեմ, փողը պտի տանեմ, նոր գամ։

Ախչիկը՝ «Քեօր օլսուն եօխսուլլուխ», չկա՛յ թագաւորին փող, էն սանաք գա՞նը համըրեց հուք հարիր ոսկի, էրկու հարիր էլ աւել տուեց։

Ջոպան ախպէր իրան թագաւորական չորեր հագիցը հանեց, էլի իրա չոպանի չորերը հագաւ, կուլլապը քցեց թեերի վրէն, դակեանակն էլ առաւ ձեռը, ընկաւ ճանապար, «Հալապ քաղաք, որ տեղ ես, էկայ»։ Ընկաւ չոլ-չոլտտան.. հասաւ, Հալապ քաղաքին մէջ մտաւ, գնաց իրա ծանօթ խօճա Յուսէփի դիւքեանը։ Տեհաւ Յուսէփ էնտեղ չէ, դիւքեանը փակ, հարցրեց էս տեղ-էն տեղ։

Մօտի դիւքեաններիք ասին։—Քու տուն Աստուած չինի, էն օրից որ դու գնացեր ես. հենա՛, խօճա Յուսէփ ծովի կռաղն ա։

Էս Ջոպան ախպէր դարձաւ, գնաց ծովի կռաղ։ Տեհաւ, ինչ տեսնի, կէօզը եաման կէօրմեսըն, խօճա Յուսէփ նստեր ա. ալըմաղը ձեռն առեր ա, թաթխըմ ա ջրի մէջն, ասըմ ա, «Աստուած տայ, էսենց կտայ, մաղը դուս հանելուց՝ ասըմ ա, «որ առնի, էսենց կառնի»,

Ջոպան ախպէր էկաւ մօտ, ասաւ.—Բար յաջողում քե, չոպան ախպէր։

Խօճա Յուսէփ իսկի ձէն-խապար չտուեց, իրան գործըն ա անըմ։

Էս Ջոպան ախպէր, իրա կուլլապը գետին դրեց, դակեանակն էլ թալեց, քօլօզը հանեց, չարխըները դեն քցեց, ամռուան շոքն էր, որեն էնենց էր էրեցընըմ օր, մարդի ճնճռտոցը Ալի-Օսման էր էթըմ։ Կայնաւ տաք քարի վրէն, էրեսը թեքեց աղօթըրան, քարէ կարկուտի նման արտասունք թափեց։ Ընդմ՛ր Աստուն աղաչեց, ընդմ՛ր պաղատեց։ Աստուած էդ Ջոպան ախպօր ձէն լսեց, խօճա Յուսէփ իրա առաջուայ խելքին էկաւ, դարձաւ, տեհաւ որ չոպանը կայներ ծունտր ա դնըմ։

Ասաւ.—Բարով էս էկե, Ջոպան ախպէր, իմ գլխին, իմ էրեսին. ընչի՛ ընդար յետըցար։

—Է՛, ասաւ, տնաշէն, քառսուն օրվայ ճանփայ ա, անճախ գնացի, թագաւորի ախչիկայ վրայ պսակուայ։

Էրկսով իրար հետ էկան խօճա Յուսէփի տունը.

—Ինչ տեհան.-ինչ որ ընդունք տեհան, իմ դին դուշմանը չտեսնայ. խօճա Յուսէփի կնիկն ու ախչիկը քիթ ու բերնի վրայ ընկած՝ դառը սրտով լալըմին. եփոր կնիկը տեհաւ որ մարդը էկաւ, քիչ էր

մնըմ սիրտը վարդ պատռէր։ Ելաւ կայնաւ. արտունքը սրբեց, հաց թխեց, ծուածեղ արեց. պատուեց Չոպան ախպօր։

Կերան, կշտացան, Չոպան ախպէր ասաւ խօճա Յուսէփին.

—Չոպա՛ն ախպէր, առ քու փողը, ես էթամ։

Ութ հարիր ոսկի տուեց էդ մարդին կտորի գինը. հարիր օսկի էլ, որ էդ մարդ էդքան խափան էր իլե, տուեց իրան, հարիր ոսկի էլ տուեց, որ կնիկն ու ախչիկն շատ լաց էն իլե, ընդոնց։

Ելաւ ընկաւ ճանփայ, հա՛յտէ Թագաւորի քաղաք ո՞ր տեղն էս, էկայ։

Էկաւ մէ քաղաքի մէջով ընցնըմէր, տեհաւ որ մէ մարդ ընկե առաջ, մէ քանի էրեխայ հետը, մէ նղշուն բան ա քաշէ վրէն, չորս հոգի էլ մէ բան վերցընըմ տանըմին։ Էդ Չոպան ախպէր մնաց չուարած, ըստե՝ ընտե հարցրեց, ասաւ.—Էս ի՞նչ բան ա, ճանըմ։

Է՛, խելօք մարդ ըմեն տեղ էլ կըլի, իմացաւ որ էս մարդը աշխար չտեհե, ասաւ.

—Չոպան ախպէր, աշխար մեռնել կայ, ապրել կա՛յ։

Չոպան ախպէր ասաւ.—Ե՛ս էլ կը մեռնե՞մ։

Էն մարդն ասաւ.—Հա՛.

—Թագաւորի ախչի՞կն էլ կը մեռնի,—Հա՛.

—Որ մեռան, ու՞ր կէթան.

Ասաւ.—Ո՛վ արդար ա, արքայութուն կէթայ. ո՛վ մեղաւոր ա, դժոխք։

—Է՛, ասաւ Չոպան ախպէր էն մարդուն, չոպան ախպէ՛ր, պա մո՞նց անենք որ արքայութուն էթանք։ Ընձի Աստուծոյ տունն չանց տա՛ս։

Էդ մարդը էս Չոպան ախպէրը առաւ, տարաւ ժամ դուռը. կայնեցրեց, ասաւ.—Էս տե կը կայնես, աղօթք կանես, չուր ժամհար գայ, դուռ բանայ, կը մտնես ներս, աղօթք կանես։

Ժամկոչ դուռը բացեց, գնաց զանգը զանեց, վարդապետները ժողուան, ժամ աւին, գնացին։

Չոպան ախպէր դուս չգնաց, ժամկոչ ասաւ.

—Չոպան ախպէ՛ր, դո՛ւս արի, դուռը փակեմ.

Չո՛պան ախպէր, ասաւ.—Ես դուս չեմ գայ։

Խեղճ ժամկոչ գնաց առաջնորդին իմաց տուեց։

Առաջնորդ ասաւ.—Դուռը փակի. ղարավուլ քաշա՛, թէ լաւ մարդ ա, թո աղօթք անի։

Չոպան ախպէր ընտե մնաց, աղօթք արաւ. ժամկոչ տեհաւ չգար, հաց տարաւ, ասաւ.

—Չոպան ախպէ՛ր, հաց կե, նո՛ր աղօթք արա։

Ասաւ.—Դու դի՛ ըտե, գնա՛, ես կուտեմ։

Ժամկոչ իլաւ, դուռը կիս բաց արեց, թամաշա արեց։

Չոպան ախպէր աղօթքից դարձաւ՝ դէս-դէն իչկաց, տեհաւ որ մարդ չկայ, տեհա՛ւ որ պատեն մէ մարդ ա կպէ, ասաւ.—Չոպան ախպէր, արի՛ հաց ուտենք։

Տեհա՛ւ որ ձէ՛ն չտուեց։

Շա՛տ աղաչեց, վերջն ըսեց·

—Դո՛ւ ըլես, Քրիստոսի միսն ու արունը, արի՛, հաց ուտենք։

Էն սահաթ գահը Աստուածածինը իջաւ հրեշտակների հետը, ձընձղակ զարկելով Նստաւ չոպանի հետ, հաց կերաւ։

Հաց կերաւ, պրծաւ.—Դէ՛, ասաւ, չոպան ախպէր (Աստուածածնի պատկերին), դո՛ւ ըտե աղօթայ, ես էլ ընտե կաղօթեմ։

Ժամկոչ վազաւ, գնաց առաջնորդին իմաց տուեց.—Հա՛յր սուրբ, էդ մարդն էրկնքիցն ա իջած, Աստուածածին բերեց, հետը հաց կերաւ։

—Ժամկո՛չ, ասաւ առաջնորդ, մէ ՓէՇ արա, մենք էլ տենանք, հետը հաց ուտենք։

Առաւօտը բարի լուսը բացուի բոլորիդ վրէն. ժամ ասին, դուռ էլան, որ ժամը խալվեքցաւ. ժամկոչը չոպանին եախեն բռնեց։

—Չոպան ախպէր, ասաւ, մէկ էլ Չոպան ախպօրը (Աստուածածնին) կը բերես հաց ուտելու, իրան ասա՛ որ էրկու հատ էլ չոպան ախպէր կան, ընդրանք էլ քու հետ գան, հաց ուտեն։

Իրկուն ժամկոչ էլի հաց բերեց, թալեց, գնաց։

Չոպան ախպէր էլի աղօթքից դարձաւ հաց ուտէր, Աստուածածնայ աղաչեց, բերեց հացի Նստըցրեց։

Աստուածածնայ ասաւ.—Չոպան ախպէր, ընձի էրկու չոպան ախպէր ունեմ, խնդրում եմ ընդրանք էլ գան, հաց ուտեն.

Է՛, ասաւ. որ ասըմ ես, թո գան։

Չոպան ախպէր ասաւ.—Չոպան ախպէր (ժամկոչ). մեծ չոպան ախպօր (առաջնորդ) ասա՛, թո գայ էս չոպան ախպօր (Աստուածածին) հետ Նստի, հաց ուտենք։

Ժամկոչ ու առաջնորդ դուռը բացեցին, չոքեչոք էկան, ընկան Աստուածածնայ ոտը, Աստուածածին ասաւ.—Ի՛մ որդու փոխանակ. արի՛, Նստի, հաց ուտենք։

Հաց կերան, պրծան, Աստուածածին ասաւ.

—Էլ դուք չէք կարա ապրի ընդրանից էտեւ։

Աստուածածին իլաւ իրան տեղ, ըզգոնք էլ կայնան իրանց համար աղօթք անելու։

Առաւօտը զանգը զանեց, ըմեն հաւաքուան էկան. տեհան առաջնորդը աղօթք ա անըմ, գլօխ բաց, ոտը բոբիկ։ Առաւօտուն ժամն ասին. պաշտօն կատարին, պատարագն սկսին։

Առաջնորդը պատարագը սկսեց, ժամկոչը ու Զօպաճ ախպէր օրթութուն առան։

Պատարագից դուս էկան։

Առաջնորդը պդեստաւորուած՝ խաչով խաչվարով էկաւ գերեզ-ման։

Առաջնորդ իրեք հատ տեղ քանդել տուեց. իրա ձեռքով կարգը կատարել տուեց, ամեն մէկը մտան իրանց գերեզմանների մէջը։ Ըմեն ժողովուրդն էլ տեհան որ իրեք հրեշտակ իջան, ըդըրանց հոգին առան, տարան։

Ըդըրանց հոգին ընդմըր սիպտակ էր, կասես բամբկի քիւլա ըլէր։

Հըմա Զօպաճ ախպօր հոգին աւելի սիպտակ էր։

Բոլոր ժողովուրդ տեհան. գոռում, գոչում դըրին։

Գերեզմաններ ծածկին, թողին էկան.

—Ընդոնք հասան իրանց հոգևոր մխիթարանքին, դուք էլ ձեր հոգևոր մխիթարանքին հասնիք։



# 2

# ԱԽՊԷՐ ԳԱՌՆԵՐ



**Ծաերիեարի Ջաճարապաս գիւղի բարբառով** *

Կըլնի-չըլնի, մէ մարդ կըլնի, մէ ճ̣կնիկ. էդ կնիկը տարին մէ տղայ կը բերի. մինչև օխտը տղայ կըլնի։

Էդ տղէքը կը մնան, կը տեհնան օր քուր չունին։ Համա իրանց մեր օտը ծանտր ա։

Ձեն համբերի մինչև մէրը էրեխայ բերի, կասեն.

—Ա՛յ մէր, մենք էթըմենք Կարմիր թեփի վրէն տուն շինենք. եփօր դուն էրախայ կը բերիս, թէ տղայ կըլնի, չուքը դի կտուրը.

* Պատմած է Արիստակէս վարդապետ Ջուլյեան:

որ մենք խլխմ-խլխմ կորինք (սատ-անդ երկրէ երկիր կորաուինք), ո՛ր ախչիկ կը բերես. ջայրէն դիր կտուրը, որ մենք գանք։

Կնկայ վախսը լրանըմ ա, պառկըմ, մէ ախչիկ ա բերըմ։ Ըդ կնիկն ա, տատմօր ասըմ ա։

—Նանէ՛, նանէ՛, ջայրէն դի կտուրը, թո տղէքս յետ գան։

Համա էդ չար պառաւը ջայրի տեղը չուքն ա դնըմ։

Տղէք եփօր հեռուից տեհան, խլխմ-խլխմ կորան։

Գնացին-գնացին, չատ ու քիչ Աստուած գիտայ, մէ զաղի (այր) բռաաս էկան. իրանց համար ը տեղ տեղ ու տուն դրին. ամեն օր էթըմին ավղուշ, իրիկունը գալըմին. էփըմին, թըխըմին, ուտըմին, պառկըմին, քնըմին։

Ամեն օր էդի ըդոնց արեատն էր։

Թո ըդոնք ըս տե մնան, մենք էթանք ըդըրայ մօր ու քւոր ճալը հարցնենք։

Մէրը տեհաւ որ տղէքը չէկան, ալպաճալը իմացաւ որ տատմէր ճասուպազը Ֆեյ ու Ֆեճս ա էկե գլխին։

Մէ տարի, էրկու տարի, տաս տարի էդենց ապրան։

Հըմա, էդ կնկայ ախչիկը մէ օր իրա քայսաճների հետ խաղըմ էր, քայսաճները նեղացան էդ ախչկանը վրայ, ասեցին.—Որ դու լաւ ախչիկ ընիս, Աստուած քեզի մէ ախպէր կտայ։

Էդ խեղճ ախչիկ արցունք աչքերին, թթուած, Ճիյաքները կախ տուն էկաւ, մռուզները կախեց ու նստաւ։

Մէրը հարցրեց.—Ախչի՛, ինչ ա ըլէ քեզի որ ըդենց սուքն առերես, սեր մտեւ։

Ախչիկը լաց ըլելով մէկ-մէկ ասեց իրան մօրը։

Մէրը մէ ծանր հոգոց քաշեց։

Ախչիկն ասեց.—Աւե՛ ջան, ընչի՞ ես հոգոց քաշըմ։

Մէրն ասեց.—Այ որդի՛, պա՛, ես հոգոց չքաշեմ, ո՞վ քաշի, խալխը թէ մէ՛ ախպէր ունին, դու օխտը ախպէր ունես. ճըմա Աստուած ընձնից առաւ. իմ օխտը տղէն ձեռիցս առաւ, չար ճասուպազ պառաւի Ֆեյ ու Ֆեճսից թողերէն ու գնացեր, որդի՛, Աստուած գիտայ ո՛ր տեղ էն։

Էդ ախչիկը եփօր մօրից լըըմ ա էդ խօսքերը, կրակը լցուաւ ըդըրա սիրտը, օր չըլնէր որ լա՛ց ու չուան չդնէր ախըրտան համար։

Գլօխդ ի՛նչ ցաւցընեմ. ընդա՛ր լացաւ, մօրը աղաչեց, պաղատեց ու խնդրեց որ իրա թողնի, էթայ իրա ախպըրտանց մօտ։

Ախչիկը իրա մօր խըրատով էրկու ճեպը աղանձ լցրեց, ու ըլընկաւ ճանփայ. չոլ-չոլսաճ, պաճրի եապաճ, գուշ ուչմազ, ճէրվաճ ճեօչմազ. գնաց ու գնաց։

Շատ ու քիչ Աստուած գիտայ, մօր ըսաժի պէս իլաւ:

Նեղ ճանփէն բռնելով գնաց՝ աղանձն ուտելով. աղանձը ըռաց իլաւ, ախչիկը մէ զաղի (քարայր) դուռ կայնաւ:

Տեհաւ մէ մեծ քար էն դէմ տուև դռան. ներս մտնելու ճար չկայ:

Է՛ս եան ընկաւ, էն եան ընկաւ, տեհաւ լախում տուած տեխ կայ, սողալէն մտաւ ներս. տեհաւ,-ինչ—աչքդ հազար բարին տեսնայ, ինչ նազ ու նամէք ասես, կայ: Էփեց, թխեց, իրան բաժինը կերաւ. մտաւ փեթակի մէջ, տափ կեցաւ:

Ախպըրտանք իրկունը տուն էկան, պատրաստ տեհան-ինչ-էփած թխած՝ հըմա մարդ-մացաք չկայ:

Ախպըրտանք չուարան. պէլ էն իլէ, իրար էրես էն իրիչկըմ:

Մեծ ախպէրն ասաւ.—Ախպըրտանք, ըս տե մէ մարդ կայ, որ ըսենց պատրաստեր ա. ճրագ վառէք, քունճ ու պուճախ մանգանք:

Ճրագ վառին, ընկան տան քունճ ու պուճախ, մուրիկ-մուրիկ (մանրակրկիտ) ման էկան, էփօր էկան հասան փեթակի մօտ, ծոր-ծը բացին. տեհան խաճարի ոտ ա երևըմ, Ասին.

—Ի՛նս էս, ճ՛րնս էս, դո՛ւս արի:

Ախչիկը փեթկից դուս էկաւ. տեհան-ինչ ախչիկ.—մէ հուրի մելէք, մէ էրկնքի հրշտակ՝ չուտես, չխմես, էդ ախչկայ քիթ ու բերնին թամաշայ էնես:

Էդ ախպըրտանքը ասին ախչկան.—Օձն իր պօռտով, ղուշն իր թևով չէր կարայ ըս տեղըրանք ման գայ, դու մո՞նց էկար:

Էդ ախչիկ պատմեց քըմեն, ինչ որ ես ձեզի ասի:

Եփօր ախպըրտանքը իմացան որ իրանց քուրն ա, համ լացան, համ ուրխըցան, համ էլ քէֆ արին:

Էդպէս ախպըրտանք ըմեն օր էթըմին ավղուշ, քուրն էլ մնըմ էր տանը, էփըմ էր, թխըմ էր, ըմեն բան պատրաստըմ էր. իրկու-նը ախպըրտանցը հետ ուտումին, խըմըմին, քնըմին:

Մէ օր ախչիկը անթեղ չէր թողե, եփօր ախպըրտանք գնացին, քուրն ուզեց որ թունդիր վառե, տեհաւ որ կրակ չկայ. էս եանը զարկուաւ. էն եանը զարկուաւ, կրակ չկայ.

Վա՛յ, ասաւ, աչկերս քօռնայ, իրկունը ախպըրտանքս տուն գան, պա՛ղ թունդրայ վրէն նստին:

Դուս էկաւ դուռը, է՛ս եանը նայեց, է՛ն եանը նայեց. տե-հաւ իրանից զատը մէ կրակ ա երևըմ: Կրակի իզը բռնեց ու գնաց. մէ ոտ ունէր, էրկու էլ ծախ առաւ. գնա՛ց, մինչև հասաւ էդ կրա-կին: Տեհաւ որ մէ պառաւմ նստե. մէ չարեք պողպատ քցե բերան, ծամըմ ա, մէ մեծ ղազանի մէջ էլ լցրած ա զամեն տեսակ գազան-ներ: Պառաւը քեւկիրն առե ձեռ, խառնըմ ա:

Ախչիկն ասաւ.—Բար յաջողում քե, Նանէ՛ ջան։

—Բարով, ասաւ, հազար բարով, որդի՛ ջան, օձն իր պօռտով, ղուշն իր թեւով ըս տեղ չէր իկե, դու մօնց էկար, հիմի իմ տղէն կգայ, ինքը օխտը գլխանի դեւ ա. քու մեծ թիքէն ականջդ կը թողի։

Ախչիկը ասաւ.—Նանէ ջան, կրակի էմ իկե. իմ ախպրտանքը գնացեր են ավղուս, իրիկունը տուն կգան, կրակ չկայ։

Պառաւ ասաւ.—Դէ՛, շուտ արա, քանի տղէս չիկե։

Ախչիկը կրակը վերցրեց, ուզեց ետ դառնայ, պառաւը ասաւ։

—Ա՛յ որդի՛, առ մի կտոր միս, ուտելով գնա։

Ախչիկն ասաւ.—Նանէ ջան, ես միս չեմ ուտըմ։

Պառաւ ասաւ.—Որ չես ուտըմ, որդի՛, մանտր, մանտր կտոր արա, քցելով գնա, մինչև հասնիս քու տեղը։

Ախչիկը պառուի խօսքը կատարեց. էկաւ հասաւ տուն։

Մինչև լառեց, թխեց, էփեց, պատրաստեց, հլա ծուխը չէր քաշուե, ախպրտանքը էկան, ասին.

—Վա՛յ քուրիկ ջան. էդա ինչ ա պատահե քե որ ըս օր էդքա ուշ էս լառե։

Քուրը պատմեց իրա գլխի էկածը։

Ախպրտանքը ասին.—Վա՛յ, քուրի՛կ, էդ ինչ օյին էս հանէ մեր գլօխը. դեւի տուն ես գնացե, էն դեւն էլ մեզնից ձեռ չքաշի. հըմա մուղաթ կաց, որ ներս մտնելու տեղը չասես ընդըրան, որ ներս մտաւ, քե կտանի, մենք կը մնանք առանց քուր։

Էլի առաւօտն էլան, գնացին ավղուս.

Ընդըրանք թո ըս տե մնան, մենք գանք պառուին։

Դեւ տուն էկաւ, տեհաւ իսանաթի փոտ ա գալըմ.

Է՛յ, պա՛ռաւ, ասաւ. ըս ի՛նչ բան ա, փո՛տ էմ առնըմ։

Պառաւն ասաւ.—Քա՛, անաւէր, դուն ես գնացե սար ու ձոր ման իկե, հազար բան տեհե, ըս տե ո՛վ ա իկե, որ ընձնից էս հարցընըմ։

Ասաւ.—Ընհը՛, չա՛ր պառաւ, հիմի քե փառչա փառչա կանեմ, ասա՛ թէ ո՛վ է իկե ըս տե։

Է՛, ջան ազիզ էր, պառաւը վախեցաւ, ասաւ.

—Էն մսի կտորներին ճանփէն բռնէ, գնա, եփօր մսի կտորները բռաց իլան, ըս տե եկողին կը գտնես։

Դեւը մսի կտորների ճամփէն բռնեց. էկաւ հասաւ մինչև զաղին, տեհաւ որ զաղի բերնին մի էնենց մեծ քար ա դրած որ օխտը լուծ գոմէշ լծես, չկարաս տեղիցը յիրար տայ։ Շատ չարչըրւաւ դեւը, չկարցաւ դուռը բանայ. իլանը կորուաւ, ասաւ ախչկան.

—Սիրուն ախչի՛կ, ներս մտնելու տեղն ասա. գամ ը տե։

Ախչիկն ասաւ.—Տեղ չեմ գիտայ, որ ցուց տամ քե.

—Որ դուռը չես բանըմ, ասաւ, ձեռդ պարզի. մէրդ մատնիք տուած ա, դնեմ քո մատ:

Խեղճ ախչիկը հաւատաց, ձեռը ծակիցը դուրս հանեց, թէ չէ, դեւը ախչկան ճկութը առաւ բերանը ու ծծեց. ը՛նդա՛ր ծըծեց, ընչանք ախչիկը ուշաթափ իլաւ, ընկաւ:

Իրկուն ախպըրտանք էկան տուն, ինչ տեհան. աչկդ հազար բարին տենի, քուրը մեռլի պէս ընկած ա: Ջուր ցըըրին վրէն. ղալ-մաղալ արին, քուր ուշքը վրայ բերին.

—Էդ ինչ ա պատահե քե, քուրիկ, ասին:

Քուրն ասաւ.—Հալն ու ճաղըլ էսենց բա՛ն. դեւը խափլութենով մատս առաւ բերան, ընդա՛ր ծըծեց որ ուշքս գնաց էլ խաւպար չիմ իլէ մինչեւ դուք էկաք:

Ախպըրտանքը էփօր լսին դեւի անունը, ո՛չ կերան, ո՛չ խմին, մինչեւ լուս օխտը ախպըրով չեմի տակ քառսուն կեազանոց հոր քանդին: Էփօր արեւը դո՛ւս իլաւ, իմացան որ դեւը պտի գայ, քուրն ասին.—Խալիչէն փռայ, դու դուռը բաց, քե համար fեarկեաճ արա:

Դեւը՝ մէկէլ տեհացինք մըռթմըռթալէն էկաւ:

Էփօր տեհաւ դուռը բաց ա, ախչիկն էլ fեarկեաճ անըմ ա, քիչ էր մնըմ խելքն էթար. է՛լ աչքերի առաջը չիչկեց, հըմմ՛ ոտը չեմ քցեյն ու փոսի մէջ գըըմփալըն մէկ իլաւ:

Ախչիկն ասաւ.—Ա՛խպըրտանք, էկէ՛ք, ճէյճճեմէ վասիլ իլաւ (սանդարամէտ հասաւ):

Ախպըրտանք էկան, խողով ծածկեցին, քուրն ասեցին.

—Քո՛ւր, ջուր չթափես ըտե:

Մէ օր, էրկու օր, մէ ամիս, հինգ ամիս, մէ տարի, տաս տարի, շատ ու քիչ Աստուած գիտայ. մէկ օր ախպըրտանքը աւղուճից յետ դարձան. տեհան-մէ պառաւ ճանփի վրէն նստած ա, ասին.

—Ա՛յ պառաւ, իճս էս, ճիճս էս, էս վախտը ըստե ինչ բան ունես:

Պառաւն ասաւ.—Ո՛րդիք, Հայ Քրիստոնեա եմ. ձեր արեւի սացաղէն ըմ, ընձի տարէք, պահէք, մեր fօչը ընցաւ. չկարցայ հետները գնայի:

Տղէքը խեղճըցան էդ պառաւի վրէն, հետները տուն տարան, ուրախ-ուրախ իրանց քուրը̃պատմին:

—Քուրի՛կ, ասին, աչկդ լուս. էլ ըսգից դէն ոչ կը վառես, ո՛չ կը թխես, ո՛չ էլ ճաՓա կը քաշես. հոգին ըմ. ինչ կըմ, կըմ, պառաւ կնիկ ա. թո աշխատի, դո՛ւն էլ քու fեarկեաճն արա:

Քուրն ասաւ.—Ախպըրտանք. արէք էս պառաւին խրկէք, դրանից զիաճ կգայ մեզի:

Ախպըրտանքն ասին.—Ա՛յ քուր, պառաւ կնիկ ա. էն ինչ պտի անի:

Է՛, էլի ախպրտանքը գնըմին ավ-դուշ, գալըմին. ճըմա՛ պառաւն ընդմը հաւատարիմ էր ծառայըմ որ քուրն էլ, ախպրտանքն էլ զարմացեր ին։

Հա՛, ճամա չմոռնանք որ պառաւն ամնօր ջուր էր Թափըմ էդ հորի վրէն։

Ախչիկն աըմէր.—Նանէ՛, ախպըրտանքս աըմին «ջուր մի Թափի» դու յընչի՞ ես Թափըմ։

Պառաւն աըմ էր.—Բան չկայ, բալա ջա՛ն։

Մէ ամիս, էրկու ամիս պառաւն ջուր էր Թափըմ էդ հորի վրէն, ամէն տեսակ կանանչի բուսաւ։

Մէ օր պառաւ ախչկանից Թագուն կանանչից քաղեց, կերակուրի մէջը քցեց։

Իրկունը ախպըրտանք տուն էկան. Նստեցին որ հաց ուտեն, չէ՛ որ ամենքը մէկ մէկ գդալ առան. օխտն էլ ալո՚ճալը գառ դարձան։

Պառաւ իլաւ ու գնաց, ախչկան ասաւ.

—Իմ տղի արունքը հանեցի։

Ախչիկը չատ լաց իլաւ։

Ինչ անէր խեղճ ախչիկը, տեհաւ իլաճ չկայ, գլխի լայլուխը չինեց ձեռի փէտ. չուէն դրեց բերնին.

—Չէ՛ որ էն վախտ չուէն գնըմէր բերնին ու ածըմ, իրան հետ քար ու Թուփ մըղմըղվում էր։

Իրա գառ ախպըրտանքը քցեց առաջ, բարճի վաքաճ իլաւ, ընկաւ ճանփայ ու գնաց։

Գնաց-գնաց, չատ ու քիչ Աստուած գիտայ. ըռաստ էկաւ մէ չայիր-չիմաճ, տեղ. էդ չայիրի մէջ տեղը մէ հատ չալ ճաւուզ կար, ճաւուզի գլխին էլ մէ՛ մեծ չիճարի ծառ կար։ Ամնօր ախչիկը գառներին արածացընըմէր. իրկուն էլ բերըմ, ջրըմ էր. ծառի տակը նստըցնըմ, ինքն էլ ըլըմ էր ծառի գլխին Նստըմ. առաւօտն էլ չուտ քչըմ էր գառներ, ընդից հեռանըմ։

Մէ օր, քչերը ախչիկը չա՛տ մտածեր էր. քունը մինչև կէս քչեր չէր քնեւ. էդ օր առաւօտը չկարաց չուտ զարԹնէր։

Թագաւորի տղէն իրա ձինը բերեց ջրելու. տեհաւ ը տեղ օխտը գառ կայ անտէր, անտիրական։

Ճա՛տ բարկացաւ Թագաւորի տղէն.

—Ո՛վ պտի ըլի որ էս պեվախտին իմ ղուրուխի մէջ ոչխար ածէ։

Բարկացած՝ ձինը քչեց ջրի վրայ, տեհաւ ձիանը ջուր չի խմըմ. էնդար զանճկուլամիշ արեց. ջրի վրայ չգնաց։

Դու մի՛ ասա, ախչիկայ պատկերը ընկեր ջրի մէջ, ձինը ճուրճ-մից ա ըլըմ. Թագաւորի տղէն զարմացաւ.

—Ճանըմ, ասաւ. էս ձինը ընչի՛ ջրի վրայ չէթըմ։

Ինքն էլ ջրի մէջը իչկեց. տեհաւ որ ջրի մէջը մէ պատկեր կայ. հօ պատկեր չի, կասես ճուրի մէլէք ըլլի, որ չուտես, չխմես, ըդու մաճ ճամալին քամաշա էնես։

Թագաւորի տղէն է՛ս եան իչկաց, է՛ն եան իչկաց, տեհաւ մարդ չկայ, բայց որ չնայե՛ց ծառի վրէն, աչքըն ախչկան առաւ. քիչ մնաց գլխի խելքը էթար.

—Ախչի, ասաւ. ի՛նս էս, ճի՛նս էս, էս վախս էս աեղ ինչ բան ունես, ծառիցը ցած իջի որ քե տանեմ, Թագուհի անեմ։

Ախչիկն ասաւ.—Չեմ իջնիր, Թագաւորի տղա՛.

—Ախչի՛, ասաւ. իմ ընչին ես անուն դըրըմ. իմ չէնք ու չնորքին էս անուն դնըմ, իմ բոյ ու բուսաթին ես անուն դնըմ, թէ՛ իմ Թագաւորութենին։

Ախչիկն ասաւ.—Ո՛չ, մէկն էլ չեմ դնըմ, ասաւ. միան թէ մէ պահման կանեմ քու հետ. թէ որ կընդունես, ես քունն եմ, դուն իմն ես. թէ որ չէ՛, ծառից քցեմ ճավուզի մէջ, կը խեղդուեմ։

Տղէն որ ախչկայ է՛ս խօսքը լսեց, քիչ էր մնըմ գլխի խելքը թռցընէր։

—Ախչի՛, ասաւ. հոգի՛ս էլ ուզես, կտամ, միան թէ իջի, ընձի առ։

Ախչիկն ասաւ.—Իմ պահմանը էն ա որ էս գառներին չմտ լաւ մուղաթ պտի կենաս. ինչ զար որ ընձի սիրես, էրկու ընդար էլ էս գառներին պտի սիրես։

Ասաւ.—Ախչի՛, Թագաւորին չունի մա՛լ, չունի դովլաթ, հընա՛, կըլնես Թագուհի, յըմեն իրաւունքն էլ քու ձեռը կըլնի, կուզես լաւ պահի, կուզես վատ պահի։

Ախչիկն պատմեց որ գառներ իրա ախպըրտանքնին։

Վերջապէս ախչիկը ծառից ցած իջաւ, տղէն խասյար զրկեց քաղաք, քաղաքը յըմեն էկան Թագաւորի տղի առաջ. ձիաւորներով, fէչէվաններով, առան, քաղաք տարան։

Թագաւորը հարսնիք բռնեց. օխտը օր, օխտը քշեր հարսնիք արաւ. պսակուան։

Ըդրա գառներին ընենց էր պահըմ որ, կիւլը սօլմից չէր ըլըմ, կասես թէ մէ պուտ ծաղիկ ըլէր։

Թո ըսդոնք իրանց վայելչութենին ըլնին, մենք դանք էն պառաւի մօտ։

Եփօր պառաւը իմացաւ ախչկայ բաղդը կտռեր ա. վերցրեց իրան ախչիկն ու էկաւ։ Էկաւ Թագաւորի տղի ճանփի վրէն, ախչկա ձեռը բռնեց, կծկուաւ, Նստաւ։

Թագաւորի տղէն էկաւ, դէն ընցնելու. տեհաւ մէ խեղճ պառաւ՝ իրա ախչկայ հետ նստած ա. էկաւ, ձինը քշեց որ ընցնէր, պառաւը իրան քցեց թագաւորի ձիու ոտի մրէն.—Թագաւորի տղա՛ ասաւ. անտէր պառաւ էմ, ընձի առի քու տունը պահա՛. ես թագուհուն լաւ մուղայթ կը կենամ։

Թագաւորի տղէն ասաւ.—Խեղճ պառաւ կնիկ ա. թո գայ, ուտի, խմի, ընձի համար աղօթք անի։

Թագաւորի տղէն վերցրեց պառաւին, իրա ախչկան, տարաւ տուն, ասաւ.

—Թագուհի՛, աչքդ լուս, քե համար մէ ծառայ եմ բերե, էս պառաւ կնիկը խեղճ ա, թո ըս տե մնայ. քու գլօխն էլ լուայ. ախչիկն էլ մէ ծառայութին կանի։

Թագուհին ասաւ.—Թագաւոր, դու գնա, էդ պառաւին խրկես, էդ պառաւիցը վնաս կգայ.

—Ա՛յ կնիկ, ասաւ. ինչ կայ, պառաւը ինչ կանի. «փչեմ, կը թռնի. ... կը չորնայ»։

Թագուհին ձէն չարեց. մնաց ըտե։

Էդ պառաւն ընենց ծառայութեն էր անըմ որ բոլորին էլ աչքը մտաւ. թագաւորը, թագուհին էս աչքըներէն էն աչքը չեն փոխըմ։

Մէ օր էս պառաւը թագուհուն խափեց, տարաւ ծովի կուշտը, թագուհին էլ երկու հոգով էր։

Պառաւը ասաւ.—Վա՜յ, ամա՜ն, թագուհի, աչքերս քոռնայ, արի՛, արի՛, չորերդ հանա՛յ, համ թափ տամ, համ լողացի, հովցի, նոր էթանք։

Ախչիկը չորերը հանեց պրծաւ. պառաւը կուշտեց, քցեց ծովի մէջ։ Ախչկան ծովի մէջ ընկնելը, մեծ ձկան կուլ տալը մէկ էլաւ։

Թո էդ ախչիկը մնայ ձկան փորը. տեհանք թէ նաստուպազ պառաւը ինչ արեց։ Թագուհու չորերը հագցրեց իրա ախչկան. առաւ, գնաց տուն, ախչկան սորվցրեց՝ սուտ հիւանդութին տայ։

Թագաւորը հարցրեց.—Թագուհի, ինչ ա պատահե քեզի։

Ասաւ.—Գնացի ծովի ափը, մրսեր եմ, հիւանդ եմ։

Մէ օր, երկու օր, հինգ օր սպասըմ էր թագուհին սաղնայ. քանի գնըմ, տըոցը չատացընըմ էր։

Թագաւորն ասաւ.—Ի՞նչ ա սիրտդ ուզըմ, բերեմ։

Ասաւ.—Ի՞նչ անեմ, բերանս չըռնըմ որ ասեմ.

—Ա՛յ կնիկ, ասաւ. չես ըլմըըըմ. իմ կէ՛ս թագաւորութիւնն էլ կը դնեմ քու ուղուրին։

Ասաւ.—Գառներից մէկը մորթես, ուտեմ, առողջանամ։

Եփօր թագաւորը լսեց գառների անունը զարմացաւ. մայրը

պիզ-պիզ իլաւ դլխին։—Ա՛յ կնի՛կ, սսաւ. մինչև հիմի էդ գառներին քու աչքի լսից շա՛տ էր սիրըմ, ինչ իլաւ քեզի։

Ասաւ.—Ի՛նչ անեմ, ջան ազիզ ա ախպօրից։

—Լա՛ւ, ա՛յ կնիկ, որ ասըմ էք, մէկը մորթեմ։

Թագաւորը դուս իլաւ, սկսեց մտածիլը։

Թո թագաւորը մտածի. գանք մենք գառների հալը հարցնենք։

Էն օրից որ իրանց քուրը ընկիր էր ծովը, ամեն օր էթըմ ին, ծովի կուաղը պտըտըմ ին. դալըմին, հիմա էս անգամը Ասսու հրամանքով լիզու իլան, սկսեցին խօսալ.

—Մարիամ, քուրի՛կ.

Թագաւորը դանակն ա սրի,

Ջուրը դրի.

Մեծ գառնիկ ապրօր պտի մորթէ.

Սուտ հիւանդն ա ուզի։

—Ես ի՛նչ անեմ, Մանուկ ախպէր ջան.

Ջուրն ա ծածկի.

Ձուկն ա դուլ տուի.

Թագաւորի էրեխէն խոտխտս քնի։

Ըսդրանք թո էրթան ծովի վրէն ու գան.

Ճատու պառաւը ամեն օր սովրցնըմ ա իրա ախչկան որ շատ դայիմ տքայ, որ չուտ մորթեն գառին։

Գանք, էդ քաղաքի ժամհարին գտնենք։

Ժամհարը մէ օր էթըմ էր ծովի կուաղով, տեհաւ ծովի միջէն ձէն ա գալըմ, անկանջ արեց, տեհաւ ի՛ր՝ ասըմ ա.

—Ժամհար, քու ժամը ձէննես.

Քու անահուն Աստուածը սիրես.

Էթաս, թագաւորի տղին ասես.

Դանակը չորրի.

Ջուրը չդնի.

Իմ գառնիկ ախպոր վզին չդնի։

Մէկ օր, էրկու օր, իրեք օր, ժամհարը տեհաւ որ էդ ձէնը ամեն օր գալըմ ա. չարեն կտռաւ, գնաց թագաւորին ասաւ.

—Թագաւոր ապրած կենայ, ծովի միջիցը ձէն ա գալըմ, թէ որ չես հաւատըմ, արի՛, էթանք, տե՛ս։

Թագաւորը գնաց ժամհարի հետ ծովի կուաղը, կայնաւ. տեհաւ որ ծովի միջից ձէն էկաւ։

«—Ժամհար, քու ժամ կը ձէննես . . . . . »

Թագաւորի տղէն որ ականջով լսեց, ջառ քցեց քաղաքը, որ ինչքան բոռչիք կան, գան թագաւորի կուշտը։

Ալպեալը թագաւորի հրամանը կատարուաւ. քաղաքի մէջ ինչքան թռչիք կային՝ ժողովվան, թագաւորի չորս բոլորը կտրին, կայնան:

—Հա՛ն, թագաւորն ապրած կենայ, ինչ էս հրամայում:

Թագաւորն ասաւ, թոռերը քցէք ծովը. ինքն էլ կայնաւ ծովի կռալը, աղօթք արաւ:

Որ թոռը քաշեցին, մէ մեծ ձուկ ծովից դուրս էկաւ. ձկան փորը ճղեցին. ախչիկը, փոքրիկ էրեխէն խախալը, պտուղ-պտուղ քրտինքը վրէն տուած:

Հագցրին, առին, նաղարով, զուռնով, քէֆի անելով թագաւորի պալատը տարան:

Ախպրտանքը որ տեհան քուրը ծովից դուրս էկաւ, ով որ ըն տե կայնե, սիրտը կտոր-կտոր կըլնէր. Բեաֆրի ֆիկեարի գլօխն էր մըկըտում. բոլորեցին իրանց քուր ախպրտանքը:

Ըդենց չորս բոլորը փաթթած՝ Բօշ ու սարեն մտան:

Պառաւը ու իրա ախչիկը լաան. դողը ջանները առաւ:

Թագաւորը առւօտը նստաւ դիւանն, թագուհին էլ մօտը կայնաւ:

Կանչին պառաւին ու իրան ախչկան:

Թագաւորն ասաւ.—Հիմի ըսդըանց դիւանը քե եմ տուել, թագուհի, մընց կուզես, էնենց արա:

Թագուհին ասաւ.—Ճաստւպա՛զ, ախպրտանցս արիր գառ, պօլ չի, ուզըմէս ախպրտանցս մորթես էլ. ինչ բաւուր պատժեմ քեզի որ հոդիս դինճանայ:

—Աման, թագուհի՛, ասաւ, ես արի, դու մի՛ արա, էլի քու ախպրտանքը դարձնեմ խաւն:

Չէ՛ որ թագուհին էս խօսքերը լսեց, քիչ էր մնըմ ուրախութենէն ուշքը էթար:

—Դէ՛, ասաւ, շո՛ւտ արա:

Պառաւը Ձէլ արեց, տղէքը էլի՛ դարձան խաւն:

Թագուհին պառաւին, իրան ախչկան ազատեց. քաղաքիցն էլ դուս արեց:

Համ լացան, համ ուրախցան:

Եօթ ախպրտանքը գնացին իրանց հօրն ու մօրը շատ ծերացած գտան մեռնելու մօտ. վերցրին բերին իրանց փեսայ թագաւորի քաղաքը. ընտե ապրան.

Ընդոնք հասան իրանց մուրազին, դուք էլ հասնէք ձեր:



## 3

# ՕՁ-ՄԱՆՈՒԿ ԵՒ ԱՐԻՆ-ԱՐՄԱՆԵԼԻՆ

**Տեւրիկարի Զաճարապաց գիւղի բարբառով** *

Կըլնի-չըլնի, ելել ժամանակով մէ թագաւոր կըլնի. էդ թագաւորին ալվաս, բալվաս չըլնի։ Մէ օր ընդըրա կնիկը կը պառկի, մէ օձ կը բերի։

Թագաւորի վեքիլ, վեզիր, նազիր կը ժողուին թագաւորի մօտ, աչքալուսէք կտան։ Է՛, թագաւորն ա, չատ կամաչէ. ինչ արած՝ Աստուծոյ տուած պտուղն ա։ Անուն կը դնեն Մանուկ։

Օձ օր մօրից կըլնի, կը չուլուլուի առէքը։

Էդ օձն ա, կընցնի մէ քանի օր—ժամանակ, իրա մօր կասի.

—Ամէ, թագաւորին ասա, ընձի կնիկ ուզի։

Մէրը կասի.—Ա՛յ որդի, դու օձ ես, քե ո՞վ ախջիկ կտայ։

Օձը կասի.—Մարէ. կը կարգէք, կարգէ՛ք, որ չէք կարգի. ձեր տուն ու տեղը տակնուվրայ կանեմ։

Մէրը կը վախենայ. կեթայ թագաւորին մօտը, կասի.—Թագաւոր ապրած կենայ. քու տղէն ասըմ ա «ընձի կարգայ»։

Թագաւորը չուարըմ, մնըմ ա. չգիտըմ ինչ անի, վախիցը վազիրի ախչիկ ուզում ա տղին։

Երփոր էն գչեր իրար մօտ պտի էթան, օձը անասա՝ տուիքից իջնըմ ա, ու ախչկան գեղըմ։

Առաւօտը բալի լուսը բացուի վրներդ, թագաւորի տան վրէն սև ա քաշուըմ. էթըմ ա տղի օթաղը, տեսնըմ ա թէ ինչ ա իլէ.—Ինչ տեսնայ.—ախչիկը գեղած, ուռած ու մեռած ա։

Մարդիկ ա կանչըմ, ախչկան վերցնել ա տալըմ։

Տղէն էլի կպնըմ ա մօրը եախէն՝ «ընձի կարգէք»։

Մնացել էն մարդ ու կնիկ չուարած։

Խեղճերը էս անգամ էլ նազիրի ախչիկ ուզին։

Էլի առաջուայ պէս արեց օձ։

---

* Պատմած է Արիստակէս Վ. Զուլոյեան։

Օձ-Մանուկ վաքիլի ախչիկն էլ ուզեց. էնպէսդ արեց։

Գիւխդ ինչ ցուցընեմ. Թագաւորն էլ մնացեր վիզը ծուռ. չէր գիտըմ ինչ անի։ Էս դաճը որ մեծաւորի ախչիկն էր ուզըմ. չին տալըմ. ճարը կտրուած քեասիպ-քիւսիւպի ախչիկներն էր ուզըմ փողով։ Մէկ օր-էրկու օր լուրը ձայնուեց բոլոր քաղաքը։

Խօսքը գնաց հասաւ Նախրճու կնկան, որ խորթ էր, ամեն օր խեղճ Նախրճու գլուխ տանըմ էր թէ՝ «քու ախչկան կորցրայ»։

Էս խապարը որ լսեց, մըրթըները կախեց, հա մարդի վրէն մըրթմըրթաց։—«Մենք քեասիպ ենք. հազր ախչիկդ տար, տուր Թագաւորի տղին, փող առ, բեր, ուտենք. չանք յիփ քեասիպ ապրենք։»

Ընդմր մարդի վրէն խօսաց օր, խեղճ մարդի ճարը կտրուաւ։

—Է՛հ, ասաւ, կնիկ. դու՝ քու Աստուածը, որ ասըմ էս, ախչկայ գըլօխը լուայ, ձեռը՝ ոտը տես, տանենք տանք Թագաւորին. պարի ման ա գալըմ ախչկան համար։

Կնիկ եփ մարդից խօսքն առաւ, ուրախութենից սիլտը վարդ պատռուեց. տեղիցը թռաւ-կայնաւ, սկսեց ջուր տաքացնել։

Թող էդի ջուր տաքացնի, մենք գանք ախչկան։

Ախչիկը իրա հօրը, մօրը խօսքերը ջըմեն լսիր էր, սիրտը կոտրած՝ իլաւ գնաց, մօր գերեզմանի վրէն ընկաւ, լաց իլաւ։

Ընդմր լացաւ, քունը էկաւ, քնաւ։

Մէրը գերեզմանի միջից ձէն տուեց, ու ասեց.—Ջա՛ն-ջա՛ն, չան յիփ չթողաս էս հանգիստ ըլնիմ։ Քեզի ուզում են տան Թագաւորի տղին. դու Թագաւորից օխտը գոմշի կաշի կուզես, լաւ կը փաթթուես մէջը. էն գշերը յեփոր Օձ-Մանուկ կգայ քե զարկելու, էրկու-իրեք անգամ կը զարկի, քեար չանի, յետոյ կասի. «Ախչի՛, չալկիցդ գուս արի»։ Դու էլ ընդրան կասես.—Դու քու չալկիցդ գուս արի, էս էլ իմ չալկիցը դուս գամ։ Էն վախտը չալկիցը դուս կգայ. կընէք մարդ ու կնիկ։

Ախչիկը քնի տեղից կը զարթնի, կը տենայ օր էրազ ա. կգայ խեղճ-խեղճ տունը. խորթ մէրը ուրախ-ուրախ կը կանչի ախչկան։

—Ախչի՛ ջան, արի՛, գլօխդ լուանամ։

Ըսկի մէ օր էսենց, քաղցր չէր վարուեր։

Ախչկան գլօխը կը լուայ, կտայ մարդին, կը տանեն, կտան Թագաւորին, Թագաւորը ախչկան խաս գարդարեց, չորեր հագցրեց.—Տարէ՛ք, ասաւ իմ տղի օթախը։

Ախչիկը մօր խրատը իսկի չի մոռացել, Թագաւորին կասի.

—Թագաւորն ապրած կենայ, քեզնից կը խնդրեմ օխտը գոմշի կաշի։

Թագաւորն ալպեալը բանը իմացաւ, ասաւ.—Կայ-չկայ էս ախչիկը մէ բան գիտայ, ձեռաց ալպեալը հրամայեց վազիր-Նազիրին,

օխտը գոմշի կաշի ձեռաց բերին, տուին։ Ախչիկը առաւ, գնաց տղի օթախը. փաթութուաւ էդ կաշիքի մէջը։ Օձ-Մանուկը առքից իջաւ, զարկից. էլի ելաւ, չուլուլուաւ առկքը, մէ խէլի քամաշա արեց, տեհաւ ախչիկը խըլուըլըմ ա. էլի իջաւ, զարկից (խայթից), ելի տեհաւ բան չիլաւ։

Օձ-Մանուկի ճարը կտրուաւ, բարկացաւ, ասաց.—«Ախչի՛, կաշուցդ դո՛ւս արի,»

—«Դո՛ւ քու կաշուցդ դո՛ւս արի, ես էլ իմ կաշուց դուս գամ» ասաւ։

Օձ-Մանուկ ասաւ.—Վա՛յ քու սրվըցնողի վիզ կոտրի, սէյրս (կախարդական-հմայութիւն) պարալ արիր (եղծեցիր)։

Կաշուց դուս էկաւ Օձ-Մանուկը, ախչիկ տեհաւ։

Տեհաւ, ինչ տեհաւ—հօ տղայ չի. չուտես, չիմես ընդրա մահ-ճամալին քամաշա անես։

Ախչիկը չէ՛ որ տեհաւ էդ տղին. քիչ էր մնըմ գլխի խելքը էթար. կաշու միջից թռաւ ու տղին խոըրտեց։

Կերան, խմեն, հանաք արին, խօսացին։

Օձ-Մանուկի ձեռ դպաւ ախչկայ բերնին, առաջի մէ ատամն ընկաւ. Օձ-Մանուկ էն ատամի տեղ անգին քար դրեց։ Էն վախտը ախչիկը ծիծաղըմ էր, շաւաղը տալըմ էր մարդի երես։

Բարի լուսը բացուի ձեր վրէն, բացուաւ թագաւորի վրէն։

Էլի թագաւոր մարդիկ ժողուեց որ ախչիկը վերցնեն։

Թագաւորը առաջ-առաջ էկաւ, մտաւ տղի օթախը. ինչ տեսնայ, տղէն ու ախչիկ փաթըթուեր էն իրարի. անուշ-անուշ քներ էն. հօ տղայ չի. կասես երկինքի հրեշտակ ընի, քիչ էր մնըմ թագաւորը ուրախութենից խելքը թռցնէր։

Նո՛ր աչքալուսանք. նոր քէֆ, նո՛ր հարսանիք, նո՛ր ուրախութիւն։

Թագաւորը տղէն պսակեց, օխտը գիշեր, օխտը ցերեկ հարսանիք արեց, տեհաւ տղէն ինչքամ խօրոտ ա, տա՛սը էնքամ էլ խելքով ա, իրան տեղը թագաւոր դրեց։

Մէ օր էս Օձ-Մանուկի կնիկը իրան ճարիյէֆի հետ էթըմ ա ծովի կուալը. մէկ հատ կնիկ ա բաուսը գալըմ ըղըրանց. թագուն ա գըցըմ, խաբւլութենով չորերը վրիցը հանըմ, ինքն ա հագնըմ. իրա չորերն էլ նրան հագցնըմ, թեւից բռնըմ-չըպըռտըմ, տըմ ա.—Կորի՛, անպիտան, դու Օձ-Մանուկի խա՛րճն էս։

Խեղճ ախչիկը չկարըմ ձէն ու ձըպտուն հանի, չուարած մնըմ ա էդ տեղ-ծովի կուալին։

Թո էդի ծովի կուալը կայնի, գանք էդ Սամանլու (համարձակ) կնկան—ճառիքին բօփ անըմ. իրկունը տուն ա գալըմ։

Մէ՛կ օր, էրկու օր. էդ Օձ-Մանուկ տեսնըմ ա որ էս իրա կնիկը չի, հենց էնպէսդ էլ սուս ա կենըմ։

Ըզգանք էս տի մնան. մենք գանք էդ ախչկայ հաւարին։

Էդ ախչիկ կենցան կեն (չատ ուչ) խելքը գլօխն ա բօփ անըմ, տեսնըմ ա ձեռւիցը գնաց, էլ ճար չկայ։ Էլաւ, եավաշ-եավաշ (յաւաշիկ-յաւաշիկ) էկաւ իրա մօր գերեզմանը, լաց իլաւ։ Ընդա՛ր լա՛ց իլաւ, մինչև որ քունը տարաւ։

Մէրն էլի ձէն տուեց, ասաւ.—Ջա՛ն-ջա՛ն. ինչ ա, չես թողըմ հանգիստ ըլլեմ, քեզի մի կտոր հաց կամեցայ, չպաշարար ուտէր։ Դէ՛, որ էդենց ա, կըլես, էդ բարակ ճամփին կը բռնես, ու հա՛ կերթաս։

Ախչիկը զարթնաւ, տեհաւ որ էրազ ա։ Էն բարակ ճամփէն բռնեց, ու հա՛ գնաց։

Գնաց-գնաց, չատ ու քիչն Աստուած գիտայ, մէ դայա (ժայռ) քարի բռանց էկաւ, հիմա դայէն ճղուաւ. ախչկան ներս առաւ։ Ախչիկը տեհաւ որ ըն տեղ մէ հատ ճահել-թրընտաս տղայ ա պառկած, ո՛չ քնած ա, ոչ մեռած. էն ա օր Նաշաւը վրէն գրըփըմ ա։

Խեղճ ախչիկ, մէ բըճալ լաց ա ըլըմ. մէ բըճալ քունը տանըմ, քնըմ ա, զարթնըմ ա, մինչև իրիկուն արևը մտնըմ ա։

Էդ տղէն չնչաւորւըմ ա, ըլըմ տեսնըմ ա իրան մօտը մէ՛ ախչիկ կայ, հարցընըմ ա։

Ախչի՛, ինս էս. ջինս էս. ըս տի ինչ բան ունես. օձն ուր պտուտով, դուշն ուր թեւով ըստի չէր կարայ գայ, դու ո՞նց էկար։

Խեղճ ախչիկն էլ իրա գլխին գալածը ըմէն պատմըմ ա։

—Է՛, լաւ, ախչի, կապրենք իրարի հետ, ասըմ ա։

Մէ ամիս, էրկու ամիս, մէ տարի. իրեք տարի իրարի հետ մնըմ էն էդ քարի մէջը։

Տղէն ցերեկը մեռնըմ էր, գիշերն էլ էթըմ բան ու ման բերըմ էր, ուտըմ, ապրըմ ին իրար հետ։

Էդ ախչիկը պառկաւ, մէ տղայ բերեց։

Տղէն տեհաւ որ էլ չեն կարայ իրանց դլուխը պահի, ասաւ.— Ախչի, էլի, գնա՛ մեր գեղը, իմ հօր տունը հարցրայ. խնդրի, ընաւ քեզի տեղ տան, իմ հէրն ու մէրը չատ անողորմ ին, ու ընդրանց մեղքի համար Աստուած էս դազիյէն իմ գլօխ բերեց։ Ինչքան խնդրես, քի տեղ չտայ. հըմա որ ասես «ձեր Արին-Արմանիկու գլօխը սիրէք», էն վախտը քի տեղ կտան։

Գիչերով ախչկան քարի միջից դուս հանեց, բերեց գեղի մօտը, ինքը դարձաւ-գնաց դէպի իրա քարը. ախչիկն էլ մնաց ըտի։

Խե՛ղճ ախչիկ մէ բըճալ լացաւ, մէ բըճալ հանգստացաւ. ընչանք բարի լուսը բացուաւ ձեր ամենիդ վրայ ու ընդրա։

Էրխէն խաբռաեց, գեղ մտաւ. Արին-Արմանիկու հօր տուն հարցրեց, գնաց. գտաւ. դարկեանի դուռը կայնաւ։

Մէկ էլ տեհանք ինչ—Արին-Արմանիկու մէրը ծօծ ու սարից դուս էկաւ։

Էդ խեղճ ախչիկը ալաչեց ու ասաւ.—Դու՛ ըլես, քու Աստուածը, դու՛ ըլես, քու հոգին. քու դօլվերի օխրու սաստաղէն՝ ընձի մէ տեղ տուր, քու ճենլիկի մէջը սրուեմ։ Բանի էդ ախչիկը ասաւ. էնի Օսմանլուի պէս տոները ափեց գետինը։—Դուս կորի աստի, անպիտան լաչառ։

Ախչկայ ճարը կտրուաւ, ասաւ.—«Դու՛ ըլես, Արին-Արմանիկու գլօխը.» ընձի մէ տեղ տո՛ւր, սթըրուեմ։

Չէ՞ որ Արին-Արմանիկու անուն լսեց մէրը, ճկերի գլօխը ղըժ-ղըժաց, ասաւ.—Վա՛յ քու լեզուն լալընայ, էդ ո՞վ է քեզի ամիրցեւ-ճայտէ՞, ասաւ. տարէք ձիանոցին մէ տեղ տուէք, գշերը մնայ, առաւօտը ըլի կորի, էթայ։

Չարի կէս գշերը անցեր էր, հոտաղ-մշկներ նոր էին քնե, մէկ էլ տեհաւ դռներն չըխկ չըխկալէն բացուաւ. մէ ձիաւոր մտաւ ներս, էն ախչկայ հետ խօսաց, հարցրեց, ասաւ.—Ախչի՛, ճալիկդ ա լաւ թէ դամիկդ։

—Ո՛չ ճալիկս ա լաւ, ոչ դամիկս, ես փեչնի մէջն եմ նստած, քու տղէն էլ չոր մըրրքի վրէն։

Իրեք անգամ էդ գշեր, էդ ձիաւոր էկաւ-գնաց, հարցրեց. իրեք անգամ էլ ախչիկ ասաւ «ոչ ճալիկս ա լաւ, ո՛չ դամիկս, ես փեչնի մէջն եմ նստած, քու տղէն էլ չոր մըրրքի վրէն»։

Հոտաղները քըմեն լսեցին։

Առաւօտ էլան, իրանց աղին ու կնկանը պատմեցին։

Էդ մարդ ու կնիկ մնացին չուարած։

Է՛լ էդ ախչկան դուս չարին էդ օր։

Ախոր գշերն էկաւ, էդ մարդ ու կնիկ էկան թաղուն տափ կայնան ձիանոց մէջ։

Մէկ էլ տեհան գշերուայ մէ վախտին դռները չըխկչխկալէն բացուաւ, էլի էն ձիաւոր ներս մտաւ. էլի հարցրեց, ասաւ.—Ախչի՛, ճալիկդ ա լաւ թէ դամիկդ։

Ախչիկն ասաւ.—«Ո՛չ ճալիկս ա լաւ, ո՛չ դամիկս, ես փեչնի մէջ եմ նստած, քու տղէն էլ չոր մըրուրքի վրէն»։

Էդ գշեր երկու անգամ էկաւ ու գնաց։

Էդ տանտէր ու իրա կնիկ ճանաչեցին որ էդ ձիաւոր իրանց Արին-Արմանիկն ա։

Առաւօտը բարի լուսը բացուաւ, էդ մարդ ու կնիկ էկան էդ ախչկայ մօտ, փաթըթուան էդ ախչկայ վզով, լա՛ց, չուան ու աղե-

ցին.—Հիմի քե զատ տեղ կը տանենք միան թէ ինփոր կդայ, հարցնես թէ պա՛ ինչ անենք որ դու գաս։

Էդ գչեր ախչկան տարան Արին-Արմանենու թնեյու օդախը ու մարդ ու կնիկ էլի քչերը չքնան։

Գչերուայ մէ վախտին դռներն չխբռտալէն բացուան. Արին-Արմանեկին էկաւ, ախչկան մօտը կայնաւ, հարցուց.—Ախչի՛, սաս. ճալիկդ ա լաւ թէ դամիկդ։

Ասաւ.—Համ ճալիկս ա լաւ, համ դամիկս, ես խուբուբի, եօրղան դօշէկի մէջ եմ պառկած, քու տղէն էլ չիրմայի օրօրոցի մէջ ա դրած. պա՛, սաս ախչիկ, մո՛նց անենք, որ դու գաս։

Արին-Արմանեկին սաս.—Թող օխտը անծին էրինջ մորթեն. մի անծին էրինջ էլ արունի տաշտ դնեն. էն արունը քչեն, տարաւ էն էրինջին, ես էլ ճաշին կգամ։

Արին-Արմանենու հէրն ու մէր էդ բաները լսեցին. ուրախութենէ քիչ էր մնըմ սըրտները պատռէր։

Առաւօտը բարի լուսու հետ օխտը անծին էրինջ մորթեցին. մէկն էլ արունի տակը կայնեցրին, արունը քչեց, էդ անծին էրինջը առաւ-գնաց։

Ճաշի հացին էր, մէկն էլ տեհանք Արին-Արմանեկին էկաւ։ Որ էկաւ. քէֆ, ուրախութին, նաղարայ. զուռնայ, ուտել, խմել, էլ չափ չկար։

Մէ քանի վախտից յետոյ Արին-Արմանեկին սաս.—Այ կնի՛կ, մեր, նիլնենք ձիանքը, էթանք մեր սահմանի գլոխը, ըն տե մէ աղբուր կայ, մըէն իջնենք. մէ ախպէր տղայ ունեմ, էն էլ պտի գայ ընտե, մէ լաւ քէֆ անենք։

Նիլնան ձիանքը, ընկան ճանփայ, գնացին։

Գնացին, չատ ու քիչ Աստուած գիտայ, մէ չայիր-չիմանի տեղ իջան, ձիանքը չիդարին, իրանք էլ նստան։

Հալա չեն հանգստացէ, էս եանէն էլ Օձ-Մանուկ իրա կնիկը էկաւ, իջան. սկսեցին ուրախութեն անել։

Հիմա՛ ինչ անես, էս մարդիկը իրանց կնանիքին ճանաչմ էն, խաբի թէ Օձ-Մանուկի կնիկը ծիծաղայ. տամի շաւաղքը տուեց էրեսները, էլ Օձ-Մանուկ չկարաց դիմանալ, սաս.—Ախպէ՛ր, էդ իմ կնիկն ա։

Արին-Արմանեկին սաս.—Ախպէ՛ր, էս օր քու կնիկն ա, ե՛դ էլ իմ կնիկն ա.—Բունը քեզի, ինը՝ ընձի։

Ներան, խման, կլաւ ամեն մարդ իրա երկիրը գնաց։

Աստուածանից իրեք խնձոր իջաւ, մէկ սաղին, մէկ լսողին, մէկ էլ շա՛տ խօսողին։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Սոյն երեք հէքիաթներն—Հովիւ Ախպէր՝ Ախպէր գառներ և Օձ-Մանուկ պատմած է Արիստակէս վարդապետ Զուլոյեան, որ է Սեւանայ միաբան և բնիկ Շահրիարի Ջաֆարապատ գիւղացի, որ այժմ յէջմիածին կը գտնուի, առ ժամանակեայ կը յաճախէ Գ. Ճեմարանը լսելու լսարաններու մէջ։

Արիստակէս Վ. սոյն հէքիաթներն սորված է իւր մօրէն, որպէս իւր եղբայրն, որք 15 տարի առաջ իրենց գիւղի մէջ հռչակ ստացած հէքիաթ ասողներ եղած էին և կը հրաւիրուէին գիւղի օդաներն հէքիաթ ասելու և զբաղեցնելու հաւաքուած հասարակութիւնը։ Այս վարդապետի ասելով իւր եղբայրն անհաշիւ հէքիաթներ գիտէ, իսկ ինքը մոռացած է, միայն սոյն երեք կտորն որ իր մօրից սորված է. լաւ միտքը պահած է իւր մայրն շատ սիրելուն իբրև թանկագին յիշատակ։ Սոքա Քօրուն գիւղացի (հին Պայազիտի մօտ) եղած են. իրենց հայրը Գրիգոր, սորա հայրը Գէորգ, որոյ հայրը Պօղոս, Պօղոսի հայրը Մանուկ, Մանուկի հօր անուն Պետօ, որոյ հօր անուն Սեօ։ Սոքա Զուլոյեան կը կոչուին Պօղոսի Զուլօ կնոջ անունով, այս Զուլօն մեճլիս և գիւղի կառավարիչ եղած է. Սա Ջաֆարապատ գաղթած է Քօրունէն Պարսից ժամանակ։

Հասան խանի իշխանութեան միջոցին հայեր՝ որպէս քրդեր և Թուրքեր ծանր ղալան (գլխագին) կառնէին փեսաներէն, որով շատ աղջիկներ տունը մնացին, ու այս շատ մը ծնողք (աղայոց) դիմեցին Հասան խանի և գանգատեցան։ Հասան խանն ևս վճիռ արձակեց.— «Ո՛վ որ հասած աղջիկ ունի, չէ ամուսնացուցած, այլ ևս թող չամուսնացնէ. նա պէտի հաւաքէ, բերէ, որ իւր ծառաներու վերայ պսակէ»։ Այս վճռին վերայ մի գիշերուան մէջ որչափ հասած աղջիկ կար պսակեցին առանց ղալանի։ Այս աղջիկներու թւոյն մէջ էր Արիստակէս վարդապետի մամ Ալմաստ Շաքոյեանը։



4

# ԲԱԼԱՔ ԱՉԱՌ

**Մոկաց բարբառով** *

Սպահանայ թագաւուր աղքատանոցմ ի բաց. էսաց յիւր տղըն.
— Ես կը մեռնըմ, խըյրաք էլմ կը բանցըցիս։
Իէր մեռաւ, տղէն էլմ բանցըցուց։
Օրին մէկ դաւրիշմ էկաւ ան դե, ուսկըմ տուըն ձեռ. ուսկըն ի թալ, գինաց տան վիրըն ճուճն։
Տղըն.— Դաւրէշ, ինչու ուսկըն կը թըլխս:
Էսաց.— Մէկ ուսկըն էլ խերյա՛ք կընէ.
Խապար տուըն թագաւորըն, ասըցըն.
— Դաւրիշմ' չկեայ ան տե, ուսկըմ տուընք ձեռ, ուսկըն ի թալ.
Թագաւուր էսաց.— Կանչըցէք ան դաւրիշ, թը գեայ աս տե, խեմ, ինչ մարդ ի։
Կանչըցըն, դաւրըշ գինաց մա թագաւուր, թագաւուր էսաց.
— Դաւրըշ բաբա, դիւ իմ խըյրաք չըս ընդունիր, իմ ուսկըն թիէր իս։
Դաւրըշ էսաց.— Թագաւուր սպրած կեաս. դուն թագաւուր, ամօթ չի մէկ ուսկով կըրըս խըյրաք կէնըմ. մէ աղջըկմ կեօ Բասրայու դաշտ' բերըմ չնիր ի ան տե, քեառասուն փեննէրէ թուղր ի, ամեն փեննէրից չաւրեմ կգեայ տակ, ամեն չաւրը ճօթ քեառասուն ֆիսայ, դուն թագաւուր մէկ ուսկով խըյրաք կէնըս։
Թագաւուր էսաց.— Էս դաւրըշ բոնէք, մինչիւ իս կըեամ, կը գեամ, թա աղուըթ իլաւ, կդաւրըշ չրակ կէնըմ. թա ռուըթ իլաւ, դաւրիշը մըջ կը զարկիմ։

---

* Պատմած է Մոկաց Գինեկանց գիւղացի Զատիկ Խէպօեանն. որ գիտէ բազմաթիւ ժողովրդական վէպեր ու հէքիաթներ, նա մանաւանդ Թրդ. վէպեր. Զատիկ այժմ Գ. Ճեմարանի ննջարանի մէջ գիշերապահ է:

Դաւրըշ բռնըցըն. Թագաւուր իւր չուրիր խագեաւ՝ յիւր ճակիր կապըց, ձըն խիծաւ, դայպըմ՝ ուսկը ի թալ ձիու քեամակ, գինաց. ա ընցկուն կան ի րի, Բաարայու դաշտ չգնտաւ. էդ դըյպէ ուսկըն կիրաւ, չգնտաւ, յիւր ճակիր ծախըց, կիրաւ, չգնտաւ. յիւր ձըն էլ ծախըց, կիրաւ, էլմ չգնտաւ։

Թագեաւուր էսաց.—Հէյ վախ, ես ինչ իր՝ իրի իմ խիա, դաւրիշիմ խուսքով իմ թագաւուրութիւնիցն էլ իլայ։

Բանձր քեարմ ադա տեղն էր, էսաց—ա՛էլըմ ադա քեարի գլեօխ, ըզի Թլիմ տակ, մեռնիմ, դարվշը խուսքով ընկիր իմ աշխար, կան կգեամ։

Թագեաւուր գինաց քեարի գլեօխ, յետ կը դառնայ, խուգըն քաղցր ի։

Մէկ խոշըրըմ անիւ գիմաց նստած կըլնը, խոզիւ կանչից.

—Ազի՛կ կորըճ ճեճել. ինչ կէնըս ադ տե, էրի՛, տխնանք քիւ դար. ինչ ի. գքի քեարիը թըլիս տակ։

Թագեաւուր գինաց խոզիւ մօտ, էսաց.

—Ես յիտիւ Բաարայու դաշտըն կան կգեամ, չգնտայ. դայպեմ ուսկը կիրայ, չգնտայ. ճակիր ծախըցը կիրայ, չգնտայ, իմ ձըն ծախըցը, կիրայ, չուրիր ծախըցը կիրայ, չգնտայ. իսն էլ իմ դարդանաց ըզի տը Թլիմ տակ, մեռնիմ։

Էսաց.—Քի՛ւ տըօն ակօլ չըլնը, կեյնըս աս կըրի վիրէն, (սարի գլուխ որ քիչ բարձր է—կիրճ), Բաարայու դաշտ կը տխնըս։

Թագեաւուր գինաց կիրըի գլեօխ, տեսաւ Բաարայ, Բաարայու դաշտ, տեսաւ բերդըմ չինի, բըռճիր լիի Յալաէ (չատ բարձր—երկինք, Աստուծոյ մօտ)։

Թագեաւուրն ի, իջաւ գինաց. գինաց յեռջիւ, տըսաւ-աղուըթ, քեառասուն փեճճերէ Թղիր ի յեռջըւ, վիւր փեճճերըն գինաց. չափրիմ վիրուց իկաւ տակ. ի բաց, ամին չաւրը ճուըթ քեառասուն ֆիսայ։

Թագեաւուր գինաց, ներս մտաւ. ութ օր մնաց ադ տե. էրկու դան, իրեք դան կուտըր, կը նստըր ան տե.

Օրէն մէկ՝ անիւ (աղջկան) խասամուչ էսաց.

—Ես կուզըմ քիւ խանում տխնամ։

Էդ խասամն էլ մէկ ծամառ իզար տըը իրեա, էսաց.

—Ի՞նչ գուրծ ունիս իմ խանումի խիտ. գիւ ծարաւ չը՛ս. անօթը չը՛ս, բիբիկ, տկլուզ չըս. էլ ի՛նչ գուրծ ունըս իմ խանումուչ խիտ։

Գինաց խանումուչ էսաց.—Մէկ մարդ ութ օր կայ, իկի աս տե, կուտը, կը խմը, աս օր էսաց. «Ես կուզըմ քիւ խանում տխնամ. խնէլ մէ՛կ ծամառ զարկիր իմ։

Խանում էսաց.—Դիէ՛լ փուշդ, գիւ ընչի՛ զարկիցըր. ան մարդըն էլ կըլնը մէ բան կաար. կանչի՛, թը գեայ աս տե։

Խատամ գինաց. կանչից. էրի խանումուչ մօտ։

Խանումուչն էլ ականջկալայ էրի, սաքցըն.

—Քիւ պազրկեան իրի։

Պազրկեանն էլ իրի, խանումուչ մօտ նստաւ։

—Պազրկեան, կասը խանում, իրէ, խէնք, ինչ արիր։

Պազրկեան էսաց.—Քեառասուն ըղտաքեռ մալ կիրայ, բամ' չխասկացայ. ամին ուրբաթ օր սահար խնդըն Բալաք աչառ մը խիծնը, ագեայ, մանչ էրկինք, մանչ գետընք ինի, կգեայ. ուր խօր խաս պաղչէն կը նստը. կը կըպըթայ. օր կըպըթայ, էրկու ջուպուխնի կգեան աղ ան, մէկն ան թիւ կը կայնը, մէկ անթիւ. կալօն ան մէկ կը լցընի' կը խմը, մէկն էլ ան մէկ կը լցընը. գէմ մի կը կանգնը. Թուրմ' կը զանի մէկ անիւ մըզ, մէկ անիւ. Երկուսն էլ կոպանը. Բալաք աչառ կը խիծնը, մանչ էրկինք, մանչ գետինք ինի, կիրթայ, խատ մարդիւ չը խուսը—չտայ, չառնը։

Ադ աղջիկն էլ ատա մարդիւն էսաց.

—Ապախպը, իմ պազրկեան ինչ էսայ, ան մարդ ինչ կասի' Զինայ Թագեաւուրու աղէն ի. իս, ան մատնըքնիր խատ մա մէկու փուխըր ինք. ան ըզի տ'առնիր. մկայ ալ չըմ գըտի, ինչու խամար ըզի էլ չառնը. էսայ, թը դիւ գնացըր. Զինայ Թաղեաւուրու լաճու յէյութուն ըզի խամար բիրըր, բիրըր. Թը չբիրըր. «քիւ խուքըն գնին անծակ դիւղիւմ, իմ ձեռնէն չը'ս ազատուըր»,:

Էդ մարդ էսաց.—Կուզիմ քինէ. խուրճմ' ուսկը, էրթամ խտիւ։

Իլաւ գինաց Զինայ Թաղեաւուրը քեաղաք, ուրբաթ օր սահար խնգին գնաց Թագեաւուրը խաս պաղչէն:

Տիսաւ Բալաք աչառ խիծի, մանչ էրկընք, մանչ գիտընք ինի կգեայ: Իրի խաս պաղչէն նստաւ. մէւր կըլպըթաց, ջուպուխնիմ մէկ ան թիւ դադրաւ, մէկ ան թիւ' կալօնմ ան ըլից խմաւ, մէկն էլ ան մէկ ըլից խմաւ. մէկն էլ դէմըլի կանգնաւ. էրկուսն էլ սպանից. մանչ էրկընք, մանչ գիտընք ինի գինաց. խատ մարդիւ մը'նչ էտու, մը'նչ առըց։

Էսաց.—Բամ' չխասկացայ անիւ մօտէն։

Մնաց մէկէլ ուրբաթ օր, էլի սահար խնգին էլաւ, յիւր չուբիր իխան. դաւրիշիմ չիւր խագեաւ. դիւզիմ' բռնից յիւր ձեռ, գինաց, խասաւ պաղչէն. նստաւ։

Տիսաւ էլմ Բալաք Աչառ խիծը, մանչ էրկընք, մանչ գետին ինի իրի, իրի ս տեղ նստաւ. որ նստաւ կըպըթաց, ջպխչիմ' մէկ ան թիւ դադրաւ, մէկ ան թիւ, կալօմ' մէկ ան ըլից խմաւ, թափ տուաւ. մէկ ան ըլից խմաւ, թափ տուաւ:

Դէմիլի կանգառ, երկուսն էլ սպանից, Բալաք աչառ խիծառ, գինաց։

Էստ դառրիշ յընկառ խոխւէն, կանչից.

—Եա՛ հանի, եա՛-հու, եա՛ հանի, եա՛ հու.

Դարձառ իրիշից յլոխւ, տըսառ դարվիշմ անխւ խոխւէն կերթայ. ուր չավրէն ի թալ։

Դառրիշը չաւրէն առըց, էլմ յլոխւ գինաց, կանչից—Եա՛-հանի, եա՛-հո՛ւ, եա՛-հանի, եա՛-հո՛ւ։

Իրիշից տըսառ, դառրիշ էլմ խոսէն կերթայ։ իրիշից յիւր վե-րայ, բանմ չտըսառ. յիւր չեփկէն ի խան, ի թալ. պչեփկէն առըց, խոռւ անթը տակ, էլմ ընկնառ խոսէն,—Եա՛-հանի, եա՛-հո՛ւ, եա՛-հանի . . .

Իրիշից յիւր վերայ բանմ չտխառ. ալմաս բիւռ խանչալ որ մէջքն էր, քեշից, ի թալ։

Ալմաս բիւռ խանչալն էլ առըց. խոռւ անթը տակ, խոխւէն էլմ «եա՛-հանի՛, եա . . » ձէն տուեց։

Դադըրառ, էսաց.—Սգեայ գլօխս օր թուրմ սըրիմ անխւ վըզ. խօ խմ չավրէն թըցի, քեառասուն հիսա անխւ գինն ի. չափկէն թըցի, խալիր հիսա անխւ գին. ալմաս բիւռ խանչալ թըցի Չինա թագեաւուրը քեաղքի գին ի, թը ան տանըր, խուցուտուը՛ր, ինչ խլսնէր, էլմ թը գէր.

Էդ դառրիշն էլ էսաց.—Իս քիւ հեսաարը բադդ ինչ մանչ քիւ սրտըն դիւ կը սիրիս. ըլը տանըս քիւ կօնախ։

Էսաց.—Դիւ չտուըր իմ հեսաարը (սրտի մէջի) բադդ. գքի տ՛ըսպանէնէր, լէ դիւ տուըր հեսաարը բադդ. գքի չըմ սպանր։

Էսաց.—Իս կերթամ. իմ խաւէէն էրի։

Գինաց, տըսառ բերդմ չինի. Սարեմ մանչ վար քեարը գլխւն, տըսառ այա Բալաք աչառ ինչ խիծիր էր. կապըց սանվի, խուրձմ կեարմասօ փէտ առըց բերը, կը զարկը։ Աղ ալ սաըց.—Մեղը ի, մը՛ զարկի՝ Աստուծոյ սիրուն ըլնը, մը՛ զարկը։

—Կը զարկիմ, չզարկիմ, դիւ ինչ գուրծ ունիս խիտ։

Ա ընցկուն իզար, կաչին վուրնից վե իրի վը.

Թուղ խոռւ, դեացըն տուն։

Վկացուան. խաց դրին ան տե, կիրան.

Դառրիշ էսաց.—Դի՛ւ, քիւ հեսաարը բադդ, դիւ քիւ կասան ձը խամար ինիս։

Էսաց.—Վ,ալա, դիւ չտուըր «հեսաարը բադդ». իս թուրմ զանի քիւ գլեօխ, քիւ գլեօխ էնա փանճարէն ինի էրթէր դիւս, տուըր «հեսաարը բադդ», ազատայ։

Էսաց.—Իս էլ թագեաւուրը տղայ էր, մարդ ունէր. յըրկվընից

կը նստէր, որէն մէկ յըրըկուն քունս տարաւ. խնէլ իմ մարդիկուն տըրցը. ասօր քիւնս կը տանը. էլեցէք, գինացէ՛ք իմ խօլ մօտ նըռ-տեցէք։ Մարդիր էլան, գինացըն, քիւնս չտարըց. մէկնէլ տըրայ դիւռ բացուաւ. փարիմ՛ էրկու չանկի, էրկու չալղըճի. էրկու ուսկը սանճ-ցալ աթոռ։

Ուսկը աթոռ մէկ իս նստայ, մէկ փարին։

Մէնք ձեռ թլցընք իրար թիւ. իմ հեաչ գնացը, իս ընկիրիմ ադ տե. մէկն էլ տըրայ, մայրդ չկայ. վուվ ձը ըռասօ գէր, կը գարնէր, կօպանէր. դուար գէր ուչխար դէր, մարդ դէր, կը զանէր։ Օրէն մէկ տըրցըն. «Թագաւուր ապրած կինաս, էս ֆլան տարը մէջ մարդ կայ», ան տե ծուռ կը սաղացրցէ, քիւ տղէն կը տանըս ան տե, սաղանմայ։

Իմ խէր ըզի իլաւ առըց, տարըց ան տե ի թուղ. դարձաւ իրի. վուր դարձաւ իրի, իս մէկ ամսում՛ չափ՛ մնացը ադ տե, քիչ մ՛ ադէկացայ։ Օրէն մէկ տըրայ ադա խալաւիւր գինաց ծուվու բիրան. մէկ պառաւմ առըց իրի, ձի էսաց. «քի մէրմ իմ բիրի», իս ասըցը. «բիրիրիս, բարովիս բիրի, խաց կիրակուլ կեփը, մի չուրիր կը լուայ, կը կարը։

Մնաց մինչիւ յիրըկուան, խալաւիւր ձը էսաց.

Մինչիւ աս օր իս, դիւ մնակ էր, մէկ յեօղէմ կը քնէր, աս օր դիւ գինա՛, ջուկ յեօղէմ։ Գինացի, նստայ. կայօմ՛ ըցի, իմայ, մէ՛կ էլ ըցի իմայ, քիւնս չտարըց. իս ասըցը. «ա՛էրթամ, իրըչիմ. խալաւիւր, պառաւ ինչ կէնիս։ Գինացը դուան ծակտիր ինի իրիչիցը նիրս, տի-տայ խալաւիւր կապմ իչգի պառուիւ վըրց. քեչից տարըց դէս, իրի դէն, զպառաւ խեղդից, իթալ ան տե։ Պարկմ կայ, էդա պատէն կախ էր. պարկ իբի վե, էրկու բարակ օձ միջէն ի խան. ի թուղ ադա պա-ռաւի ջանդակը վըրէն. ադ պառուու էրուն ծծըցըն, ամեն մէկ խաս-տացան, յէլան քեանց սուն։ Իրի, օձերու պուչ կապըց յառքէն, յեռ-ջիւ ամեն օձու իրիք չանճախ իդի վար մէկ մէկը. ադ էրուն անուանց բերնէն թափաւ. չանճախքիր էրկու ծակից, իրիքըն կայնաւ. բերըց ադա էրուն իլից մէկ կժոցմ, իդի ըռաֆը վըրէն. ադ օձիր քամիզմ վլաց, էլմ իդի պարկ վե, բիրան կապըց, կախըց պատէն, ըրվացուաւ. խաց կիրաւ, պարկաւ ան տե, քինաւ։ Իսն էլ դարձայ, էկը իմ տեղ, ալ քիւնս կը տանը՛, չըննայ մինչիւ առաւուտ։ Առաւուտ էլայ, էկը մա խալաւիւր, խալաւիւր էսաց.

—Քիւ մէր մեռը։ Իս ասըցը, մեռը, Աստուած իտու, Աս-տուած տարաւ։ Խալաւիւր էսաց.—Իս պառաւ կառնըմ, կը թըլիմ ծուվ. դիւ փլաւ կէնըս, եղն էլ կեօ ըռաֆը վըրէն, կը բիրըս, ըցիս վե-րէն, կուտիս. մինչիւ իս կգիամ։ Իսն էլ բիրը, փլաւ իփիցը, դըր ճեաւէն, անժուր կիրայ, քիչմ էլ դըր ճեաւէն, էդ զէխիր (թոյն) բիրի

լցի վերէն, դռնէ մէջ անկիւնը, մինչեւ խալաւեւր եռի. եռի, էսաց՝ «Փլաւ եփիր» Ասըցի. «եփիրեմ,» ըսնէլ լցիրեմ, կերիրեմ, հալա կէս մացիրի աս տեղ» Խալաւերն էլ կասը.—խամ չկա, մէջ, անիւ խամոր չմեռաւ։ Գինաց, Նստաւ ճեասը վերէն դդէլմ՝ ինչ կէրաւ. չուրյաւ յիւր տեղ։ Իսն էլ էլայ, ադա պզտի դիւա բայ էրի, տըսայ բան չկէր ան տեղ, մէկ քեանըմ խասա գիրք կէր, մէկ պզտիկ գիրքմ էլ ադա գրքերի. վըէն դրած. ադա պզտիկ գիրք առը, կարդացը, վուր կարդացը, մէկն էլ տեսայ փարըն, էրկու չանճըն, էրկու չալղըճըն, ոսկը աթոռ եխտնիր, էկան ան տեղ. ոսկը աթոռ իս նստայ վերէն, մէկ փարըն, ձեռքիր թըլցընք վուր մէ մէկու թեւին, էրկու չալղըճըն զարկըն, էրկու չանճըն խաղցըն մինչեւ առաւօտ։ Ինչ ժամանակ գիրք կարդէր, էմ կգէր։

Ցօրէն մէկ տըսայ իմ խօր կեամին իկաւ, ան տեղ, կայաւ. իմ խէր կեամուց դիւս էլաւ, եկի իմ մօտ. էսաց։—Ա՛յ որդի, սաղացեր իս։ Իսն էլ սաըցը։—Իս սաղացիր իմ, խալաւեւր մեռեր է։ Իմ խէրըն էլ էսաց։—Ճեճճեմ, դիւ սաղացիրիս, թօ խալաւեւր մեռնը։ Մինքըն էլ իլանք, էկանք, նստանք կեամին։ Կեամին թաղ եռու, էկընք, ծովեւց դիւս էլանք։ Իս իմ խուր սայցը.—Դիւ գինացէ՛ք, իս քէչմ լուղանըմ, գեամ, ձի կը խասնիմ։ Անոնք գինացըն. իս իմ խալաւքիր խանը, դրը ան տեղ, իմ գիրք բանըցը իմ ձեռ, մտայ մանչ ծուվին, կը լուղկանէր. մէկն էլ տըսայ մէկ մարդմ՝ էկաւ ան տեղ, էսաց։ Ա՛յ մարդ, դիւ քիւ խալաւքիրուն մօտէն չըս վախինայ, քիւ գրքուն մօտէն կը վախինաս. քիւ գիրք դի դըր խալաւքիրուն, մտի ծուվ, լուղացը՝ յիմ դիւս, քիւ խալաւքիր խառը. քիւ գիրք դի՛ քիւ ծուց, գնա։ Իսն էլ սաըցը. Ինիւ խուաքն է, դրը իմ գիրք խալաւքիրու—վըէն. մտայ ծուվ, կը լուղանէր. մէկնէլ տըսայ պգիրք առըց, հայ վար ծուլուն գինաց։ Չըրց դիւս էլայ, իմ խալաւքիր խագեայ, ալ իմ խօր քեալաք չգիացը, իկաւ ըս տեղ, բերըմ աս տեղ չինիր իմ, նստիր իմ ի՞նի։ Ինչ իս իկեր էր աս տեղ, մինչեւ աս օր իս մարդիւ խիտ չէր խուսըր։ Էսաց.—Աստ Բալաք ուչառ կը տեսնաս, ան փաարու խուլաւերիրնի. Էրկու խուաք ան գրքից մեաս մնացիր է, մէկ ան կը կարդամ անիւ, ան էրկու չմլպուխճին ինչ կգեան, անիւ աղբէրքերնի՛, իսն էլ իմ դարտանայ կը զարկիմ, կալանիմ. ինչ կը կարդամ. էմ կգեամ։ Ամէն ուրբաթ օր իմ խուր խաս պաղչէն մըսա կըյնը, իսնէլ կերթամ ան տեղ, էրկու սաճարուան չանք կը մնամ ան տեղ, կըլլիմ գեամ։ Էսայ դաւըրըչըն.—Իս գտիմ, Բաարայու դաչաը տղջկն է գքի դը՛ը աս տեղ. աընցկուն մարդ գըկից աս տեղ, մարդմ՝ իմ յուսութին չառըց, դիւ էկըր, առըր. գինա, էսա, քեան ըղի մէր, քեան ըղի քիւր կինայ ձի. իս քի չը՛մ առնը. վուվ կառնը, առ, խիրըք է ան մալ խարճիս ձը ապրիլ, քի չըմ առնը։

Էդ դարվըշն էլ էսաց.

—Ձիմ՝ տու ձը, ղըյպեմ էլ ուսկը տու, իս ա՛ւըթամ գրքը յիտիւ գիրք բիրիմ։

Ադ ալ էսաց.—Հա՛յ դարվիշ բաբա. գուրծ չունիս, դիւ չըս կէրի բիրի, գինա՛ խատ քիւ բանին։

Դարվիշ էսաց.—Չէ՛, տըղաս, իս էրթամ իտեւէն։

Էսաց.—Տամ, տար քի խամա կի։

Դարվիշն էլ իլաւ, ձըն խիծաւ. ղըյպեմ ուսկըն իթալ յիւր քեամակ. ձըն քշից, գինաց մէկ քեառասուն աւիւր ճամբախ, մէկ էրկըր դիւս ընկեաւ. ա տե չէնըրկ չկէր, քեանց ջաղաց աւիլ բանմ չկէր. մէկ, էրկու, իրեք ջաղացք ընցաւ. մէկն էլ տըսաւ ջաղցպան կանչից. էսաց.—Սպահանայ Թագեաւուրու տղա՛, դի՛ւր կէրթաս։

Ան տե ձըն կայնացըցոց,՝ մտածից, էսաց.

—Ասիկ իս քեառասուն աւիւր ճամբախ իկիրիմ, ասա ջաղցըպան ինչ գիտը իս Սպահանայ Թագեաւուրը տղէն իմ։

Ջաղցպան էսաց.—Ի՞նչ կը մտածիս, դարձը էսա տեղ, ադա գուրծ, ինչ դիւ իտեւէն կէրթաս. իս չըսիմ, դիւ չըս կէրի, բիրի։

Էսաց.—Ըպա իս քի չըմ ճանչընայ. դիւ ըզի կը ճանչընաս։

Դարձաւ, էկաւ մատ ջաղցպան. ջաղցըպան էսաց։

—Մինք խըրիշտակնիր ինք, իրիք օր քիւ խուր խըյրաթ ի մնացիրիմ, քիւ խուր խուգըն էլ իս իմ առը. քիւ խէր շատ աղէկ խեր կէներ, իս անիւ խաթրը խամար տը չանց տամ, էրթաս, ան գիրք բիրիս, իտ գըտիմ, դիւ ան գրքըն իտեւէն կան կգեաս, իս չըլըմ, դիւ չըս կէրի։ Կէրթաս Ստամբուլ՝ դիւս կըլնըս, կերթաս Էյիպ, դիւռ կը բանան, էրկու դարվիշ կայ ան տե, դիւ էլ գքի կտաս վար աջ թիւին դռան իտեւին, մինչիւ սահաթ խնդին. կըսըս.—Դարվիշ բաբանքտիր, դիւ ընչի չըք խօսըը. անիւնք էլ կասըն.—Սարէն դիւ կգեաս, ձիւրէն դիւ կգեաս, աշխարէն դի՛ւ կգեաս, խուաք քիւն ի, մինք ինչ տը խօսընք։

Դիւն էլ էսա.—Ըզի քու (եըբէք) խուաք չկայ, իմ խուաք էն ի. ձի Թագեաւուր իմ ձէն լսէր, ին օր, ինը ամըս, ին սահաթ, ին տղըզա լմանէր, Աստուած անիւ տըտէր տղէմ։ Թագեաւուրն էլ ան ժամանակ կիւգեայ դռան վերէն, էկանջ կէնը, կը դառնայ, կերթայ։ Տղէմ ադա Թագեաւուրն տըլնը, ըն սահաթըն մէջ էլ աղջըկմ՝ Չինչանց Թագեաւուրըն տ՛ըլնը, ադ աղջըկ, ադ տղէն տը սըրվին իրարիւ վերէն։ Ադ տղէն ինչ կը միծանայ, դիւ էլ Թագեաւուրըն էսա,—Թագեաւուր, քիւ տղըն կասըս, ան աղջըկ ինչ կգեայ քիւ տը մօտ, ըսը, թը չգեայ քիւ մօտ, աղջըկ ասը. վրէ չըս թուղնը գեամ քիւ մօտ. տղէն էլ թը ըսը՝ դիւ գեօղ իք։ Աղջիկ տըսը.—Մինք ինչ ինք գեօղցը. տղէն թըղ ըսը,—դիւ մի գիրք իք գեօղցը։ Ան

աղջըկ ան գիրք ու բերի, մարդ չկերի բերի։ Էսաց.—Առ նա կանանչ վարուց, բռնը քիւ ձեռ, քեանի մի երկըրնիս, մարդ քի քախլմիշ չըլնը, ինչ մի երկրէն դիւս կըլըս, կանանչ վարուց քիւ ձեռ կը չուրնայ՝ թայ։

Ադ ալ էլաւ, կանանչ վարուց բռնըց յիւր ձեռ, գինաց, անիւնց երկրէն ինչ դիւս էլաւ, կանանչ վարուց ձեռ չուրցաւ, վարուց էթալ, գինաց Ստամբիլ դիւս իլաւ, գինաց Էյիւպ. դիւռ էրաց, մտաւ նիրս, տըսաւ աղուրթ էրկու դարվըշ կան ան տեւ, վար աջ թիւին, զինք խոռւ դռան խաւէն մինչիւ սաճաքը խնգին։ Էսաց. —Դարվիշ բաբանքտիր, ընչու չըք խուսը։

Դարվիշները սաըն.—Աշխրքէն դիւ կգեաս, սարէն, ձուրէն դիւ կգեաս. խուսք քիւն ի։

Թագեաւուրն էլ իմացի մէկ կարիպ դարվիշմ իկի, էսաց.

—Վազիր, իլի էրթանք մատ ան դարվիշ, խենք, ինչ կըսը։

Անիւնք էկն խասան դռան վերէն. դարվիշն էլ էսաց ան դարվշնիրուն։—Ձը թու խուսք չկայ. ըձի մէկ խուսք կայ, Աստուած տէր, ձը թագեաւուր իմ ձէն լսէր, ինչ ինն օր ին ամըս, ին սաճաք, ին դագրղայ լմանէր, Աստուած անիւ տտէր տղէմ՝։

Թագեաւուր լսաւ, էսաց. —Վազիր, դառնանք, էրթանք։

Դարձան գինացին, չմտան նիրս։

Էրկու մարդիւ էսաց.—Լուսուն կերթըք Էյուպ, կը մտիք նիրս, մէկ կարըպ դարվիշմ կայ ան տեւ, կը բռնըք, ձի խամար կը բիրըք։

Առաւուտուն էրկու մարդ էկըն, մտան նիրս. դարվիշ բռնըցըն, սաըցըն.—Արի, գինանք։

Էսաց.—Թագեաւուր ձը ինչ տ'ենէ, ինչ գուրծ ունիմ թագեաւուրը խիտ։

—Ձէ, դքի ուպիրը. տը դեաս, էրթանք։

Առըն տարըն թագեաւուրը մօտ, թագեաւուր էսաց.

—Դարվիշ բաբա, դիւ յիրկուն ինչ իս սաը։

Էսաց.—Թագեաւուր ապրած կենայ, իս բանմ չըմ սաը յիրկուն։

Էսաց.—Ձէ, սաըցըր։

Էսաց.—Իս բանմ չըմ ըսը, մէկ խուսքմ տուը. իս մտայ Էյուբ, էրկու դարվիշ կին ան տեւ, մինչիւ սաճաք խնգին չխուսամ, սաը. «դարվիշ բաբանքտիր. ընչու չըք խուսըն»։ Անիւնք էլ սաըցըն «աշխրքէն . . . խուսք քիւնն ի. իսն էլ սաըցը. . . «ձի թագեաւուր իմ ձէն լսը, ինչ ին օր ին . . . Աստուած անիւ տտէր տղէմ»։ Իս նա մէկ խուսքն իմ տուը։ Թագեաւուրը էլ ա ընցկուն ծիր իր քի դեղին ի դարձի, էսաց.—Դարվիշ, նիւր ըզը տղայ ըլնը։

Դարվիշն էլ էսաց.—Աստուած տըտայ.

Թագաւորն էլ էսաց.—Դէ կաց աս տեղ, թէ տղայ էլաւ, թագաւորութիւն ուզիս, ինչ ուզիս, ես տամ քի։

Դարվիշն էլ մնաց աղ տեղ, մինչիւ ժամանակ իրի։

Առտուած խոռւ մէկ զաւակմ։

Թագաւուր էսաց.—Դարվիշ բաբա, դիւ քիւ քեցերք էրա, ես իմ կէս թագաւորութիւն տամ քի։

Դարվիշ էսաց.—Թագաւուր ապրած, դիւ չը՛ս կէրի իմ խնդիրք կատարը։

Էսաց.—Ես չկատարիմ, էլ վում քիւ խնդիրք տը կատարը։

Էսաց.—Իմ խնդիրք քիւ տղէն տը կատարը, դիւ չը՛ս կէրի։

—Թը կենայ, իմ տղէն միծանայ, կատարը։

Էդ սահաթին ինչ տղէն էլաւ. Ձինաց թագաւուրըն էլ մէկ աղջըկ էլաւ. տղէն, աղջըկ սիրուան իրարիւ վերէն։

Մէկ ժամանակմ վերէն ընցաւ, դարվիշ էսաց.

—Թագաւուր ապրած կենաս, մէկ աղջըկ չգնայ քիւ տղը մօտ։

Էսաց.—Կգեայ։

Էսաց.—Կերթաս քիւ տղըն կըսիս. յիրկուն ինչ ան աղջըկ ինչ կգեայ, տղէն չը թըղնէ գեայ յիւր մօտ, ան կըսը—վըէ չըս թըղնը գեամ քիւ մօտ. տղէն թը ըսը՝ գեօղ իք։ Ան տը՛սը, ինչ իք գեօղցը. տղէն թը ըսը—միր գիրք գեօղացըրիք։

Թագաւուր էլաւ, գինաց տղը մօտ, էսաց.

Աղջիկ յըրկուն իրի մա տղէն, գիրկ իբի բիւլիւր տղըն, տը կախուէր վզէն. տղէն դմչկուըմ խոռւ, աղջիկ դպաւ գիտըն։

Աղջիկ էսաց.—Դիւ ընչո՞ւ չըս թղնը գեամ մա քի։

Տղէն էսաց.—Դիւ գեօղ իք։

Էսաց.—Մինք ի՞նչ իք գեօղցը։

Էսաց.—Մի գիրք գեօղցիր իք։

Աղջըկ դարձաւ, լալելէն տուն գինաց։

Թագաւուր էսաց.—Աղջը՛կ, վըե՞ կլաս, քիւ սիրո՞ղն ի մեռը։

Էսաց.—Ձէ՛, չը մեռը, չէթուղ իս էրթանք անիւ մօտ, իս ասը ընչո՞ւ չըս թուղնը գեամ քիւ մօտ, ձի էսաց «դիւ գեօղիք«. իս ասը՝ «մինք ինչ ինք գեօղցը՛,» էսաց «մի գիրք գեօղցիր իք».

Ձիչանց թագաւուրն էլ ջառ խոռւ կանչիլ, ինչքան մարդ կէր անիւ, ամեն ժողվից, իրի, էսաց։—Վո՞ւվ նա գրքը սալղ կտէք, էրթայ դէերը, ես իմ կէս թագաւուրութիւն տամ անիւ։

Մարդ սալղ չիտոււ։

Թագաւուր էսաց.—Էլ մարդ մնացը, չէկը աս տեղ։

Ասըցըն.—Պառւու տղէն մնացը, չէկը։

Թագաւուրն էլ էսաց.—Կանչըցըք ան տղէն գեայ։

Տղէն բիրըն, թագաւուր էսաց.

Տզմ, գիտիմ, գեօղացած բերածըս, դիւ սալղ չը'ս իտայ։

Էսաց.—Սալղ կտամ ամա, չմտ հեռու տեղ ի, կեօ եօթ ծովիւ կզղըն։—Դիւ կարուղ իս էրթաս բերիս. դիւ բերիս, իմ կէս թագեաւորութիւն տըտամ քի։

Էսաց.—Էրկու ձկան ականջ ձի խամար բերէք, մէկ էլ ձիուն պուչ։

Էրկու ձկան ականջ բերըն, ադա ձկան ականջքիր կապըց. ի թալ վար ծուվիւն, ադա ձիու պուչն էլ իբի. մազիր իտու դիւս. տակ-տակ մազիր կապըց յիրար, ան մէկ գլեօխն էլ կպրից. Նստաւ ձկան ականջ-քիրու մէջ, գնաց եօթ ծուվիւ կզղին դիւս էլաւ. ադա գիրքն էյ վար մարմար քեարին ի. իրեք մարդ, ամին մէկ կացըն մը ուրինց ձեռ-բռնած՝ դրքը վրէն կայնած։ Սեյրիյ ի, վօւվ ձեռ տայ գիրք. տը զարկըն գլխավրէն կտպանըն։

Աղ մարդն էլ ադա ձիու մազ կախ իտու. գինաց դրքը վերէն, ադա կուպր կպաւ զգիրք. զմազ քեշից, գիրք խիտ իրի. կացընքն էլ թըփ-թըփ վար մարմար քեարըն զարկըն։

Սեհրի (կախարդական) էր, պատըլաւ. աղ մարդն էլ զգիրք առըց, իբի, իտու Չինանց թագեաւուրըն. Չինանց թագեաւուրն էլ յիւր կէս թագեաւուրութիւն իտու ադա մարդուն, զգիրք իտու զաղ-ջըկ. աղջըկն էլ զգիրք առըց, իբի, իտու զտղըն. տղէն էլ զգիրք իբի, իտու գյխէր. խէրն էլ զգիրք տարաւ իտու դարվիշին. էսաց։—Դար-վըշ, քիւ խնդիրը նա էր։

Դարվիշն էլ էսաց.—Խա.

Թագեաւուրն էլ էսաց.—Ադիկ վուչ բանմ չէ, խնդըրք էրայ, կատարիմ։

Դարվիշ էսաց.—Ըզի թու խնդիրք չկեայ. իմ խնդիրք նա դիրքն էր. ձիմ կտաս ըզի, ղըյպեմ ուսկը, իս կերթամ։

Թագեաւուր ձիմ' ղըյպէմ' ուսկը իտու։

Դաւրիշ ձին խեծաւ. ղաստ էրաւ Չինայ թագեաւուրը քեա-ղաք իրի Չինայ թագեաւուրը քեաղաք դիւս էլաւ։

Ուրբաթ օր սահաթ խնգին էլմ գինաց թագիաւուրու խաս պաղչէն, նստաւ։

Տեսաւ Բալաք Աչառ խիծի. էլմ էկաւ, էջաւ կըլթըլլթաց. չպըղղնիմ' մէ՛; ան թիւ, մէկ անթիւ դադրան, ամեն մէկ կալօն լցըն, խմաւ, գէմվի կանգնաւ, էրկուսն էլ սպանըց. Բալաք աչառ խիծաւ, դարձաւ գինաց։

Դարվիշն էլ իտիւէն գինաց։

Տիսաւ վուր դարվիշ, էսաց.—Իմ դաւրիշ անօթացը, էլմ էկաւ։ Դարվիշն իտիւէն գինաց, խասաւ բերդ։

Տխաւ էլմ Բալաք Աչառ կապըց սունվի. ա ընցկուն իզար, կալըն վուտնըվի խլնի վե։

Վլացուաւ, գեացըն տուն, հաց դըըն, կերան։

Դարվիշն էլ ինչ գիրք դըը անթը տակ. անթը տակէն չհանը դիւս։ Գիրք ծուցէն էխան, խտու ինի. էն էլ դարվիշի վուտ կզուաւ, պագնից, էսաց.

—Դարվիշ, դիւ մտիկ էրայ. ես կարդամ, դիւ կը տեսնաս։

Կարդաց զգիրք. փարըն, էրկու չանկըն, էրկու չալղըրճին. էրկու ուսկը աթոռ խիտքիր դիւռ բացըն. էկն ան տեւ. ուսկը աթոռ փարին նստաւ. մէկ յինք նստաւ վերէն. ձեռնիր թըլցըն իրարու թիւի վերէն, էրկու չալղըրճին զարկըն, էրկու չանկըն խաղցըն։

Դամըրէշը հեաչ գինաց. ընկեաւ ան տեւ, էլաւ ջիւր իթալ յէրես. սըըտ մաժըց. հեաչ էկաւ վերէն, էլաւ, նստաւ։

Էսաց.—Դարվիշ, մռ էսա մատնիք. ան աղջկայ մատնիքն ի. խատ մէմէկը միք մատնիքնիր փուխիր ինք, ըս մատնիք կուտաս. անիւ կասըս. թա չը'ս հաւատայ, աս ալ անիւ մատնիքն ի։ Կասըս, իս ան չըմ առնը, վուվ կառնը թը առնը, Աստուած անիւ խաց տայ։

Կասի.—Դարվէշ, քիւ խնդիրքն էրա, իս կատարիմ. իս ծուռն էր, ըզի ապատըցըր. իմ խուր քեաղաք անտէր էր, տէր էրըր։

—Իմ խնդիրք չկեայ, իմ խնդիրք էնա մատնիքն ի։

Դարվիշ մատնիք առըց, ձին խիծաւ. իրի Բասրայու դաշտ, աղջկան մօտ. մատնիք խտու զաղջիկ, էսաց.

—Ան կասը. «վուվ կառնը, թըղ առնը. քեանց իմ մէր, քեանց իմ քիւր կենայ ըձի։»

Աղջիկն էլ էսաց.—Վուվ տ'առնըմ, զքի տ'առնըմ։

Ան էլ էսաց.—Խմ։

Էսաց.—Աս տեւ կինանք թա էրթանք քիւ խուր քեաղաք։

Էսաց.—Իս Սպահանայ թագեաւուրն իմ, խըյրաթի տէր իմ, իս տ'էրթամ։

Էսաց.—Իլի, մալ, ապրանք բառնանք, էրթանք։

Էլան մալ, ապրանք բարձան. գեացըն։

Հալա ան Դավրիշ բռնած ի.

Զդարվիշ թուղ խտու, էրաւ յիւր վաղիր։



# 5.

## ՊԱՏԼԽԱՆԻ ՄԻՐԱՆԸ ԵՒ ՃԻՐԱՆԱՑ ԹԱԳԻՒՈՐ

**Մոկաց բարբառով** *

Պատլխանի Միրանի խէր էսաց.—Իս կը մեռնըմ, Սիվ սար Եկջըր չէրթաս։ Խէր մեռաւ, օրէն մէկ դսուց իրի տուն, չիմուց տակ ձէմ՝ ըլաւ.—Ա՛խ, Պատլխանի Միրան, դիւ կերթաս, պա ճա։

Ըրըշից տըսաւ մարդմ ճխան դրած ականջ՝ կեծ ան մարդ դռան ճխանը տակ։

Էսաց.—Պատլխանը Միրան, իս թըղնըս, քեանի ջիւր կայ իմ աչքիր. իս ըլնըմ քի խզմէքեար։

Պատլխանի Միրան էլաւ տը թըղնէր, մարդիկ ժողուան. էկըն ասըն.—Քիւ խէր գիւռօվէն ի էսա մարդ բռնիր, դրըր ճխանը տակ, մը թուղը։

Էսաց.—Տը թուղնըմ, ըլնը իմ քեաղաքն էլ աւըրը։

Զմարդ իթուղ, էլաւ անիւ խզմէքեար, գինաց ջիւր իլից վար ձիռներուն, լուացուաւ. Էդ խզմէքեար ա՛խմ՝ էրաւ։

Էսաց.—Ինչու խամար «ախ» էրըր, ըրբէ՛կ իս, ակլ՛ուղ իս, անօթը իս, թէ մէ քի խապարմ՝ տուը։

Էսաց.—Մ՛րդ ըղը խապար չտուը. «ախ» տէնըմ, պա չէնըմ, չէ՞ իսն էլ տեղացմ թագեաւուր էր, իսն էլ մարդ ունէր։

Էսաց.—Դիւ ո՛ր տեղաց թագեաւուրն էր։

Էսաց.—Իս Զիչանց թագեաւուրն էր, եօթ տարը խա քիւ խօր կռըւ էրը, քիւ խէր ըզի բռնից, իդի աս տե։

Էսաց.—Քի լըրաւունք տուիր իմ, գինա, քիւ թագեաւորութենին խասը։

Պատլխանը Միրան թուղ իտու. գինաց վար յիւր թագեաւորութենին։

Գիշիր ցերեկ «ա՛խ Պատլխանի Միրան, ա՛խ Պատլխանի Մի-

---

* Պատմած է Չացիկ Խեպոյեան։

ռան, օրմն էլ չմեռնէր. իմ աչքիր ինե քիւ իրես. գքի տեսնէր, նիւր մեռնէր»։

Պատլխանի Միրան էլաւ, Սիվ սար Ճէջըր գինաց, տըսաւ խազալմ՚ յէռջիւ ձիուն թռաւ-փախաւ, գձըն իթուղ լտիւ։

Խազալ կը փախը, չատ չհեռընայ, անցկուն կը հեռընայ, ձըն չխասնը. մինչիւ կէս յօր կուտռաւ ինք չիւր մարդիր յիտիւ գեացըն։ Պատլխանի Միրան մարդիրուն էսաց.—Դիւ յետ դարձէք, գեացէ՛ք, իս նա խազալը յիտիւ տ՚երթամ, մինչիւ նա խազալ չբռնըմ, չիմ դառնայ։

Մինչիւ յիրիկուն յիտիւ խազալըն գինաց. գինաց կամըլղի բիրան, վերէն մթնաւ. խազալ մտաւ մաչ կամըրն, կուրսաւ. ինք մնաց ան տե, Ճէ կէրի յետ դառնայ, Ճէ կէրի էրթայ. իւրը մզրախ իզար ճակտըն, ինքն վար ձիու քեամկին յէռջիւ ակախ գինաց։ Աք խազալն էլ գինաց. Խապար տարաւ Ձիչանց. Թագեաւուրըն էսաց.—Իլի, խասը. Պատլխանը Միրան կեռ կամըլխի գլեօխ, բէ, չխասնես մզրախ զգլեօխ տը ծակը. մէկալ կՃարէն դիւս տայ։ Խընգ վեց մարդ խըկից։—Գեացէ՛ք, զՊատլխանը Միրան անցկուն քնուկ առէք, բիրէք սղայ։

Գեացըն առըն բիրըն, դրըն յէռջիւ Թագեաւուրըն. Թագեաւուր կանչից.—«Պատլխա՛նը Միրան. Պատլխա՛նը Միրան։

Աչքիր էբաց, շաշմիշ էլաւ, էսաց.—Իս կամըլղի գլեօխն էր. մկայ ի՛նչխ էկեր իմ աս տե։

Թագեաւուր էսաց.—Ի՞նչ կմտածիս, դիւ իմ մարդ՛իր չը ճաչնաս ըզի էլ չճաչնաս. չէ՛, քիւ խզմաթքեարն իմ։

Պատլխանը Միրան նստաւ Թագեաւուրը կշտըն։

Թագեաւուր խըկից, խաց, կերակուլ իբի, կերան, խման, էսաց.—Պատլխանը Միրան, դիւ ասա տեղրա՛նք։

Էսաց.—Իսն էլ չըմ գտի. առաւօտիւ էկը Սիվ սար Ճէջըր, առաւօտնախառ խազալմ յէռջիւ իմ ձիուն թռաւ, ընկեանք յիտիւ մինչիւ կէս օր կուտռաւ, իմ մարդիր խա ձըկ էկըն կէս օր ինչ կուտռաւ, իմ մա՛րդիրուն ըսը՛, «յետ դարձէք, իս քանի նա խազալ կէրթայ, ան խազալը յիտիւ տէրթամ։ Խազալ չիւր կամըլղի գլեօխ բէրը. վար ձի՛ մթնաւ, ի՛ս մնացը ան տե, վար իմ ձըու քեամկըն. իմ ակախ դնացիր էր, ակախայ քիւ դիւանը մէջ։

Էսաց.—Պատլխանը Միրան, ան խազալ չէր, ան ի՛ս ճամբխըցը յիտիւ քի։ Էսաց.—Դիւ պէտքը ան խազալ տաս ըզը։

Էսաց.—Իս չըմ կէրի տայ քի. իս իմ խազալ տամ քի. ՝ոնըկ իմ չի։—Իս զան կուզըմ, ինչ իրի յետիւ ձը։

Էսաց.—Անըկ Շաւրանայ Թագեաւուրը աղջըկն ի, ուր խօր

մօտէն ըռըկի տարըմ՝ կայ, իկի՛ աս տև. իմ ճոխմ անիւ վըէն չընցի, կընը առաւօտն էլ էրԹայ։

Էսաց.—Պա էնը չտաս. իս քիւն չըմ առնը։

Էսաց.—Նէ՛ գլու, Ճէ խազալ. իս չըմ կէրի. կուզը՝ դքի Թուղ առնը։

Խատ մէկը խուսան, իրարու խաւնան, զխազալ առըց։

Չիչանց Թագաւուրըն էսաց.—Իս տէրԹամ իմ քեաղաք, ամիսըմ՝, էրկու իլաւ, իմ քեաղաք առանց Թագաւուրը։

Զիւր խազալ առըց, գինաց գիւր քեաղաք. ամին օր կերԹէր Ճէջըր ուր խամալ։ Վուզըրը աչ ընկեաւ զխազալ, սիրու առըց, խըւընդցաւ, էսաց.—Իս նա կնկեան չմօտանամ, տը մեռնըմ. պա ինչխ էնինք, ինչխն չէնինք. մէկ մարդմ բիրինք, սուտ խարսնիմ դնինք. ըսինք՝ վուզըրը լաճ տը պսակինք. կանչինք Պատլխանի Միրանի խազալ, բերընք խարսնըս։

Խարսնս դըըն, զՊատլխանը Միրանը խազալ կանչըցըն, Պատլխանի Միրան էսաց.—Իս չըմ իգեայ, գլու գինա, իս չըմ էրԹայ էրԹամ փօշման տըլնըս։

Զվուզըրը լաճ բիրըն, աղչկան խամալ խագլիցըն, լանըցըն խաղը, զխազալն էլ լանըցըն խաղը, կնիկտիր մէկ մէկ զվուզըրը լաճուն ձեռ Թուղըն. վուզըրը լաճ էրի, ընկեաւ խազալը ձեռ, խազալը ձեռ քեամըց, խազալն էլ էլաւ, ագիւցմ իգուր վար սրտըն, սպանըց. Թուղ իսու, իրի տուն. տունն էլ չկայնաւ, Շաւրանայ քեաղաք, գիւ դի՞ւր իս, չի իս էկը քի։

Ախչիկն էլ գինաց տուն, խօր իրեա, մօր իրեա չգինաց, մնակ մտաւ յեօդէմ ինի։

Վեանիմ օր վերէն ընցաւ. Պատլխանը Միրան կսկծուն խըւընդցաւ. մարդ չըր Թուղնը իւր իրեա էրԹէր. տը կանչէր ուր խոռցամուջ, ամեն առաւուտուն անիւ խաց, կերակուլ, ջիւր տանէր, դնէր խատ անիւ կչտըն, կէր դիւս, զդիւռ փակէր վերէն մինչիւ մէկէլ օր առաւուտին մարդիւ իրեա չըր տսնայ։

Պատլխանի Միրան յիրիկուն էրի տուն, մէր անցքում լացը աչքիր կուրցը, էսաց.—Մարէ՛, վի՛ լացիրըս անցկում։

Էսաց.—Ցի՛ւրի խազալ։

Էսաց.—Խազալըն յի՞նչ իլի։

Էսաց.—Խազալ գեացը, չէ՛ խազալ քի էսաց՝ «իս չըմ էրԹայ խարսնըս, գիւ փուշման տ՚էղնըս». գիւ ըսըցըր, «չէ՛, տէրԹաս»։

Խազալ գինաց ան տև, վուզըրը լաճ բերած՝ ախչկայ խամլ խագիւցած՝ իլի խաղցը, վուզըրը լաճ էկի՛ բռնը խազալը ձեռ. խազալը ձեռ քեամի, խազալ իլի ագիւցմ զարկի, վուզըրը լաճ սպանը. իրի տուն, կասեն էրաւ, ըռըգեաւ. Թուղ իտու գինաց։

Պատլխանի Միրան առաւուտուն էլաւ, գձըն խիծաւ. գինաց

Ջիւր կամըլղը գլեօխ, գձըն կայնացըցուց, մզրախ իտու գլխուն, քինաւ։ Չինչանց Թագեաւուրը խազալ իրի, Պատլխանը Միրանը տուաւ. դարձաւ, գինաց, խապար տարաւ խօր, էսաց.—Պատլխանը Միրան էկի, կամըլղը գլեօխ կայնը։

Ան էլ վից մարդիւ էսաց.—Խասըցէք, զՊատլխանը Միրան քինաթաթախ վիրուցէք, բիրէք աս տեւ։

Վից մարդ գեացըն, զՊատլխանը Միրան քնիւկ վիրուցըն, տարըն Թագեաւուրը դըւան դըրըն։

Թագեաւուր կանչից.—Պատլխանը Միրան. Պատլխանը Միրան։

Աչքիր էբաց, տիսաւ ինք էլմ Թագեաւուրը դիւանն ի։

Թագեաւուր էսաց.—Աստուած ինե, դիւ չըր իգե աս տեղըրանք. ինչխ իլաւ էկըր։

էսաց.—Խազալ ըռըկի, էկի։

էսաց,—Աս տեւ չէկը, գեացը ուր խօր քեաղաք, չէ՝ իս քի ըռը՝ «դիւ գուրծ չունըս ան խազալըն», իս քի ըռըցը, «իմ խազալ առ տար, զան մը տանըր», աս աս օր սդա ի, վաղ կերթայ ուր խօր քեաղաք. էրի՛, իմ խազալ տամ քի, գինա։

էսաց.—Չէ, չըլնը, իս տ'էրթամ իտեէն։

էսաց.—Աղբէր, տարուան մը ճանբախ ի։

— Տարուան մը ըլնը, տաս տարուան ըլնը, իս տ'էրթամ։

Չինչանց Թագեաւուրը խազալ էսաց.—Անպատճառ տ'էրթա՞ս.

էսաց.—Տ'էրթամ։

էսաց.—Դիւ էրթաս, լօն էլ տը գեամ խտ քի. դիւ ճանբախ չըս գըտի։ Խազալ իլաւ, էրկու չմըք (հողաթափ) իբի, մէկ էլ գտակ իբի, էսաց.—Նա գտակ կը դնըս քիւ գլեօխ. ցերեկ դի՛ւր էրթաս։ մարդ զքի չըտե, ան նա չմըք, մէկ դիւ խագը, մէկ իս, նա չմըք վուզն օր խաքնը՝ քեառասուն աւուր ճանբախ մէկ օր կերթայ։

Չիւրինց հեօղ քեար էրըն, գեացըն. քեառասուն աւուր ճանբախ մէկ օր կէրթըն, թա օրմ թա քանի օր ճանբախ գեացըն, խասան ծուվու բիրան. խազալ էսաց.—Կերթաս նահան քեար կը վիրըցիս, ձիում կեամ կեօ ադ քեարը տակ, ան ձիու կեամ կտաս ջիւր, խրեղէն ձիմ ծուվուց կըլնը, գեայ. դիւն էլ զկեամ կը դնիս բիրան, կը խիծնըս. զքի կը տանը, ծուվ կը խլցըցը։ Կեամ բերնէն կը խանըս. ձըն կը թուղնս, նա գդակն էլ կը դնըս քիւ գլեօխ, դիւ խալղի կը ելիս. խալղ զքի չըն ըեխի։

Պատլխանը Միրան գինաց զքեար չիւռ իտու, կեամ զքեարը տակէն էխան, իտու ջիւր, Սեւ ձիմ ծուվուց իբի, զգդակ առըց. զկեամ իդի ձիու բիրան. խաբր ուզըց խազալը մօտէն, էսաց.—Դիւ դարձի՛, գինա՛։

Խազալ էսաց.—Չէ իս տը կենամ աս տեւ, չիւր դիւ գեաս։

Պատլխանը Միրան գձըն խիծաւ, քշից վար ծուվըն, տարաւ ծուվ ընցուց. կնամ իխան. գառս քեաղաք էրաւ, գինաց, մտաւ քեաղքը մէջ. էսաց.—Իմ գդակ տը ճռպիմ՝ դնիմ իմ գլեօխ. մարդ ըզի տը խէ՞։

Գդակ էդիր գլեօխ, մանչ քեաղքըն գինայ. անօթը էր, էսաց՝ տ՚էրթամ նա քեապապճու մօտ. մհա ըզի տը խէ՞ թէ չէ՞։

Գինաց. մտաւ քեապապճու՚սքեան, քեապապ խաց առըց, իդի ան տե, կերաւ, մա՛րդ չխուսաւ. էլաւ սքճէն դիւս, մարդ չէսաց՝ փարէն տուր, նուր գինա՛։

Ելաւ գինաց թագաւորը սարէն. դիւ չըսըս—Խազալ ինչ ըկի՝ խօր, մօր իրիս չգեացը. գեացը մտե յեօդէմ ինի՝ Պատլխան Միրանը կակծուն խըւընդցի, ամին առաւօտու Խիւսամ խաց կըտանը էդու. դիւռ կը փակը վերէն, գեայ դիւս, մարդիւ իրեար՝ չտանայ, մարդ անիւ մօտը տը չէրթայ. լաճմ էլ իլըր ի։

Պատլխանը Միրան մնաց անտե մինչիւ առաւօտիւն, Խիւսամ դիւռ էբաց, խաց տարաւ, ան էլ Խիւսամուչ իտիւէն նիրս մտաւ. նստաւ ան տե, ան զԽազալ խէ. Խազալ զան չխէ, Խիւսամ խաց իդի ան տե, էլաւ դիւռ փակըց, գինաց. Խազալն էլ էլաւ, էրկու գդէլ կերակուլ կերաւ. պուտմ էլ ջիւր խմաւ, էլմ պարկաւ ուր տեղ, քինաւ։ Պատլխանը Միյան նստաւ վար կերակուլըն կերաւ, էթուղ էրկու գդէլ. ջիւրն էլ խմաւ, մէկ պուտ ջիւր էթուղ։

Խազալ ակախաւ, էլաւ նստաւ. կուժ առըց, ջիւր տը խմէր, տըսաւ մէկ պուտ ջիւր կայ՝ փչում խմաւ, կուժ իդի ան տե. կերակուլը իշից, կեօ էրկու գդէլ կերակուլ կայ ամնը մէջ, էսաց.—Ջանըմ, մա՛րդ չէկը աս տե, դռնիր փակ, կատու չէկը, անա կերակուլ ինչ իլի. դարձաւ էլ ինք էսաց.—չեղնը ես կերայ, չակախայ։ Էլմ պարկաւ ուր տեղ, առաւօտուն էլմ Խիւսամ դիւռ էբաց. իդի յէռջիւ. դառցաւ զդիւռ փակըց, գինաց։ Խազալն էլ էլմ էլաւ քիչմ կերակուլ կերաւ. քիչմ ջիւր խմաւ, պարկաւ։

Պատլխանը Միրան էլաւ, կուշտ կերակուլ կերաւ, ջիւր խմաւ. նստաւ ան տե։ Խազալ ակախաւ, էլաւ նստաւ, ձեռ իտու կուժ, ջիւր առըց, տը խմէր. էլմ ջիւր խմածըն, ըրըշից կերակուլ, տըսաւ կերակուլ նէլ կերած, էսաց.—Այ ջանըմ, էսիկ սատանա՛յ կայ ըստե, ինչ կայ. աստ ո՛ր տեղով կուգեայ։ Էսաց—ըճնճէք, ճըճնէք, ըզի նշանց կտէք, տուէ՛ք. թէ չէ՛, իմ խօր խանչար կտամ գձի յաւըտան-յաւիտեանըց կորցըրայ։

Պատլխանը Միրան չգըտը անիւ խօր տան դիւրը (չհաշուէ) զինք չանք չէտու. էսաց Խազալ։—Պատլխանը Միրանը քեասարը ինչ մանչ իմ սրտըն, դիւ վնուվն էք, ըզի չանք չտէք, ես ըզի անա փանճարէն թլիմ տակ, տը մեռնըմ։

Պատլխանը Միրան էսաց.—Ես ան ապով իմ էկի, ան զընք Թլի տակ մեռնը'. ալ ես էկիր իմ ինչ, զգդակ իդի գիտըն, խազալ տըսաւ. Թռաւ, էլաւ Պատլխանը Միրանը գլխօխ պագնից. էլաւ զդիւռ ծիծից. խիւտամ իրի դիւռ իրաց. էսաց.—Ինչ կանչիս։

էսաց.—Կերթաս խաց, ջիւր կառնըս կը բիրիս։

Էսաց.—Դիւ աս օր չմտ զատ ես կիրի։

Էսաց.—Շմտ աճէպ տըսար, ես էրկու օր սաղացիր իմ, իմ լաճն էլ կուտը։

Էսաց.—Ես կուզըմ չմտ ուտըս։

Գինաց խաց, կիրակուր, ջիւր առըց իբի, դարձաւ իլաւ դիւս։

Մէկ, էրկու, իրեք օրմ վըէն ընցաւ, խազալ զՊատլխանը Միրան տըսաւ, սաղացաւ։

Ղանդահարայ Թագաւուր էլաւ մարդ զըկից, էսաց.—«Գնացէք մըտ Շաւրանայ Թագաւուր. անիւ խազալ կտայ ընձի, Թը տայ. չտայ, տը գեամ, անիւ քեաղաք տ'աւըրըմ»։

Մարդիր էկըն, Թագաւուրը դիւան նստան, ասըցըն.—Մի Թագաւուր կըսը «անիւ աղջըկ կտայ ընձի Թը տայ, չտայ, ես տը գեամ, անիւ քեաղաք տ'աւըրըմ»։

Էսաց.—Ջանըմ, ես աղջըկ ինչխ տըտամ. ան դըուն անըկ ուզըց, աղջըկ փախաւ գինաց։ Վից-եօԹ տարը մնաց դիւս, դաուց ինչ իկի իմ աչք զանիւ իրիս չընկի. Եա' մարդ մատ ան կերԹայ, Եա' էն մատ մարդ կերԹայ. համին առաւուտուն խիւտամ խաց կը տանը, դիւռ փակը, ընքն էլ խըւանդը, լաճմէլ իլի, տիրօվը, անտէր չի, ես տամ։

Ան մարդիկն էլ դարձան գեացըն. խապար տըրըն. ինչն օր էսաց, ամին ասըցըն Ղանդահարայ Թագաւուրըն։

Էսաց.—Ըլեցէ'ք, ասկեար կապեցէք, էրԹանք. զանիւ քեաղաք աւրինք, զաղջըկ առնըք բիրինք։

Էլան ասկեար կապըցըն, էկըն Շաւրանայ քեաղքը բիւլուր, բռնըցըն, նստան. Շաւրանայ Թագաւուր առաւուտ էլաւ, տըսաւ. քեաղքը չուրս բիւլուր բռնած նստած։

Մարդ ղըկից մատ Շաւրանայ Թագաւուր.—Աղջըկ կտաս, տուր, չտաս զքեաղաք կաւըրըմ։

Թագաւուրն էլ էլաւ, գինաց մատ ուր աղջըկ, էսաց.—Հա՛յ աղջըկ, գինա՛, Ղանդահարայ Թագաւուր առ, քեաղաք մի՛ տու աւրիլ։

Էսաց.—Պատլխանը Միրանը Եաար ինչ մանչ իմ սրտըն, քիւ քեաղաք աւըր, ես զան չըմ առնը։ Մկայ դարձը գինա, իրիկուան գեաս, ես քի խապարմ կտամ։ Խէր դարձաւ գինաց։

Էսաց.—Պատլխանը Միրան, Թէ բանմ քինէ կգեայ, ես իմ,

զան չըմ առնը, ու թէ բանմ քինէ չգեայ, իլլի՛, ա՛ռ ըզի, գեաղտիկ փախինք, էրթանք։

Էսաց.—Խրկէ քիւ խօր, Ղանդահարայ թագեաւուրըն էսայ. —Ինչ անիւ մօտէն կգեայ թը էնը։

Խէլ էրի անտէ. աղջըկ էսաց. «Իս զան չըմ առնը, ինչ անիւ մօտէն կգեայ, թը էնը։»

Էսաց.—Աղջը, ինչ դիւ Պատլխանը Ֆեասար կերդուընաս, իմ խելքը իմ գլխուց կերթայ։ Խէլն էր, ըռըգեաւ, գինաց։

Խազալն էլ էսաց.—Դէ՛, բանմ քինէ կգեայ, էրմայ։

Պատլխանը Միրան էլաւ զէդ դդակ էդըր զուր գլեօխ, գինաց ծուվու բիրան. զկեամ աւզըց էխան, էզարկ ջիւր, Սիվ ձըն ծովուց իրի դիւս, ձեռքմ սիվ չուր վրէն. ձեռքմ էլ ճազ։

Էլաւ չուրիր խադեաւ. զճազիր կապըց, կեամ իդի ձիու բիրան. էլաւ խիծաւ. քշից գինաց մանչ ասկեարըն։

Ասկեար բաժինմ կտռից, մնաց էրկու։ Դարձաւ էրի, տարաւ զձըն ծովու բիրան. զկեամ . . գինաց թագեաւուրը սարէն։

Խազալ կանչից խուցամուչ.—խաց, կիրակուլ չմտ բի։

Խցամ խաց կիրակուլ էրի ան տե, ինչ խցամ խաց կը բիրէր, Պատլխանը Միրան դդակ կը դնէր, ինչ կերթէր, դդակ կը դնէր գիտըն։

Խաց կիրաւ պըծաւ, կանչից խուցամուչ, էսաց.—Կերթաս, իմ խօր խապար կտաս, գեայ։

Խցամ գինաց, թագեաւուրըն էսաց.—Խազալ զքի կուզը։

Թագեաւուր էրի մատ աղջըկ, էսաց.—Աս օր ի՞նչ կէր, ի՞նչ չկէր։

Էսաց.—Մը՛ խօսայ, աս օր սիվ ձիաւուրմ էրի, չըմ զըտի Աստուծուց էրի, ուստը էրի, ընկեաւ ադա մանչ ասկըրին, մինչիւ իրեկուն կըըւ իտու. բաժիմ սպանից, էրկու մնաց։

Էսաց.—Չէ՛, իս քի ասըցը. «Պատլխանը Միրանը Ֆեասար ինչ մանչ իմ սըրտըն, իս զան չըմ առնը։»

Էսաց.—Աղջը, իս քի չատ կուզըմ, ադա Պատլխանը Միրան ինչ դիւ կերդուընաս, ինչ դիւ քեարմ զարնիս վար իմ գլխիւն։

Խէրն էլմ ըռըգեաւ, իթուզ գինաց։

Առաւուտուն Պատլխանը Միրան զուր գդեակ էդիր գլեօխ, գինաց ծուվու բիրան, զկեամ . . . անիւ չորիր, անիւ ձըն ամին սիպտակ՝ խեծաւ, գինաց ընկեաւ մանչ ասկրըն, զասկեար սպանից բիւլուր, գինաց զթագեաւուրը տեղն էլ առըց, ադա թագեաւուրըց խարճ առըց Շաւրանայ թագեաւուրը խամար, դարձաւ էրի . . . ։

Գինաց սարէն գդեակ էդի, թագեաւուր էրի մատ աղջըկ. աղջըկ էսաց.—Աս օր ի՞նչ կայ, ինչ չկայ, քի մարդ իմցաց էրի՞։

Էսաց.—Աս օր բեօզ ձիաւորմ էրի, զասկեար ըմեն սպանից, ան Թագեաւուրը տեղն էլ առըց, ձը խամար էլ խարճ կապըց։

Էսաց.—Չէ՛, ես քի ասըցը «Պատլխանը, Միրանը ճեասար ինչ մանչ իմ սրտըն՝ ես զան չը՛մ առնը։»

Էսաց.—Աղջը, ինչ դիւ զՊատլխանը Միրանը գլեօխ կերդուըննաս. եաճ նախրուըդ իլի, եաճ խուզիւ, վերէն ծռիր ես, չըմ գըտի. աս աւուր ձըաւո՛ւրն էր թէ յերեկըն։

Էսաց.—Պատլխանը Միրա՛ն. չիւր յի՛փ գքի տը պծ՛խիս, ի՛լ դիւս։

Պատլխանը Միրան զգդեակ էդր դետըն. Թագեաւուրն էլ տըռաւ ճճելմ, չուտին, չխմին, քամաճա էնըն։ Գինաց զՊատլխանը Միրանը գլեօխ պագնից. էսաց.—Զխօ դի՛ւ ես առը. ի՛լ, նստը քախս։

Էսաց.—Քիւ Թագեաւորութեն պիրօզ կինայ քի. ես տ՚էրթամ։

Էսաց.—Ջքի չըմ թուղնը էրթաս։

Քեաղքը դռնիր բիւլուր էտու փակիլ, էսաց.—Պատլխանը Միրան չէրթայ։

Պատլխանը Միրան զուր գդեակ էդի զուր գլեօխ, էլաւ զկնըկ, զլաճ առըց, գինաց, քեաղքէն ընկեաւ դիւս. մարդ չը տըսաւ. գդեակ գլխուց առըց վեր։

Թագեաւուր գինաց յեօղէն, ճա՛ աղջըկ, ճա՛ տղէն, էլաւ տըռաւ օր թէ դաշտը մէջ կերթան. ընկեաւ յիտիւ, մինչիւ Թագեաւուր գինաց. տը խասնէր, Պատլխանը Միրան զկեամ մտուց ծուվ, կարմիր ձըն ծուվուց էլաւ, էլաւ ինք, կնըկ զձըն խիծան. հա՛յ վար ծուվուն գեացըն։ Դարձաւ էրի ուր քեաղաք։

Ձըն զՊատլխանը Միրան ծուվուց էխան դիւս. գինաց մատ ան խազալ, ինչ կայնիր էր ուր տեղէն յիրուր չառը, չնստը, չիւր ծնկնիր գեացը մանչ խուղուն։

Էլան զուրինց չմկտիր խաքեան, տաս աւուր վերէն էկըն Ջիչանց Թագեաւուրը քեաղաք, Ջիչանց Թագեաւուր էսաց.—Էրի, քիւ քեաղաք մ՚էրթայ, իմ Թագեաւորութեն էլ տամ քի, նստինք, ուտինք, խմինք. չիւր մեռնընք։

Էսաց.—Չէ, տ՚էրթամ, ես չըմ կայնը։

Պատլխանը Միրան էլաւ, զուր հեօզ էրաց, զը մէկէլ խազալն էլ առըց, գեացըն ուրենց քեաղաք։



6

# ԼՈՒՍԱՒՈՐ ՄՈՐԹ

**Մոկաց բարբառով** *

Մըրրայ քաղաք պառւած կէր, ուր տղէն։

Տղէն մէկ օր մօր էսաց.—Մարէ՛ իմ խօր գուրծ փեշէն ի՛նչ էր։

Մէր էսաց.—Քիւ խօր գուրծ ավճութին էր։

Տղէն էլաւ, բւանկ առըց, գինաց մեշէն. մինչիւ յիրիկուն. կան իրի, բանմ չգնտաւ ապանըր, դարտակ իրի տուն։ Առաւուտուն էլմ առըց գբւանկ՝ գինաց. էլմ մինչիւ յիրիկուն կան իրի. բանմ ձեռ չընկեաւ. էլմ՛ դարձաւ, իրի տուն։

Առաւուտուն էլաւ, զբւանկ առըց, էսաց.—Իս աս օր բանմ չզանիմ, իս քո՛ւ տուն չըմ իգեայ.—Էրդըւցաւ, գինաց։

Մինչիւ յիրիկուն կան իրի. բանմ չգնտաւ ապանըր, մԹնաւ։

Ցերդըւցի, տուն չէրԹայ, մնաց ծուվու բիրան. զընք իտու յեռջիւ քեարըն, մնաց ան տեւ։

Տըսաւ լուսմ ծովէն իլաւ., դիւս իրի. իրի մօտացաւ տղըն. տղէն էլ իզար ան ճանավար, ապանից. գինաց մուրԹից, զմուրԹ առըց, իԹալ վար Թիւին, գինաց տուն, էսաց.—տանիմ, Թլիմ ան տեւ, իմ մէր կը նստը վրէն, լուս կտայ, ճախարակ կմանի, չատ աղէկ բան ի։

ԻԹալ վար Թիւին, գինաց քեաղքը մէջ:

Վազիր դիւռ կանգնէր էր, էսաց.—Տղա՛, ադա մուրԹ տո՛ւ ըզձը։

Տղէն էսաց.—Ձըմ իտայ, մեք fեասիկ մարդ էք. ճրագ լուս չունինք. կը Թլիմ ան տեւ, լուս կտայ, իմ մէր ճախրակ կը մանի։

Ինչ էրաւ վազիր, տղէն զմուրԹ չէտու. առըց գինաց։

Գինաց դիւռ.—Մա՛րէ էսաց, դիւռ բաց, իս էկայ:

---

* Պատմած է Ջասիկ Խեպոյեան:

էսաց.—Կանգնը, ճրագ կալուցիմ. գիւռ բանամ։

էսաց.—Մա՛րէ, ճրագ մը էնը, իմ խիտ ճրագ կայ։

Դիւռ ի բաց, մէր ինչ զմուրթ տիսաւ, ուրախացաւ.—Աղ ի՛նչ բան է, էսաց։

Առըն գեացըն տուն, տուն քեան ցցերեկ չա՛տ լուսացաւ. մէրն էսաց.—Վ,ուրդի՛, ան ինչ մուրթն դիւ բերըր, քեաղքը մէջ դէի մարդ չտիսա՛ւ։

—Մարէ՛, վազիր գձը տիսաւ.—Բանմ չըսա՛ց քի։

—Էսաց «մուրթ տու ըզձր». իս չտուր։

Մէր էսաց.—Վ,ուրդը՛, ան զքի չարմ՛ տ՛էցքը։

Առաւուտուն վուզիր իլաւ, գի՛նաց Թագեաւուրը մօտ, էսաց. —Թագեաւուր ապրած կինաս, մէկ փուսքմ պառաւու տղէն բիրի, ան քի կը վայելէ, բերէս, Թէկս դիւանխանէն, գըշիր ցիրեկ լուս տայ։

Թագեաւուրն էլ խրկից յիտիւ պառաւու տղըն, աղ մարդ պառաւու տղըն էսաց.—Թագեաւուր զքի կուզը։

Էսաց.—Թագեաւուր ի՛նչ գուրծ ունը իմ խիտ։

Էսաց.—Իս չըմ գտի, կըսը պառաւու տղըն թը գեայ։

Պառաւու տղէն էլաւ, գինաց Թագեաւուրը մօտ։

Էսաց.—Թագեաւուր ապրած կինաս. ընչի՛ ըզձը կանչիր իս։

Էսաց.—Ցիրկուն դիւ ի՛նչ իս բիրի քեաղքը մէջ։

Էսաց.—Իս բանմ չըմ բիրի. մէկ մուրթմ իմ բիրի, Թէիր ըմ տուն, իմ մէր նստը վրէն, լուս տայ, ծախըրակ մանի. մինք Ֆուղարայ մարդ ինք, ճրագլուս չկայ։

Թագեաւուր էսաց.—Կերթաս ան մուրթ կը բիրիս՝ բի, չբիրիս, զքիւ վըզ կը զարկիմ։

Տղէն լալելէն իլաւ, գինաց տուն։

Մէր էսաց.—Վ,ուրդը՛, ինչո՛ւ կուլաս։

—Թագեաւուր կըսէ՝ «մուրթ չբիրիս զքիւ վըզ կը զարկիմ»։

Մէրն էսաց.—Վ,ուրդը՛, չէ՛ իս քի ըսըցը. «վուզը զքի չարմ տ՛ըցզը. վուրդը՛, իլի, ձո՛ռ տա՛ր, Աստուած անիւ պալայ տայ»։

Տղէն իլաւ, զմուրթ առըց գինաց, իտու Թագեաւուրըն, Թագեաւուրըն էլ վուզըրըն էսաց.—Աղէկ պախշիշմ կտաս պառաւու տղըն։

Վ,ուզիրըն իլաւ քսան փարայ իտու պառաւու տղը ձեռ։

Պառաւու տղէն գինաց տուն, էսաց պառաւ.—Վ,ուրդը՛, պախշիշմ չտուր՛ն քի։

Էսաց.—Մարէ, Թագեաւուր էսաց՝ «աղէկ պախշիշմ կտաս», վուզիր քսան փարայ իտու։

Էսաց.—Վուրդը, Աստուած անիւ պատիճմ տայ, թլէ՝ յակա-նատ, թը կինայ ան տեւ։

Զքսան փարան իթալ յականատ։

Վուղիր թագեաւուրըն էսաց.—Թագեաւուր ապրած կինաս, սաս մուրթըն պէտքը Ֆըլի ուսկուր բիրին. մէկ սարեմ չընին, մուրթ դնին մէջ. լուս տայ։

Թագեաւուր էսաց.—Վուղիր, Ֆըլի ուսկուրը վուվ տէրթայ. անցկուն Ֆըլի ուսկուր բիրի. իս սարայ սամ չընիլ։

Վուղիր էսաց.—Ո՛ր ան մուրթ բիրի, ան կէրի բիրի։

Էսաց.—Մարդ ճամբխի պառւու տղէն թուղ գեայ։

Մարդ ճամբխըցըն պառւու տղըն իտիւ։

Պառւու տղէն էլաց։

Մէր սասաց.—Վուրդը՛, ինչո՞ւ կլաս, Աստուած վուղըըն պա-տիճմ տայ, գինայ. մը՛ վախընայ։

Պառւու տղէն գինաց մա թագեաւուր։

Թագեաւուր էսաց.—Տ՛էրթաս, Ֆըլի ուսկուր բիրիս, թը բի-րիր՝ բիրիր, թը չբիրիր՝ գքիւ վըզ կը զարկիմ։

Պառւու տղէն էլաւ ձեռքիր խաչից ծուց, լալիլէն իրի տուն։

Մէր էսաց.—Վուրդը՛, ընչո՞ւ կլաս։

—Մարէ՛, էսաց, իս տ՛ըլամ, պա չըլա՛մ. թագեաւուր կըսը, «անցկուն Ֆըլի ուսկուր տը բիրիս, իս ձը խամար սարեմ տամ չնիլ.» իս ինչխ տ՛էրթամ, Ֆըլի ուսկուր բիրիմ։

Էսաց.—Վուրդը՛, մը վախենայ, Աստուած օղուրմած ը, ո՛ր դիւ կերթաս, թագեաւուրըն կըսըս՝ «խարըը խազար ուղտ կուզըմ, խընդ խազար բեռ աղ կուզըմ, խընդ խազար բեռ գընի կուզըմ, խընդ խարըը պալքանի. խընդ խարըը էլ ուղտ բառնուղ, ամինն էլ վու-գըըը ֆիսայից տըլնը, յիւրըչ մարդիւ ընը, չըմ էրթայ»։

Տղէն էլաւ, գինաց մա թագեաւուր անցկուն էսաց։

Թագեաւուր էսաց.—Վուղի՛ր, լսա՛ր, ինչ էսաց, կը պատրաս-տիս՝ պատրաստէ. չըս պատրաստի, գքիւ վըզ կը զարկիմ։

Վուղիր էսաց.—Թագեաւուր ապրած՝ մէկ օր տաս ընձի մօհ-լէթ, մինչէւ իս պատրաստիմ։

Պատրաստութին տըսաւ, պառւու տղէն էլաւ, գինաց տուն։ Մէր էսաց.—ինչ էրըր, վուրդը՛։

Էսաց.—Մարէ՛, ըըցը, վուղիր պատրաստութին տըսաւ։

Խապար օրեօխկիցըն պառւու տղը իտիւ «թուղ գեայ, էրթայ»։

Մէր էսաց.—Վուրդը՛, քեառսուն աւուր ճամբախ ը, կերթաս, սարը մէջ կեօլ կայ, աղա կեօլիւ ջրիր կը խանէք դիւս, գընին տեղ կը դարդըկէք. աղա աղն էլ կը տանէք, պալըզէք քեարիրու վերէն, կերթէք, հեռուն տեղ կը նստըք, քամաշա կէնըք. Ֆլիր կգեան,

զաղ կուտըն․ գգընին կը խմին կը սարխօշնան, ադա խընդ խարըր պալքաճիք թ՛ընկնին մէջքիր, բուլուր ջարդին, զուսկուրքիր բառ-նաք, բիրըք։

Պառւու տղէն էլաւ գինաց, վուզրին էսաց.—Քեառասուն օր ա՛էրթամ, քեառասուն օր տը գեամ․ կուզըմ անցկուն ուտիլ խմիլ ընը, մինչիւ գեանք, անուԹը չմնանք․ որ անուԹը մնանք․ մէկ խատ էլ ուսկուր չըմ բիրի։

Պառւու տղէն զըեռնիր իբարձ․ ուր մարդիր առըց, գինաց։

Քեառասուն օր ինչ քմաւ, գինաց սարը մէջը։

Էսաց ՚ուր մարդիրուն.—Կուզըմ էսա կեօլը ջրիր ամին խուր-Թըք, Թափիք դիւս։

Էլան ադա ջրիր ամին խուրԹըցըն, Թափըցըն, ազն էլ տարան քեարիրու վերէն պարզըցըն․ գինացըն, զատը նստան, քամաշա էրըն։

Տիսան Ցլիր էկան, ըզ ազ կիրան, ծարաւցան․ էկան վար ջրին, գգընին խման, բուլուր սարխօշցան, գիրար ջարդ ու բուրդ էրըն։

Պալղաճիքն էլ ընկեան մէջքիր, սաղ մնացածն էլ բուլուր ջարդիցըն, ուսկուրքիր խանըն, զըեռնիր բռնըցըն․ բարցըն, ճան-բախ ընկեան, ինչ քեառասուն օր քմաւ, էկըն Մըլըայ քեաղաք դիւս էլան։

Տարաւ զըիռնիր Թափից։

Թագեաւուր տըսաւ, էսաց.—Վուզիր, պառւու տղըն մէկ աղէկ պախշիշ տու։

Վուզիրն էլ էլաւ մէկ կուռուշ էդի պառւու տղը ձեռ։

Պառւու տղէն էլաւ, գինաց տուն։

Պառաւ էսաց.—Վուրդը՛, էկըր, Ցլի ուսկուրքիր բիրըր․ Թա-գեաւուր քի պախշիշ չէտո՞ւ։

—Մարէ, Թագեաւուր էսաց՝ «աղէկ պախշիշ տոււ», վուզիր մէկ կուռուշ վիրաւց, էդէ իմ ձեռ։

Էսաց.—Վուրդը՛, ան կուռուշն էլ Թալ մատ ան քսան փա-րըն, Աստուած անիւ պատիճմ տայ, չազատուը։

Տղէն կուռուշն էլ ըԹալ մատ ան քսան փարըն։

Վուզիր էսաց.—Թագեաւուր ապըրած՝ սաս Ցլի ուսկուրքիր ինչ բիրէ, պէտքը ուստայ Մուրատ գեայ, սարէն չընի․ վարպետ Մու-րատ չըլնը, մարդ չկէրի չընի։

Վարպետ Մուրատն էլ քեառասուն տարը կայ մեռը։

—Վո՞ւվ ա՛էրԹայ վարպիտ Մուրատ բիրը։

—Ա՛ր Ցլի ուսկուրքիր բիրիր ի, ան տը բիրի ուստայ Մուրատ։

Մարդ խրկիցըն, պառւու տղէն էկաւ Թագեաւուրը մօտ։

Էսաց.—Պառաւու տղա՛, քինէ կուզմ ուստայ Մուրատ զարեմ՝ ըզի խամար չընը։

—Թագեաւուր ապրած. ուստայ Մուրատ քեառասուն տարը կայ մեռը։

—Բէրըր՝ բէրըր, չբէրըր՝ գըխ վըր կը զարկիմ։

Տղէն մաղսէն էրաւ. էկաւ տուն։

—Վուրդը էսաց մէր, ինչ մաղսէն էրիր իս, ինչ կայ։

—Պա ինչխ մաղսէն չէնիմ, Թագեաւուր էսաց՝ «տէրթաս ուստայ Մուրատ բէրըս, ուստայ Մուրատ քեառասուն տարը կայ մեռը, իս մեռուկ մարդ ինչխ գերեզմանէն տը խանիմ, բէրըմ։

Մէր էսաց.—Վուրդը, մը վախենայ, քիւ Աստուած կանչի, գինա։ Կերթաս Թագեաւուրըն կըսըս, «քեառասուն անծըն ճուճակ (ոչխար որ նոր ծնելու է) վուզըր մօտէն կուզըս»։

Տղէն էկաւ մատ Թագեաւուր, ուզըց։

Թագեաւուրն էլ էսաց.—Վուզիր, տըտաս ինչ կուզը։

Քեառասուն ճուճակ առըց, գինաց գերեզմանատնիր, ան տե քեառասուն էլ մորթից, ան տե իփից, աղքատնիրուն կերցըցուց, գինաց յիւր չուքիր իզար ուստայ Մուրատը գերեզմնը յառաջ. ուր խնդիրք Աստուծուց էրաւ, կանչից.—Ուստա՛ Մուրատ, ուստա՛ Մուրատ, վի ելի։

Աստուծոյ խրամանով ուստայ Մուրատ ելաւ, նստաւ։

Էսաց.—Աղբէր, ինչ կուզըս ըինէ. քեառասուն տարը կայ մեռիր իմ, չը՛ք Թուղնը իս խանգըստ մնամ։

Էսաց.—Ուստա՛ Մուրատ, կը խնդրիմ, Թագեաւուր ըզի խրկիր քիւ իտիւ, տը գեաս, սարեմ Թագեաւուրը խամար չնիս, Թը չգեաս, Թագեաւուր իմ վըր տը զարկի։

Ձեռքմ չիւր էլ ուստայ Մուրատը խամար տարը խիտ։

Ուստայ Մուրատ չիւրիր խագեաւ, պառաւու տղէն խնդրաց. էկըն Թագեաւուրը մօտ. ուստայ Մուրատ էսաց—Թագեաւուր ապրած մնայ, քեառասուն տարը կայ իս մեռիր իմ, ինչ կուզըս զինէ։

Թագեաւուր էսաց.—Իս կուզըմ սաս Ֆլի ուսկուրքիրուց սարեմ զի խամար չնիմ։

Էսաց.—Շա՛տ աղէկ, կը չնիմ, իմ կռան, կաւ դդէլ աս տեղ չէ. իս մեռիր իմ, մինչիւ աս օր իմ կռան, կաւ դդէլ կեծ մարդագէլ պառաւու դռան փակ տան ի։

—Է՛, վռւվ տ՛էրթայ, բէրը։

Վուզիր էսաց.—Վռւվ, ուստայ Մուրատ բէրի. ան տ՛երթայ բէրը, ինչ զմուրթ բէրըց։

Թագեաւուր էսաց.—Պառաւու տղա՛, կերթաս բէրէս՝ բի, չբէրէս, քիւ վըր կը զարկիմ։

Պառաւու տղէն մաղեն ելաւ, գինաց տուն։

Մէր էսաց.—Ուստայ Մուրատ բէրը՛ր։

—Ուստայ Մուրատ բէրը, մկայ ուստայ Մուրատը կռան, կաւ գդէլ, կեօ մարդագէլ պառաւու դռան փակ տուն ի, կուգը. ես ինչխ ա՛երթամ, բէրիմ։

Էսաց.—Վուրդը, Աստուած ան վուզըրըն պատիճմ տայ, ան յիտեւ քի կան կգեայ, գքի կուրխսայ. վուրդը՛, մը՛ վախինայ. քիւ Աստուած կանչը, գինայ, կերթաս սարմ կըլնը քիւ յառէջ, աղ սարը քարերը արծըլը տըսակ են. կերթաս, ինչ խասնս անտե, կըսըս. «ես աշխարք կան էր էկի, զգնա անուշ սար չըր տըսի». ան կընցնիս, կերթաս, սարմ էլ կգեայ քիւ յառէջ. աղա սար ամին փուշ ի, կըսըս, «ես աս քան կան էր էկի, աս տըսակ կակուղ փուշ չէր տըսի»։ Անիւնք ճանբախ կտան, կընցնիս, կերթաս. կերթաս գիտմ կըյնը քիւ յառէջ, ան ջրու տըսակ աշխրքի վերէն պղտոր ջիւր չկայ, փչում ան ջրէն կը խմիս, կըսըս. «ես աշխարք կան էր էկի, ես աս ջրու տըսակ անուշ, զուլալ, քաղցր ջիւր չըր տըսի»։ Ջիւրն էլ ճամբախ կտայ, կընցնիս։ Կերթաս, պառւը տունն էլ մանչ դաշտըն ի, դիւ քիւ բաղդ, թէ պառաւ քինած ի, կը բիրիս. թը չէ, գջի կուտը անպատճառ. վուրդը՛, գքիւ Աստուած կանչը, գինմ, մը՛ վախենար։

Տղէն էլ ելաւ, գինաց թ՛աւուրմ՛ ճամբախ թը տաս աւուր գինաց, սարըն մօտացաւ. սարըն էսաց.—Ես ան՝քան ախշարք կան էր էկի, զգնա անուշ սար չըր տըսի։

Սար ճամբախ. իբաց, էսաց.—Էրի՛, գնա՛, զգնէմ տալը ես աս տեղն իմ, մարդ ձը զադա խապար չըր տուը։

Սար ընցաւ, գինաց, փշըն մօտացաւ, էսաց.—Ես ընցգնեմ ախշարք կան էր էկի, ես զգնա կանանչ, կակուղ փուշ վար ախշքըն չըր տըսի։

Փուշ իրարուց բացուաւ, տղէն ընցաւ, գինաց։

Գինաց, գիտուն մօտ խասաւ, կզուաւ վար գիտուն, փչուըմ՝ ջիւր խմաւ, էսաց.—Ես ընցգնեմ աշխարք կան էր էկի՝ զգնա անուշ, քաղցր, զուլալ ջիւր չըր տըսի։

Գիտն էլ ճամբախ էտու, տղէն ընցաւ գինաց։

Գինաց, պառաւու տուն մատացաւ, տիսաւ պառաւ քնած ի, ձեռ խտու, գկռան, կաւ գդէլ առըց, յիտ դարձաւ։

Քիչմ հեռըցաւ, պառաւ ակախաւ. տիսաւ կռան, կաւ-գդէլ առըց, կերթայ։ Ելաւ ընկեաւ յիտեւէն, էսաց.—Դի՛ւր տը պըծնըս իմ ձեռնէն, մինչիւ գիտուն բիրան կերթաս, գիտ ինչխ ա՛ընցնիս։ (Գիտն էլ, փշըն էլ, սարն էլ սիհըրի էր)։

Տղէն ինչ էկաւ գիտու բիրան. պառաւ կանչից։

—Գիտ, թուղ մը տայ, էրթայ. մինչիւ ես խասնիմ։

Գիտը կանչից.—Չէ, ընցգնեմ տարը կայ, ես աս տեղն իմ, մարդ մը չըր ըսի «անուշ, զուլալ ջուր», աս տղէն ինչ իրի, էսաց:

Գետ ճամբախ իբաց, տղէն ընցաւ:

Իրի, փշըն մատացաւ, պառաւ կանչից:

—Փո՛ւշ, բռնի, մինչիւ ես խասնըմ:

Փուշ էսաց.—Զըմ բռնը, ընցգնեմ՝ սարը կայ ես էս տեղն էր. մարդ մը չըր ըսէր «կակուղ, կանանչ փուշ». աս տղէն ինչ էրի էսաց:

Փուշ ճամբախ իբաց, տղէն ընցաւ:

Պառաւ կանչից.—Գիտ լ ընցար, փուշն էլ ընցար, վարծլեստաննուն ինչխ տ՚ընցնիս:

Իրի սարըն մատացաւ. պառաւ կանչից.—Սա՛ր, մը՛ թուղնը մինչի՛ւ իս գեամ, խասնըմ:

Սար կանչից.—Ինչո՛ւ խամար չթուղնըմ, ընցգնեմ՝ տարը կայ, ես աս տեղն էր, մարդ ըղի չէր ըսի «զգնա անուշ սար չկայ», աս տղէն ինչ իրի աս տե, էսաց:

Սար ճամբախ իբաց էսաց.—Էրի՛, ընցի:

Տղէն ի՛նչ զսար ընցաւ, պառաւ կսկծու բղգեաւ (պայթեցաւ):

Տղէն զկռան, կաւ գդէլ իբի, իտու ուսայ Մուրատ:

Ուսայ Մուրատն էլ բացլից, սարէն չնից, պրծաւ:

Ուսայ Մուրատ պառւու տղըն էսաց.—Խնդրիմ քինէ, ինչխ ըղի բիրիր, անցկուն էլ ըղի տանըս իմ տեղ:

Պառւու տղէն իլաւ, ուսայ Մուրատ առըց, գինաց գերեզմանանոցն, չուէիր իզար յէռջիւ գերեզմնին, խնդըրք Աստուծուց էրաւ, էսաց.—Աստուած, քինէ կուզըմ ուսայ Մուրատ էլմ ուր գերեզմանն մտնի:

Գերեզման բացուաւ, ուսայ Մուրատ մտաւ ուր տեղ:

Պառւու տղէն էլաւ, էրի յիւր տուն:

Վ.ուզիր էսաց.—Թագեաւուր ապրած կեաս, սարէն չնիցըր, մուրթ թլցիր ի սարէն, լուս կտայ, դէ՛ւ մնակ կը նստըս ինի. Նշանակութին չունը. պէտքը խրկիս, Պապը Ֆրէնկի աղջըկ բիրիս. էրկուս իրարու առնըք, խատ իրարու նստէք:

Թագեաւուր էսաց.—Շատ աղէկ կըսըս, վո՛ւզ տ՚երթայ. Պապը Ֆրէնկի աղջըկ սը բիրի, կուռվ չը բիրուը, խաբրուվ չէրթայ:

Վուզիր էսաց.—Էս սարէն վո՛ւզ իտու չնիլ, էնքան զատ վո՛ւզ իրի, էլմ էն մարդ կը բիրը:

Էսաց.—Խրկի պառւու տղըն բի աս տե:

Մարդ գինաց, էսաց.—Թագեաւուր քի կը կանչի:

Մէր էսաց.—Վ.ուրդը՛, իլի՛, գինա՛. Աստուած ան վուզըրն պալէն տայ. ան քի իտիւէն կան կգեայ, վուրդը՛, մը՛ վախինայ:

Պառաւու տղէն կլիւգեայ թագաւուրըն մօտ։

Էսաց.—Թագեաւուր ապրած՝ ինչ կայ։

Էսաց.—Քինէ կուզըմ, էրթաս Պապը Ֆրենկը աղջըկ բերես. բերես՝ բէ. չբերես՝ վըզդ կը զարկեմ։

Տղէն մաղտէն էրաւ, գինաց տուն։

Մէրն էսաց.—Վուրդը՛, էլմ ինչ մաղտէն էրեր ես։

Տղէն էսաց.—Ըզի կը ճամբէր, կասը, «Պապը Ֆրէնկի աղջըկ ձը խամար բէ, չբերես վըզըդ կը զարկեմ»։

Էսաց.—Վուրդը՛, Աստուած ան վուզըըն պատիճմ տայ, կըլնըս կերթաս Թագեաւուրը մօտ, կըսըս. «Թագեաւուր ապրած, կուզըմ քինէ խընդ խարըր աղջըկ. ամեն մէկ տըսակ-մէկ թայ. անիւնց խամլ (հագուստ) մէկ տըսակ, քինէ կուզըմ մէկ կեամիմ, ան կեամին էլ ամին ակնունք տըլնը, ախշըրքի մէջ ալ ան տեսակ կեամի տը չըլնը. քեառասուն ձեռք սազ տըլնը, քեառասուն ձեռք էլ դահուլ, զուռնայ տըլնը. յիսուն խատ էլ չանկի տըլնը. մէկ ամսուան ալ խընդ խարըր մարդու ուտելիս, ինչ ուտելիս կայ մանչ ախշըրքին ամեն վուզըրի քիսայից տըլնը։

Թագեաւուր էսաց.—Վուզի՛ր, լսա՞ր։

—Թագեաւուր ապրած՝ էսաց. խնդրիմ, քաան օր ժամանակ տաս. մինչիւ կեամիմ՝ տամ չնիլ. աղջնիրն էլ տիսնամ, բիրիմ։

Կեամիմ, իտու չնիլ, աղջընիրն էլ ժողուից, իբէ։

Վուզիր անցկուն իլաւ, անցկուն չարչարանք քեշից. գիւր չոպըկն էլ ծախըց, հալա աղջըկ մնաց պակաս. ուր աղջըկն էլ իբէ տեղ։ Անցկուն չուարաւ վուզիր, օր աւուր խացըն կարօտ մնաց։

Պառաւու տղէն էլ իլաւ, գիւր աղջկդիր առըց, գինաց, մտաւ կեամին. կեամին էլ անցկուն կեամիմ՝ էր, ախշըրքի վրէն ան տըսակ կեամի չկէր։

Պառաւու տղէն էր. կեամին իթուղ, գինաց . . . . . քեաղքը դիմաց դադրաւ։

Էդ . . . . քեաղքը մախլուխ թափան թամաշա, ասըցըն մէմէկը.—«Սա տըսակ կեամի մինք չը՛ք տըսի»։

. . . . . Թագեաւուր-Պապը Ֆրէնկին էսաց վուզըրին.—Իլէ՛, նաըրնք կայիդ, էրթանք կեամու թամաշէն. տըսնանք ինչ մարդ ի, ինչ մարդու կեամի ի։

Թագեաւուր, վուզիր նստան կայիդ, էկան կեամին դիւս իլան։

Վուզիր, Թագեաւուր ինչ մտան նիրս, շաշմիշ իլան. եօթ օր, եօթ գըշիր մնացին ան տե. իրենց մտով մէկ սահաթ իլաւ էկածնի։

Թագեաւուր վուզըրին էսաց.—Աս սահաթմ՝ կայ մինք էկեր ինք, էրթանք։

Կեամուց ելան, նստան կայեղ, դիւս ելան։

Թագեաւուր գինաց սարէն, կընըկ էսաց.—Աստուած քիւ տուն աւըրըը, աս եօթ օր կայ դիւ քաղաք թուղիր էք անթագեաւուր, անվուզիր։

Թագեաւուր էսաց.—Մի մաքէն սահաքմ՚ ելաւ, գինացիր ընք։

Կնըկ էսաց.—Եօթ օր կայ դիւ դեացըր ըք։

Թագեաւուր էսաց,—Կնը՛կ, մէք դեացընք եօթ օր էկինք. վախինամ դըէ էրթաս, ա՛րիմ մնաս, տը չգեաս։

Կնըկ էսաց.—Աս օր իս տ՚էրթամ։

Կնըկն էլ էլաւ գիւր խալաւքիր խաքեաւ. գիւր խուցամ առըց, գինաց նստաւ կայեղ, քեշից գինաց, կեամու յէռջիւ կայնաւ։

Թագեաւուրը կնըկ կայեղից դիւս ելաւ, մտաւ կեամին, էսաց. —Խուցամ, ինչ մօրէն իլեր էք. ադ ընցկնա սէյր չընք տըսի։

Թագեաւուրը կնըկ մնաց տասնըխընդ օր կեամու մէջ։

Էսաց.—Խուցամ, աս օր էրթանք, վաղ էլմ կուգեանք։

Կեամուց ելան, նստան կայեղ, կայեղչին քեշից, դիւս իբի էխան։

Թագեաւուրը կնըկ գինաց սարէն։

Թագեաւուր էսաց.—Մէք եօթ օր մնացընք, կըսըս չա՛տ էք մնացիր. պա դիւ տասնըխընդ օր մնացիր։

Էսաց.—Ասա տեսակ սէյր ախչըքի վերէն էլ չըլնը։

Թագեաւուրը աղջըկ էսաց.—Դիւ էրկուս կէրթէ՛ք. վալա իսն էլ տ՚էրթամ։

Թագեաւուրը աղջըկ գիւր խալաւքիր խաքեաւ, իրի նստաւ կայեղ. քեշից գինաց. կայեղից դիւս ելաւ. մտաւ կեամին։

Պառւու տղէն էլ կեամուչուն էսաց.—Քինէ կուզըմ ցամուր առնիս (խարխըխ վեր քաշես)։

Ջցամուր առըց, զկեամու պար իտու, կեամին էլաւ իբի Մալը։

Ադ Թագեաւուրը աղջըկն էլ տեսաւ խօր քեաղքէն հեռըցաւ, «ամաճ-զամաճ կեամին գինաց. իս ինչ ինիմ,» պոռաց։

Պառւու տղէն Պապը Ֆրէնկի աղջըկ առըց իբի, Մալըայ քաղաք դիւս էխան. առըց տարաւ Թագեաւուրը սարէն։

Աղջըկ զսարէն տըսաւ, շաշմիշ էլաւ, էսաց.—Էսա Ֆլի ուսակուըքիր վո՞ւվ բերիր ի. ասօր ուսէն վո՞ւվ բերիր ի. էսա մուրթ վո՞ւվ բերիր ի։

Էսաց.—Անա մարդն ի բերեր, ինչ գքի բերեր ի։

—Անէպ ինչ էք տուը անիւ, օր բերիր ի։

—Վուզիրն ը տուը, իս չըմ տուը, իս չըմ դիտը։

Աղջըկ տղըն էսաց.—Ի՞նչ ի տուած քի։

էսաց.—Մուրթ բիրիր իմ, վուզիր ըզի տուր քան փարայ. Ֆլի ուսկուրքիր բիրիր իմ, տուր մէկ կուռուշ. ուսայ Մուրատ բիրիր իմ, տուր վաթսուն փարայ։

Պառւու տղէն թուղ իտու գինայ։

Վազիր էսաց.—Թագեաւուր ապրած՝ Ֆլի ուսկուր բիրիր, սարէն տուրը չընիլ. զՊապէ Ֆրէնկի աղջըկ բիրիր. պէտքը իրկիս, անմախութենի ջիւր կայ, բիրիս, լողանաս, ընըս տասնըչուրս տարեկան. առնըս Պապը Ֆրէնկի աղջըկ։

—Վուզիր, էսաց. անմախութենի ջիւր վուվ կերթայ, բիրը։

Էսաց.—Վուվ էս կանդար բանիր իբի, էլըմ ան կը բիրի։

Թագեաւուր պառւու տղէն կանչից, իբի։

Տղէն էսաց.—Թագեաւուր ապրած՝ ինչ կուզըս ըզնէ։

Էսաց.—Քինէ կուզըմ, կերթաս, անմախական ջիւր կը բիրիս, իս լուղանամ՝ ըլնըմ տասնըխընդ տարեկան ճճել, Պապը Ֆրէնկու աղջկայ խիտ պսակուըմ։

Պառւու տղէն դարձաւ, գինաց տուն։

Մէր էսաց.—Թագեաւուր էլ ինչ էսաց։

—Թագեաւուր էսաց. կերթաս անմախութենի ջիւր բիրիս . . .

Էսաց.—Վուրդը, կերթաս, եօթ ճամբախ խառնուրդ կայ. մէկ Խըսիյար մարդմ ան տե նստը, վուվ էրթայ, ճամբախ նշանց կտայ, կերթաս ան մարդ։

Ան ինչ ա'էրթար, տղըն կանչից թագեաւուրը աղջըկ։

Պառւու տղէն էլաւ գինաց Պապը Ֆրէնկու աղջկան մօտ, էսաց.—Իս ա'էրթամ, ինչ կըսըս, ըսա։

Պապը Ֆրէնկը աղջըկ էսաց.—Կերթաս, չըմ հաւատայ դիւ անմախական ջիւր բիրըս, թէ բիրըր, իմ ձեռ տաս, յիւրըշը ձեռ չտաս։

Պառւու տղէն էլ էլաւ, գաւս էրաւ, գինաց. խասաւ եօթ ճամբախ խառնուրդ, Խըսիյար տիսաւ, էսաց.—Խըսիյա'ր, ճամբախ ըզի նշանց տու, իս ա'էրթամ, անմախական ջիւր տը բիրիմ։

Էսաց.—Հայ վուրդը, իս չըմ խաւատամ դիւ անմախական ջիւր բիրիս։ Կերթաս սաս ճամբխով տաս աւուր ճամբախ. առաւուտուն ինչ ցուրտ ժամանակ կը տիսնաս քիւ ճամբխը մէջ թէ ճանճավար ըլնը, թէ խաւք ըլնը, կառնըս, կը դնըս քիւ ծուց, կը տաքնայ. մինչիւ արիւ կառնը. կը թուղնըս. Թ'անմախական ջիւր բիրը, ան տը բիրը, յիւրըշ մարդ չկէրի բիրը։

Տղէն էլաւ, ճամբախ ընկեաւ. խընդ-տաս աւուր ճամբախ գինաց. տըսաւ խաւքմ՝ պառկիրի ան տե, քիչ մնացի օ ցրտու սատը։

Տղէն զխաւք բռնից իդի ծուց, քաշից գինաց, մինչիւ արիւ առըց, խաւք ծուց տաքցաւ։

Ձխաւք ինթուղ, թռաւ գինաց։

Տղէն էլ գինաց. գինաց, սարը գլեօխ կայնաւ։

Տըսաւ խուըմ կայ ան տե, խազար արշաւն խուբունդէ անմահական ջիւրը ան խուրն ը, մարդ չկէրի իջնէ մէջ, բան վիրուց չխասնը տակ։

Նստաւ ան տե, մտածից.—«Աստուած. իս ինչխ անա խուրէն ջիւր խանըմ, տանըմ»։

Մէկն էլ տիսաւ բան վիրուց գինաց խուըը տակ, մէկն էլ տիսաւ խաւքմ խուրուց դիւս իլաւ փարխան ջիւր վըղըն. տիսաւ ան խաւք, ինչ դրիր ի ծուց։

Տղէն գջիւր առըց, խաւք թռաւ, գինաց։

Տղէն ճամբախ բռնըց գինաց, Մըրրայ քեաղաք դիւս էլաւ, ջիւր իտու Պապը Ֆրէնկը աղջըկ՝ դարձաւ։

Պապը Ֆրէնկը աղջըկ պղընձմ ջիւր եւցըցիր, դրիր ան տե, գինաց Թագեաւուրը էսաց.—Պառւու տղէն անմախական ջիւր բիրը, իւր լուղկանանք, կարգուինք. իւի, մտը աս պղընձ։

Թագեաւուր էկաւ, շիւրիր էխան, ընկեաւ պղընձ, խաշաւ։

Թագեաւուր սարըն պախըցըն։

Անմախական ջիւր բիրըն ան տե, պառւու տղէն, Պապը Ֆրէնկու աղջըկ լուղացան. էրկուսն էլ իլան տասնըխընգ տարեկան, պսակուան։

Վեաղքը մէջ խուսք իլաւ, Թագեաւուր, Պապը Ֆրէնկու աղջըկ անմախական ջիւր խմած իլած տասնըխընգ տարեկան։

Պառւու տղէն որ իլաւ Թագեաւուր, խըկից զիւր մէրն էլ իբի, եօթ օր, եօթ դշէր զիւր խարսնըս իդի, պսակուան, էլաւ Մըրրայ Թագեաւուր։

Անիւնք ան տե խասան ուրինց մրազ, դիւ էլ աս տե խասնիք ձի մրազըն։



7

# ԼԱԻԸ ԳԻԻԼՍՏԱՆ

**Մոկաց բարբառով** *

Թագաւորում կէր, իրէք տղայ ունէր, իրէք աղջըկ, էսաց.
—Ես կը մեռնիմ. խաւք դնայ, դէլ գնայ, առջ գնայ, աղջկտիր կըտէք՝ էսայ. ես ի՞նչ կը մեռնիմ, իմ իտիւէն չգէք՝ էսաց. ինչ կը պաակուէք, մա ձի կընկտիք չը քընէք՝ էսաց. ծառ մը կայ մի, իրէք խնձուր կը բռնը. Ցուլիսի տասնըխնգին, կը գեան, կը տանն. չըն Թուղնը տըսնանք ինչ խնձուր ի (անմահական խնձուր ի). ան ցածրի խնձուր մինծ տղըն՝ ան միջի խնձուր միջնիկ տղըն. ան վէրի խնձուրն էլ պզտը տղըն։ Էսաց. եօթ օր իմ գիրեզման կը պախէք. գըշէր ճրագն էլ չըք Թուղնը ընցնը։

Խէր մեռաւ՝ տը տանին վիրուցին. էրկու մեծ տղէք ասըցըն.
—Խիտ էրթանք։ Փուքր էսաց.—Չընք էրթայ։
—Ի՞նչըխ, մի խէր մեռնը, ասըցըն, մինք չէրթանք խիտ։
Պզտիկ աղբէրն էլ առը՝. գիւռզէն, գնացըն խիտ։
Մինչիւ օլսէր պախըցըն, էկան. խըօխըէր Նստաւ բախտ, Թագաւորութեն առըց։
Փուքր աղբէր էսաց.—Չէ՛, ես ձի առըցը. «չընք էրթայ խիտ»։
Առջ իբի, Նստաւ խնամաթոռ.—Ձի մինծ քիւր տը տէք ձը, էսաց։
Էրկու մինծ աղբէր ասըցըն.—Մինք մի քիւր ի՞նչըխ տը տանք առջին, չընք իտայ. տանը տուտէ։
Պզտըկ աղբէրն էսաց.—Իմ խօր խուսք չէրի, կուշտ կիրայ. ես էլ չէնըմ, տը տամ. տանը։
Մինծ քիւր առջ առըց տարաւ։

* Պատմած է Զաքիկ Խեպոյեան:

Անու յիտիւէն գէլ էկաւ. նստաւ խնամաթոռ, էսաց — Ձի միջ-նեկ քիւր տը տէք ձը։

Էրկու մինծ աղբէր ասըցըն. — Զընք իտայ։ Փուքը աղբէր էսաց. — Չէ, ես իմ խօր խուպ գիտին չըմ իտայ. իմ քիւր տըտամ։

Քիւր իտու գէլին, առըց գընաց։

Անիւ յիտիւէն Սըմուլխաւք թռաւ. էկաւ, նստաւ խնամաթոռ. — Ձի պզտիկ քիւր տըտէք ձը։

Էրկու աղբէր էլմ էլ էկան առե. — Մինք մի քիւր ինչխ տանք խաւքիւն. խաւք առնը տանը, մի քիւր ընկնը տակ. մեռնը։

Փուքը աղբէր էսաց. — Ան էրկու ձի քիւրիլն էն, դիւ չը կարո-ղացաք չտէք. աս իմ քիւրն ի. ես տը տամ։

Պզտիկ քիւրն էլ էտու Սըմուլ խաւքիւն, խաւք առըց տարըց։

Իրիկուն իլաւ. — Աղբէրքիր, էլեցէք, էրթանք. մի խօր գիրիզ-ման պախինք։ Ելան. զհրադ առըն, գինացըն վար խօր գիրիզմընին. հրադ վառըցըն, նստան։

Մ՛ինծ աղբէր էսաց. — Դիւ քընեցէք. ես կը մնամ զարթուն. ինչ ժամանակ իմ քիւն կը գեայ, ես զձը խանիմ վի։

Էրկու պզտի աղբէր քինան, մինծ աղբէր մնաց զարթուն։

Տըսաւ սիւ դի՛վ իրի, ադա կողմէն գինաց առաջ, էզար, զդիվ սպանից. էթալ ձիւր իվե, փըրթից իլից ան տե, էսաց. — Իմ աղբէր-քիր չըլնըն. տսնան վախանան։

Իրի, կանչից, միջնեկ աղբէր էլան վի, էսաց. — Իլի, դադըր, իմ խօր գիրիզման պախի. ես քիչմ քընիմ։

Մինծ աղբէր քնաւ. միջնէկ աղբէր կայնաւ։

Միջնէկ աղբէր տըսաւ վիշապմ զատնու խիտ էրի, էն էլ գի-նաց առէջ, չէթուղ մատանայ. էզար, զվիշապ սպանից, փըրթից. էլաւ էրի։ Իրի, ինչից լուսու դէմ ի. — Աղբէ՛ր, կանչից, դիմաց լու-սու ի. իլի վի։

Պզտըկ աղբէր էլաւ վի, միջնէկ աղբէր քինաւ։

Պզտըկ աղբէր տըսաւ աղուիսմ էկաւ ան տե։ Էսաց. — Աղուիս ինչ տ՛ինէ, կան գեայ, ուսկուր կրծը, թը էրթայ։

Աղուիսն էլ իրի, հրադըն մատացաւ. պուչ էզար, հրադ ըն-ցուց. փախաւ, գինաց։

Ադ էլ ադ տե չուարաւ. կրակ չկայ հրադ վառը։

Իրըշից դաշտը մէջ կրակ տըսաւ, էլաւ քնում ուլնիք էթալ էն աղբօր ականջ, մէկ էնու ականջ, էսաց. — Ես էրթամ, իմ աղբէր չըլնին վի։ Գինաց դախ կրակ։ Տըսաւ մանչ համխըն կեօ բխեիյար մարդմ. սըւտակ կծըկմ կեօ կուշտ, սիւ կծիկմ էլ յէռջիւ, կը կծկը. ադա կծըկը քիչ ի մնացի խըլսնայ, էնաց. — Հա՛յ բխեիյար, ադ ինչ կէնիս ադ տե։

Էսաց.—Իս մութ, լուս կը բաժանիմ. Նա թուխ գիշիրնը կը կըծկիմ. քիչմ էլ մնայ, կը լուսնայ։ Ի՞նչ լուսնայ, սըւտակ կըծըկ կը կծկիմ։

Էսաց.—Մութ, լուս չըբաժանիս, մինչիւ կըրակ առնիմ. գեամ։

Էսաց.—Աստուած քիւ տուն աւըրը, մինչիւ դիւ գեաս, էրկու գըշէր, էրկու ցէրեկ կըլնը. սաղ մարդ կը խըւընդնայ, խըւանդն էլ կը մեռնը։ Էլաւ գլխալաւիւր կապըց. իդի ան տեւ, թուխ կծըկ իդէ յէռջիւ. սըւտակ կծըկ հեռացըցուց մօտէն։

Գինաց գախ կըրակ. տըսաւ մուղարէմ դաշտըն մէջ. կըրակ ադա մուղարի մէջ կերեւայ. գինաց. տըսաւ քեառասուն դեւ պառկած, քինած ա. քեառասուն կանթէն պղընձ վար կըրակըն. քեառասուն խնկ-վըճի ջանդակ էլ մանչ պղնձըն, վար կըրակըն կիռայ. դիւ չըըս տնիւնց մինծ ադըէր զարթուն ը։ Ադ էլ էլաւ, կըրակմ առըց. էլաւ վար դռան, էսաց.—Նա կըրակ չէլաւ. էրթամ մէկէլ բիր՞իմ։

Զան կըրակ էթալ, գինաց մէկ էլ իբի։

Էլ էսաց.—Նա էլ չէլաւ. զան էլ էթալ, մտաւ մաղարէն վե. գինաց պղընձը վըէն կայնաւ, էսաց.—Իս ձիռ տըտամ նա պղընձ, վիրուցըմ, թը վիրուցը, դըը գիտըն, էլմ դըը վար կըրակըն. գիմ կըրակ առնըմ, էրթամ. թը չի վիրուցը, փախիմ, էրթամ. ալ կըրակ չըմ տանը. դեւիր ակախին, իմ խուգըն ալ իս անիւնց ձեռնէն չըմ ազատը։

Աստըծու անուն իտու, ձիռ իտու զքեառասուն կանթէ պղընձ վիրուց իդի գիտըն, էլմ իդի վար կըրակըն. զուր կըրակ առըց, էլաւ վար դռան։

Մինծ դեւ կանչից.—Այ մարդ, կըրակմ քի խաբր, մէկն էլ քի խաբր, էն մէկ էլ ինչ էր տարըը. տը գեաս, թի դիւ էնա քեառասուն կանթէ պղընձ վիրուցըը, դըըը գիտըն, էլմ դըըը վար կըրակըն. մի քեառասուն ադբօր մինծ դիւ ըլնըս։

Ադ էլ դարձաւ. իրի, ձիռ իտու զքեառասուն կանթէ պղընձ. վիրուց իդի գիտըն, իդի վար կըրակըն։

Դիւն էլ էսաց.—Մի քեառասուն ադբօր մեծ դիւ։

Դիվ ուր ադըրքիր էխան վի, էսաց.—Էրթանք, նա թագեաւուըըն իրէք աղջըկ կայ, եօթ տարը կայ մինք կուզընք, չը տայ. դարկեախնիրը փակը, խուղը՝ էնըք էրկըթէ բիվիռ չընինք, տանընք զարկինք պատան, էնըք պատանը գլեօխ։

Էլան բիվեռ առըն, գեացըն պատանը յառաջ։

Մինծ դիւուն էսաց.—Իս բիվեռ կը բռնըմ, դիւ զարկ։

Մէկ հեօթակմ էլ ձիռ, ինչ կը զարկէր. ձէն կընկնէր քաղքը մէջ, ադ էլ դիւուն էսաց.—Ադ չիլաւ. մկայ կակախին, քեառասունը մէկս էլ կապանին։

Տղէն բիվեռ կոտէր պատըն, ձեռնով կը զարկէր։

Մէկ մէկ էզարկ, էլաւ պէշէնի գլեօխ։

Քեառուսուն քար խանեց ուր խիտ, էսաց.—Ինչ քեարմ կը Թլիմ, դիվըմ՝ էկեցէք, էլեցէք պաշանի գլեօխ. էն էրԹայ մըջ քեաղքըն, դոր մէկ էլ իլնը։ Անի էլ կայնաւ վար պաշանին, քեարմ կը Թլէր. դվմ՝ կըլնէր պաշանի գլեօխ. ադա տղէն էլ Թուրմ կը զարկէր. դվուն վըզ, ճանտակ, գլեօխ խընտրանց կերԹէր քեաղքը մէջ։

Քեառուսուն էլ ադա տըսակով սպանից։

Տղէն էլ էջաւ քեաղքու մէջ, կան լըրի. գինաց Թագեաւուրու սարէն տըսաւ, մտաւ նիրս. գինաց Թագեաւուրու յօդի դեօռ էցաց. տըսաւ Թագեաւուր. իրան կնըկ քընած, տղէն դըրած ծանծըմակ, օձ սան վի իջլի, քիչ մացի բիրան խասը. գտղի իրես կըծըր։ Խանճար քեշից, վար վար օձու գլխուն. խանճար մտաւ մանչ սան, մնաց։

Տղէն խանճար իԹուղ ուր տեղ. Թագեաւուրը խանճար առըց. զարկից ուր մէջք, գինաց. դեօռմ էլ իբաց. տըսաւ Թագեաւուրը մին աղջըկ ադա տեղ քընի. մում զարկած գլխին, մի ուտքիրուն, էսաց.—Տ'էրԹամ, պագնըմ։ Գինաց. կզուաւ վըէն, էսաց.—Մանչ անիւ քընուն գան չը պագնիմ։

Գինաց, դեօռմ էլ իբաց—միջնեկ աղջկան յօդէն ի, ան էլ մին աղջկան տըսակ պարկը, քընը. նա քեանց մին աղջըկ խօրոտ էր. գինաց, կզուաւ վիրէն, էսաց.—Տը պագնիմ։ Չը պագնից, յիտ դառցաւ, էսաց.—Մանչ անիւ քընուն չըմ պագնը։

Գինաց, դեօռմ էլ իբաց—պզտիկ աղջկան յօդէն։

Պզտիկ աղջըկ քեանց էրկուսն էլ խօրոտ էր։

Էսաց.—Քնած ըլնը, չըլնը. գան տը պագնիմ։

Գինաց. կզուաւ վըէն, անիւ սըրտ պագնից։

Քեանց փարէմ՝ անիւ սըրտ սիւցաւ։

Փօշման էղաւ, էսաց.—Աստըծուց էղնէր, չպագնէր անիւ սըրտ։ Ան էլ Թուղ իտու, իրի դարկեախ իբաց, իրի դիւս, գինաց. զուր կրակ առըց, գինաց մատ իխտիյար։

Իխթիյար էսաց.—Աստուած քիւ տուն աւըրը. էլաւ էրկու գըշիր, էրկու ցիրիկ դիւ գեացիր իս. խըւանդ մըկայ միռե, սաղ խիւընդցի։

Էլաւ ըզ իխթիյար արցկից, էսաց.—Իս կիրԹամ. մուԹ, լուս չբաժանիս, չուր իս իմ ճրագ կպուցիմ. որ իմ ճրագ կենայ առանց կպնել. դիւ զմուԹ, լուս բաժանիս, իս քի տըսպանիմ։

Ադ էլ գինաց զուր ճրագ կպուց. քնոյ ուլնիք աղբօր ականջնիրուց էխան։

Լիւսցաւ. աղբէր էկաւ, էսաց.—Ըլեցէք վի. լիւս ի։

Աղբէրքիր էլան, նստան. գեացըն, լուացուան։

Գզտը աղբէր էսաց.—Էրթանք։

Միջնեկ էսաց.—Էրթանք դեւր։

Մեծ էսաց.—Էսա կուղմ (էն կուղմ ինչ դիվ սպանիր ի)։

Գզտիկն էլ էսաց.—Չէ՛. էրթանք սարիր ինչ անինք. անջիւր, անբան էրթանք. Նստինք վար աղբրըն, խաց կուտընք, կը լուացուընք, ջիւր կը խմինք։

Գեացըն վար աղբրին։

Դառնանք վար Թագեաւուրըն։

Թագեաւուր քնուց էլաւ վի. տըսաւ օձ սան վի էջլի, քիչ մնացը պտղէն կըծը. խանճար զարկած մանչ օձու գլխուն, մտի մանչ սան. խանճար թուղած ուր տեղ։

Խապար բերըն Թագեաւուրըն.—Թագեաւուր ապրած կենաս. քեառասուն դիվն էլ սպանած ին։

Թագեաւուրն էլ դալալ իցքից մանչ քեաղքըն, իտու կանչել.
—Ո՛վ գնա դիվի՛ր սպանիր ի, թը գեայ. Թագեաւուր անիւ խնդիրք կատարը։

Վի՛ կուվմ կէր, վի՛ էշմ կէր, ծախըցըն. տուըն, թուր առըն, կապըցըն վար ուրինց. մէկ մէկ կըյան մա Թագեաւուր, Թագեաւուր կըսը.—Դիվիր դո՛ւ իս սպանի. կըսը.—Խա։

Կըսը.—Էնա խանճար քեշե, խնէք։

Որ ձիու կը տանի խանճար, խանճար կը գեա՛յ դիւս։

—Չի գեայ դիւս։

Քեանի մարդ կէր մանչ քեաղքըն, մարդ չկըցաւ խանճար քէշիր դիւս։

Թագեաւուր էսաց.—Էլ մարդ մնա՞ց մանչ քեաղքըն։

Ասըցըն.—Մանչ քեաղքըն մարդ չկայ, յաղբրը վրէն սեւութիմ կայ, չընք գըտի մա՛րդ՛ի, հեյվան ի, ինչ ի։

Թագեաւուր էսաց.—Գեացէք. ով մարդ ի, առէք բիրէք։

Գեացըն, տըսան իրեք մարդ նստած վար յաղբրըն։

Ըսըցըն.—Էլեցէք, էրթանք. Թագեաւուր ըզձի կուզը։

—Թագեաւուր ի՛նչ գուրծ ունի մի խիտ. մինք ճամբխուրդ մարդ ինք, մինք Թագեաւուրըն չընք տըսի. Թագեաւուր զմի չը տըսի։

—Չէ՛, տը գէք, ասըց։

Առըն, տարըն։

Ցառաջ մեծ աղբէր տարան Թագեաւուրը իրիս։

Թագեաւուր էսաց.—Նա դիվիր դո՛ւ իս սպանի։

Էսաց.—Իս իմ սպանի։

—Էն ով սպանիր իս, էնա խանճար քէշէ, տըսնամ։

Ձեռ իտու խանճար, խանճար կգեա՛յ դիւս. սուն կգեայ, խանճար չգեայ։

Միջնեկ աղբէր գինաց. էլմ ադա տըսակ։

Ցխտքէն պզտի աղբէր գինաց, էսաց.—Դիւ նա դիվիր սպանիլիւց խապար ունի՞ս։

Էսաց.—Իս իմ սպանիր նա դիվիր։

Էսաց.—Որ դիւ իս սպանիր, նա խանճար քեշի դի՛ւս։

Թագեաւուրըն էսաց.—Առ քիւ խանճար. իս իմ խանճար քեշիմ դիւս։

Ձիռ իտու, առըց զուր խանճար, էղար մէջք։

Թագեաւուր էսաց.—Աղջկտիր դիւ քի խըմար իս ազատը. ինչ կուզըս, ուզը՛, տամ։

Տղէն էլ էսաց.—Բան էլ չըմ ուզը, աղջկտիր խէրիք ի։

Ադա իրիք աղբէր, իրիք աղջկտիր առըն, էկըն ուրինց տուն։

Մինծ քիւր մինծ աղբօր. միջնեկ քիւր, միջնեկ աղբօր. պզտիկ քիւր պզտիկ աղբօր։ Առան, պսակուան։

Պզտիկ աղբէրն էսաց.—Աղըրքիր, մե խէր վոսիյաթ էրաւ. —«Ձի կընկտիրուն մօտ չքնէք»։

Աղըրքիր սարցըն.—Մինք պսակուիր ինք. մի կընկտիրուն մօտը պառկինք։

Պզտը աղբօր կնիկն էլ ուր տեղ չնից, պառկան։

Ադ էլ ուր կնկեան կուշտ չգինաց. իրի, պառկաւ իտիւ դռան։

Մէկէլ օր կնըկ էսաց.—Իտիւ դռան տեղ անի՞ւչ ի:

Տարաւ, տեղ իցքից իտիւ դռան։

Էլմ մարդ գինաց, վրին ֆիւՃճ պառկաւ։

Մէկէլ օր կնըկ տարաւ, տեղ վրին ֆիւՃճ պարզեց։

Մարդ էլմ չգինաց վար տեղաց, գինաց իտիւ դռան պառկաւ։

Կնիկն էլ մարդիւն էսաց.—Քիւ Ճազ քեանց Լաւի Գիւլստան չմտ ը։

Ադ էլ էսաց. քեան զիմ մէր կինաս ըզձը. քան զիմ քիւր, մինչիւ իս Լաւը Գիւլստանը չը տըսնամ ինչխ մարդ ի։

Էլաւ, ընկեաւ ճամբախ, գինաց:

Շաբաթմ, էրկու ճամբախ գինաց։

Գինաց, ընկեաւ առջու սրՃօռ։

Գինաց առջու պաղչէն, վար հավուզըն նստաւ։

Քիւրն էլ ղադըը վար պատըն, ըլիկ մանը։

Իրըչից մանչ պաղչըն, տըսաւ մարդմ նստը վար հավուզըն, էսաց.—Խաւք ուր թիւով, օձ ուր պուրտով չըր իկե միր պաղչէն, աս վո՞ւվ իկե միր պաղչէն։

Ինքն էլ իլաւ էրկու իրիք խաց առըց. գինաց, տըսաւ աղբէր։

Թռաւ, զաղբօր գլեօխ պագնից. զաղբէր առըց, էկըն տուն.

խաց իղի ան տեղ, աղբէր կիրաւ. խուսան, վար մէմէկու ուրախացան։ Ցիլիկուան իլաւ, գաղբէր պախից։

Կէօ սաճաք մնաց, առջ իրի. դիւռ էբաց, մտաւ նիրս. էսաց. —Կնը՛կ, մարդախուտ կգեայ մի տնէն։

Էսաց.—Տնաւէ՛ր, դիւ սարէն կգեաս, դիւ ձուրէն կգեաս. մարդ-մարդախուտ քինէ կգեայ։

Էսաց.—Չ՝ըմ գըտի, մարդախուտ կգեայ մի տնէն։

Էսաց.—Անճէպ ի, մկայ իմ աղբրքիրուց մէկ ըյնէր ըդայ. դիւ ինչ տէնէր։

Էսաց.—Մինծ աղբէր ինէր ըդայ, մինծ փրդուճ ականջ տէնէր, միջնեկ ինէր, ան տըսակ. պզտըկ աղբէր ինէր, անիւ տիզ տը չնիր վար իմ գլխուն։

Ասաց.—Իմ պզտը աղբէր կեօ ըդայ։

Առջ էսաց.—Քիւ վըզ կոււտռը, իս իմ. ան մէկ անիր, ան էլ վար ձը կը պախիս. տ՚իլի, բի ըդայ։

Էլաւ, զաղբէր առըց իբի։

Խաց իբի ան տեղ, խաց կիրան։

Առջն էսաց.—Քիւ խըմաք ինչ կայ էսա երկըր։

Էսաց.—Իս իկիր իմ, տ՚էրթամ Լաւի Գուլստանը տըսնամ։

Առջն էսաց.—Աղըկ իմ գուրծ չի, թը դըտի, Սմուլ խաւք դըտի, ան ախչար չատ կան կգեայ, որ ան չը գըտի, էլ մարդ չը գըտի։ Ալ յիւրըչ ճամբախ չկայ, կերթաս մօտ քիւ քիւր։

Առջն էլ էլաւ, զճամբախ չանց իտու. ադ էլ էլաւ, զճամբախ բանից, գինաց։ Գինաց գիլու պաղչէն։

Ինչխ առջու տըսակ միջնեկ քիւրն էլ աընցկուն էրաւ։

Գէլ խարցնից.—Դի՛ւր տ՚էրթաս։

—Տ՚էրթամ Լաւը Գիւլստանը էրկիր, զԼաւը Գուլստան տըսնամ։

Էսաց.—Իսն էլ չըմ գըտի, Սմուլ խաւք գըտի։

Ադ էլ էլաւ, զճամբախ չանց իտու. մարդ ընկեաւ խա ճամբխըն, գինաց, գինաց, Սմուլ խաւքու պաղչէն դիւս իլաւ, վար աղբրին նստաւ. ջիւր խմաւ. պառկաւ։ Ան տե Սմուլ խաւք վիրուց իըըչից, տըսաւ կեօ մարդմ վար յաղբրին. էկաւ տակ, տը զարկէր։

Ինչ մատացաւ, տըսաւ անիր։

Սմուր խաւք էլ թիւքիւր իտու էրեգեակյան, խուվ էրաւ վար անիրուջ. անիր ակախաւ. էլաւ, նստաւ։

Սմուր խաւքն էլ էջաւ խատ անիրուջ կչտըն։

Վար իրարու խնդացան, ուրախացան։

Էլան գեացըն տուն. քիւր էկաւ, կախուաւ աղբօր վըզ. աղբօր գլեօխ պադնից։

Սմուր խաւք էսաց.—Կնը՚կ, խաց բէ, ուտընք։

Քիւր էլաւ, խաց իդի անտե. կերան, խման։

Սմուր խաւք էսաց.—Աստուած խեր էնը. դիւ ինչ գուրծը էկէ, գիւր տ՚էրթաս։

Էսաց.—Ես էկէր իմ, տ՚էրթամ Լաւը Գիւլստան տըսնամ։

Սմուր խաւք էսաց,—Ես չըմ դըտի, անիւ երկըր որ տեղն ի. ես կանչիմ թաւքիր, դեան, տանանք ով սալղ կտայ։

Սմուր խաւք կանչից, քեանի խաւքմ կէր, ժողուան, էկըն։

Խարցնից, մէկ սալըղ չիտու։

Էսաց.—Ալ խաւք մնաց դիւս։

Ասըցըն.—Մէկ քեալապեօտմ կեօ եօթ ծովու կղզըն, մնացի ան տե, փետուրմ ՚էլ վրէն չկայ։

Սմուր խաւք էսաց.—Իրէք, չուլս խաւք գեացէք. դրէք վար ձի թիւքիրուն. առէք, բիրէք։

Չուրս խաւքմ թռան. գեացըն եօթ ծովու կղզըն, զադա խաւք վիրուցըն. զուրինց թիւքիր տուըն յիրար, զխաւք դըրըն վար ուրինց թիւքիրուն, առըն, բիրին, տուըն Սմուր խաւքըն. Սմուր խաւք խարցնից.—Դիւ գըտիս Լաւը Գիւլստանի երկիր դիւրն ի։

Ադա խաւք էսաց.—Ես մէկ դիրմ գեացը, ան ալ խաա իմ մօր։

—Մըկայ կարող ես էրթաս։

—Ի՞նչխ տ՚էրթամ, փիտուր չունիմ. անութութենէ մեռեր իմ։

Մէկ չաբաթմ օխչրի դմակ կիրցուց. ադ խըն փիտուր թափաւ. նուրէն փիտուր էկաւ։

Ութ օր էլ կիրցուց. լաւ փիտուր էկաւ վրէն։

Խաւք էսաց.—Փորձիմ, կարօղ էմ թռնիմ։

Քիչմ թռաւ. բանձրցաւ, էլմ էլ էկաւ տակ։

Էսաց.—Չըմ կարողանայ թռնըլ։

Ութ օր էլ միս կիրցուց. խաւքն էլ էսաց.—Իլի, նստը վար իմ թիւքիրուն, էրթանք։

Ադա մարդ էլաւ, նստաւ վար խաւքիւ թիւքիրուն. տարաւ, գծուվ խըլցիւց. իդի ցամաք՝ դառցաւ, իրի։

Անի ինչ մթնաւ, գինաց մանչ քեաղքըն. կան իրի. յանկարծ գինաց Լաւը Գուլստանը դիւռ էբաց. գինաց նիրս, յօդէք կան իրի. դեօռն էլ էբաց. տըսաւ Լաւը Գիւլստանը պառկը, քնը. բարձմ դըլխուն. մէկ վուտքիրուն. մէկ ան կուղք, մէկ ան կուղք. վար անիւ սրտըն գիւլ ու բռահաճը, ադ էլ ձեռ իթալ, պոկեց զգիւլ բռահաճ. էխան (մազիրուն տեղ գիւլ ու բռահաճ էր):

Լաւը Գիւլստան միռաւ։

Ադ էլ դառցաւ, իրի ծովու բիրան. փուսմ փուրից, նստաւ

ինե. քիչ մէլ ցախ ու մախ իդի վար ուր գլխուն, տըսաւ իրեք եղուընիկ էկան, թռան ան տեղ, զուրինց խաւքինըն խանըն։

Ադ էլ տըսաւ մէկ իրան կնըկ. մէկ էլ էրկուս աղբօր կընկ-տիք ին։

Դիւ չըսըս, կնըկ խաւքինըն յանկարծ կը տանը. դնը անիւ գլխիւ վերէն. ադ էլ գլխաւքինըն առըց, պախից։

Աղիւքն էլ էլան. գեացըն մատ Լաւը Գիւլստան, տըսան Լաւը Գիւլստան միռե, չկայնան. յիտ դառցան, էկըն։

Էրկու քիւր զուրինց խաւքինըն առըն, թռան գեացըն։

Քիւր կը կանչը.—Այ քիւրիր, մ'էրթէք. մինչիւ իս իմ խաւ-քենըն գնդընիմ, գեամ։

Մարդն էլ էլաւ, գխաւքենըն խաքեաւ։

Կնըկ մնաց ան տե, ինք թռաւ դինաց։

Ադա տղէն իրի մատ ուր քիւրիր. քիւրիրու մօտէն թուղ խտու, գինաց ուր տուն։ Էլաւ աղբէրնիրու ճաղլ էրաւ զուր տըսած. աղ-բէրնիր էլան, զուրենց կնկտիք թուղըն։

***

Յուլիս ամիս մօտացաւ. Յուլսի տասնըչուըս օր իլաւ, մեծ աղբէր էսաց.—Աղբէրնիր, մի խնձուըը ժամանակին էկաւ, տը գեան, խնձուր տանըն, ըլեցէք, էրթանք, պախինք։

Պզտը աղբէր էսաց.—Ըձը խնձուր չըպը, գեացէք, պախեցէք ձիւ։

Մինծ աղբէր էլաւ, գինաց յէռջիւ խնձուրըն. սահարմ, էրկու մնաց ան տե, փախաւ իրի։

Մինծ աղբէր քընաւ. պզտը աղբէր իլաւ գինաց։

Գինաց, նստաւ խնձուրը ծառը տակ։

Սահարմ' էրկու մնաց. տըսաւ փալմ սիւ ամպ ուռաւ, իրի-կէր, ծառըն մօտացաւ. տըսաւ սիվ դեմ, ձեռ իթալ, խնձուր կըտ-ռից, դառցաւ. ան էլ աներդմ' իզար, գդև իցքից. զդև քեչից, հե-ռացըցուց. փրթից, իլից ան տե. դառցաւ, իրի տուն, քնաւ։

• Առաւուտուն աղբէրնիր էլան վի, գեացըն խնձուրը թամաշէն. տըսան խնձուրմ տարած, էկըն. քնու մէջ զաղբէր բռնըցըն, տփի-ցըն, տարցըն.—Յիրիկիւն դիւ չէկըր խնձուր պախէնք, էկըն տարըն։

Մինծ աղբօր էսաց.—Չէ՛, դիւ գեացըր, թը պախէր։

Յիրիկիւն միջնեկ աղբէր էսաց.—Եկէք, էրթանք, մի խնձուր պախինք. մէկը տարած ըն, էրկուսն էլ չը տանըն։

Պզտը աղբօր սարցըն.—Իլլ', էրթանք։

Էսաց.—Գեացէ՛ք, պախեցէ՛ք ձի խըմա. իս չըմ ուզը։

Էրկու աղբէր էլան, գեացըն. սահարմ էրկու մնացըն, վախա-ցան. փախան էկըն, գեացըն ուրինց տեղ, քընան։

Պզտը ախպէր էսաց.—Ես գըտիմ. մկայ իմ ախպէրքիր փախած՝ էկած։ Էկաւ, գինաց խնձուրը ծառը տակ, տըսաւ մարդ չկայ. ադ էլ նստաւ ա տէ սահաթմ, էրկու. տըսաւ, սըւտակ դև էկաւ. ձեռ իթալ զխնձուր կտռից, դառցաւ. խատ դառնըլին նիտ անեղմ էզար. զդև պառկացըցուց գիտըն։ Ջեռ իթալ զոտ, բռնից, քեշից. տարաւ, հեռացըցուց. փըթից, ելից ան տէ. դառցաւ, ուր տեղ քնաւ։

Լուսցաւ. ախըրտանք էլմ գեացըն խնձուրը թամաշէն. տըսան ան մէկէլն էլ տարած, մնացի մէ, էկան էլմ քուփր տուին ախբօր։

Պզտը ախբէր կաւր.—Այ ճանըրմ, իս չըմ ուզը, չըմ ուզը. խնձուր կձը պէտք չէ։

Ցիրիկուն ասըցըն.—Դէ՛, յէլլ՛, գինա՛, զքիւ խնձուր պախէ։

Էսաց.—Դիւ գեացէ՛ք, կձիր սպախեցէք. մնաց իմ, իս չըմ էրթայ։

Մինծ ախբէր էսաց.—Իս կերթամ, սպախիմ կձը խամար։

Պզտըկ ախբէր էսաց.—Կերթաս, չըս էրթայ. ձը պէտք չի։

Մինծ ախբէր էլաւ գինաց, նստաւ խնձուրը ծառը տակ, մինչիւ մթնաւ, փախաւ էկաւ. գինաց ուր տեղ պառկաւ։

Պզտը ախբէրն էլ էսաց.—Իս գըտիմ, մկայ փախի. էրթամ խնձուրը ծառը տակ։

Ելաւ գինաց. նստաւ խնձուրը ծառը տակ, սահաթմ, էրկու մնաց. տըսաւ կարմիր դև իրի, քեանց սար մը, իրի. իրի խնձուրը ծառըն մատացաւ, ձեռ էթալ, զխնձուր կտռից, դառցաւ։ Ադ էլ նիտ անեղմ իզար. դև էլաւ եարալու, փախաւ, տղէն էլ ընկեաւ իտևէն, գեացըն, խասան մանչ դաշտըն, դև մտաւ մաղարէն մի, ադ էլ դառցաւ, իրի տուն. ընկեաւ ուր տեղ, քընաւ մինչիւ խըլուսիւն. խը լիւսիւն ակախաւ, իլաւ վի, էսաց.—Այ ախբէրնիր. իս էրազը մէջ գեացը, մի խնձուրը ծառը տըսայ, դևն էլ իրի զմի խնձուրը կտռից. իս նիտ անեղմ զարկը, չընկեաւ, էլաւ եարալու, փախաւ. իս ընկեայ յիտիւէն, գեացընք չուր մանչ դաշտըն. դև մտաւ մաղարէն վե, իս դառցայ, իկայ. թա չըք խաւատայ, արըն էլ խա ճամբխըն թափը մինչիւ մաղարի բիրան։

Ելաւ, զախբէրնիր առըց, գեացըն խնձուրը ծառը տակ. ըրըշիցըն գիտըն, զարուն տըսան, խատ արնըն գինացըն մինչիւ մաղարը բիրան։

Մինծ ախբէր էսաց.—Ըզձը կախեցէք, իս էրթամ մաղարէն։

Տրիս կապիցըն, զմիծ ախբէր կախըցըն մաղարէն վէր։

Էսաց.—Աստըծու սիրուն, ըզձը քեշեցէք, ցրտու մեռայ։ Քեշիցըն դիւս։

Մինչեւ աղբէր էսաց.—Դիւ չը կեղչըցար, իս տէրթամ։

Մինչեւ աղբէր կախիցըն, քիչ մէլ էն գինաց, էսաց.—Աղբէր-նիր՝ Աստըծու սէր, ըղձը քեչեցէք դիւս. իս չուքիւ մեռայ։

Ադ էլ քեչիցըն, խանըցըն դիւս։

Գզտըկ աղբէր էսաց.—Դիւ գեացէ՛ք ձի տնիր, մարդ ըղձը չը ճանչնայ. իս կերթամ մաղարէն վի. էկայ, էկայ. չէկայ՝ չէկայ։ Քեառսուն օր նա ճրիս չը քեչէք դիւս. դիւքն էլ ձի խաց, ջիւր կը բիրէք, ուտիք. մինչիւ քեառսուն օր իս էկայ, էկայ. չէկա՛յ, թող կտէք, կերթէք։

Գզտը աղբէր կախըցըն մաղարէն վե. գնաց, էջաւ տակ։

Ճրիս ուր մէջքէն արցըկից, գինաց կան էրի. գինաց պաղչէմ տըսաւ, սարէմ տըսաւ. ան պաղչէն սիվ, սարէն սիվ, էսաց.—Իս գըտիմ, սարկ սիվ դիւուն ը. գինաց, նստաւ։ Դիւու կնըկ էլաւ, տը-սաւ մարդմ նստի պաղչէն, կանչից էսաց.—Այ խողածըն, ծառաւ իս, ջիւր խըմը. անութը իս, իլի՛, քի խաց առ գինա՛. սիվ դիվ գեա-ցը Ճէչիր. իրէք օր չէկը, գեայ, քիւ խուքըն էլ չըս ազատը անիւ ձեռնէն։

Էսաց.—Սիվ դիվ իրէք օր կայ, իրիր իմ քի մատաղ։

Կնըկն էլ էսաց.—Իս Աստըծուց էն կուզէր. էրի՛ սդայ, գիրար առնընք. ուտինք, խմինք մինչիւ մեռնիլիւ օր. ինչ Աստուած ստեղ-ծի, ստայ ի։

Էն էլ գինաց ան տե չուր իրիկիւն։

Իրիկիւն կնըկ էլաւ, տեղ չըննից, պառկան։ Տղէն էլ թուր իդի մանչ յինք, մանչ կնըկ, նուր քընաւ։ Լիւսցաւ, էսաց.—Ճամբախ կայ յեռջիւ ձը, դառնամ, գքի առնըմ։

Կնըկ էսաց.—Էրթայ, աչ ինի սըւտակ դիւու կնըկ, ալ ըղձը չառնը։

Էլաւ գինաց, սիվ դիւու սըճօռ ընցաւ, գինաց սըւտակ դիւու սըճօռ։

Տըսաւ սըւտակ դիւու պաղչէն սըւտակ, սարէն սըւտակ։

Էսաց.—Էս գըտիմ, աս էլ սըւտակ դեւուն ը, մինչիւ էրթամ կարմիր դիւու սըճօռ, Աստուած օղորմած ը։

Գինաց, նստաւ սըւտակ դիւու պաղչը մէջ։

Սըւտակ դիւու կնըկ էլաւ, ըրըչից. կեօ մարդմ նստը պաղչը մէջ, կանչից, էսաց.—Այ մարդ, Աստըծու սիրուն ըլնը, անութը իս, էրի՛, քի խաց առ. ծառաւ իս, ջիւր խմը, յո՛ւստ իկիր իս, դառցը, գինա՛ ան տե, սըւտակ դե չորս օր կայ գեացը Ճէճըր, չէկը. գեայ, խիտ տըննիլիւն գքի տըսպանը. քիւ մեղք ինի իմ վըզ։

Էսաց.—Սըւտակ դե կուրպան էմ արե քեւ։

Էսաց.—Սրւտակ դև սպանիր ես, դ'էրի օդայ. ըգձը առ, մինչիւ ուտինք, խմինք, միռնինք:

Գինաց ան տև, կնըկ խաց իթալ, կերաւ. յիրեկիւն կնըկ տեղ պալզից. պառկիլիւ ժամանակ Թուր իդի մանչ յինք, մանչ կընըկ, քընաւ։ Կնըկ էսաց.—Դի՞ւր տ'էրթաս։

Էսաց.—Ցերդիւմ իմ էրի, տ'էրթամ կարմիր դիւու մօտ։

Էսաց.—Գուրծ չունիս, մ'էրթայ, քե կսպանի. էրի՛, ըգձը առ։

Ադ էլ էսաց.—Սպանի, սպանի. տ'էրթամ։

Մարդն էլ ճերմակ դիւու կնկեան մօտէն ելաւ, գինաց կարմիր դիվու պաղչէն նստաւ։

Կարմիր դիւուն պաղչէն էլ կարմիր, սարէն էլ կարմիր։

Կնըկ դիւս էլաւ, տըսաւ մարդմ նստի պաղչը մէջ։

Էսաց.—Այ խուղածրն, անուԹը ես, էրի խաց առ քի, ծառաւ ես, ջիւր խըմը, ադ տիղէն ելի՛, գինա՛. կալմիր դև գինացիլ էր Եէջիր, Եէջըրըց իրի, եարալիւ էր. աս օր ալ գինացը Եէջըր, գեալիւ խիտ զքի կսպանը։

Էսաց.— Ընդըրա խամար եկեր իմ, ըգձը սպանը:

Ինչ էրաւ. խիտ չէլաւ։

Կարմիր դև յըրկիւն էկաւ. տըսաւ մարդմ պաղչը մէջ նստիր ի. կնկեան էսաց.—Դիւ չը կարողացա՛ր, աստ մարդ ինչ կուզէր, տէրան էրթէր. ես չգէր, զան տըսնէր։

Կնըկ էսաց.—Ես ինչ էրը, չը գինաց։

Ադ էլ կանչեց զմարդ, տարաւ ան տև.—Դիւ ի՛նչ մարդ ես։

—Ես ճամբխորդ իմ։

—Խաւք ուր Թիւուվ, օձ ուր սյուռտով չգեայ աս տև. դիւ ի՛նչխ եկեր ես աս տև։

Էսաց.—Խաւք չգեայ, օձ չգեայ, ես եկեր իմ։

Էսաց.—Որ էն տեսակն ի, ա տեղ քընի. առաւուտուն ես, դիւ տ'էրԹանք կռըւ։

Քընաւ մինչիւ առաւուտուն։

Առաւուտուն մարդ, կարմիր դև դեացըն, պաղչը մէջ առըն յիրար. կռուան մինչիւ յիրիկուան։

Կարմիր դև էսաց.—Գինա՛, դիւ իմ կնկեան ծուց պառկը, առաւուտուն էրի. էլմ ես, դիւ կռուընք։

Ան էլ գինաց կնկեան մօտ։

Անմախական ջիւր կէր ան տև, դև մտաւ էդա ջրըն մէջ. լուղացաւ, դիւս ելաւ, եարէք սաղացաւ։

Էդ մարդն էլ գինաց, յիրեկիւն Թուր իդի մանչ յինք, մանչ կնըկ, քնաւ։ Առաւուտուն ելաւ, գինաց կռիւ:

Ինչ կը քելի, արըն, արընք ջիւր բըլինքներաց Թափը տակ։

Գնացըն, կռուան մինչիւ ճաշուն. մարդ չկարողացաւ մէկ դարպ զարկի, անճախ զինք պախից, դև չսպանէր, մինչիւ բրինճ մտիր տաքցաւ. որ տաքցաւ, կռիւ էրըն մինչիւ յիրիկուան։

Էլմ դև էսաց.—Գինամ, իմ կնկան կուշտ պառկը։

Մարդ գինաց տուն. դևն էլ լուղացաւ, նստաւ։

Մարդն էլ գինաց տուն, յիրիկվան տեղ չընիցըն. էլմ թուր էդի մանչ յինք, մանչ կնըկ, քնաւ։

Դիւու կնըկ մարդիւն էսաց.—Առաւուտուն կերթաս կռիւ, թէ դև զքի չըսպանից, էլ դիւ չգեսս տուն. կերթաս ճնարը ծառը տակ խուրմ կայ. ան ծառը տակ անմախական ջիւր կայ. դև կը խրկիս, գեայ տուն, դիւն էլ կը մտնիս ան ջրը մէջ լուղկանաս. քիւ նարէք կը սաղանայ. դև տնէն գեայ, կը զարկիս, կսպանիս։

Մարդն էլ առաւուտուն էլաւ, գինաց կոըւ. ինչ կը քէլի, արըն արընքջիւր բրինճքներաց կը թափը տակ։

Կռըւ էրըն մինչև յիրիկուն. մէկ դարպ չէզարկ դիւուն, անճանք զինք պախից. դև չսպանից զդայ։

Յիրիկուն դև էլմ էսաց.—Գինամ տուն։

Մարդ էսաց.—Ես չըմ էրթայ, սս օր դիւ կերթաս տուն։ Դև էսաց.— Ինչու չըս էրթայ։

Էսաց.—Էրկու օր իլաւ ես կէրթամ. սս օր դիւ ա՛էրթաս։

Դևն էլ թուղ իտու, գինաց տուն։

Մարդն էլ գինաց. ճնարը ծառը տակը խուր տըսաւ. ջիւր էխան, մտաւ ջրու մէջ. լուղկացաւ, դիւս էլաւ։

Նարէք սաղացան՝ քեանց առաջն էլաւ։

Դևն էլ գինաց տուն. կնկեան էսաց.—Դիւն էր մարդիւն ըսըցըր «չգեաս տուն»։ Էսաց.—Չէ, ես խապար չունիմ մոտէն։

Էսաց.—Դիւ խապար չունիս, ադ էլ չգըտի խուր ինչ տեղն ի, ցրտուն նարէք տը պագը. առաւուտուն կերթամ, կը զարկիմ, կըսպանիմ։

Առաւուտուն դև իլաւ վի. ինչ կը քէլի, արընք, արընքջիւր բրըճքներուց կը թափը տակ։

Գինաց պաղչը մէջը, էրկուս առըն յիրար, կռուան. էլ դև չկարուղանայ դարպ զարկը մարդիւն. մարդն էլ էզար, զդև սպանից. իրի տուն։

Կնըկ էսաց.—Նստինք ըդայ. ուտինք, խմինք, չուր մեռնինք։

—Չեզնի, էսաց. ես սս տե չը մնամ։

Կընըկ էսաց.—Ես կըսըմ՝ մնանք սս տե. չէզնը՝էրթանք։

Էլաւ կարմիր գիւու կնըկ առըց, ինչ կէր առըց. էկան սըւտակ գիւու մօտ։ Սըւտակ գիւու կնըկն էլ առըց. ինչ կէր առըց, էկաւ սիվ դիւու մօտ։

Սեւ դեւու կնկեան խաղն էր ուսկը կատու, ուսկը մուկ մանչ ուսկը սըճուն կը պտուտէն։

Սըւտակ դեւու կնկեան խաղն էր, ուսկը աղուես, ուսկը լպըղ-տրակ մանչ ուսկը սըճուն կը պտուտէն։

Կարմիր դեւուն էլ ուսկը կաքաւ, ուսկը բաղէն մանչ ուսկը սըճուն. անիւ խաղն էլ էն էր։

Կարմիր դեւու կնըկ էսաց.—Աս բանիր կը դնիս մէկ տոպրկէ մէջ կը կապըս քիւ քեամակ, քի պէտք կըլնը։

Աղիւնքն էլ՛ էլան, մալ, ապրանք, ինչ կէր առըց, էկաւ յէռջիւ մաղարը դռան. շրիս չէ՛ կախ էր, շրիս յիրար լտու. աղբըրքիր մա-ղարը բիրնէն կանչըցըն.—Այ աղբէր, դի՛ւ էկըր։

(Քեանիմ խնձուր տարըր ըն դևիր, բիւլոր իրիւ)

Աղ էլ մալ-ապրանք կապըց, ամին քըչեցըն վի, մնաց կնկտիր. սեւ դեւուն կնըկ քըշից վի. սըւտակ դեւուն էլ, մնաց կարմիր դեւուն։

Կարմիր դեւու կնըկ էսաց.—Դիւ իլի՛, իս նուր կըլնիմ դեւա։

Մարդ էսաց.—Չէ, լ ս չըմ թուղնըմ զքի սդայ։

—Մա՛րդ, էսաց. դիւ իլի, կը փուշմըճիս։—Չէ՛, դիւ տըլնիս։

Կնըկն էլ էսաց.—Իս գըտիմ. զքի տը թուղնիմ էդա խուրը մէջ. դիւճեայ ի, թա մնացըր սդայ, կեւթաս սև դեւու փաճճարէն. դըրքմ կայ ան տե, կը կարդաս. որ կը կարդաս, սև խուն, սըւտակ խուն, կգեան վար ջրուն. կը կռուըն. զքի կը թըլիս սեւ խույու քեամակ, սեւ խուն կը թըլի սըւտակ խույու քեամակ. սըւտակ խուն զքի կը բիրէ լիւս աշխարք խանէ դեւա։

Զկարմիր դեւու կնըկն էլ կապից, քըշիցըն վի։

Աղբէրքիրու աչ ինչ ընկեան զկարմիր դեւու կընըկ, առըցըն.

—Մի աղբէր գեայ, մի բանըմ չի տայ. ինչ կայ, տառնը ուր, սալ դնինք մաղարը բիրնի վըէն, թը մնայ մաղարէն։

Սալ քըշըցըն վըր մաղարը բիրնըն. զկնկտիր, զմալ. ապրանք, առըն, գեացըն։

Ինչ գեացըն, խըօխպէրն էլ մեռի. մինծ աղբէր նստաւ թախտ. մէկ էլ աղբէրն էլ էլաւ անիւ վուզիր։

Կընկտիրն էլ ըսըցըն.—Մինք քեառսուն օր իրաւունք չընք իտայ պսակուըր։

Դառնանք պզտըկ աղբօր. աղբէր անընցկուն կանչից աղբէր-քիրուն. աղբէրքիր ձէն չտուիցըն։

Աղ էլ դառցաւ, գինաց սեւ դեւու սարէն. տըսաւ փաճճարէն դիրքմ կայ. առըց, կարդաց, էլաւ ծուվ. տըսաւ սըւտակ խուն, սեւ խուն վար ծուվուն կռուան. աղ էլ գինաց, մօռացաւ, զինք իթալ

սըւտակ խուլու քեամակ. սըւտակ խուն զան իթալ սիվ խուլու քեա-մակն. սիվ խուն տարաւ մութ ախչարք, իջքից դիւս։

Գինաց մանչ քեաղքըն կան իրի, գինաց, էլաւ պառւու ղօճախ, էսաց.—Պառաւ, ղօճախ կը տիրէ՞ս։

Էսաց.—Մեռնիմ քի. մընչ կայ ուտինք, մընչ կայ խմինք, կը տիրիմ. ընչի՞ չըմ տիրի։

Էն էլ իլաւ, ձեռ իտու ճեպ. էրկու-իրեք ոսկը իտու պառաւ, էսաց.—Տա՛ր քեաղաք, ուտիլիւ բան, ջիւր առ, իրի։

Պառաւ առըց իրի. կիրան։

—Պառաւ, էսաց. ջիւրմ բի, խմիմ։

Էսաց.—Վ,չապմ մոի ալըրի ակ. ջիւր չթուղնը գեայ. օրէն աղջըկմ տը տանին, տան վիշպուն. նուրէն թուղնը ջիւր, գեայ. էն արընջիւր խմին. աս օր իրիք օր կայ, ջիւր չկայ մի քեաղաք. թագեաւուրը աղջըկ տը տանըն, չէրթայ։

Էսաց.—Պառաւ, ինչ ժամանակ թագեաւուրը աղջըկ տանըն, ձը իմաց կտաս։ Էսայ.—Շատ աղէկ։

Թագեաւուրն էլ էսաց.—Քաղաքմ չըմ աւըըմ աղջըկմ ապով։

Էլաւ, աղջըկ զուռովէն իտու, տարան, կապըցըն ճնարը ծառ. տարուղնիր փախան, էկըն։

Պառաւն էլ իմաց իտու տղըն.—Թագեաւուրը աղջըկ տարան։

Մարդն էլ իլաւ, զուր թուր առըց, գինաց. տըսաւ ճնարը ծառ, կեօ յէռջիւ աղըըըն. աղջըկ կապած ճնարը ծառ, գեացած. ան էլ աղջըկ արցըկից ճնարը ծառէն. առըց, նստաւ ան տեւ։

Աղջըկ էսաց.—Ասւործու սըրուն ըլնը, իմ՛, գինա՛. վշապ ըգձը տ'ուտը. գքի չուտը։

Էսաց.—Ձքի տ'ուտը. ըգձը էլ թ'ուտը. իմ քիւն կը տանը. գլեօխ դնիմ քիւ գիւք. քիչմ քընիմ՝ վըշապ ինչ գեայ, ըգձը իմաց կտաս։

Գլեօխ իդի աղջկու գիւք, քընաւ. վշապ գլեօխ աղըրի ակէն էխան դիւս. աղջըկ ինչ տըսաւ, լիզուն մանչ բերնըն չուրցաւ. էլ չկարուղացաւ խապար տէր յախու. արտըսուք կաթաւ տղի յիրեսը վրէն։ Տղէն ակախաւ, տըսաւ վըշապ ակէն իկի դիւս. տղէն էլ իլաւ. աղջկան ձիւ բռնից, յիտուց քեչուաւ. քենի վըշապ դիւս էկաւ, ան զաղջըկ յիտ քեչից. մինչիւ վըշապ ակէն դիւս էլաւ։

Տղէն թուր իտու ուր սրտըն, զինք իթալ վըշապու բիրան. վը-շապ ատ մարդ կըլնը, թուր վըշապու բիրան լտռից. ինչ տար ուժ կէր ինի, վըշապ կլնից զմարդ, ուժէ ընկեաւ. թուղ իտու։ Մ··րդն իլաւ զվըշապ փրթից, ջիւր պրծաւ. գինաց։

Աղջըկն էլ ձեռ իտու արընըն, էզար ադա մարդիւ քեամակ.

թուղ խառու, գինաց տուն։ Քեաղաք քեաղքուվ ադա էրնջիւր կը տանըն։

Աղջըկ էսաց.—Մը տանէք, կը զուլալվը. չատտացըն։

Թագեաւուր էսաց.—Աղջը, դիւ քեաղաք տաւիրըս։

Էսաց.—Այ խէրըկ, վըշապ սպանիցըն.—Աղջըկ, վո՞ւվ սպանից։

Էսաց.—Մէկ մարդմ էր, չըմ ճանչնայ։

Ադա ողէն ականջ էրաւ. ալըսաւ Սմուլ խաւքիրու ձագուիրու ձէն կդեայ. ըրըշից ճճարը ծառ, տըսաւ Սմուլ խաւքիւ բիւն. տըսաւ վըշապմ փաթըթուի բիւլուր ծառըն. քիչ մնացի ձագուիր ուտը։

Ան Սըմուր խաւք ձագուիր կը խանը, ամէն տարը վըշապ կուտը. Սմուր խաւք չը գըտի. ով կուտը։

Սմուր խաւք ուր թիւքիր տուը էրեգեական, արեւ ան քեաղքըն չառնը. լիւս ան քեաղքըն չառնը։

Տղէն էլ թուր քեշից, ադա վըշապ սպանից, փրթից. ճեաղալակմ իլից. տարաւ Սմուր խաւքիւ ձագուիրուն։

Սմուր խաւք վիրուց տըսաւ. խուլ էլաւ, իրի, տը զարկէր, ծառէն բիրէր տակ, սպանէր։

Ձագուիր գեացըն յէռջիւ մօր.—Ատըծու սիրուն, դիւ բան չէնըս. աղըկ մի դիւշման սպանը, մի խամար մըս բիրը։

—Այ մարդ, էսաց Սմուր խաւք, քիւ խնդըրք էրա՛, կատարըմ։

Էսաց.—Իմ խնդըրք էնը, ըզձը տանըս իմ խէրինական խուղ։

Էսաց.—Կիրթաս, կը բիրիս եօթ դմակ, եօթ տըկ ջիւր։

Սմուր խաւք վըրուց էկաւ տակ. արեւ առըց վար քեաղքըն, լիւսցաւ. ջիւր չկէր, ջիւր էրի, լիւս չկէր, լիւս էրի։

Թագեաւուր խոու կանչէլ.—Վուվ դվշապ սպանը, վուվ ա ընցկուն էրաւ, լիւս առըց, գեայ, թագեաւորութին կուզը, մալ կուզը, ինչ կուզը, տըտամ։

Աղջըկ էսաց.—Այ խէրըկ. իս կը նատիմ փեճճէրէն, քեաղքը մարդ թը գեան, փեճճէրի տկով ընցնըն. իմ նշան կայ. իս կը ճանչնամ վըշապ սպանող։

Ադ մարդն էլ էկը, գեացը պառուու տուն էլմ։

Քեանի մարդ կէր մանչ քեաղքըն, էկըն. փաճճարի տկով ընցան։

Մարդ մանչ քեաղքըն չմնաց, թագեաւուր աղջկան էսաց.—Ան մարդ չճանչցմը։ Էսաց.—Ան մարդ չէկը։

—Այ աղջըկ, էսաց. ալ մարդ քեաղքըն մէջ չկայ։

Էսաց.—Նալալ իցկե մանչ քեաղքըն, տնիր կան դեայ։

Ընկեան մանչ քեաղքըն, կան էկըն. մարդ չտըսան առանց գեալ. գեացըն պառուու տուն. տըսան դօճախմ կայ ան տե. էկըն, պատմիցըն.—Թագեաւուր ապրած՝ մնացը պառուու կօճախ։

Էսաց.—Գեացէք, ան մարդ բիրէք։ Գեացըն, բիրին։

Աղջըկ ըրըշից, էսաց.—Նա ի, իմ նշան կեօ վրէն։

Թագեաւուր կանչից զան մարդ, տարաւ.—Վշապ դիմ իս սպանի, էսաց Թագեաւուր։ Էսաց.—Խա։

Էսաց.—Սմուր խաւք ճնչխը իլաւ, էկաւ տակ, իմ քեաղաք լիւսցաւ։

Սմուր խաւքին Եաղլըն էլ Թագեաւուրը խամար էրաւ։

Թագեաւուր էսաց.—Այ մուրդը. աղջըկ դիւ իս ազատը քի խմայ. իմ քեաղաք դիւ իս լիւսցըցի, մըկայ Թագեաւուրութին կուզըս, տամ քի, վզիրութին կուզըս, տամ քի. ինչ կուզըս, տամ քի։

Ադ էլ էսաց.—Քիւ աղջըկն էլ, Թագեաւորութին էլ, վզիրութին էլ պիլող կինայ քի. քինէ կուզըմ եօթ անծին ծիծկու դմակ, եօթ տըկ ջիւր. ալ յիւրիշ բանմ քինէ չըմ ուզը։

Թագեաւուրն էլ եօթ անծըն ծիծկու դմակ իբի, եօթ տըկ էլ ըի. մարդ էլաւ, առըց, գինաց մա Սմուր խաւք, ջիւր ու դմկնիր էգիր վար Սմուր խաւքին. ինքն էլ խիծաւ։

Սմուր խաւք Թռաւ, բանցըրացաւ։

Տղէն էսաց.—Աստըծու սիրուն, իս ցըտու մեռայ։

Էսաց.—Դիւնէն քենիմ կերևայ յէռջիւ քիւ աչիչ։

Էսաց.—Քեանց արտըմ չափ։

Քիչմ էլ բանցըրացաւ, էրեգեական մօտացաւ։

Էսաց.—Աստըծու սիրուն, իմ քեամակ իրիցաւ։

Էսաց.—Դիւնէն քենիմ կերևայ յէռջիւ քիւ աչիչ։

Էսաց.—Քեանց իղան գլխիւ բաչ։

Քիչմ էլ բանցըրացաւ, էսաց.—Աստըծու սիրուն, իս էրիցայ։

Էսաց.—Ալ դիւնէն կերևայ յէռջիւ քիւ աչիչ։

Էսաց.—Ալ բանըմ չըմ ըրընայ, մթնաւ յէռջիւ աչքիրուս։

Խաւք դառցաւ, բիրանըս իմ էկաւ։

Էսաց.—Ինչ իս կռամ, դմակմ Թալ իմ բիրան, տըկմ ջիւր լըց վրէն։

Քեանը անը կռաց, դմակմ իԹալ, տըկմ ջիւր իլից։

Մնաց յիտքի դմակ. ձեռնէն պռծաւ, գինաց ծուվու մէջ։

Խաւք կռաց. ան էլ դանակ իԹալ, ադա վուտաց մսանին կտռից, իԹալ խաւքիւ բիրան։

Խաւք տարաւ, ծուվ ընցուց. իդի ցամաք, մարդիւ էսաց.—Իլի, գինա։ Մարդ էսաց.—Չէ, դիւ գինա. իս կերԹամ։

Խաւք գըտի մսանըն կտուը։

Դիրմ էլ էսաց.—Իլի, կայնը, գինա։

Մարդ կայնաւ. տ՚էրԹէր, չկարուղացաւ։

Խաւք էսաց.—Ան յըտըն փըԹիւն ինչ դիւ տուըր ձը, ինչ էր։

Էսաց.—Քինէ պախիմ Աստըծմէց ինչ պախիմ. յըմլա յըմլա։

Էսաց.—Առ նա փառ, քըսը վար քըւ վուտաց, իլի, գինա։

Էն սահաթ սաղացաւ. խաւք թռաւ գինաց. մարդ իրի խուր քեաղաք գինաց, իլաւ վուսկիրչու տղայ։

Դառնանք վար կընկտիրուն, քեառասուն օր լըմացաւ։

Թագեաւուր էսաց.—Եկէ՛ք, պսակուըրնք։

Սիվ դիւու կնըկ էսաց. մինչիւ իմ վուսկը մուկ, վուսկը կատուն, մանչ վուսկը սըճուն պտուտըն, ձը խամար չբիրըք, իս չըմ պսակուըր։

Թաղեաւուր կանչից. զուսկիրըրչ տարաւ, էսաց.—Աս օրուընէ քինէ կուզըմ վուսկը կատուն, վուսկը մուկ, մանչ վուսկը սըճուն պըտուտըն ձը խմար. չբիրիր, գըի կսպանիմ։

Վ.ուսկըրըրչ մաղտէն էրաւ. ձիուքիր էցքից ծուց, գինաց տուն։

Կնըկ էսաց.—Քի ինչ իլաւ։

—Թագեաւուր առաւուտուն իմ վըզ մը զարկը, կըսը.—Ասօրվընէ կուզը վուսկը կատու, վուսկը մուկ, մանչ վուսկը սըճուն խաղան. իս ի՛մալ մը չընիմ։

Ադա տղէն էլ էսաց.—Վ.արպիտ, գինա բեռմ պնդիւկ բի. մարդ մա ձի չգէք, իս առաւուտուն կը չընիմ, բիրիմ։

Տղէն առըց պնտիւկ. չախիւճ մէլ առըց, մտաւ յօղէն. գդիւռ փակըց, նստաւ զպնտիւկ կուտռըց. կիրաւ։

Կէս գշիր էր, կնըկ մարդիւն էսաց.—Իլի՛, գինա՛. նա կը չընի, չը չընի, առաւուտուն թագիաւուր քիւ վըզ մը կտռը։

Մարդ իլաւ, գինաց վար իտիւ դռան. ականջ իտու, չախիւճի ձէն կգեայ. ձեռ իտու դիւռ, փակ ը, դառցաւ գինաց։

Իրի, էսաց.—Կնըկ, չախիւճի ձէն անիւչ կգեայ։

Լիւսցաւ. իլաւ, իդի վար ուր գլխիւն, իրի իտու վուսկիրչուն. վուսկիրըրչ առաւ, գինաց թագեաւուրըն, թագեաւուր իտու սիվ դիւու կնկեան։

Սըւտակ դիւու կնըկ էսաց.—Սիվ դիւու կնկեան ըլնը, ձը չըլնը։

Էսաց.—Մինչև վուսկը ադուէս, վուսկը լպտրակ, մանչ վուսկը սըճուն չխաղան, իս չըմ պսակուըր։

Ադ էլ տղէն սիվ դիւու տըսակ չընից, տարաւ թագեաւուրըն, թագեաւուր իտու սըւտակ դիւու կնկեան։

Կարմիր դիւու կնըկ կըսը.—Անիւնց կըլնը՛ ձը չըլնը, վուսկը կաքաւ, վուսկը բազէն, մանչ վուսկը սըճուն չխաղան, չըմ պսակուըր։

Ադ էլ անիւնց տըսակ. առաւուտուն տղէն իդի վար գլխիւն, իբի։ Վ.ուսկիրըրչ էսաց.—Տու., տանիմ։

Տղէն էսաց.—Ձէ. ան էրկուս որ դիւ տարըր, նա մէկն իս տը տանիմ. ճաշմ ուտիմ, դնամ։

Տղէն առըց, տալաւ կարմիր դիւու յօղէն, կնկեան աչ ինչ ընկեաւ տղէն, դէմ մի էլաւ, տղըն դլեօխ պագնից, ուրախացան վար մէմէկը։

Խապար տարան Թագեաւուըրըն, վզրըն, աս տըսակ, աս տըսակ։

Թագեաւուր էսաց.—Կանչըցէք գեայ ըս տե ան մարդ։

Կանչից. Թագեաւուըրըն աչ ինչ ընկեաւ գաղբէր, վուտքիր տխու դուղաց։ Մըկէլ աղբէր էլ էրի ան տե։

Պզտըկ աղբէր էսաց.—Այ աղբէրքիր, դիւ խա ձը էրըք, իս խա ձի չըմ էնը, սիվ դիւու կնըկ մինձ աղբօր, սըւտակ դիւու կնըկ միջնեկ աղբօրս. ձի կընկտիք առէք, քեանըմ իմ ձէն կգեայ, գեացէք, դիւ գըտէք, ձի Աստուած։

Աղ էլ իլաւ, եօթ գըչիր զուր խարսնիս իղի. զկարմր դիւու կնըկ առըց, Թագեաւուրութին առըց, Նստաւ թախտ։

Ան անտե խասաւ մրազ, դիւ էլ աս տե խասնըք ձի մրազ։



# 8

# ՖԱՅԻԶ

**Մոկաց Գինեկանց գիւղի բարբառով** *

Մէկ մարդ կերթէր արտը, ռնճպրութեն կէնըր, կընըկ խաց կը տանէր, կընըկ ինչ կը խասնէր արտ, գկնըկ կը պառկացըցէր քեամկը վերէն, մատնիք տը դնէր ճակտը վերէն, նետանեղ զարնէր, մատնըքը օղէնի ընցըցէր, կըսէր.—Կնը՛կ, էլ մարդ աշխարհի վերէն կտըրճ կա՞յ, թէ իս։

Տարիմ՝ թէ էրկու վերէն ընցաւ, աղջկան մէր իրի աղջկան մօտ, էսաց.—Աղջի՛, դիւ վրեն ընցկնեմ՝ մոնացիր իս։

Ախչիկ մօր էսաց.—Ի՞նչխ տը չմոնանամ, խաց կը տանիմ արտ իս տը պառկըմ, իմ իրիկ մատնըքը ակ դնէ վար իմ ճակտըն, նետ անեղ դը զարկէ, մատնըքը օղեն ընցըցէ չուր ադա նետ ընցընէ իմ խուդըն կըլնը քեանց կուրկմ, խատ։ Կըսը.—«Աշխըրքի վրէն կըտըրճ մարդ կա՞յ թէ իս մնակ»։

Մէր էսաց.—Վ՚աղ խաց կը տանըս, ինչ ան կըսը. «աշխըրքը...» դիւ ասա.—Սուլթան Մուրատ քեանց քի կտըրճ ի վար ախշըրքըն։

Առաւուտուն կնըկ խաց առըց, տարաւ իրիկ էլմ գկնըկ պարկայըցուց վա՛ր քեամկին, մատնըքը ակ իդի վար ճակտըն. Նետ անեղ իզար . . . գինաց, էսաց.—Կնըկ, մարդ ախշըրքի վրէն կտըրճ կա՞յ թէ իս մնակ։ Կնըկ էսաց.—Սուլթան Մուրատ վար ախշըրքին քեանց քի կտըրճ ի։

Մարդ էսաց.—Խաց ըզը խարամ կէնայ, չուրը Սուլթան Մուրատը յուլութուն չառնըմ, տըսնամ ինչ մարդ ի։

Կնըկ դարձաւ իրի տուն, Ֆայիզն էլ էլաւ, ընկեաւ ճամբախ. գինաց։ Գինաց, թա օրմ, թա էրկու օր, թա քան օր դինաց։

---

* Պատմած է Զատիկ Խեպոյեան։

Օրին մէկ կերթայ Սուլթան Մուրատը կօճախ ըլնը։
Ցիրըկուն խաց կը դնըն ան տե, ղայՖէ կը դնըն։
Ֆայիզ խաց կուտը՝ ղայՖէն ձեռ կը բռնը օր խմը։
Սուլթան Մուրատ կըսը.—Դու դ՞ւր տ՚էրթաս։

Ադ էլ զՍուլթան Մուրատ չճանչնայ. ՖճճաՃ ձեռ, կըսը.—Իս Սուլթան Մուրատը անուն լսիր իմ, տ՚էրթամ, կան գեամ, տսնամ, ինչ մարդ ի։

Սուլթան Մուրատ էսաց.—Գուրծ չունըս խիտ։

Ադ էլ էսաց.—Չէ՛, պէտք ի իս էրթամ, տըսնամ։

Սուլթան Մուրատ էսաց.—Իս Սուլթան Մուրատնըմ տըսի, իս անիւ կասեն լսիրըմ, քիւ ղայՖէն խմը, իս անիւ կասեն քի խամար էնիմ։

Էսաց.—Մինչիւ դիւ անիւ կասեն ըզի խամար չէնիս. իս քիւ ղայՖէն չըմ խմը։

Էսաց.—Հա՛ եղբար, ղայՖէն խմը։ Էսաց.—Անիւ կասեն չէնիս, խարամ ըլնը՛ թէ քիւ ղայՖէն խըմիմ։

Էսաց.—Ֆայիզ, քիւ ՖճճաՃ չթափիս։

Էսաց.—Իս չարաթմ սայիսմ կը բռնէր, ան կսպանէր. մէկն էլ կը բռնէր։ Ինչ սայիս կը բռնէր, բիրէր, կըսէր. «Դիւ իմ ձիան աղէկ չպախիս, զքի կսպանիմ։» Քեանի սայիս բռնիցը, մէկ չկըցան ձիանք աղէկ պախին։ Օրէն մէկ գինացը պազար, մէկ մարդմ տիսայ, ըսըցը. «չըս ըլնը սայիս», էդա մարդն էլ էսաց. «իս սայիսութենի խտև կան կգեամ»։ Իսն էլ ան մարդ առը, տարը տուն, ասըցը. «նա իմ գեարըն, նա էլ իմ խուտ, նա էլ իմ յարդ, իմ ձիանք լաւ պախըցըր, պախըցըր. օր չպախըցըր, ինչ կը թմը ութ օր, զքի կսպանըմ։ Ադա մարդն էլ յեմ էտուր ձիանքտիրուն, ջրից զձիանք, մտածից. «բանմ կայ ադա տեղ, էսաց. անիւ խամար ձիանք կը մոնանան. թէ չէ գեարը տան, խո՛ւտ տան, յարդ տան, ընչո՛ւ խամար մոնանան։ Իս տիւր մինչիւ լուս տը կէնամ հաշեար, Ճօպա պախիմ»։ Սայիս մնաց աշեար մինչև կէս գշիր։

«Ֆայիզ, ՖճճաՃ չթափիս»։

—Կէս գշիրըն տըսաւ մէկ փակըլխի դիւռ էբաց, զսիվ ձըն արձըկից, զթամք էզար քեամկը վերէն, զձըն քշըց դիւս, խիծաւ։

Սայիսն էլ տսաւ իմ կնըկս ի, էն էլ զբէօզ ձըն խիծաւ, իտու իտիւ կնկեան։

«Ֆայիզ, քիւ ՖճճաՃ չթափըս»։

Գեացըն մանչ դաշտըն, սայիսն ի կնկեան չխասնը, զատը կը մնայ։ Մաղարէմ կէր մանչ դաշտըն, զձըն կապըց մաղարը բիրան. ԽեաՃուՃայ ամսուն (յուվար). մտաւ նիրս. սայիսՃ էլ տըսաւ էրկու դյխէն դև ադա մաղարէն վիր։ Կնըկ ինչ խասաւ ան տե, դև էլաւ,

կանգնաւ. էսաց.—«Քեառասուն նա փէտով կը զանըմ քեօ օռուն, դիւ չուտ չէկր»։ Իմ կնըկ էսաց. «Իս ինչխ տը գէր, Սուլթան Մուրատ չուտ չքնաւ. իս քնոյ ուլնիք թալէր անիւ ականջ, գէր»։ Կնըկ էսաց, «դիւ յերգուըցիր իս, քեառասուն փէտ տը զանիս ըզի. իմ՛, էրկու դարպ տու, նա ցըխաւիլուվ զար ձը, կըլնը քեառասուն դարպ»։ Դեն էլ ելաւ, զկնկեան վուռ խտու վի, էրկու դաճ կույաթըթախ ցխաւիլուվ իզար վար վուռուն, էսաց. «դիւ անգամ մէլ անագեան չգեաս»: Ադա կնկեան մօտէն լաճմ, աղջիկմ դիւուց ելաւ։ Սայիսն էլ դարձաւ, իրի տուն։ Իրի իմ ակնջէն քնոյ ուլնիք էխան. զիս քնուց էխան վի, էսաց.—«Իլի՛, էրթանք փակեախ»։

Ցայլ՛զ, քիւ ՑՃճաՃ չթափիս։

Սայիս ըզը տարաւ փակեախ, էսաց.—Սուլթան Մուրատ, յէ՛ւր ի քիւ սիվ ձըն։

Իսն էլ ասըցը.—Դի՛ւ իս աս տե պարկը. իս գտի՛մ յիւր ի։

Էսաց.—Քիւ սիվ ձըն քիւ կնըկ քեշից դիւս, խիծաւ, գինաց։

Դի՛ւր գինաց։ Էսաց.—Գինաց մատ էրկու գլխէն դե։

Էսաց.—Անիկ ինչ սիվ ձըն խիծաւ, իսն էլ բեօզ ձըն խիծայ. յիտիւ գեացը. էսաց ինչ օր տըսած էր . . . ։

—Դիւ ճամբախ գտիս, էրթաս ան տե։

Էսաց.—Քիւ ձիանք սովրուկին. կերթան, մաղարի դիւռ կը կանգնըն։

Ցայիս, մինքն էլ տխսանք, դե, կնըկ գըրկ ու ծուց իլած՝ պառկած ա տե, լաճ աղջիկ մէլ ելի դիւուց, ըսըցը.—Դարձի՛, էրթանք։

Դարձան, էկն տուն, սայիս էսաց.—Տըսա՛ր, ինչ կանտար մեղք իս էրի, սպանի զմարդիկ։

Իսն էլ ըսըցը.—Բան չկայ։

Գինացի տուն, քնոյ ուլնիք իդի ականջս, պարկայ։

Լիւսն էր, կնըկ իրի, ձըն կապըց փակեախ ու գինաց տուն. քնոյ ուլնիք իմ ակնջէն էխան, էսաց.—Սուլթան Մուրա՛տ, յիլի վի՛, աս օր քինանք, չակախանք։

—Թը լիւսնայ, իմ ճաճրատեղ մօտխաս ա. մեօլեօվ (յուշիկ-յուշիկ). կերթամ։

Իսն էլ էլայ վի, զղայֆէն խմը, խաց կիրայ ու զիմ խուրճ թլի վար ձիուն. զիմ թուր կապըցը զձըն խիծայ տողրու գինացի մաղարի դռան վերէն կայնայ, ձըն կապըցը մաղարը դիւռ. զթուր քեշիցի, բռնիցի ձեռ, մտայ մաղարէն։

Ցայլ՛զ զքիւ ՑՃճաՃ չթափիս։ (Հալա կայֆէն բռներ էր ձեռ).

Զդիվ սպանիցը-զդիւու գլեօխ կտռիցը գլաճու գլեօխ, զաղջկան էլ կտռիցը, ըբիր գլաճու գլեօխ, աղջկանն էլ իթալ ճամ,

դիւուն իթալ, ճամ, գձըն խիծայ, իրի դիւռ կայնայ.—Կնը՛կ, էրի՛, Ճէճիր տռ, տար տուն:

—Աս օր ի՞նչ չուտ Ճէճիրից էկըր.

—Աս օր իմ Ճէճիրատեղ մօտխաս էր:

Կնըկ գխուրճ առըց, տարաւ տուն. գխուրճը բիրան բացից, էսաց.—Նէճիր խանիմ, տսնամ:

Տսաւ ճամ լաճու, ճամ աղջկան, ճամ դիւու գլեօխ. խասաւ, զմրազը վարուց առըց. դարպմ իզար վար իմ քեամկըն, էսաց.—Մրազը վարուց, քընէ կուզըմ Սուլթան Մուրատ եօթ տարի ընը ջուրը: Ցայից, քիւ Ցնճան չթափիս:

Եօթ տարը էլայ ջուրը, փէտ կրիցը:

Եօթ տարը ինչ թմըմաւ. մրազը վարուց էզար վար քեամկըս էսաց.—Մրազը վարուց. քինէ կուզըմ եօթ տարը էլ Սուլթան Մուրատ ընը չուն:

Եօթ տարը էլայ չուն, ընկեայ փուղանքտիր, կան էկը, օրէ մէկ գինացի քինուջս տուն, դռան յէուջիւ կայնայ. քինըս, ուր իրիկ խաց կուտէն. իրիկ իրիչից գիս, էսաց.—Ըսիկ, էս չան աչքիր կը նմանը Սուլթան Մուրատը յաչքիր:

Էսաց.—Դու Սուլթան Մուրատ չիս: Իսն էլ գլխուլ էրը:

Կնըկ էսաց.—Աըըկ իմ քիւրոջ բանիրն ի:

Իրիկ էսաց.—Ինչխ տըլնը, էլմ էնինք իսան:

Կնըկ էսաց.—Գըընձմ ջիւր կը տաքցնիք. իս կերթամ, խաւքինըն կը խազնիմ, զմրազի վարուց կը բռնիմ իմ կտուց, կը փախնիմ, կգեամ. իմ քիւրն էլ իմ յիտիւէն կգեայ, ինչ կգեայ ինի վար ձի. իս զմրազը վարուց կը թլիմ տակ, դիւ զմրազը վարուց կը բռնըս քիւ ձեռ, կը զանիս Սուլթան Մրատը քեամկըն, կըսըս. «եա՛ մրազը վարուց, Սուլթան Մուրատ էլմ էնիս յառաջի Սուլթան Մուրատ»: Միք վերուց կըուընք կիւգեանք տակ, ձի կը մօտանանք. դիւ կը զանիքզանըկ կէցգիք. զանըկ կէցգիք մանչ պղնձը ջրուն, կը խաշըք, կազատուըք մօտէն:

Կնըկ էլաւ, խաւքինըն խազեաւ, թռաւ, գինաց քիւրոջ տուն. խատ քիւրուջ խուսաւ. գինաց դէն, էրի դէն. քիւր մէկն էլ տըսաւ էզար, մրազը վարուց առըց, գինաց: Քիւրն էլ գիւր խաւքինին խազեաւ, թռաւ. մինչիւ քիւր խասաւ, էնի վարուց թլից տակ. քիւրուջ իրիկ զմրազը վարուց առըց, էսաց.—Եա մրազը վարուց. Սուլթան Մուրատ էլմ էնիս յառաջի Սուլթան Մուրատ. դարպմ իզար:

Իսն էլ էլայ յառաջի Սուլթան Մուրատ:

Էրկու քիւր վիրուց կռուան, էկըն տակ:

Իսն էլ ըսըցը.—Զանինք ըցգինք մանչ պղնձի ջրըն:

Քինուջ իրիկ էսաց.—Էրկուսն էլ գանինք, էցգինք մանչ պղըն-ձին. չէ՛, անի էլ անիւ քիւրն ի. քիւ կնըկ ինչխ էրաց խա քի. անի էլ սկուն տինէ խա ձը։

Ինչ մատացան, զարկըն, էրկուսն էլ էցքին մանչ պղնձը ջրուն, խաշան։

—Սուլթան Մուրատ, էսաց. դիւ կը կարգուիս քիւ քեյֆն ի, չկարգուիս քիւ քեյֆն ի։

—Ան աղջըկ ինչ իսըճը կաթ ծծիրի, իս անիւ աղջըկ չառնըմ։

Իսն սմին օր կերթէր Ճեճիր, օրէն մէկ Ճեճիրից իկի, մանչ ճամբխիւն սըսայ բալիւլմ դրած, ձիուց իջայ տակ. գըալու բացի. տըսայ աղջըկ նուր իլի. փաթութած՝ դրած վար ճամբխուն։

—Ֆայիզ. գքիւ Ֆճճաճ չթափըս։

Էդ տեղ գաղջըկ փաթըթիցը, ըսըցը.—Տանըմ, իմ խէրու խամար պախիմ։

Գինացի Ճեճիր, խազալմ բռնիցը. կթիցը, խոու աղջկե, կիրաւ. մինչիւ միծայաւ։ Աղջըկ ինչ միծայաւ, պսակիցը վար ձը։ Լաճ, աղ-ջըկ մէլ իլաւ։ Մէկ ժամանակմ վերէն ընցաւ, լաճ աղջըկն էլ միծա-ցան. խն էլ կառնէր գիմ կնըկ, գլաճ, աղջիկ կերթէր Ճեճիր, անց-կուն զմէմէկ կուզընք, աւուրմ ճամրախ խապար տալէն կերթէնք, չընք ակախը վար մէմէկը։

Օրէ մէկ էլանք, ընկեանք ճամբախ գինացընք, անցկուն գինացընք, էրկու աւուր ճամբախ հեռացանք, գըշիրը էլ չկարցան գէնք. մնացընք դիւս, գեացընք, մտանք յէրմ ինի՛ տըսանք ինչ Աստուած ստեղծի կե-րակուլ էդա յէրի մէջ կայ։

Ըսըցը.—Իս գըտիմ, էսա յէր անտէր չի. էրթանք, պաղկուինք էնա քիւճճ, ասոնց տէր գեան, վար մի չակըխըն, ակըխին գմի կսպանըն. ատաւուտուն չուտ էրթանք։

Գեացընք, մտանք ան քիւճճ մինչիւ յըրկուն, յըրիկուն տըսանք քեառասուն խատ դիվ ին յէդա յէրը տակ. Նստան, զուրինց խաց. հիրակուլ դընըն, պատրաստըն, կիրան, խման։

Գնըն ինչ կը յցըն, կտան յըրարու, կըսըն.—.Սուլթան Մուրատը կնկեան կինացը, բու իսաճը կաթ չկէրի, միծացը։

Դիըմ, էրկու, անցկուն ասըցըն. Սուլթան Մուրատը կնըկ ակը-խաւ, էսաց.—Մարդի՛կ, ըձի խաղմ կիւդեայ։

Խն էլ—Աստուծոյ սիրուն ըլնը, հաչ կաց դիւ խաղաս, անիւնք տը ակըխըն. ալ մի ազատում չկայ։

Քիչ էլ մնաց, անիւնք ամին տըսըն.—«Սուլթան Մուրատը կըն-կեայ կինաց»։

Կնըկ էսաց.—Մարդի՛կ, էլ ըզի չըմ կէրի զաւքը, իմ խազ կգեայ։

—Գլեօխ մտու իմ ծուց ինի. գեաղտիկ խազմ, չակախըն։

Կնըկն էլ քեանը կէրցաւ ճղաց, դևիրն էլ ակալխան, գեացըն տըն բիրըն, ասըն.—Մինք ցիրիկուվ քիւ յիտիւ կան գիղէնք, դիւ գչիրուվ ընկեար մի ձեռ։

Ըզը զճճլով կապըցըն սուն վի, ճրագ դըըն վար գլխիւս, կնըկ տըն մէջքիր, կէս գըշիրըն միծ դև առըց զկնըկ, պառկաւ ան տեղ։

Քիչմ մնաց, աղջըկ ակախաւ. էլաւ ջիւր առըց, խմաւ. իրի տը պառկէր,—Ասոե իմ ձեռքիր քիչմ թուլցըցու, իս մեռայ, ըսըցը։

Աղջըկ էսաց,—Դէ, կը մնջիս, չէ՛ իմ ջուչ խօր կըսիմ, ընը քիւ ջուչ փրդիւճ քիւ ականջ էնը։

—Աղջի՛, սիւթ կըսըմ. գնա, պառկը։

Քիչմ մնաց, տըսայ տղէն գինաց դիւս, իրի, ըսըցը.—Այ որդի՛, քիչմ իմ ձեռքիր թուլցըցու։ Էսաց.—Ինչխ թուլցըցիմ։

—Գինա, թուր կայ տուն գլխու տակ, առ, բի։

Թուր առըց, բըի. տղէն պզտիկ ի, թուր միծ ի, չկէրի կըտռը։ Քսից-քսից, կտռըց կապիր։ Ըսը.—Որդի՛, գինա պառկէ։

Իսն էլ զճճըլ իմ մօտէն քեակիցը, թուր առը գինացը, տաս դիւու գլեօխ կտռիցը, իրի՛, կայնայ սան առաջ. ճրագ դըը վար իմ գլխու։

Դև էսաց.—Սուլթան Մուրատ, ինչ էրազըս տըսի։—Էրազ դիւ իս տըսի, Սուլթան Մուրատը կնկեան ծուց դիւ իս քինի, թու իսըճի կաթ չկէրի, իս էրազմ տըսայ. քեառասուն ճնճուղ տեղմ էն բաշօղ (բազէն) իզար վերէն, տաս սպանից, մնաց եռսուն։

Դև էսաց.—Ան աչքով դիւ լուս չըս տըսնայ, ան գուրծ ինչ դիւ կան կգեաս, չատ հեռու ի։

Դև քինաւ, զթուր առը, տասը վըըն էլ, կտռիցը, քսան սպանիցը, մնաց քիսան. էլմի իմ տեղ կանգնայ, ճրագ դըը վար իմ գլխուն։

Դև էլմ՛ ակախաւ. էլաւ, նստաւ, էսաց.—Սուլթան . . . աս օր գըշիր ինչ էրազիս տըսի։

—Իս էրազ չըմ տըսի, էրազ դիւ . . . իս էրազմ տըսի, քեառասուն ճնճուղ տեղմ ին, բաշող իզար վերէն, քիսան սպանից, մնացըն քիսան։ Էսաց.—Ան ինչ դիւ կըսըս, քիւ զաչքուվ չըս տըսնաս։

Գլեօխ էդի գետըն, էլմ քինաւ. իսն էլ թուրն առըցը, գինացը տասնի վըըն էլ կտռըցը, մնաց տաս։

Դև էլաւ. էլմ նստաւ, էսաց.— . . ։ Իսն էլ ըսըցը.—Իս էրազմ տըսայ, քեառասուն...

Դև էսաց.—Ըռահաթ կաց, դիւ էդա բան չըս տըսնայ։

Դև էլմ, պառկաւ, քինաւ։

. . . թուր առըցը, գինացը, ինն դև սպանիցը. մնաց միծ դև։

Դև էլաւ, նստաւ, էսաց.— . . .

Իսն էլ ըսըցը.—Զմենն էլ սպանիր իմ, մնացիր ես դիւ մնակ. ինչ կէնիս, երէ։

Դև կանգնաւ ուր տեղէն, Դևն ու իսն էլ առընք յիրուր, կըռըւ. դև ինչ կը կոռի, կնըկ, կըսը,—Դև, դէ՜ դև, սպանէ, ես ժխտ քիւն իմ, ինչ ես զդև կը կոռէր, կընըկ կըսը.—Դէ՛, Սուլթան Մուրատ, դէ, սպանէ. ժխտ իս քիւն իմ։

Ֆայիզ, գքիւ Ֆճճան չթափիս։

Զարկը զդև սպանիցը, իլայ տղէն առըցը, յէրէն իլայ դիւս, ջաղչի քեար տուը յէռ.ջիւ դռան. Կնըկ, աղջըկ մնացըն յէրու մէջ. զտղէն առըցը, գինացը։

Մէկ ժամանակմ վիրէն ընցաւ.—Ա՛յ որդի՛, էլի՛, էրթանք, տըսնանք, աղա կնըկ, աղա աղջըկ ինչ կէնին։ Գեացընք յէրը յէռ.ջիւ, քեարը ծակէն իրիշիցը, տըսայ կնըկ լէշիր կէրի, զաղջըկն էլ կէրի։

Աչ ընկեաւ յիս, էսաց.—Սուլթան Մուրատ, Աստուծու սիրուն, քիւ էրես բի. անա քեարը ծակուն թամաշա ինիմ՝ նիւր թուղ մեռնիմ։

Իսն էլ էրիս տարայ յէռ.ջիւ քեարը ծակուն. ան էլ ձեռ իթալ, զերեսի կղանց կտռըց, իթալ բիրան։

Իսն էլ կնըկ թուղի, գլան առըցը, իկի քեաղաք. քօպա էրը, ալ չպսակուայ։ Ֆայի՛զ, նա Սուլթան Մուրատը կասեն քի խամար, որ կասին էլ չըս խաւատար, Սուլթան Մուրատ ես իմ։

Ինչ կասեն քմըմից, Ֆայիզն էլ Ֆճճան ձեռ միռաւ։

## 9

# ՈՐՆ Է ՊՈՌՆԿՈՐԴԻՆ

**Մոկաց բարբառով** *

Մէկ մարդիւն մէկ կնըկ կէր, մէկ էլ խըտամ էր յիւր կընկեան յառէջ. աղ մարդ խառուաւ զխըտամ, էրկու լաճ իրան կընկնից յէլան. լաճ մէլ խըտամուչ յէլաւ։ Էն ժամանակ ինչ խէր տը մեռնէր, էսաց.—Տղէ՛ք, մէկդ ձինէ պէճպահր էք։

Խէր մեռաւ, տղէքն էլ զխօր մալ տը կիսին վար ուրինց։

* Պատմած է Զատիկ Խեպոյեան:

Էդ մեծ աղբէր էսաց.—Մի խէր ինչ մեռաւ, վասիաթ իտու, էսաց, «մէկ ձինէ պեհպանր էք»։ Միջնեկ աղբէր էսաց.—Ի՞նչխ էնինք։

Էսաց.—Էրթանք կազու մօտ, մի շարիաթ էնը։

Էլան, գեացըն ճամբխը մէջ՝ տիսան կեօ, կնկեան դաւամ գեա-ցի, էն մէկ էսաց.—Կեօ, կնկեան դաւա ի, ադ կնըկ գեացը ըռիկ։ Մէկէլ էսաց.—Ան կնըկ գեացիր ըռըկ, ամա ան կնըկ տըղեօվ ի։ Մեծ աղբէր էսաց.—Կեօ, դաւում՝ դաւա էլ գեացը։ Մէկէլ էսաց.—Դավէն կուր իլի։ Մէկէլ էսաց.—Դավէն բիռնով իլի։

Տիսան կնկայ տէրն էլ, դավու տէրն էլ էկան։

Կնկայ տէր էսաց.—Դիւ կնըկմ չը՛ք տըսի։

Էսաց.—Քիւ կնըկ չէ՞ գեացիր ըռըկ։

Էսաց.—Իմ կնըկ գեացիր ըռըկ։

Միջնեկ էսաց.—Քիւ կնըկ տղեօվ չէր։ Էսաց.—Խա, տղեօվ էր։

Դավանճին էսաց.—Դէվամ չըք տըսի։ Էսաց.—Քիւ դէվան կուր չէ՞։

Էսաց.—Խա՛, իմ դէվան կուր էր։

Մեծ աղբէր էսաց.—Քիւ դէվան բալձուկ չէ՞ր։—Խա՛, բալ-ձուկ էր։

—Քիւ բեռ ճամը (Թայ) մեղր չէ՞, մէկ քացախ։ Էսաց.—Խա։

Էսաց.—Պա իմ դէվան դիւր գինաց։

—Մինք չինք գըտի դիւր գենացը. գինա՛, կան էրի, գնտի։

Դավու տէր.—Չէ՛, էսաց, դիւ իմ դավէն տը տէ՛ք։

Կնկեան տէրն էլ կըսը.—Իմ կնըկ տխսըր էք, տը տէ՛ք։

Էլաւ անուց բարբռուն։ Կնկեան տէր, դավու տէր ըսըցըն.

—Էրթանք գեազու մօտ. շարիաթ էնինք։ Գեացըն գեազու մօտ։

Կնկեան տէր էսաց.—Էսա իրեք մարդ իմ կնըկ տխսած՝ պա-խած՝ չըն իտայ, մի էրկըմի շարիաթ, նա իրեք մարդիւն էրա՛։

Գեազին ադա իրեք մարդիւն խարցընեց, էսաց.—Դիւ աս մար-դիւ կընըկ տըսիր իք։—Մինք գկնըկ չընք տըսի, ըսըցըն։

Միջնեկ աղբէր էսաց.—Անիւ կնըկ գեացը ըռըկ։

Գեազին էդա մարդիւն էսաց.—Աղուրթ, քիւ կնըկ գեացը ըռըկ։

Էսաց.—Խա՛, իմ կնըկ գեացը ըռըկ։

Գեազին էդա մարդիւն խարցընեց.—Դիւ ինչ գտիս գեացը ըռըկ, որ դիւ չըս տըսի։ Էսաց.—Ան կնըկ կեավմ գեացիր իր, մէկ դարձիր իր, իրիշիր իր յիտուց։

Ձիւջ աղբէր էսաց.—Անիւ կնըկ տղեօվ իլի՝

—Դիւ չըս տխսի, ինչ գիտցար անիւ կնըկ տղեօվ իլի.

Էսաց.—Անիւ կնըկ կեավմ գեացիր իր, մէկ դարձիր իր, իս անիւ խամար գիտցայ տղեօվ ի։

Դավանճուն էսաց.—Դու ինչ կուզիս.—Պա՛, էսաց, իմ դավէն պախած չը՛ն: Պզտի աղբէր էսաց.—Մենք խա ճամբխըն գէգէնք. դաւուսմ դաւս տըսանք։ Միջնեկ էսաց.—Անիւ դավէն մէկ աչքէն էլի։

—Դու չըս տեսի. ինչ գըտիս մէկ աչքէն էլի. էսաց.—Մէկ կճա-րէն էրծացիր էր, էսաց։

Գեազին դավլու տէրուջ խարցուց.—Աղուրթ քու դավէն կո՞ւր է։

Էսաց.—Խա՛, իմ դավէն մէկ աչքէն էր։

Ջիւչ աղբօր էսաց.—Դու ինչխ իս տեսիր։

Էսաց.—Սիվ դավէն բարձուկ ի, բեռն էլ բայմ ջացախ էլի, մէկ մեղր։

Էսաց.—Դու չըս տըսէր, ինչխ գըտիս մէկ քացախ էլի, մէկ մեղր։

Էսաց.—Ան նամ ինչ մեղր էր, ճամբխը վըէն ճանճ էն թա-ւած, մէկէլ եան քացախ էր, ճանճ հու չըր թառը։

Գեազին էսաց.—Աղո՛ւրթ, քու բեռ մէկ նամ քացա՛խ, մէկ մե՞ղր էր։

Էսաց.—Խա՛, նամմ քեացախ էր, մէկ մեղր։

Գեազին էսաց.—Ասունք իմաստուն մարդ ին, խապար չունին ձի բաներուց, դու գինա՛, քու կնկեան կան էրի, ան էլ էրթայ յիւր դավլուն։

Գեազին ադա իրեք աղբօր էսաց.—Դու ինչ կաչիք։

Ասըցըն.—Մինքն էլ ճարբեար կուզընք։

Գեազըն էսաց.—Անօթի ինք, խաց բիրիմ, ուտէնք, Նուր ձի ճարլյար կինիմ։ Բիլին ատե խաց ու կաթ։

Պզտի աղբէր էսաց.—Էսա խացից մեռլի խուտ կուգեայ։

Միջնեկ էսաց.—Էսա կաթից էլ շան խուտ կուգեայ։

Ջիւջ էսաց.—Գեազու կաթից շան խուտ կուգեայ, գեազու խացից մեռլի խուտ կուգեայ, գեազին էլ խայի մօտէն ի։

Գեազին որ լսից, կանչից զխուլիւ, իրի, զուր մէրն էլ իբի, էսաց.—Աղուրթ կըսիք, ըսէք. չըսիք, ձի իրէքն էլ կսպանիմ։

Մանկըլն էսաց.—Նա խաց որ մի ալտը խացն ը, մանծալխ-քիրու կչտան արտը խացն ը. քիչմ մանծալխ փուրիր ինք, տուիր ինք խատ արտըն։

Գեազըն էսաց.—Ան մարդ իմաստուն ի, սուտ չըսըր։

Էսաց.—Խոլիւ, Նա կաթ ինչ մաքիւ կաթ ի։

—Ան մաքիւ գեառ ինչ ըլա, անիւ մէր խատաւ, իս թալը շան տակ ծծից մեծացաւ։ Էսաց.—Ան էլ աղուրթ ի։

Էսաց յիւր մօր.—Մարէ, ճողրուն կըսըս. չըսըս՝ քի կսպանիմ։

Էսաց.—Քինէ պախիմ, Աստուծուց ինչխ պախիմ. օրէն մէկ

խէմ էրի մա ձի. ան խայի մօտէն էլար դիւ։ Էսաց.—Աս իրեք մարդն լէ իմաստուն ին։

Միծ աղբէր էսաց.—Գեազի, մի իրիք աղբօր ՇարիաթԸ էրայ. մի խէր ինչ մեռաւ, վասիաթ հրաւ,—Զի իրեք աղբօր մէկ պեճպաճր ի։ Գեազին էսաց.—Իս ձի Շարիաթ չիմ կէրի էնը։ Գեազու աղջըկ էսաց.—Ճամբխը մա ձի։ Ճամբխից։ Աղջիկ էսաց,—Ժամանակով մարդմ աչք դրիր էր վրր աղջկամ, ըսըց. «դեաս վար իմ ձեռաց.» աղջըկ չգնաց։ Աղջըկ մէկ օր խայ կը տանը սար, ադ մարդ տեսաւ աղջըկ, բռնից, էսաց.—Ասուր ճար չկեայ, խատ իմ ձեռաց տը գեաս։ Էսաց.—Ասործու սիրուն ըլնը, դիւ ըզը ջաւըր իս, ան օր ինչ ըզի տը տանըն պսակ, իս գչիր գեամ քիւ կուչտ։ Ադ մարդն էլ ադ աղջըկ թուղ իտու։ Ադ աղջըկ տարան իրկան. աղջըկ չուրիր խանից, ախ էրաւ։ Էսաց մարդ.—Ըզը չը խաւնըս։ Էսաց.—Իս գեացը սար մի մարդիրուն խաց տանը. մէկ մարդ ըզը բռնից, խուսք իմ տուիր . . . իս ան յապով ախ կէնիմ։ Մարդ յէլաւ, յիւր Ձիւրիր խազեաւ, գիւր կնըկ առըց, տարաւ ան մարդիւ տուն. Թաս-լիմ էրաւ, դարձաւ, իրի։ Ադա մարդ տեսաւ խալըմ, քոդք վար գլխիւն, էսաց,—Դու վուվն իս։

Էսաց.—Իս ան աղջիկն իմ. դիւ Ֆլան սարը մէջ ըզը բռասց էկար, իս ան օր ուխտ էրը առաջի գըչիր քիւ կուչտ պառկըմ, իս իմ իրկան Նաղլ էրի, իմ իրիկ առըց, ըզի բիրից վար դռան, ինք դարձաւ։ Էդ մարդն էլ էսաց.—Դիւ իմ մէրն իս, իմ քիւր։ Ադ մարդ, ադ աղջըկ առաւ, բիրից ուր իրկայ դռան, գինաց։

Ադ գեազու աղջըկ, ադա իրեք աղբօր էսաց.—Դիւ ըլէք, ինչ տ՚էնէք ադա աղջկան։ Ադա պզտիկ աղբէր էսաց.—Իս ըլլեր, խատ աղջկա տը պղ . . : Միջնեկ աղբէրն էսաց.—Ան իրկան աղէկու-թին էր, առըց, իբի։

Ձիւջ աղբէր էսաց.—Աղէկութին ան մարդիւն ի, օր սարը մէջ բռասց էկաւ, ջաւըրց. ինչ էկաւ մատ, յիտ, դարձուց, էսաց. «իմ մէրն իս, իմ քիւր»։

Աղջիկ էսաց պզտիկ աղբօր.—Պեպաճր դիւ իս։

Պզտի աղբէր պեպաճր էրին, մալ էրկու աղբօր վերէն կի-տըցըն։



# IO

# ՄԱՐԴ ԵՒ ՕՁ

Մոկաց բարբառով *

Թագեաւուր էրազմ' տըսաւ, կանչից ուր վուզիր իրի, էսաց.
—Ես էրազմ եմ տըսի, իմ էրզի պատասխան տուր։
—Քո էրազ ինչ ի, որ իս պատասխան տամ։
Չըմ գըտի ըսաց. դու պատասխան չտաս, մարդմ տը բիրիս, պատասխան տայ։

Վուզիր շատ կան իրի, շատ մարդ էլ իբի, չի կեարցէն պատասխան տէն. վուզիր մնաց չուար։

Մէկ օր գեղին մէկ կնիկ, էսաց ուր մարդուն։

—Մարդի՛, Թագեաւուր էրազմ տըսեր. գնա՛, պատասխան տո՛ւր, փարա բի՛, մի ապրուստ էնինք։

—Կնըկ, չըմ գըտի, ինչ պատասխան տամ։

—Գեղական կերթան, դի՛ւ էլ խիտքիր դինա՛։

Մարդ էլաւ, չուար չուար դինաց։

Մէկ քար բռաստ էկաւ, մարդ նեղաջիր էր, նստաւ, անտե քիչ մը բռահաքաւ։ Չէն էլաւ քարից։ Իրիշկից, օձ մը տըսաւ։

—Մարդ, դիւ դի՞ւր (ուր) գեաս (կգնաս)։

—Վալա, Թագեաւուր էրազ մը տըսի, էրթամ անուր պատասխան տամ։

—Դիւ գըտի՞ս անու էլազ ինչ ի օր պատասխան տաս։

—Չէ, վալա, չըմ գըտի։

—Օր թէ չիս գըտի, ինչո՞ւ կերթաս։

—Իմ կնըկ վըր ձի զիւրիր ի, իս անու ախուն կերթամ։

—Որ ընցկուն ի, անու էրազ քի նշանց տամ. Թագեաւուր օր ինչ տայ, դիւ բիրի՞ս խա ըզի կիսիս։

—Խա՛, վաղտա ըլնը, էսաց. շատ յէրդում յէրդվըցաւ էլ։

—Դէ՛, էլի գլնա՛, Թագեաւուրըն էսա՛. դիւ մէջ էրզին տըսըրիս էրկնուց դէլ կը թափէր. Պատճառն էլ ինչ ի, աշխարք էղած դէլ.

* Պատմած է Զատիկ Օհան·

գլի պոխի, յէշար կաց, քի չսպանին, քու Թագեաւորութեն-քախց ձեռնէն առնըն. էան էլ ինչ կուտայ, բի խա ըզի կըսի։

Մարդ էլաւ գնաց, գնաց գիմաց Թագեաւուըրըն գաղրաւ։

Թագեաւուր էսաց.—Դիւ ինչ իս իկի։

—Իկիր իմ, քիւ էրզին պատասխան տամ։

—Դիւ գըտնիս, իմ էրազ ինչ ի.—Բալէի գըտիմ, էսաց։

Դիւ տըսար մէջ էրզըն էրկնուց գէլ կը Թափէր, աշխարք էղեր գէլ. յէշար կաց, գքի մէջ չուտըն։

Թագեաւուըը շատ փարայ էտուր անու, մարդն էլ էսաց։—Թագեաւուր, խա զի մարդ դիր, ճամբխէն ըզի չԹալնին։

Թագեաւուըը շատ մարդ իդիր խիտ, էկան։

Աղու միտք ինչ կի, զէդ մարդիր իբի խատ ուր, զան օձ սպանին։

Էկաւ, խասաւ էան քարու մօտ, մարդեր պախից, քար մի իդի էս ծիւց, փարէն էլ մէկէլ ծիւց, էսաց.—Ինչ իս քալին կը զարկիմ, դիւ էլ յիլէք ըզի յիւզնէք, զօձ սպանինք։

Ելաւ, գինաց, դիմաց օձուն դաղրաւ, կանչից.—Օ՛ձ, դիւս արի, փարէն բիրիր իմ, իս, դիւ կըսինք։

—Ցիւր ի փարէն։ Փարէն չանք էտու, էսաց.—Աղ մէկէլ ծիւց ինչ ի։—Ջաւ չի, էսաց.—Քեար դրեր իս ծիւց, ըզի սպանիս. գինա՛, չըմ իգեայ դիւս։

Մարդ էլաւ, դարձաւ, գինաց մարդիրուն էսաց.—Ելեցէք, գացէք, էլ իս չըմ վախինայ։|

—Էկաւ ույ տուն, կնըկ էսաց.—Մա՛րդ, չէ դիւ չէր իրԹիր։

—Կնիկ, մէկ օձ ըզի նշանք էտու։

—Դիւ օձուն բան չտուի՞ր։—Ջէ, էսաց.—Վ,աղ միզնէ դաւա չէնը էան օձ։—Ջըմ գըտի. իս մարդ բիրի խա զի, սպանի ան օձ, դիւս չէկաւ։

Միւս տարին Թագեաւուր էլմ էրազ տըսաւ, էլմ կանչից մուզիր։

—Թագեաւուր, մուզ ինչ պատասխան տուիր ի. էլմ՝ էան բիր։

Ելան, ողորկըցըն յիտիւ ան մարդուն։ Մարդ մնաց շուար, բան չըգըտի, խատ օձուն պէպախսութեն իրի, մկայ չըգըտի ինչ պատասխան տայ։ Կնիկ ըսաց.—Մարդի՛, գինա՛ մատ էան օձու։

Ելաւ շուար շուար գինաց, գ՚նք էտու էան քեարը տակ։

Օձ էլմ՝ կանչից։—Դի՞ւր տ՚էրԹաս։

—Թագեաւուըը օղորկիր ի մա զի, ուզիր ի, էրազ ի տըսի, էրԹամ։

—ԷրԹա՛ս, գըտնի՞ս ինչ ի անուր էրազ։—Ջէ, հաւատայ։

—Որ Թէ չըս գըտի, ինչ տ՚էրԹաս։

—Էկեր իմ մա քի, սէրն Աստըծուն, ըզի կալանի։

—Ան դիրն էր, դիւ իկի մա դի, քի չանք տուը, դիւ փարէն բի-
րիր, ըզը չի տուըր։

—Աս դիր վաղտա ըլնը, ինչ տայ, բիրիմ, տամ քի։

Օձ էսաց.—Մարդ գինա, Թագաւուրին էսա, իս գըտիմ քիւ էրազ ինչ դիւ տըսար. գըշիր մանչ էրզըն էրկնուց աղուէս կը Թափէր, պատասխան ինչ ի, քիզնէ յիշար կաց. աշխարք էղեր ի լեպ (կախարդուած). մէկ գքի չիւտի. քիւ բախտ քիւ ձեռնէն առնը։

Էլաւ, գինաց մա Թագեաւուր դադրաւ, Թագեաւուր էսաց. —Էկա՞ր։—Իս ա, էկայ։

—Իմ էրազ ինչ ի։—Դիւ տըսիր իս էրկնուց աղուէս կը Թափէր։

—Իս տըսիր իմ ալուիս ի Թափի, անու պատճառը ինչ ի։

—Անու պատճառը էնը ի, աշխարք էղեր ի լեպ, քիզնէ յիշար կաց, մէկ էլ քի չի խափի, քիւ բախտ քիզնէ առնը։

Թագեաւուր անու շատ փարայ ետու, ուր փարէն առից, էկաւ, միտք էրաւ։—Ինչո՞ւ ան ճամբխով էրԹամ. հիւրիչ եանով կէրԹամ։

Ճամբախ փոխից, էկաւ ուր տուն, կնիկ էսաց.—Մարդի, էլ՛ օձ նշանք էտուր։

—Խա՛, էլ օձ նշանք էտու։

—Օձուն զատ տուի՞ր։—Չէ, հիւրիչ ճամբխով էկայ։

Մնաց մէկէլ տարըն, Թագեաւուրը էլ էրազ տըսաւ, էլ մու-
դիր կանչից։

—Վուզի՛ր, էսաց. մէկ կուզիմ իմ էրզին պատասխան տայ։

—Էլան էլ՝ օղորկեցին յիտիւ ան մարդունէ։

Մարդ մնաց շուար, էրԹայ չըլնը, չէրԹայ չըլնը։

Ցելան զիւրով տարան. հասան ան քեարըն. մարդիրուն էսաց. —Դիւ գացէք, իս էրԹամ մատ քեարին, իգեամ։

Մարդ ուրին ուրին էսաց.—ԷրԹամ, օձ ըզի կծի, չէրԹամ, մատ Թագեաւուրին սուտ դիւս իգեամ, ըզի սպանի, աղէկ ի օձ ըզի կծի, մատ Թագեաւուրի սուտ դիւս չը գեամ։

Էլաւ, գինաց մա քեարին կծկուաւ շուար-շուար. օձ կանչից վիրայ։

—Դիւ է՞լ իկիր։—Էլ իկիր իմ՛ խա՛ վալլա, էլ իկի. ինչ ինիմ։

—Ան գեախ նեղը կըյնիս, կըդեաս, էան գեախ ինչ փարէն ծիւծ-
դի, փախչիս, չըս իդեայ մա դի։

—Վալա, ան առաջուան փարէն ինչ տուը, բիրիր իմ խիտ. մկայ էալ ինչ տայ, բիրիմ էսա տեղ, առ քի. ըզիկ պըծուցիս անու ձեռնէն։

—Գինա, էսա Թագաւուրին, դիւ տըսըր իս մանչ էրզին գեառ կը Թափէր էրկնուց. պատճառը ինչ ի. աշխարք էղաւ գեառ, դէօր լուս կէր, խմը՛, բէյթ էրաւ։

Էլաւ գինաց, դիմաց Թագաւորին դադրաւ, Թագաւոր խարցընից։

—Դու էլմ էկար, իս ինչ էրազ իմ տըսի։ —Դու մանչ էրգին տըսիր իս էրկնուց գեառ կը թափէր. աշխար էղաւ գեառ, կիր, խմի։

Ադ մարդ առըց զուր փարէն, դիւզ էկաւ մատ օձ, կանչից. —Օ՛ձ, դէօր իս, արէ՛, զփարէն կըսինք։

Մարդ իբի, իրիք դըրուան էլ կըսից. օձ էսայ։—Մարդ, մռտմր, իս ինչ կէնիմ փարէն։

—Աս քիւ սատաղէն ի, ընկեաւ իմ ձեռ. էրկու դիր պէպախտութեն էրը։

—Չէ, քի լօմս չկեայ, աշխարք էղեր էր սկուն, մկայ աշխարք էղեր ի գեառ, իս քիւ չուարութենի աբով նշանք տուր, մէկ էլ աշխարք ճարպըցի։

Մարդ փարէն առից, գինաց ուր տուն։ Ան խասաւ ուր մուրազին . . . ։ ։

# II

# ԳՏԱԾՈՒՐԻԿ ՓԱՐԷՆ

Բուլանըխայ բարբառով *

Մէկ խուֆարէ մի ճամբու հետ կէրտար ուրին քաղաք մի դառնըլու. կէրթայ մեծ դուրան մի րռասթ գիկայ, կիչկայ օրտայ բեռ մի ջճօռ օսկի էդ տեղ դրուկ ա. կոլրուկ յետ ու յառէջ. կուչտ ու բոլոր կիչկայ, կը տեսնի օր մարդ չկայ.—Եա՛ ռապի, կըսայ. ես իմալ էնիմ. թէ իտա փարէք վէրում տանիմ քաղքի մէջ, պտի ըսին—«Ֆուխարա, դու յուր, իտա խըցըր փարէն յուր. եա գողցեր իս, եա գտեր իս» . պտի տփին գլխուս առնին։

Հըդ էդ ըսելուն՝ ձիաւոր մի էն դիուց կերեայ. գիկայ կը մօտենայ օր՝ մէկ fաստաfուստով աղէ մի. ձին կը քշայ, գիկայ վըր խուֆարա մարդու գլխուն, կը հարցու.—Ֆուխարա, դու յօրէ իս կայնէ վըր ըտա ճամբուն։

—Աղա, կըսայ ֆուխարէն, քընէ պայիմ, Աստուց ինչ պայիմ. իտա ջրճօռ օսկին գտեր իմ, չըմ յիշխնայ հետս ի տանիմ քաղաք, կը

թռնին տանին ընծնէ. էն աղէկ օր քզի պէս աղէ մի բռասք էկաւ. արի, յերար հետ կխինք։

—Վէրու էրտանք, կըսայ աղէն. ըսկի մը վախենայ, աշխարհ լէ գինան օր ես աղա իմ ու փարի տէր, մարդ քու մազին չը մօտենայ։

Գէլնին Ցուխարէն ու աղէն պէմ կէրտան քաղաք, գիշնին մէկ խայֆախանէ մի։ Աֆանցրմ, աղէն ա, ջրճօռ օսկին կառնի Ցու-խարի ձեռնէն, կը տանայ դնայ վերին դեն. ուր ձին կը կապայ, յէտև գիկայ, նստի. Ճարկիլէն կը դնայ յառէջ, խայվէն կառնի ձեռն ու, յինք ուրին կը փչրտի ու կը խմայ։ Խղճուկ խուֆարէն լէ կը մնայ խայվախանի ճար կանուկ։

Դօր մի կը մնայ, աղէն կը հանայ սիլտակ մաճիքէ մի կիտայ խուֆարին, կըսայ.—Ա՛ռ քու ֆռէ ն, թող գնա։

Խուֆարի սիրտ գէլնի, կը կանի ու գիլայ։

Աղէն կը ճեռսոտի վրէն. կը սորվըցու խայվաչուն. խայֆաչին գիկա՛յ, ծեծայ խուֆարին կէնայ դիւս:

Խուֆարէն ա, դէմ կէրտայ. կը նստի ժամու դուռ, փարա տուող լէ կիտայ գիլայ. ու չը տուող լէ։ Էն դիուց խեղացի կնիկ մի կը տեսնի խուֆարին կըսայ.—Ջանըմ, ես մաթ կը մնամ վըր իտա խուֆարին. էտոր տան գիլայ, չիտան գիլայ. ճալբաք մէկ դարտ մ' ունի, կանի, մօտենամ, տեսնիմ էդ ինչ մարդ ա։

Կնիկ գիկայ, մօտենայ կը հարցու:

—Խուֆարա, դու յօրի՞ գիլաս, քու դարտն ինչ ա։

—Եամա՛ն խանըմ՚, կըսայ խուֆարէն ընծնէ վազ կէցի, իմ դարտ չատ ա։

—Հալբաթ ինչ ա քու դարտ, ըսա. բալքի դեղ մ' էլ ես գինամ:

Խուֆարէն ա, ուր գլխու գալիք խըսայ կէնայ խանըմին, խա-նըմ կըսայ.—Խուֆարա, ըսկի դարտ մ' էնի, Աստըծով ես քու փա-րէն կը հանիմ. դ'էլի, էրտանք մեր տուն։

Խանըմ կառնի խուֆարէն, կը տանայ ուրանց տուն, կը թօրկայ. յինք չուտ մէ չուտ ուր հալաւ կը հանայ, կը հագնի մարդանակ շոր. սըճաց կէցկայ վիզնու մի. Եասամա խայլոն չըպուխ կառնի ձեռ քեաշէլին դէմ կէրտայ էն խայվախանի դուռ կը կանի. կը կանչայ խայվաչուն կը հանայ դուս, կըսայ.—Էն ինչ ծանտր բուճար ա, յըսօր յիջէ քու խայվախանէն, գնա ընտոր պապու անուն հարցըրու, արի ընծի ըսայ։

Խայվաչին կէրտայ ու կըրնկին կը դառնայ գիկայ, կըսայ խա-նըմին.—Հարցուցի, ուր պապու անուն Ուլի Բազըրկան ա, յինքն լէ շա՛տ զանգին ու Ասու կրակի տէրն ա։

Խանըմ դէմ կէնայ կը մտնի ներս, կէրտայ էտ աղի մօտ կը նստի, փչում կը մնայ, կը հարցու.—Աղա, դու յօրի՞ իս էկէ յիջէ իտա խայ-

վախանէն, դու խորմիա ջոջ աղէ մի, ափսոս չէ՛ քզի. չեղնի՛ մըջ քաղքին ըսկի ճանչուոր չունիս։

—Չէ, ոլլա, ես մարդ չը ճանչնամ։

Խանըմ էլման կը հարցու.—Դու ինչ տեղէն իս։

Կըսայ—Գեապօլայ։

—Գեապօլայ մէկ մի ըսիմ կը ճանչնա՛ս։

—Ո՞րն ա, ըսա՛ տեսնինք։

—Ուլի Բազրկան ա, կը ճանչնա՛ս։

—Դու ինմա՛լ կը ճանչնաս Ուլի Բազրկնին։

—Ես կը ճանչնամ, հանտայ ընդոր իրեք աղջիկ լէ մըջ մեր քաղքին ա։

Տօ օղորթմա՛ կըսիս, Աստուած քու տուն ակօլա, ելէ Ուլի Բազրկնի աղէն իմ։

—Դու օր ընդոր տղէն իս. ըպա ինմա՛լ չըս էկեր յիջէ քու քուրվըրտոց մօտ:

—Ես ինչ խապար ունէինք, թէ ընծի իտա տեղ քուր կար. իմ յառջի մամ մեռեր ա, իտա խորթ մամ լէ ըսկի օր մի չըսեր այ թէ «քզի քուր կայ». Աստուած քու բան յաջողայ օր խապար տուիր։

—Դը դու կեցի, ըսեց. ես էրտամ. քու քուրուըրտոց ըսիմ գայ։

Խանըմն էր գնաց, ուր մարդանակ հալաւ վըռազով հանեց, էլման հագաւ ուր կնկնակ չորեր, էրկու ուրիշ լէ դըրկեց կնիկ գըտաւ, քամպի էրեց, ըսեց.—Տես, կնկնտիք, գէլնինք կէրտանք Ֆլան խայվախանէն, մէկ զանգին մարդ մը կայ. էտի մէկ խուֆարի մի գտածուրիկ փարէն ինfար էրէ, չիտայ. կերտանք էտ զանգնի մօտ. ես վախսով գործ չիններ իմ, կըսինք քու քուրվըրտիքն ինք. չալօզուտենով, դուպարուտենով բալfի խեյք գլխուց գողնանք, փարէն առնինք մօտէն. հըմա դինա՛ք, ձեր անուններ պտի փոխիք. յիբօր կը հարցու. մէկդ ըսէք—իմ անուն Բանա (ես). էն մկկել լէ Բանեան բէքար, (լնձանից վատ). իմ անուն լէ կը դնիմ, Նէրսա օյնամ, (որ տեղ խաղամ)։

Խանըմն ա՝ խօնչով, բօխչով, սարայ fեապապով կառնի էդ էրկու կնիկն ու կէրտայ դէմ էլման էդ խայվէն։ Խայվաչին ջուապ կը տանայ բազրկնի տղին թէ.—Ի՞նչ կէնիս, քու քուրուըրտիքն էկան։

Բազրկնի տղէն ա գէլնի հարի դուռ յառէջ ուրանց. քուրուըրտիք գիկան կը փաթուին վըզով. որ ճակատ կը մըգայ, ո՛ր յաչքեր, ո՛ր յէրես. խոլասայ կը նստին, կը բասլային կեր ու խում։

—Ա՛խ fօռնէր իդա մեր յաչքեր, կըսին քուրուըրտիք. դու ինմալ թողեցեր մըզի, էկար յիջար իտա խայվախանէն։

—Ես ինչ գինէինք թէ ընձի քուր կար. կըսայ Բազրկնի տղէն. հան որ սալըղ առայ, մէկ մարդ մի՝ Աստուած ուր բան յաջողայ, էն

ըսեց.—Է՜ օրհնեալ Աստուած, չէ՞ քըզի պէս աղբէր գտանք. մենք չը մացինք անտէր քուր, էլ բան պէտ չէ մըզի։

Դօր մի կը մնայ, բազրկնի տղէն կը հալցու։

—Է՜ քուրուրտիք, ձեր անուններ ըսա ինչ ա. չըսեցիք։

Մէկն ըսեց—իմ անուն Բան ա. էն մէկել լէ ըսեց—Բանտան բեթար ա. մէկել քուր լէ ըսեց—իմ անուն Ներտա օյնամ ա։

Կուտին կը խմին, մէկ խելի վախթ կը մնայ, բազրկնի տղէն քանից գէլնի. անտէր էրաղն ա «Իծու փոր յըլնան, էծ կը կատղի» երեց օր բազրկնի տղի գլօխ էլ վրէն չըկայնէր, հըտ գահուն ջուր բերնէն կը թալայ. յոտ մէկ թարաֆ կէրտայ, գլօխ լէ մէկ. ու չըրըփ ի գետին։

Քուրուրտիք խօրոտ մի գ՚էլնին, բուխերկից տաշտ մի մուր կը քօմին. կը բերին ջուր կը յըլնան վրէն ու կը չաղին. յէտև կը բերին էդ բազրկնի տղին կը տկլոզցուն կէնին տիթ ղռուք. ու ինչ օր մուր կայ կը լաղօզին էդոր քիթ ու մռութն ու ջանեակ, կը դառնան բէզեր կը բըլըցուն, մազեր կը գժգժցուն, բռնամ կը տուժկըցուն, ու ուրանք գէլնին, կառնին ջընօռ փարեն, էտոր ձին ու չորեր, դէ գվօի փախի։

Լուսումթի չուտ խայվաչին գիկայ դուռ կը բանայ, բազըրկնի տղէն ջլութ գէլնի յառէջ, կը կանի. կըսայ.—Խայվաչի. կըսէ.—բուետու, (հրամայէ)։

—Հա՞նի բան. (ո՞ւր է Տէրը)։

—Ըշթա սան. (ահա դուն).

—Բանտան բեթա՞ր (ինձնից վատը).

—Գենա՛ սան. (դարձեալ դու)։

—Ներտա օյնան (ո՞ր տեղ է խաղամը)։

—Ներտա օյնասան օյնա, խան բէօյիւք դըր. (ուր կը խաղաս խաղացի, պանդոկը մեծ է)։

Խայվաչին տեսաւ օր հէռսօղաց էտի մէկ սատանէ մ՚ ա. բօռըըռուն մի դրեց, թափան էկան, աղմ, թըքուցին էտոր յէրես, ոռ փէտով, ոռ թըքօվ, ոռ կօշտով, քարով. քար հալած էրին, լաւին հանին քաղքից դուս. գնաց կորաւ։

Օղորմած խանըմն էր, առաւ փարեն բերեց տուեց խուֆարին, բազրկնի տղի թաժայ չորեր հագուց ընտրան, ձին հեծցուց.

—Դը՛, գնա՛ ըսեց, Աստուած քու հետ։

Խուֆարեն էր, օրհնեց խանըմին, հեծաւ ձին, խուրճին թալեց թարկ, չընկըցուց զանգուններն ու եալլա։



# I2

# Օֆ—Օֆ

**Խնուսայ Բերդի բարբառով** *

Եղնի-չեղնի իրըկմ ու կնիկ մի, ըղըրանց լէ կեղնի տղէ մի՝ էդ տղէն լէ իսկի բան չգինայ. նա կարդալ, նա սանաք։

Էդ տղէն կը ծուի թագաւորի աղջկայ վրէն, կըսէ ուր մամուն։

—Նանէ. գնա ընծի թագաւորի աղջիկ յուզէ։

Տօ, տղա՛, լա՛ օ, քու պապ աղքատ, աւուր հացի կարօտ, մենք յիմալ էրթանք թագաւորի աղջիկ յուզինք, չէ՛ գմգի կը մորթին, դու լէ սանաք մի չգինաս, որ ըսիմ, հան տղէս սանաք մի գինայ։

—Չէ՛, նա՛նէ, իլաի որ պտի էրթաս յուզիս։

Ցրկուն որ տղի պապ (հայր) տուն էկաւ. տղի մամ (մայր) ըսեց։—Հմլայ բան կայ, քու տղէն կըսէ, գացէք թագաւորի աղջիկ յուզէ՞։

Պապ կըսէ.—Տղա՛. լա՛ օ, խելքտի թռուցե՞ր իս։

—Չէ՛, կեաքէ, կըսէ, պտի էրթաս, յուզիս։

Ձեղնիր տղի վրէն, կերթայ տղի պապ թագաւորի մօտ, թագաւոր կըսէ.—Ընչի համար իս էկի։

—Թագաւոր ապրած, քու աղջիկ պտի տաս իմ տղին։

—Իմ աղջիկ իմալ տամ քու տղին, քու տղէն սանաք գինա՞յ։

—Չէ՛, ոյա, չգինայ։

—Գնա՛, գքու տղէն բի, տանամ։

Մարդ կերթայ զուր տղէն կառնի, կը դառնայ թագաւորի կուչ։

---

* Պատմած է Վաղարշակ Աղէկեան:

Թագաւոր կը հարցու.—Տղա՛, դու սանաթ գինա՞ս։

—Չէ, չըմ գինայ։

—Օր հէմալ է, գնա՛, սանաթ սովրի, արի, իմ աղջիկ կիտամ քզի։

Տղի պապն է, կառնէ զուր տղէն, կերթայ, օր տանէ տեղ մի աշակերտ իտայ։ Շատ կերթայ, քիչ կերթայ Աստուած գինայ, գիկայ գօլի մի ըռաստ. էդ գօլի մօտ քար մի կեղնի, պապն կիջու չալկէն զտղէն, կը դնէ գետին, ինք լէ դադրուկ կեղնի կենէ օֆ—օֆ։

Օր կէնէ «օֆօֆ». մէկ լէ կը տեսնէ օ գօլի միջէն բըբռէջ մարդմ դուս էկաւ։—Ի՞նչ կըսիս, մարդ. յորի զիս կանչեցիր։

—Տօ, աղբէր, ես դադրուկ էնք, էրի «օֆ-օֆ»։

—Իմ անուն օֆ-օֆ է. էդ տղէն յու՞ր կտանիս։

—Կտանիմ օր տեղ մի աշկերտ իտամ, սանաթ սովրի։

—Ըպա տուր իմ մօտ. աղէկ վարպետ իմ ես, կսովրցում. տարիմ էլ յըսօր արի-տար։

—Շատ աղէկ, ըսեց պապն ու թողեց զտղէն ու դառցաւ տուն։

Բըբռէջ առաւ զտղէն, գնաց ներս. տղէն թողեց հոնի, ինք յէլաւ դուս։

Բըբռէջի կնիկ ապսոսաց զտղէն. առաւ տարաւ ուրանց . . . . օր ջանդակ ու գլխով բադան էր, էդ կնիկ ըսեց։

—Տղա՛, կը տեսնա՞ս իդա բադան, ըդ յըմեն քզի պէս տղայ ին էզի, յըմեն բերեր էր սանաթ սովրցուցեր. օր սովրեր ին, գլուխ ուրանց կտրեր է. յմկայ քզի ապսոսացի, քզի ի՛նչ օր կըսիմ յանկանջ էրէ. քզի ինչ օր կը սովրցու, ըսէ չիմ սովրեր ի՝ օր պրծընաս։

Տղէն կըսէ.—Թըղ էղնի։

Գիկայ Բըբռէջ, ըդըրան ինչ օր կը սովրցու. տղէն կը սովրի, կըսէ. չիմ սովրերի։

Բըբռէջ կըսէ.—Իդա ի՛նչ էչ տղայ էր էկաւ ընձի ըռաստ ըդըրա պապ չէկաւ, իդէք զէդ էչ, տանէր. պըծնէնք ձեռնէն։

Էդ յըմալով կը թամբմի տարին. տղի պապ գիկայ, Ֆըլլ չասած «օֆ-օֆ» հըմը կառնէ զտղէն կը բերէ դուս կըսէ։

—Առ զքու էչ տղէն, իդա տարիմ կը սովրցում, չը սովրիր։

Տղի պապ առաւ զուր տղէն, գնայ. Բըբռէջ լէ դառցաւ ուր տուն։ Պապ ու տղէն լէ չատ գացին-քիչ գացին Աստուած գինայ։ Պապ ըսեց տղին.—Տղա, լա օ, մկայ էղնէր մէկ հատ ձմերուկ, ուտենք։

Տղէն ըսեց.—Կեակէ, ես կեղնիմ բօստան, դու ինչ զտըր գուզիս կի, հմը մէկ հատ մեծ կարմիր պօչով ձմերուկ վերցու, դի՛ր վըր ճամբուն, էն ես իմ, մկըտոնք լէ ծախէ, ինչ կենիս էրէ։ Պապ ըսեց.
—Աղէկ։

Տղէն էղաւ բօստան. պապ լէ ուզածի խտըր կերաւ. էն կար-

մէր պոչով ձմերուկ վրուց ու զբօստաճ ծախեց. փչում գնաց, տեսաւ որ տղէն յետևէն գիգայ:

Փչում գնացին, պապն շատ ծարաւցաւ, ըսեց.—Տղա, լա օ, շատ իմ ծարաւցի, ճմալ էնիմ. ջուր լէ չիկայ:

Տղէն ըսեց.—Կեակէ, ես կեղնիմ յաղբուր, դու խմէ:

Տղէն էղաւ յաղբուր. պապ ջուր խմեց, գնաց:

Տղէն էտևէն էկաւ, ըսեց.—Կեակէ, ես կեղնիմ ձի, դու գիս հեծի: Տղէն էղաւ ձի. պապ լէ հեծաւ, գնաց տուն:

Տղէն զենա դարձաւ տղայ:

Ըշըրանք աղքտցան, տղէն ըսեց պապուն.—Կեակէ, ես կեղնիմ ձի, դու գիս տար, ծախէ. հմը գիմ գեամ չծախիս: որ գիմ գեամ ծախիս, ես լէ կերթամ:

Տղէն էղաւ ձի, պապ առաւ՚դձին, տարաւ ցուքներ, էկան մուշտրիք ըսեցին.—Ի՞նչ տանք ձիուդ:

—Հզար օսկի:

Ձձին ծախեց, դեամ դաւցուց, բերեց. տեսաւ որ տղէն տուն նստուկ է:

Մէկէլ որ տղէն ըսեց ուր պապուն.—Ես կեղնիմ դեվա, դու տար, գիս ծախէ, հմը ի՞նչ խտըր լէ փարա ի տան, իմ ուլար չտաս:

Բըբռւէջ լէ լսեց էդ տղէն յըմեն բան սովրեր է. էլաւ գնաց. տեսաւ տղէն էղեր էր դեվէ մի, գնաց դեվի տէրոջ մօտ, ըսեց.—Ի՞նչ իտամ դեվիդ:

—Երկու հզար օսկի, հմը ուլար չըմ իտայ:

Ըսեց.—Չէ՛, իրեք հզար օսկի կիտամ. ուլար լէ հետ կառնեմ:

Ըսեց.—Ձը՛մ իտայ զուլար:

Նա իսա, վեց հզար օսկու, զուլար լէ հետ առաւ:

Հեծաւ զդեվէն, գնաց. ճանբէն ըսեց.—Հեյ գիտի չանօրդի, դու կըսիս չըմ սովրեր ի սաճաք. հըմկայ զքզի տանիմ տուն, դու կը տեսնաս զքում:

Տարաւ տուն, ուլար տուեց կնկայ ձեռ, ըսեց.—Բռնէ գիդայ, ես էրթամ զդանակ բերիմ, մորթինք:

Ըսեց.—Աղէկ:

Մարդն որ գնաց դանկի. կնիկ թողեց զդեվէն, ու ճչաց:

Դեվէն էլաւ ձուկ մի, փախաւ:

Մարդն էկաւ կնկայ վրէն, տեսաւ կնիկ պատեր է գետին, թողեց զկնիկ, էղաւ օձ, ընկաւ ձկան էտև: Հմը ձուկը գօլից թռաւ դուս. էղաւ օձ, փախաւ. էն լէ էղաւ օղնի, ընկաւ էտև. քիչ մնաց որ հասնէր, տղէն էղաւ ճնճուղ մը թռաւ, էն լէ էղաւ ցուրուր, ընկաւ էտև. հմը փչում մնաց հասնէր էն էղաւ յընծեղ մի ու փախաւ. էն լէ էղաւ բաշուշ (բազէ) ընկաւ էտև, քիչ մնաց որ հասնէր, բըռ-

նէր. յընծեղն էղաւ գէլ մի ու փախաւ, էն լէ էղաւ առջ մի բըրդեց (պնդեց) էտև, քիչ մնաց որ հասնէր, էն կենէ էղաւ թեւաւոր ու թռաւ. էն լէ ընկաւ էտև։

Թագաւոր լէ ուր փանճարից կիչգէր, որ էրկու ճնճուղ կը կռուըտին. մէկ լէ տեսաւ որ մէկ ճնճուղ Ֆր՛ռ ուր փանճարից ներս մտաւ, էղաւ նուռ մի դրուաւ քաղչէն (դարակ)։ Թագաւոր շատ վախեցաւ, զուր բռանեկ թալեց. մէկ լէ տեսաւ որ դարվէշ մի ներս մտաւ, ըսեց.—Նա-ճո՛ւ։

Թագաւոր լարև առաւ. հանեց, էրկու-իրեք ղուրուշ տուեց։ Դարվէշ չառաւ, ըսեց.—Էն նուռ տուր ընձի։

Թագաւոր ըսեց.—Գնա՛, դու քու ձեռով առ։

Դարվէշ գնաց, ձեռ թալեց որ պտի առնէր, նուռ յընկաւ գետին, փլխաւ. հատեր ցրուըուաւ, էրկու հատ լէ յընկան թագաւորի դօշկի տակ։

Դարվէշ էղաւ ճեռ մի կերաւ զհատեր, հմը զէն էրկու հատ չտեսաւ։

Օր կերաւ, կանչեց.—Կո՚ւկռո՛ւռո՛՛ւ. եանի հասկցուց թէ դու իմ փորու մէջն իս։ Էն երկու հատ լէ էղաւ ղուզ մի պճեռ խեղդեց ու կենա ղառցաւ էղաւ մէկ խօրոտ ջհել տղէ մի ու ըսեց Թագաւորին։

—Թագաւոր ապրած, զիս կը ճանչնա՞ս։

Թագաւոր ըսեց.—Չէ ։

—Ես էն տղէն իմ, որ իմ պապ էկաւ քու աղջիկ ուզեց ընձի համար, չտուեցիր, ըսիր.—Թըղ սանաք սովրի. մկայ կը հաւնի՞ս ընձի, քու աղջիկ կիտաս։

Թագաւոր ըսեց.—Հա՛։

Բերին զաղջիկն ու զտղէն պսակեցին. եօթն օր, եօթն գիշեր խարսնիք էրին, ընտրանք հասան ուրանց մուրազին. դուք լէ հասնիք ձեր մուրազին։

—Էրկնուց իրեք խնձոր իջաւ, մէկ ըսողին, մէկ լսողին, մէկ լէ սապիպ էղնողին։



13

# ՄԱՆՈՒԿ

Նորդուզայ Ցիմ գիւղի բարբառով *

Մէկ լաւ տղէմ կէր, գինքն էր, ուր մէր. էլաւ, գնաց մէկ գեղ, ասաց.—Տեհամ մօ ռէս, ընեմ որթկարած:

Գնաց, խնդրուաւ, ասաց.—Ձի անես որթկարած, չախուսմ:

Ասաց.—Այ աղա՛, դիւ կանե՞ս որթիկներ չախես: Ասաց.—Կանամ:

Ասաց.—Դէ՛, գնա՛ յէռջև որթկներաց. կիրակնեց կիրակի քիւ խաց-մաց ժողուի, յըմեն որթկի մէկ դիտր ցորին տամ քիւ հախ:

Էլաւ, գնաց յէռջև որթկներաց: Էն որթիկ իշ կը դռչըկէր, պառաի կեհնր, էն կըհէր. տղէն կըհէր կը տփէր, բէրէր մըշ որթըկներաց. իշ կը մնէր դումահիք (եռևէն), կը տփէր, չում կը խառցնէր որթկներաց:

Էդա լավնով մէկ չաբթուան մէջ խինք, վեց որթիկ սպանեց:

Գեղական էլան, գնացին, ռէսին ասին.

—Մենք էն որթկարած կապուլ չընք անի. մե որթկներ յըմեն սպանեց:

---

* Պատմած է Պետրոս Վ. Երտօեան Խոսրովեանց, սա լսած է 1897 ին ի Խառակոնիս գիւղ Մուխսի Սահակէն:

Սոյն Պետրոս իւր ասելով երկու տարի է որ Երեւանայ երկիրը եկած է, գիւղէ գիւղ ման կգայ, ժողովարարութիւն կանէ իբրեւ մուրացիկ. կլինի 60 տարեկան, գիտէր լաւ հէքիաթներ, որ վարժ կասէր. վասն զի օթեւանած տեղը մի հէքիաթ պիտի ասէ որ զինք պատսպարեն. որով պատրաստուած է միշտ ասել: Գիտէ նաեւ խաղ. վէպեր ու երգեր:

Ցէլան, մլուցին դիւս, գեղից խանին։

Էլաւ դինք առեց մէր, էկաւ մեծ քաղքիմ մէջ, ասեմ, Էջմիածնայ ցեղ (տեսակ). բնակարան խկին. մէկ տան տնուոր իլան։

Էն լաճու անուն Մանուկ էր։ Մանուկ իլաւ, գնաց մըշ քաղքին ուր խըմայ ցալխ-բան բիրէր, կտէր խացի. գինք ուր մէր կուտէն։

Էրկու օր, իրեք օր, չորս աւուր մէջ ուր լավնով ուր բան ֆուքայ արաց. ինք ուր մէր չախուան։

Մէկ օր իլաւ գնաց փողնի մէջ, գնաց բանցր օքխի յէռջև, տեհաւ աղջիկ մը փանճարից կիշկայ Թըլխ ճամբախ. Մանուկ էդա աղջիկ տեսաւ, հըլին ոսկի կէր ճակտին. եռսուն օսմանլուի ոսկի կարուկ էր Ֆասի վրէն։

Մանուկ ուր սրտին մէջ ասաց.

—Աստուած, կըլնի՞ որ էն Ֆաս ինի եմ ձեռ, ես տանեմ, ըմենով չախուեմ։

Գնաց, կայնաւ դէմ փեճճերին. Մանուկ ուր գդակ առեց վէր, աղջիկն էլ ուր գդակ առեց ձեռ, Մանուկ ուր ֆօլոզ Թալեց վեր ու բռնեց. աղջիկն էլ ուր Ֆաս Թալեց վեր ու բռնեց. Մանուկ ուր ֆօլոզ ծընայ (այսպէս) գըւըռցուց, բռնեց. աղջիկն էլ գըւըռցուց, Թալեց, բռնեց։

Մէկ գիր էլ սկուն, մէկէլ գիր Մանուկ բանցր Թալեց ու բըռնեց. աղջիկն էլ մէկ գիր բանցր էԹալ ուր Ֆաս, բռնեց։ Մէկէլ գիր. աղջիկ ինչ բանցր էԹալ որ բռնէր, ընկեաւ ցած։

Մանուկ առեց Ֆաս ու գնաց տուն:

Գնաց մօր ասաց.—Մէրիկ, քանմ գնաեր իմ. գիւ էն մեղաց շրիֆ կըլնե՞ս

—Չէ՞, ասաց, բե. տանամ ․ինչ բան ի։

Ֆաս մօր չանք տուեց, եռսուն ոսկի վըր Ֆասին կարուկ էր։

Ասաց.—Դիւ էս մեղաց շրիֆ կըլնե՞ս։

Ասաց.—Չէ, չըմ ըլնի. ձի կայ վըր քն խաց, ջխըր, չոր, չում էն օր ից ես մեռնեմ. ես էդա մեղաց տէր չեմ ըլնի։

Մանուկ էդա Ֆաս բիրեց, դրեց յէռջև ուր. էդա ոսկիք դանկով յըմեն կտռեց. Ֆաս տարաւ, պախեց. գնաց, չում տաս տարի էդա ոսկիքներով առուտուր արաց, վրէն ընկեաւ, յաւելցուց. էն ինչ յաւելցուց, ուր խըմայ վիրուց. եռսուն ոսկի էլ տարաւ գնաց մօ ոսկերիչ, տուեց կանԹել, էմել դաչուան (նախկին) ցեղկանԹեց, բերեց. հարեց վըր ինոր Ֆաս. Ֆաս վիրուց, ասաց.—Ես տանեմ տամ տէր։

Գնաց էդա աղջկայ խօր գիւռ տփեց. աղջկայ խէր ուր մըշկուն ասաց.—Գնա՛, կեօ մէկմ դիւռ կը տփի, ի՞չ պտի, տուր, Թա տանի։

Գնաց, ասաց.—Այ մարդ, քե լիշ պտի։

Ասաց.—Չի գործ կայ խը քեօ աղին, ասեմ, զըւրեմ յետ։

Դիւռ զոցեց մշակ, գնաց մօ աղէն, ասաց.—Մարդմ ըկե, կասի ձի գործ կայ. խաապար կայ քիւ աղին։

Ղանչեց էլաւ.—Հայ տղա՛, քիւ գործ ի՞նչ ի, ասա՛։

Ասաց.—Աղա՛, ծընեմ տարի քե qաs չի կուրիսէ։

Ասաց.—Չէ։

Ասաց.—Խա կուրիսէ, դիւ չըս իմնայ։

Կնիկ կանչին, բերին, ասաց.—Չէ, զատ չէ կուրիսէ։

Մանուկ ասաց.—Խա՛, կուրիսէ, ես գիտեմ, ձի տնէն ի։

—Բեր, որ մերն ի, ես տ՚առնեմ, որ մեր չի, տա՛ր, գնա քե։

Ֆաս չանք տուեց, ասաց—Էսա ի։

—Իմ աղջկայ Ֆասն ի, ասաց մէր։

Աղէն ասաց.—Այ տղա, էսա քեանիմ տարի ընկե մօ քե։

Ասաց.—Էսա տաս տարի մօ ձի ի։

Ասաց.—Տաս տարուան ի՞նչ աւելցուցիր. բե, կէս քե. կէս ընձիկ։

Ասաց.—Չէ՛, զատ վրէն չեմ իկե, քիւ մալ բիրի, տուի քե։

Ասաց.—Չէ, չըլնի. էն Ֆաս, դիւ ի՞նչ տարեր իս, եմ աղջիկ դիւախարեր ի, տը տանես, եմ աղջիկ պախես, չիւր ժրի։

(Աղէ աչք ընկե վըր Մանուկ. մըջ ուր սրտին կասի, ես ըսկուն առնեմ. աղջիկ պսակեմ վրէն։)

Աղէն մշկուն ասաց.—Այ տղա՛, խայլիչէն բե, աղջիկ դնենք ինէ. դիւախար ի, թը տանէ, չում ժրի։

Իլան բիրին, դրին մըջ խայլիչին. փաթութին, տուին Մանուկին քեամակ. Մանուկ առեց, գնաց տուն, մօր ասաց.—Մէրիկ, աղջիկ դիւախար ի, տուին եմ քեամակ, ծընայ ասին. ես բիրի, էկայ։

Մէր ասաց.—Բա՛ց, ինչկանք, աղուրթ դիւախա՛ր ի։

Էդա աղջիկ բացին, խայլիչից խանին դիւս. չատ սիրական աղջիկ մէր, ոսկի արծաթից փէլք կտէր ինոր չորեր։

Մանուկ, ուր մէր ասին.—Դիւախար չի, մենք չընք կռնայ չախի. տանենք բաալիմ տէր անենք. «Մեր տուն մկներ որ կը կռուեն. ինոնց պոչեր յառքից դիւս կըյնեն»։

Էլաւ Մանուկ փաթըթեց, էմէլ առեց, գնաց. տարաւ դիւռ ափեց, էմէլ աղէն մշկուն ասաց.—Գնա՛, դիւռ բա՛ց. qաs մը տուր ձեռ, թօ էրթայ։

Մշակ գնաց, դիւռ բացեց. Մանուկ առեց աղջիկ, էկաւ, ասաց.—Աղա՛, ես չեմ կռնայ քիւ աղջիկ չախի, «եմ տուն որ ես սկռատ կուտեմ, յընթրիս չմնայ. որ յընթրիս կուտեմ, սկռատ չմնայ»։

Ասաց.—Տղա՛, էն օր ի՞նչ էն Ֆաս որ Աստուած քե խամաք ի

արե, էն աղջիկ քե խսմաթ ի իլե, արե եմ ձեռ. եմ աղջիկ տամ քեւ

Մանուկ ելաւ, գնաց ձեռ։

Խարցնեց.—Քեօ անուն ի՞չ ի.—Իմ անուն Մանուկ ի։

Գնացին, էրեց բիրին. աղջիկ պսակին վըր Մանուկին։

Աներ ասաց.—Մանուկ, դիւ քեօ տուն տը բիրես վըր եմ տան թի ես եմ տուն բիրեմ վըր քեօ տան։

Ասաց.—Զի տուն չկայ, եմ տուն պտի բիրեմ վըր քեօ տան։

—Դէ՛, ասաց. գնա՛, առ արի վըր եմ տան։

Գնաց, ուր տուն առեց. էկաւ վըր աներոջ տան։

—Մանուկ, ասաց աներ, ես տղայ-մղայ չունեմ, ձի կայ մէկ աղ-ջիկ, որ պսակի վըր քե, ունեմ եօթ տուֆանԳ. եօթ օտար մարդ դրեր էմ վըր եմ տուֆանԳնիրաց. ես ուխնէ ութ կեհամ, ինոնց փառեն կը հաչուեմ, կգեամ յետ. ամանաք քե կտամ էն տուֆանԳներ՝ էն տուն։

Մանուկ ելաւ, գնաց տուֆանԳքեր, մէկ տուֆանԳ գինք նստաւ, մէկէլքերաց մէջ մարդ դրեց, ուրին աղպապ ճարեց։

Աղպապքիր ասին.—Մանո՛ւկ, մարդ չգիտի թէ մենք թունճար էնք. մենք տ'էրլմանք Ստամբօլ, որ խալխ գիտի թի մենք զախմ թունճար էնք. ըլնենք էրիվանք։

Ասաց.—Խա, տէհանք՝ ինչխ ճազ անէք։

Էկաւ ուր աներոջ ասաց.—Պտի մեր աղպապքեր էհանք թունճարութեն, որ ըլնենք, էրեանք, մենք մէ խել բռնենք։

Աներ ասաց.—Ես չըմ թողե, Աստուած քե տուե, կե՛, խմե՛, չուհուրն յաւիտենից քե խերիք ի։

—Չէ՛, ասաց. եմ աղպապքեր կեհան. ես էլ խետքեր կեհամ։

Ելան, մէմէկի քսան ֆիսու մալ բռնին, դրին մըջ կեամուն, ելաւ յինք ուր աղպապքերով կեամին թողին, գնացին։

Կեամին տարաւ Ֆուրթունէն, զանեց մէ սար. կեամին պլաւեց-կործանեց. Մա՛նուկ մընէն պրծաւ. Աստուած պրծուց, Մանուկ նստաւ մէ տախտըկի վրէն։ Կեամին տախտակ քշեց, տարաւ. գնաց Չինաստանայ թաքաւորի մօտ դիւս ընկեաւ. դիւս ընկեաւ ծովու եզր, ուր չորեր խոնեց, քեամեց, թալեց ծովու կրաղ, ասաց.—Թը չորնայ։

Ըռուք դայ նստաւ, մէ վիսկի արող ծովու բերան վիսկի կանի. էս մարդ կըլնի էն մարդիւ դիմաց. էն մարդ ըռուք կեօ դայ նըստիր ի, կասի.—Քշեմ. էհամ. ձի ապով չըլի վեր։ Էմէլ էկաւ, ընկեաւ մարդու դիմաց. վիսկին կայնեցուց. էկաւ գնաց մօ էն մարդ։ Մարդն ելաւ ուր չորեր խագեաւ, խարցուց.—Դիւ ի՞չ մարդ էս։ Ասաց.—Ես չըմ գիտի ի՞չ մարդ էմ։

Զեռ բռնից, առաւ գնաց մօ վիսկին։

Վ.իսկի ալրողին ասաց.— Սոված եմ, խաց բե։

Խաց դրեց, կերաւ. դիմէլ խարցուց.—Դիւ քեօ ահուալ ձի ասա՛, դիւ Չինաստանայ մարդ չես։

Մանուկ ասաց.—Ես ընձի տըհերէմ ըսեն, չըմ գիտի ինչ մարդ էմ։

Մարդ էլաւ, վիսկին թողեց. Մանուկին ձեռնէն բռնեց, առաւ, տարաւ տուն, կնիկեան ասաց.—Ես մէ մարդ էմ տըհե, տանեմ Թաքաւորին ծախեմ, մէ քենիմ ոսկի առնեմ, չախուեմ։

Տարաւ, գնաց, Թաքաւորին, ասաց.—Էսա մարդ կը ծախեմ։

Թաքաւոր խարիր ոսկի տուեց, գնեց։

—Այ տղա՛, ասաց. քեօ անուն ինչ ի։—Իմ անուն Մանուկ ի։

Ասաց.—Ես քե գնեցի, դիւ կաց քեօ խըզմըթին, եմ բանին։

Էրկու տարի ըսկուն մնաց, մէկ օր ասին.—Արեւմտոց Թաքաւոր խեծել արե, տը գեայ Չինաց Թագաւորին կռիւ։

Թաքաւոր իլաւ, ուր խեծել ժողուեց, գնաց կռիւ։

Ցըմենով էգա Թաքաւոր ճանճըխեց. բիրեց, լցեց մըչ Չինայ քաղքին։

Մէկ օր էն Թաքաւոր Թուղթ օրողկեց մօ Չինայ Թաքաւոր, ասաց.—Չինք բխօ դեայ, չէ՛, ես տգեամ կռիւ. ինոր քաղաք տ՛աւրիմ։

Իլաւ, զինքն, ուր դայիրէն առեց, գնաց կռիւ։

Ուր աղջիկ արաց Թաքաւոր, դրեց ուր տեղ։

Մանուկ դրեց յէռջե աղջկան, մէկէլ պիթուն առեց, գնաց։

Իրեք օր գնացին կռիւ, էն յէռջե գիշեր աղջիկ ասաց.—Մանո՛ւկ, արե՛, եմ ոտքեր լուայ։

Տաշտ բերեց էկաւ, աղջկայ ոտքեր լուաց։

Ցիստակ լուաց, փեշկիր Թալեց, սրբեց։

—Մանո՛ւկ, ասաց. եմ ոտքեր մաժի, չում եմ քուն տանի։

Իլաւ ոտքեր մաժեց. աղջկայ քիւն տարաւ։

Գասցու ուր քիւն տարաւ աղջիկ, տըսնէ Մանուկ ինչ կանի։

Մանուկ իլաւ, լխեւ քեաշեց վըր աղջկան, գնաց յօղէն։

Ասեմ Թաքաւորի աղջկայ դիւռ ըս տե ի. Մանուկ ի կեօ ըս տե ի։

Մանուկ իլաւ դիւս, գնաց դէմ ազօթրնին, ասաց.—Աստուա՛ծ, դիւ ընձի ազատես. ես դիմ էլ պըծընեմ էսա տեղէն։

Աղջիկ գնաց իտե, գեաղտիկ ականջ կանի։

Էկաւ, ընկեաւ ուր տեղ, քնաւ։

Մնաց մէկէլ օր յիրկուն, ասաց էմէլ.—Մանուկ, արե եմ ոտքեր լուայ։

Մանուկ ջիւր առեց, սախէն բերեց, աղջկան փաչէն լուաց. փէշկիր թալեց, սրբեց.

—Մանո՛ւկ, եմ ոտքեր մաժի, չում եմ քիւն տանի։

Աղջիկ ուր քիւն տարաւ, ըսկուն խռռուց ուր մընէ խանեց։

Էլաւ ծածկեց. լխեւ դօշակ քեշեց վըր աղջկան, գնաց։

Գնաց դէմ աղօթրնին, էմշլ իլաց.—Դիւ Տէ՛ր Աստուած, դիւ զմեն աւտե խոտե ձէն ղառնաս, յըմենի սատայէն եմ. ձի փրցուցես էսա տեղէն։

Աղջիկ էմեւլ գնաց, ականջ կանի։

Գացին քնան։ Մնաց մէկ օր։

—Մանո՛ւկ, ասաց աղջիկ, արե՛, իմ ճուռ լուայ։

Մանուկ սախ բերեց, էկաւ ինոր ճուռ լուաց։

—Մանո՛ւկ, ասաց. քեօ ձեռ բե վէր, մաժէ, բե՛, բե՛, բե՛։

—Չէ՛, ասաց. կարողութեն չունեմ, գեամ դարբի վեր։

Ասաց.—Ընչի՞ կարողութեն չունես։

Ասաց.—Էն օր իչ քեօ խէք ձի գներ ի, մենք իլեր ինք քեօր, աղբէր։

—Մանո՛ւկ, ասաց, քեօ fէՖն ի, դիւ գիտես։

Մնաց էն առաւօտուն, ասին՝ Չինայ թաքաւոր դրեր ի վըր արեմտոյ թաքաւորին, կոտռտեց, եօթ փաշալըղ տեղ մընէն առեց. զըւրաւ, էկաւ տուն։

Թաքաւոր էմէլ բերին, դրին բախտի վրէն։

Ցէվարին խարցնեց աղջիկ ուր խօր.—Դիւ մէկ օր Մանուկին չըս խարցնի. ախր խօր մօր բերած ի, ախր քեարի բերած չի։

Թաքաւոր խարցնեց.—Մանո՛ւկ, քե մարդմ՝ կնիկ, խէլ, մէր կայ, չկա՛յ.—Որ ես ասեմ, ասաց. դիւ ընձի ազա անե՛ս։

Ասաց.—Խա՛, ազա կանեմ։

Ասաց.—Ասեմ, մենք Վանայ կողից էնք. ես իլայ, եմ աղպապքեր բռնի, մէկ մէկի քսան fիսա մալ բռնինք՝ տեհանք Ստամբօլ, կեամին զանեց, մե կեամին տարաւ, տալաւ զանեց մէ սար. մե կեամին կործանեց, ես մենակ պրծայ. Ասպած ընձի չտարաւ, ես մացի մէ տախտըկի, քեամին բերեց, խանեց դիւս, վիսկի արող ձի գնտաւ. բերեց, էկաւ ծախեց քե։ Ձի էլ կնիկ ունեմ, մէր ունեմ. զռքանչ ունեմ, էս իլաւ ծնէմ ժամանակ էկեր եմ մօ քե, չգիտեմ, ով ի մեռե, ով ի մնացեր։

Թաքաւոր էլաւ էռսուն fիսու մալ դրեց խը Մանուկին, դրեց յըջ կեամուն, կեամուչուն ասաց.—Մանուկ տանես, էհաս. մէկ նամակ բերես, «որ ես Մանուկ սաղ խանի դիւս». որ գեաս, եա քեօ Ճալոճ տամ։

Մանուկ իլաւ բիրեց երկիր, մալ լցիր ի դիւռ, որ ուր մալ տանի տունւ Գնաց, կայնաւ, տան դիւռ տփեց։

Ինոր կնկեան մէկ մշակ կէր, ասաց մշկուն.—Գնա, ո՛ր դիւռ կը տփի։

Մշակ գնաց, ասաց.—Քե ի՞չ պինայ։

Ասաց.—Էսա եմ տուեն ի, ես տանտէրն իմ։

Մշակ ղըւրաւ, խաթունին ասաց.—Մէկմ՛ կասի ես տան տէրն իմ։

—Չէ, էս քանի տարի տան տէր չկայ. ոչաքմիշ իլի գնացի, էն տուէթ ի, եմ իրիկ չի։

Գնաց, ասաց.—Էյ մարդ, խաթունն կասի «եմ իրիկ գնացէ կուրխաի»։

—Գնա՛, ասա, գեայ, նստի դէմ փանճարին. զրուցք անենք։

Գնաց, ֆուրսին դրեց դէմ յերդըսին յօղի մէջ, էն դուուց էկաւ խետ զրուց։

Կնիկ ասաց.—Դէ, զրուցի, ի՞չ մարդ էս։

Ասաց.—Ես Մանուկն եմ, պառաւու լաճն եմ. իչ ես քեօ Ցաս տրի, գնացի, քեօ խէր պսակեց վըր ընձիկ։

—Չէ՛, ասաց. դու էն մարդ չես. էն մարդ պարմիշ էլաւ։

Ասաց.—Քեօ խապարն ի, կեամին պարմիշ իլաւ, ես նստայ վըր մէ տախտըկի, Աստուած ձի տարաւ, գնաց Չինաստանայ մօտ ձի խանեց դիւս. ես էս օր էկեր իմ որ դիւռ բանաս, ես գեամ։

—Այ տղա՛, ասաց. քեօ աներ մեռեր ի, քեօ մէր մեռեր ի, քեօ զօքանչ մեռեր ի, ես մնակ մնացեր եմ. ինոնց խէր, խէրապ, ժամ, պատարագ արեր եմ. արև, թոպա արա, դիւ էն ճամրխով չէհաս, դիւռ բանամ վըր քե։

Մանուկ ասաց.—Թոպա ընի վըր ձիկ, որ էլ էն ճամրխով չէրթամ։

Դիւռ բացեց վըր Մանուկին, էն գեախ իչ կնիկ զՄանուկին տեհաւ, ինոր մալ ապրանք ի՞չ բիրեր խետ, իրեք տեղով կնկեան խունճան կտռաւ ուրախութենէ։

Էդ մալ բիրեց, քեչեց ուր տուֆանքեր. վըր կնկեան ուրախցաւ, խունճան կարեց, երեսքեր պագեց։

Մանուկ նստաւ տուֆանքեր, մէկ ժամանակ վըրէն ընցաւ. մարդմ էկաւ, ասաց.—Մանուկ, գերի իկի, ըլենք, հանք, մե խըմայ մէ մէկ գերի բիրենք, գեանք։

Մանուկ մըջ ուր սրտին ասաց.—Աստուա՛ծ, կըլնի որ եմ Թաքաւորի աղջիկ ըլնի. տըսնամ, առնեմ, գեամ։

Գնացին մըչ գերիքերաց. Մանուկ տեհաւ մըչ գերեքերաց Չինայ Թաքաւորի աղջիկ։

Գերիքերաց տիրոջ ասաց.—Էսա պստիկին գին ի՞նչ ի։

Ասաց.—Ինոր տաս ոսկի ի, միջնեկին քսան ոսկի ի։

—Էն մէկին քեանի ոսկի ի, ասաց։ Ասաց.—Խարիր ոսկի։

Խարիր ոսկին տուեց, աղջիկ առեց. էկաւ, տարաւ օդի դիւռ բացեց, մտուց յօդէն, գնաց կնկեան ասաց.—Մէկ գերիմ եմ բիրէ. ձեռքմ՛ ջոր տար, ձեռք մէլ նուին տար, որ մէջ քնի, օրական էրկու տան կերակուր. որ քե կը խարցնի, եմ անուն չասես։

Մանուկ էկաւ դուքան, առուտուր կանի։

Էրկու ամիս, իրեք ամիս վրէն կընցնի, պե հեվի էլաւ. էն մէկ օր նստիր էր, տըհաւ, զատանց ինչկաց ինե, ճանցցաւ. Զինայ Թաքաւոր զինք արե ուր աղջկայ խաւ. որ գինի, տանի էհայ։

Դարվիշ Մանուկի դուքան ընցաւ, տեհեր մըջ քաղքին. Մանուկ կանչեց.—Դարվիշ բաբա՛, արի ստղայ, նիստ ջու յեվարին, ձի գեործ կայ խը քե։

Դարվիշ բիրեց, նստըյուց խըտ ուր կշտին։

Մնաց ջու յեվարին, էլաւ դիւռ չինեց. դարվիշ առըց, գնաց, ասաց.—Էս օր եմ խուրն էս։

Դարվիշ ընկեաւ իտե, գնաց. գնաց ինչ էն յօդէն զաղջիկ մըտուցե ինե, դիւռ բացեց, դարվիշ մտուց ինե։

Աղջիկ գլխօր ճանցցաւ, ասաց.—Այ խէրիկ, քե ո՞վ բիրեց ստղայ։ Խէր ասաց.—Աղջիկ, քե ով բիրե, ձի էլ էն՛ ի բիրե։

Մանուկ կնկեան ասաց.—Էս օր մէ մարդ էլ էմ բիրե. ինանց չատ լաւ կերակուր տաս—հաքմանակ, քե որ կը խարցնեն «էն ինչ մարդ ի մե բիրե», եմ անուն չտաս։

Մէ ամիս էն լաւնով չալխեց։

Մէկ օր խարցնեց կնկեան. էն մարդ ինչ մե բիրեց, ընչի չգեայ ստղայ, ըշկանք ի՞նչ մարդ ի, գեայ մօ մե։

Գնաց Մանուկ տըհաւ, ասաց.—Ծնայ կասեն։

Ասաց.—Գնա՛, ասա՛, ես գեամ, տըհնամ։

Մանուկ գնաց էրկու ձեռք ջոր տուեց կտրել, կարել, յեվարին տարաւ, տուեց կնկեան. կնիկ տարաւ, տուեց դավրիշին ու աղջկան։ Խաքան չորեր։

Թաքաւոր ասաց.—Ես Թաքաւոր եմ, ձի չկայ ծնայ չորեր, էսա ի՞նչ մարդ ի։

Կնիկ գըւրաւ, գնաց մօ Մանուկ։

Մանուկ մոմ բռնեց ձեռ, գնաց, դիւռ բացեց։

Թաքաւորն ու աղջիկ էլան, Մանուկի դէմ կայնան։

Մանուկ դիւռ տփեց վրէն, ասաց.—Զէ ջում չընստէք, չըմ գեամ.

—Արի՛, ասին, մենք կը նստենք։

Մանուկ գնաց Թաքաւորի ձեռ. ղըւրաւ, էկաւ, էլ չնստաւ. վըր ոտաց կայնաւ, բարև բռնեց։

Թաքաւոր տեղ տուեց. նստըցուց, ասաց.—Դու ի՞նչ մարդ էս, էսա լաւութեն մե կանես, ես քե չըմ ճանչընայ։

Ասաց.—Թաքաւոր ապրած, ես Մանուկն եմ, ինչ դու ընձի վիսկի արողի մօտէն գնիր։

Էնտեղ ուրախացան. մէ մէկու աշկեարայ իլան։

Ասաց Թաքաւոր.—Մանո՛ւկ, դու երբ մե դասեուր տաս որ մենք հանք։

—Մէ չարաթմ' ձի մօհլաթ տուէք. ես տանեմ ձե, դնեմ ճամբխու։

Մանուկ իլաւ վեր, Թաքաւոր ինչ եռասուն ֆիսու մալ էր դրեր Մանուկն էլ քառասուն քիսու ապրանք դրեց խըրա Թաքաւորի.

Տարաւ դրեց մըչ կեամուն, ասաց կեամուչուն.—Էսա մարդ տանես, Չինաստան դուս խակես, կեամու նավլօն չառնես, գեաս ողայ. ես կեամու նավլօն տամ։

Ընկեաւ յէռջև Թաքաւորին. տարաւ մըչ կեամուն։ Մանուկ էկաւ յետ, բան մէր մոռցե տուն, տանի Թաքաւորին։

Թաքաւոր ասաց կեամուչուն.—Որ Մանուկ մտաւ կեամին, դու կեամին թող. էն մարդ տանինք խըրա մեր։

Մանուկ էն գեախ էկաւ, դասեուր ուզեց. կեամիչին կեամին թողեց։

Մանուկ ասաց.—Թաքաւոր ապրած, չըմ իգեայ։

—Չէ՛, տը տանեմ խը ձիկ։

Նստան մըջ կեամուն, գնացին։

Երկու ամիս մնաց մօ Թաքաւոր։

Թաքաւոր էլաւ ճամբխեց երկիր, էլաւ խարիր ֆիսու մալ, արծաթ, ոսկի դըրեց խեռ, թալիմ արաց։

Կեամուչուն ասաց.—Էսա մարդ տանես ինոր երկիր, խանես դուս, կեամու նավլօն մընէ չառնես, մէկ նամագիրմ մօտէն բիրես, նավլօն ես կտամ քե։

Մանուկ բիրեց էկաւ մալ, ապրանք քեչեց, գնաց տուն։ Գնաց դուռ տփեց.—Կնի՛կ, սրե, դուռ բաց, ասաց։

Կնիկ ասաց.—Դու եմ իրիկ չես, եմ իրիկ գնաց կուրիսաւ։

—Ես Մանուկն եմ, ձի չե՞ս ճանչնաս։

—Որ դու Մանուկն ես, խըրտ էն մարդուն ընչի՞ գնացիր. դու էրդում էր արեր, չիներ։

—Ես գնացի, Թաքաւոր կեամին թողեց, գնաց։

Կնիկ դուռ բացեց. էդա մալ, ապրանք ին տըրաւ, չորս տեղով խունճան կտռաւ։

Էկան վըր մէմէկու ուրախացան։

Մայ ու ապրանք քեշեց ներս, դուրս գնաց, նստաւ ուր տու-ֆան՝ առաւտուր արաւ։

Մէկ օր տեհաւ Թաքաւորի փոշտանին էկաւ. գնաց տուֆնի դռնէն թափ ընցաւ. գնաց։

Մանուկ կանչից.—Դու ի՞նչ մարդ ես։

Ասաց.—Ես ի՞նչ մարդ կըլնեմ, քե ի՞նչ կայ խը ձիկ։

—Ես քե խարցուցեմ, դո՞ր կեհաս, ի՞նչ մարդ ես։

Ասաց.—Թագաւորի փոշտանին եմ. կեհամ բռայաթի մէջ. էրկու բեռ փարայ մէկ սիֆից առնեմ, էհամ։

Ասաց.—Ես իրեք բեռ մէ՛ սիֆից կտամ։

Գնաց փոշտանին մօ Թաքաւոր, ասաց.—Թաքաւոր ապրած. մէկ մարդ. ասիմ, Էջմիածնայ, ասաց. «իրեք բեռ փարայ մէկ սի-ֆից օրողկեմ»։

—Օրողկի էն մարդ բե. էն մարդ Թաքաւորի խազինայ ի կտռի, եա խազինա ի գնտի։

Օրողկեց. Մանուկ տարաւ մօ զինք, ասաց.—Դու ի՞նչ մարդ ես, որ էրկու բեռ փարայ կօրողկես մէկ սիֆից, դու Թաքաւորի խիզինէն ես կտռի։

Ասաց.—Աստուածն ի տուեր ընձիկ։

Ի՛չ որ ես ձե խաա արեր եմ. ըսկուն խաա արաւ. «ծնայ գնա-ցի, Չինայ Թաքաւոր գնեց. ծնայ արաց»։

Թաքաւոր ասաց.—Այ տղա՛, գնա՛, քե դաստուր եմ տուեր. ես եմ ժողովուրդին փորձի, օր մը ձի ձեռք բռնող կա՞յ, չէ չկայ. մը-կայ իմցայ ու կայ։

Մանուկ էկաւ տուն, վըր ֆուլթրթին, ուրախցաւ. Աստուած քե երկար կեանք տայ, դու էլ վըր քեօ լաճուն ուրախանաս։



# 14

# ԼԱՒ ԿԻՆ ԸՆՏՐԵԼ

Նորգուղի Ցիմ գիւղի բարբառով*

Խարուստ մարդմ կըլնի, կերթայ, թաքաւուրի աղջիկ կու-զի. թաքաւուր կասի.—Աղօրթ դիւ խարուստ մարդ էս, ես թաքաւուր եմ, ամա դիւ չը գիս զախմ էս. եմ աղջիկ կուզես, ես ճաղդ կուզեմ, խարիր ոսկի ճաղդ տաս, խարիր էլ արպըշըմէ խալաք։

Տուեց ու ասաց.—Եմ խարս ճազրի, ես գեամ, տանեմ։

Ասաց.—Կուզե՞ս, վաղն էլ արի, տար։

Էկաւ, գնաց, ուր խարս բիրեց։

Էն քեաղքի թուճար ժխո էն էր. էն կը տանէր, էն կը բիրէր։

Էլաւ ուր լաճ պսակեց. իրեք-չորս օր արաւ խարսանիս։

Խարսանիս պըլաւաւ, էն գչեր իչ փեսէն տեհայ մօ խարս, խէք ասաց.—Առա՛ եմ մատնիկը, տար, թալ քիւ նշանածի ծուց, իչ խա-պար կտայ քե, գեաս, ըղի ասես։ Տարաւ, նշանած քնուկ էր, թա-լեց ծուց։

Որ թալեց ծուց, խարս զանչից.—Այ թուճարի լաճ, ի՛չ ճամբախ իչ դիւ կեհաս, խօալա փուչ կանանչի քիւ ճամբախ. իչ ջառատուր անես, Աստուածութեն քիւ ձեռնով չբիրի, հա քիւ առ ու տուրին մէջ կատուխս. չայիրին չիմանին մէջ իչ քէլես, իչ կակուղ ի, քիւ տաց աակ փուչ կանանչի։

Լաճն զըւրաւ, էկաւ, ասաց խօր.—Այ խէրի՛կ, ծընայ ասաց։

—Այ տղա՛, ասաց. վաղէ՛, քեօ մօր ասա՛, գեա՛։

Վազեց, մէր բիրեց. մէր էկաւ դայ։

Ասաց.—Գնա՛, էդա թաքաւուրի աղջիկ տար թալիմ թա-քաւուր արա։

---

* Պատմած է Պետրոս Վ.երսոյեան:

Մատնիք մընէն առեց, տարաւ. թալիմ Թուքաւուր արաց։

Ինոր գըկըցքիր ասին.—Մենք քեօ լաճ պսակինք. պտի էհանք Ստամբօլ, մե մալ սաղացուցէք, գեանք։

Ասաց.—Ես եմ լաճ դել չեմ պսակե. Նոր տը պսակիմ։

Էլաւ, գնաց վոզիրի աղջիկ ուզեց. վաթսուն ոսկի Ճաղդ ուզեց. վաթսուն ոսկի տուեց, վաթսուն ոսկու էլ խալաք տուեց։

—Իմ խարսի թասարուֆ տըսիք՝ ես տը գեամ, իմ խարս տանեմ։

Վոզիր ասաց.—Իրեք օր ձը մօհլաթ տուր, վըր չորսին արի, տար։

Իրեք օր մնաց. չորսին բիրեց ուր խարս։

Իուջին գչեր ի՞չ լաճ տ'էրթէր մօ խարս, խէր ասաց.—Ա՛ռ իմ մատնիք, տա՛ր թա՛լ նշանածի ծուց, ի՞չ խապար կասի. գեաս, ձի ասես։

Մատնիք տարաւ, թալեց նշանածը ծուց։

Նշանած քնիր, ակլսաւ. էն էլ մէկէլացի ասաց.—Այ բուճըրէ լաճ, իշ ճամբախ կերթաս, օղուրսուզ ըլնես, քիւ մրազին չխասնիս...։

Տղէն գնաց, խօր ասաց։

(Զըմֆի էդոնք սիրական ունէն։)

Ասաց.—Այ տղա՛, գնա՛, քիւ մէր կանչը։ Էմէլ գնաց, կանչեց։

Ասաց կնկեան.—Գնա՛, մատնիք մընէն առ. աղջիկ տար, թալիմ վոզիր արա՛։

Իլաւ, տարաւ թալիմ վոզիր արաց։

Էդա բուճար առաւտուն գնաց, ռէսի աղջիկ ուզեց։

Ըռէս քառասուն ոսկի փարայ ուզեց, քառասուն ոսկու էլ խալաք ուզեց։

Տուեց, ասաց.—Իմ խարսի թասարուֆ տըսէք, տը տանեմ։

Ասաց.—Տաս օր ձը մօլաթ տուր, նոր առ տար։

Տաս օր վըրէն ընցաւ, նոր գնաց, խարս բիրեց։

Բիրեց, էկաւ, արաւ խաղ, խարսնիս։

Էն յառջին գչեր խէր ասաց.—Տղա՛, առ մատնիք, տար, թալ քիւ նշանածի ծուց. ի՞չ խապար կըտայ, գեաս, ձը ասես։

Մատնիք առեց, տարաւ թալեց ծուց։

Իչկաց, ինչխ բիրած, դրած թախտի մէջ, սկուն մնացիր կայնուկ։

Էկաւ, խօր ասաց.—Խէրի՛կ, մնացիր ի կայնուկ։

—Գնա՛, ասաց. դիրմէլ իչկայ։

Էմէլ գնաց, կայնուկ ի։

Էկաւ, խօր ասաց.—Իչկացի, կայնուկ ի։

—Տղա՛, գնա՛, ձեռ տու ինե. պալէհի քնե ճաւէճ իլե կայնըմանց։

Լաճ գնաց. իչկաց, կեօ քընէ կայնըմանց, մատնիք թալից կեօ

ծուց: Խարս ակխաւ, ասաց.—Այ թուճրրի լաճ, իչ բանի՛ ձեռ թա-լես, Աստուած քեօ ձեռնով բերի. յիչ բան էնես, Աստուած մէկն խազար դարձուցի, իչ ճանապար կեհաս, քիւ առջկքիր փուչ ըլնի, կանանչ դառնայ. քեօ խօր, մօր անէծքի տակ չմտնիս։

Լաճ զըւրաւ, էկաւ. ասաց.—Խէրի՛կ, ձը ծնայ ասաց։

Ասաց.—Էսա կեó եմ խարսն ի, գնա՛, քընի։

Խարս, փեսէն գնացին, քընան։

Առաւտուն էդ դրկիցքիր ասին.—Մենք տ'էրթանք թուճրութեն, դիւ մի խիտ չըլնըս, չենք էհայ Ստամբօլ։

—Խա՛, ասաց.—Գեամ։

Էլաւ, ուր թասարուf տեհաւ. էրթէր, աղէն ասաց.—Խէրի՛կ. դիւ նիստ, ես տեհամ։

—Որդի՛, ասաց. դիւ ջհելիս, գնա մօ քիւ խարս։

—Ձու մըկայ դօլազի, ես էղայ կնկեան տէր, ես տեհամ։

Ասաց.—Ես քե տանեմ, ապսպրեմ եմ մարդիր։

Գնաց, ասաց. Ամանաք ձե եմ լաճ։

Ինոնք ասին.—Պտի տանենք, ինչխ դիւ մե կը տանէր, բիրէր։

Էլաւ վեր, էղա մէկ աւուր խարս Թողեց, գնաց Ստամբօլ։

Մէ ջխուծ էլ, կեօ ինոր տուն մէջ էն քաղքին ի. իլաւ վեր. ուր չորեր Թալեց ուր իտև, գնաց, տնիր ման էկաւ, ասաց.—Ես էհամ, եմ չորիր ծախեմ։

Գնաց, մտաւ էն թուճրրի տուն։

Էն թուճրրի խարս էկաւ մօ ջխուծ պազար, էղա ջխծու աչք ընկեաւ խարսի աչք, ուչք ընցաւ։

Էղա զատ մածեր վերցին, Թալին, ասին.—Ջխուծ խատաւ, մենք պազար չընք անի։

Պաղ ջիւր Թալին ջխծու յիրսին, ջխուծ խատած տեղէն, ակ-խաւ. ուր ճոթ մօԹեր առեց, գնաց ուր տուն։

Սկուն մեռուկ մարդու ցեղ գնաց, էկաւ։

Գնաց մէ պառուու մօտ, մէ ոսկի տուեց.—Պառա՛ւ, ասաց, Ֆելանի խարս բիրես եմ ձեռաց:

—Ի՞չ տաս ձը, որ բիրեմ իր քեօ ձեռ աց։

Ասաց.—Մէ ջուխտ սոլ կեօ մօ ձի ի. ինու կարուած պիրուճ ոսկի ի, ինոր բիրնքիր արծաԹ, ոսկի բանցուցած ի։

Գնաց, բիրեց, տուեց պառուուն, պառաւ առեց, գնաց մօ խարս,

Գնաց խարսի իրես պագեց, ասաց.—Ես էկեր եմ քե տես։

Ասաց.—Պառաւ, դիւ եմ աչիչ գեաս, եմ գլխիւն գեաս։

Էլաւ, սոլեր չանց տուեց, ասաց.—Բիրեր էմ քե հացիյա։

Խարս ասաց.—Էսա սոլեր մարդ մարդու հացիյա չը տանէր. բան կայ մըջ էնա սոլերաց. արի՛, սաղն ասա։

Ասաց.—Չէ՛, ժխոր քիւ հաշիյան ի:

—Բարով իս իկե, ասաց, դէ՛, գնա՛:

Ջխուշ հա կեհայ պառւու տուն կգեայ, իչկայ թի պառաւ կգեա՛յ:

Պառաւ էկաւ:

—Պառա՛ւ, ասաց. դիւ բիրի՛ր վըր ճամբխին. ի՞չ ասաց:

Ասաց.—Ձորով էմ ճամբխէն բացե. զաշ մէլ տաս:

Ասաց.—Մէկ չապիկ էլ ձի կայ, յըմեն արպըչում ի, ոսկի, արծաթ կեօ մէջ բանցըցուկ:

Էլաւ, փաթըթեց, տուեց, պառաւ տարաւ:

Տարաւ գնաց խարսի մօտ, բարև տուեց:

Ասաց.—Պառա՛ւ, դիւ ընչի էս իկե:

Ասաց.—Էսա չապիկն էլ քե խըմակ իմ բիրե:

Ասաց.—Պառա՛ւ, էսա բանիր մարդ հաշիյա չտանի. տը գեաա, ընձիկ սաղ ասեա:

Ասաց.—Ի՞չ քենէ պախեմ, իչ Աստըծուց. մէկ ջխուշ քե տըռնե, սիրտ ընկե թըխ քե:

Ասաց.—Ոչ էն ջխշու սիրտ ընկե թըխ ձի, եմն էլ ընկե թըխ ջխուշ. ինու յօդի տըկէն թըխ լաղըմի. թը գեայ չում եմ յօդէն. մէկ համամ մի չինի մէջ էն լաղմինե:

Պառաւ գնաց, ասաց. ջխուշ լաղմ զարկեց, համամ չինեց մըջ էդ լաղմին:

Էկաւ, Նասաւ խըտ խարսի կչտին:

Խարս ասաց.—Դիւ եմ սածներ արի՛ր:

Ասաց.—Խա՛:

—Ե՛լ, իչկանք, ասաց խարս:

Ջխուշ առեց խարս. գնաց, լաղըմի մէջ իչկաց:

Խարս ասաց.—Դիւ էրկու ճամաշան բիրեա, դնիս մէկը նա կող, մէկը նահան: Էրկու ոսկի խնձոր բիրիս, դնես մէկ ճամաշանի նա կող, մէկ նահան:

Խարս իչ ասաց նահան. նա բիրեց:

Էկաւ, գնաց մօ խարս, ասաց.—Դէ՛, ըլի վե, ճեյֆ անելիւ գեալխ ի:

Ասաց.—Չէ, գեալխ չի:

Ասաց.—Ընչի՛:

Ասաց.—Դիւ քիւ մուրուս, աչք իրես գնդիս, գեաս մօ ձի:

Ջխուշ էլաւ վեր, կեհէր ար մուրուս գնդէր. գնաց չու յօդից դիւս, խարս դանչեց:

—Արի, Նի՛ստ, եա կը գնդեմ, մե էրեմուս թո մօ մեր մնայ. ժամանակմ եմ խէր դալաֆ էր. եա մընէն ուսեր էմ:

Գնաց, ուր մուրուս լուաց. խաբս նստաւ, դանակ արեց. էկաւ ջխտու, նստաւ ինե. դանակ թալեց, դանակ չկտրեց, ասաց.—Գնա՛, աղէկ լուա՛. աղէկ պղտէ։

Էն էլ նստաւ, դանակ արեց, տուեց գլուխ, մազեր դէմէն կը փախնէր. դանակ տուեց, մազեր բիրեց տակ. դանակ թալեց, ջխտու վիզ կտրեց։

Որ ջխտու վիզ կտրեց, ինչ որ գլխու, մուրսի դրուածք յըմեն քերդեց, կաշին վիլուց. գլուխ ջանդակ դրեց մէկ ղուքի։

Ջխտու գլխու կաշին քեշեց ուր իրես. առաւտուն գնաց, ջխտու տուֆան բացեց, նստաւ, առ տուր արեց։

Խորիս հալխ յըմեն էկան պարաւան առուտուրը, ինոնք որ արճիճը կտէն էրկու ղուռուռ, էն կտէր քսան փարայ։ Խորիս ինչ տուֆնդար կար՝ գնացին արզընալ տուին թագաւորին.—Էն ջխուտ ծընայ կը ծախի, ծընայ պազար կանի, չգեան մեր վրէն ալիշվէրիշ։

Թաքեաւոր էն ջխուտ կանչեց.—Դիւ ընչի ծնայ պազար կանես։

Ջխուտ ասաց.—Եմ մալն ի. ես սկուն կը ծախեմ։

—Օղորթ կասի, ուր մալն ի, կը թալի ջիւր։

Մէկ չարաթ կեհէր, սկուն առտուր կանէր. խաղըմի մէջէն կեհէր ուր յօդէն։

Օրմ՝ ջուապ տուին.—Թունըրի լաճ էկաւ։

Ցըմեն, ինչ մընէն հազ կանէն. գնացին յառաջ, առին էկան, առին.—Դիւ ինչ թունար էս, մէկ ջխուտ տուֆան կը բանցուցի, առտուր յըմեն ընկե մըր ինոր։

Ասաց.—Ես էլ տը գեամ, տըսնամ։

Էկաւ, գնաց, տըսաւ. բարև տուեց, բարև առեց։

Ինի, խաբս իրկան կը ճանչնայ, իրիկ չճանչնայ։

Տեղ չանց տուեց, ասաց.—Նիստ։

Ջուր յէվարին նստաւ, ասաց.—Մ՚էրթար, խը քե գործ կայ։

Իլաւ, տուֆնի դիւռ չինեց, մոմ կպուց. էդա մաղազեն ի վեր տարաւ ուր յօդէն։

Թունարի լաճ ասաց.—Էսայ ջխուտ տանէ եմ գլուխ փոթորանք խանի, տանի, եմ վիզ կտրէ։

Տարաւ դնաց համամի մէջ. ինոր ոսկի խնձորքիր տըսաւ, ասաց.—Մէկ խնձոր առ քե։

Տարաւ յօդէն։

Մարդն կիչկայ, կասի.—Էսա ինչ պախս ի, ջխուտ մըջ եմ յօդին։

Կը նստին, պէնճմ կը մնայ, ջխտուն կասի.—Ցիւր ի քեօ կնիկ։

—Ես կհամ, եմ կնկեան սեեմ, գեայ, ասաց. գնաց ուր ջխտու կաշին դրեց դայ. ուր չորիր խաղեաւ, էկաւ։

Իրիկ կիչկայ, կասի.—Էսա եմ կնիկն ի, նա ինչ պախս ի։

—Գնա՛, քիւ իրիկ կանչի, գեայ. կասի։

Էմէլ գնաց, ջխտու կաշին քեշեց իրեն, էկաւ. կայնաւ ուր յեռջեւ։

Էդա թուճրի լաճ ասաց.—Որ դիւ էկար, քեօ կնիկ ի՞չ էլաւ։

Ասաց.—Կեօ դայ ի։ Ասաց.—Գնա՛, առ բի. էրկուս խիտրաց էկէք։

Էմէլ գնաց, ջխտու կաշին թալեց դայ, էկաւ։

Իրիկ խատնից.—Ջխուտ կդեայ պէճֆ մը, պէճֆ մը դիւ կգեաս. էսա եմ յօդէն ի, դիւ եմ կնիկն էս. էսա ի՞չ պախս ի։

Կասի.—Ես քեօ կնիկն եմ. ձի չե՞ս ճանչնառ։

Կասի.—Ես քի կը ճանչնամ, ջխուտ չեմ ճանչնար։

Էդ տեղ ի՞չ իլե, չիլե, իրկան կասի։

Կասի. Դիւ ձի չը՞ս խաւատար, իլի. Նահան սապաթի բիրան բաց։

Բացեց, տըսաւ կեօ ջխտու գլուխ, ջաճտակ։

Ասաց.—Ծնայ արաւ ձի, ես էլ ծնայ արի։

Կնիկ ասաց.—Գինաս, ինչխ անինք՝ որ մենք էն ջխտու ջաճ-դակ պախինք, մարդ չը յիմնայ։ Ես կեհամ, էն տուֆաճ առտուր կանեմ, դիւ դնա՛, մէկ թուղթ գրի քիւ մօտէն, բի ձի, ասա՛. «Քիւ խէր խիւանդ ի. ասեր ի, եմ տղէն թը դեայ, խասնի ձի»։

Իլաւ թուղթ բիրից, տուեց Նահան. կարդաց, էսաց.—Էլի, հանք թաքաւորի մօտ։ Գնացին մօ թաքաւոր. էդա ջխուտ ասաց.

—Թաքաւոր ապրած, եմ խէր կեօ խիւանդ ի, ես կեհամ, թի որ իս էկայ յետ, ժխո եմ տուֆաճնի. թի իս չէկայ, եմ մալ ապրանք թաս-լիմ էսա մարդ։

Թաքաւոր էլաւ, էդա թուղթ մօճրեց, տուեց թուճրի լաճուն։

Էկան, Նստան առ տուր։

Ջխուտ տարին, խորին։

Թուճրի լաճ խօր պախս արաւ, ասաց.

—Եմ կնիկ ծնայ ի արե։

Թուճար էկաւ, խարսի ճակատ պագեց։

Ասաց.—Քեօ ասըլ զատէ ըլնի։

Ես վօզիրի աղջիկ դաստուր տուի գնաց։

Ասաց.—Ես թաքաւորի աղջիկ դաստուր տուի, գնաց։

Ես գիտցայ ի՞չ կէր մօ ինոնք։

Քիւ իրես սիւտակ ըլնը։

Էն տեղ կերան, խման ուրախացան։

Աստուած էլ քի ուրախացնի։



I5

# ՏԱՏ ՈՒ ՊԷՏԱՏ

Նորդուզայ Ցիմ գիւղի բարբառով*

Մէկ Նախրորթ մը կէր, գնաց մօ ուէս, սաաց.—Նախրթութեն տաս ձի, ես ըմեն օր չալուեմ։

—Այ տղա՛, սաաց. Նախրթութեն տուեր էմ քե, գնա՛. քեօ հախ տանես, քեօ խացն էլ ժողուես. տանը գլօխ մէկ ղլոր ցորեն քե հախ։

Նուսուն տարի էլաւ Նախրորթ։ Մէկ օր, սահմ Մայիս ամիս, դաւար պլափու-ցրուաւ. մոզեր թալին ինե-թրխ դաւար. պէզրաւ, նստաւ լացեց, սաաց.—Տէ՛ր Աստուած, եան իմ խոքին մտ, եան դմար մը տուր ձիկ, խերիք ի եւ էսա չարչարանք քեաշեմ։

Դորիս դաւար հեռքցաւ մէ մէկուց. գնաց դաւրի խուե։

Դորիս Աստուած կէննխանայ (գոնձ) բացեց, տըսաւ էգա Նախրորթ սաաց.—Նս Նախրորթ եմ, չիմ կանայ մընակ ուտի, համ, ուէսին սաեմ, խարացով ուտենք։

Ուէսին սաաց. ուէսը չխաւատաց։

Նախրորդ սաաց.—Վալա, պիլա, թիլա, եւ քե չեմ խափի, արե մտի, էհանք, բիրենք։

Էլան ուէս, Նախրորդ, ուէսի մշակ-դուլ գնացին մըր կէննխանի բերնին, տըսան։

Նախրորդ մտաւ ինե, մաղով տուեց ուէսին, ուէս տուեց դուլ-ին. դուլ իրեք դէվա եխ արաւ, բեռներ լցեց։

Ցետին մաղին ուէս սաաց դուլ ին.—Գնա՛, Նախրորդի վէր ղար-մենք տանենք, ուտենք։

Դուլ սաաց.—Մեղք ի, Աստուած տուեց ինոր, էն էլ բերեց, տուեց քե։

---

* Պատմած է Պետրոս Վերսոյեան։

Ուխս կասի.—Ես քո աղէն էմ. կասեմ զարկ, զարկ. ինչ կասեմ, իմ խօսքով արա:

Դուլ էկաւ, Նախըրորդին ասաց.—Քեօ վիզ կտռեմ:

Ասաց.—Տա՛տ պէտատ, ես ինչ էմ արե, ես կեճճխանէն առել իմ քե, էմ վիզ մի կտրի:

Ասաց.—Չէ, ես սկուն չեմ անի, քեօ վիզ տը կտրիմ:

Էդա Նախըրորդ իրեք խատ անգին քար էդա կեճճխանից միրուցած էր, ասաց,—Դուլ, դիւ ու քեօ Աստուած. եմ գլօխ պտի պոնիս, մու էդա իրեք քարեր. տար, տուր եմ կնկիան, եմ կնիկ էրկու խոդեալ է, թի որ ընձիկ լաճ կըլնի, անուն դնի Տատ պէտատ, թի որ աղջիկ կըլնի, յինք գիտի:

Էդա Նախըրորդի վիզ կտրին մըչ կեճճխանէին:

Էդա կեճճխանէն ինչ կէր, չկէր, տարան էկան:

Իրկուսուն Նախըրորդի կնիկ գնաց մօ ուէս, ասաց.—Դո՛ր է եմ էրիկ, դո՛ր օղորկիրս, գնացեր:

Ասաց.—Նախըրորդ ծուռ մարդմ' էր, ով գիտի՝ ուր է գնացեր. գնացիր է ուր խօր գեօռ:

—Մենք ըմենով տը մեռնինք սոված, յէմարին խաց չի բերի:

Էն մնաց ուր հալին, ինոնք բերին կեճճխանէն կերան:

Մնաց, հայեաւ մը վրէն ընցաւ, Դուլ ձեռ առեց ճեպ, էն իրեք անգին քար մըջ ճեպին տըրաւ, էդա քարեր գեաղարկութենով բերեց, տուեց Նախըրորդի կնկեան. էն խաէն ասաց:

Ժամանակ մը վրէն գնաց, Աստուած լաճ մը տուեց Նախըրորդի կնկեան, դըրկեցնի էլան, ասին.—Անտէր տղայ է, խայ քրիստոնեայ է, չըլնի մեռնի անկնունք:

Էլան տղէն տարին ժամտուն կնունք:

Տէրտէր տատմօր ասաց.—Ի՞չ անուն դնինք վրէն:

Տատմէր ասաց.—Մօր կանչէք գեայ, անուն դնի:

Մէր կանչին բերին, էկաւ:

Տէրտէր խարցնեց.—Խօր անուն ինչ տը դնինք:

Ասաց.—Տէրտէր, որ թի ձի կը խարցնես, անուն դիր Տատպէտատ:

—Այ մամա, միր անուն կայ Տատ պէտատ մըչ խայ քրիստօնին ո՞ր քեօ տղի անուն դնեմ Տատ պէտատ:

—Չէ, ասաց. ուր խօր վասիեարն է, խօր վասիեար ես չըմ կուրսի:

Տղէն կնքեցին. անուն դրին Տատպէտատ, բերին տուն:

Տղէն օր աւուր ջոջացաւ. Զահմաւոր իլաւ:

Մէկ օր մօր ասաց.—Իմ խօր սանահար ինչ է, բանցուցեմ:

Մէր ասաց.—Քեօ խօր սանահար ճալալնտութին է:

—Ձի առ, ամիր դնա մօ ճալպաճս։

Տղի ձեռ բռնեց, տարաւ գնաց մօ ճալպաճս։

—Նալպաճսչի, իմ տղէն բերեր էմ ճալպաճսութիւն ուսուցես։

Ասաց.—Շատ լաւ կասես. թո կայնի տաղ, ընձի սմբրաւ բերէ, ձիու ոտ բռնի, գլօխ բռնի, ես ուսուցեմ։

Լաճն մէկ օր մնաց դայ, իլաւ փախաւ, դնաց մօ մէր, ասաց.—Տատ ալէտմա, դիւ ընչի՞ էկար։

Ասաց.—Վայա՛, ձին մէկ օր լաճկի գարկէ մըշ իմ բերնին. ես չեմ կանայ ճալպաճսութիւն անի։

Ասաց.—Քեօ խօր գեօ՛ռ, գնա՛, մըշ ճժերաց խաղա՛։

—Չէ՛, ասաց. ես իմ խօր սաճահաբ քինէ կուզեմ։

Ասաց.—Քեօ խօր սաճահաբ խայարութեն ի։

—Իմ ձեռ բռնէ, տար մօ խայարճին։

Տարաւ մօ խայարճին, ասաց.—Իմ տղէն ուսուցես խայարութեն, մենք յըմենով չախուենք։

Ասաց.—Թո մնայ մօ ձիկ, թել քեշի սանդ, չոր տայ իմ ձեռ, եօ ուսուցեմ։

Մէկ օր մնաց դայ, փախաւ էկաւ։

Մէր ասաց.—Տատ ալէտատ, ընչի՞ էկար։

Ասաց.—Ես չեմ կանայ խայարութեն անի, օր մը սանդ մանի իմ ձեռ, եարալու անի, մանի իմ աչք, քօռ անի։

Ասաց.—Դիւ սաճահաբ չսորվար, գնա՛ մըշ ճժերաց կան արի պարապ-սարապ։

Ասաց.—Իմ խօր սաճահաբ ինչ ի, ձի դիր իմ խօր սաճահաբին։

Ասաց.—Քեօ խէր խիւս էր, խուսութեն կանէր։

—Իմ ձեռ բռնի, տար մօ ուստէն (գուժանի սարք չինող), թը ընձի անի ուստայ, եօ ուսնեմ։

Ձեռ բռնեց, տարաւ գնաց մօ ուստէն, ասաց.—Իմ տղէն ուսուցես ուստութեն, կընի ուստայ, մենք ըմենով կը չախուենք։

Ասաց.—Թը մնայ ըս տեղ, փէտ տայ, ուրագ տայ, ես առեմ ուրագ ծընայ դիր, տաշի. ուսի քե խըմակ։

Մնաց դայ էրկու օր, փախաւ, գնաց։

Գնաց մօ մէր, ասաց.—Տատ ալէտատ, ընչի՞ փախար։

—Վայա, ասաց. ես չեմ կանայ էն ուստութեն անի, ուրագ մէկ օր դպնի, իմ ոտ կտռի. ես էն սաճահաբ չեմ անի։

—Որ դիւ չես անի, հա գնա՛, կան արի, ես իշ սաճահաբի վրէն կը դնեմ, չես անի։

—Իմ խօր սաճահաբ քենէ իլաճի կուզեմ։

Ասաց.—Քեօ խօր սաճահա՞բ։ Ասաց.—Խա՛։

Ասաց.—Քեօ խէր տարին տասուերկու ամիս Նախրճի էր։

—Անձմն, մէրիկ, ես իմ խօր սանճահաքին խաւ կան դիզի. իմ խօր սանճահաք դոտայ, իմ ձեռ բռնի, տար մօ ռէս, ընձի անի Նախրճի. ես որ չեմ կանայ Նախրճի էղնի, ընձի անի հորթարած։

Ձեռ բռնեց, տարաւ մօ ռէս, ասաց.—Իմ աղէն անես որթ-կարած, իմ լաճու խէր դնաց կուրխսաւ, իմ լաճ անես որթկարած որ մենք ըմենով չախուենք։

—Այ աղա՛, ասաց. դիւ չլմէի մանտր ես, կանա՞ս որթկարածու-թեն անես։

—Նախրճութեն չէ, խըմայ որթկարածութեն կանամ։

—Այ որդի՛, գնա յէռջև որթկնեկաց, ես քե կտամ յըմէկ որթ-կնեկաց մէ մէկ դիտր ցորեն. կիրակնեց կիրակի քեօ խաց ժող-ուեի, կե։

Ձում աչուն իլաւ որթկարած, աչուն առեց խարիր դիտր ցո-րեն, յիսուն դիտր ծախեց. տուեց, խարիր չարխի (հինգնոց կամ վեց ղրշնոց դրամ), խարիր չարխին, ասեմ, տուեց ուր խըմայ չոբե-իլաւ, մօր ասաց.—Ես մէկ տարի որեր իմ որթկարածութեն, խա-րիր դիտր ցորէն էմ առեր, ես ծախեր եմ յիսուն դիտր, տուեր էմ, չարխի եմ առեր, ես իմ խօր եռսուն տարուայ հախ քինէ դաւի կանեմ, յեւր ի, չէրեայ, ընձի չանց տաւ, ընչի չանց չեա խտայ։

Ասաց.—Քեօ խէր՝ ծուռ մարդ մէր, կը՛ փճըցուցէր. չըմ դիտի յե՞ւր ի։

Մօր վըէն զօրեց, ասաց.—Դիւ իմ խօր հախ պտի բերես, ընձի չանց տաս, չէ՛, քե կըսպանեմ։

Մէր էլաւ վեր, ուր ախուն մէկ անդին քար տուեց, ասաց.

—Որդի՛, էստ ի քեօ խօր հախ։

Ասաց.—Է՞ն է, ես դապուլ արի. տա՛ր դնա մօ զարկեար, խուրցի, բեր, ընձիկ պէտք ի։

Տարաւ դնաց մօ զարկեար, զարկեար ասաց.—Այ մամա՛, ես խառ ղեյմեր չըմ դիտի։

—Դիւ խալալ մարդ ես, ինչ կտաս, տուր։

Էլաւ, մէ մեշօֆ ոսկի տուեց, կնիկ առեց, էկաւ տուն. լաճ-տատ ալէտատա յեվարին էկաւ.—Այ մէր, ասաց. դիւ տալար, դնա-ցիր. ի՞նչ տուեց քե։

—Մէ մեշօֆ ոսկի, ասաց.

—Մէրի՛կ, գնա մօ Թաքաւոր, մե մը ճենըրկի տեղ տայ, բօ տեղ տտարութեն ի, տեղ չկայ. ընձի կը թքուցեն, կը մըրեն, կը մըեն դիւս։

Մէր դնաց մօ Թաքաւոր, տեղ ուզեց. Թաքաւոր դրեց, տուեց, որ արտի տէր դաւի չանի։

Ցէվարին աղէն էկաւ, խարցնեց, մէր ասաց.—Գնացի մօ թա-
քաւոր, դըրեց, տուեց։

Տատ պէտատ ասաց.—Խըլուսուն գնմ, սաս թաքաւորին որ
ուր ուստէն տը գեայ. ուր սարի ալէս չինի։

Կնիկ գնաց, սաաց. ինոր վրէն ծծղաց թաքաւոր, սինօղքեր
ծծղացին, վոզիր ծծղաց, սաին։—Այ մէր. թաքաւորի սարէն, թա-
քաւորին ի լայեղ. գնմ, քե խըմայ չինի։

Ասաց.—Ձե ինչ կայ, ուստէն ձի չանք տուէք։

Վոզիր ասաց.—Թաքաւոր ապրած, խեղճ ի,՝ գիր մի տուր
ձեռ, էհայ. մէ սկուն մէլ ինոնք ծծղան վրէն, թի գեայ, մնայ մինչ
ուր հալին։

Տարան գնաց մօ ուստէն. հա էստ փողանն ի, հա նահան,
նահան չէ. նահան, նահան դիւռ չէ, էն մէկէլ, գնաց, գնատու. թուղթ
տուեց ինե։

Ծծղացին վրէն, ալին թըռանայ.—Գնմ, քե յիւրին ուստայ
դնտի, սաին։

—Դիւ ձի փարէն ինչկացէք. թաքաւոր ձե տուե մէկ ոսկի, դիւ
տուէք էրկու ոսկի. ձի ինչ կայ։

Էնա մէկ ուստէն ասաց.—Աղօրթ կասի, մեր փարէն տայ,
էհանք։ Էլան ընկեան իտև լնկեան, գնացին։

Գնացին, տեղ. էրկէնք, լէնք չափին. թաքաւորի սարէն ինչ չէ-
ըիս էր, չինին։

Տատ պէտատ յէվարին էկաւ.—Այ մէրիկ, ասաց, ինչ արիր։

—Իրրի, չափած ի, որ առաւօտուն չինին։

Լաճն բանի չխառուիր, որթկարածի. կեհայ ուր բանին. ինչ
ընի, մէրն ի։

Շէճըրկներ չուռ կէս չինին, փարէն խըլըրսաւ։

Ցէվարին լաճն էկաւ, մէրն ասաց.—Փարէն խըլըրսաւ։

Ասաց.—Մէրիկ, էն իմ խօր մէկ տարուան հախն էր, այսա
մէկէլ էւստուն տարուան հախ։

—Չկայ, քեօ խէր մէկ ծուռ մարդ էր, կուտէր բաղի, բարբանի,
կը փըճըցուցէր։

Լաճ ախ տուեց.—Եաճ տը բէրիս, հաճ քե կօղաննեմ։

Գնաց մէկ անդին քար բէրեց, տուեց լաճուն.—Էստ ի, էլ
չկայ։

Ասաց.—Տար մօ զարկեար՝ ըսկուն խուրցի, չինի։

Մէր գնաց, խուրցեց, մէկ մեշօֆ ոսկի էլ բէրեց. առաւ,
գնաց էդա ոսկիքտերով ուր սարէն չինեց։

Շինեց, ինոր դիւռ. սուաղ, էրդիքներ մնաց։

Տատ պէտատ ասաց.—Մէրիկ, էստ իմ խօր էրկու տարուան

*իրեք օր. յըսօր էտ Թագաւորին առնող աղջիկ ըսեր ա օր* ջրինց *խաղան հարի իրեք օր։ Իրեք օրէն յետև ըսեր ա «մէկ քանիմ բաներ լէ կայ, կըսիմ. օր կատարիք, նոր կը պսակուիմ Թագաւորի վըրէն»։*

*Փըշուիմ մնացին էտ խօսքի վըրէն, տըղէն մէկ լէ տեսաւ, օր կէղնի հազար ձիաւոր, հեծած էտ ողջկայ նըստած* ֆոսֆ *ու* սարի փանճարի *դէմ* ջրինց *կը խաղան։*

*Ցէլաւ, ուրին քաշեց* բահճայ, *իմալ օր սիւտակ ձիու պօչի մազ ճըրընկցուց, գախին սիւտակ ձին,* ճուզր *ուր մօտ կայնաւ. մէկ ձեռք լէ հագնելու* խասս *չոր վըրին։*

*Էտ տըղէն* համա *չուտ ուր չորեր փոխեց, յէլաւ հեծաւ ձիուն. գնաց խառնւաւ էտ* ջրինց *խաղցող ձիաւորներուն.* համայ *աղէկ* ջրինց *խաղցաւ, օր էտ քաղքի* չենլկ *յըմըն աճէոլ կորան. քըշեց էկաւ աղջկայ նստած* փանճարի *յառջևէն յըճեցաւ, աղջիկ օր տեսաւ ձիուն ու տըղին, լն* սճաք *ճանչըցաւ, ուր մըտքի մէջ ըսեց. Աստուած ընծի իմ* մուրազին *հասցուց.* վայա' *տըղէն էկեր ա։ Տղէն գնաց, ձիուց յիջաւ, ձին Թօրկեց, գնաց ուր տեղ, ու յինք լէ գնաց* բօստան*։*

*Էն մէկել օր էլման ձիաւորներ հէծան,* ջրինց *կը խաղէն, էտ տըղէն ուրին քաշեց* բահճայ *սև ձիու պօչի մազ ճըրընկցուց. մէկէլ տեսաւ, սև ձին.* բռախտոլ-փուսարոլ *ուր յառէջ կայնաւ, չուտ ուր չորեր փոխեց, յէլաւ հէծաւ ձիուն, գնաց մտաւ ձիաւորներու մէջ, համալ* ջրինց *խաղցաւ օր յըմէն աճէոլ կորան էտ տըղի* ջրինց *խաղալու վրէն։ Էլման քըշեց աղջկայ նստած* փանճարի *յառջևեց գնաց մէկ,* բայճայ *տեղ յիջաւ, ձին Թօրկեց, գնաց ուր տեղ, յինք լէ գնաց* բօստան*։*

*Իրեք օրուայ վըրէն էլման ժողուան ձիաւորներ* ջրինց *խաղցան, էտ տըղէն ուրին քաշեց* բահճայ*. կարմիր ձիու պօչի մազին ճըրընկցուց. կարմիր ձին էտոր յառէջ կայնաւ, էտ տըղէն ուր չորեր փոխեց, յէլաւ, հեծաւ, գնաց. ձիաւորներու մէջ համալ աղէկ* ջրինց *խաղցաւ, օր էտ քաղքի* չենլկ *յըմէն աճէոլ կորան.քշեց աղջկայ* փանճարի *յառջևէն գնաց, յիջաւ, ձին Թօրկեց, գնաց, յինք լէ էկաւ* բօստան *ուր բանին էգաւ։*

*Աղջըկայ քառսուն օր* բմաւ, *Թագաւոր մարդ ճամբեց մօտ, ըսեց.—Արի, պսակուինք։*

*—Չըմ պսակուի, ըսեց աղջիկ։*

*«Ցօրի չպսակուի, ըսեց Թագաւոր,* հալա *գնա, հարցու։*

*Գացին աղճկան ըսեցին, Թագաւոր կըսայ «յօրի չպըսակուի։*

*Աղջիկ ըսեց.—Ընծի իրեք հատ* բամպէ *կայ, յերօր Թագաւոր կատարեց. նոր կը պսակուիմ։*

*Էկան, Թագաւորին ըսեցին.—Աղջիկ կըսայ «ընծի իրեք* բամ-պա *կայ, Թագաւոր յեպօր կատարեց, նոր կը պսակուիմ»։*

Թագաւոր ըսեց.—Գացէք հարցուցէք, տեսէք ի՞նչ կսայ, արէք, ընծի ըսէք։

Էկան աղջկան ըսին.—Թագաւոր կըսայ, «ուր բամպին ինչ ա, թըխ ըսայ»։

Աղջիկ ըսեց.—Թագաւորից գուզիմ մէկ օսկի հաւ, օսկի կուտ յառէջ. մէկ օսկի սինու մէջ դրած, գուզիմ մէկ օսկի կատու, օսկի մուկ, օսկի սինու մէջ դրած. էդոք որ բերեց, պրծաւ, պէտք ա բերայ հըմալ հէքեաթ ըսօղ մի, որ խամտան մէկ հէքեաթ ըսայ, ուր քաղքի մեծ ու պըզտիկ ժողուայ, որ յանկանջ էնին, յետոր էդ իմ բամպէք կատարեց, նոր կը պսակուիմ։

Աղջկայ ըսած խօսքեր ու բամպիք էկան, Թագաւորին ըսեցին, Թագաւոր էն սրճապ ուր քաղքի մէջ ինչ խտրպ որ օսկերիչ կէր, զըմէն խանչեց ուր մօտ, ըսեց.—Կերթաք, կը շինիք մէկ օսկի սինի, օսկի սինու մէջ կը շինիք, մէկ օսկի կատու օսկի մուկ յառէջ, էլման կը շինիք մէկ օսկի սինի, օսկի սինու մէջ կը շինիք մէկ օսկի հաւ, օսկի կուտ յառէջ։

Թագաւորի էդ ըսածներ ըսկի մէկ օսկերիչ չըկըցաւ շինեց, Թագաւորի իլաճ կտրաւ, դալալ տըւեց խանչել. «Որն որ Թագաւորի ըսած օսկի ամարաքներ, Թագաւորի նոր խանըրմի ըսածի պէս շինեց, Թագաւոր էնդոր ուր ծանտրութինով օսկի կիտայ։

Ըսկի մէկ մարդ մի էդ կայեն քաղքի միջից յառէջ չէկաւ, էդ բոստանճի տըղէն էկաւ դալալի յառէջ, ըսեց.—Թագաւորի ըսածներ ես կը շինիմ, մինակ ընծի մէկ բեռ գուզ տայ ամեն մէկ գիշեր քանի որ էդ շինելուց չպըրծիր իմ։

Դալալչին էկաւ, Թագաւորին ըսեց.—Ֆըլան բոստանճու մօտի մարդ ըսեց «ես կը շինիմ, ճամա ամեն մէկ գիշեր մէկ բեռ գուզ ընծի տայ. քանի որ չպըրծեր իմ շինելուց»։

Թագաւոր ըսեց.—Շատ աղէկ, տարէք, մէկ բեռ գուզ տուէք. իրեք-չորս գունտ լէ օսկի էն բոստանճուն՝ թըխ շինայ։

Առան գացին գունտ-գունտ օսկիք, ու մէկ բեռ գուզ տուեցին էդ տըղին՝ սապաղտան յէլաւ ուր մօտի օսկի կատուն, օսկի մուկ, օսկի հաւ, օսկի կուտ, ու օսկի սինիք ճամբեց Թագաւորին. Թագաւոր լէ ճամբեց աղջկան, աղջիկ որ տեսաւ, էն սհաթ ճանչցաւ որ ուրանց ապրանքն ա որ յինք բամպի էրեց .... տըղին, տըղէն լէ բերեր ա։

Էն մէկէլ որ էդ աղջիկ ըսեց.—Կերթաք ընձի մէկ հէքեաթ ըսօղ մի կը բերիք, ու քաղքի մեծ պզտիկ կը ժողուիք որ յանկանջ գնին էն հէքեաթ ըսօղին. յետոր հէքեաթ պըրծաւ, ես նոր կառնիմ Թագաւորին։

Էդ աղջկայ ըսած խօսքեր յըմէն էկան, Թագաւորին ըսին։ Թագաւոր յէլաւ դալալ խանչել տուեց, ըսեց. «Որ նոր գայ, խամտաճ մէկ հէքիաթ ըսայ, Թագաւորի նոր բերած խաճըմըն հաւնեցաւ. Թագաւոր էնդոր ուր կշըռանոցով օսկի կիտայ։

Էդ բօտեճճի տըղէն էկաւ, դալալին ըսեց,

—Ես չատ աղէկ հէքեաթ ըսել գինամ։

Դալալ էդոր ձեռնէն բռնեց, տարաւ Թագաւորի մօտ։ Թագաւոր դալալ տուեց խանչել, ըսեց.—«Ինչ խըտըր, որ քաղաք մարդ կայ, պէտք ա գայ Թագաւորի սարային որ հէքեաթ ըսօղին յանկանջ դընիրս։ Էդ քաղքի մեծ ու պզտիկ յըմէն էկան Թագաւորի սարային, Թագաւոր խանչեց էդ տըղին, ըսեց որ, ուր հէքեաթ ըսայ։

Էդ տըղէն ըսեց.—Թագաւոր ապրած մնայ, վախտի մէկին, բուըճճբրի մէկ, ըսկի ժառանկ չունենայ։ Մէկ օր էտ բուըճճբար կերտայ ուր յարտ վարելու, կը ճէրտօտի ուր լծած էզան, կըսայ «մուռտալ»։ Աստըծու հրամանքով էդ եզ լիզու գէլնի, բուըճճբրին կըսայ։ «մուռտալ մենք չինք. մուռտալ իսաճ ա, որ ճա՛ ժուկ գինայ, ճա՛ ժամանակ, յըմէն հող մեղք կենայ. որ կը մեռնի, կը տանին հօղի տակ կը հորին, ճամա մենք որ կը հիւնդնանք, մըզի կը մորթին, ուտին, զմըր կաշին լէ կը հագնին. դու որ քու վախտ յիմնաս, էրտաս քու ղօճակ, քու կնիկ Աստըծու խատու խուտրաթով կը պառկի, մէկ տըղէ մի կը բերայ, ճամա քու էդ տըղէն լէ չատ գիտնակ տըղայ կէղնի։ Բուըճճբար աճէպ կը մնայ որ եզ մարդու պէս կը զրուցայ. էլ մէկ տարի թամամ ուր ղօճակ չէրտայ, տարին որ թըմաւ էդ եզան ըսած օր, էդ մարդ կերտայ ուր ղօճակ, էդ մարդու կնիկ կը փօրօփնայ, Աստըծու հրամանքով կը պառկի, ուր վախտին, մէկ չատ յիմաստուն տըղէ մի կը բերայ։

Էդ տըղէն կէղնի վեց-եօթ տարեկան. մէկ օր մի գէլնի, յարտ ու ր հօր հաց կը տանի, պապ կը նըստի որ հաց ուտայ, տըղէն հօր թեւէն կը բռնայ, կըսայ.—Մուտի։ Պապ կըսայ.—Ցընչի չուտիմ։ Կըսայ. Մըզի ղօճախ գիկայ. մէկըլէ կաչքայ՛ կը տեսնի որ իրեք ձիաւոր էն դըհէն յէլան, էկան դէմի ուրանդ, էկան բարև տուեցին. էդ պզտիկ տըղէն զէտոց բարև առաւ, էդ ձիաւորներ հարցուցին.—Ի՞նչ կայ, ինչ չկայ աշխարհ։ Էդ տըղէն ըսեց.—Ինչ որ կայ ձըր մօտն ա. մարդ չը գինայ։

Էդ ձիաւորներ լէ Աստամաթ Թագաւորի աղջիկն էր ճամպի էրկըներ ժուռ գալու. ու էնդոցլէ թամպա էրեր էր, ըսեր էր, «ալամ—աշխար ժուռ գիկար, լռաստ գալօղ մարդուց կը հարցուք, թէ «աշխար ինչ կայ, ինչ չկայ.» որն որ ձըր ջուհապ տուեց թէ, «ինչ որ կայ ձըր մօտն ա»։ Էն մարդու ձեռնէն բռնիք, բերիք, ես էնտոր սիրտ ու թոք ուտեմ որ չմեռնիմ։

Էդ ձիաւորներ տեսան օր Թագաւորի աղջկայ էրած քամպի ջուապ էդ պզտիկ տղէն տուեց. էդ տղի Թևէն բռնին, տարան Թագաւորին.

Էդ տըղի պապ լաց յընկաւ յետևներէն, տըղէն դառցաւ ուր հօր սիրտ տուեց, ըսեց,—Ափօ՛ մի՛լայ-մի՛լայ, ես վաղ-մէկել օր կը դառնամ, ընծի բան չէղնի՛, դու ըսկի մը՛ վախենայ։

Պապ Թողեց, դառցաւ, էդ ձիաւորներ առան զէդ տըղէն ու գացին, տարան տուեցին Աստամաթ Թագաւորին։ Աստամաթ Թագաւոր էդ տըղին զըրուցք տուեց, չատ հաւնաւ, էլ չ՝խիմիցաց մէկից տէր ուր աղջկայ ձեռ օր մօրԹէր. տուեց ուր սատրիազամին, ըսեց. —Տա՛ր զիտայ տըղէն պահայ, հալա տեսնիմ իմ աղջիկ ինչ կըսայ։

Սատրիազամ առաւ տըղին, գնաց ուր տուն, էդ տըղէն Սատրիազամին ըսեց.—Իմ տէր, յըսօր ձըր քաղքի մէջ մէկ պզտիկ տըղէմ ի մեռաւ, տարան հօրեցին. արի՛, Թը կեղնի, իմ արև ընձի բաշխայ, մէկ օր մի ես լէ քըզի պէտք գիկամ. մարդ ճամբայ, Թըլս էրտան էն նոր մեռած տըղէն գերէզմընէն հանին, էնդոր սիրտ ու Թոք հանին, բերին, տան Թագաւորի աղջիկ ուտայ, օր ուր ձեռ իմ եախից Թողայ։

Սատրիազամ էդ տըղի խօսքին յանկաջ էրեց. յէլաւ, մարդ ճամբեց, գացին էն մեռած տըղի սիրտ ու Թոք բերին. տարան, տուեցին Թագաւորի աղջիկ կերաւ. էն մէկէլ օր Սատրիազամ Թողեց էդ պզտիկ տըղէն, գնաց ուրանց տուն։

Ծուկ մի յընցաւ էդ արալըղ, մէկ օր Թագաւորի քոռճին իւեք հատ չատ խօրօտիկ ձուկ բերեց Թագաւորին փեշքեշ։ Թագաւոր լէ յէլաւ, ճամբեց ուր աղջըկան, աղջիկ ձկներուն յետ ճամբեց, էկաւ Թագաւորին ըսեց.—Էդ ձկներու մէջ որձ ձուկ կայ, ես կուս աղջիկ, ու հարբ մեռնելու օր պըտի կուս մնամ. ես որձեղէնի միս պըտի չուտիմ, որձ իսճի հոտ բիլայ իմ քիթ չքիանի պըտի։

Թագաւոր չատ դուշուրմիշ էղաւ ուր աղջկայ ըսած խօսքերու վըրէն, Աստծու խաս ու խուտրատով ձըկներուց մէկ յէլաւ լիզու, Թագաւորին ըսեց.

—Որձը ուր մօտն ա, էգը ուր մօտն ա, ու Թըռաւ Թագաւորի յառջևից, փաճճարի միջով յընկաւ ծով։

Թագաւոր էն սճաք կը խանչայ զուր սատրիազամին, կըսայ.—Նա ձկան ըսած ջուհապ ընձի կիտաս, եա լէ չէ՛ քու գլօխ կը զարկիմ։

Սատրիազամ կը մնայ չիւար, հինկ օր վաղտայ կը կըտրայ, յեդօր զէդ ջուհապ չտուեց, նոր Թագաւոր զուր գլօխ զարկայ։

Սատրիազամ գիկայ ուր տուն, չուտ կը ճամբայ էդ տըղի յետևէն, կառնի տըղէն, գիկայ։ էն մէկէլ օր Սատրիազամ տըղին կը

տանի կը հանայ Թագաւորի յերես. էդ տըղէն իրեք հատ առակով կը հասկցու Թագաւորին ձկան ըսած խօսքեր։

Տըղէն կըսայ.—Թագաւոր ապրած մնայ. վախտի մէկին մարդ մի կէղնի, էդ մարդու կնիկ ինչ խըսըպ՝ կը պառկի, էրիխայ կը բերայ. վիշապ մի ուր տան յառկէն գօղտու գիջնէր, էդ մարդու էրեխէն օրօցի մէջ կը խեղտէր, ու էլման կը քաշուէր յառիկ, կը պահուէր։ Մէկ օր մի յեպօր մարդ ու կնիկ տուն չէղնին, էդ վիշապ յառկէն կախ գընկնի օր յիջնի քնած տեղ օրօրօցի մէջ էդ էրեխին խեղտայ. էդ տան տիրոջ մէկ պզտիկ բօճի չուն կէղնի, էդ սհաքուն էդ բօճին օրօրօցի տակ պառկուկ կեղնի. վիշապի յիջնիլու խշըրտոց կը լսայ, գէլնի, կաչքայ օր վիշապ յառկից յիջաւ, էկաւ ուր պօչ փաթեր օրօրօցի մէջ էրեխի վըզով, օր խեղտէր. հաւմայ էդ բօճին յէլաւ, ուր յակռէններով վիշապի պօչ կտրտեց. վիշապն ու բօճին կռւտան, բօճին վիշապին խեղտեց, էրեխին ազատեց. քիչ մի մնաց, տան տէր էկաւ, դուռ բացեց, բօճին արնլուայ յէլաւ ուր տիրոջ յառէջ, տէր ըսեց.—Վա՛յ. յըմէն հաղ իտայ բօճին ա օր զմըր էրեխէք կը խեղտայ, մենք Ծարազ խաայար չունինք. կը զարկայ, բօճուն կըսպանայ, գիկայ կը մտնի տուն, կաչքայ օր օրօրօցի մօտ մէկ մեծ վիշապի ջանեակ կայ, էն սհաք հասկցաւ օր վիշապ յիջէր ուր էրեխին խեղտայ, բօճին վիշապին՚կտրտեր ա, էրեխին ազատեր ա։ Թագաւոր ապրած մնայ, ինչ խսրր ցաւ էղաւ էն բօճու տիրուն, օր ուր խելացի չուն սպանեց։

—Շատ ցաւ էղաւ, ըսեց Թագաւոր։,

Էն էրկու առակ Թըխ մնայ, յիրկուն կըսեմ. տըղէն ըսեց Թագաւորին, ու ձըգի գիշեր բարի ըսեց․ առաւ Սաթրիազամին, գնաց։

Էն մէկէլ յիրկուն Թագաւոր էլման ղանչեց, էդ տըղին բերեց, էդ տըղէն իդա հաղուա մէկէլ առակ ըսեց,—«Վախտի մէկին մէկ իշխան մարդ մի կէղնի, գէլնի կառնի ղուր բազէն, կերթայ սար օր Նէճիր էնայ, շատ կը ծառւընայ, կերթայ մէկ մեծ քարի տակ, ձիով կը կայնի, կաչքայ օր էդ քարապի յերէսէն կաթիլ-կաթիլ ջուր կը կաթայ, էդ իշխան ջէպից կը հանայ օսկի ջըրխմիչ, կիտայ էդ կաթիլ ջրի դէմ, կը բերայ օր խմայ, ուր ձեռաց բազէն կըտցով կը զարկայ, կը թափայ, չթողայ օր էդ իշխան խըմայ էդ ջուր։ Իշխան մէկլէ ջըրխմիչ կիտայ էդ կաթիլ ջրի դէմ, կէնայ, օր էդ ջուր խմայ, բազէն կը զարկայ, կը թափայ. հըմա իշխան ինատ կէնայ, կը վերցու բազին կիտայ քարին, բազէն տեղօս տեղ կը սատկի, իշխան ուրին, ուրին ցուցուրմիշ կէղնի, կըսայ, «Ջանըմ, ես յօրի ամեղ տեղ զարկի գլ։մ բազէն սպանեցի, բալկի մէկ բան կէր էդ ջրի մէջ, օր բազէն չըթօրկէր ես խմէնք, հալա ես պըտի յէնիմ քարի գլօխ, աչքեմ. տեսնիմ էդ ջուր յուստի՞ գիկայ։

Գնլնի քարի գլօխ, կաչքայ օր մէկ մեծ վիշապ մի փիցեր ա, արև զարկի վըրէն, էդոր ճենճն ա օր կը հալի գիկայ, էդ քարից կը Թափի կաԹ-կաԹ. Նոր կը զարկայ չօքիրուն, ախ կըսայ. իմ յաչքեր fonնայ, իմ բազէն դինէր օր օձու արուն էր, ես պտի խըմէնք, մեռ-նէնք, զարկեց իմ ձեռնէն Թափեց, ես յընչի զարկեցի քարին, սպա-նեցի բազին։

—Ի՞նչ խըeըպ ցաւ տուեց էդ բազէն ուր տիրուն, Թագաւոր ապրած մնայ։

—Շատ ցաւ տուեց, ըսեց Թագաւոր։

Էդ գիշերը էդ տըղէն Թագաւորից իզին առաւ օր վաղ յիրկուն չէ գայ, զմէկէլ առակ ըսայ. «Ձըզի գիշեր բարի» ըսեց. առաւ Սաsրիազամ, գնաց։

Էն մէկէլ յիրկուն էդ տըղէն ու Սաsրիազամ էլման յէլան, գացին Թագաւորի մօտ, էտ տըղէն մէկէլ առակ ըսեց.

—«Վախsի մէկին մէկ Թագաւոր մի կէղնի, Հնտստանու էդ Թագաւորին մէկ Սինամահաւք փէcfէc կը բերին. էդ Թագաւոր եօԹ տարի զէտ հաւք կը պահայ ուր խաս-բաղճէն. էդ հաւք ըսկի չը զըուցայ։ Օր մի Թագաւոր գէլնի ուր բաղճէն կը զըւըռնայ, փաr-ւեզ կիտայ-կերԹայ գիկայ, մէկէլ կը տեսնի էդ հաւք ուրին-ուրին կը ծիծղայ. Թագաւոր ուրնից կը խռտի, կը դառնայ էդ հաւքի վրէն, կը ճէrսօտի, կըսայ.—Մուռsալ, իտայ եօԹ տարի դու յուտա իս, չըր ծիծղէ, յըսօր իմ վրէն ծիծղացիր։ Աստծու հրամանքով էդ Սինա-մահաւք լիզու յէլաւ, Թագաւորին ըսեց.—Թագաւոր ապրած մնայ, ես քու վըրէն խօմ չծիծղացի։ Թագաւոր ըսեց.—Ապա վիր վըրէն ծիծ-ղացիր։ Էդ հաւք ըսեց.—Յըսօր իմ աղըօր տըղի հարսնիքն էր, էն-տաք էն տեղ իմ կենաց գինի խմեցին, ես յուտայ յիմցայ, էդոր հա-մար ծիծղացի։

Թագաւոր ըսեց.—Օր ես քըզի Թողիմ, էրԹաս քու աղըօր հարս-նիքը, ընձի ինչ փէcfէc պըտի բերիս։ Հաւք ըսեց.—Քըզի մէկ ան-մահութենի խնծորի հունտ կը բերեմ, քու բաղճէն տնկիս, մէկ տարի յետև պտուղ կիտայ. էն պտուղ տուած խնծոր օր ուտիս, կը ջճէլ-նաս։ Թագաւոր ըսեց.—Օր համալ ա, դը գնա։

Էդ հաւք գնաց, ուր աղըօր հարսնիք էրեց, պըծաւ. մէկ անմա-հութենի խնծորի հունտ դըրեց ուր լիզուի տակ, բերեց Թագաւորին փէcfէc։ Թագաւոր էդ հունտ տնկեց ուր բաղճի մէջ, մէկ տարի յետև պտուղ տուեց, խնծորներ հասան, իմալ կէղնի էդ խնծորնե-րուց մէկ օձ կը դեղայ, էն դեղած խնծոր էդ Թագաւորի բաղուանճ-ճին կըքաղայ, կուտայ. ճամա տեղօս տեղ կը մեռնի, Թագաւոր գիկայ, կաչքայ օր բաղուանճճին էդ խնծոր ուտելուց ա մեռի, կը դառնայ Սինամահաւքին կըսայ.—Դու խօյ, իմ դուշման չիս օր խա-

պիր ընձի, իտայ ծառ տնկիր իմ բաղճի մէջ, որն օր էգոր խրնծորներ ուտայ, մեռնի. հըմայ կը քաշայ Թուր կը զարկայ էգ հաւքու վիզ կը կտրայ. հաւք տեղօս տեղ կը սատկի։

Թագաւոր հրաման գէնայ, էգ ծառ կը կտրեն, բաղճի միջէն կը հանեն, կը տանեն չօլ մէկ դուզ տեղ մի կը Թալին։

Էգ քաղքին մէկ հալիւոր Նախրճի կէղնի, յինքն ուր կնիկ մաէ կը տանին արծլու, կերտան էգ չօլ տեղ էգ ծառին ու խնծորներուն բռաստ գիկան, ամէկ մէկ հատ կուտին, էրկուս լէ կը ջհէլնան, կէղնին տասն ու հինգ տարեկան թուրվանցաց ջհէլ։ Էտ Նախրճին ու ուր կնիկ յիրարու կըսին.—Գաղինք իտայ խնծորներուց, տանինք մեր Թագաւոր ուտայ, մըզի քըշում փարայ կիտայ։ Կը քաղին էգ խրնծորնեցուց, կը բերին, կիտան Թագաւորին, Թագաւոր ուտելու պէս կը ջհէլնայ, կէղնի տասն ու հինգ տարեկան։ Էն սհաթ Թագաւոր կը կը խանչայ էգ Նախրճին, ուր կնիկ, կըսայ.—Էգ խնծոր յուստի բերիք». Նախրճին ու, ուր կնիկ կսեն.—Ըշտայ, Ֆլան տեղ մէկ ծառ Թալած կէր, էնտոր վըրէճէն ժողվինք բերինք։

Թագաւոր նոր կը հասկնայ, օր ուր բաղճի միջի անմահութէնի խնծորի ծառն ա, համա, նա Ֆայտայ օր կտրեց մէկ հաղ ուր բաղճեց դուս Թալեց, ու ամեղ տեղ Սինամահաւքին սպանեց։—Ինչ խտըպ ցաւ տուեց էն Սինամահաւք ու անմահութենի խնծորի ծառ էն Թագաւորին։ Էգ Թագաւոր ըսեց.—Շատ ցաւ տուեց։—Էլ էգ Թագաւոր ապրած կենայ, Թէ օր ձըկան ըսած խօսքի ջուճապ տամ, դու էլ մարդ կսպանիս։

Թագաւոր ըսեց.—Սպանիմ, չըսպանիմ, դու պէտք ա ձկան ըսած խօսք ընձի մէկնիս։

Էգ տըղէն յէլաւ, առաւ Թագաւոր, գնաց աղջկայ խաս բաղճէն, Թագաւորին ըսեց.—Դը խանչայ քու աղջկան, Թըխ առնի պուր քառասուն ջառէն, գայ. Թագաւոր խանչեց ուր աղջկան. աղջիկ առաւ զուր յեռսուն ու ին ջառէն էկաւ, տըղէն ըսեց Թագաւորի աղջկան.—Ցընչի մէկ հատ պակաս բերիր, քու ջառեք քառասուն հատ են. դու մըկայ յեռսուն ու ին հատ բերիր։

Տըղէն դառցաւ Թագաւորին, ըսեց.

—Թագաւոր ապրած մնայ, դու գինաս, էգ քու աղջիկ յընչ զուզէր մարդու սիրտ ու Թոք ուտէր։

—Ցընչի զուզէր, ըսեց Թագաւոր։

Տըղէն ըսեց, զօղտու բան չպահուի, ու քու աղջիկ լէ սուստ կուսուտեն առեր էր վըրէն, զըզի կը խափէր, գինէր օր, օր մի ուր էրած չնգործութեն այեան գէնէր. Էնդոր համար էր օր ձիաւորներ կը գրըընէն ու բռաստ գալողից կը հարցուցեն. «Ի՞նչ կայ, ինչ չկայ աշխարք». որ նոր էգ ջուճապ տէր, բռնէն, բերէն օր քու աղջիկն

էնգոր սիրտ ու թոք ուտէր, որ էկան, ընծնէ հարցուցին, «ինչ կայ աչխարը» ես ըսի «ինչ որ կայ ձըր մօտ նա»։ Ընծի բռնին, բերին որ քու աղջիկ իմ սիրտ ու թոք ուտէր, համա Աստուած ընծի ազատեց, ես քըզի Նամուսըզ չէնելու համար ուրիշներուն չսեցի, քու աղջկայ էրած խայտէպահութեն. Աստուած չընդունեց. ձուկ յէլաւ լիզու, քըզի ըսեց. «էգ լէ ուր մօտն ա, որձ լէ»։

Տըղէն ըսեց.—Դէ գիտա քառսուն աղջիկ սըկլօղցուցէք։ Քառսուն աղջիկ լէ տկլօղցուցին. մէկ տղամարդ դուս էկաւ էդոց մէջ. թաղաւոր զարմանք մնաց։

Տղէն դառցաւ թագաւորին. ըսեց.—Թագաւոր, քու աղջիկ քըզի կը խափէր, որձ ձկան միս չըր ուտէր, որ դու հաւատէր թէ քու աղջիկ մաքուր կուս ա, ու քըզնէ գօղտու աղջկայ խըլըղի իդայ տըղէն ուր մօտ կը պահէր։

Թագաւոր չատ հաւնաւ էդ տըղին, ուր աղջկան թալեց ծով. ու էդ տըղէն դառցաւ ուր հօր ըսեց.—Էն աղջկայ չնգործութեն որ այեան էղաւ ուր հօր, ես յօրի պըտի այեան չէղնիմ իմ հօր։ Ձեռ թալեց զուր գլխու քաչլիկ գաւաւ փոր վերցուց. թագաւոր տեսաւ որ էգի ուր տըղէն ա. յէլաւ վազաւ, ուր տըղի վըզով յընկաւ լացաւ, դառցաւ հարցուց թագաւոր ուր տըղից.—Ապա քու աղըրտիք ընծի ըսին թէ դև սպանեց մեր աղբօր, մենք լէ սպանեցինք դևին։ առանք գիտայ անմահութենի խնծոր ու գիտայ իրեք աղջիք բերինք, համալ ա ընծի խափեցին։ Էդ տեղ տըղէն զուր գլխու գալանաղ յըմէն ըսեց . . . . ուր հօր. հէր բերեց դևի մօտից բերած աղջկան, աղջիկ լէ վազաւ տըղի վըզով յընկաւ, սհաթ մի կեր օր, ուրախութենից խելք գնացեր էր, ջուր ցանեցին յերէսին, աղջիկ յէլաւ, նըստաւ, բերեցին տըղէն ու աղջիկ վըր յիրարու պսակին. քառսուն օր քառսուն գիշեր եօթ ձեռք դհօլ զուռնով հարսնիք էրեցին, պըծան. էն մէկէլ աղբըրտանք կամչընէն, էդ աղբօր մօտից, յերես չիկէն. գնաց էնդոց լէ ըսեց.—աղըրտանք յընչի չիկաք. ախըր էդ իրեք առակ ես ձըր համար ըսեցի որ իմ հէր չնեղենէր ձըր վըրէն, դուք առանձ վնասի պըծնէք, ու փառք Աստու ըլծանք լէ . . . . :



# 20

# ՎԻՇԱՊ ԵՒ ՎԱԹԱՆ ՈՒ ԲԱԹԱՆ

(Ալաշկերտի բարբառով *)

Կէղնի մէկ Թագաւոր. էդոր մէկ տղայ կէղնի, ծեր կէղնի. Արև կիտայ ուր տղէկներուն, տղէն կը նստի տեղ, վազիր գիգայ, տղին կը խափայ, կըսայ.— Դու ջհել ես, չըս կրնայ, Թագաւորութեն տուր ընձի, հարի դու ջօջընաս, նոր կիտամ քըզի:

Խաբեց տղէն, Թաքաւորութեն առաւ մօտէն, խանչեց գըջալլըղներ, որ պտի գլօխ տէր զարկել, վազիրներ լաւայ ընկան.— Մը սպանի, քու քաղքից հան, թըխ էրտայ:

Տղին ու մամուն էրեց դուս, գացին քաղքի քօչէն, մէկ տեղ մի գտան, ուրանց սարուան: Էդոնց էրկու հատ մօտիկ դըկեց կէր. մէկի անուն Վաթան, էն մէկէլին Բաթան, օրական կերտէն մէջէն՝ փէտ կը բերէն, ծախէն: Թագաւորի տղէն էդոց հետ գնաց, փէտ կը ջարդէն: Տեսան ջաղջի քար մի, քար չըջիցին, տեսան որ մեղր կէր. էդ մեղր հանին, տղէն մտուցին մըջ հօրուն, տղէն մեղր . . . էդոնք հանեցին, պըծան: Միտք էրին Թէ-տղէն Թողինք մըջ հօրուն, մեղր տանենք: Տըղէն քաշեցին հարի հօրու կէս, շրիտ կտրեցին, տղէն յընկաւ մէջ:

Էդոնք մեղրը առան, էկան. տղէն մնաց չուար մըջ հօրուն:

Քանդեց հօրու մէկ դեն, տեսաւ պզտիկ լուս կերևէր, քանդեց հող, էլաւ տեսաւ որ յընկաւ մէկ ուրիշ աշխարհ. մէկ պաղչէմ՝ կէր.

---

* Այն հէքիաթն ընդհանրապէս ծանօթ է (տիեզերական) անունով կառուի ժողովրդեան մէջ, նա եւ Ղալայի Կեանքը, իսկ Վաթան ու Բաթան եւս Տօրո ու Բօրո:

յընկաւ պաղչի մէջ, ժուռ էկաւ։ Մեղր էր կերե, սիրտ կիրիցեր, տեսաւ մէկ ահագին վիշապ մի գիգայ. տղէն փախաւ դըխ հորու ծակ. վիշապն էլաւ մէկ հալիւոր, էկաւ էդ ծկի դէմ, կտրեց էդոր յառէջ.—Հա՛, ըսեց. տղա՛, յընչի՞ կը փախնիս, ինչ ա էղեր։

—Պապէ՛, վալա, մէկ վիշապ տեսայ, փախայ։

—Մը՛ վախենայ, վիշապ չգայ, գնաց։

—Պապէ՛, Աստու սիրուն էղնի, չա՛տ ծարաւ իմ։

—Հա՛ն, մե՞ղր խս կերեր։—Մը հարցու, էդ օր ընձի էկաւ, իմ դուշմնին չգայ։

—Ի՞նչ ա քու ցաւ. դու մեղրիս կերե, դու իմ ցաւ հարցու։

Տղէն կը տանայ, ջուր կը խմցու։

Պապէն կը նստի, տղին կըսայ.—Արի՛, նստի իմ չօքի վրէն, ես իմ դարդս խըսա էնիմ։ «Ես մէկ Թագաւորի տղայ էնք, իմ հէր օսխաք էրեց թէ, յո՛ւր կերտաս ախրդուռ էնելելու, գնա՛, հիմա Սև սար մ'էրտայ. ես լէ յէլայ, քսան, եռսուն հոգի առայ, մէկ օր գացի Սև սար, տեսայ որ վէրու օչխար. մարալ, ջէյրան, ինչ որ թէ ճախիր էն. ես ու իմ յընկէրտանք պարկեցինք, ջարդեցինք, մեր ձիանու բեռ բռնեցինք։ Մէկ էլ տեսայ սև ամպ մը յէլաւ, էրկինք. բռնեց, անձրև էկաւ ու կարկուտ . . . . ես փախայ, մտայ քարի էրկու ջաղլէն։ Անձրև կտրեց-անուշեց, յէլայ, տեսայ որ իմ ընկերտանք խեղդած, ջանդկներ սելած քշե՛, տարե՛, իմ հօր անուն էլ չգացի տուն։ Տեսայ որ մէկ ջէյրան էկաւ, կանաւ յառէջս ի, ընկայ ջէյրանի յետև, հա յուդայ բռնիմ, հա յունայ բռնիմ. գացինք-գացինք, ջէյրան մըէս կորաւ։ Գացի մէկ քաղքիմ՝ բռաաց էկայ, տեսայ որ քաղքից ձէն գիգայ, գացի ձէնի բարաւ, լսեցի որ կըսէն. —Ո՛րն որ թագաւորի խօսք կատարայ, թագաւոր ուր աղջիկ կիտայ ընդոր։ Ես գացի. ըսի, «ես կը կատարիմ»։ Վերցին, ընձի տարան թագաւորի մօտ։

—Տղա՛, ըսեց. դո՞ւ ես իմ խօսք կատարողը։—Հա՛, ըսի։

Թագաւոր ըսեց.—«Վերցէք, ըդոր տարէք, քառսուն խոչ քառսուն լիտր լէ գինի, որ ուտայ, խլանայ»։

Տարան, ընձի դրեցին նեղ տեղ մի, օրական մէկ խոչ մորթի, կերայ, օրական մէկ լիտր գինին խմեցի. քառսուն օր բմաւ. թագաւոր ընձի խանչեց. էլայ, էկայ որ մէկ զապուն ձի մի կանգըրցուցած դուռ, մէկ . . . թամքի վրէն. կեմեց, ընձի խանչեց. յէլայ հեծայ, տեսայ էդ քաղաք մեծ ու պզտիկ էղեր ա մէկ բարաւ, կերտան. ես լէ յէկայ, ընդոնց էտևէն գացի, հասայ ձորու մէջ, մէկ չինարի յառէջ կանանք. վալիք, վաքիլներ ընձի պատիւ խանչեցին. գովացին. բերին իմ ձին կանգըրցըրցին իմ յառէջ թէ «Թագաւորի հրամանն ա, ձիան գլօխ զարկ։ Զարկեցի։ Ըպա.—Քերթա՛։ Ես լէ

քերթել չընք գինի, ճղրդեցի, մէկ զօլ էն տեղ թալի, մէկ էն տեղ։

—Դէ՛, ձիու փոր պատռա՛։

Պատռեցի։

—Դէ՛, մտի մէջ։

Մտայ մէջը։ Թել ու ասեղ մօտ ուրանց հազր էր, խաչթաս կարեցին, տնկեցին յէրկէն սոխներու վրէն. վերցուցին «էդ քարի գլօխ, դու մ'ըսի էդ քարի գլօխ արծըւու էրկիր ա, արծըւնիր գըրկեցին, դրին էդ քարի գլօխ։ Զանցակ օր ճղճղեցին, կուտէն, ես միջէն յէլայ. տեսայ օր ինչ տեսնիմ, էդ մարդիկ օր չինարի տակն ին յաչից ինչ օր մուչիմ էրևան, ձէն տուեցին.—Է՛, թագւորի տղա՛, էդ տեղ ջալահիր քար կայ, թափայ ցածր. մկայ թագւոր նարեի-ւան կը չինայ, կիջունք քղի ցածր։ Տեսայ օր անգին քար իմալ օր փայեն, ձեռքուայ թափել։ Էնքան թափեցի օր էդ մախլուխ բար-ձան։ Կէս մնաց. ես բռւացի.—«Ընձի լէ իջուցէք՝ ախըր ընձի թո-ղիք»։ Ըսին.—Էնքան մնաս էդ տեղն օր կուսըր սիփ՞ըկի»։ Ես մացի էդ տեղ անճար, քունս ի քաշեց, քնայ էդ զնարի վրէն. մէկլէ տե-սայ օր կպռչկած ա, իմ յոտներ կը քաշին. տեսայ օր աղուէս էր, աղուէս փախաւ. ես աղուըսու յետևանց յընկայ. էն քարի տկով, էն զնարի տկով ընցայ, ընկայ ցաշ տեղ մի, տեսայ օր բարակ ճամ-բէմ կայ էդ տեղ։ Աղուէս կորաւ, բռնի քու էդ մտուկ ճամբէն ու գացի, տեսայ օր մէկ դուռ մի կերևայ, բացի, մտայ ներս, տեսայ մէկ հալիւոր նստուկ ա. բարևի առաւ, նստայ. հալիւոր խըլլօն կը քաշէր, մէկ խըլլօն մը լէ էդ տեղ կէր, էն լէ տուեց ընձի, ես լէ քաշեցի. հըմա էդ հալիւորու ադաթն ա օր իրեք օր թմի՝ նոր կը հարցու թէ ինչ մարդ իս, ինչ մարդ չիս։ Իրեք օր թըմաւ, հարցուց, ըսեցի.—Ճամբորդ իմ։ Մացի էդ հալիւորու մօտ. տարին էկաւ, բո-լըրաւ, էկաւ համբարձում, ընձի ըսեց.—Հաւուզ մի ունիմ, կերտաս էն հաւուզ գիտըրկիս։ Գացի էն հաւուզ յիտըրկի ու տափայ, տե-սայ օր իրեք հատ եղվընիկ յէկան, յիջան, թեպրներ հանեցին վե-րևէն ուրանց ու եղան իրեք հատ աղջիկ, մտան էդ հավուզն ու լողկըցան. յետև յելան, հագան թեպրներ ու թռան, գացին։ Աղջիկ-ներու սեհր թափաւ վրէս ի, ուչաթափ էղայ, յընկայ. մէկ լէ յելայ, գացի հալիւորու մօտ, հարցուց.—«Տղա՛, յուր՞ յըմլայ տխուր իս յըս-օր։—Ըսկի՜։

—Չէ՛, գինամ, ըսեց. աղջիկներ տեսեր ես, սեհր թափե վրէդ ի, օր գուզիս ընդցնէ առնիս, տարիմ լէ յըս օր Համբարձման հինկշաբ-թին ընդոնք էլի գիգան. գնա՛, ո՛ր մէկին կը հաւնիս, բռնա՛.» Ես լէ օրերս համրի, յըս օր, վաղ տարին բոլըրաւ. էկաւ Համբարձման օր՝ գացի հաւուզը, ուզի հորթի, թաժայ ջուր թողի, լցուաւ. էկայ հա-ւուզի մէջ հոր մի փորի, մտայ մէջ. քենիմ փէտ դրի վըր հորու

բերնին ու տափայ։ Մէկ լէ տեսայ, իրեք եղվընիկ լէ էկան, յիջան ձոր։—«Մըր հէր յըս տարի ինչ խօրոտ ա յիստըկէ մըր հաւուզ»։ էն մէկն ըսեց.—«Խօրոտ ա յիստըկէ, հըմայ ըսկի չոր տեղ չկայ մըր թեպըրներ դնենք»։ էն մէկն ըսեց.—Հան ա, փէտ ա դըե օր մըր թեպըրներ դնենք վրէն։ Հանեցին թեպըրներ, դըին վըր ցախին, մտան մըջ հաւուզին, լողկըցան։ Ես լէ տեսայ օր էդ իրեքից պզտիկ աղջիկն ա խօրոտ, պզտիկի թեպըրներ առի, կոխեցի ծոցս ի։ Ընդոնք էլան օր հագնէն. էն էրկուս վերցին, հագան. տեսան օր քուրոջ չկայ, ընդոք օր հագան, գացին. ես յելայ։—Հա՛, ըսեց աղջիկն դուն յորճ ես իմ թեպըրներ վերցե, էրթանք իմ պապու մօտ։

Դաւի էնելով գացինք հալիւորու մօտ։

Հալիւոր ըսեց.-Լաւօ, ես իմ հախ տուե, դու պտի առնիս էդ աղջին։

Աղջիկն առայ։—Է՛ լաւօ, չօքսի թմպըրաւ յընցի մէկէլ չոքի վրէն։

Տղէն գլուխ դըեց մէկէլ չոքին։

Հալիւորն էլման . . . . էրեց. մացի էդ տեղ մէկ տարի, իմ հէրն ու մէր յընկան իմ միտք. էլայ, հալիւորուց խնդրուայ թէ էրտամ, էն լէ ըսեց. «ինչ կէնիս էրայ, աղջկան չզարկիս, չէռուխս, կը փօշմնիաս»։ Առայ իմ կնիկն ու գացի։ Ես լէ ըսի.—Ցորճ պտի ծեծիմ։ Հասանք իմ հօր քաղաք, գացի իմ հօր մօտ, իմ հէր ընձի տեսաւ, ուրախացաւ։ Հալիւորեր էր, ընձի դըեց ուր տեղ թախտ, ինքն էլ մեռաւ։ Մնաց՝ մէկ օր յէլայ, իմ բաղնի մէջ ժուռ գիգէնք։ Մտայ իմ սարի մէջ, տեսայ կնիկ Նստուկ ա, գլօխ լուացիր ա, ծամեր գուստըկայ, չը կանաւ իմ յառէջ. ես լէ հեռսօսայ, դաստով վարդ կէր ձեռս ի, զարկի քիթ ու բերնի մէջ. Թռիկի, յելայ դուս. էն հալիւորու խըրատն յընկաւ միտքսի, էկայ մըջ բաղնին, մէկ լէ իշկեցի վերն օր մէկ եղվընեկ մի յիջուկ ա, ճանչցայ որ իմ կնիկն ա, էղե եղվընիկ, վաղայ, մտայ սարի մէջ, տեսայ օր կնիկ չկայ, յելայ դուս օր գողտուկ եղվընիկ բռնիմ. եղվընիկ թռաւ. յէլաւ ծառի խխտ գլօխ, Նստաւ, ըսեց.—Էն ծառն օր քու ձեռ չհասնի, մը ձգի, օր գուզիս ընձի գտնիս, արի Գեավառու Նիկեարայ քաղաք, ընձի գտի։ Էդի էրկնքով գնաց, ես դետնով. Թագաւորական շորեր հանի, թափի ու գացի։ Արև պատաւ, եղվընիկ կորաւ վրէս ի. Ես բռնի ճամբխէն ու գացի։ Մնաց մէկ քաղքի լռասե էկայ. տեսայ էդ քաղքի մէջ կը գոռան. «օրն օր թագաւորի խօսք էնայ. Թագաւոր աղջիկ կետայ ըղըրան։—Օհօ, ըսեցի, էլման կը խափայ, հըմայ կերտամ։

Գացի. ըսի.—Ես կը կատարիմ։ Ընձի տարան թագաւորի յառէջ։

Թագաւոր ըսեց. «Տարէք՝ քառսուն խոչ, քառսուն լիտր գինի տուէք»։ Տարին ընձի էլման էն օթախ օր յառջի հաղ նստեր էնք, քառսուն օր գլխոչ կերայ, գինին խմեցի. քառսուն օր, օր բմաւ, ձին բերեցին, հեծայ, ու ձիաւոր յընկանք, էդ ձորու հետ գացինք։ հասանք էն տեղ, յեւլայ սարի գլօխ, առայ էն ծակ ջամբէն, գացի, յեւլայ հալիւորու մօտ։ Իրեք օր բմաւ, հարցուց.—Ցորի էլման էկար։ Ես իմ դարs խըսայ էրի, ըսի.—Գեավճառու Նիկեար քաղաք պտի գտնիք։

—«Լաւօ, ըսեց. ես էղեր եմ հարիր տարեկան, չըմ լսերի էդ քաղքի անունն»։ Ճամբեց, բերեց արծիւ մի, ընձի դրեց վըր արծուուն, ըսեց.—«Կը տանիս իմ աղբօր մօտ, էնի էրկու հարիր տարեկան ա»։ Ուր մատնիք լէ տուեց ընձի, էցգի իմ մատ, ըսեց.—«Ինչ վախտ որ կը մօտենաս իմ աղբօր հողին, ընդոր արծիւներ գիգան, մատնիք նշանց տուր, ընդոնք կը տեսնին, քզի կը վերցուն, կը տանին ուր մօտ»։ Արծըւներ վերցին, տարան։ Հասայ էդոր աղբօր հողի մէջ. մատնիք նշանց տուեցի՝ տարան մեծ աղբօր մօտ։ Իրեք օրն բմաւ, հարցուց. ես լէ ըսի։

—Ըսլա՛, լաւօ՛, իմ էրկու հարիր տարին բմեր ա, ես էդ անուն չըլսեր իմ, ընձի մէկ աղբէր ունիմ, իրեք հարիր տարեկան ա. քզի պտի ճամբիմ ընդոր մօտ։ Ճամբեց ընդոր մօտ, էն լէ ըսեց.—Իրեք հարիր տարեկան իմ, չը հասկըցեր իմ էդ անուն, կանչիմ իմ հաւքեր, տեսնիմ, սալղ անիմ։ Կանչեց ուր հաւքեր, բիրադինից հարցուց. մէկ սալղ չը տուեց։—Տեսէք, ըսեց, էլ մարդ չը մացեր ա։ Ըսին.—Մէկ ֆեաչալ գարգաղ հաւքն ա մացի։

Ճամբեց, գացին հաւք բերեցին, հարցուց. էն լէ ըսեց.—Տեսեր իմ, ծերացեր իմ, չըմ կռնայ էրթայ։

Քառսուն օր քառսուն դմակ կերցուց. քառսասուն լիտր գինի խմցուց, հաւք ղլաւցաւ, թեպուրներ էղան մէկ մէկ ձիթխըցի գերան. հաւք առաւ, հասուց Գեաճվարի Նիկեար քաղաք, մէկ յաղբրի վրայ յիջուց, մէկ լէ տեսայ քառսուն հատ աղջիկներ կժներ ուսերուն, տեսայ բոփալ աղջիկ մը էկաւ, ըսեցի.—«Աղջի, յընչի ջուր կը տանիք»։ Ըսեց.—«Տանինք, լցունք մեր խանըմի վըէն, գիշեր, ցերեկ կիլայ, «ես իրիցայ ու իրիցայ», կըռայ։ Ես լէ հանեցի իմ մատնէն մատնիք, թալեցի էդոր կժին մէջ։ Ջուր տարեր լցեր էր վըր աղջկան, մատնիք պատեր էր աղջկան գօք. տեսեր, ճանչցեր էր որ իմ մատնիքն ա, ըսեր էր.—Օ՛խա՛չ։ Մէկէլ աղջիկներուն դուս էրեր էր, բոփլուն ըսեր էր.—«Դու որ ջուր բերիր, ո՛ր կէր էն տեղ»։ Էն էլ ըսեր էր. «Մէկ հողածին մարդ»։ «Իէ՛, ասեր էր, առ էս ձեռք աղջկայ չոր, տա՛ր, հագու, առ արի իմ մօտ»։ Աղջիկն ըձի հագուց, առաւ, գնաց վիա։ Աղջիկ որ ընձի տեսաւ, ըսեց.—Դու էկեր իս որ

գիս տանիս, իմ պապէն յուդայ ա, պտի էրթաս, խնամաքար կայ, նստիս վըր խնամաքարին, թաժա ընձի յուզիս, նոր առնիս էրթաս։ Ելայ լուսուն գացի, նստայ էդ քարի վրէն։ Թագաւոր խանչեց, տարաւ ընձի, ըսեց.—Դու իմ աղջիկ կուզիս, արծիւ ունի՞ս որ իմ արծւու հետ կըռուըցուս. ըսեցի.—Ունիմ։ Արծւու թեպուրներ տուի կրակ. արծիւն էկաւ, հասաւ։ Իմ արծիւ հըմայ զարկեց, Թագաւորի արծւուն, ոտով, գլխով վերուց, տարաւ։ Թագաւորն ըսեց.—«Մէկն յընցաւ, մնաց էրկուս։ Լուսուն փեյլեվճի հետ գուլաշ կպիս. հըմայ փեյլեվճի քթէն պտի բռնիս որ պատռի»։ Լուսուն էլանք, ես ու փայլեվաճ, հասանք յիրար, ձեռ թալի, քիթ բռնեցի, զըրկի գետին։ Ցէլայ, էլման գացի աղջկայ մօտ. աղջիկն ըսեց.—Մնաց մէկ մարճ, իմ հօր մեյտըճի մէջ մէկ ծառ կայ, լուսուն թաս մի ջուր կը դնին վըր քու գլխուն. էն ծառի գլօխ յէլնիս, յիջնիս որ ջուր չթափի, որ թափիս, գլօխդ ի կը զարկայ։ Աղջիկ հանեց մատնիք մը, տուեց ընձի, ըսեց. —Մատնիք կը զարկիս մըջ ջրին, ջուր կէղնի պաղ (սառ)։ Ելայ ծառի գլօխ, իմ հօր քաղաք էրևաց, սիրտսի փլաւ, լացի։ Ծառի տակ թուղթ էն փռած, իմ արտըսունք կաթ մի կաթեց վըր թղթին. Թագաւորի մարդիկ բռռացին.—«Ցիջի՛, գլօխդի գնաց»։ Ծառից յիջայ, մատնիք հանեցի, էլման չենեցի ջուր։

—«Ջուր թափեր իս»՞, ըսին. ընդոնք ըսին «ջուր», ես ըսի, արտըսունք ա». էրեցինք դաւի, ճէֆիմ տեսաւ, ըսեց.—«Արտըսունք ա»։

Աղջիկն առայ, արծուի թէպուր զարկի ի կրակ, նստանք մէկ մէկ թևին, էկայ իմ աներոջ մեծ աղբօր մօտ. էն տեղէն մէկէլին, էն տեղէն էկայ, հասայ իմ հալիւորու մօտ. էն տեղէն էկայ իմ հօր քաղաք, նոր իմ հարսնիքը էրեցին. ես լէ նստայ թագաւոր։ Էդ մեղըն որ հանեցիր, տարար, էդ լէ իմ թագաւորութենի ամբարն էր. ես լէ էն միշապն իմ. դէ՛, տղա՛, տեսա՞ր, քո՛ւ դարձն ա չատ թէ իմը. «դէ՛, արի՝ էրթանք, քզի հորուց հանիմ։ Էն վազիրն որ քզի թագաւորութենից ղըկեց, էնի զօրեցեր ա. Վաթան ու Բաթան լէ էն մեղըն որ ծախած՝ էղած ա մեծ վաճառական. Թագաւոր ինչքան ճէֆիմ կայ, բերէ վըր ուրին, ընդոնք ըսած ա թէ ճաճմարի մսի փրփուր ա պէտք որ սաղցըւ. մկայ քաղքի չորս թարաֆ կարաուլ դրած, ինչ մարդ որ էրտայ, մտնի քաղաք՝ կը բռնին, կիչկեն, ճաճմար տեսնողի մէկ կող սև կէղնի. քա՛ց, տե՛ս, քու կող սև ա։ Տղէն բացեց, կող տեսաւ. հանեց դուս, ըսեց.—Տղա՛, քզի կը բռնին, կը տանին ճէֆիմներու նչանց կիտան. գինան որ դու ճաճմար իս տեսե, կը հարցուն քզնէ տեղ. դու կառնիս, գիդաս, կայնիս իդայ հօրու վրէն, կը խանչիս, ես դէլնիմ. հըմայ իմ գլօխ չը զըրկիս, ո՛րն որ իմ գլօխ վըրկայ. էնի կը ցլսի, ընդոնք կըսին. [մէկ անգէտի մէկ գիդայ, զարկայ իմ գլօխ. գլօխ որ զարկին, քառսուն լուծ եզ լծին,

ընձի կը քաշին, տանին Թագաւորի սարի դուռ, կը բըդեն, կը լնան խազնեներու մէջ, կէփէն ինչ որ էրղի, փրփուռ կիտայ. իրեք սաճան փրփուռ կը վերուն, կը դնին Թագաւորի գլխու տակ. դու դիր վիրև, էն օրթալըխի սահան, կըսին. դիր աջ կուշտ. դու դիր ձախ կուշտ, էն յետի սաճան լէ ձախ՝ դու դիր աջ կուշտ. առջի սաճան որ խմեց, կը ցրուեմ. հրմայ էն յետին որ խմեց, ինչ որ աշխար լեզու կայ, կը սորվի:

Տղէն կերթայ քաղաք, կը բռնին, տանին հէքիմի մօտ, կիշին կող սև. տղէն կը բերեն վըր հորուն շամմարի գլխու վերևու փըռփուռ հէքիմ կեփայ, կը խմայ, կէս կիտայ Թագաւորին, յէնի կը մնկի։

Տղէն էն տեղ հագաւ Թագաւորական չորեր, ձէն տուեց Թէ Թագաւոր սաղցաւ. ճամբեց, մէր լէ բերեց, Վաթան, Բաթան լէ ըդոնց գլօխ զարկեց։ Նոր կը կարգուի։



# 21

## ՊԱՌՈՒՈՒ ԽՈՐԱԳԷՏ ՏՂԷՆ



**(Ալաօկերտի բարբառով *)**

Կեղի-չեղի, մէկ պառաւ կեղի. էդ պառաւուն իսկի տղայ չեղի. որ մի օրերուց բօշէ գիկայ. պառուին կասայ։

—Գինամ, տղայ չունիս. աման մի յէրուսաղէմայ ցորեն լից ժառաման Թունդիր։

Պառաւն ա, վառելու գախ աման մի յէրուսաղեմայ ցոր են կըլնայ Թունդիր։

Ցորեն յըմեն կեղնին ճիժ, գէլնին պառւու չորս բոլոր կը վըժվըժան, մէկ բուճ կուզայ. մէկ չապիկ. մէկ քուճպաճ. մէկէլ արախճին, մէկ լէ foլոզ էն մէկէլ լէ հաց ու մաց, յըմեն մէկ բան կուզայ, պառուի գլօխ կը տանին խժըժալէն։

Պառաւ լէ էդոնց վրէն կը հերսոտի, կասայ։

—Չօռ, չօռ, յուչիկ ձէն հանէք։

Մէկ լէ էդ խօսքի վրէն պառաւ կը դառնայ, կաչքայ, ոնչ ճիժ կայ, ոնչ բան։

Պառաւ զուր «չօռ» ըսել կը փօսմճի, հիմա՝ Նա Ֆայդա (ինչ օգուտ), էլ ձեռնէն գնաց. նստաւ գիլէր։

Դու մըսի, էդ տղէկներուց մէկ փախէ, մդէ թունդըրայ, յակ, պառաւ օ կիլեր. տղէն յակից ձէն տուեց։

—Նանէ, միլա, ես յուտայ իմ։

Պառաւ ուրխցաւ, վազեց, տղէն թունդրից հանեց, յերսներ պագեց։

Էդ տղէն մեծըցաւ։

Մէկ օր էդոց դըրկեցներու աղջկներ կերտան Սիպնայ սար բանջըրի, էդ տղէն լէ գիկայ ուր ջօջօ մօտից. քեանիմ խաց կառի. գունդ մէլ կարագ կը փաթայ մէջ, կերտայ խասի էդ աղջկներուն, կերտան բանջըրի։

Կերտան Սիպնայ պաղ աղբըրներուն մէկի վրէն կընստին, հաց կուտին, էդ տղէն կը հանայ զուր հաց ու կարագ կը դնայ աղջկներու յառէջ, յիրար հետ կուտին. գէլնին բանջար կը քաղին։

Ցիրկուան օր կը դառնան դէմի տուն, էդ տղէն կասայ. —Աղջկներ, եա ղիս զօրէ զդօր կը ճալկէք. եա ձեր փորեր կը պատռիմ, զիմ կարագ կը հանիմ։

Աղջկներ վախէցան էդ տղի մօտից. զօրէ-զդօր ճալկին, եկան։

Կէս գիշեր էղաւ, չկըցան հասէին գեղ, գացին էդ տեղ մօտիկ ծակ մի կէր, մտան էդ տեղ։

Լուսու դէմ տեսան օր դև մի են դեխէն էլաւ, դէմ ուրինց եկաւ, քօմեց (հաւաքեց), առաւ յըմեն յիրար հետ, տարաւ ուր տուն։

Տարաւ, եօթ, ութ, օր պախեց, օր աղէկ ղլաւնան. ուտայ։

Մէկ օր էտ պառւու տղէն ասաց։

—Ա՛խ-ա՛խ օր իմ ջօջօն դաս եղեր, մկայ կառէր ալըմաղ, կերթէր Սիպնայ գլխից ջուր կը բերէր, կը մաղէր վըր մեզի օ չուտ խլաւնէնք (գիրանայինք)։

Դև աւդըցաւ, էլաւ, առաւ զալըմաղ, գնաց Սիպնայ գլօխ օր

Ջուր բերայ. էդ տղէն առաւ աղջկներ, փախաւ բերեց ուրանց գեղ. ինք էլմ ղարձաւ, գնաց դևի մօտ։

Գնաց յէլաւ դևի յերդիս. ինկաց դև նստէ, հաց կը թխայ. յերդիսէն հող կը թափայ դևի գլխու վրէն։

Դև գիտցաւ մուկն ա յերդսից հող կը թափայ։ ասաց.—Է՛, մկան լակոտ, էդ վե՛ր վըրէն ա հող կը թափիս։

Ասաց ու յէլաւ վազեց յերդիս։

Տեսաւ էն տղէն ա. լարեց, լարեց, բռնեց. բերեց մտուց Եղ-ճուն ջվլի մէջ, բերան կարեց. գնաց դաէն մեծ մերքուտ (սանդի ծեծ) բերայ, էդ տղէն ջվլի մէջ ծեծայ։

Հարի էգ դև գնաց, տղէն կանեց ուր ջէբից դանակ, ջվալ ճղեց. դուս էլաւ, գնաց դևի բալաք հորթիկ բերեց, դուր տեղ մտուց ջվալ։

Դև էկաւ, քանիմ հատ մերքուտ ղարկեց ջվլին, խորթ բոռաց, դև կասայ.—Մանրի, օր ուտեմ քզի։

Դև կը բանայ ջվլի բերան օ ուր բալաք հորթն ա, կնկծու կը պատռի։

Էդ տղէն գէլլի դևի խազիԵէն ու դաւիԵէն զմեն կառի, գիկայ պաւուու տուն։



# 22

# ՃՕՐՈՐԴԻՆ Ո՛ՐՆ Է

(Ալաշկերտի բարբառով *)

Եղնի-չեղնի, մէկ թուճար կեղնի, էդ զընկին թուճարին մէկ տղէմ կըղնի, թուճար կը մեռնի, քենիմ տարի յետև կնիկ էլ կը մեռնի. թուճարի տղէն կը նստի ուր պապու դուքան՝ ուր առուտուր կէնայ։

Օրմ' լէ էդ զանգին թուճարի յընկերտանք իրարու մէջ բաս կէնին.— Ամօտ չէ՛ մըզի օր մըր յընկեր մեռաւ, ուր տղէն չը կարգեց, խըլխ մըզի կը մեխտրին. արէք, էրտանք, տղին ըսինք, վիր աղջիկ կուզայ, էն աղջիկ յուզինք։ Իդմլայ ըսելով էկան տղի մօտ, ըսին.— Տղա՛, կը կարգուի՞ս, վի՛ր աղջիկը կուզի՞ս, էրտանք՝ քըզի ապով յուզինք։

Տղէն ըսեց.— Չը կարգուիմ։ Թուճրններ զօր էրին տղի վըրէն։

Տղէն ա, ըսեց.— Ընձի յէմալ աղջիկ մը պտի յուզիք օր տարին մէկ հաղ էրտամ ընդըրայ մօտ։

Ըսին.— Յէմալ աղջիկ յուսա գտնինք։

Ըսեց.— Ես չը կարգուիմ, որ կարգուայ, յէմալ աղջիկ կուզիմ։

Տեսան տղէն կարգուելու միտք չունի.— Քէլէք, էրտանք, ըսին։

Էմլէ ըսին, ըղըա պապ մըր յընկերն ա, էրտանք, ժուր գանք։ կեղնի օր գտնինք։ Ընկան ճամբայ, գացին. հասան մէկ գեղ։

Գեղացիք հարցուցին, ինչի իք էկեր։

Ըսին.— Էկեր ինք աղջիկ յուզինք մըր տղին։ Ըսին.— Բարի իք էկեր։

Ըսին.— Մըզի մէկ խօսք կայ, խայիլ կեղնիք, կը տանինք. մեր տղէն տարին մէկ հաղ պտի էրտայ աղջկայ մօտ։

Գացին աղջկան ըսին, աղջիկ ըսեց.— Ես հըմալ իրիկ ինչ էնիմ օր։

Թուճարներ յէլան, գացին ուրիշ տեղեր, գեղ մի մտան, մեծ տուն մի տեսան, տեսան օր ինչ տեսնին. ամէկ մարդ գիրք մի առի ուր ձեռ ու կը կարդայ, աղջիկ մէլ առեր ա ահագին Աստուածա-

* Պատմած է Փիւզանդ Թորոսեան. այժմ ուսանող Գ. ճեմարանում:

չունչ մի՛ ձեռ, նասի փանճարէն. չուչուտ կը կարդայ։ Թուճարները ըսին.—Հրկըր յուզինք իդայ աղջկան էգա, հրկըր չուզինք էլ չկայ։

Գացին, աղջկան ըսին. աղջիկ ըսեց.—Ըլէ էդ յըմալ բան կուզէնք, Աստուծուց որ իմ էրիկ տարին հաղ մի մօտս իգայ։

Թուճարներ նշան դրեցին, զէդ աղջիկ բերեցին, տղէն կարգեցին. տղէն խալայեխ մի բռնեց, դրեց էդ աղջկայ կուշտ, ինչ էղած, չէղածը տուեց ուրան, ուր կնկան ճակեար բան մը կը պակսէր, ճառին կօղորկէր, բերել կիտար։ Տղէն առուտուր կէներ։

Էրկու տարի ընցաւ, էդոր էրկու տղայ էղաւ, մէկ օր մէկ եաճուտի ըդոց բանը իմցաւ, ու օրմ' իրիկուան դէմ գնաց տղի տուքանն, ըսեց.—Քու չորեր տուր, յըս օր յիրկուն կէրտամ հարսնիք, վաղը սապաղտան կը բերիմ, կիտամ։

—Կայնի, ըսեց եաճուտուն, էրտամ ուրիշ չոր բերիմ, հագի, գնա։

Եաճուտին լաւեց.—Քու չորերդ տուր, ես էրտամ։

Որ չատ լաւեց. հանեց, տուեց։ Էդի հագաւ, չէտակ գնաց էդ թուճարի տղի դուռ զարկեց. ջառէն էկաւ, հարցուց.—Էդի որն ա։

Ըսեց.—Ես իմ, դուռ բաց։

Ջառէն գնաց, խաթունին ըսեց.—Աղէն ա, դուռ կը զարկայ։

—Է՛, ըսեց. յուր ա, դեռ աղի վաղտէն չըմեր ա, հըլա ամիս մը լէ կայ, է՛, գնա, բաց, կեղնի որ գործի ապով էկի։

—Ջառէն գնաց, դուռ բացեց, աղէն էկաւ, փչումի զրուցեց, ըսեց.—Ընձի ըս օր ֆէթ չկայ. իմ տեղ թալէք, ես կը պառկիմ։

Տեղը թալեցին, պառկաւ. առաւօտուն էլաւ, լուսմթի գնաց։

Ջառին ըսեց.—Խանըմ, յընչի աղէն հըմալ մռութ կախ էր։

Ըսեց.—Չը գինամ։

Եաճուտին սապաղտան չուտ գնաց տուքան, չորեր հանեց, չնորհակալ էղաւ։

Էդ տղի ուր տուն գնալու վաղտը էկաւ, գնաց, դուռ զարկեց. ջառին էկաւ, հարցուց. գնաց ուր խաթունին ըսեց.—Աղէն էկաւ։

Խաթուն ճեռստաւ, թէ էդ մարդ էն յառջի օր էկաւ, խօ յըմն օր չգա՛յ. գնա, բաց. յընչի որ, ուրիշ բանի ապով էկած կեղնի։

Ջառին գնաց, դուռ բացեց. աղէն էկաւ տուն, էմիշ բերեր էր, տուեց, խաթուն ըսեց.—Դու յորէնէրկու հաղ գիգաս, յըմնօր պտի գաս։

—Ի՛նչ յըմնօր, ըսեց թուճարը։—Ըպա էս չաբաթ մը չկայ որ էկար։

—Կնի՛կ, ըսեց. չըմ գինայ, դու ծռեր իս, ահա՛, տարին թմաւ, նոր ես էկայ։

—Ըպա, էն օրն էր էկաւ քու չորերով. քու պէսն էր։

—Վա՛խ, էդ ինչ բան էր էղաւ, ըսեց տղէն. Կնի՛կ, ըսեց, ես կը մեռնիմ, որ ընձի իրեք տղայ էղաւ. մէկ պտի դեդեմաճռում հանես տնէն։

Տղէն կսկըծու մեռաւ. կնիկ չը գինէր թէ յորմ յըմլայ ըսեց.
Վախտ մը յընցաւ. կնիկ պարկաւ, տղէմ լէ բերեց։
Էդի էդ տղէկներ ջոջըցուց. էլաւ գնաց մէկէլ թուճարի մօտ, ըսեց.

—Էն վախտն օր քու աղբէր մեռաւ, ընձի թըրիֆ էնեց. «ընձի իրեք տղայ էզաւ, մէկը պէտք ա տնէն դեդեմահրում յըլնի»։

Թուճարը իրեք տղէկներ լէ բերեց ուր մօտ ու ըսեց,—Ես օ՛ր մէկ մահրում հանիմ. յըմեն լէ ուր հօր ու մօր կը մնին. ես չըմ կրնայ, վաղ իրեք լէ կը ճանբիմ Թագաւորի մօտ. Թագաւոր մէկ դեդեմահրում հանայ, էն մէկէլ էրկուս գան ուրանց տունն։

Էդ թուճար ճամբու դրեց.—Դուք գացէք, ըսեց. ես գիգամ.

Իրեք աղբէրներ յիրարու հետ խաղալով ճամբէն կերթային. մէկ լէ տեսնես, պզտիկ աղբէր ըսեց,—Աղբրտիք, կը տեսնէք, իդայ ճամբով մէկ դեվամ էկեր ա, թոփալ էղե. մէկ աչքն էլ քոռ էղե, յակռէն լէ կոտռուկ ա էղե, դեվի բեռ լէ էրկու թայ, մէկ եղ ա էլե, մէկ թայը մեղր։

Աղբրտիք էդ աղբօր խօսքերուն վրէն ծիծղալով կերթային, մէկ լէ կը տեսնին օր անամ մի վազնելով գիգայ. էդ տղէկներուց կը հարցու.

—Տղէկնե՛ր, էդ ճամբով դեվայ յընցա՞ւ, տեսա՞նք, իմալ էր։

Պզտիկ տղէն ա, ըսեց.—Ցօրի՛ն, ես չըմ գինայ, թոփալ էր, մէկ աչք քոռ էր. մէկ ակռէն լէ կոտրուկ էր, վրէն էրկու թայ կար մէկ թայը մեղր էր. մէկ թայը եղ։

—Է՛, ապրիս դու, տղա՛, յուր ա, յուր գնաց։—Ես ի՛նչ գինամ,

—Իմալ թէ «ես ինչ գինամ». դու էղած չէղածը կը պատմիս։ կըսիս «չըմ գինայ»։ Մէկ զոմբ տղի պառեկին կը զարկայ։

Իրեք աղբէրներ ճեռստելով կընկնին անմու վրէն, կուշտ մի կը ծեծեն, անամ կըսայ.—Քելէք, էրտանք գանգատ. թէ չէ՛, ձգնէ կառնիմ իմ դեվէն ու ապրանքներ։ Ցէլան գացին Թագաւորի մօտ, Անամ Թագաւորին ըսեց.—Թագաւոր ապրած, իդայ տղէն իմ դեվի տեղ գինայ, ինչ էղած չէղածը գինայ, ընձի ըսեց. ես էլ հարցուցի «յո՞ւր ա,» ըսեց «ես չըմ գինայ.» ես էլ ճեռստայ, զոմբ մը զարկի, իրեք աղբէր լէ մէկ էղան, թափան իմ վրէն, ընծի ծեծեցին. կը խնդրիմ քըզնէ, իմ դեվէն առնիս իդընէ։

Թագաւորը խանչեց պզտիկ տղին.—Դու խեղճի դեվէն յընչի՞ պահեր իս, չիտաս։—Թագաւոր ապրած, ըսեց. ես խապար չունիմ։

—Իմալ խապար չունիս օ էղած՝ չէղած կը պատմիս։

—Թագաւոր ապրած, մենք ճամբով գիգէնք, ճամբու վրէն տեսայ մէկ դեվայի դաւս, դեվայի օլոր-մոլոր քէլելուց հանեցի օր թոփալ ա, աչք քոռ ա ընդով հանեցի օր յոտներ ճրպ ու ռաստ էր թալե,

ակռի կոտրուկ էղնել հանեցի կանչընեռուց, ո՛ր տեղն որ բերան զարկեր էր, մէկ ակռի տեղ կանանչ յէրկէն մնացեր էր։

—Ըպա ինչ գինէր դու ըդըրայ բեռը մէկ քայը եղ էր, մէկը մեղր։

—Թագաւոր ապրած, ճամբու մէկ քարաւը մժիկ էն լցուած, հանեցի որ էն քարաւի քայ եղ էր, մէկէլ քարաւը ճանճէն քօմած, ընդընէ լէ հանեցի էն քարաւի քայը մեղր էր։

—Անամ, դու կըռէիր տղէն ա գողցե. տեսամք, ինչ կըսայ։

Անամ հեռեցաւ, գնաց. մէկէլ օր Թագաւորի տօնի օրն ա, ինչ որ աղքատ, զընկին մարդ կէր, լցուան Թագաւորի դիւանն, որ ՔէյՖ էնին. էդ իրեք աղբրտիք լէ գնացին, էն տեղ նստան. երօր գինի խմեցին, պզտիկ տղէն ըսեց.—Աղբրտիք, իդայ գինուց արնի հոտ գիգայ։ Երօր հիմակ լէ բերին, ըսեց.—Իդայ մսից չան հոտ գիգայ։ Երօր կերան լմնցաւ, ըսեց էլման.—Աղբրտիք, գինամք, ըդայ Թագաւոր բին ա։

Դու մի՛ ըսի, Թագաւոր ըդոնց էտև նստեր ա, ըդոնց ըսած յականջ կենայ։ Երօր ամէկ մարդ ուր բանին գնաց, Թագաւոր էդ իրեք աղբրներ խանչեց, ըսեց պզտիկ տղին.—Դու ինչ գինաս Թագաւորի գինու մէջ արուն կայ։—Օղորթ ա, արուն կայ, ըսեց. գնա՛, քու գինի ջքողի վրէն դիր, զօռա, տես ինչ կըսայ։

Թագաւորը գինի չիքողին բերեց, ըսեց.—Արի՛, օղորթն ըսա՛. իդայ գինու մէջ արուն լցեր իս։

Գինի ջքողն ըսեց.—Թագաւոր սաղ կենայ. երօր խաղող քաղեցի, օսքերս հանեցի. յընկայ մէջ օր կոխըճէնք, դու մըսի, իմ գանակ իմ գօտուցէն պատի տաշտի մէջ. զիմ ոտք կտռեր ա. չըրի յիմցայ, կէր մէկ թաս արուն խառնուաւ խաղողի հետ։

—Է՛, պզտիկ տղա՛, դու ինչ գինաս Թագաւորի կերած մըսի մէջ չան միս էղնի։

Տղէն ըսեց.—Գնա՛, քու խաապուց հարցու, որ իմ ըամծը չէ-լաւ, իմ գլուխը զարկ։

Թագաւորը ուր խաապուն խանչեց, ըսեց.—Օղորթն ըսա՛։

Խաապն օղորթը չըսայ, կանչին որ յերդուի, կըսայ.—Ես մէկ կով ունէնք. էն կով ծնաւ, հորթիկ մի բերեց, չարաթ մի քչեց, ջքըշեց, կով փիցաւ. մըը տուն մէկ դէլ մի կար օր նոր էր ցուած, ամեն օր հորթիկ կը տանէնք, դիլուն հաց ու լակ կուտայի, որ թողէր, որ հորթիկ ծծէր. էդ յըմալ հորթիկ մեծցուցի, էնեցի էրինջ, էդ միան էր։

—Է՛, տղա՛, դու ինչ գինաս Թագաւոր բին ա։

—Թագաւոր ապրած, գնա զօռ դիր քու մամու վրէն։

Թագաւոր կը խանչայ զուր մէր, կըսայ.—Օղորթն ըսա՛. ես բին իմ թէ չէ, օր չըսես, գքու գլուխ կը զարկիմ։

Կըսայ.—Լաւծ, ինչ պահիմ, Ցլաճ տարին քու պապ գնաց կուխ. էրկու տարի չէկաւ. ես Ցլաճ վազրի հետ տուի, առի։

Թագաւորը տեսաւ պզտի տղի ըսածները օղորթ ին, ըսեց.— Դու ինչ գործով իք էկեր իք իդայ տեղ։

Ըսեց.—Էկեր ինք իդայ տեղ մզնէ մէկը դեղեմաճրում հանես,

Թագաւոր ըսեց.—Ես որ մէկդ հանեմ, իրեքդ լէ մէկ տեսակ իք. ըսոր հանիմ չէղնի. ընոր հանեմ չէղնի. դուշուրմիշ եղաւ

Թագաւորի աղջիկ տեսաւ պապու Ճիար կախ, հարցուց.—Ցընչի քու Ճիար կախեր իս։ Ըսեց.—Ես չկախեմ, որ կախայ. ես մէկ Թագաւոր, չը կռնամ իդայ տղէկներուց մէկ դեղեմաճրում հանեմ։

—Է՛, էդ լէ բան չա, տես, իմալ հանեմ, ըսեց աղջիկ։

Աղջիկ տղէկներուն կը տանայ մէկ յօդայ. կըսայ.—Դէ, նստէք, տղէկներ, մէկ հէքիաթ ըսիմ,—«Ժամանակով մէկ տղայ կը ծռի վազիրի աղջկայ վրէն, ինչ կէնայ, չէնայ. ուրին չի տան, ուրիշ մարդու մի կիտան, օր մի աղջիկ կելնի. կերտայ ուրանց պաղչէն պըըտելու. տղէն կը տեսնի օր հանդա՛, աղջիկ գնաց պաղչէն, կերտայ պաճճից ուրին, կը Թալայ ներս, կերտայ աղջկայ մօտ, աղջիկը որ կը տեսնի տղին, կըսայ.—Մկայ գնա՛, եբօր ընձի տարան մարդու, էն յառջի գիշեր գամ քու մօտ։—Շատ աղէկ կըսայ ու կը հեռենայ։

Աղջկայ կարգուելու վախտը գիգայ, կը տանին ուր Ճշաճլուվի տուն. աղջիկ իր Ճշաճլուին կըսայ.—Ես ըսօր գիշեր կերտամ Ցլաճ մարդու մօտ, ընդըրան խօսք տուեր իմ։

—Դէ՛, գնա՛, վաղ սապախտաճ չուտ արի՛, մարդ չի տեսնայ։

Աղջիկը կերտայ. էդ տղի դուռ կը զարկայ, տղէն կելնայ, դուռ կը բանայ. կը տեսնայ օր վազիրի աղջիկն ա, կըսայ.—Դու օր էկար քու խօսքի հետ, քու իրիկ լէ օր Թօղկեց, գնա՛, չուր ի դատաստան իմ քուրն իս։

—Է՛, կըսայ Թագաւորի աղջիկ իրեք աղբօր, հասկըցա՞ք։

—Հա՛. կըսին։

Մեծ աղբօր կըսայ.—Դու էն տղի տեղ էղնէր, ինչ պտի էնեը։

—Քէնիմ ճըլղաթ տէնք, պտի տանէնք ուր նշանլուի մօտ, պտի ըսենք՝ «իմ մէրս ա, իմ քուրս ա»։

Օրթաճճի աղբօր ըսեց.—Դու էն տղի տեղ էղնիր, ինչ պտի էնեը։

—Պտի տանենք ուր իրկայ մօտ. ճալալուտեն չուզէնք։

—Է՛, պզտիկ աղբէր, դուն տղի տեղ էղնէր, ինչ պտի էներ, կը Թօղկէր յառջի գիշեր քու կնիկ էրԹէր յուրիշի մօտ։

—Ընդըրա հօր գանք կանիծէնք, կը Թօղկէնք, էրԹէր ուրիշի մօտ։

—Է՛, տղա՛, դու դեղեմաճրում պտի չէլնիս, ընդոնք կերտան ուրանց հօր տուն. դու հօրորդի չիս։

# 23

## ՏՈՒՆ ՇԻՆՈՂ. ՏՈՒՆ ԱՒԵՐՈՂ ԿՆԻԿՆ Ա

### «Իրիկ դըրսի պաս ա, կնիկ ներսի պաս»

(Ալաշկերտի բարբառով)

Վախտի մէկին Մշեցիմ' կերտայ Թագաւորիմ քաղաք. էդ Թագաւորին կեղնի իրեք տարով մշակ. իրեք տարին որ կը թմի, Թագաւոր կը բերայ էդ մշկուն շատ ոսկի ու ապրանք կի-տայ կը ճամբայ էրկիր,

Ժուկ ու ժամանակ մի կը մնայ էդ Մշեցին, ուրին տարած ոս-կիք կը փճցու, էմլէ կերտայ դուրբաք էն Թագաւորի քաղաք։

Մէկ օր Թագաւոր ուր աղջըկէ հետ էլած էր էդ քաղքի մէջ կը գվռնէր։ Աղջիկ տեսաւ ուր մշկուն, ճանչցաւ, ասաց ուր պա-պուն։—Էդ մեր մշակն ա, էլմէ էկեր ա։

Թագաւոր կը խանչայ, կը հարցու։—Տղա՛, յորէն իս էկի, ես քզի ոսկի շատ տուի, որ դու մէկ լէ ղարիպութէն չկէր։

—Թագաւոր ապրած' կասայ. քու տուած ոսկիք յմեն փճըցուցի։

Թագաւորի աղջիկ կըսայ։—Մեղաւոր էդի չէ, էդոր կնիկն ա։

Թագաւոր էդ խօսքի վրէն կը հեռսոտիջվըր ուր աղջիկէն.—Ի՞նչ գինաս մեղաւոր էդոր կնիկն ա, կասայ։

—Էդոր կնիկ աղէկ կնիկ էղնէր, ինքը թէ փճըցուցող էղնէր, կնիկ ժողուող պտի էղնէր։

Էդ խօսքի վրէն Թագաւոր նեղեցաւ, խանչեց ղուր մշկներ, ուր աղջիկ տուեց էնղոնց ձեռ, ասաց։—Տարէ՛ք, եօթ էրկիր գվըռ-ցուցէք, հարցուցէ՛ք,—հարցուցէ՛ք, մէկ ֆօրի մարդում' տուէք, հալա տեսնիմ, իմ աղջիկ ուր մարդուն իմալ կը կառավորայ։

Մշկներ կառնին, կերտան, եօթ էրկիր ժուռ գիկան, մէկ գօքի տղէ մի կը գտնին, կիտան էդ տղին:

Աղջիկ կաչքայ, էդ տղէն յէմալ գօքի ա օր ուր ականջով փօշի չամի։ Մէկ օր Թագաւորի աղջիկ մէկ էչ կառնի, էդ տղէն կը ճամբայ մօրին փէտ բերելու։ Կերտայ, բառնայ ու գիկայ, կէս ճամբուն կաչքայ մէկ խազած-կապած մարդ, գէլի էդօր յառէջ։

Տղա՛, կասայ. առանց փարի զէդ փէտ տուր ընձի:

—Հան, աղա, Թըխ էղնի քզի, առնի քո դատէն:

Կիտայ ու գիկայ տուն, Թագաւորի աղջիկէ կըսայ.—Գացի, փէտ բերի, կէս ճամբուն մէկ էլաւ յառէջս, առանց փարի տուեցի, գնաց։

—Շատ աղէկ էրիր, ասաց աղջիկ. հըմա դու ժիր էղիր, դատի, Թըխ խըլխ քու դատում ուտին։

Շուտ էլ մէ Թագաւորի աղջիկ էչ սաղեց, ճամբեց փէտի. էդ գօքի մարդ էլ մի ըռաստ էկաւ, ասաց.—Փէտ տո՛ւր ընձի, քզի էր կու խըատ կիտամ։

—Ըսա՛ խրատդ, ասաց տղէն. տուեցի՛ փէտեր, գնաց:

—Մարդու մէկի յառէջ կերտաս, մէկ ճերմակ մանիրիյեյի մշակ կեղնիս, քո յօժար կամքով, մէկ գիկայ, խակառակին քզի տասնապատիկ կիտայ, չէղնի՛ էրթաս, էն քո առաջուայ հախին մնաս: Մէկ էլ ֆերվենի կեղնիս. գիշեր դաշտ կը մնաս, չեղնի ձորու մէջ պառկիսեան քո ֆարվան Թափիս. էլի դարի դլօխ. եա դուրան տեղ մի, նոր քու ֆարվան Թափիայ:

Տղէն էլմէ դարտակ էկաւ տուն. աղջիկէն ըսեց.—Ցէսօր լէ էն մարդ էկաւ յառէջ, էրկու խրատ տուեց. փէտեր տուեցի էնդօր։

Աղջիկ ըսեց.—Էնի մարդ չէ, հրշտակ ա, էնդօր խրատ աղէկ քու մտքի մէջ պայյա։

Վախտ շատ չընցաւ, էն տղէն գնաց էղաւ մէկ բազրկեան բատու մշակ։ Օր մի օրերուց յիրօր էդ բազրկան զուր դանկեր կապեց քաղքից մէկէլ քաղաք տանելու. օր մի չումի յիրկուն գացին-գացին, չկրցան ձորու միջից դուս գին, դուրան տեղ մի էդ ձորու մէջ բազրկանի մշկներ զուրանց բեռներ Թափեցին. էդ տղէն զուր փայ ջօրիկ բառցած էլաւ դարի դլօխ, նոր Թափեց։

Կէս գիշեր չէր ընձի, իմալ մէկ անձրև էկաւ, օր էդ ձորը բերնէ բերան կը լըլըմէր, կերտէր։

Ձորու մէջ ուրանց բեռներ Թափող մշկներ աննախ փախան, պըծան, մնացած դանկեր ու ջօրիք սելաւ տարաւ, խեղդեց։

Բազրկան բաշին էկաւ, տեսաւ օր մշկներու բեռներ յմէն սելաւ տարեր էր, զարկեց չոքերուն ու լաց. դարձաւ ըսեց մշըկներուն։—Ապա բամբալ դօ՛ր ա։

—Թամբալ ուր խաթար ջորիք առաւ, էլաւ դարի գլօխ։

Ելան գացին դարի գլօխ, տեսան օր յինք լէ սլամաթ ա, ուր ջորիք ու բեռներ լէ։

Բազրկաճ բաշիճ չատ ուրախացաւ, գովաց ուր մշկներու յառէջ թամբլի խելացուտեն։

Էդ տեղ մէկ ջրխոր կէր. ջորիք լէ ծարաւ ին, էդ ջրխորին լէ մէկ սովորուտեն կէր, որն օր մտէր մէջ, դուս չէր իկէր։

Արէք, ըսեց բազրկաճ բաշիճ, մէկմ ձեր մօտէն մտէք ջրխոր, ջուր քաշէք, ջորիներ ջրինք։

Մշկներ յըմեն վախցան, թամբալ էկաւ յառէջ, մտաւ իներ. ջուր տուեց, պրծաւ. իշկեց դուռ մի բացուաւ, զուրին քաշին տարին յօցիմ մէջ, յօցի մէջ նստեր լէր ճերմակ մուրուս խալիւորմ, օսկէ սինիմ յառէջ դրեր էր, օսկի մուկ մի, օսկի կատու մի մէջ կը խաղէն. մէկ տղայ, մէկ աղջիկ հեռուն կայնած կաչքին։

Էդ տղէն օ ներս մտաւ, օսկի մուկը խաղաց ու խալըցուց։

—Այ տղա՛, աշխարհ ինչ ա քաղցր։

—Ինչ օ մարդու սրտին դուր գիկայ, էն ա քաղցր։

—Դու չկրցար գտներ էր. գտի, ասաց մուկը։

—Սէրը քընց զմեն քաղցր ա, ասաց տղէն։

Էդ խօսքի վրէն մուկ դարձաւ մէկ հուրնիկ հրեղէն աղջիկ կայնաւ էդ տղի յառէջ, ըսեց.—Յուզէ, տամ, խողածին. չատեր իդա գետնի տակ մենք հողին հաւասար էրինք. մարդ չկարցաւ զիմ պատասխան տէր, դու տուեցիր։

Աղջիկ հանեց իրեք հատ մէկ մէկ օլաճոց նոռ, տուեց տղին, մէկի մէջ ալմաս էր, մէկի մէջ եաղութ, մէկի մէջ զմրութ։

Էդ աղջիկ էլմէ ասաց.—Տղա՛, յուզէ, տամ։

Էն տղէն ու աղջիկ օր կաչկէին, յառէջ էկան, տղի ձեռք պագին ու ըսին.—Խնդրէ՛, զմզի յուզայ։

—Ի՛նչ կիտաք, ըսեց տղէն, օր զձզի յուզիմ։

—Առ մեր մատնիք որ թանկագին ա, մզի իդա սեղից ազատայ։

Տղէն մատնիք առաւ, դարձաւ աղջիկէ.—Իմ խնդիր քենէ իդա խըտր ա օ, իդա տղէն ու աղջիկ ընձի բաշխիս։

Խրեղէն աղջիկ բաշխեց զէդ տղէն ու աղջիկ, տղէն առաւ զուր ներ ու էդ տղէն ու աղջիկ, ջրհորից դուս յէլան։

Բազրկաճ անճապ մնաց օր թամբալ տղէն սաղ-սալամաթ դուս պրծաւ, մէկ աղջիկ ու տղէմ էլ դուս բերեց։

Տուեց էն իրեք նուռն բազրկաճ բաշուճ, ճամբեց տուն. ինք առաւ բազրկաճ բաշու ապրանք. գնաց յուրիշ թագաւորի երկիր։

Ցիրօր մտան քաղաք, տեսան թալալ կը բոռայ։—Որն օր թա-

գաւորի տղէն ու աղջիկ գտնի, Թագաւոր ուր Թագաւորութենի իրեք փայ էգոր կիտայ։

Էն տղէն ու աղջիկ չաշմած կաչքէին, ինչ ա, թամբալ չուտ մի հասկըցաւ. գնաց, ըսեց թալալին։ Թալալ բռնեց էդ տղի ձեռ ու Թագաւորի յառէջ տարաւ, ըսեց.—Քո տղէն ու աղջիկ գտող էս մարդն ա։

Թագաւոր չատ ուրախացաւ, Թագաւորութենի չորս փայ լէ տուեց, էդ տղէն էլ գնաց Թագաւորի աղջիկն ու տղէն բերեց, տուեց Թագաւորին։

Տղէն ուր աղի դանկեր Թանգ-Թանգ գնով ծախեց, զուր բեռ էլմեն բռնեց, գնաց դէմի ուր էրկիր, տարաւ դանկեր թալիմ էրեց ուր աղին, չնորհակալութեն առաւ, գնաց ուր տուն։

Թագաւորի աղջիկ օր տղին տեսաւ, վազեց, գնաց յառէջ. փաթթուան յիրար վզով, էկան տուն։

Տղէն դարձաւ, ուր կնկայ մօտէն հարցուց։

—Էն Նուեր օր բազրկան բաշու հետ ճամբի, առար, կերար։

—Ի՞նչ ուտեմ, մարդ, ըսեց. էնգոնք յըմեն Թանկագին քար էն։

—Է, օր հըմալ ա, կնիկ, մենք քո հօրէն չատ հարուստ էղանք. Թագաւորի մալ չորս փայ էրի, բերի։

Օսկու սնտկներ քաչեց ներս։

Մնաց ժուկ ժամանակ մի, աղջիկայ խսա լսեց. էլաւ էկաւ ուր աղջիկայ տեսութեն։

Էկաւ տեսաւ.—Ինչ տեսնի.—Ուր աղջիկայ քօշք ու սարէն քընց ուր խօրօտ ա չինած, գնաց խօնախ էղաւ։

Քառասուն օր կերան, խմին, ուրախութեն էրին. քառսուն օր օր թմաւ, աղջիկ էկաւ պապու յառէջ, ըսեց.—Իմա՞լ ա, իմ պապ, իմ խօսքն ա Թէ քում.

—Քու խօսքն ա, լաւօ, սասաց պապ, օղորդ օր տուն չինող կնիկն ա. «իրիկ դըսի պատ ա, կնիկ ներսի պատ»։

Թագաւոր էլաւ գնաց ուր տուն. փեսին լէ բերեց, էրեց սատ-րիազամ, քանիմ տարի եաք յինք մեռաւ, տղա չունէր, ինքն էր էն մէկ աղջիկ, փեսէն էղաւ Թագաւոր։

Էն հասաւ ուր մուրազին, դուք լէ հասիք ձեր մուրազին։



# 24

# ԸՌԷՍ ՉԿՌՆԱՑ ԾՌՌԻ ՄԱԼ ՈՒՏԱՑ

(Ալաշկերտի բարբառով *)

Կեղնի-չեղնի մէկ ծուռ, մէկ խելացի աղբէր ու էդոնց լէ մէկ պառաւ մամ կեղնի. մէկ օր պառաւ դէլնի կով կիտայ էն ծուռ տղին, որ տանի արծըցու. էդ ծուռ տղէն ա, կը տանի զկով մէկ խորունկ ձորու մի մէջ, կաչքայ որ կեղի հազար հատ սև գիլ հաւքեր յիջած ին էդա տեղ. կը բերայ, զկովու յոտներ լաւ կը կապայ, կը մորթայ ու էդ հաւքերուն կասայ.—Սև-սև տէրտրներ. արէք, կերէք, գացէք իմ ջօջոյի հոգուն մէկ պատարագ էրէք։

Տղէն կաչքայ որ ու ր՛ վերև, մէկ քարիմ վրէն մէկ հատ մողոզիկ ա կայներ, էդ մողոզիկին կասայ.—Հօրքուր, դու լէ ճաս կեցի, եւ·կով մորթեցի, տուեցի տէրտրներուն, համ պատարագ էնին, համ զիմ կովու զին տան։ Խամլա կըսայ, կը թողայ, կիգայ գեղ։

Պառաւ կը հարցու.—Տղա՛, յո՞ւր ա կով։

—Զկով մորթեցի, տուեցի տէրտրներուն, որ քու հոգուն պատարագ էնին։

Պառաւն ա, կը կատղի, կառնի փէտ, կընկնի յետևից, կասայ.—Գրող զանայ քո կշտին, սատանի փայ ու բաժին էղնիս. դէ՛ գնա՛, զկով բե։

Էդ ծուռ կերտայ, կաչքայ որ հաւքիր կովու ջանդակ կերած պրծած ին. զուրին որ տեսան, թռան։

Ծուռը բռռաց.—Է՜յ լտէրտրներ, յո՞ւր կերտաք. կովու գին տուէք, ջոջոն զընձի ծեծեց, պատարագ դալու չիրէց։

Է՛, հաւքեր իսկի տղին ականջ կէնին։ Թռան, գացին։

Ծուռը նստաւ կովի ջանդկի մօտ, լաց։ Մէկ էլ տեսաւ հօրքուր մողոզիկ էլաւ քարի վրէն. հըմա որ տեսաւ զմողոզիկ, ասաց.—Հօրքուր, զիմ կովու գին տուր։

Մոկոզիկ փախաւ մէկ դալցայ տեղ, մտաւ քարի տակ։

Էդ ծուռը էլաւ, լանկեմ զարկեց էդ քարին. քար չըջաւ. տեսաւ մէկ ջուալ օսկի կէր էդ քարի տակ հորած, բռռ մի, էրկու լցեց ուր ճեպ, առաւ, էկաւ։

Մեծ ադբէր աչքեց զկով չբերի, վազեց վրէն որ ծեծէր. իրմայ էդ ծուռ հանեց մէկ ճանկ օսկի, ցպնեց դէմ աղբոր յաչքեր։

Ախբէր կզաւ, զէն գետնի օսկիք վերցուց, ոդաբուն ճեպի մնացած օսկիք հանեց, ըսեց.—Տղա՛, էդ օսկիք յո՞ւստայ ա։

—Հօրքուր մողոզիկ տուեց, ըսեց.—Տղա՛, էլ կայ.—Շա՛տ, կեղնի, մէկ ջուալ։

Առաւ ծուռ ախբէր, գնաց, զօսկիք առան-էկան։

Քանիմ՝ օր յընցաւ, էդ գեղի ըռէս յիմցաւ, որ պառուու տղէքներ խազնայ ա դտած, էկաւ զէդոց գուռ կտրեց (բռնացաւ), գաչեց-գաչեց (չատ որոնեց), զօսկու ջուալ գտաւ. խելացի աղբոր օղորկեց կոտ բերելու որ կիսին։

Հըմա էն ծուռ ախբէր ջալագնտեց ըռէս. տարաւ, թալեց ջրհոր։ Խելացի ախբէր էկաւ, տեսաւ ըռէս չկայ, հարցուց ծուռ ախբոր մօտէն. ծուռ ախբէր ըսեց.—Ըռէս տարայ թալի ջրհոր։

—Վա՛յ սև ցաւի բռաստ գայիր դու, ամեխ տեղ արունք էրեցիր, ըսեց. գնաց հանեց, գիշերով պատնգեց տեղ մի հորեց, էկաւ սաղսաղ էծ մի, տարաւ, թալեց հոր։

Մէկէլ օր գեղի գզիր յէլաւ բռռաց։

—Մեր գեղի ըռէս կորեր ա, վե՞ր տունն ա։

Ծուռ աղբէր ասաց.—Մեր ջրհորն ա։

Գեղովի էկան-թափան, ծուռ տղէն մտուցին ջրհոր որ ըռէսին հանէն։ Մտաւ հոր, ձեռ տուեց իծու պոչ. գարձաւ, ասաց.—Ձեր ըռէս պոչով ա։

—Հա-հա, ըսին էնդոնք, հան։

Բռռաց էլմէ։—Ձեր ըռէսին մուրուք կէր։

—Հա՛-հա՛, հան տեսնինք, էդի մեր ըռէսն ա։

Ջանըդակ հանեցին օ մէկ փիցած էծ, նոր ծծղացին էդ ծուռ տղի վրէն ու թորկին, գացին։

Քանի տարի էտև էդ պառուի խելացի տղէն դոլվաբւորցաւ, էղաւ էդ գեղի ըռէս։



# 25

# ԾՈՒՌ ՊԱՌԱՒ



(Ալաշկերտի բարբառով)

Մէկ մարդ մէկ պառաւ կնիկ կառնի, էդ պառաւ ծուռ կեղնի. մարդու ճար կը կտրի էդ ծուռ պառւու ձեռ, ինչ բան օր կիտայ. չկրնայ էնայ, մէկ օր օխէմ բուրդ կիտայ կնկայ ձեռ, կսայ.—Մանայ զիդայ բուրդ, օր ընձի շլուար մի էնինք:

Էդ ծուռ պառաւ կառնի զէդ բուրդ, կը մանայ-մանայ չուրի տարին կը լմննայ, նոր կը պրծնի։

Էդ պառաւի մարդ կիտայ զէդ թելեր պառաւին, կասայ.—Տար զթելեր ջուլհակի մօտ, շլուար գործել տուր։

Պառաւ կառնի, կը տանի ջուլհակի մօտ, ջուլհակի դուռ կը տփայ, դուռ չուն մի կեղնի, էդ պառւու վրէն կը հաչայ։

—Թաւմու, կասայ պառաւ, ջուլհակ լէ մարդու վրէն հաչայ. իդայ ինչ հմֆ-հմֆ ա, իմալ կերեւայ դու չատ խօսք մէկնիս, լուսուն լէ ճախ տալու, առնելու վրէն էդմլայ խօսք էնիս, դու պտի էնիս հաֆ-հաֆ, ես պտի էնիմ ցաւ-ցաւ. քզի չիմ իտայ գործել, կը տանիմ իմ կռկռան սանահօր մօտ:

Առաւ զթելեր, գնաց, թափեց քռի չոր չռպ՛ֆներու վրէն, դէս քաշեց, դէն քաշեց, թելներ կտրտեց։

—Թահմու, սանահէր, ասաց. դուջչըս գինայ, կը տանիմ կռկռան սանահօր մօտ։

Առաւ զթելեր, գնաց, գնաց մէկ առուի մօտ, տեսաւ լիք գորտ էր, թալեց մանած առուն, թողեց, էկաւ, ուր մարդուն ասաց.
—Մարդ, մանած տարայ, տուեցի մեր կռկռան սանամօր:

Մարդ իմցաւ, քաշեց փէտ, ընկաւ կնկայ վրէն, տուր որ կիտաս։

—Գնա՛, ըսեց. զմանած յուր որ տարեր իս, բե՛ր։

Էդ պառաւն էր, էլաւ, տընկ-հա տընկ էնելով գնաց դէմի կուկուան սանամօր մօտ։ Գնաց-գնաց, համբէն գունտ մի օսկի գտաւ, դարձաւ, օսկին բերեց, տուեց ուր մարդուն։

Պառաւ մէկ օր տեսաւ չարշիմ հլու-մլու բերի, կը ծախայ. հիմա կերտայ ուր մարդուց գողտուկ կը բերայ էդ օսկին, կիտամ էդ չարշուն. ուրին բան ու ման կառնի։

Ցիրկուն մարդ օր կիգայ տուն, զուր առած բան ուր մարդուն նշանց կիտայ, կասայ.—Տե՛ս, մարդ, էն գունտ օսկին տուեցի, գիդա պլպլան բաներ առայ։

Մարդ օր զէդ կը տեսի, հմա կելի, պառուուն կիտայ լաճկի յառէջ, տնից դուս կէնայ։

Պառաւ լէ տնից կուըքի, կառնի զուր ճախրակ ու զանկուլակմ, կերտայ, ձորում մէջ, ճամբու վրէն կը նստի, չընկըռ-չընկըռ զուր ճախրակ կը մանայ։

Մէկ օր Թագաւորիմ դաւէք, օր օսկի բառցած կը տանէն, դեւի մէկ օր լսեց էդ չնկռտոց, ջոկուաւ, գնաց դէմի էդ չնկռտոց։

Պառաւ էլաւ չոքըցուց, զուր ճախրակ դրեց վրէն, հեծաւ, էկաւ տուն։

Մարդ էլաւ, բեռան աչքեց օր լիք օսկի էր, օսկիք տարաւ ներս, դաւին էլ մորթեց. հիմա պառաւուն խափեց, մտուց թոնդիր, ասաց.—Մկայ քարէ կարկուտ գիկայ։ Բերեց թոնդրայ վրէն ջուլ փռեց, պառաւու գլխու վրէն կուտ ցանեց. հաւեր թորկեց վրէն, հաւեր թըխկ-թըխկ պառաւու գլօխ կոցեցին, չուր մարդ օսկիք ու միս տեղաւորեց. նոր էկաւ զխաւեր դէն-քշա, էրաւ. պառաւ հանեց։

Քանիմ օր ընցաւ, նոր Թագաւորի մարդեր էկան, հիւընդի պռով դաւի մսի չուռ էկան։

Էդ պառաւ ասաց.—Քարէ կարկտի տարին մեր տուն դաւի միս կէր։

Թագաւոր կը խանչայ զպառաւ ու զէդ մարդ կը տանի ու կը հարցու, կասայ.—Քարէ կարկուտի տարին ձեր տուն դաւի միս կէր։

Մարդ կասայ.—Ձեր տուն ակոլի ու ձեր քարէ կարկտին. քարէ կարկուտ յեփ ա էկի, իմ կնիկ ծուռ ա, գձգի խափեր ա։

Մարդ չաս դոլխաբութեան. պառաւ մեռաւ, գնաց խօրտակնիկ մը բերեց. focf ու սarkմ չինեց, մտան մէջ։



# 26

# ՄԵՌՈՒԿ ՄԱՆՈՒԿ

(Արծկէի բարբառով) *

Մէկ մարդ՝ մէկ կնիկ՝ էդոնց մէկ խատ աղջիկ կեղի. կուտան իրենց դըրկեցի տուն աչկերտ. ամիսմ՝ երկու-իրեք էդ տուն աչկերտութեն կենայ: Էդոր ուսցէն կը վերու.—Աղջի՛, փարչ առ, տար ջուր բեր:

Ամիսմ-էրկու-իրեք էդ աղջիկ ուսցին ամեն օր ջուր կը բերայ:

Մէկ օր էլ մէկ սիւտակ մուրուս խալխւոր էդ աղբրէն դուս կելլէ, էդ աղջըկէն կասայ.

—Աղջի՛, մեռնիս՝ խող լնես. ապրիս՝ մեռուկ մանուկ լնես:

Աղջիկ կուգեայ տուն:

Մէկ՝ տաս՝ քանն օր աղջիկ կերթայ ջրու, էդ խալխւոր էդլա «աղջիկ, մեռիս՝ խող էնես. ապրես՝ մեռուկ մանուկ էնես,» կասայ:

Էդ աղջիկ յօրպըզօր կը խալի, էդոր միս կը բարկնայ. մէկ օր էդ աղջիկ կելլի կերթայ ուր խօր տուն, իմէր, մէր կը վիրցին.—Աղջի՛, դու խիւընդցե՞րես, քե դեղ ին տուած, ինչ ա տուած, դու էդլան էս էղերես:

—Չի Նա դեղ ա տուած, Նա խիւընդցեր եմ. իմ ուսէն ընձի ճամբխեց աղբուր ջրի, մէկ խալխւոր մարդ աղբրէ դուս էկաւ, ընձի ասաց.—«Աղջի՛, մեռիս՝ խող էնես, ապրես՝ մեռուկ մանուկ էնես, օրմ՝ էլ Մանուկին պտի ըռաստ գաս»:

Մէր կը վիրցու:—Մա՛րդ, աղջիկ վախեցեր ա, ա՛ռ, գնա մէկ ղարիբ էրկիր:

Խէրն էր, վերուց զաղջիկ. օրմ՝ էրկու օր, մէկ ամիս, էրկու ամիս գնաց, խասաւ մէկ քաղքի: Խէրն էր, վերուց.—Աղջի՛, դու դադ կայնէ, չուր ես էրթամ օտաց ճանբախ, գեամ:

Էդ աղջիկ դատի կայնաւ, խէր գնաց պետէնի տակ օտա՛ց ճամբախ:

* Պատմած է Արընչկոյս գիւղացի Դաւիթ Մուխսի Ցաւուքիւնեան:

Էդ մարդ դարձաւ օ պէտէն բացուեր. աղջիկ գեացե ինե։ կը տեսի օ աղջիկ չկայ. կելի, վի՛ն օ կը խարցուցայ, դէս-դէն, սալխ չեն իդայ. էդ մարդ ուրին-ուրին կասայ. կայ, չկայ, Մեռուկ Մանուկ իմ աղջիկ տարաւ։ Կելի fօr-փօտմաճ կուգեայ ուր տուն։

Էդ աղջիկն ա, կերթայ եօթ դուռ կը բանայ. կը տեսի կօ՛ մարդմ մեռուկ՛ էդա տեղ դրուկ ա, կայ, չկայ, Մեռուկ Մանուկ էս ա, կօ՛ էկայ, էսոր խասայ։

Աղջիկն ա, էդ մեռուկի գլօխ կը դնայ վըր չօքին. տարիմ, էրկուս-իրեք-չորս կը պախայ։ Էդ աղջիկն ա, փանճարից կիչկայ մըրքըպու fօչ կուգեայ. կը տեսի օ մէկ եքըմ (որք) մըրքըպու կէչկէ (աղջիկ) էդ մըրքըպու fօչին կասայ.—Ընձի էլ տարէք, անտէր էմ, անտիրական էմ։ Էդոնք խադին գեացին։

Որ կէչէն չատ լացեց, վերևուց աղջիկ ասաց.

—Կէչէ, էս միզրի պաղ բռնայ, արի՛. ես քե կը պախեմ։

Կէչէն ա, բռնեց միզրի պաղ, աղջիկ քաշեց, խանեց ուր մօտ։ Էդ կէչէն իրեք տարի էդ աղջըկէ մօտ խզմէթ էնեց։

Աղջիկ տեսաւ օր հօթ տարին թմաւ, մեռուկ Մանուկ յարութեն պտի առի, կէչկին ասաց.—Մանուկի գլօխ դիր վըր քու չօքին. ես էրթամ գլօխ լուամ, սերըփիմ յիգամ. որ Մանուկ մէ խետ ժաժ կուգեայ. ընձի իմաց մի՛ տու, որ մէկ էլ ժաժ կուգայ, ընձի իմաց տուր որ ես գեամ. Մանուկ յարութեն առնի, մենք խասինք մեր մուրազին։

Աղջիկն ա, գնաց ուր գլօխ լուայ, էդ կէչէն էր, Մանուկի գլօխ դնեց վըր չօքին, նստաւ։

Մեռուկ Մանուկ էրկու խետ ժաժ կուգեայ, կէչէն աղջկէն չիմացուցայ. Մեռուկ Մանուկ կէլի յարութեն խըտ կէչին կառի։

Մանուկն ա, գինայ թէ կէչկէն խայ ա։

Էն աղջիկն օր պախեց, չախեց, էղաւ ճարիյա։

Մեռուկ Մանուկ ամեն օր կէչկին կասայ.—Էդ ճարին խա՛ց տու. ջո՛ւր տուր, մեղք ա։

Մանուկն ա, կելի մէկ օր, էրկու օր, մէ չաբաթ կը պտտայ, էլման տուն կուգեայ, կէչէն ա կը վերու.—Դնա՛, ընձի զաղ-զաղ մաճուսայ առ արի՛, էնիմ չոր։

Մանուկ կը վերու։—Էդի քըդու չոր ա, խայի չոր ուզայ, բերեմ։

—Էն չոր օր կուզեմ, էն չոր բեր։

—Քօ fէյֆն ա, կասայ. էն չորից կը բերեմ. դնա՛, իչկայ, քու ճարիյան ինչ կուզայ։ Կէչէն գնաց, խարցուց։

—Աղջի՛, Մանուկ կերթայ տուfներ, քըզի ինչ չոր կուզես։

—Ընձի բա՛ն չբերայ. մէկ սապրի խրձիկ, մէ՛կ էլ բըղբըղիկ, Ֆինճան մէլ աղու։

Մանուկն էր, գնաց պազար, կեչկի չորեր առաւ, էկաւ չանք ճամբխու կէս, միտք ընկաւ, մէկէլ դարձաւ, գնաց մէկ սապրի խրձիկ, մէկ բըղբըղիկ, մէկ Ֆնճան մէլ աղու առաւ, էկաւ։

Մանուկ ասաց.—Էդ բաներ ուզող չատ դարցի տէր ա. մուղաք կաց, էնի կը պատռի։

Էկաւ տուն, աղջկէն ու կեչկի չորեր տուեց։

Աղջիկը բըղբըղիկն ու սապրի խրձիկ կը դնայ ուր յառէջ, կասայ ուր գլխու գալած, դառնայ, խարցու:

—Բըղբըղիկ, սապրի խրձիկ, ես պատռիմ, չէ դու։ Էս եօթ տարի Մանուկին չախի պախի, կեչէն էկաւ, իմ ձեռնեն առաւ:

Բըղբըղիկ, սապրի խրձիկ կասեն.—Մենք կը պատռենք, դու մը պատռի։

Մէկէլ էդ աղջիկ ուր գլխու գալածներ էդ բըղբըղիկին, սապրի խրձիկին կասայ. դառնայ, կասայ։

—Բըղբըղիկ, սապրի խրձիկ, ես պատռիմ չէ դու, էս եօթ տարի ես Մանուկին չախի, պախի. կեչէն էկաւ, իմ ձեռնէն առաւ։

Էլման բըղբըղիկ, սապրի խրձիկ կասայ.

—Ես կը պատռիմ, դու մը պատռի։

Աղջիկ կը վերու։—Բըղբըղի՛կ, սապրի խրձիկ, ես պատռիմ, դու մը պատռի. էս եօթ տարի Մանուկին չախի, պախի. կեչէն էկաւ, իմ ձեռնէն առաւ։

Մանուկ էդ տեղէն կը լսայ, կասայ.

—Դու մը՛ պատռի, դու մը՛ պատռի թը բըղբըղիկ, սապրի խրձիկ պատռին, դու մը՛ պատռի։

Մանուկ ասելու պաշտան, բըղբըղիկ, սապրի խրձիկ պատռան յիրարու։

Մանուկ էդ տեղ կիմնայ օր էդ աղջիկ ուրին պախեր էր չանք եօթ տարի, օր ես խըլա էդօր յարութեն պտի առնէնք։



# 27

# ՋԱՆ ՓՈԼԱՏ

(Արծկէի Առնջկոյս գիւղի բարբառով *)

Վախտով մէ Թագաւոր կեղի, էդոր քարսուն խատ տղայ կեղի։

Էդ քառսուն տղէն կը դնայ վարժարան։

Էսսուն տարի էդ տղէք ցէ օր, ցէ արև կը տեսին։

Էդ տղէքներու պստիկի անուն Միր կ'ըղնի։

Աւուր մէկին էդ պստիկ տղէն կը փրցի, կելնի դուս, կը տեսնի օր Թագաւոր ուր ասկրով, թմբով, զուռնով, ձիով, ձիաւորով կը խաղան։

Էդ տղէն ա, կը դառնայ մտի վարժատուն ջոջ աղբօր կասայ.

— Աղբէր, աշխարհ օր կայ, արև կայ, խաց կայ. մենք մտերինք մութ տուն. ինչ էնք խասկըցի։

Ջոջ աղբէր մէկկէլ աղբօր վերուց (ասաց).

—Տղա՛, տղա՛, յէլի գոմբմ դարկ էդոր. էկեր ա, սուտ ասելով աշխար պտի աւիրայ. յէլի դուս, մէ իչկայ։

—Յէլի դուս, իչկայ, թա սուտ ա, իմ լեզուն կտռայ, թա օղորթ ա, էլ յօրէն կը զարկիս, ասաց։

Տղէն կելի. կը տեսի, իմալ օ տղէն տեսեր ա, կօ յէմալ ա։

Կը դառնայ, ջօջ աղբօր կասայ.—Աղբէր, օղո՛րթ ա։

Ջոջ աղբէր կասայ։—Օր յէմալ ա, դնա՛, Թագաւորին ասա՛, թո մեզի քառսուն խատ ձի՝ մէկ բռանց, քառսուն ձեռք չոր՝ մէկ բռանց էղի. քառսուն ձեռք սիլա՝ մէկ բռանց։

Գնաց մըտ Թագաւոր։

Թագաւորն ա, փանջարից գլօխ թալեց դուս։

Տղէն գնաց գլօխ իջուց Թագաւորին։

Ասաց.—Որդի՛, խէր ա քու գալ էս տեղ։

Ասաց.—Փա՛ռք Աստուծոյ, խէր ա. քո տղէն ընձի ճամբեց մըտ քե, քառսուն խատ ձի տաս մէկ բռանց. քառսուն ձեռք չոր տաս մէկ բռանց. քառսուն ձեռք սիլա տաս մէկ `բռանց։

Ասաց.—Որդի՛, քչում կանի դադ. ճամբխեմ, ձիանք առնին դան, ա՛ռ, գնա։

---

* Պատմած է Դաւիթ Մալխասի Յարութիւնեան:

Թագաւոր ձիանք, չոր, սիլա տուաւ էկաւ:

Տղէն առաւ, գնաց.

Տարաւ վարժարանի դուռ, կայնաւ:

Ասաց.—Աղբէր, ձիանք բռնէք:

Մաւ վարժատուն, աղբէր վերցուց.—Տղա՛, բերիր:

—Հա՛, ձիանք հազր, կօ դուռ կայնուկ ին:

—Դէ՛, տղէկներ, յէլէք, յէլէք որ էրթանք, ըսեց. ես յիռսուն տարի վարժատան խզմաթ էնեցի, յիռսուն տարի էլ պտի պտտեմ աշխար:

Տղէկներ յէլան, ձիանք խեծան:

Նէ օր ա տեսած, նէ արև ա տեսած, նէ ձի ա տեսած, նէ սիլա ա տեսած, նէ թագաւոր ա տեսած, նէ իսան ա տեսած: Քառսուն էլ խամ տղայ: Նէ ձիու խեծնել գիտեն, նէ ձիու ոռ ու գլուխ գիտեն: Մէկն աջու կը խեծի ձին, մէկն ձախու:

Էլան մէյտան, ձի կը խաղցուցեն:

Նէ քար կիչկեն, նէ թուփ կիչկեն, նէ խանդակ կիչկեն, նէ ջուր կիչկեն:

Էդ ձիանք յէմալ էնեցին, քրտինքի մէջ կուրիան:

Թագաւորն ա, փանջարից թամաշայ կէնայ. կը տեսի մէկ նաւասան կը քշայ (օդի միջով) մէկ թաւասան (տապակի միջով). գլուխ տարաւ բերեց, ասաց.

—Հէյ վա՛խ, էս տղէկներուց ընձի խեր չկայ, պախեցի, ջոջըցուցի, վարժատուն դրեցի, խեր չտեսայ:

Տղէք քշեցին, թագաւորի սարի յառէջ կայնան:

Ասաց.—Որդի՛, ինչ կուզէք:

—Մեզի խարճլիս տո՛ւր, էրթանք պտտելու:

—Որդի՛. ես ձեր խէրն իմ, ընձի ականջ էնէք, մէրթաք, դու քանի օր կաք, խամ տղայ էք, նէ դու ձեր չարկամ կը ճանչնաք, նէ բարեկամ:

—Թագաւո՛ր, ապրիս, չեղած բան ա, պտի էրթանք:

—Որդի՛, ասաց. «ձեր մուր, ձեր էրես», ձեզի չորս խատ վոսիաթ (կտակ) կայ, էնիմ, կերթաք, գնացէք. մէկ վոսիաթ էն ա օր կերթաք, իրեք ճամբու րասս կուգաք. էն վերին ճամբով, էն ներքին ճամբով մ'էրթաք. էն դուրան ճամբով գացէք, մէկ էդի: Մէկ էլ՝ կերթաք չայիր, չիման, ֆօտկ ու սարէմ կայ էղայ տեղ, չորս բոլոր բաստան քաշուկ ա, իսնի արունով ա չքած. էդ տեղ չիջիք, ընցնիք: Ասաց. Մէկ՚էլ կերթաք ջոջ դետմ կայ, կարմունջ կապուկ վրէն, էն կարմընջ կընցիք դէն, քառսուն տեսակ կերակուր չայիր-չիմանի վըրէն. չեղնի իջիք, ուտիք. ձեզի վնաս կուգեայ, մէկէլ էդ:

Մէկ էլ կերթաք ղռան տեղ, քար ու քռա, նէ խոտ կայ, նէ

ջուր կայ, Եէ արտու Քառասուն խուրձ խոտ կայ էն տեղ ջոկ-ջոկ, չեղնի բմահ էնեք էն խոտին, ասէք «մեր ձիանք անօթի են, կեր-ցունք»․ էն խոտին տէր կայ, ձեզի վնաս կուգեայ։ Մէկ էլ էգլի։ Որ-դի՛, ասաց․ կերթաք էլ դու գիտէք, մնաք էլ դու գիտէք, ես իմ մեղք իմ վզէն կը խանեմ։

Տղէկներ խօր դլուխ իջուցին, խարճլիս առան ու գնացին։

Օրմ՚, էրկու օր, իրեք գեացին, էդ իրեք ճամփու լուսաց էկան։

Ջոջ աղբէր քշեց, էն մէկ բարակ ճամբխով գնաց։

Էն պստիկ տղէն ջոջ աղբօր ասաց․

—Աղբէ՛ր, չէ՛ մեր խէր մեզի վոսիաք էնեւր ա թը «ձեւր ճամբխուց դուս մ՚ելիք»։

Ջոջ աղբէր ըռըգաւ վըր էդոր, ըսեց․

—Շա՛ն որդի, ես ո՛ր մէկ ճամբխով կերթամ, դու իմ էտեւէն արի։

Քշեցին ու գնացին։ Գեացին էն ֆոսկ ու սարի դուռ իջան։

Ջոջ աղբէր տղէկներուն վերուց․

—Տղէկնե՛ր, ձիանք քաշէք, փակխի մէջ կապէք։

Քշեցին, փակխի մէջ ձիանք կապեցին։

Ջոջ աղբէր վերուց տղէկներու մէկին․

—Տղա՛, տղա՛, գնա՛, տես ֆոսկի մէջ մարդ չկայ, խոտ ուզես, բերես, տանք ձիանքներուն։

Տղէն ա, գնաց, պտտեց, մարդ չտեսաւ, ճատու պառաւմ տեսաւ որ խաց կը թխէր։

Տղէն օր պառաւ տեսաւ, վախեցաւ։

Պառաւ՝ մէկ պռուկ գետին, մէկլէ գլխու վերեւով չրջէր վըր վզին։ Տղին ասաց․—Տղա՛, ինչ բանի պտուլ էս էկեր ես։

Ասաց․—Քշում խոտ տո՛ւր, տանինք տանք ձիանքներուն։

Ասաց․—Քանի՞ ձի ա։

Ասաց․—Քառասուն ձի ա։

Ասաց․—Դո՛ւ քանի մարդ իք, օր քառասուն ձի ա։

Ասաց․—Մենք քառասուն աղբէր ինք, քառասուն էլ ձի ա։

Կօ՛, մարգի դուռը էղա ա, գնա՛, ինչ ղտըր տանիս՝ տար։

Տղէն ա, էկաւ խոտ բերեց, տարաւ ձիանքներուն։

Ջոջ աղբէր վերուց․—Տղա՛, յորե՞ էսլան անգընցար։

Ասաց․—Գացի, պտտեցի, մա՛րդ չկէր, գացի տեսայ մէ պա-ռաւմ, Աստըծոյ խայտառա՛կ, իմ յաչք առաւ պառւուն, վախեցայ, իմ գլխու մազեր էղան քընց գերան մը, իմ լեզուն չը պտտեց, որ ես էնու մօտէն բան ուզի․ էն ձի խարցուց թա «ընչի էս էկեր ես,» ասացի «խոտ տուր, տանենք ձիանքներուն»։ Մարգի դուռ նշանց տուեց, ես էլ խոտ բերեցի։

Խոտ բերեց, տուեց ձիանքներուն։

Ասաց.—Տղա՛, ղնա՛, քիչմ խաց բէ, ուտենք։

Գնաց, պառւուն ասաց.—Խա՛ց տուր, ուտենք։

Պառաւ ասաց.—Առ էսա իրեք խատ չոր խաց, տա՛ր թող ուտեն, իրիկուն խաց կը բերեմ։

Տղէն էր, առաւ խացեր, գնաց։

Ձօջ աղբէր ասաց.—Ի՞նչի էսա խացեր քիչ բերիր։

—Պառաւ էդ տուեց, ասաց՝ տարէք կերէք, իրկուն կը բերեմ խաց։

Մնաց չանք յիրկուն, ճրագ կպաւ։

Էդ պառւուն քառսուն դև տղայ կեղի, էդոնք Եէջիրէ տեղէն էկան. էդ պառաւ էլաւ, ասաց.

—Տղէկնե՛ր, ձզի քառսուն խատ խուրնիկ լըեղէն խողածին էմ բերեր եմ.՝ էս եօթ տարի ա, իմ առմացաւ բռներ ա. որ կերթաք, էն մարդիկն օր կուտէք. էնոնց էն կակղնէն քչում բերէք, ղնեմ իմ առմու վերէն, օր իմ առման ցաւ կտռի։

Կասեն.—Մարէ՛, խաց տարեր էս էդ մարդեկայ։

—Երկու, իրեք խաց ճամբխեր էմ, կերած էն. Նոր խաց պտի ճամբխէնք։

Էդ տեղէն եօթ տարուան գինին, խաց, զաս կը տանին, փռեն տղէկներու յառէջ։

Էդ պստիկ տղէն ա, ճրագի սան տակ կը նստի, էնու տեղ մութն ա։

Գինին ա, կուտան տղէկներուն, ինչ ղտար սրէն կուզեայ պստիկ տղին. կը թափայ խաիլի տակ։

Կերան, պրծան, տղէկներ չո՛ւռ առան դետին, մեռան պրծան.

—Էս օր էս մեռե, չէ՛ եօթ տարի յառէջ։

Պառաւ ուրախելէն կերթայ, տղէկներուն խապար կուտայ. պստիկ տղէն էլ կընկլի պառաւի յէտե, կերթայ ականջ կենոյ, կը տեսի օր պառաւ ուր տղէկներուն կասայ։

—Գինին տուերեմ, եօթ տարուան մեռլի պէս ընկած։

Դեւէք կընկլին մէկ մէկ իրարու էտե կդեան։

Պստիկ տղան կը քաշայ թուր, կասայ.

—«Խացն ու գինին, Տէր կենդանին»։

Էդ սեղ կը զարկայ, դեւու գլուխ կը թռուցայ ու լաճկով կը զարկայ, կեցդայ ճանճակ փոս. գլուխ կը դնայ ուր կշտին։ Չէրկընցուցէնք մէկ մէկ էդ քառսունին գլուխն էլ կը կտռայ, յետմքի էլ էդ պառաւ ուրախելին կուզեայ, թուրմ էլ կը թալայ, էդոր վիզն էլ կը կտռայ, կասայ.—Ամեղայ (զդ-ստ դանուեցայ) ալատայ։

Կը պարկի, քնի, լուսմթի կելի էդ քառսուն ականջ. մէկ էլ էդ պառուին կը կտռայ, մախթով կը քաշայ թելի մէջ. կապայ ուր չո-

ընրու տակ, կելլի կընկնի էդ քօշլ ու սարի մէջ, կը պտտտայ, կեր-թայ էդ պառուի բարձի տակէն եօթ բանլիս կը դտի, կասայ.—Եօ-էս բանլիսներն էս դռներու վրէն ճռպեմ։

Տղէն վեց դուռ կը բանայ. կը տեսի մէկ օսկի ա, մէկ ար-ծաթ ա, մէկ եաքաղ ա։

Էդ մէկ դուռ կը բանայ որ քառասուն խատ խուրնիկ խրեղէն աղջիկ էդ օթախի մէջ, կը մտի ինն, կասայ.

—Բարև ձեզի աղջներ։

Էն էլ կասի.—Աստուծու բարին քե աղա։

Կասեն.—Խուքն ուր թեռվ, օձն ուր պօռտով չի կռնայ էս տեղրանք գիայ. փախի, մեղք էս, մկայ դևէք որ Լկան քու ջոջ փերդ քու ականջ կը թողեն։

—Է՛յ գիտի աղջըներ, կասայ. ինչ անխեյք էք, դևէքն էլ սպա-ներ էմ, պառաւն էլ։

Ասին.—Սուտ ասելով աշխար պտի աւիրես, դու մէկ մարդ, իմալ քառասուն դև սպանեցիր։

—Կնիկ որ կայ, կարճ միտք ա, ասաց. չէ՞ք հաւատար, ահա նշա-նաբաններ (ականջներ կարձկայ, կը թալայ յառէջներ) կասայ, ես խամ մարդ չեմ, որ խամ բան բռնեմ, սուտ ասեմ, Աստուծուց, մարդուց էզիմ սեերէս. Աստուած ընձի խելք տուեց, կարողութուն տուեց, իմ ձէն էրթայ աշխրքի մէջ ցվրուի։

Աղջներ վերցին.—Դու քանի՞ աղբէր էք։

Մենք քառասուն աղբէր ենք, քառասունի պստիկը ես էմ։

—Մենք էլ ամէկ թագաւորիմ՝ աղջիկ ենք, արէք, ամեն մէկդի որ մէկիս խառնիք, էն տարէք։

—Էրկու մուրազ կայ մզիկ. էրթանք կատարենք, նոր կը դեանք, կը տանենք ձեզի։

Տղէն կասայ.—Էս մէկ բանլիս կուտամ ձըզիկ, խացի ջրի բան-լիսն ա։

Տղէն կելլի կուգեայ յօղէն, կը տեսի օ աղբրտիք իմալ օ ըն-կուկ էն, յէմալ ընկուկ մնացած ա, կասայ.

—Ուր ճէյֆն ա, էրկու, իրեք օր կը պտռտեմ, չանք իմ աղբրտիք շյաղանան, կելլինք, կերթանք. էլ աւի չկայ, դող չկայ, ընչից պտի վախենամ։

Իրեք օր, որ կը քմի, տղէկներ կօյաղնան։

Կելլին, կընկլին ճամբախ ու կերթան։

Շատ քիչ Աստուած գիտայ. կերթան մէկ կարմնջիմ բռաաչ կուգեան, կելլին վրր կարմնջին, ջոջ՝ աղբէր կը տեսի, ինչ-չայի՜ր չիմա՜ն, պաղ-պաղ ջրեր, սուֆրէն փռուկ. քառասուն չէշիս կերտա-կուր վերէն։ Տղէկներուն կասայ.

Քշէք, էդա կերակուր ուտենք, էրթանք։

Էդոնք կիջին կերակուլի վրէն, պստի աղբէր կիջի գետի ափ։

Էդոնք ձեռ կեննեն կերակուլ ուտել, տղէն կիչկայ էտեանց, ինչ կը տեսի.—Կը տեսի քո՛զ, դումա՛ն, էրկինք, գետինք մթներ ա։

—Ճանըմ, կասայ. էսի արև անուշ, քոզ, դուման ուտեն էղաւ։

Մէկէլ կը տեսի միշապմ, գետի միջէն էլի, բերան բացի, կուզեայ, մէկ անճըներլի բանմ՚ ա։

Տղէն կասայ.—Տէր, Աստուած, դու իմալ էն գապաններու ձեռնէն ազատեցիր, էս տեղէն էլ ազատես։

Կասայ ու քաշայ թուր. կու խասի, կը զանայ։

Զարկելու բաշտան կիսուց կը կառայ։

Էդա տեղ էդոր ականջն էլ կը չարայ թել, կապայ մէջք։

Տեսի օր, աղբրտիք խեծան, կերթան, էդ էլ խեծաւ, գնաց խասաւ աղբրտիքներուն։

Գեացին, շատ ու քիչ Աստուած գիտայ. գեացին մէկ ղուաճ տեղմ՚ բուասց էկան, «քա՛ր, քա՛ւ, ճէ ջուր, ճէ խոտ, «էշն օր ընկի, ատամը կը կոտրի»։

Զոջ աղբէր կասայ.—Տղէ՛ք, քշէք, էնա քարի տակ խոտ ա բշում ըռահաթանանք, կերթանք։

Տեսան քառսուն խուրձ խոտ ըռեզով էդ քարի տակ դրուկ ա։

Ասաց.—Քշէ՛ք էդա ձիանք էդա խոտի վրէն. ուտեն. էրթանք։

Էդոնք ամէկ խրձան վրէն մէկ ձի կայնեցուցին։

Տղէն զատանց մնաց, չդնաց՚ խոտի վրէն։

Մէկ խուրձ խոտ սալամաթ մնաց։

Ձիանք խոտ կերան, պրծան, օր խեծեն էրթան, տեսան մէկ մարդմ՚ էրկու ծառ վրը թևին դրուկ. մէկ էն թևին, մէկ էն թևին. հազար թուրլու ճանճավար ծառի ճղերի վերէն էկաւ մըտ տղէկներ, լէմալ թափով բարև տուեց, ասաց.

—Ա՛նխոզիք, անաստուածներ, դու իմալ Աստուծուց չվախեցաք, էսա հայվըճներու ըրսֆ կերցուցիք։

Զոջ աղբէր վերուց։

—Յորին Աստուծուց վախենամ. եռսուն ինը խուրձ խոտ քեզի կերցուցեր իմ, առ քեզի եռսուն ինը օսկի, ամէկ խրձան մէկ օսկի։

Կասայ.—Ես ինչ էնիմ օսկին, ես իմ խոտ կուզեմ։

Կասայ.—Ա՛ռ քեզի խարուր օսկի, մեղնէ ինչ կուզես։

Կասայ.—Բեզնէ մէ բան կուզեմ. տուիք, զաթի տուիք, չը տուիք, կը բռնեմ ձեր ականջներ, կը տփեմ էնա քար կպլիք, խազար տարի չպրծիք։

Կասայ,—Ի՛նչ կուզես։

Կասայ.—Կօ, էնա տղէն, օր քաֆ կայներ ա։

Կատայ.—Մէկ տղէն ա, ղուրբան կէնիմ քե, զարի պէ օճախ ա. քոռ օճախ ա, մէկ երկու ամիս ա ճամբախ կուզանք, մէկ կըտրիճութեն չտեսանք էնոր մօտէն, տա՛ր քեզի։

Էդա տեղ տղէկնիր խայլայութեն կառնին. տղէկներ դեն կերթան, էս էլ որ Ջան Փօլատն էր. կառի տղէն դէս կերթան։

Փչում՝ տեղ կը զատնան իրարուց, տղէն մօքի մէջ կատայ.

—Իմ աղբրտիք էնեցին պէքաղցութին, ես չէնիմ. փրցընող Աստուած՝ կը փրցուցայ։

Տղէն ա կը դառնայ, Ջան Փօլատին կատայ.

—Խնդրեմ քեզնէ, մէ բանմ մոռցեր իմ մըտ իմ աղբրտոց. երթամ, առնեմ, գամ։

Տղէն կը քշայ, կիրթայ աղբրտոց կը խասի, կատայ.

—Աղբրտիք, ժողուէք, էկէք, ձըզի բան կասեմ։

Ժողուան, ասաց.—Դու էնեցիք ընձի վատութեն, խում կաթ ծծողին բաղդ չկայ։

Մէջք կարձկայ, նշանարան կը թալայ ջոջ աղբօր յառէջ, կատայ։

—Ես չէղի, Ձյան քոչկ ու սարի մէջ՝ Աստուած ձեզի փրցուց, հըմա ես ձեզի ազատեցի. Ձյան տեղ կերակուլ կուտէք, ես չէղի, Աստուած ձեզի փրցուց, հըմա ես ազատեցի, դեռ ակռնջներ կտրի է՛ս էլ ձեզի նշանարան. Ես չէղի, Աստուած ձեզի փրկուց, հըմայ ջան Փօլատ պիրունդ էլ պտի սպանէր. ես ազատեցի։

Էդա տեղ նոր կիմնան ուրանց աղբէր կորիճ ա էդլան։

Թողին չոքեր, գըլուխ կը սիէն. ձեռնէն գացեր ա, չարեն ինչ։

Էդ տեղ կը խասի ջոջ աղբօր ձեռ կը պագայ, կատայ.

—Աղբէր, ա՛ռ էսա վեց բանլիս քեզի, կերթաս էն քոչկ ու սարի մէջ մէկ օթախ կայ. կը բանաս, մէկ ոսկի, մէկ արծաթ, մէկ դուսկ, մէկ զինար, մէկ եարախ, մէկն էլ քառսուն խատ խուրջնիկ խըրեղէն աղջիկ, ամէկ Թագաւորիմ՝ աղջիկ էն, ամէկ մէկ խատ խանէք, վերցէք ձեզիկ, ամենու աւարէն էլ թը մնայ ընձիկ, էն էլ տարէք խըտ ձեզի, եօթ տարի կըշկիք, էկայ՝ էկայ. թը չէկայ, էն էլ կը պահէք իմ ջոջ աղբօր վըրէն։

Տղէն կը դառնայ, Ջան Փօլատի խետ կերթան։

Ջան Փօլատ կառնի կերթայ ուր տուն, խաց կը բերայ, կուտեն։

—Տղա՛, կատայ, գիտե՞ս, քեզի ինչու իմ բերի։ Կատայ.—Ինչու

Կատայ.—Քեզի բերեր եմ, պտի երթաս Չին-Մաչինայ Թագաւորի խարս բերես ընձի. բերեցիր՝ զարի բերեցիր, չբերեցիր, զարի քեզի էրկիր էրթալ չկայ։

Կատայ.—Ես ճամբախ չը՞ գիտնայ. էսի պիրուն ծա՞յլ ա, կօ, ընկնեմ ծով, կը խեղդիմ։

Կասայ.—Հուտամ քե խրեղէն ձիու կեամ, առ զար, ձիու բերան, խեծիր, գնա՛ Եռսուն ինը մարդ ճամբխեր եմ խարսի էտև, չկարցան բերին. ես գիտեմ, դու պտի բերես։ Ես քեղի բան կասեմ, բան ա, կերթաս ծովու մէջ, կը ներանաս. որ տե քե կզգի ըռաաց կուգեայ, ձիու կեամ զլխուց խան, կօ ձին կերթայ մըջ ծովուն, ըռաճարցի, էլման կեամ զար ծով, ձին կելի կուգեայ, խեծի գնա՛։

Տղէն կերթայ, չատ ու քիչ Աստուած գիտայ, կերթայ մէկ կզզում՝ ըռաաս կուգայ, կասայ.

Վայա՛, ես էնա տեղ քչում Ճաֆաս առնիմ, էրթանք։

Էդ տեղ կիջի վրր աղբրին, խաց կուտայ, ջուր կը խմայ, կելի կը պառտայ, կասայ.—Տեսիմ, ինչ կայ, ինչ չկայ։

Տեսի եռսուն ինը մարդ քարիմ տակ ընկուկ ա, էն ղրդար փըրչ էկեր ա էդ մարդեկաց վըրէն, էղեր ա էրկու Թիզ։

Կերթայ, բարև կուտայ, կասայ. —Բարև ձեզի, աղբրտիք։

Էն ինչ որ չուտ գացեր ա. խեղք, լեզու չկէր, օր բարև առին, ինչ որ անգեան ղացեր ա, ասաց.

—Ասսու բարին քե, աղբէր, մենք եռսուն ին հոգի էնք. դուն էլ էկար, էղանք քառսուն, քե ռն ա ճամբխեր էս տեղ։

Ասաց.—Վոլա, ընձի Ջան Փօլատն ա ճամբխեր։

Ասացին.—Մեզ էլ Ջան Փօլատն ա ճամբխեր ա, անտէր, անտիրական, անօթի, ծարաւ ընկեր էնք էս տեղ, Ճէ ճաւար, Ճէ կազիյա. ճաւար աննենք, մարդ չկայ. պռանք էլ մարդ չգայ։

Էդ աղէն ա, կեամ կը զանի ծով. ձին կը խեծի, էրկու մարդ առաւ ուր թարկ, ընկաւ վըր ծովուն գնաց։

Շատ-քիչ Աստուած գիտայ, գնաց ծովու ափան մօտեցաւ. տեսաւ էրկու սար կերթայ դէպի էն մէկ սարին, էն մէկն էլ կերթայ դէպի էն էրկու սարին։ Ջուր աչքեր տարեր, չջոկէ օր տեսի։

Կերթայ, ափան կելի ղուս, էդ էրկու մարդ կը Թալի ծովու ափ, ինքն էլ կիջի, կեամ ձիու գլխուց կը խանայ, կը խորայ քարի տակ-ծովափի։

Տղէն կելլի փլի գլօխ, կասայ.

—Էրթամ, տեսիմ, էն ինչ սար ա, օր յիրար կուգեան։

—Կը տեսի օր սար չէ, մարդ ա։

Էն էրկուս ճուճում կէնին մէկ մարդի կը զանին, էն մէկ լէ ճուճում կենէ էն էրկըսին կը զանի։

Տղէն կասայ.—Էրթամ էրկըսի տեղէն, Աստուած ղապուլ չենայ, էրթամ, էղիմ մէկի անխէն, էն մէկէլ էրկու մարդ պտի ասեն «ֆօփակ օղլի, Թը դու բարի մարդ իր, Թը դիր (դոյիր) բարի զրուց էնիր, մզի պարցուցիր։

Էդ տեղ կասայ.—Ես ղարիպ մարդմեմ, էրթամ, տեսիմ էդոնց դորտը ինչ ա, ընչի վրէն կը կռուին։

Կերթայ, կասայ.—Բարև ձեզի, աղբրտիք։

Էնոնք էլ բարև կառին։

Կասայ.—Ես ձըզի բանմ՛ ասէմ, չէք ըռըէի։

Ասին.—Աղբէ՛ր, ասա, թը աղէկ բան էղաւ, չընք ըռըէի։

Ասաց. Դու ընչի՛ վրէն կը կռուըտիք։

Ասին.—Դու մեր դարցին դարման կանեա էնիս։

—Ձեր դսեն դէմեց դէմ օր էղաւ, ձեր դարցին դարմանն կէնեմ։

Ասին.—Աղբէ՛ր, օր իմալ ա, էս սուֆրէն ղամչին կը տեսի՞։

Ասաց.—Խա՛, կը տեսիմ։

Ասաց.—Էսա պայքէն կը տեսի՞։

Ասաց.—Խա՛, կը տեսիմ։

Ասաց.—Էսա ֆօլոզ կը տեսի՞։

Ասաց.—Խա՛, կը տեսիմ, էսոց մարիֆաթ ինչ ա։

Ասաց։—Ինչ օր էս սուֆրէն, ղամչին մուրատ էնայ, մէկ աչք թարթելուն գալս գինից կեկի, ինչ որ էսա պայքէն ա, քանը չորս փակով դարկիս վրէն էրթայ, կը բայցուի յառէջ. ինչ օր էսա ֆօլոզ դնեմ գլօխս, քու աչիչ յառէջ չերևամ։

Էն մէկ կասայ.—Էսա պայքէն տամ էնու, էնի ղայիլ չէ. կասայ «ֆօլոզ տուր ընձիկ,» էն մէկն էլ կասայ, «Էսա պայքէն քըզիկ»...

Կասայ.—Աղըրտիք, որ յէմալ ա, էկէք, ձըզի բանմ կասեմ, պարցուցեմ, ընչի կռիւ կէնիք։

Կասայ.—Ինչ.

Կասայ.—Էսա տապրկի մէջ ինչ ա։

Կասայ.—Ալուր ա։

Կասայ.—Մէկդի ելէք, ցախ բերէք, մէկդ էլ ջա՛ն բերէք, մէկդ էլ ջո՛ւր բերէք, ես էլ խմոր կէնեմ։

Յան, ցախ, ջուր կը բերին. տղէն էլ խմոր կը շաղայ։ Ջոջ կլօճմ կը թխայ քընց սէլիմ՛ աև. յէմալ կը չորչուցայ, կենայ տաչեղ։

—Դէ՛, կասայ, մէկդի էդա կլօճ չալլէք, էրկուսդ էլ էդա ձեր սուֆրէն, ֆօլոզ, պայքէն առէք, էրթանք էն բանձր սարի գլուխ։

Կերթան էն բանձր սարի գլուխ կը կայնին։

Կասայ.—Դէ՛, տղէկներ, բոբկըցէք, քչտուէք, հազրուէք, խանէք, ձեր բաներ տուէք մը ձիկ. էսա կլօճ կը զանեմ, գըլըլըցըցեմ. ո՛վ մէկ բռնեց չուտ, իրեքն էլ կուտամ էնոր։

—Վայա, էսա մարդ, էս բան աղէկ ասաց. մի եղբալ կտռայ. էն կը բռնայ կլօճ։

Իմալ օ թալլըն զարկեց, մէկ էս տեղ՝ մէկ դնաց, դնա՛ց, հատու Հօռոմախմէն։

Էղոնք ընկեան կլօճի էտև, տղան նստաւ վրր սուֆրին, մու-րատ էնեց, ասաց.—Չըն-Մաչինայ քաղաք դո՛ր էս. էկայ քի։

Աչք դըռ ճալա չըր թարթեր էր, խասաւ Չըն-Մաչընայ քաղաքը։

Գնաց օր էն մարդիկ ընկած ա քիթ ու բերնի վերէն, անօթ-նէ ջուր բերններնուց կերթայ, կանչեց.

—Աղբրտի՛ք, աղբրտի՛ք, է՛լէ՛ք, ձեզիկ խա՛ց էմ բերերեմ։

Մարդիկ ելան, նստան, հաց կո՛ւշտ կերան. ուրենց խելք էկաւ ուրենց գլուխ, ուրենց լեզուն էլ բացուաւ։

Տղէն ասաց.—Աղբրտիք, էս խրեղէն ձիու կեսամ կուտամ ձեզի, էս խացն էլ կապէք ձեր քամակ, տանէք կղզիի միջի մարդեկնց, դախուն էն մարդեկաց մօտէն երկու մարդ բերէք էն ղրաղ, ազա-տէք էն մարդիկ նեղ տեղէն։

Էդ տեղ չնոխկլան գեացին։

Տղէն էլ էկաւ Չըն-Մաչընայ քաղաք. չանք իրիկուն պտտտեց, մէկ տուն գնաց, տեղ չտուեին, գնաց քաղքի պուճախ տեղ մէկ պառաւմ՝ կէր, էնդոր դուռ տփեց, խըտ տփելուն պառաւ դուս էկաւ։

Տղէն ասաց.—Մարէ, էս օր ընձի ղօճախ կը պախես։ Ասաց պառաւը.

—Սրքար օր կայ, Աստըծուն ա, մէկ գիշեր ա։

Գնաց պառաւու տուն, ջուլ չկէր, բան չկէր, բերեց փօսթմ թա-լեց տղի տակ, տղէն նստաւ, պառաւուց խարցուց.—Մարէ, քղի տղայ-բան ոկի ի՞նչ կայ։

Ասաց.—Բա՛ն չունեմ։

—Քու խսարէն (ապրուստ) ապա ինչո՞վ կը դառնայ։

—Ութէ ութ կերթամ թագաւորի խարսի գլուխ կը լուամ. քեա-նիմ՝ ղռուշ փարայ կիտան, բերեմ. իմ խսարէն կէնեմ։

Ասաց.—Ընձի քեզի չը՞ս էնես տղայ.

Ասաց.—Կէնիմ, քու ճկուռ կոռայ, արուն էլի, քղի չաղկի փողպտէն թալիմ տակ, քըզի էնիմ ընձի խոդեոդղի։

Տղէն պտտտեց տուֆճերու մէջ. պառաւու չոր բան առաւ. ձեռք մի եօրղան, դօշակ ուրին բերեց. մէկ պառաւուն բերեց. մնաց չում խարսի ութ քմեց. որ ութ քմաւ, էրկու խոտ վազիր էկան պառա-ւու տուն, պառաւուն կանչին։

Տղէն վերցուց, պառաւուն ինչ ասաց.

—Մարէ՛, քե բանմ, ասեմ, չլռըքիս. էդ թագաւորի խարսի իրեկ կա՞յ, ասաց.—Չկայ։

Ասաց.—Պա՛ էնու իրեկ դո՛ր ա գեացե.

Ասաց.—Էստ եօթ տարի ա գացե, կուրիսէ. Նէ սալըղ կայ, Նէ սուլուղ կայ։

—Մարէ, ասաց. բանմ ասեմ, որ կերթաս թագաւորի խարսի

գլօխ կը լուաս, կը պրծիս. օ գլուխ կը սանտրես, խանաքվեր սաս, «էս օր գչեր էրգի մէջ քու իրիկ էկեր էր. տես, ինչ կասայ»

Պառաւը առան դեացին. խալւոի գլուխ լուաց։

Էս խետ ասաց.—Խա՛րս, քե 'բանմ կասեմ, ինչ կուտաս իմ ակնջկլէն:

—Ի՛նչ օր քու լեզուն բոլորէ, կուտամ, ասաց.

—Էս օր գչեր քու էրիկ էկեր էր էրգի մէջ։

Խարս ժիր-ժիր չօրեր խագեաւ. վաղեց-գնաց սարէն, պառաւ վախեցաւ, փախաւ, էկաւ:

Խարսն Թագաւորի կնկան կասայ.

—Պառաւը կասայ, «քու տղէն էկեր ա»։

Էդ տեղէն Թագաւոր ուրախացաւ, ճամբխեց, պառաւ բերեց, ասաց.—Պառա՛ւ, տեսինք տղէն դո՞ր ա էկեր։

Ասաց.—Թագաւոր ապրած, խանաք էներիմ։

Էդա տեղ Թագաւոր կը հերոսթի, կասայ.

—Ես Թագաւոր էղիմ, դու պառաւմ էղիս վրը ընձի ծիծղաս, ասաց. պառաւուն յէմալ տփէք որ բամբկով ջուր կաթեցուցէք բերան։

Պառաւ տուեց համալիմ' քամակ, ասաց.

—Տարէք, Թալէք էրդիսէն տակ։

Տարին, գմփալէն Թալին տակ։

Պառաւ տղին ասաց.—Օր դու աղէկ տղայ էղնէր, չիր դէրւ ընձի էղնէր տղայ, դու ուղուրսուզ էս, «դու որ բուխ էղնէր, քո, խօր պատէն կախ կէղիր»։

—Մարէ՛, բան չկայ. ես էլ եաճլից գեացի, ընկայ քու մեղաց տակ։

Տղէն գնաց դեղ բան բերեց, պառաւը սպղացուց. ձեռք մը Թագաւորական չոր պառւուն կտուեց. ձեռք մը չոր էլ ուրին կտուեց։

—Մարէ, ասաց. գնա՛, Թագաւորին ակնձկլայ տուր Թէ քու տղէն կած ա խաս պաղչէն, ուր կնիկ, ուր ճարէն Թո գեան. տեսինքէ իրար։

Պառաւ գնա՛ց, ակնջկլայ տուեց։

Թագաւոր էլաւ, պառւու կչուանքով օսկի տուեց. բալալ էտու կանչել. «Թո մարդ, չէլի դուս. Թագաւորի խարս կերԹայ խաս պաղչէն»։

Թագաւորին խարս ու ճարէն դացին։

Իմալ օր աչք առաւ իրարու, էնի էն դեխէն, էնի էն դեխէն. վազեց, էկան. փաԹուան յիրար, որ ջուր լցես երկսի արանքով, չԹափի։

Տղէն ձի ալէս մարդում ասայ։

—Գնա՛, Թագաւորին սաս. մուզուֆով, չալխով գեան. ընձի տանին, էրԹան տուն։

Գնացին, թագաւորի խալս առան էկան տուն, եօթն օր, եօթն գիշեր ուրախութիւն էնեցին, պրծան։

Թագաւորի տղէն ու կնիկ գնացին ուրիշ օթախ։

Տղէն նստաւ, կնիկ մնաց կայնուկ։

Կնկան չարէն կտռաւ կռմաւ,—ասաց.

—Թագաւորի տղա՛։ Ասաց.—Ի՞նչ ա։

—Քո տուն աւիրի, ես կայնելով մեռայ. գողութեն չէներեմ, բոզութեն չեներեմ որ ընձնէ բուրճերիս։

Ասաց.—Կնիկ, գիտես, ինչ ապով ա քզի չըսիմ, արի, նստի։

Ասաց.—Ես ինչ գիտեմ։

Ասաց.—Ես ընկերիմ քո մեղաց տակ, արի՛ նստի՛։

Էկաւ, նստաւ, ուրախութեն էնեցին։

Թալալ կանչել տուեց որ մարդ չէլի դուս թագաւորի տղէն պտի էրթայ պաղչէն։

Գնացին պաղչէն. տղէն ծոցէն խանեց սուֆրէն նստան վրէն երկուսն էլ։ Ասաց։—Տէր Աստուած, դու ընձի ծովի միջէն վերցես, թալես էն ղռաղը։

Անելու պատտան դըռ աչք չթարթե, թալից ղռաղը։

Խարս չուարաւ, կայնան։

Ասաց.—Թագաւորի տղա՛, էսլաւ մարիֆաթ կէր քու մօտ, ինչու ընձի չուտ չասիր։

Նստան, խաց բան կերան։

Տղէն վերցուց.—Խա՛րս, ասաց.—Ինչ ա։

Ասաց.—Քե կը տանեմ Ջան Փօլատին։

—Տղա՛, Աստուած քու տուն աւիրայ, դու Աստըծուց չըս վախենառ, ընձի իմալ կը տանես Ջան Փօլատին։

Տղէն ուր գլխուց գալած ասաց, վերջին էլ ասաց.

—Ես քու իրիկ չիմ, որ չտանիմ քզի, ընձի կապանայ, որ քզի կը տանեմ, էնու խոգու տեղ իմցի, էնի ազատինք, քեզ էլ կը տանեմ, կերթանք մեր խօր երկիր։

Գնացին Ջան Փօլատի տուն։

Ջան Փօլատ ալլի տեղէն էկաւ, աչք առաւ կնիկ, թագաւորի տղին, ասաց.—Խալալ էղի քըզի, թագաւորի տղա։

Էլաւ քիանիմ' օսկի տուեց թագաւորի տղին, ասաց. գնա՛։

Տղէն էլաւ, fօլող դրեց, էլ էղոնց աչից չերեւաց։

Խըլուսուն էր, Ջան Փօլատ գնաց ալլի. խարս մէջի մնաց տուն, տղէն ա, մնաց մըտ կնիկ։

Ցիրկուն Ջան Փօլատ էկաւ, կնիկ ասաց,

—Քու խոզին տուր ձի, իմ բէյն էլի, խետ խաղամ։

Ասաց.—Կնի՛կ, իմ խողին մըջ աւլին ա։

Ջան Փօլատ դարձաւ, էկաւ օր աւլի խետ կը խաղայ։

—Սղորթ օ, կնիկ անմիտք կ'ըլլի, ասաց. աւլի մէջ էլ մարդու խոզ էղի. իմ խողին մէջ ձիու պոչին ա, չորս խատ մազ քաշայ, էնայ դամբուրայ, խետ խաղայ, չա՞նք ես գեամ։

Կնիկն ա, բերեց. . . . էնեց դամբուրայ. զանեց։

—«Ծընկըր-ծընկըր իմ դամբուրէն»։

«Առայ, յէլայ foef ու սարեն»։

«Իմ ձէն թօ գեայ Արաբ քեարէն»։

Ջան Փօլատ էկաւ, տեսաւ խըտ դամբուրին կը խաղայ։

—Հա՛յ քըզի հայ, մկայ տղէմ էղի. քզի մէկ խօսքով կը խափայ. կը տանի, ձիու պոչի մէջ էլ խոզի էղի։

Կատայ.—Կնիկ, իմ խողին բանձր սարն ա. էն տեխ խազալ կայ. իմ խոզին մըջ էնու փորուն ա. ղուքու մէջն ա. իրեք խատ ճնճղուկ ա. կէս օրէ կէսօր, ջոջ պալմ կայ, պալի տակ աղբուրմ կայ, գուգայ էն տեղ, ջուր կը խմայ։

Կնիկ տղէն պիթուն կասայ։

Տղէն ա, կը նստի վըր սուֆրին, մրաղ կէնայ։

Կը վերցէ, տղէն կը թալայ էն պալի տակ։

Կէս օրուայ չոքին ա, խազալմ ջուխտ-ջուխտ, խաղալէն էկան վըր աղբրին, տղէն, ա, տափէ քեարի տակ. խազալ գլոխ մեց մըջ ջրին, տղէն թուր քաշեց, զարկեց, գլուխ ընկեաւ մըջ ջրին, ջանդակ ընկեաւ վըր չմըճին։

Ավի տեղ Ճան-Փօլատի ղուտուն կոտռաւ։

Տղէն խազալի փոր ճղեց, ղուքին միչէն խանեց տեսաւ իրեք խատ ճնճուղ. էրկու ճնճղուկ մորթեց, մէկն էլ դնեց ղուքու մէջը՝ դնեց ուր ծոց. առաւ էկաւ։

Ջան-Փօլատ էկաւ, տեսաւ ճնճղուկ, խողին էլեր պորտ, ասաց.

—Արի, ղուքին տուր, էդ ճնճղուկն էլ ես մորթեմ։

Տղէն պարզեց օր տայ, կնիկ ասաց։

—Աստուած քու տուն աւիրայ. տաս՝ կելլի մեզիկ սպանայ։

Կնիկ ձեռնէն առաւ, թալեց վառման թօնդիր։

Ճնճղուկ էլ էդ տեղ իրիցաւ. Ջան Փօլատ փիցաւ։

Տղէն Ջան Փօլատին ինչ ղօրր մալ կէր, բարձաւ, ճամբախ ընկաւ, գնաց. «խօլ քաղաք, գո՛ր իս, էկայ քզի»։

Էդ տեղ տղէն ուրախութենէ օտքիր դետին չառնէ, թէ «էրկու ոտք ունէր ոտք մէլ ճարեց», խասաւ խօր խողին մէջ։

Տեսաւ դումբ ու զուռնայ կը զանին, խարցուց։

—Տղա՛, էդ ինչ դումբ ու զուռնայ ա։

—Վալա, թագաւորի տղէք 39 աղջիկ բերին, կարգուան, մէկ մացած ա, էն լէ ջոջ աղբէր կառի։

*Մէկ օսկի տուեց, ակնջկլէ տարին։*
*Էկան տարան Թագաւորի պալատ տղէն ու խարս։*
*Էն աղջիկ պսակեցին ջոջ աղբօր վրէն։*
*Չըն-Մաչընայ Թագաւորին լէ ուր վրայ։*



# 26

# ՇՆՈՐՀԱԼԻ ԱՂՋԻԿԸ



**(Արծկէի բարբառով *)**

*Թագաւորը դնեց վըր լալին.—Բննէ կուզեմ մէկ դէչ* եմակ, *դէչ ամնիմ մէջ, դէչ մարդում ձեռ, բերայ. չէ, վիզդ կը զարկիմ։*

*Ասաց* լալէն ուռուսխաք *տու, էրթամ, բերեմ։*

*Էն տեղէն* լալէն *էկաւ տուն, օխէմ ցորեն խաշեց, էնեց վռիկ, թալեց հողէ ամնիմ մէջ, տուեց ընձի պէս* ըունճպըրիմ *ձեռ. առաւ, դնաց Թագաւորի* հուզուր, *Թագաւոր հարցուց.—Տղէս, էդա ինչ կերակուր ա։*

*Ասաց։—Թաւաւոր* սաղ *կենայ, կերակուր ա։*

*—Գիտեմ, կերակուր ա. մէրանը ինչից ա։ Ասաց.—Մէրանը ցորեն ա։*

*Ասաց.—Դա ամանը ինչից ա։ Ասաց.—Հողից ա։*

*Ասաց.—Դու ինչ գործով ես։ Ասաց.—Աստուծոյ ծառան եմ։*

*—Որդիս, ասաց. մենք յըմենս լէ Աստուծոյ* ղուլ *էնք. դու ինչ բանով կաչխատիս։ Ասաց,—Ես* ըունճպար *եմ։*

*Էլման դնեց վըր* լալին*—*Լալա՛*, ասաց.—Հա,* ճեւէերլիմ, *ասաց.*

*—Բենէ կուզեմ, ասաց. մէկ դէչ* եմակ, *դէչ ամնի մէջ. դէչ մարդու ձեռ։*

Լալէն ռուսխաք *առաւ, ետ դարձաւ, էկաւ տուն. «Լուն՛ըն-կի ճակտէն, կեղի խազար կտոր». մըրթընեբ կախեց, նստաւ տուն, «քըտինք տուեց վրէն», «քըտինք կուգայ, քըտինք կը պաղի»։ Էդոր*

* Պատմած է Նոյն Դալիբ:

մէկ աղջիկ կայ, ըսկի ավլաց-թալլաց չկայ. էկաւ, էդ աղջիկ ընկեաւ խօր միգնուվէր, ասաց.—Ափօ, յըսօր ըսկի ընձի եմիշ, բան բերեր ես։

Աղջկէն զարկեց.—Ճեյնըմի՛, գնա դէն, ասաց. յըմեն օր քըպի քեյֆ կայ, էս օր ընձի չկայ։ Սրտի քեարպէն աղջկան էնեց գող ու բող։

Աղջիկ գնաց. մէկ սահաթ խաղալ զատանց կայնաւ. դարձաւ, խօրն ասաց.—Ի՞նչ վաղց գողութեն, բողութեն էներեմ։

Ասաց.—Լաւօ, իմ սրտի քրպէն. Թագաւոր դնէ վըր ընձի, «Քենէ կուզեմ մէկ դէչ եմակ. դէչ ամնի մէջ, դէչ մարդու ձեռ, բերայ ընձի», մկայ չգիտեմ։

Ասաց.—Ափօ, փրցըցող Աստուած կը փրցուցայ, քու տուն չաւիրի. էդի մեր դռան առջի դըլէճ արտն ա.» էդոր խամար էկեր ես չաւար. «զարնան սնկեան պէս դլօխդ քըքըներ ա». (զարնան սունկ ջոջ կեղնի)։ Ասաց. դէ՛, գնա՛, հօխեմ բըինձ առ, արի. գնա՛, ժանգռոտ պղինձ մի առ, արի, որ քսան տարի սըբած չէղի. մէկ հատ էլ ռնփեսէմ՝ գտի, էլ քե լաղայ չկայ։ Ես կը չքեմ, դու տար Թագաւորին. Թագաւոր օր ղայիլ չէղաւ, ասա՛. էսօր ուսէն իմ աղջիկն ա, թո տանի, իմ գլօխ զանի։

Աղջիկը բերեց, չքեց, ռնփեսին աղէկ, սիրուն չոր խաղուց. սահաթմ մէկ թեէն կախեց, մէկ մէկ թեէն, եմակ տուեց էդ ռնփեսի ձեռ, տռան. էրկըսով գնացին Թագաւորի հզուր, գլօխ իջուցին։

Թագաւոր հարցուց.—Տղէս էդ եմակ ինչ եմակ ա։ Ասաց. —Եմակ ա, Թագաւոր։

Ասաց.—Գիտեմ, եմակ ա, մէրանը (նիւթը) ինչից ա։ Ասաց. Խաշից ա։

Ասաց.—Էսա ամանը ինչ աման ա։ Ասաց.—Աման ա։

—Գիտեմ, աման ա, մէրանը ինչ ա։ Ասաց.—Մէրանը պղնձից ա։

Ասաց.—Դու ինչ մարդ էս, ինչ գործ կը կատարես։ Ասաց. —Աստուծոյ ծառան եմ։

—Տղէ՛ս, ասաց, մենք յըմենքս լէ Աստուծոյ ծառան էնք. դու ինչ մարդ էս։

Ասաց.—Ես լէ ռնփեսայ եմ, Թագաւոր ապրած։

Ասաց.—Ապրիս, տղէս, դէ գնա՛։

Էդ տեղ լալէն ուրախացաւ, Թագաւոր դնեց վըր լալին, ասաց. —Էս մարիֆաթ մըտ քէն չկայ, քէն ա՛ն սովրըցուց, քեզնէ կուզեմ։

Ասաց.—Թագաւոր սաղ մնայ, ընձի մէկ խատ աղջիկ կայ, տասնը խինգ տարեկան, էն ա։

Ասաց.—Էն աղջկայ հող մըր քու գլխուն էղի, գնա́, ղուրպան էղի էնոր, չէ՛, քու գլօխ պտի զարկի։ Ասաց Թագաւոր.—Գնա́, էն աղջկէն սա́, ընձի չառնի։

Լալէն ուրախալէն վազէ վազ էկաւ տուն, աղջկէն սաց.

Աղջիկ խօր ասաց.—Գնա́, Թագաւորին ասա թէ կառնեմ։

Գնաց, Թագաւորին ասաց։

Ասաց.—Գնա́, քու աղջկէն ասա, ղալան ինչ կուզայ։

Էկաւ, աղջկէն սաց. Աղջիկ ասաց.—Ղալան։ Ասաց.—Խօ́։

Ասաց.—Ընտրնէ կուզեմ տասնըխինգ ճիճակ. կուզեմ քառն խոչ, կուզեմ եռսուն ալան, քառսուն ղափլան, յիսուն իշիկ, վաթսուն այկըռ, եթմիշ ջորի, սեքսան դէվա, դօխսան խեւլք, խարիր Ձարասար։

Լալէն ուրախէլին վազեց, գնաց, Թագաւորին ասաց.

Թագաւոր ասաց.—Լալա, էդ քու աղջիկ ուրիշ բան ա կուզայ, էդոր պատասխանը քինէ կուզեմ, թէ չէ գլօխ դի կը զարկեմ։

Ասաց.—Եամա́ն, Թագաւոր, խողի կազատես։

Ասաց.—Գնա́, քու աղջիկ առ արի։

Էկաւ, աղջիկ առաւ, գնաց։ Աղջիկ գնաց, ձեռ կապեց Թագաւորի ճուզուր. գլօխ իջուց, յետ կայնաւ։

Թագաւոր ասաց.—Աղջի́, ես քի ինչ ասեցի, դու ընձի ինչ ասեցիր. ես Թագաւորմ էղեմ, դու աղջիկմ էղես, էդա ղսէն ընձի ասե́ս։

Ասաց.—Թագաւոր սաղ մնայ, դաստուր տուր, էրկու բերան ըրուցեմ։

—Քե ռուխսաթ, սա́, մէկ խապարմ պակաս էղաւ, գլօխդի կը զարկեմ։

Ասաց.—Ես տասնըխինգ տարեկան ճիճակ եմ. ձի պտի քառն տարեկան խոչ, որ ուրախութեն էնենք։ Ես եռսուն տարեկան ալան եմ, ձիկ պտի քառսուն տարեկան ղափլան. որ ձի կառաւորէ։ Դու էղեր ես յիսուն տարեկան, քե պտի վաթսուն տարեկան կնիկ։ Դու էղեր ես եթմիշ տարեկան, ջորու պէս բան մի, քեզնէ նեւթ չկայ, քե պտի սաֆսան տարեկան կնիկմ ամայի կցցկռ։ Ես յուստ դտնեմ դօխսան տարուան խեւլք, խարիր տարուան Ձարասար որ քըզի կնկնութեն էնայ. դու էլ ասես թէ ընձի կնիկ կայ։

Ասաց.—Որդի́, գնա́, ես յիսուն տարի Թագաւորութեն էնեցի. մարդ ընձի չէր ծալեր խօսքով, դու ընձի ծալեցիր. դուն իմ խոդակեն որդին ես, աղջիկ, քե էրկու խարիր օսկի բարխան կապեցի։

Լալին էլ ասաց.—Դէ, էլի́, գնա ուրիշ տեղ, իմ աչքին էլ չերևաս. դու Ձայլութենի խարճ իս։



# 29

## ԱՐԵՒԵԼՈՑ ՈՒ ԱՐԵՒՄՏՈՑ ԹԱԳԱՒՈՐ

(Արծկէի Աւրնջկոյս գիւղի բարբառով *)

Երկու մարդ էղան դասէբրայ (իրար ձեռք բռնելով եղբայր լինիլ) ախպէր, ասենք մէկ մարդ մէկ գեղէն, էն մէկն էլ ուրիշ գեղէ էղի։ Էս գեղի մարդ կանչեց էն գեղի մարդուն պատիւ. էն մէկէլ օր էն գեղի մարդ էս գեղի մարդուն կանչեց. էս գեղի մարդ լէ էն էկող մարդուն ասաց.

—Դու գնա, ես կուգեամ։

Անգեան վախք էր, էս մարդ էլաւ, գնաց. գնաց չուրի էն գեղի մօտ, ճամբախ գերեզմներու միջով կընցնէր, տեսաւ օր Եակեանին տեղ մէկ մարդ էդոր յառէջ կայնաւ. էդ մարդ միատակ չապկով ու թումբեռով անազին բէդ-մեծ մարդ էր. էս մարդ օր տեսաւ, վախեցաւ, լեզուն առուաւ։ Էդ գերեզմններու միջու մարդ ասաց.
—Ախպէր, քու լեզուն յորճ առուաւ, եալէ քե պէս մարդմեմ. դո՞ր կերթաս, ընձի օղորթն ասա։

Ասաց.—Ես քեզի տեսայ, վախեցայ, չեմ կեառնայ օղորթն ասեմ։

—Չէ ես էլ քե պէս մարդմեմ. օղորթն ասա։

Ասաց.—Կերթամ իմ ախպօր տուն ղօնախ:

Ասաց.—Ես էլ կուգեամ քու ախպօր տուն ղօնախ։

—Ախպէ՛ր, որ դուն գեաս. ես չեմ էրթայ։

—Ցորին ես որ գեամ խըա քե, դու չես էրթաս։

Վերուց ասաց.—Ես որ քեզի տեսայ, վախեցայ. խըա քե ճամբախ չեմ էրթամ, իմ ախպօր ճժեր տեսնին, կը վախենան։

---

* Պատմած է Դաւիթ Մուղսի Յարութիւնեան.

Ասաց.—Մը վախենայ, էդ ախպօր կուշտ դո՛ւ գիսի կը տեսիս, քու ախպէր, քու ախպօր ճժեր չտեսին ընձի։

Էլման ասայ.—Խըտ քե ճամբախ չըմ իդեայ։

—Քե կասեմ արի՛, էրթանք, չե՛ս յիդեմա, քու ճիվ կը բռնեմ. քե տփեմ իդա քար, խազար տարի էդա քարից չպրծնիս։

Էս մարդ փօւմնաւ, ասաց.—Ախպէ՛ր, դո՛ւ, քու Աստուած, քելայ էրթանք։

Գեացին ախպօր տուն, դօնախ էղա՛ն։

Էդ ախպէր վերուց.—Ախպէ՛ր, դու բարով, խազար բարով. դու վըր իմ գլխին, իմ յէրսին էկար։

Էլ մէկէլ մարդու խօսք չէղաւ։

Էն ախպէր ուր կնկեան ասաց.—Կնի՛կ, իմ ախպէր ճամբխուց էկե, մկայ անօթի ա։

Կնիկ յէլաւ, առաւ էրկու ֆասէ, էրկու խաց. էկաւ, մէկ դրեց մարդու, մէկ ուր ախպօր յառէջ. ամեկը մէ մէկ բրդուճ ուրենց ֆասից կերան։

Էդ գերեզմներու մարդ որ գեացեր էր, չերեէր, բրդուճ զարկեց. վերուց դրեց բերան, էրկու ֆարադաճն էլ սրբեց, բա՛ն չթողեց ինե։

Մարդը վերուց.—Կնի՛կ, ասաց, գնա՛, իրեք ֆասէ կերակուլ լի՛ց, առ արի։

Կնիկ գնաց. լցեց, առաւ էկաւ։

Էլման մէկ մէկ բրդուճ առան, էլման գերեզմնի մարդ իրեք ֆասէն սրբեց, դրեց բերան. էլման մարդ կնկեան ասաց.—Կերակուլ առ արի՛, կնիկ։

Էս մարդ ասաց.—Հերիք ա. շնորհակալ ե՛նք. կշտացանք։

Կերան, խմեցին, էն մարդ իզին էտուր, էլան գնացին։

Էդ գերեզմներու մարդն էլ խետը էկաւ, գերեզմնի մէջ կայնաւ, ասա՛ց.—Էդ աղեկութեն օր դու խըտ ընձի էնեցիր, արի՛, էրթանք, էդա աղէկութենի տկէն յէլնիմ։

Ասաց.—Ախպէ՛ր, որ դու ձիկ աղէկութեն կենես, դո՛ր կը տանես։

—Ընձի էլ տուն կայ, արի՛, էրթանք։

—Ախպէր, քու տուն յո՞ւր ա։

Ասաց.—Էս տեղ։

Ասաց.—Զե՛, էսի գերեզման ա։

Ասաց.—Ախպէր, աղէկ մտիկ էրա ընձի, արի՛, էրթա՛նք մեր տուն, փչում նստինք, էրկու խապար խըտ իրարու զրուցինք։

—Սպանես, ես չեմ իդեամ. կը վախենամ, ընձի խափես, զաքի դու մեռուկ իս, ընձիկ էլ տանես, մեռուցես։

Էդի վերուց.—Ախպէ՛ր, կուզեմս, արի՛, չես իգեաս, քու ճիվ կը բռնեմ. տիրեմ էդա քեար, խազար տարի կպիս էդ քեար, չպըրծնիս։

Էդ մարդ վախեցաւ, ասաց։—Ախպէ՛ր, դո՛ւ քու Աստուած, քէլ՛, էրթանք։

Գեացին էդ մարդու տուն, նստան, մէկ-էրկու սահաթ խըտ իրարու զրուցեցին. էս մարդ տեսաւ մէկ օձմ պատէն քաշուաւ, էկաւ տան մէջ կայնաւ։ Էդ գերեզմներու մարդ գնաց, լեզուն դրեց մըջ օձու բերնին։ Օձը էրկու սահաթ էդ մարդու լեզուն ծծեց. էդոր խելք գլխուց առաւ, որ գլխուց առաւ, էգ օձ քաշուաւ էդ ծկէն, էլման գնաց։

Էրկու սահաթէն էդ մարդու խելք էկաւ գլուխ։

Էդ մարդ էլաւ, ուր գլխու գալած պատմեց էս մարդուն։

—Ախպէ՛ր, ասաց. յիմցար էդ օձ ինչ էնեց իմ գլուխ։

—Ախպէ՛ր, էդի ի՛նչ բան ա, որ քու գլուխ էնեց էդ օձ։

Ասաց.—Էս օձ արևմտոց թագաւորի աղջիկն ա, ես էլ արևելոց թագաւորի տղէն եմ. ես որ սաղ ի, էս աղջիկ ուզեցին ընձիկ. եգ գեացի, տեսայ էս աղջիկ սև էր, իմ սիրտ չկպաւ, գեացի ուրիշ աղջիկ առայ ընձիկ. ես որ ուրիշ աղջիկ առայ, էս աղջիկ սաղ ա, կուզեայ, ընձիկ կը չարչարայ, չթողէ ես իմ տեղին մէջ դինճ մնամ. կուզեայ ուր նէֆս խըտ ընձիկ կը կոտռէ, ու կերթայ։

Էս մարդ ասաց.—Ախպէ՛ր, քենէ կը խնդրեմ, ընձի իզին տաս, ես էրթամ՝ խասիմ իմ տան, իմ տուն մարդ չկայ։

—Քեզ իզին կուտամ, էս բան որ իմ գլուխ էկաւ, դու իմցար. կը խնդրեմ, էրթաս չուրի արևմտոց թագաւորի մօտ, հալալութեն առնես, ես դինճանամ։

Էս գեղի մարդն էր, յէլաւ դուս, էկաւ տուն. տեսաւ տուն չկայ, գեղ խարապայ էղեր ա, սկի նշան էլ չերևայ. կասես խազար տարուայ խարապայ էղի։

Էլաւ գնաց մէկէլ գեղ, տեսաւ էդ էլ աւերեր՝ չենլըկ չկայ։

Օրմ, էրկու օր, իրեք օր, ամիսմ, էրկու ամիս պտտեց, տեսաւ որ ուր տեսած ու սըտտատած գեղ ու քաղաքներ չկան. աշխար պիրուն աւեր դարձած ա։

Էս հալին միտք ընկաւ էդա գերեզմներու միջու մարդու խօսք, ուրբին-ուրին ասաց.—Պտի էրթամ, դո՛ր որ էդի արևմտոց թագաւորի աղջիկ գտնիմ, խնդիրք կատարիմ։

Էդ մարդն էլաւ, օրմ, էրկու օր, խինգ տաս որ ճամբախ գնաց, տեսաւ մէկ ըխտըյար մարդմ, ճամ՛բխու խետ կուգիայ, ասաց.—Էրթամ էդ մարդու մօտէն խարցուցեմ, սկի էս տեղրանքը չենլըկ չի՛ տեսեր ա։

Գնաց, ասաց.—Պապիկ, էսլա բան էկեր ա իմ գլուխ, ըսկի էս տեղըրանք շէնլլկ չտեսեր ես։

Էդ խալիւոր վերուց։—Որդի՛, ասաց. ես չըմ տեսեր էս տեղըրանք շէնլլկ, իմ խէրն էլ չտեսեր ա, իմ պապու պապէն էլ ապրեր ա իրեք խարիր տարի, էն էլ չտեսեր ա, որդեակ, էդ փորձանք որ ձեռ տուեր ա քու գլուխ, խազար տարին ընցեր ա։

Ելաւ էդ պապիկ Թողեց էկաւ դէս, ինք բռնեց ճամբախ, գնաց։ Օրմ, էրկու օր, խինդ օր, տաս օր գնաց. տեսաւ մէկ պօզ ձիաւորմ, եափունճէն վրուն քեամակից էն յըմալ կուգեայ, ղուրղուշունի պէս էկաւ, խասաւ էդ մարդուն։—Բարև քե՛, ախպէր, ասաց.—Աստուծու բարին, խազար բարի դու էկար։

Ասաց.—Ձե՛ս էղիս ընձի ախպէր։

Ասաց.—Խա, կեղիմ ախպէր։

—Դէ՛, ասաց, քչում խեծի ձին, դինճացի.

Ասաց.—Ինճէ՛, փչում էլ ես խեծիմ։

Գեղիմ՝ մօտկըցան, ձիաւոր ասաց.—Գնա՛ էդ գեղ, չանք ես կուգեամ, օր խասար գեղ, էդ գեղին մէջ տեղ մէկ խարուստ տուն կայ, էդ տան իրեք խատ դարաւուլ (գիշերապահ) կայ, էրկուս աջակողմ կայնած, մէկ ձախակողմ բարև կայնած, էն էրկու աջակողմին բարև կառնի, ձախակողմինը քու բարև չառնի, գնա՛ էնոնց յօղէն նստի, չում ես խասիմ քե։

Ձիաւոր մնաց էդ տեղ, էդ մարդ լէ ելաւ էկաւ գեղ. պտոտեց, գեղի մէջ տեղ խարուստ տուն գտաւ, տեսաւ էրկուս աջակողմ կայնած՝ մէկ ձախակողմ. բարև տուեց. աջակողմն բարև առան, ձախակողմ չառաւ։ Գնաց էդոնց յօղէն նստաւ։

Էդ ձիաւոր օր նստաւ, մարդ էդոր էրեսն չէկաւ. մարդ չխարցուց, մարդ բարև չտուեց, «դո՛րմի կուգեա, դո՛ր կերթա», չասաց։

Էդ մարդու նէ խաց բերին, նէ ջուր, նէ՛ բան։

Մնաց չում յիրկուն, ճրագ վառին, մարդիկ լցուան էդ յօղէն։

Էս մարդ տեսաւ էն ձիաւոր էկաւ, ուր ձին կապեց, խոստուեց. էկաւ յօղէն, պարկաւ։ Էս մարդ կու տեսի, մնացած մարդ չտեսին։

Էն ձախակողմի մարդ որ բարև չառաւ, էդոր գլուխ ցաւաց. ասաց.—Բարձմ բերէք, դնեմ իմ գլխու տակ։

Էն ձիաւոր մարդ եափունճէի տկէն՝ խրեղէն սուր խանեց, զարկեց խիւանդ մարդու կողին, խիւանդ մա՛րդ ասաց.—«Քէասիպլ մալն եմ կերերեմ, տուէք. Ֆլանճէսի եղն եմ գողացեր, տուէք. էն մէկէլի ցորեն եմ կերեր. մէկէլին լէ փարէն, ինճեար էմ էրեր, տուէք։ Ինչ օ գողութեն, բզզութեն, մարդասպանութեն, աւերութեն էներ էր, ասաց։

Էդ ձիաւոր մարդ էդոր խոդին առաւ։

Էս մարդ՝ ուրին-ուրին մեզեց. «Էս օր չփախիմ, իմ խոդին էլ պտի առնէ»։ Էլաւ չարող, գուլպայ զարկեց ընթի տակ. բոբկցաւ ու փախաւ։ Քանի մութ ա, փախաւ.—Եփոր էդ ձիաւոր կուգեայ, կընցնի, ես կելիմ, ասաց։

Էս մարդ քարի տակ մտաւ, չմտաւ, էդ ձիաւոր խասաւ, ասաց.—Ախպէր, դու իմ ինչ վատութեն տեսար. յորէ մտար քարէ տակ։

Ասաց,—Ախպէր, ես քեզնէ վախեցայ. օր իմ խոդին էլ պտի առնիս. էն յապով էկայ մտայ էս քարի տակ։

—Ախպէր, ասաց. մը վախենայ, յէլի, էրթանք։

Ցէլան գեացին։—Ախպէր, նեղացար, արէ, ձին խեծի, փշում դինջացի։

Փշում գեացին, էդ մարդ ասաց.—Արի, փշում էլ դու խեծի։

Գեացին-գեացին, գեղիմ մօտկըցան. էդ ձիաւոր յառէջ ճիմալ սովրցուց, էլման յէմալ սովրցուց, գնաց էդ գեղ էս մարդ։

Գնաց, պտտտեց, գեղի մէջ դտաւ խարուստ տունր. տեսան էլմ մէկ աջակողմ կայնած էն, էրկուս ձախակողմ. բարև տուեց։

Աջակողմ կայնացող բարև առաւ, ձախակողմը չառաւ։

Գնաց, յօղէն նստաւ։ Էս մարդուն էդ յօղի տէր շատ իքրամ էնեց, ջուր, խաց, չայ, ղայլայ բերեց, օտքերը լուաց, սօֆրա էս մարդուց խարցուց։

—Ախպէր, դու ինչ մարդ էս, դօրվի կուգեաս, դօր կերթաս. ինչ բանի էս։

Ասաց.—Ի՛նչ կը խարցուցէք ձի, ես ղարիբ ճամբորդ եմ. էկեր եմ, կերթամ։

Ծրագներ կը կպուն, շատ մարդ յօղէն կը լցուի, տեսաւ ուր ախպէր էկաւ. ձին քեաշեց փակեախ, խոտ տուեց, էկաւ յօղէն։

Էդ աջակողմի մարդ օր էսօր բարևը առեր էր, ասաց։—Իմ գլուխ կը ցաւայ, բարձ մի բերէք, դնեմ իմ գլխու տակ, մէկ ջղարա թութուն վէ մօտ կայ. տայ ընձիկ, իմ քէֆ բացուի։

Ասելու բաշտան էդ եափնջով ձիաւոր, ուր եափնջի տկէն խանեց անմտխական խնձոր, տուեց էդ մարդու քթի դէմ. տեսաւ օր էրկու-իրեք անգամ տուեց էդոր քթի դէմ։ Մէկ էլ օր տուեց, էդ խիւանդ ասաց.—Օ՛խա՜շ, իմ խոդին բռանիարքաւ։

Էդ_խիւանդ ասաց.—Էլ խնձոր կա՞յ, մէկ խնձոր էլ տուէք իմ քթի դէմ, իմ ջան չիտակ բռանիարքնայ։

Էս մարդ տեսաւ օր էդ ձիաւոր մարդ անուշութենով էդոր խոդին առաւ, քակեց տարաւ։ Էս մարդ ասաց.—Էսի իմ խոդին էլ կառի. չէլլիմ, էդ մարդու մօտէն փախիմ, էրթամ։

Ցէլաւ, գիշերով փախաւ, գնաց. գնաց, մտաւ մըջ ծովուն, որ էդ մարդ չգեայ, ուր խոգին առի։

Խըտ մտնելուն տեսաւ էդ ձիաւոր էկաւ, խասաւ, ասաց.—Ախպէր, չէ խըտ քե ախպէր էնք եղած, յորէն կը մտիս ջըին մէջ էդա ցըտուն. էս պաղին, քու զօռ ինչ ա։

—Ապա ես ի՞մալ էնեմ, ես չմտիմ ջրի մէջ դու իմ խոգին կառիս։

Ասաց.—Ախպէր, ես ու դու էղերինք յիրարու մարդ, ես Աստուած չեմ որ քու խոգին առիմ, արի, փչում խեծի ձին։

—Մարդ, ես խըտ քե համբախ չեմ յիգամ. արի, սա, տեսնինք դու ինչ մարդ իս, ես կը վախենամ։

—Քե ինչ պէտք ա, ես ինչ մարդ կեղիմ. արի, էրթանք։

—Մարդ, ասաց. արի քու անուն ընձի ասա, որ խաւատամ. գեամ։

Ասաց.—Ես Գաբրէլ խրեշտակն իմ։

—Մարդ, դո՞ւ որ Գաբրէլ խրեշտակն ես, էն մարդու խոգին յորէ՞ չարչըրեցիր, առար։

—Աստուած յէմալ խրաման էնեց, էնի չատ fեասիպ, fիւսիւպի մալ կերեր էր, աղքատի խոր ճղեր էր, չատ մարդ սպաներ էր, դռներ կոտրեր էր, աչք ուր մալ չէր, խլղի մալին էր. կուզէր խլղի մալ էներ ուրին մալ. էն յապով չարչըրելով էնոր խոգին առայ։

—Մարդ, էն յէմալ, պա էն մէկիլի խոգին յորէն բռահաքութենով առար։

—Էնի ժամ գիգէր, պատարագ կէնէր, խեր խերեաք կէներ. աղքատին խաց, չոր կուտէր, աղբուր կը խաներ, ժամ կը չքէր. էնոր աչք խլղի մալ չէր։

Ասաց.—Դո՛ւ օ Գաբրիէլ՝ խրեշտակնես, իմ խոգին ինչ վախտ կառիս։

Ասաց.—Դու կերթաս արեմտոց Թագաւորին եօթ խատ տղայ կայ, որ գնացիր իսկի բարև չես յիտար. քընց էնոնց վէր կը նատիս, էն մարդիկ քըզնէ կը վախենան, կասեն. «Յիսուս, Քրիստոս. էսի ինչ ա, չա՞րք ա, ․էկաւ քընց մեզի վէր նստաւ»։Քեզի օ կասեն՝«դու ո՞ն ես». ձէն չտաս. քեզի կասեն, «կուռօ, դիլ fի՞յե». ձէն չտաս։ Քեզի օ չատ կը նեղացուցեն, դուն էլ ասա.—«ես էկեր եմ մըտ ձեզի, խնդիր կայ». էնոնք քե՞ կը խարցուցեն. «քու խնդիրք ինչ ա, ասէք, մենք կատարենք». դու էլ ասա՛։

—Քու քուր տուերէք արևելոց Թագաւորի տղին, տղէն սաղիfեանճ էկաւ քու քուր տեսաւ. fօռ էր, թոփալ էր, սախաք էր. չառաւ, մկայ էն մարդ մեռեր գացեր ա ճախ, քու քուր մացեր ա Ճանճախ. մըկայ չաբաթ խետ, էրկու չաբաթ խետ, իրեք չաբաթ խետ քու քրոջ Ըրզիս կերթայ, չթողեր էն մարդ գերեզմնի մէջ

ըռըհաթ մնայ։ Էդ յապով է կերիմ մըտ ձեզի, իմ խնդիրք պտի կատարէք։ Էն օր օ քու խնդիրք կատարեցին, ասաց Գաբրէլ խրեշտակն, էն օր քու խոգին կառնի։

Էս մարդ մէկ օր, էրկու օր, իրեք օր գնաց, գնաց արիմտոց Թագաւորի տուն, մտաւ ներս. քընց տղէկներ վեր նստաւ, առանց բարեւի, առանց բանի։ Էն Թագաւորի տղէկներ չատ վախեցան. ասացին.—Էս ինչ մարդ ա, քընց մեզի վեր էկաւ, նստաւ։

Ասին.—Դու ինչ մարդ էս։ Ձէն չտուեց։

Ասին.—Օլան, սէն քիմսան։ Ձէն չտուեց։

Ասին.—Կոռօ, դիւ քի՞յէ։ Ձէն չտուեց։

Էդ տեղ չատ վախեցան, չատ էդ մարդուց խարցուցին։

Էդ մարդ վերուց, ասաց.—Մը՛ վախենաք, ես էլ ձեր պէս խոգածին եմ. էկերեմ մըտ ձեզի. մէկ խնդիրք կայ, կատարէք։

Թագաւորի տղէն վերուց։

—Քու խնդիրք ինչ ա. ընձի ասա, ես կատարեմ։

Ասաց.—Քու քուր սաղ իքեան տուած ա արեւելոց Թագաւորի տղին. Թագաւորի տղէն էկաւ, քու քուր տեսաւ. տեսաւ օ քօռ էր, թոփալ էր, քեչել էր, չառաւ. էն մարդ մեռեր գացեր ա հախ, քու քուր մացեր ա նահախ, քու քուր էրկու չաբաթ հաղմ կեղի օձու պէս, կերթայ էն մարդու կուշտ, չթողուր էն մարդ ուր տեղի մէջ ըռահաթ մնայ։ Ես էկերիմ մըտ քե, օր էդ խնդիրք կատարես։

Էդի ասաց.—Դու նստիր էդ տեղ, չում ես էրթամ մըտ իմ քուր, թէ ձի լսեց-լսեց. քու խնդիրք կը կատարեմ, թէ չլսեց, կուգեամ։

Թագաւորի ջոջ տղէն էլաւ, գնաց մըտ ուր քուր, ասաց.—Քո՛ւր, արեւելոց Թագաւորի տղէն-քու նըշանլուն մեռեր գացեր ա հախ, դու մացերես նահախ.* արի՛, խալալութեն տուր, ուր տեղ ըռահաթ մնայ։

Քուր վերցուց ուր ախպօր ասաց.—Ինչ ղնդար ես տանջանք կը քաշեմ, էնի եօթ անգամ քընց ձիկ աւելի տանջանք քաշյ։

Տղէն էլաւ էկաւ, էս մարդուն ասաց.—Ախպէ՛ր. քու խնդիրք չկատարաւ։

Էս խետ Թագաւորի ջոջ տղէն ուրնէ պզտըկին ասաց.—Ախպէ՛ր, յէլի դո՛ւ գնա, կեղի էդ խնդիրք դո՛ւ կատարես։

Իմալ էդ ախպէր գնաց մըտ քուր. քուրն առաւ (սկսեց),

---

* Ժողովրդեան հաւատքով մահը իրաւունք է. իսկ երկար ապրելը անիրաւութիւն. նաեւ անիրաւութեամբ կեանք վարելէն աւելի լաւ իրաւունք է մահը։

էտուր fաւծr. խէր fծrsեց, մէր fծrsեց, պա ասաց.—Գնա, հեռը-ցիր, մը գար իմ աչքի դէմ։

Էդ էլ էկաւ. նստաւ ուր տեղ, ուրնէ պզտիկ ախպօր ասաց. —Ախպէ՛ր, դու գնա, կեղի օր խօսքմ խսակըցուս։

Էն էլ էկաւ մըտ քուր։—Քո՛ւր, ասաց. էկերեմ մըտ քե, խըն-դիրք կայ, պտի կատարես։

Քուր վերուց.—Ո՛ն օ էդա խնդիրքի յապավ գեայ մըտ ձի, էնոր լեզուն թուք էլի, էդ խնդիրքի յապով չգեայ մըտ ձի։

Էդ ախպէրն էլ փոր-փօշման էկաւ, ուր տուն նստաւ, վերուց։
—Վերին դէն Աստուած, ներքին դէն պզտիկ ախպէր, թէ կա-րաց էնի բանմ էնայ։

Պզտիկ ախպէր յէլաւ, գնաց մըտ քուր, քուր ասաց.—Ախպէ՛ր, յորի՞ն էկեր ես։

—Քո՛ւր, ասաց. էն քու նշանած՝ արևելոց Թագաւորի տղէն մե-ռեր ա ճախ. դու մացեր ես ճանճախ, էկերիմ մըտ քե, որ էն մար-դու խնդիրք կատարես, որ ուր տեղ ըռահար մնայ։

Քուր վերուց։—Գնա՛, էն խնդիրք բերողի մօտ. ասա՝ թը ըն-ձիկ կառի, ընդոր խնդիրք կը կատարիմ։

Պզտիկ տղէն էր, դարձաւ, էս մարդուն իմաց տուեց։

Էս մարդը ասաց.—Հա՛, կառիմ. գնա՛, ասա՛։

Քուր վերուց։—Գնա՛, էն մարդուն ասա, թը իդեայ մը ձիկ, ես բանըկի քուլի մէջ դրուկ իմ, ընձի տարէք խըտ էն մարդուն պսակէք։

Էդ պզտիկ ախպէր ուր քուր բամըկի քուլի միջէն դրկեց. տա-րաւ ժամտուն, հոնի էս մարդու խետ պսակեցին։

Տուն բերելու բաշեան աղջիկ յօղի մէջ էղաւ 15 տարեկան խուրնիկ խըեղեն աղջիկմ ու էն մարդու խնդիրքը էն տեղ կատարեց։

Էն աղջիկ, էս մարդ քնան չում կէս գիշեր։

Գիշեր Գաբրէլ խրեշտակ կէս գիշերին էկաւ. կոխաւ վըր պօկլին.—Դէ՛, էլի՛, քու խոգին մկայ կառիմ, ասաց։

—Գաբրէլ խրեշտակ, ես քեզնէ չեմ վախնար, իմ խոգին Աստծոյ թեսլիմ պտի էղի. դո՛ւ ինչ ես։

Էն տեղ Աստուած ասաց Գաբրէլ խրեշտակին։

—Ձեռ մը՛յ պոկ, խոգին քաշայ, խանայ պոկ։

Գաբրէլ խրեշտակ ձեռ մեց պոկ, ասաց.—Ախպէ՛ր, իմալ իս. քու խոգին առի՞մ։

Ասաց։—Գաբրէլ խրեշտակ. Աստուած իմ խնդիրք կատարեց, էլ մուննար չեմ քաշեմ, իմ խոգին Աստուծուն ա. թո առնի։

Աստուած մէկ էլ ասաց. Գաբրէլ խրեշտակ մէկ էլ կոխեց պոկ, ասաց յէմալ։ Որ իրեք թըմըմեց, Աստուած ասաց.—Գաբրէլ խրեշտակ, էդ մարդ ու աղջիկ խարիր տարի ումր անեն մէկ բարձի. էն մարդն էլ ուր տեղ ըռահաթ մնայ։

# 30

# ՍԱԳԱՐԱԾ ԱՂՋԻԿԸ

(Արծկէի Առնջկոյս գիւղի բարբառով *)

Դաւրիշ ձուկմ կը բերայ, կուտայ պառաւուն պախ։
Պառաւին էլ իրեք խասս աղջիկ կեղի։
—Պառմէ, կասայ, առ զիմ ձուկ, ամանաթ (աւանդ) պախայ։
Պառաւ կասայ.—Խօ, կը պախիմ, «ամանաթ օր կայ, ղըյամաթ ա»։
—Պառմէ, ասաց. եան էրկու, եան իրեք օրէն կուգեամ։
—Տօւս արի, օր անգեան դեառ, կը նեխի։
Դաւրիշ տուեց ձուկ մըտ պառաւ պախ, գնաց։
Պառաւ ասաց.—Վերցէք ձուկ, պախէք. չէղի զայ էնէք։
Էգա աղջիկներն ա, վերցին էդ ձուկ պախեցին։
Աղջիկներ իչկեցին օրմ՝ էրկու օր դաւրիշ չէկաւ։
Քշեց չանք ամիսմ, էդ դաւրիշ չէկաւ։
Պառւու ջոջ աղջիկն ա, վերցուց ուր քուրվըրտոց։
—Աղջի՛, յէլի ձուկ բեր, ուտենք, պաս-ցամաք մեռանք։
—Աղջի՛, էսի ամանաթ ա, «ամանաթ օր կայ ղըյամաթ ա»

* Պատմած է Դաւիթ Մուխսի Յարութիւնեան:

—Էլի՛, բե՛ր, ուտենք, էնի մոռցեր ա։

Էլան ձուկ բերին, իրեքով էլ կերան։

Պառաւ խապար չէ աղջիկներ ձուկ կերած էն։

—Մարէ՛, քու աղջիկ դարւիշի ձուկ կերաւ, ասաց սլգտի աղջիկ։

—Աղջի՛, ասաց. դու յորի՞ն կերար, մենք՝ ինչ ջուղապ պտի տանք։

Էրկու օր էլ մնաց. դարւիշ էն տեղ մէկէն էրևաց։

—Պառա՛ւ, ասաց, իմ ձուկ բեր. վրազ իմ, պտի էրթամ։

Ասաց.—Աստուծուց ինչ պախեմ, քու ձուկ կերած ա իմ աղջիկ։

Էդա տեղ ուրախութենէ դարւիշի ոտներ գետին չառաւ։

Էդա դարւիշ Ֆելպազ ա, յըմին բան գինայ։

Պառաւ վերուց.—Էրթամ ձուկմ առնիմ, առ, գնա՛։

—Պառա՛ւ, ասաց. դու ծե՛ռ իս, ես իմ ձուկ կուզեմ։

Ասաց,—Քո ձուկ կերած ա իմ ջոջ աղջիկ, ես յո՞ւստէն տամ։

Ասաց.—Քո ջոջ աղջիկ կը տանեմ իմ ձկան տեղ։

Ասաց.—Դարւիշ, դո՛ւ ծեռ էս, դիւ դիւա՛ն էս, ձկան տեղ աղջի՛կ կտան։

—Պառաւ, ասաց դարվիշ. «աղուըսու պէս ինչ պոչ կը թալիս դէս դէն»։

Պառաւ, թռիս էրկինք, իջիս գետին, օր աղջիկ կը տանեմ։

Էլան խընտրանց էրկուսն էլ գեացին շարապ։

Գեացին գազու դիւան դալի դարվիշն ու պառաւ։

Էն ուր դալին էնեց. էն ուր։

Աղջիկ խասաւ դարվիշին

Դարվիշ վերուց, աղջիկ առաւ գնաց ուր տուն։

Դարվիշն ա, վերուց.—Աղջի, ես կերթամ ավլի, ա՛ռ էս կտոր միս, կեր, որ կերար, ես քզի, դու ընձի. օր չկերա՛ր, քըզի կսպաննեմ։

Ասաց.—Խա՛, կուտեմ, դու գնա՛։

Դարվիշ գնաց. աղջիկն ա, վերուց, միս փաթութեց քըչի մէջ, դրեց ական մէջ։

Դարվիշն ա, յիրկուն էկաւ, խարցուց.—Աղջի՛, մի՞ս կերար։

—Խա՛, ասաց. կերայ։

Ասաց.—Մի՛ս, քե կերե՛ր ա, չի՛ կերեր ա։

Ասաց.—Չէ՛, ձի փաթութե քըչի մէջ, զարկե ական մէջ։

Աղջիկն առաւ, գնաց ներսով ներս։

Դարվիշ էլաւ գնաց դըռ պառաւուն, ասաց.—Իմ մէկ քենին-տաս, քու աղջիկ յէմալ մեծ կարպետ իցգէր, խինէր ա, չկրնաց պըծնի. տո՛ւր. թը գեայ, պըծնին։

Էլաւ մինչեկ աղջիկ տուեց, առաւ գնաց տուն դարվիշ։

Քուր տեսաւ, Եէ աղջիկ, Եէ բան։

Ասաց.—Ո՞ւր ա իմ քուրը։

Ասաց.—Քո քուր տարեր, կախեր եմ, իմ խօսք չէնեց, ընդոր պալով։

Ասաց.—Դու ինչ ասիր, քու խօսք չէնեց։

—Փշում միս տուեցի, չկերաւ, ես էլ տարայ, կախեցի։

Էդ աղջկան էլ դարվիշ ասաց։

Դէ, առ էսա միս, էփայ, կեր, չուր ես դառնամ։

Դարվիշն էլաւ, գնաց ավ-դուշ։

Աղջիկն ա, միս փաթութեց քըչիկ, զարկեց առնպախ (որմի գլուխն, որ գերանի տակն է)։

Դարվիշ էկաւ, խարցուց.—Աղջի՛, միս կերա՞ր։

Աղջիկ ասաց.—Հա՛, կերայ։

Ասաց.—Միս, քե կերե՞ր ա։

Ասաց.—Դո՛ր ա կերեր, քըչի մէջ փաթըթուկ՝ առնպախ դրուկ։

Էն էլ տարաւ ներսով ներս։

Դարվիշ գնաց մըտ պառաւ, պառաւ ասաց.—Սա, Դարվիշ, խէր էղի, յո՞րին կերթաս, կուգեաս։

Ասաց.—Պառաւ, խէր ու շէր խառուէր յիրուր. քու աղջիկ տարեր եմ, մկայ խալիչամ էցգած ա, էն մէկէլ աղջիկ կուզին։

Էդ աղջիկն էլ կատուն ունէր, առաւ, գնաց ուր խետ։

Գնաց տեսաւ քուր-մուր չկայ, խարցուց։

—Աղա՛ ջան, դո՛ր ես ճամբխե իմ քուրվըրտիք։

Ասաց.—Քո քուրվըրտիք տարերիմ, կախերիմ էրկուսն էլ։

Ասաց.—Ընչի պալով կախերես։

Ասաց.—Փշում միս տուեցի, չկերան, ինաշ էնեցի, կախեցի։

Էլաւ դարվիշ միս տուեց աղջկէն, ասաց.—Ուտես, չուր ես ավ-դուշ տեղէն գեամ։

Աղջի՛կ, դու աղջիկ էղիս, միս կը թալայ, կատուն կուտայ։

Դարվիշ յիրկուն կուգեայ. կը խարցու։—Միս կերա՞ր։

Կասայ.—Հա՛, կերայ։

Կը դառնայ մսին։—Մի՛ս, քե կերա՞ւ։

—Հա՛, կասայ, ընձի կերաւ։

Էդա տեղ կառի, կենայ ուրին կնիկ։

Եօթ բանլիս կեր ուրին, վերը կուտայ աղջկէն, կասայ.—Առ էսա բանլիսներ. օսկի կայ, մալ կայ, քզի։

—Ցո՞րին մէկ բանլիս չես տաս, ես քո խօսք կէնեմ, դու յո՞րին չէնիս։

Կասայ.—Կէնեմ, էն մէկ օքախի մէջ չատ գէշ գէլ, արջ կայ,

արապ, ճանապարհներ կան, վախնամ վախենաս, էն յապով չեմ իտամ։

—Ես քեզնէ՛ չվախեցայ, ճանապարհներուց պտի վախենամ, ասաց։

Դարվիշն էլման գնաց, աղջիկն մնաց դադ։

Աղջիկն ասաց ուրին ուրին—իչկիմ, տեսիմ ինչ կայ, էամալ կասայ դարվիշ։

Էլաւ գնաց, դռներ բացեց, ինչ օր մալ-թամալ, ինչ օր Աստուածութեն տեղծեր ա, էդ տեղ ա։

Ցէլաւ, գնաց, էն մէկ դուռն էլ բացեց. տեսաւ-ինչ տեսնէ. —ուր քուրվըրտիք, ուրիշ աղջիկներ, խրեղէն տղէք, փարեղէն աղջիկներ էդա տեղ լցուկ։

Էդա տեղ տղեկներ, աղջիկներ ուր քուրվըրտիք ասացին.—Էդա անխոգի դարվիշի ձեռնէն մզի ազատայ։

—Ես իմալ ազատեմ. դարվիշն օր էկաւ, յըմենս էլ կսպանայ։

Տղէկներ ասին.—Ձեր իրեք քուրոջ փէտէ չոր կը չիքենք, դուգեացէք, մենք էլա կերթանք, կը պրծնինք։

Աղջիկներն ա, փէտե չոր խաքեան, էլան ընկեան դարվիշի օթախներու մէջ. էղած չէղած ժողուեցին, թը «ոտմ կէր, ոտմէլ ճարեցին», գեացին։

Իրեք քուր բռնեցին մէ ճանբախ.—Մեր ղսմաք դո՛ր ա, մենք էլ կերթանք էն տեղ, ասացին ու գնացին։

Գնացին մէ թագաւորիմ քաղքին տախիլ էղան։։

Խըլուսուն աղջիկներ էլան գեացին պազար։

Էն տեղ խարցըցին, էն տեղ խարցըցին—մզի ըռըճպառութենից, հովուութենից, դառնարածութենից ինչ կա , էնինք։

Էդ պզտիկ աղջիկ թագաւորի տղէն տայաւ ուրին էնեց ղազարած, միջնեկ աղջիկն էլ մենլիս տարաւ. ջըջ աղջիկն էլ ըռէսը տարաւ, էնեց ուրին ղազարած։

Էդ աղջիկներ մէկ օր, էրկու օր, իրեք օր, որ էդ ղազիր կը տանէն, մէկ տղէմ էլա պախ գնեց վըէներ։

Որ կերթէն դաշտ, փէտէ չորեր կը թափէն, իրեք քուր իրարու ձեռներ կը բռնէն, կը խաղէն. յիրկուն էլման կը խաքնէն, կերթէն իրենց աղէճներու տուն։

Էդ պախ մաած տղէն ա գնաց, թագաւորի տղին ասաց.—Ձեր ղազարած հուրի մելեճ ա. ափսոս չէ՛, կը ճանփես, կերթայ ղազարածութին կենայ։

Ասաց.—Դու իմալ տեսար։

—Գեացի, պախ տուեցի, տեսայ ուրենց փէտէ չորեր խանին, իրարու ձեռներ բռնեցին, խաղցին:

Ասաց.—Իրեքին ո՛ր մէկն ա խօրոտ։

Ասաց.—Իրեքն էլա խօրոտէն, չկրցայ խանի (որոշէի) իրարուց, Հոտ Թագաւորի տղէն պախ կիտայ էդոնց միրէն։

Կերթայ, կը տեսի, օղո՛րթ, տղի խօսքն ա, կը տեսի ուր ղազարած քընց մէկէլներ խօրոտ ա, սուս-փուս կուգեայ ուր տուն, խապար կուտայ ուր խօր։

—Թագաւոր ապրած, կասայ. էս ղազարած ուզայ ընձիկ։

Թագաւոր կը միրցէ.—Դու ծուռ իս. քու խելք բան չը խասի. ես մէկ Թագաւոր էղիմ, էրթամ ղազարած ուզեմ։

—Իմն օր կայ՝ ղազարածն ա, իմն օր չկայ ղազարածն ա, կասայ։

Խըտ էդ Թագաւորի տղին չարա-մուճուճ չէղի։

Կը պսակուին. կը նստին ուրանց օթախ։

Աղջիկը մէկ օր ասաց.—Ես չատ կը վախենամ։

—Աղջի՛, յո՛ւրէն կը վախենաս, ալամ-աշխար մեր ձեռաց տակն ա, ին քըզի բան կասայ, օր կը վախենաս։

Էդ աղջիկ ուր գլխու գալած տղին կասայ. դառնայ կասայ.—Թագաւորի տղա՛, ընձի առջիննեկ տղայ օր էղաւ, պտի սպաննես օր էն դարվիշի ձեռնէն պրծնինք. օր չմորթեցիր, համ քըզի կըսպանայ, համ ընձի։

Էդ կնիկն ա, տարին կը բմի. կը պարկի, Աստուծու խըրամանքով տղէմ կը բերայ։

Էդ դարվիշն ա, կուգայ, կը տեսի օր ուրանց տուն խալի խարապա. զատ չէ մացեր. կասայ։

—Կայ չկա՛յ, պզտի աղջկան բանն ա, էնու խող վըր իմ գլխուն էղի, դո՛ւր օր գտիմ, պտի սպաննեմ։

Թարէֆ դունեայ կեղի, աշխար կը պտտայ, ո՛ր մէ քաղաք խարց ու փորց կենայ. մէկ սաղ չայ։

Կուգեայ-կուգեայ էդ քաղքին ծախիլ կեղի, օր էդ աղջիկ էդ քաղքին մէջն ա։

Դարվիշն ա, ընկնի տուն-տուն ծուֆ էլ զարկայ, կը պտտայ, աղջկէն տեղ կը խարցու։

Մարդու մէկ կը միլու.—Իրեք տարի յառէջ իրեք խատ աղջիկ էկած ա, մէկ Թագաւորի տղէն առած ա, մէկ մենլիս, մէկ ըռէս։

—Պզտիկ աղջիկ ո՛րն առեր ա, կասայ։

Կասայ.—Թագաւորի տղէն առեր ա։

Դարվիշն կերթայ Թագաւորի դուռ, դուֆ կը զանի, կնիկ տեսի օ դարվիշ էկաւ։

Թագաւորի տղէն կասայ.—Դարվիշ. էլի, արի, փչում դուշ գար, թամաշա էնինք։

Կնիկ կասայ.—Փչում՝ բան տանք, հեռընայ, թօ չգեայ։

Ձում կնիկ կերթայ ալուրջըերայ, դարվիշ կելլի վեր. քնի ուլինք կը թալայ Թագաւորի տղի ականջ։

Որ կը թալայ Թագաւորի տղի ականջ, Թագաւորի տղէն մեռուկ կընկնայ։

Ձում Թագաւորի տղի կնիկ դառնայ, կուգեայ, կը տեսի օ թազա տղէն դարվիշ մորթեր ա։

Կնիկ կը պօռայ, կը ճըւայ «ճաւար-հա ճաւար»։

Նմ ճաւար կուգեայ, նա մասադ կուգեայ։

Կը տեսի օ ծովու կճղի միջէն ձեն կուգեայ։

—«Աղջի՛, գնա՛, Թագաւորի դուքին (սեհրի) բե, դիր Թագաւորի տղի գլխի տակ, Թագաւորի տղէն էլի. էդի անաստուած ա, իմ ախպէրն ա, էդոր դարցէն մտերեմ էդա կղճի մէջ։

Աղջիկ դուքին կը դնայ տղի գլխի տակ. տղէն կիմնայ, դարվիշ կը փախնի, Թագաւորի տղէն կասայ.—Կնի՛կ, էդ ինչ հալա-հալայա։

—Աստուած քո տուն աւիրայ, կասայ, յէմալ-յէմալ էղաւ։

Կասայ.—Կնի՛կ, էլ ընձիկ պէտք չես, մռ քու տղէն, գնա. դու կը մորթես, կապես դարվիշ մորթեց, դու սօյսուզ ես։

Կնիկն ա, առալ մորթուկ տղէն, փաթութեց խին չորերու մէջ, գնաց։ Գնաց-գնաց. գետիմ բռաստ էկաւ. տղէն դրեց գետի ափ, արնոտ չորեր լուաց, ասաց—մեղք ա, արնթաթախ չխորեմ։

Կնիկ չոր լուալու կեղի, կը տեսի օ քամակից ճիժու ձէն կուգեայ, կը տեսի ինչ—Աստուծու խըամանքով չատր իջեր ա վըր տըղին, չատրի դուռ ասլան, դափլան կանուկ, տղէն սաղ սալամաթ։

Էդ տեղ կը մնան մէր ու տղայ. ասլան, դափլան։

Աստուծուց մանանայ կիջի, էդոնք կուտեն։

Դարվիշ ա, կելի կը պտտայ, օրին մէկ կուգեայ, Թագաւորի տղին մչակ կեղի։

Ուուր մէկ Թագաւորի տղէն կասայ.—Տղէ՛ք, էլէք էրթանք ավութենի։

Կերթան իրեք խատ եղուընիկ կը զարնեն։

Թագաւորի տղէն սեյիսին կասայ.—Տղա՛, գնա՛, դէ էն չատրը, էփայ, մռ-արի, վըր էս աղբրին ուտենք։

Սեյիս կերթայ, ասլան ու դափլան չըն սըթըրի ճեռսութեննեն։

Մէրը վերուց։—Տղա՛, յէլի, իչկա՛, տես օն ա, էկաւ։

Տղէն ա, կը վերու։—Մարէ, բան վըր բանի, տնկտընկեալէն կուգեայ։

Սէյիս կուգեայ, կասայ։—Մարէ՛, բարև քե։

Էն էլ կասայ։—Աստուծու բարին քե, ախպէր ջան։

—Մարէ՛, կասայ, էս իրեք եղվընիկ էփայ, տանեմ Թագաւորի տղին։

Կնիկ չուտմ եղվընիկներ լեփկեց, սեսրբեց, դնեց մըջ թաւին, կամրցուց, փաթութեց մանանի մէջ։

—Դէ՛, որդի՛, առ գնա՛, ասաց։

Առաւ գնաց։

Թագաւորի տղէն բացեց, կերաւ. տեսաւ ճիմալ կերակուլ, աչխըրքի էրես Նա էկեր ա, Նա կուգեայ, Նա կերԹայ։

Թագաւորի տղէն ա, խամռաւ (քաղցր համը առաւ, սովորեցաւ համին) կերակուլին, էլաւ խըլյուսուն էլման էկաւ ալուԹենի։

Իրեք խատ էլ եղվընիկ պարկեց, էլման ասաց սէյիսին։

—Գնա՛, էն չատր, էփեն, ա՛ռ, արի՛։

Ասաց։ Ես երեկ գեացի, ասլան, ղափլան վըր դռան էն, ընձի կուտեն, էս օր լէ մչկուն ճանփայ։

Մշակ վերուց։—Էլէք, իրեքս լէ խըտրաց էրԹանք։

Էլան գեացին։ Ասլան, ղափլան էլման ճերսոտան, ուրանց կապեր կը կտրեն։

Մէր տղին կասայ։—Տղա՛, տղա՛, յէլի դուս, տե՛ս, ո՛ն ա էկաւ։

Տղէն կելի դուս, կուգեայ, կասայ.—Մարէ՛, իրեք խատ բան վըր բանի, տընկտընկեալէն կուգեան։

Մէրն ա, կելի դուս, կը տեսի իրեք ձիաւոր կուգեան. կը տեսի մէկ իրիկն ա, մէկ սէյիսն ա, մէկ ղարվիշ, կասայ.—Տղա՛, գնա՛, օր-թալախ ձիու գլօխ բռնայ։

Տղէն ա, գնաց Թագաւորի ձիու գլօխ բռնեց, տարան, իջուցին չատր։

Մշակն ա (ղարվիշ),—Էսա եղուընիկներ էփայ, նատենք, ուտենք, էրԹանք, կասայ։

Կեփեն, կուտեն կը պըծնին.

Կնիկ զօւր իրիկ ու ղարվիշ կը ճանչնայ, ըմա էդոնք զկնիկ չճանչնան։

Էդ տեղ կնիկ կվերու.—Ես չատ ղարտլի եմ. խաղից բանից ասա. ականջ լնենք, ասաց Թագաւորի տղին։

Էդա տեղ Թագաւորի տղէն Նայլ մի կասայ։

Հէքիաթ մէլ ասել կուտան մչկուն։

Կնիկն էլ ասաց.—Թագաւորի տղա՛. հէքիաթ մէլ ես ասեմ։

Կասայ։—Ասա՛։

Էդա տեղ կնիկ ուր գլօխ գալած կաայ։

Դառնայ կաայ.—Չէ, ես էն դազարածն եմ-քո կնիկ։

Չէ՛, էս (մշակ) էլ էն դարվիշն է որ քո դուռ դուֆ կը զար-կէր, քնի ուլինք գրեց քու ականջ։

Չէ, էս էլ քո տղէն ա, դարվիշ մորթեց, Աստուածութեն սա-ղացուց. էրկնուց մանանով պախեց։

Էդա տեղ թագաւորի տղէն կը կապայ զդարվիշ եօթ տարուան անծին ջորու պոչ, կը թողայ դաշտի մէջ։

Էնոնք խասան ուրենց մուրազ, դու լէ խասնիք ձեր մուրազ։

Էրկնուց իրեք խնձոր իջաւ . . .



# 31

# ԱՐԴԱՐԱԴԱՏ ԴԱՏԱՒՈՐ



(Արծկէի Առնջկոյս գիւղի բարբառով*)

Մէկ մարդմ Ռուսաստանայ գնաց Ստամբօլ, չորս վեց տա-րի աշխատեցաւ, վաստըկեցաւ էրկու խարիր մանիթիյա, էլաւ, ճամբախ տուեց յառէջ պտի էրթէր, փողնի մէջ մարդմ տե-սաւ, ասաց.—Ի՞նչ մարդ էս, դո՞ր կերթաս։ Ասաց.—Կերթամ Ռու-սաստան։

Ասաց։—Փարա բան վաստըկեր էս։

Ասաց.—Խա, Աստուած չորս խարիր մանիթիյա տուեց։

Էդ մարդուն բռնեցին, տարան հուքմաթ։

Հուքմաթ փարէն առաւ էդոր մօտէն, ասին—Մեր թագաւո-րին սիֆան իրաւունք չկայ, տանիս ռուսի մէջ։ Էտա մարդն էր, տէր տիրական չկայ, վիզ ծուռ մըջ փողներուն անօթի, ծարաւ պտոտեց։

Աւուր մէկ մըջ փողնին կանուկ էր, վարժատան ճժեր վար-ժատնէն յէլան, կերթէն խաց ուտելու։ Էդ մէկ տղէն իշկեց էդ մարդուն վիզ ծուռ կանուկ ա։ Հարցուց.—Ադբէր, քըղնէ բան կը խարցում. չըս բուրէ։—Չէ՛, չըմ բուրէ։

---

* Պատմած է Դաւիթ Մուխսի Յարութիւնեան։

Առաց.—Ես կիչիմ քու դարտ չատ ա։

—Ճանըմ, ասաց. դու էրախայ էս, գնա́ բանիդ։

—Չէ́, դու ասա́, ասաց։

Էլաւ էդ մարդ իր գլխու գալած ասաց.

Դորիս տղէն ասաց.—Կերթաս էմէլ քու փարէն կուզես, որ չտուեցին, կասես.—Ես ձեր թագաւորութենի մէջ վեց տարի բանայ. դուք մկայ էկէք Աստըծու յառէջ վէքիլութեն էնէք որ Աստուած ընձի վեց տարի լէ ումր տայ, իմ օլուխ չուճուխին իսարան էնեմ։

Գնաց հուքմար, ասաց. էդ հուքմար չի կարցան պատասխան տէն. խապար տուեցին թագաւորին.—Էս մարդ էսլա կասայ։

Թագաւոր կասայ.—Էդ մարդու փարէն տուէք, ըդոր սովըցնողը առէք, էկէք մը ձի։

Ջօռ կը գնեն վըր էդ մարդուն.—Էս խելք քզի ո́վ սովըցուց։

Կասայ,—Ֆըլան վարժատան ճժերուց մէկը։

Կորողկայ թագաւոր էն ճիժ կը գնտնի, բերայ ուր մօտ։

Տղէն գլուխ տուեց, փաքա բռնեց, կայնաւ։

—Այ տղա́, ասաց թագաւոր, իմ եաշ գնաց, էդա խօսք իսկի լսած չէղերի, ես պտի դնեմ քե դատաւոր։

Ասաց.—Թագաւոր ապրած. դատաւորութեն կենեմ, ամա իմ աչքեր սաղ ա, որ խանես, կենեմ. չէ́, չեմ էներ։

—Ցօրին քու աչքեր խանեմ, ասաց։

—Որ կուզես արդար շարիաթ անեմ, իմ աչքեր խան։

Առաց.—Չէդոր մանէն ի́նչ ա։

—Որ իմ աչքեր սաղ էղնի, մէկ իմ աղրէրն ա, մէկ ազգն ա, մէկ ջէհել ա, մէկ խօրոտ ա, մէկ նշանով ա. իմ աչք կը տեսի, միտք ա, կը փոխուի. իմ աչք որ խանես, յըմեն մէկ դռնով կը մտուցեմ, մէկ դռնով կը խանեմ։

Միլ բերեց, աչքեր խանեց, դրեց դատաւոր հախ դօշակին։

Մէկ տաս, քսան տարի էնպէս հախ շարիաթ էնեց. էդ դատաւորի ձէն պիթուն աշխար ցվըրուաւ։

Աստուածութեն Գաբրէլ խրիշտակին խրկեց, ասաց.—Գնա́, էդ ղազու շարիաթ իմացիր, աղէ́կ ա, չէն՝ քուն։

Աստըծու խրամանքով էղաւ տէրտէր, խեծաւ ջորին. էկաւ էդ դատաւորի քաղաք պառւում տուն, ղօնախ էղաւ։

Էդ գիշեր Աստըծու խրամանքով էդ պառաւին մէկ կով կեղի, էն կով կը ծնի. հորթիկ կուգեայ էդ ջորու տակ. կը մնայ, կը լուսնայ.—Պառա́ւ, կասայ տէրտէր, իմ ջորին քաշայ դուս, ես էրթամ։

Որ կը քաշայ դուռ, խորթի́ք պըպըրալին կնկի ջորու էտև. պառաւ կասայ.—Տէրտէր, եաման, քու բաղդն եմ ընկե, էդի իմ խորթիկն ա։

Տէրտէր կասայ.—Քու խօրթիկ էղնէր, քու կովու տակ կեղնէր, յորին գիգէր կընկնէր իմ ջորու տակ, էգի իմ ջորուն ա։

—Տէրտէր, կասայ. ես զօռով չըմ կրնայ վըր քե, մեր քաղքի մէջ լաւ դատաւոր կայ, էրթանք, էնի մեր շարիաթ էնայ։

Էլան գեացին մըյա դատաւոր, պառաւ ալ ըր գանգատ էնեց։

—Ես էնք մէկ կով. տէրտէր իմ տուն ղօնախ էր, դիշեր իմ կով ծներ, խօրթիկ ընկեր ջորու էտև, դու ինչ կասես։

Ասաց։—Կանի, տէրտէրոջ մօտէն լէ խարցում։ Ասաց.—Ումն ա։

Ասաց.—Խօրգիկ իմն. իմ չեղնէր յորին կնկէր իմ ջորու էտև։

—Տէրտէր, ասաց. խօրթիկ քունն ա, չէ պառւոինը։ Ասաց—իմն ա։

Ասաց.—Տէրտէր, կանի, քե բանմ ասեմ, իմ խէր էլաւ գնաց ծովու ափ. արտ մը գեարի ցանեց, էկաւ տուն. ամիսմ մնաց, գնաց տեսաւ գեարին կանչըցե, չորս մատ էլեր էր, ամիս մը մնաց. գնաց տեսաւ կըթեր էր։ Ամիս մը լէ մնաց, գնաց տեսաւ խասեր էր։ Էկաւ իրղաց բռնեց, գնաց, պիտի քաղէր. գնաց տեսաւ որ ծովու ձկներ էլած. էդ գեարին կերած էն։ Տէրտէր, ասաց. էս ասած խօսքն սուտ ա, չէ օղորթ ա։

Ասաց.—Սուտ ա։

Ասաց.—Որ իմ սուտ ա, քունն էլ սուտ ա։

Ասու խրամանքով տէրտէր էգա տեղ խաչակնքեց. դատաւոր լուսաւորցաւ. տեսաւ էն տէրտէրն էլ Գաբրիէլ հրեշտակն էր, խամբարձաւ։ Ասաց.—Պառաւ. էս քու խօրթիկ։

Պառաւ ուր խօրթիկ առաւ գնաց։

Դատաւորի աչքեր որ լուսաւորցաւ, էս խեռ ինչ էնեց, բերեց փիրցեմ կախեց ուր աւէջ աւ գանգատւորին։

Օր մկայ լէ մացեր ա մըջ Օսմանցուի շարիաթին։



# 32

# ԽԵԼՔՈՎ ԽԱՐՍ ՈՒ ԴՈՒՎԱԹ

(Արծկէի Առընջկոյս գիւղի բարբառով *)

Աւուր մէկ մէ չատ խարուստ մարդ կեղի, էդ մարդ չատ պատուով կեղի. մըտ քրդի, մըտ հայի, մըտ թուրքի պատիւ կեղի էդոր, էդ մարդու տըսուերկու տղայ կեղի, էդ տղէկներ եարամազ կեղին։

Մարդ կը տեսի օր էդ տղէկներ ուր տուն պտի աւիրէն, ինմալ պտի աւիրեն-մէկ գողութենով, մէկ բողութենով, մէկ ճան խաղելով, մէկ թուղթ խաղելով, մէկ մարդ սպաննելով։

Էդմըս մարդ տեսաւ որ ուր տուն պտի աւիրի, «հեռենամ, ըսաց, որ չտեսիմ իմ տան աւիրութեն»։

Առաւ խըտ ուր 2—300 ոսկի, թողեց ուր խարստութեն տղէկներուն. Աստուծու յառէջ ահս ու սառբ էնեց. «քեառասուն տուր ճամբախ պտի էրթամ օր իմ տղէկներ իմ տուն աւիրեն, ձէն չգեայ, ընկի իմ յականջ։ Գնաց էդ մարդ, խոսաւ մէ քաղաքի. ուր ձիու կեմ թողեց ձիու ղարփուզ, ըսաց ձիուն.—Աստուծու հայվան, դու վի՛ դուռ էրթաս, ես էլ էն դուռ պտի իջիմ։

Ձին ա, գնաց-գնաց, քընց ինքն էլ խարուստ մարդու մը դուռ կայնաւ։

Էդ մարդ էդ տեղ իջաւ, ղանչեց.—Նանէ՛, նանէ՛, էս ձին քաշայ իներս։

Ձին քաշեց ներս, խոտ տուեց, էդ կնիկ վերուց.—Ախպէր, դու յօրին դուռ կը կայնես, արե տուն; նստի։ Գնաց տուն, նստաւ։

---

* Պատմած է Դաւիթ Մուղսի Ցարութիւնեան. Սոյն Դաւիթը իւր գիւղի բարբառին լաւ ծանօթ էր. պատմած է շատ կարգաւորեալ եւ սահուն ոճով. իւր ամեն հէքիաթներն ու բոլորակի վէպերն պատմած է շատ վարժ եւ առանց կանգ առնելու։

Էդ կնիկ վերուց.—Ախպէր, դու բարի ես էկեր, վըր իմ գըլխին, վըր իմ յերսին, էն տեղէն չում էս տեղ։

—Աստուած քու տղէկներ պախայ, քու դոլվաթ չատ էնայ, ինչ դու իմ պատիւ պախեցիր, Աստուած քու պատիւ պախայ, ասաց։

Էդ կնիկ խաց ու զաց բերեց, դնեց յառէջ. էդ մարդ կերաւ։

Էդ մարդ չանք յիրկուն ձէն չէնեց, սուս նստաւ։

Էդ կնկան իրիկ, ուր իրեք տղէն խետ, յիրկուն էկան, տանտէր կնկեան ասաց.—Էլի խաց բի, ուտինք։

Կնիկ խաց բերեց, էդ տանտէր էդ մարդուն ասաց.—Ախպէր, արի, խաց կեր։

Տան տէրն էլ մարդուց չխարցուց – «դու յուստ էկերես, դոր կերթաս, ինչ բանի կիրթաս»։

Տան տէր վերուց, ուր աղջըկէն ասաց.—Աղջի, յէլի, տեղըրանք թալ, պառկինք։

Տեղըրանք էցգեց. ամենքը էլան պարկան։

Էդ աղջիկ, իրա սովորութեն էր, փարչմ ջուր ուր խօր գլխու մօտ դնեց, մէմէկ փարչ էլ աղբրտոց գլխու մօտ, մէկ էլ էն ղարիբ մարդու գլխու մօտ, պարկան, քնան։

Մնաց չանք լուսուն, էդա տան տէր էլաւ, գնաց ուր բանին, էդ ղարիբ մարդ մնաց։

Մէկ ամիս էրկու ամիս, մէկ տարի, էրկու տարի, չանք եօթ տարի էդ մարդ մնաց էդա տուն։

Էդա տանտէրն էր, էդա մարդուց մէկ բան չխարցուց։

Եօթ տարին օր թմաւ, մարդու ճկեար կտրտաւ, էլաց։

Էդ տան կնիկ վերուց.—Քու դարտ ինչ ա, կուլաս։

Ասաց.—Քուրիկ, իմ դարտ էն ա, էս եօթ տարի ա էկերիմ քու տուն, քու մարդ չանք մկայ չխարցուց, «դու ինչ մարդ էս, յուստէն կուգեաս, դոր կերթաս»։

Մնաց չում յիրկուն, էդ տան տէր, ուր տղէկներ էկան, էդ տան կնիկ վերուց, ուր մարդուն ասաց.—Մարդ, էս մարդ եօթ տարի ա էկեր ա, սկի չխարցուս «մարդ, դու ինչ մարդ էս, յուստէն էս»։

—Կնիկ, ասաց տան տէր, Աստուած ընձիկ մալ չատ ա տուեր. էնօր ուտելով չխլըսիր՝ ձիուն ուտելով իմ խոտ չի խլըսիր. քանի տարի կուզայ թո մնայ, ինքն էլ ուտայ, ուր ձին էլ։

Էդ տան աղջիկն էր, էմլէ տեղըրանք թալեց, էմլէ մէմէկ փարչ ջուր լցեց, դրեց էդոնց գլխու մօտ։

Մնաց չում լուսուն, էդ մարդ էլման էլաց-արտասունք թափից։

Էդ տան կնիկ վերուց։

—Մարդ, մը վախենայ, քու դարՏ ի՞նչ ա, կուլաս։

Ասաց.—Քուրի՛կ, քեզնէ ինչ պախեմ, Աստուծուց ինչ, ես քընց քե՝ խարմւստ, իմ տուն քընց քո տուն աղէկ, իմ մալ քընց քուն չմա, իմ տղէք քընց քուն չմա, իմ խետ եօթ խարիր օսկի բերերի, ձեր տան անուն ծանտր կիտէն, օր գի, քու աղջիկ ուզի իմ տղին։ Մկայ էկերիմ, քու մարդ չխալցու. փարէն էլ խլըսեր ա, տուն էլ քմուսուն աւուր ճամբախ զատանց ա, մէկ էլ չկեսռնամ էրթամ, գեամ։

—Ախպէր, ասաց կնիկ. տու քե քսան խինք fիսալ փարայ մէկ, մ'երթայ քո տուն, խինք խատ էլ խլղաք։

Մնաց չում յիրկուն, մարդ ու ուր տղէկներ էկան։

Կնիկ վերուց։—Մարդ, էդ մարգուց խալցուր, յո՞րի էկեր ա. մէկ տես, քու ճուղաք ի՞նչ կուտայ։

Էն մարդ վերցուց.—Ես էկերիմ, քու աղջիկ պտի տաս իմ տղին։

Տան տէր վերցուց։—Քսանը խինք fիսայ, խինք խալաք կուտաս, իմ աղջիկ կուտամ, տասը փարայ պակաս էղի, չառիմ, աւելի էլ էղի չառիմ։

Էդ մարդ վերուց.—Խնամի՛, յէլի՞, քու աղջկէ ձեռ ու ոտ տես, լուսուն ես կերթամ։

—Խնամի՛, ասաց. իրեք օր մօճլաք տաս, պատրաստութեն տեսնիմ, մո, գնմ։

Իրեք օր որ քմաւ, աղջկէ խէր քառսուն ջորու բեռ բռնեց ուր աղջկէն ճճեզ, էլաւ ուր իրեք տղէք ու եռսունը ինը մարդ դրեց խետ.—Դմբոյ, զուռնով տարէք իմ աղջիկ, իրեք օր ճամբախ դրէք, դարձէք. թը իրենք էրթան։

Իրեք օր որ քմաւ, էլաւ էդ աղջիկ իրեք աղբօր խլղաք տուեց։ Մնացին էդ աղջիկն ու կէսերը, մէկ էլ եռսուն ինը մարդ։ Եռսունը եօթը օր ճամբախ գեացին։

Էդ եռսուն եօթ օր էդ մարդ խաղ ասելէն, ձի խաղցնելէն կերթար. չում էկան, խասան ուրանց խողին։

Որ խասան ուրանց խողին, էս մարդու ճկեար վառաւ, սիրտ մրմրաց, լեզուն առուաւ։

Էդ խարս մեզեց, ասաց.—Ճանըմ, էսոր ձի՛ խաղցնել դո՞ր, խա՞ղ ասել դո՞ր, մկայ լեզուն առուեր ա։

Մէկ սաճաք, էրկու սաճաք էդմալ լալելէն ճամբախ գնաց։

Էդ խարս ուր մտքի մէջ վերուց։

—Մէկ ես իմ, մէկ վերին դէն Աստուած. մէկ իմ կէսրէր. խաւճին զաքի իրեք փարդայ (քող) ա, իմ մէկ փարՏԷՆ պտի պատռեմ, տեսիմ, էսոր դարՏՆ ինչ ա, օր վառուի, կիրիցի։

Էդա խարս վերուց մէկ փարՏԷՆ պատռեց, ասաց։

—Ափó, քու դարդ ինչ ա, եան կասես, եան կը զանիմ, ընձի կսպանիմ։

Էդ մարդ վերուց.—Որդի՛, իմ դարդ չատ ա, ես իմալ քե ասեմ։

—Թո՛ չատ էղի, պտի ասես։

Էդ մարդ ասաց.—Իմ տուն քընց քու խօր տուն չա՛տ աղէկ ա. ես քընց քու խէր պատւավ, երեկլի. որդի՛, ընձի տասուերկու տղայ կյայ, տեսայ որ մէկը գողութեն կենէր, մէկը բողութեն կէնէր . . . Թօրկի տնէն փախայ ընդոնց յապով, մկայ կը մեղեմ, ընկայ քու մեղաց տակ. չեմ գիտեր, քցի տանեմ իմ ո՛ր մէկ տղին տամ. որդի՛, իմ դարդ կó էդ ա, ասաց։

—Ափó, ասաց. իսկի ղասաֆեք մէնի, իսկի տղայ էլ թօ չեղի, ես քե տղայ, դու ձիկ խէր։

Սահաթմ, էրկու, իրեք, չորս խասաւ ուրանց գեղ։

Խարս տեսաւ խէրն էլման կուլայ. կը վառի, կիրիցի։

—Ափó, յորի՛ն կուլաս, ասաց։

– Որդի՛, ասաց. իմալ չլամ. տունն օր կայ Աստուծոյ սքարն (պատսպարան) ա, տո՛ւն էլ չկայ, բու աւիրեր ա։

—Ափó, մի՛ լար, Աստուած օղորմած ա, հայպար խարապայ կայ, մեր բան ու ման թալենք մըջ խարապին։

Ուրանց բարխանէն թալեցին ուրանց խարապէն։

Մարդ տեսաւ ուր բարեկմներ, ուր չարկամներ ժողուան, էկան էդոր կուչտ։

Տեսաւ ինչ որ բարեկամ էր, արտում էր, ինչ որ չարկամ էր, մէկ աղլ կը զրուցեր, մէկ չաղըլ կը զրուցէր, մէկ աղէկ կը զրուցէր, մէկ մօն։

Էդ խարս մեզեց, իմ յերսին էրկու փարեն պատռեցի, էն մէկն էլ կը պատռեմ, ասաց.—Ափó, էդոնց փարայ կա՛յ մըր վրէն, փարէն տանք, մալ կայ, մալ տա՛նք։

Էդ խարս էդ խսէն ասաց, ամեկը քաշուան, գնացին։

Էդ խարս ուր կէսրէր մեքի մացին, խարս վերուց.—Ափó, առ-էսա չորս օսկին, գնա, մշակ, բան բան բեր, ես փորիմ, դու լից, մշակներ կրեն, մեր տներ շինքինք։

Գնաց, առաւ էկաւ։

Մէկ օր, չաբաթմ, ամիսմ, էրկու ամիս ուրանց տներ չքեցին, պրծան. ուրանց բարխանէն լցին ուրանց տուն։

Խարս տուեց էրկու օսկի։—Ափó, ասաց. գնա՛, մէկ օխչար, էրկու լիտր արաղ առ, արի՛։

Գնաց բերեց. խարս էփեց, պատրաստեց, ասաց.—Ափó, քու տղէկներ մշակ ին, գնա՛, քու տղէկներու աղէք ղանչայ, բե՛ր. օր

կուզեան, խաց կուտին, կը պրծին, կասեն քի—Մեզի յորին կանչեցիր՝ դուն էլ կասես. տղէկներու իզին տաք, գիշերս գեան, մեր տուն մնան, լուսուն գեան ուրանց բանին:

Էդ մարդ խարսի սասծի պէս էնեց, տղէկնիր Թորկին աղէք, էկան ուրանց խօր կուշտ. յէմալ ամօտ-ղամօտ, օճլող պճլօտ, քըրճօտ-պնճօտ։ Էսոնք էլ կիրան, խմեցին։

Խարսն էր, տըսուերկու ձեռք եաքախ ջոկ-ջոկ Թալեց, ամէկ եաքաղի գլօխ փարչմ ջուր դրեց։ Տղէք էլան քնան։

Տղէկներ որ քնան, խարսն վերուց.—Ափօ́, կէս գիշեր օ կեղի, պօռայ. «տղէկներ, ես ծարաւ վառուայ, մեռայ, իրիցայ, ջուր բերէք ընձի։ Տես, որ մէկ տղէն կը բերայ, դու ընձի պսակայ վըր էնդոր։

Տսուերկուսի պզտիկ՝ պօռալու բաշտան փարչ վիրուց, բերեց, տուեց ուր խօր ձեռ։

Աղջիկ ասաց.—Ափօ́, ընձի պսակայ վըր էդոր, մէկէլներու իզին տուր, էրԹան ուրանց բանին, մեզի պէտք չեն։

Էդ մարդն էր. բերեց դմբով, զուռնով, նաղարով էդ խարս պսակեց ուր տղի վրէն, էղան մէ աղէկ տուն։

Էդ խարսն ա, գիշեր, ցերեկ ուր Աստուած կը ղանչայ, ուր աղօԹք կէնայ, ուր մարդու ծոցն էլ չպառկի, չում Սուրբ Սարգսի բքուն։

Սուրբ Սարգսի բքուն էր, կէսրէր էն դեւս էր պարկեր, տղէն էս դեւ, խարսն էլ չոքեր էր, աղօԹք կէնէր։

Կէս գիշեր էր, խալիւօրմ էնինց զարկուաւ դուռ, յէմալ պօռաց, էրկինք գետին ձէնւ տուեց։

Խարս վերուց.—Էն ո՞վ ա զարկուաւ մեր դուռ։

—Խա́րս, ասաց խալիւօր. Աստուած կը սիրես, դուռ բա́ց, ընձի առ ներս, բուք ընձի խեղդեց, ծեր մարդ իմ, իմ աչիչ լուս պակաս ա։

Խարս դուռ չբացեց, չառաւ ներս, մնաց բքու յառէջ։

—Խա́րս, ասաց. էն կապուտ չադր (երկինք) կը սիրես, լեղճ իմ, խոքի ա, կազատես։

—Դու ի՞նչ մարդ էս, քու անուն ինչ ա, ընձի ասա́։

—Ես քու դոլվարն իմ, դուռ բա́ց, ընձի առ ներս։

Խարս ասաց.—Դոլվար չէղի, Աստուա́ծ էլ էղի, դուռ չբանամ։

—Որդի́, դուռ բաց, ընձի առ ներս. մէկ էլ Հուսէնի բօպէն կէնեմ, քու տնէն չէլլիմ դուս. քանի քու սըլսըլէն սաղ ա, քու եօԹ պորտ կայ, Նամերդի մուհրան չէղիք։

Էլաւ խարս դուռ բացեց, էդ մարդ առաւ ներս։

Էդ դոլվարն էր, ասաց.—Որդի́, գնա́, ճրագ կըլու. էրԹանք

փակախի վերին դէն սաֆում կայ, քեզի երկու խապար կայ, քե կասեմ, էլ քու աչիչ չերևամ, կը խամբարձիմ։

Խարս գնաց, ճրագ կպուց. առաւ էկաւ, գնացին փակխի վերին սաֆուն. յինք ու դօլվաթ նստան. դօլվաթ վերուց.—Էս գոմշու սալ կը տեսնի՞ս։

—Խա՛, կը տեսիմ, ասաց։

Ասաց.—Էս սալի տակ երկու զումզում օսկի կայ, խանէք, տարէք. ձի տղէկներ կարգէք, տղէկներ ուրանց մեղաց դարձան. ուրանց գօգէն քար թափին (մեղայի եկան). էն մէկ զումզումն էլ ձի պէտք կուգեայ, հա՛ թը կենայ էդ տեղ։

Էդոնք ասաց, պրծաւ, դօլվաթ էլ չէրևաց։

Խարս առաւ ճրագ, էկաւ ուր տուն, աղօթք էնեց չում բարի լուս բացուաւ։

Էդոր մարդ ու կէսրէրն քնուց յէլան վեր, ուր մարդն էր գնաց բանելու, կէսրէր մնաց տունէ։

Խարսն էր, վերուց, կէսրէրին ասաց.—Ափօ՛, էսօր գիշեր մեր դօլվաթ էկաւ տունն, ընձի ասաց, ճրագ կպու, էրթանք փակխի քունչ, քչում նստինք. գեացինք քչում նստանք, ընձի ասաց.—«Էս գոմշու սալ կու տեսնի՞ս», ասի. «Խա՛, կու տեսնիմ», ասաց. Էս սալի տակ էրկու զումզում օսկի կայ, մէկ խանայ, տա՛ր, կերէք, տղէկներ կարգէք, ինչու օր տղէկներ քար ուրանց գօգէն թափած էն, մէկ հա թը մնայ, օր պէտք էկաւ, կը խանէք, կուտէք։

Փէտատ, թխակ բերին, էն սալ շրջին, էրկու զումզում օսկի էլաւ տկէն։ Բերեցին մէկ զումզումը, ուրանց տղէկներ կարգեցին։

Ուրենց տղէկներ ուրենց գործեր թօպա էնեցին, ուրենց քար, ուրենց գօգէն թափեցին։

Խարս ուր էրածներով էդ դօլվաթ գտաւ։



# 33

# ԱՆԳԻՆ ԲԻԼԲՈԻԼ ՈԻ ՏԻԿԻՆ ՄԱՆՈԻՇԱԿ

Վաղարշապատի եւ Մոկաց խառն բարբառով *

Կըլնի-չըլնի, ժամանակով մէկ թագաւոր կըլնի, էս թագաւորին մէկ ժառանգ կունենայ աշխարքի էրեսին։ Էդբա տան մէջ մէկ խաս չուշտ կունենայ. ժառանգին կասի.—Էս ջուխտ չուստը ման կտաս, ում ոտով կըլի, կառնիս։ Էն աղջիկ ծաս չըլի։

Էկաւ վախտին, էս թագաւորը վաղճանեց, էս տղէն ուզեց կարգուէր. վազիր, վաքիլ ընկան մէջ, ում աղջիկը կուզէ, կարգեն։

Ասաց.—Իմ խօր վասիաթ կայ։ Էն ջուխտ մաշիկ վեր կալեց, ընկաւ քաղաքին մէջ ման գալի. ըր տեղ որ դպաւ. վեզիրի դիւռ գընաց, վեքիլի դիւռ գընաց, խալխի գնաց, մէկի ոտով չէղաւ. քաղաք քաղքով ման էկաւ, իլան մուքում չէլաւ։ Մէկ ծաս աղջիկ պատահեցաւ. ինչպէս ոտով ձևոս, կարիս։

Տղէն ասաց.—Դու ծաս իս, իմ խօր վասիարն ա, քե չպիտի առնիմ: Շատ տեղ դիպաւ, իլան չէլաւ, վերջ գնաց ծաս աղջկայ վրէն կայնաւ, վէքիլ, վեզիր բերեցին, կապեցին էդ աղջկան. պսակեցին։ Բայց ինչ անես, էդ աղջկան մէկ խաս զարկեար սիրտ ունի։

Էդ ասենք-էս աղջիկ ինչ արաւ-լըղըմ զարկեց, ինչքան թագաւորի խազինէք ու մալ ու դովլաթ կար, քաշեց գետնու տակը, թագաւորի տղէն աւուր խուցի կարօտ քցեց։ Շատ խղճացաւ,-ինչ անեմ, ինչ չանեմ, մշակութուն անեմ, ասաց։

Տղի մամալ կարեց էդ անիրաւ աղջիկը, ամեն օր ասըմ էր.—Քու պատանք կարիմ, անիրաւ մարդ, ինչու չերթաս, աշխատիս։

Էս աղջիկը ինչ անըմ ա. օրական մէկ անգամ խրկում, զարկեարին կանչիլ ա տալը, իրա խամար մատանիք շինի։

Տղէն կերթայ պազար, որ իրա խամար աշխատանք անի։

Մէկ օր տեսաւ մէ վաճառական մարդ.—Ճանըմ, ասաց. էս տղէն ինչու աշխատանք պտի անի։ Կանչեց, ասաց.—Տղա՛, ինչ ա պատահեր քըզի որ Էասիպութուն քըզի յաղթեր ա։

---

* Պատմած է Միրոփ-Կուլոն Շանիրիմանեան. սա բնիկ Մոկացի Բուրդ եղած է, երկար տարի Վաղարշապատ մնացած. մերսուած է• լեզուն եւս խառնած լինելով, նոյնութեամբ գրի առի:

—Այ հայրիկ, ինչ ասեմ քեզ, ասաց. իմ անզգամ կնիկ էսպէս օյին կը խաղայ իմ գլուխ,՝ընձի տանջում ա։

—Ըսկի քըզի ինչ սըրմ ա.—Օրական մէ անգամ սըրմ ա. «Գնա, զարկեարին կանչի, ընձի խամոր մատնիք չինի»։

Էս վաճառական մարդ չատ սիրտ ցաւաց էդ ևրիխու վրէն, ասաց.—Քեզ տամ մի մանեք փող, էս օր բանելու մի՛ գնար. գնա էս օր պարկի, հանգիստ քնի. յիրկուն եթէ կնիկ ասի. «Գնա, զարկեարին կանչի.» դիւ գնա, կանչի, դիւ տանից դիւս չգաս. մտիկ արա իրարու ինչ են ասըմ, ինձ ասա։ Եթէ գինի, արաղ կը խմեն, քըզի էլ տան, դիւ ածի քիւ եախով,՝ մինչև տաս ստաֆեան, քըզի կը դնիս գինովութիւն, կը պարկես, մտիկ կանես, ինչ են ասըմ։

Էս տղէն գնաց տուն. մութ կոխեց, իրա անզգամ կնիկ էդըրա եախէն քակեց.—Ա՛յ մարդ, ասաց. տենամ, ինչ էս աշխատեր։

Ասաց.—Մի մանեք փող էմ բերեր։

՝Էս մի մանեք փողը ձեռքից առաւ. խրկեց, էրկու խաւ բերել տուեց, ասաց.—Գնա, զարկեարին կանչի, թող գայ մեզ ղօնախ։

Տղէն գնաց. զարկարին կանչեց, տարաւ տունը, խրկեցին, գինի, արաղ բերել տուեցին, խմեցին. տղէն տաս ստաֆեան խամպրեց, յուրին տուեց գինովութիւն, պարկեց։ Էս անզգամ կնիկ ասաց.—Պօլ չէլաւ, դիւն թագուն էրթաս ու գաս, ախր մեր ոսկի խազինեք գետնու տակ փթեց։

՝—Ապա՛ ինչ անենք, ասաց զարկեարը։—Էդըրա չնլիքը կտրենք, իրար առնենք, կեանք էնինք աշխրքի էրեսին։

Զարկեար ասաց,—Մինչև քիւ ոսկիք, ապրանք չտենամ, քըզի չպիտի առնեմ։

Ֆանար վառեցին, աղջիկը առաջ ընցաւ, զարկեար քեամակից, տղէն էլ զարկեարի քեամակից, մտան նեքսև, զարկեար ապրանք որ տեսաւ, աչքեր սառեց։

Տղէն տեսաւ որ իրա խօր ապրանք պիրասի պախած ա. թէ ոսկիք, թէ արծաթ, թէ ակնունքներ։

Տղէն յետ դառաւ դպա իրա տեղը։

Զարկեարն էդ ապրանքի մէջ ման գայ, գայ, տղի չըլինքը կտրի։

Մինչև ման էկաւ, ժամեր տուեցին, ասաց.—Էս չէլաւ, էս օր լիս ա, էգուց գամ, գլուխ կտրիմ։

Աղօթարան բացուեց, տղէն իրան քցեց վաճառականի մօտը, ասաց.—Սէրն Աստուծոյ, ընձի պրծացու։

—Ինչպէս տեսար.—Տեսայ որ իմ խօր խազինէն պիրասի մաղազէն էր։ Ասաց.—Ա՛ռ, քըզի մէ մանեք փող տամ, գնա, մէ զօդալ առ. կըտանիս տուն. կը պախիս. յիրկուն կողորկէ զարկեարի քամիլից. մի՛ կանչի։ Կիրթաս տուն, դռներ կը փակիս. կառնիս դա-

կենակը, էն կնկան էնքան կը տփես, չանք զօղալ կը ջարդի, մինչև փէտ ջարդի, կը մեռնի։ Լիս կը բացուի, էգրա աղբրներ դալի կանին.—«ի՞նչու սպանիր մեր քիրը»․ դիւ ասա. «ես խապարութեն չունեմ, թէ որ չատ կը զօրին, կասես․ «Իմ տներ կը ծախեմ, կիտամ էնգրա արունք»։ Էն ժամանակ դօլֆ կը հանին, դիւն էլ դօլֆ կերթաս մինչև էրկու միլիոն, կը կայնիս։ Իրեք օր ժամանակ կուզես, բանալիք քու ձեռ կը պախես, իրեք օրը ինչ օր կայ, կը քաշես իմ տուն։

Իրիկուն տղէն կերթայ տուն, կնիկ կասի.—Ինչ իս բերի։

Կասի.—Մէ մանեթ փուղ իմ բերէլ։

Տանը խինդ ճանի կայ կնկան։

—Նուտով գնա, զարկեարին կանչի, թող գայ։

Կերթայ մէկ զօղալ կառնի, մութ կը կոխի, տուն կիւգեայ։

Կնիկ կասի.—Զարկեար խի՞ չէկաւ.—Հըմի կիւգեայ, ասաց։

Մէկ սահար, էրկու սահար, ուքը քաղաքին մէջ խանդարտեց. էս տղէն դռներ փակեց, զօղալ քաշեց, էնքան տուեց, մեռաւ։

Լիս բացուաւ, էգրա աղբէրներ դալի արեցին։

—Իրա մախով ա մեռե, ըսկի խապարութուն չունիմ, ասաց։

Դրեցին տղի չնլիքին, աղջկայ արունք ուզեցին։

—Զատ չունեմ, մէ տուն ունեմ, ծախէք, տուէք արունք։

Դօլֆ կանչեցին, մէկ խարիր մանեթ տուեց. մէկ մէկ ֆէսա։

Խօսքը գնաց, խասաւ զարկեարին. «Ֆլան տնիրը դօլֆ ա»։

Զարկեար տեսաւ, օհօ, իրա սիրող սպանած ա. լաց էլաւ, ասաց.—Էս տուն ընձի կը վայելէ, քանի որ խաց ու պանիր կերեբեմ. ես գնահատութեան կանեմ իրեք հարիր մանեթ։

Տղէն ասաց.—Ես մեռած իմ, խազար մանեթ կիտամ։

Զարկեար ասաց.—Միլիոն կիտամ, չեմ թողիր ոչ ավ առնի։

Տղէն ասաց.—Էրկու միլիոն ընձի մօտ։

Զարկեար.—Իրեք միլիոն ընձի մօտ, ասաց։

Էս դօլֆը զարկեարի վրէն կայնեց։

Տղէն ասաց.—Ընձի իրեք օր ժամանակ տուէք։

—Իրեք չէ, չորս օր էլ քու ձեռք մնայ, ասաց զարկեար։

Մութ կոխեց. գնաց էրկու խատ խամալ գտաւ. ճախը կտրեց, գիշերուան իրեք մանեթ. խազինեք պիրէսի կրեց վաճառականի տունը։ Էֆսի օրը զարկեարին կանչեց, բանալիք զարկեարին ձեռք տուեց, զարկեար առաւ բանալիք, ուրախ-ուրախ գնաց, մտաւ մաղազին. մտաւ օր զաց չկայ, դարդակ ի. գլօխ էն պատին տուեց, էն պատին տուեց, չորացաւ։

Խապար տանք էս տղի մօտիցը. էն տղէն յիրկուն մութն էր, գնաց վաճառականի տունը, պտի խացկերութուն անեն։ Վաճառա-

կանը ասեց.—Ընձի մէկ խասս աղջիկ ունեմ. անդամալիւծ ա. մէկ գունդ միս ա, ոչ ոտք ունի, ոչ բերան, ոչ ձեռք ունի, ոչ քիթ. թէ որ կառնիս, կտամ կարողութունս էլ քեզ. ես եմ, իմ մէկ կին. թէ որ չառնես, քեզ զաց չեմ տալի. յիւր էկեր էս, էն տեղ գնա։

Տղէն ասաց.—Ես մէկ գունդ միս ինչ անեմ։ Վեր կացաւ, գնաց, աղջկայ օթախի դիւռ բաց արեց, տեսաւ որ մէկ հիւրի, փերի աղջիկ նստած ա, ճէ ուտես, ճէ խմես . . . չատ սիրուն աղջիկ ա։ Ցետ դառաւ, գնաց անոր մօտը։

—Հայրի՛կ, ասաց. էս աղջիկը տու ընձի, իմ մալ քըզի։

Ասաց.—Տուեցի էն աղջիկը, իմ մալն էլ քեզ, քիւ մալն էլ քեզ։

Տղէն պսակեց, պրծաւ։ Մէկ էրկու տարի տղէն էս տեղ մնաց, համ զօքանչը, համ աները մեռան. մնացին ինք, իր կին։

Տղէն ասաց.—Էս տեղ մեզի ձեռք չտար, չարը թողենք, քինը վե կալենք, էթանք։

Գնացին, Ստամբօլայ քաղաք դիւս էլան։

Էս տղէն մէկ բօղնոց ակունք-անգին քար լիք լցեց, տարաւ թագաւորին հեցիյէ. թագաւոր գնահատեց որ մէկ խաստ անգին քար քաղաք կառնի աւ չծախի։

Այ տղա՛, ասաց. ինչ էս խնդրում։—Թագաւորի սաղութուն, եմ ուզում. ես էկերեմ ղարիպ երկրէ, քեզ ժողովուրդ դարձեր։ Ընձի խամար մէկ տեղ տուր՝ տուն շինեմ, նստեմ միջին։

Թագաւոր մտածեց. մէկ խաս պաղչա ունէր. տուեց ըդրան. տղէն քառսուն աեհճէ խօրոտ տներ մի շինեց. իրան Մանուչակին մէջը դրեց։ Բայց ինչ անես որ միտքը փոխուաւ. կինը թողաւ, որ էրթայ Էրուսաղէմ, մուղսի դառնայ. մտածըմ ա օ-ես որ էրթամ, իմ կնիկ ում խետ պտի խօսայ. էրթամ, մէկ խաստ ծառայ բռնեմ։

Վեր կացաւ գնաց պազարը, տեսաւ որ մէկ մարդ մէկ խաստ բիլբուլ ա ծախըմ.—Բիլբուլի մարիֆաթը ինչ ա, այ մարդ. ասաց.

—Մարիֆաթը էս ա. մարդի խետ խօսում ա։

—Գին ինչ ա.—Տաս օսկի ա. ասաց։

Բիլբուլը առաւ, տարաւ Մանուչակ խանումի խամար։

—Կնիկ, չատ լաւ բան ա, ծառայ բերեմ, լաւ չի, էսի քըզի ձեռքատուլյա։ Դռներ փակեց, թողեց բիլբուլ տունը, գնաց։

Էդ քաղաքի թագաւոր մէկ խաստ տղայ ունի, օխտը տարի մէկ ճէյրանի քամակից գնացեր ա. օխտը տարին թամամեց, դարձաւ-էկաւ. տեսաւ տներ մէ շինուած, էդ ճէյրանը մէջը նստած ա, ասաց թագաւորին.—Հայրի՛կ, քու աչքն էլ, իմ աչքն էլ լիս ըլլի, իմ ճէյրան բերիր, պահ տուեիր։

—Հայ որդի՛, ասաց. խօ դիւ գիժ չիս. ինչ ճեյրան. էդրա տէրը քաղաք կառնի, չծախի. հեռու կաց։

Էդ տղէն խռովեց, տանից դուս էկաւ, գնաց մէկ ճամբու պա-ռաւի պատահեց.—Անա՛, Աստուծոյ սիրուն ըլլի, դու սրտի կողմանէ ինչպէս ես։—Շատ լաւ, ինչպէս քու սիրտ ուզայ։

—Կարո՞ղ ես իմ ճէյրան ընձի համար բերես, ինչ ուզես կտամ։

—Ընչի՞ կարող չեմ. էգուց գնամ, բերիմ։

Ջամես, անզգամ պառաւը ճամբայ. սեր էրաւ, թռաւ, մտաւ ագռաւով ներսև.—Աման, քուր աղջիկ, ասաց. բարով-սիրով էկեր ես էս տեղ. չասես ընձի մորքուր կայ, էրթամ, տեսնամ ինչպէս ա։

—Այ ճանըմ, ասաց. այ կեօզմ, ընձի էս տեղ բարեկամ չկայ։

Պառաւ էս կնկան համոզեց, քարոզեց որ տանի ղօնախ։

Բիլբուլը կանչեց.—Խանըմ, յիւր ես էրթում. կաց, բանեմ ասըմ, նոր գնա՛. խանըմ կայնեց։

—Խանըմ, ասաց. ժամանակով մէկ ախքատ մարդ կըլլի, էս ախ-քատ մարդուն սիրուն կնիկ կունենայ. բայց խանըմ, լաւ ականջ էրայ. գեացին մէկ կեամուչու պատահեցին, նստան կեամին որ էթան իրանց հայրենիքը դուս գան։ Դուս էկան, փող չկայ որ տէն կեամուչուն։ Բիլբուլ ասաց.—Խանըմ, լաւ ականջ էրայ. կեամուչին ասաեց. «փող տուր». թէ «փող չունեմ, տամ, ծրտուց տամ»։ Ասաց.—Կնիկ թող մնայ փողի գրաւը. դու գնա՛, բեր։ Խանըմ, մին-չև որ տուն գնաց. էս անիրաւ կեամուչին էս խեղճ աղքատի կըն-կան փախցուց։ Էս ախքատ մարդը մնաց փոր ու փօշման, ախ-վախ անելով։ Խանըմ, լսեցի՞ր, ինչ էղաւ, ինչ օյին էկաւ ախքատի գլուխ, քու գլուխն էլ օյին կգայ, մի՛ գնար։

Խանըմ բիլբուլի խօսքին ականջ էրաւ, ետ դառաւ, նստաւ. ասաց.—Պառաւ, դու գնա, ես չեմ իգայ։

Պառաւ գնաց տուն, թագաւորի տղէն ասաց.—Անիրա՛ւ պա-ռաւ, ինչու չբերեցիր իմ Կիւլլի փերին։

—Ասաց. «Խնդրումեմ, ժամանակ տաս», սապոկներ անկարել էր։

Լուսուն էլի վեր կացաւ, գնաց.ճգնաց, մտաւ ներսև։

—Այ քուր աղջի՛կ, ասաց. իմ տղէն պտի պսակուի, առանց քըզի չի պսակուի։

Վեր կացաւ, կնկան խելք էր, իրան չորեր խաղաւ. էլի պտի գնայ, էլի բիլբուլ ձէն տուեց։—Խանըմ, յիւր ես էթում. կաց, պտի բան ասեմ, ախր քըզի բան ասեցի. դու չես ասեր թէ էդ ախքատի կնկան կեամուչին տարաւ, ո՛ր տեղ դուս բերեց։ Էս անզգամ պա-ռաւը բիլբուլի վրէն բարկացաւ, ուզեց չնլինք քաշեր։ Խանըմ ասաց.—Դէ, իմ բիլբուլին բան մի ասի, ինչ կասի, թըղ ասի։

—Խանըմ, ասաց բիլբուլ, կեամուչին առաւ կնիկը, տարաւ. քաղաքին մօտացաւ. կեամին կայնացրուց, ասաց. «Այ ախքատ կնիկ, տանեմ քըզի առնեմ»։

Ասաց. «Ինչու, ախքատ եմ, ինչ, ես գէ՞շ եմ, գնա՛, քըզի բաբեկամ չկայ, ա՛ռ, արի՛, ընձի պատիւով տար»։

Կեամուշին վեր կացաւ, գնայ իրա տունը. իրան մարդ, բաբեկամ թօփ արաւ. դափ ու զուռնայ վեր կալեց, գնաց ուր կնկան վեր կալի, բերի։ Գնաց որ ոչ կեամի կայ, ոչ կնիկ, փօր֊ փօւմաճ մնաց մղկըտալով, լալով: Խանըմ, ասաց բիլբուլ, ոնց որ կեամուշին փօւմաճ էլաւ, դիւ էլ կըլլիս, մի գնար էդ պառաւի խետ։

Խանըմ էկաւ, չորեր խանեց, նստեց.—Գնա՛, չըմ իգայ, ասաց։

Պառաւ վեր կացաւ, գնաց տունը. Թագաւորի տղէն էկաւ, ասաց.—Չի բերեցի՛ր, ինչու ընձի կը խափես։

—Ասաց.«Խնդրումեմ, ընձի միճթանայ, կար ունեմ, կարեմ, էգուց կըգամ։

—Պօլ չէլաւ ընձի խափիս, քու չնլինք կը կտրիմ։

Սերպանդ պառաւն էր, իրան ճաճ անծուխ քսեց, կապըտացրուց, գնաց նստաւ նեքսև, ասաց.—Քուր աղջի՛կ, Աստըծու սիրուն ըլլի, էնքան իմ տղէն ընձի տփեր ա, «առանց իմ մօր քուր աղջկան չեմ պսակուիր» ասըմ ա։

Կնկան խելքն էր, որ մղկտաց, էլի էլաւ, իրա չորերը խագաւ։

Կնիկ դռան վերէն խասաւ, որ պէտք է դիւռ բաց անի.—Խանըմ, յո՞ւր էս էթում, ասաց բիլբուլ, կաց՝ բանմ ասեմ. պա չե՞ս ասեր բիլբուլս սոված ա, ծարաւ ա:

Խանըմ տուեց բիլբուլին ջուր, կուտ։

Պառաւ մօտացաւ դրա չնլինք կտրի, բիլբուլը պօռաց.—Ամա՜ն, խանըմ, էդի մի՛ թողէ ընձի մօտ։

Ասաց.—Դեն, պառա՛ւ, չմօտանաս իմ բիլբուլին։

Դարձաւ բիլբուլին.—Դէ՛, ասա, բիլբուլ, ասաց խանըմ։

Ասաց.—Խանըմ, չըս ասի, էն խեղճ ճեամիպ կնիկ առանց մարդի, ծովի վրայ կեամին առաւ, ո՞ւր տարաւ, գնաց։

—Դէ՛, բիլբուլ, ասա՛, տեսնամ, ո՞ր տեղ գնաց։

—Գնաց, մէ թագաւորի պատահեց.—ամա խանըմ, լաւ ականջ էրայ. էս թագաւոր էս կնկայ բռնեց, կեամու միջից տարաւ. Թէ «քեզ պտի առնեմ», ասաց։ Էսի ասաց.—Ես քու լայեղի աղջիկ չեմ, քօչի աղջիկ եմ։ Թէ.—Հնար չկայ, ուզումես քօչի ըլլես, ուզումես մըթրըպի ըլլես, քզե պտի առնեմ։

—Ընձի խինդ օր ժամանակ տուր, ես քու ղարավաշներու խետ կան գեամ, նորէն գեամ։

—Էյ, խանըմ, ասաց բիլբուլ, էդ թագաւոր քեառասուն ղառավաշ, մէկ կնիկ դրեց խետ, կան էկան. գճացին ծովու ղրաղը։

Էդ կնիկ քեառասուն ղառավաշ. Թագաւորի կնիկը կեամու մէջ առաւ, գնաց։ Խինգ օր քամամեց. Թագաւոր էլաւ, կան էկաւ, ոչ

ղառավաշ կայ, ոչ կնիկ կայ, փոր-փոշման նստեց, ասաց.—Հէյ վախ-հէյ վախ, համ գնաց քառասուն ղառավաշս, համ գնաց կնիկս, համ գնաց էն կնիկ։ Շատ փոր փոշման էլաւ Թագաւորը. խանըմ, ասաց բիլբուլ. եթէ դու անզգամ պառուի խօսք գնացիր, փօշմանիս, դու արի, մի՛ գնայ։

Խանըմ բիլբուլի խօսքին ականջ էրաւ, չորեք խանեց.—Պառաւ, դու գնա, ասաց։

Պառաւ վէր կացաւ. լաց ըլլելով թողեց, գնաց.

Թագաւորի աղէն ասաց.—Պառաւ. անզգամ պառաւ, ինչու չբերեցիր։ Ուզեցաւ պառաւու ճելլէ անի։

Պառաւ շատ աղաչանք էրաց.—Ընձի մի՛ սպանիր, էգուց անպատճառ կը բերեմ։

Լիս բացուեց. պառաւ վէր կացաւ, իրան քցեց խանըմի դուռը, թէ.—Աստըծու սիրուն ըլլի, վէր կաց, գնանք. ընձի իմ աղէն էնքան չարդեր ա. պտի սպանի։

—Պառաւ, ճէնճամ, էնքան աղաչանք կանես. վէր կաց էթանք։

Վ,էր կացան, դուռը բաց արեց, պտի էթայ, բիլբուլը կանչեց.—Խանըմ, յիր էս էշում, չես ասի. «կաց բարի, պտի էթամ»։

Պառաւ բիլբուլի վրէն բարկացաւ.—Անզգամ, պօլ չէլաւ։

Ամա՞ն, խանըմ, ասա պառաւին դէն էթայ։

Դարձաւ։—Խանըմ, մէկ բան պտի ասեմ, ասեմ ու գնամ։

—Դէ, ասա, բիլբուլ։—Խանըմ, էն կեամու մէջ տղամարդ չկայ. պիրեսի յարմատ ին. էս կնիկը առաւ էս քառասուն ղառավաշը՝ Թագաւորի կնիկը. որ տեղ գնաց։

—Ես ինչ իմանամ. որ տեղ գնաց, դու ասա, որ տեղ գնացին։

—Գնացին, պատասխան քառասուն ու էրկու հարամու. համա, խանըմ. լաւ ականջ էրայ. էս քառասուն հարամիք լցուեցին կեամու մէջը, քառասուն էրկու կնիկ դուս բերեցին, ամեն հարամի մէկ ղառավաշ փախցրուց, իրա խամար հեռու կայնացրուց. էս ճեասիպ կնիկ ինչ արաւ.—«Էյ հարամիք, էդ ինչ էք անըմ, ասաց. դուս օր տղամարդ բաղդ չունի։ Էյ խանըմ, լսէ, էս ճեասիպ կնիկ ինչ արաւ. կանչեց հարամու բաշուն, «ես ութ աւուր ճանապար քե խամար իմ էկած. դուք քառասուն ու էրկու հարամի իք, մենք էլ քառասուն ու էրկու յարմատ ենք. ձի հարամու բաշին որ մէկն ա։ էն մէկն ասաց.—Ես իմ։

Ասաց.—Դու իմ մարդն իս, արի, իմ կշտին կայնի։

Ամեն հարամու մէկ ղառավաշ տուեց. բայց ասա, խանըմ, ինչ թաւուր տուեց մարդի։ Ասաց, «իմ իրաւունքով պտի ըլի, կը բերէք քառասուն տիկ գինի. կը բերէք տաս Պաստ օխչար, որ մորթիմ, խալ,անիք անեմ։ Համա խանըմ, ասաց բիլբուլ, լաւ ականջ

Ասաց. «Ինչու, ախքատ եմ, ինչ, ես գէչ եմ, գնա, քըզի բաբեկամ չկայ, մու, արի, ընձի պատիւով տար»։

Կեամուշին վեր կացաւ, գնաց իրա տունը. իրան մարդ, բաբեկամ թօփ արաւ. դափ ու զուռնայ վեր կալեց, գնաց ուր կնկան վեր կալի, բերի։ Գնաց որ ոչ կեամի կայ, ոչ կնիկ, փոր֊փօշման մնաց մզկըտալով, լալով։ Խանըմ, ասաց բլբուլ, ոնց որ կեամուշին փօշման էլաւ, դիւ էլ կըլլիս, մի գնար էդ պառաւի խետ։

Խանըմ էկաւ, չորեր խանեց, նստեց.—Գնա, չըմ իգայ, ասաց։

Պառաւ վեր կացաւ, գնաց տունը. Թագաւորի տղէն էկաւ, ասաց.—Ձի բերեցիր, ինչու ընձի կը խափես։

—Ասաց.«Խնդրումեմ, ընձի մինթանայ, կար ունեմ, կարեմ, էգուց կըգամ։

—Պօլ չէլաւ ընձի խափիս, քու չնլինք կը կտրիմ։

Սերպանդ պառաւն էր, իրան ճան անծուխ քսեց, կապըտացրուց, գնաց մտաւ նեքսև, ասաց.—Քուր աղջիկ, Աստըծու սիրուն ըլլի, էնքան իմ տղէն ընձի տփեր ա, «առանց իմ մօր քուր աղջկան չեմ պսակուիր» ասըմ ա։

Կնկան խելքն էր, որ մզկտաց, էլի էլաւ, իրա չորերը խագաւ։

Կնիկ դռան վերէն խասաւ, որ պէտք է դիւռ բաց անի.—Խանըմ, յիւր էս էթում, ասաց բլբուլ, կաց՝ բանմ ասեմ. պա չես տեսր բլբուլս սոված ա, ծարաւ ա։

Խանըմ տուեց բլբուլին ջուր, կուտ։

Պառաւ մոտացաւ դրա չնլինք կտրի, բլբուլը պօռաց.—Ամա՜ն, խանըմ, էդի մի թողէ ընձի մօտ։

Ասաց.—Իեն, պառաւ, չմօտանաս իմ բլբուլին։

Դարձաւ բլբուլին.—Դէ, ասա, բլբուլ, ասաց խանըմ։

Ասաց.—Խանըմ, չըս ասի, էն խեղճ ճեամիպ կնիկ առանց մարդի, ծովի վրայ կեամին առաւ, ուր տարաւ, գնաց։

—Դէ, բլբուլ, ասա, տեսնամ, ուր տեղ գնաց։

—Գնաց, մէ Թագաւորի պատահեց.—ամա խանըմ, լաւ ականջ էրայ. էս Թագաւոր էս կնկայ բռնեց, կեամու միջից տարաւ. Թէ «քեզ պտի առնեմ», ասաց։ Էսի ասաց.—Ես քու լայեղի աղջիկ չեմ, բօշի աղջիկ եմ։ Թէ.—Հնար չկայ, ուզումես բօշի ըլլես, ուզումես մըթրըպի ըլլես, քզե պտի առնեմ։

—Ընձի խինգ օր ժամանակ տուր, ես քու ղարավաշներու խետ կան գեամ, նորէն գեամ։

—Էյ, խանըմ, ասաց բլբուլ, էդ Թագաւոր քեառասուն ղառավաշ, մէկ կնիկ դրեց խետ, կան էկան. գնացին ծովու ղռաղը։

Էդ կնիկ քեառասուն ղառավաշ. Թագաւորի կնիկը կեամու մէջ առաւ, գնաց։ Խինգ օր քաշմաշեց. Թագաւոր էլաւ, կան էկաւ, ոչ

դառավաշ կայ, ոչ կնիկ կայ, փոր-փոշման նստեց, ասաց.—Հէյ վախ-հէյ վախ, համ գնաց քէառասուն դառավաշս, համ գնաց կնիկս, համ գնաց էն կնիկ։ Շատ փոր փոշման էլաւ Թագաւորը. խանըմ, ասաց բիլբուլ. եթէ դու անզգամ պառուի խետ գնացիր, փոշմանիս, դու արի, մի գնայ։

Խանըմ բիլբուլի խօսքին ականջ էրաւ, չորեր խանեց.—Պառւմւ, դու գնա, ասաց։

Պառաւ վէր կացաւ. լաց ըլլելով թողեց, գնաց.

Թագաւորի աղէն ասաց.—Պառւմւ. անզգամ պառաւ, ինչու չբերեցիր։ Ուզեցաւ պառւու ֆելլէ անի։

Պառաւ շատ աղաչանք էրաց.—Ընձի մի սպանիր, էգուց անպատճառ կը բերեմ։

Լիս բացուեց. պառաւ վէր կացաւ, իրան քցեց խանըմի դուռը, թէ.—Աստըծու սիրուն ըլլի, վէր կաց, գնանք. ընձի իմ աղէն էնքան ջարդեր ա. պտի սպանի։

—Պառւմւ, ճէճճամ, էնքան աղաչանք կանես. վէր կաց էթանք։

Վէր կացան, դուռը բաց արեց, պտի էթայ, բիլբուլը կանչեց.—Խանըմ, յիր էս էշուռմ, չես ասի. «կաց բարի, պտի էթամ»։

Պառաւ բիլբուլի մէջն բարկացաւ.—Անզգամ, պօլ չէլմւ։

Ամա՜ն, խանըմ, սաս պառաւին դէն էթայ։

Դարձաւ։—Խանըմ, մէկ բան պտի ասեմ, ասեմ ու գնամ։

—Դէ, ասա, բիլբուլս։—Խանըմ, էն կեաւռւ մէջ աղամարդ չկայ. պիւեցի յարմատ են. էս կնիկը առաւ էս քէառասուն դառավաշը՝ Թագաւորի կնիկը. որ տեղ գնաց։

—Ես ինչ իմանամ. որ տեղ գնաց, դու ասա, որ տեղ գնացին։

—Գնացին, պատախտն քէառասուն ու էրկու հարամու. համա, խանըմ. լաւ ականջ էրայ. էս քէառասուն հարամիք լցուեցին կեաւռւ մէջը, քէառասուն էրկու կնիկ դուս բերեցին, ամեն հարամի մէկ դառավաշ փախցրուց, իրա խամար հեռու կայնացրուց. էս ֆեասիպ կնիկ ինչ արաւ.—«Էյ հարամիք, էդ ինչ էք անըմ, ասաց. դրուս օր աղամարդ բաղդ չունի։ Էյ խանըմ, լսէ, էս ֆեասիպ կնիկ ինչ արաւ. կանչեց հարամու բաշուն, «ես ութ աւուր ճանապար քե խամար իմ էկած. դուք քէառասուն ու էրկու հարամի էք, մենք էլ քէառասուն ու էրկու յարմատ ենք. ձի հարամու բաշին որ մէկն ա։ էն մէկն ասաց.—Ես իմ։

Ասաց.—Դու իմ մարդն ես, արի, իմ կշտին կայնի։

Ամեն հարամու մէկ դառավաշ տուեց. բայց ասա, խանըմ, ինչ քաւուր տուեց մարդի։ Ասաց, «իմ իրաւունքով պտի ըլի, կը բերէք քէառասուն տիկ գինի. կը բերէք տաս Դատ օխչար, որ մորթիմ, խալսնիք անեմ։ Համա խանըմ, ասաց բիլբուլ, լաւ ականջ

էրայ. կնիկն ինչ ա անըմ։ Էս քեասիպ կնիկը, էս Թագաւորի կնկան, ղառավաշներուն ասաց.—Մէկդի ձեր մարդին չի մօտանէք. ամեն մարդ իրան մարդին գինի խմացնի. չըլլիմ, չիմանամ դիւ խմէք։ Կը խմացնէք. պիրասի դինովացնէք. ընդոնց չորեր կը խանէք, խադնէք։ ասպապները կը կապէք։ ձիանք խեծնէք, որ ըս տեղէն փախնենք։ Խանըմ, լաւ ականջ էրայ. էկան օխչար մորթեցին. խարանիս արեցին, խմացրին, չորերը խադան. ասպապները կապեցին, խեծան. փախան։ Էն պաշտան հարամիք էլան. տեսան ոչ չոր, ոչ ձիանք, ոչ ասպապ, ոչ կնանիք. չփլախ էն տե նստած էն։

Էդ կնանիք գնացին մէ յիւրիշ քաղաք դիւս էկան։ Էդ քաղքի Թագաւոր վաղճանած էր, ղօլվաք ղուշի կայ, էսոնց կարգադրութուն էնպէս ա որ գցում են, ում գլխուն վե գայ. կը դնին Թագաւոր։ Ղօլվաք ղուշին գցեցին, էկաւ, իջաւ էս քեասիպ կնկայ գլխին։ Համա խանըմ, էս տեղի լօթիք-փօթիք տփեցին, քաղքից դիւս արեցին։ Էլի ղուշը Թալեցին, էլի քաղքից դիւս գնաց, նստաւ ընդոր գլխի վրէն. էլի պտի ջարդէն, հոգեվախ մարդիկ էկան, ասին. —Աստուած էս ա կամեցե։ Ընդունեցին.—Խանըմ, ասաց բիլբուլ, լաւ ականջ էրա. տես, ինչ արաւ կնիկ. կանչեց էդոնց մարդեր, ասաց.—Վաքիլ-վազիր ինչ որ կայ, իմ մարդեր պիտի անեմ։ Պիրասի իրա մարդեր պախեց իրա մօտը։

Բերեց իրա պատկերը քաշել տուեց, աղբրի վրայ դարկել տուեց. թանպիհ արեց, ինչ կանդար աղբուր կայ, փակեն. մնաց բաց էդ աղբուրը։ Բայց խանըմ, չասես, համ կեամուշին, համ իրա մարդը, համ Թագաւորը, համ քեառասուն հարամիք. իրարու քամակից ման էին գալի։ Էկաւ էս կնկայ մարդը. քաղաքի մէջ ջուր չգտաւ, մարդի մէկ ասաց.—Հա, էն տեղ աղբուր կայ, գնա, խմէ։

Գնաց, ջուր խմեց, աչքը ընկաւ պատկերքին, ախ քաշեց. ղարաուլներ բռնեցին, տարան Թագաւորի մօտը. Թագաւոր դրեց մէ լաւ օթախ, մէկ ղառավաշ դրեց մօտը. օրերից մէկ օր կեամինին էկաւ, էնպէս ջուր խմեց, ախ քաշեց, էն էլ դրեց մէկ մութ օթախ. խաց, ջուր չտուեց։ Խանըմ, չես ասի, խեղճ հարամիք ինչ էլան, առանց չորի, տկլոր։

Էնդընէ էտև քեառասուն հարամիք էկան. ընդոնք էլ ջուր խմեցին, պատկերը տեսան, ախ քաշեցին, էնոնք էլ բռնեց։ Թագաւորն էլ դերվիշ ղըլըղինձա էկաւ, էն էլ բռնեց։

Խանըմ, ասաց բիլբուլ. տես, ինչ դատաստան պտի անի։

Էս կնիկ մէկ մէկ խարցուց, էդ հարամիք ասացին,—Մեր մէջ քեառասուն էրկու յարմատ պատահեցան, մենք թամազու (կարօտ) էնք, կին չունէնք, մեզի կին առինք, մեզի խափս տուեցին. մեր բաներ առան, տարան։

Թագաւորը հրամայեց ձի, ապպապ ու չորեր տուն ուրանց. ամենքին էլ չորս խարիր մանեթ տուեց, որ էթան, պսակուին։

Համա խանըմ, կանչեց Թագաւոր բերել տուեց, խարցուց.
—Դու Ֆլան քաղքի Թագաւոր իս, խմ դարվիշ դըլըղնսա իս։

Էն էլ պատմեց իր գլխից անցածը։

Կանչեց, ընդըրա կինը բերել տուեց.—Կը ճանչնա՞ս, ասաց. ա՛ռ, գնա։ Համա ղառաւաշներ չգացին։

Կանչեց կեամուչուն, կեամուչին ասաց.—Մէկ կնիկ ունէր, տաւ իմ կեամին, փախաւ։

—Քու կնիկն էր թէ քու սիրող։

Ասաց.—Վալա, իմ սիրողնէր։

—Մարդ ունէր թէ չունէր։

—Մարդ ունէր, ասաց։—Որ ունէր, խմ առեցիր։

—Կեամուն փող էն տալի։

Կանչեց երկու ջալաթ, գլօխը զարկին։

Կանչին էն կնկայ մարդին։

Խանըմ, ասաց բիլբուլ. դու տեսար էն կնիկ քանի մարդիւ ձեռք ընկաւ, չխափուաւ, դիւ էդա փիս պառուու մէնէ խափուեցար։

—Գառա՛ւ, ե՛լ, գնա, ասաց։

Խանըմի դիւռ տփեց՝ իրա մարդը.

Գառաւը փախաւ, իրա մարդը մտաւ ներսեւ։

Կերան խման։

Բիլբուլի գինը խազար մանեթ էր։

# 34

## ՃԵԽ ՍԱՏԻ

(Վաղարշապատի եւ Մոկաց բարբառով *)

Ճեխ Սատի անուոր մէ մարդ կըլլէր, չկարգուէր. ասին-ասին, էս մարդի խելքը գողացան վազիրն ու նազիրը. էն խօսք տուեց։—Ի՞նչպէս կարգուիմ, ասաց, էնպէս աղջիկ պտի առնիմ օր խում կաթ ուտող չըլլի։

* Պատմած է Նազարեթ Մկրտիչ-Կուլյան։

—Ինչպէս անենք, էփած կաթ ուտող գտնենք, ասին։

Ընկան աշխար մէն էկու. մէկ ճեասխպ կնիկ անճար ու աղքատ պատուեց (ծնաւ), մէ աղջիկ բերեց, չթողեցին իրա մօր կաթ ուտէր. տուեցին փարի զօռը, բերեցին, տարան տուեցին Շէխ Սատուն։

Շէխ Սատոյին բերեց, գեղրունքով էդ աղջկան պախպանեց։

Օրից մէ օրը 15 տարեկանը լմացաւ, բերեց կարգեց իրա վերէն։

Սատոյին քեաւուան ասեճե մէ տուն չինեց, ասաց.—Իմ յարմատ (կին) դուս չկայ, յաչք չգցի մարդի։

Դռներ վերէն փակեց, ալ-դուռ անելու կերթէր։

Կամ մէ տարի, կամ էրկու տարի եօլա գնացին։

Օրերից մէ օրը էկաւ ճճելի մէկը փեճճերի տակով գնաց. մօտիկ տուեց, մէ չատ սիրուն-գեղեցիկ կնիկ փեճճերի մէջ նստած ա, ասաց.

—Էս կնիկ իմ կնիկ ըլլէր, ես աւուր խոցի կարօտ ըլլէի։

Իրա մտքի մէջ ասաց, ընցաւ։

Բաց ինչ ասես, էս կնիկն էլ վերեւից սիրտ խառալ էլաւ ասաց.—Ա՜խ, էս մարդը ճեշկալ իմ մարդը ըլլէր։

Էս մարդը գնաց, մէ ճաշու պառաւի քուշ էլաւ, ասաց.

—Նանէ՛, դու սրտի կողմանէ ինչպէս իս։

Ասաց.—Ինչպէս որ պտուկ հռայ, խուփը բերնին ուրըղը դուս չգայ, ես էնպէս իմ։

Խանեց սաս օսկի տուեց պառաւին, պառաւ ուրախացաւ։

—Նանէ՛, ասաց տղէն, կարճս ընձի տաննես էն կնկայ մօտը։

—Իմ փեշեկլիս անունը ինչ ա, ասաց պառաւը։

Մէ խատ դիւլկեր բերել տուեց պառաւ, ասաց.

—Ի՞նչ սամ քե, մէ խատ դուքի չինես էս պօյին, էս չափին։

Պառաւը մէ օսկի տուեց, դիւլկերը դուքին չինեց։

Բերեց տղէն դրեց միջին, տուեց խամալի ճալակ, գնաց։

Էս ճաշու պառա՛ւ ինչ արաւ. քեպպեխ բռնեց ձեռը, ասաց, «տէր օղորմեայ, տէր օղորմեայ» ու գնաց. Շէխ Սատու դռան կայնեց. դուռ փակ էր։

Շէխ Սատոյին ճեճրից էկաւ, տեսաւ մէկ պառաւմ՝ դռան կայնած ա։—Նանէ՛, ասաց. դու ինչ կնիկ իս։

—Ես կերթամ Երուսաղէմ, քե պախպան կինայ, մէ քիչ ամաճաթ կայ, քի պահ տամ։

—Պառաւ, տեղ չկա. մէ տեղ քցի, թող էրթայ։

—Դի՛ւ, քու յարմատը դո՛ր կը քնիք, էն տեղ պահի։

—Տա՛ր էն օրախը որ ես իմ յարմատը պարկումենք։

Տարաւ, էն օրախի մէջ դրեց. լնք թողեց, գնաց,

Աղօթարուն բայցուեց, Շէխ Սատին էլի գնաց ԵԷԵիր։

Էս տղէն ղուքու մէջ խազաց։

Էս կնիկ ասաց.—ԻՆս էս, ՆրՆս, էս, արՀ, ես կտոր, կտոր կըաիմ։

Տղէն դՀւս էկաւ, կնիկ տեսաւ իրա տեսած տղէն էր, փաթութուեցին իրար, ԲԷՖ ուրախութեն արեցին։

Մէկ օր, էրկու օր վրէն ընցաւ. Շէխ Սատին չգնաց ԵԷԵիր, ընկաւ քամակի վրէն ու պարկեց. տեհաւ օձօդքի վրէն մէկ թուք կախ ընկեր ա պատից, չորացեր ա։

Շէխ Սատին չատ գիտող էր, ասաց իրան-իրան-։

—Էս թուք ես չիմ թքիր. իմ կնիկ վերև չկարայ թքի, վերև տղամարդիկ կը թքեն։ Գնաց օտաց ճանապար, մտիկ տուեց որ տղայ մարդի ջըվէթ կայ.—Հայ վա՛խ-ճայ վա՛յ, ասաց, իմ կնիկ խարապ էլաւ։ Լիս չընկաւ հեչ. իրա մտքի մէջ պախեց։

Անկայ չորս, խինգ աւուր խաց տուեց, դռներ փակեց, գնաց։

Գնաց, մէ չոլ դաշտի մէջ մութ կոխեց ղրա վերէն. մէկ չիՆարի ծառ կար, իլաւ ձին պխաւեց. ինք վեր կացաւ, չիՆարի վերէն նստեց։ Գիշերուայ վախտին մէ ծանօր բազրկեաՆ էկաւ, էդ չիՆարի տակ իրա բեռներ թափեց, իրա . . տաւար, ձիանք. դեվէՔը տարան պախելու. մնաց բազրկեաՆ բաշիՆ։ Իրա ճեպից խանեց թուքուՆի ղուքին, որ ափսուՆեց. ղուքուց մէկ խատ կնիկ դՀւս էկաւ, որ կնիկ դՀւս էկաւ, բազրկեաՆ բաշիՆ քնեց։

Էս կնիկ մէ խատ քնոյ ուլինք դրեց բազրկեաՆ բաշու ականջը։

Կնիկն ա. իրա ծամերու միջից խանեց մէ կապոց, ափսոՆեց. որ ափսոՆեց, կապոցի միջից էլաւ մէ խատ ԵեԵել տղայ. իրար խետ կերան, խմեցին, ԲԷՖ արեցին։

Էլի էդ կնիկ էդ մարդ դրեց կապոցը ու դրեց ծամերու մէջ, քնոյ ուլինքը բազրկեաՆ բաշու ականջէն խանեց. էն կնիկ իրա մարդու խետ խաց կերաւ, պրծաւ։ Էլ էս մարդը դրեց ղուքու մէջ, դրեց ճեպ։

Ձէն տուեցին իրարու, իլխրՔը բարձեցին, գնացին։

Շէխ Սատին իրան ձին բերեց, խեծաւ քամակից, բազրկեաՆ բաշուՆ խասաւ։—Բարի լուս քե, պազրկեաՆ, ասաց։

—Աստըծոյ խէրն ու բարին, դու ինչ մարդիս, դո՛ր էս էթըմ։

Ասաց.—Ստամբօլայ քաղաք Շէխ Սատու տունը։

Ասաց.—Շէխ Սատին ես իմ։

Ուրախացան իրար վրէն, գնացին Ստամբօլայ քաղաք դՀւս էլան։ Շէխ Սատին քեաւսուն աշեՆԻ դռներ բաց արեց, դաՆկեր վաւեց նեքսև, գնա՛ց կնկան բաւպեխ էրաւ, ասաց.

—Կնի՛կ, վեց մարդի խաց խազրի։

Կնիկ էլաւ վեց մարդի խաց խազրեց։

Էկաւ յիրկուն, ճրագ կպցը վախտը նստաւ խացի վրայ իրեք մարդ։—Կնիկ ասաց.—Դիւ ասիր վեց մարդու խաց խազրէ, մկայ իրեք մարդ կայ։

—Բան չկայ, կնիկ, հիմի կգան։

Շէխ Սաւրին դարձաւ՝ բազրկեան բաշուն։

—Բազրկեան բաշի, իմ քիրը սոված կըլլի. խա՛ն, կտորմ խաց ուտի։

Բազրկեանը չչկռեց—Ի՞նչ քիր, ի՞նչ կնիկ, ի՞նչ բան, ասաց.

—Խնդրեմ, խան-խան, ասաց։

Զոռեց, խանել տուեց։

Ասաց.—Քիւրի՛կ, ահա, էն գդալ քե, էն քարղան քե, նստի իմ կողքին, կի։

Էդ կնիկ նստաւ որ խաց ուտէր, Շէխ Սաւրին ասաց.

—Քիւրիկ, խան էն կապոցի միջի մարդը, խաց ուտի, անօթի կըլլի, ճճել տղայ ա, մեղք ա։

Զոռեց-զոռեց, դիւս բերեց, ասաց.

—Տղա՛, էն քարղան, էն գդալ քե, ղարիպ մարդիս, նստի. կի։

Դարձաւ իրա կնկան։

—Կնիկ, ասաց. էն ժուքը որ էն տեղ չորացեր ա, նրան էլ բեր, խաց ուտի, մեղք ա։

Կնիկ ուրացաւ, ասաց.—Այ մարդ, ի՞նչ թուք, ի՞նչ բան։

Շէխ Սաւրին վեր կացաւ, ղուքու դիւռ բաց արեց, ասաց.

—Հարադա՛շ ջա՛ն, արի՛, նստի իմ կողքին. մկայ դզուեցինք վեց խոգին. խա՛ց անուշ արէք։

Էլ խա՛ց կուլ կեթայ, մացին սառած։

Շէխ Սաւրին ասաց.—Պազրկեան, էս մէկ իմ կնկայ, էս մէկէլն էլ քիւ կնկեայ սիրողն ա, որ մենք խաչ աւետարանով պսակուած ինք, մի չեն սիրըմ մի կնկտիք, էսոնց ին սիրըմ. արի՛, դէյմիւ չըլլինք. դիւ բիր քիւ մալ, իս էլ իմ մալ բաշխինք էն մարդոց, էրթանք դօր օր անդարց տեղ կայ։

Իրանց մալ բաշխեցին իրանց կնկայ սիրողներուն. իրանք վե՛ր կացան, գնացին։

Շատ ու քիչ գնացին, տեսան որ մէ մարդ մէ մեծի միջից դիւս էն բերըմ, քառսուն փահլիւան ընկած ա էն կողք, քառսուն յարմատ ա ընկած էն կողք, չըն ժողնի էս մարդու փէշ գետին առնի սրբու պէս։

Շէխ Սաւրին ասաց.—Էս մարդ անդարց ի մեք էլ էրթանք փեշից բռնենք որ անդարց ըլլենք։

Ամեն մէ փեշից բռնեցին, առան բերին տունը։

Տեսաւ որ սեղան փռուած ա, Աստուած ինչ որ տեղծեր ա, սեղանի մէջ կայ։

Էն մարդ գնաց, սեղանի գլօխ նստեց։

Ամեն փաՑլիւաՑ իրա յարմարը առաւ, սեղանի վրէն նստեց։

Շէխ Սատին նստաւ դռան քամակը։

Թացը կերան, սրծան ինչուան ժամերու վախտ, մուԹ կոխեց։

Ամեն մարդ առաւ իրա կնիկը, էս մարդու գլօխ տուեցին, գնացին։

Մնաց վերջը մէ արաբ. մէ չատ սիրուն յարմար, գնացին մեծ մարդի գլօխ տուեցին ու գնացին։

Էն մեծ մարդը «ախ» քաշեց։

Որ ախ քաշեց, Շէխ Սատին բազրկեաՑին պկեց, ասաց.

—Սրա դարտը մեր դարտից չատ ա, խի՞ ախ քաշեց։

Էս մարդը դարձաւ, սրանց ասաց.

—Ի՞նչ մարդ էք, գնացէք մէ տեղ գտէք։

—Մենք ղարիպ մարդ ինք, տեղ չունինք, գիշեր պտի պախենք։

Մնացին մինչև քնելու։

Շէխ Սատին քաշեց Թուրը, գնաց գլխի վրէն կայնեց, ասաց.

—Այ մարդ. ինչ դարտ ունիս, ընձի ասա։

—Ընձի դարտ չունեմ, ընձնից վազն արի, ասաց.

—Քու չնլինք կը զարկեմ, որ չասես։

Ասաց.—Նստի, կասեմ։

—Ընձի աչխրքի վրէն չատ սիրուն կնիկ ունէր, էդ կնիկ չատ անճար խիւանդացաւ, ասի. «այ կնիկ, սիրտդ ինչ ա ուզըմ, բերեմ. այ կնիկ, ղուրբաՑ։ Ասաց.—Ինի էս ղուրբան ըլըմ, էգուց կը մեռնեմ. մէկն էլ կը բերես։ Ասի՝ Երկինք, գետինք, Աստուած վկայ ըլի, քեզնից սավայի յարմար չառնեմ, չպսակուեմ։ Շատ միտք արի, չըլի Թէ յարմարս մեռնի, ես իմ ուխտ չկատարիմ. բունի ..օԹս կտրեցի։ Իմ յարմար լաւացաւ. մէկ տարի, էրկու տարի իմ կնկան մօտ չգացի. իմ կնիկ ասաց.—«Դիւ կնիկ ես իմ մօտ չըս պարկի։ Ես էլ ասի այ կնիկ, պաս իմ պախի, ուխտ իմ էրի։

Էկաւ իմ կնիկ ընձի վրայ, իմացաւ։

—Կնիկ, ասի. քեառասուն փաՑլիւաՑ ունեմ. որ մէկ կը սիրես, գնա մօտ, մարդ մեր սըռը չիմանայ։

Իմ կնիկ ինձ ուչունց տուեց. իմ Ցամուս գետնով տուեց, գնաց էս սև արաբին առաւ։

Շէխ Սատին ասաց.—ՊազրկեաՑ, էլի մեր կնիկ, էլի մեր կնիկ, սրա դարդը մեր դարդից չատ ա։

Վեր կացան, գնացին. իրանց կնանիք առան, նստան։



# 35

# ԱԲՐԱՀԱՄ ԱՌՈՒՏՈՒՐԱԿԱՆ

(Վաղարշապատի բարբառով *)

Կար ժամանակով մի քաղաքում մի սովտաքեար մարդ, էդ մարդ աշխարքում ինչ դար քաղաք կար, կեթար սովտաքարութուն աներու։ Ամեն քաղաքներու մէջ ճանաչներ ունէր. էդ մարդին ունէր մէկ տղայ, տղէն ասեց.էս դտար որ էթում էս առուտուրի, հմի ինձ ըրկայ, ես էթամ։

Ասեց.—Դու ջահիլ էս, չես կարայ էթայ, քու էթալու ժամանակ որ ըլնի, ես կը ղրկեմ։

Ասեց.—Անկարելի ա, պտի էթամ։

Ասեց.—Որ պտի էթաս, որ տեղ իմ անունը տաս, քեզ կընդունեն։ Էդ մարդը տղի հըմար քառասուն ղաքիր առաւ, քառասուն բեռն էլ բռնեց. վեց հատ Նոֆար տուեց, բեռները բարձեց ու ղըրկեց դըպա Ստամբոլ։

Գնացին հասան ծովի ղրաղը. քառասուն բեռն էլ, ղաքիրներն էլ ղըրեցին կեամու մէջ. իրանք էլ նստան իրանց բեռների մօտը։

Երկու օր ծովի մէջ ճանապար գնացին. երկու օրէն ետը Ֆուռթունէն վեր կացաւ. իրեք օր տակ ու վերև արեց ծովը, կեամին տարաւ, տուեց մի քարի, հազար կտոր արեց։

Ապրանքը, ղաքիրները, մարդիկը պիրէտի լցուան ծովը, հեղղուան։

Ընդըրա նոքարների մէկը մի տախտակի վրայ մնաց. լափինը տալով բերեց էս դին հանեց։

Վեր կացաւ, էկաւ տուն:

---

* Պատմած է Արտէն Ղռիմեան 19 տարի գիշերապահ եղած է վանքի մէջ, 55 տարեկան է, գիտէ շատ հէքեաթներ. շատ վարժ է պատմելու. մօտ 100 հէքեաթ գիտէ, սովորած է վաղարշապատի մէջ. ինքը եւս պատմած գիւղի օթախներու մէջ. Մակար կաթողիկոսի նանի Յակոբի մօտ միշտ հէքեաթ ասած է զբաղեցնելու համար:

Այլէն ասեց.—Այ տղա՛, խի՞ էկար:

Ասեց.—Աղա՛, էլ ինչ ասեմ, փող էկաւ մեր գլխին։

Ասեց.—Որդի՛, ասա՛, տեհանք ինչ ա էլե։

—Աղա՛, ըս դիան մեր կացանք, գնայինք ծովի դուաղը, նըստանք Սեամին, գնայինք էրկու օր ծովին մէջը. էրկու օրէն ետոյ Ֆերուհէն մեր կացաւ, իրեք օր ծովը տակու վերև արեց. տուեց քարափին. հազար կտոր արեց, քու դարիններն էլ հեղդուան, տղէդ էլ հեղդուաւ, մեր նոքարններն էլ հեղդուան, մեր հետ չատերն էլ կային, ընդոնք էլ հեղդուան. ես մնայի մի տախտակի վրայ. ծովի լափինը տուեց, հանեց էս էրէսը. ես էլ մեր կացայ էկայ, քե խապար բերեցի. էդ բանը որ էլաւ, սաղ քաղաքի մարդիկը լսեցին, մահալի մարդիկներն էլ լսեցին, էդ մարդը երևելի մարդ էր, քօմմա էկան ըդրան գլուխ սաղութիւն, իրեք ամիս ըդրա էթող դալոդը չկտրուաւ:

Խապարը տանք ըդրա տղիցը, ըդրա տղէն էլ տախտակի վրայ մնացեր ա. լափինը տուեց, տարաւ հանեց Սպահան. դուս էկաւ չոլը, գնաց Սպահանու քաղաքի մէջը։ Ջանել. տղայ, սոված մնացեր ա ծովի էրեսը, որը սովածութիւնը, որը ահը։ Ասեց.—Ինչ անեմ. փող չկայ ձեռիս։

Գնաց մի փռնչաւ դուքանի առաջ կաղնեց. տեսաւ էդ փռնչին հաց ա ծախըմ. առաւօտուանից մինչև ճաշ կաղնեց, էդ փռնչին հաց ծախելուց պրծաւ: ասեց.—Այ տղա՛, խի էս կաղնէ ըտի, ոչ հաց ես ուզում, ոչ բան էս ուզում։

Ասեց.—Ես սոված էմ, փող էլ չունեմ հաց առնելու։

Ասեց.—Ըս տե Ցօֆարութիւն կանե՞ս։

Ասեց.—Խի՛ չեմ անի, հաց տուէք, կանեմ։

Փռնչին իրա Ցօֆարներին ձէն տուեց, էկան, ասեց.—Էս տղին տարէք, հաց տուէք թո ուտի, մէկ բանի կը դնէք.

Տարան, հաց տուեցին, կերաւ։

Ասեցին.—Հաց կերաւ, պրծաւ։

Ասեց.—Մի բանի դրէք, թո աշխատի։

Ասեցին.—Խմոր ա, չի կարայ անի. ջուր ա, չի կարայ բերի, ցախ ա, չի կարայ ջարդի. ճիլ ա, չի կարայ թափի։

Էկան, ասեցին.—Աղա՛, ինչ բանի դրեցինք, էս աղէն չի կարում անի։ Ասեց.—Կանչէք, գայ ըս տե։ Էկաւ։ Ասեց.—Իսկի դու Ցօֆարութիւն չես արե։

Ասեց.—Չէ՛, ես զաս չեմ արե, մեծ սովդաճեարի տղայ եմ. մեր դռանը կար տաս-քսան Ցօֆար. ես աղավարի ման կգայի։ Իրա գլխի էկածը էդ մարդին պատմեց, ասեց.

—Ըս տե մի սովդաճեար կայ, եփոր էթայ՝ քեզ հետը կը տանի։

Վէ կալաւ իրիկունը էդ մարդին, տարաւ տունը։

Դուռը ծեծեց. Ջօֆարների մէկը դուս էկաւ՝ ասեց.—Աղէն տանն ա։ Ասեց.—Տան ա։

Ասեց.—Ցլաճ փոնչին պտի գայ, քեզ տեսնի։ Ասեց.—Թո գայ։

Փոնչին աղին վէ կալաւ, գնաց ներքև, բարև տուեց կաղնեց, ասեց.—Աղա, էս տղէն ղարիբ տղայ ա, էկե մեր փուռը ոչինչ բան չի կարում անի։

Սովդաքեար հարցրեց.—Դու ինչ տղայ ես, որդիան ես։

Ասեց.—Աղա, ես Երևանցի եմ։

—Որ Երևանցի ես, ո՞ւմ տղէն ես։

—Աբրահամ սովդաքեարի տղէն եմ ես։

—Որ դու Աբրահամ սովդաքեարի տղէն ես, Աբրահամ սովդաքեար իմ ախպէրն ա, ինչ պատճառով ես էկե, ըստեղանք ընկե։

Ասեց.—Աղա, ես իմ հօրիցը խնդրեցի, ինձի ղրկէց առուտուրի. առաջին չէր ուզում ղրկէր, ես զոռեցի իրան, անպատճառ ասեցի, պտի ղրկես. էլ իմ խաթրին չի դիպաւ. գնաց քառասուն ղաթիր առաւ, բեռները բարձեց ապրանք, վեց հատ Ջօֆար տուեց ինձ, ասեց. «տարէք Ստամբօլ, ծախէք։ Տարանք ծովի ղրաղը, լցրեցինք գեամու մէջը ղաթիրներն էլ, ապրանքն էլ. ես էլ նստեցի. վեց հատ Ջօֆարն էլ իմ կշտին։ Երկու օր ծովու մէջը ճանապար գնացինք. երկու օրէն ետը Ֆըրթունեն վէ կացաւ, ծովը տակ ու վիրև արեց, տարաւ, տուեց մէկ քարի, հազար կտոր արեց. ապրանքն էլ, ղաթիրներն էլ, Ջօֆարներն էլ. մեր հետ չասերն էլ կային, պիրաթի ծովը լցուան, հեղղուան, ես մնացի մի հատ տախտակի վրայ. ծովը լափին տուեց. բերեց, էս երեսը հանեց. աղա ջան ես էդ պատճառով ընկեր եմ էս տեղ։

Ասեց.—Աբրահամ սովդաքեարն որ իմ ախպէրն ա. դուն էլ իմ ախպօր տղէն ես, ըստի իմ տղի հետ ման կգաս. որ օրը քու սիրտը կուզի, էն օրը քեզ կը տանեմ քու երկիրը։

Երկու ամիս տղի հետ ման էկաւ, Ջիւան մտածեց։

—Էս քանի՛ ամիս ա էկեր եմ ըս տեղ, իմ ոչ թուխտ տանող էլաւ, ոչ խապար տանող, չի իմանում թէ՝ սաղ ենք թէ մեռած. էս իրիկուն աղին պտի խնդրում որ ղրկայ իմ երկիրը։

Իրիկուն էկաւ, նօթերը կիտեց ու կաղնեց։

Աղէն ասեց.—Ա՛, տղա՛, խի՞ էս նօթերդ կիտել. քեզ հօ բան ասող չի էլի։

Ասեց.—Ջէ՛, ընձի ո՛վ բան պտի ասի, փառք Աստծու, հացդ բօլ, եմակդ բօլ, ուտում, խմում ենք, ման ենք գալի. ես մտածում եմ ըստե մնալը ընձի օգուտ չի, իմ հօրն ու մօրը աչքը ճանապար-

նի ա, իմ էթալն էն թամաշա անում. ես քեզանից շնորհակալ էմ. ինձ ճանապար քցա, էթամ։

Իրա տղին կանչեց, ասեց.—Օհանէս, արի ըս տե:

Էկաւ կաղնեց: Ասեց.—Առաւօտը կեթաս պազարը, վաթսուն հատ ղաքիր կառնես։

Առաւօտը վեր կացաւ տղէն, գնաց պազարը. վաթսուն հատ ղաքիր առաւ. վաթսուն ղաքիրի բեռ չինեց. ապրանք բարձեց, տաս հատ ճոքար տուեց, ասեց.—Տանես ինձանից շատ բարև կատանես, Աբրահամ սովդաքարին կասես. «էս ապրանքը քե փեշքեշ արեց Մինաս սովդաքարը»։

Տղէն ընկաւ ճանապարհն ու գնաց:

Մինաս սովդաքարը էդ միջոցը հիւանդացաւ. ընկաւ մեռաւ. տղէն մնաց մինակ. գնաց դուքանումը նստեց առուտուր անելու։ Էրկու ջհուտ միտք արեցին, ասեցին.—Մինաս սովդաքարը ճազր մեռել ա, մենք ըսդրա տղի գլուխը օյին հանենք. ըսդրա հէրը մեր գլուխը շատ ա օյին հանել։ Գնացին ըսդրա դուքանի աղաքը կաղնեցին, հանեցին մի հատ հարըրանոց, ասեցին.—Էս խուրսայ, մեզ ոսկի փող տուր։ Ասեց.—Ըստե հարիր մանէթի ոսկի չկայ:

Ասեցին.—Մեք ըս տե կաղնենք, դու գնա, տանիցը բեր։

Վեր կացաւ, գնաց դըպա տուն որ փողը բերի։

Էդ ջհուտը մտաւ, դուքանի դախլումը նստեց։

Էն մէկել ջհուտը սուս դուքանդարի աջ կողմիցը կանչեց, տասն էլ ձախ կողմիցը կանչեց. էկան քսան հոգի ըստե կաղնեցին, ասեցին.—Ի՞նչ ես ասում։

Հանեց ամենքին հարուր մանէթ փող տուեց, ասեց.—Որ Մինաս սովդաքարի տղէն Օհանէսը գայ, ասէք դուքանը ջհըտին ա։ Ըդոնք ամենը գնացին իրանց դուքանները նստան. Օհաննէսը էկաւ, ոսկիքը բերից տանիցը, տուեց ջհըտներին, ասեց.—Առէք ձեր հարուր մանէթի ոսկին։

Ոսկին առան, ըդըրան դուս արին դուքանիցը։

Դուքանի աժողութիւնը կըլէր էրկու հարուր հազար մանէթի ապրանք։

Էդ Օհանէս ասեց.—Դու դուս էկէր, էդ իմ դուքանն ա։

Վեր կացաւ ջհուտը ըդրան ծեծեց, ասեց.—Իմ դուքանը իմ ձեռիցը խլում էս։ Էդ Օհանէսը գնաց գանգատ։

Ասեց.—Մի ջհուտ իմ դուքանս խլում ա:

—Դատաւորը մարդ ղրկեց, ասեց.—Գնացէք, էն ջհուտին կանչէք գայ: Գնացին, ջհուտին բերեցին։

Դատաւորը հարցրեց.—Ի՞նչ պատճառով էս ըսդրա դուքանը խլում։

Ասեց.—Ես զոռով չեմ խլում, իմ դուքանն ա։

—Մոնց իմանանք որ քու դուքանն ա, ասեց դատաւորը։

Ասեց.—Տասը մարդ ձախ կողմից կանչայ, տասը մարդ աջ կողմից, մոնց որ ասեն, մենք ղապուլ ենք։

Օհանէսին էլ ասեցին, դուն էլ ղապուլ էս։

Ասեց.—Ես էլ եմ ղապուլ։

Եասավուլը գնաց ու կանչեց։

Էկան կաղնեցին դատաւորի աղաքը։

Դատաւորը ասեց.—Գիտաք, ձեզ ընչի համար եմ կանչել։

Ասին չենք գիտում։

Ես ըդրա համար եմ կանչէ որ դուզ խօսաք. էս դուքանը Ջհըտին ա թէ էս հային ա։

Ասեցին.—Հայինը չի, Ջհըտին ա։

Դատաւորը մօտացաւ մէ էրկու չափալախ տուեց բիրնին, ասեց.—Կորի՛, դուքանն Ջհըտին ա։

Օհանէս ցնթեց, ընկաւ չոլերը։

Էդ Ջհուտը էկաւ, դուքանումը նստաւ։

Ջհուտները էկան, մասլահաթ արեցին. ասին իրարու.—Դուքանը առանք, էթանք կնիկն էլ, տունն էլ առնենք։

Էկան, դուռը ծեծեցին, կնիկը դուս էկաւ։

Կնկան ասեցին.—Էս օր բան լսե՞ր էս։

Ասեց.—Չէ՛, ինչ բան կայ։

—Օհանէսը կումար հաղ արեց, դուքանը տարուեց. հմի էլ հաղ անըմ, տներն էլ տարուեր ա, մնացեր էս դու, քեզ էլ տարուի, ում ձեռը պտի ընկնես։

Կնիկը ասեց.—Բա ինչ անինք ըդրա համար։

Ասեց.—Արի՛, էս ընկօրս առ, թո տանը գայ, նստի. Օհանէսը որ կգայ. ասա, քու կնիկը չեմ. ըսդրա կնիկն եմ։

Կնիկը Ջհուտին առաւ, ու մտաւ ներսեւ։

Ջհուտը ընկօր ասեց.—Դու քու մուրազին հասար, ես էլ իմ, ահա, ես էթում եմ։ Վէ կացաւ, գնա՛ց։

Օհանէսն էկաւ, մտաւ տուն, տեսաւ մի ջհուտ իրա կնկայ կշտին նստած ա։

Ասեց.—Քօփօղլի Ջհուտ. էկերէք մէկդ իմ դուքանը առեր էք. մէկդ էլ իմ տունը առնէք. հասաւ ու տուեց ըդրան։

Ջհուտն էլ վեր կացաւ, ըդրան տուեց։

Իրար եախա բռնեցին. դըպա դատաւորի մօտը գնացին։

Ջհուտը ասեց.—Էրեկ ասըմ էր դուքանը իմն ա, էս օր էլ ասըմ ա տունը իմն ա։

Դատաւորն ասեց.—Ումից իմանանք տունը քումն ա, թէ ընդրան ա։

Օհանէսը ասեց. իմ կնկանից իմացի։

Ջհուտին ասեց.—Դուն էլ ղապուլ էս։

Ասեց.—Ղապուլ էմ։

Ղրկեցին, կնկան կանչեցին. կնիկն էկաւ, կաղնեց դատաւորի աղաքը. դատաւորը հարցրեց.—Էս հայն ա քու մարդը չէ Ջհուտն ա։

Ասեց.—Էդ հայի էրեսս ըսկի չեմ տեսեր, իմ մարդը Ջհուտն ա։

Դատաւորը էրկու չափալաղ էդ հայի բերնին տուեց, ասեց. —Մէկ էլ էդպէս բան քու բերնից լսեր էմ, չեմ թողայ քաղաքի մէջ ման գաս։ Իրա տանիցը դուս արեց։

Օհանէսի իլաճը կտրուաւ. գնաց էլաւ համամի քիւլհանչի։

Թալարը տանք Աբրահամ սովդաքեարի տղիցը։

Էկաւ, հասաւ իրանց քաղաքի ղրաղը, քաղաքիցը մէ մարդ տեսաւ, հեռը բարովեց, ասեց էն մարդը.—Քու սալրղն ուրիշ եկաւ, հմի փառք Աստըծու, ողջ առողջ էս։

Էդ մարդը էկաւ դպա Աբրահամ սովդաքեարին աչքալուսէք. —Աչքդ լիս, տղէդ էկեր ա, հրէն՝ քաղաքի ղրաղը վեր ա դրե։

Վեր կացան մարդ ու կնիկ, գնացին աղաքը։

Գնացին հասան տղին, փաթըթուան, աֆտա լաշ էլան, յիտոյ ուրախացան. վե կալան, բերին տունն։

Սաղ քաղաքը լսեց որ էկեր ա տղէն։

Էկան ամենն էլ աչքալիսէքաւոր. գեղերն էլ էկան, մահալն էլ էկաւ. իրեք ամիսը աչքալիսէքաւորը անճախ կտրուաւ։

Նոր տղին կանչեց աղաքը Ճօքարին էլ կանչեց, ասեց.—Պատմէք. տեսնամ ինչ ա էլե։

Տղէն ասեց.—Նօքարը ինչ որ պատմեր ա, դրուստ ա։

Հէրն ասեց.—Նօքարինը լսեր էմ, քունը պատմէ հալայ։

Ասեց.—Կեամու կտորը տարաւ Սպահան հանեց. դուս էկայ, գնացի մի փռնչու մօտ, ձեռս փող չկար որ հաց առնէի, ուտէի. փռնչին ինձ հարցրեց. «Մի էս կաղնե». ասեցի «փող չկայ հաց առնեմ, ուտեմ, սոված եմ». հաց տուեց, կերայ. իմ գլխի էկածը ըդրան պատմեցի, վեր կալաւ ինձ տարաւ Մինաս սովդաքեարի մօտը. ըտեղ էլ իմ գլխի էկածը պատմեցի. որ ասեցի, «ես Աբրահամ սովդաքեարի տղէն էմ,» ճանաչեց. գնաց վաթսուն ղաթիր առաւ, բեռներն էլ ապրանք բարձեց, տաս Ճօքար տուեց, ինձ ճանապար քցեց։

Աբրահամ սովդաքեար ասեց.—Շատ շնորհակալ էմ ըդուց, փոխարէնը ետ պտի տանք,

Տղին ասեց.—Գնա՛, ութսուն հատ ղաթիր առ։

Գնաց ութսուն հատ ղաթիր առաւ, ութսունն էլ ապրանք

բարձեց. մի տաս Ցօքար վեր կալաւ, իրա տղի հետ ընկան ճանապար, գնացին, դուս էկան Սպահան. հարցրեցին, ասեցին.—Մինաս սովդաքեարի տուն որն ա:

Ասեցին.—Մինաս սովդաքեարը մեռեր ա. տղէն դուքանը ծախեր ա մի Ջհըտի, տներն ու կնիկն էլ ծախեր ա մի Ջհըտի, ինքն էլ էլեր ա համամի քիւլհանչի:

Աբրահամ սովդաքեար ասեց.—Հէյ վախ, Ֆալաք. ըդրա գլուխ ինչ բան ա էկե։

Իրա տղին հարցրեց, ասեց.—Կը ճանաչե՞ս դու Օհանէսին։

Ասեց։—Կը ճանաչեմ։

Ասեց.—Էթանք համամը։

Գնացին, տեսան՝ համամիցը դուս էկաւ քիւլը չլակին:

Տղին ասեց.—Գնա՛, գթոցը մե քցե։

Գնաց մէջքիցը վեր քցեց։

Օհանէս ասեց.—Հօ գիժ չես, գթոց վեր էս քցում։

Աբրահամ սովդաքեարը կանչեց, ասեց. Արի՛, արի՛։

Էկաւ։ Ասեց.—Դու ես Մինաս սովդաքեարի տղէն։

Ասեց.—Հա՛, ես եմ։

Ասեց.—Էդ ինչ ա էկե քու գլուխը։

Իրա գլխի էկածը պատմեց։

Վեր կալաւ, տարաւ համամը. ըդրան մի լաւ լեղացրեց, մի ձեռք բասուղ չոր կարել տուեց, հագցրեց։ Գնաց թագաւորիցը մի տեղ առաւ, տակը շինեց մաղազա, վերևը շինեց դուքաններ, դուքանների վերևը շինեց տներ, ապրանքը բերեց ու լցըրեց, ասեց.—Որդի՛, էս քու մաղազէն, էս քու դուքանները, ըս էլ քու տները. քեզ պտի պսակեմ, նոր էթամ։

Ասեց.—Անկարելի ա, էն կնկանը մարիֆաթը տեսայ, չեմ պսակուի։

Ասեց.—Մենց չես պսակուի, մարդը առանց կնիկ չըլի. էն հարամ կաթ էր ծծե, որ էնենց բան արեց, ես քեզ հալալ կաթնակեր աղջիկ կուզեմ, որ քեզ ամենայն փորձանքից ազատի։

Օհանէսն ասեց.—Ես իմ քաղաքից աղջիկ չեմ ուզի։

Ասեց.—Ես կերթամ Շեխ արապի էլի մէջը. էնի իմ ախպէրն ա. ընդուց մի հալալ կաթնակեր աղջիկ կուզեմ:

Վեր կալաւ տղին ու գնաց Շեխ արապի էլի մէջը. գնաց Շեխ արապին գտաւ. բարև տուեց ու կաղնեց։

Շեխ արապն ասեց.—Հա՛, էս քանի տարի ա չես էրևում, ընչի համար էս էկի:

Ասեց.—Էկերէմ քու էլիցը մի հալալ կաթնակեր աղջիկ ուզեմ իմ ախպօր տղին։

Ասեց.—Ինձ վաթսուն հազար էլ ունեմ, բա մի հալալ կաթնակեր չըմ՞ որ տամ. Հալա իրեք ախչիկ մեր տանը կայ. կանչենք իրեքի մօտն էլ։

Մեծ ախպօր կնկան կանչեց Շեխ արապը, ասեց.

—Հարսի՛, քու ախչիկը հասեր ա, էդ ախչիկը հալալ կաթ ա ծծե, թէ հարամ ա ծծե։

Ասեց.—Շէխ արա՛բ, քու գլուխը վկայ, էդ ախչիկն որ փորս ընկաւ, գնացի տեսայ բաղդա հաց էն թխըմ. միտքս փոխուեց. մէ հաց վեր կալայ, կերայ. հարամ կաթ ա ծծե։

Ասեց.—Դէ՛, կորի՛, աչքիցս հեռացի դու։

Մէկէլ ախպօր կնկան կանչեց, ասեց.

—Արի՛, հարսի, քու ախչիկ հասեր ա, մարդի պտի տամ. հալա՛լ կաթ ա ծծե. թէ հարամ։

Ասեց.—Շէխ արապ, քու գլուխը վկայ. որ ընկաւ էդ ախչիկը փորս, էկայ, մի բաղի կողքով անց էի կենում, աչքս ընկաւ հաւուղին, միտքս փոխուեց. էրկու ճթթ քաղեցի, կերայ։

Ասեց.—Կորի՛, էդ էլ հարամ կաթ ա ծծե։

Կանչեց իրա կնկան.—Կնի՛կ, ասեց.—Քու ախչիկ հասեր ա. պտի տամ մարդի, հալալ կաթ ա ծծե, չէ հարամ։

Ասեց.—Շէխ արապ, մոնց ո ընկեր ա փորս, ընենց էլ կաթ ծծե։

Ասեց.—Աբրահամ սովդագար, աչքդ լիս, իմ ախչիկ հալալ կաթ ա ծծե, առուր քու ախպօր տղին։

Բերեցին, նշան դրին, պսակեցին։ Շէխ արապը իրա մալը կէս արեց, դրեց ախչկայ հետ բաժինք։ Մի հատ ալլուխ ունէր Շեխ արաբին, որ աշխարքի հետ չէր փոխի. էդ ալլուխն էլ տուեց ախչկան. էդ ալլուխի մարիֆաթը էն էր որ մարդ քցեր գլխին ղումար հազար, կը տանէր, դատաւորի մօտ էթար, կը տանէր, դողի մօտ էթար, չէին կարայ մօտ գային։

Աբրահամ սովդագար վեր կալաւ, գնացին Օհանէսին տները։

Ասեց.—Օհանէս ջան, քու հէրը էն լաւութիւնը արեց իմ տղին, ես էլ էս լաւութիւնը արի քեզ. մնաս բարի, ես էթըմեմ։ Էկաւ հասաւ իրանց երկիրը։

Օհանէսը քնած էր կնկայ ծոցին գշերը, էրազի միջին բիրդան վեր կացաւ, ասեց.—Հէյ վա՜խ, Ֆալաք։

Կնիկն ասեց.—Էդ ինչ ախ քաշեցիր։

Ասեց.—Էրազիս տեսայ որ հէրս սաղ էր, բեռները բերեց, թափեց դուքանի աղաքը. ապրանքը քաշըմ ի դուքանների մէջը. բիրդան վեր թռայ, տեսայ պաս չկայ. ըդրա համար ախ քաշեցի. ասեց կնկանը, ինձ թող, մի անգամ էթամ առուտուրի։

Ասեց ուր էթաս, ամեն բան էլ ունենք, էթաս ինչ անես։

Ասեց.—Շէխ արարի գլուխն որ կը սիրես, պտի թողաս։

Գնաց, ինչուն հատ ղաթիր առաւ, բեռները բարձեց, կնիկը այլուխը ճիբիցը հանեց, մարդին ասեց.—Էս Շէխ արարի այլուխն ա. կը կապես գլուխդ, ամենայն փորձանքից ազատ կը պահի. սաղ սալամաթ կերթաս ու գուգաս։

Կապեց գլուխն ու բեռները քշեց, գնաց Հնդստան դուս էկաւ, գնաց մի դուքան բռնեց, ապրանքը ածեց դուքանի մէջը. նստեց դուքանի առաջը. մի ջհուտ էկաւ, կշտին կանգնեց, ասեց.—Էս սով-դաքեարը նոր ա էկե, խամ ա։

Բարև տուեց, ասեց.—Ո՛րդուց էս։

Ասեց.—Սպահանցի եմ։

Ասեց.—Ի՞նչ էս բերե։ Ասեց.—Ապրանք ա։

Ասեց.—Հմի մութն ա, առաւօտը կառնեմ, գիտամ պէզարած կըլլես, մի մի ղայֆա բերեմ, խմենք։

Մի մի ղայֆա բերիլ տուեց, խմեցին։

Ջհուտն ասեց.—Գինի էլ խմում էս։ Ասեց.—Կը խմեմ։

Կերան ու խմեցին, բերեցին, նարդի էլ հաղ արեցին. սկսեցին փողով, ինչ տար հաղ արեցին։ Ջհուտին տարաւ, Ջհուտն ասեց.—աշխարքում ընձի մարդ չէր տարև, էդ մոնց ա տանըմ, ըդրան մէջ հիլլա կայ։

Թամաշա արեց ըդրա ոտու գլխին, էրեսին, տեհաւ գլխին մի այլուխ կապած ա, Ջհուտն ասեց.—Ըդրա չնորհքն էս այլըխի միջին ա։ Ասեց.—Խօ դու կնիկ չէս այլըխ կապես, այլըխը դիր ջէբդ, հաղ անենք։

Այլըխը պոկեց, դրեց ջէբը, սկսեցին հաղալը։

Ինչ տար ապրանք ունէր, բիրադի տարաւ ջհուտը. բիրադի քաշեց իրան մաղազէն։

Ըդրա ձեռին հացի փող էլ չմնաց։ Ջհուտն ասեց.—Էթամ տենամ, հմի մեռեր ա կծկըծու։

Էկաւ, տեհաւ, ման ա գալի, հաղ ա ասըմ, Ջհուտն ասեց, Էնտար ապրանքը տարայ. հըմի հաղ էս ասըմ բա։

Այլըխը հանեց. ասեց.—Ըտորա տէրը սաղ ըլլի։

Ջհուտը գնաց փաշի մօտ գանգատ. ասեց.

—Փաշէն սաղ ըլլի. Սպահանու մի սովդաքեար էր էկեր. գնացի. տեսայ, ըդրա հետ նարդի հաղ արեցի. ապրանքը բիրադի տարայ. հմի այլըխը ջէբից հանեց, ասեց. «Ըտդրա տէրը սաղ ըլլի», կոնչմ, տես, այլըխը ումն ա։

Փաշէն մարդ ղրկեց, էդ մարդին կանչեց. էկաւ, փաշի մօտ

կաղնեց։ Փաշէն ասեց.—Քու ջիբին այլըխ կայ, հանայ, տեհնամ։ Այլուխը հանեց։ Փաշէն ձեռիցն առաւ։

Ասեց.—Էս այլըխատէրը քու ինչն ա։

Ասեց.—Իմ կնիկն ա։ Ասեց.—Արի, մի թուխտ գրայ, որ քու կնիկը վեր կենայ, գայ։

Թուխտը գրեց.—«Կնիկ, իմ առուտուրը չատ լաւ ա. առանց կնիկ չեմ կարում մնայ. էդ երկու մարդի հետ վեր կաց ու արի։ Տուին երկու մարդի, ղրկեցին Սպահան։ Էդ տղին քցեցին դուրսախանէն։

Ըդոնք հասան Սպահան. ըդրա տունը գթան, թուխտը տուին կնկան, կնիկը կարդաց, հրամայեց.—Էս երկու մարդին բռնէք։ Էրկու մարդին էլ բռնեցին։ Իրիկուն երկու մարդին կանչեց, աղաքը կաղնացրեց, խօսացրեց, ասեց.

—Արի, դրուսը ասէք, իմ մարդը ինչ բանի ա էն տեղ։

Մէկն ասեց.—Լաւ առուտուր անում ա։

Վեր կացաւ, մի երկու չափալախ քաշեց, ասեց.

—Շան որդի, դու սուտ խօսացիր։

Էն մէկին կանչեց. ասեց.—Դու մօնց էս տեսե, չիտակ ասա։

Էն մէկ ասեց.—Քու մարդ դուսմար ճախ արեց, ապրանքը բիրաշի տարուեց. փաշէն կանչեց. մի այլուխ էր մնացեր, առաւ ձեռիցը, ասեց. «Էս այլըխատէրը քու ինչն ա.» ասեց. «Իմ կնիկն ա»։ Փաշէն քցեց դուրսախ, թուխտ էլ տուեց։

Էդ ախչիկը իրա Ծօքարներին կանչեց. ասեց։—Էս մէկին ինչ որ դուզը խօսաց, իմ կերակուրից կտաք. էս մէկին էլ օրը մի դան հաց կտաք։

Ախչիկը էլաւ, ձին նիլաւ, գնաց Շէխ արապի տունը, ասեց.

—Փեսէդ հաղ ա արե, ապրանքը բիրաշի տարուեր ա, այլուխը ձեռիցը խլեր ա, փաշէն էլ ընձի ուզում ա։ Հըմի ինձ տուր քառասուն ախչիկ։ Քառասուն ախչիկ եկի միջիցը կանչեց, քառասուն ձեռք տղամարդի չոր կարել տուեց. քառասուն ձեռք ասպապ բերեց. քառասուն ձի բերեց, չորերը հագցրեց. ասպապները կապեցին, նիլան ձիանը, ասեց.—Ախչկեր, ինչ հրամայեմ, ընենց կանէք։

Ձիանը քշեցին դըպա Հնդստան, որ քաղաքին մօտենում են, խապար էն ղրկում —Թագաւորի տղէն գալիս ա։

Հասան Հնդստան. էրկու ձիաւոր ղրկեց, փաշին ասին.—Պատրաստութունդ տես, թագաւորի տղէն էկաւ։

Փաշէն պատրաստութունը տեհաւ. թագաւորի տղի աղաքը էկաւ. գլուխ տուեց ու կաղնեց, ասեց.

—Հնդստանու փաշէն դու ես։ Ասեց.—Ես էմ։

Ասեց.—Էս քու քաղաքը տեհայ չատ անկարգ էր։

Փաշէն տարաւ իրա տունը, վեր բերեց, ըդոնց հաց քաշիլ տուեց. Փաշէն էկաւ, գլուխ տուեց օխտը անգամ, վրայ ութին կողնեց։ Ասեց.—Փաշա, քու ռոճիկը քի՞չ ա։

Ասեց.—Թագաւորութիւնը ողջ կենայ, խի՞ ա քիչ։

—Որ քիչ չէ, ասեց. դու թագաւորական մալը խի էս բերում, քու քաղաքում պահում։ Ասեց.—Թագաւորական ապրանք իսկի չեմ պահել եա։

Ասեց.—Վեր կենա՞նք. ման գանք։ Վեր կացան, փաշին քցեց աղաքը. քառասուն ձիաւորը՝ քամակը, ասեց.—Փաշա, որը մենծ մաղազա ա, ընձի ընտի տար։ Մէ երկու մաղազա ման ածեց, զադ չգտաւ. գնաց մտաւ էդ Չհուտի մաղազէն։

Տեհաւ, ճանաչեց ապրանքը, ասեց.—Քաշէք դուս։

Չհուտի ապրանքն էլ հետը քաշեցին դուս։

—Փաշա՛, ասեց, ըսդրա գող էլ գտի։—Գողը բռներ էմ, ասեց.

Գնացին բերեցին, կաղնացրին. ասեց.

—Քօփօղլի, Մինաս սովդաքեարի ապրանքը կերար, չկշտացար. թագաւորական մալն էր բերիր ըս տի։

Ասեց։—Փաշա, ըսդուց մի այլուխ էլ էս առե, տուր։

—Հըրէ՛ս, ասեց. տուեց։

Չհըտին ու տղին ապրանքը բարձին, էղաւ հինգ հարուր բեռ. հինգ հարուր բեռ էլ փաշից առաւ, էլաւ հազար բեռ, բարձեց, ընկաւ ճանապար. գողն էլ առաւ հետը. փաշին ասեց.—Թուխտ կը գրկեմ, ընենց ժաժ կգաս։

Էկաւ Սպահան դուս էկաւ. ապրանքը քաշեց մաղազան, էդ Օհանէս ասեց.—Իմ կնիկ իսկի դուս չգալի։

Էդ թագաւորի տղէն Օվանէսին կանչեց վիրև. ասեց.—Ըտե նստի։ Թագաւորի տղէն մտաւ էն մէկէլ օջախը, թագաւորութենի չորերը հանեց, կնկայ չորերը հագաւ, գլուխը չինեց, դուս էկաւ Օհանէսի կուշտ, տեսաւ ահա, իրա կնիկն՝ ա, ասեց.

—Գա էսքան ապրանք քաշենք ներսև, դու խի՞ չերևացիր։

Ասեց.—Մի ամիս ճանապար ենք գալի, դու ինձ չի ճանաչեցի՞ր։

Մարդ ասեց.—Հալալ ըլլի քու կերած կաթը։

Ասեց.—Էն երկու տղին կանչէք, գան, որ թուխտ էն բերե։

Ինքն էլ փաշին գրեց.—«Էս թուղթ իր գրեր որ ըդրա կնիկը գար, կնիկը էկաւ, իր ապրանքը հանեց, ջհըտի ապրանքն էլ հանեց. հինդ հարուր բեռ ապրանք էլ քեզանից առաւ. դու ոչինչ չիմացար, իմացի որ էդ ջավուր կնիկ էլ կայ։

Ըդոնք էլ հասան իրանց մուրազին։



# 36

# ՀՕՐ ԻՐԵՔ ԽՐԱՏԸ

(Վաղարշապատի բարբառով *)

Կար ժամանակով մի քաղաքում մի դուքանդար, երևելի մարդ, էդ մարդին մի հատ տղայ ունէր, էդ տղին կանչեց, ասեց.—Տղա՛, արի, իմ մահը մօտ ա, արի քիզ խրատ տամ, այ որդի, ասեց. հօր խրատ բռնող մաղբուն չմնար. առաջին խրատս էն ա որ ժամը տան՝ ինչ բան ունենաս, կը թողես կերթաս քու ժամը. մէկ էլ ինչ տեղ ըլլում ա, ըլի. ո՛ր տեղ մթնի, էն տեղ կը մնաս. վերջն էլ՝ ինչ ջուր կը տեսնաս, առանց վալասի անց չես կենայ։

Մի ժամանակ մնաց, հէրը մեռաւ. տղէն էկաւ, իրա դուքանը նստեց, մտիկ արեց տեհաւ որ իրա ընկեր կողքի դուքանչիքը պատրաստութիւն էն տեսնում, որ էթան Թիֆլիզ. Գնաց, տղէքին հարցրեց.—Էդ ո՞ւր էք էթում։

Ասեցին.—Էթում ենք Թիֆլիզ ապրանք բերելու։

Ասեց.—Ընձի էլ կը տանէ՞ք, ձեր հետ գամ։

Ասեցին.—Խի՞ չենք տանի, քու փողովը կգաս, մեր վրայ ծանրութիւն չի. պատրաստուի որ առաւօտը գշերով դուս էնք գալի։

Դուս էկան, ընկան ճանապարհ, գնացին. գնացին, հասան Թիֆլիզ։ Առուտուրն արեցին, իրանց բեռները բռնեցին, ընկան ճանապար։ Իրիկուայ զանկերը քաշեցին. էդ տղէն իրա ընկերանցը ասեց.—Տղէք, կաղնէք, բան էմ ասըմ։ Ասեցին.—Ի՞նչ էս ասըմ։

Ասեց։—Իրիկուայ զանկերը քաշեցին, էթանք ժամ ու ժամուց դուս գանք, բեռները քշենք, էթանք։

Ընկերտանքը ասեցին.—Հօ գիժ չես. չարի էթանք ժամ, գանք, մէկ փօշտ ճանապար կերթանք։

Էդ տղէն ասեց.—Իմ հօր խրատը չեմ կորցնի։

Ընկերտանքը բեռները քշեցին, գնացին. էդ իրա բեռները կաղնացրեց, գնաց ժամ. ժամիցը դուս էկաւ, իրա բեռները նոր քշեց. էկաւ էրկու օր, անճախ հասաւ իրանց գետան ղրաղը։ Տեհաւ իրան ընկերտանքը կէսը ըսդին ա, կէսը ընդին ա. հարցրեց.

Ասեցին.—Հօղը էկաւ մեր գլխին, ընկերտանցից որը ջուրը տարաւ, որը հեղդուեցաւ. որը բեռները տարաւ։

* Պատմած է Վաղարշապատցի Առաքել Ղրիմեան:

—Էնենց մարդ չկար ձեզի անց կացնէր։

Ասեցին.—Ո՞վ ա տուեւ ընենց մարդ, որ անցկացնէ։

Իրա Սօֆարներին ասեց.—Բեռները վեր ածէք, ժաժ չգաք, չարի ես էթամ գեղ ու գամ։

Գնաց գեղը, հարցրեց.—Էս ջրին լաւ վալաս կըլէք. ո՞վ ա լաւ լեղւոր. ինձ ասէք։

Ասեցին.—Ըսափ մի տղայ կայ, լաւ լեղւոր ա։

Ասեց.—Էն տղին կանչէք գայ իմ մօտը։

Գնացին, կանչեցին. էկաւ. ասեց.—Ախպէ՛ր, ի՞նչ էս ասըմ։

Ասեց.—Էս ջրին մենք վալաս չենք, ինչ էս ուզում օր էս ջուրը մեզ անցկացնես։

Ասեց.—Տեսնում էս, չատ մարդեր վնասուեր ա, քսան մանէթ փող կառնեմ, կը անցկացնեմ։

—Դէ՛, արի՛, ասեց. քսան մանէթ կտամ, անցկացրայ։

Էկան, գետան ղրաղը կաղնեցին։

Ասեց.—Շորերդ հանայ, մտիր գետան մէջը՝ գնա՛, արի որ ճանփէն իմանանք, դէնը անց կենանք։

Մտաւ մէջը չորս անգամ գնաց էս ղրաղը, էն ղրաղը՝ ասեց. —Դէ՛, բեռները քշէք, ճանապարհը գթայ։

Բեռները քշեցին. սալամաթ անցկացան էս էրեսը։

Տեհան մի մեծ բազիրկեան ըդի վեր ա էկե. էդ բազիրկեան բաշին էդ տղին կանչեց, գնաց, ասեց.—Աղա, ինչ պտի ասես։ Ասեց.—Ըստե հազար մարդ վեր էն էկե, մէկը քու խելքը չունէր։

Դու ո՞րդուց էս։ Ասեց.—Ես Երեւանցի էմ, վաղարշապատից։

Ասեց.—Այ որդի, ես էլ Գեանճեցի էմ. տեսնը՞մ էս իմ ապրանքը, քսան հազար մանէթի կըլի. որդի՛, քու ապրանքը քանի հազար մանէթի կըլի։ Ասեց.—Իմը էրկու հազար մանէթի ա։

Ասեց.—Դու իմ աչքին դիր էկար. կուզես որ իմ քսան հազար մանէթի ապրանքը քու էրկու հազար մանէթի ապրանքի հետ դնեմ, ընկեր անեմ քեզ. ես իմ մայէն վեր կալեմ, դու քու մայէն, ինչ որ դատենք, հալալ կիսենք։

—Աղա, որ ըդենց անես, ես չատ չնորհակալ կըլեմ քեզանից։

Լեղւորին ասեցին.—Արի, մեր բեռները անցկացրայ էն տիհը։

Ասեց.—Աղա, քսան մանէթ բարըշեր եմ, անցկացնեմ ըս դիհը, հըմի էն գնով չեմ անցկացնի. տեսնըմ էս որ, արին ա բերըմ՝ ջուրը։

Ասեց.—Որդի՛, անցկացրա՛, մի զաս էլ աւել կտանք։

Բռնեց, ամենն էլ սալամաթ անցկացրեց էն էրեսը։

Քսան մանէթ բարիշեր են, ասեց.—Առ քե եռեսուն մանէթ։

Ասեց.—Շատ չնորհակալ եմ, բարի ճանապար ձեզ։

Գնացին, դուս էկան Գեանճուայ քաղաքի ղրաղը։ Էն տեղ մի

քար կար, անունը ճալլէք տաշի (անիծեալ քար) էր, բեռները էն քարի մօտ վեր քցեցին. բազրկեան բաշին մի հատ Թուխտ գրեց, տուեց.—Կը տանես իմ տունը, Թուխտը կտաս իմ կնկան, իմ կնիկը կը կարդայ, դուքանի բանալիքները կտայ քեզ. կգաս, դուքանը բաց կանես. մէջը կը սրբես, նստես ընտե, չարի ես կգամ։

Թուխտը վե կալաւ ու գնաց, հարցրեց բազրկեան բաշու տունը, գթաւ. Թուխտը տուեց բազրկեան բաշու կնկանը, կնիկը կարդաց, ասեց.—Ո՛ր տե վեր ա էկե։ Ասեց.—Քաղաքի դրաղը։ Էն սըհաթին էն կնկայ աչք ընկաւ էդ տղին։ Բանալիքները տուեց տղին ու ձեռները՝ բռնեց հուփ տուեց, ասեց.—Այ տղա՛, դու տղամարդ չե՞ս։ Ասեց.—Ի՞նչ տղամարդ։

Ասեց.—Ես ինչ որ ասեմ, դու ինձ լսես, ես քեզ լաւ կը պահեմ. քու աղէն էթում ա, էրկու տարով, իրեք տարով չի գալի. ես քեզ իմ ծոցին մէջը կը պահեմ։

– Չէ, խանում։ Թող տու, էթամ, հըմի աղէն կգայ։

Ասեց.—Այ տղա՛, ինչ վրազ էթում ես. ինչ որ ասեցի, դու ջան չհասկացար։

Ասեց.—Քու ասուԹունները ամենը ես հասկացայ. էդ բանի տէրը չեմ։—Որ տէրը չես, կորի՛, գնա։

Էդ տղէն էկաւ, դուքանները հարցրեց, գթաւ, դռները բաց արեց. աւելը վե կալաւ, թամուզ սրփեց. ջուր բերեց. ջրջհանեց։

Տեհաւ աղէն էկաւ, ասեց.—Զօրանաս. լաւ էս արե։

Ապրանքը քաշեցին նեքսև, պրծան։

Ասեց.—Այ տղա՛, դու առուտուր արա, ես էթամ, մի տուն գիպչեմ։ Գնաց տո՛ւն։ Կնկայ հետ ձեռ բռնեց, բարևեց. ու նստաւ։

Կերան, խմեցին, քէֆ արին։

Էդ տղէն սկսեց առուտուրը. սաղ քաղաքը ըդըրա վրայ Թեքուաւ. մի երեք ամիս մնաց։

Բազրկեանի կնիկը ասեց.—Էն ինչ տղայ ա դուքանը դրեր էս։

Ասեց.—Էրևանցի ա, ընկեր իմ արեր իմ հետ։

Ասեց.—Խի չես ղրկում տուն, տունը ճանաչի, էթայ, գայ.

Գնաց դուքանը, տղին ասեց.—Գնա, տանը հաց կեր էս օր։

Տղէն էկաւ տուն, տեհաւ խանըմը մի լաւ պատրաստուԹուն ա տեհե.—Դե՛, ասեց. բարև էս էկե, հազար բարև, ըտեղ նստի։ Նըստացրեց ու հացը քցեց, կերակուր քաշեց, գինի դրեց. կերան ու խմեցին, քէֆները լաւացաւ։

Կնիկն ասեց.—Այ տղա՛, ես քե հետ պտի նստեմ ու կաղնեմ. իմը դու էս, ես քոն էմ։

—Էնենց մարդ չկար ձեզի անց կացնէր։

Ասեցին.—Ո՞վ ա տուե ընենց մարդ, որ անցկացնէ։

Իրա Սօֆարներին ասեց.—Բեռները վիր ածէք, ժաժ չգաք, չարի ես էթամ գեղ ու գամ։

Գնաց գեղը, հարցրեց.—Էս ջրին լաւ վալաս կըլէք. ո՞վ ա լաւ լեղուոր. ինձ ասէք։

Ասեցին.—Ըստի մի տղայ կայ, լաւ լեղուոր ա։

Ասեց.—Էն տղին կանչէք գայ իմ մօտը։

Գնացին, կանչեցին. էկա՛ւ. ասեց.—Ախպէ՛ր, ի՞նչ էս ասըմ։

Ասեց.—Էս ջրին մենք վալաս չինք, ինչ էս ուզում օր էս ջուրը մեզ անցկացնես։

Ասեց.—Տեսնո՞ւմ էս, շատ մարդեր վնասուեր ա, քսան մանեթ փող կառնեմ, կը անցկացնեմ։

—Դէ՛, արի՛, ասեց. քսան մանեթ կտամ, անցկացրայ։

Էկա՛ն, գետան ղրաղը կաղնեցին։

Ասեց.—Շորերդ հանայ, մտի՛ր գետան մէջը՝ գնա՛, արի որ ճանփէն իմանանք, դէնը անց կենանք։

Մտաւ մէջը չորս անգամ գնաց էս ղրաղը, էն ղրաղը՝ ասեց. —Դէ՛, բեռները քշէք, ճանապարհը գթայ։

Բեռները քշեցին. սալամաթ անցկացան էս էրեսը։

Տեհան մի մեծ բազիրկեան ըդի վեր ա էկե. էդ բազիրկեան բաշին էդ տղին կանչեց, գնաց, ասեց.—Աղա, ինչ պտի ասես։ Ասեց.—Ըստե հազար մարդ վեր էն էկե, մէկը քու խելքը չունէր։

Դու ո՞րդուց էս։ Ասեց.—Ես Երեւանցի էմ, վաղարշապատեց։

Ասեց.—Այ որդի, ես էլ Գեանճեցի էմ. տեսնը՞մ էս իմ ապրանքը, քսան հազար մանեթի կըլի. որդի՛, քո՛ւ ապրանքը քանի հազար մանեթի կըլի։ Ասեց.—Իմը էրկու հազար մանեթի ա։

Ասեց.—Դու իմ աչքին դիր էկար. կուզես որ իմ քսան հազար մանեթի ապրանքը քու էրկու հազար մանեթի ապրանքի հետ դնեմ, ընկեր անեմ քեզ. ես իմ մայեն վիր կալեմ, դու քու մայեն, ինչ որ դատենք, հալալ կիսենք։

—Աղա, որ ըդենց անես, ես շատ շնորհակալ կըլեմ քեզանից։

Լեղուորին ասեցին.—Արի, մեր բեռները անցկացրայ էն տիհը։

Ասեց.—Աղա, քսան մանեթ բարըշեր եմ, անցկացնեմ ըս դիհը, հըմի էն գնով չեմ անցկացնի. տեսըմ էս որ, արին ա բերըմ՝ ջուրը։

Ասեց.—Որդի՛, անցկացրա՛, մի զաս էլ աւել կտանք։

Բռնեց, ամենն էլ սալամաթ անցկացըեց էն էրեսը։

Քսան մանեթ բարիշեր են, ասեց.—Առ քե եռեսուն մանեթ։

Ասեց.—Շատ շնորհակալ եմ, բարի ճանապար ձեզ։

Գնացին, դուս էկան Գեանճուայ քաղաքի ղրաղը։ Էն տեղ մի

քար կար, անունը Նալլեբ տաշի (անիծեալ քար) էր, բեռները էն քարի մօտ վեր քցեցին. բազրկեան բաշին մի հատ Թուխտ դրեց, ասեց.—Կը տանես իմ տունը, Թուխտը կտաս իմ կնկան. իմ կնիկը կը կարդայ, դուքանի բանալիքները կտայ քեզ. կգաս, դուքանը բաց կանես. մէջը կը սրբես, նստես ընտե, չարի ես կգամ։

Թուխտը վե կալաւ ու գնաց, հարցրեց բազրկեան բաշու տու-նը, գթաւ. Թուխտը տուեց բազրկեան բաշու կնկանը, կնիկը կար-դաց, ասեց.—Ո՛ր տե վեր ա էկե։ Ասեց.—Քաղաքի դրաղը։ Էն սհաթին էն կնկայ աչք ընկաւ էդ տղին։ Բանալիքները տուեց տղին ու ձեռները՝ բռնեց հուփ տուեց, ասեց.—Այ տղա՛, դու տղամարդ չե՞ս։ Ասեց.—Ի՞նչ տղամարդ։

Ասեց.—Ես ինչ որ ասեմ, դու ինձ լսես, ես քեզ լաւ կը պա-հեմ. քու աղէն էթում ա, էրկու տարով, իրեք տարով չի գալի. ես քեզ իմ ծոցին մէջը կը պահեմ։

— Չէ, խանում։ Թող տու, էթամ, հըմի աղէն կգայ։

Ասեց.—Այ տղա՛, ինչ վրազ էթում ես. ինչ որ ասեցի, դու քան չհասկացար։

Ասեց.—Քու ասութիւնները ամենը ես հասկացայ. էդ բանի տէրը չեմ։—Որ տէրը չես, կորի՛, գնա։

Էդ տղէն էկաւ, դուքանները հարցրեց, գթաւ, դռնիրը բաց արեց. աւելը վե կալաւ, թամուզ սրփեց. ջուր բերեց. ջրջհանեց։

Տեհաւ աղէն էկաւ, ասեց.—Զօրանաս. լաւ էս արե։

Ապրանքը քաշեցին ներսև, պրծան։

Ասեց.—Այ տղա՛, դու առուտուր արա, ես էթամ, մի տուն դիպչեմ։ Գնաց տո՛ւն։ Կնկայ հետ ձեռ բռնեց, բարևեց. ու նստաւ։

Կերան, խմեցին, քեֆ արին։

Էդ տղէն սկսեց առուտուրը. սաղ քաղաքը ըդըրա վրայ Թեք-ուաւ. մի երեք ամիս մնաց։

Բազրկեանի կնիկը ասեց.—Էն ինչ տղայ ա դուքանը դրեր էս։

Ասեց.—Էրևանցի ա, ընկեր իմ արեր իմ հետ։

Ասեց.—Խի չես ղրկում տուն, տունը ճանաչի, էթայ, գայ.

Գնաց դուքանը, տղին ասեց.—Գնա, տանը հաց կեր էս օր։

Տղէն էկաւ տուն, տեհաւ խանըմը մի լաւ պատրաստութիւն ա տեհե.—Դե՛, ասեց. բարև էս էկե, հազար բարև, ըտեղ նստի։ Նըս-տացրեց ու հացը քցեց, կերակուլ քաշեց, գինի դրեց. կերան ու խմեցին, քեֆները լաւացաւ։

Կնիկն ասեց.—Այ տղա՛, ես քե հետ պտի նստեմ ու կաղնեմ. իմր դու էս, ես քոն էմ։

Տղէն ասեց.—Անկարելի ա, չըլի քե պէս հազարն ըլի, ինձ պէտքը չէ։ Ասեց.—Իմ ձեռից չես պրծնի. ու՞ր պտի էթաս ըսօր դու։ Ասեց.—Մի կտոր հաց տուեցիր, պտի ճարամես իմ վրայ։ Ասեց.—Որ ըդենց ա, ափսոս ա հացը ուտես, դէ՛ վեր կալ գնա։ դէ՛, եալլա։

Տղէն վե կացաւ, գնաց դուքանը։

Բազրկեանը հարցրեց.—Այ որդի՛, հաց կերա՞ր։

Ասեց.—Շա՛տ շնորհակալ էմ, օճաղդ հաստատ ըլի։

—Դէ՛, ասեց. նստի դուքանը, ես էլ էթամ, հաց ուտեմ։

Բազրկեան էկաւ տուն, ասեց.—Այ կնի՛կ, հաց բեր։

Կնիկը հաց բերեց, քցեց աղաքը. տեհաւ կնկայ նօթերը կիտած ա, ասեց.—Այ կնիկ, քեզ ինչ ա էլե նօթերդ կիտեր էս։ Ասեց.—Չի կիտեմ, բա ինչ անեմ. դուն էլ գնացեր մարդ էս գտեր, քեզ ընկեր էս արե։

Ասեց.—Ինչ կայ, էդ լա՛ւ մարդ ա։

Ասեց.—Ոնց լաւ ա, գալու օրը ձեռներս բռնեց ու ճմռեց. ըս օր էլ էկաւ, հաց դրեցի որ ուտէր, եախէս բռներ ա ճախ ու ճճախ էս բանը պտի ըլի. որ մէկ էլ էկեր ա տունը, ինչ օյին ասես, իմ գլուխ կը հանի։ Բազրկեան ասեց.—Որ ըդենց ա, էթամ դուս հանեմ, էթայ։—Դուս հանես, իմ անըմը կըտայ. Ասեց.—Բա ինչ անենք։—Քեզ փռի դուքան ունես, փռնչուն թանպյաճ արա, գշերն որ էն տղին ղըկեմ, ինչ վախ որ էկաւ, քցէք փուռը, թող վառի, վերջանայ։

Բազրկեան բաշին գնաց փռնչուն, ասեց.—Փռնչի։

Ասեց.—Համմէ, աղա։

Ասեց.—Գշերուայ կիսին ով կուգայ, կասի բանը պատրա՞ստ ա. որ աղէն ասեր ա ձեզ։ Հենց կը բռնէք, քցէք փուռը, ով կըլի կըլի։

Գնաց դուքանըմը նստեց, ասեց.—Այ տղա՛. կեթաս փուռը, կասես, «աղէն ասըմ ա, էն բանը պատրաստ ա»։

Ասեց։—Շատ բարի, կեթամ։

Աղէն գնաց տուն, կնիկ ասեց թամպյաճ արի՞ր։

Ասեց.—Թամպյաճ արի։

Լսի գէմը վե կացաւ. ասեց յետացեր էմ, էթամ.

Գնաց, հասաւ փռի դուռը, դուռը չինած էր, մի քար վե կալաւ որ դուռը ծեծի, հէնց ժամի զանկը քաշեցին. ուսուլով քարը վեր դրեց դռան աղաքը, ասեց.—Էթամ ժամը. գամ ու ասեմ։ Հօրը խրատը պահում ա։ Գնաց ժամ։

Բազրկեանի կնիկն էլ էթում էր ժամ. էկաւ, փռի դռնովը անցկացաւ, ասեց.—Փռնչուն հարցնեմ, տենամ. կատարեր է իրիկուայ խօսքը։ Էկաւ, մտաւ փուռը, փռնչուն ասեց.—Իրիկուայ ասած խօսքը կատարե՞ր էք։

Փռնչին ասեց.—Մօտ արի՛, տեսնամ ինչ ես ասըմ։

Մօտ գնաց, էլ չխօսացրեց, բռնեցին, կոխեցին փուռը։

Տղէն ժամիցը դուս էկաւ, էկաւ փռնչու մօտը, ասեց.—Աղի խօսքը կատարե՞լ էք։

Ասեց.—Գնա՛, աղային կաց, կատարեցինք։

Տղէն եա դառաւ, էկաւ դուքանը բաց արեց, նստաւ։

Աղէն վեր կացաւ, էկաւ դուքանը. էկաւ, տեհաւ տղէն դուքանըմը նստած ա, ասեց.—Այ տղա՛, ախր ես քե բան թամպահ արի. գնացի՞ր փռնչու մօտը։

Ասեց.—Գնացի՛, ասեցի փռնչուն, «աղի թամպահ արած բանը կատարել էք». փռնչին ասեց. «կատարել ենք»։

Էն աղէն վեր կացաւ, իրա մեղքն ասեց.—Բա լիրբը տղէքը քեզ ա գնացեր։ Վեր կացաւ. դպա տուն գնաց։ Տեհաւ կնիկը տանը չի, գնաց դպա փուռը, փռնչուն ասեց.—Իմ ասածը կատարեցի՞ք։ Ասեց.—Կատարեցինք։

Ասեց.—Ո՞վ էր որ կատարեցիք։ Ասեց.—Քու կնիկդ էր։

Դառաւ յետ, գնաց դըպա դուքանը։

Գնաց դուքանը, տղին ասեց.—Արի՛ ըս տեղ, արի՛ դուրսը ասա՛, էրեկ որ գնացիր տուն, ինչ պատիւ տուար։

Ասեց.—Պատւիցը շնորհակալ էմ, ամեն տեսակ բան էլ կար։

Ասեց.—Էգօնք թո մնայ, կնկանս ինչ ասեցիր։

Ասեց.—Աղա՛, ես բան չասեցի, ինչ որ ասեց, քու կնիկն ասեց։

Ասեց.—Ինչ էր ասըմ։

Ասեց.—Աղէդ կեթայ. ամսով էրկու ամսով չի գայ, եա քունն եմ դու իմն ես. ես անկաջ չարեցի, թողացի, վեր կացայ, իմ վրայ բարկացաւ, ես էլ էկայ դուքան։

Ասեց.—Որդի՛, որ ըդենց ա, իրա եղովը տապակուեց. արի՛ հաշիւ անենք, քու հաշիւն առ, Աստուած քու հետ, բարի ճանապար ըլես, ես էլ դուքանները պտի ծախեմ, էթամ ուրիշ երկիր։ Էդ տղէն իրա փայն առաւ ու ընկաւ ճանապար. էկա՛ւ, մի քաղաքի դռան դուս էկաւ։ Արեք մտաւ, ասեց.—Բեռները վեր ածէք։

Ասեց.—Աղա՛, խի վեր ածենք. քաղաքը մօտ ա, էթանք քաղաքը։ Ասեց.—Անկարելի ա, իմ հէրը խրատ ա տուել. «որ տե արեք մթնի, ըն տե պտի մնաս»։ Բեռները վեր ածեցին, կշտին պառկան. ինք գշերը բեռների բոլորը պտըտում էր։ Տեհաւ մի մարդ Ֆանարը ձեռին գալիս էր. էկաւ, իրա կողքով անցկացաւ, դըպա գերեզմանները գնաց. տեհաւ չըլակին մի փաց կայ, քամակից եավաշ, եավաշ գնաց. հետու կաղնաւ, ըդրան թամաշա արեց։ Շլակի բանը վեր դրեց. մի քար չուռ տուեց. տեղը փորեց, էդ բանը դրեց տեղը։ Քարը վրայ տուեց ու թողեց, գնա՛ց։ Ասեց.—Էս ապրանք ա, բերեցին, ըս տե պահեցին, գնացին. էթամ. հանեմ։

Ցողը յետ տուեց ու հանեց, տեհաւ մի հատ աղջիկ ա, հոգին տրըփում ա, խանչյալը իրեք, չորս տեղ տուեր ինի։ Վեր կալաւ, բերեց իրա բեռների մօտը.—Որ մեռնի, կը տանեմ, փորեմ, ասեց։ Բերեց ջուր փռեց տակն, պառկացրեց, մի ջուր էլ քաշեց երեսին։

Լիսը բացուեց, վե կացան, թասարիֆ տեսնան, որ բեռները բարձէն. Թամաշա արին մի հինգ հարուր ձիաւոր, Դանիա չատ քաղաքից դուս էկան. քաղաքի ղրաղին տաս-տաս, քսան-քսան էլան, ցվըրուան դըպա հանդը, մի հինգ ձիաւոր դուզ էկան քարվանի մօտը կաղնեցին, հարցրին.—Էս գշեր ըս տեղ իք։

Ասեցին,—Հա, ըս տեղ ինք։

Ասեցին.—Թագաւորի աղջկան սպաներ են, վե կալ, տարե, բան ու ման չէք տեհե ըս տեղրանք։

Ասեցին.—Իրիկուրէ ըս տեղ ենք, բան չինք տեհե։

Էդ ձիաւորները թողեցին, գնացին։

Էդ տղէն ասեց.—Ինչ անեմ, թէ էկան իմ կշտին գթան. ըստրան լեզու չունի որ ասի թէ «ինձ սպանող էս չի,» ինձ կը տանեն, կորցնեն. էս օր էլ կը մնամ ըս տի թէ մեռաւ, կը թաղեմ տեղը։

Էն դշիրը մնաց, տեհաւ, չէ, չի մեռնում, էն առաւօտը էլ էն քաղաքը չմտաւ. վեր կացաւ, գնաց ուրիշ քաղաք, մի դուքան ըռնեց, ապրանքը ածեց մէջը. էդ աղջկան տարաւ, պառկացրեց, ասեց. Գողերը վրայ են տուե, մեր յընկորը խանչյալով եարալու ըն արե, ով կայ սաղացնող։ Ասեցին.—ըս տե մի լաւ հեքիմ կայ։ Գնաց, հեքիմին գթաւ։ Բերեց դուքանը, հեքիմին ասեց.—Խոստովանք պտի պահես, էս աղջիկ ա։ Հեքիմը բաց արեց եարէքը, տեհաւ։ Ասեց. —Ի՞նչ ուզես, կուտամ. պտի սաղացնես։

Հեքիմը սաղացրեց,-աղջիկը պիրսեկն աչք բացեց, տեհաւ տհա՛, իրան կշտին հեքիմը ու տղա մի կայ, ասեց.—Այ տղա՛, դու ինչ տղայ ես։ Ասեց.—Ես բազիրկեանեմ, էկայ ձեր քաղաքի ղրաղը, դու պատահեցիր։

Ասեց.—Ես թագաւորի աղջիկն եմ. թագաւոր մի հատ վեզիր ունէր, դրան մի տղա ունէր, սառաֆութուն կանէր, կգար մեր ամարաթները, կգար իմ օթախը, իմ հետ կը խօսար չարի կէս գշեր, կէս գշերին կեթար, ինձ խօսք կը գցեր. մէկ օր էլ չատ ինձ զօռեց, ես ըղրա վրայ բարկացայ, ասեց.—«Առաւօտը թագաւորին կասեմ որ քո գլուխը կտրի. էդ խօսքին խանչյալը հանեց ու ինձ տուեց, էլ չիմ իմացե, ինչ ա էլե։

Ասեց.—Քեզ թաղեց, հանեցի բերեցի ըս տե, սաղացրի։

Աղջիկը ասեց.—Բեռները բարձե, էթանք մեր քաղաք։

Բեռները բարձեցին, ընկան ճանապար. էկան իրանց քաղաքը։

Տարան ապրանքը վեր ածեցին իրանց դուքանի աղաքը, էկան էդ տղի տունը վեր էկան։

Ախչկան տասներկու հատ անգին քար ունէր, ալ մաճուտիմ վրայ կարած, հանեց, տղին նշանց տուեց, ասեց.—Էս քարերը տեսնում էս, դու գին չես գիտայ, ես գիտամ. հատը հազար մանէթ ժժի, մի հատը վե կալ. տար, էն դուքանների կշտին մի հատ սարաֆ կայ, ընդրա վրայ ծախայ. որ ասի, գին ինչ ա, ասա հինգ հարուր մանէթ ա. էն կը հարցնի, էլ ունե՞ս, ասա չմա ունեմ կշտիս. որ կուզես, ասա, արի, նշանց տամ. վե կալես, կը բերես:

Իրիկունը սարաֆին վե կալաւ, բերեց տուն։

—Ախչի, ասեց, տղին բերել էմ. քարերը չանց տու, տեսնա՞նք։

Բերեց, քարերը չանց տուեց, ասեց.—Մէկն օր ծախերէս, տասն մին հատ էլ կայ։ Նստէք, հաց ուտենք, ետքը փողերը տուր. վեր կալ ու գնա։ Սարաֆը մտածեց որ վեց հազար մանէթ ըս օր դատում ա, ուրախացաւ. ասեց.—Հաց չեմ ուտում, առէք փողերը՝ տուէք. էս էթումիմ, մութն ա։

Ախչիկն էկաւ, ասեց.—Հաց ա, կեր ու գնա։

Սարաֆը ասեց իրա միջին.—Կասեն էն Թագաւորի ախչիկը պտի ըլի որ սպանեցի. խօսալը ժաժ գալը, ընդրա պէս ա. մի քիչ նստեմ, խօսամ, վե կենամ, էթամ։

Էդ ախչիկը հաց քցեց, բերեց գինի դրեց, խմեցին, ճէֆները մի քիչ լաւացաւ՝ էդ ախչիկը գնաց մի խանչալ հանեց։ Էկաւ սարաֆի քամակին կաղնեց, մի խանչալ տուեց քամակիցը, սրտիցը ծէրը դուս էկաւ։ Սարաֆը ընկաւ ու մեռաւ։

Տղէն ախչկան ասեց.—Ի՞ տուիր ըդրան։

Ասեց.—Իմ սպանողը էս էր, ես էլ իմ ինատը հանեցի, տղա՛, ասեց, ինձ ո՞ր տեղան հանեցիր, ըստրան էլ տանենք, ըն տի թաղենք։ Մի փալասի մէջ կոլոլեցին ու վե կալան, տարան. թաղեցին։ Էդ տեղ, որ ախչկան հաներ էր։ Ետ դառան, էկան տուն։

Առաւօտ լիսացաւ, տղէն ղրկեց, մի ձեռք տղամարդի շոր բերի։

Գնաց վե կալաւ, բերեց։

Ախչիկ ասեց.—Ինչ առարկայ կայ պազարումը։

Ասեց.—Վեզիրի տղայ—Սարաֆին ման էն գալի։

Ասեց.—Գնա՛, էրկու հատ ձի էլ բեր, նիլենք, էթանք. որ չի գան, Ծռանէն գտնեն, մեզ կորցնեն։ Հեծան ու գնացին։

Ախչիկն ասեց.—Այ տղա՛, գիտա՞ս, ուր պտի էթանք։

Էթանք Ստամբօլ, ընտե մի ժամանակ մնանք, էս առարկէն վերջանայ, յետ դառնանք. գանք։

Գնացին, մի չոլ, եապան տեղ վեր էկան. խուրջինները հաց հանեցին, նստեցին. կերան։

Էդ ախչիկը ալ մաճուտը նստաւ, լուաց, ասեց.—Այ տղա. ուշդ վրայ պահայ, ես էլ մի քիչ քնեմ։ Քնեց. տղէն թամաշա էր անըմ։

Տեհաւ մի հատ ագռաւ էկաւ, էդ ալ մահրցի կչտին վեր էկաւ. իմացաւ միս էր, ինչ էր. վե կալաւ էդ ալ մահրուցը, թռաւ. տղէն տեհաւ որ տարաւ, մի դարի գլխին վեր դրեց. ձին նիլաւ, ընկաւ քամակը։ Գնաց, հասաւ. էլի վե կալաւ, թռաւ. տարաւ դահա հեռու, մէկ էլ գնաց, էլի ագռաւ վե կալաւ թռաւ. մութն էլ ընկաւ, կորցրեց ագռաւին՝ ետ դառաւ, ասեց.—Էթամ ախչկան հասնեմ։

Էդ ախչիկը զարթնեց. տեհաւ, ահա, կչտին մարդ չկայ։

Ասեց.—Էյ պէիհիքիպար տղա, էն նեղ տեղից ընձի ազատեց. իրա ամակին ափսոս չէկաւ. էն քանի անգին քարի խաքեր վեր կալաւ, գնաց։ Էդ ախչիկը ձին նիլաւ, դպա Ստամբօլ. գնաց ծովի ղրաղը, կեամին նստեց. գնաց Ստամբօլայ մէջը։

Գնաց թեթև ղայֆի դուքանը գրեց, ասեց.—Պալքի էդ տղէն էրևայ, ետ դառնանք դըպա մեր քաղաքը։

Տղէն էկաւ, տեհաւ ախչիկը չկայ. ընկաւ, քաղաքները ման գալով, հարցնելով չգթաւ, ձին էլ ծախեց, կերաւ. ասեց.—Փող չմնաց, Ստամբօլ էթամ։

Մի մարդ ասեց.—Նօֆար կըլլես, Ասեց.—Կըլլեմ-

Ամիսը պարիշեցին տասը մանէկը։

Ամիսը բամեց, ասեց.—Իմ տասը մանէկը տուր, ես էթամ։

Ասեց.—Ուր էս էթում. մի ամիս էլ կաց, նոր գնա։

—Անկարելի ա, ասեց. պտի էթամ։

Ասեց.—Որ ըդենց ա. կացինը սղոցը վե կալ. մի ծառ կայ. կտրենք, նոր գնա։

Տղէն վե կալաւ. գնաց տակը, նստեց։

Տեհաւ աղէն յետացաւ, սկսեց կտրիլը։

Ծառը կտրուաւ վեր ընկաւ։ Էդ ծառի գլխին մի ագռաւի բուն կար. տեհաւ ալ մահրցի վրայ չարած անգին քարերը բնէրա միջին էր. ուրախացաւ. վե կալաւ, դրեց ջէպը, ասեց.—Ես ըսդրան ի ման գալի, գթայ. յուս ունեմ ախչիկն էլ կը գթնեմ։

Մէկ էլ տեհաւ աղէն էլ էկաւ. տեհաւ ծառը կտրած։

Ասեց.—Զօրանաս, վեր առ քու փողն, բարի ճանապարհ։

Փողն առաւ, ընկաւ ճանապար, գնաց. գնաց, ծովի ղրաղը հասաւ. նստաւ կեամին, դուս էկաւ Ստամբօլ. ման էկաւ, գնաց մի ղայֆանու դուքանում գթաւ ախչկանը, ախչիկը ասեց.—Պէ իհի-քիպար, մենծ բան էր որ անգին քարերը վե կալար, գնացիր. ինձ թողեցիր էն տեղ։ Տղէն նստաւ, ինչ որ էլեր էր, պատմեց. ջիպէցը անգին քարերը հանեց, տուեց ախչկան։

Ախչիկը ասեց.—Մի ժամանակ ըս տե մնանք. նոր կեթանք մեր երկիրը։

Թագաւորը վեզիրին կանչեց.—Վեզի՛ր, ասեց. արի՛ ըստե։ Վեզիր, իմ ախչիկը կորաւ. իսկի սալըխ տուող չէլաւ. քու տղէն էլ կորաւ, սալըխ տուող չէլաւ. մենք չիմացանք, մեր դուշմանը ո՛վ էր։

Վեզիրն ասեց.—Մեզ չեն ասեր, ֆուչեֆում կասեն. դարվիշի կէյիմ մտնենք, էթանք, ման գանք, հարցնենք։

Թագաւորն ու վեզիրը վեր կացան, մտան դարվիշի կէյիմ. ման էկան։ Գնացին, աշխարքը ման էկան. որ տեղ հարցրին, սալըղ տուող չէլաւ: Գնացին, դուս էկան Ստամբոլ. էդ ախչկայ ղայֆի առաջովը անց էին կենում. ախչիկը տեհաւ, ճանաչեց. ասեց.—Էս թագաւորն ա,—իմ հէրն ա, էս էլ վազիրն ա։—Սարաֆի հէրն ա. ձէն տուեց։—Դարվիշ բաբա, ո՛ւր էք էթում։ Ասեցին.—Էթալու տեղ չունենք, ման ենք գալի։ Ասեց.—Համեցէք ըստե՝ ղայֆայ էլ կայ, չայ էլ կայ, Ճարկիլայ էլ կայ, ինչ որ ուզէք, կայ։

Մտան ներսև. տարաւ ըղոնց տեղ նշանց տուեց, ըղոնց պատուեց։ Դարվիշն ասեց.—Կերակուլ էլ կարաս պատրաստի։

Ասեց—Էս սահարը կը պատրաստեմ։

Կերակուրը պատրաստեց ու քաշեց ըղոնց աղաքը։

Մութն էլ ընկաւ. դուռը չինեցին, էկան չորսով նստան ու հաց կերան։

—Դարվիշ բաբա, ասեց. արխային կերէք ու ըս տե քնէք։

Կերան ու պրծան. ախչիկն ասեց.—Դարվիշ բաբա, երկար գիշեր ա, դու աշխարք ման էք էկե. մի բան ասէք, անկաջ անենք։

Ասեց.—Մենք պեզարած ենք. դուք ասէք։

Ասեց.—Ես մի թեթե՛ւ բան գիտամ- ասեմ։

Սկսեց գլխիցը. մոնց օր էլեր ա, ընենց պատմեց. ասեց.—Դու թագաւոր էս, էս էլ քու վազիրն ա, ես էլ քու ախչիկն եմ, էս էլ ինձ պրծացնող տղէն ա։

Քնեցին, առաւօտը վեր կացան, ընկան ճանապար. էկա՛ն, իրանց քաղաքը դուս էկան:

Էն վազիրին դուս արեց, ասեց.—Դու իմ դուշման էս զաթի, էն աղջիկն ու տղէն ինչ տար իրար հետ ման էն էկե, իրար հետ քուր, ախպօր պէս էն էլե։

Թագաւորը ջխտին էլ կանչեց աղաքը, կաղնացրեց. ասեց.—Որդի՛, իմ կորածը որ ես քթայ. ըղրա պատճառը դու ես էլե, իմ ձեռով էս ախչիկն էլ տալիս եմ քեզ։

Նշան դրեց, օխտն օր հարսանիք արեց։



# ԱՂՈՒՆԻԿ ԱՂՋԻԿ



(Վաղարշապատի բարբառով *)

Իրեք ախպէր կըլլին, իրեքի պուճուրը կըլի. էդ տղէն աչխատանքի-բանի չի էթայ. ձիու վրայ ման կգայ։ Ախպէրտանքը կասեն.—Խի՞ չես գալի մեր տան բաները անես, պէյթի ման էս գալի։ Ասեց.—Ամենևին ձեր տան բան ընձի պէտք չէ՛, էլ տանը չեմ մնըմ. ես որ էթումեմ։

Գնաց, էրկու ընկեր գթաւ, ասեց.—Տղէք, էթանք ախշար ման գանք. էլ դառնալ չկայ մեզ։ Գնացին, իրեք հատ ձի առան. ամենքին մի հատ, նիլան ու գնացին։ Գնացին, ընկան չօլ-եազան տեղ, ճանբէն կորցըրին. տեհան մի ղօռուխի խոտի մէջ մի իզ կերևայ, առան էդ իզը, գնացին։

Գնացին, տեհան մէկ հատ վիշապ ընկեր ա, էթում ա. դու մի ասէր էդ վիշապի իզն ա. գնացին, հասան վիշապին։

Վիշապն յետ դառաւ, էդ իրեքին խըրկեց, էղօնք փախան։

Վիշապը ըդոնց կոխեց մէ զաղի մեջ. վիշապը մեծ էր, չկարաց ներքև մտնէր. դուան դէմ արեց, բերան բացեց, կաղնեց։

—Տղէք, ասեցին իրարու. մեզի կուտի, էլ իլաճ չկայ, թուանգը լցէք, տուէք բերնի մէջը։ Տղէք լցին, դարդըկեցին։ Իրեք օր մնացին ըտեղ, շատ սովածացան, ասեցին.

---

* Պատմած է Արսէն Ղրիմեան:

—Վիշապ ոչ ժուր ա գալի, ոչ բան. դուս գանք, տեսնանք. սատկած ա թէ սաղ ա։

Դուս էկան, տեհան սատկած ա. ձիանը նիլան, ընկան ճանբայ. գնացին, մի ծովի ղրաղ դուս էկան. տեհան ծովի էրեսին կեամին գալիս ա։ Կեամիչին էկաւ, կեամին մօտացրեց, ասեց.—Մեզ էլ դիր կեամու մէջ։

—Դու ինչ մարդիկ, ասեց. էս չօլիստան տեղ մնացերէք։

—Պատահեր ա, ճանբէն կորցրինք, ընկանք ըս տե։

—Ձեզ տեղ կըլլի, ամա ձեր ձիանոց տեղ չըլլի։

Ըդոնք էլ ասեցին.—Ձիանը մեզ պէտք չի։

Ձիանը բրախ տուեցին, նստան կեամին. ընկան ճանբայ։ Ֆըրթունէն վե կացաւ. իրեք օր, իրեք գիշեր ծովը տակ ու վիրև արեց. կեամին տարաւ, տուեց մի քարի, հազար կտոր արեց։ Էդ իրեք մարդ մնացին մի տախտակի վրայ. ասին.—Աստուած, վիշապից պրծանք, ընկանք էս նեղ տեղ. տեսնանք, ո՛ր տե լուս կընկնանք։

Ծովի լափին տարա՛ւ, մի ղրաղ դուս հանեց։

Բերեցին էդ տախտակը մի քարից կապեցին. իրանք դուս էկան չօլը. տեհան մեշայ ա, սկսեցին մեշի մէջը ման գալը։

Տեհան ոչխարի բառոց ա գալի, ասեցին.—Տղէ՛ք, էթանք էս ոչխարի իզին, մէ ճենըրկ քցենք մեզ,

Հասան ոչխարին, տեհան չօպանը բեփեկեօզ ա. ոչխարի կըշտին կաղներ ա. հենց որ տեհաւ, գերանը դականակի պէս դրեր էր ուսին. խառնեց ոչխարին, ՛քշեց. տարաւ իրան զաղէն. զաղի առաջ մի ջաղացքի քար կար, պըտըտեց դէն. ոչխարը արեց նեքսե, մեզ էլ հետը. գնաց մի սէլաչափ ցախ բերեց. չորս քար չինեբ էր բուճղիր, ցախը վառեց էդ տի, մի շամփուր ունէր, դրեց էդ կրակի մէջ. լաւ տաքացաւ, հանեց ու բերեց, տուեց ըդըրա դօշը, հենց ճուաց ու մեռաւ։ Տարաւ, կախ տուեց բուճեհիր, էփեց. քարի վրայ ճըղճըղեց ու կերաւ։ Ասեցին.—Էգուց էլ մեզ կուտի. ինչ իլաճ անենք, սրա ձեռիցը պըծնինք։ Լիսը բացուեց, խառնեց ոչխարի հետ, տարեց մէշի մէջը. չար իրիկուն պըտըտեց, իրիկուն էլի բերեց, արեց ըսիղ. էլի ցախ վառեց, շամփուրը բերեց. էլի էն մէկ տուեց ընկորը դօշիցը, էլաւ տարաւ բուճեհիր, էփեց. ճղճղեց ու կերաւ։ Մնաց մինակ. միտք արաւ, վաղն էլ ճօպար իմն ա։ Էդ մաքին էր, տեսայ բեփեկեօզ քնեց. խռոց քցեց, քունը տարաւ, տղէն վե կացաւ, էդ շամփուրը վե կալաւ. դրեց աչքի մէջ, հուփ տուեց, գնաց գետինը։ Վ,ե կացաւ, ընկաւ պատէպատ, էդ տղին ման ա գալի. ճարը կտրաւ, ջաղացքի քարը գեհը քցեց. չէնք արեց ծակի դէմը, ոչխարը մի մի չէնքի տակով անցկացրեց։ Տղէն մտաւ

սեյիսի փորի տակ. սեյիսը եավաշ-եավաշ գնաց, չէնքի տակով անց կացաւ. էդ էլ հետը գնաց։

Տղէն դուս էկաւ դուռը, բօռաց, ասեց.—Հօ քու ձեռից պրը-ծայ։ Էդ ձէնը որ լսեց, էդ բեփեկեօզն էլաւ մի քարի գլուխ, բօ-ռաց. որ բօռաց, էն ղցար բեփեկեօզ էկան, լցուան ը տեղ։ Էդ տղէն փախաւ։

Էդ բեփեկեօզներ ասեցին.—Խի ես բօռում։

—Էդ փախնողը իմ աչքը հանեց. ասեց։

Ըդոնք ընկան ըդրա քամակը. էդ փախաւ, գնաց, էն տախ-տակը որ կապեր էր. վրան նիլաւ, կապը յետ արեց, քշեց ծովի մէջը. ըդոնք էլ էկան, ղրաղը կաղնան. էլ չկարացին մտնել։ Էդ տղէն տախտակը քշեց, եավաշ-եավաշ գնաց ծովի մէջը. գնաց, մի ղրաղ դուս էկաւ չօլը. տեհաւ մեծայ ա, ամեն տեսակ պտուղն էլ կայ, մարդ ու մատաղ չկայ։ Էդ տեղ մի աղբուր կար. իրեք աղու-նիկ էկան ը տե, խրխէք հանեցին, մին մին ախչիկ էլան, լեղացան։

Տղէն մէկի խրխէն գողացաւ. տարաւ պահեց։ Էկաւ, էդ ախ-չիկներուն մօտացաւ. ըդոնք տեհան մարդ ա գալի, էն էրկուսը էկան, ալպէալը խրխէք հագան ու թռան. տղէն գնաց, էն մէկը բռնեց։ Էդ տղին աղաչեց, ասեց.

—Տղա՛, ես քու թայը չեմ. ինչ տար աղաչեց, չէլաւ։

Էդ տղէն, էդ ախչկան առաւ, էլան մարդ ու կնիկ։

Ասեց.—Մարդ ու կնիկ էնք, իմ խրխէն տու, հագնեմ։

Ասեց.—Վախում եմ, դու կը փախնես։

Ժամանակ մի մնաց, մի տղայ բերեց, ասեց.—Հմի տո՛ւր, տղայ էմ բերեր, էլ չեմ փախնի։ Էլի չտուեց։

Մի տղայ էլ բերեց, էղաւ էրկու տղայ.—Դէ՛, ասեց. իմ խրխէն տո՛ւ, էրկու տղայ էմ բերե. չեմ փախնի։

Գնաց, խրխէն հանեց, բերեց, տուեց.—Դէ՛, ա՛ռ, ասեց։

Հենց որ խրխէն հագաւ, էրկու տղէն խըտըտեց, գնաց ծովի մէջ տեղ կաղնեց, ասեց.—Այ տղա՛, էս էրկու տղէն ընձի հալալ արա։

Ասեց.—Հալալ չեմ անի։

Իրեք անգամ ըդենց ասեց, էն էլ չարեց։

Էրկու տղին առեց, ըրկուեց ծովի տակը, էլ չերևաց։

Էդ տղէն էլի մնաց մինակ ըդ տեղ. ասեց.—Մինակ ինչ անեմ։

Գնաց, ընկաւ ման գալու։ Գնաց, տեհաւ մի մարդ, հրեշ, նստած ա, բարև տուեց, ասեց.—Ի՞նչ մարդ էս, ըս տե նստած էս։
—Մեր տուն ըս տե ա, դեղն ըս տի մօտ ա. —Դէ՛, արի՛, ձեռիցս բռնայ, էթանք մեր տուն։

Դու մի՛ ասիր, էդ մարդը պալեր ղայիշ էր, փաթութուաւ ըդրան. նիլաւ չալակ, փէտ առաւ ձեռ, քշեց. տարաւ իրանց տունը։

Գնաց տուն, ըղըա հէրն ասեց.—Էդ ինչ բան ա։

Ընձի ճանբին պատահեց. Նիլայ, էկայ։

Նօպարէ Պօպար ըդըան Նիլան. ցախ էն բերըմ, ջուր էն բերըմ. էրկու ամիս ըդենց բանացընըմին։ Ըդոնց ձեռիցը իլան չէր գանըմ պըծնէր, չա՛տ չարչարեցին։ Մէկը փչու կերթէր. մէկը ջրու։

Մէկ օր գնաց ծովի դրաղը, ըախան մի մարդ էկաւ, ասեց.
—Ըդոնց ձեռը դու խա՞ էս ընկե։

Ասեց.—Ճանփէն կորցըրեցի. էկայ, ընկայ։

—Որ մտնես ծովը, ըդոնք քամակէդ չգան, կը պըծնես։

Էդ տղէն ջրի միջով, դրաղէն գնաց, ընոնք կանչեցին—Արի, արի։ Էն ականջ չարեց. Նիլող յետ դառաւ, գնաց։

Տղէն մէկ քարի տակ տափ կացաւ. տեհաւ մի կեամի, կեամուչուն ձէն տուեց.—Արի, ընձի էլ տար։

Կեամուչին վե կալաւ, դրեց կեամու մէջը. տարաւ, հանեց քաղաքիմ մէջ։ Էդ տեղ տղէն իրեք տարի մնաց, աշխատեցաւ բաւականի փող։

Էդ քաղաքիցը մի ախչիկ առաւ. մի չորս տարի մնաց կշտին. էդ ախչիկ մեռաւ, բերեցին, դաւար, ոչխար ինչ որ ունէր, մորթեցին։ Ասեց.—Ախպէր, խա՞ էք մորթում, ընձի տուն ա պէտք, ես էլի կնիկ պտի առնեմ։

Ասեցին.—Խա՞, դու էս քաղաքի սովորութիւնիցը խապար չես։

Ասեց.—Ի՞նչ կայ որ խապար ըլլեմ։

Ասեց.—Մարդը մեռնի, կնիկը պտի թաղենք, կնիկը մեռնի, մարդը պտի թաղենք հետը. կնիկը ինչ կանես, մալը ինչ կանես։

Բերեցին մի դուպուր կնկայ համար շինեցին, մի դուպուր տղի համար. տարան գերեզմանատուն։ Ըդոնց գերեզմանատունը չա՛տ մեծ զաղայ էր, պարանով կախ տուին ծակովը. էրկու մարդ էլ իրանցից կախ տուին. վեր էկան, տեղաւորեցին. էն մարդկանց էլի քաշեցին վիրև։

Էդ տղէն ասեց.—Ես մեռած չեմ. դուս գամ, տեսնամ, ինչ կայ։ Դուս էկաւ, ման էկաւ, տեհաւ որ դուպուր դուպուրի վրայ լէքն ա, մէ կնիկ էլ էն տեղ սաղ ա, գնաց, էդ կնկան հարցրեց.
—Դու եփ էս էկե ըս տե։

Ասեց.—Էս քաղաքի աղաքը կտռուի, էրեկ իմ էրիկ մեռաւ, ընձի էլ բերին ըս տե. պտի ընդար մնամ ըս տե սոված, ըս տե մեռնեմ։

Ասեց։—Իմ կնիկ էլ մեռաւ, ընձի էլ բերեցին ըս տե. Աստուա՛ծ, պտի լուս անի, ըս տիան պտի պըծնենք, թէ ըս տե պտի մեռնենք։

Կնիկն ասեց.—Ըստե գալող էլ չպըծնի։

Թամաշա արին, տեհան մի հատ աղուէս էկաւ, ըստե ման ա-

գալի. տղէն ասեց.—Էս աղուէս տեղ կուննեայ, էկեր ա. անեան՛ք, դըւռըն ա էթում, մենք էլ էթանք։

Տղէն ընկաւ քամակը, կնկան էլ ասեց.—Դուն էլ արի։

Աղուէս գնաց, ըսոնք գնացին. գնացին, մի ծակից դուս էկան ծովի ղրաղը։ Աղուէս թռաւ, գնաց. տղէն տեսաւ կեամիմ ա գալի. կեամուչուն կանչեց, կեամուչին վե կալաւ ըդոնք։

Էդ կնիկ չատ սիրուն էր, կեամուչու աչք ընկաւ էդ կնկան. միտք արաւ որ տղին վե կալի, քցի ծով. կնիկ առնի։

Մէկ էլ տեհաւ ծովից ձէն էկաւ.—Էդ ինչ էս անըմ, հէյ։

Կեամուչին որ ձէնը լսեց, փախաւ. տափաւ։

Իրեք անգամ միտքը փոխեց. իրեք անգամ ծովի միջից ձէն տուէին, էլ չկարողացաւ տանէր, հանեց չօլը։

Էդ տղէն, էդ կնիկը նստան ծովի ղրաղը. էն աղունիկ կնիկը երկու երեխէն առաւ, էկաւ ըտե, կանչեց ծովի միջից—ձէն տուեց. —Ա՛յ մարդ, կնիկ էս առե, էդ կնիկը հալալ, էս էրեխէքը ընձի հալալ անըմ էս։ Ասեց.—Հալալ չեմ անի։

Ասեց.—Խի՛ չիս անի, Պալsr ղայիcից քե ազատեցի, էն ով էր, էն աղուէսը քե ազատեց, էն ով էր. իրեք անգամ կեամուչին միտքը փոխեց, քե պտի քցեր ծովը, էն ով էր ձէն տուեց. իրեք փորձանքից քե ազատեցի, էս էրկու էրեխէն ընձի հալալ չես անըմ։

Ասեց.—Հալալ ա քեզ։

Ասեց.—Էթաք բարին ու սըկուեց ջրի տակ։

Մարդ ու կնիկ վե կացան, էկան էդ քաղաք. մի հարուստ մարդ ըդըրան պատահեց, ասեց.—Դու ինչ մարդ էս։

Ասեց.—Ղարիպ մարդ էմ, ես էլ չեմ գիտում, ես ու իմ կնիկ էկե, ընկեր ենք ըստիան։ Ասեց Որտի՛, պտի մնաս։

Տեղ չունիք ըսկի, աղա, ասեց։

Վե կալաւ, տարաւ իրա տունը. հաց կերան, պըծան։

Առաւօտը հարցրեց։—Նofար, կըլլիս.—Ասեց Զէ։

Ասեց բռնեմ քե Gofար, թուանf քցել, սարվի։

Ամիսը տասը մանէթ պարըcեց, ինքն էլ մուֆթա պահի։

Պարուp կուլա առաւ, տուեց ըդըրան, ասեց.—Լաւ նշան քցել սարվի։

Մէկ օր ասեց.—Արի՛, փորձեմ. խանճչալը կը դնեմ, կուլով բերնին տուր։ Կուլէն տուեց, էլաւ էրկու կտոր, կչռեց, մէկը քիչ ծանար էր, ասեց.—լաւ չես սարվել։

Գնաց մի ամիս պտըտեց, էկաւ։

Խանճչալը տնկեց. կուլով տուեց բերնին. բերեց, կչռեց, էրկուսն էլ ղուզ ղուզա էկան։

Բերեց, մատնիք դրեց բռան մէջը,—Կուլով տուեց, մատանիքի ծակէն անցկացրեց։

Ասեց.—Աֆարըմ, տղա՛։ Գնաց, տղի ճակատը պաչեց։

Վէ կալաւ տղէն, գնաց իրանց տունը. հաց կերան, գինի խմին, լաւ քէֆ արին, մի դաստա փէտ վէ կալան, թուանքը վէ կալան, ասեց.—Տղա՛, վէ կալ, էթանք ծովի ղրաղը։

Ծովի ղրաղը փորեցին, էդ փէտերը քցեցին, ծածկեցին։

Աղէն ասեց.—Մտի ըս տէ. չքնես, հենց քշերը մէ ճանավար կգայ ծովիցը. հենց պոզերը, մռութը դուս կգայ ծովիցը. ալպեալը դու մի՛ թողի դուս գայ։

Գշերուայ կիսին տեհաւ մէ գլուխ դուս էկաւ ծովից կրակի պէս, պլպըլում ա, գալիս ա դպա իրան. էկաւ, մօտանըմ էր, մէկ կուլի, մանկզիլ մնաց. տղէն նշանը բռնեց. տալու բաշտան ճակտին բռնեց։ Էդ ճանավարը չռեց պոչին վրէն ու չպրտեց ըղըրան, որ գիպաւ տղի էրես, էրես էլաւ արնլուիկ, ուշքը գնաց, նուաղեց։

Աղէն թուանքի ձէնը լսեց. կնկան ասեց.—Էթումեմ, կնիկ. ինչքան մարդ փչացաւ, էդ էլ փչացած կըլլի։

Գնաց, տեհաւ ջանավարը վեր ա ընկէ ծովի ղրաղը. գնաց քօլիկը տեհաւ տղէն սաղ էր. արնի մէջ կորսուեր ա։

Ջուր բերեց, գլխին քցեց, տղէն օյանմիշ էլաւ, աչքերը բացեց, տեհաւ աղէն գլխու վերեն ա։

Ասեց.—Տղա, մի՛ վախենար. վեր, էթանք։

Ջանավարը դրին մէշոքի մէջ. տղէն շլակեց, էկաւ դպա տուն, բերեց, դրեց կըճըճի մէջ, բերանը խմորեց, դրեց թունդիրը, լաւ էփեց. հանեց, եղը թօփ էլաւ կաշաղի պէս մի գունդ։ Ասեց,—Կնի՛կ, մի կտոր բանբակ բեր։

Բանբակ բերեց, կճուճը թամուզ սրբեց. մի պուճուր էլ էդ եղիցը դրեց մէջը, տրորեց ու տուեց տղին, ասեց.

—Դէ, գնա՛, թէ մարդ էս, էս էլ քէ բօլ ա։

Էդ տղէն վէ կալաւ, գրեց ծոցը, ասեց.—Ընձի ճանբու դիր։

Աղէն գնաց էրկու հատ ձի առաւ, էրկու հարիր մանէթ փող տուեց, լաւ չորեր տուեց.—Դէ՛, ասեց. բարի ճանբայ։

Ընդօնք ընկան ճանապար ու գնացին. գնացին չօլի մէջ մէկ աղբրի վրայ իջան։ Հաց կերան, պարկան։ Տեհան մէ տաս հատ ձիաւոր գող էկան, վեր էկան, ասեցին.—Էս մարդին սպանենք, ձիանը, կնիկը տանենք։

Էդ մարդը ընկաւ աղաչանք.—Խի՛ էք սպանըմ, ձի՛ն էլ տարէք, մալն էլ տարէք, ընձի, իմ կնկան ձեռ. մի տաք։

Գողերի մէկի սիրտը խիղճ ընկաւ.—Խի՛ սպանենք, մեր ձեռ ինչ կընկնի որ սպանենք, կնիկը տանենք, ինչ անենք։

Ձիանն էլ տւան, փողերն էլ տւան, էրկըսով չըփլախ մնացին ըտե։ Մոցի չիպի բանբակը թափած էր ըտե, ասեց.—Կնիկ, կնի՛կ, էդ պօճծով (կժի կոտրած կտոր) մէ ջուր տուր, խմեմ։ Կնիկը պօճծը վե կալաւ, աղըրի մէջը լուաց։

Ասեց.—Էդ բանբակով էլ սըբի, թամուզ ըըի։

Բանբակը վե կալաւ, սըբեց. տեհաւ բօճծը էլաւ ոսկի։

Ասեց.—Կնի՛կ, էս բանբակին հունար կայ. բանբակը թօփ արա։

Բանբակը թօփ արին. վե կացան ու գնացին։ Ո՛ր տե որ սաժածանում են, մի խեցատի կտոր վեր են քաշում, բանբակով սըբբում, ըլլում էր ոսկի, տալիս էն հացի, ուտելով էթումին։

Էկան իրանց քաղաքը դուս էլան, գնացին իրանց տունը։

Հէրը, մէրը էկան, թօփ էլան գլխին, ասեցին.—Էդ ի՞նչ բան էր, ըդենց սիպտակեցիր։

Նստեց, իրա գլխին էկածը Ճաղլ արեց, ասեց.

—Էս դար դարե տեննողը չի սիպտակիր։

Ղօճախ էկաւ տունը, տեսաւ էն թուխ մարդը նստաւ հացի, էն սիպտակ մարդին բանացընըմ էր, ասեց,

—Խի էք չաճեղներդ նստի, էդ սիպտակ մարդին բանացընըմ իք։

Ասեցին.—Էդի մեր պատիկն ա։

—Ոնց պատիկն ա, ես ձեր հացը չեմ ուտում. թօ իրա պատմութունը անի։

—Դու քու հացը կեր, ասեց. իմ դարդը շատ ա։

—Դու քու դարդը չասես, ես ձեր հացը չեմ ուտի, ասեց։

Էդ մարդ սեղանի վրայ սկսեց իրա գլխից անցած բաները, պատմեց մինչև իրեք օր։

Ղօճախ մինչև տակը չառաւ, հաց չկերաւ։



# 38

# ՍԸՄԱԻՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՈՒ ԳԻՒԼ

(Վաղարշապատի բարբառով *)

Կըլէ՜-չըլէ՜, մի տղայ. կեթայ մի իշխանաւոր մարդի կըլէ Ծօքար, էդ մարդը կասի.—Ոչխարը պտի տանես, արածացընես, չուրի աշուն կտամ քառասուն մանէթ: Էդ մարդը վեր, տաւրաւ հանդը արածացնելու, ճաշերքին կը բերէր բէր ոխչարը կթելու:

Ոխչարատիրոջը մէկ ախչիկ ունէր, էդ չոպանին հաց կը բերէր. էդ ախչիկը էն ղցար գնաց, էկաւ, որ իրար վրայ սիրուեցին. ախչիկայ հէրը իմացաւ որ սիրուեր ա ախչիկը իրանց չոպանի վրայ: Հէրը ուզեց չոպանը դուս անի, ամառուայ կէս էր, ուրիշ չոպան ձեռ չընկաւ, մնաց էլի: Էդ չոպան իմացաւ որ իրան պտի դուս անի, գնաց մի հատ բլուլ առաւ, սկսեց ածիլը իրա դարդի համար: Ախչիկայ հէրը ախչկան չթողեց որ չոպանին հաց տանի. գշերը ոխչարի տեղումը որ չոպանը բլուլ կածէր, էդ ախչիկը կը նիլէր կտուրը, անկաջ կանէր ինչ դայցա ածէր, էդ դայցէքը ախչիկը բիրաւի սարվեր էր, իմանըմ էր. էն ղցար կը կաղնէր. չարի բըլը ձէնը կը կտրէր. նոր ախչիկ կգար, տանը կը քնէր: Էդ ախչկայ սովորութիւն էդ էր ամնօր:

Մէկ օր էլ կաղնէր էր կտրանը, գիլան ընկերին ոխչարի մէջը. հըրմին տառ-տասնըլխինդ գէլ. չոպանի իլանը կտրաւ. ինչ արաւ, չկարաց հանի. բլուլը առաւ ձեռը, ածեց. բլուլի միջին ասեց.—Ախչի՜, քու բաղդն եմ ընկէ, հօրդ իմացրայ, գան, ճաւարի հանէին, չէ՛ մի հատ չեն թողայ պրծնի: Ախչիկը վեր էկաւ կտըրիցը, հօրը իմացրեց, ասեց,—Ափի՜, վե՛ր կաց. ոխչարի մէջը գիլան ընկեր էն, որ

* Պատմած է Արսէն Ղումեանց:

չհասնէք, բիրաձի կը ճղեն։ Հէրը վեր կացաւ, ասեց.—Ախչի՛, դու որ տեղէն իմացար կէս գիշերին։ Ասեց.—Ես բլբլով իմացայ։

—Դու որ տեղ իր կաղնած որ իմացար։—Կտըրանը կաղնածի, Ափի՛։

—Ախչի՛, ասեց. էծըմեմ, թէ՛ օր սուտ ա էլե, ես գիդամ, դու։

Ասեց.—ափի, գնա՛, սուտ չի, բեզ արա որ ոխչարին հասնես։

Մի քանի տղէք մե կալաւ ու գնաց. գնաց հասաւ օխչարին, տեհաւ գիլան ընկեր էն ոխչարի մէջը դէս էն քշըմ, դէն էն քշըմ։

Մտան ոխչարի մէջը, հայա'-հայա', արեցին. գիլանը միջից հանեցին։ Ոխչարին թամաշա արեցին, տեհան իսկի վնաս չի էլե. մի հատը ճղեր էն։ Աղէն հարցրեց.—Էդ ինչ վախտ գիլան ընկան ոխչարի մէջը։ Ասեց.—Իրիկուորէ ընկան մէջը, ինչ դսար չարչարուեցի, չկարացի հանէի միջիցը, նոր բլուլը ածեցի, դու հաւարին հասար։ որ ես բլուլը չածէի, քու ախչիկը չը լսէր, չէր իմացուէր, չէիր հասնի էս հաւարին։ Էդ ախչիկը պտի տաս ընձի։

Ասեց։—Մի տղայ, մի ախչիկ ա, կտամ։

Ախչիկայ հէրը էկաւ տունը. ախչիկը ասեց.—Ոնց էր, ափի՛։

Ասեց.—Ջօրանաս, ախչի՛, դրուստ էր։

Էդ մարդը գնաց տուն, կնկան պատմեց ոնց է էլե։

Ասեց.—Չոպան ախչիկ ուզեց, խափեցի. ասեցի «կտամ». չարի աչուն բալքի լաւ պահի։

Չոպանը մի քանի օր եանայ էկաւ տուն իրա համար հաց տանելու. իրա աղէն խօսացրեց. ասեց.—Ոխչարը ոնց ա, լաւ ա։

Ասեց.—Շատ լաւ ա, աղի. ասեց. քու ասածը ոնց էլաւ։

Ասեց.—Ժամանակ ունի, հիմի ժամանակը չի, գնա՛։

Մի քանի օր յետը ոխչարը գողեր էկան տարան, չոպանի ոտը ձեռը կապեցին, չոպանը աղաչեց, ասեց.—Ոտներս կապած մնայ, ձեռներս յետ արէք։ Գողեր յետ արեցին, մի գետ կար, անցկացրեցին ջրի էն էրեսը. ընտե գողեր նստեցին. մի հատ ոխչար մորթեցին, խորոված անեն որ ուտեն։

Չոպանը բլուլն ածեց, ախչկան բլըլի միջին ասեց.

—Ոխչարը տարան, բեզ հասաք կը բերէք, թէ չհասաք կը տանեն։

Ախչիկը կտրից վեր էկաւ, հօրը ձէն տուեց.—Ափի՛, վեր կաց. որ ոխչարը բիրաձի տարան գողերը։

Վեր կացաւ. մի քանի տղայ վեր կալաւ, գնաց, հաւարին հասաւ. գնաց, չոպանի կշտին կաղնեց, չոպանին ասեց.—Ոխչարը գըլվորը տարան։ Չոպանը ասեց.—Հրէդ գետան էնդին ա, մի հատ էլ մորթեր էն, խորոված էն անըմ։

Ասեց։—Գնացէք, բերէք։

Թամաշա արեց, տեհաւ գողերը չատ էն, ասեց.

—Այ տղա՛, էս գողերը չատ էն, չենք կարայ ընդոնց ձեռիցը բերի։

Ասեց. Դու քու խօստացած տուր, ես առանց դավու բերեմ ոխչարը։ Ասեց.—Այ տղա՛, մի անգամ տուերեմ, էլի։

Ասեց.—Ոտներս հետ արէք, կապած ա։

Չոպանը իրա աղի ձիու բարքը նիլաւ. բլուլն առաւ ձեռը, ածեց. որ բլուլն ածեց, սէյիզին աղաչեց. սէյիզը նստած էր, վեր կացաւ ոխչարի միջիցը կայնեց։ Բլըլով չոպան աղաչեց.

—Քու բաղդն եմ ընկե, սէյիզ, ասեց. որ դու գաս, ես իմ մուրազին կը հասնեմ։ Սէյիզը իրան վե կալաւ ու քցեց ջուրը, անցկացաւ էս երեսը. ոխչարը բիրաշի ընդըրա քամակիցն էկաւ։

Չոպանը ասեց.—Ջին քչա՛, փախնենք. ոխչարը մեր քամակից կգայ։

Գողերը էլան, ինչ իլան արին չկարացին ոխչարի աղաքը կտրեն, բիրաշի գնացին. մնաց մորթած ոխչարը, մէկ էլ չոլախ։

Վեր կալան ոխչարը բերեցին տուն։ Չոպանը էլի ասեց.

—Ափի՛, քու խօսքը կատարա՛։

Ասեց.—Կը կատարեմ, մի բան կայ. էնի կատարեցիր, նոր կտամ։

Ասեց.—Ի՞նչ ա քու բանը, որ կատարեմ։

Ասեց.—Իմ ոխչարին, հինգ օր ա կտամ, ջուր չեմ տայ, կը թողեմ ջրի վրայ. թէ դու բլըլով յետ դարձրիր. ջուր չխմեցին, իմ ախչիկը կտամ, որ խմեցին, չեմ տայ։ Ասեց.—Տո՛ւր։

Հինգ օր իրարու վրայ ալ տուեց, հինգ օրը թամմաւ։

Ոխչարը հանեց ու բլուլը առաւ ձեռր, սէյիզին աղաչեց, ասեց. Սէյիզ ջան, որ դու ջուր չխմես. ես իմ մուրազին կը հասնիմ, քու բաղդն եմ ընկեր։

Սէյիզը գնաց, հասաւ ջրի վրայ ու ետ դառաւ, ոխչարն էլ քամակիցը յետ դառան. ջուր չխմեցին։

Չոպանը ասեց.—Դու քու խօսքիդ տէր էս, ես իմ խօսքը կատարեցի. դու էլ կատարայ։

Ասեց.—Ես չոպանի ախչիկ տուողը չեմ, իրիկուն քու ճախը կառնես ու կերթաս, դու իմ տան մնողը չես։

Չոպանը բլուլը առաւ ձեռը, սկսեց իրա դարսերը ածիլ։

—Ախչի՛ ասեց բլուլի միջից. արի՛, քու երեսը տեսնամ ու էթըմեմ։ Ախչիկը հօրիցը թագուն գնաց չոպանի մօտը։

Տղէն ասեց.—Իրեք անգամ քու հէր ընձի խափից, հըմի ես էթումեմ, ինձ քցեր ջուրը, ընկնեմ հեղդուեմ, եան քարափից քցեմ,

մեռնեմ։ Ախչիկն ասեց.—Դվօրն էթաս, ես քու հետն եմ. ջուրն ընկնես, քու հետ կընկնեմ, քարափից ընկնես, քու հետ կընկնեմ։

Ասեց.—Ախչի, որ ընենց ա, գնա՛, քու պատրաստութիւնը տես, էս գշերը կէթանք։

Ախչիկը հօրիցը թագուն գնաց, էրկու հատ ձի պատրաստեց։

Ախչկայ հէրը տղին կանչեց, ասեց.

—Խի՞ չես գալի. քու հախն առնես էթաս։

Տղէն ասեց.—Ընձի հախ չունեմ, չեմ ուզում:

Ասեց.—Դէ՛, գնա՛, քու հէրն անիծած, որ էգուց էրևացիր, ես քու գլուխ կը կտրեմ. էկեր ա դաւի անելու, ախչիկ ա ուզում։

Տղէն վեր կացաւ, գնա՛ց, չոլումը պարկաւ ու բլուլը ածեց, ասեց բլուլի միջից.—Ախչի՛, մութն ընկաւ, վեր կաց ու արի։ Ախչիկը որ բլուլի ձէնը լսեց, ձիանը առաւ ու գնաց. գնա՛ց տղի մօտը։ Ամենքը մի ձի նստան՝ ասեցին, դէ՛, քշա։

Քշեցին, գնացին, շատ ու քիչ Աստուած գիտայ. գնացին մի սարի գլուխ նստան, ճանփէն կորաւ. ընտե ասեցին.—Վէ գանք ըստի. էս գշեր ըստի մնանք, լիսը բացուի, նոր ճանփէն գտնենք ու էթանք։

Ըտե նստան, հաց կերան, պարկան քնան։

Լիսը բացուեց, թամաշա արին, տեհան մի հատ վիշապ գլուխը դրեր ա պօչի վրայ, չորս բոլորը կտրեր ա, վեր կացաւ, թուրը քաշեց որ վիշապին տայ. վիշապը ասեց.—Ի՞նչ էս անըմ, այ տղա՛։ Ասեց.—Քե պտի սպանեմ, ճանապար ըլի էթանք։ Ասեց.—Թուրը դիր տեղը, թէ չէ քեզ ու քու նշանածին մի բերան կանեմ։

Ասեց.—Խնդրումեմ, ճանապար տաս, անց կենանք։

Անկարելի ա. ասաց վիշապ. տեղ չէք կարայ էթայ, չարի իմ սածը չկատարէք։

Ասեց.—Քու ասածն ինչ ա, որ կատարեմ։

Ասեց.—Իմ ասածն էն ա, որ էթաս Սըմաւոն թագաւորի քաղաքը, իմանաս, Գիւլը որ Սըմաւոն թագաւորի կնիկն էր, Սըմաւոն թագաւորին ինչ արեց, էդ խապարը կը բերես։

Ասեց.—Դէ՛, ճանապար տու, էթանք։

Ասեց.—Այ տղա՛, դու գնա՛, ես քու նշանածին ընենց կը պահեմ, վարդի պէս։ Ասեց.—Չըլի, ես կը տանեմ, ուրիշ տեղ պահկտամ ու կեթամ։ Ասեց.—Քու անալն էկեր ա։

Ասեց.—Որ ըդենց ա, կեթամ, նշանածիս պահայ։

Նշանածը մնաց վիշապի կուշտը, տղէն ճանապար ընկաւ։

Ընկաւ, շատ ու քիչ Աստուած գիտայ, գնաց մէ քաղաքի բռասօ էկաւ, էդ քաղաքի մէջը ծարաւութիւնը շատ զօրեց ըդրան, որ տանիցը ջուր ուզեց, ասին ջուր չկայ։ Գնաց, մօտաւ պառաւու

տուն, ասեց.—Պառաւ, Աստուծոյ սիրուն ըլի ինձ ջուր տուր, ես ծարաւ մեռայ։

Պառաւն ասեց.—Ջուր չկայ, ես ո՛ր տիան տամ, այ որդի՛։

Ասեց.—Պառաւ, մի իլաճ արա, թէ չէ՛ քե կսպանեմ։

Պառաւի չարէն կտրուաւ. գնաց մի բօնձի մէջ չռեց, բերեց տուեց ընդլիան. առաւ, խմեց ու բօնձը դրեց ընտի։

Ասեց.—Պառա՛ւ, ձեր ջուրը համ տաք էր, համ չոր էր։

Ասեց.—Որդի՛, Քեզանից պահեմ, Աստծուց ինչ պահեմ, էս քաղաքին մի հատ աղբուր կայ, մի հատ վիշապ ա փեյտա էլեր մէջը. օրը մի տղայ, մի ախչիկ տանըմենք, ուտում ա, ջուրը թողըմ ա գայ. Թաքաւորի ախչկայ նօբաթն ա, հինգ օր է չի տանըմ, օրէց օր ետ ա քցըմ, ընդուր ջուր չկար, ես էլ չռեցի, բերի տուի քեզ։ Ասեց.—Պառաւ, ես քնահարամ եմ, քնըմ եմ. Թագաւորի ախչիկը եփոր տանեն ինձ իմացրայ։

Պառաւ ասեց.—Շատ լաւ կըլի։

Պառաւը ման էր գալըմ քուչում. տեհաւ դափով զուռնով տանըմին Թագաւորի ախչկան, էկաւ իմացրեց տղին։

Տղէն վեր կացաւ, ասեց.—Ի՞նչ ա, նանի։

Ասեց.—Թագաւորի ախչկան տարան, վեր կաց։

Վեր կացաւ, ընկաւ Թագաւորի ախչկայ քամակն ու գնաց։

Տարա՛ն, ծառ կար, ծառի կշտին դրեցին ու քօմա ետ դառան։

Մի բլութ փլաւ կար Թագաւորի ախչկայ հետ, մի բլութ խորոված, էն օր ուտէր, վիշապը բօլ ջուր թողար։

Քօմա ետ դառան, էկան, էդ ախչիկը, էդ տղէն մնաց։

Ախչիկն ասեց.—Այ տղա՛, դո՛ւ խի մնացիր։

Ասեց.—Վիշապը որ քեզ ուտի, դու Թագաւորի ախչիկ էս, ինձ էլ թող ուտի։ Ասեց.—Ափսոս էս. գնա՛, դու մուրազ կունենաս։

Ասեց.—Անկարելի ա. չեմ եթայ։

Ասեց.—Պա՛ էս խորոված գառը, փլաւը ում համար բերեր էք։

Ասեց.—Վիշապի համար բերեր ենք որ շատ ջուր թողայ։

Ասեց.—Փլաւը կուտեմ, գառն էլ՝ էդուց ճանապար էմ էթում, հետս կը տանեմ՝ ասեց. ախչի, քնըմեմ, վիշապը որ դուս գայ, ինձ իմացրայ։ Հենց վիշապը դուս էլաւ, ախչկայ լիզուն կպաւ, լաց էղաւ. արտասունքը թափեց էդ տղի երեսին. տղէն զարթնեց, ասեց.—Ախչի. ինչ էս լաց ըլլում, էլ չկարաց լիզւով ասիլը՝ ձեռը մեկնեց դպա վիշապը։ Տղէն վեր կացաւ ու կաղնեց. վիշապը էկաւ, ասեց.—Էյ Թաքաւոր. էս իրեք-չորս օր է չես բերեր, հիմի ջուխթն ես բերե «որ բօլ ջուր թողեմ» ըդգոնց էլ պտի ուտեմ, ջուր էլ չթողեմ։ Էս չարաթ պտի էս քաղաքը անցնեմ, էք ու որձ չթողեմ։

Տղէն ասեց.—Նէ, մօտ արի, տեհնամ էդ ինչ խօսքեր էս խօսըմ։

—Գալիս էմ, ասեց, քեզ ու ախչկան կուլ տամ, ընկնեմ քաղաքը։

Տղէն թուրը քաշեց ու հասաւ դպա վիշապին։

Ճաշուանից կռուեցին չարի արևմտոց, ասեց,—Ախչի, ես բեզարեցի, դու փախի, հիմի վիշապը մեզի կը յաղդի։

Վիշապը հասաւ, տղին բռնեց, քաշեց դպա փորը։

Տղի թուրը դայիմ ձեռքն բռնած էր. վիշապի բերանը ճղեց. քանի կուլ տուեց, ճղեց. գնաց պօչից դուս էկաւ։ Վիշապը սատկեց։

Տղէն էկաւ, ախչկայ մօտը կաղնեց. ախչիկ ձեռ տուեց վիշապի արնին, տուեց էդ տղի մէջքին։

Ախպրիցը մի թամուզ դոլակ ջուր լցին ու էդ տղէն ու ախչիկ ետ դարցան դըպա քաղաք։

Քաղաքցիքը թօփ էն էլե, ասըմեն.—Թաքաւորը իրա ախչկան թեզ չղրկեց, որ վիշապը թեզ ջուր թողար, գար. էլէք էթանք թաքաւորի մօտ տենանք, էս ջուրը ախր խի չի գալիս։ Գնացեն թաքաւորի մօտ, ասեցին։

Թաքաւորն ասեց.—Խի էք վրազե, կգայ։

Թաքաւորին ասեցին.—Մեր էրեխանց նօյաթին թեզ ղրկումէս, քու ախչկայ նօյաթին չորս օր յետ քցեցիր։

Մէկ էլ էն տեհան ախչիկը դռնից մտաւ ներս։

Նոր ժողովուրդը ձէն տուեց.—Հըէս, էկաւ, ընդուր ջուր չէկաւ։

Թաքաւորն ասեց.—Որ էկաւ, իմ խօսք դետնովն ա տալի, իրաւունք էմ տալի ձեզ, իմ ախչիկն կտոր. կտոր արէք։

Ախչիկն ասեց.—Էրկու սահաթ սաբր արէք. ջուրը էկաւ, էկաւ, ես հո ձեր ձեռքից փախչողը չեմ։

Էրկու սահաթէն ետը տեհան ջուրը էկաւ. սկսեցին քաղաքականները կժերը լցնիլը, տեհան ջուրը պղտոր, արնաջուր ա գալի։

Ախչիկը ասեց.—Սաբր արէք պարզի, էս ջուրը չկտրուի։

Լիսը բացուեց, առաւօտը ախչկան ասին.

—Այ ախչիկ, էս ինչ բան ա էլե, ըսենց ջուրը էկաւ։

Ասեց.—Մի տղայ էկաւ, վիշապին սպանեց։

Թաքաւորը ասեց.—Որն է վիշապին սպաներ, իմ ախչիկը պտի տամ էն տղին, ո՛րն աթո դայ։

Ջառչին ընկաւ, ջառ բոռաց։

Սաղ քաղաքի տղէքը թոփ էլան, էկան թաքաւորի մօտը, ասեց.—Ախչի, ըսդոնց ո՞ր տղէն ա։

Ասեց.—Մին մին բեր, իմ առաջովս անց կացրայ. նշան ունեմ, ես գիտամ որն ա։

Էկան, բիրասի անց կացան, էլ տղայ չմնաց քաղաքում։

—Ախչի՛, ասեց. բա որն ա, էդ հրեշտակ էր, մեզի ազատեց։

Ջառչուն ասեցին.—էլ տղայ չկա՛յ, բիրաշի կանչեր էա։

—Էլ տղայ չկայ, ասեց. մի ղարիպ տղայ կայ պառաւի տանը։

Թագաւորը հրամայեց.—Գնացէք, ընդրան էլ կանչէք։

Գնացին ընդրան էլ կանչեցին, էկաւ ախչկայ մօտը։

Ախչիկը էրեսին մտիկ արեց, քամակին. տեհաւ նշանը քամակին ա։

Ասեց.—Թագաւոր ապրած կենայ. էս տղէն ա։

Ասեց.—Իմ ասածն ասած ա, իմ ախչիկ տուի քեզ, անըմ իմ ըլի, թագաւորութիւնը դու արա։

Ասեց.—Թագաւոր ապրած, ես ախչիկ առնող չեմ, ինձ նշանած ունեմ, անկարելի բան ա, ես իմ նշանածի պատճառովն եմ ընկեր չոլեչոլ, ես պտի էթամ Գիւլ Սըմաւոն թագաւորի քաղաքը, Գիւլը ինչ արեց Սըմաւոն թագաւորին. Սըմաւոն թագաւորը ինչ արեց Գիւլին, էթըմեմ էդ խապարն իմանամ որ. էթամ, իմ նշանածին հասնեմ։

Թագաւորը աղջիկ էդ տեղ տրտմեց, ասեց,—Ինձ պտի առնի, էդ էլ նշանած ունի, էլ չի առնի։

Թագաւորին խնդրեց, ասեց.—Նա ճանապար նշանց տուէք. եա մարդ դրէք, էթամ հետը։

Թագաւորը ասեց.—Մարդ չի գիտայ էդ քաղաքի տեղը. ըստե մի հալիւոր մարդ կայ. կանչենք գայ, տեհանք ինչ ա ասըմ։ Հալիւորին կանչեցին, իրեք հարուր տարեկան էր, թագաւորը հարցրեց. —Պապի՛, ասեց. Սըմաւոն թագաւորի քաղաքը ո՛ր տեղ ա, մի սալխ տուր։

Ասեց.—Մեշի միջին մի ճաչալ ճերճերսաճ ղուշ կայ. ընդրա ոտներ երկաթից ա, թռնելու վախտը տալիս ա իրար, կրակ ա թափըմ, ես գնացեր եմ մեշէն ավ-ղուշ անելու, ընդրա հետ չատ խօսացեր եմ, էն էլ իմ եաշին ա, Սըմաւոն թագաւորի նաղըլ էն ղշիցն լսել եմ։

Թագաւորը հրամայեց. Գնացէք, էն ղշին կանչէք, գայ։

Գնացին, կանչեցին. ղուշն էկաւ թագաւորի մօտը, թագաւորը ասեց.—Սըմաւոն թագաւորի քաղաքը տեսած կըլլիս։

Ասեց.—Տեսեր էմ։ Ասեց.—Կարաս, էս տղին տանես։

Ասեց.—Հարուր իցցուն տարեկան վախտս էմ գնացե, հըմի իրեք հարուր տարեկան էմ, ղուտումս կտրեր ա։

Ասեց.—Տասներկու անգամ նստեր, ճուտ էմ հանե, ճուտի տէր չեմ էլե, իմ ճտերը հըմի ճորփայա, պտի թռցնեմ, թէ որ էս ճտերիցն էլ զրկուայ, ընձի պտի սպանեմ։

Տղէն վեր կացաւ, գնաց դըպա մէջէն, ասեց.—Էթամ, տենամ ղշի բունը՝ որ տեղ ա։

Գնաց, երկու օր-իրեք օր ման էկաւ, բունը գթաւ. գնաց, հեռու պարկաւ. թամաշա արեց:

Քունը տարեր էր, չէր տարեր, տեհաւ ղշի ճտերը ճըվճըվացին, բիրտեն զարթնեց. տեհաւ վիշապ փաթըթուեր ա ծառին, էթըմ ա ղշի բունը. հասաւ որ ճտի մէկին կուլ տայ. թուրը քցեց, վիշապի մէջ տեղիցը կտրեց, Երով կոտորեց, լցեց ցած։

Երկու կտոր լցեց ճտերի աղաքը, ճտերը սկսեցին ուտիլը։

Ինքը ծառի տակիցը քիչ հեռու պարկաւ, քնաւ։

Ղուշն էկաւ, տեհաւ ծառի տակին մի մարդ պարկած ա, ղուարաւ, էկաւ գըպա տղէն որ վեր կալէ Ցալաֆի օխտը ղարը, տայ գետնով, հազար բիֆա անի. ասեց.—Էս էր իմ ճտեր ուտողը. գշիրպա-գիրպա անեմ ըստուր։

Ճտերն ասեցին.—Մեզ պրծացնողը էդ ա, թամաշա արա էն տեղ։

Թամաշա արեց, տեհաւ մի վիշապ սպաներ ա։

Վեր էկաւ, տղի գլխի վերև կաղնեց. հով արեց, ասեց.—Ինչ ուզի էս տղէն, պտի կատարեմ, իմ ճտերն ազատեց։

Տղէն զարթնեց, տեհաւ ղուշը գլխավերևը կաղնած ա, տղին ասեց.—Մի վախենայ. ասա, ինչ ուզես, ես կը կատարեմ։

Ասեց.—Սըմաւոն թաքաւորի քաղաքը պտի տանես ընձի։

Ասեց.—Գնա, թաքաւորին ասա, քուռ կապի ընձի քառասուն օր. ջանս վրայ գայ։

Տղէն վեր կացաւ, գնաց թաքաւորի մօտը։

—Այ տղա, ասեց թաքաւոր. էս քանի օր ա ուր տեղ իր։

Ասեց.—Թաքաւոր ապրած՝ գնացի մեշէն, ղշի բունը գթայ պարկեր՝ քներ ա, ճտերի ձէնը դուս էկաւ, զարթնայ, տեհայ վիշապ ճտերն ուտում էր, վիշապին սպանեցի։ Ղուշն խօստացաւ որ ինձ տանի։

Թաքաւորն ասեց.—Ղշին կանչէք, գայ:

Գնացին Քեչել ֆեարկեարտանին կանչեցին, էկաւ։

Թաքաւորն ասեց,—Խօստանը՞մ էս որ տանես ու բերես։

Ասեց.—Խօստանում եմ: Ասեց.—Նփ կը տանես։

Ասեց.—Քառասուն օրէն ետ կը տանեմ, ճտերն էլ կը թռնեն։

Ասեց.—Օրական ինչ տար կուտես։

Ասեց.—Օրական տասը ոխչար՛ տասը լիտր էլ գինի, քառասուն օր պտի տաս։ Կապեցին տաս ոխչար, տաս լիտր էլ գինի՝ քառասուն օր կերաւ. քառասուն օր թամեց, տեհաւ ճտերն հալա չեն թռնըմ, տաս օր էլ մնաց։

Տղին ասեց.—Գնա՛, քառասուն լիտր գինի, քառասուն էլ ոչխարի դմակ հազրա որ էթանք։

Հազրեց, Քեաչալ ճեարկեարեանը էկաւ, իրան փորձեց։

Վե՛ր կացաւ, տները տուեց իրար, Ցալաֆի օխտը ղաքը նիլաւ. էկաւ մի հինգ օր էլ պանծ էլաւ։

Գնաց, ճտերին թռցրեց, ասեց.—Դու ձեր գլուխը պահէք, ես էթումեմ, ես գամ, ես չգամ. էդ էլ իմ մուրազը, ճտերս թռցնէի, էլ ըստուց դէն դարդ չունեմ։

Ղուշն էկաւ, Թագաւորի պալատի առջևը վեր էկաւ։

Քառասուն լիտր գինին, քառասուն դմակը բերեցին, դրեցին ըդըրա թևերի վրայ, տղէն էլ նստեց թևերի վրայ, սաղ քաղաքը քօփ էլաւ, էկաւ թամաշա։

Ղուշն ասեց.—Մնա՛ք բարին. տները տուեց գետին, կրակը թափեց տներիցը, էլաւ Ցալաֆի օխտը ղաքը։

Ասեց.—Այ տղա՛, աշխարքը ինչ ղեար ա էրևում։

Ասեց.—Մի կալի ղեար ա։

Էլի բանձրացաւ վիրև, ասեց.

—Աշխար ինչղար ա էրևում։

Ասեց.—Մի մժիկ ա, թռնըմ դէս, թռնըմ դէն։

Ասեց.—Տղա՛, ժամանակն ա, վեր պտի գանք, Սմաւոն Թագաւորի քաղաքի վրայ, ղու կանեմ՝ դմակը, ղի կանեմ, գինին քցայ։

Ըդենց ղու-ղի արեց. քցեց. դմակի մէկը վեր ընկաւ գետինը, իրան պուտը կտրեց, տւեր ղշի բերանը. ղուշը իմացա լիզւուի տակին պահեց։ Էկա՛ւ, քաղաքի ղրաղը էկաւ։

Ասեց.—Վեր կաց, գնա, տղա՛։

Տղէն քօփալ, քօփալ գնաց։ Ասեց.—Արի՛, արի։

Լեզուի տակից հանեց, դրեց վրէն, լիզաւ՝ լիզելու բացեանն սաղացաւ։ Ասաց.—Այ տղա՛, էս իրան պալատն ա, էս էլ քաղաքն ա, էս էլ իրան պաղչան ա, էն էլ դարվազէն ա որ էրևում ա, իմ բընբուլը կտամ քեզ, հինց որ նեղ. տեղը կընկնես, չախմախի կտաս, ես քու կշտին հազիր էմ։ Տղէն կեթայ։

Կեթայ, կը մտնի պաղչէն, ման կգայ։

Թագաւորը փանճարից թամաշ կանի, կը տենայ մի տղայ պաղչումը ման ա գալի, վազիրին կասի.—Կանչէք գայ. տենանք ինչ տղայ ա, մեր երկրի տղայ չի։ Կեթան կանչեն, կգայ։

Կըգայ, թագաւորին գլուխ կտայ օխտը անգամ, վրայ ութին ձեռք կը բռնի կը կաղնի։ Կասի.—Ո՛րտուց էս։ Կասի.—Երևանայ։

Կասի.—Այ քու տունը չքանդուի, էրկու տարին մարդ չի՛ կանայ հասնի էս տի, դու ոնց ես էկե։

Կասի.—Էկերեմ Սըմաւոն Թագաւորի խապարը տանեմ, Գիւլը

Սըմաւոն Թագաւորին ինչ արեց, Սըմաւոն Թագաւոր Գիւլին ինչ արեց։

Թագաւորը ասեց.—Արի, գնա, էդ նաղլը ես չեմ ասի քեզ, որ ասեմ, գլուխդ կը կտրեմ։

Ասեց.—Թագաւոր ապրած կենայ, ասա ու կտրա։

Ասեց.—Առանց ասել գլուխդ կը կտրեմ, գնա։

Ասեց.—Ասա ու կտրա. բախիյան լսեմ։

Ասեց.—Ջանըմս: Երկու ջանըմս Թրեր ձեռներ. էկան. կայնան։

Ասեց.—Ես Սինամ Թագաւորն եմ, Գիւլին էն դզար կնիկէի որ, հացը ուտելու վախտը չէր թողալ գետին նստէր, գոգիս կը նստէր, հաց կուտէր. որ տի որ սոր կը դնէր, գիտայի իմ աչքի մէջն ա դնըմ. ինչ որ ասեր, կը լսէի, մէկ օր դուս էկայ, գնացի սան գալու, դառարի. ձիանոց մէջ. մի ջուխտ ճեանեկ ձի ունէի, որ հազար մանէթ էր տուեր՝ բերեր, էդ ձիանը ես ու Գիւլը կը նիլնէինք. մարդ իրաւունք չունէր նիլնելու։ Թամաշա արեցի, էդ ձիան, մէկէլ ձիանոց վրայ աւրխ էն մնացեր, մեյտար բաշուն կանչեցի. ասեցի. —Շուն շան որդի, էս ձիան խի էն աւրխ, ըստորանց ճնչն ա պակաս. մի քանի օրէն ետը կգամ, որ աւրխ էլաւ, քու գլուխը կը կտրեմ։

Մեյտարը ասեց.—Ես չեմ կարայ քե ասի, կգաս, մի մի գըշեր ըստե կը մնաս, քու աչքով կը տեսնաս։

Ասեցի.—Գշերն կգամ։ Կարձայ, գնացի պալատը. Գիւլին ասեցի.—Հաց բեր, ուտեմ։ Հաց բերեց։

Պարկայ, քնայ. Գիւլն էլ գնաց, իրա օթախն քնաւ . . Ես վեր կացայ, գնայի մեյթարխանեն։

Մեյթարի չորերն հագայ ու պարկայ, մէկէլ տեհայ դուռը ծեծեցին։ Վեր կացայ, բաց արեցի, ասեցի.

—Ո՞վ էք։ Գիւլը մի պլետ չքաշեց՝ մի թօփ, ասեց.—Քոռ շանորդի, չես ճանաչըմ. ձիանը դուս քաշա։ Մտայ ներսև, ասեցի. —Ո՞ր ձիանը։ Երկու պլէտ էլ քաշեց, ասեց.—Ո՞ր ձիանը, էն ձիանը Թագաւորին հետ նիլնում ենք։

Թամքը մի եան, կեամը մի եան, չարի դթայ, մի տասը պլէտ էլ էկան, տուեցին։

Քաշեցի ձիանը դուս. իրանք նիլան. մէկը զանգաչս նիլաւ, մէկը Գիւլը նիլաւ, ինձ ասեցին.—Ընկի աղաք։ Ընկայ աղաք։

Հմի ճանփէն չեմ գիտում, գալիս պլետըմ էն։

Ընկայ աղաք բոբիկ, ոտս էս քարին-էն քարին, սաղ եարալու էլաւ։ Գնացի, հասայ ձորի մէջ մի աքաքի կուշտ. աքաքը զաղի դռան էթըմ ա գալի։ Արաբն ասեց.—Կիրբ, անզգամ, Էս գշեր յե-

տացեր էս. քու ուխն հազար վարոց տամ։ Զանքաչս ասեց.—Գըլխիդ ղրեհդ ղուրպան, Գիւլս հազար վարոցի չի դիմանայ։ Զանքանչս ասեց.—Այլի ճեճը (մաշուած ակել) վեր կալ, ուխն տուր, քու օրթումը տեղը կգայ։ Բաց արեց ու ուխն տուեց։ Որ տուեց, ես իմացայ իմ աչքի մէջ տեղին տուեց։

Գիւլ ասեց արաբին.—Էս մեյթար խամ էր. չուտ չթամքեց։

Էդ տեղ պարկան, իմ աչքի առաջ ճէֆ արեցին։

Զանքանչս էլ էգ տեղ ուտել խմելու հետ ճէֆ անըմ։

—Մեյթար, ձիան քաշայ, գայ, ասացին։

Ձիանը քաշեցին, արաբը բամաշա արեց էրեսիս, ասեց.

—Գիւլ, կասես ըսդրա աչքեր Սըմաւոն թաքաւորի աչքերն ըլլի։

Ասեց.—Արար ջան. ես քնացրեցի էկայ։

Նիլան, քչեցին, ես ընկայ առաջ, էկայ դուռը. ըսդոնք ձիանը բախ տուեցին, գնացին. ժամն էլ տուեց։

Էկայ մեյթարին վեր կացըցի։ Մէյթար ասեց.—Տեսա՞ր։

Ասի.—Տեսայ։

Էկայ պալատը. տեհայ Գիւլը ժամ ա գնացել։ Իմ թագաւորական շորեր հագայ ու Նստայ թախտը, հրամայեցի Նազիրին, վազիրին Ֆլա՛ն ձորի մէջ մէ զաղա կայ, մէկ արաբ կայ. բռնէք ու բերէք։ Գնացին, բռնեցին ու բերին։ Արաբին զճճըլով կապեցի։ Խապարը գնացեր ա Գիւլին թէ թաքաւորը մի արաբ բռներ, կապեր ա. զանքաչս Գիւլին ասեր էր.—Ֆողը գլխիդ, էս գչերուան մեյթարը Սըմաւոն թագաւորն էր, մենք, հմի էթանք ինչ ճուղապ տանք. ամեն բանը որ իրա աչքով տեսեր ա։ Գիւլն ասեց.—Արխայիճ կաց. ես կեթամ, տես ընդրա գլուխն ինչ կը հանեմ։ Էկաւ, Գիւլը մտաւ ներքև, բամաշա արեց. արաբին կապեր էմ, ասեց.

—Էս ինչ արաբ էս բերէր։ Ասի.—Էս գչերուան արաբն, ա հմի էրկսիդ էլ կապեմ, քցեմ ծովը։

Մի հատ ճիպոտ կար ձեռը, ասեց.—Սըմաւոն թաքաւոր, ըլլես մի հատ անտէր էչ։ Էլայ մի անտէ՛ր էչ, ընկայ ճիլլուկները։

Արաբին չինեց թաքաւոր, դրեց իմ տեղ։

Հըմի էլերէմ անտէր էչ, հոտաղ մշակ, նիլնում, չարչրում են։ Միջքիս եարէն բացուեց։ Քիւլիւկի վրայից, տեհայ զանքանչս, արաբը. Գիւլը էթըմին ճամամ։ Գիւլն ասեց.—Նանի, էս էշը ճանաչըմ էս։ Ասեց.—Չէ, չեմ ճանաչըմ։

Ասեց.—Էդ Սըմաւոն թաքաւորն ա։

Զանքանչս ասեց.—Գիւլ էն ղդր նիլեր էն, մէջքը էլեր ա եարա. մեղք ա, չինայ մի ուրիշ բան։

Էկաւ, վարոցը տուեց ընձի, ասեց.—Սըմաւոն թաքաւոր, ըլլես մի անտէր բազի, քաղաքումը ինչ տար չուն կայ, թափի քու վրայ.

հեղդի քեզ։ Էլայ մի անտէր թազի, քաղաքումը ինչ ցար չուն կայ, Թափան վրէս, հեղդեցին, տարան, կոխեցին մեշէն. աճախ փախայ, պրծայ. չներն դառան էկան դըլպա քաղաքըր։ Որ մութն ընկաւ, մեշիցը դուս էկայ, ասեցի.—Ուրիշ ճաճավար կը գայ, ընձի կը հեղդի։ Էկայ, մտայ քաղաքը. հմի չներից վախըմեմ, պատերի տակից եավաշ, եավաշ գալիս էմ, դըլպա քաղաքը։ Էկայ իմ բաղչի խըռնակովը մտայ բաղչէն, գնացի, աշխաճի դռանը նստայ, Լիսը բացուեց, թամաշա արեցի. արաբը, Գիւլը, զանքաչս լուացուեցին, նստան, ղայՖա խմեցին. եավաշ, եավաշ մօտացայ, նստեցի, թամաշա արեցի։ Գիւլն ասեց.—Նանի, թազին ճանաչըմ էս։ Ասեց.—Չեմ ճանաչըմ, ո՞ւմ թազին ա։

Ասեց.—Ախր Սըմաւոն Թաքաւորն ա, չինեցինք թազի։

Ասեց.—Մեղք ա, ուրիշ բան չինայ. չներ կը հեղդեն։

Ասեց.—Սըմաւոն Թագաւոր, ըլնիս մի կատու, ման գաս։ Համա մի դըրպ տուեց, էլայ կատու։

Էլայ կատու, շա՜տ ուրախացայ, ասեցի.—Էլ Գիւլի աղաք չեմ էԹայ, ըստերանք զաց մաց կուտեմ։

Գիւլը ո՞ր տե ման գար, էլ աղաքը չէր էԹայ, որ ուրիշ բան չչինէր։ Մէկ օր ղարավաշներից մէկն էկաւ, գիս մաժմըժեց, ասեց. —Սըմաւոն Թաքաւոր, իմ աչքերը դուս գայ, եարապ, էլի կըլնես Թաքաւոր Թէ՞ չէ։

Որ ըդենց ասեց, ես ճըվճըվացի, ընդրա ձեռները լիզեցի, ասեց.—Սըմաւոն Թաքաւոր, ըտե կաց, Գիւլը ժամ ա գնացեր, էԹամ, տեսամ, փէտն ըստե ա, բերեմ։ Էդի գնաց, տեհաւ փէտը դօշակի տակին ա, բերեց, տուեց ընձի, ասեց.—Սըմաւոն Թաքաւոր, ըլէս էն Թաքաւորը։ Էլայ էն Թաքաւորը։ Փէտն առայ ձեռս, գնացի, մտայ պալատը, տեհայ արաբը թախտըմը նստած ա, տուեցի, ասեցի.—Արա՛բ, ըլնես մի սեւ քօթուկ, մուխը տարին տասուերկու ամիս քու վրէցը չպակսի, միսաս։

Զանքաչս էկաւ, մտաւ ներսև, ասեցի.—Ըլնես մի սեւ աԹոռ, վրէդ նստեմ, դիւանճ կտրեմ։

Էլաւ մի սեւ աԹոռ։

Խապարը գնաց Գիւլին, Գիւլն ասեց.—Ես էԹամ, Յաճղով փէտը կառնեմ։

Գիւլ մտաւ ներսև, էլ չԹողեց մօտ գար, հետը խօսար. փէտով տուեց, ասեց.—Ըլնես մի չոր չինարի ծառ։

Ասեց Սըմաւոն Թաքաւոր.—Այ տղա՛, լաւ անկանջ արէք. Գիւլն էդ օյինը հանեց իմ գլուխը, ես էլ էս օյինը հանեցի։ Ասեց, դէ՛ էն քօթուկը էն արաբն ա, էս աԹոռը զանքաչն ա, չոր չինարի ծառն

էլ Գիւլն ա, հըմի էթըմ, փաթըթուըմեմ էս ծառին, ախ ու վախ եմ անըմ, փէտը ձեռս չընկնըմ, որ սաղացնեմ։ Ասեց.—Լսեցիր, տղա՛, իմացա՞ր։ Ասեց.—Հա։ Ասեց.—Ճալլա՛ս։

Ճալլաս ձէն տալու բաշտան տղէն ընկաւ Թաքաւորի ոտներ, ասեց.—Ինձ կէս ժամ ժամանակ տաս ․աղօթք անեմ։ Գնաց բաղչէն կանգնաւ աղօթի. ղուշի բնբուլը հանեց, չախմախի տուեց. ղուշն էկաւ, վեր կալաւ, հանեց Ֆալաքի օխտը ղաբը. Թաքաւորը ջուխտ ձեռով տուեց գլխուն, ասեց.—Իմ սրռը ընկաւ աշխարքը, էլ ապրելն ընձի հարամ ա, վեր կացաւ, իրան քցեց ծովը։

Ղուշը էդ տղին բերեց, Թաքաւորին մօտը վեր դրեց. Թաքաւորին ասեց.—Էս քու տուած տղէն ա, Սըմաւոն Թաքաւորի քաղաքը տարայ, ու բերեցի։

Թաքաւորը ղշին բուդ կապեց, ամեն օր իրա վախտին կգար. իրան կուտը կուտէր ու կեթար։

Էդ տղին ճանապար քցեց, գնաց, հասաւ վիշապին. թամաշա արեց, տեհաւ որ իրա նշանածին շատ լաւ պահեր ա, էնպէս, ինչպէս վարդ։

Սըմաւոն Թաքաւորը ոնց որ պատմեց էդ տղին, տղէն էլ պատմեց վիշապին։

Վիշապն ասեց.—Ես էլ Թաքաւոր եմ էլե, կնկայ ղազալի եմ էկե, իմ տակը ոսկի ա, քանդէք ու տարէք։

Տղէն ու ախչիկ քանդեցին, խուրջինները լցրեցին. քցեցին ձիանոց վրայ. նիլան, էկան, ախչկայ հօր տանը վեր էկան։

Ախչկայ հէրն էկաւ, տեհաւ ախչիկն ու աղէն էկեր էն տուն, նոր տղին ասեց.—Էդ ո՛ր տի իք գնացեր, էն տար ման էկանք, ոչ գթանք, ոչ էլ սալղ տուող էլաւ։

Էն սահաթը հարսանիք կանգնացրեց։

Օխտը ցերեկ, օխտը գշեր հարսանիք արեց։

Ընդոնք հասան իրանց մուրազին։



# 39

# ՕՁԻ ՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԻՒՆԸ ԿՆԿԱՆԻՑ ՇԱՏ ԷՂԱՒ

(Վաղարշապատի բարբառով *)

Մի կնիկ շատ չար էր, ընդրա մարդը ինչ անըմ էր, վրէն չէր կարըմ. ընդրա ձեռիցը դաց էր անըմ։

Մէկ օր ջուալ վեր կալաւ. կնկան ասեց.—Էթանք թիթեն քօփ անելու։ (Որ տանի, չոլումը կորցնի)։

Գնացին, չոլումը մի հատ Ֆոր կար։

Կնկան ասեց.—Արի, կախ տամ, ջուր հանայ, խմենք։

Կախ տուեց Ֆորն ու մի հատ քար վեր կալաւ, քցեց բերնին. գնաց պալատուեց. մի հատ օձ բռնեց. բերեց, քցեց էդ Ֆորը, որ էդ օձը կնկան տայ, սպանի։

Գնաց, մի հատ էլ գէլ բերեց, քցեց Ֆորը։

Գնաց, մի էլ առջ բռնեց, բերեց, քցեց Ֆորը։

Կնիկը ասեց.—Ըդրանք քցըմ էս, ինչ. դու ուր պտի պրծնես իմ ձեռնէն. եավա՞շ, ըսդիյան դուս գամ, քու ճախսիցը կգամ։

Ասեց.—Էդ ջանավարները քեզ սաղ չեն թողի որ դուս գաս։

Մարդը թողեց, էկաւ տուն. մի շաբաթ մնաց, ասեց.—Հալայ էթամ, տեսնամ ինչ էլաւ։

Գնաց, քարը չուռ տուեց, ջանավարները ձէն տուեցին։

—Աստուծոյ սիրուն, այ մարդ, դասպեդաս ըսդրա ձեռիցը. մեզ ազատայ էս անզգամ կնկայ ձեռիցը, քու լաւութիւնի տակիցը դուս կգանք

Պարանը քցեց, մին մին հանեց, բրախ տուեց։

Կնիկն էլ ասեց.—Ինձ էլ հանայ. թէ չէ, չես պրծնի իմ ձեռիցը։

---

* Պատմած է Առաքէլ Ղուխեան:

Ասեց.—Խելոքացե՞լ ես որ հանեմ։

Ասեց էդ քու բանը չի. ինձ հանայ, ասըմեմ։

Պարանը քցեց, կնկան էլ հանեց։

Կնիկը դուս էլավ. Ֆորի ղրաղը մի լավ հեղդեց իրա մարդին, ասեց.—Ցողեմ գլուխդ, հըմի իմ տունը, տեղը ինչ էլավ։

Վե կացան, գնացին տունը։

Իրիկունը գելը դուռը ծեծեց։

Գնաց դուռը բացեց, տեհավ գելն ա. հինգ հատ ոչխար բերեց, ասեց.—Դէ, դու որ էն լավութունը արիր ընձի, բրախ տուիր, բերեցի քեզ էս ոչխարները։

Կնիկն ասեց.—Ոչխարը ո՞ր դիան ա։

Ասեց.—Էն քու կշտիդ գելը բերեց։

Ասեց կնիկը.—Կարայ չբերի, էն իմ զարդն էր, բերեց։

Էն էգսի օրն էլ դուռը ծեծեցին. առջն էկավ, մի դավա բեռ ճօթ բերեց.—Էդ ով բերեց, հարցրեց կնիկը։ Ասեց,—Առջ բերեց։

Կնիկ ասեց։—Է՛յ կիսի զարդ, առջն էլ բերեց իմ զարդիցը. այ մարդ, ասեց կնիկը, գելն ու առջը որ ընձանից վախում էն, դու ո՞ր տի կը մնաս։

—Կնի՛կ, ասեց մարդ, դարս մի՛ անի, դավեն ու ոչխար արեցինք դավլուրմա, ճօթն էլ քեզ բոլ ա. ինչ կուզես, արա։

Մէկէլ տեհան, դալալը ձէն ա տալի ճուչէրը.—Մի հատ բեռ թաքաւորին դավով կորել ա. ով որ կթավ, բերեց, պարգև կտանք, որ չբերեցին, ում տանը գթանք, էն մարդը, կորստական ա։

Կնիկը լսեց, էկավ տուն, ասեց.—Էդ դավեն թաքաւորական ա։

Մարդն ասեց.—Ա՛յ կնի՛կ, սուս կաց. Աստուծոյ խաթր, էդ բանը վերջանայ, էթայ։

Կնիկը ասեց.—Ի՞նչ սուս պտի կենամ կնեթամ, կասեմ. Թաքաւոր ընձի պարգև պտի տայ, քիզանից էլ կը պրծնեմ. աճճախ տեղըն էկավ։

Մարդը ի՞նչ տա՛ր մունաթ արեց, չլսեց, վեր կացավ, գնաց. գնաց, թաքաւորին ասեց.—Քու դավեն իմ մարդն ա բերել, դավեն մորթել, դավլուրմայ էնք արել, ճօթն էլ կտրտրել էնք. բիրասի եօրղան, դօշակ. մինթանայ, բան էնք արել. իմ մարդը չէր թողում, ես զօռով փախել էկիրեմ. ասեցի, «թագաւորական մալ ա, տա՛ր, տուր», ականջ չարեց։

Թաքաւորը երկու մարդ ճանփեց. կնիկը տարավ, նշանց տուեց։

Էդ մարդին տարան, քցեցին դուրբախանէն։

Թաքաւորը վճռեց, առաւօտը էդ մարդը հեղտեն։

Էդ օձը իմացավ, էկավ, մտավ պալատը. մի վեց ամսական թոռ

ունէր Թաքաւորին, գնաց, փաթըթուաւ էն էրեխու չըլինքն ու պառ. կաւ. Հարսը բիրեան տեհաւ օձը էրեխու չլնքին, ճուաց ու փախաւ։

Մարդն ասեց.—Էդ խի ճուացիր։

Ասեց.—Օձը փաթթուեր ա էրեխու չնլիքը։

Թագաւորի տղէն ասեց.—Ձեռ չտաք, Թաքաւորին իմացնենք։

Գնացին, Թաքաւորին իմացրին. Թաքաւորը վեր կացաւ, էկաւ. թամաշա արեց, որ օձը փաթթուեր ա էրեխու վիզը, գլուխը դրեր ա էրեխու բերնի վրէն։ Թաքաւորը ասեց.—Ըգըրան իլաճ չըլի, մի հնարով թէ յետ ըլի.

Ըստի, ընտի որ ասեցին, էդ դուքսախխաճի մարդը ասեց. —Ընհը՛, էն իմ օձն ա. իմ հաւարին էկեր ա։ Ասեց.—Գնացէք, Թաքաւորին ասէք, ընձի ազատի, էն օձը յետ անեմ. որ էրեխէն սկի չիմանայ։

Թաքաւոր էդ մարդը կանչեց, գնաց. Թաքաւորի աղաքը կաղնեց, գլուխ տուեց։

Թաքաւորը ասեց.—Կարմս, օձը յետ անես. քեզ կը բախշեմ ինչ որ մեղք էս արել։

Ասեց.—Ինձ որ բախշեցիր. իմ օձին էլ ձեռ չտա՛ք, չսպանէք։

Ասեց.—Գնա՛, յետ արա՛, իրաւունք ունես։

Գնաց մօտը. փեշը բռնեց, ասեց.—Օձ ջան, արե՛, քու էհթի-պարը իմ կնկանից չատ էր։

Օձը յետ էլաւ, կիտուաւ ըդըրա գոգը։

Փեշը կոլոնեց ու գնաց Թաքաւորի մօտը. ասաց.—Թաքաւոր ապրած, հըրէս, յետ արեցի. օձն էլ գոգս ա։

Թաքաւորն ասեց.—Ինչ արեցիր, որ յետ արեցիր։

Ասեց.—Բա՛ն չարեցի, ասեցի «Օձ ջան, քու էհթիպարը իմ կնկանից չատ էլաւ», յետ էլաւ օձը։

Ասեց.—Էդ առարկէն ինձ պտի ասես։

Ասեց.—Եավաշ, օձը տանեմ, չոլը բրախ տամ, գամ, ասեմ։

Տարաւ, օձը բրախ տուեց, էկաւ, Թագաւորի կշտին նստեց, ասեց, ինչ որ էլեր էր։

—Հըմի, ասեց. ինչ որ բալբալէք քաշըմ էմ, էդ կնկանից ա, բերեց դարաղաճի տակ, ընձի պտի հեղդէր, էդ օձն ընձի ազատեց. ընդուր ասեցի «քու էհթիպարը իմ կնկանից չատ ա»։

Թաքաւորը ասեց.—Էն կնկան բերէք, հեղդէք, էս մարդին մի լաւ կնիկ ուզէք։

Էդ կնիկ հեղդեցին, էս մարդն էլ ազատուաւ մօտիցը։

Էդ բալբալէքը էկաւ, կնկան գլխին կաղնեց։



## 40

# ՆՈԽՈՒՏԻ ՔԱՉԱԼ

(Վաղարշապատի բարբառով *)

Մի պառաւ կնիկ կար, մի թոռ ունէր. էլ զատ չունէր. էդ թոռն էլ Քաչալ էր։ Էդ Քաչալին տարաւ, նոքար տուեց. չէլաւ, թողաց փախաւ. հորթարած տուեց, թողաց փախաւ. ինչ բանի տուեց, թողաց փախաւ։

Պառաւը ասեց.—Դրո՛ղը տանի քեզ, ինչ բանի տալիս ենք, փախնում ես, մեր ճարը մո՛նց պտի ըլի. քեզ պտի տանեմ, մի հարուր մանէթի ծախեմ՝ բերեմ ուտեմ, չարի մեռնեմ. էլ իլաճ չկայ։

Քաչալի թեւիցը բռնեց. տարաւ բազար։

Ասեց.—Ծախում եմ էս մուսուպաթ քաչալին. ինչ բանի տալիս եմ, փախնում ա։

Ով էկաւ, էրեսին մտիկ արեց, ասեց.—Էդ պահելու բան չի։

Սարումը քառասուն գող կար. գողերի մէկն էկեր էր հաց առնելու. հացն առաւ փուրիցը, դրեց ղոլթուղը, էկաւ որ պտի եթար դըպա սարը, էդ պառաւի կշտին կաղնեց, ասեց.—Պառաւ. ինչ քաչալ ա պահեր ես։

---

* Պատմած է Առուէն Ղուկասեան:

1 Քաչալներու վերայ 15-20 հեքիաթի չափ լսած եմ. կան առողներ, որք անունն եւս "քաչալ" անուն կտան, իսկ կան առողներ, որք բացայայտիչով կորուեն. օրինակ Նոխուտի քաչալ, Փանիուսի քաչալ, Ծիլծիլի քաչալ. Զոլամա քաչալ. Զիլզիլի քաչալ, Մուռուբաք քաչալ, եւլն:

Սորա մէկ նուղն գիտէ Օհան Փիլիպոսեան. աւելի կարգաւորեալ կը պատմէ:

Ասեց.—Էս իմ թոռն ա. գրողի տարածն ինչ բանի տուեցի, չմտաւ. հըմի բերեր էմ որ ծախեմ։

—Ի՞նչ ա գինը, ասեց. ես առնեմ, տանեմ, մեր ձիանը պահայ։

Ասեց.—Հարուր մանէթ ա ըստրա գինը։

Հարուր մանէթ տուեց ու առաւ։

Պառաւն ասեց.—Գրո՛ղ տանի քեզ, դէ՛ գնա, ես քու էրեսիցը պրծայ։

Էդ գողը Ծօխուտի Քաչալին առաւ, քցեց ձիու աղաքը, ասեց.

—Դէ, վազի, էթանք սարը գլպա։ Տարա՛ւ սարը, իրանց զաղէն։

Հարամի բաշին դուս էկաւ զաղիցը, ասեց.—Խի յետացար, մենք սոված մեռանք, հէ՛։

—Հարուր մանէթ տուեցի մի պառաւի, էս տղէն առայ։

Հարամի բաշին տղին թամաշա արեց, ասեց.—Այ հայ, էս ինչ մուսուպաթ Քաչալ ա, կորցրա. ափսոս քու հարուր մանէթը, ըստուց անպատճառ մեզ խաբար կգայ, վեր կալ տար, կորցրայ։

Ասեց.—Մենք քառասուն ձիաւոր ենք, սաղ երկիրը մեզանից վախում էն, էս ինչ ա որ ըստուց խաբար գայ. մի չափալախ տամ, կը մեռնի, բերբերէմ որ մեր ձիանոց եմ տայ, ջրի, փեյինը թափի։

Ասեց.—Դու գիտաս։

—Դէ, ասեց. թամաշա արէք, բազրկեան գալի՛ս ա։

Թամաշա արին, ասեցին.—Արեւելքի կողմիցը մի չատ ծանտր բազրկեան ա գալի։

—Որ ծանտր ա, դէ, ասեց։ Բիրադիով նիլեք ձիանը։

Ասեցին.—Քաչալ, ըստի կա՛ց, չանք մենք էթանք, գանք։

Ընդոնք գնացին ձորի միջով, որ պտըտէն, գան ընկնէն ճանփէն, աղաքները կտրեն։

Քաչալն քարերի վրով նիլաւ, թամաշա արեց բազրկեաններին, ասեց.—Տեսնամ, ինչ գար բազրկեան կան։

Գնաց ու մտաւ բազրկեանի մէջ, ասեց։—Ձեր բազրկեան բաշին ո՞րն ա։ Ընդիան մէկն էկաւ.—Հա՛, Քաչալ, ինչ ես ասում։

Ասեց.—Հըմի քառասուն ձիաւոր ձեզ վրայ կտան. բեռները ըստի վեր ածէք, ժաժ մի գաք. մի թուր, մի ղալխան տուէք ինձ. մի ուրիշ աբա էլ տուէք, հաքնեմ որ ինձ չճանաչեն։

Ապէն տուին, մի թուր ու ղալխան էլ տուին, կապեց վրէն, ղալխանն էլ առաւ ձեռը, ասեց.—Էկնըլէմ ձեզ Քօմակ. ընձի հարուր մանէթ փող տուէք, որ ձեզ ընդոնց ձեռիցն ազատեմ։

Բազրկեանը հանեց, հարուր մանէթ ալպէալը համրեց, Քաչալը դրեց ծոցը։ Ասեց.—Էլ չվախենաք, ղայիմ կացնէք։

Էդ քառասուն ձիաւորը բազրկեանների վրայ տուեց. Քաչալը

էկաւ մէյտան կռիւ. որի ոտը կտրեց, որի թեը կտրեց. որի ձիունը տարեց:

Տասուերկու սահաթ կռուեցին, մի զաթ չկարացին տանել:

Հարամի բաշին ասեց.—Կասես էս մեր Նօխուտի Քաչալն ըլի. ըդըր սըֆարին ա:

Հարամիքը եռ դառան դըրպա իրանց զաղէն:

Քաչալն ասեց.—Հարամի բաշի. էս քու թուրը, էս քու ղալխանը, էս էլ քու ապէն, բռացէք ու գնացէք. ես էթումեմ:

Քաչալն սարիցը վե էկաւ, մտաւ զաղէն:

Մէկ էլ տեհան, հըրէս հարամիք բիրաթի իրարու էտև էկան:

Հարամի բաշին թուրը քաշեց որ տայ, սպանի Քաչալին, ասեց.—Քեօփօղլի մուսուբաք Քաչալ, քեզ պէս բէթ սըֆաղ քաչալ-մէլ ընտի կար, չկարացինք մի զաթ բերել:

Մէկէլ հարամիք ասեցին.—Էս ինչ ա. ձեռիցը ինչ կգայ որ ըս-որան սպանում էս:

Ասեց. Բէթ սըֆաթ ա. ըսորան էրեսը տեսնողի բանը չյա-ջողուի:

Ձիանոցիցը վեր էկան, թամքերը վե կալաւ Քաչալը, թիմարեց, քրտինքները սրբեց, կապեց. դարման, գարի տուեց:

Հարամի բաշին ասեց.—Տղէք, որը պտի էթայ, մեզ համար հաց բերի:

Հարամու մէկը ասեց.—Բիրաթի էլ եարալու ենք. էթանք բազարը կը բռնուենք. Քաչալին ղըկենք, էթայ, հաց բերի:

Հարամի բաշին ասեց.—Քաչալ ջան, արի՛ ըստե, մի տեսնամ: Քաչալը ղըլի ղայտայ վազեց, աղաքը կաղնեց, ասեց.—Աղա ջան, հրամաէ:

Ասեց.—Առ տասը մանէթ, էս սահաթը հաց կառնես ու կը գաս:

Քաչալն մի մէշօք վե կալաւ, թռաւ, գնա՛ց դըրպա բազարը, տասը մանէթի հաց առաւ:

Ասեց.—Մէ էթամ իմ տատին տեհնամ. մէ էրկու հաց էլ տամ, տատս ուտի:

Գնաց, մտաւ տուն, ասեց.—Բարև, տատի ջա՛ն:

—Վ.այ բարով, Քաչալ ջան, դու բարով էկա՛ր:

Ասեց.—Տատի, հօ սոված չես:

Ասեց.—Չէ, հարուր մանէթից էրկու մանէթ էմ խարճել:

—Առ, տատի, հարուր մանէթ էլ բերերէմ՝ էս էլ դիր ըդըրա վրայ:

Ասեց.—Դիլիդ ղուրբան Քաչալ ջան, բանդ խո զոռ չի. էդ

որ տեղան բերեցիր։ Ասեց.—Դուրս մի անէր, չմտ կը բերեմ, մէրը մեռնի Քաչալին, ընդոնք ինչ էն, որ ինձ նեղութիւն տան։

Ասեց.—Դե՛, տատի, յետացայ, մնաս բարին։

Ասեց.—Տատին քե ղուրբան, գնա՛։

Երկու երեսն էլ պաչեց, ճանապար դրեց։

Քաղաքից դուս ընկաւ, հենց արեւը մտաւ, մութն ընկաւ. ճամփէն կորցրեց, գնաց դըպա գերեզմանները։

Մտաւ գերեզմանատունը տաս տասներկու ղուպուր գրած էր, մտաւ մէջը, ղուպուրի տակը պառկեց։

Գիշերուայ կէսը անց էր կացեր, տեհաւ մի մարդ մտաւ ներս. մի մարդ. որ ջանավարի պէս, ազրայիլի պէս, ապապալը մըրէն, ամեն բանը բախմիլ։ Եկաւ, մեռելները բաց արեց, թամաշա արեց, ասեց.—Էս մէկին տէր ունենայ, կը սաղանայ։

Բիրա՛սի ըղենց վարավուրդ արեց. դուս էկաւ որ էթայ։ Քաչալ ասեց.—Էս էլ տղամարդկութիւն չի. էն գայ, թամաշա անի, ես ըստի պառկած մնամ. Վազեց, ասեց.—Ո՞ւր էս էթում. դու Նօխուսի Քաչալի անուն չե՛ս լսե։ Հասաւ բռնեց։

Իրար հեղդեցին, էնդար հեղդեցին, չարի լիսը բացուեց։ Ուզում ա փախչիլ, Քաչալ չի թողում։

Աճճախ փախաւ, պրծաւ. Քաչալ մաշիկը խլեց։

Մաշիկը դրեց ծոցն ու հացն էլ վե կալաւ, դնաց։

Գնա՛ց, հասաւ հարամիքանցը, մտաւ զաղէն։

Հարամի բաշին ասեց.—Մուսուբաթ Քաչալ, մեզ սոված կոտարեցիր, էս խե՞ յետացար։

Ասեց.—Աղա՛, ձեր բանին անըմ բազրկանները, որ գայթեն-բռնէին ձեզ. տեսայ բան չելաւ, էկայ։

Ասեց.—Ըսենց թեզ էկար, գիշերը ո՞ւր ու իր պա՛։

Ասեց.—Մնացի գերեզմանատանը։

—Մուսաբաթ Քաչալ, հալուր ձիաւոր սիրտ չի անի ընտե մտնի. դու մոնց մըտար։ Մի ձի նի՛լ, առ տաս մանէթ, գնա՛ հաց առ, արի, ըստիան քոչենք, էթանք. թեզ պտի գաս, հա՛։

Քաչալն ձին նիլաւ, դըպա քաղաքը, կրակի՛ պէս ա գալի։ Էկաւ իրանց դռանը կաղնեց.—Տատի՛, տատի՛, ձէն տուեց։

Դուս էկաւ, ասեց.—Ինչ ա Քաչալ ջան։

Ասեց.—Տատի, տանը կաց, տեղ չէթաս. էս մաշիկը տանեմ, ծախեմ, փողը բերեմ, դնեմ տունը, էթամ։

—Վայ, քաշկայ թայն էլ բերէիր, ջուխտ ըլէր, կը հագնէի։ Ասեց. —Տատի, էս կը ծախեմ, ջուխտ մաշիկ կառնեմ, կգամ։

Գնաց, փոխցը հաց առաւ, քցեց ձիու վրայ, ասեց.—Նալխաշ, մաշիկն էլ ծախեմ, նոր էթամ։

Գնաց, մի ջհուդ սառաֆի մոտ կաղնեց։

Ասեց.—էս մաչիկը չես առնի։ Ասեց.—Տեսնամ։

Ասեց.—Առ, տես։

Ջհուդը թամաշա արեց, մոքումը ասեց.—Կաժենայ տասը հազար մանէթ։

—Քաչալ, ասեց. էս մաչիկը քե որդիան ա։

—Ասեց.—Որդիան, որդիան, քեզ ինչ. առնում էս, փողը տուր, չես առնում, իմ մաչիկը տու, էթամ։

Ասեց.—Իմ հօր խազինեն կորեր էն. էս մաչիկը միջին էր, ես անջախ իմ նշանէն գիտայ։

Ասեց.—Սուտ ես ասում, իմ մաչիկը տու, ու հասաւ, եախեն բռնեց։

Ջհուդն ու Քաչալը իրար տուփն, քաշքըշելով իրար տարան թաքաւորի մոտը գանգատ։

Ջհուդն ասեց.—Թաքաւոր ապրած. իմ հօր խազինեն կորերին. անջախ նշանէն գիտայ։

Քաչալն ասեց.—Դրա մաչիկը չէ, սուտ ա ասում։

Թաքաւորը մաչիկը առաւ, լաւ թամաշա արեց, ասեց.—Իմ խազինեն ըսղրա կէս գինը չհանի։

Թաքաւորն ասեց.—Ջհուդ, ըստրա թայը կայ, թէ հենց էս ա։

Ջհուդն ասեց.—Թայ չունի, հենց էս մին ա։

Ասեց.—Քաչալ. դու ինչ էս ասըմ. թայ ունի՞ թէ չունի։

Ասեց.—Ունի թայ, կեթամ թայն էլ կը բերեմ։

Թաքաւորն ասեց.—Թէ թայը բերեցիր, ջհուդն ա սուտ ասում, թէ չբերեցիր դու էս սուտ ասում։

Ասեց.—Բերէք, պայման դրէք։

Ջհուդն ասեց.—Ես իմ ապրանքը գրաւ կը դնեմ ըստի, ինչ տար ունիմ։

Ասեց.—Քաչալ, դու ինչ էս դնում։

Ասեց.—Ընձի զա'տ չունեմ, քառասուն աղբէր ունեմ, բե՛, բռնայ, թէ մաչկի թայ բերեցի ըդրա մալը ինձ. թէ չբերեցի, իմ քառասուն աղբէր քեզ ղուրբան, հեղդայ։

Ասեց.—Իէ, դնա՛, կանչայ գան։

Ասեց.—Իմ խօսքով չեն գայ, հազար ձիաւոր տուր ինձ, էթամ, բերեմ։

Թաքաւորը հազար ձիաւոր հանեց, տուեց Քաչալին. Քաչալ ընկաւ առաջ. գնաց, մտաւ ձորի մէջը։

Հարամի բաշին թամաշա արեց, ասեց.—Ջանըմ, էս Քաչալը խե՞ չէկաւ. տեհաւ Քաչալը առաջը գալիս ա, ձիաւորներին էլ տուստ-ու տակ չկայ։

Հենց Հարամի բաշին նեքսև մտաւ, ասեց.—Վերէք. Քաչալ մեր տունը քանդեց, էնքան ղօշուն ա բերե մեր վրայ. ելէք, ձիանը նիլէք, քու բերած Քաչալը քու գլուխն ուտի։

Ձիաւորը էկան. հասան, զաղի դուռը բռնեցին. մէկն էլ չկարացին զաղից դուս գային։

Ձիաւորներու մեծը ասեց.—Ձեզ ուրիշ բան չկայ. Թաքաւորը կանչում ա։

Հարամի բաշին ասեց.—Էս էլա՞ւ քու արած բանը, Քաչա՛լ։

Քաչալ մաշիկը ծոցից հանեց. ասեց.

—Աղա, խի՞ էս դարդ անում. էս մաշիկի տեղ ձեզ գրաւ էմ դնում. Թէ գնացի, ըդրա թայը գթայ, բերեցի կը պրծնէք. Թէ չգթայ ձեզ պտի հեղդեն, էլ ինչ կայ. խի՞ էք դարդ անում ըդրա համար։

Հարամի բաշին բռնողին ասեց.—Քու գլուխն ուտի քու բերած Քաչալ։ էն տեղը քցեց որ մեզ պրծնում չկայ։

Քաչալ ասեց.—Աղա ջան, գնացէք, էթանք, ըսկի մի՛ մտածէք։

—Քաչա՛լ, ասեց. տեղը չի՞. պրծար՝ մեր ջանն էլ գնաց։

Քաչալն ընկաւ առաջ, բերեց, Թաքաւորի կշտին կաղնացրեց. Ասեց.—Թաքաւոր ապրած կենայ. էս իմ աղբրտանքը։

Թաքաւորն ասեց.—Վճիռն գիտա՞ք, ինչ ա, Թէ Քաչալը մաշկի թայը բերեց, ջհուդի ապրանքը կառնեմ, կը տամ ձեզ. Թէ որ չի բերեց, ձեր քառասուն էլ պտի հեղդեմ։ Էդ քառասունի տները բխով դրեցին, քցեցին դուքսախխանեն։

Քաչալ ընկաւ ճանփայ, գնաց դուզ գերեզմանատունը։ Գնաց, պարկաւ ղուպուրների մէջը։

Տասն օր պարկաւ. մարդ մադաք չէկաւ։

Ցերեկը մեռելը բերում քցում ու էթումին. էդ Քաչալին հարցընումին. Այ քու տունը չքանդուի մուսուպաք, Քաչալ. ինչ ա, գշեր ցերեկ բանց էս էլե ըստե.

Քաչալի իլանը կտրուաւ, էկաւ էլի քաղաքը։

Ասեց.—Էթամ ուրիշ քաղաքը, մաշիկի թայը ըստե չէլաւ։

Գնաց, ասեց.—Էն մաշկի տեղ գնացի, մաշիկ չկար ընտե. մնաք բարով, ես էթումեմ մաշիկը բերելու։

Հարամի բաշին ասեց.—Քաչալ ջան. էն քառասուն ձին էլ քեզ, քառասուն ձեռք ասպապն էլ քեզ, բաֆիլան ըստիէն մեզ ազատայ։

Ասեց.—Ինչ էք դարդ անում, տաս օր անց կացել ա, եռեսուն օր հալա ժամանակ ունէք։

Քաչալը վեր կացաւ ու գնաց ուրիշ քաղաք։

Ասեց.—Էթամ ըստիան գերեզմանները ման գամ։

Գնաց գերեզմանները. գիշերը ման էկաւ դէս, ման էկաւ դէն, էկաւ, մի քարի տակ պառկաւ։

Տեհաւ էն մաշկի տիրոջ պէս մի մարդ էկաւ ըսե. էկաւ, մի գերեզմանաքար շուռ տուեց, Ֆողը յետ տուեց, ղուպուրը հանեց. ղուպուրի բերանը բաց արեց, մի ճիպոտ կար ձեռին. մի ճիպոտ տուեց մեռելին. մեռելը սաղացաւ, էն մեռլի հետ նստեցին, ՔԷՖ արին։ Մի ճիպոտ էլ տուեց, էլի մեռաւ: Ֆողը տուեց վրէն, քարը քցեց վրէն ու էթար։ Քաչալ վի կացաւ.—Հայ քու մէրը մեռնի, Նուխուտի Քաչալի անուն չես լսե, ասեց. հասաւ ռռնեց. իրար ֆոլոլեցին, իրար ջարդեցին։ Հըմի մարդը ուզում ա փախնի, Քաչալ չի թողում ձեռացը Քաչալը ձեռ ա քցում ոտաց, տեսնում ա մաշիկ չկայ ոտին։ Ձեռը քցեց, էն ճիպոտը ռռնեց. էրկու իրեք սահաթ քաշեցին, էն դեն էր քաշում, էն դենը։ Լիսը բացուեց. էդ մարդ ճիպոտը թողած Քաչալի ձեռը, աճճախ փախաւ։

Լիսը բացուաւ, էկաւ քաղաքի մէջը, տեհաւ բիրասի էդ քաղաքի մեծաւորները թեւերը սեւ էն կապել։

Ասեց.—Էս խի՞ էն սեւ կապել։

Ասեցին.—Էս թագաւորի տղէն իրեք օր ա մեռել ա։

Ասեց.—Ես թագաւորի տղին կը սաղացնեմ, իմ ուզածը կտա՞յ։

Ասեցին.—Ի՞նչ ուզես կտայ։

Խապար տարան թագաւորին, ասեցին.—Մի Քաչալ մարդ ա էկե, ասում ա «Թագաւորի տղին կը սաղացնեմ»։

Թագաւորն ասեց.—Հա գիտի, որտի կըլի, գթէք, բերէք։

Քաչալին գթան, տարան։

Քաչալը գնաց, օխտը անգամ գլուխ տուեց, կաղնեց։

Ասեց.—Այ տղա՛, իրեք օր ա իմ տղէն մեռել ա. կարող ես սաղացնես։

Ասեց.—Հրամանքդ, կարող եմ։

Ասեց.—Դէ՛, գնա՛, սաղացրա՛, ինչ որ ուզում ես, պտի տամ։

Վե կացան, Սինօդի անդամները թագաւորի հետ գնացին դպա գերեզմանները, Քաչալ էլ հետները։

Գնացին, գերեզմանի քարը շուռ տուեցին, ֆողը յետ տուին, ղուպուրը հանեցին. ղափաղը բաց արին, մի ճիպոտ տալու բաշտան, վե կացաւ, նստեց։

Վե կալան, ուրախութն արեցին. բերեցին պալատը։

Թագաւորն ասեց.—Դէ. Քաչալ, ուզե որ պտի տամ՝ ինչ որ սիրտդ ուզում ա։

Մաշիկը հանեց, դրեց թագաւորի առաջը—Ըսորա թայն եմ ուզում, ասեց։

Թագաւորը վե կալաւ, մաշկին թամաշա արեց, ասեց.—Կաժե-

նայ իրեք միլիօն։ Ասեց.—Որդի՛, ընտրա թալը չունեմ։ Տարէք Քաչալի քաշով ոսկի տուէք։

Ասեց.—Թագաւոր ապրած, զատ չեմ ուզում, որ ընտրա թալը չկայ. ես էթումեմ, ես մենակ մաչկի թալին էմ ման գալի։

Ասեց.—Որդի՛, չկայ։

Քաչալն ընկաւ ճանապարհ, գնաց ուրիշ քաղաք։

Թամաշա արեց, էդ քաղաքի մանտրիցը, չարի մեծը լացին ըլլում, ասեց.—Խի՛ էք լաց ըլլում։

Ասեցին.—Տենում էս էն կեամին, ծովու մէջ բանտ ա էլե, էն բիրաթի ցորեն ու ալիր ա. պտի դուս գայ որ մենք հաց ուտենք. բանտ ա էլե, մենք սոված կոտորուանք. ընդու համար էնք լաց ըլլում։

Ասեց.—Ես որ էթամ, տենամ կեամու տակը ինչ կայ. որ բերեմ, ղրաղը հանեմ, իմ ուզածը կտաք։

Ասեցին.—Ի՛նչ ուզես, կտանք։

Վեր կացան, լորկէն դրեցին, տարան. կեամու մօտը կաղնացրին։

Մի խանճալ առաւ, սկուաւ ջրի տակը (մէրը մեռնի Քաչալին). հենց սկուաւ ու գնաց կեամու տակը։

Թամաշա արեց, մի հաստ վիշապ, կեամու չորս բոլորը կտրեր ա, գլուխը դրեր ա պոչի վրայ. կեամին ժաժ չի գալի։

Ձեռը քցեց, վիշապի պնչի վրայ մէ խզմա կայ, խզման բռնեց, խանճալով դօշին տուեց, խզմէն պոկ էկաւ, մնաց Քաչալի ձեռ, վիշապը փախաւ. կեամին եւմիտ էլաւ։ Մի քիչ տեղ գնաց, Քաչալ դուս էկաւ տակիցը, ասեց.—Մէրը մեռնի ձեր, ուր էք քշում, Քաչալին թողնում էք. ձեր էյրիփյարն էս ա։

Ասեցին.—Վախումենք էլի կեամին բանտ ըլլի։

Ասեց.—Մի՛ վախենաք, կաղնացրէք։

Կաղնացրին, Քաչալը թռաւ, կեամու վրայ նստեց։

Քշեցին, էկան ղրաղը։

Սաղ քաղաքը թօփ էլաւ, էկան Քաչալին ուրախացրին, վեր կալան. թռցրին, ասեցին.—Կեցցէ մեր Քաչալը։

Վեր կալան, քանի մարդով տարան թագաւորի մօտը. ասեցին.—Թագաւորը սաղ ըլլի, էս չըլէր քաղաքը բիրաթի սոված կը կոտորուէին, գնաց, մտաւ կեամու տակը. պոկեց, բերեց։

Թագաւոր ասեց.—Այ Քաչալ, ուզայ որ պտի տամ։

Մաչիկը ծոցիցը հանեց, դրեց թագաւորի առաջը ասեց.—Ընտրա թայն եմ ուզում։

Թագաւորը վեր կալաւ, թամաշա արեց. տեհաւ էրկու-իրեք միլիօն արժողութիւն ունի։

Ասեց.—Ըստրա քայլը չունեմ. ինչ չափ ոսկի ուզումես. փեշ-կեշ կտամ քեզ՝ տու տար։

Ասեց.—Որ չունես, էթամ։

Ասեց Թաքաւորը.—Քայլը չունես, ինչ պտի անես մաչիկը. էդ էլ տուր ինձի. ինչ չափ փող ուզես, կտամ։

Ասեց.—Ինչ էս ասում, քառասուն աղբէրս էս մաչկի խաթեր զրաւ էմ դրե. անկարելի բան ա, քայլը որ չգթնեմ, քառասուն աղ-բորս էլ կը հեղդեն։

Վէ կացաւ, գնաց ձորի միջով. աղաքը ընկաւ մի բարակ ճան-փայ, ու գնաց. գնաց, մութ ընկաւ, ընկաւ մի զաղի մէջ. գնաց մի պուճախում պառկաւ։

Քիչ մնաց, տեհաւ մի առչ էկաւ, պարկաւ։

Քիչ մնաց, մի գէլ էլ էկաւ. մի քիչ մնաց մի ասլան էլ էկաւ։

Գէլ առչին ասեց.—Ինչով էք պարապում։

Ասեց.—Ես պըտըտում եմ. ո՛ր տեղ ձեռս զաց ա ընկնում, ու-տումեմ. որ չի ընկնում էթումեմ, քաղաքի ղրաղը մի տեղ կայ, պարկումեմ. ջուրը տակով կռկռալով էթում ա, անկանջ էմ անըմ, էդ ա, իմ բանը։

Ասեց.—Բա, գէ՛լ, դու ինչո՛վ էս պարապում։

Ասեց.—Ես էլ էթումեմ, պտըտում եմ, Թաքաւորի սուրույին մէջ ճակատը ղաշղա մի ոչխար կայ, յաչքս ընդրա վրայա, ուզում եմ էն ոչխարը բռնեմ, ուտեմ. Թաքաւորի ախչիկ կը մեռնի, հիւանդ ա, ժամ պատարագ կանի, ամեն բանը կը բօլանայ. համա էն ոչ-խարի գլուխը տան փուռը, էն ախչիկ ուտի. կըլլի մօրէ մէկ, կը սաղանայ։

Ասեցին.—Ասլան, բա դու ինչով էս պարապում։

Ասեց.—Ես էլ ման էմ գալի, ման, էթումեմ, ծովի ղրաղը վեր էն գալի. իրեք հատ ոսկիկ էն ըլլում. լեղանում էն, յետոյ խրխէք հալնում էն, թռնում էն. իմ բամաշեն էլ էդ ա։

Լիսը բացուեց. ըդոնք վէ կացան ու գնացին։

Քաչալը դուս էկաւ ու գնաց։

Գնաց էդ քաղաքի ղրաղը. տեհաւ է՛, առչ գնացեր, էդ քա-ղաքիցը դուս պարկեր ա։

Գնաց, առչին մօտացաւ, հալածու արեց, առջը փախաւ։

Գնաց, առչի տեղը պարկեց, անկանջ արեց գետինը։

Տեհաւ ջրի ղըռղռոցը լսւ գալիս ա։

Վէ կացաւ, էկաւ էդ քաղաքի մէջը, ման էկաւ, տեհաւ էդ քաղաքը բիրասի Յորի ջուր են խմում։

Ասեց.—Իմ ուզածը տաք, ես ձեզ համար ջուր կը բերեմ։

Թօփ էլան քաղաքի մարդիկը, — ասեցին. Քաչալ, որ ջուր բերես. բերանդ ինչ պտըտայ, կտանք։

Ասեց.—Երկու հարուր բահաւոր տուէք, էթանք վերև։

Երկու հարուր բահաւոր վե կալաւ ու գնաց։

Գնաց, էդ առչի պարկած տեղը քանդեց. ջուրը բացուեց, հինգ ջաղացէն ջուր վե կալաւ, բերեց քաղաքը։

Եկան, թօփ էլան Քաչալի գլուխ, ասեցին.—Դէ ուզա, ինչ որ տանք, քեզ արժան ա։

Մաչկի թայը հանեց, դրեց ըստըանց աղաքը, ասեց.—Ջառ չեմ ուզում. ըստրա թայն եմ ուզում։

Վե կալան, բամաշա արին, մէկը սալղ չտուեց, ասեցին. —Ըստրա թայը չենք կարայ գթնի։

Գնաց, սարը անցկացաւ էն դիհը, տեհաւ մի սուրու ոխչար արածում ա. գնաց, ոխչարի չոպանի մօտը հասաւ, ասեց.—Էս ինչ ոխչար ա։

Ասեց.—Թաքաւորի ոխչարն ա։

Ասեց.—Թաքաւորի կուչտ պտի էթամ, ինչ բանի կըլլի հըմի։

Ասեց.—Տունն ա, մի ախչիկ ունի հիւանդ ա. ընդրա վրայ պարապել է. ինչ տար հեքիմ էն բերում, չեն կարայ լաւացնի։

Սուրույին մէջը ման էկան. Քաչալը, ասեց.—Ես էթումեմ Թաքաւորի մօտը. որ ոխչար էկան ուզելու, էս սիւտակ ոխչարը կտաս, կը բերի։

Գնաց Թաքաւորի պալատի դռանը կաղնեց.—Ես լաւ հեքիմ էմ, ասեց. ինչ տար դժար հիւանդ ըլլի, ես կը լաւացնեմ։

Խապար տարան Թաքաւորին. — ըսենց մի լաւ հեքիմ ա էկեր։

Թաքաւորն ասեց.—Կանչէք, գայ ներսև, տենանք։

Էկան կանչեցին. տարան։ Գլուխ տուեց, կաղնեց։

Ասեց.—Դու ինչ մարդ էս։ Ասեց.—Լաւ հեքիմեմ։

Ասեց.—Իմ ախչիկ էս երկու տարեյա հիւանդ ա. որ լաւացրիր, ինչ ուզես, կտամ։ Վե կալաւ, տարաւ ախչկայ մօտը։

Ասեց.—Ղրկէք չօպանի մօտը, մի հատ սիւտակ, ճակատը ղաշղա ոխչար կայ, վե կալի, բերի։

Ղրկեցին. գնաց էն ոխչարը բերեց։ Բերեց, մորթեց, գլուխը քցեց փուռը, լաւ էփեց. ճղճղեց, միւը մի տարերքի մէջ դրեց. վե կալաւ, գնաց Թաքաւորի մօտը, Թաքաւոր ասեց.—Վե կալ, տար։

Տարաւ դրեց ախչկան աղաքը, դեղը ցանեց վրան, զօռով քիչ քիչ ուտացրեց, ոխչարի գլուխը սաղ կերաւ. ելաւ մօրէ մէկ. կաղնեցաւ ըն ան։

Ըդ տեղ ասեց Թաքաւորը.— Մալըն մալալա վեր, ղզըն խա

չալա, ես էդ ախչիկը կտամ քեզ, դու կըլես ինձ փեսայ. իմ պալատի իրաւունքը ամենը կը յանձնեմ քեզ։

Ասեց.— Թագաւոր ապրած. շնորհակալ եմ։

Մաշիկը ծոցից հանեց ու ասեց.— Ըստրա թայն եմ ուզում։

Թագաւորը թամաշա արեց. ասեց.— Ըստրա թայը ոչ տեսեր ենք, ոչ էլ կըլի։

— Շնորհակալ եմ, իմ ուզածը մաշկի թայն ա, որ չկայ, ինչ անեմ։

Վէր կացաւ, գնաց ծովի ղրաղը, տեհաւ ասլանը դարի գլխին պարկեր ա։ Ասլանը դրան տեհաւ, քաշուեց, գնաց։

Գնաց, ասլանի տեղը նստեց. ծովի ղրաղն էր հենց։

Էրկու սահաթ նստեց. թամաշա արեց, տեհաւ, իրեք հատ աղունիկ էկան. խրխէրը հանեցին, իրեք հատ ախչիկ էլաւ որ չուտես, չխմես, թամաշա անես ըդըրանց.

Քաչալ ասեց.— Մերը մեռնի Քաչալի, ըդրանք չըռնի, չի դինջանայ, դարի գլխիցը վազեց, չարի հասաւ, ըդոնք խրխէրը հագան ու թռան, գնացին։

Քաչալն էկաւ, ծովի ղրաղը կաղնեց, ասեց.— Մէրը մեռնի Քաչալին. ըսկի բան իմ ձեռիցս չպրծան, համա ըստոնք պրծան։ Տեհաւ մէ բարալիկ մուխ ա դուս գալի ծովու միջիցը. հենց էդ մուխն բռնեց, սըկսեց ջրի տակը. գնաց, տեհաւ մի լաւ օթախ ա. թամաշա արեց, հայլիքը չորս դին չարած, դիւանիքը դրած. տեհաւ ստոլների վրայ մի բլուժ փլաւ. մի աղունիկ եփած. դրած ա ըստեղ, տեհաւ ընտեղ էլ, ընտեղ էլ, իրեք ստոլ էր, իրեքի վրայ էլ կար։

Գնաց մի ստոլին վրայ կաղնեց, մի կտոր աղունիկից կերեց. կերաւ, փլաւն էլ հետը. գնաց էն մէկիցն էլ կերաւ. գնաց էն մի ստոլիցն էլ կերաւ։ Մի թաս էլ գինի խմեց։

Ման էկաւ, տեհաւ իրեք ջուխտ, մի թայ. հը՝ իրա մաշիկիցը. մինը վէ կալաւ, դրեց ծոցը. էն մէկելներուն ձեռ չտուեց։

Հըմի ման ա գալիս, դուս գայ, որ տե էթում ա, ջուր ա. չչկեց, մնաց միջին. իլանը կտրուաւ. գնաց, մի պուճախ պարկեց։

Մէկ էլ էն տեհաւ, իրեք հատ աղունիկ ֆռռալով էկան օթախ մէջ տեղը վէր էկան. խրխէքը հանեցին, իրեք հատ ախչիկ դառան. աշխարքումը ըդենց բան չկայ։

Ամեկը մի հատ ստոլի վրայ նստեցին, ասեցին.— Վաղուց ա իրար չէինք տեհե. մի ուտենք, քէֆ անենք։

Մեծ ախչիկ ասեց.— Նավաշ, բան ասեմ. իմ ուտիլ խմիլը ճարամուեց. ես Ֆեյի արե, էթումի գերեզմանատունը մեռելներին թամաշա ի անում. մէկ օր էլ գնացի. թամաշա արի էլի. ուզեցայ. դուս գայի, էթայի. մուսուբաթ քաչալ պատահեց. էն եար իրար

տանք, իրար հեղգեցինք օր չար լիսը բացուեց. աճճախ, մաշիկս ըդըրա ձեռը մնաց, ես փախայ պրծայ. ինձ ճաւրամ ձեռ ա դիպե, ճայլբաթ իմ փլաւիցն էլ կուտեն, իմ աղունիկիցս էլ։

Էն մէկը ասեց.—Այ քի՛ր, եավաշ, իմն էլ ասեմ. սեր արեցի, թաքաւորի տղին մեռցրի, տարան, թաղեցին. գշերը կեթայի վե կացընէի. սերի վառոցով կտայի, կը սաղացնէի. չարի լիս հետը քէֆ կանէի. էլի կտայի, կը մեռնէր, կը թողայի կեթայի. մի գշեր էլ վե կացրեցի թաքաւորի տղին, քէֆ արեցինք, էլի մեռցրի. ուզումի էթայի. մի մուսուբաթ քաչալ էկաւ, ասեց.—«Քու մէրը մեռնի, ու՞ր ես էթում,» հասաւ ինձ. չարի լիս էն ցաւ իրար հեղգեցինք, աճճախ ձեռիցս ճիպոտը խլեց. թողացի, փախայ. ինձ ճաւրամ ձեռ ա դիպե, ճայլբաթ իմ փլաւից էլ կուտեն, իմ աղունիկից էլ։

Էն մի քիրն էլ ասեց.—Ա քիրեր, իմ վրայ էլ ա ճաւրամուե. եավաշ, իմն էլ ասեմ. սեր ի արե, մի հատ վիշապ ի գառե ես, թաքաւորի քաղաքի կեամու չորս բոլորը կալէր ի, ծովու մէջ տեղ բանց արի. Քաչալին մէկն էկաւ, ձեռ քցեց. գնչիս խզմեն բռնեց, դօշիս տուեց. խզմես պոկ էկաւ, մնաց ձեռին. ես աճճախ փախայ. ինձ ճաւրամ ձեռ ա դիպե, ճայլբաթ իմ փլաւիցն էլ կուտեն, իմ աղունիկիցն էլ։

Ասեցին.—Էդ արողը ըստի պատուհի, իրան մուրազը կը կատարենք։

Մի քիրն ասեց.—Հնար չկայ, օձը իրա պորտովը, ղուշը իրա ղանաթովը չի կարայ գայ ըստե. էն մի՛նց կարայ գայ։

Մի քիրն էլ ասեց.—Մարդ չի կարայ գայ, բա էս փլաւից, աղունիկից ո՞վ ա կերե։

Ասեցին.—Ուտողը ղոչախ ա, թո գայ, ըստե կաղնի։

Քաչալն դուս էկաւ, ասեց.—Մէրը մեռնի Քաչալին. Քաչալն ա կերե։ Վե կացաւ, կաղնեց։

Ասեցին.—Ուտիլը հաւատացինք, մեր նշանները բեր, տենանք։

Ասեց.—Նշաններդ ինչ ա։

Ասեցին.—Մի հատ մաշիկ ա, մի հատ ճիպոտ ա, մի պնչի խզմայա։

Քաչալը բերեց, իրեք հատն էլ դրեց մէջ տեղ։

Ախչկերքը հաւատացին. վե կալան դրան, աղբրի մէջը լեղացրին. որ լեղացրին, գլխին մազ էկաւ, սիրունացաւ. էլաւ հրեղէն։

Ախչկերքը բերեցին, մէջ տեղ նստեցրեցին. ասեցին—Դու մերն ես, մենք քունն ենք։ Իրեք օր քէֆ արեցին։

—Ախչկերք, ասեց Քաչալ. քառասուն աղբէր գրաւ էմ դրե, քառասուն օր թամեր ա, պտի հեզգեն. էդ մաշկի թայը պտի տանեմ։

Նոր ախչկերքը ըգըրան ծովիցը հանեցին. խուրջիքը հագան,

էլան աղունիկ. Քաջալին դրին թևերի վրայ ու թռան. բերեցին, իրա տատի տանը վե դրին։ Ասեց.—Տատի. ինչ կայ, ինչ ես լսում։

Ասեց.—Գայլիս, ինձ ասում էն. «քու թոռը քառասուն դուրսախ ա բռնել, էս էրկու օրը պտի հեղդեն։

Վե կացաւ, գնաց Թաքաւորի մօտը. Թաքաւորին օխտը անգամ գլուխ տուեց. վրայ ութին կաղնեց, ասեց.—Հա՛, որդի՛, մաշիկը բերիր էս։ Ասեց.—Հրամանքե, բերել էմ, մէյը մեռնի Քաջալին, էթայ ու չը բերի՛։

Թաքաւոր ասեց.—Դե՛, հանայ, տենամ։

Քաջալ դասախուծը մէջքիցը յետ արեց, ասեց.—Թաքաւորը սաղ ըլի, մի ջուխտ քու կնկան փեշկաշ. մի ջուխտ էլ հարսիդ փեշկաշ, մի ջուխտ էլ քու ախչկան. էս էլ մաշիկը, էս էլ ընդրա քայլը։ Թաքաւորը քամաշա արեց, ասեց.—Ամեկը իրեք միլիոն աժի, Քաջալը ինը միլիոն բախշեց Թագաւորին։

Մարդ ղրկեց, ջինսին կանչեցին. ջինս էկաւ, կաղնեց։

Մաշկին մի քայլը դրեց սոլի տակը. մի քայլը սոլի վրայ։

—Ջինս, ասեց. էս քու մաշիկն ա, քայլը չբերի. վե կալ քու մաշիկը, գնա։ Ասեց.—Ախր պայման ենք արե, էն քառասուն մարդը պտի հեղդուի։

Ասեց.—Որ մաշկի քայլը բերեր։

—Որ բերեր, ճամ ինձ պտի հեղդէիր, ճամ իմ մալը պտի տայիր ըղքան։

Ասեց մենուն բռնեց ա։ Ասեց.—Բռնեց ա։

Թաքաւորը մաշիկի քայլը հանեց։ դրեց մաշիկի կողքը։

Ջինսը, որ տեհաւ, ձէնը կտրեց ճիպ. էլ չկարաց խօսայ։

Թաքաւորը հրամայեց, ջինսին հեղդեցին. տուն տեղ յանձնեցին Քաջալին։ Գնացին էն քառասուն ճարամուն հանեցին. բերեցին, Թաքաւորի մօտը կաղնացրին. քառասուն ճարամուն էլ էդ պալատին մէջը պաշտօն տուեց, Քաջալին էլ կարգեց ամենի գլխաւոր։

Քաջալին ասեց.—Արի՛, քե պսակեմ, իմ ախչիկն էլ ուզես տամ

Ասեց.—Ինձ ունեմ իրեք հատ նշանած։

Թաքաւորը հրամայեց, իրեքն ըղըա վրայ պսակեցին, ինքն էլ էլաւ քաւոր։ Պալատի ամեն իրաւունքը տուեց Քաջալին։

Քաջալն մի ջուխտ մաշիկը տարաւ, հագցրեց, բերեց։

Ընդոնք հասան իրանց մուրազին, դուք էլ ձեր։

Ջինս էլ իր ղազապին. Երհախ մարդու տեղ էդ ա։



# ՂԱՀՐԱՄԱՆ—ԱՍԼԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐ

## 41

(Վաղարշապատի բարբառով *)

Ղահրաման Թաքաւորին ավլադ բաւլաթ չունէր. միտք արեց, իրա վազիր-նազըրին կանչեց. էկան բոփ էլան, ասեց.—Գիտաք ընչի համար էմ կանչե ձեզ, ինձ զաւակ չունեմ. ընձանից յետը, որ մեռնեմ ով պտի էս մալը ուտի. պտի ընձանից յետը Թաքաւոր նստի, խորհուրդ արէք. բալքի մի տղայ ըլի։

Ընտի վազիր-նազիր խորհուրդ արեցին. վազիրին մէկը վե կացաւ, կանչեց, ասեց.—Թաքաւոր ապրած կենայ, քու խազինէի դուռը բաց կանես. քու անբարն էլ բաց կանես, սովածին հաց կտաս, տկլոզին շոր կտաս, չունեւորին փող կտաս։ Աստուած կը քաղցրանայ, քեզ մի տղայ կտայ։

Ասեց.—Դնա, իրաւունք տուի քեզ. մոնց որ գիտաս, ընենց արա։

Վազիրը խազինէի դուռը բաց արեց. ցորնի ամբարն էլ. չունենողին տուեց։

Ընդի մի դարվիշ էկաւ նանախը ձեռին.—«Եա'-հու'ւ,» արեց ու Թաքաւորի կշտին կաղնեց, ասեց.—Հը, Թաքաւոր ապրած, էս ինչ տուրք ու տալիք ա։

Ասեց.—Դարվիշ բաբա, ընձի տղայ, չկայ, տալիս ենք, որ Աստուած քաղցրանայ, մի տղայ տայ։

Ասեց.—Ըսենց հինգ խազինայ փող, հինգ անբար էլ ցորեն փչացնես, Աստուած քե տղայ տուողը չի։

Ասեց.—Դարվիշ բաբա, աշխարքը ման գալող ես. ըստրա վերջը մոնց պտի ըլի։

---

* Պատմած է Առաէն Ղուիմեան:

Ասեց.—Թաքաւոր ապրած կենայ. վերջը քե ասեմ. մի հատ խնձոր ունեմ, կը կիսեմ, կէսը դու կուտես, կէսը քու կնիկը. քեզ ջուխտ տղայ կըլլի՝ որ խոստանաս, տղէքի մէկը տաս, խնձորը կտամ, թէ չես տայ, չեմ տայ։

Ասեց.—Դարվիշ բաբա, որ ջուխտ ըլնի, մէկը քեզ փեշկաշ։

Ասեց.—Հաւատամ։ Ասեց։—Հաւատաս։

Ասեց.—Խօսքիցդ յետ չդառնաս։

Խնձորը կիսեց, կէսը տուեց, Թաքաւորը կերաւ, կէսը Թաքաւորի կնիկը։

Դարվիշը թողեց ու գնաց։

Ինը ամիսը թամըմաւ, Թաքաւորի կնիկը չոքը տուեց գետինը մի ջուխտ տղայ բերեց։

Նազիր, վազիրը պիրաշի քօփ էլան, էկան, էկան աչկալիսէք։

Ասին.—Աչքդ լիս, Թաքաւոր ապրած կենայ։

Ասեց։—Դէ, տղէքի անըմը դրէք։

Վազիրին մէկը ասեց.—Շատ դադ բեդատ էր անըմ. անուն դնենք Դատ ու Բեդատ։

Տղէք մեծացան, գնացին վարժատունը կարդալու։

Եկան տասնըհինգ տարեկան. մէկէլ տեհան դարվիշն էկաւ, ճաճախը տուեց գետինը ու ասեց.—Հը՝, Թաքաւոր ապրած, խօսքիդ տէ՞ր էս։

Ասեց.—Քեզ ինչ էմ խօստացել, խօսքիս տէր ըլնեմ։

—Թաքաւոր ապրած կենայ. ինձ չես ճանաչում, էն խնձորն որ տուեցի. դու, քու կնիկդ կերաք, որ ջուխտ տղայ ըլլէր, մէկը տայիր ինձ։

—Հա, դու էն դարվիշն էս, որ խնձորը տուիր, տասնըհինգ տարիյա գնալդ, չեմ ճանաչում, օղորթ ա, խնձորը տուեցիր, զուր անց կացաւ, էրեխայ չէլաւ։

Ասեց.—Իմ խնձորը հնար չէր զուր անց կենար։

Ասեց.—Ինչ էլաւ, էլաւ, տարէք, դարվիշ բաբայի քեաշկիւլը ոսկի լցրէք, թո տանի։

Ասեց.—Անկարելի ա, ես ոսկու դարտը չեմ։

Մէկէլ էն տեհան որ վարժատանից մի տղէն էկաւ։

Դարվիշն ասեց.—Թաքաւոր ապրած. էս իմ խնձորիցն ա։

Ասեց.—Դարվիշ բաբա. էդ մի տղէն ըլնի, էդ էլ տամ քեզ։

Ասեց.—Թաքաւոր ապրած, որ էս մէկ ըլնի, քեզ փեշկաշ ա։

Մէկ էլ էն տեհան էն մի տղէն էլ էկաւ։

Ասեց.—Թաքաւոր ապրած, էս էլ իմ խնձորից ա։

Ասեց.—Դարվիշ բաբային տարէք խազինէի դուռը, ինք ու ձին ինչ տար ոսկի կը տանին, բաւցէք։

# ՂԱՀՐԱՄԱՆ—ԱՍԼԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐ

## 41

(Վ,աղարշապատի բարբառով *)

Ղահրաման Թագաւորին ավլատ բաւլաք չունէր. միտք արեց, իրա վազիր-նազրրին կանչեց. էկան բոփ էլան, ասեց.—Գիտաք ընչի համար էմ կանչե ձեզ, ինձ զաւակ չունեմ. ընձանից յետը, որ մեռնեմ ով պտի էս մալը ուտի. պտի ընձանից յետը Թագաւոր նստի, խորհուրդ արէք. բալքի մի տղայ ըլի։

Ընտի վազիր-նազիր խորհուրդ արեցին. վազիրին մէկը վե կացաւ, կանչեց, ասեց.—Թագաւոր ապրած կենայ, քու խազինէի դուռը բաց կանես. քու անբարն էլ բաց կանես, սովածին հաց կտաս, տկլոզին չոր կտաս, չունեւորին փող կտաս։ Աստուած կը քաղցրանայ, քեզ մի տղայ կտայ։

Ասեց.—Դնա́, իրաւունք տուի քեզ. մոնց որ գիտաս, ընենց արա։

Վ,ազիրը խազինէի դուռը բաց արեց. ցորնի ամբարն էլ. չունենողին տուեց։

Ընդի մի դարվիշ էկաւ նանախը ձեռին.—«Եա՛-հո՛ւ,» արեց ու Թագաւորի կշտին կաղնեց, ասեց.—Հը, Թագաւոր ապրած, էս ինչ տուրք ու տալիք ա։

Ասեց.—Դարվիշ բաբա, ընձի տղայ, չկայ, տալիս էնք, որ Աստուած քաղցրանայ, մի տղայ տայ։

Ասեց.—Ըսենց հինգ խազինայ փող, հինգ անբար էլ ցորեն փչացնես, Աստուած քե տղայ տուողը չի։

Ասեց.—Դարվիշ բաբա, աշխարքը ման գալող էս. ըստրա վերջը մոնց պտի ըլի։

---

* Պատմած է Արսէն Ղռիմեան:

Ասեց.—Թագաւոր ապրած կենայ. վերջը քե ասեմ. մի հատ խնձոր ունեմ, կը կիսեմ, կէսը դու կուտես, կէսը քու կնիկը, քեզ ջուխտ տղայ կըլլի՝ որ խոստանաս, տղէքի մէկը տաս, խնձորը կտամ, թէ չես տայ, չեմ տայ։

Ասեց.—Դարվիշ բաբա, որ ջուխտ ըլնի, մէկը քեզ փեշկաշ։

Ասեց.—Հաւատամ։ Ասեց։—Հաւատաս։

Ասեց.—Խօսքիցդ յետ չդառնաս։

Խնձորը կիսեց, կէսը տուեց, թագաւորը կերաւ, կէսը թագաւորի կնիկը։

Դարվիշը թողեց ու գնաց։

Ինը ամիսը թամամաւ, թագաւորի կնիկը չոքը տուեց գետինը մի ջուխտ տղայ բերեց։

Նազիր, վազիրը պիրաշի թոփ էլան, էկան, էկան աչկալիսէք։

Ասին.—Աչքդ լիս, թագաւոր ապրած կենայ։

Ասեց։—Դէ, տղէքի անըմը դրէք։

Վազիրին մէկը ասեց.—Շատ դադ բեդաշ էր անըմ. անուն դնենք Դատ ու Բեդաս։

Տղէք մեծացան, գնացին վարժատունը կարդալու։

Էլան տասնըհինգ տարեկան. մէկէլ տեհան դարվիշն էկաւ, ճաճախը տուեց գետինը ու ասեց.—Հը՝, թագաւոր ապրած, խօսքիդ տէ՛ր էս։

Ասեց.—Քեզ ինչ էմ խոստացեր, խօսքիս տէր ըլնեմ։

—Թագաւոր ապրած կենայ. ինձ չես ճանաչում, էն խնձորն որ տուեցի. դու, քու կնիկդ կերաք, որ ջուխտ տղայ ըլլէր, մէկը տայիր ինձ։

—Հա, դու էն դարվիշն էս, որ խնձորը տուիր, տասնըհինգ տարիյա գնալդ, չեմ ճանաչում, օղորթ ա, խնձորը տուեցիր, զուր անց կացաւ, էրեխայ չէլաւ։

Ասեց.—Իմ խնձորը հնար չէր զուր անց կենար։

Ասեց.—Ինչ էլաւ, էլաւ, տարէք, դարվիշ բաբայի քեաշկիւլը ոսկի լցրէք, թո տանի։

Ասեց.—Անկարելի ա, ես ոսկու դարտը չեմ։

Մէկէլ էն տեհան որ վարժատանից մի տղէն էկաւ։

Դարվիշն ասեց.—Թագաւոր ապրած. էս իմ խնձորիցն ա։

Ասեց.—Դարվիշ բաբա. էդ մի տղէն ըլնի, էդ էլ տամ քեզ։

Ասեց.—Թագաւոր ապրած, որ էս մէկ ըլնի, քեզ փեշկաշ ա։

Մէկ էլ էն տեհան էն մի տղէն էլ էկաւ։

Ասեց.—Թագաւոր ապրած, էս էլ իմ խնձորից ա։

Ասեց.—Դարվիշ բաբային տարէք խազինէի դուռը, ինք ու ձին ինչ տար ոսկի կը տանին, բացէք։

Դարվիշն ասեց.—Անկարելի ա. հինգ ձիաքեռ էլ տաս, ինձ պէտք չի. տղէքին մէկը պտի տաս։

Տղէքին մէկը էկաւ, մօտացաւ Թաքաւորին, ասեց.—Էս դարվիշի հետնա ինչ էք խօսում. ինչ կայ։

Ասեց.—Որդի՛, դու գնա, դարվիշին բալքի մի հնարով հեռացնենք, ինչ բան տալիս ենք բռազի չի ըլնում։

Ասեց.—Բա ինչ ա ուզում։

Ասեց.—Մի վախտ ինձ տղայ չկար խազինի դուռը բաց արի, ցրուումի, որ ինձ Աստուած մի տղայ տայ. յետոյ էս դարվիշն էկաւ, ասեց. «Էս ինչ խազինայ ես ցրվում։ Դարվիշին ասի, «դարվիշ բաբա ցրուեմ որ Աստուած ինձ մի տղայ տայ»։ Դարվիշ մի հատ խնձոր հանեց, կիսեց. ասեց «կէսը դու կեր, կէսը քու կնիկը. ջուխտ տղայ կըլի, մէկը պտի տաս ինձ». ես էլ խօստացել եմ որ տամ. հըմի ձեզ չեմ դիմըում, ինչ տար ոսկի տալիս եմ, լռազի չի ըլլում։

Տղէն ասեց.—Խօսքիցդ դուս մի՛ գայ, հենց ինձ տո՛ւր, ես էթամ։

Թաքաւոր ասեց.—Դարվիշ բաբա, աչքդ լիս ըլնի, տղէն գալիս ա, արի՛ տար։

Նստեցին, կերան, խմեցին։

Տղէն վե կացաւ հօր ձեռն էլ պաչեց, մօր ձեռն էլ. ընկաւ դարվիշի հետ, գնաց։

Իրեք օր գիշեր, ցերեկ դարվիշ ըտրան ճանապար տարաւ, ընկան մի եապանի տեղ, սար-ձոր տարաւ, մի սարի գլխին կաղնացրեց։ Ասեց.—Թաքաւորի տղա՛, մի թամաշա արա էս ջրին։

Ասեց.—Թամաշա էմ անըմ։

Ասեց.—Մոնց ջուր ա, էս ջուրը։

Ասեց.—Երկնքիցը բռնած՝ չարի գետինը ջուր ա, ճանապար չկայ։

Ասեց.—Ջրի էն դի՞ը տեսնըմ ես, լիս ա էրեւում, էն էլ կրակ ա, երկնքիցը բռնած չարի գետինը։ Կրակի էն դի՞ը քառասուն արաբ կայ, նաչախները ձեռներին. քան էս դի՞ը կաղնած ա, քան էն դի՞ը, ընդի մի զաղա կայ. արաբների միջով կեթաս, կը մտնես զաղէն, զաղի մէջ մի հատ ստոլ կայ, ստոլի վրայ մի հատ ֆիսըկ կայ, էն կը վե կալես, բերես. ընդի մի խանում աղջիկ կայ, որ ձէն կտայ, չես կաղնի, դառնաս, կգաս։

Տղէն տուեց ջուրն ու գնաց, դարվիշն ասեց.—Իրեք հարուր տղայ եմ ղրկե, որը ջուրն ա հեղդե, որը կրակն ա էրե, որին էլ արաբներն են տուե. հըմի էս գնաց, տեսնանք կարայ բերի թէ էս էլ պտի վերջանայ։

Դարվիշը էդ բանի վրայ էր պարապում որ քիսիկը ձեռք բերէր։

Տղէն տուեց ու ջուրը ճղեց, անց կացաւ էն երեսը. գնաց, կրակին մօտացաւ. կրակն էլ տուեց, անց կացաւ. գնաց քառասուն արաբի մէջ մտաւ. ըդ էլ տուեց, անց կացաւ. գնաց, մտաւ զաղէն. տեհաւ մի հատ ստոլ կայ. ստոլի վրայ մի հատ քիսըկ կայ, քիսիկը վե կալաւ, դրեց ջեպը։ Էն դհիցը մի ախչիկ ձէն տուեց, ասեց.—Թաքաւորի տղա՛. կաղնի, քե մի բան ասեմ։

Տղէն անկաջ չարեց, յետ դառաւ, արաբների միջովն էկաւ. կրակի միջովն էկաւ. ջրի միջիցը դուս էկաւ։

Դարվիշը որ տեհաւ, էն տար ուրախացաւ, թեւերը վե կալաւ, հաղ արեց, ասեց.—Ապրիս թաքաւորի տղա՛, քիսիկը տուր մէ տեսնամ։ Ձեռը մեկնեց դպա թաքաւորի տղին։ Թաքաւորի տղէն ձեռը տարաւ ջեպը, որ քիսիկը հանէ, տայ դարվիշին, բիրտան սեւ ամպը էկաւ դարվիշի գլխին ու տրաքեց. որ տրաքեց, էդ սարը ամպի տակին դողաց։ Տղէն թամաշա արեց որ մղրըպը տուեց, մութըն ընկաւ, աչկերը էլ զաթ չտեհաւ. վախլութունի ուշքը գնաց, վեր ընկաւ։ Մի սահաթ, էրկու սահաթ քաշեց, ուշքը էկաւ վրէն, Թամաշա արեց, տեհաւ արեւ, արքայութուն. վեր՝ կացաւ, կաղնեց։ ասեց.—Էս ինչ բան էր, տեննամ դարվիշն ուր գնաց։

Տղէն վեր կացաւ, դարվիշին ման էկաւ.—Ահա՛ն, դարվիշին քառասուն կտոր արե, ոտը մի եան ա, գլուխը մի եան ա, ձեռը մի եան ա. ցրուեր ա բիրատի։

Տղէն մի բարակ ճանբայ ընկաւ ու վազեց. էկաւ մի մեծ ճանապարհ ընկաւ. արեը մտաւ, էկաւ մի քաղաքի ըռաստ էկաւ. գնաց մի խարապա տեղ մտաւ։ Ձեռը տարաւ ջեպը, ասեց.—Էս ինչ բան էր, ճայա հանեմ, տեննամ։

Հանեց, տեհաւ մի պուճուր ոսկե շամատան կայ մէջը. միջին էլ մի հատ մում կայ։ Ասեց.—Լաւ էլաւ։ Մումը կպցրեց։ Որ կըպցրեց, տեհաւ քառասուն արաբը, քառասուն մեշոք ոսկին վե կալան էկան, ասեցին.—Հա՛, թաքաւորի տղա՛, էս քու փեշքաշը։ Արաբները ասեցին. Թաքաւորի տղա՛, մեզի իզին տու, էթանք. Ասեց.—Գնացէք։ Ասեցին.—Շամատանը վե կալ, տակին տուր, նոր կեթանք մենք։

Շամատանը վե կալաւ, իրեք անգամ տակին տուեց. արաբները գնացին, մէկ էլ տեհաւ քառասուն ախչիկ էկան։

Դուղին, քնարը, մուզուկանդը չարի լիս ածեցին, էդ տղին քէֆ չանց տուեցին։ Լիսը բացուեց, ախչկերքը ասեցին.—Իզին տուր, մենք էթանք։

Ասեց։—Գնացէք։ Ասեց.—Ձարի մումը չփչես, մենք չենք կա-

բայ էթայ։ Մումը փչեց։ Շամադանը դրեց ֆիսիկի մէջը, դրեց ջեպը։ Վեր կացաւ, գնաց քաղաքի մէջը. տեհաւ երեւելի քաղաք էր։

Հարցրեց.—Էս ինչ քաղաք ա։

Ասեցին.—Ասլան Թաքաւորի քաղաքն ա։

Ասեց.—Ըս տե դարտակ դուքան կըլի, քրեհով վեր կալեմ։

Մի մարդ ասեց.—Ինձ դուքան ունեմ։

Գնացին, տեհան, ամիսը տասը մանէթ բարիշեցին քրեհ։

Քառասուն համալին կանչեց, վեր կալաւ տարաւ. քառասուն մեշօք ոսկիք բերեց, կիտեց իրար վրայ, մի հատ ղֆիլ առաւ. դրեց դուքանի վրայ։ Քաղաքի մէջ ընկաւ մի մեծ պլան, գնաց թամաշա անելով։ Գնաց, դուս էկաւ մի մեծ դարվազայ, ասեց.—Էս ինչ դարվազայ ա։ Ասեցին.—Ասլան Թագաւորի բաղչի դարվազէն ա։ Ասեց.—Մտնեմ մէջը, ման գամ, հօ չեն խօսայ։—Բա՛ն սուող չըլի։

Մտաւ, ման էկաւ. տեհաւ մի մարմար հավուզ կայ ըտի, շաշրուան էլ քցըմ ա. ոտները ձեռները ու էրեսը լուաց ըտէն։ Ասեց.—Էն դչեր էդ մումը կպցրըի, հոմի կպցնեմ, տենամ մօնց ա։ Կըպցըրեց՝ տեհաւ քառասուն արաբը քառասուն մեշօք ոսկին բերին։ Ալբիալը շամաշանի տակին տուեց։ Արաբները գնացին, քառասուն ախչիկները էկան։ Մումը փչեց, քառասուն ախչիկն էլ գնացին։ Պարկաւ ու քնաւ էդ հավուզին վրայ։

Ասլան Թաքաւորի ախչիկը իրան փանճարից թամաշա էր անըմ ըդրան. իրա քառասուն ղարավաշին կանչեց իրա մօտը. ասեց.—Ախչկերք. տենըմ էք, հավըրզի վրեն ինչ ա. էս թամաշա արեցի, մի տղա ոտ ու ձեռ լուաց. քառասուն արաբ էկան էդ քառասուն մեշօքը ըդի դրեցին, պարկած տղին գլուխ տուեցին, գնացին. յետոյ քառասուն ախչիկ էկան, ընդոնք էլ էդ տղին գլուխ տուեցին. վեր էկէք, էթանք տենանք, ինչ ա։

Վեր էկան, ախչկերքը ասեցին.—Խանում, էն ապրանքը մեզ, էն տղէն քեզ։ Էկան, տղի գլխին կաղնեցին։

Ասեց.—Մեշօքները տեհէք, ինչ ա։ Տեհան բիրաշի ոսկի ա։

—Ախչկերք, բանը ոսկին չի, հնարն ա. վեր կացնենք, տենանք։

Պըրտուեցին դես, պըրտուեցին դեն, տղէն զարթնեց։

Ասեց.—Նա, ընդրանց, հալա պըրտում էք. էս մումը փչեցի որ էթայիք։

Թաքաւորի ախչիկն ասեց.—Մենք ընդոնք չենք. մենք ուրիշ ախչիկ ենք։ Ընդոնց հետ էն ղշար քէֆ արիր, մի կէս սաճաթ էլ մեզ հետ քէֆ արա։

Կլան, հրամայեցին. գինի, հաց բերեցին. դրին տղի առաջը. մէ էրկու թաս խմացրին, ասեցին.—Քու հնարը ինչ էր, արաբները ոսկի բերեցին. յետոյ ախչկերք էկան։ Ձեռը տարաւ ջեպը, ոսկի շա-

մատանը հանեց, դրեց ըն տե, ասեց.—Էս մումը որ կպցնեմ, արաբները ոսկի կը բերեն. ճամատանի տակին որ տամ, արաբները կերթան, ախչկերքը կգան. մումն էլ փչեմ, ախչկերքը կերթան, հնարն. էդ ա։

Ասեց —Ճամատանը չեմ տայ ինձ։

Ասեց.—Հնար չկայ. չեմ տայ։ Կոլոլեց, դրեց ջեպը։

Գինի խմացրին տղին բազատան։

Ախչիկ չորս մարդի կանչեց, ըստրան վե կալէք, կոխէք փալասին մէջ։

Թաքաւորի ախչիկը քիսիկը հանեց, դրեց իրա ջեպը, կոխեցին փալասին մէջ, ղայիմ կարեցին. վե կալան գնացին հանտի տակին գեօլ կար, քցեցին գեօլը։

Վե կալան, գնացին գեօլի կուշտը հասան. իրեք չորս մարդ ընդըհից տեհան, ասեցին.—Ապրանք ա, տանում ա պահի. էթանք խլենք ձեռներիցը։

Որ վազեցին ըդրանց, ընդոնք վե քցեցին ու փախան։

Էդ մարդիկ տեհան փալասի միջին մի զատ ժաժ ա գալի։

Փալասը ճղեցին. տղէն միջից դուս էկաւ։

Նստեց, ըդրանց պատմեց.—Ընձի տանըմ ին գեօլը քցեն. դուք պատահեցիք, ինձ ազատեցիք. արէք տանեմ ձեզ տաս տաս ոսկի տամ։

Էդ մարդկանցը վե կալաւ, էկաւ, դուքանի դուռը բաց արեց, ամենքին տաս հատ ոսկի տուեց։

Ասեց.—Քիսիկը ձեռիցս գնաց. էս փողն էլ բոլ ա, մչ հնար գթնեմ, էթամ իմ երկիրը։

Խապարը տանք Թաքաւորի ախչկանիցը։

Թաքաւորի ախչիկը ազաքի ոսկիքը փայ արեց ազաքի մարդկանցը։ Էդ չորս մարդն էլ էկան, ասեցին.—Քցեցինք գեօլը, էկանք։ Հանեց մէկ մէկ բուռ ոսկի էլ տուեց։

Թաքաւորի ախչիկը գնաց Թաքաւորի մօտը, ասեց.—Մի հնար գիտամ ես, էգուց կանչայ քու ոտու ձեռի մարդիկը բաղչէն։ Կանչեց բաղչէն, քեֆ արեցին։

Քիսիկի միջից ճամատանը հանեց, մումը կպցրեց. դրեց ընտեղ։ Քառասուն արաբն էկան, ճաճախները ձեռին, հասան էդ տեղի նստող մարդկանցը, տուեցին՝ որի ոտը կոտրեցին. որի գըլուխը կոտրեցին, որի թեւր կոտրեցին. մի դումանն հանեցին ըդտե, որ օրտմունքը էլ ինչ ասեմ. մոնց էլաւ դիպան էդ ճամատանին, մումը ընցաւ. ընցնելու բոստան արաբները բիրատի գնացին։

Թաքաւորը իրա ախչկան կանչեց։ ասեց.—Գլուխդ ուտի քու արած հնարը, էս էր քու արած հնարը։

Ասեց.—Թաքաւոր ապրած, ըսենց պտի չլէր, էս քառասուն

տրաքն որ էկան, քառասուն մեշօֆ ոսկի պտի բերէին. յետոյ քառասուն արաբ պտի էթային, քառասուն ախչիկ պտի գար, քառասուն ախչկայ ձեռ մուզուկ կարմօն ըլնէր, պտի ընդոնք ածէին, խաղ անէին. մենք թամաշա անէինք։

Թագաւորը ասեց.—Էս հնարը տէրը կանի. տէրը գթէք ու բերէք։

Սադ քաղաքը ման էկան, ինչ տար տղայ կայ բերեցին ըտե։

Մէկը չկարաց տէր կաղնի։

Ասեցին.—Մի տղայ կայ, դուշմանի դուռը նստել ա։

Գնացին, կանչեցին բերին։

Էկաւ օխտը անգամ գլուխ տուեց, վրայ ութին ձեռ բռնեց, կաղնեց Թագաւորի աղաքը։

—Որդի՛, ասեց. էս ֆիսիկն ու թամաշանը քո՞ւմն ա։

Ասեց.—Իմն ա։ Ասեց.—Դէ կպցրայ տենանք, հնարը ինչ ա։

Կպցրեց, դրեց ըտե։ Տեհան քառասուն արաբն էկան, քառասուն մեշօֆ ոսկին բերին, իրեք անգամ թամաշանի տակին տուեց. արաբները գնացին. քառասուն ախչիկն էկան ածելով, խաղ արեցին։ Մումը փչեց, ախչկերքը գնացին։

Թագաւորն ասեց.—Ա՛յ տէրն էս էր։

Ասեց.—Ա՛յ տղա՛, դու ինչ տղայ էս։

Ասեց.—Ղահրաման Թագաւորի տղէն էմ։

Ասեց.—Ես էմ, էս մէկ ախչի՛կը, պտի տամ քեզ. քեզանից լաւ տղայ չեմ կարայ գթնի։

Բերեց, էդ ախչիկը տուեց ըդրան, օխտը օր, օխտը գիշեր հարսանիք արեց. հարսանիքից յետը տարաւ մի օթախի մէջ, ասեց. —Էս ա ձեր տեղը, էս տեղ քնէք։

Դռներն ղայիմ չինեցին, որ պառկէն, քնէն։

Մի ջանավար էկաւ. փանջարի էրկաթները ջարթեց, մտաւ ներսև. էդ տղէն ղուլ տուեց ու գնաց։

Առաւօտը Թագաւորը էկաւ իրա ախչկայ մօտը, դուռը բացեց, մտաւ ներսև, տեհաւ վախլութենէ իրա ախչիկը մի պուճախ կպեր ա. մնացեր։

Ասեց.—Ախչի՛, խի էս ըդենց էլե։

Ասեց.—Դռները չինեցինք որ պառկէինք, մի ջանավար էկաւ, էրկաթները ջարդեց, էն տղին ղուլ տուեց, գնաց։

Թագաւորն իրա ախչիկը վե կալաւ, գնաց, ասեց.—Ով ա գիտում, էդ տղէն ինչ ֆելպազ մարդ էր, մեր գլխից բռաց էլաւ։

Խապարը տանք էդ տղիցը։

Ջանավարը վե կալաւ, տարաւ ընտե, որ էդ ֆիսիկը վեր էր կալե։

Էդ ջանավարը էլաւ մի ախչիկ, էդ տղի կշտին նստեց, սիրուն ախչիկ, չ՛ատ սիրուն։

Ասեց.—Ինձ թողացիր, գնացիր թաքաւորի ախչկան առար։

Ասեց.—Որ էկար, ջուրը անց կացար, չհեղթուար։

Էկար, կրակը անց կացար, չի էրվար։

Էկար, արաբն էլ անց կացար, քեզ չզարկին։

Որ ֆիսիկը վե կալար. ձէն տուեցի, չկաղնեցիր։

Որ գնացիր, հասար դարվիշին:

Դարվիշը որ ձեռը մեկնեց, ֆիսիկը առնէր։

Էն ամպը որ տրաքեց, դարվիշին քառասուն կտոր արեց։

Էն ով էր.—Էն ես ի։ Քեզ չդմշեցի բան անիլը։

Հըմի ես քուն էմ, դու իմն էս. վե կաց, էթանք քու հօր քաղաքը, ըստե մնալը մեզ հարկաւոր չի։

Վե կացան ախչիկն ու տղէն, էկան Ասլան թաքաւորի քաղաքը. գնացին, մտան բաղչէն, մարմար ճավրզին վրայ նստեցին։

Թաքաւորի ախչիկ թամաշա արեց, տեհաւ ճավրզի վրայ էն տղէն ու մի ախչիկ նստած էն։

Ախչիկը վազէ-վազ գնաց, թաքաւորին ասեց.—Թաքաւոր ողջ կենայ, էն տղէն մի ախչկայ հետ ճավրզի վրայ նստած ա։

Թաքաւորը տեղիցը վե կացաւ, կաղնեց. իրա կնկան, իրա ախչկան վե կալաւ, էկաւ ճավրզի վրայ, Էկաւ, բարև տուեց, կաղնեց։

Էդ տղին ասից.—Քեզ ինչ էլաւ, ո՞ւր գնացիր։

Էդ ախչիկը վե կացաւ. ամեն բանը թաքաւորին պատմեց, ասեց.—Թաքաւոր ապրած. էս տղէն որ իմն ա, քու ախչիկն էլ տանենք ըստրա աղբօրը. էրկուսն էլ մէկ էն, մի խնձորից էն։

Թաքաւորը իրա ախչիկը տուեց ըղըրանց, ասից.—Վե կալէք, տարէք։ Թաքաւորը իրա մալը կէս արեց, դրեց ախչկայ բաժին։

Ախչիկը վե կալան, բերին, էկան Ղահրաման թաքաւորի քաղաքը դուս էկան։ Քաղաքի դրաղը տեհան մի հալեւոր մարդ ցախ ա քօփ անում։

—Բարև, պապի, ասեց.—Աստըծու բարին, որդի։

Ասեց.—Ղահրաման թաքաւորը սաղ ա, ո՞ղջ ա։

Ասեց.—Փառք Աստծու, ողջ, առողջ ա։

Ասեց.—Արի, քե մի բուռ ոսկի տամ, գնա թաքաւորին աչքալիսէք տար, ասա. քու տղէն էկեր ա քաղաքի դրաղը։

Հալեւորը մի բուռ ոսկին ածեց ջեպը, էնպէս գնաց թաքաւորի մօտը-դըմ պէս։

Ասեց.—Աչքդ լիս, տղէդ էկեր ա քաղաքի դրաղը։

Մի բուռ ոսկի էլ թաքաւորը տուեց հալեւորին։

Թաքաւորը բոբիկ վազեց քաղաքի դրաղը։

Տղէն էլ, կնիկն էլ իմացան, ընդոնք էլ վազեցին։

Փաթթուեցին իրար չըլընքովը, իրար պաչեցին։

Տղէն ասեց.—Էս իմ նշանածն ա, էս էլ Ասլան Թաքաւորի աղջիկն ա, որ բերեր էմ աղբորս համար։

Էդ հալիւորի սիրտը չհամբերեց, էլի յետ դառաւ, էկաւ ըտե։

Թաքաւորի տղէն շամաշանը կպցրեց. տուեց հալիւորի ձեռք. քառասուն արաբն քառասուն աղջիկը էկան, հալիւորին ասեցին.

—Դո՛ւզ գնա դպա պալատը։

Քառասուն արաբը նանախները առան ձեռքը, մեյսան բաց արեցին ու աղջըկերքը ձիրգելով նոյնար-նոյնար գնացին։

Տարան ժամ, էրկու աղբորն էլ պսակեցին։

Օխտն օր, օխտը գշեր հարսանիք արեցին։

Ընդոնք հասան իրանց մուրազին։



# 42

# ՍՈՒՖՐԷՆ



(Վաղարշապատի բարբառով *)

Կար-չկար մէկ Թաքաւոր. էդ Թաքաւորին իրեք տղայ ունէր, ինչ որ խորհուրդ ունէր, պզտիկ տղի հետ կանէր. պզտիկ տղէն խելօք էր։ Մէկ օր խորհուրդ արեց, ասեց.—Ձեզ պտի պսակեմ։ Պզտիկ տղէն ասեց.—Մեզ որ կը պսակես, ման արի որ իրեք աղջիկը մի տանից բերես։

—Որդի՛, իրեք աղջիկը մի տանից չատ կայ, համա իմ հաւանածը պտի ըլի։

* Առաքէլ Ղրիմեան—Էջմիածնայ Վանքի գիւղապահը պատմած է. ինքը լսած մի Մոլլաղուրունցիէ։

Տղէն ասեց.—Դու գիտաս, ճալպաք քու հաւանածը պտի ըլի։

Կանչեցին, վեզիրն էկաւ, ասեց.—Թաքաւորն ապրած կենայ, ինչ էք հրամայում։ Ասեց.—Ըսօր իմ պզտի տղի հետ խորհուրդ էմ արե, որ իմ տղէքին պսակէի. իմ պզտիկ տղէն ասեց.—Իրեք ախչիկը մի տանից ուզայ. հըմի իրեք ախչիկ մի տան չատ կայ, վեր, էթանք, ման գանք. որը հաւանենք, էն ուզենք։ Վեզիրը, ասեց. —Վեր, էթանք։

Իրկու հատ ձի նիլան, ընկան քաղաքները ման գալու, ինչ ղsաr ման էկան, ինչ տուն մտան, իրանց դիր չէկաւ։

Ասեց.—Վ․եզիր, չատ ման էկանք, արի, էթանք Ստամբոլ էլ պտըտենք ու թողանք էթանք։ Գնացին Ստամբօլ, Ստամբոլա մէջն էլ չատ պտըտեցին, էլի չգթան։

Ասեց.—Վեզիր, էկեր ենք Ստամբոլ, էթանք թաքաւորին էլ տենանք, նոր թողանք ու էթանք։ Գնացին թաքաւորի մօտը, ղօնախ էլան. թաքաւորը բերեց, ըղոնց հաց քաշեց։ Իրեք հատ ախչիկ ըղոնց հաց ին բերըմ։ Հաց բերեցին, կերան։

Ստամբօլու թաքաւորը էդ թաքաւորին ասեց.—Ի՞նչ բանի համար էք էկեր։ Ասեց.—Թաքաւոր ապրած կենայ. ես իմ պզտիկ տղի հետ խորհուրդ արեցի, որ պսակէի, խորհուրդ տուեց որ ախչիկ կուզես, մէկ տանից ուզայ. հըմի էս ախչիկները որ հաց էն բերում, քու ինչն էն։ Ասեց.—Էս իրեքն էլ իմ ախչիկն էն։

Ասեց.—Ես իրեքին էլ հաւանում եմ, չեմ կարայ վատ ասի, էս իրեք ախչիկն էլ կտա՞ս իմ իրեք տղին։

Ասեց.—Իրեքն էլ քե փեշկաշ ա։

Թաքաւորը ձեռը տարաւ ջեպը, իրեք հատ մատանիք հանեց, դրեց սօլի վրայ, ասեց.—Իրեք ախչկան էլ կանչայ, գայ։

Իրեքին էլ կանչեց, էկա՛ն. թաքաւորը ամեքին մի մատանիք դրեց մատները, ասեց.—Իրեքդ էլ էլաք ընձի հարս։

Թազասան կեր ու խում արեցին, չնահաւորեցին դրանց ԳcաԳ դրէքը։

Թաքաւորը ասեց.—Ես էթում եմ. մի ամիս ժամանակ կտաս, ես իմ տղէքին վե կալեմ, կը գնամ։ Թաքաւորը էկաւ իրա երկիրը։

Իրեք տղէքը էկան ալաքը. պզտիկ տղէն ասեց.—Թաքաւոր ապրած, որ չատ յետացար, ուզում էի գայի, ման գայի քեզ. լաւ էր, էկար։ Թաքաւորն ասեց.—Աչքներդ լիս, իրեքիդ էլ ԳcաԳ էմ դրե, Ստամբօլու թաքաւորի ախչկերքը։

Գնացին, վեր էկան իրանց պալատը. թաքաւորը իրիկունը իրան տղէքին կանչեց, ասեց.—Մէկ ամիս ժամանակ էմ ուզե որ, մեր պատրաստութիւնը տենանք ու էթանք, ախչկերքը բերենք։

Իրեք ձեռք ախչկայ չոր կտրեցին, ըդոնց ամեն բաները հետը, իրեք ձեռք էլ տղի չոր իրան տղէքին։

Ասեց.—Վեզիր, դէ՛, ժամանակ է, էթանք, տղէքին տանենք. հինգ հարուր էլ ձիաւոր վե կալենք. մեր հարսները բերենք։

Պզտիկն ասեց.—Բիրասինով էթանք՝ էս պալատը ով ա մուղաթ կենուս. Թաքաւորն ասեց.—Մէկին կը յանձնենք, կեթանք։ Ասեց.—Անկարելի ա, ես չեմ էթայ, ես կմնամ. դուք գնացէք, բերէք։

Թաքաւորը ասեց.—Շատ լաւ ասում էս, դու կաց։

—Վեզիր, ասեց թաքաւորը, մենք էրկու տղին կը տանենք, էնտե կը պսակենք. հարսը կը բերենք, ըստի կը պսակենք։

Պզտիկ տղէն ասեց.—Որ Ստամբօլու դուս կգաք, առաջին մի Կարմիր կոնա կայ, տակին մի աղբուր կայ. որ կը հասնէք ընտի, վեր չգաք. ընտի փորձանք կը պատահի ձեզ. դու գիտաս որ ես չատ էմ ման էկե, ամեն տեղն էլ գիտամ։

Թաքաւորը ասեց.—Շատ լաւ։

Առաւօտը ընկան ճանապար. թափով. զուռնով գնացին դըպա Ստամբօլ, թաքաւորի պալատը վեր էկան։

Կերան, խմեցին. բերեցին ախչկերքին կաղնացրեցին մէջտան, իրեքի չորերն էլ հագցրին։ Էրկու տղէն բերին, էրկու հարսի ձեռը բռնեցին, պուճուր ախչիկը ընենց կաղնած մնաց։

Ստամբօլու թաքաւորը ասեց.—Որ երկու տղայ ունէիր, իրեք ախչիկ խի էիր ուզում, քու ծուռնութիւնը բէլլու արեց։

Ասեց.—Իմ գլուխը, քու գլուխը վկայ որ, իրեք տղայ ունիմ, էս մինն էլ պտի տանեմ, ընտի պտի պսակեմ. էն մնաց պալատը, ընտի հաւատարիմ մարդ չունէինք։

Էդ էրկու տղին տարան, պսակեցին։

Էկան, քէֆ արեցին. առաւօտը թաքաւորը ճանապար քցեց։

Ստամբօլու թաքաւորը ասեց.—Արի, մի մին ղայվայ խմենք, նոր կեթաս, կը հասնես։ Մի քիչ խօսացին, յետացաւ։

—Դէ, ասեց. մնաս բարի. էս էթամ, հասնեմ։

Ձեռ բռնեց ու ընկաւ ճանապար։

Ընդոնք գնացին, Կարմիր կոնտի կչտին կաղնեցին։

Վեզիրն ասեց.—Թաքաւորը յետացաւ, չադրը վեր տուէք։

Չադրը վեր տուեցին, կերակուր էփեցին, թաքաւորը էկաւ, հասաւ, ասեց.—Ըստիան բարձէք. ըստի խի՞ էք վեր էկե։

Վեզիրն ասեց.—Մութն ա, էս վախտ ո՞ւր էթանք, առաւօտ կեթանք։ Ասեց.—Վեզիր. չլսեցի՞ր, պզտիկ տղէս ինչ ասեց. «Կոնտի վրայ վտանգ կպատահի»։

Ասեց.—Թագաւոր ապրած, ինչ ես վախենում, հինգ հարուր ձիաւոր մեր կշտին ըլի, մենք վախենանք։

Ասեց.—Կացէք, որ ըտենց ա։

Լիսը բացուեց, տեհան մէ հատ վիշապ չորս բոլորները կըտրեր ա. վեր կացան, ասեցին.—Սպանէք, անց կենանք։

Վիշապն ասեց.—Ի՞նչ մարքի էք. ուզում էք պոչս պոկեմ, ձեր հինգ հարուրին էլ վերջացնեմ. թաքաւորի պզտի տղէն խնայեցի ձեզ։ Թաքաւորը ասեց.—Ճանապար տուր, էթանք։

Ասեց.—Քու պզտիկ տղին տուր ինձ, ես բիրաշի բրախ տամ, գնացէք։ Ասեց.—Կտամ։

Ասեց.—Ճանապար կտամ, էթաք որ նա դրկես, գայ, համա ընդրա Նշանածը չեմ թողայ տանէք։

Ճանապար տուեց, ամեն էլ անց կացան, պզտիկ տղէն Նշանածը մնաց կշտին։ Ընդոնք ընկան ճանապար, էկան։

Խապար բերեցին պզտիկ տղին.—Աչքդ լիս, թաքաւորն էկաւ։

Վեր կացաւ, մի հարուր ձիաւորով գնաց թաքաւորի առաջը։

Թաքաւորը որ տղին տեհաւ, լաց էլաւ։

Տղէն ասեց.—Թաքաւոր ապրած կենայ, պտի ուրախութիւն անես, խի՞ ես լաց ըլլում։

Ասեց.—Ընդըրա համար եմ լաց ըլլում, քու պատուէրը չպահեցինք. ես ըտոնց ճանապար քցեցի, թաքաւորի հետ մի քիչ խորհուրդ արեցի, յետացայ. էկայ տեհայ, քու ասած Կարմիր կոնտի վրայ վեր էն էկե, նեղացայ, ասեցի.—«Բարձէք, էթանք»։ Վեզիրն ասեց «գշերը մնանք ըստի. առաւօտը էթանք»։ Ես էլ համոզուեցի, գշերը մնացինք։ Առաւօտը տեհանք մի հատ վիշապ չորս բոլորներս կտրեր ա։ Ուզեցանք վիշապին սպանէինք, որ անց կենայինք. վիշապն ասեց.—«Ինչ էք անըմ, ուզո՞ւմ էք պոչս պոկեմ, ամենդ էլ սպանեմ. ձեզ պաղշեցի թաքաւորի պուճուր տղին»։ Ասեցի.—«Ճանապար տուր, էթանք»։ Ասեց.—«Ճանապար կտամ՝ ամա, քու պուճուր տղէն պտի տաս ինձ»։ Ես էլ խոստացայ, տուի։ Ամենիս թողաց, էկանք, քու Նշանածը չթողաց. էդ պատճառով լաց եմ ըլլում։ Ասեց.—Ըսկի լաց մի ըլի, եփոր մեռայ, լաց էլի, հըմի ՔԷՖ արա։ ՔԷՖ անելով բերեցին տուն։ Երկու օր հարսանիք արեցին, պրծան։

Պուճուր տղէն ասեց.—Թաքաւոր ապրած, էս քու պալատը, էս էլ քու հարսնիքը, ես էթամ վիշապի հաւարին։

Թաքաւորը ասեց.—Մէթայ, էն վիշապը զարմանելի բան արի՞, մէթայ. ինչ ըլաւ, էլաւ։

Ասեց.—Ես իմ էթալու դարսը չեմ, դու Ստամբոլի թաքաւորի կշտին ամօթալի կը մնաս։

Ընկաւ ճանապար, գնաց. հասաւ վիշապին։

Վիշապը՝ ասեց.—Բարի ես էկե, հազար բարին, իմ աչքին, էկե. տեսնո՞ւմ ես, քու նշանածը ոնց եմ պահե, ինչ որ ասեմ, պտի ընձ անկաջ անես որ քու նշանածը տամ, տանես. որ չարեցիր, չեմ տայ, տանես։ Ասեց.—Ասա՛. քու ղուլլուխին կաղնած եմ։

Ասեց.—Դէ, արի՛, գլխիս վրայ նստի։

Էկաւ, գլխի վրայ նստեց։

Ասեց.—Անկաջներիցս բռնի՛, չվախենաս, քեզ պտի բարձրացնեմ երկինքը։

Պտրտեց, պտրտեց ու Ֆալաքի օխտը ղաթը հանեց։

Ասեց.—Թամաշա արա՛ աջ կողմիդ վրայ։

Ասեց.—Թամաշ եմ անում։

Ի՞նչ ա երևում։ .—Քաղաք ա երևում, ծառ ա երևում։

Ասեց.—Էն Չինմաստանու Թաքաւորի քաղաքն ա, օխտը աստէժ մի պալատ երևո՞ւմ ա։ Ասեց.—Երևում ա։

Ասեց.—Առաջին մի չինարի ծառ ա երևում։ Ասեց.—Երևում ա։

Ասեց.—Վիրևում մի ախչիկ պտրտում ա, երևո՞ւմ ա։

Ասեց.—Երևում ա, կարմիր չորեքը հագած պտրտում ա։

Պտրտե՛ց, վեր բերեց գետինը։

Ասեց.—Դէ, գնա՛, էն ախչիկը բեր ինձ համար՝ քու նշանածը տամ քեզ համար։ Մի հատ դաստախուն տուեց, էս դաստախունը կտամ քեզ, ինչ վախտ սովածանաս, դաստախունին մէջ կը գթնես։ Վե կալաւ դաստախունը, ընկաւ ճանապար, չատ ու քիչ Աստուած գիտայ, գնաց. երկու հատ դև բռաս էկան. էկան, բռնեցին, ասեցին.—Վաղուց ա խանի միս չէինք կերե։ Ասեց.—Ես ձեզ կշտացնեմ, ընձանից ձեռ վե կը կալէք.

Ասեցին.—Որ մեզ կշտացնես, քու մուրազն էլ կը կատարենք։

Ասեց.—Ի՞նչ կուտէք։ Ասեցին.—Օխտը հատ գոմէշ աննախ մեզ կշտացնի։

Սուֆրէն փռեց, ասեց.—Սուֆրա, օխտը հատ գոմէշ ուզում եմ քու միջին։ Օխտը հատ գոմէշ միջին էլաւ։

Նստեցին. կերան, ղըրղըրփոցն քցեցին, մի թիֆա օսկոր էլ չթողացին միջին, պիրասի կերան։

Ասեցին.—Որ տեղ ես էթում։ Չինմաստան եմ էթում։

Տարա՛ն, իրանց սընոռը անց կացրին. մի հատ մազ քաշին, տուին իրան, ասեցին.—Նեղ տեղ ընկնես. էտ կրակայ։

Ընկաւ ճանապար ու գնաց, տեսաւ մի ղոշուն ա գալի, որ տուտ ու տակ չիկայ։ Գնաց, մօտացաւ, տեհաւ, պիրասի ձիաւոր մըչեմ են, մէյմունի հետ կռուեր են, յետ էն դարձե. գալիս էն։

էկան, էդ տղին բռնեցին. վե կալան, տարան իրանց թագաւորի մօտը։

Թագաւորը ասեց.—Տարէք, կերէք. ինչ էմ անըմ։ Տղէն ասեց. —Թագաւորը սաղ ըլլի. քեզ կըշտացնեմ, ընձնէ ձեռ կը վե կալէք։

Ասեց.—Որ կշտացնես, ձեռ. կը վեր կալենք։

Ձեր կերածը ինչ ա։

Մեր կերածը ցորեն ա, գարի ու կորեկ։

Ասեց.—Ինչ դդար կուտէք։

Ասեց.—Հարուր խալվար կուտենք։

Սուֆրէն փռեց, ասեց.—Հարուր խալվար ցորեն, գարի ու կորեկ ըլլի միջին։ Էլաւ ու կուշտ կերան։

Թագաւորը հանեց ու մի թել տուեց իրան, ասեց.—Ինչ տեղ նեղ կընկնես. կը փաթես մատդ, մենք քեզ կը հասնենք։

Վ.ե կալան, տարան ճանապար քցեցին։

Գնաց, տեհաւ մի դոշուն ա գալի, տուտ ու տակ չկայ։

Մօտացաւ, տեհաւ, պիլատի մէյմուն էն. ձիաւոր մըչեմի հետ կռուեր էն ու յետ էն դառե։ Էկան էդ տղին բռնեցին. վե կալան, տարան իրանց թագաւորի մօտը։

Թագաւորը ասեց.—Ձեզ փեշկեշ ա, տարէք, ինչ անըմ էք, արէք։—Որ ձեզ կշտացնեմ, ընձանից ձեռ կը վեր կալէք։

Ասեց.—Ձեռ կը վեր կալենք։

Ասեց.—Ձեր կերածն ինչ ա։—Մեր կերածը պատամ ա, պոպոկ ա, պնդուկ։

Ինչ դար կուտէք։ Ասեց.—կուտենք վաթսուն խալվար։

Սուֆրէն փռեց, ասեց.—Վ.աթսուն խալվար պատամ, պոպոկ, ու պնդուկ ըլի։

Էլաւ ու կերան։ Շնորհակալ էլան տղիցը։

Հանեց էրկու հատ մատանիք տուեց։ Մէկը էս մատին դրեց, մէկը էն ձէռի մատին։ Ասեց.—Էս թաթխես ջուրը, կը պնդուի. վրովը կեթաս, էն թաթխես, ջուրը կեթայ։

Տարան, ճանապար քցեցին։ Գնաց, հասաւ Չինմաստանու քաղաքը։

Մի ջուր էր էթում քաղաքի դրադովը. տեհաւ կարմունջ չկայ. վրէն, որ անց կենար, միտք արեց «մէյմունի թագաւորը ըսենց էր. ասըմ», եավաշ մի թաթխեմ ջրի մէջ, տենամ։

Թաթխեց, ջուրը սառեց։ Վ.րովը անց կացաւ էն էրեսը։

Էն մի մատն էլ թաթխեց, ջուրը գնաց։

Գնաց քաղաքը ման էկաւ. մի պառաւի տուն վեր էկաւ։

Սուֆրէն փռեց, պառաւի հետ նստեցին, հաց կերան։

Ասեց.—Նանէ՛, էս ո՞ր քաղաքն ա, ես չեմ հարցրել։

Ասեց.—Էս Չինստանու թաքաւորի քաղաքն ա։

Ասեց.—Թաքաւորը մո՞նց ա, բարի՞ թաքաւոր ա։

Ասեց.—Լաւ մարդ ա, մի հատ աղջիկ ունի. ո՛վ գալիս ա էդ ախչիկ ուզելու, ფანტ ունի. ով որ ფანტը չի գտնում, ուզողներու գլուխը տալիս ա. էդ մէկը վատ ա անըմ։ Մի տղայ էլ ունէր, էդ պատճառաւ կը հակառակէր թաքաւորին, թաքաւոր չի լսեց, գլուխը առաւ, գնաց, կորաւ։

Ասեց.—Նանի՛, կարամ ընդլա ფანტերը գթնի։

Ասեց.—Որդի՛, ընդուց ձեռ վե կալ, որ ինձ լսես, մի էթայ, ընդար մարդի գլուխը տուեր ա։

Ասեց.—Նանէ. ըստար ճանապար էկեր էմ, տայ, չտայ էթամ. թէ ფանტերը գթայ, ախչիկը կտանեմ. թէ չի գթայ, գլուխս թօ կորի։

Պարկան, ասեց.—Նանի, առաւօտը ինձ թեզ վեր կացըրայ։

Առաւօտը լիսացաւ, պառաւը տղին վեր կացրեց։

Տղեն լուացուեց. Աստուած կանչեց, գնաց. թաքաւորի դուռն կաղնեց։ Դռնապանը հարցրեց.—Ինչ խնդիր ունես։

Ասեց.—Ես թաքաւորի իրան հետ գործ ունեմ։

Գնացին, թաքաւորին իմացրին, ասեցին.—Մի տղայ էկեր ա. քու հետ գործ ունի։ Ասեց.—Կանչէ՛ք, գայ։

Էկաւ թաքաւորի պալատը, օխտը անգամ գլուխ տուեց, վրայ ութին ձեռ բռնեց ու կաղնեց։

—Հը՛, ասեց. ինչ ա ասութունդ։—Իմ ասութուն էն ա, էկեր էմ քու ախչիկ ուզեմ, ասեց։

Ասեց.—Այ տղա՛, դու ափսոս տղայ էս, մոնց էկերես, ընենց գնա՛, քու արընքի տակն էլ չի մոնենք։

Ասեց.—Թաքաւոր ապրած, հոքս մի քաշիր, ես ընդոնցից լաւ չեմ, ես էկերէմ քու ախչկայ համար։

Ասեց.—Ես ფანტեր ունեմ, իմ ფანტերը պտի գթնես։

Ասեց.—Քու ფანტերին պատրաստ եմ, կը գթնեմ, կը տանեմ։

ნაზირ ვაზირին կանչեց, ბირატი თოფი արեց. էդ ჩინარი ծառին տակ նստացրեց։ Լիքը ստաքանը ջուր լցրեց, տուեց տղին. բերեց չորս հատ ոսկի բողնոց, դրեց ծառի չորս բոլորը, ասեց. —ნაზი'რ, ვეზირ, თამაშა արէք. էս տղէն էս სტაქანը ձեռը նիլնե ծառը, վեր գայ, որ ջուրը չթափի, որ թափեց, գլուխը կտրեմ։

Տղէն ծառին մօտացաւ, մատանիքը թաթխեց ջուին մէջը ու նիլաւ. Նիլա՛ւ գլխին նստեց։

Թաքաւորը ասեց.—Վեր արի՛, լաւ նիլար։

Էկան թամաշա էն անըմ բօղնոցների վրայ որ ջուրը թափի՝ իմանան։ Տղէն քըտըներ էր, էրկու կաթիլ թափեց։

Թաքաւորը ասեց.—Վեր արի, քու անալն էկաւ, թափեց ջուրը. ջալլատ, ասեց. հազր կաղնի։

Վեր էկաւ, ստաֆանը տարաւ, տուեց թաքաւորին։

Ասեց.—Գլուխը տուէք սրա.—Ոչ, ասեց. քըտինքս թափեց։

Ասեց.—Անկարելի ա, ջուրը թափնեց։

Նազիր վեզիրը մօտացան, ասին.—Գլուխը խմ էս տալի։ Մատը տուին բօղնոցի միջի ջրին, ասեցին։—Քըտինք ա։

Ասեցին.—Այ տղա, գնա, առաւօտը արի, ըսօր պըծար։

Գնաց պառաւի տունը. պառաւը ասեց.—Այ իմ աչքեր ֆոռնայ, արի, արի, նստի։

Խապարը գնաց թաքաւորի ախչկան.—Մի տղայ, ստաֆանը ձեռին, ծառը նիլաւ, ջուրը չթափեց։

Առաւօտը լիսացաւ, էլի գնաց թաքաւորի սլալատը։

Խապար տուին թաքաւորին.—Տղէն էկեր ա։

Թաքաւորը հրամայեց.—Կը կաղնայնէք չարի իրիկուն։

Տղէն կաղնեց. թաքաւորը ասեց.—Էրկու պղինձ 30 փթանոց լիքը եղ կը լցնէք, կը տանէք, կը դնէք մի օչախի մէջ, կասէք «էս գչեր չարի լիս պտի ուտես, որ չուտես, թաքաւորը քու գլուխ պտի կտրի։ Տղէն մի թիֆայ կերաւ, սիրտը տրորեց, ասեց.—Է՛, թաքաւորը իմ գլուխ պտի կտրի։ Բիրտան միտը ընկաւ դեւերը, համա մազը կրակեց, կրակելու բաշտան, մէկ էլ տեհաւ դուռը ճռացրին, էրկու դեւ մտան ներսեւ.—Հը՝, թաքաւորի տղա, ասեցին, ինչ ա։

Ասեց.—Տեսըմ էք պղնձները, ձեզ կանչեցի որ ուտէք։

Ասեցին.—Էս քառասուն տարիյա եղի համ չենք տեհեր։ Մըռթըները կոխեցին մէչը, էրկու պղինձն էլ բալիզացրին, լիզեցին։

Ընդոնք գնացին, թաքաւորի տղէն դինջ քնեց։

Առաւօտը լիսացաւ. թաքաւորը վեր կացաւ, Նազիր վեզիրին կանչեց, ասեց.—Էն մի բանիցը պըծացրէք, վաթսուն փուչ եղը հազար ջան չի կարայ ուտի, էն մինակ կարայ ըս գչեր ուտի. բեր ու գլուխը զարկէք։

Գնացին, վեր կացրին, բերին թաքաւորի մօտը։

Ասեց.—Էրեկ պըծար, ըսօր ինչ էս ասըմ։

Ասեց.—Ըսօր էլ կը պըծնեմ, էգուց էլ։

Գնացին, տեհան, պղինձները թամուզ կերե, սրփե։

Ասեց.—Գնացէք ըտրա օչախը, պահած կըլի, գթէք ու բերէք։

Գնացին, ման էկան, զատ չգթան։ Էկան, ասեցին.—Զատ չկայ։

Ասեց.—Գնա, դիննացի, իրիկունը արի։

Խապարը գնաց թաքաւորի ախչկան, էդ ախչիկը զարմացաւ։

Գնաց պառաւի մօտը, դիճնացաւ, իրիկունը վեր կացաւ, էկաւ։ Խապարը տարան Թաքաւորին.— Տղէն էկեր ա։

Թաքաւորը Ճազիր վեզիրին կանչեց, տղէն բերեցին, մի դռան աղաք կաղնացրին։

Ասեց.— Տասը խալուար կորեկ չափէք, բերէք ըստե։ Տաս խալուար էլ ցորեն, տաս խալուար էլ գարի բերէք, խառնէք յիրար։ Օքախին մէջ տեղ կիտէք։

Թաքաւորը հրամայեց, էս կորեկ, էս գարին, էս ցորեն իրարից սըտի ջոկես. որ առաւօտ գամ, չափեմ. թէ ջոկեցիր, ախչիկս տարար, թէ չջոկեցիր, գլուխդ անպատճառ պտի կտրուի։

Տղէն մի բուռ վեր կալաւ որ ջոկի, կորեկի մի հատը քցեց մի պուճախը, մի հատ ցորեն մի պուճախը, ասեց.— Զարի լիս մի բուռ չեմ կարայ ջոկի։ Բիրեան մրչեմը միտը ընկաւ, թելը հանեց, փաթթեց մատը, մէկ էլ տեհաւ, դուռը ճռացրեց. մրչեմները թափան, էկան։ Ասեց.— Խնդրումեմ, էս գարին, էս ցորենը, էս կորեկը ջոկէք, չուտէք համա, ձեր բաժինը դռանը կտամ, կուտէք ու կեթաք։

Ըդրանց տուտը բացուեց, Մասխու չարի Ալակեազ էկան, ջոկեցին ցորենը մի եան, գարին մի եան, կորեկը մի եան, մի հատ չթողացին։

Դուս էկաւ դուռը. սուֆրեն բացաւ, ըդոնց բաժին էլ տուեց, գնացին. Գլուխը դրեց ցորնի վրէն, արխային քնեց։

Լիսը բացուեց, Թաքաւորը վեր կացաւ, Ճազիր վեզիրին կանչեց էլի, ասեց.— Դէ՛, բերէք. տղի վիզը զարկէք։

Գնացին, տղին վեր կալան, բերեցին։— Վիզը զարկէք, հրամայեց։

Ասեց.— Խի՞ էս զարկում իմ վիզը, ես ջոկեր եմ. մարդ ղրկայ, թո էթայ, տեհնայ. գայ։ Մարդ ղրկեց, գնաց, էկաւ, ասեց

— Թաքաւոր ապրած, ջոկած պրծած ու Զափեցին, դուզ էլաւ։

Ասեց.— Դէ՛, գնա, առաւօտը արի։

Խապարը տարան Թաքաւորի ախչկան. Թաքաւորի ախչիկն ասեց.— Հա՛ գիտի, էն տղէն ճրտե ա մնըմ։

Ասեցին.— Մի պառաւի տան ա մնըմ։

Մի ղարավաշ ունէր, հանեց մի բուռ ոսկի տուեց, ասեց. —Բերնիցդ բան չհանես, կեթաս պառաւի տունը. պառաւին կասես, էդ տղին ախչկայ չորեր հագցնի, իրիկուն բերի իմ մօտը։

Էդ ախչիկը վազէ վազ գնաց պառաւի տունը։ Պառաւին ասեց. — Թաքաւորի ախչիկը ասըմ ա, «թող էդ տղին ախչկայ չորեր հագցնի, բերի իմ կուշտը»։

Իրիկունը ախչկայ չորեր հագցրեց. վեր կալաւ, տարաւ։

Դռնապանը դուռը չէր բաց անըմ։ Ասեց.—Իմ ախչիկը տանըմ էմ Թաքաւորի ախչկանից ուսում առնի։

Ասեց.—խալխը ցերեկն են բերում, դու գշերն էս բերըմ։

Ասեց.—Հըմի պարապեցի, բերեցի։

—Դէ, ասեց. տար։ Վե կալաւ, տարաւ։

Ասեց.—Խանըմ, իմ ախչկան ինչ կսարվացնես, սարվացրայ. գշերը չի կարայ ըստե մնայ։

Թաքաւորի ախչիկը հրամայեց.—Ամեն ղարավաշ էթայ իրա օթախը, խամ ախչիկ ա, խօսացնեմ, տեսնամ, ինչ կայ հալա։

Ասեց տղին.—Դու էդ Ֆանցերն որ իմացար, էգուց էլ կարօս իմանայ։ Ասեց.—Չեմ գիտում. ինչ Ֆանց պտի անի։

Ասեց.—Քառասուն ախչիկ պտի բերի, քառասուն ձեռք սև շոր հագցնի, սև ձիանը նիլցընի, սև քօղերը պտի քցի գլխներին, ջերկով կաղնացնի, քեզ պտի հարցնի,—«Իմ ախչիկը որն ա»։ Ներքի դհիցը կը համբրես, տասնը ինը. վրայ քսանին ես էմ, չը շըշկըլես։ Կանչեց պառաւին.—Պառաւ, արի, քու ախչիկը վեր կալ, տար, էգուց իրիկուն էլ բեր։

Լիսը բացուեց, տղէն գնաց Թաքաւորի մօտը, Թաքաւորը Ճազիր, վեզիրին կանչեց՝ ասեց.—Գնացէք, քառասուն ախչիկը բե-րէք. քառասուն սև ձիանը նիլցըրէք, սև շորերը հագցրէք, սև քօ-ղերը քցէք գլխըներին։ Գնացին էնպէս արեցին, ջերկուն կաղնացրին։ Տղին հրամայեց.—Իմ ախչիկն ո՞րն ա, գթի։

Մտքի միջին համբրեց տասնը ինը, դուզ գնաց վրայ քսանի ձիու կեալը բռնեց, ասեց.—Էս ա քու ախչիկը։

—Տղա՛, ասեց. գնա՛, առաւօտը արի։

Տղէն գնաց պառաւի տունը, ասեց.—Նանի՛. ախչկայ շորերը բեր, հագնեմ։ Հագաւ, գնաց Թաքաւորի ախչկայ մօտը։

Թաքաւորի ախչիկը ասեց.—Տղա՛, էգուց էլ կարմիր ձիանը նիլնենք, կարմիր շորերը կը հագնենք. կարմիր քօղները պտի քցենք գլխըներիս, ամենի վերջը ես կը կաղնեմ. կգաս, իմ ձիու կեալը կը բռնես։

Տղէն վեր կացաւ, գնաց պառաւի տունը։

Առաւօտը վեր կացաւ, գնաց Թաքաւորի պալատը։

Թաքաւորը իրան Ճազիր, վեզիրի հետ դուս էկաւ, հրամայեց.

Գնացէք, քառասուն ախչիկը բերէք. կարմիր ձիանը նիլցրէք, բերէք ըստի ջերկայ կաղնացրէք։

Էդպէս արեցին։ Ասեց.—Այ տղա՛, իմ ախչիկը ո՞րն ա, գթի։

Տղէն գնաց. վերջի ձիաւորի եախէն բռնեց, ասեց.—Էս ա քու ախչիկը։ Ասեց.—Ըսօր էլ պըծար, գնա՛. գնա՛, էգուց էլ արի։

Տղէն գնաց պառաւի տունը. ախչկայ չորերը հաքաւ, գնաց Թաքաւորի ախչկայ մօտը։

Թաքաւորի ախչիկը ասեց.—Էքուց էլ սիպտակ ձիանը կը նիլենք, սիպտակ չորերը կը հագնինք. սիպտակ քողերը կը քցենք գլխըներիս, ամենի գլուխը ես կաղնեմ, կգաս. ձիու կեամը կը բռնես, քաշես, Թաքաւորի աղաքը կը կաղնացնես: Տղէն վե կացաւ, գնաց պառաւի տունը։

Լիսացաւ, առաւօտն էկաւ Թաքաւորի պալատը։

Թաքաւորը դուս էկաւ, հրամայեց.—Գնացէք, քառասուն ախչիկը բերէք, քառասուն ձեռք սիպտակ չոր հաքցրէք, սիպտակ ձիանը նիլցրէք, սիպտակ քողները քցէք գլխընեըին. բերէք ըստի, ջերկուն կաղնացրէք։

Էդպէս արեցին։ Թաքաւորը ասեց.—Իմ ախչիկը ո՞րն ա, գնա՛, գթի՛, բեր։

Գնաց, գլխի ձիաւորի ձիու կեամը բռնեց. քաշեց, բերեց Թաքաւորի մօտը, ասեց.—Թաքաւոր ապրած կենայ. վեց օր ա, իմ ջանը քեզնէ չխնայեցի, էս էլ քու ախչիկն ա. քու ախչկայ ջանն էլ ընձանից չխնայես։

Թաքաւորը հրամայեց ախչկերքին, ամենն էլ ձիանոցից վեր էկան։ Ասեց.—Քողերներդ էրեսներիցդ վեր կալէք, էդ տղին վեր կալէք, տարէք պալատը։

Թաքաւորը գնաց պալատը տղի մօտը. հարցրեց.—Դու ինչ տղայ ես, իմ ֆանեերը մէկն էլ չիմացան, դու վեցն էլ իմացար:

Ասեց.—Ես էլ Թաքաւորի տղայ եմ, էկայ քու ախչիկն ուզելու, Աստուած յաջողեց, վեցն էլ իմացայ։

Ասեց.—Պսակեմ ու իմ մօտին կաց։

Ասեց.—Խնդրում եմ, ինձ ճանապար քցէք, իմ պսակը իմ հայրը թող անենայ։ Ասեց.—Դու գիտաս։

Առաւօտը զօրք զօրապետով ամենը դրեց ախչկայ հետ, ճանապար քցեց։

Տղէն ասեց.—Թաքաւոր ապրած, բան պէտք չէ, ամեն էլ քեզ փեշկեշ, էրկու ձի տո՛ւր, նիլնենք, էթանք։

Թաքաւորն ասեց.—Այ տղա՛, քեզ մի բան եմ ասըմ. քսանը հինք տարեկան իմ տղէն կորեր ա, ամեն բանը դու գիտում ես, դու կարող էս էդ տղին գթնիլը, որ գթար, բերեցիր, իմ Թաքաւորութիւնը կը յանձնեմ քե՛զ, գէ՛, բարի ճանապար ըլի՛, գնացէ՛ք։

Վեր կացան էկան Մէյմունի էրկիրը։ Մէյմունները վեր կալան, տարան իրանց Թաքաւորի մօտը, Թաքաւորը ասեց.—Բարի էկար, մեզ մի կշտացրայ, քեզ ճանապար քցենք։ Ըտի սուֆրէն փռեց, հարուր խալվար պոպոկ ու բադամի մէջ ուզեց։

Էդի կերան, խմեցին. տղին քցեցին ճանապար։

Գնաց, ձիաւոր մրջիմի երկիրը հասաւ։

Ձիաւոր մրջիմները էկան աղաքը, վե կալան, տարան իրանց թաքաւորի մօտը։

Թաքաւորը ասեց.—Բարի էս էկէր, մեզ կշտացրայ, քեզ բարի ճանապար քցենք։

Ըտի սուֆրէն փռեց, հարուր խալվար ցորեն ու գարի ու-զեց։ Ըտի կերան, կշտացան. տարան իրանց սրճօւից հանեցին, ըն-կան դևերի սրճօւը։

Դևերը էկան աղաքը, ասեցին.—Հա՛, թաքաւորի տղա՛, մու-րազիդ հասար։ Սոված էնք, մեզ կշտացրայ, քեզ բարի ճանապար։

Սուֆրէն փռեց, ասեց.—Տասը գոմէշ ըԱի միջին։ Տաս գոմէշ էլաւ միջին, ըդոնք կերան, կշտացան։

Վե կալան, տարան իրանց սրճօւը անցկացրին։

Գնաց. հասաւ վիշապի մօտը։

Վիշապն ասեց.—Խի՛ յետացար էդքան։

Ասեց.—Աճճախ որ բերեցի, քի՞չ չարչարանք էր։

Ասեց.—Էդ ախչիկը մնայ իմ մօտը. դու գնա՛, քու ճշաճածը հրեն, ընդի ծաղիկ ա բոփ անըմ, բե՛ր։

Տղէն գնաց դպա իրան ճշաճածը, վիշապը ասեց.—Ախչի, մա-զերդ փաթայ իմ չնքովը։

Ախչիկը փաթաց չնքովը։

Վիշապը ճուաց ու էլաւ մի քսան հինգ տարեկան տղայ ու ընդի կաղնեց։

Էդ տղէն ու ախչիկ էկան ըդրա մօտը, թուրը քաշեց որ ըդ-րան սպանի. էդ տղէն ասեց.—Խի՛ էս տալի, էս իմ քիրն ա, բե-րեցիր իմ մօտը, չասերին ըրկեր ի, որ իմ քուրը բերի. գնացեր էր, չէր էկե. քեզ ըրկեցի, բերիր։ Էս իմ քիրն ա, բաղշեցի քեզ։

Տղէն էլ ասեց.—Ես էլ իմ ճշաճածը բաղշեցի քեզ։

Նոր ձիանը նըլան, էրկու ախչիկ. էրկու տղայ, դպա թաքա-ւորի մօտը։

Խապարը գնաց թաքաւորին.—Աչքդ լիս. տղէդ էկաւ։

Թաքաւորը վեր կացաւ, զօրք զօրապետով գնաց աղաքը տղին։

Չինաստանի թաքաւորի ախչկայ վրէն իրան տղին պսակեց։

Օխտն օր, օխտն գշեր հարսանիք արեց։

Թաքաւորի տղէն ասեց.—Չինաստանի թաքաւորի տղէն գթեր եմ, վեր կալեմ, տանեմ իրան թաքաւորի մօտը։

Էդ ախչիկն ու էրկու տղէն էլան. գնացին։

Գնացին, ճանփէն կորցրեցին, ընկան մի չոլ, եապաճ տեղ.

քառասուն հարամու մէջ ընկան, հարամի բաշին ասեց.—Տարէք էդ էրկու տղին, սպանէք, չորնեըը հանէք, բերէք։

Թագաւորի տղէն ասեց.—Սպանէք ձեր ձեռը ինչ կընկնի. ես էլ Թագաւորի տղայ եմ, էս էլ Չինմաստանու Թագաւորի տղէն ա, ես խոստանում եմ, չարի ձեր մահը ձեզ պահեմ, հմի էլ ինչ որ սըրտներդ ուզում ա, ասէք. ուտացնեմ։

Ասեց.—Մեր սիրտը չատ բան ա ուզում, խորոված, ոխչար, բան։ Սուֆրէն փռեց մէյտանը։

Ըդոնց ուզած բանեըը բիրաթի սուֆրի մէջ գթնուաւ։

Կերան, խմեցին։ Վե կացան ու գնացին, հասան Չինաստան։

Գնացին, Թագաւորի պալատի դարվազի աղաքը ֊վեր էկան։ Թագաւորին խապար արին, դուս էկաւ.—Աչքդ լիս որ տղէդ էկաւ։

Տղին բերեց, պսակեց. օխտն օր, օխտը գիշեր՝ իրա յօժար կամով Թագաւորութունից վեր էկաւ. իրան տղին դրեց Թագաւոր. ըդըրա քառասուն ձիաւորին ամենքին մի նշան տուեց. ընկան ճանապար, էկան իրանց Թագաւորի կուշտը։

Էդ քառասուն հարամի ձիաւորին նշան տուեց, պահեց։

Թագաւորն էլ տղին ասեց.—Անումը իմը ըլի, Թագաւորութունը դու արա։

Ընդոնք հասան իրանց մուրազին։



# ՕՁ–ՄԱՑԻԼ

(Վաղարշապատի բարբառով *)

Մէկ հալիւոր մարդ կար, մէկ քաղաքում. մի հատ էլ պառաւ կնիկ ունէր. էդ հալիւորին 'իսկի 'իլլաճ չունէր, մի քօլածածուկ էլ տուն ունէր։ Էդ հալիւորի փեշակն էն էր որը մի օլակ ցախ կը բերէր, կը ծախէր, կտար իրան հացի. ըդով ապրում կանէին։ Մէկ օր էլ պարանը վե կալաւ, գնաց հանդն, էլի ցախը չինեց. չլակը կապեց. ուզեցաւ չլակի, թամաշա արեց, տեհաւ մի խուշանի քօլի տակից մի օրտակ թռաւ, ասեց.—Էթամ տենամ ինչ կայ միջին։

Գնաց տեհաւ իրեք հատ օրտակի ձու կայ. իրեք հատ ձուն էլ վե կալաւ ու չլակը չլակեց ու էկաւ. բերեց, բազարը ծախեց ցախը. իրա տանը համար հաց առաւ, բերեց տուն. կնկան ասեց.—Պառաւ, Աստուած մեզ տուեց։

Ասեց.—Ինչ էս բերեր որ, Աստուած մեզ տուեր ա։

Ասեց.—Իրեք հատ օրտակի ձու եմ գթե, սոված եմ. մէկը ձուածեղ արա, ուտենք։

Ձուածեղ արեց, կերան։

Առաւօտը վե կացաւ. էլի գնաց ցախի։

Բերեց ցախը, էլի ծախեց. հաց առաւ, բերեց տուն. ասեց. —Կնիկ, էն մի ձուն էլ ձուածեղ արա, ուտենք։

Ասեց.—Ուտելով ինչ կը հասկանանք, տանենք հարևանի հաւի տակ դնենք։ Ճուտ ըլի, կը մեծանայ. մեզի համար ձու կածի. մըշտական կուտենք։

Հալիւորը զօռեց պառաւին, ասեց.—Գնա, բեր. մինը կուտենք, մինը թո մնայ. դու գիտաս, էն ինչ անըմ էս, արա։

Գնաց պառաւը էն մին էլ բերեց. էփեցին, կերան։

* Պատմած է Առաքէլ Ղուիմեան:

Առաւօտը հալիւորը վե կացաւ, գնաց ցախի էլի, ցախը բերեց, բազարումը ծախեց, հաց առաւ. էկաւ տուն. պառաւը գնաց Թագուն որ ձուն պահի, հենց տեհաւ մի օձ ձուիցը դուս ա էկե, կուտապ ա էկե։ Պառաւը որ տեհաւ, չատ վախեցաւ, ու փախաւ. ճուալով էկաւ հալիւորի մօտը։ Հալիւորը ասեց.—Պառա՛ւ, ի՞նչ էս ճըւճըւում։

Ասեց.—Աստուած քու տունը քանդի. էն ձուիցը մի հատ օձ ա դուրս էկե։

Ասեց.—Պառա՛ւ, ի՞նչ սուտ էս ասըմ. ձուի՞ցն էլ օձ դուս կգայ, գնա՛, էթանք, տենանք։

Պառաւն ասեց.—Փէտ վե կալ, էթանք. տանք, սպաննենք։

Հալիւորն ասեց.—Փէտը ո՞ւր ա.

Պառաւ ընկաւ փէտի ման գալու։

Մէկ էլ էն տեհան օձը էկաւ, տան մէջը կաղնեց. ասեց.—Հալիւոր-պառաւ, ի՞նչ մտքի էք, ի՞նչ էք անըմ։

Ասեցին.—Բանի ման չենք գալի։

Ասեց.—Բա փէտ-մէտի էիք ման գալի, որ գայիք, ընձի սպանէիք. դու չէ, սաղ աշխա՛րքի մարդիքը, որ թափեն իմ վրայ, չեն կարայ ճալայ. ամեքին մի դըհով կը քցեմ, կեթան։ Հըմի դու իմ պապն էս, էն էլ իմ նանն ա. ես էլ ձեր տղէն. ինձ լսեցիք, պակասութիւն չէք քաշի. չլսեցիք, էրկըսիդ էլ կսպաննեմ։

Հալիւորն ասեց.—Որդի՛, ինչ որ ասես, կը լսենք։

—Որ կը լսես, կեթաս, Թաքաւորի պուճուր ախչիկը կուզես ինձ։

Հալիւորը վե կացաւ, փէտն առաւ ու գնաց։

Գնա՜ց, պալատի դռան աղաքը կաղնեց, խնամաքար ունէր, էն քարի վրէն նստեց։

Վազիրի մէկը դուս էկաւ. դարվազի աղաքը տեհաւ հալիւորը քարի վրէն նստած ա, ասեց.—Հալիւո՛ր, խի՞ ես նստե ըդի, ի՞նչ գանգատ ունես։

Ասեց.—Գանգատ չունեմ. էկերեմ, Թաքաւորի ախչիկն ուզեմ իմ տղին։

Վազիրը մտաւ ներս, գնաց Թաքաւորի մօտը. ասեց.—Աչքդ լիս, Թաքաւոր ապրած կենայ. մի հալիւոր մարդ էկեր ա, քու ախչիկը ուզում ա իրա տղին։

Թաքաւորը ասեց.—Կանչէք, գայ, տենանք ինչ բավուր մարդ ա։

Վազիրն ասեց.—Կանչելու մարդ չի, էն հալիւորն ա, օրը մի չլակ ցախ ա բերըմ. մի պառաւ էլ կնիկ ունի, աճճախ ապրուստ ա անըմ. ձմեռն էլ ընդըրա հըմար ողորմութիւն էն բօփ անըմ, եօլա ա էթում, ընկնում ա դարունք. էդ բավուր մարդը մոնց կանչէք քու մօտը։

Թաքաւորն ասեց.—Ա՛յ հայ, էդ թավուր մարդ ա գալի, իմ ախչիկն ուզում։

Թաքաւորը ասեց.—Վազի՛ր։ Ասեց.—Հրամայէ՛։

—Ջալլատին կը վե կալես, կեթաս, հալիւորի կշտին կը կաղնես. ջալլաթին կը հրամայես, հալիւորին մէջ տեղից էրկու անի, էն էրկու կտորն էլ ամենքը էրկու կտոր անի, որ ըլլի չորս կտոր. կանես մեշօֆի մէջը, կտաս մէկ մարդի շլակ. տանեն քաղաքիցը ղրաղ քցեն, շներն ուտեն, քաղաքը իմանայ, որ էդ թավուր մարդ իմ դուռը չկայ։

Վազիրը վե կալաւ, ջալլաթին տարաւ, մինց որ Թաքաւորը հրամայեր էր, էնպէս էլ կատարեց. ածեց մի մեշօֆի մէջը, ասեց. —Տարէք, քաղաքիցը ղրաղ ածէք, թօ շներն ուտեն։

Ընդոնք շլակեցին, գնացին։

Վազիրը մտաւ Թաքաւորի մօտը։

Թաքաւորն ասեց.—Ի՞նչ արիր։

Ասեց.—Քո հրամանը կատարեցի։

Իմացաւ օձը, ասեց.—Նանի՛։ Ասեց.—Ի՞նչ ա բալա։

Ասեց.—Գալին էն օրն քցե որ, Աստուած չանց չտայ. հըմի կգան, մեր դռնով կը տանեն, դնա, աղաչայ, թօ բերեն տուն։

Պառաւը ոտին, գլխին տուեց ու գնաց, դուռը կաղնեց։

Տեհաւ մեշօֆով շլակներին, հրեն, բերում են։

Ասեց.—Բալա ջան, էդ ի՞նչ ա։

Ասեցին.—Էն հալիւորն ա, Թաքաւորը սպաներ ա, տանըմենք, դեն քցենք։

Ասեց.—Թաքաւորի զուլումը մեր վրէն հասեր ա, բալա ջան, բերէք մեր դուռը ածէք. գնացէք։

Ասեցին։—Քաղաքի ղրաղը շատ հեռու ա, հազր ըստի մօտ ա. հենց ածենք ըստի ու թողանք, էթանք։

Տարան, քցեցին տուն ու փախան, գնացին։

Պառաւը նստեց, լաց էլաւ, ասեց.—Իմ տունը քանդուեց. էս ի՞նչ օյին էկաւ իմ գլուխը, իրա ոտին, գլխին տուեց։

Օձն էկաւ.—Հը, նանի՛, խի՛ էս լաց ըլնում։

Ասեց.—Քու տունը չքանդուի. արի՛, տես, էս ինչ ա էլել։

Ասեց.—Չորս կտոր էն արե, ինչ էն արե. Աստուած էլ բեթարիցն ազատի։ Սաղ ա, սաղ, գնա՛, դու ըստե մի կաղնի. ականջ մի անի. ջանը սաղ ըլնի, գնա՛ դու։

Պառաւը գնաց. տեղը քցեց ու էկաւ։

Էկաւ տեհաւ որ հալիւորը սաղ ա. քներ ա, ֆսֆսըմ ա, ծիծաղաց։

Վ.ե կալան, տարան, տեղը դրեցին։

Հալիւորը մի լաւ քնեց. առաւօտը վե կացաւ, տեղը նստեց։

Օձը էկաւ, կչտին կաղնեց. ասեց.—Պապի՛, էրեկ ղրկեցի Թաքաւորի մօտը, ինչ խապար բերեցիր ինձ հըմար։

—Գնացի, խնամաքարի վրէն նստեցի, վազիրը դուս էկաւ, ասեց. «Հալիւոր, խի էս նստե, ինչ գանգատ ունես»։ Ասեցի. «Գանգատ չունեմ. Թաքաւորի ախչիկը ուզեմ իմ տղին»։

Վազիրը մտաւ ներսեն ու մի ջալլաթի հետ դուս էկաւ. ջալլաթին հրամայեց, ասեց. «տո՛ւր»։ Ջալլաթի տալն իմացայ որ տուեց, էլ չեմ գիտում ինչ էլ էլե, մէկ էլ տեհայ, ըստե քնած էմ, գալս չեմ իմացե։

Ասեց.—Դե՛, վե, գնա՛, չվախենաս. ըսօր ինձ մի խապար բեր։

Հալիւորը վե կացաւ, ու գնաց, խնամաքարի վրէն նստեց. վազիրը դուս էկաւ. տեհաւ էրեկուայ հալիւորը նստած ա. գնաց ներսե, ասեց,—Էրեկուայ հալիւորը էկեր ա էլի։

Թաքաւորը ոտը տուեց գետնով, ասեց.—Չըլլի իմ հրամանը չես կատարե։

Ուրիշ վազիրի կանչեց, ասեց.—Գնա՛ դուռը. մի տասը մարդի կանչայ, թօ գան ըստե։

Գնաց, կանչեց, էկան. կաղնեցին Թաքաւորի աղաքը։

Ասեց.—Վազիր, էս տաս մարդին խօսացընըմեմ, որ իմ էրեկուայ հրամանը չես կատարե. ընդրա օրը քեզ կը քցեմ։

Էն տասը մարդին հարցրեց,—Էրեկ որ դուս էկաւ վազիր, դարվազումն ինչ բան բռնեց։

Դուս էկաւ, ջալլաթը հետը, մի հալիւոր կար, չորս կտոր արեց, ածեց մեշօֆը, տարան, դեն քցեցին։

Ասեց.—Աֆէրմ վազիր, պրծա՛ր. նորից հրամայում եմ, գնացէք, չորս կտորը քիչ էր, հմի ըռչտի պէս կտորէք։

Վազիրները դուս էկան, ըռչտի պէս կտորեցին։

Ածեցին մի մեշօֆի մէջ, տուեցին էրկու տղի չլակ, ասեցին.—Տարէք, ածէք ձորը, թօ ջուրը տանի։

Օձն իմացաւ, ասեց.—Նանի՛, պապին էն օրն էն քցե որ, Աստուած չանց չտայ, եաման հայթայա. հըմի կը բերեն մեր դռնով պտի տանեն, գնա՛, աղաչայ, բերեն տուն-

Վե կացաւ, պառաւը ոտին գլխին տուեց, դռանը լաց էլաւ։ Տեհաւ էրկու տղայ մեշօֆով բերում էն. ասեց.—Բալա, ձեր ոտին, գլխին ղուրպան, էդ իմ մարդն ա, Թաքաւորի զուլումը հասեր ա, ըդենց կտորեր ա, ձեր էրեսին մեռնեմ. բերէք, ածէք տուն ու գնացէք։

Ասեց.—Պառաւ, քու տունը ո՞րն ա։

Ասեց.—Բաց դուռն ա։

Տարան, քցեցին ճայեարն ու փախան, գնացին։

Պառաւը նստեց, լաց էլաւ վրին։

Օձը դուս էկաւ, ասեց.—Նանի, մի՛ լաց ըլիր. գնա Քուչի դուռը ղայիմ չինայ, գնա տեղը քըցայ։

Գնաց, չինեց ու գնաց տեղը քցեց։

Էդ օձը բերեց, մարմինը գեղեց, լիզուն քսելու բաշեաճ էլաւ մօրէ մէկ, նստաւ էդ հալիւորը։

Պառաւը տանից դուս էկաւ, տեհաւ հալիւորը նստած ա. փաթըթուեց հալիւորի չլինքը, հալիւորի էրեսները պաչեց։

Օձն ասեց.—Նանէ, պաչելու փախտը չի, տար տեղը, բան պտի հարցնեմ պապին։

Պառաւը թեւը բռնեց, կաղնացրեց. տարաւ, տեղի մէջը նըստացրեց։

Օձն ասեց.—Պապի՛, քեզ տեղ ղրկեցի, ինչ խապար բերիր։

Ասեց.—Որդի՛, էն խետ հօն խօսացրին էրկու բերան, էս հետ ըսկի՛ բան չլսեցի։

Ասեց.—Դէ՛, վեր, գնա՛, Թաքաւորի ախչիկն ուզայ ինձ համար։

—Որդի, ասեց պառաւ. ախր էրկու անգամ սպանեցին. բալքի սպանում էն։

Ասեց.—Մէրը մեռնի Օձ—Մայիլին, հարուր անգամ էլ սպանեն. ես կը սաղացնեմ։

Հալիւորն վեր կացաւ ու գնաց։ Գնաց, քարի վրէն նստեց։ Թաքաւորը իրան վազիր Ճազիրով դուս էկաւ, տեհաւ մի հալիւոր մարդ քարի վրէն նստած ա, ասեց.—Էդ ինչ հալիւոր ա, մի հարցրէք, տեհէք։

Վազիրն, Ճազիրը տեհան էն հալիւորն ա, չատ վախեցան Թաքաւորիցը, պատասխան չկարացին տայ Թաքաւորին։

Ասեց Թաքաւորը.—Վազիր, Ճազիր, բա՛ն ասեցի. դուք սուց կացաք։

Ասեց.—Թաքաւոր ապրած, էս էն հալիւորն ա, մէկէլ օրը չորս կտոր արեցինք, էրեկ էլ ըուշտի պէս կտորեցին. էս օր էլ սաղ էկեր ա, նստեր ըս տեղ, մենք վախեցանք որ ըստրայ պատիճը մեզ տաս. ընդուր չենք խօսացնըմ հալիւորին։

Ասեց.—Հալիւորին վի կալէք, տարէք պալատը. ըտի մի բան կայ։

Թաքաւորը ետ դառաւ, իրա բախտին նստեց, հալիւորին կանչեց. աղաքին կաղնացրեց, Ճազիր, վազիրը կանչեց. հալիւորին չորս բոլորը կտրեցին.

Ասեց.—Հալիւո՛ր, դու խի՛ ես եկե։

Ասեց.—Էկեր էմ, քու ախչիկն ուզեմ իմ տղին։

—Էս քանի՞ անգամ ա դու էկեր էս ըս տեղ։

—Ըս էլ իրեք անգամ, ասեց.

—Ի՞նչ պատասխան տուին էրկու անգամը քեզ։

—Առաջի անգամը դուս էկան, ասեցին։ «խի էս էկե.» ասեցի. «էկերեմ, Թաքաւորի ախչիկն ուզեմ իմ տղին.» հենց Թրի չրխկոցը լսեցի գլխիս մէջ տեղիցը. ընդուց դեն էլ չիմացայ, մէկ էլ տեհայ տանը պառկած էմ. տղէս ասեց. «Ինչ պատասխան բերեցիր,» ասեցի. «պատասխան չտուին,» էրեկ էլ ղրկեց, ըռկի չխօսացրին, հենց գլխիս տուեցին. մէկ էլ տեհայ տանը պառկած էմ. էս օր էլ ղրկեց, ասեց. —Գնա, Թաքաւորի ախչիկն ուզե, ըս օր էկեր էմ, էրես էրեսի, քու ախչիկն ուզում եմ իմ տղին։ ի՞նչ ասելու ես, ասա։

Թաքաւորն ասեց.—Նազիր, վազիր. ըսգըրայ խօսքով դուք պրծնում էք, էս հալիւորին բան անիլ էլ իլլաճ չկայ, ընենց բանի դէմ անենք, որ չկարենայ բերի։

—Թաքաւոր ապրած կենայ. էդ դու գիտաս։

Ասեց.—Պապի՛, քու տղէն ինչ փեշակի ա:

Ասեց.—Իմ տղէն փեշակ չունի. մի հատ օձ ա ու տանը կուտապ էկե, նստի։

Ասեց.—Խասն էլ չի, հա՛, քու տղէն։

Ասեց. Չէ՝ մի հատ օձ ա։

Ասեց.—Որ օ՛ձ ա, ե՛ս խօստացայ իմ ախչիկը տամ. գնա՛, ընենց տներ չինե, իմ պալատները տեհըմ էս, իմ պալատներից բանձր ըլլի, ընդըրա հովը գայ, իմ պալատներին ծածկի. որ իմ ախչիկը տամ քու տղին։

Հալիւորն էկաւ գպս տուն. մտաւ տուն, օձն էկաւ առաջը, ասեց.—Հը՛, պապի. ինչ պատասխան բերիր:

Ասեց.—Որդի՛ գնա «Ընենց տներ չինե, որ հովը գայ իմ տներին ծածկի։

—Պապի՛, ասեց. էն օրտակի ձուն որ բերեցիր, էն ծակը գիտա՞ս։

Ասեց.—գիտամ։

Ասեց.—Կեթաս, կասես, պատիկ խանում, պատիկ աղէն ասըմ ա. մեր պատի քոշք ու սարէն ղրկի, գայ. իրան տասներկու Նօքարն էլ հետը, թախումն էլ միջին ըլլի։

Գնաց, ձէն տուեց ըդենց.—Պատիկ խանում, պատիկ աղէն ասըմ ա, պատիկ քոշք ու սարէն ղրկի գայ. միջի թախումն էլ հետը. տասուերկու Նօքարն էլ հետը։

Ասեց.—Հալիւո՛ր, դու գնա՛, մենք ղրկեցինք։

Հալիւոր էկաւ, հասաւ տուն. տեհաւ տները օխտը ղաթ իրար վրայ ա։ Նօքարները էկան, հալիւորի հին չորերը հանեցին, թազա չորեր հագցրին, հազար մանէք աժողութիւն ունէր. մի քուրք էլ

քցեցին վրին, հինգ հարուր մանէթ աժողութուն ունէր. սամուրի քուռք. մի լաւ գաւազան էլ տուին ձեռ, ակնունքով շինած էր ըդըրա գլուխը, հաղար մանէթ աժողութուն ունէր։

Օձն էկաւ աղաքը, ասեց.—Պապի՛, գնա, արխային Թաքաւորի ախչիկը ուզայ. վախտով հարսանիք անենք։

Հալիւորը վե կացաւ ու գնաց. մտաւ Թաքաւորի պալատը։

Նազիրը* էկաւ աղաքը, գլուխ տուեց ու կաղնեց։

Հալիւորն հրամայեց.—Կաղնելու վախտ չի. ինչ էս անըմ. գնա՛, իմացըրայ Թաքաւորին։

Ընենց վազեց վազիրն, էլ ինչ ասեմ։

Թաքաւորն ասեց.—Հալիւորին կանչէք, ներսև գայ։

Էկաւ ներսև, կաղնեց. Թաքաւոր տեհաւ ըդըրա թաշախուսը զարմացաւ։

—Հը, հալիւոր, ասեց. իմ խօսքը կատարե՞լ էս որ էկել էս։

Ասեց.—Դե՛, բալկոնդ կաղնի ու թամաշա արա՛։

Թաքաւորը դուս էկաւ, կաղնեց բալկոնումը, տեհաւ իրա տները հինգ ղաք ա, ըդըրանը օխտը ղաք, իրա տները Թրծած քեարփիճն ա, ըդըրա տները մի քեարփիճը ոսկի ա, մի քեարփիճը արծաթ. արևը տուեր ա ըդըրա տներին, ըդըրա տների լուսը տուեր ա քաղաքին։

Ասեց.—Հալիւո՛ր, ըսղուց դեն «Հալիւոր» չեմ ասի. «Խնամի» պտի ասեմ. քու տների վրայ զարմացայ. էդ ինչ հնար էր, մի բան էլ էմ ուզում քեզանից։

Հալիւորը ասեց.—Ի՛նչ ուզես, կտամ։

Ասեց.—Քեզանից ուզում եմ օխտը ղաքար ղավի բեռ ալմաստ, զմրուխթ, աղրութ, սելեան, բըռլեանդ բարցած ըլի. սարվանը մի Թիզ ըլի. մուրուքը օխտը Թիզ ըլի, առաւօտը իմ դռանը չոքած ըլնի։

Հալիւորը էկաւ իրա տունը։ Գալու բացեան օձը գնաց աղաքը.
—Հը, ասեց. պապի՛, ինչ պատասխան տուեց։

Ասեց.—Օխտը ղաքար ղավա բեռ ակնունք ա ուզում. սարվանը մի Թիզ ըլի, մուրուքը օխտը Թիզ։

Ասեց.—Դէ՛, գնա էն ծակի կուշտը կաղնի, ձէն տուր.—Պատիկ խանըմ, պատիկ այլէն ասըմ ա, օխտը ղաքար ղավա բեռ ակնունք չկայ, ամեն տեսակիցն էլ ըլի. սարվանը մի Թիզ ըլի, մուրուքը օխտը Թիզ, Թաքաւորին ղալան էմ ղրկում։

Գնաց, հալիւորը ձէն տուեց էդպէս։

Ասեցին.—Գնա՛, մենք ղրկեցինք։

Հալիւորը յետ դառաւ, էկաւ տուն. տեհաւ օխտը ղաքար դավէն իրանց դռանը չոքած ա։

Էկաւ, տեհաւ չոքած ա օխտը ղաքար դավէն։ սարվանը մի թիզ ա, մուրուքը օխտը թիզ, փոթըթեր ա մէջքը, ձեռները քշտեր ա, դավի Ճօխսէն բռներ ա։

Հալիւորն ընկաւ աղաք. տարան, Թաքաւորի դռան չոքացրին։ Հալիւորը գնաց Թաքաւորի մօտը, ասեց.—Թաքաւոր ապրած կենայ, քու ուզածը բերեր էմ։

Թաքաւորը մի եfա մաղազա դարտըկեց, տարաւ, չուռ տուեց իրա մաղազի մէջը. մի րուպը վե կալաւ, իրա սարաՖներին չանց տուեց, ասեց.—Հասն ի՛նչ կաժենայ։

Ասեցին.—Թանկագին բան ա, հատը հազար մաճեք կաժենայ։

—Խնամի՛. ասեց հալիւորին. իմ ուզածը բերեցիր, մէկ բան էլ էմ ուզում. իմ դռնից քու դուռ, քու դռնից ժամի դուռը. ժամի դռնից էլի քու դուռը չինարի ծառ ըլլի, որ չորս մարդ իրար բռնն, ճալա ձեռները չհասնի իրար. հաստութունը ընենց ըլլի։

Հալիւորին ճանապար քցեց, էկաւ դպա տուն։

Թաքաւորն ասեց.—Անկարելի ա ծառերը բերիլը, ըդով իմ ախչիկը կազատեմ ըդուց։

Հալիւորն էր, հասաւ տուն. Օձ-Մայիլն էկաւ աղաքը, ասեց.

—Հը, պապի, ի՞նչ ասեց Թաքաւորը։

—Թաքաւորն էն բանին դէմ արեց, չինք կարայ։

Ասեց.—Ի՛նչ ասեց.

Ասեց.—Չինարի ծառ ա ուզում մեր դռնից իրա դուռը, իրա դռնից ժամի դուռը. ժամի դռնից, էլի մեր դուռը։

Ասեց.—Էդ զօռ բան չի, գնա դպա էն ծակը, ձէն տուր, —Պատիկ խաճում, պատիկ աղէն ասըմ ա, չինարի ծառերն ղրկի գայ. ծառի վրի ղշերն էլ հետը որ ճըլվըլան։

Ձէն տուեց.—Ղրկեցինք էկաւ, դու գնա։

Հալիւորը էկաւ, տեհաւ. ճ՛լ-ճլ-ճ՛լ ծառեր ա դուս էկե, Ֆալաքի օխտը ղաքը հասեր ա։

Էկաւ տուն, Օձ-Մայիլն ասեց.—Հը պապի. գնա, Թաքաւորին տես, ինչ ա ասըմ։

Գնաց Թաքաւորի պալատը. վազիրը դռանը կաղնած էր, ասեց. —Վ,ազի՛r, գնա, Թաքաւորին իմացրայ որ խնամին էկեր ա։ Թաքաւորն ասեց.—Կանչէք, գայ ներքև։

Էկան, հալիւորին կանչեցին, գնաց ներքև։

Թաքաւորն ասեց.—Հա՛, իմ ասածը կատարեր էս, որ ասի։

Ասեց.—Դուս արի, քամաշա արա։

Դուս էկաւ, քամաշա արեց, տեհաւ դուզ ա։

Ասեց.—Էս ինչ ճռվըլոց ա գալի։

Ասեց.—Թաքաւոր ապրած կենայ, մի բան էլ ես էմ աւելացրե, ղշերն էլ հետն եմ բերե:

Ասեց,—Դէ, գնա՛, իմ ասածն աած ա. գնա՛, մի ձեռք չոր բեր որ էն կտորեցը իմ երկըրումը չըլնի, կար չըլնի միջին. իմ ախ-ջիկը հագնի, էթայ պսակ. օխտը ձեռք էլ տափ ու զուռնաչի բեր, ինչ ղայթա ասենք, ածա՛, ածեն. իրանք չերևան։ Օձ-Մայիլին էլ հետը բեր։

Հալիւորը յետ դառաւ իրանց տունը։ Էկաւ, մոնց որ Թաքաւոր էր ասեր, էկաւ, ընենց ասեց

—Գնա՛ էն ծակի վրայ ձէն տուր, ասա.—Պատիկ խանում, պըստիկ աղէն ասըմ ա, էն չորերը գրկե որ ո՛չ ձեռ տուած ըլնի, ո՛չ կար ըլնի միջին. կտորից էս երկրում չըլնի,

Հանեցին մի պնդուկ տուին, ասեցին.—Ա՛ռ, էս պնդկի միջին ա չորերը, վե կալ, տար։

Օխտը ձեռք էլ տափ ու զուռնա գրկի գայ, ինչ ղայդա ասենք, ածեն, իրանք չերևան:

Ասեց.—Ղրկեցինք։

Ասեց.—Դուք էլ համեցէք հարսանիք։

Ասեց.—Մեր տեղը հեռու ա, չենք կարայ գայ. դուք ընտի քեֆ արէք. մենք էլ ըստի քեֆ կանենք։

Հալիւորը յետ դառաւ, էկաւ տուն. տեհաւ օխտը ձեռք դափ ու զուռնէն զարկըմ էն. կռկռոցն ընկեր ա քաղաքին մէջ։

Գնաց, մտաւ հալիւորը տուն. տեհաւ Օձ-Մայիլը պոչի վրայ կաղներ ա, ասեց.—Պապի՛, հարևաններին թափ արա, էթանք։ Թափ արեց ընկան ճանապար։ Օձը ընկաւ աղաք։

Գնացին Թաքաւորի պալատը։

Թաքաւորը տեհաւ. էրկու հատ վազիր ղրկեց, Թևերիցը բռնած-ցրացին. տարան Թաքաւորի աղաքը։

Ասեց.—Խնամի՛, զուռնաչին իմ ասածն ա, չորերն էլ բեր, տեսնամ իմ ասա՛ծն ա։

Պնդուկը վե կալաւ, դրեց Թաքաւորի աղաքը. Թաքաւորը պնդուկը ջարդեց. մի ձեռք չոր էկաւ դուս միջիցը, իրա երկըրումը էն կտորը չկար, կար էլ չկար միջին։ Ղրկեց, իրա էրկու ախջիկը մարդի տուած ունէր, կանչեց, իրա կնիկն էլ կանչեց. իրա պուճուր աղջիկն էլ կանչեց որ տուեր ա Օձին։

Էկան, ընտի կաղնան։

Թաքաւորը ասեց.—Էս չորերը տեսէք, որ կտորիցը իմ երկըրումը որ չկայ. կա՛ր էլ չկայ միջին. լաւ թամաշա արէք. հագցրէք որ էթայ պսակ։

Թաքաւորի կնիկն ու էրկու ախջիկն վե կալան. իրանց տունն գետնովը, ասեց.—Դու թաքաւոր ըլես, մալի խափուես. քու քաղաքում քա տղայ չկա՞ր որ մի տղի տայիր, տուեցիր օձի. մի գշեր կտայ, կը քաշուի մի պատի ճղակ։

Թաքաւորն ասեց.—Ես իմ խօսքիցը դուս չէկայ, իմանանք էն մի ախչիկն էլ չկայ։

Թաքաւորի կնիկն ու էրկու ախչիկն էլ լաց էն ըլնում, չորերը հագցընում։ Թաքաւորը ոտը տուեց գետնովը, ասեց.—Է՛ս րօպէին հագցրէք։

Հագցրեցին, բերին ըտի կաղնացրին։

Էդ երկրի մէջ ըդենց սեսակին ախչիկ չկար,

Օձին հրամայեցին. ասեցին.—Արի՛։

Օձը վեր կացաւ, պոչի վրայ կաղնեց, օխտը անգամ թաքաւորին գլուխ վեր բերեց. գլուխը պըտըտեց, ինչ սար մարդ կար, քոմըքից չնորհակալ էլաւ. գնաց, թաքաւորի ախչկայ մինթանու փեշերը բերնով բռնեց։

Վե կալան, տարան, պսակեցին. տարան հալիւորի տունը։

Զարի լիս կերան, խմեցին, ֆումա գնացին։

Մնաց Օձը, էդ ախչիկը, հալիւորը, էդ պառաւը։

Օձն ասեց.—Պապի՛, նանէ՛. գնացէք, քնէք։

Ընդոնք վե կացան, գնացին։

Թաքաւորի ախչկան ասեց.—Վե, դուռը չինի։

Թաքաւորի ախչիկը դուռը չինեց, էկաւ Օձի կշտին նստեց։

Ասեց.—Թաքաւորի ախչիկ, ինձանից չվախենաս դու. ոտիդ բիդը բեր, պոչիս ծէրին հուպ տուր։

Ոտի բիդը տարաւ, պոչի ծերին հուպ տուեց։

Ծուաց ու մի տղայ դուս էկաւ խուրղի միջիցը. ինչ սար ախչիկն էր սիրուն, տասը էնսար տղէն էր սիրուն։

Էկաւ, թաքաւորի ախչկայ ձեռը բռնեց, ասեց.—Թաքաւորի ախչի՛կ, իմ սըրը մարդի չասես, ինձ քառասուն օր ժամանակ ունեմ. որ ընենց հանի պէս կեթանք թաքաւորի մօտը քառասուն օրէն ետը. համա, որ ասեցիր, էլ քու ձեռը չեմ ընկնի։

Ասեց.—Չեմ ասի։ Ըտե փաթըթուան իրար. մի լաւ քէֆ արեցին։ Պառկան քնան. բիրսան զարթնեցին, տեհան լիսը փանճարից ընկեր ա օթախի մէջը։

Օձը էլի խրխեն հագաւ, էլաւ օձ, կուտապ էկաւ պուճախին։

Թաքաւորը կնկան կանչեց. ախչկերքին կանչեց, ասեց.—Գնացէք, տեսէք, էն ախչկայ հալը ինց ա, մեր սըրը մենք իմանանք։

Թաքաւորի կնիկը, էրկու ախչիկն էկան դըղպա հալիւորի տունը. տեհան պառաւը դռներն սրբում ա,—Բարև, խնամի։

Ասեց պառաւը.—Աստըծու բարին։

Ասեցին.—Ո՞վ կայ վիրև։

Ասեց.—Հալիւորն ա, մարդ չկայ։

Գնացին վիրև, տեհան հալիւորն մի օքախի մէջ նստած ա։

Ասեցին.—Խնամի՛, փեսէն ու մեր ախչիկը ո՞րտեղ էն։

Ասեց.—Էն օքախում էն, իրիկուրէ մտեր էն ըտե, էլ ձէն ու ձուն չկայ։

Թաքաւորի կնիկ ասեց.—Ցողը ըդըրա բերողի գլխին ըլլի. խաՇ ա որ ձէն ու ձուն ըլլի։

Դուռը ծեծեցին, ախչիկը բաց արեց։

Տեհան ախչիկը ի՜նչ ուրախ-ուրախ բաց արեց որ, ծիծա՜ղ երեսից թափում էր։

—Հը՛, ասեց. ախչիկ, ֆէֆդ ո՞նց ա։

Ասեց.—Փառք Աստըծու, չա՛տ լաւ ա։

Ասեց.—Օձդ ո՞նց ա։ Ասեց.—Խեղճ հայվանը կուչ ա էկե, ի՞նչ պտի անի։

Ասեց.—Էս գշեր մեր քունը չի տարե. քու դարտն էնք քաշըմ։

Ասեց.—Իմ դարտը էլ չէք քաշի՛. արխայիՇ կը կենաք։

Բէլ.եց, ըդոնց մի լաւ պատիւ արեց. ընենց եմակներ քաշեց որ թաքաւորին էդ եմակներից չունէր։

Կերան, խմեցին, վե կացան։

Վե կացան էրկու քիրը, մէրը. ախչկան խօսացրին, ասեցին.—Ախչի. էդ օձիցը ինչ էս հասկանում։ Թաքաւորը մի անգամ տուեց ու իրա խօսքիցը դուս չէկաւ. մի քար վեր կալ ու, հենց տես գլխին, ստակացըրայ. քու ջանը ըդուց ազատուի։

Ախչիկը ասեց.—Որ էդ խօսքը ինձ ասեցիք. ըս տերանքը էլ չգաք, էն ինձ համար չատ լաւ ա։

Վե կացան, իրեքն էլ գնացին թաքաւորի մօտը։

Թաքաւոր հարցրեց.—Էն ախչիկը մո՞նց ա։

—Ախչիկը չատ լաւ էր, ուրախ էր սիրտը. մի բան էլ ասերինք, որ օձին սպանի. մեր վրէն չա՛տ նեղացաւ, մենք էլ թողացինք, էկանք։

Մի տասն օր ախչկայ մօտը չգնացին, տասն օրէն յետը թաքաւորին մի ուրախութիւն էլաւ, ձիաւորներ թօփի արեց, որ իրա դռան աղաքը մեյտաՇ էր, հաղ անէին։

Հազա՛ր ձիաւոր թօփի արեց, կնկան ասեց.—Գնացէք, էն ախչկան էլ բերէք. թո գայ, թամաշա անի, սիրտը բացուի։

Թաքաւորի կնիկը գնաց բերելու։

Օձ-Մայիլն իմացաւ, ասեց.—Թաքաւորի ախչիկ, հըմի մէրդ կգայ. քեզ կտանի. Թաքաւորը աթոռը դրեր ա դռանը, նստեր ա. հազար ձիաւոր, հինգ հարուր էս դին ա կաղնած, հինգ հարուր էլ էն դիհը, ճրինց էն հաղում. ես էլ, ասեց. բօզ ձինը նիլնեմ կգամ, սիպտակ չորերը կը հագնեմ, սիպտակ թօփուզը կառնեմ ձեռս, որ՛ն տամ չուռ կտամ, քու քըրերը, քու մէրը ուրիշ բաներ կը խօսան քու վըրէն. սկի պատասխան չտաս տայ. իմ սրուն էլ չես ասի. որ ասեցիր, էլ հնար չկայ. քու ձեռը չեմ ընկնի։

Խօսքը պըծաւ. Թաքաւորի կնիկը մտաւ ներս, ասեց.—Ախչի՛, վեր, էթանք- էս օր դու էլ թամաշա արա, ուրախութիւնի օր ա։

Ասեց.—Մ՛ոնց գա՛մ. Օձ-Մայիլի կչտին մարդ չկայ ախըր։

Թաքաւորի կնիկն ասեց.—Ցողեմ ըդըրա գլուխը, ըդուց ի՛նչ էս հասկանում, չկայ-չկայ, ի՛նչ անենք։

Օձն ասեց.—Նանի՛, ես էլ գամ, թամաշա անեմ։

Ասեց.—Հա՛, գաս ընկնես ձիանոց ոտի տակ, սատկե՛ս։

Ասեց.—Դէ՛, դու գնացէք, ես կը մնամ տանը։ Ասեց.—Ախչի՛, թեզ արի, չմնաս ձեր տանը, ես մի՛նակ չեմ կարայ մնայ։

Վե կացան ու գնացին. գնացին, տեհան ձիաւորը էնպէս ա հաղում, որ թամամ ա, Թաքաւորը նստեր ա։

Գնա՛ց Թաքաւորի ձեռը բռնեց, պաչեց ախչիկը. Թաքաւորը ճակատը պաչեց, ասեց.—Ախչի՛, դուրս մի անի, ըդուց կազատեմ քեզ։

Կաղնեցին թամաշա, տեհան մի բօզ ձիաւոր էկաւ, սիպտակ չորերը հագին, սիպտակ թօփուզը ձեռին, ձին որ քշում ա. ձիու ոտների տակիցը կրակը թափում ա։ Էդ հազար ձիաւորին էնպէս արեց ո՛ր դումանը հանեց, որին տուեց, չուռ տուեց. որի՛ն տուեց, չուռ տուեց։

Քշից, էրկու քենակալների քամակը ընկաւ, ամեքին մի դըրպ տուեց, ձիուցը վե քցեց։

Ըդոնց կնանիքը ասեցին.—Վա՛յ Թեերդ կոտրուի, մ՛ոնց տուեց, վեր քցեց։

Օձ-Մայիլի կնիկն ասեց.—Խի՛ կոտրուի, էն էլ հալպաք մի մարդ ա։

Քիրերը ասեցին.—Ա՛, ֆողը քու բերողի գլխին ըլլի՛, հալա մերը խաճ ա, կեթանք, հետը կը խօսանք. քունը բա մի օձ ա, գչերը կը կծի, կը քաշուի մի պատի ճղակ։

—Ցողը ձեր գլխին ըլլի. իմ դարսը մի՛ քաշէք սկի։

Ձիաւորը ցըլըրուան, գնացին. էդ բօզ ձիաւորը էկաւ, թօփուզը տուեց գետինն ու կաղնեց Թաքաւորի աղաքը։

Թաքաւորը հանեց, մի նշան տուեց ըդըրան։

Ասեց.—Անունդ ի՛նչ ա, տաա։

Ասեց.—Վերջի օրը իմ անումը կասեմ. Թաքաւո՛ր, մնաս բարին։
Մէկ էլ տեհան ձիու թօզն էրևաց, էլ ինքը չիրևաց։
Թաքաւորը գնաց տուն, ախչկերքն էլ հետը։
Թաքաւորը էդ ախչկան ասեց.—Կա՛ց ըստի, մի՛ էթայ։
Ասեց.—Չեմ մնայ, կեթամ։
Ասեց.—Ախչի. Օձից ինչ էս հասկանում, էթում էս։
Որ տուեր էս, ինչ ասեմ, մի բուռ փող ա, ինձ ղապուլ ա։
Վե կացաւ ու գնաց. գնաց, տեհաւ օձը կուչ ա էկե։
Ասեց.—Ախչի՛, գռները չինայ, պոչիս ծերին հուպ տուր։ Պոչի ծէրին հուպ տուեց։

Օձ-Մայիլ խրխիցը դուս էկաւ. փաթթուան իրար, պաչպչեցին, ասեց.—Թաքաւորի՛ ախչիկ, ըստի մի բան խօսացիք, լաւ էր, բերանդ պինդ ա, քիչ ա մնըմ քառասուն օրը թամմի. որ վե կալեմ քեզ. ըսենց տղամարդի ղայդայ Թաքաւորի աղաքը տանեմ քեզ։

Պարկան, քնան։ Մի տաս օր էլ անց կացաւ. էլի Թաքաւորի ուրախութեանի օրն էր. ձիաւորները թօփ արեց, ասեց.—Գնացէ՛ք, էն ախչիկն էլ բերէք, թօ թամաշա անի։

Թաքաւորի կնիկը գնաց բերելու։

Օձ-Մայիլն ասեց.—Ախչի՛, թաքաւորի՛ ախչիկ, հըմի մէրդ կդայ, քե կը տանի թամաշի. ես իմ կարմիր ձին կը նիլնեմ, կարմիր չոբերս կը հագնեմ. կարմիր թօփուզը ձեռս կառնեմ, կը գամ. կը մտնեմ մէյդանի մէջը. ամենին էլ թօփուզով պտի տամ. ինչ որ կը խօսան. իմ սրռը չես ասի։

Թաքաւորի կնիկը մտաւ դռնիցը, ասեց.—Ախչի. վեր, էթանք։
Ասեց.—Նանի, որ տանում էս, թեզ թող գայ. ոտ չունեմ, ձեռ չունեմ որ հաց բերեմ, ուտեմ։
—Յողեմ գլուխդ. քու խուտելու դարտն էնք. չի էլ սատկում, ըռաթ ըլի։
Վե կացան ու էկան ախչիկն ու մէրը, էկան Թաքաւորի, կըչտին նստեցին։
Տեհան կարմիր ձիաւորն էկաւ, մտաւ մէյդան. էնպէս արեց էդ հազար ձիաւորին, որ Եամմըքին էլ տուեց թօփուզով։
Ախչկերքն էլ ասեցին՝ իմ մարդը ըլի. էն ասեց՝ իմ մարդը ըլի. ասեցին.—Մէրը խաւն ա, հալա հետը խօսում էնք. սրան պա մի օձ ա, որ սկի հետը չկարայ խօսայ.
Ասեց.—Դու ձեր դարտը քաշէք, ինձ հետ ինչ գործ ունէք։
Ձին քաշեց. էկաւ, Թաքաւորի աղաքը կաղնեց.
Թաքաւորը հանեց, մի նշան էլ տուեց.
Նշան առաւ ու ձիու գլուխը թողաց, էլ ինքը չերևաց. ձիու թօզն էրևաց։

Վ․ե կացան, ցվրուեցին։

Ախչկան ուզում են տուն տանէն, չգնաց. ինչ ճար զօռեցին։

Գնաց, տեհաւ օձ նստած ա, ասեց.—Հա՛, Թաքաւորի ախչիկ, միտքդ փոխեր էիր որ իմ սըռը ասէիր։

Ասեց.—Չեմ ասի։

Մի քանի օր էլ անց կացաւ. մի ուրախութունի օր էլ էկաւ, ձիաւորները թօփ արեց, ասեց.—Ըսօր վերջի օրն ա. մի լաւ քէֆ անենք։ Կնկան ասեց.—Գնա՛, էն ախչկան էլ բեր։

Թաքաւորի կնիկը գնաց։

Օձ-Մայիլն ասեց.—Ախչի, Թաքաւորի ախչիկ. հըմի մէրդ կգայ, քեզ կը տանի ընտե թամաշա, ես սև ձին կը նիլեմ. սև չորերը կը հագնեմ, սև թօփուզը կառնեմ ձեռս. կգամ, էն մեյդանը լաւ կը հաղամ. քոմրքի բերանը բաց մնայ. ինչ որ քե կասեն, իմ սըռը չասես, իրեք օր ա մնացեր որ քառասուն օրը թամմի, քառասուն օրը որ թամմաւ, տղամարդի ղայթայ կը տանեմ Թաքաւորի մօտը. նոր ընդուց դեն մենք կուտենք, կը խմենք, քէֆ կանենք։ Մէկ էլ սըրմեմ, «իմ սըռը չասե՛ս,» որ ասեցիր, էրկաթէ տրեխներ կարես, հանգնես, պողպատէ գաւազան առնես ձեռդ. էն ղդար ման կգաս, պողպատե գաւազանի բռնելու տեղը կը մնայ, տրեխների էլ ղրաղները կը մնայ, տակը կեթայ. անճախ որ գթնես ինձ։

Տեհան Թաքաւորի կնիկը մտաւ ներսև։

Ասեց.—Ախչի՛, վե էթանք, ըսօր լաւ ուրախութունի օր ա։

Օձ-Մայիլն ասեց.—Նանի՛, ընձ էլ տանե՛ս, գամ, թամաշա անեմ։

Ասեց.—Օրինա՛կ էս, ես քե տանեմ, կընկնիս ձիանոց ոտի տակ, կը սատկես։

Ասեց.—Դե, վեր կալ, տար, չեմ գայ։

Ախչկան վե կալաւ, տարաւ։ Գնացին, Թաքաւորի կշտին կաղնեցին թամաշա։

Տեհան մի սև ձիաւոր էն դհիցը դուս էկաւ. էկաւ. Թաքաւորի առջին կաղնեց. գլուխ տուեց, ասեց.—Թաքաւոր ապրած կենայ. կեթամ, ըսօր վերջի օրն ա ձիաւորի. հազար ձիաւորը մի՛ եան կաղնացրէ, ես մի՛ եան կաղնեմ. քու հազար ձիաւորի հետ հաղ անեմ ես, ես իմ ձին կը քշեմ ընդոնց մէջը, որին ըլլի պտի տամ. ընդոնք էլ իրաւունք ունեն որ ինձ տան։

Ասեց.—Իրաւունք ունես, գնա՛։

Ասեց.—Թաքաւոր ապրած, լաւ թամաշայ արա՛, տե՛ս, իրեք օրէն ետը, ես ու իմ նշանածն էլ քեզ ղօճաղ էնք։

Թաքաւորն ասեց.—Որ ինձ ղօճաղ ըլլես. ես էլ ինչ պարգև կտամ, գնա՛։

Ընկաւ էլ ձիաւորների մէջը խախալատակեց (մաղեց), մէկին

ալա չԹողաց, ամեքին մի թօփուզ տուեց. տալու բաշտան վեր էր քցում։ Սաղ ինչ ծառ թամաշաւոր կար, էն մէկլին ին թամաշայ անըմ. իրար միջին խօսում ին ախչկերքը կնանիքը։ էն ասըմ ըէ.
— Իմ մարդը ըլլի, էն ասըմ էր իմ մարդը ըլլի։

Թաքաւորի էրկու ախչկերքը ասին.—Մերը հալա մարդ ա. խօսըմ էնք, պա մեր քուրը օձ ա։

Ախչիկը ուզեցաւ ասեր էդ իմ մարդն ա. էլի հուպ տուեց իրան, չասեց։

Թաքաւորին մի ախչիկն ասեց.—էն օրուայ բօզ ձիաւորը իմ մարդն ըլլէր. էն օրուայ կարմիր ձիաւորն էլ էս քուրս մարդը ըլլէր. ըս օրուայ սև ձիաւորն էլ ըսրայ մարդը ըլլէր։

էն մէկ ախչիկն ասեց.—Ախչի. ըդենց խի՞ էս ասըմ, մեր քուրը սիրտը պղտորի. իրիկունը կեթանք, հալա մեր մարդկանց հետ խօսանք, ըստրան հըպա մի օձ ա. ո՞ւմ հետ պտի խօսայ։

Էդ ախչկայ սիրտը պատռեց, ասեց.—Ցողը ձեր գլխին ըլլի, ֆողը՞. էնդար ասեցիք, ես չեմ խօսո՞ւմ, բօզ ձիաւորն էլ ա մէկ, կարմիր ձիաւորն էլ ա մէկ, էդ սև ձիաւորն որ հաղում ա, էդ էլ ա մէկ. ընդար ասըմ էք «օձ, օձ.» էդ էն Օձ-Մայիլն ա, հա, ձեր ջանը դուս գայ. ֆողեմ ձեր գլուխը. իմ սիրտը պատռացրիք։

Օձ-Մայիլը ձին քշեց. էկաւ Թաքաւորի աղաքը կաղնեց, ասեց.
—Թաքաւո՛ր, խօստացայ իրեք օրէն յետը գայի քեղ պօճախ, էլ չե՛ս տեսնի ինձ, գնացի։ Պատճառը քու ախչկանից կիմանաս։

Ձին քշեց. գնաց Թաքաւորի ախչկան ասեց.—Էլ ինձ չես տեսնի, ես որ գնացի։

Մէկ էլ տեհան ձիու թօզն էրևաց. էլ ինքը չէրևաց։

Թաքաւորի ախչիկը գլխին ու ոտին տուեց, լաց էլաւ։

Ձիաւորները, թամաշաւորները բիրաշի ցվրուան, գնացին։

Թաքաւորը ախչկերքի հետ, իրա կնկայ հետ գնացին։

Ասեց.—Ախչի՛, արի՛, տեհնամ ինչ էս ասըմ։

Օձ-Մայիլն ինչ որ ախչկան պատմեր էր, ընենց էլ ախչիկ Թաքաւորին պատմեց. վերջի խօսքը ասեց. «իրեք օր ա մնացել, քառասուն օրը թամմի, որ թամմեց կը տանեմ Թաքաւորի մօտը . . .» ասեց. «իմ սըրը մի՛ առի,» ախչկերքը հետս ընկան, ասեցի սըրը։

Թաքաւորը ասեց.—Այ քու չլինքը կոտրուի. ըերանդ մի սաճաք էլ խփէիր, էլի՛. Ասեց.—Դէ, հաց պատրաստէք, ուտենք։

Էկաւ, տեհաւ հալիւորն ու պառաւը նստած էն։

Ասեց.—Պապի, Օձ-Մայիլը գնաց, չտեսա՞ր։

Ասեց.—Էկաւ ինձ ձէն տուեց, ասեց. «Պապի՛, մնաս բարի, ես էԹումեմ.» ասեց. ու գնաց։

Էդ ախչիկը թազաշան իրան ոտին գլխին տուեց ու լաց էլաւ։

Առաւօտը թեզ վեր կացաւ, գնաց դարբին ուստայ Մարգարի մօտը, ասեց.—Ուստայ Մարգար, ինձ համար մի ջուխտ երկաթե տրեխ շինայ, մի պողպատէ գաւազան շինայ, ինչ որ հախն ա, կտամ։

Ալպեալը փուքսը փչեց ու՛ շինեց։

Հագաւ տրեխները, գաւազանը առաւ ձեռը. գնաց, մի ձեռք էլ դարվիշի շոր առաւ, հագաւ. գնաց Թագաւորի պալատը, գլուխ տուեց. Թագաւորի աղաքին կաղնեց։

Թագաւորն ասեց.—Այ-հայ,. էդ ինչ կեյիմ էս մտե։

Ասեց.—Օձ-Մայիլն ինչ որ ասեր ա. ընենց էմ արե։

Թագաւորը, իրա կնիկը, երկու ախչիկը, ինչ իլաճ արեցին, չկարացին գլուխ հանի։

Գնաց, Թագաւորի ձեռը պաչեց. մօր ձեռն էլ պաչեց, քըւոր-տանց հետն էլ ձեռ բռնեց, ասեց.—Դէ, մնաք բարի, ես գնացի։

Թագաւորն ասեց.—Աստուած քու հետ, գնա։

Ընկաւ ճանապար էդ ախչիկը, գնաց։ Աշխարը ման էկաւ, չգտաւ. ինչ տեղ հարցրեց, սաղ տուող չէլաւ։

Գնաց, մի ախբըրի վրէն՝ նստեց, մի լաւ ջուր խմեց, պարկաւ ախբըրի ղրաղը քամակի վրայ, երեսը Թեքեց Աստուած վիրև, ասեց.—Աստուա՛ծ, իմ ֆօգին եաճ ա՛ռ, եա մի տեղ շանց տուր, ես ախ-չարքը ման գալով մեռայ, ըստիան տեղ չեմ կարայ էթայ։

Մէկ էլ տեհաւ, իրեք հատ ախչիկ կժերը ուսներին էկան, ջուրը լցրեցին ախբըրիցը. ջուր ուզեց, որից ուզեց, չտուին, ասե-ցին—Ցողեմ գլուխդ, մեր մօքոր տղէն ջուր ա ուզում, երվում ա. դու ջո՛ւր էս ուզըմ։

Էդ երկու ախչիկը վռազ-վռազ լցրեցին, գնացին։ Ցետոյ էն պուճուր ախչկանից ուզեց։ Ախչիկը կուժը լցրեց, տուեց. էն դար-վիշը առաւ, խմեց։ Ասեց. Ախչի, ես ջուր ուզեցի էն երկու ախչկա-նից, խի՛ իմ վրէն բարկացան։

Ասեց.—Թագաւորի ախչկայ չլինքը կտրուի, մեր մօքոր տղէն, Օձ-Մայիլը գնացեր էր, ախչիկը առեր էր. պայման էր դրեր, քա-ռասուն օր ըղըան ժամանակ ունէր. որ սրռը չասէր, քառասուն օրը չքամիմած ասեր ա .հըմի խռովեր ա, էկեր, ընկեր ա ըս տեղ, գչե՛ր, ցերեկ ասըմ ա «Նրվայ Թագաւորի ախչկայ սէրին». Հըմի մէրս կչո՛ւին կաղներ ա, գչեր, ցերեկ ջուը էնք ածում վրեն որ հո-վանայ. որ մեր մէկին առնի։

Դարվիշը ալպեալը իմացաւ որ իրա մարդն ա.—Ախչի՛, ասեց. ջուրը մէկ էլ տուր, խմեմ ու գնամ։

Առաւ, խմեց, մատանին քցեց կժի մէջը։

Ախչիկը ջուրը լցրեց ու տարաւ, տարաւ ածեց վրին։

Ախչկայ մէրը ախչկան վրին բարկացաւ. ասեց.—Լիրբ անզգամ, խի՛ ետացար էղքան։

Ասեց.—Մի դարվիշ կար, հէտը խօսացի, յետացայ։

Ջուրը աղջիկը որ ածեց վրին, ասեց.—Հովացայ-դինճացայ։

Մատանիքը ընկաւ աղաքը, վե կալաւ, դրեց մատը։

Օձ-Մայիլն ասեց.—Բերէք, իմ չորերը հագնեմ ու նստեմ. բօյ ա։ Շորերը հագաւ, նստեց։ Մօքիրը ախչկերքին ասեց.—Գնացէք, էն դարվիշին վե կալէք, բերէք։ Գնացին, բերեցին։

Մօքիրն որ տեհաւ դարվիշին, ասեց.—Լիրբ անզգամ. դարվիշի չոր հագեր էս որ չճանաչենք. էս ինչ օրն էս քցե իմ քուր տղին, էս իրեք տարի ա գչեր, ցերեկ ջուր ենք ածըմ վրին, հալա չհովանըմ, քե պէս անզգամի խաբեր. հըմի քեզ կտոր-կտոր կանեմ, որ ամեն կտորդ մի չօլ քցեմ, որ քեզ տեհաւ. Նոր հովացաւ։

Օձ-Մայիլն ասեց.—Մօքիր. ձեռ մի՛ տար, ես ըդըրան ճանապարհ կը քցեմ. դո՛րն էկեր ա, դէնը էթայ։

Ասեց.—Հալա դու ափսոս էս գալի որ քե էդ օրը քցեց, քու կաչին կը պոկեմ, քու կաչին՝ ճանապար էս քցում որ դու էթաս հետը, հասնես. ես պտի փչացնեմ, որ ըտուց ձեռ վե կալես։

Ասեց.—Դու գիտաս, մօքիր, էլ չեմ կարայ բան ասի։

Մօքիրն ասեց.—Ես ինչ կանեմ, կանեմ. չխօսաս էլ։

Ասեց.—Ախչի՛, մենք էթումենք բանջարի. էդ խնոցին արտըսնքով կը լցնես։ Ըդոնք վե կացան, գնացին բանջարի։

Էդ ախչիկը նստեց խնոցու մօտը։

Օձ-Մայիլն ասեց.—Հը՛ խի նստար ըդի։

Ասեց—Թանգե արե որ արտըսնքով լցնեմ։

Ասեց.—Կարա՞ս լցընի։ Ասեց.—Չէ՛։

Ասեց.—Մի քանի կուժ ջո՛ւր լցըրայ։

Բերեց ջուրը լցրեց լէքը.—Էրկու իրեք բուռ աղ քցայ մէջը։

Աղը քցեց։ Ասեց։—Արի՛, կչտիս նստի, խօսանք։

Էկաւ կչտին, նստեցին, խօսացին։

Ասեց.—Դու իմ սըռը խի՛ ասեցիր, որ ես էկայ, ընկայ ըստի. դու էլ չոլէչոլ ընկար։

Ասեց.—Բա մե՛նց պտի անես։

Ասեց.—Ինչ հնար անեմ. էն գիտայ։

Հենց դռնիցը մօքիրը մտաւ ներսև. ասեց.—Լիրբ անզգամ. խնոցին լցրեր էս, որ նստեր էս, խօսըմ էս։ Ասեց.—Լցրեր էմ։

Գնաց, խնոցին տեհաւ լիքն ա, ձեռով ջուրը տարաւ բերանը. տեհաւ աղի ա, ասեց.—Այ քու սարվացընողի չլինքը կոտրուի. ինչ անենք կը սարվացնի քեզ։ Էլ սրան իլաճ չկայ, դրկեմ քուրս տունը, ընտի կը վերջանայ, չկարայ էլ գայ։

Առեց.—Ախչի՛, կերթաս էն սարի քամակը, կասես. «Մօքի՛ր, մօքիրը առաֆատէն ուզում ա որ հաց թխենք.» կը վե կալես. կգնաս։ Դե, մենք էթըմենք ցախ բերենք։ Ըղոնք գնացին ցախ բերելու։

Օձ—Մայրին առեց.—Ախչի։

Կերթաս, աղաքդ մի ջուր կգայ, չնա մուռտար ջուր ա. կը վեր կալես։ մի բուռ կը խմես, կասես. Օխա՛յ, ի՜նչ անմահական ջո՛ւր ա։ Ջուրը ճանփայ կտայ, անց կը կենաս։ Կերթաս կը տեհնաս փուշ ու տատաշ բռաստ էկաւ. մի հատ կը վե կալես։ փոտ կը քաշես, կասես.—Էս ինչ անմահական ծաղիկ ա. էդ էլ ճանփայ կտայ, կանցնես կերթաս։ Կերթաս, կը տեհնաս մի գէլ խոտն աղաքին ա, մի ղոչ, մի դմակ աղաքին ա. խոտը կը վե կալես, կը քցես ղոչի աղաքը, դմակը կը քցես գիլի աղաքը. կերթաս, կը տեհնաս մի դուռ յետ արած ա, բաց կանես. կերթաս, կը տեհնաս մի դուռ էլ բաց ա, յետ կանես։ Ընտե էլ մի դուռ կայ. կը մտնես ներսև. առաֆատէն դռան գլխին կախ տուած ա. կասես «մօքի՛ր, մօքիրն առաֆատէն ուզում ա. կը վե կալես, կը փախնես. մօքիրը ձէն տայ, չես կաղնի։

Ախչիկը վեր կենայ, կերթայ. Օձ—Մայրի ի ասածի պէս կանի. դուռը կը մտնի, կասի, «Մօքի՛ր, առաֆատէն մօքիրն ուզում ա։ Կասի.—Մօքիրն քե ղուրբան, արի՛, նստի ըստե, առաֆատէն տամ։

Դռան գլխիցը կը վե կալի ախչիկն, կը փախնի։ Էդ մօքիրն կընկնի քամակը, կասի.—Այ յետ արած դուռ, բռնայ ըղըրան.

Առեց,—Եավաշ, մի քիչ բաց ըլեմ, դինճանամ, նոր կընկնեմ քամակը, բռնեցի, բռնեցի. չբռնեցի, իրա բաղդը։

Առեց.—Բաց դուռ, դու բռնայ։

Առեց.—Եավաշ, մի քիչ յետ ըլեմ, դինճանամ. բռնեցի, բըռնեցի. չբռնեցի, իրա բաղդը։ Առեց.—Ղոչ, դու բռնայ։

Առեց.—Սոված էմ, եավաշ. մի քիչ խոտ ուտեմ, կշտանամ, կընկնեմ քամակը, բռնեցի, բռնեցի. չբռնեցի, իրա բաղդը։

Առեց.—Գէլ, դու բռնայ։

Առեց.—Եավաշ, մի քիչ դմակ ուտեմ, կշտանամ. նոր ընկնեմ քամակը, բռնեցի, բռնեցի. չբռնեցի, իրա բաղդը։

Առեց.—Փուշ ու տատաշ դու բռնայ։

Առեց.—Եավաշ, մի քիչ անմահական ծաղիկ ըլեմ, բռնուաւ, բռնուաւ. չբռնուաւ, իրա բաղդը։

Առեց.—Փիս-մուռտար ջուր, դու բռնայ։

Առեց,—Եավաշ. մի քիչ ըլեմ անմահական ջուր, բռնուաւ, բռնուաւ. չբռնուաւ, իրա բաղդը։

Պառաւը էկաւ, չքի ղրաղը կաղնեց.—Դնա՛, առեց. իմ ձեռիցը չէիր պրծնիր դու, համա քու սաղվացնողի չինքը կտրուի, թէ չէ՛ քեզ մի լա՛ւ խորոված կանէի, կուտէի։ Մօքիրը յետ դառաւ։

Առաջատէն ախչիկը բերեց Օձ-Մայիլի մօտը։

Օձ-Մայիլն ասեց.—Մ՛ոնց էր։

Ասեց.—Բու ատամները որ չանէիր, չէի կարայ գայ։

Ասեց.—Առաջատէն դէր տաշտի մօտը, արի, խօսանք։

Մօքիրը մտաւ Նեքսև, ասեց.—Ախչի՛, բերեր էս։

Ասեց.—Բերեր էմ։

Ասեց.—Ի՛նչ իլաճ անենք. կը սարվացնի։

Բռաժց, իրեք ախչիկն էլ էկան, մտան Նեքսև։

—Ախչկե՛րք, ասեց իրա ախչկերքին, իմ քուր տղին էն օրը քցեց. հալա ըղուց չի հովանում, էթանք մեշեն, ամենքս մի սէլ ցախ ղլակենք, գանք. փուռ կապենք, վառենք. էս ախչկայ ոտ ու ձեռ կապենք, քցենք կրակի մէջը, որ ֆիլն էլ չերևայ. որ իրա աչքովը տենայ, նոր հովանայ։ Պարաննները վե կալան, գնացին մեշեն։

Օձ-Մայիլն ասեց.—Ախչի՛, ցախն որ բերեն, դու ի՛նչ պտի անես։ Ասեց.—Չեմ գիտում, ինչ պտի անեմ։

Ասեց.—իլաճ չկայ, մենք պտի փախնենք որ պրծնենք։

Սիպտակ ձիու պոչի մազը տուեց կրակին, ձին էկաւ. սիպտակ չորերը հագաւ. քօփուզն առաւ ձեռն ու ասեց —Ախչի, մի կտոր աղ վեր կալ, մի բուրբուլկայ ջուր վե կալան, մի սանտր վե կալան։ Ախչկան քաշեց քարֆը, ձիու գլուխը Թողաց. քօզն էրևաց, էլ ինքը չէրևաց։Մօքիրը ցախը ղլակնիրին մտաւ Նեքսև, տեհաւ, ճա քաս վար ճա համամ։ Պուճուր ախչկան կանչեց, ասեց. Ախչի՛, կընկնես քամակը, կը բունես, ո՛ր տի գԹնես, կը բերես իմ մօտը. ես ըղըրա միսը ֆելփեքինով կը պոկեմ։ Ախչիկն ընկաւ քամակը։

Օձ-Մայիլն ասեց.—Թաքաւորի ախչիկ, յետ քամաշայ արա, տես. հօ մարդ չի՛ գալի։

Յետ քամաշայ արեց, ասեց.—Մի մարդ ա գալի որ քամու պէս ա գալի։ Ասեց.—Սանտրը քցայ։

Սանտրը քցեց. էլաւ մի բֆայ մեշայ։

Էկաւ, մեշի մէջ մտաւ,. ըղըրա ջանը նղնղեց։

Ասեց.—Թաքաւորի ախչիկ, յետ քամաշայ արա, տե՛ս, ի՛նչ ա։

Ասեց.—Մեշիցը դուս էկաւ։ Ասեց.—Աղաքարը քցայ։

Աղաքարը քցեց, էլաւ մի բֆայ աղի սար, ըղըրա բարալու ջանը մրմռաց։

Ասեց.—Ախչի՛, մի յետ քամաշայ արա, տե՛ս, ի՛նչ էլաւ։

Ասեց.—Աղաքարիցն էլ դուս էկաւ։

Ասեց.—Ջուրը քցեց, էլաւ մի ահագին ծով։

Ասեց.—Յետ քամաշայ արա, տես ի՛նչ էլաւ։

Ասեց.—Ծովիցը. հրեն, դուս էկաւ։

Ասեց.—Էլ իլաճ չըլի, վէր արի։

Վեր էկան, ինքը էլաւ մի հալիւար մարդ, ձին չինեց սև հաւ֊վող, կնիկը չինեց սիպտակ հավող, ինքն էլ կչտին նստեց։

Էկաւ, ասեց.—Հալիւոր, մի բօզ ձիաւոր, մի ախչիկ բարգին, տեսա՞ր։

Ասեց.—Սև հավողի գրուանքէն էլ իրեք կապէկ, սիպտակն էլ։

Ասեց.—Ես բան էմ ասըմ, դու ի՞նչ էս ասըմ։

Ասեց.—Էդ ա, պակաս չենք տայ։

Ախչիկը թքեց ու յետ դառաւ, էկաւ տուն։

Ըղոնք նիլան, փախան։

Մէրն ասեց.—Ախչի՛կ, ի՞նչ արեցիր։

Ասեց.—Մարդ չպատահեց, մի հալիւոր պատահեց. հավող էր ծախում, ասեցի.—«Հալիւոր, մի ըսենց մարդ տեհա՞ր, թէ չտեհար, ասեց. «Սև հավողն էլ իրեք կապեկ, . .» ես էլ յետ դառայ էկայ։

Մէրն ասեց.—Եան սեը պտի առնէր, եան սիպտակը. ըղըրա սէրը բօզմիշ կըլլէր. կգար, ձեր մէկին կառնէր։

Միջնեկ ախչիկն ասեց.—կերթամ, եան սեը կառնեմ, եան սիպ֊տակը։ Ընկաւ քամակը։ Ասեց. Օձ-Մայիլ—Թաքաւորի ախչիկ, բամա֊ցայ արա՛ սեւ, մարդ, մուրթ հօ չի՛ գալի։

Թամամայ արեց, ասեց.—Մէկը դումանի պէս գալիս ա։

Վեր կալաւ, աղաք սանդրը քցեց. տեհաւ դուս էկաւ, աղը քցեց. տեհաւ աղիցն էլ դուս էկաւ, ջուրը քցեց. ջրիցն էլ դուս էկաւ, ձիուց վեր էկան. ինքը էլաւ բօստանճի, կնիկը չինեց դուրբմայ, ձին չինէց եմիշ։ Աղջիկը էկաւ, հասաւ, ասեց.—Բօստանճի աղբէր. մի ըսենց բօզ ձիաւոր, մի աղջիկ էլ բարգին տեհա՞ր։

Ասեց.—դուրբմէն էլ մի սաճի. եմիշն էլ, որից ասըմ էս, առ։

Ասեց.—Ես բան եմ հարձնում. դու ի՞նչ էս ասըմ։

Ասեց.—Գինը էդ ա, պակաս չեմ տայ։ Թքեց ու յետ դառաւ։

Օձ-Մայիլը վեր կացաւ. ձիան սաղացրեց. կնկան էլ սաղացրեց,

Բօզ ձին պեզարեց, պրախ տուեց. կարմիր ձիու մազը կրակին տուեց։ Կարմիր ձին էկաւ, կարմիր չորերը հաքաւ, նիլաւ ձիու վրէն, քաշեց բարգին ու փախաւ։

Էկաւ աղջիկը, տուն հասաւ, մէրը հարցրեց.—Ի՞նչ էլաւ, չկա֊րացի՞ր բռնիլ։Ասեց.—Մի բօստանճի, պատահեց, ասեցի.—Բօստանճի մի ըսենց ձիաւոր. աղջիկ բարգին տեհա՞ր, ասեց—«Եմիշն էլ մի չա՞հի՞»։

Ասեց.—Ա՛յ քու վիզը կոտրուի, եան դուրբմէն առնէիր, եան եմիշը, ընդոր սէրը բօզմիշ կըլլէր, կըգա՛ր, ձեր մէկին կառնէր.

Մեծն ասեց.—Ես կերթամ, եան եմիշ կառնեմ, եան դուրբմէն։

Աղջի՛, ասեց.—Էլ բօզ ձիաւոր չես հարցնի, կարմիր ձին ու նի-լեր։ Աղջիկը ընկաւ քամակը։

Ասեց.—Թագաւորի աղջիկ, յետ թամաշայ արա, տես։

Ասեց.—Մէկը գալիս ա, դումանի պէս։

Ասեց.—Սանտր քցայ, քցեց. էլաւ մեշայ, անհաւ մէշից դուս էկաւ, աղը քցից, էլաւ աղի սար, աղիցն էլ դուս էկաւ, ջուրը քցից, էլաւ Եփայ ծով, ծովիցն էլ դուս էկաւ։

Այպեալ ձիուցը վեր էկաւ, ինքն էլաւ համամչի, ձին շինեց սառը ջուր, կնիկը շինեց տաք ջուր։

Էկաւ, ասեց.—Համամչի. մի ըսենց կարմիր ձիաւոր անց կա-ցաւ, մի ախչիկ թարքին, տեհար, թէ չտեհար։

Ասեց.—Տաք ջուրն էլ էրկու ճամի լեղանալը, սառն էլ, որտի լողանըմ էս, լեղացի։

Ասեց.—Ես ինչ էմ ասըմ, դու ինչ էս ասըմ։

Ասեց.—Ըդենց ա, էրկու ճամուց պակաս չենք առնի։

Թքեց ու էդ էլ յետ դառաւ։

Ձին սաղացրեց, կնիկն էլ սաղացրեց։

Սև ձիու պոչի մազը կրակեց։ Սև ձին էկաւ, սև չորսը հա-գաւ, ախչկան քաշեց թարքն ու փախաւ։

—Ախչիկը գնաց, հասաւ տուն։

Մէրն ասեց.—Ախչի՛, ինչ արիցիր։

—Գնացի, տեհայ մի համամչի, ասեցի «համամչի, մի ըսենց կար-միր ձիաւոր, մի ախչիկ թարքին տեհա՞ր», Համամչին ասեց. «տաք ջուրն էլ էրկու ճամի, սառն էլ, որտի լողանըմէս լեղացի»։

Ասեց.—Ֆողերը գլխիդ, եա սառը ջրին լեղանայիր. եան տաք. ըդըրա սերը փօզմից կըլլէր, կգար, ձեր մէկին կառնէր, մեր տան տեղի վրայ կը նստէր, հըմի սև ձին ա նիլէր, որ մի ամսուայ ճա-նապարհը մի՛ օրն ա էթում, իմ ձեռիցը չկարայ պրծընի, ինչ հնար անի, ես գիտամ, դե, մնացէք տանը. ես գնացի։

Օձ-Մայիլն ասեց.—Մի թամաշայ արա յետ։

Ասեց.—Մէկը գալիս ա, ըսենց ա գալի, որ քամուցը ճանփի քարերը դես ու դեն ա փախնըմ։

Ասեց.—Ինչ հնարք անենք. մօքիրը գիտայ. ըսդըրան մնաց աղաչանք անիլը։

Ձիուցը վեր էկաւ. ձին շինեց վարդի փուշ, իրա ղ'րաղները բոլորիկ տնկեց. ախչկան շինեց մի հատ բարալիկ ճպոտ, տնկեց մէջ տեղը, ինքն էլաւ Օձ. ըսենց փաթըթուեց ճպոտին, որ մի ասղի ծէրի ղըդար բաց չի մնայ. լեզուն հանեց ու ընկաւ աղաչանք։

Մօքիրն կրակի՛ պէս էկաւ, հասաւ, ասեց.—Հը, Օձ-Մայիլ, քու իխտիյարն էդ էր, էն ղդար որ քու վրայ չարչարուեցինք, դու թո-

ղեցիր, էկար, մի սաղի ծէրի ղօար չանց առուր, տես, միսը պռկում էմ։

Ասեց. - Մօքի՛ր, թէ ինձ սիրում էս. ետ դառ. գնա՛.

Ասեց.—Ի՛նչ անեմ, որտի տամ, քեզ կը դպչի, ըղըրան չի դիպչում, իմ ջանն ա, մո՛նց տամ իմ ջանին։

Ասեց.—Վերէք, գնացէք, Աստուած ձեզ հետ։

Օձ-Մայրին ասեց.—Մօքի՛ր, գնա՛, հեռուացիր մենք կե-թանք։

Ասեց.—Հեռուանամ, ո՛ւր պտի պրծնէք իմ ձեռիցը, քու գլուխը վկայ՝ ձեզ բան չեմ անի. ձեզ պտի օրհնեմ, էթաք։

Նոր սաղացան, մօքիրն էկաւ, Օձ-Մայրի էրեսն էլ պաչեց, ախչկայ էրեսն էլ. յետ դառաւ։

Իրանք ձին նիլան. գնացին, իրանց ծակի դէմը կաղնեցին։

Օձ-Մայրը ձէն տուեց.—Պզտիկ խանըմ, դարվազեն բաց, գանք ներս։ Դարվազեն բաց արեց, մտան ներս։

Ձին քաշեցին. տեհան, ընը՛, էն ձիան էլ ըղի կապած ա։

Պզտիկ խանըմ Օձ-Մայրին պաչեց, եմակները սարքեց։

Նստան ուտել խմելու հետ, ասեց.—Պզտիկ խանում, էս ինչ թոփերու կուկուոց ա գալի։ Ասեց.—Թաքաւորի ախչիկը ըստի ներստած ա. ասեմ, լա՛ց կըլլի. Ասլան Թաքաւոր. Արզիման Թաքաւորի հետ կռիւ բաց արեց, բիրասի քաղաքները առաւ. փեսէք եարալու վեր էն ընկե, Աստուած ա մնացեր, եա մեռնէն, եա ապրեն. հմի էլ քաղաքի չորս բոլորը կտրեր ա, իրեք օր ա թոփ ա քցըմ. քիչ ա մնըմ էս քաղաքն էլ առնի, որ առաւ. թաքաւորութինը կոչնչանայ։

Պզտիկ խանումը ու Օձ-Մայրը նիլան ձիանք, գնացին մտան էն ղօշունի մէջ, ըննեց ջարդեցին որ խապար տանող էլ չէլաւ, իրանց երկրից հանեցին. տարան, Արզըման Թաքաւորի քաղաքը մտան. Թաքաւորին բռնեցին. թուրը դրեցին չլինքին. խօսք տուեց, տարին քառսուն միլիոն փող տայ։ Օձ-Մայրի գնաց, Ասլան Թաքաւորի պալատը: Տեհան Թաքաւորը, քիթ բերնի վրայ լաց ա ըլըմ։

—Աչքդ լիս, ասեց։

Ասլան Թաքաւոր. վե կացաւ, տղի ճակատը պաչեց. Օձ-գնաց, փեսէրը լզեց, էլաւ մորէ մէկ։ Հարսանիքը դրեց . . .



44

# ՏԱՆ ԴՈՎԼԱԹԸ

Վաղարշապատի բարբառով *)

Մէկ մարդ կըլնի ժամանակով, շատ հարուստ կըլնի. ըդըրա տղէքը աղբրտանքը տան մէջը ղալմաղալ արին. իրար չլսեցին. ճեասիպութունը յաղթեց, ցրուան. ամենը մի տեղ ճօֆար ելան. Ընդըրանց տան մեծն էլ գլուխ առաւ ու գնաց, մի գեղի մէջ մտաւ, էլաւ ջաղացպան. Ըդըրա ջաղացները բարս բանեցին. Ջաղացատէրը էկաւ, ասեց.—Իմ ջաղացները չարի հըմի չիտակ բանըմին. հըմի դու էկար, խարար արիր. Դուս արեց ըդըրան, նոր ջաղացները չտկուեցին.

Էս մարդը գնաց էլաւ բաղվանչի. էկաւ պտղի վախտը, բարը բիրասի Թափաւ. Բաղի տէրը էկաւ, ասեց.—Դու ինչ մարդ էս. տարդ կտրուէր, չգայիր, իմ տունն էլ, քու տունն էլ քանդեցիր. Բռնեց, դուս արեց. հախ էլ չտուեց.

Աշուն էկաւ. ծրտի մտնում էր, հօֆար չէին բռնում, ասումին. —Դու էն մարդն իս, ջաղացը գնացիր, խէր չտուիր. բաղը գնացիր, խէր չտուիր. Շատ պտըտեց, մի հալիւոր մարդ տեհաւ. ընկաւ ըդըրա ոտքը, ասեց.—Էս ձմեռ փոր հացի ինձ պահա́, ձմեռ ա, չեմ կարում տեղ էթամ. Էն մարդ մե կալաւ, տարաւ իրա տունը, ասեց.—Էս դաւարը պահա չաքի զատիկ, քե փող էլ կտամ, դու մեղք էս.

Իրեք ամիս ըդըրա դաւարը պահեց, մտաւ մեծ պասը. Ըդըրան մի քած ունէր, ծնում էր, ասեց.—Չը քնես, էս գշեր քածին մուղաք կաց. ծնելու վախտը քածը չհեղդուի. Մուղաք կացաւ, բիրսան

---

* Պատմած է Վաղարշապատցի Առաքէլ Ղուկասեանը:

քունը տարել էր, զարթնեց, տեհաւ քածը ծնել ա. մի հալիւոր մարդ կչտին կաղներ ա, ձագին ծըծացընում ա։ Ասեց.—Վա՜յ քունս տարեր ա, աղէս էկեր, ձագին ծըծացընում ա. հըմի ինձ հետ կը կռուի։ Գնաց, տեհաւ իրա աղէն չի, ասեց.—Պապի, դու ինչ մարդ էս։

Ասեց.—Դու ինձ չես ճանաչի. ես որ չհասնէի, աղէն քեզ հետ կը կռուէր, քեզ էլ դուս կանէր, ես իրանց դաւարը, իրանց ամեն բանը ինչ նեղ տեղ ըլլի, կը հասնեմ, ամենայն փորձանքից կազատեմ. ես էս տան դօլվաբն էմ։

Ասեց.—Պապի՛, վիրև Աստուած, ներքև դու, ես էլ էմ հարուստ մարդ էլե. հըմի ճեասիպացեր էմ, էս օրն էմ ընկե, որտե էթում եմ, իմ բանը չի յաջողում. իմ տունն էլ ա դօլվաբ էլե, ճալպաթ խռովել ա, գնացել ա, հըմի դու տեղը գիտաս, ինձ տեղն ասա. ես էթամ, բերեմ.

Ասեց.—Քու դօլվաբը խռովեր ա, գնացեր ա Ալակեազու սարը. մտել ա, ձորի մէջը զաղա կայ, զաղի մէջը պառկեր ա. ճրճի վրէն մի բիզ բօզ ա դրե. էթաս, էն բօզը թափ տաս. կընկնես ապաչանք, կասես.—Վե՛ր, էթանք։ Ինչ դsաr որ կը բարկանայ, կը թքի, կը մըրրի քեզ, դու ապաչանք կընկնես. ինչ որ կտայ քեզ, չես ասի «քիչ ա,» կընկնես ճանապար, կգաս։ Հալիւոր ասեց, էլ չէրևաց։

Ինքը գնաց, պառկաւ իրա տեղին, լիսը բացուեց, աղէն եկաւ, մտաւ գոմը, ասեց.—Այ որդի՛, քածը ծնե՞ր ա։

Ասեց.—Ծներ ա։ Գնաց, տեհաւ, ասեց.—Զօրանա՜ս։

Հանեց ջեպից մի մաճեք փող բաղշեց, ասեց,—Աղա, ես պտի էթամ, քեզանից չնորհակալ էմ։

—Որդի՛, ասեց, մի՛ էթայ, կա՜ց. զատկից յետը գնա։

—Շնորհակալ էմ, ասեց. ինձ ճանապար քցայ։

Հանեց հինգ մաճեք փող տուեց, հագցրեց. մի խուրճին էլ հաց տուեց, քցեց թևը, ասեց.—Բարի ճանապար ըլլի, գնա՛։ Էդ մարդը վե կացաւ. Ալակեազու սարը դէմ արեց աղաքը, գնաց։ Հասաւ սարին, մտաւ ձորի մէջը, ընկաւ զաղէքը ման գալու. գնաց էն զաղէն-էն զաղէն։ գնաց մէկ զաղէմ էլ, տեհաւ, հրե՜ս, էն զաղի մէջ պարկած ա, մօտացաւ, արեն էլ մտաւ։

Գնաց, տեհաւ ճրճի վրայ մի թիզ ֆող ա դրե. ֆողը թափ տուեց. դօլվաբ զարթնեց, թամաշա արեց էրեսին, ասեց.—Դէ՛։ կորի՛, լիրը. անճախ ձեր էրեսից փախեր էմ, պրծե, էլ էկար, գթա՛ր։

Ասեց.—Պապի՛, վիրև Աստուած, ներքև դու, պտի դաս, էրթանք։ Անկարելի ա, քե պտի տանեմ։

Ասեց.—Շատ մի խօսա՛, մութն ա. պարկի, քնի, առաւօտը

վեր կաց, գնա՛, Պարկեց, քնեց. լիսը բացուեց։ Էլ ընկաւ աղաչանք.
—Քեզ պտի տանեմ, ասեց։

Ասեց.—Էլ չեմ գար. ձեր ղալմաղալից, ձեր ուշունցիցը աճճախ-աճճախ պրծել էմ. հըմի մոնց որ էկել էս, դըվո՛րն էկել էս, էլի գենը գնա՛։

Ասեց.—Իլաճ չկայ, քե պտի տանեմ, սոված կոտորուանք մենք. մեղայ կգանք. էլ չենք անի։

Ասեց.—Որ շատ աղաչըմ էս, առ էս էրկու պոպոկն ու գնա, ես կըգամ։ Հենց առաւ ու էկաւ. էկաւ մի գեղի դրաղը դուս էկաւ։ Տեհաւ էրկու տղա իրար հետ կռւում էն. գնաց, մօտացաւ. ասեց.
—Այ որդի՛, խի՛ էք կռւում։

Ասեց։—Էս քարը ջրի միջիցն էնք գթե, կռւում ենք. ես ասում էմ իմն ա, էն ասըմ ա, իմն ա։

Ասեց.—Բերէք, տենամ էդ քարը։ Քարը տուին ըդրան։

Ասեց.—Եավաշ, մի պոպոկ քե՛ տամ, մի պոպոկ ըդրան. հըմի լաւ էլա՛ւ։ Երեխէք ուրախացան։

Էդ քարը դրեց ջեպը, էկաւ տունը. տեհաւ տանը մթանը նըստել էն, ճրագլիս էլ չկայ տանը. էդ քարը հանեց ճեպիցը, դրեց պատուհանը, ճրագի պէս լիս տուեց տան մէջ։ Ասեց.—Էս ինչ լաւ ա, մեզ ճրագ ա ճազիր։

Հաց-մաց առաւ, նստան, ուտումին։

Աղբըրտանցը, տղէքին սկսեց խըրատ տալը. Ասեց.—Մի ժամանակ մտներդ կգա՞ որ մեր դօլվաթը յըմենից շատ էր, մենք որ սկսեցինք ղալմաղալ անիլը. իրար ճուճաքութուն որ արեցինք, իրար չլսեցինք, ընկանք էս օրը. հըմի ձեզանից խնդրումեմ. մեր բերնից ուշունց, ղալմաղալ, բան դուս չգայ. Աստուած էլ էն դօլվաթը մեզ կտայ։

Ասեցին.—Մոնց որ ասես, կը հնազանդենք քեզ։

Էդ քաղաքի դրաղը էկաւ մի բեզրկեաճ վեր էկաւ. էդ բեզըրկեաճ գչերը տեհաւ ամենի ճրագը անցաւ, էդ մէկի ճրագը չանցաւ։ Լիսը բացուեց, ասեց.—Ես պտի էթամ էս տունը, տենամ ինչ քավուր տուն ա։

Գնաց, տեհաւ չորս՞պատն ա, զաթ չկայ. մի քար պատուհանում վառւում ա, ասեց.—Աղբէր. էս քարը չէք ծախի։ Ասեց.—Չէ՛, ծախենք, ինչ անենք. մենք ճրագլիս չունենք։

Ասեց.—Էն ցար փող կտամ, ճրագլիս էլ կառնէք, ամեն բան էլ կառնէք.—Ասեց.—Ինչ պտի տաս, որ ծախեմ։

Ասեց.—Հազար մաճ!.թ կտամ, որ ծախես։

Էդ մարդ իմացաւ բեզրկեաճ ըդրա վրայ ծիծաղում ա, ասեց.
—Իմ վրայ ծիծաղո՛ւմ էս։

Բեզրկեան իմացաւ որ քիչ ա տալիս, ընդդրան տուում ա «իմ վրայ ծիծաղում էս,» ասեց.—Էրկու հազար մանէթ կտամ։

—Իմ վրայ մի՛ ծիծաղի, ասեց.

Ասեց.—Խի՞ եմ ծիծաղում. երեք հազար մանէթ կտամ։ Վերջը շատ խօսալ չըմ գիտայ, հինգ հազար մանէթ կտամ. տուր, ես էթումեմ։ Ասեց.—Տուր։

Հանեց հինգ հազար մանէթ տուեց, ասեց.—Ա՛յ մարդ, դու ինձ շատ դիր էկար. լաւ մարդ էս էրևում, մի բան ասեմ, ինձ կը լսե՞ս։

Ասեց.—Ասա՛, տեհնաք։

Ասեց.—Ես, դու աղբէրանանք, պայման տանք, պայման առնենք. ես մեռայ քեզ, իմ մալը քեզ, դու՛ մեռար, քու մալը ինձ։

Բեզրկեան առաւ քարն ու գնաց։

Էդ մարդ վե կացաւ, հինգ հազար մանէթ ապրանք առաւ. իրա սէլը, դաւարը, գուլթանը, լցեց տանը։

Բեզրկեանն էլ վե կացաւ, գնաց պըտըտեց էրկու տարի, քարը ծախեց վացցուն հազար մանէթի. էկաւ էդ քաղաքի դռաղը վե էկաւ, ասեց—Էթամ, էն մարդուն ասեմ «քու քարը վացցուն հազար մանէթի ծախեցի». որ էն մարդի սիրտը պատռի, մեռնի. էն փարէն էլ մնայ ինձ։

Էկաւ, մտաւ տուն.—Հը՛, աղբէր, մոնց ես. ասեց։

Ասեց.—Փառք Աստըծու, ամեն բանս ցզուեր ա։

—Դա քու էն տուած քարը չասեցիր, ընչի՞ ես ծախեր։

Ասեց.—Ընչի էս ծախե։

Ասեց.—Վացցուն հազար մանէթի։

Ասեց.—Ը՛, քու տունը չքանդուի. ես էն էրկու պօպօկի էի առե։

Բազրկեան էրկու ձեռքով իրան գլխուն տուեց, «վացցուն հազար մանէթի քանն էլ էրկու պօպօկի առնեն,» ասեց, ու սիրտը ճաքուեց, մեռաւ։

Էս մարդը մոնց որ պայման էն դրե, վեր կացաւ, գնաց ընդրա ապրանքն էլ քաղաքի դռաղիցը բերեց, լցրեց իրա տունը։

Առաջուայ դօլվաթիցը ցահա շատ էլաւ։



# 45

# ԴԵՐՁԻԿԻ ԱՂՋԻԿ

(Վաղարշապատի բարբառով *)

Ժամանակով ըլլում ա մի հատ դերձիկ, դրան աչքի սև ու սըւտակ մի հատ ախչիկ ա ունենում։ Էդ դերձիկը իրա ախչիկը տանըմ ա մի հատ օղուլ ուշախի մօտ ձեռագործ սովորի։

Շատ ժամանակ էդ ախչիկ գնում ա կար անելու։

Էդ ուսթի տան դէմ ու դէմին Թաքաւորի պալատ ա ըլլում. էդ Թաքաւորին մի հատ տղայ ունենում. էդ տղէն օրը չորս իրիկուն բալկոնումը բոլթայա տալի, որ էդ ախչկայ էրեսը տեսնայ, կամ խօսայ։

Ախչիկը իրա գլուխը կախ ա, կարում ա. մտիկ չի անում Թաքաւորի տղին,

Թաքաւորի տղէն ճարահատեալ ուզում ա խօսացնի, ասըմ ա վերևիցը.—Դերձկի ախչիկ, չան ախչիկ, Թակալի կութը քանի՞ ա։ Ախչիկը չի խօսում։

Թաքաւորի տղէն իրեք անգամ էդ խօսքը ասըմ ա։

Ախչիկը իրա գլուխը քաշ արած՝ ասըմ ա.—Թաքաւորի տղա, չան տղա, էրկնքի աստղերն քանի՞ ա։

Ախչիկը գլուխը քաշ արած. միրև չի քամաշ անում, ասըմ ա էդ խօսքը իրեք անգամ։

Միւս օրը Թաքաւորի տղէն չատ ա մտածըմ. որ ախչկան խաղէ անի, սրտի հայիֆը հանի։ Կանչըմ ա ախչկայ ուսթին, ասըմ. —Մայրիկ ջան, ինչ ուզում էս կտամ. ինձ պտի տանես քու աշակերտի մօտ,՝ ես պտի պաչեմ նրան։

Պառաւ ասըմ ա.—Շատ լաւ. Թաքաւորի տղա, գըլխիդ արևիդ ղուրբանն։ Միւս օրը պատրաստում ա մի հատ մեծ ղութիկ իրա-

* Գրառած է Եփրեմ Վ.ռաակեան:

տանը. Թաքաւորի տղին Թաքուն կանչում ա, ասըմ.—Բալա ջան, գլխիդ, արևիդ ղուրբան, արի, մտի անտուկը։

Թաքաւորի տղէն մտնում ա .վրէն չորեքով ծածկըմ ա։

Պառաւը ախչկան բանդա անըմ ա.—Բալա ջան, տուն էԹա-լուս ձեռացագործը կը դնես մեծ ղուբին։

Ախչիկը, «լաւ», ասըմ ա, ձեռացագործը դնում ա ղուբին։

Դնելու ժամանակ Թաքաւորի տղէն հասնըմ՝ ախչկան պաչըմ ա։

Ախչիկը սուս ու փուս, մէկի էլ բան չի ասըմ, գնըմ տուն։

Մէկ-էրկու օր չի գնում ուստի տունը. ղաստինայ հիւանդ ա պարկըմ, ասըմ ա.—Ա՛, մոնց անեմ, իմ ինատը հանեմ։

Հէրն ու մէրը տեսնըմ էն չատ մտածըմ ա, ասըմ էն.—Բալա ջան, ինչ էս մտածըմ. ինչ ա սիրտդ ուզում. առնեմ, կարեմ։

Ախչիկ ասըմ ա.—Հայրիկ ջան, ինձ համար մի հատ բռատոնց կը կարես. էնպէս կը կարես որ, մենակ աչկերս էրևայ միջին, Թե-ւերը Թեպրներով կը չինես հրեշտակի ձևով. էդ բռատոնցի բոլորը պոծոծ կը չարես, որ մի ասեղի տեղ բաց չըլլի։

Հէրը կպատրաստի, կը բերի, կասի.—Այ որդի՛, մի հագի, էս զալըմը ման արի, աչքս տեսնայ։

Ախջիկը կը հագնի, իրան մի կը Թափահարի. կը տեսնայ լաւ հրեշտակի ձևի ա էլե. իրան ձեռնտու ա, կասի.—ԷԹում էմ ուստիս տունը. էս գշեր չեմ գայ։

Ախչիկը կեԹայ, իրա ուստին կասի.—Հէրս, մէրս տեղ էն գնացեր, գշերս էս տեղ պտի մնամ։

Կասի.—Որդի՛, լաւ, մնում էս, մնայ. ինչ անեմ։

Կգայ իրիկուն, հացից վերջանալէն յետոյ ախչիկը Թաքուն կը նիլնի Թաքաւորի տղի ծառի մօտը, կասի.—Այ տղա՛, էս գշեր Թա-քաւորի տղէն ինձ ուզեր ա. ես Թաքուն պտի էԹամ մօտը, դուռը բաց. դու գնա՛, քնի. եԹէ ուրիշի ասես, առաւօտուն Թաքաւորի տղէն քեզ ճեալլա կանի։

Բոլորը քնելուց յետոյ ախչիկը իրա բազա ասպապը վե կա-լաւ, տարաւ. Թաքաւորի տղի ճաշըմը հագաւ, մտաւ Թաքաւորի տղի սենեակը. կաղնից, իրան մի Թափահարեց, զընզընկոցը ընկաւ պալատը։

Թաքաւորի տղէն աչկերը բաց արեց, տեհաւ մի այլակերպ բան ա կաղնած, ասեց.—Հը՝, ով ես. ինչ էս ուզում։

Ասեց.—Ես Գաբրէլ հրեշտակն էմ. էկեր էմ քու հոգին առնեմ։

Ասեց.—Ես մին ու ճար էմ. խազնայ դաֆինայ տամ, իմ ֆո-գին մի առնի։

Ասեց.—Թէ որ ըդենց ա, ես քեզ, տաս օր ժամանակ կտամ. քու օրախից մի նշանաքան պտի տանեմ։

Թաքաւորի տղի ձեռնները, ոտները դողում էր վախիցը, ասեց.
—Դու գիտաս, ինչ աչքդ կը բռնի, մե կալ, տար։

Վէ կալաւ ոսկե իբրուխ, լականը, ասեց.—Պատրաստ կաց. տասն օրից յետոյ պտի գամ, քու հոգիդ էլ տանեմ։

Տուն էկաւ, էդ իպրուխ, լականը իրա չորերի հետ տարաւ, դրեց դուքռու մէջ։

Լիսը բացուեց. ախչիկը նատեց, իրա գործը արեց։

Թաքաւորի տղէն չա՛տ ճմրտըկաց, չկարաց վեր կենայ հրեչտակի զարպիցը։ Անճարացած վեր կացաւ, գնաց բալկոնը, եավաշ-եավաշ, ասեց.—Մի բան որ ես պտի մեռնեմ. եավաշ, էս ախչկան խօսացնեմ, խայտառակ անեմ։

Ասեց.—Դերձըկի ախչի՛կ, ջան ախչիկ, դուքռու պաչը քանի՞ ա։

Էդ խօսքը իրեք անգամ ասեց։

Ախչիկը իրան գլուխը բանձրացրեց, ասեց.

—Թաքաւորի տղա՛, ջան տղա՛. Գաբրէլ-Մուքէլը քանի՞ ա։

Թաքաւորի տղա՛, ջան տղա՛, իբրուխ լականը քանի՞ ա։

Թաքաւորի տղա՛, ջան տղա՛, տասն օրուայ մեռնելը քանի՞ ա։

Թաքաւորի տղէն չատ մտածեց.—Կայ-չկայ, ասեց. էս ախչիկ աստղաբաշ ա, առաջ աստղերուց հարցուց, հըմի էլ իմացաւ իմ մեռնիլը։ Գնաց, նորից պարկեց, արեց.—Ախ-վախ, ախ-վախ, ես պտի մեռնեմ։

Թաքաւորի տղէն բիրտան պարկած տեղիցը մտածեց, ասեց.
—Կայ-չկայ իմ մեռնիլը էս ախչիկը կիմանայ, որ համ էրկնքի աստղերով խօսաց իմ հետ, համ Գաբրէլ Միքելով. ես պտի էդ ախչկան առնեմ. ճար արեց, էդ ախչիկը կանի։

Թաքաւորի տղէն իրան ծառէն ղրկեց իրա հօր մօտը, ասեց.
—Ես մեռնում էմ, տէրտէր բերէք ինձ։

Հէրն ու մէրը էկան.—Այ որդի՛, մեր թաքաւորութունի միջին ինչ ա պակաս, «ախ-վախ» էս քաշում. մարդ ղրկեմ, քաղաքէ քաղաք, քեզ համար բժիշկ բերեմ։

Ասեց.—Կայ-չկայ, դերձըկի ախչկան պտի ուզէք։

Թաքաւորը ասըմ ա.—Շա՛տ լաւ, զօրքով ընի կը բերեմ, խաթրով ընի կը բերեմ, դու թաֆիլս լաւացի։

Նազիր-վազիրը կանչում, ղրկում ա դերձըկի տունը ախչկան ուզելու։ Ախչիկը տուն ա գալի, հէրն հարցնում ա.—Այ որդի՛, թաքաւորի տղէն կառնես, էկել էն քեզ ուզելու։

Ասըմ ա.—Որ դու տաք, ես էլ կուզեմ։

Բերըմ էն էդ ախչկան, պսակըմ էն թաքաւորի տղի վրէն։

Էդ ախչիկը իրա բռատոնիդը վեր ա առնում, ջհեզ ա տանըմ իրա համար։

Մի քանի օր մնում ա, էդ տղէն շատ «ախ-վախ» անըմ, ախչկայ ծոցը չի մտնում. ախչիկն ասըմ ա.—Այ տղա՛, որ ինձ հաւան չէիր, իմ մեղքի տակ խի՞ մտար։

Թաքաւորի տղէն ասըմ ա.—Այ դերձըկի ախչի՛կ. ես պտի մեռնեմ, ինչ մտնեմ որ մնաց վեց օր իմ ժամանակը։

Ասեց.—Որ վեց օր մնաց, ես էթումեմ։

Հարսի չորերը հագնըմ ա, մնաս բարև անըմ. գնըմ ա հացը, բռատօնգը հագնըմ ա։

Տղէն հիւանդ պառկած ա ըլլում, ասըմ ա.—Կնիկս փախաւ, գնաց. ես հըմի պտի մեռնեմ։

Էդ մաքի միջին ախչիկը գալիս ա տուն.| էդ բռատօնգը վրա ժղահարում ա-թափ ա տալի։

Տղէն մաիկ ա տալըմ.—Օհօ, էն Գաբբէլ հրեշտակը էկեր ա ցիրեկով։

Ասըմ ա,—Թաքաւորի տղա՛, հըմի որ պսակուեր էս, էս հետ Ձոգիդ պտի առնեմ։

Թաքաւորի տղի լեզուն կապւում ա. ձեռը, ոտը թուլանում ա։

Կնիկը տեսնում ա. չէ, անճարացաւ, պտի հիւանդութիւնը հաստատի. բզում ա Թաքաւորի տղին, ասըմ.—Ախմախ, վե՛, վե, ես հրեշտակ չիմ, ես քու կնիկն էմ։

Ասըմ ա.—Թէ որ իմ կնիկն էս. գնա՛, Իպրուխ, լականը բե, տեսնա՛նք։

Բաց ա անըմ կամոտի աչքը, իբրուխ լականը դնում ա Թաքաւորի տղի աղաքը։

Ասըմ ա.—Թէ որ ըղենց ա, չորերդ հանա՛, տեսնա՛մ, իմ կընիկն էս։

Կնիկը չորերը հանեց։

Թաքաւորի տղէն ասեց.—Այ կնի՛կ, որ ըղենց ա, դու հրաբունի էս, արժ՛, ինձ դուզն ասա, հրեշտակների հետ յընկերութիւն ունե՞ս։

Կնիկն էլ ասըմ ա.—Դու շատ կապըրիս, էլ չես մեռնի. արխային կաց։

Ասըմ ա.—Այ կնիկ, պա «էրկնքի աստղերն ինչ տար ա» որ հարցընըմ իր։

Ասըմ ա.—Գա կարի կուժը քանի ա, կարի կուժը չհամրուի, էրկնքի աստղերն էլ չհամրուի։

Թագաւորն վեր էն կենըմ, օխտը օր, օխտը գշեր ճէֆ ուրախութիւն։

Իրանք հասան իրանց մուրազին, դուք էլ ձերը։



## 46

# ՅՈՒԼԻԴԱՅ ԽԱՆՈՒՄ

(Վաղարշապատի բարբառով *)

Ժամանակով մի թագաւոր ա ըլնում. էդ թագաւորին մի տղայ, մի աղջիկ ա ունենում. վազիրի աղջկայ աչքը էդ թագաւորի տղի վրայ ա ըլնում։ Թագաւորի տղէն էս աղջկան չի ուզում։

Թագաւոր կանչում ա վազիրին.—Իմ տղի հետ գնա, երկիրներ ման արի, իմ տղէն որ աղջիկ կը հաւանի, էն ուզի իմ`տղին։

Վազիր կընկնի մտածութեան մէջ. կասի.—Նալաս, էնպէս աղջիկ ուզեմ, թագաւորը ըդրա լեզուն չհասկանայ. իմ աղջիկ չուզի, էթայ ուրիշ երկրներուց բերի։

Վազիր տղի հետ ընկնում ա ճանիփայ, գալիս էն։

Շատ քիչ Աստուած գիտայ, մի գեղի հասնում էն. ման էն գալի, տեսնում էն մի աղջիկ դռնից դուս էլաւ։

Վազիրը տղին ասըմ ա.—Թագաւորի տղա, ես դրան չատ հաւանեցի։—Որ դու հաւանեցիր, ես կառնեմ, ասըմ ա։

Մտնում էն ուղղակի էդ տունը, բարև էն տալիս, նստում էն, ու ասըմ.—Մինք էկերէնք ձեր աղջիկը ուզինք թագաւորի տղին: Ուզում էք, մէ աղջիկ ա. թագաւորին ղուրբան ա։

Վազիրն պելկեանն ու նշանը դնում էն. վեր էն կենըմ, գալի թագաւորի մօտը,

Թագաւորը սինօղապետներով ուղարկում ա, գնում էն հարս բերելու։ Բերում էն, մի առ ժամանակ մնում ա։

Էդ հարսն էնպէս ա վարւում, թագաւորին գլուխ չտալի։

* Պատմած է Սարգիս Ղազարեանն: Սա լսած է իւր զօքանչ Համասփիւռ Ամիրեանէ:

Այ հայ, ասըմ թագաւոր, իմ ծեր ժամանակս, ես էի, մի աղայ, պսակեցի, որ ուրախանայինք, հալալ կաթնակեր չընկաւ մեր ձեռքը։

Գալիս ա, ժամանակով էդ թագաւորը հիւանդանում ա, կնկան ասըմ ա.— Այ կնիկ, քե վասիյաթ ունիմ անելու. ամանաթ-ամանաթ իմ Յուլիդայ խանում ու տղ՚ն քեզ։

Թագաւոր հարսի կսկըծուն մեռնում ա։

Որ թագաւոր մեռնում ա, թագուհու օրը սև ա ըլլում հարսի ձեռիցը, նա էլ ա հիւանդանում։

Որ հիւանդանում ա, կանչում ա իր տղէն.—Այ որդի, ամա-նաթ՚ամանաթ քեզ իմ Յուլիդայ խանումը վասիյաթ անըմեմ քեզ. առաւօտուն մինչև Յուլիդայ խանումի օթախը «բարի լիս» տաս, իրիկուն՝ «բարի իրիկուն» տաս, ամանաթ-ամանաթ։

Թագուհին էլ ա մեռնում։ Էդ աղջիկ դուս չի գալիս սենեակից։

Տղէն ա, առաւօտուն մտնելուն.—«Բարի լիս քեզ, Յուլիդայ խանում քուրիկ». իրիկուն մտնելուն «Բարի իրիկուն, Յուլիդայ քուրիկ» ասըմ։

Յուլիդայ խանումն էլ ասըմ ա.—«Բարև էկար, ապրէր ջան.» ասըմ ու փաթըթում յիրար։

Հարսը էն եանից ասըմ, նօթերը կէտում ա։—Ես կինն ըլ-լեմ, ընձի էնպէս չսիրի, իրա քուրը սիրի. եավաշ, ես դրանց գլու-խը մէկ օյիյա խաղամ։

Թագաւորի տղէն գալիս ա, հացը ուտում, էլի էթում ա դիւանը։

Կնիկը վեր ա, կենում՝ տան մէջ ինչքան չոր կայ, հաւաքըմ ա, կրակը տալիս ա-էրում. գնում, տխուր նստում ա։

Իրիկունը մարդը գալի, մտնում ա քուր սենեակը։—«Բարի իրի-կուն Յուլիդայ քուրիկ ջան»։—«Աստըծու բարին, ապրէր ջան»։

—Էդ ինչ մուխ ա, Ցուլիդայ խանում, մեր տունը։

—Չեմ գիտում, ապրէր ջան, ես տանից դուս չեմ ըլլում։

Ապրէրն ա, մտնըմ ա իրա սենեակը, տենում ա կնիկը նիյաթ-նիրը քաշի, նստի։

—Այ կնիկ, ընչի ես ըդենց տխրէ։

Ասըմ ա.—Բաս իրիկուն գաս քուրդ «բարի իրիկուն» տաս, առաւօտ «բարի լիս» տաս. էդ էր քու սիրած քիրդ, չորերը վառեց։

—Ջայնամ թէ վառեց, չորեր ղուրբան ըլլի իմ քուր, կնիկ, դու խի ես տրտում, էն տաս։

Կնիկ մտքի մէջ ասեց.—Էս էլ չէլաւ, մի ուրիշ բան անեմ։

Տեղերը քըցեցին, քնեցին. գիշերը վեր կացաւ կնիկը, իրա էրե-խին մորթեց. թաքուն դանակը տարաւ, դրեց Ցուլիդայ խանըմի ջեպը։ Տղէն էր, լուսը բացուեց, վեր կացաւ, լուացուեց, գնաց Ցու-

յիդայ խանըմի մօտ. բարև տուեց, բարև առեց. փաթըթուան իրար վզով։

Կնիկն որ էս տեհաւ, սիրտը ճաքեց, սկսեց լաց. իրա դըլին, իրա ստնիրին տալ։

Ծառէք լսեցին. էկան, թափեցին ներսև։

Թագուհին հարա՛յ քցեց.—Այ հայ, թագաւորի աղէն կանչէք գայ։

Տղէն էկաւ, տեհաւ կնիկ լաց-շիւար.—Դու էլ չըլնես, քու քիրն էլ չըլնի։

—Ի՞նչ ա պատահե, կնիկ։—Էլ ինչ պտի պատահի. էրեկ չորսը կրակեց, ձէն չտուեցիր, էս օր էլ էրեխէս ա մորթե։

—Խի՛ իմ քուր սիրտը քա՛շ ա. գայ, իմ էրեխին մորթե։

—Ըդենց էս անըմ որ չես հաւատում. արնոտ դանակը ում ջէպից դուս էկաւ. նա է իմ էրեխին մորթե։

Վեր կացաւ, կնկայ հետ գնաց, մտաւ քուր օրախը։

—«Բարև քեզ, Յուլիդայ խանում»։—«Աստըծու բարին, աղբէր ջան։»

—Իմ էրեխին խի ես մորթե դու, Յուլիդայ։

—Աղբէր ջան, ինչ էրեխայ։

—Բա էս ինչ ա ասըմ. «էրեխէն մորթեր ա»։

—Աղբէր ջան. Աստուած ունեմ, խապար չունիմ, սուտ ա։

—Հա՛, սուտ ա, ըն՛ ջեբերդ տենամ։

Ջեպերից արնոտ դանակը հանում են։

Դանակը վեր ա ունում աղբէրը, գնում, նստում դիւանի. ախնո-դայխտներին կանչում ա։ Կանչում էն աղջկան էլ. թէ.—Իմ քուրը իմ էրեխին մորթեր ա, պէտք ա ճեալլա անել։

Քիրը տենըմ ա իլան չի ըլնում.—Աղբէր ջան, մի բողնոց նուշ բեր ըստե, դիր սեղանի վրէն։

Մի բողնոց նուշ բերում. դնում էն սեղանի վրէն, ասըմ ա.—Աղբէր ջան, նուշը սեղանին կանանչի, Աստուած ունեմ, խապար չունիմ։

Իրեք անգամ ասըմ ա.—Աղբէր ջան, նուշը սեղանին կանաչի...

Որ իրեք անգամ ասըմ ա, նուշը սեղանին կանանչում ա։

Կնիկը ասըմ ա.—Չէ, սեհրպազ ա, իմ էրեխի արինը կուպեմ, եա։

Թագաւոր բերեց. քուր էրկու ձեռքը արմընկներից կտրեց, տուեցին համպալի չալակ, տարեցին.—Տա՛ր Ֆլան մէշէն քցայ, էթայ, ջին, ջանաւար ուտի։

Տղէն էր, իրա քուր էդ էրկու կռները փաթըթեց բանրակի մէջ. տարաւ, իրա դուքին պահեց։

Էդ համպալն էր, տարաւ, աղջկան մեշի մէջ թողեց։

Էդ աղջիկն էր, լաց ըլելով, մըկըռտալով ընկաւ էդ մեշի մէջը. գնալով գնաց։

Շատ քիչ Աստուած գիտայ դուս էկաւ մի ուրիշ տէրութեան մէջ. գնաց, մի ջաղացպանի փուշեթի պատահեց.

Ասեց.—Մերկ ուրեան եմ, մոնց մարդոց մօտ էթամ։

Մտաւ ջաղացի ջրտունը։

Գիշերուայ մի վախտը փորսող-փորսող դուս էկաւ, էդ տեղ մի բոստան կար, մտաւ էդ բոստանը, սկսեց կրծել ձմերուկ թէ եմիշ. սոված էր։

Առաւօտ բոստանչին վեր ա կենըմ, մտնում, տեսնըմ ա եմիշները կրծած.—Այ հայ, ասըմ ա, էս ինչ ա պատահե իմ բոստանի մէջ, կրծում ա։

Մի գիշեր, էրկու գիշեր բուսուն ա պահում, չի կարում բռնի. գնում ա, թագաւորի տղին ասըմ.—Թագաւորի տղա՛, քու բոստանի մէջ ջանավար ա փիեյսա էկե, էս էրկու, իրեք գիշեր ա, դարավուլ էմ կայնում, չեմ կարում բռնի։

Թագաւորի տղէն էրկու դարավուլով գալիս ա. գիշերուայ մի վախտը տեսնըմ ա խշխշոց ընկաւ բոստանի մէջ. բուանը դէմ արաւ դրան. էդ աղջիկը ձէն ա տալի թէ.—Իսան էմ, վիրև Աստուած, ներքև դու, ինձ մի՛ տուէք՝ աղջիկ էմ մերկ ուրեան, մի ձեռք չոր մի կնկայ հետ ուղարկէք, գայ։

Մի ձեռք չոր ուղարկում էն էդ աղջկայ մօտ։

Գալիս, տեսնում ա մի աղջիկ, ի՜նչ աղջիկ. չուտես, չխմես, ըղ-րա մահ ջամալին թամաշա անես. էրկու թևը չկայ։

Շորերը հագցընում ա. թագաւորի տղէն գալիս ա մօտը։

Աղջկան տեսնալուն պէս խելքը գլխիցը էթում ա. ասըմ ա.
—Ինս էս, ջինս էս։

Ասըմ ա.—Իսան էմ, այս ինչ քաղաքի միջիցն էմ։

—Թևերդ ինչ ա իլե, ո՞վ ա կտրե։

—Խորթ մէրս կտրեց. տուեց, դուս արեց։

Թագաւորի տղէն ա, տեսնըմ ա սիֆաթը, ասըմ ա.—Աղջի՛, Աստուած քե ղսմաթ ա ղրկէ, քու հունարը, շնորհքը ինչ ա, որ ես քեզ առնեմ։—Թագաւորի տղա՛, թևեր չունեմ որ իմ շնորքը ցոյց տամ, ես Աստըծու հրամանքով տարին լրանալուն, ոսկե ճախուլ, ոսկե ճկուտ աղջիկ ու տղայ կը բիրեմ։

Վե ունում դո՛ւզ բերում ա պալատը։—Մայրի՛կ, ասըմ ա. էս աղջիկը ես պտի առնեմ. իմ ճակատիս գրած ա։

—Այ որդի՛, մեզ կը նախատեն. առանցի ձեռներ ա, կասեն. «Թագաւորի տղէն գնաց, սախաթ աղջիկ առաւ։

—Այ մէր, խօսալն աւելորդ ա, ինչ ուզում էն, թող տանեն. ղումարն էկեր ա, պտի տանեմ։

Օխտը դշեր, օխտը ցերեկ հարսանիք արին, պրծան։

Մի ժուկ ժամանակ մնաց, ուրիշ թագաւոր էկաւ դրա վրա կռուի. տղէն էլ իրան պատրաստութիւն տեհաւ, որ պտի գնայ կռուի։ Գնաց մոր մօտ.—Մայրիկ ջան, ես էթումեմ կռուի. ամանաթ-ամանաթ քե իմ Յուլիդայ խանում. մինչև իմ ետ գալը. ազատուելուց էլ ինձ մի նամակ գրես. աչքալիսէք կը ղրկես։

Թագաւորի տղէն գնաց կռուի։

Մէրը Յուլիդայ խանումի էնքան էր սիրում, էս աչքից էն աչքը չէր փոխում։

Էկաւ, ժամանակը լրացաւ, ազատուեց, էրկու տղայ բերեց, ոսկեfաfուլ, ոսկե ճկուա։

Ըտե թագուհին ուրախացաւ, նամակ գրեց.—Աչքդ լիս, թագաւորի աղջիկ ազատուեց, էրկու տղայ բերեց, ոսկի ճկուտ, ոսկի fաfուլ. քեզ էլ մեռնեմ քու էրեխեքին էլ։

Նամակը տանում, գալիս ա. գալիս ա Յուլիդայ խանումի հօր պատի տակով անց ա կենում. հարսը տեհնում, կանչում ա.—Ի՞նչ մարդ էս։—Ֆլան թագաւորի մարդն էմ, խանումս ազատուեր ա. գնումեմ աղիս աչքալիսէք տամ։

—Խանումդ ով ա։—Իմ խանըմը ձեռնեբ չունի,

Ըստե հարսը մտը կծում ա.—Կըլնի-չըլի Յուլիդան կըլնի։

Կանչըմ ա ներքև, ըղըան լաւ պատիւ ա տալի, գինովացնըմ ա։ Վեր ա կենըմ, փափախի ծալից նամակը հանում ա, բաց ա անըմ, կարդում ա որ Յուլիդան ա.—Մի՛սդ ուտեմ, ոսկորդ թողեմ, դու ճալա սաղ էս։

Նամակը բռնում, փոխում ա, գրում.—«Ոչ դու ըլլէիր, ոչ քու բերած աղջիկը, թևերը, կռները փտեր ա. փտը ընկե պալատի մէջը. ազատուեր, բերեր ա էրկու չան բուլայ, դեռինը մոնէք դրանից լաւ ա։ Փակեթը դնում ա տեղը։

Մարդը առաւօտը վեր ա կենըմ, նստըմ ձին, էթըմ։

Շատ ու քիչ Աստուած գիտայ, հասնըմ ա թագաւորին. տանըմ ա, նամակը տալիս թագաւորին։ Թագաւոր բաց ա անըմ, կարդըմ, ասըմ ա.—Մայրիկ ջան, ամանաթ-ամանաթ իմ Յուլիդայ խանըմ քեզ. չան բուլայ ա բերե. ինչ ա բերե, ինձ ղապուլ ա, թո մնայ, ես գամ, տեհնամ։

Նամակը տալիս ա, մարդը առնըմ, բերըմ ա. գալիս ա էլ էն տանը ղօնախ ա ըլլում, քնում ա։

Հարսը վեր ա կենըմ, նամակ առնըմ, կարդում ա. նամակ փոխում, դըրում ա.—«Ոսկեfաfուլ ա, ոսկե ճկուա ա. իրիկուն նա-

մակը կը հանի, իրիկուն վերջացրէք. առաւօտուն կը հանի առաւօտուն վերջացրէք, ես Թիֆլիսից քաւաս չեմ բերում։

Նամակը գնում ա տեղը, մարդ տանըմ ա ու գալի, բերում տալիս Թագաւորի մօր։ Թագաւորի մէր կարդում, տեհնում ա. «Աս-կնճախուլ, ոսկե ճկուտ ինչ կըլի. կըլի. նամակս իրիկուն հանի, իրիկուն կորցրէք. առաւօտ հանի, առաւօտ»։

Ըդ տե մէրը գլխին, չոքերին տալիս ա, ասըմ.—Մոնց անեմ, ես իմ նաղշուն ձագերը մոնց կորցնեմ։

Յուլիդայ խանում իմանում ա, կանչում ա մօրը.—Մայրի՛կ ջանը, չըլի՛ իմ մարդին բան ա էլե, լաց ես ըլըմ։

Բան չի խօսում, հանըմ ա, Նամակը տալիս ա Յուլիդայ խանումին։ Բաց ա անըմ, կարդում. տեհնում ա գրած «. . .»։

—Մի լաց ըլիլ, մայրիկ ջանը, ինչ որ իմ ճակատին գրուեր ա, պտի անէք,

—Բալա ջանը. ասըմ ա. իմ ձեռները մոնց կեթայ որ ես ձեզ կորցնեմ։

Ըր բերի, էրեխանց մէկը մի խուրճինի, մէկը մի խուրճինի բարը կը դնի, կասի.—Գնա՛, ես չեմ կարող ձեզ կորցնի։

Էդ աղջիկը վե կացաւ, լաց ըլելով, մղկտալով գնաց. ընկաւ չոլ, եազանը. գնաց։ Շատ, քիչ Աստուած գիտայ. գնաց, մի հատ առուի պատահաւ, Թեեր չունէր որ քշտուեր. մտնէր, անց կենար. տուեց էնպէս չորերով ջրի մէջ։

Ջուրը վարար էր. յանկարծ խուրճինը ընկաւ ջուրը։

Էրեխէքը, ինչ հնար արեց, չը կարեցաւ բռնէր. դուս էկաւ առուից, լաց էլաւ։—Աստուած, ասեց. դու ամեն անճարներին հասնես, նրանց ռասաղից էլ ինձ, էս ինչ ա իմ չարչարանքը։

Աստըծոյ հրամանքով էրկու հատ ծիտ էկան.—Յուլիդայ խանըմ մի լար, քու էրեխէքը բանց են էլե ընտե, գնա՛, վե կալ։

Ծտերը ընկան աղաք. գնացին, տեհան որ էրեխէքը բանց էն էլե ինչ-մի ցըցի։ Մտաւ, բերանով էդ խուրճինը քաշեց, հանեց դուս։ Ծտերն ասին.—Էն մէշի մէջ մի ձեռք տներ կայ. մարդ չկայ միջին, գնացէք ընտե, ձեզ համար աղօթէք։

Էրեխէքն առաւ, չորերն պատառոտած, ճղճղած, Թրջուած, Աստուած կանչելով գնաց. գնաց, տեհաւ մի ձեռք տներ. մտան. մի առ ժամանակ ընտե մնացին։

Էրեխէքը Թրփոչացան, լեզուները բացուեց։

Էդ կնիկն էր. իրիկուն առաւօտ չոք կտար գետին, Աստուած կը կանչէր.—Աստուած, էս ինչ ա իմ նեղութունը, գոնէ իմ ձեռները լաւ ըլէր, իմ էրեխանց, իմ չորերը կը կարկըտէի։

Մէկ օր, էրկու օր, Աստուած դրա աղօթքը լսեց. ձեռքերը էկան. վէ կացաւ, ուրախ-ուրախ իրա չորերը կարեց. էրեխանց չորերը կարեց։

Ըդոնք թո ըստե մնան. խապարը տանք Ցուլիգայ խանումի մարդից։

Մարդն էկաւ կռուի տեղից. մտաւ տուն.—Մայրիկ, ասեց, իմ Ցուլիգայ խանումն ուր ա։

Ասեց.—Ախ որդի՛, հալա դու ես խօսում «յուր ա», չէ նամակում գրէլ էիր, «էրեխէնը կը հասնի, էրեխէնը կորցրրայ, առաւօտը հասնի, առաւօտը կորցրրայ», ես բաւաս էմ բերել»:

—Մայրի՛կ, ի՞նչ ասանել, ի՞նչ բան, դու գրէլ էիր թէ շան բալայ ա բերած, ձեռքերը Ցասեր ա. . . . » ես էլ գրեցի.—«Ի՞նչ էլ ըլի ղապուլ ա»:

—Այ որդի՛, էրկու հատ ոսկի բախուլ, ոսկի ճկուտ տղայ էր, էլ իմ ձեռքը չդնաց կորցնէի, իմ տանից դուս արի։

Մայրիկ, ո՞ր ճանով դուս արիր.—Այս ինչ ճանով։

Վեր կացաւ, բռանեը առաւ ձեռ, ընկաւ ճանփայ։

Թող գնայ իրա ճանփով, մենք խապարը տանք Ցուլիգայ խանումի աղբօրից։

Էդ հարսը ընենց ա արե, թագաւորութիւն էլ ա վերջացրե մինչև անգամ։

Աղբէրն էլ իրա կնկայ ձեռիցը դարտակարում էլե, ընկե չոլեր—էթամ, իմ Ցուլիգայ խանում գթնեմ։

Գալիս էն, փեսայ ու աներ առնըմ էն յիրար։

Ցուլիգայ խանումի աղբէր ասըմ ա.—Ինչ մարդ էս։

—Թէ ես էլ չեմ գիտում ուր էմ գնում։

—Որ ըդենց ա, ասըմ ա. արի, իրար հետ ընկեր ըլենք։

Գնում, պատահում էն էդ մեշի մէջ, որտե Ցուլիգայ խանումն ա։

Ցուլիգայ խանում տեսըմ ա, մէկն իրա մարդն ա, մէկ իրա աղբէրն ա. տեհաւ որ էկան, նստան չինարի ծառի տակ։ Էդ էրեխէքն էլ մեծացեր էն. թրփօշացեր էն. վաղեցին, էկան առաջ. մէկին, քեռի, մէկին, հայրիկ, ասին։

Դրանք էդ էրեխէքանց վրայ չափ ուրախացան, ինչպէս որ սրտները ճղքաց վրէները։

Էրեխէք ասին.—Քեռի՛, հայրի՛կ. էթանք մեզ դօնախ։

Վերցրեցին, տարան առանձին օթախ:

Ցուլիգայ խանում պատրաստութիւն տեհաւ, էրեխէքանց ձեռքով կերակուլ ուղարկեց, կերան, պառկան քնելու:

Ցուլիգայ խանում բերեց, մի դուժին արծաթէ դդալ տուեց էրեխանց, ասեց.—Որին որ քեռի էք ասըմ, նրա խուրճինի մէջ կը դնէք։

Տարան, քցեցին աղբօր խուրճինի մէջ։

Լիսը բացուեց, վե կացան. տեհան, ինչ. Ցուլիդայ խանում բալկոնում ման ա գալի։ Մարդը ասեց.—Կասես իմ կնօջը նման ա, բայց ձեռքեր ունի։

Ախպէրն էլ ախ քաշեց։ Ասեց էն մարդը.—Ինչու ախ քաշեցիր։

Ասեց.—Կարծես իմ քիրն ըլի. բայց իմ քիրը թևեր չունէր։

Շնորհակալութիւն յայտնեցին, վեր էկան գնալու։

Մի խէլի տեղ գնացին. ըղըրանց կանչեց։

Դրանք էկանք, գլուխ տուին Ցուլիդայ խանումին ու կաղնեցին։

Ցուլիդայ խանում ասեց.—Ես ձեզ լաւութիւն արեցի. ղօնախ արեցի, դու իմ էրծաթ գդալները գողացաք։

Ասեցին.—Խանում, մենք խապար չունենք. Աստուած, երկինք, գետինք, մենք խապար չունենք։

Ասեց.—Պէտք ա ձեր ջեպերը, ձեր խուրճինները ման գամ։

Ման էկաւ, աղբօր խուրճինի մէջ գթաւ, ասեց.—Բա ասում էք, չենք գողացե, էս որտեղան դուս էկաւ։

Ասեց.—Աստուած վկայ, որ ես խապարութիւն չունեմ։

Ասեց.—Որ խապարութիւն չունես, այս ինչ թագաւորին մի հարս կար. էրեխէն մորթեր էր, դանակը դրեր էր Ցուլիդայի ջեպը. Ցուլիդան նուշ բերել տուեց, Աստըծու հրամանքով նուշը կանանչեց, ասեց. «Աղբէր, Աստուած ունեմ, խապար չունեմ»։ Աղբէրը ոնց չհաւատաց, ձեռները կտրեց. սուրկուն արեց տանից մի լաչար կնկայ պատճառով։ Ասեց, ես քու քիրը-Ցուլիդայ խանումն եմ, էս էլ իմ մարդն ա։

Նոր էն տեղ փաթթուան իրար. ուրախացէք, որ ուրախացան։

Աղբէրն ասեց.—Այ քի՛ր, քու ձեռներն մինչև հիմայ ես պահեր եմ։

Ասեց.—Աղբէր ջան, իմ ձեռները Աստուած հասցրեց ընձի։

Հանեց նամակը քցեց աղբօր աղաքը, ասեց.—Էս էլ քու կընկայ ձեռագիրն ա, որ իմ մարդի նամակը փոխեր էր, ընենց գրեր ա։

Վեր կացան, ուրախ, ուրախ գնացին մարդի տունը։

Աղբէրն ասեց.—Ցուլիդայ խանում ջան, ես պտի էթամ, կընկանս մանտր-մանտր կտորեմ։

Քիրն ասեց.—Աղբէր ջան, մի՛ գնար. թող նրա պատիժը Աստուած տայ։

Էդ տեղ մնացին կեֆ արին։

Աստուածանից իրեք խնձոր իջաւ։



# 47

# ՍԷՖԻԼ ՄԱՐԿՈՍ

**(Խոյեցոց բարբառով *)**

Կար-չկար ավալ ժամանակ մէ մարթ մէ կնիկ կար. դէանք շատ խեղճութան մէջ էն էր։ Օրերէն մէ օր կնիկն ասաց.
—Այ մարթ, պօլի մենք խեղճութոն քաշենք, մե աստըւորը մէ աստըւոր չի, ըստէաղ բան չկայ անելու, քէլի ճարներըլ. ախչատի, էդ մեր թփլները պախենք։

Մարթն ասաց.—Քեօ կաթն ճարամ ըլի, դու ուզես էս ընձի օղորկես ղարիպութոն, որ դու լըքութոն անես։

Կնիկն ասաց։—Այ մարթ. ես վասա եմ դնելի Աստու խետ, որ իմ խալալին խարամ չխառնեմ, չանքի օրն գերեզմանին։

Մարթը դիւս էլաւ, դիւսը տըստաւ. ի՛չ մէ պառաւ կնիկ, ժողովք անելի, ասաց.—Այ Նանա՛, ցերեկը խաց ժողովի, գշերը եարէ՛ իմ տունը քընի. մըղեաք ել իմ կնկան, ես էթաս էմ ղարիպութոն, չըլի որ իմ կնիկը լըքութոն անի. ղարիպութոնէն որ դարձամ, էկամ, քեզի շատ լաւ կը չախեմ։

Սէֆիլ Մարկոսն էկաւ տուն, յիւր կնկան ասաց,—Կնիկ, տըսնես էս էս պառաւը, դէարը ջօջ էմ դնելի էդ տան վրան. էդ կըլի քեօ կուիւրը. դիւ դէարը խարս, մնաս բարի, կեօ ես էթաս եմ։

Զարյալները խարաւ, խաց կապեց մէջքը, փէտն առաւ ձեռքը, ընկաւ ճամբախ։

Թող Աստուած դէար խէտն ըլի, մենք դառնանք Սեֆիլ Մարկոսի կնկան։ Գշեր-ցերեկ դէար աչկէն արսունքը չէր կտրուելի, խեղճ տղները քաղցած օր էն էր անց կացընելի։ Էդ պառաւը մէ քիանի օր լաւ չախեց տղներին. էթաս էր խաց էր ժողուելի, բերես էր. ուտես էր մի դարի տակ, էդ թփըլներին չէր էր տալի։

Մէյ օր էդ թփըլները շատ քաղցածացան, էդ խեղճ կնիկայ

---

* Պատմած է Սարգիս Ղազարեան։ Սոյն բարբառի հնչիւններն մասնաւոր ինչ ուղղած է Խոյեցոց բարբառին ծանօթ Պ. Ս. Հանայեան։

իլանը կտրուած, ասաց.—Մի՛ լացէք, պալաներ, կըլեմ, թոնդիրը կը վառեմ, եղ խըմա խորակ կեփեմ:

Ձմեռը ուրախացան, էդ կնիկն էլաւ, թոնդիրը վառեց, ալրնե-րին խափեց, օղորկեց դիւար. գինքն էլաւ, էն մանտրը քարերէն ժողուեց, բերեց, լցեց պառւկի մէջը, դրեց թոնդրայ վրայ. գինքն էլ մտաւ մի պուճախ, չոքը տուեց գետինը, Աստուծն աղաչեց, ասաց. —Աստուած, դու խառնես իմ պալաներին, էդ մինչի մեր քեաչած ատ-տըւորը: Նատ լայ էլաւ: Ձմերն էլ հա ի գեաս էն էր: ասես էն էր. —Մամա՛: պա ինչ էլաւ մեր խորակը: Էդ կնիկն էլ ասես էր.—Մըկայ Լեփուի, մէկ սըհաթ կեփուի: Էդ խեղճ էրեխէքը էնքան մնացին քաղցած. էկան ամեն մէկ կողմ պառկըղըւան, քնան: Էդ կնիկն էլ հա լաց էր ըլել, ասեր էր.—Աստուած, ես ինչխօ անեմ իմ պալաների խեղ. իմ ձեռնէն չի՛ գեալի էթամ, ժողովք անեմ. իմ ձեռը թալեր իմ քեօ փէշը. կուզես պախի, կուզես մեռցու: Ձինքն էլ դլօխը դրեց, քընաւ: Առաւօտը լոսը բացուաւ. էլաւ, զաց ու մանտրը ժողուեց. տըսաւ բարձի տակը օխտը խատ ոսկի. էլաւ, ուրախ-ու-րախ լուացուաւ, ասաց.—Փառք քեզի Աստուած, որ դիւ իմ Եօրփա Ճապալաղներին բռուզա խառուցիր:

Էկաւ. պառաւին ասաց.—Մամա՛, ել էդ ոսկին առ, քէլի պա-զարը, խաց ա՛ռ, բե՛ր որ իմ տղներն ուտեն:

Ասաց.—Ախչի՛, էդ ոսկին վէճա՛վ ի տուի քեզի:

Էդ կնիկն ասաց.—Աստուած բռուզկայ ի խառուցի ընձի:

Պառաւը ասաց.—Կէաղ մէ բան կայ. քեօ խեղճ մարթն ասես էր, ես չիմ էր հաւատալի որ դիւ ըըռութոն կանես:

—Մամա՛, վարոքդ ըըտըրկիր ի, խոքուզ մեղք մի՛ արա, ես իմ մարթու խետ վասա Աստըծու եմ դրի, որ իմ խալալին խարամ չը խառնեմ, ինչանքի գերեզման մոնելը. թէ չես հաւատալի, կանոխ գշերը եարի՛, իմ մօտը քընի:

Էդ պառաւ էլաւ, մըըմըռթալով առաւ ոսկին, գնաց պազարը. խաց-մաց առաւ, բերեց: Տղները էկան, նստան ու կերան: Ասաց. Մամա՛, դիւ էլ ժողովք մի՛ արա՛, դիւ էդ տան ճօչն ես: Աստուած բռուզկայ ի տուի, կուտենք: փառք կտանք յիւրը:

Պառաւն ասաց.—Լա օ, ես քեօ գեօղութոն կը ռնեմ:

Ասայ.—Մամա՛, թող քեօ ասածն ըլի:

Իրիկունը էկաւ, տեղները քըցին, քընան. էդ պառաւն էլ. էլ էդ կնկեայ կուշտը քընաւ. ընչար լոս դարաւուլ քաշեց: Լոսը բա-ցուաւ. էդ կնիկը էլաւ, տեղաշորերը ժողուեց. Ասաց.—Մամա՛, դիւ բարձը վերցը:

Պառաւը բարձը վերցեց, ըշկաց ինչ ի՞ օխտը ոսկի. կնիկն ասաց. —Մամա՛, աչկովդ տըսա՞ր:—Խա, պալամ, դիւ արդար ես:

Էդ կնկնայ Աստըծոյ խըրամանքով օրը հա օխտը ոսկի էկաւ. ղուլվար կապեց, տներ շինեց, կոլեր առաւ. էլ չես էր գինալի թէ էդ Սէֆիլ Մարկոսի տներն ի։

Էդ Սէֆիլ Մարկոսն էլ ղարիպութենից ետ էր դառնալի, իդեալի տունն էկաւ, տըսաւ.—Ջանըմ՝ էդ իմ տների տեղն ի, իմ տները չի, ասաց.—Նավաշ, մէ մտնեմ, խարցուցեմ. վէճմի գինալի, պալքիմ իմ կնիկն անճարի էլի, ծախիրի՝ կէրիրի. իւրիշն էկիրի, տունն ի շինի տնշաղ. մէկ ղաֆիլ մտնեմ, վայ թէ ջրտուներ։ Ֆիւչայի դուռը թխեց, մէ տղայ դուս էլաւ, Ասաց.—Էդ վէճմի։ Ասաց.—Դուս եարի, ղարիպ մարթ եմ։

Ասաց.—Էդ վէ՞ր տներն ի։ Ասաց.—Սէֆիլ Մարկոսի։

Ասաց.—Սէֆիլ Մարկոսն տունն ի։

Ասաց.—Չէ, էդ խիյ տարի ի գնացիր ի ղարիպութոն. տըսնե՞ս էս, էդ զըմեն Սէֆիլ Մարկոսի կնիյն ի շինի։

Ասաց.—Գա դու Սէֆիլ Մարկոսի ի՞նչն էս.—Դէար նօքարն էմ։

Սէֆիլ Մարկոսը տղայ ունի՞.—Իշխօ չունի, կեծ էթաս էն վարժատունը, կարդաս էն, էրկու տղայ, մէ ախչիկ ունի։

Ասաց.—Գա վէճմ կայ տունը։ Ասաց.—Գնա խանըմն ի։

Դէարը օղորկեց, ասաց.—Դէ, քէլի, խանըմիդ ասա. «Սէֆիլ Մարկոսն էկիր ի»։ Ջինքը յիւրը ասաց.—Խուձ կաթնալիկրին էյբ/-ղար չկայ, լըրութուն ի արի. ես դէարը չանց կատամ մկայ։ Նօքարը գնաց, ասաց.—Խանըմ, աչքըդ լոս, մարթդ էկիր ի ֆիւչայի դուռը, ասեյի «ես Սէֆիլ Մարկոսն էմ»։

Կնիյն ուրախ-ուրախ էլաւ, վազկեց, ըշկաց որ յիւր մարթն ի, փաթըթուաւ մարթի վզովը.—Դու բարեով էկար. ընչի՞ չես էր մըտնելի տունը։ Ասաց.—Ի՛շ մտնեմ էր. ասեմ, ես Սէֆիլ Մարկոսն եմ. էդ իմ տների տեղն ի, իմ տները չի, մնացիմ ջանիս վրայ չուար, դէար խըմայ էլ ֆիւչայի դուռը թխիմ, ասիմ. «վէճմ ի նալի, կնիկս Ցաչար ի մնացի, ծախիր ի»։

Կնիյն ասաց.—Ա՛յ մարթ, տըսնա՞ս ես, դու գնացիր ղարիպութոն, ես էս ղեար մալ ու ղուլվար եմ բերի։ Ասաց,—կեօ ես էլ եմ բերի Ֆլան մէհայի մէջն ի. եարի, էրկսով էթանք, բերենք։

Կնիյն էլ ուրախ-ուրախ ելաւ, մարթի խետր ընկեան ճանբախ, գնացին էդ մէհի մէջը. Ասաց.—Գա մա՛րթ, յիւրի քեօ ապրանքը։

Ասաց.—Ղանըմս, քեօ սիրողն ի էդ մալ ղուլվարը քըցի քեզ խըմայ. խո ընձ էլ սիրող չունեմ, ես էլ խիւանդացամ, չը գիցամ աշխատել։

Էդ կնիյն էլ ասաց.—Մարթ Աստըծու, էդենց բաներ մի՛ ա․․ ընձի, ես քեզ խետ վասա Աստըծու եմ գըրի, որ իմ խալալին խարամ չխառնեմ. չանքի օրն դերեզմանին։

Մարթն ասաց.—Քեօ կաթը խարամ ըլի, պա դիւ էդ բանէն խապար չես, վէօվ էդ փողերը տուի քեզի, որ դիւ էդ ղդար մալ ու դեօլվաթ էս յետ քցի. ես տեաղ ըլելուս վախտը ախչատանք էմ էր անելի, չատ օրը քաղցած էնք էր քընելի, դիւ էդ կնիկ հալովդ վէօր տեղէն էս ախչատի։

Կնիկն ասեց.—Աստուած ընձի, իմ պալաններին ուռուզկալ ի տուի. օրական օխտը ոսկի ի գեալի ընձի, գինաս էս, այ մարթ. ինչ խեղճութոն, ճաչարութոն իմ քաշի եմ պալաններուն խետ, իմ աչկերի արսուքը չի կտռուելի. մէյ օր էն ղցի քաղցած մնացին տղներս, իլանճ կտռուաւ, դէանցը խափիմ, ղղորկիմ դիւսը, էլամ, թոճղիրը վառիմ, էն չայլաղի մանտր քարերէն ժողվիմ. լցիմ պտուկը, դրիմ թոճղրայ վրայ հա, դընացին էկան.—«Մամա, էդ ինչ էս էփելի.» ասեմ էր, «պալամ, գնացէք, խաղացէք»։ Էն ղցի խափիմ, չանք իրիկուն. իլաճները կտռուաւ, ամեկը մէ տեղ թաւալան, քընան. էն գչեր սև էլաւ ընձ խըմայ. չանքի լոս աչքիս արտունքը չը կտռուաւ, առաւտունը էլամ, իչկացիմ, չորերը ժողուեմ էր, տըսամ բարձի տակը-ճչ.-օխտը ոսկի կայ. ուրախ-ուրախ վերցիմ. մամային ասիմ.—«Մամա, ել, Աստուած մեզ ըռուզկայ ի տուի,» մաման էլ չը խաւատաց ընձի. իչխօ դիւ ասես էս. «սիրող էս բռնի»։ Ասիմ.—«Մամա, թէ չես խաւատայի, կանոխ գչեր էլ դիւ եարի. քընի մօտս»։ Էկաւ, էն գչեր ինչանքի լոս ղարավուլ քեաչեց. առաւտունը լոսը բացուաւ, պառաւը յիւրը ձեռքով չորերը ժողուեց, իչկաց օխտը ոսկին կայ, ասաց. «Պալա, դիւ արդար էս, Աստուած քեօ պալաններին ըռուզկայ ի խասուցի»։

Մարթն ասաց.—Չէ, քեօ կաթն խարամ ըլի, կնկանը էճցիպար չը կայ, քեզ կտրի սպանեմ։

Ասաց.—Ընձի սպանես, պա իմ պալաններին խաբր չկա՛յ։

Մարդն ասաց.—Զուրցալու տեղ չը կայ էլ։ Ձեռը ճխտեց, ճեպէն չաղուն խանեց, կնիկը դրեց գետինը, վիզը կիսակտրեց. գինքը թողեց էկաւ տունը։

Թող էդ կնիկը էդ մեճայի մէջը մնայ, Սէֆիլ Մարկոսն էկաւ տունը, իր տղները. մէկ էլ պառաւը ուրախ-ուրախ էկան առաջը։ Ասաց Մարկոսը.—Իմանճրզ պառա՛ւ, քեզ իմ տան վրան դրիմ ղարավուլ, որ ըղենց պախես էր իմ կնկեան։

Պառաւն ասաց.—Ընչի՛, պալաս։

Ասաց.—Քեաֆթար, էդ ղցր մալ ու դօլվաթ վէավ էր տուի ձեզ։—Պալամ, ասաց, Աստուած քեօ կնկեա՛ աղօթքը լսեց, քեօ պալաններին ըռուզկայ տուեց. դի՛ւ էն աստ, խանճմրս յէ՛ւր ի։

Ասաց.—Քեզ էլ կը տանեմ դէար կուչտը։

Ասաց.—Ի՞նչխօ դէար կուչտը։—Կեռ, ասաց. տըսննս եա էն մեշան, տարամ դէաղ, վիզը կուիմ։

—Ընչի, ասաց. անաստուած, Աստուած քեզի կանիծի, էն աըդար էր։

Երեխէքը լաս էն էր.—Դադա, մեր մաման ինչ ալիլ։

Դէանք թող դէաղ մնան, մենք էթանք Սէֆիլ Մարկոսի կընկեան։ Դէար վիզը որ կուիր եռ էր, անմախական ախպիւր էր բացուի, էլիր էր մէ պատի առաւ. ընկիր էր էդ մեշայի մէջով էթաս էր։ Օրերէն մէկ օր մէ բազրկեան էկաւ, էջաւ էդ մեշայի մէջը, յիւր Նօքեարներին ասաց.—Ըս տաղրանքը մէ չուռ էկէք, եարապ, առու-մառու չըկա՞յ. էդ էրկու աղունիկը մորէք, լուացէք, էփէք, ուտենք։

Նօքեարները չուռ էկան, տըսան-ինչ մէ պատի առու։

Աղունիկը մորթին, ուզեն կն էր լուան էր, սաղացաւ. թռաւ։

Մնացին չուարած. էկան բազրկեանին ասին։

Բազրկեանն ասաց.—Քելէք, էդ ախպրի ակը գըտէք, տըսէք վէճը ոէղ ի։ Էլան կննացին, տըսան-ինչ-մէ կնիկ վիզը կուիր էն, ճիւրն էլիր ի ախպուր, էթալի։ Էկան բազրկեանին ասին։

Էդ բազրկեանն էլ էլաւ, գընաց, տըսաւ-ինչ-մէ կնիկ, չուտես չը խմես, դէարը խորոտութան թամաշա անես, ինչխօ քնուկ ըլի։ Բռնեց, վիզը ճլտեց իրարու վրայ, Աստու խրամանքով փռչտաց, էլաւ նստաւ, ասաց.—Ախալէր ջան, ընձի ինչ տէյին սաղցուցիր. կնիկ տէյին, քիւր տէյին, թէ մեր տէյին։

Բազրկեանն ասաց.—Սաղցուցիմ որ ես քեզ առնեմ։

Կնիկնը ասաց.—Ես իմ մարթի խեռ վասա Աստըծու եմ դրի, որ իմ խալալին խարամ չխառնեմ, ընչանքի գերեզման մտնելը, կուզես, տար թալ մէկ խորի մէջ։

Բազրկեանն էդ կնկեան վերցեց, տարաւ, թալեց մէ խորի մէջ. զինքը թողեց, գնաց։

Աստըծու խրամանքով մէ թուլայ է փէյսա էկեր էդ մեշայի մէջը. խաց ու մաց էր ժողուելի, բերելի, թալելի էդ խորի մէջը։

Մէ քիանի օր էդինց եօլա էր էթալի։

Օրերէն մէկ օր մէկ բազրկեան էլ էկաւ, էջաւ էդ մեշան. էդ սանդուխի թուլան էլ գընաց դէանցը զատամանց կոյնեց, թամաշա արաց. Բազրկեանն էլ ասաց.—Խաց թալէք, խափխըփելով բռնէք։ Խաց թալին, թուլան առաւ, փախաւ։

Բազրկեանն ասաց.—Դօլա՜, ինչխօ ասես էդ տեղըանքը բան կայ. որ խացը վերցելի, փախնելի։ Կեասաները դէար քեամակէն գընացին, ըշկացին-ինչ.—Էդ թուլան մէ խորի վրայ կայնիր ի. կըղմըստալի. էկան ասին։

Բազրկեանն ասաց.—Քելէք, ըշկացէք, բալքի դէանց դևը ընկէր ի խորի մէջը։ Սարքը վերցին, գընացին. կախին էդ խորի մէջը։ Էդ կնիկը էլաւ. նստաւ մէջը. դէանք քաշին, խորէն հանին. ըշկացին-ինչ-մէ կնիկ, վազելով էկան, ասին.—Աղա, էննոց մէ կնիկ որ չուտես, չխմես, դէարը թամաշա անես։

Ասաց.—Իշխօ, գօլմ, խօ ճեօռ չի։ Ասին.—Չէ, ինչ ճեօռ.

Ասաց.—Էդ վէմը անաստուածն է բերի, քցի։

Բազրկեանը գինքն էլ էկաւ, ըշկաց-ինչ.—Մէ կնիկ ի. խելքը գլխէն գընաց. էդ կնիկն ասաց.—Աղբէր ջան, ընձի ինչ տեղին խանիր, քիւր տեղին, մէր տեղին, թէ կնիկ տեղին։

Ասաց.—Ես քեզ խանել տուիմ որ քեզ առնեմ։

Ասաց.—Չէ, ես իմ մարթու խեռ վասա Աստըծու եմ դրի, որ իմ խալալին խարամ չխառնեմ, ընչանք ի դերեզման մոնելը. Իշխօ խանիր խորէն, էլ ընձի թալ խոր։

Բազրկեանը վերցեց դէարը, տարաւ, թալեց ծովը։

Մէ խալևոր մարթ էլ թոռ էր քցելի ծովը, տըսաւ որ ինչ.—Էդ բազրկեանն էդ կնիկը թալեց ծովը. գինքը թողեց գընաց։

Էդ խալևորը խասաւ, էդ կնկեան ծովէն խանեց։

Ասաց.—Պապի ջան. ընձի ինչ տեղին խանիր։

Ասաց.—Օխտը ճեօռ աղջիկ ունեմ, մէկ էլ դու ութը թող ըլի։

Ասաց.—Պապի ջան. դէ, քէլի, էթանք. ընձի բռուզկեայ ունեմ. ես կը պախեմ քեօ աղջիկներն էլ, քեզ էլ. դէանք էլան, գընացին տուներ. խալևորը վերցեց. ասաց.—Պալաններ, ձեզ մէ դադօ էլ էմ բերի։

Ասին.—Խօ, մեզի չատ պախիր, մնաց որ դէարը պախես։

Ասաց.—Աստուած կը պախի։

Էդ գիշերը քնան, ելաւ, տըսաւ որ օխտը ոսկի էլի կայ բարձի տակը. խանեց, մէ՝ երկու ոսկի տուեց, ասաց.—Պապի՛, առ, քէլի պազար, այինոյին առ, բեր։

Կնիկը, գինքն էլաւ, մտաւ մի մութ պուճախ, սկսեց աչկերէն թափել, ասաց,—Աստուած, իմ պալանները, իմ մարթը ինչխօ են, եարապ, կուշտ են, քաղցած են, ընձի մըտէդ չը խանիր. վեր տեղ էլաւ, իմ բռուզկեան տուիր, իմ պալաններին բռուզկեան էլ տաս։

Ըշկաց-ինչ—Խալևոր դռնէն մտաւ, էլաւ այնոյին ձեռնէն առաւ, ասաց.—Պապէ ջան, էլ չէթաս ծովը ձուկնա խանելու. Աստըծու տուած բռուզկայով կապրենք։

Մէ սա ժամանակ մնաց էդ կնիկը. Սլօն, Ղարօն մալի տէր դարձաւ, մէ նավուղ շինել տուեց, մէ ծառ էլ անկել տուեց. իւր պատկերն էլ քաշել տուեց, կպուցեց էտ ծառի վրան. մէ ղարա-

ւալ էլ բռնեց, գրեց, ասաց.—Վէճմ էկաւ, ճիւր խմաւ. ախ քեա-չեց, կը բռնէք։

Սրերէն մէկ օր էն բազրկեանն էկաւ, տըսաւ պատկերքը, ախ քեաշից։ Պարառւլը բռնեց. տարաւ աղայի կուշտը։

Կնիկն էլաւ աղամարթի չոր խաքաւ. ելաւ դիւս, իշկաց-իչ.—Էն բազրկեանն ի, ասաց—Տարէք, մէ լաւ օրախ դրէք.

Մէ քեանի օրէն յետն էլ էն մէկէլ բազրկեանն էկաւ, ճիւր խմեց, տըսաւ պատկերքը, ասաց.—Իշխօ էն կնիկն ըլի։ Ախ քեա-չեց։ Դէօրն էլ բռնեց, տարաւ աղայի կուշտը։

Ասաց.—Դէարն էլ տարէք դէար կուշտը։

Մէ վախտ էլ մնաց, էդ Սէֆիլ Մարկոսն էլի ընկեաւ դառը աղքատութեան մէջ. էլաւ, ի՛ւրը տուեց դարիպութօն, ասաց.—Իմ կնկեայ ունէծքն էր, որ ընձի բռնեց. մարթելիւ վախքն ասաց. «Խնայի իմ պալանիրին,» ես դէարն անկած չարիմ, արդար արուն թափիմ, դէար սապայլն էլ ես կուշտ չիմ ուտելի։

Էլաւ, ընկեաւ ճանբախ, չատ ու քիչ Աստուած է գինա, էկաւ, խասաւ էդ հաւուզի մօտը, ըշկաց էդ պատկերքին, ասաց. —Իշխօ իմ կնիկն ըլի։ Ասաց. ուրը թըփեց գետինը. ախ քեաշեց։

Էդ դարաւուլ տըսաւ, զարմացաւ. դէարը վերցեց, զոռով, զըռ-մշտելով տարաւ յիւր աղայի կուշտը։ Աղան ըշկաց որ յիւր մարթն ի, ասաց.—Դէարն էլ տարէք դէանց մօտը։

Էկան, իրկունը քընան. լուսը բացուի ձեր վրայ, բացուաւ դէանց վրայ։ Առաւօտունը էլան, կնիկը յիւրը դադային կանչեց, ասաց. —Նարի, էթանք էն մարթնիրին մօտը. տըսնանք դէանք ի՛չ մարթ են որ էկան, հաւուզէն ճիւր խման, ախ քեաշին։

Էլան, գընացին էն մարթիրի մօտը։

Առաջի բազրկեանէն խարցուց։

—Ընչի խըմայ հաւուզի ջիւրը խմար. ախ քեաշիր։

—Ես բազրկեան իմ էր. էկամ, էջամ մէ մէշայի մէջ. էրկու աղունիկ տուիմ իմ կեացանիրի ձեռքը, մարթին, լուան, դէանք չուռ էկան, գզան մէ բարակ առու. աղունիկները մարթեն որ լուան էն էր, թէ աւիր էն էր, թուրին էր. Նկան, ընձի աւին. օղորկիմ. գընացին-ի՛չ-մէ կնիկ մարթիր էն. գնացիմ, վիզը ճխտիմ յիրար վրայ, կնիկը փռչտաց, Նստաւ, ասաց.—Աղբէր, ընձի ի՛չ ցէյին խանիր, քո՛ւր ցէյին, մէր ցէյին, թէ կնիկ ցէյին։ Ես էլ ասիմ.—Խանիմ որ քեզ առնեմ։

Կնիկն ասաց.—«Ես Աստըծու առաջ ուխտ էմ արի որ իմ խա-լալին խարամ չխառնեմ. Իմ մարթու խետ ուխտ եմ արի չանք ի օ՛ն գերեզմանին։

Սէֆիլ Մարկոսը դէաղ ուր մատը կծեց.—Էդ իմ կնիկը կըլի- ասաց։

Կնիկը խարցուց.—Պա՛, ինչ արիր էն կնկեան։

—Թալիմ խորի մէջ, ասաց բազրկեանը։

Կնիկ էս խետ մէկէլ բազրկեանին խարցուց.

—Դիւ ընչի ճիւր խմար, ախ քեաշիր։

—Ես էլ էդ կնիկը էդ խորէն խանիմ. ընձ էլ ասաց. «Աղբէր, ընձ, ինչ ճեյին խանիր, քի՞ւր ճեյին, մէր ճեյին, թէ կնիկ ճեյին»։ Ասիմ.—«Կնիկ ճեյին,» Ասաց.—«Ես իմ մարդու խետ վազա Ածուն եմ արի՛ որ իմ խալալին խարամ չխառնեմ. ընձի տար, թալ ծովը»։

—Է, դու ինչ արիր։—Տարամ, թալիմ ծովը։

—Է՛, Խալիւոր, ասաց. դո՛ւ ինչ արիր։—Ես էլ ծովէն խանիմ ասաց։

Ասաց.—Դիւ ինչ արիր էդ կնկեան.—Դէարը արիմ ազիզ պալա, ասաց։

Սէֆիլ Մարկոսին ասաց.—Այ մարթ, պա դու ընչի ախ քեաշիր։

—Ի՞չ ասեմ, ասաց. իմ վրայ կրակ կը թափի, էն ես էմ էր մորթիմ մեշայի մէջը. էն իմ կնիկն էր, էկամ դէաղ. դէար պատկերը տըսամ, ախ քեաշիմ։

Կնիկն էդ բազրկեաններին, էդ խալիւորին ասաց.—Էդ կնիկը ես էմ էր, էդ էլ Սէֆիլ Մարկոսն ի իմ մարթը, Աստուած ընձի լոյս արաց. իմ մարդն ընձի խասուց։

Բազրկեաններին ասաց.—Աստուած ձեզի յաջողութոն տայ, դուք գընացէք։

Բազրկեանները գընացին. կնիկը փաթըթուաւ Սէֆիլ Մարկոսին, ասաց.—Այ մարթ, տըսար քեօ աչքովդ ինչ էն էր ասելի էդ բազրկեանները. ես քեօ խետ վազա Ածու եմ դրի, իմ խալալին խարամ չեմ խառնի, ինչանք ի օրն գերիզմանին։

Խալիւորին ասաց.—Պապի ջան, ես էթասեմ իմ մարթի խետ իմ պալաների կուչոր, ի՞նչքամ կարգ էմ քցի քեզ, քեզ փեշքեաշ ըլի։

Ելաւ, խալիւորի ձեռը պագեց, քիւրերին ասաց.—Մնաք բարի։ Ընկեան ճամբախ։

Մարթ ու կնիկ էկան, խասան իւրանց տունը։

Աստուած լոյս արաց դէանցը, լոյս անի ամեն նեղածներին։



## 48

# ՀԱԶԱՐԱՆ ԲԻԼԲՈԼ

(Վաղարշապատի բարբառով *)

Կար ժամանակով մէկ հալւոր մարդ. թոռչի էր. իրեք ախչիկ ունէր, մի կնիկ. ընդըրան ուրիշ փեշակ չունէր. կեթար ձուկ բռնելու. ինչ ղդար թոռ կը քցէր, հինգ հատ ձուկ կը բռնէր չար իրիկուն. իրիկունը հինգ հատ ձուկը վեր կալեր, կը բերեր տուն. հինգ ջան ին, ամեքը մէկը կուտէին։

Ըդրա կնիկը մեռաւ, գնաց, ուրիշ կնիկ բերեց իրա տունը։

Թոռը վե կալաւ, գնաց ձկան. էլի հինգ հատ ձուկը բռնեց, վե կալաւ բերեց տուն, տուեց կնկան. կնիկը հինգ հատ ձուկն էլ էփեց. մի հատը թաքուն կերաւ։ Մարդը էկաւ տուն, ասեց.—Կնի՛կ, ձկները բե՛ր, ուտենք։

Չորս հատ ձուկը բերեց. էրկու հատը տուեց իրեք ախչկան, կերան. էրկու հատը դրեց իրանց աղաքը։ Ասեց.—Կնիկ, ես հինգ հատ ձուկ էմ բերե. էդ խե՞ էրկուսը տալիս էս իրեք ախչկան, բա մէկը ի՞նչ էս արե։

Ասեց.—Սոված ի՝ մէկը կերայ, էգուց վեց հատ կը բերես, մի հատ աւել կտամ ըդըրանց։

Ասեց.—Անկարելի ա, հինգ հատից աւել չեմ կարայ բերի. մեր ղսմաթը էդ ա. ըդով կառավարուենք։

Ասեց.—Որ է՛դ էր քու ղսմաթը, էդ էր քու դըռլիկը, առաւօտ քու տանը չեմ մնայ։

Կասի.—Ի՞նչ պատճառով չես մնում։

—Օրը հինգ հատ ձուկ էս բերում. էդ ախչկերքը կորցրայ. կե-

---

* Պատմած է Վաղարշապատցի Արսէն Ղուիմեան:

թաս էլի հինգ հատ ձուկը կը բերես․ երկուսը ես կուտեմ, երկուսը դու, մէկի կէսը ես կուտեմ, մէկի կէսն էլ դու․ կուշտ կուտենք, ապրուստ կանենք։

Ասեց.—Կնիկ, մոնց կորցնեմ․ իմ ջիկեարն էն։

Ասեց.—Անկարելի ա․ կը կորցնես, կնիկ կըլլեմ, չես կորցնի, ես կը կորեմ․ կորեմ լաւ ա, թէ սովամահ ըլլեմ։

Մարդն ասեց.—Ա՛յ կնիկ, դու՝ քու Աստուած․ տանեմ, կորցընեմ․ իրեք հատ աղի բլիթ թխայ։

Իրեք հատ աղի բլիթ թխեց․ վե կալաւ իրեք ախչկան էլ ըն-կան ճանբայ ու գնացին․ մէ մեշի մէջ մտան։ Ախչիկներ ասեցին.

—Պապի՛․ էս ո՞ւր ենք էթում։

—Ա՛յ որդի՛, էթումենք ցախի։

—Էս ցախերը թոփ անենք, տանենք․ բա ո՞ւր ենք էթում։

—Լաւ ցախի տեղ գիտամ․ էթումենք ընտի։

Գնացին, նստեցին մի տեղ, սովածացան․ էդ աղի բլիթները հանեցին, կերան․ չամա ծարաւեցին։

Ախչկներքը ասեցին.—Պապի՛, ծարաւեցինք․ ջուր ո՞ր տի կայ։

Ասեց.—Է՞յ՛ էն բանցր դարը տենո՞ւմ էք։

Ասեցին.—Տենում ենք։ Ասեց.—Ընդըրա տակին ջուր կայ դնա-ցէ՛ք․ խմէ՛ք, էկէ՛ք, ես ըս տի կը նստեմ։

Ասեցին.—Պապի՛, արեը մութն ա, դարն էլ հեռու ա․ ինչ անենք։—Գնացէ՛ք, ասեց․ ես ըս տեղ էմ։

Էդ իրեք ախչիկն էլ գնացին դպա դարը․ էդ հալի՛ւորը յետ դառաւ ու փախաւ․ էկաւ տուն։

Ասեց.—Թոռը վե կալ, գնա՛ ձկան։

Կնիկն ասեց.—Ախչկերքը կորցըրի՞ր․ Ասեց.—Կորցրեցի։

Ասեց.—Թոռը քցեց, երկու հատ ձուկը բռնեց․ էլ ընդուց դեն՝ ինչ դար քցեց․ դարդակ դուս էկաւ թոռը։ Երկու ձուկը վե կալաւ․ էկաւ տուն. տուեց կնկան, կնիկն ասեց.—Բա՛ էն իրեք ձուկն յո՞ւր ա։

Ասեց.—Էն իրեք ձուկն ընդոնց ղսմաքն էր․ էն ղեար ար-ցիր որ իմ ախչկերքն էլ կորցրեցի։

Էդ հալիւորը ասեց.—Էթամ․ իմ ախչկերքին էլի գթնեմ, բե-րեմ։ Գնաց․ ման էկաւ, չի գթաւ․ դարտակ յետ դառաւ, էկաւ դպա տունը․ օրն երկու ձկով ապրուստ արեցին։

Խապարը տանք էդ իրեք ախչկանից։ Գնացին, էն դարի տակ ջուր չի գթան․ յետ դառան, էկան, իրանց հօրը ման էկան․ չը գթան․ իրանց ճանփէն էլ կորցրեցին․ մի բարալիկ ճանբայ ընկաւ մեշի միջին ընդըրանց աղաքը․ էդ ճանփէն բռնեցին, ու գնացին։ Գնացին, դուս ընկան մի քաղաքի ղրաղ․ ըդըրանց ծարաւութիւնը

չմա էր կոխե, ջուր խմեցին ու նստան։ Մութն ընկաւ. տոփածու-թունը ըղրանց չմտ ֆիքր արեց, մեծ ախչիկն ասեց.—Ախչկերք. էկէք, ցեթենք, ում ցեթը կարճ ա. ընդրան ուտենք։

Պուճուր ախչիկն ասեց.—Ըդենց բան կըլլի, որ դուք ասեցիք։

Միջնեկ ախչիկն ասեց.—Բա ինչ անենք. մեր հէրը մեզ կորցրեց. մեր մեռնիլը լաւ ա, քանց մեր ապրիլը։

Պուճուր ախչիկը ասեց.—Դու գիտաք։

Նստեցին, իրեքով ցեթեցին պուճուր ախչկայ ցեթը կարճ էլաւ. մենծ ախչիկն ասեց.—Դէ՛, պուճուր ախչկան ուտենք։

Պուճուր ախչիկն ասեց.—Մէ քիչ քնէք, վեր կացէք, կերէք։

Ընդրանք պառկան, քնան. պուճուր ախչիկն վեր կացաւ, Աստուած կանչեց, ասեց.—Ընձի ազատայ ըտրանց ձեռիցը, հըմի վեր կենան, ընձի պտի ուտեն։

Նստեց. մատով գետինը փորեց, միտք էր անըմ։

Երկու հատ չամիչ դուս էկաւ գետնիցը. մի չամիչը դրեց էն քոր բերանը, մէկը էն քոր։ Մէկ էլ փորեց, իրեք հատ դուս էկաւ. մէկը քցեց իրա բռրանը բեզ, մէկը էն քոր, մէկը էն քոր բերանը դրեց։

Ախչկերքը ասեցին.—Ա՛յ քի՛ր, էդ ինչ ես գթնըմ։

Ասեց.—Ըստի փորումեմ, չամիչ ա դուս գալի։

Էկան իրեքով էլ փորեցին. մի լորայ չափ չամիչ հանեցին. նստեցին, կուշտ կերան իրեքով էլ. էկան մէկ էլ փորեցին. մի ծակ էլաւ, մի ախչիկ գումբալով ընկաւ ծակի մէջը. էդ ախչիկը թամաշա արեց. տեհաւ թաքաւորի մեյտարխանէն ա. ձիանոց աղաքը չամիչը, խուրմէն, բասամի մէջը, պոպոքի մէջը ուտում են, փեշը լէքը լցեց ու էդ ծակից դուս էկաւ։ Էն ախչկերքը ասեցին.—Ախչի, որ տի ընկար. մենք ասեցինք կորար։

Ասեց.—Չէ. թաքաւորի մեյտարխանէն ա, ձիանոց աղաքը լիքն էր։ Իրեքով մտան էդ ծակը, գնացին մեյտարխանէն. փեշները լիքը լցեցին, դուս էկան։ Մի ամիս մնացին ըստեղ, իրանց ժամանակին կեթային, բոփ կանէին, կուտէին. ըստի ապրուստ կանէին։

Թագաւոր մէկ օր դուս էկաւ ման գալու իրան Նազիր-վեզիրի հետնայ. գնացին, մտան մեյտարխանէն. թամաշա արեց թաքաւորը. տեհաւ ձիանը առըղ էն. մեյտար բաշուն կաղնացրեց աղաքը. բարկացաւ, ասեց.—Էս ձիանը խի են առըղ, ուրիշ ձիանոց խոտ են տալի, ես իմ ձիանոց չամիչ եմ տալի. խուրմայ եմ տալի.... դու բոփ էս անըմ. եան քու տունն էս տանըմ. եան դու ես ուտում, եան գողը կը գթնես. եան գլուխդ կը կտրեմ, անպատճառ չարի լիս ինձ պատասխան տուր։

Թաքաւորը թողեց գնաց. մեյտարը բերեց, խուրմէն, չամիչը.....

առեց ձիանոց աղաքը. իրան ճկիթը դանակով կտրեց, աղ ու տաք-դեղը արեց եարի վրէն, մումուռը տուեց իրան ճիկիթը. գնաց, էկաւ, քունը չի տարաւ։ Մէկ էլ տեհաւ գոմի էն պուճախիցը մի ծակ բացուեց, տեհաւ իրեք հատ ախչիկ իրար քամակից վէր էկան, մին ասեց.—Ախչի՛կ, թեզ արէք. փեշները լցըրէք, որ դուս գանք, փեշները լցըրեցին, էկան ծակի աղաքը, որ դուս գային. մեյցարը էկաւ, ծակի աղաքը կտրեց, ասեց.—Հը, ժաժ մի՛ գաք, իրեքիդ էլ կապաննեմ։ Ընկան ախչկերքը ըդրան աղաչանք.—Աստըծու խաթէր, մենք ախչիկ ենք. բրախ տո՛ւ, էթանք. մեր հէրը մեզ կորցրեց. էկանք, ըստեղ դուս էկանք։ Ասեց.—Ձեր խաթեր, բա՛, Թաքաւոր իմ գլուխ կտրի։ Ասեց.—Բրախ տու, չենք գայ, կեթանք. քաղաքի մէջ գլխներս կը պահենք։

Ասեց.—Անկարելի ա, ձեզ պտի տանեմ Թաքաւորին։

Մօտը չարի լիս պահեց, առաւօտը լիսացաւ. վե կալաւ, տա-րաւ Թաքաւորի պալատը, Թաքաւորը դուս էկաւ. տեհաւ մեյցարը կաղնած ա, կանչեց. ասեց.—Հը, գչերով գողը բռներ ես, որ էկեր ես։

Ասեց.—Հրամանքէս, բռներէմ։

Ասեց.—Իրիկուայ իմ բարկութունը չըլէր, չէիր բռնի. ի՛նչ մարդիկ էն բռնէր ես։

Ասեց.—Մարդ չեն, իրեք հատ ախչիկ էն։

Ասեց.—Կանչէք, գան, ախչկէրքին։

Ախչկերքը էկան, Թաքաւորի աղաքը կաղնեցին։

Ասեց.—Դու ի՛նչ ղցար աներկուղ ախչիկ էք որ էդ բան անըմ էք. որ գոմը ծակէք, ձիանոց աղաքիցը ամեն բանը վեր էք կալըմ, տանըմ, դուք ուրիշ աշխատանք չէ՞ք կարայ անի։

Էդ ախչկերքը իրանց գլխի էկածը պատմեցին, ասեցին.—Մեր հէրը կորցրեց, էկանք ըդտի դուս էկանք. քաղաքումը մէկ մարդի չէինք ճանաչում որ էթայինք, աշխատէինք. Աստուած էդ ծակը բաց արեց մեզ համար, ըդրով ապրուստ ենք անըմ. Հըմի՛, Թաքաւո՛ր ապրած, խնդրում ենք, բրախ տաս, էթանք, մեր գլուխը պահենք։

—Որ բրախ տամ, ընչով պտի պարապէք։

Մենծ ախչիկն ասեց.—Ինձ մէ փեշեկ ունեմ։

Ասեց.—Ի՛նչ փեշեկ։ Ասեց.—Ես էննեց մի խալիչա կը գոր-ծեմ որ, քու ղօշունը նստի վրէն. կէսը ծալած մնայ։ Ասեց.—Լա՛ւ, դու էս դիհն արի։

Միջնեկ ախչկան հարցրեց.—Քե՛զ ինչ փեշեկ ունես։

—Մի պղնձով փլաւ կեփեմ. քու ղօշունը ուտի, կէսն էլ մնայ։

Ասեց.—Քուն էլ լաւ. դու էլ դէսն արի։

Էն պուճուր ախչկան հարցրեց.—Քե՛զ ինչ փեշակ ունես։

Ասեց.—Թագաւոր ապրած կենայ. ինձ փեշակ չունեմ, ոսկե ճաճիւլաւոր տղայ կը բերեմ, ոսկե մազաւոր աղջիկ։

Ասեց.—Էդ իրեքդ էլ ինձ պէտք էք, իրեքիդ էլ բրախ չեմ տայ. իրեքիդ էլ կառնեմ ինձ կնիկ. գիտա՛ք, ինչ կայ. իրեքից որը սութ դուս գայ. գլուխը կը կտրեմ։ Տարաւ, իրեքին էլ առաւ։

Մնաց մէ ժամանակ, մեծ աղջկան ասեց.—Դու խալիչադ գործէ՛, տեսնամ։

Աղջիկն ասեց.—Արևելքից արևմուտք հինածդ յարմ, ես գործելով էթամ, գամ։

Ասեց.—Կորի՛, քունը սութ ա դուս գալի, ընդըրանց էլ նոր կը փորձեմ։

Միջնեկ աղջկան կանչեց, ասեց.—Քուրդ խօսացրի, սութ դուս էկաւ. քունը փլաւը էփայ, տեսնամ. մո՛նց ա, սութ ա թէ օղորթ ա։ Ասեց.—Թագաւոր ապրած՝ մի պղինձ չինել տուր. քառասուն չաճճաւոր միջին բանին. չաճճների ձէնը ուսեէճը չի լսեն։

Ասեց.—Ա՛յ հա՛յ, քունն էլ ա սութ, դու էլ կորի։

Գնացին, պուճուր աղջկանն էլ կանչեցին, ասեց.—Էն էրկու քիրդ սութ դուս էկան. քունը մո՛նց պտի ըլլի։

Ասեց.—Իմը, ես Աստըծու փեշն էմ բռնե, կըլլի։

Ասեց.—Որ քունը դրուս կըլլի, ես գիտամ, դո՛ւ, քու պարգևը իմ աչքի վրէն. ընդըրանց պատիժն էլ իմ աչքի վրէն։

Ասեց.—Վազիր, մի պառաւ կանչիլ տուր։

Պառաւը էկաւ։ Թագաւորը ասեց.—Կը տանես, էս աղջիկը կը պահես թագաւորի ծախսովը, եփոր կազատուի, ոսկե ճաճրլաւոր տղայ կը բերի, ոսկե մազաւոր աղջիկ. կգաս աչքալիսէք, քեզ կը դնեմ կչեռքի թայը. քու քաշովը ոսկի փեշկաշ կանեմ քեզ. տար ու լաւ պահայ։

Պառաւը վե կալաւ, տարաւ. պահեց, էկաւ։

Թագաւորի էրկու կնիկը ասեցին.—Պառա՛ւ, մեր քիրը ազատուելու վախտը մեզի իմացրայ, քեզ չա՛տ պարգև կտանք։ Իննը ամիսը թամմեց, ինը սահաթը, ցաւը բռնեց. պառաւ գնաց, էրկու քուրն էլ իմացրեց, էկան. մի թևը մի՛ քիրը բռնեց. մի թևը մի՛ քիրը, ծունկը տուեց գետինը, երկու էրախայ բերեց ոսկե ճաճլաւոր տղայ. ոսկե մազաւոր աղջիկ։

Պառաւն ասեց.— Աչքներդ լիս . . . .

—Ձէնդ կտրայ, ասեցին պառաւին։ Պառաւը սուս կացաւ. էրեխէքը մնացին ըտի, ֆողի վրայ. աղջկան տարան, քցեցին տեղաչորի մէջ, էկան, պառաւին ասեցին.—Պառա՛ւ, մի իլլաճ ունես, տե՛ս, էս էրեխէքը պտի կորցնես։

Պառաւն ասեց.—Ես մոնց կորցնեմ, պտի էթամ թագաւորին աչքալիսէք։

Ասեցին.—Թագաւորն ի՛նչ պարգև կտայ, մենք հինգ էն ղsար կտանք։ Երկու էրեխէն գլեցին պառաւի գողը. պառաւը տարաւ իրա տունը, մէ ղուքու մէջ գլեց. ղուքու բերանը մուշաճապեց, տարաւ, քցեց ծովը, էկաւ իրա տունը. էրկու հատ թուլայ կար, վե կալաւ, տարաւ, գլեց կնկայ աղաքը։ Թագաւորի մէկէլ կնանիք ասեցին.—Ի՛նչ արիր։

Ասեց.—Տարայ, քցեցի ծովը. էս էրկու թուլէն վե կալայ, էկայ։ Հանեցին, մին մին բուռ ոսկի տուեցին պառաւին, ասեցին.—Պառաւ, կեթաս, Թագաւորին կասես. «քու կնիկը էրկու թուլայ ա բերե»։ Ըդոնք թողացին, գնացին։

Պառաւ վե կացաւ, գնաց Թագաւորի մօտը, Թագաւորը ասեց.—Հը, պառա՛ւ, ի՛նչ կայ.—Բան չկայ, ասեց։

Ասեց.—Զըլլ՛ աչքալիսէք էս էկե, իմ կնիկը ազատուե՛ր ա։

Ասեց Թագաւոր ապրած կենայ, ասելու բան չի։

Ասեց.—Ախչիկ ա, փառք իրան (Աստուծոյ), տղայ ա, փառք իրան, աա՛, ինչ որ տուեր ա. ես իմ Աստուածանից չնորհակալ էմ։

Ասեց.—Ասելու բան չի, համա պտի ասեմ, էրկու թուլայ ա բերե։ Թագաւորը ըտի ոտը տուեց գետինը. Ճազիր վազիրին կանչեց, ասեց.—Նազիր, վազիր, ձեզ մի բան էմ ասըմ. էս կնանիքեն, իրեքն էլ, որ ես առայ, ամենքը մի փեշակի անուն տուեցին, որ սուԹ դուս էկաւ. էս կնիկը ասեց.—Ոսկե ճարըլաւոր տղայ կբերեմ. ոսկե մազաւոր ախչիկ. ընդոնց փոխանորդը էրկու թուլայ ա բերե. որ ըդըրանք դրուս ըլնէր, պատիժ ունէր էս էրկու կնկան. ըզդոնք թէ որ սուԹ դուս էկան, խնայեցի. էդ էլ սուԹ դուս գար, կը խնայէի. համա էրկու թուլայ ա բերե, էլ խնայել չկայ։ Ըդըրան ինչ վճիռ տանք։

Ասեցին.—Խնդրում էնք. ըսըրան էլ խնայես. քու քաղաքիցը հանես, ուրիշ երկիր էԹայ։

Ասեց.—Անկարելի ա, վճիռ որ դուք չէք տալի, ես պտի տամ։ Գնացէք, էրկու հատ գոմշի կաշի բերէք, մէկը քցէք տակը, մէկը վրէն, կուպրն ու ձուԹը հալէք, լցէք ըդըրա վրեն, կաշիք կպչեն ըդըրա ջանիցը. տարէք, դարվազի աղաքը դրէք, էԹող գալողը Թքէ էրեսին։

Գնացին, Թագաւորի ասածին պէս արեցին. էԹող գալողը Թքեց՝ Էդ էրկու կնանիք պառաւին կանչին. ասեցին.—Պառա՛ւ, բերնիցդ բան չի հանես. Թագաւորն ո՛ր իմացաւ, մեզ էլ կը կոըցնի, քեզ էլ։ Պառաւը գնաց իրանց տուն։

Լափինը տուեց ծովը, ղուքին տարաւ էն էրեսը, էն էրեսումը մի հատ մարդ կար, Գոլտ անըմաւոր, ըտի մենակ բահամ էր եկեր.

Ղովտին ղաւար, մալ, դոլվար չմտ. ձին բերեց ծովի ղրաղը ջրելու. տեհաւ մի հատ ղուբի ջրի ղրաղը. ծովի միջին ա։ Ղովտ ասեց. —Կեամի ա կոտրուեր, ինչ ա, էս ղուբին ընկեր ա ջրի էրես, էկեր ա։ Գնաց, ղուբին բերեց դուս. բաց արեց, տեհաւ. ըհա́, միջին մի տղայ, մի աղջիկ, նոր էլած։

Ղովտն չոքեց, Աստուած կանչեց, ասեց.—Աստուա́ծ, հենց ինչ ուզում ի, էն տուեցիր. քեզանից խնդրումեմ. ըսոնց կենդանութիւն տաս. իմ ամակը չկորցնես. ըղոնք ինձ բախշես։ Վե կալաւ, տարաւ իրա տունը. մի տարի կաթով պահեց. մի տարուայ հետնայ կաթից կտրեց. ընկան հացի, ասեց.—Իմ էրեխէքս մի տարի բերեր էմ, չեմ լեղացրի. դնեմ տաշտի մէջ, լեղացնեմ։ Դրեց, լողացրեց, էրեխէքը հանեց. տեհաւ տաշտի ջուրը սառեց. էլաւ ղուրս ոսկի. (քիւլչայ)։ Թազադան Ղովտը փառք տուեց Աստծուն, ուրախացան, ասեց.—Ըդար մալ, դօլվար ունեմ, ըդար ոսկի ունեմ. ինչ պտի անեմ, փառք քեզ, Աստուա́ծ։

Տասնը հինգ տարի պահեց կչտին. տասնը հինգ տարի հետը Ղովտը իմացաւ որ պտի մեռնի. աղջկան ու տղին կանչեց մօտը, ասեց.—Որդի́, ես կը մեռնեմ։ Որ ասեց, «ես կը մեռնեմ», տղէն ու աղջիկը իրանց գլխին տուեցին, ու լաց էլան. իմացան որ ըղրանից էն էլել։ Ասեց.—Որդի́, խի́ էք լաց ըլում։

Ասեցին.—Որ դու մեռնես, մենք մե́նց անենք. չենք կարայ ապրի։ Ասեց.—Որդի́, ես հարուր իցցուն տարի ա ընկեր էմ ըստի. Երկի́ր կայ, թագաւորութիւն կայ, աղջիկ, կնանիք կան. ամեն տեսակ բան կայ աշխարքումը, ձեր էն սև ձինը տեհնո́ւմ էք, որ օխտը կեմով կապած ա. էն ծովիցն եմ հանե. հրեղէն ձի ա. ձեր ապրանքը բարձէք ղարիբներիս, ձիանոցը, սև ձին կը քցէք աղաքը. գնորը կեթայ, հետը կեթաք, ո́րտի կը նստի. էն տի տեղ կանէք. ձեզ տներ կը շինէք. ձին ինչ ասի, խօսքից դուս չէք գայ։ Ասեց ու ֆոգին տուեց։

Քիր ու ախպէրը լաց էլան. գլխըներին տուին. գնացին, տեղը փորեցին. մէկը ոտներիցը բռնեց, մէկը գլխից, տարան, քցեցին փոսն ու ֆողը վրայ տուին։ Էկան, իրանց ապրանքը բարձեցին. սև ձին քցեցին աղաքը, ընկան ճանփէն ու էկան-էկան, իրանց հօր քաղաքի լաւ չիմանի վրէն նստեց։

Ըտի թագաւորի մէյդան էր, ինչ դաւր ուրախութիւնի օր ըլլէր, կգար, կը նստէր. թամաշա կանէր. ազիզ օրը ըդուց էլ լաւ մէյդան չունէր. բեռները ըտի վեր ածեց. քուրը թողաց բեռների մօտը, ինքը գնաց քաղաքը, տասը հատ Նօֆար բռնեց, բերեց քուր մօտը. մէկը ձիանը պահեցին, մէկը ղաւար, ամեն Նօֆարին մէ գործ տուեց։

Գնաց թաքաւորի պալատը. վազիրը դռանը կաղնած էր, ասեց. —Էկեր էմ թաքաւորի մօտը, գործ ունեմ։ Վեզիրը մտաւ թաքաւորի մօտը.—Մի ըսենց տղայ քու մօտն ա գալի, ասեց.

Վազիրին ասեց.—Գնա՛, կանչայ, գայ։

Էկաւ. կանչեց. գնաց, թաքաւորին մօտը կաղնեց, օխտը անգամ գլուխ տուեց թաքաւորին. վրայ ութին ձեռը բռնեց դօշին, կաղնեց։ Թաքաւորը որ տեհաւ, էդ տղի սըֆաքը, ոնց որ իրա սիրտը ճղեն, տղէն կոխեն սրտի մէջը։ Թաքաւորը մտքի միջին ասեց. —Ես թաքաւոր ըլնեմ, էս բաւուր տղայ չունենամ, ասեց.Ինչ որ էս տղէն խնդրուի, պտի կատարեմ։ Թաքաւոր ասեց.—Ասա՛, տեսնամ. ա՛յ տղա՛, ինչ խնդիրք ունես։

Ասեց.—Քու քաղաքի ղրաղը մի չիմաճ դուզկեաճ տեղ կայ. էն ընձի ծախես։

Ասեց.—Էն տեղ քեզ փեշկեշ ա, գնա՛, շինա՛։

Տղէն գլուխ տուեց որ յետ դառնար, էթար. թաքաւոր ասեց. —Մի ղայֆայ քցէք, խմենք։

Ղայֆան խմեցին, տղի հետնայ եփեյինա խօսաց. ասեց,—Ինչ ղդար որ պարապես, գաս խօսանք։

Տղէն վե կացաւ, գնաց բազարը. հինգ հարուր ուստայ բռնեց. հազար Ֆահլայ բռնեց. վե կալաւ, տարաւ. մի հատ ուստայ բաշի ա վերակացու դրեց, իրաւունքը տուեց ըդրան, ասեց.—Ջափ ու ձև արա՛ օքախները, գոմերը ամեն տեսակը շինայ:

Տղէն շինել տուեց, վե կացաւ, թաքաւորին մօտը, ասեց.—Իմ տները շինեցի, պրծայ։

Թաքաւորի էդ էրկու կնիկը էկան թաքաւորի մօտը. էդ տղէն տեհան։ Էդ տղէն վե կացաւ, գնաց.

Թաքաւորը էդ կնանոցը ասեց.—Տղը քցէք, ես հիւանդ էմ։

Ասեցին.—Խի՛, ինչ էլաւ քեզ։

Ասեց.—Էդ տղէն իմ սրտի մէջը մտաւ, էդ տղի սիրուցը ես մեռնումեմ. հալ չկայ իմ վրէն. էդ տղի դարտը ինձ կոխեց։

Ասեցին.—Խի՛, ինչ էլաւ քեզ թաքաւոր ապրած։

Ասեց.—Իմ արին էդ տղի վրէն ըննեց քռաց, որ գիտամ ինձանից ա. պաշկայ էդ տղէն չէթայ. գչեր ցերեկ իմ հետը խօսայ, իմ սիրտը կը բացուի։

Թաքաւորին պարկացրին. չորերը քցին վրին. թաքաւորը քնեց, վե կացան, գնացին. իրանց միջին խորհուրդ արեցին.—Կասես, էս մեր քւոր տղէն ըլլի։ Պառաւին կանչեցին, էկաւ. ասեցին.—Դինսզ. իմանսզ պառաւ, գիտա՞ս քու գլուխը ինչ կը հանենք. Արի՛, դուրս ասա՛, էն էրեխէքը տարար. քցեցի՞ր ծովը, ինչ արիր, բանամ էն

էկե. քիչ ա մնըմ Թաքաւորն իմանայ. որ իմացեր ա, մեզ պըծնում չկայ, զաքի ինչ իլաճ ունես, տես։ Ասեց.—Իմ վրայ խի՞ էք բարկանում, էն էրեխէքը դրեր էմ ղուքու մէչը, մուշամպեր էմ, քցեր էմ ծովը. էս տասնըհինգ, տասնըվեց տարի ժամանակ անց ա կացե. հըմի կեթամ, էն տեղը կը ղրկեմ, որ էլ գալը չըլնի։

Հանեցին, ամենքը մի մին բուռ ոսկի տուեցին. ասեցին.—Վե, գնա՛, վախսով բռաց արա՛։

Պառաւը վե կացաւ ու գնաց. գնաց, ըղըրանց քուչի դուռը ծեծեց. ախչիկը գնաց, բաց արեց դուռը. ասեց.—Բարև, բալա ջան։ Ասեց.—Աստըծու բարին, Նանի՛ ջան։

Ասեց.—Գնա՛. էթանք, ձեր տները ման գանք, տենանք, մե՞նց տներ էն չինե։

Ասեց,—Արի՛, էթանք, Նանի՛ ջան:

Տարաւ պառաւին ամեն տեղը, օթախները, մառանը, գոմերը, բիրաթի ման ածեց։

Ասեց.—Բալա, ամեն բանը լաւ ա, մինակ էս, ափսոս։

—Բա ինչ անեմ, Նանի՛։

Ասեց.—Ախպօրդ ասա՛, Հազարաբիլբուլը բերի, ըստի երգի. դու անկաճ տնես։

Պառաւ թողեց, գնաց, ախչիկը նստեց, նօթերը կիտեց։

Ախպէր էկաւ, տեհաւ քուր նօթերը կիտած ա, ասեց.—Ախչի, խի՞ էս նօթերդ կիտե, փառք Աստըծուն՝ թամաշա էմ անում սկի պակասութիւն չկայ։

Ասեց.—Խի՞ չիկայ։ Ասեց.—Ինչն ա պակաս։

Ասեց.—Մի Հազարաբիլբուլ ըլի, երգի, ես ականջ անեմ։

Ասեց.—Ա՛յ քիր, ես ոչ Հազարաբիլբուլի ձէն էմ լսե, ո՛չ տեղը գիտամ։ Ասեց.—Որտիան ըլի պտի բերես։

Ասեց.—Էթամ սև ձիու մօտ, տենամ:

Գնաց, գոմի դուռը բաց արեց, մտաւ գոմը. ձին խրխնճաց.
—Հա՛, ասեց. Թաքաւորի տղա՛, ինչ կայ։

Ասեց.—Հազարանբիլբուլը բերենք։

Ասեց.—Ա՛յ քու սարվացնողի չլինքը կոտրուի. Ղո՛վտը, որ ինձ տուեց քեզ. ասեց ինձ, «Էս տղի հետ կը մեռնես, էս տղի հետ կապրես». հըմի քու հետ պտի մեռնեմ. քու հետ պտի ապրեմ. գնա՛, օխտը փութ գարի բե՛ր, ածա՛ իմ աղաքը. ես մի լաւ ուտեմ։ Օխտը փութ գարին ածեց աղաքը։

Ասեց.—Մի լաւ թիմարայ ինձ։ Մի լաւ թիմարեց։

Ասեց.—Թամքը վրէս դի՛ր, ղօլաճները ղայիմ կապայ. էրկու հատ աքլորաճուտ առ. ոտդ դի՛ր զաճկուն ու նի՛լ վրէս։

Ոտը դրեց զաճկուն ու նիլաւ, ասեց.—Թաքաւորի տղա՛, ընենց

ջուխտ զանկու տուր փորիս, որ իմ մօր ծծած կաթը գայ իմ բերանը։ Ջուխտ զանկուն տուեց, մօր ծծած կաթը էկաւ բերանը. հանեց Ֆալաքի օխտը ղաքը. վե կալաւ, տարաւ մի փօշ, ձին բեզարեց, ասեց.—Տղա՛, վեր արի՛, ինձ ման ածե։ Ման ածեց. տեհաւ էն դհիցը մի սև դև էկաւ, երկու ջաղացաքար առեր ա ձեռ. ծա՛փ տալով գալիս ա։

Ձին ասեց.—Ա՛յ տղա, թեզ արա, ուտ դիր զանկուն, նիլ, սև դև էկաւ։ Ասեց. Սև դև—Աչեմ, աչեմ, քեզ ո՛ր ատամիս տակը ճաչ անեմ, դնեմ ատամիս տակը, ըսկի՛ չես էրևայ։

Ձին ասեց.—Այ տղա՛, զանկուն տու՛ր, հաւալանմիշ ըլնեմ. թէ չէ՛, ըղըրա ձեռիցը չես պրծնի։

Զանկուն տուեց, հանեց Ֆալաքի մի ղաքը։

Դևը ջաղացաքարը շպրտեց քամակիցը, կիւլլի պէս գնաց. սաղրուն դըլաւ։ Տարաւ, մի բաղչի դրաղ վե դրեց, ասեց.—Ըստի ղլիճ օքի կայ, քաղայ, դի իմ սաղրու մըջէն, որ սաղանայ։

Ալբեալը քաղեց, ծամեց, դրեց եարի մըջէն, սաղացաւ, ասեց.—Դէ՛, կը մտնես էդ բաղչի մէջ. մարմար հավուզ կայ, Հազարաբիլբուլը էդ հավուզի վրայ կախ առած ա. Հազարաբիլբուլի ղաֆասը վե կալես. մի հատ էլ կանանչ վարդենի ճղոտ կայ տնկուած, էն էլ կը հանես, կը բերես, որ ձէն տան, ասեն.—Հազարանբիլբուլը տարան, ետ չի թամաշա անես. որ ետ թամաշա անես, քար կը կտրես. էրկու աքլորաճուտն բանցը քցայ. թէ կանչեցին, խեր ա, կը պրծնենք ըստիան. թէ չի կանչեցին, չենք պրծնի։ Երկուսն էլ բանցը քցեցին, էրկուսն էլ կանչեցին։ Ասեց.—Գնա՛, իմ ասածը կատարայ ու արի. էլ մի՛ վախենայ։

Գնաց, ղաֆասը վե կալաւ, վարդի ճղոտն էլ հանեց, ձէն տուին. «Հազարանբիլբուլ տարա՛ն, տարա՛ն»։

Ետ թամաշա չարեց. էկաւ, հասաւ ձիուն. ձին ասեց.—Դէ՛, ուտ դիր զանկուն ու նիլ։ Նիլաւ։

Զանկուն տուեց, հանեց Ֆալաքի օխտը ղաքը. բերեց, իրանց դռանը վեր դրեց, ասեց.—Դե՛, տար, ճղոտը բաղչի մէջ տեղ տնկայ։ Տարաւ, տնկեց, Հազարաբիլբուլի բաղչի մէջ ինչ կար, ըդի էլաւ։ Բիլբուլը հաւըզի վրեցը կախ տուեց. ըդի երգեց. ո՛վ որ լսում էր, ճայպաք էր կտրում ըդըրա քաղցր ձէնին։ Էդ ախչիկ գչեր, ցերեկ թամաշա էր անըմ էդ բիւլբուլին։ Տղէն դուս էկաւ. գնաց ավ անելու, Թաքաւորն էլ դուս ա էկե ավ անելու. տղէն տուեց, մի չեյրանի ճուտի. ճուտը գնաց, Թաքաւորի աղաքը վեր ընկաւ. տղէն գնաց, Թաքաւորի աղաքիցը վե կալաւ. Թաքաւորը ըսկի չի խօսաց. ասեց.—Նազիր, վազիր, լէլ յետ դառէք. էլ ավ անիլը չուզի։ Ետ դառան, էկան. Թաքաւորը ասեց.—Իմ տեղաչորը քցա՛. ես մե-

ուայ։ Կնանիքը ասին.— Խի՞, ինչ էլաւ։ Ասեց.— Էն տղէն մի չարքաթ էր չէր երևում. էս օր էկաւ, ավը իմ աղաքից վե կալաւ, գնաց, հետս մի բերան էլ չի խօսայ։ Կնանիքը պառկացրին, դպա պառաւին գնացին, ասեցին.— Պառա՛ւ, էդ որտի ղրկեցիր, էլի էկեր ա։ Ասեց.— Հըմի կեթամ, էն տեղ կը ղրկեմ, չի գայ։ Մի մի բուռ ոսկի տուեցին։— Գնա՛, ասեցին. մի կաղնի էլ։ Պառաւը գնաց, ըդոնց դուռը ծեծեց. ախչիկը էկաւ, դուռը բացեց։ Պառաւը ասեց.— Բալե, բալա ջանն։ Ասեց.— Աստըծու բարին, նանի՛ ջան։ Ասեց.— Հազարաբիլբուլը բերեր ա։ Ասեց.— Բերեր ա։ Վե կացան, գնացին. տեսան։— Ա՜յ հա՛յ, ասեց. ով էթում էր, չէր գալի, էս մոնց բերեց։ Գիտա՞ս, ինչ կայ, բալա ջանն.— Ի՞նչ կայ, նանի ջանն։ Ասեց.— Որ էթայ, Դուլդուլ մատեանը բերի՝ օխտը քուռակ ունի. օխտը քուռակի եալին օխտը մազ կայ. օխտը մազը օխտը մուղամ ձէն ա հանըմ, Պառաւը գնաց, իրիկունը ախպէրն էլ էկաւ տունը.— Խի՛ էս նօթերդ կիտե, ասեց քուրը։— Գնա՛, Դուլդուլ մատեան բեր, օխտը քուռակ ունի, ամեն քուռկու եալին օխտը մազ ունի. ամեն մազ օխտը մուղամ ձէն ա հանըմ։ Տղէն գնաց ձիու մօտ, ձին ասեց.— Հը, ի՞նչ կայ, թաքաւորի տղա՛։

Ասեց.— Պտի էթանք՝ Դուլդուլ մատեան բերենք։ Ասեց.— Քու սարվացնողի վիզ կոտրի, էն իմ մօքօր ախչիկն ա. մօրից էլաւ, անըմը դրեցին Դուլդուլ, հըմի մեծացեր ա, քանի տարի ա ես հեռացեր եմ. Դե՛, ասեց, գնա՛, օխտը հատ ֆեչայ առ. օխտը գոմշի կաշի առ, օխտը փութ էլ ձութ ու ծամօն առ. հալայ, կպցրայ իմ ակլոզ ջանին մի ֆեչայ քցայ վրէս։ Մի ֆեչան քցեց վրէն, մի ղօլանով կապեց՝ օխտը ֆեչէն էլ օխտը ղար կպցրեց. ղօլանները քաշեց. թամքը դրեց վրին, օխտը փութ գարին ածեց աղաքը. ձին կերաւ, ոտը դրեց զանգուն, նիլաւ։ Մի ջուխտ զանգու տուեց. հանեց Ֆալաֆի օխտը ղարը, գնաց, մի ծովի դրաղը վեր էկաւ. տեհաւ մի ամարաթներ կայ, որ օխտը ասեծ ա, ասեց.— Այ տղա՛, ծովի էն էրեսը պտի էթանք. կարմիր դևը կգայ, մենք չենք պրծնի, բեզ արա՛։ Մէկ էլ տեհան կարմիր դևը էկաւ, մի գերան դրե ուսը. իրեք վերստ ա դրա երկարութունը, գալիս ա։ Ասեց.— Այ տղա՛, ոտդ դիր զանգուն, նիլ։ Նիլաւ։ Կարմիր դեն ձէն տուեց.— Կացէք, ղօնախ էլէք, նո՛ր գնացէք։ Տղէն ականջ չարեց, զանգու տուեց։ Զանգու տալու բաշտան վե կալաւ տղին, որ վե կալաւ, գերանը ջրինցի պէս քցեց ըդրա քամակը, չի հասաւ. գնաց ծովի մէջ տեղը տնկուաւ։ Տարաւ, տղին ծովի էն էրեսը վէր դրեց.— Քու բասարիֆը տես, ես կը մոնեմ ծովի տակը. փրփուրը թէ կարմրեց, կը փախնես, էլ քե պրծնում չի կայ. թէ սպտակեց, ուրախացի։ Ձին գլուխ կօնծի

-արեց, գնաց ջրի տակը, մի սահաթ ըդենց ծովի տակը մնաց. թա-մաշա արեց, տեհաւ փրփուրը կարմրեց, տղէն թողեց, փախաւ. ը տեղան մի կէս սահաթէն ճանփայ գնաց, նաֆաս կտրաւ. ասեց.—Ես ուր էմ փախնըմ, իմ արինը սև ձիու արընից աւել ա. ընդ-րան սպանեցին, ինձ էլ սպանեն։ Ետ դառաւ, էկաւ էլի. տեհաւ, փրփուրը սիպտակըմ ա, շատ ուրախացաւ։ Տեհաւ որ Դուլդուլ մա-տեանի եալից բռնեց, քաշեց դուս, ասեց.—Այ տղա՛. Եօխսէն քցայ ըադրա գլուխը։ Նօխսէն քցեց, կապեց։

Տեհաւ օխտը քուռակն էլ ծովու միջից դուս էկան, հաղ արե-ցին։ Ասեց.—Այ տղա՛, հը, ինչ տեհար. Ասեց.—Տեհայ փրփուրը կարմրեց։ Ասեց.—Տենըմ էս գլխիս. ճակատիս տուեցին։ Ասեց.—Բա ուր ա քու օխտը քեչէն.—Տուեցին, պոկեցին. էդ թամքը դիր վրէս, նիլ. Եօխսէն ղայիմ բռնայ, ինձ հետ քշայ։ Քշեց ծովի էրեսովը, օխտը քուռակն էլ քամակիցն էկան. բերեց, իրանց դռանը կաղնա-ցրեց. դուռը ծեծեց. քիրը դուռը բաց արեց։ Սև ձին ասեց.—Մա-տեանը բրախ տու. էլ փախնողը չի։ Բրախ տուեց, քուռակները էլ հաղ արեցին, ըդրանց օխտը մազերիցը, ամեն մազիցը օխտը մուղամ ձէն էր դուս գալի։

Տղէն վե կացաւ. գնաց բազար, թաքաւոր փանճարից թամա-շա արեց. տեհաւ էն տղէն ա.—Հէլ վախ, Ֆալաք, ասեց. ես թա-քաւոր ըլլեմ, էս թավուր տղայ չունենամ, էս էլ չի կաղնըմ ինձ հետնայ խօսայ։ Թաքաւոր իրա էրկու կնկան էլ կանչեց, ասեց.—Մի ղայֆա բերէք, ես խմեմ, պառկեմ. էն տղէն էս օր տեհայ, իմ դարդը թազացաւ։ Կնանիքը վռազ, վռազ ղայֆան տուեցին. Թա-քաւորը խմեց, պառկեց։ Կնանիքը գնացին պառաւի կուշտը. ասե-ցին.—Պառաւ, բօլ չի՞ էս օյինէն բերես մեր գլուխը։ Ասեց.—Ի՞, ինչ ա էլե։ Ասեցին.—Էն տղէն էկեր ա։ Ասեց.—Էթամ. էն տեղը ղրկեմ որ էլ իլլաճ չըլնի գալու։ Ամենքը մի բուռ ոսկի տուին։ Պառաւը գնաց. դուռը ծեծեց, ախչիկը դուռը բացեց։ Հա՛, բարև, բալա ջան։—Աստըծու բարին նանի ջան. Ասեց —Դուլդուլ մա-տեանը բերեց։ Ասեց.—Բերեր ա։ Ասեց.—Էթանք, տենանք։ Տեհաւ քուռակները էնպէս էն ջղիր տալի. մի րօպա մի տեղ չեն կաղնըմ։ Ասեց.—Բալա, տենըմ էս քու նանը, ինչ լաւ նան ա, ղրկեցի Հազա-րաբիլբուլը բերեց, ղրկեցի Դուլդուլ մատեանը բերեց. Հըմի Հազա-րաբիլբուլը որ երգում ա, դիտամ, չես հասկանում, Դուլդուլ մա-տեանի քուռակների մուղամ ձէները որ հանում էն, էդ էլ չես հաս-կանում. պա՛ որ էթայ Դիւլ փարին բերի, որ քե պէս մէ ախչիկ ա, ինչ որ ասի, դու կը հասկանաս. կըլնի քեզ հարս, իրան կնիկ։ Պա-ռաւը գնաց։ Իրիկունը ախպէրը էկաւ տուն, տեհաւ քուր նօթերը կիտած ա, ասեց.—Աւ քի՛ր, հըմի ինչ ա պակաս։ Ասեց.—Ո՛չ Հազա-

րաբիլբուլի ձէն էմ հասկանում, ոչ էլ Դուլդուլ մառեանի քուռակ-ների մուղամ ձէները. գնա, Գիւլ փարին բեր, որ ինձ հարս ըլի, քեզ էլ կնիկ. ինչ որ ասի, ես հասկանամ։

Տղէն գնաց Սև ձիու մօտը, ձին ասեց.—Հը, ի՞նչ կայ։

Ասեց.—Էթանք, Գիւլ փարին բերենք։

Ասեց.—Քու սարվացնողի չլինքը կոտրուի. Դե՛, գնա, օխտը փութ գարիս բեր։ Գարին կերաւ, ասեց.— Մի լաւ ռահբիմար մը տուր ինձ. թամքը դիր վրէս, մի ջուխտ զանկու տուր, իմ մօր ծծած կաթ գայ իմ բերանը։

Էդպէսդ արեց, ձին հանեց Ֆալաքի օխտը ղաթը, տարաւ մի բաղչի դուռ վեր դրեց, մտաւ ներսև։

Գնաց. յետ արած դռները բաց արեց, բաց արած դռները յետ արեց, տեհաւ Գիւլ փարին քեարկեահ ա անըմ, ասեց.—Գլխիդ ղուրբան, աչքիդ ղուրբան, քու յեշխիցդ էմ էկե։ Իրեք անգամ ասեց, էն չի խօսաց. վրա չորսին ասեց.—Մինչ որ էկեր էս, ընենց գնա. չըմ ղմըշըմ քեզ։

Ասեց.—Հնար չի կայ, ղմըշես, չի ղըմըշես, քեզ պտի տանեմ։

Ասեց.—Որ իմ յեշխիցս էս էկե, չարի ծնկներդ քար դառնաս։ Չարի ծնկները էլաւ քար։

Ասեց.—Ես քու սէրի խաթեր էկեր էմ։

Ասեց,—Դու չարի ծնկներդ էլեր էս քար, հալա խօսո՞ւմ էս. չարի պոռտդ էլ ըլես քար։ Չարի պոռտը էլաւ քար։

Էլի ընկաւ աղաչանք, ասեց.—Պտի գաս, էթանք։

—Չարի չլինքդ ըլես քար, ասեց։

Ձին էլ էլաւ չարի չլինքն քար, ինքն էլ։

Ասեց.—Այ տղա՛, ուրիշներին մէկ անգամ ասելուն քար էի չինում, վեր քցում. քեզ չեմ ղմըշում. քու ոսկե թաքիլը որ փըռ-ուեց էդ քարի վրայ. իմ չիկեարը մղկտում ա, քեզ որ լաւացնեմ, կեթա՞ս, թէ էլի իմ եախէն պտի բռնես։

Ասեց.—Պտի բռնեմ քու եախէն, կուզես լաւացրայ, կուզես չինայ քար, վերջանամ։

Ասեց.—Դէ՛, քարի միջից դուս արի ու արի։

Դուս էկաւ ու հասաւ Գիւլ փարուն. խտըտեց, պաչպըչեց› էն ընդըրան, էն ընդըրան, էն ընգըրան։

Ձին էլ ընտի ուրախացաւ, ոտնաքանդ արեց։ Ախչիկն ասեց.—Այ տղա՛, ես իրաւունք էմ տալի քեզ. փունջ մանուշակն առ, ո՛ր քարին տաս, կը սաղանան։

Առաւ, որին տուեց, սաղացաւ. որին տուեց, սաղացաւ. էլաւ տաս հազար մարդ ձիաւոր. խառուան բիրաշի յիրար. Գիւլ փարին իրաւունք տուեց.—Դէ՛, ամեն մարդ իրան ձին նիլնի ու էթայ իրա

տունը։ Քոմմա գնացին, մնաց էդ Գիւլ փարին ու էդ տղէն։ Գիւլ փարուն մն կալաւ, գնաց ձիու մօտը. նիլաւ ձին, ախչիկը քաշեց թարէը, ասեց ձին.—Այ տղա՛, մի լա՛ւ զանկու տուր ընձի, իմ մօր ծծած կաթը գայ իմ բերանը։ Հանեց Ցալաֆի օխտը ղաքը. ծովի էն ղրաղը մն դրեց։ Նստեցին, հաց կերան, պրծան. ձին բերեցին որ նիլնէին. մէկ էլ տեհան բօզ դևը մի ծառ ա դրե ուսին, ինչ դար ղուրս ու ղուշ-ջանավար կայ, կախ արե ծառի վրեն. դրեր ա ուսը. մի պռօշը երկինքն ա սրբում. մի պռօշը գետինը. էկաւ, ըդոնց տեհաւ, ասեց.—Էս ղցար ջանավարի մէջ մէկը խսանի մսի պէս քաղցր 'նըլլի, Աստուած ըս օր ջուխտն ա հասցրե։

Ձին ասեց.—Տղա՛, բեզ ։։րա՛, նի՛լ, դևն էկաւ. Թռի իմ քամակը։ Թռաւ ձիու քամակը, ախչկայ Թեւցը բռնեց, քաշեց Թարկը։ Դևը էն դիէն ձէն տուեց.—Կաղնէք, ձեզ բան էմ ասըմ։

Ձին ասեց.—Իմ կողքերին մի ջուխտ զանկու տուր։

Որ տուեց. ձին մն կալաւ ըդըրանց, դևը տեհաւ, ծառը տուեց գետնովն ու ձիու քամակիցը վազեց. հասաւ, ձեռը քցեց որ ձիու ոտը բռնէր. ձին մի ջուխտ քացի տուեց ճակատին, դևը տասներկու կունդկի [1] արեց ու վէր ընկաւ. ձին տարաւ բրան դռան առաջը մն դրեց, դուռը ծեծեց. քիրը բաց արեց, փաթթուեց ախչկան. էլ իրար պաչպըչիլը, Աստուած ազատի։

Էկան. բաղչէն մօն էկան, Գիւլ փարին ասեց.—Այ տղա՛, գ՚նա՛, ուստայ բե՛ր, մարթապէք չինի։

Գնաց, ուստէն բերեց, ոսկին տուեցին, իրա ձեռի մուզդը (հախը) տուին, ասեցին։—Տաս հազար ոսկե մարթապա չինայ։ Շինել տուին, պրծան։ Գիւլ փարին մի դաստայ ծաղիկ կապեց, տուեց տղին, ասեց.—Էն գոմ՚ի կաշու միջի կնիկը որ կայ. տա՛ր. տո՛ւր էն կնկայ ձեռը։

Ծաղիկը մն կալաւ, տարաւ, տուեց կնկայ ձեռը. կնիկն առաւ, թամաշա արեց. տղին էլ բան չի կարաց ասի, հենց ասեց.—Ես մեռա՛յ, մեռա՛յ։

Տղէն էկաւ Թաքաւորի պալատի տակով տուն. Թաքաւորը տեհաւ.—Նազիր, վազիր, ասեց. էս էրկու չարաթ էդ տղէն իմ աչքովը չէ՛ր ընկե. էս սահաթը կը բերէք. ընձի հետ խօսայ։ Գնացին ասին.—Թաքաւորը քե կանչում ա։ Գիւլ փարին ասեց.—Էգուց Թաքաւորը էս վախտը մեզ ղօնախ ա. տղէն չի կարայ գայ։

Էկան, Թաքաւորին ըդենց պատասխան տուեցին։

Թաքաւորը չա՛ա ուրախացաւ. Թաքաւորի էրկու կնիկը Թաքաւորին քուն դրեցին. աքալ-Թափալ գնացին իրանց օքախը. պառա-

---

1, Գլխու վէրայ գնդակի պէս գլորուիլ գնա:

ւին խապար ղրկեցին, ասեցին.—Իիճարզ, իմաճարզ. էդ որ տեղ էս ղրկե, էկաւ. ասեցին. դէ, գնա էս սճարքը ղրկել տուր, որ էթայ։ Ասեց.—Իրեք տեղ ղրկեցի, էկաւ. հըմի ընենց տեղ պտի ղրկիմ, էլ հնար չի կայ գալու։

Պառաւը գնաց. դուռը ծեծեց. ախչիկը դուս էկաւ։

Ասեց.—Բարև, բալա ջան՝ մոնց ա, Գիւլ փարին բերեր ա։

Ասեց.—Նանի ջան. բերեր ա. բա ինչ ա արե։

Գիւլ փարին ասեց.—Նանի, արի. ընձի հետ խօսա։

Ասեց.—Քեզ բերել տուեցի. մի տեղ էլ պտի ղրկեմ։

Ասեց.—Ըողրանց գլուխը ինչ բալբալէf էկեր ա, քեզանով էկեր ա. պառաւ։ Ասեց.—Խի ընձանով էկեր ա, ընձանով լաւու-թուն ա հասե։

Ասեց.—Որ թողամ, չմա կը խօսաս դու. ըլլես մի ցռոտ ցախ աւել, ընկնես ը տեղ։ Էլաւ մի ցռոտ ցախաւել։

—Ախչի, ասեց. տար քցայ գոմը, ձիու տակը։

Տարաւ. քցեց գոմը։ Տղէն ներքև մտաւ։

Գիւլ փարին ասեց.—Արի, քեզ դաւց ու բալից ազատեցի, գնա բազարը՝ տասը հատ դաւար առ, էրկու խալուար բրինձ. կէս խալ-ուար եղ. բե, քու հօր ու մօր ժամ-պատարագ արա։ Գնաց էնպէսդ արեց. դաւարները մորթել տուեց, կերակուրները էփել տուեց, ղըր-կեց, մարդիկը բոփ արեց. տղէն էլ թագաւորին կանչեց. թագա-ւորը էն սրճաքը էկաւ, էլ մանալ չիթողայ։ Թագաւորի կնանիք մարթ ղըրկեցին պառաւին. տեհան պառաւ էրեկկուանից չիկայ. ըդոնց սիրտը ճաքում էր. խլաճ չիկայ ձեռ։ Գնացին. Նստան. հացը քաշել տուեցին, կերան. իրանց աղաքի ոսկե մարքապէք էլ, տղէն հրամայեց, վե կալան, քոմմա գնացին։ Թագաւորը մնաց, չատ ու-րախացաւ. երկար խօսացին։ Թագաւորը տղին ու ախչկան բերնին մայիլ կտրեց, ասեց.—Ի՛նչ ուզում էք, ձեր լեզուն ինչ պտըտի պտի տամ։

Գիւլ փարին ասեց.—Քեզանից կմտ չենք խնդրում, մի բան էնք ուզում։ Ասեց.—Մի անգամ ասեր եմ, ուզա։

Ասեց.—Մենք էն դարվազի կապած կնիկն ենք ուզում, տաս մեզի։ Ասեց.—Դուք բան ուզէք, էդ ինչ էր։

Ասեց.—Մենք էն ուզումենք։ Ասեց.—Դե, ձեզ ըլլի։

Թագաւորը պալատը գնաց, կնանոցը ասեց.—Ընձնից զաւ չուզեցին. էն կնիկը ուզեցին։

Կնանիքը չատ ուրախեցին։ Գիւլ փարին ու ախչիկը գնացին. էդ դարվազի կնիկը դրեցին ուսներին, տարան ճամամը. տասն օր դրեցին ջրի մէջը, աճճախ ըդրա կաչին կակղեց. մի լաւ լեղացրին, բերեցին տուն. մի ձեռք էնպէս չոր կարեցին, կարեցին, ըոկի էդ

Թուրն կը զարկի Մըրրայ Մելիքին. ձին կը կտրի. քեառասուն Թաղիք կը կտրի, Մըրրայ Մելիքին կը կտրի. քեառասուն կեազ էլ գետին կը կտրի։

Մէր կըսի.—Որդի՛, սպանիր եմ տղէն—զՄըսրայ Մելիք. զարար չկայ, դուն էլ եմ տղէն էս, արի՛, ինու կնիկ առ. Թագաւորութուն մնայ քի. Մըրրն էլ թագաւորութուն արա. Սասում զաքի քեօն ի.

Դաւիթ կըսի.—Ես մօրէ որ ծնուէր իմ, գեառնարատ էմ. ես եմ խալալ լեշ ձեր խարամ լեշիրու չըմ խառնի։

Մըռըրայ Մելիքի մէր Դաւթին կանիծի, կըսի.—Ինչխ որ Մըրրայ Մելիք թաժա պառկուած էր, ինու կնիկ մնաց անտէր, որ դուն էլ պառկուես, քու կնիկն էլ մնայ անտէր։

Դաւիթ կըսի.—Կընծմընծացէք դելեր, կընծմընծացէք, ես կըհամ Սասում։

Էլաւ, գինաց Սասում, ուր խէրնական քեաղաք։

Դաւիթ կըլնի, կըհայ Սասում. մէ-էրկու-իրեք օր կը մնայ Սասումայ քեաղքի մէջ։ Ձէնով Օվան—Ինու խըրօղբէր կըսի,—Որդի՛, արի՛, քի պսակեմ։

Դաւիթ կըսի.—Աղէկ, կը պսակուեմ. վէր աղջիկ կուղես ձիկ խամար։

Կըսի.—Որդի՛, Սըլթան Չմուչի աղջիկ կուզեմ քի խամար։

Կըսի.—Խըրօղբէր, ես Սըլթան Չմուչի աղջիկ չըմ առնի։

Էն տեղ ճուապ կըհայ Օղան-տօղան թագաւորի աղջիկ Խանտութ խանըմին, կըսին.—Մըչ ախչըրքին Դաւիթ կտրիճ Ֆէրզ մի։

Խանտութ խանըմ որ կը լսնայ, կըսի ուր աշղնիրուն։

—Գինացէք, ձի Դաւթի խըմա գեօվացէք։

Կըլնեն աշղնիր կգեան Դաւթի տուն։

Դաւիթ տուն չի, Աւագ Սար նէջիր ի գինացե։

Դաւթի խըրօղբէր կըսի.—Դաւիթ ես էմ։

Ինոնք սազեր կառնեն ձեռ. զԽանտութ խաթուն կը գեօվան։ Գիտեն թի Դաւիթն ի, կըսին։

—Խանցուք խանըմի ճակտի լէնութեն ըսենք.
Հալապա կեազ թամամ ի.
Խանցուք խանըմի լեշի սըպցակութեն ըսենք
Քուլայ բամպկի նման ի.
Ինու աշկեր սեւ, ինչպես Ֆնճանի-կասախի նման ի.
Ինու աշի բարբըպներ սեւ, կռնկի ճղա նման ի.
Ինու յէրկնութեն սեւ, քեառասուն Հալապա կեազ թամամ ի։

Դաւթի խըրօղբէր կըլնի վէր, կը նեղանայ, կըլնի ինոնց սազեր կը կոտրի՝ ինոնց կը տփի։

Կըլնեն իջնոնք Դաւթին յիշունց տալով տնէն դիւս կըհան։

Դաւիթ Աւազ սարից Նէջիր վեր թիւին կգեայ ինոնց յիռջևւ

Կը տիսնայ էրկու մարդ Դաւթին խէր, մեռել, խատոած յի-չունց կտան, քիւֆր անելով կգեան։

Դաւիթ կըսի.—Այ մարդեր, Դաւիթ ձե ինչ ի արեր, դիւ Դաւթին յիշունց կտաք։

Կըսին.—Պա՛, մենք Դաւթին յիշունց չտա՛նք, մեր սազեր կոտ-րեր ի։

Դաւիթ կըսի.—Այ մարդեր. Ձեր սազեր ընչի՛ ի կոտրեւ

—Պա՛, կըռին. մինք էլանք, գինացինք, Օղան-տօղան թագաւորի աղջիկ-Խանտութ խանըմ Դաւթի խըմար գեօվացինք, Դաւիթ զար-կեց. մեր սազեր կոտրեց։

Դաւիթ կըսի.—Ա՛յ մարդեր, նա եմ խըօղբէրն ի իլե, Դաւիթ ես էմ. մէ ձի խամար գեօվացէք, տիսնանք ձեր Խանտութ խանըմ։

Կըսին.—Մեր սազ կոտրեց, անսազ ինչխ տը գեօվանք։

Կըսի.—Ընձի ղապուլ ի, անսազ գեօվացէք։

Ինոնք կըլնեն, Խանտութ խանըմ անսազ կը գեօվան.

—Մեր Խանտութ խանըմի նակտի լենութեն սենք,
Հալապայ կեազ թամամ ի,
Մեր Խանտութ խանըմի աչքեր սենք
Ջինի ղատախի նման ի:
Մեր Խանտութ խանըմի աչկիրու թարթըլներ սենք
Կոնկիւ նղա նման ի,
Մեր Խանտութ խանըմի լեչի կակղութեն սենք,
Քուլայ բամբկի նման ի.
Մեր Խանտութ խանըմի յերկրնութեն սենք,
Քեառսուն Հալապա կեազ թամամ ի:

Էն տեղ Դաւիթ կըսի.—Դիւ գինացէք. ես տը դեամ, ուրբաթ օր ձի խանըմ տիսնամ։

Դաւիթ կըլնի. կըհայ տուն, խըօղբօր կնկեայ կըսի.—Եմ չորեր լուայ, ես տեղ տըհամ։

Խըօղբէր կըսի.—Կայ-չկայ, էն չուն չանորդիք գինացած, տի-սած. ճամբխէն խանած։

Դաւիթ կըլնի, կըխեծնի ուր ձին. որ էհայ Օղան-տօղան թա-գաւորի տուն Խանտութ խանըմ տիսնալու։

Կըլնի, կըհայ Օղան-տօղան թագաւորի քեաղքի մէջ։

Ղարիպ ի. դիւռ չը գիտի վա՛ր տեղէն ի. յըմեն բաց ան ի. լանեկեմ կը զարկի, բացոն կը փլուցի. ձիով կը քշի, կըհայ Թագա-ւորի խաս պաղչի մէջ. ձին կը թուղնը՝ վարդ, ըռահանիրու մէջ. կէրեծայ. ինքը անմախութենի ճավուզի վրէն պառկի, կը քնի։

Ուրբաթ օր ի, Խանտութ խանում կըլնի՝ Դաւթի ճամբաղ կիչ-կայ, տեսնայ Դաւիթ եաճի, կգնայ։

Կը տեսնայ մէկ մարդ կեօ ձին թըղեր խաս պաղչի մէջ. մարդ ըռահաններու մէջ կէրեծայ. զինք պառկե վրր հավուզին, քընիր ի. կըսի.—Կայ-չկայ, էն Դաւիթն ի. կըսէն «Դաւիթ կոպիտ, ծուռ մարդ ի», էն Դաւիթ կըլնի, ինչ դանձար անփարսայ մարդ ի. գինացէք, ըսէք, որ էն խասիյեթի տէրն ի. թըղ ըլնը, հա. մէկ խաց էլ տարէք, թըղ ուտի, նոր կըսէք. «մեր Խանտութ խանըմ կըսի. թըղ ըլնը՝ հա»։

Խաց կը տանեն. դնեն Դաւթի յիւջև, Դաւիթ կուտի։

Ֆէրզներ Դաւթին կըհան, կըսին.—Մեր Խանտութ խանըմ կըսի.—Թըղ ըլնը հա, ինու վամ ըսի՝ ըլնի, գեայ, ձին թըղնի մըջ խաս պաղչին. մարդ ըռահան ուտի. տըրրի, փայլեվան տայ (ձիու գետին թապլտկիլը), էն ինոր խօր չիմանընի. օձ ուր պոռտով, խաւք ուր թեւով, մեր խաս պաղչի վրէն չէր իջե. էն ի՞չ հատ ունի. ուր գլխին գեայ, զարկի. պատռան քեալի, մտնի մըջ պաղչին. ձին թըղնի մէջ, էրեծայ. ինչ դանձար անմարիֆաթ մարդ ի. թըղ ըլնը հա, ախտոս ի, թէ չէ Ֆէրզներ կգեան. ինու ջոջ բըրդուճ ինու ականջ կը թղնին։

Դաւիթ կըսի.—Խօզի դիւ չ'ուտ էր ըսե. քեանի ես խաց չիր կերե. ինչ Ֆայտայ. խաց կերայ, պըծայ. նոր ըսըցիր. որ սկոն ի՝ ես չըմ էհայ. իչ ինոնց ձեռնէն կգեայ, թըղ չը խնայեն։

Ֆէրըզ կըլնըԽանտութ խանըմին կըսի.—Դաւիթ սկնայ կըսի։

Խանտութ խանըմ կըսի.—Իլէք, գինացէք, ըսէք. թըղ գեայ աղայ. դիւք սֆրէն փուէք, ձեր թրիր դրէք տակ. քեառսուն Ֆէրզներ կըլնեն. ուրինց թրեր կը չըլտեն, կը դնեն սֆրի տակ, սֆրէն կը փռեն վրէն. խաց կը դնեն . . . .

Դաւիթն ղանչեն կը գեայ, կըսին.—Խրամեցէք, խաց ուտենք։

Դաւիթ կըղեայ, կը նստի միամիտ. որ խետըները խաց ուտի։

Մէկ մէկ պստիկ քաս արաղ կը բիրեն, կը խմեն, կըլնեն մէկ մէկ քաս էլ գինի կտան։

Դաւթին որ կտան, Դաւիթ կառնի զըքաս։ կը տփի պատ. կըսի.—«Մա ուղտ գդելով կը ջրեն» բիրեք մէկ քեասա. ես գինի խմեմ, կշտանամ։

Կըռըքի Դաւիթ, սֆրէն կը ծալի, կը տփի պատ. կը տեսնայ քեառսուն թուր կեօ չլտուկ, սֆրի տակն ի. կը ծալի զը թրեր, կըսի.—Իչ խօրոտ եմ ձիու Ճալ, մեխ կըլնը։

Ֆէրզներ՝ զարզանդ կտայ վըր Ֆէրզներաց, կը վախենան Դաւ-

թի մօտէն, կըսեն.—Աստուած կամեցաւ. մենք չզարկինք Դաւթին, որ մենք զարկեր ինք՝ գլխի գլխին էլ կապանէր։

Կըհան, Խանտութ խանըմին կըսեն.—Դաւիթ սկնայ արաւ։

Խանտութ խանըմ կըսի.—Գինացէք. դիւ քեառասուն Ֆերզ, կայնէք իր Դաւթին մէ տեղ, ես փաճճուրից խնձոր տը զարկեմ. Խանտութ խանըմ իրեք դիր խնձոր կը թալի, իրեք դիր էլ կը զարկի Դաւթին։

Դաւիթ Ֆերզնիրու կըսի.—Գինացէք. Խանտութ խանըմին սէքթուղ գեայ, ես տիսնամ.

Խանտութ խանըմ կըսի.—Գինացէք, սէք Դաւթին, թըղ ընըհա, ուրբաթ օր յըխտի օր ի, ես կըհամ ուխտ. թըղ գեայ յըխտատեղ. զը մէմէկ կը տիսնանք. թի որ ձի չի՛ ճանչնայ, եմ բաժ քանկեազ վըր խալքին բանցր ի։

Դաւիթ կըլնի, կը խեծայ ձին, կը գեայ տուն։

Կը մնայ չուր ուրբաթ օր. ուր չորեր լուսլ կտայ. կըլնի, հա ըխտատեղ Խանտութ խանըմ տիսնալ։

Կըլնի, կըհայ. կը տիսնայ, ըխտաւորներ կըհան. կիչկայ կեօմէկ աղջիկմ մէջ ըխտաւորներուն չար բռներ ի։

Կըսի.—Կայ-չկայ, Խանտութ խանըմ էն կըլնի։

Կըհայ. կը խասնի. ուրախըլթինը չգիտի ինչխ ա՛նի՝ Խանտութ խանըմի ճակատ կը պագի։

Խանտութ խանըմ գեօմըմ կը զարկի մըջ Դաւթի քըթին։

Դաւթի քըթէն կը պըծնի էրուն, կը գեայ։

Դաւիթ կըսի.—Բան չըմ ըսի, Աստըծուց կը խնդրուեմ, Սև թագաւորի ձիաւորնիր գեան քիւ խօր վըէն, կռիւ ուզեն։

Որ կռիւ գեան ընձի մօճթաճ ընեն, ես համ կռիւ՝ մա բան ի, մեռայ. եմ լեչ խարամ լէչերուց խանէք դիւս. ջոկէք՝ եմ նշանն էլ ինչ ի, եմ աջ թիւին վըէն մեծ խաչ կայ։

Դաւիթ կըլնը. կը թուղնը կըհայ ուր տուն։

Խանտութ խանըմ կըհայ ուր տուն։

Խանտութ խանըմ կը տիսնայ, իչ, էրկու սև ձիաւոր էկան մըչինու քեաղքին, թագաւորի քեօշկ ու սարէն կը խարցեն։

Կըհան Օղան-տօղան թագաւորի քեօշկի սարի յեռջև կըսին.—Ահան, եաճ Օղան-տօղան թագաւորի աղջիկ, Խանտութ խանըմ տը տանեմ եմ տղին. եաճ էլ կռիւ տանեմ։

Ծուապ օրողկեց Դաւթին, ըսաց.—Դաւիթ, ինչխ անիծեր ի. սկօն էլ թը գեայ, ուր կռիւ անի, ճար մ՛չ ի, թի որ չանի, ես տըհամ. Սև թագաւորի տղին տ'առնեմ։

Դաւիթ ըսաց.—Զօր ի, տըլնեմ, տըհամ, կռիւ անեմ։

Դաւիթ ելաւ. ուր ձին քշեց գիւս, ուր չորեր խազեաւ, գինաց. գինաց մըշ կռւռւն։

Ինու քեռի Թուրոս թաճպի էր արե, ըսեր էր.

—Ընձի քինէ ամաճէ. կըհաս Սև Թագաւորի կոխ. կիւրզ կը քեշես. կը զարկես. էրկըթե սուն կայ, ինուց էրկըթե սուն, թի կտռեց՝ կտռեց. թի որ չկտռեց, յետ կը դառնաս, կգեաս։

Գինաց. խասաւ էրկըթե սան մոտ, կիւրզ քեշեց. անուն Աստըծուն իտուր, կիւրզ զարկեց էրկըթե սան։

Կիւրզ էրկըթե սուն կտռեր էր։

Համա խարաւ քեամին կըգէր, էրկըթե սուն կտրելու բաշտաճ վըր ուր ֆեօֆին կայնաւ։

Դաւիթ գլտցաւ որ կիւրզ էրկըթե սուն չկտռեց։

Ըսաց.—Հա՜յ, եմ վիզ կտրուէր. եմ թեւ օլրուէր, եմ աչկերս խաւարէր, ես չիկե. եմ կիւրզ վըր էրկըթին չը ճրպէր։

Դաւթի վիզ կուտրաւ, թև ուլրուաւ, աչքեր խաւրաւ։

Դարձաւ գինք ուր օրչնեց. Աստըծոյ խրամանքով սաղցաւ։

Մէկ էլ ղանչից Աստուած. կիւրզն զարկեց էրկըթե սան, կըտրեց, տիսաւ որ էրկթե սուն էրկու տեղով կըտրուկ ընկեաւ։ Ըսաց.—Հելպէք ես էն գեախ չըշկոեր ի։

Անուն Աստըծու իտուր, քշեց ուր ձին. գինաց մըշ կռւռւն. գինաց, էկաւ էրկու գլեօխ. Սև Թագաւորի ասկեար կտրեց։

Սև Թագեաւոր իշ ըրաց. կէս գիշեր կըլնէր ժամանակ. զճիլներ Թալեց վըր էրկըթե սներ. փակին զը Դաւիթ. կապին վըր սըներաց։

, Գիշեր Չէնով Ցոլան մըշ էրազին տիսաւ զը Դաւիթ կապին էրկըթե սներաց վրէն. քիչ ի մնացե որ սըպանին։

Չէնով Ցոլան կըսի.—Կնիկ, յիլ վե, Դաւիթ վըր էրկթե սըներաց կապած. ճրագմ արա։

Կնիկ կըսի.—Այ տնաւէր։ փթխուկ խալիւոր. քիւն քե քընի. էրազ Դաւթին տըսի. Դաւիթ Խանտութ խանըմի ծոց ֆեֆ կանի։

Չէնով Ցոլան մէկն էլ քընաւ. էլմէլ մըշ էրազին տիսաւ Դաւիթ վըր սներաց կապած։

Ելաւ, էլմէլ ըսաց.—Կնիկ. Դաւիթ վըր սներաց կապած ի, նեղութենի մէջ ի։

Կնիկ կըսի.—Փթխուկ խալիւոր էս օր ծռեր ի։

Նըմէլ դառնայ, կանճարանայ, կը քընի։

Մէկն էլ մըշ էրազին կը տիսնայ, Դաւիթ էրկթե զճիլներով վըր էրկթե սներաց կապած։

Էլ կնկեան չը լսի. կըլնի ւեր, ճրագ կանի. կըհայ ախտախաճէն, ձեռ կը դնի սև մատկու քեամկին, կըսի.

—Այ սև մատակ, ընձի եփ որ խասցըցես Դաւթին:

Կըսի.—Առաւօտուն ժամ զարկոցին, կը խասուցեմ:

Կըսի.—Հայ քիւ վիզ կոտրուի:

Կըհայ, ձեռ կը դնի կարմիր մատկու քեամկին, կըսի.—Կարմիր ձի. ընձի եփ կը խասուցես Դաւթին:

Կըսի.—Բիւ աչկեր բանաս, խփես. վըր ճանցկներաց Թափարս կառնիս:

Ջէնով Յովան կըսի.—Բիւ մէչքը կանանչի:

Կըլնի, քիմարմ կըտայ. ճակատ կը պագի, կը խեծնի:

—Կանանչիս, որ դիւ էս օր եմ որդուն կը խասուցես,

Կը խեծնի, աչկեր կը խփի՝ բանայ, կը տեսնայ վըր ճանցըկներաց Թափարս կառնի:

Քեառասուն աւուր ճանբախ զատն ի Դաւիթ, կը պօռայ, որ կը պօռայ, քեառասուն աւուր ճանբախ ձէն կհայ, կըսի.—Դաւիթ, Աստուած քիւ տուն չաւրի. մէ յիշա Մարութայ բանցր Աստուածածին. Մսե խաչ որ պատրաստ ի քիւ աջ թևին. մէ քի թափ տու:

Դաւիթ կըսի.—Հայ վախ, եմ խրօղբօր ձէն ի. էկաւ, ձի խասաւ, աղուրթ կըսի. Աստուած եմ տուն ակոլի. մա ես ինչ զանցար ընձի մոռցիրէմ. զանչեմ Մարութայ բանձր Աստուածածին:

Դաւիթ կը զանչի Մարութայ Բանձր Աստուածածին, զէնք թափ կտայ. զճճըրներ կը կտըրուի, Դաւիթ կարձգուի: Էն զճճիլներու կտորնիր կը դիպնայ, ասկեար զըմեն կը ջարդուի: Կիչնի, կը տեսնայ, էն ասկրից իրեք մարդ ի մնացեր. էլ զաs չկայ: Ըն տեղ Դաւիթ կուզի էն իրեք մարդ սըպանի: Մէկ էլ Դաւիթ իչ կը տեսնայ. էրկնուց աստղերու հաշիւ կայ, Սև Թագեաւորի ասկրին չկայ: Դաւիթ էրկու բաթ-էրկու գլեօխ Քուռկիկ Ճալալին կը քշի. զընոր դեացող ասկեար մէկ ձեռք էլ էկան. զըմեն ջարդեց:

Դաւթի թուր արուն բռնե. էլ չխաղայ մըջ ճանդկին:

—Քիւռկիկ Ճալալի. ապա դիւ կըսէր. «ես քի որ խաղցըցեմ խըտ ամպիրուն խըտ խարաւ քեամուն, խըտ էլեգեական». մկայ ես էլ անօթի էմ. դիւ էլ, թուրն էլ արուն բռնե. էլ կտուր չանի, յէս օր ես կուզեմ, դիւ ձի «խաղցըցես խըտ ամպիրուն»:

Քիւռկիկ Ջալալին կըսի.—Ինչ կուզես, խայ, ըսա, տեսնանք:

Դաւիթ կըսի.—Քիւռկիկ Ջալալի, ես քինէ կուզեմ, ըձի թռուցես, տանես վըր պեօշ ջրի (առատաբուխ) վրէն դնես, թուրն էլ արնից լուամ. քի էլ թողնեմ, էրեծաս. դիւ էլ բռահարես. ես էլ խացմ ուտեմ, բռահարեմ:

Քուռկիկ Ջալալին կառնի զը Դաւիթ, կը թռնի խըտ ամպէ-րուն, կը տանի էն սարով էն ախ. պոօ ջրին մըէն կիջի։ էն տեղ Դաւիթ զըՔիւռկիկ Ջալալին կը թուղնը. թուր կը լուայ, Քիւռկիկ Ջալալին կէրեծայ. զինքն էլ խաց կուտի։ Երկըսով էլ կը ռածաքին։ Դաւիթ կըսի.—Իլի, Քիւռկիկ Ջալալի, քի խեծնեմ, հանք, մեր կռիւն անենք։

Դաւիթ կը խեծնի, կըհայ. էրկու գլեօխ կըհայ, կգեայ մըշ Սև Թագաւորի առկըին, կը կարի. կռուըց կը պըծնի։

Էն իրեք մարդ կըսեն.—Դաւիթ, մենք իրեք մարդ քիւ բաղդն էնք ընկե, քիւ Քիւռկիկ Ջալալու բաղդ, զմի չըսպանես. մենք քի կըլնենք ղալուն կրակող, ղայֆայ, չայ եփող, քի ծառայութուն կա-նինք մինչև օր մեռնելուն։

Ձէնով Ցոխան կգեայ, կը տըսնայ կեօ իրեք մարդ նստած խըտ Դաւթի կչտին. կըսը.—Դաւիթ, էդ ի՞նչ մարդ էն։

Կըսի.—Խրօղբէր, իրեք Ֆագիր մարդ էն։

Դաւիթ կըլնի, ոտաց ճանբախ էհայ. կըսի.—Ես համ, թուր թըղնեմ, վախենամ եմ խրօղբէր էն իրեք մարդ սըպանի, թուր տա-նեմ խըտ ձի. վայ թէ եմ խըօղբէր ըսի. «վախեցաւ Դաւիթ»։ Թուր չտարաւ խըտ ուր։

Ձուր էկաւ. խըօղբէր էն իրեք մարդ սըպանեց։

Դաւիթ էկաւ, ըսաց.—Խրօղբէ՛ր, դիւ ընչի նա մարդիր սըպա-նեցիր։

Ըսաց.—Որդի՛. դիւշման պա մարդ սաղ կը թուղնը։

Դաւիթ մէ միջոց ծիրնի չիր ի կիրե, մէ խատ կողինծ ինու ջէպն էր, կողինձ կառնի. թալի թըխ ուր խըօղբէր. կառնի խըօղբօր պլորին, ձուն կը փըթղըցըցի, խըօղբօր ուշքը կեհայ, մե-ռուկ կընկի։

Դաւիթ էն տեղ կաչկի, տըսնայ. մէ սև ձիաւոր, ձին խեծե, էն տեղէն ջանըդկներ ձախ առնելով՝ աջ թալելով կգիայ։ Դաւիթ կիմնայ թի Խանտութ խանըմն ի։ Զինքն էլ կը խեծնի Քիւռկիկ Ջալալին. կը ռեճեպի, կըհայ յէռջև, կըսի.—Է՛յ, անիրմա, էն ի՞նչ դիւ իաև կան կգեաս. էրեկ էսա գեախ քե ղուրպան էմ արե։

Խանտութ կիւրզմ կը զարկի Դաւթին. Դաւիթ ուր կիւրզը կտայ յիռջև. Խանտութ խանըմ կը փոխի որ մէկ կիւրզ էլ զարկի, Դաւիթ կըսի.—Է՛, դիւ կօր էս, ես էմ, դիւ ընձի չըս ճանչնայ։

Դաւիթ էն տեղ չատ կուրախանայ վըր Խանտութ խանըմին. Խանտութ խանըմն էլ չատ կուրախանայ վըր Դաւթին։

Կըլնեն, կգեան չադրի տակ. կը տըսնան Ձէնով Ցոխան խեղ-քեագնայ ընկեր ի։ Խանտութ խանըմ կըսի.—Դաւիթ, էդա ի՞նչ մարդ ի, խեղքեագնայ ընկեր ի։

Դաւիթ կըսի.—Ես զարկըցի, եմ խըօղբէրն ի։

—Ընչի զարկըցիր. մարդ էլ ուր խըօղբօր զարկի։

—Զուր էս ոտաց ճանըխուն, էկայ, իրեք Ֆուղարայ մարդ սպանեց։

Խանտութ խանըմ դեղ տուեց, Ձէնով Ցօվան աղէկցաւ։

Աւին Ձէնով Ցօվան ուրենց խետ, էկաւ Օղան-տօղան Թագաւորի տուն։ Ձէնով Ցօվան մնաց մէկ-իրեք օր ուր խնամի Օղան-տօղան, Թագաւորի տուն. Ելան Ձէնով Ցօվան ճանըու դրին, գինաց Սասում-ուր տուն։ Մէկ-էրկու-իրեք տարի մնացին Խանտութ խանըմի խէր Օղան-տօղան Թագաւորի տուն։ Աստուած իտու. Դաւ-Թին մէկ տղայ իլաւ։

Տղէն որ ծնուաւ ինու ձեռ խփուած էր։

Դաւիթ ձեռ իտու. ուր տղի ձեռ բացեց։

Դաւիթ իչկայ մէկ պտուղ էրուն մըջ ինու ափան էր. ըսաց.

—Այ որդի՛, քեար քի մուտ տայ. խող չկէնայ պախի քի։ Դաւիթ զուր տղէն կնքել տուեց. ուր խօր անուն դրեց վըր ուր տղին. տղի անուն դրեց Մհեր։

Մհեր էլաւ ութ-ին-տաս ամսական տղայ։

Դաւիթ Օղան-տօղան Թագաւորին ըսաց.—Ես տըհամ եմ Թագաւորութենի վրէն. մնացիր ի անտէր։

Ըսաց.—Որդի՛, կըհաք, դիւ գիտէք. ես ձե չըմ կէնայ ըսի մչհայ. (ընտե ըսաց) ձեր որդի Մհեր կտաք ընձի. Թէ ձեր տղէն ի եմ տղէն էլ ի. հաշիւ չկայ. դիւք ջինել էք, ձե տղայ կըլնի, ամա եսձի տղայ չըլնի, տղայ էլ չունեմ, Մհեր կը պախեմ. ունեմ ձի տղայ։

Մհեր տուին Օղան-տօղան Թագաւորին։

Դաւիթ էլաւ, առեց զըխանտութ խանըմ. էկաւ Սասում. վըր ուր Թագաւորութընին նստաւ։

Գեալիւ ժամանակ տը կէր, Սըլթան Զմուչ Դաւթին տիսաւ, ըսաց.—Է՛յ, ձը խըտ քի կռիւ կայ անիլիւ։

Դաւիթ ըսաց.—Խընդրեմ, խըտ ձի սւrզ կայ. յէս օր չըլնի։

Սըլթան Զմուչ ըսաց.—Դիւ կերդուընեաս, դիւ գեաս կռիւ։

Դաւթի ծոց մէկ համայիլ էր. մէկ սանտրն։

Դաւիթ ուզեց Սըլթան Զմուչ խափէլ, սանտրով յէրդում ուտէր, սանտր անէր համայիլ, յերդըվնէր, խալատաւ, համայիլ յերդում կերաւ։ Էկաւ տուն. յէվարին ուր չորեր խանեց, աչկեց վըր ուր Թիւին, տիսաւ մեծ խաչ սեցեր ի, ըսաց.—Հէյ վախ—Հէյ վախ, ես պատճուայ։

Ելաւ, ըսաց.—Ճարն ինչ ի, տըհամ. սպանուեմ։

Էն ժամանակուայ մարդ սութ չըր յերդուընայ. Դաւիթ տի-

սաւ զինք սութ ի յերդուըցե. ըսաց.—Ճարն ինչ ի. տըհամ, Սըլթան Ձմուչ ընձի սպանի։

Կնկեան ըսաց.—Եմ չորեր լուայ. տեղ տըհամ. ընձի ջիւր դի. ընձի լողկըցըցու. այպմ վըր ձիկ տխնաս՝ չիտաս իմ իրեւ։—Այ մարդ, պա մինք իրիկ, կնիկ ենք. ինչխ քիւ այպ տը տամ քիւ իրեւ։

Կնիկ բիրեց, Դաւթին լողկըցըցուց։

Տիսաւ Դաւթի Մսե խաչ վըր աջ թիւին սեւցիր ի։

Ըսաց.—Դաւիթ։ Ըսաց,—Ձո՛ւ։

Էսաց,—Դաւիթ քիւ մսե խաչ ընչի՞ սեւցիր ի։

Դաւիթ ըսաց.—Կնի՛կ, քիւ վ իզ կտրուի, սկոն ըսըցիր, ես տըհամ, զարարուեմ, էլ չըմ իգեայ։

Դաւիթ էլաւ, ձեռ դարտակ գինաց. կիւրզ-բան չտարաւ ուր խետ ուր էրդումի խաքեր, սպանուեմ, մեղաց ազատուեմ։ Իջաւ չիմաճներ։

Սըլթան Ձմուչ էն տեղ աղբըրի քեարին տակ պախուեր էր. Նեա անեղն զարկեց Դաւթի ձախ կողին։ Դաւթից եօթ դեօմչիւ ձէն էլաւ։

Խանտութ խանըմ ճեօշկ ու սարի վերէն նստած էր. Դաւթի պոռալիւ ձէն լսաւ. որ լսաւ, ուր սրտի ճեարպուն զինք ճեօշկ ու սարից տփեց տակ։

Ինու գըլեօխ խըրուաւ ճեօշկ ու սարի դռան յիռջիւ մըչքեարին։

Մկայ էն տեղ եօթ հարասի (չափ) ցորեն կը վիրցի։

Խանտութ խանըմն էլ մեռաւ, պրծաւ։

Դաւիթ ու Խանտութ խանըմ-էրկուս մէկ տեղ տարան, խորին։

Ձէնով Ցօվան էլաւ վեր, ըսաց.—Ես իչ անեմ. եմ թագեաւորութուն մնաց անտէր, Սասման տնէն օրցեղէն կտռաւ. ես էմ մնացե. Դաւթի զաւակ Մհեր, թի էն էլ սաղ ըլնի։

Ձէնով Ցօվան կըլնի կըհայ Օղան-տօղան թագեաւորի քեաղաք, կըսի.—Եմ թոռ տու ձի, տանեմ. համ Դաւիթ սըպանըցըն, Դաւթի թօլ առնենք. համ Սասում չմնայ անտէր. տէր կէնայ Ջօջանց տան. Կըսի.—Խնամի Ցօվան, Դաւթի զաւակ Մհեր մեռիր ի, չկայ։

Կըսի.—Որ մեռեր ի, համ, ձեր գերեզմաններուն կաչկեմ. մեր տան մարդ որ մէկ տարեկան մեռնի, ինու տապան տաս Հալապար կեազ ի, էրկու տարեկան մեռնի, քսան Հալապայ կեազ ի։ Քեանի տարեկան սը մեռնի. յըմեն տարուան տաս-տաս կեազ ի ինոր գերեզման։ Թե որ հարցնես մեր տան մարդ որ յիսուն տարեկան մեռնի խարիր կեազ ինու գերեզման ըլնի։ Եմ թոռ Մհեր ըս տորի իրեք տարեկան ի. ես գիտեմ։

Կըլնի. կըհայ, գերեզմաններ կիշկայ, կաչկի որ ինոնց տան ճնսի գերեզման էն տեղ չկայ. կըգեայ, կըսի.—Խնամի՛, դիւ ընչի

ընձի կը խափես, եմ Թոռ որ իրեք տարեկան մեռնի, ինու գերեզման եուսուն կեազ ի. եռսուն կեազ դերեզման չկայ ձեր դերեզմաններու մէջ․ ընչի ձիկ կը խափես։

Կըսի.—խնամի՛, պա սուտ չըմ ըսի, մեռեր ի։

Կըսի,—Ջանըմ, ես գիտեմ չմեռեր ի. դիւ չըս ուզի տայ։

Ձէնով Օհան կըլնի, մըչ քեազքին կը պոռայ—Մհեր, Դաւթի զաւակ Մհե՛ր, դո՛ր իս, դիւս իլի։

Քեառասուն աւուր ճանբախ Ձէնով Օհանի ձէն կըհէր։

Մէկ էլ ղանչեց.—Մհե՛ր, Դաւթի զաւակ Մհե՛ր, Դաւիթ սըպանիր էն, արի՛, քիւ Թօլ առ։

Ձէնով Օհան սկոն զարմանելի ձէն ունէր, բաշաններ յիռջև խրուաւ. Մհերի օթխի բաշան էլ խրուաւ։

Մհեր մօրէն իլեր էր, լոս, արև չըր տեսե ուր աչքով. ծուծապանց յօդի մէջ էն պախէր. չըր գիտի արև ինչ էր, գիշեր ինչ էր. լուս-ցերեկ ինչ էր. բանըմ աստըւորէս չըր տեսե, չըր խասկըցե։

Ինու օթխի պատ որ էն գեախ խրուաւ. Մհեր տիսաւ արև առեց մըջ ինու օթխներու. մէկ մարդ ինու կը ղանչի, բայց Օղան-տօղան Թագեաւորին.—Պապի՛կ. ընձի կը ղանչեն. Ըսաց.—Որդի՛, էյ, Ֆարազա մինք մե սրտի խամար քի չընք խանի դիւս. գքի բառլան կապըցըցէնք մեր սրտի խամար, քեանի որ տղայ չունէնք. դի՛ւ մեր տղէն էս, մեր սրտի փափաք առնենք քինէ. աշխար արև, աստըւոր, լոս կայ. քեաղաք, մարդ կայ. խազար Մհե՛ր կայ. խազար Դաւիթ կայ. մա մէնակ դի՛ւ ես Մհեր։

Մհեր մէկ էլ կը տիսնայ մէ մարդ էլմէլ ղանչեց.—Մհե՛ր, Մհե՛ր, Դաւթի զաւակ. Խանտութ խանըմի զաւա՛կ. Օղան-տօղան Թագեաւորի լօռռ. դիւ չըս լսնայ, քե կը ղանչեմ. քիւ խէր, բառլան Դաւիթ սպանիր էն. Թօլ մնացե գետին, մա դիւ չըս իգեայ. քիւ խօր Թօլ առնենք, ախըր դի՛ւ էլ Սասման տան խոյուց էս. Սասման տան խոյու գեառն էս։

Որ սկոն ըսաց, բաշաններ զըմեն խըռուան։

Որ բաշաններ զըմեն խըռուան. Մհեր դիւս իլաւ, գինաց։

Խրօղբէր տիսաւ զՄհեր, ճակատ պագեց։

Լալելեն առեց զՄհեր, գինաց Սասում։

Ձէնով Օհան որ գինաց Սասում, Սասման տան չորեր, ճակեր խանեց. Մհերին տուեց. ըսաց.—Որդի՛, ա՛ռ, խագի, Սասման տան գեառ դի՛ւ էս մնացե. էլ ես խնայեմ վի՛ր խամար.

Մեեր շորեր խագեաւ.
Ջռնեղեղեն շապիկ խագեաւ.
Քիւրքիկ դալպուքին խագեաւ.

Դաւուդ ղադիֆին դրեց ուր գլեօխ,
Թրիկ կեծակին կապեց վըր ուր,
Որմիկ Ֆէրզին առեց ուր ձեռ.
Կիւրզիկ Ջօջանին առեց, դրեց վըր ուր բիւին.
Ճզմեն Արզըրըմին խազեաւ.
Կեամիկ սասաֆին եզարկ Քիւռկիկ Ջալալու բիրան,
Թամֆ սասաֆին դրեց Քիւռկիկ Ջալալու ֆեամակ.
Քիւռկիկ Ջալալին ֆեռեց դիւս:

Որ Քիւռկիկ Ջալալին քաշեց դիւս, Քիւռկիկ Ջալալին ըսաց. — Է՛, անիրաւ. դիւ ինչ հաց ունես ձի խեծնես. քիւ բերան ի, ձի խեծնես դիւ։

Մհեր ըսաց.—Քիւռկիկ Ջալալի. անիրաւութուն մանի խը ձի. ես էլ Սասման տան գեառներուց էմ։

Քիւռկիկ Ջալալին ըսաց.—Դաւթի խաբրի խամար. էդ մէկ խապար ըրցի. քի ձէն չըմ խոայ. իլի՛, ձի խեծի։

Մհեր կը խիծնի, խրօղբէր կտայ ուր յիռչև, կըհան Սըլթան Չմուշկու կուռու մէջ։

Ձէնով Ցօվան կըսի.—Ես ինչ անեմ, Մհեր տղայ ի, անյիմայ ի. վաս չխասկանայ. ես էլ ծերացեր էմ, ձընէ կռիւ չգիտայ։

Քիւռկիկ Ջալալին կըսի,—Է՛, անիրա՛ւ, ի՞չ կը վախենաս, ես՝ իրեք սկոմ ասկեար ըլնի, կը կոտորեմ. էն ինչ բան ի, եմ պոչի յէռչև. եմ ոտներու յէռչև, չնչիս յէռչև զէնոնք կը կուտորեմ։

Մհեր կըսի.—Խրօղբէր, մա մինք Սասման տնէն չընք. չէ՛, մինք Սասման տնէն ենք. մինք մեռնէնք, մեր գերեզմնի վրէն թագեաւորներ չըն կէնայ գեայ. քշի, հանք. մինք մեր կռիւն անենք։

Ձէնով Ցօվան ու Մհեր մտան կռիւ։

Ձէնով Ցօվան բօզ մատակ խեծեր ի, ընկեր ի մըջ Սըլթան Չմըչի ասկրին կխասպանել կանի, կըսի.—Մհեր, որդի՛, ես կխասպանել կանեմ, դիւ թըմի

Շատ կռիւ արին. չուր յէվարին զարկուան։

Խրօղբէր կըսի.—Էսա ինչ անոշ բան ի, բանջար կը բրթեմ։

—Խրօղբէ՛ր, կըսի Մհեր, դիւ կը բրդես ամա, ես էլ քինէ ուտայ, էլ անոշ կը բրդեմ։

Սըլթան Չմչկու ասկրի ֆեօֆ կտռին։

Մհեր կըսի.—Ա՜խ էչ, եմ խօր թօլ առի։

Կըլնին, կը դառնան Սասման քեաղաք. ուրենց Սասման Ջօջ տուն։

Ձէնով Ցօվան չատ կուրախանայ. կըսի.—Փառք քեզ, Աստուած, եմ թոռ Մհեր ձի խասաւ. էլ չըմ վախենայ։

Երկու իրեք օր կը մնան տուն, կը խանգստանան։

Զէնով Ցօվան կըլնի, կերթայ Աւագ սար Ճէջիր։

Մհեր չատ խօրոտ տղայ ի․ տեսակով, քաղցրաէրուն․ սըրտակակերպ ի։

Զէնով Ցօվանի կնկեայ սիրտ վըր Մհերին կաւրի։

Կըսի․—Որդի՛, արի՛, յէս օր ջիւր դի, ձի լողացըրցու։

Մհեր կըսի,—Այ մէրի՛կ, սկոն բան չըլնը, ամօթ ի․ կուզե՛ս, ես ջիւր դնեմ․ դիւ տար, լողացի։

Կըսի․—Մհե՛ր, չըմ գիտի ամօթ-մամօթ․ ջիւր կը դնիս, բիրիս․ գըձի կը լողկըցնես։

Մհերի ճար կը կտրի, կըսի․—Ինքն ու ուր Աստուած, տանեմ, լողկըցըրցեմ։ Ջիւր կաւնի, կըհայ չոլ, կըսի․—Արի՛, լողկըցի։

Կըսի․—Դիւ ջիւր լից վար եմ գլխուն, ես լողկանամ։

Մհեր իչ կանի, ձեռնէն չազատուի․ ուր աչկեր կը խփի, ջիւր կը լցի վըր ուր խըօղբօր կնկեան։ Շերեփ կը դիպնայ մըջ խըօղբօր հնկեան գլխուն․ գլուխ կը կուտրի։

Խըօղբօր կնիկ կըլնի, անզգամի նման կըհայ, կը նստի տուն․ ուր գլեօխ կը ծածկի։ Տիսնայ Զէնով Ցօվան Ճէջիրից էկաւ տուն։

Մհերն էլ էլաւ, գինաց ուր խամար խաղալու։

Զէնով Ցօվան կըսի․—Կնի՛կ, ընչի չըս ըլնի վեր, Ճէջիր եմ ձեռնէն առնի։

Կնիկ մաղտէճ խառնեւ, խետ խապար չտայ։

Զէնով Ցօվան․—Ա՛յ ճաւար, կնի՛կ, էդ ինչ ի կանես եմ գլեօխ չօր ջօջութունով։

Կնիկ կըսի․—Եաճ քիւ թոռ կը մնայ նա տուն, եաճ ես։

Կըսի․—Կնիկ, ընչի․—Քիւ թոռ ձեռ կը թալեր թըխ ձի,

Զէնով Ցօվան կըսի․—Վայ, կնիկ, օր ջօջութենով նա խայտառակութեն ի․ նա ի՛չ ի, դիւ սուտ կըսիս․ եմ թոռ սէնայ բան անի։

Կնիկ կըսի․—Ես չատ սկոն բաներ չըմ գիտի։ Եաճ ես նա տուն պտի մնամ․ եաճ Մհեր։

Զէնով Ցօվան կըսի․—Կնիկ․ դիւն ըլնես, քիւ Աստուած, սկոն մանի եմ գլեօխ, եմ թոռ եմ ձեռնէն մի՛ խանի․ դիւ կը տեսնաս Սասման տնէն էն մէկ գեառն ի մնացե․ Սասման տան Ֆրզճէրու ճէօֆ մի կտուի․ ափսոս ի Սասման տան Փէրզ էհա, ինի դռներ․ Սասուռմ մնայ անտէր։

—Որ սկոն ի, ես տըլնեմ, տըհամ․ Մհեր կենայ քի խամար։

Զէնով Ցօվան կըսի․—Կնի՛կ, խայու օրէնքին մէջ պսակուկ կնիկ թըղնել չըլնը, ես Սասման Ջոջ տնէն էմ․ եմ Նամուսի խամար

*ամօթ է, դիւ քիւ Աստուած. իլմ՛, դիւռ չինի, Մհեր թըղ չգեայ։*

*Մհեր յեվարին կըգեայ. որ գեայ տուն, ձեռ կտայ դռան՝ կաշկի դիւռ փակ է, Մհեր կը յիմանայ։*

*Կըսի.—Եմ խըօղբօր կնկեան արածն է։*

*Մհեր կըլնի, կը թըղնի. լալելէն կըհայ, կըսի.—Ինչխ ընձի յէս օր Սասման Ջօջ տնէն զըկըցին։*

*Կըհայ վըր ուր խօր գերեզմնին կըլայ, խաղ կըսի.*

**—Խերիկ, քիւ անուշ քնուց վեր իլի,**
**Ընձի յէս օր Սասման Ջօջ տնէն պէքահր էն արած.**
**Խերիկ, քիւ անուշ քնուց վեր իլի.**
**Ընձի յէս օր Սասման Ջօջ տնէն բէքահր էն արած։**

*Աստուծոյ խըրամանքավ Դաւիթ կը փռշտայ, կըլնի, կընստի մըջ ուր գերեզմընին, կըսի խաղով.*

**—Որդի, ինչ անեմ. գնացե ճահիլար ձեռնէս,**
**Գեօն-կերպ բափե յիրիսէս,**
**Լոս կտրուե աշկերէս,**
**Օձ, կարին բեօն դրե վրէս:**

*Էլմէլ Դաւիթ կը պառկի, գերեզման կգեայ յիրար։*

*Մըհեր կըլնի. կըհայ վըր ուր մէր Խանտութ խանըմի գերեզմնին, կըլայ, խաղ կըսի.*

**—Մարէ, քիւ անուշ քնուց վիր իլի,**
**Յէս օր ընձի Սասման Ջօջ տնէն բէքահր արիր էն.**
**Մարէ, քիւ անուշ քնուց վիր իլի,**
**Յէս օր ընձի Սասման Ջօջ տնէն բէքահր արիր էն։**

*Աստուծոյ խըրամանքով Մհերի մէր. Խանտութ խանըմ կը փըռշտայ, կը նստի մըջ ուր գերեզմնին, կըսի խաղով։*

**—Որդի. ինչ անեմ, գնացե ճոհիլար ձեռնէս,**
**Գեօն-կերպ կտրուե իրիսէս,**
**Կտրուե լոս աշկերէս,**
**Օձ, կարին բեօն դրած վրէս.**

*Աստուծոյ խըրամանքով էլմէլ Խանտութ խանըմ կը մտնի ուր գերեզման, կըսի.*

**—Որդի, դիւ գնա, դիւ գնա.**
**Էն ճանբախ իշ դիւ տրհաս**
**Քեար քեաղած ի, աւազ մաղած։**

*Մհեր ձին կը քշէ. կըհայ գիւթան ալող մարդմ կը տեսնայ, կըսի.—Ա՛յ մարդե՛ր, բարի յաջողում ձե.*

*Կըսին.—Աստուծոյ բարին քե, Մհեր.*

Կըսի.—Այ ախբէրներ, անօթի էմ, մէ ծօթ խաց չըք կտայ ձի։

Գիւթնի տէր կըսի.—Ընչի՞ չընք իտայ. կեօ հա՛ն, արտի գլեօխ խաց կայ, գինա՛, կե։

Մհեր կըլնի, կըհայ, կը տեսնայ խաց շատ կայ էն տեղ, եօթ մարդու ջրայ ի. իրեք աւուր իրեք դանուայ։

էն խաց ըլմեն կուտի Մհեր։

(Պա՛, Մհեր Ֆերզ ի, պա չուաի, ինչ անի)։

Ինոնց մէկ կեվեղէ մշակ կըլնի. մշակ կըսի.—Այ մա՛րդ. դու մեր եօթ մարդու ջրէն իրեք աւուր՛ իրեք-իրեք դանուայ, կերար պիքուն մէկ դանուան. դու կգեա՛ս մեր գիւքան մէ փաթ կան տաս։

Մհեր կըհայ, Քիւռիկ Ջալալով եօթ փաթ կան կտայ։

Մշակ կըսի.—էնի քի հատ չի, էնի Քիւռկիկ Ջալալու հնարն էր։

Կիջի Մհեր, եօթ փաթ էլ ոտնով կան կտայ։

Կըլնի, կըխեծնի Քիւռկիկ Ջալալին, կը հայ, գետին յէռջև Քիւռկիկ Ջալալու ոտաց կը թնդայ։

Մըհեր կըսի.—Հայ հօ՛, բօշ ի. գետինն էլ խալխուրցեր ի, եմ ձիու ոտաց տակ չգիմանայ։

Աստուծոյ խրամանքով Մհեր կը հայ, կը խասնի Ակռփու քեար. քեար կը բացուի. Մհեր ուր ձիով կը մտնե մըշ քեարին. քեար կը դեայ յիրար։

Կըսին.—Ըն օր իշ քեար քեաղեն. աւաղ մաղեն. էն ժամանակ Մհեր տը գեայ դիւս։

Կըսին.—Դել Մհեր զինքն էլ ուր ձին էլ սաղ ի.

Մըկայ, կըսին, էն տեղ արած ի վանք։

Ամեն տարի խամբարձման կըհան էն տեղ ուխտ.

Շատերուց էլ լսեր էնք. էնու ձին ուրբաթէ-ուրբաթ էնու ջրուածք կըլնի. էն քեարի յէռջև կը թացուի. ըլմեն մարդն էլ տեսեր ի։

Քեառասուն օղորմին տանք Սաաման Ջօջ տան։

Շէն ու պոծառ կենայ Մարութայ բանձր Աստուածածին վըր ուր խըրման։



# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Դաւիթ Մհերի ներկայ ճիւղը պատմած է Արարատեան բարբառով Մուրատ Յովսէփեան, որ այժմ Վաղարշապատի մօտ Մուղանճղ գիւղի բնակիչ է. Մուրատ միջահասակ, ծանրաբարոյ, բարեպաշտ մէկն է, 57—58 տարեկան հասակի մէջ. իր գիւղին մէջ միջին աստիճանի ապրուստ ունի, կնոջ հետ կապրի. զաւակ չունի, իւր երկու եղբայրներուն իբրև հայր խնամ տարած, ուսման և արհեստի տուած է, որք այժմ լաւ վիճակ ունին. մին Բագու է, միւսը Տփխիս։ Մուրատի հայրն Մոկաց Գոմանից գիւղէն էր, որ «Ակոռւոյ չարժին» իւր գիւղէն գաղթած՝ մի տարի բնակած է Գառնիի կողմերը։ Յովսէփ իւր տնէն դուրս գալէն իրեք տարի յետոյ Մուրատ ծնած է և ապրած իւր հօր հետ։ Մուրատ Դաւիթ և Մհեր լսած է Բարսամ անուն մի աշըղէն, որ նա այնպէս Մոկաց Նանընից գիւղէն էր. և չարժի տարին իւր գիւղէն Արարատեան երկիրը, նախ Գառնի բնակած, ապա Արագածի ստորոտն Դղըր գիւղն հաստատուած էր իւր մեծ եղբօր Յակոբի հետ։ Բարսամ ևս բարեպաշտ, բնատուր աշղ էր. շատ հմուտ էր ժողովրդական աւանդութեանց, հէքիաթներուն. շատ լաւ գիտէր Դաւիթ և Մհեր։ Ընտանեկան ապրուստը հէքիաթներ և երգեր ասելով կը հայթայթէր. Արարատեան ամեն գիւղեր ման կգար. ի վարձատրութիւն ժողովրդէն ցորեն, իւղ, պանիր, բրինձ ևն. հաւաքելով ընտանեաց պիտոյքը կը հոգար։ Բարսամ ունէր երկու որդի, մեծ որդուն անունը Մանասէր դրած էր իւր հօր անուան յիշատակ. իսկ փոքրին Զաքարիա, որք այժմ կան, Դղըր կը բնակին և լաւ վիճակ ունին: Ներկայ վէպս պատմող Մուրատ Բարսամի հետ խնամութիւն ունենալով միշտ յարաբերութեան մէջ եղած է նորա հետ. որով միշտ լսելով սովորած է. ինքն ևս շատ սէր ձգած է Դաւիթ և Մհեր սովորելու։ Մուրատ ինքը թէ գըրար էր և թէ չալ գործող. երիտասարդ հասակէն սկսեալ գիւղեր ման կգար. իր սովորած Դաւիթ և Մհեր ամեն տեղ կը պատմէր։ Նորա ասելով հարիւր գիւղի մէջ պատմած է Դաւիթ և Մհեր. Արարատեան դաշտի գիւղեր. Արագածայ գիւղեր. Շիրակ, Բանդրակաձորի գիւղեր, Լոռի ևն. իսկ շատ գիւղերու մէջ կրկնած է, որպէս Ախալքալակի գիւղեր. Աբարանի Բաշ Աբարան, Ալիքուչակ, Ղարաքիլիսա, նաև Բանդրակաձորի Որթնաւու, Համամլու,

Կիւլ Ագարակ, Կուռտա, Վարդաբլուր և Ջալալ Օղլի։ Լօռի հայ կաթոլիկ գիւղերու մէջ. Ծիչթափայ. Շարժապետ, Շահնազար։ Նաև պատմած է երկու Ղարաքիլիսաներու մէջ։

Մուրատի ցեղին կասեն Խանասկանց տուն, որ այժմ 40 տուն են։

Սոյն Վէպը Մուրատին սովորեցնող Բարսամ սովորած էր ինքը իր հօրմէն—Մանասէրէն, որ կասեն շատ հանճարեղ կոյր էր, նորա յիշողութիւնը շատ թարմ էր, նա տունը նստած միջոցին կզգար թէ դուրսը պարզ է թէ ամպամած. ձիւն կը տեղար թէ անձրև։

«Աստուածատուր աչղ էր կասեն Մանասէր, նա սուտ չէր խօսէր. կիւրակէն սուրբ կը պահէր. և տնեցոց ևս թոյլ չէր տար որ նոյն օրը գործով պարապին։





# Ա.

## ՍԱՂՆԱՍԱՐ ԵՒ ԲԱՂԴԱՍԱՐ



Ո՛ւր երանք, դառնանք,
  Ողորմին կտանք են Սաղնասարին.
Ո՛ւր երանք, դառնանք
  Ողորմին կտանք են Բաղտասարին.
Ո՛ւր երանք, դառնանք
  Ողորմին կտանք Քառսուն ճեօղ ծամին (Սաղնասարի կին).
Ո՛ւր երանք, դառնանք,
  Ողորմին կտանք Դեղձուն խաթունին (Բաղտասարի կին),
Ո՛ւր երանք, դառնանք
  Ողորմին կտանք Ձենով Օհանին (Բաղտասարի որդին).
Ո՛ւր երանք՝ դառնանք,
  Ողորմին կտանք Ցռան Վեգոյին (Բաղտասարի որդին).
Ո՛ւր երանք, դառնանք.
  Ողորմին կտանք են Ջոջ Մհերին (Սաղնասարի որդին),
Ո՛ւր երանք, դառնանք,
  Ողորմին կտանք Գեօհար խաթունին (Ձենով Օհանի կինը).
Ո՛ւր երանք, դառնանք,
  Ողորմին չիտանք Մսրայ Մելիքին.
Ո՛ւր երանք, դառնանք.
  Ողորմին կտանք թառլան Դաւթին (Մհերի որդին),
Ո՛ւր երանք, դառնանք,
  Ողորմին կտանք խանտութ խանըմին.
Ո՛ւր երանք դառնանք,
  Ողորմին կտանք Պստիկ Մհերին (Դաւթի որդին)։

(Օրհնեալ Տէ՛ր մեր, Յիսուս, Քրիստոս.
Մեր Տիրոջ կամքը՝ օրհնութիւն բարերարութիւն,
Վըր՛ յականջ արողին ըլլի,
Վըր չէն օճաղին ըլլի։)

Ղումրիկ թաքաւոր խաչապաշտ էր,
Էդ թաքաւորին մէ ախչիկ կար,
Էդ ախչիկ շատ սիրուն, տեսակով էր.
Շա՛տ ու շա՛տ պատուելի, յարգելի էր։
Մէ կռապաշտ թաքաւոր կար,
Էդ թաքաւոր շատ զօռեղ էր,
Էկաւ, Ղումրիկ թաքաւորին ասեց.
—Ախչիկդ տուր ինձ,
Կտաս տո՛ւր, որ չի տուիր.
Քաղաքդ տակ ու վիրև կանեմ։
Ղումրիկ թաքաւոր շա՛տ վախեցաւ.
Էլաւ իր ախչիկ տուաւ կռապաշտ թաքաւորին.
Որ տուեց ըղըրան, ախչիկն հրամայեց.
—Գնա՛, քու բաշարուկ տե՛ս.
Ես էլ իմ բաշարուկ տեսնեմ.
Նոր կգաս, ինձ կառնես, կը տանես։
Ախչիկը գնաց. իր հօրն ասաւ.
—Խէրիկ, ես խաչապաշտ էմ, էն կռապաշտ.
Մէկ խատ տէրտէր բէր, դիր ինձ խետ, գայ ըն տեղ,
Ժամ ասի ամեն վախթ, ես աղօթք անեմ։
Հէրը բերեց, մէ տէրտէր տուեց ախչկան.
Թէ.—Կեթաս իմ ախչկայ խետ, ամենայն ժամ աղօթք կասես.
Թէ.—Իմ ախչիկը ամենայն ժամ աղօթք կանի։
Ախչիկը կանչեց.—Տէրտէ՛ր, դու մեր հոգական հայրն ես.
Լաւ չի ես էս բառը խօսամ, ասեց, ամօթ ա,
Ամա բա՛նը պէտք ա շարունակով ըլլի.
Դու քու մուրուսդ կնդի.
Բեղերդ էլ կնդէ, գլօխդ լաչի քցի,
Հենց իմանան թէ դու օղուլ ուշախ ես.
Ամենայն ժամ ընտեղ ժամ—աղօթք կասես.
Կռապաշտ թաքաւոր չիմանայ դու տղամարթ ես։
Կռապաշտ թաքաւոր էկաւ.
Էդ Ղումրիկ թաքաւորի ախչիկը տարաւ.
Մնացին մէկ վախթ ընդոնք էդ թաքաւորի օթախի մէջ.
Էդ քըհանէն դեօղտիկ ժամ էր ասըմ,

Էդ Ղումրիկ Թաքաւորի ախչիկ աղօթք էր անըմ.
Իրա Աստըծուն էր փառաբանըմ։
Էդ ախչիկ մէկ օր նստաւ, լացաւ.
—Ստեղծող Տէ՛ր, ես ընկեր եմ էս կռապաշտի ձեռ ը,
Ընձի մէկ լուս ու ճար արա,
Ազատուեմ ըսդըրը̀ ձեռիցը։
Մէկ օր Թաքաւորին խնդրուաւ, ասաւ.
—Թողա՛. մէ էթամ, ման գամ, սէյրան անեմ։
Թաքաւորը հրամայեց թէ.—Իրաւունք ունես։
Ախչիկը վերցրեց իրա ճառիյեքին, իրա քըհանին,
Որ հետը տարեր էր. գնաց ման գալու.
Գնաց, ծովի ղրաղը պըտըտաւ.
Ի՛նչ տեսնի, ծովի մէջ մէ ասա տեսաւ.
Ասաւ.—Էն ինչ ասայ ա·
Ճառիյեքն ասին.—Մենք խապար չենք.
Հրամայից Թաքաւորի ախչիկն, լօքկէն բերին։
Նստաւ լօքկէն, գնա՛ց, էլաւ էն ասէն.
Մէ բարակ ճանիփայ կար, էն ճանիփէն բռնեց, գնաց.
Գնաց, տեսաւ մէկ զաղի դուռ էրեւաց.
Մտաւ ներս, տեսաւ մէկ պստիկ վանք կայ էդ զաղի մէջ։
Էդ վանքի մէջ յաղբուր էր ըլլում.
Էդ յաղբուրը էթում, թափում էր ծովը։
Սկսեց Թաքաւորի ախչիկը.—Տէրտէ՛ր,
Հազր ըստի եկեղեցի ա, վանք ա, մէկ ժամ տա՛մ.
Ըստի խալվաթ ա, աղօթք անենք, աղաչենք,
Մեր Տէր Աստուած մէ դուռ բացի մեզ վրայ։
Տէրտէրը էլաւ, սկսեց ժամ ասիլը.
Էդի նստաւ, սկսից աղօթք անիլը։
Աղօթք ա՛րաւ, էկաւ, յաղբրի վրէն լուացուաւ.
Մէկ բուռ լիք ջուր խմաւ. մէկ բուռ էլ կիստ էդ յաղբրից։
Էկաւ տունը, ինը ամիս որ քըմըմաւ.
Ինը օր որ, ինը սահա՛թ որ քըմըմաւ.
Էդի չոք զարկեց գետին, էրկու տղայ բերեց.
Մէկի անուն դրեց Սաղնասար, մէկի Բաղդասար։
Էդ տղէքը ջրից էն բահամ էկե, օրական մեծանում ին.
Թէ մենք տարեկա՛ն էրկու մատ ենք բարձրանըմ.
Ընդոնք օրական էրկու մատ են մեծանում.
Զուճֆի ըդոնք Ֆէրըզի ազգ են, ջրից են բահամ էկե.
Մէրը տեսաւ տղէք էլան լիեք տարեկան, ասաւ.
—Տէրտէ՛ր, իմ տղէքին դաս տո՛ւր, կարդան.
Տղէքին դաս տուեց. տղէք պօղոտիկ կարդըմին

Կռապաշտ Թագաւոր էս խետին իմացաւ.— Ի՛նչ.
Պստիկ կնիկը աղօթք ա անըմ. կռքի չին հաւատում։
Կնիկը, իր տղէքը ստեղծողին էն հաւատում։
Մէկ օր ասաւ.—Կնիկ, տղէք մեծ կռքին մատաղ պտի անեմ։
Կնիկը ընկաւ ոտնիրը.—Աստըծու սիրուն, իմ տղէքին մի՛ սպանիր։
Թագաւորը չի լսաւ, զօռով տղէքը առաւ, տարաւ։
Գնաց ճանփի կէսը.
Քանի՛ ըղոնք էթըմին, էն մեծ կուռքը դէմներից փախնըմ էր.
Թագաւորը կանչեց կռքին թէ.—Ընչի էս փախնըմ մեր դէմից.
Ես էս տղէքը բերեր էմ, անեմ քեզ մատաղ։
Կռքի միջից ձէն դուս էկաւ.
—Ը տեղ մորթի, մի՛ բերի. ընձի ընդունելի ա.
Ըդրանց զօռը գալըմ, ընձի փախցընըմ ա։
Տղէք իմացան որ խէրը պէտք ա իրանց մորթի-մատաղ անի։
Թագաւորը էկաւ, բռնեց Սաղնասարին, դրեց գետին որ մորթէր.
Բաղտասար կանչեց.— Թագաւո՛ր, էդ ինչ էս անըմ.
Ասաւ.-Պէտք ա ձեր էրկըսին մատաղ անեմ մեծ կռքին։
Բաղտասար կզուաւ գետին, մէկ քար վերցրեց, կգար էրկու լիտր.
—Է՛, ստեղծո՛ղ Տէր, դո՛ւ ստեղծեր էս,
Դու քու տուած լուս հոգին չի կորցնես, ասեց.
Քարը զարկեց Թագաւորի պուճուճակին քամակից.
Թագաւորի ուչքը էս խետին գնաց, ընկաւ վէր.
Էրկու ախպէրով էլան, Թագաւորին սպանին.
Որ իրանց խօր սպանի՛ն, էկան տուն, մէրն վերցրեց.
—Որդի՛, պա էն կռապաշտն ինչ արիք։
Թէ.—Մէրիկ, էնի ուզըմ էր մեզի կռքին մատաղ անէր.
Թէ.—Ջա՛րկեր էնք, սպաներ էնք, թողեր. էկեր էնք։
Մէրը վերցրեց.—Ըստեղ նստել էլ մեզի ձեռ չի տայ,
Թէ.—Ելէ՛ք, էթանք մեր խէրական երկիրը։
Էլան որ պտի էթին իրանց խէրական երկիրը։
Խասան էն ծովի ափեն որ մէրը գնայեր՝ ջուր էր խմեր,
—Որդի՛, ասաւ, դո՛ւ էլ գնացէք, էն անմախական յաղբրից խմէք։
Տղերք գնացին, էդ ափի վանքի միջի յաղբրից խման.
Լցուան, Աստըծու հրամանքին յէլան եհա տղամարթ.
Վանքից յէլան, վանքի քամակ տեսան մէկ ձիան քուռակ կայ.
Ըն տեղ քուռակը բռնին էրկու ախպրով. առան բերին,
Էն յաղբրի ջրից էն քուռակն էլ խմաւ, լցուաւ, մեծացաւ։
Էդ տղէքը, վանքի մէջ մէկ դուռ կար, բացին.
Պահարան էր, մէ թուր էլ կախուկ էր պատից,
Մէկ Ֆաս էլ էր դրուած, էն էլ վերցրին.

Մէկ ջուխտ սոլ էր կար, էն էլ վերցրին.
Էս խետին թողին էկան, գնացին դպա խէրական երկիրը-Սասում.
Մէկ տուն շինին էրկու ախպրով, Նստան մէջը։
Իրանք իրեք ջան էն, մէկ էլ տէրտէր, չորս ջան.
Բաղտասար ամեն օր կեթար ավ-ղուշ.
Մէկ օր գնաց, մեզի նման մէկ մարթ տեհաւ մեշի մէջ.
Էդ մարթին վերցրեց, դրեց իր ջեպը, բերեց.
Իր ավն արաւ, սըրծաւ, էկաւ տունը.
Էրկու ախպըրով, մէկ էլ մէրն ու տէրտէրը հաց էն ուտըմ.
Ստաքանը գինի լցընըմ, խմում, քեֆ ին անըմ.
Իրար ասին.—Անուշ ըլլի, էն էնոր, էն էնոր.
Էդ մարթ Բաղտասարի ջեպի մէջ յիրար էկաւ.
Բաղտասար իմացաւ.—Հը, ընկաւ միտք, ասաւ.
—Իմ մէրս, յէս օր մէկ բան էմ գթե, դրեր էմ ջեպս.
Ասաւ.—Խան, տեսնիմ, ինչ բան ա, որդի՛,
Խանեց, տեհաւ, մէկ բան ա մեզ նման.
Էդ էլ Աստըծու ստեղծածն ա, հայ տուէք, թո ուտի.
Ասաւ.—Մէրս, էս մինց գլօխ պտի պահի։
Ասաւ.—Որդի՛. դուք ջրից էք բահամ էկե,
Դուք Փերզի ազգ էք, ձեր բանը զոռով ա.
Ըտոնք խելքով կապրին։
Ասաւ.—Որ խելքով ա, թօ ըլլի ձիան ջհորը տայ գլօխը։
Քառսուն լիտր գարի ին լցընըմ մէջը,
Բաղտասար վերցընըմ էր. բօյի խետ քցըմ էր գլօխը.
Մէրն ասում ա.—Որդի՛. հըմի թամաշա արա, տես։
Բաղտասար ասաւ էդ մարթին.
—Էլի՛. իմ ձիան ջհորը առուր գլօխը,
Տեսնիմ դուք ինչպէս խելքով պտի ռանցէք.
Էդ մարթն էլաւ, տոպրակի բերան բացեց.
Ձին իրիշկաց, տեհաւ որ գարին էրևաց.
Մռութ ջլտեց գարու մէջ էս խետին ձինը.
Էն մարդը էն ջհորի պարան քցեց ձիան անկնջների քամակ.
Ձին էր, մռութ վերցրեց վիրև, ջհոր բանձրցաւ.
—Իմ մէրս, ասաւ Բաղտասար, քու խօսքն ա,
Ես զոռով բանցրցընըմի, էսի խելքով մռութ մտուց մէջ..
Ըտոնք քընց մեզ չա՛տ իմաստուն էն։
Հայ կերան, քնան, չարի լուս բացուաւ.
Էս խետին էս մարթին ասին.—Դու ազատ էս, գնա՛.
Էլաւ էդ մարթ որ էթար, մէր վերցրեց.
—Որդի՛, ասաւ. անուն չիկայ էս տանը,

Էդ մարթին սաս. անուն դնի էս տանը, նոր էթայ.
Բաղտասար ասաւ.—Ախպէ՛ր, արի, մեր տան ղրաղները պտըտի.
Մի անուն դիր մեր տան, նոր գնա՛,
Մարդն էլաւ որ պտըտէր, ասին.
—Ա՛ռ էս մէկ խաց. տար քեզ խետ, ուտես,
Անօթի չմնաս, չարլի մէկէլ ղռաղով գաս դռան վրէն։
Էդ մարթ խաց առաւ, դրեց իր ծոց, գնաց.
Լուս նոր էր բացուե, արեմտեան ղռաղները պտըտաւ.
Արև որ մտաւ, էկաւ նորէն էն ղռաղը կայնաւ.
Ասին,—Ախպէ՛ր, մեր տան ղռաղը ման էկա՞ր, տեսա՞ր.
Էդ մարթ վերցեց.—Հա՛, ման էկայ, տեհայ։
Բաղտասար ասաւ.—Էս տուն նոր էնք շինե. անուն չիկայ,
Մէ անուն դի՛ր մեր տան, նոր գնա՛։
Էդ մարթ վերցեց.—Ձեր տուն չէն ըլլի,
Էս տուն չէք շինէր դուք, էս սասուն ա։
Մնաց էս խետին էդ տան անուն Սասուն.
Որ մկայ էդ տան տեղ մեծ քաղաք ա։
Էդ մարթ էս խետին թողաց, գնաց.
Բաղտասարի անուն, Սաղնասարի բանցր էլաւ էս խետին,
Ձէնները ընկաւ երկիր—էսենց, էսենց, էսենց։
Պղնձէ քաղաք Քառսուն ձեօղ ծամ կար,
Էդ էլ Թաքաւորի ախչիկ էր, ըդոնց ձէն որ լսաւ,
—Ձեր ջոջ ախպէր ո՛ր մէկն ա, ընձի գայ, տանի իր խըմար։
Բաղտասար էլաւ, խեծաւ ձին, գնաց.
Գնաց, Պղնձէ քաղաքի բասանի մօտացաւ.
Էս խետին դուռ չիկայ որ էթայ ներս.
Էդի գուրզը հանեց, զարկեց բասանին.
Իրեք դլրպ որ զարկեց, բասան փլաւ, ձին քշեց ներս.
Գնաց մէկ պառաւի տուն. ղօնախ էլաւ.
Մէկ վախթ որ մնաց պառաւի տուն. մէկ օր ասաւ.
—Պառա՛ւ, կարաս էթայ Թաքաւորի կուշտ։
Պառաւ ասաւ.—Ես չեմ կարայ.
Էդի խանեց մէկ բուռ ոսկի ջեպից, տուեց պառաւին.
Պառաւ ասաւ.—Աստուած յաջողայ, լուս բացուի, կեթամ.
Թաքաւորին կիմացնեմ, ինչ որ դու ասելու ես։
Ասաւ.—Գնա՛, Թաքաւորին սաս, «իմ տուն մէկ ղօնախ էկե.
Մըկայ ուզում ա քու ախչիկ ուզի».
Պառաւ էլաւ, գնաց. գլօխ տուեց Թաքաւորին.
Օխտն անգամ գլօխ իջացրեց, վրայ ութին ձեռ բռնեց, կայնաւ։
Թաքաւոր ասաւ.—Պառա՛ւ, ինչ կայ, սա՛,

—«Իմ տուն մէկ ղօնախ ա էկե. քու ախչիկ ուզում ա»։
Թաքաւորն ասաւ.—Պառաւ, գիտում էս, ինչ կայ.
Ընձի փայլեվան ունեմ, թո գայ խետ գուլաճ կպնի.
Թէ՝ տուեց գետին իմ փայլեվանին, իմ ախչիկ կտամ ընդրան.
Թէ՝ իմ փայլեվան տուեց գետին ընդրան, վիզ կը զարկիմ.
Դե՛, գնա՛, ջուղաբ տար ընդրան։
Պառաւն էկաւ, ջուղաբ բերեց Բաղտասարին.
—Ղօնախ ախպէր, թաքաւորը հրամայեց.
«Ընձի փայլեվան կայ, թէ տուեց գետնով, իմ ախչիկ կտամ.
Թէ չտուեց գետնով, ընդրա վիզ կը զարկիմ»։
Էն առաւօտ գնաց, գուլաճ կպաւ.
Երկու փայլեվան կար Թաքաւորին, էրկուսն էլ տուեց գետնով.
Գլօխ իջաւրեց Թաքաւորին, Թողեց էկաւ պառաւի տուն.
Մէկ բուռ ոսկի տուեց պառաւին, ասաւ.
—Պառա՛ւ, փայլեվաններին տուեր էմ գետնով.
Դե, ղօչախ ես, գնա՛, էս խետին ուզի Թաքաւորի ախչիկը,
Պառաւ ոսկիքը առաւ, ուրախ-ուրախ գնաց.
Թաքաւորը վերցրեց.—Պառա՛ւ. յընչի՞ էս էկե.
—Թաքաւոր. ասիր «իմ փայլեվաններին տայ գետնով»,
Հըմի տուեր ա գետին, էլ ի՞նչ էս ասըմ։
—Պառա՛ւ, ասաւ թաքաւորը, ունիմ մէկ ասլան՝ մէկ դափլան.
Թէ էկաւ, ասլանին, դափլանին տուեց գետնով, կտամ իմ ախչիկ.
Թէ չտուեց, զաթի կը ցրուեն յիրարուց, բռաց կանեն.
Պառաւ դառցաւ, էկաւ թէ.
—Որդի՛, էսպէսդ ա հրամայում թաքաւորը . . .։
Բաղտասար էլաւ, գնաց, գուլաճ կպաւ.
Ոտ դրեց, ասլանին էլ, դափլանին էլ ճղեց, թալեց դեն.
Էկաւ թէ.—Պառաւ, տուեր, ճղեր էմ, գնա էս խետին.
Գնա՛, թաքաւորին տե՛ս, ինչ ա ասըմ։
Գնաց.—Թաքաւո՛ր, էս խետին ինչ էս ասըմ։
Թէ.—Իմ խօսքը խօսք ա, տուեր էմ, տուեր էմ.
—Գնա՛, քու բասարուկ տե՛ս, ես էլ իմ բասարուկ կը տեսնեմ.
Էգուց, եա էլ օր կը դնեմ ճանփու, թո տանին։
Ըդոնք մնացին, իրանց բասարուկ տեսնելու։
Իր ախպէրը միտք արաւ՝ էթամ, տեսնեմ, ախպէրս ինչ էլաւ.
Էսքան ժամանակ չէկաւ, հասաւ։
Էկաւ, հասաւ ախպօր Բաղտասարին թէ.—ընչի յետացար։
Դե՛, թաքաւոր էր. աճճա՜խ տուեց իր ախչիկ.
Քսան մարճ թալեր էր իմ դէմը.
Բաղտասար գնաց, պսակուաւ թաքաւորի ախչկայ խետ.

Ու պսակուաւ, էկաւ, թաքաւորից շնորհակալութիւն ուզին.
Թէ.—Թաքաւո՛ր, մենք էլ թաքաւորի որդի ենք. պէտք ա էթանք։
—Աստուած ձեր խետ ըլլի, Աստըծու օրթնիքը ձեզ վրայ ըլլի.
Գնացէք. թէ կամենաք ղօշուն ձեզ հետ դնեմ։
—Թաքաւոր սաղ ըլլի, իմ ախպէր էկե, խասե ընձի.
Մենք էրկու ախպերով բօլ ենք, շնորհակալ եմ.
Դե, կաց բարի, չուր հազար հազար տարի.
Ես եմ եթալու, դու ես մնալու։
Վերցրից թաքաւորի ախչիկն, էկաւ պառաւի տուն, շնորհակալութիւն խնդրից պառաւից, բաւականի փող տուեց պառաւին։
Էրկու ախպէրով խեծան ձիանը.
Թաքաւորի ախչիկն էլ խեծըցըրին, քաղաքից ընկան դուս.
Ջուր կէս օր ձիանք քշին, մէկ դուզ ճանբախ ընկաւ դէմներ.
Տեսան մէկ սև ձիաւոր էն տեխէն էկաւ դպա դրանք.
Վերցրեց թէ.—Դու Քառսուն ճեօղ ծամ ո՞ր էք տանում.
Իմ կռիւն ա ձեր, ըս տե պտի կռուենք.
Եա Աստուած ձեզի կտայ, եա ընձի։
Բաղդասար յառաջացաւ որ էն ձիաւորի խետ կռուէր.
Սաղնասար վերցեց.—Ախպէր, դու չա՛տ ես կռուէր.
Դու քաշուե ղրաղ. ես դինճ եմ. ես գամ, կռուիմ խետ։
Սաղնասար էկաւ. մէկ դըրպ զարկեց էդ ձիաւորին.
Ձիաւոր դառցաւ Սաղնասարի վրէն,
Ջուր կէս օրին կռուան, չյաղթին իրարի.
Մէկ դըրպ զարկեց Սաղնասարին էն ձիաւոր.
Սաղնասար իր մօր ծծած կաթ ոնչներից էկաւ, կաթաց։
Սաղնասար վերցեց.—Ես ի՞նչ օրուայ խաբեր եմ ապրըմ.
Հասաւ էդ ձիաւորին, ձիան վրից վերցեց, դրեց գետին.
Չոք զարկեց սրտին. խանճյալ քաշեց որ զարկի,
Տեսաւ, էնի պառկած տեղը ձեռ քցեց եախեն.
Կոճակները որ արցկեց, ծծվերը թռաւ դուս.
Ըղջիկ որ ղօշը բացուաւ. Սաղնասար ասաւ.
—Ի՛նչպէս դու օղուլ-ուշախ իր, ես չիմացայ.
Ասաւ.—Ե՛ս էլ թաքաւորի ախչիկ եմ, ես օրթում ի կերե.
Ինչ մարթ իմ քամակ տար գետին, ես ընդրան առնէի.
Դու ընձի մարթ, ես էլ քեզի կնիկ.
Սաղնասար թողեց, էլաւ վեր, ասաւ.—Քու անուն ինչ ա։
Ասաւ.—Դեղձուն Խաթուն ա.
Էլան, էրկու ախպէրով խեծան իրանց ձիանք.
Էլան կնանիքն էլ խեծան իրանց ձիանք, տարան բերին Սասուն.

Նոր ըն տեղ նստան էս խետին.
Բաղտասարից էլաւ Մհերը,
Սաղնասարից էլաւ Յուան Վերգոն, Ձէնով Օհան։



## Բ.

# ՄՀԵՐ ԵՒ ԴԱՒԻԹ

Սաղնասարից, Բաղդասարից յետ Մհեր էլաւ Թագաւոր.
Ախշարքը բիրաշի ալբ արաւ, զաւթեց,
Ջուեղ Թագաւոր էղաւ, գնաց չոր Մըսըր.
Մըսըրայ Մելիքի մօրը հետը նստաւ, կայնաւ.
Մըսըրայ Մելիք որ ասըմին, էդի ընդոնցից բաճամ էկաւ։
Մհերից ու Մելիքի մօրից էլաւ։
Մհեր Մըսըրայ էկաւ իրա տունը—Սասուն.
Մէկ վախք մնաց, ընդրան Աստուած մէկ տղայ տուեց.
Բերեցին էդ տղէն. մկրտեցին. անուն Դաւիթ դրին։
Մհեր-ինքն ընկաւ, մեռաւ. Դաւիթ մնաց յէթիմ հօրից.
Մէրն էլ ընկաւ, մեռաւ. մօրից էլ յէթիմ մնաց.
Ձէնով Օհան, Յուան Վերգոն էդ էրեխին պահըմին,
Տեհան էդ էրեխին չեն կարում պահիլ, ինչ արին.
Միտք արին թէ.—Մհեր մէ վախք գնաց Մըսըր.
Մըսըրայ Մելիքի մօր հետ նստեր, կայներ ա.
Էրեխին ըս տեղ պահող չի ըլլի.
Բերենք, տանք Մըսըրայ Մելիքի մօր, թո պախի.
Էլան, վերցրին, տարան Մըսըր. տուեցին Մըսըրայ Մելիքի մօր
Ասին.—Էս էրեխին պահող չիկայ, դու պախի։
Մհեր որ մեռաւ, էս խետին Մըսըրայ Մելիք էլաւ Թագաւոր.
Երկիրը բիրաշի դարձրեց իր թրի տակը։
Ըղըրանց կանոնը-ղայեհն ուրբաթէ ուրբաթ հոլ կը խաղային.
Ձիաւորներին թաճապահ կանէր, կեթային դաշտի մէջ.
Դաշտի մէջ իրարի գուրզ կը թալէին.
Զորս-խինգ տարի էդպէս խաղ կանէին,
Դաւթի խինգ տարին որ թըմըմաւ, մէ ուրբաթ ասաւ.
—Քեռի՛, ընձ էլ տար, գամ, թամաշա անեմ գուրզ թալելուն։
Ասաւ.—Դաւի՛թ, բալամ, երանի դու էդ խօսք չասէիր ընձի.
Էս Մըսըրայ քաղաքն ա, հազար-հազար ձիաւոր դուս կգայ.

Ու պսակուաւ, էկաւ, Թագաւորից շնորհակալութիւն ուզին.
Թէ.—Թագաւո՛ր, մենք էլ Թագաւորի որդի ենք. պէտք ա էթանք։
—Աստուած ձեր խետ ըլլի, Աստուծու օրհնիքը ձեզ վրայ ըլլի.
Գնացէք. Թէ կամենաք ղօշուն ձեզ հետ դնեմ։
—Թագաւոր սաղ ըլլի, իմ ախպէր էկե, խասե ընձի.
Մենք էրկու ախպերով բօլ ենք, շնորհակալ եմ.
Դե, կաց բարի, չուր հազար հազար տարի.
Ես եմ էթալու, դու ես մնալու։

Վերցրեց Թագաւորի ախչիկն, էկաւ պառաւի տուն, շնորհակալութիւն խնդրեց պառաւից, բաւականի փող տուեց պառաւին։

Էրկու ախպէրով խեծան ձիանը.
Թագաւորի ախչիկն էլ խեծըցըրին, քաղաքից ընկան դուս.
Չուր կէս օր ձիանք քշին, մէկ դուզ ճանբախ ընկաւ դէմներ.
Տեսան մէկ սև ձիաւոր էն տեխէն էկաւ դպա դրանք.
Վերցրեց Թէ.—Դու Բառսուն ճեօղ ծամ ո՞ւր էք տանում.
Իմ կռիւն ա ձեր, ըս տե պտի կռուենք.
Ես Աստուած ձեզի կտայ, ես ընձի։

Բաղդասար յառաջացաւ որ էն ձիաւորի խետ կռուէր.
Սաղնասար վերցեց.—Ախպէր, դու չա՛տ ես կռուէր.
Դու քաչուե ղուաղ. ես դինջ եմ. ես գամ, կռուիմ խետ։
Սաղնասար էկաւ. մէկ դըրպ զարկեց էդ ձիաւորին.
Ձիաւոր դառցաւ Սաղնասարի վրէն,

Չուր կէս օրին կռուան, չյաղթին իրարի.
Մէկ դըրպ զարկեց Սաղնասարին էն ձիաւոր.
Սաղնասար իր մօր ծծած կաթ ռնչներից էկաւ, կաթաց։
Սաղնասար վերցեց.—Ես ինչ օրուայ խաբեր եմ ապրըմ.
Հասաւ. էդ ձիաւորին, ձիան վրից վերցեց, դրեց գետին.
Չոք զարկեց սրտին. խանչալ քաշեց որ զարկի,
Տեսաւ, էնի պառկած տեղը ձեռ քցեց եախեն.
Կոճակները որ արցկեց, ծծվերը Թռաւ դուս.
Ըդրա որ դօշը բացուաւ. Սաղնասար ասաւ.
—Ի՛նչպէս դու օյուլ-ուշախ իր, ես չիմացայ.
Ասաւ.—Ե՛ս էլ Թագաւորի ախչիկ եմ, ես օրթում ի կերե.
Ինչ մարթ իմ քամակ տար գետին, ես ընդրան առնէի.
Դու ընձի մարթ, ես էլ քեզի կնիկ.
Սաղնասար Թողեց, էլաւ վեր, ասաւ.—Քու անուն ինչ ա։
Ասաւ.—Դեղձուն Խաթուն ա.
Էլան, էրկու ախպէրով խեծան իրանց ձիանք.
Էլան կնանիքն էլ խեծան իրանց ձիանք, առան բերին Սասուն.

Նոր ըն տեղ Նստան էս խետին.
Բաղտասարից էլաւ Մհերը,
Սաղնասարից էլաւ Յռան Վէգոն, Ջէնով Ցօվան։



## Բ.

# ՄՀԵՐ ԵՒ ԴԱՒԻԹ

Սաղնասարից, Բաղդասարից յետ Մհեր էլաւ թաքաւոր.
Ախչարքը բիրասի այք արաւ, զաւքից,
Ջօռեղ թաքաւոր էղաւ, գնաց չուր Մըսըր.
Մըսըրայ Մելիքի մօրը հետը Նստաւ, կայնաւ.
Մսրայ Մելիք որ սաըմին, էդի ընդոնցից բահամ էկաւ։
Մհերից ու Մելիքի մօրից էլաւ։
Մհեր Մսըրայ էկաւ իրա տունը—Սասուն.
Մէկ վախք մնաց, ընդրան Աստուած մէկ տղայ տուեց.
Բերեցին էդ տղէն. մկրտեցին. անուն Դաւիթ դրին։
Մհեր-յինքն ընկաւ, մեռաւ. Դաւիթ մնաց յքիմ հօրից.
Մէրն էլ ընկաւ, մեռաւ. մօրից էլ յքիմ մնաց.
Ջէնով Ցօվան, Յռան Վէգոն էդ էրեխին պահըմին,
Տեհան էդ էրեխին չեն կարում պահիլ, ինչ արին.
Միտք արին թէ.—Մհեր մէ վախք գնաց Մըսըր.
Մսըրայ Մելիքի մօր հետ Նստեր, կայներ ա.
Էրեխին ըս տեղ պահող չի ըլլի.
Բերենք, տանք Մսըրայ Մելիքի մօր, թո պախի.
Էլան, վերցրին, տարան Մսըր. տուեցին Մսըրայ Մելիքի մօր
Ասին.—Էս էրեխին պահող չինկայ, դու պախի։
Մհեր որ մեռաւ, էս խետին Մսըրայ Մելիք էլաւ թաքաւոր.
Երկիրը բիրասի դարձրեց իր թրի տակը։
Ըդրանից կանոնը-դայեն ուրբաթէ ուրբաթ հոլ կը խաղային.
Ձիաւորներին բանծած կանէր, կեթային դաշտի մէջ.
Դաշտի մէջ իրարի զուրզ կը թալէին.
Չորս-խինգ տարի էդպէս խաղ կանէին,
Դաւթի խինգ տարին որ թըմըմաւ, մէ ուրբաթ ասաւ.
—Նեռի, ընձ էլ տար, գամ, թամաշա անեմ զուրզ թալելուն։
Ասաւ.—Դաւիթ, բալամ, երանի դու էդ խօսք չասէիր ընձի.
Էս Մսըրայ քաղաքն ա, հազար-հազար ձիաւոր դուս կգայ.

Քեզ տանեմ ըն տե, վա՜յ թէ ձիանք տան ոտի տակ.
Թէ որ չի տանեմ, չա՜ռ մարթ պտի ասի.
«Սքիմ ա. Մելիք անկանջ չի գնում.
Տանեմ, փօշմանեմ. չտանեմ՝ փօշմանեմ.
Մըսրայ Մելիքի մէրը խելօք օղուլ-ուշաղ էր.
Ասաւ.—Որդի՛, բեր երկու փայլեվան, դիր Դաւթի խետը.
Թո ձեռը, ոտը կապին տանեն, գնեն մէ բանցր ղարի գլօխ.
Դաւիթ թո ընտից քամաշա անի,
Փայլեվաններն էլ նստին կուշտը, մուղաթ ըլեն Դաւթին.
Զըլլի՛, գայ ցածր, ընկի ձիան ոտի տակը։
Մըսըրայ Մելիք ասաւ.—Մէրս, լա՜ւ ասիր դու։
Վերցրին տարան, ձեռ, ոտ կապին, դրին ղարի գլօխ.
Էդ փայլեվաններ-երկուսն էլ նստան կուշտը ղարաւուլ։
Մըսըրայ քաղքի ձիանք դուս էկան էս խետին.
Խեծան, որ խաղան, մէյտան.
Բիրաքի ժողուան. էկան քամաշա.
Մըսրայ, Մելիք խեծաւ իր ձին. քշից, էկաւ ղօշունի մէջ.
Մէկ գուրզ կար Մըսրայ Մելիքի ձեռը,
Իրեք հարիր, վաթսուն լիտր էր.
Խաղցնըմ էր—տանըմ էր աջ, բերըմ էր գուրզը ձեռի մէջը.
Դանին՝ պտըտցնելով գուրզը, օխտը գրուանքայ կրակ էր թափմ։
Դաւիթը ընտից քամաշա արաւ, սիրտը ղապուլ չարաւ.
Ասաւ էն փայլեվաններին թէ.—Դու գաք, իմ ձեռներ արցիկէք։
Փայլեվաններ վերցրին թէ.—Թաքաւորի հրամանն ա.
Մենք քեզի պտի պահենք, չէթա՜ս, ձիաններին ոտի տակը ընկնես։
Դաւիթ մէ եավաշիկ յիրար տուեց իրան.
Կապուած պարանը կտրուաւ.
Ելաւ, տարաւ, բերեց. երկու փայլեվանին էլ կապեց յիրարից.
Ցինքն իջաւ, էկաւ. դնաց հոլտունը կայնաւ։
Մըսրայ Մելիքը դուրպին դրեց աչքին, իրիշկաց, տեհաւ.
Դաւիթ էկեր ա, հոլտան մէջ կայներ ա.
Ընտից կանչեց Դաւթին.—Դաւի՛թ, հոլ տնից վեր եկ.
Ցէս օր կը զարկեմ. խող էս. խող կը դարցնեմ.
Դաւիթ ձէն տուեց ընտից, ասաւ.
—Քեռի՛, զա՜րկ. թո դայ քո գուրզը.
Զըլլեմ, չիմանամ երկու մտանի ըլես.
Աստըծուց էնպէս գրած չի որ մեր ազգը, ձեր ազգի դէմ փախնի.
Ես էլ չեմ փախնի քու դէմից։
Մըսրայ Մելիք լսաւ էդ խօսքերը. սիրտը բարկացաւ.

Գուրզը էնպէս զարկաւ՝ «խող է, խող դարձնեմ», ասաւ։
Գուրզն որ թալեց, էկաւ, Դաւիթ էլ երկու ձեռքով չըռնեց.
Մէկ ձեռքը տարաւ դէմ, գուրզը բռնեց.
Որ գուրզը բռնեց. ծանր թեթեւ արաւ, ասաւ.
—Ափսոս, հազար ափսոս, մէ քիչ թեթեւ ա էս գուրզը.
Քառսուն լիտր արճիճ ըլէր, խալին, ցընենք վրէն.
Նոր լաւ կըլնէր։
Թալից գուրզը Դաւիթը,
Գնաց, Մսըրայ Մելիքի գլխի վրով ընցաւ.
Մէ աւուր ճանբախ գնաց, դըն ընկաւ։
Մըսրըրայ Մելիքը էս խետին կանչից խալխին, թէ.
—Արէք, էլ մէք խաղայ. էլ խաղալ մեզի չի ուրմըշի.
Փոր ու փոշման թողին ու էկան տունը։
Մսըրայ Մելիք վերցրեց.—Մէրիկ, ես Դաւթին պտի մորթեմ.
Մէրը վերցրից.—Որդի՛, ընչի՛ ես մորթում։
—Ցէս օր էնի գուրզ թալեց. իմ գլխի վրով ընցըցրեց.
Մէրը միտք արաւ, էս խետ,
Մէկ վախտ Դաւթի խօր խետ նստեր, կայներ էր,
Սիրտը ցաւաց Դաւթի վրէն, դարձաւ, ասաւ.
—Որդի՛, մի՛ մորթի Դաւթին, տղայ ա. մեղք ա.
Ասաւ.—Բա՛, ինչ անեմ։
—Բեր, մի աման կրակ լից, մէ աման էլ ոսկի լից.
Դունից կանչայ, գայ, ասա.—«Էս գեղինից մէկը վեր կալ».
Թէ որ ձեռ պարզեց դպա կրակ. խելք բան չի կարում.
Թէ որ ձեռ պարզեց դպա ոսկին, էն վախք մորթի։
Մսըրայ Մելիք բերեց, մի աման կրակ, մի աման էլ ոսկի լցրեց,
Կանչեց.—Դաւի՛թ, արի, էն երկու գեղինից մէկը վեր կալ։
Դաւիթն էկաւ, մտաւ օթախը. էդ երկու գեղինից մէկը վերցնի.
Անտէր մնայ փողը, փարէն քաղցր ա մարթի.
Թէ դժողք կը տանի, թէ արքայութուն.
Էկաւ, ձեռ պարզեց դեխ ոսկին.
Աստըծու հրամանքին հրեշտակ Աստըծուն ձեռն օլըրից թեխ կրակը։
Մատ տուեց կրակին. կրակը կպաւ մատից.
Էլ միտք չարաւ որ ժամի տար կրակը, մատը ճիտից բերանը.
Մատի կրակը կպաւ լեզուից, թքից դուս կրակը բերնից.
Լեզուն էրուաւ. Դաւիթ թլոլ էր խօսում։
Մէրն էն թեխէն ասաւ.—Մելի՛ք, որդի՛, տեհա՛ր.
Խելքը չի կարեց, մատ տուեց կրակին.
Հաւ մատ էրուաւ, հաւ ճիտեց, բերան, լեզուն էրուաւ.

Որ ընդրա խելք կտրէր, էն ըդե՛նց կանէր,
Մելիք վերցրեց.—Բա, մէրի՛կ, ես ի՛նչպէսզ անեմ.
Իմ սիրտը ղապուլ չի անի, որ էնի մնայ իմ աչքի դէմը։
—Որդի՛. որ չե՛ս ուզում, բե՛ր էրկու լաւ փայլեվան մարթ,
Ղուվաթով ըլնեն, դիր Դաւիթ ընդոնց խետ.
Ըւզկի, թո էթայ իր խօր երկիր, չմնայ քու աչքի դէմ։
Մօրրայ Մելիք բերեց, էրկու քու հաւնած փայլեվան,
Դրեց խետը, ասաւ.—Կը տանէք չուր Անդղայ գետը.
Ընտեղ կը մորթէք, անկնչներ կը բերէք ընձի ճաֆիյա.
Իմ մօրից գաղտիկ ըլլի, ինչ որ ուզէք. կտամ ձեզի։
Ընդոնք վերցրին Դաւթին, ընկան ճամբախ, ըլպա Սասուն
Էկան, խասան չուր յԱնգղայ գետը.
Մէկն էլաւ կարմունջի վրև, մէկն մնաց ներքև.
Կանչին Դաւթին.—Դաւի՛թ, արի՛, Դաւի՛թ, արի՛.
Արի՛, մեր էրկըսի առանքով ընցի՛, չընկնես ջուրը.
Ասաւ.—Փայլեվաններ. իրեք օր է ճամբախ ենք ղալըմ.
Ծովերի ղուաղ, գետերի ղուաղ, ես չըմ ընկնըմ ջուր,
Մկայ ըստե ընչի՛ պտի ընկնեմ ջուր.
Ցընցէք, յառէջ գնացէք, թէ չէ, որ դարձամ ձեզ վրայ.
Ձեր մենծ կտոր ձեր յանկանջներ կը մնայ։
Փայլեվաններ ղառայ էն իրանցից. խասան թեխ Դաւիթ.
Դաւիթ իր ձեռ պարզեց, էն մէկի գօտից բռնեց.
Էրկրսի քամակ բերեց, զարկեց յիրար.
Ըդըրանց կոտրանք մտաւ յիրարի մէջ։
Դաւիթ իր ձեռ քաշեց, ընդրանք էլ իրարից չի պոկուան.
Էլան կայնան, էրկըսով խռովան, դարձան.
Էն մէկ բոդուց դե, էն ծառներ չլկում էր մէկէլին.
Որ բեզրըմ էր, դնըմ էր գետին. մէկէլն էր չլկըմ.
Դաւիթ իրիչկաց, տեհաւ, էդոնք իրարից չեն պոկւում.
Ասաւ.—Դե, ըդենց Սաճդուխչայ. բիր բօխչայ հաղացէք.
Ջուղաբ տարէք, թաքաւորին։
—Դաւի՛թ, բա մեր ախըրը մե՛նց պտի ըլլի, չի պոկուե՛նք իրարից.
Դաւիթ ասաւ.—Չէ՛, չէք պըծնի իրարից չուր ձեր մահուայ օրը։
Ասին.—Դաւի՛թ, արի՛, քաշա՛, մեզ իրարից պըծըցրայ.
Մենք քանի սաղ ու կենդանի ենք, քեզի ծառայենք.
Առաջի Աստըծուն ուխտ ըլլի։
Դաւիթ գնաց, քաշեց, իրարից պըծացրեց.
Էկան, ընկան Դաւթի յառէջ.
Սալամաթ Դաւթին բերին, տարան Սասուն։

Դաւիթ էս խնտին մէ նստ-անեղ չինեց իրա համար.
Էթըմ էր, մէ կորեկի արտ կար,
Ջուր իրիկուն ճնճղուկ էր սպանում:
Էդ կորեկը մէ պառաւ կնկան էր. ինքն էր մէ տղայ.
Կգար, Դաւթին կասէր.—Վ,երցըվիս դու.
Ջուր եփ իմ կորեկ տրորես, թափես,
Ըմեն փչըրուաւ, թափաւ քու ոտների տակ.
Ես էդուց ինչ պտի տամ, իմ տղէն ուտի։
Դաւիթ կորեկի միջից ելաւ, էկաւ տուն։
Էս խնտին ճժերի խետ ճան կը խաղար.
Ըդըրա ճանէր կը տանին, կասէր.
—Իմ ճաներ տուէք ընձի.
Ընդոնք էլ չին տայ, կասին.—Ընչի՞ տանք, տարեր ենք.
Էս խնտին սիլով կը զարկէր ըդրանց.
Որ կը զարկէր, որի յանկնջներ կը ռնուէր.
Որի էրես կեթար քամակ, որի լիզուն կը բռնուէր.
Որը յախտ կը հիւանդանար, կը դողցընէր,
Քաղաքի մարթիք՝ Սասմա չեճերի մէչ ինչ ման ին գալըմ.
Որ տուն մտան, տեհան տան տղի լիզուն բռնուեր ա.
Ականջներ բռնուած ա. յերես ծռած ա, գնացի քամակ.
Որը խիւանդ պառկուկ.—Էս ինչ ա էլե ըդրանց։
Թէ.—Վ,ալա, Դաւիթն ա զարկե։
—Արէք, որ էդպէսդ ա, ժողուենք, էթանք խօրողբօր կուշտ.
Ընչի պտի ըդենց անի մեր էրեխեքին։
Էրեխայ տերեր յըմեն ժողուան, գնացին գանգատ.
—Ձեր էրեխին եա տուէք ուսումի. եա ղըկէք ուրիշ երկիր.
Մեր էրեխեքին զարկեր ա. որը խիւանդ ա, որը . . .
Մենք չենք ընդունի էդ բանը։
Խօրողբըրտանք վերցրին, Աստուած վերցնի էդ թավուր էրեխին.
Մենք յինչ անենք, մենք կուզենք ըդենց անի.
Էկան թէ,—Դաւի՛թ, ընչի էս զարկըմ խալխի էրեխեքին։
Խօրողբըրտանք միտք արին.—Թէ փեշի տանք.
Վայ թէ մէկ օր զարկի, իր ուստին, սպանի.
—Գա ինչպէսդ անենք, բերենք տանք Ֆորթարած ըդըրան.
Գեղ չի մնայ, որ խալխի էրեխէքին վնաս չտայ։
Էկան.—Դաւի՛թ, որդի՛, քեզ տուեր ենք Ֆորթարած.
Գնա, ֆորթեր պահի։
Ասաւ.—Դե՛, արէք, էթանք, պարըեենք իմ հախ.
Գնացին քաղքի մէջը, Դաւիթ վերցրեց,
—Դուք ընձի բռներ էք Ֆորթարած.

Պախեմ ձեր փորթերը, ճախս բամամ տաք.
Պայման արին ըդենց.—Համա Աստըծու խաթր, դու գնա.
Գեղըն մնաս մի տայ, մենք քու ճախ կտանք։
Էլաւ, լուս բացուաւ, փորթեր խանին դուս.
Դաւիթ գնաց դէմ, մէ էրկաթե կօռ բռնեց ձեռը.
Մէ պողպատե սօլ խագաւ. փորթերն առաւ, էլաւ սար.
Փորթերն բրախեց, ինքը ընկաւ սարի մէջ.
Ինչքան լապստրակ կար, աղուէս կար, գէլ կար. առջ կար,
Ժողուեց, բերեց, լցեց փորթերի մէջը.
Էն ինչ գէլերն ին, համնըմին թեխ հորթեր. ուտին.
Դաւիթ խասնըմ, պոչից բռնըմ, վերցնըմ, տփըմ էր գետին.
Էն ինչ հորթեր իչկըմին թեխ գէլեր. յախու չըն տրածըմ.
Ժողուեր ին իրարի վրէն, կաղներին ընտեղ։
Դաւիթ էն ղsար վազեր էր, նեղացեր էր.
Ոտի պողպատե սօլը խանեց, տեհան ծակուեր ա.
Կօռ որ բռներ ա ձեռ, էն ղդար վազեր ա որ մաշուեր ա։
Իրիշկաց, տեհաւ Խօրողբէր խաց ա բերըմ (կէս աւուր հաց).
Էկաւ, մօտացաւ Փորթերին, տեհաւ.
—Ախչար ինչ դար ջուն ջանավար կայ,
Ժողուեր ա. լցեր ա փորթերի մէջ։
Ձէն տուեց Դաւթին.—Արի, քու խաց տար.
Դաւիթ ձէն տուեց.—Բեր դու, ես չեմ կարայ գայ։
Էն լապստրակներ որ ժողուեր էր, անուն չէր գիտում.
Ասաւ.—Խօրողբէր, էս բալբալոսան ուլեր կը փախնին.
Դու խաց բեր, տուր ընձի.
Ասաւ.—Վալա, ես չեմ գայ, կը վախենամ էդ ջանավարներից։
Իր ձեռքի փէտ տնկից գետին, հաց կապեց փէտից.
Ասաւ.—Արի. քու խաց տար։
Խօրողբէր էկաւ քաղաք, ձէն տուեց խալխին.
—Աստըծու սիրուն ըսի. էլէք.
Դռներ խողէք, դարկեաններ փակէք.
Դաւիթ, ախչար ինչ դար ջանավար կայ,
Բերե լցե փորթերի մէջ,
Իրիկուն որ էդի բերեց, կը լցուեն քաղաք.
«Մէր զմանուկ կուրանայ։
Էլան դարկեաններ փակին, դռներ հողին։
Ցիրկուն Դաւիթ հորթեր առաւ, էկաւ, ձէն տուեց.
—Ձեր հորթեր ղարիբ էն, յէս օր տարէք.
Վիր մէկ էր, արեր էմ խինգ.
Վիր խինգ էր, արեր էմ տաս.

Ալէք, ձեր ապրանք տարէք, տեղաւորէք.
Խեր տեսնաք ձեր մալից։
Մէկը չուր լուս դուս չէկաւ յախու։
Դաւիթ իշկաց քաղքից մարգ դուս չըլըմ.
—Հա՛յ գիտի ախչարք, ասաւ, արի՛, լաւութուն արա.
Ես յէս օր բիքուն քրտինք արուն թափիմ, մալ ժողուիմ.
Դուք իմ ամակ չիմանաք։ Թողեց, էկաւ տուն Դաւիթ.
Էն ինչ ջուն ջանավար էր, քաշուաւ սար.
Էն ինչ հորթերն ին, մնացին էն տեղ կայնուկ.
Խալխ էլան, դռներ բացին, հորթեր բերին։
Դաւիթ գնաց, քնաւ.
Լուս բացուաւ, էկաւ, Նախրագնէն կաղնեց.
Ասեց.—Դե՛, խանէք ձեր դավար, տանեմ, պախեմ։
Խալխն ասին.—Ախպէր, էլ քեզ չենք բռնի հորթարած.
Ասաւ.—Ընչի՞ չէք բռնըմ,
Թէ.—Յէս օր էլ տանես, մեր հորթեր յախու կը սատկեն։
—Էսե՛ չէք բռնի։ Ձէն տուեցին յըմենով.—Էսե, չենք բռնի.
Դաւիթ էկաւ տուն.—Խօրողբէր, ասաւ.
Ել, ջուլ վերց, կոտն էլ վերց։
Խօրողբէր էլաւ, կոտը ջուալը վերցեց.
Դաւիթ ընկաւ յառէջ, գնաց տներ,
Ասաւ.—Քու մալ խան դուս. տանեմ, պախեմ։
Ասին.—Մենք չենք բռնի քեզի ֆորթարած.
—Որ չես բռնի, իմ հախ տո՛ւ.
Սաղ քաղաքը պտըտաւ ըդենց
Իր հախ թամամ ժողուեց, էկաւ տուն։
Մնաց, էլի գնաց էրեխէքի խետ խաղալու.
Էլի էդ օյին խանեց էրեխէքի գլօխ։
Խալխ ժողուան, էկան թէ.—Դաւիթ մեր էրեխեքին կոտորեց։
Նա տուր ուսումի, եա թո էթայ ուրիշ էրկիր։
Ժողուան, խորհուրդ արին թէ.
—Դաւթին լն խետ ֆորթարած արինք.
Էս իետ էլ բերենք, նախրչի անենք. մէկ ընկեր դնենք խետ.
Ասին.—Մուղաք ե՛լ, ջուն ու ջանավար չի լցուի Նախըրի մէջ։
Դաւիթ Նախիր տարաւ դաշտը, տեհաւ մէկ մուկ ա ըլըմ.
Ասաւ.—Ընկե՛ր, էդ ի՞նչ մուկ ա.
Ասաւ.—Մէ հարուստ մարթ ա մեռել, ժամ էն անըմ.
Ասաւ.—Կարմա մէ թիֆա էթաս, բերես։
—Ես ի՞նչ ղդար պտի բերեմ որ, դու կուշտ ուտես,
Արի՛, դո՛ւ գնա, որ էրկուսս էլ կուշտ ուտենք.

Դե՛, դաւար մուղաք էլի, ես էթամ, ասաւ.
Էն մուղաք էլաւ, ինքը էկաւ որ էթայ, հաց բերի։
Գնաց, տեհաւ ժողովուրդ, քհանէն նստած էն.
Ասաւ.—Օրհնեա խտէր, էս ինչ հացկերութուն ա.
Ասին.—Մարթ ա մեռե, ժամ էն անըմ.
Ասաւ.—Օղորմի ձեր ննջեցելոց հոգուն.
Մէ քիչ կերակուր տուէք, մենք էլ տաննենք, ուտենք։
Տան տիկին բերեց. կովկիթ հերիսայ լցեց.
Մէկ զռուանքի գեօրէ եղ կըլլէր, լցեց վրէն.
Չորս հինգ հաց բերեց, տուեց ըղրան.
Ասեց.—Որդի՛, տարէք, կերէք, ձեզ անուշ ըլլի։
Դաւիթ տեհաւ հէրիսի ամանը թունտիրն էր.
Եղ պղնձով խալուկ, կուշտ դըռուկ էր.
Ասաւ.—Նանի՛, ձեր խաց ո՞րտի ա.
Ասաւ.—Դէ՛, էն տեղ դալսակ ա. խաց բօլ կայ.
Դաւիթ դռնից էլաւ դուս. գնաց մէկ դարմնի կողով չկեց.
Գնաց. էդ խացը ծալպէծալ վերցեց, դրեց կողովի մէջը.
Ձեռ տուեց, հէրիսայի կճուճ թունտիրն էր. խանեց դուս.
Էդ պղնձի եղ յըմեն չուռ տուեց վրէն, կողով չկեց.
Հացը. հերիսի աման մէկ ձեռնով բռնեց. ասաւ.
—Դե՛, տէրտէր, դու խաց օրհնի, չուր ես էթամ, դառնամ, գամ.
Խալխ տեհան որ էդ կողով խաց չկեց յըմեն.
Էդ հերիսի աման էրկու հոգով չեն կարում յիրար տար.
Դաւիթ որ մինակ չկեց, էլ յախու մէկը չի խօսաց։
Դաւիթ տարաւ թեխ ընկերը—կերակուրը.
Ցինք իր ընկերը կերան—էրկըսով.
Ընկերին ասաւ.—Ես բերեր էմ, դու էլ տա՛ր, տո՛ւր իրանց.
Ընկեր յիմացաւ որ խաց յըմեն բերեր էր.
Եղն էլ յըմեն բերեր էր.
Հերիսէն էլ յըմեն բերեր էր՝ ասաւ.
Ես չեմ կարայ չկի, տանի. ե՛լ, էլի դու տար, Դաւիթ.
Դաւիթ բերեց. ամաններ տուեց տիրոջ.
Տեհաւ թունդիր նոր քաղա մուխ էն քցում, վառում էն.
Թաղա կերակուլ էն էփըմ, որ տան խալխին, խալխ, ուտի։
Դաւիթ էկաւ, ասաւ.—Շատ շնորհակալ եմ ձեզանից.
Աստուած օղորմի ձեր մեռելի հոգուն. կուշտ կերանք։
Դաւիթ էկաւ, տեհաւ ընկերը լալըմ ա.
Ասաւ.—Ընչի էս լալըմ. թո քիչ ուտիր, փորդ չի ցաւար.
Ասաւ.—Ուտելուց չի, Դաւիթ.
—Գա ինչիցն ա, ասաւ Դաւիթն.

Ասաւ,—Քառասուն հոգի հարամի դեերն էկան.
Չարկին, ըռէսի եզը տարան. մենք իրիկուն ինչ ջուղաբ տանք։
Դաւիթ ասաւ.—Դո՛ր տարան.
—Դե՛ս գնացին, ես ինչ գիտամ.
—Դե՛, ասաւ, դու նախիր տար, ես էթամ եզան քամակ.
Գնաց, տեհաւ մէկ զաղի մէջ մէկ մուխ ա ըլլըմ դուս.
Մտաւ զաղն, տեհաւ քառասուն հարամի նստած էն.
Զորս, խինգ չամի գերան թալեր ին կրակի վրէն.
Քառասուն կանթանէ ղազան թալեր էն վրէն.
Էդ եզը կաշով, բանով դրեր էն պղնձի մէջ.
Էփըմ էն որ ուտեն։
Դաւիթ իրիչկաց, տեհաւ էդ պղնձին քառասուն կանթ կայ.
Ասաւ.—Ես իմ ղուվաթ էս պղնձին վրէն պտի ճուպեմ.
Տենամ, կարմ էս պղինձ վերցնեմ, գետին դնեմ։
Ձեռ տուեց, վերցրեց. դրեց գետին.
Գետնից վերցեց, դրեց կրակի վրէն.
Դառցաւ որ բարև տայ.
Տեհաւ եռսունը ինը հոգի փախան.
Էն մէկ սիպտակ—ծեր—խալիւոր էր. տեղպտեղ չորցաւ յախու.
Բերան բաց էր մնացե. Դաւիթ հենց իմացաւ թէ իր վրէն է ծիծաղում։
Էկաւ, ձեռ տուեց թէ.—Իմ խէրս, ընչի՞ իմ վրէն ծիծաղըմ էս.
Տեհաւ, չորցե, էլէ փէտ.
Մէկ բանալիք կար ընդրա մուրուսի մէջ.
Էդ բանալիքը արցկեց, բերեց մէ պտիկ դուռ կար, բացեց.
Տեհաւ ինչքամ արծաթ, ոսկի ուզես, ըտեղ կայ.
Մէ քիչ վերցեց, լցեց ջէպերը, գալըմ թեխ տունը.
Ընկեր նախիր տարեր էր գեղ. Թեխ մութն էր.
Խօրոզըրտանք էկան, խարցրին.—Մեր տղէն պա յո՞ւր ա.
Ասաւ.—Դողեր ըռէսի եզ տարան, գնաց եզան քամակ.
Ընդոնք էս խետին գնացին Դաւթի քամակ.
Դաւիթ սարից էր գալըմ, էկաւ, իրար ըռաստ էկան.
Տեհան մութն էր, էլ չի կարացին գար գեղը.
Ասին.—Պառկինք ըս տեղ, չուր լուսնայ, կըլլենք, կեթանք.
Պառկան, քնան ըտե։
Դաւթին քցին օրթալխ, իրանք ամէկ մէկ կողի պառկան.
Դաւթի մէկ փեշ մէկ քցեց տակ, մէկ փեշ մէկ քցեց.
Կէս գշեր էր, Դաւիթ զարթնաւ, յէլաւ նստաւ.
Տեհաւ դաշտի մէջ մէկ լուս ա էրեւում.
Ուզեցաւ որ ըլէր, էթար, տեհաւ փեշեր խօրօղըրտանց տակն ա.

Դանակ ջեպից խանեց, էն փէշ կտրեց.
Մնաց խօրողբօր տակը մէկէլ փէշ.
Էլ չի խանից վեր, էն փէշն էլ կտրեց:
Գնաց խասաւ էն լուսին, տեհաւ կրակ չէ.
Խաչաձև բանցրանում ա վիրև, գալըմ ա ցածր, կայնըմ.
Թամբուրեց էն լուսը. դառցաւ, էկաւ դպա խօրողբըրաանք.
Էկաւ, մտաւ էրկու խօրողբօր մէջ, պառկաւ.
Լուս որ բացուաւ, խօրողբըրտանք ասին.
—Դաւիթ, ե՛լ, էթանք տուն։
Դաւիթ որ էլաւ, կայնաւ. փէշեր մնաց գետին.
Խօրողբըրտանք ասին.—Դաւիթ, էդ քու փէշեր խի՛ ա կտրուկ.
Դաւիթ ասաւ.—Խօրողբէր, էս գշեր ես մէ լուս էմ տեսե.
Ասին.—Որդի՛, գուլթան ա, քարվան ա, մար անող ա, ո՛վ գիտայ։
Ասաւ.—Նէ գուլթան ա, նէ քարվան ա, նէ ջրկալ ա։
Խօրողբըրտանք իմացան էս խետին, լացան.
Թէ.—Էնի, բալամ, քու խօր Մարութիկ Աստուածածին ա.
Ինչ քու հէր մեռեր ա. Մսըրայ Մելիք էկեր, քանդեր ա.
Մըսըրայ Մելիքի յախուն չենք կարայ չինի։

Դաւիթ էդ տեղ երգ կասայ.
—Խօրողբէր, Աստուած կտայ արեւէս,
Դէմ կը կայնեմ էն քեաֆիր Մելիքին,
Կուրուսեմ, ինչպէս յօրն յերեկին:
Խօրողբըրտանք վերցրին.—Դաւիթ, ծախք չատ կուզի։
Դաւիթ վերցրեց.

—Ես իմ ոտովն եմ գեացե.
Իմ ձեռով դուռը բացե.
Իմ աչքով էմ տեհե.
Ոսկին ու արծաթ բերենք,
Մարութիկ Աստուածածին չէն անենք.
(Օրհնութուն, բարերարութուն թափի,)
(Վըր անկանջ արողաց),
(Վըր հազր նստողաց)

Էլան, էկան տունը, չորս խինգ եզ բռնին,
Տարան, էն արծաթ ոսկին բերին.
Ըռէսի եզան հախ տուին.
Մնացող բերին, Մարութիկ Աստուածածին չէն արին։
Վանք որ չինին պռծան, եպիսկոպոսն դրեց մէջ.
Վարդապետ, սարկաւագ դրեց մէջ.

Էն էրկու փայլեվան վանքի դռնապան դրեց.
—Ի՛նչ բան կը պակսի, էկէք, ընձի իմացրէք, ասաւ Դաւիթ։
Ցինքն էկաւ տուն, նստաւ.
Խեյքն էս խետին կատարիալ էլաւ.
Էլ խալխին չէր դիպնում էս խետին.
Ձէն ընկաւ աշխար թէ.—«Դաւիթ Մալութիկ Աստուածածին
. չէն արեր».
Ձուղաբ գնաց Մըսըր—Մըսըրայ Մելիքն էլ լսաւ էդ ձէնը.
Մօրն ասաւ.—Այ մէր. էն օր չի թողիր ես Դաւթին մորթէի.
Էգուց էլ ես ընդրա ճուղաբ ինչպէս տամ։
Ջառ քցեց Մըսըրայ քաղաք, ասաւ.
—«Եարաբ մարդ կայ, գայ, էթայ Դաւթի գլօխ բերի.
Ո՛ր մէկ բերեց, ի՛նչ լիզուն պտըտի, կտամ»:
Մէկ կուզ Բայդին կար, ըղըրա ձին վեց ոտանի էր.
Շաշ ու փառ էր, ասաւ.
—Որ էրկու հազար ձիաւոր տաս ընձի, ես կեթամ.
Դաւթի գլօխ կը կտրեմ, յանկնջներ կը բերեմ հացիյա։
Մելիք հրամայեց, էրկու խազար ձիաւոր ժողուան.
—Դե՛, կուզ Բայտինի խետ գնացէք, ասաւ.
Կուզ Բայտին ընկաւ յառէջ ձիաւորներ ընկան քամակ.
Շահարից էլան դուս—մէ յաղբուր կար շահարի կուշտ.
Կնանիք ջուր ին լցընըմ, որ տանին տները,
Տեհան Կուզ Բայտին էկաւ, էրկու հազար ձիաւոր հետն ա.

Ասին.—Կուզ Բայտին, էդ յո՞ւր ես էրթում
Աստուած յա՛ջողայ, յաջողայ.
Տէրը քեզ հետ ըլլի, քեզ հետ ըլլի։
Ասեց.—Էրթումեմ Սասուն, բերեմ թալան.
Կարմիր կովեր բերեմ կթան.
Սեւ եզներ բերեմ լծան.
Էրկէն կնիկ բերեմ, ուղտեր բառնան.
Կարճ կնիկ բերեմ, էրկանք աղան.
Ախչիկ բերեմ, արմաղան։

Կուզ Բայտին գնաց. ճանփի մէջ տեհաւ մէկ Ցէրզ մարդի գլօխ.
Անկնջներ կտրեց, թալեց ջէպը, ասաւ.
—Էս Մելիքին կը տանեմ հացիյա.
Կասեմ, էս Դաւթի յակնջներն ա։
Կուզ Բայտին էկաւ, էլ յախու չի գնաց քաղաք.
Գնաց դպա վանքը, էրկու դռնապանին ձեռը, ոտը կապեց.
Մտաւ վանքը, վարդապետ, եպիսկոպոս, յըմեն մորթին.

Դարցաւ, թողեց, եկաւ գլա իրանց քաղաքը։
Մէկ տիրացու վանքից փախաւ.
Ժամարարի չապիկ արնի մէջ շաղաղած էր.
Առաւ, եկաւ դըպա Սասուն.
Եկաւ տուն, հարցրեց.—Դաւիթն յու՞ր ա.
Ասին թէ. Գնացե ղօնախլըղ։
Էս խետին Դաւիթ էլի տաս, տասնըխինգ տարեկան.
Եկաւ էդ ղօնախլըղի դռան վերէն,
Ասաւ.—Դաւիթին ասէք. դուս գայ, բան պտի ասեմ։
Դռան վրի ղարաուլներ ասին.
—Գնա՛ տուն, խուլնկ, մոմ պակաս ա, տնից վեր կալ, տար.
Դու Դաւթի խետ ինչ գործ ունես։
Տիրացուն տեհաւ չըն թողում էթայ ներս.
Չեն էլ կանչում Դաւիթ գայ դուս.
Ճարը կտրուաւ, չապիկ փանճարից շպրտեց, գնաց ներս.
Դաւիթ որ տեհաւ ժամարարի չապիկ արնոտ,
Տուեց գլխի մէջ, լացաւ. ասաւ.
—Կանչէք չապիկ բերող, էդ ի՞նչ ա էլե,
—Պա չեմ գիտում. ղօշուն փրթաւ ներս, բիրաշի ջարդեցին.
Մարթ չիկայ ընձանից սավայի. եկայ, ճուղայ բերեմ քեզ.

Էդ տեղ Դաւիթ տուեց գլխին, ասաւ.
—Աշկեր ֆոռ պիտեր Դաւթին,
Չի տեսներ սպանում եպիսկոպոսին.
Ամեն վախը ֆարազ կտար Հայոց իշխաններին:
Աշկեր ֆոռ պիտեր Դաւթին,
Սպանում չի տեսներ վարդապետներին.
Շաբաթ, կիրակի պատարագ կանեն Հայոց ճաւատին:
Աշկեր ֆոռ պիտեր Դաւթին,
Սպանում չի տեսներ աւագ սարկաւագին,
Ամեն վախը բուռվար ման կտար մըջ ժողովրդին։

Դաւիթ էլաւ, էլ տուն չի գնաց, գնաց վանք,
Տեհաւ երկու դռնապան կայնուկ՝ ընտեղ թալուկ ա.
Ձեռներ արցկեց, ասաւ.—Էդ ինչ էլաւ,
—Ղօշուն տուեց մեզ վրայ.
Ասաւ.—Պա դո՞ր գնացին։—Դէսը գնացին։
Դաւիթ ձեռ տուեց, մի ահագին բարտու ծառ ֆօֆահան արեց.
Դրեց թևին. գնաց, խասաւ ղօշումին.
Ղօշում, ինչպէս վանքի ղօռուխ, ձիանք բրախեր ին.
Որը՝ ձին ա քիմարում, որը ասպապն ա սրբում.

Որը քնըմ ա, որը խաղ աըմ։
Դաւիթ ծառը դրից դետին, բարակ ճղերից բռնեց.
Ծառի fofը տարաւ-բերեց ընդրանց մէջը.
Որի գլխին դպաւ, գլուխ թռցրեց, տարաւ մէկ սաճաք տեղ.
Որի մէջքին դպաւ, ջարդ ու խուրտ արաւ.
Որի ձիան դպաւ, ջարջու խուրտայ արաւ։
Կուզ Բայտին իմացաւ, իր վեց ոտանի ձին խեծաւ, փախաւ.
Դաւիթ ընկաւ էտև, խրկեց.
Տեհաւ ծառը իրան ծանտրութիւն ա անըմ
Թալեց գետին, հասպէհաս էլաւ Կուզ Բահտինի ձիան.
Իր չորերը ճղեց, թալեց, չփլախ կաղնեց թամքի մէջ.
Դաւիթ քամակից զոռեց ձիան, քամակից հասցրեց իրան.
Ձեռ քցեց, ձիան սոչ քաշեց։
Էնի ձին զանկուլամիս արաւ որ պրծնի.
Ձիան սոչ fofից պոկուաւ, մնաց Դաւթի ձեռ.
Ձին արընլըուիկ պրծաւ, գնաց, հասաւ էն յաղբուր.
Տեհաւ կնանիք էլի ջուր ին լցընըմ.
Կնանիք տեհան Կուզ Բահտին էկաւ, իրանց մարդիկ հետը չէ.

Ասին.—Կուզ Բայհտին, չէ, դու գնացիր Սասուն բերիր թալան.
Սեւ եզներ բերիր լծան.
Կարմիր կովեր բերիր կթան.
Էդ յո՞ւս ես գալըմ, fաfաքերան։
Ասաւ.—Ղանճըրդ լաfեաքա, ես ինչ գիտի։
Սասմայ նեստրն է զերան.
Որ ծե զարնէն, կանէն իրանց պատրհան։

Ասին,—Պա մեր մարդիկը յո՞ւր ա.

Ասաւ.—Ձեր մարքեր սպաներ, լցեր են յԱնգղայ ձորը.
Ընղրանց ճուճ ու պլոր կը բերեf,
Կանեf ձեզի համար եղ ու չորքան

Կուզ Բայհտին գնաց, ձիանից իջաւ, գնաց Մելիքի կուշտ.
Թէ.—Մելիք սաղ ըլլի, հալ ու ճէfիաք էդպէսա.
Դաւիթ էս օյին խաներ մեր գլօխը։
Մելիք կանչեց մօրը.
—Այ մէր, ամեն վախք դու իմ ջանին ըլլըմ էս պատիճ.
Դու չի թողիր, ես իմ սրտովն անէի.
Էն օր որ դու թողայիր, ես Դաւթին կը մորթէի,
Էսօր էս օյին չէր խանե մեր գլօխ.
Մկայ, պա ես ինչպէսղ անեմ ընդրա խետ։

*Մելիք դառցաւ, ասաւ իր իշխաններին.*
*—Գնացէք, մէ ջոջ տաշտ բերեք,*
*Գնացին, մէ տաշտ առան, բերին, տուին Մելիքին։*
*Մելիք ինչ արաւ—Թուր զարկեց իր բտի մէջ.*
*Մէ տաշտ լիք արուն առաւ իր բտից.*
*Կանչեց էրկու հոգի, գրագիր մարդ բերեց, ասաւ.*
*—Դե՛, ես կասեմ. իմ արընից դու գրէք.*

«Թղթիկմ իմ արընից կը գրէք,
Ըրըղկեմ Բաբա Ֆրէնկին.
Թղթիկմ իմ արընից կը գրէք,
Ըրղկեմ Աստղիկ Պարոնին.
Թղթիկմ իմ արընից կը գրէք,
Ըրղկեմ Աճմու շահին.
Թղթիկմ իմ արընից կը գրէք.
Ըրղկեմ Սուլթան Մուրատին.
Թղթիկմ իմ արընից կը գրէք,
Ըրղկեմ Ֆրէնկի Պապին։

Յէս որ ես շատ նեղ տեղն եմ ընկեր,
Ջեզանից կուզէմ, քառսուն խազար, խինգ խարիր խամար
յերես մազ գալած չըլլի.
Ջեզանից կուզեմ եռսունըխինգ խազար։ խինգ խարիր խամար
Բեղեր նոր մրած ըլլի.
Ջեզանից կուզեմ եռսուն խազար. խինգ խարիր խամար,
Մուրուս նոր թողած ըլլի.
Ջեզանից կուզեմ քսանըխինգ խազար, խինգ խարիր խամար
Մուրուս ալուխառ ըլլի.
Ջեզանից կուզեմ քսան խազար, խինգ խարիր խամար
Մուզուկանչի ըլլի.
Մի ամիս ժամանակ ըլլի.
Ամիս որ թմաւ, ժողնուէք, գաք ըստե.
Յառջի դաստէն որ գայ, ծովերու ջուր խմի.
Մէջ տեղի դաստէն որ գայ, ինչքան գետ, գեօլ կայ, խմի.
Առու կայ խմի, ըմեն ջուրը ըռատ ըլլի.
Յետի դաստէն որ գայ, էլ ջուր չըլլի.
Ջրի տեղ աւազ թալի բերան»։
(—Օրհնեալ արարիչ, թաքաւոր Տէր,
Օրհնութուն, բարերարութուն,
Վըր յանկանջ դրողաց ըլլի.
Վըր հազր նստողաց ըլլի)։

Ամիս որ թմաւ, ղօշուն ժողնուան, եկան, ա՛խ եկան,
Քառսուն խազարէն բռնած,
Տանըր ուր խազար եկաւ.
Սօրը թաքաւոր էր, եօրից էլ եկան թօփուան, ախ թօփուան.
Ղօշուն որ եկան, լցուան քաղաք վըր յիրարու. ախ յիրարու.
Էլ երկնքի աստղի՛ն հաշիւ կայ.
Դետնի խող ու քարին հաշիւ կայ.

Մելիքի ղօշունին հաշիւ չկայ։
Երկինք, գետին ղօշունի դէմ դողում էր էս խետին.
Զարզանդ ընկաւ Մսըրայ քաղաք.
Ղօշուն առաւ որ էթայ Սասմայ վրէն կռւի.
Մէրն ասաւ Մելիքին.—Որդի՛, էրազ էմ տեհե քեզ խամար։
Ասաւ.—Աստուած խէրն անի, մէրիկ. պատմիր. տեսնեմ։

Ասաւ,—Ես տեհայ, Սասմայ ձէն կը խաղար,
Մըսըրայ ձին դեմ կը փախնէր:
—Մէրի՛կ, ասաւ. քուն քեզ խամար ես քընըմ.
Էրազ խալխին ես տեսնըմ:

Է՛լ էն օրը Մելիք չի գնաց։
Մէկէլ օրը էլաւ, ղօշուն վերցրեց, որ էթայ.

Մէրն էկաւ դէմ, ասաւ.
—Որդի՛, Սասմայ վրէն պարզ արեւ էր.
Մսըրայ վրէն ամպեց. ՛ախ ամպեց.
Ես էմ զախախուրէր, զախախուրէր.
Կարկուտ ու կրակ էր թափում.
Արի՛, քար քու փէշից թափի, որդի՛.

—Մէրիկ, ասաւ, էս անահագին ղօշուն ժողուեր էմ.
Էնի մէկ մարթ ա. ինչ պտի անի ընձի։
Ղօշում էս խետին քաշեց, քաղաքից էլաւ դուս.
Գնաց, Սասմայ ղրաղները չատրները զարկեց, նստան։
Մսըրայ Մելիք տաս ձիաւոր ըռղկեց.
Էդ ձիաւորներ էկան Ձէնով Յովանի կուշտ.
Վերցրին թէ.—Տաս ազապ ախչիկ ուզե Մելիք.
Որ քնի. ընդոնք ճանճեր քշին։
Էլան. Սասնայ շէհարից տաս ազապ ախչիկ տուրին.
Առան, տարան, տուին Մելիքին։
Մելիք որ քընըմ էր, ախչիկներ խինգ մէկ կողմ ին.
Խինգ էլ մէկ կողմ ին.
Ուռի տերև ձեռներին բռնըմ, ճանճեր քշըմ ին։

Կանչեց, քառսուն ձիաւոր բերեց Մելիք.
Ըղկեց Սասուն թէ,—Գնացէք, քառսուն բեռ փող բերեք։
Ցվլըեմ ղօշունը վրէն, խարճլիս ըլլի իրանց.
Ուտեն, խմեն. ըլլենք, թալենք քաղաքի վրէն.
Բիրասի ջարդ ու խուրտ անենք.
Սպանենք Դաւիթ. թողանք, էթանք էս խետին։
Ելան, էկան Սասում էդ քառսուն ձիաւոր.
Գնացին Ձէնով Յովանի կուշտ, Ցռան Վերգոյի կուշտ.
Թէ.—Արէք, Մելիքի հրամանն ա, քառսուն բեռ փող տուէք.
Ցուզեր ա, տանենք, տանք իրան։
Ձէնով Ցովան էլաւ, կայնաւ.
Կոտ վերցրին, գնացին. մտան խաշիճէն.
Ցռան Վերգոն չափըմ էր.
Դաւիթ իր նետ անեղն էլի առեր էր, գնացեր էր,
Էն պառուի կորկի մէջ էլի լոր, ճնճուղ էր սպանըմ.
Էդ կորկի տէր պառաւն էկաւ, սաաւ.
—Դօ, բէ Մուրադ մեռնես դու, Դաւիթ.
Զուրի նփ իմ կոլեկ սրորես։
Մսըրայ Մելիք էկեր ա, քաղաքի չորս ղռաղ չադր զարկեր ա.
Վախք ա, գան, քու գլօխ կտրին.
Տասը աղապ ախչիկ տարան.
Մկայ էլ էկեր են, քառսուն բեռ փող էն ուզըմ.
Որ տանին, ցրուին ղօշունի վրէն.
Մըկայ կգան. կը դնին քու գլօխ քու մօր յառջըբէքար։
Դու քեզի մէկ ճար արա։
Էդա պառաւ, Դաւթի խօր խետ նստեր էր, կայներ էր.
Սիրտը ցաւում էր Դաւթի վրէն.
Ընդուր սաաւ էդ խօսքերը։
Դաւիթ սաաւ.—Պառաւ, ես ինչ անեմ.
Քու խնոցին տուր, ես խեծնեմ.
Քու չիրեփ տու, բռնեմ ձեռս.
Ես ընչով էթամ կռիւ, զադ չիկայ։
—Գնա տուն, մկայ փող էն չափըմ, մի թող չափեն։
Դաւիթ կորկի միջից էլաւ, էկաւ տուն.
Տեհաւ խարսներ լայըմ էն, սաաւ.—Ընչի էք լայըմ։
Ասին.—Մենք չի լանք, էլ ով լայ.
Մըսըրայ Մելիք էկեր, չադր զարկեր ա քաղքի չորս ղռաղ.
Առաւօտայ նաշղալըղին էր, էկաւ տաս ձիաւոր.
Տասը աղապ ախչիկ առան, տարան.
Մկայ էլ էկեր էն քառսուն ձիաւոր, քառսուն բեռ փարայ ին ուզըմ.

Քու խօրողբրտանց առան, տարան որ չափեն, տան:
Քոռնանք մենք, մեր հայը ճարը պա մոնց պտի ըլլի։
Դաւիթ էլաւ, գնաց Թեխ խազինէն.
Տեհաւ խօրողբրտանք փարայ ին չափըմ, ձէն տուեց.
Խօրողբէ՛ր, խորից ե՛լ դուս, խորից ե՛լ դուս. ես գամ, չափեմ.
Թէ կը չչկըռիմ, ընձի սորվըցրայ, խըօղբէր։
Խըօղբէր ձէն տուեց.—Դաւի՛թ, բալամ, դե՛, արի՛, չափի։
Քու խէր մէկ ընձի վրայ կանչեր էր, էս իմ բումպան մուրտրէր իմ.
Մէկ էլ դու կանչիր, էլ իմ բումպան մուրտըրէր իմ ես.
Ես էթումեմ իմ բումպան լուանալու, դե՛, դու արի, չափի։
Դաւիթ ձեռ տուեց, էդ ջուալներ, փարէֆ յըմեն չուր տուեց.
Կոտ չուր տուեց բերնի վրէն, կորզեց կոտի ոռի վրէն.
Կոտի ոռի վրէն մէկ քանի փարայ քցեց, փէտ զարկեց.
Կօվա սրրէր կոտի բերան, էն էլ Թափեց գետին.
Դարտակ կոտ վերցըրեց, չուռ տուեց ջուալի մէջ.
Ասաւ.—Էս մէկ (կօվա չափ ա անըմ)։
Մէկ էլ չափեց էդպէսդ դարտակ կոտ.—Էս էրկո՛ւ. ասաւ.
Նաասավոլներ ասին.—Այ տղա՛, դու ինչպէսդ էս չափ անըմ.
Դաւիթ ասաւ.—Ընչի՛, դու իմ չափին չէ՛ք հաւանըմ,
Ասին.—Դարտակ չուռ էս տալի, «մէկ», «էրկուս» էս խամպըմ։
Դաւիթ ներքեւաց կոտ տփեց ընդրանց ճակտի մէջ.
Էլաւ, խասաւ, քսանի յանկանջներ պոկեց, զարկեց ճակատ.
Ատմներ քաշեց, չարեց ճակատ, ձեռներ կապեց, ասաւ.
—Դե՛, ջուղաբ տարէք ձեր Մելիքին։
Ընդոնք գնացին ջուղաբ տանել Մելիքին.
Դաւիթ էկաւ, էն վանքի կշտի գերանի նման մէկ գերան՝
Էն որ ինչ Կուզ Բահտինի էտև գնաց.
Մէկ էնպէսդ գերան քաշեց, ֆօֆահան արեց.
Դրեց Թեւին որ էթայ կռիւ։
Կորկի տէր պառաւ էկաւ դէմը էլի, ասաւ.
—Էդ յո՛ւր էս էթում, Դաւիթ։ Ասաւ.—Էթումեմ կռիւ.
Պառաւ ասաւ.—Տնաւիրի ծուռ. փէտով էլ կռի՛ւ կանին.
Մելիք երկիր մարդ չի Թողե, ժողուե, բերե, դու փէտո՛վ կէԹաս.
—Պա ինչպէսդ անեմ, պառաւ, ասաւ Դաւիթ.
—Քու խըօղբրտանց ասա, մէ-ձի տան, խէծի, գնա կռիւ։
Խըօղբրտանք վերցրին Դաւիթ, տարան բալախանէն.
Քսան ձի մէկ ջերկեճ̈կապուկ, քսան մէկ՝ բալախանէն.
Ասաւ.—Ո՞ր կը խաւանես. խեծի՛, առ գնա՛, բալամ։
Դաւիթ էկաւ ձիան կուշտ, ձեռ դրեց ձիան քամկի վրէն։
Ձին փոր տուեց գետին.

Էս ջէրկէն բռնեց, էլաւ չուր գլօխ.
Որի վրէն ձեռ տուեց, փոր տուեց գետին.
Էկաւ, էլաւ դւան կուչտ, խելք բան չկտրեց ձիաններից։
Էկաւ, էլի գնաց, իր գերան վերցրեց.
Դրեց թևի վրէն, ուզում էր էթար էլի կռիւ.
Էն կորկի տէր պառաւ էկաւ դէմը էլի.
—Դաւիթ, ասաւ, ընչի՞ ձի չխեծար, բալամ.
Ասաւ.—Գնայիմ թալախանէն, որ ձիան քամկի վրէն ձեռ տուիմ, փոր տուեց գետին. Էն որ իմ ձեռին դայախ չի տալում, էն ձին կեթայ կռիւ։
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Քիւռիկ Ջալալին.
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Թուր կայծակին.
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Ծղմէն Մհերին.
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Կապէն Աթէպին.
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Փող Գըլորին.
Խազի. կապուի, խեծի Քիւռիկ Ջալալին, գնա կռիւ։
Ասաւ.—Նանէ՛, ախր չեմ գիտայ դրանց տեղ, դո՛ր ա։
Ասաւ.—Գնա՛, քու խրօղբօր զօռի.
Ընդոնք կը տանին, քեզ նշանց կտան։
Դաւիթ դարցաւ, էկաւ տունը. խօրոդբրտանց ասաւ.
—Էլէ՛ք, ձի տուէք, ես խեծնեմ, խօրոդբրտանք։
Խօրոդբրտանք չեն ուզում ձին տային.
Դաւիթ ձեռ տուեց փէտ, էկաւ թևի խօրոդբրտանք։
Խօրոդբրտանք տեհան Դաւիթ պտի զարկի.
Բանլիս վերցրին, գնացին, գոմի դւան վերէն կայնան.
Վեց դուռ բացին. վրայ օխտին բանլիս տուին Դաւթին.
Ասին.—Էլ մենք յախու չէնք կարայ էս դուռ բացի.
Առ բանլիս, բաց, գնա ներս։
Դաւիթ բացեց, մտաւ գոմի մէջ.
Տեհաւ թուրը, չորերը, ճղմէք պատից կախուկ էն.
Ձեռ տուեց ձիան քամակ՝ ձին քամակ վերցեց, տփեց օճօռք.
Աստըծու հրամանքին ձիան լիզու էկաւ, ասաւ.
—Էդ ինչ պտի անես ընձի դու, Դաւիթ.
Ասաւ.—Քե պտի խեծնեմ, էթամ, ման գամ.
Ասաւ.—Քեզ կը վերցնեմ, արեգակի առէջ կըրիցես.
Ասաւ.—Կը հաղամ քու դօշի տակը։
Ասաւ.—Կը զարկեմ գետին, օխտը տապակ կեթաս գետին։
Ասաւ.—Կը հաղամ քու էրկու անկնջի մէջ.
Ձին ըն տեղ լացաւ, Դաւիթ ասաւ.—Ընչի՞ էս լալըմ.
Ձին ասաւ.—Պա՛, ես չիլամ, ո՞վ լայ.

Ասաւ.—Լալըմ էս, ընչի՞ խաբեր.
Ասաւ.—Էս քանի տարի քու խէր մեռեր ա.
Նէ՛ ընձի բիմարող ա էլե, նէ՛ տակս սըբող.
Իմ ջուրն, իմ եմըն էլ յըրթըսից տուեր էն ընձի։
Որ էդպէսդ ա, խօրդ չորերը էս խետին խաքի։
Դաւիթ խօր Ցաս դըրեց գլօխ.
Մէկ լիտր բանբակ դըրեց մէջը, հալա ընկնըմ էր տակ գլխից.
Խօր արխալուխ բերեց. խագաւ.
Ամեն ծոց մէ լիտր բանբակ դըրեց.
Հալա լէն էր, կօճակները մէր քցիլուս։
Խօր ճգման բերեց, խագաւ.
Ամեն ոտ մէկ լիտր բանբակ ճխտեց.
Հալա լէն էր. ոտներից ընկնըմ էր տակ։
Խօր մէչկապ բերեց, կապեց իր վրէն.
Իրեք փաթ մէչքի բոլորը պտըտեց, հալա էրկէն էր։
Խօր թուր բերեց, կապեց վրէն.
Մէ գեազ գետին քըրքաշ էթում էր—էրկէն էր։
Էկաւ, ձին բիմարեց, թամք դըրեց վրէն. կեամեց, քաշեց դուս.
Խեծաւ, էկաւ որ Սասմայ քաղքէն էթար.
Մէ քիչ տեղ ձին քշեց, միտք արաւ, ասաւ.
—Հայ գիտի սնբաղդ խսան։
Խօրողըրտանք—Ձէնով Օհան, Ցռան Վէգօն էկան յառէջ.
Խարսներ էկան, դէմ կայնան, խաղով ասին Դաւթին։

Դաւիթ, էրթալ մեզ չըլլի, դառնալ մեզ ըլլի.
Դառնալ մեզ ըլլի, մեր ախպէր Դաւիթ.
Զուր մկայ մեզ խարսնութուն չընէք արեր.
Նոր պսի խարսնութուն անենք, մեր ախպէր Դաւիթ.
Նոր պսի քու ձեռներին ջուր լցընենք.
Քու ոտներին սօլ պսի դնենք.
Մեր ախպէր Դաւիթ.
Քեզ խարսնութուն անենք։

Դաւթի սիրտն էլ փլաւ, դարցաւ վրէներ.
—Խարսներ, կանչէք Աստուածը.
Էրթալ չըլլի, դառնալ ըլլի.
Տէր Աստուած ճար անի.
Թէ դարցայ ու էկայ,
Ձեզ կանեմ Սասմայ տանտիկին:
Արարիչ Տէր Աստըծու խնամքը շաս ըլլի
«Օրհնութուն բարերարութուն . . .»

Էս ջէրկէն բռնեց, էլաւ չուր գլօխ.
Որի վրէն ձեռ տուեց, փոր տուեց գետին.
Էկաւ, էլաւ դռան կուշտ, խելք բան չկտրեց ձիաններից։
Էկաւ, էլի գնաց, իր գերան վերցրեց.
Դրեց թևի վրէն, ուզում էր էթար էլի կռիւ.
Էն կորկի տէր պառաւ էկաւ դէմը էլի.
—Դաւի՛թ, սաաւ, ընչի՞ ձի չխեծար, բալամ.
Ասաւ.—Գնացիմ թաւլախանէն, որ ձիան քամկի վրէն ձեռ տուիմ, փոր տուեց գետին. Էն որ իմ ձեռին դայախ չի տալում, էն ձին կեթայ կռիւ։
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Քիւռիկ Ջալալին.
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Թուր կայծակին.
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Ծզմէն Մհերին.
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Կապէն Աթէպին.
—Դաւիթ. քու օղորմած խօրդ կար Փող Պղլորին.
Խազի. կապուի, խեծի Քիւռիկ Ջալալին, գնա կռիւ։
Ասաւ.—Նանէ՛, ախր չեմ գիտայ դրանց տեղ, դո՛ր ա։
Ասաւ.—Գնա՛, քու խրօղբօր զօռի.
Ընդոնք կը տանին, քեզ նշանց կտան։
Դաւիթ դարցաւ, էկաւ տունը. խօրողբրտանց սաաւ.
—Էլէ՛ք, ձի տուէք, ես խեծնեմ, խօրողբրտանք։
Խօրողբրտանք չեն ղըմըշ ձին տային.
Դաւիթ ձեռ տուեց փէտ, էկաւ թեխ խօրողբրտանք։
Խօրողբրտանք տեհան Դաւիթ պտի զարկի.
Բանլիս վերցրին, գնացին, գոմի դռան վերէն կայնան.
Վեց դուռ բացին. վրայ օխտին բանլիս տուին Դաւթին.
Ասին.—Էլ մենք յախու չէնք կարայ էս դուռ բացի.
Առ բանլիս, բաց, գնա ներս։
Դաւիթ բացեց, մտաւ գոմի մէջ.
Տեհաւ թուրը, չորերը, ճղմէք պատից կախուկ էն.
Ձեռ տուեց ձիան քամակ՝ ձին քամակ վերցեց, տփեց օճօռք.
Աստըծու հրամանքին ձիան լիզու էկաւ, սաաւ.
—Էդ ինչ պտի անես ընձի դու, Դաւի՛թ.
Ասաւ.—Քե պտի խեծնեմ, էթամ, ման գամ.
Ասաւ.—Քեզ կը վերցնեմ, արեգակի առէջ կլըրիցես.
Ասաւ.—Կը հաղամ քու դօշի տակը։
Ասաւ.—Կը զարկեմ գետին, օխտը տապակ կեթաս գետին։
Ասաւ.—Կը հաղամ քու էրկու անկնջի մէջ.
Ձին ըն տեղ լացաւ, Դաւիթ սաաւ.—Ընչի՞ էս լալըմ.
Ձին սաաւ.—Պա՛, ես չիլամ, ո՞վ լայ.

Ասաւ.—Լալըմ էս, ընչի՞ խաթեր.
Ասաւ.—Էս քանի տարի քու խէր մեռեր ա.
Նէ՛ ընձի թիմարող ա էլի, նէ՛ տակս սրբող.
Իմ ջուրն, իմ եմըն էլ յըրթըսից տուեր էն ընձի։
Որ էդպէսդ ա, խօրդ չորերը էս խետին խաքի։
Դաւիթ խօր Ցաս դրեց գլօխ.
Մէկ լիտր բանբակ դրեց մէջը, հալա ընկնըմ էր տակ գլխից.
Խօր արխալուխ բերեց. խագաւ.
Ամեն ծոց մէ լիտր բանբակ դրեց.
Հալա լէն էր, կօճակները մէր քցիլու։
Խօր ճզման բերեց, խագաւ.
Ամեն ոտ մէկ լիտր բանբակ ճխտեց.
Հալա լէն էր. ոտներից ընկնըմ էր տակ։
Խօր մէշկապ բերեց, կապեց իր վրէն.
Իրեք փաթ մէջքի բոլորը պտըտեց, հալա էրկէն էր։
Խօր թուր բերեց, կապեց վրէն.
Մէ գեազ գետին քըրքաշ էթում էր—էրկէն էր։
Էկաւ, ձին թիմարեց, թամք դրեց վրէն. կեամեց, քաշեց դուս.
Խեծաւ, էկաւ որ Սասմայ քաղքէն էթար.
Մէ քիչ տեղ ձին քշեց, միտք արաւ, ասաւ.
—Հայ գիտի սնթաղդ իսան։
Խօրողըրտանք—Ձէնով Ցովան, Ցռան Վեգօն էկան յառէջ.
Խարսներ էկան, դէմ կայնան, խաղով ասին Դաւթին։

Դաւիթ, էրթալ քեզ չըլլի, դառնալ քեզ ըլլի.
Դառնալ քեզ ըլլի, մեր ախպէր Դաւիթ.
Չուր մկայ քեզ խարսնութուն չընէք արեր.
Նոր պտի խարսնութուն անենք, մեր ախպէր Դաւիթ.
Նոր պտի քու ձեռներին ջուր լցընենք.
Քու ոտներին սօլ պտի դնենք.
Մեր ախպէր Դաւիթ.
Քեզ խարսնութուն անենք։

Դաւթի սիրտն էլ փլաւ, դարցաւ վրէներ.
—Խարսներ, կանչէք Աստուածը.
Էրթալ չըլլի, դառնալ ըլլի.
Տէր Աստուած ճար անի.
Թէ դարձայ ու էկայ,
Ձեզ կանեմ Սասմայ տանտիկին:
Արարիչ Տէր Աստըծու խնամքը շատ ըլլի
«Օրհնութուն բարերարութուն . . .»

*Ձին քշեց, մէ խելի գնաց, խօրողբէր էկաւ կուշտը, ասաւ.*
—Ափսո՛ս, խազար է՛Ֆ ափսոս Քիւռիկ Ջալալին.
Փեcկեc պցի անէի Բաբա Ցրէնկին·
Ափսոս, խազար ափսոս բուr կէծակին,
Փեcկեc պցի անէի Անմու cահին·
Ափսսս, խազար ափսոս Փող Պղլոrին,
Փեcկեc պցի անէի Ասցղիկ Պառnին.

*Դաւիթ տեհաւ իրան ափսոս չեն գալըմ.*
*Քռիւռկիկ Ջալալուն Թուր . . . . ափսօս գալըմ.*
*Թուրը քաշեց որ զարկէր խրօղբօր.*
*Խօրողբէր տեհաւ որ Թուր քաշեց պտի զարկի,*

*Դարցաւ ձէն տուեց Դաւթին Ձէնով Յովան խաղով.*

—Ափսոս խազար խիսs ափսոս
Թառլան Դաւըթին, Դաւըթին.
Յէսor գնաց Սասմայ օջաղից, օջաղից.
Ծrագն ընգաւ Սասմայ օջաղին, օջաղին:

*Դաւիթն ասաւ.—Դու ղուրբան ըլլես էդ մէկ խօսքին.*
*Ձէ՛, քեզ պտի սպանէի, նոր պտի էթայի դպա Մըսրայ Մելիք.*

*Ասաւ.*—Խorողբէr, դու կացէf բաrի.
Ջուr հազար տարի, չուr հազար sարի.
Ես էմ էքալու, դու էf մնալու, դուf էf մնալու.
Մնալու, մնալու, մնալու.

*Գլօխ իջացրեց խօրողբրտանց, «կաց բարի» արաց, ձին քշեց.*
*Գնաց, ճանփի մէջ մի վոռ* լուասs *էկաւ.*
*Ձին չոք տուեց գետին, չի գնաց էլ։*
*Դաւիթ մի էնպէսդ ջուխտ* զանկու *տուեց.*
*Ձիան ջուխտ կողն էլ կտրաւ, ձին տեղից չէլաւ։*
*Անըղաւ ձիանից, ձիանից իջաւ. պառկաւ, քնաւ.*
*Մէ խելի մնաց, ձին էկաւ կուշտը, փռթըլ արաւ։*
*Դաւիթ էլաւ. տեհաւ էն փոսից ջուր ա էլէ էթում ա, զարթեցրեց.*
*Էս խետին էլ ա ձիան Աստըծու խրամանքին լեզու էկաւ.*
*Ասաւ.—Դաւիթ, ինչ քու խէր մեռե, էստ յաղթուր ա չորցէ,*
*Ջուր մկյայ յէս օր դու էկար, ըստե ծնծնաց, տուեց դուս.*
*Էս ջուրը որ կայ, անմահական ջուր ա.*
*Ջուր քու խէրը չխմէր էս ջրից, կռիւ չէր կարայ անի.*
*Դէ՛, դու էլ խմե, լուացուէ, մէ քիչ քսի իմ կողքանքը.*
*Ես էլ կը խմեմ, էթանք կռիւ։*

Էս խետ Դաւիթ լուացուաւ. էդ ջրիցը մէ բուռ էլ խմաւ.
Լցուաւ, ճռճռոց ընկաւ փորը, ընկաւ գլօխ, ընկաւ ոտներ.
Ճզմէք ոտներից խանեց. միջի բանբակ խանեց, թալեց.
Ջուր խազաւ, էրկու-իրեք տեղով վախք էր ճղեր,
Մէջկապն արցկեց, կոճակներն էլ արցկեց.
Արխալուխի ծոցից բանբակ խանեց, թափեց,
Կոճակները, որ բերեց կոճկելու, քամակը էրկու տեղ պատռուաւ.
Գլխի Ֆաս բերեց, միջի բանբակ դատակեց, անճախ գլօխ մտաւ.
Խօր մէջկապ որ իրեք փաթ էր. մկոյ մէկ փաթ անճախ խասաւ.
Խօր Թուր կապեց վրէն, մէկ կեապ հալա կարճ էկաւ։
Ձին բերեց, էս խետին քաշեց, խեծաւ.
Քշեց, գնաց, ղօռումին խասաւ։
Ինք իր տեղ բանցր էր. ղօռումին ցածր էր.
Էդ տեղ զարգանդ կոխեց Դաւթին.

Լացաւ. կանչեց Աստըծուն, ասաւ.

—Ես ըլլեմ Աստըծու մահուան կրակ.
Ըսդոնք ըլլեն ամառուայ չոր խոնճի դիզրանք.
Ես ըլլեմ Աստըծու մահուան կրակ.
Ըսդոնք ըլլեն գզած բանբակ.
Իցցուն սարի չեմ կարայ երեցի:
Ես ըլլեմ հրեղեն քամի.
Ըսդոնք ըլլեն երեցած փոշի.
Քառսուն սարի չեմ կարայ երանի.

Ձին Աստըծու խրամանքին լիզու էլաւ, ասաւ.

—Տնաւեր, ընչի՞ ես ըզ սար վախենում, դու.
Քու խեր մե ղոչախ մարթ եր, ապա դու քու խօր տղեն չե՞ս։
Քու թուրն որ կայ, կայծակից ա,
Էն ղդար որ քու թուրը կտրի,
Էն ղդար ես կտամ ոտի տակ.
Էն ղդար որ քու թուրը կտրի,
Էն ղդար իմ քամին կը քցի վեր։
Էն ղդար որ քու թուրը կտրի,
Էն ղտար ես իմ պոչով ջարդ խուրդ կանեմ:

Կանչի Մարութիկ բանցր Աստուածածին.
Խաչ պատարագին աջ թեւին
Ձեռդ բռնի թուր կայծակին,
Մի վախենայ, քշի մըջ ղօռունին

Ղօռումին հաշիւ չկայ. քշեց խասաւ ղօռումին.

Նոր միտք արաւ Դաւիթ, ասաւ.
—Ա՛ գիտի, անբաղդութուն կըլլի ըսենց քշեմ մէջները.
Որը քնուկ ա, որը ձին ա թիմարըմ, որը ասպապ ա սրբըմ.
Կայնի, ձէն տամ, բիրատի զարթնեն, ըլլեն վեր։
Բոռաց ղօշունին վրէն Դաւիթ,
Իրանց թասարուկ տեսնին.

Ասաւ խաղով.—Վե՛ր էլէք յես օր, վեր էլէք.
Որը քնած էք, էլէք, նստեցէք, նստեցէք.
Որը նստած էք, էլէք, կայնեցէք.
Որը կայնած էք, ձեր ձիանքը խեծէք, խեծէք.
Որը խեծած էք, ձեր թասարուկ տեսէք.
Չասէք Դաւիթ գող էր.
Գողութենով մեր վրայ էկաւ։

Էդ որ կանչեց, ձէն ընկաւ ղօշունի մէջ.
Ջլըղոց ընկաւ, խառնուան յիրար.
Շատ մարդ չըշկըլուեր էր, ձին ոտից էր կեմում, պոչից էր կեմում:
Ձին քշեց մըջներ էս խետին.
Մէ չորս գլօխ գնաց ներքև, էկաւ վիրև.
Վիրևի գլխից արուն էլաւ, մարթ էր տանում ներքև.
Մէկ ծեր խալիւոր արաւ.—Փօտ, փօտ. ճանբախ տուէք.
Ես էթամ, Դաւթին տեսնեմ.
Դաւիթ ձին քշեց թեխ էդ խալիւորին, ասաւ.
—Ընչի ես ընձի ասըմ փուտ.
Ասաւ.—Ես քեզ փուտ չեմ ասըմ, ես ասըմեմ «փօտ, փօտ».
Որ ճանբախ ըլլի, գամ, քեզ տեսնեմ։
Ասաւ.—Ինչ էս ասըմ, ընձի խետ ինչ բան ունես։
Ասաւ.—Դաւիթ, արևիդ մեռնեմ.
Էս ըմեն խալխին զօռով ա բերե Մելիք.
Էս խալխին դու ընչի էս անմեղ տեղը ջարդըմ։
Դաւիթ ասաւ.—Պա՛. ինչ անեմ։
Ասաւ.—Դե. քու դուշմանն էն չատրներին ա.
Գնա՛, ընդըրա խետ կռուի.
Թէ Աստուած քեզ տուեց, դու խաչապաշտ էս. քեզ կաննենք թաքաւոր.
Թէ Աստուած ընդըրան տուեց, ընդըրան զաթի կը ծառայենք։
Դաւիթ ձին ղօշունի միջից խանեց, քշեց գնաց դպա կարմիր չատրներր։ Տեհաւ Մսրայ Մելիք չատրի մէջ պառկե, քներ ա.
Էն վախթ որ բերնի բուղը խանում ա.
Չատրը օխտը գեազ բերնի բուղի դէմ բանցըրանում ա.

Էն վախք որ բերնի բուլը քաշըմ ա.
Ձաչրը գալըմ, իր սների վրայ կայնըմ ա։
Էն ախչիկներ, ինչ, Սասմայ չէն բերած եսիր.
Խինգ մէկ կողմ էն նստած, խինգ մէկ կողմ.
Ուռի տերև էն վերցրած, ճանճեր էն քշըմ։
Էն մէկ ախչիկ վերցրեց.—Ես մեռնեմ Դաւթին.
Հաւատա՛, էկի. ընձի առնի, փախնի.
Էն մէկէլ վերցրեց.—Ես մեռնեմ Նորախաս բօյին.
Էկե, ընձին առնի, տանի։
Ամեն մէկ բան ասաւ. Դաւիթ ըղըրանց խօսքին ականջ չարաւ.
—Ախչի, ասաւ. ես ձեզ խամար չեմ էկե.
Ես Մելիքի խամար էմ էկի, խանէք վեր, կռուենք:
Ախչիկնիր ասին.—Մենք չենք կարայ խանի։
—Գա՛, ասաւ, ըղըրա իլան մո՛նց պտի ըլլի։
Մըրրայ Մելիքի մէրն ասաւ.—Նա օխտն օր պտի քնի,
Եա չէ՛, գութանի խոփ պտի տաքցնեն, դնեն ոտի վրէն, որ ըլնի.
Դաւիթ Թուրը քաշեց, գնաց ըղըրա գլխի վրէն կայնաւ.
Թուրը որ զարկեց, կէս գեազ մտաւ ըղըրա ոտի մէջ.
Մըրրայ Մելիք ձեռ տուեց Թրի տեղ, ասաւ.
—Ախչի՛, էս ինչ լու էր, ոտս կծեց, մէ՛ք Թողայ իմ վրէն լու գայ։
Դուիթ տեհաւ չի ըլնում, ձէնով կանչեց էս խետին խաղով.

—Մելի՛ք, վեր էլի, անմախ, քեզ մահ եմ բերե (կրկնել).
Մելի՛ք, վեր էլի, անմախ, էս օր վե՞ր էլի.
Անզրող քու խոզին կառնեմ:

Էս խետին Մելիք աչկեր բացեց, տեհաւ գլխի վրէն կայնած ա,
Թուրը ձեռքին, կրողի դայցայ.
Զարգանդը Մելիքին կոխեց,

Էս խետին Մելիք ձէն տուեց Դաւթին.
—Իմ սիրելի զառնիկ, դու բարով ես էկե.
Քեզ ուտեմ առաւօտուայ խաց.
Ճաշուայ յուս բերեմ:
Քեզ ուտեմ ճաշուայ խաց,
Իրիկուան խաց յո՞յս բերեմ:
Քեզ ուտեմ իրիկուայ խաց,
Առաւօտուայ խաց յո՞ւս բերեմ.

Դաւիթ ասաւ.—Քեզ իրիկուայ հաց եմ,
Ճաշուայ էվելի.
Ճաշուայ հաց եմ,

Իրիկուայ էվելի.
Իրեկուայ հաց եմ,
Առաւօտուայ էվելի.
Քեզ համար եմ եկե, Մելիք.
Դե, ել կռուենք:

Ասաւ.—Դե՛, իջի՛, հանգստացի՛, նոր ըլնենք, կռուենք:
Դաւիթ ուզեց որ իջնէր, ձին չի թողաց.
Մսրայ Մելիքի սուֆրէն օխտը գոմշի կաշի էր,
Ղրաղները սալ գութանի բնադայ-զնճիլ, էրկաթ էր.
Ձին տեհաւ Դաւիթ ուզում ա իջնի, տփեց գետին.
Մսրայ Մելիք հրամայեց իրա ծառաներին.
Դաւթին բռնին, քցին սուֆրի մէջ.
Սուֆրէն քաշին, զնճիլքեր քաշ տուին, տարան քցին ալև դէմ.
Դաւիթ մէջ փաթուկ.
Արև ճխտեց, գոմշի կաշին չորցաւ, կռնծկուաւ իրար վրայ.
Խրօղըրտանք Դաւթի ստող իչկացին, խաւար ա էրևում.
Էկան, մէ ձի ունէն, անուն Մուրատ էր. կանչին.
—Մուրատ Աստուած, Մուրատ ձի, մեզ եփ կը խասցնես Դաւթին:
Ձին ասաւ.—Ինչքամ ժամանակ մարթ նստի, լաց ուտի.
Էնքամ ժամանակ քեզ կը խասցնեմ Դաւթին.
—Հա՛յ, ասաւ. ինչքամ ամակ տուեր էմ քեզ, քու աչկեր բռնի.
Էլի ասաւ.—Մուրատ Աստուած, Մուրատ ձի,
Ընձի եփ կը խասցնես Դաւթին:
Մի պապիրոս ինչքամ վախթ մարթ քաշայ, էնքամ վախթ կը խասցնեմ Դաւթին.
Ասաւ.—Հա՛յ, ինչքամ ամակ տուեր էմ, քու աչկեր բռնի.
Էլի ասաւ.—Մուրատ Աստուած, Մուրատ ձի՛,
Ընձի եփ կը խասցնես Դաւթին.
Ասաւ.—Փլխուած խալխուրներ, դե՛, էլէք.
Ձեզի ընձի վրայ պինդ բռնէք.
Աչկեր խփէք, բացէք, տանեմ, խասուցեմ Դաւթի կուշտ:
Էլան. ձին քաշին դուս. խեծան, քշին, քաղաքից ընկան դուս.
Ձէնով Ցովան շատ ձէնով էր, ասաւ.—Ի՛նչ անեմ.
Թէ կանչեմ, Դաւիթ ջըլնի վե՛ր.
Շատ մարթ յախու մուրուս պաի թափի.
Թէ չի բոռամ, տղէն ձեռաց կեթայ.
Թէ բօռամ, մեր տղէն ըլնի վեր.
Շատ կնանիք կան, էրեխով էն, էրեխէք կը թալին իմ ձէնի յախուն.
Ձէնով Ցովան մէջ ճանփին ղանչեց.
—Դաւիթ, մէ ե՛լ վեր, քեզ կանչի Մարութիկ Աստուածածին.

Խաչ պատրաստի վեր աջ թևին.
Քեզ յիրար տուր, որ ազատես էդ նեղութենից։
Ձէնը գնաց, ընկաւ Դաւթի յանկանջ.
Դաւիթ պառկած էր, կապուած էր սուֆրի մէջ.
Կանչեց Մարութիկ Աստուածածին, Եավլաշլիկ իրան յիրար տուեց։
Ջնճըլի կտորներ սուֆրի դրադերից ամէկ մէ տեղ թռան.
Դաւիթ ելաւ, սուֆրի մէջ նստաւ։
Տնհաւ քրտինք էմքան լցուեր ա մրէն որ վախք ա խեղթուի.
Ասաւ.—Հէյ գիտի Մելիք ախպէր.
Էս ինչ բէրազդութուն էր, արիր դու ինձ վրայ։
Ասաւ.—Ինչ բէրազդութուն էմ արե, Դաւիթ ախպէր։
—Պա՛, ասաւ, ընչի էր ընձի դրե սուֆրի մէջ, քցե արե.
Ասաւ.—Ի՛նչ դու ձիանից իջար, քու քունը տարաւ.
Վախեցայ մրսէիր. քեզ քաշեցի սուֆրի մէջ։
Խօշողրրտանք էկան, խասան ձիով, ասին.
—Դաւի՛թ, ր ձին յո՞ւր ա.
Ասաւ.—Որ ես ձիանից իջեր էմ, ձի չեմ տեսեր, չեմ գիտայ մր տեղ ա.
Խրօղբրտանք գացին դպա ձին բերելու։ Առան բերին։
Դաւիթ ելաւ, խեծաւ ձին, կանչեց.
—Մելի՛ք, դե՛, ե՛լ, կռուենք, Աստուած եա ընձի կտայ, եա քեզի։
Ասաւ.—Ես իմ ոտը կտրեր էմ, չեմ կարայ ձի խեծնի, իջի. գուլաշ կպինք.
Ուզեց ձիանից իջնի Դաւիթ, ձին չէր թողում.
Խրօղրրտանք էկան, ձին բռնին. Դաւիթ իջաւ։
Դաւիթ Մըսըրայ Մելիքի խետ գուլաշ կպաւ.
—Որը տայ գետին, էն ընդրան սպանի։
Էն վախք որ Դաւիթ Մըսրայ Մելիքի ձեռ էր տալըմ, ճխտմ էր.
Մըսրայ Մելիք չէր կարըմ դէմ տալ դրա ղուվաթի զարպից.
Գութանի պէս դրա ոտերի տեղը խորը ճղըմ, էթըմ էր.
Էն տեղէն Մըսրայ Մելիք դառնըմ Դաւթի վրէն.
Հար երեք ձեռով զարկըմ էր, ոտով զարկըմ էր.
Բերըմ, խասցնըմ չուր Էջմիածին. խօսքի խասկանալու խամար։
Իրեք օր գուլաշ կպան. իրարի չի յաղթին.
Էն ինչ Դաւիթն էր, ղուվաթով էր.
Էն ինչ Մըսրայ Մելիքն էր, Ղզըլպաշ էր, Ֆանտով էր։
Խրօղրրտանք ասին.—Էդենց չըլլի, ջանըմ.
Արէք, ձիով կռուէք, Աստուած որին կտայ, մէկ տեղով կըլնի։
Երկսով էլ խեծան ձիանք—Մըսրայ Մելիքն էլ, Դաւիթն էլ։
Մըսրայ Մելիք ասաւ.—Դաւիթ, լսեր էմ քու թուրը կայծակից ա.

Թող, իրեք դըրպ զարկիմ ես քեզի, Թէ ֆեար տըրաւ, արաւ.
Թէ ֆեար չարաւ, էս խետին դու զարկ ընձի իրեք դըրպ։
Մըըրայ Մելիք ձին խեծած էր, գուրզ վերցրեց ձեռը։
Իրեք խարեր վացցուն լիտր էր ընդըրա գուրզը։
Ձախ պտըտցըրեց՝ աջ բերեց, աջ պտըտցրեց ձախ բերեց.
Տասուերկու գրուանֆա կրակ Թափաւ գետին։
Էն վախք որ զարկեց, քօ՛զ ու դուման բռնեց գետին։
Ասաւ.—Հայ գիտի խաղածին, խող էր, խող դալցրիմ։
Էն վախք որ էն դըրպը վրայ բերեց, զարկեր.
Դաւթի ձինը խրեղէն էր. ըստից վերուց, դրեց Ալիբէկլու։
Քիչ որ մնաց, քօզն առաւ բարակել.
Ձին էլի բերեց, դրեց մեյդանի մէջ տեղ։
Իրեք դըրպ էղենց զարկեց Մըըրայ Մելիքը.
Իրեք դըրպին էլ ձին չի Թողաց Դաւթին դըրպ դպնէր։
Նօպաքն էկաւ Դաւթին:
Ասաւ.—Դե՛, Մելի՛ք, քու բաւթառուկ տե՛ս, պտի զարկեմ.
Ասաւ.—Դաւի՛Թ, ես քեզանից վախենում էմ.
Կը խնդրեմ, Թող, ես մէ քառասուն կեազանոց խոր փորեմ.
Ես իջնեմ խորի տակը.
Իմ ձին այարով բանով դնեմ իմ գլխին.
Թողմս, օխտը գոմշի կաշի էլ քաշեմ խորի բերնի վրէն.
Թողմս մէ ջաղցի քար էլ անծակել դնեմ խորի բերնի վրէն։
Դաւիթ ասաւ.—Քանդի խորդ.
Մըրրայ Մելիք չարխ բերել տուեց, խորը քանդեց.
Իջաւ խորի տակ, կայնաւ ինք, ձին այարով.
Դրին Մըըրայ Մելիքի գլխի վրէն օխտը գոմշի կաշի.
Քաշին խորի բերան մէ ջաղցի քար էլ։
Դաւիթ ձին հաղացրեց. էկաւ, կայնաւ խորի բերնի վրէն.
Թուր քաշեց, որ զարկի.
Մըըրայ Մելիքի մէր տեհաւ ձին հաղացնել ԴաւԹին.
Ասաւ.- Տունը կաւրի Մելիքին.
Ծծուեր էն տեղէն Թալեց դուս, էկաւ.
ԴաւԹի դէմ կայնաւ, ասաւ.
—Դաւի՛Թ, քեզ էս ծծեր տուեր էմ, չես կերել.
Քեզի մեղր, չաքարով էմ պախեր.
Էդ մէկ դըրպը բաղշի ընձի։
Ասաւ.—Նանի, էս մէկ դըրպը բաղշեր էմ քեզի.
Պտըտցրեց ձինը. հաղաց ԴաւիԹը, էկաւ կայնաւ խորի վրէն. որ զարկի.

Էս խետին մէրն էկաւ էն գիխէն էլի դէմը.

Ասաւ.—Դաւիթ, դու ըլլես, քու ստեղծող Աստըծուն.
Էդ մէկ դրպը բաղշայ քու ստեղծող Աստըծուն.
Ասաւ.—Նանի, էս էլ բաղշիմ իմ ստեղծող Աստըծուն.
Ես մնացի. իմ մէկ դըրպ, էլ չի գաս իմ դէմ.
Մկայ մէկ դըրպ պտի զարկիմ Մելիքին, ինք ուր բաղդ։
Էկաւ կայնաւ խորի բերան Դաւիթ.

Թուրը քաշեց, կանչեց.—Մարութիկ Աստուածին.
Խաչ պատարագին,
Թուր կայծակին,
Զարկեմ կտրի ջաղջի քարին,
Օխտը գոմշի կաշին.
Ձին ու իր հյարին.
Էրալ, խասնի Մսրայ Մելիքին.
Դու չի տանե՞ս իմ ձեռի ճամին:

Զարկեց, ջաղջի քար կտրեց, գնաց խասաւ գոմշու կաշուն.
Կտրեց կաշիք, իջաւ ցածը թուրը, խասաւ այար.
Ձիան կտրեց, գնաց. խասաւ Մսրայ Մելիքի գլխի վրէն.
Էս գլխից ճղեց, էկաւ, էրկու ոտաց արանքով կտրեց.
Իջաւ գետին. կէս կեազ գնաց, մնաց գետնի տակը։
Մսրայ Մելիք ներքևից ձէն տուեց Դաւիթին, ասաւ.
—Դաւիթ, դրպրդ վարկ, թող գայ, ես ցրտու մեռայ.
Ասաւ.—Զարկեր էմ, քեզ յիրար տուր հալա.
Ինչ յիրար տուեց Մսրայ Մելիք իրանը,
Էդպէսադ էր կտրե. որ ղափաղը իրարից չէր բացուե.
Որ յիրար տուեց, էլաւ էրկու կտոր։
Էս խետին քար տուրին դին, կաշիք դեն.
Դաւիթ մէկ կտոր քաշեց, թալեց ղռաղը.
Մէկէլ կտորն որ խանին դուս. պլօր ռանին, կտրին.
Զախ պլօրն էր. բերին կշռին, տասներկու լիտր էկաւ։
Դաւիթ նստաւ, իր քրտինքը սրբեց ձեռնով:
Ձէնով Յովան էկաւ կուչար, ասաւ.
—Տնաւէր չէղած, ընչի էգենց էս քրտընե.
Յռան Վէգօն ձեռ քցեց, կզռաւ, բռնեց Դաւթի թրի կոթից.
Քաշեց, խանեց դուս. գնաց ըստից քոմկի վրայ առաւ գետին։
Դաւիթ ասաւ.—Խրօղբէր, որ ըդենց ղուվաթով էս.
Որ չես գալըմ, ընձի խետ, կռիւ անի.
Ասաւ.—Խրօղբէր մեռնի քեզի, Դաւիթ, բալամ.
Ես քեանց քեզի էլ, քեանց քու խէրն էլ ղուվաթով էմ,
Ամա, ինչ կռուի անուն տալըմ էն, ես ոտաչոտս ապականումեմ։

Մսըրայ Մելիքի մէր որ տեհաւ, իր տղին էնպէսդ խանին կտոր-կտոր, գլօխ բացեց, Դաւթին անիծեց.

Թէ.—Դաւիթ, Աստըծուց կը խնդրեմ,
Քու մէչկապ, խալաթայ մէջ. արընի մէջ չաղաղուի։
Էս խետին Դաւիթ իգին տուեց Մելիքի անահագին ղօշունին։
Ղօշուն էս խետ Դաւթից չնորհակալ էլաւ, դարցան, գնացին։
Դաւիթ էլ թողեց, խրօղբրտանց խետ դնաց։
Դաւթի ձէն էս խետին ընկաւ ախշրքի մէջ, տարաձայնուաւ.
«Դաւիթ էնպէսդ-էնպէսդ ղօչաղութուն արե»։
«Մըսըրայ Մելիքին սպաններ ա».
Ասին.—Է՜լ ախշարք ըդենց զօռեզ մարդ կըլի.
Դաւիթ բերին, արին իրանց թաքաւոր։
Ձէն գնաց Կապուտ կող քաղաք.
Խանդութ խաթուն կար, թաքաւորի ախչիկ էր.
Էրկու աշղ բերեց, ասաւ.
—Գնացէք Սասուն, Դաւթի կուշտը, ընձի գովացէք.
Բալքի Դաւիթ գայ. ընձի առնի։
Մէ բուռ ոսկի տուեց էդ աշղներին.
Աշղներն իրանց սազերը առին, էկան դպա Սասուն.
Էկան, չչկռան, էլ չի դնացին Դաւթի օթախը.
Գնացին Ձէնով Յովանի օթախը.
Էդ տեղ Խանդութ խաթունին գովացին։
Ձէնով Յովան տեհաւ ընդոնք էկեր էն Դաւթին պտի խափեն.
Էլաւ ինչ արաւ-էրկըսի սազն էլ ջարդեց.
Տփեց.—Դո՛րն էկերէք, էլի դին գնացէք, ասաւ։
Էլան դուս ընդոնք, անիծըմ ին Դաւթին.
Թէ.—«Աստուած Դաւթին տունը քանդե,
Դաւթին արև Աստուած կարճ անի»։
Դաւիթ էն դեխէն էլաւ, տեհաւ աշղները անիծըմ ին իրան.
Ասաւ.—Ընչի՞ էք անիծըմ Դաւթին դուք։
Ասին.—Մենք աշղ ենք, էկանք, Խանդութ խաթուն կար Կապուտկող, էկանք, գովացինք Դաւթին իամար,
Էլաւ, մեր սազեր ջարդեց Դաւիթ։
Դաւիթ տեհաւ ընդոնք խաւմ էն. գնացեր էն խրօղբօր օթախ.
Գնաց, բազարիցը էրկու սազ առաւ, տարաւ օթախ, ասաւ.
—Դե՛, գովացէք. տեսնեմ ինչպէսդ ա ձեր խանում։
Նոր աշղներ ձէնով էդ տեղ ասին։

—«Ցես օր էրկու աշղ են էկե Կապուտկող քաղաքից,
Խանդութ խաթուն կայ, պցի գովան.

Ընդրա բոյըն ասենք.
Քառսուն կեազ ա, մէ չափ էվելի։
Ընդրա ճակտի լէնք գովանք.
Իրէք կեազ ա, մէ չափ էվելի:
Ընդրա սրտի լէնքը գովանք,
Օխտը կեազ ա, մէ չափ էվելի:
Ընդրա կարմրութուն ասենք,
Քանց նռան գինին կարմիր ա:
Ընդրա սիպտըկութուն ասենք,
Քանց մէկ օրուայ գալած ձուն սիպտակ ա.
Ընդրա կակղութուն ասենք,
Քանց բանբակի քուլէն կակուղ ա:
Էն արժան չի մեզ նման անուն-պանունին,
Էն արժան ա քեզ նման թաքաւորին»։

*Դաւիթ սազն ձեռք առաւ, ասաւ։*
—«Իմ սիրտը քանց աւազ ծովեր անարատ ա.
Քանց զարնանի գետեր պղտորիկ.
Իմ սիրտն քանց Վանայ բերդն ասա,
Գլունկ առաք, իմ խիմ քանդեցիք.
Իմ սիրտն քանց կաթն անարատ ա,
Մերան թալիք, մկրտիք.
Դէ՛, գնացէք, նուղայ տարէք ձեր խաթունին.
Ճաշ ուտեմ Ճաժուան.
Ընթրիս ուտեմ Բանդամահու կարմունջ.
Հրամեց ուտեմ Կապուտ կող քաղաք:
Շաբաթ օր ղոնախ կէմ ձեր խանումին:

*Շաբաթ օր ձին խեծաւ Դաւիթ.*
*Սասմայ մինչև Ճաժուան օխտը աւուր ճանբախ ի.*
*Ճաժուանայ մինչև Բանդումահու կարմունջ օխտը աւուր ճանբախ ի*
*Բանդումահու կարմնջից Կապուտ կող քաղաք օխտն աւուր ճանբախ ի.*
*Դաւիթ ձին խեծաւ, չուր ճաշ խասաւ Ճաժուան.*
*Ճաժուանայ քշեց, կէս օրին խասաւ Բանդումահու կարմունջ.*
*Դաւիթ ձին քշեց, էկաւ տեհաւ օխտը գուլթան ճամբխի ղրաղը վէր անըմ ա.*
—*Ղարիպ՝ ախպէր, արի՛, խաց անուշ արա, ասին.*
*Էկաւ, ձիանից իջաւ, ձին կապեց գուլթանի մանից.*
*Նստաւ ըղոնց խացի վրէն.*
*Օխտը գուլթանաւոր, ամեն գուլթանաւոր օխտը աւուր հաց բերին.*

Դաւիթ էդ օխտը գութանւորի օխտը աւուր հացը կերաւ.
Էլաւ, ուզում էր ձին խեծնէր, էթար, էն մէկ հոտաղ վերցեց.
—Քու ոտք կոտռուէր, չի գիր էս տեղ։
Ասաւ.—Մենք ըս տեղ փոքրաք ենք արե.
Ամեն մարթ օխտը աւուր խաց ա բերե,
Օխտն օր էս գութանը պտի վարե.
Դու էկար, մեր հացեր ըմեն կերար.
Պա մենք ըղից վեց օր ինչպէսդ վար աննենք։
Դաւիթ որ տեհաւ էդ աղէն էդ խօսք տուեց.
Ցելաւ, օխտը գութան կապեց յիրարից.
Կապեց իր ձիան կողքից, ձին քշեց.
Էդ տեղ վարեց, մնաց մէ միջնակ։
Մէկ հոտաղ վերցեց.—Հուճար իրան չէ, հուճար ձիուն ա։
Դաւիթ էդ խօսքը լսաւ, գութանի զճճիլներ քցեց իր թևերից.
Ցինք քաշեց, վարեց, էս խետին պրծաւ։
Էդ խետ բիրաշնին ասաւ.—Դե՛, էլեք, առէք ձեր գութաններ, գնացէք.
Ձին քշեց, կէս օրին խասաւ Բանդամահու կարմունջ.
Կէս օրուայ խաց կերաւ։
Քշեց Բանդամահու կարմնջից գնաց Կապուտ կող քաղաք.
Ցիրիկուայ ժամիրի վախք Խանտութ խաթուն դուրպին դրեց աչքին, տեհաւ Դաւիթ ձիով գալըմ ա։
Թօզ, դումաճ ընկե ձիան ոտների տակից ըլլում ա։
Էլաւ Խանտութ խաթուն իր ձին քաշեց, խեծաւ.
Քշեց, գնաց Դաւթի դէմ՝ խասան իրարի։
Դաւիթ իրիշկաց, տեհաւ Խանտութ խաթուն,
Աշղներ ինչ գովացեր ին, հալա կէս չէն ասեր.
Դաւիթ ձեռ քցեց, Խանտութ խաթունի վիզ խտըտեց.
Էրեսներ պաչեց, ճակատն էլ պաչել ուզեց.
Խանտութ խաթուն ասաւ.
—Դաւի՛թ, էս մէկ երես քու ճամբխին դուրբան, ինչ դու էկեր էս.
Մէկ էրես քու ՛ահիլութենին դուրբան,
Էլ իմ ճակատ պաչիլ ինչ հարզախարըութուն ա.
Դու ընձի խըմայ գլոխ էս բերե.
Դաւիթ անըղաւ, ձին դարցրեց, թեխ Սասում էկաւ.
Խանտութ խաթուն տեհաւ Դաւիթ խրովաւ։
Դարձաւ ձիանից իջաւ, բոբիկ ընկաւ Դաւթի էտև.
—Դաւի՛թ, ասաւ. մեռնեմ քու արևին.
Մէ դարձի, իշկայ թեխ ընձի. Նոր թող, գնա՛,
Դաւիթ դարձաւ. իրիշկաց, տեհաւ Խանտութ խաթուն.

Որ բօրիկ՝ ոտներ դնըմ ա փշերի մէջ, գալըմ.
Արուն էլե, ոտներ ծածկըմ ա։
Դաւթին սիրտ դարցաւ։
Քշին էս խետին ձիանք. էկան Կապուտկող քաղաք։
Ասաւ.—Դաւիթ, արևիդ մեռնեմ.
Դու կաց, ես իմ ձին քշեմ-յառէջ, էթամ.
Ես էլ Թաքաւորի ախչիկ էմ.
Ամօթ ա ընձի համար, որ էրկըսով էթանք։
Ընտի Դաւիթ կայնաւ, Խանտութ խաթուն քշեց ձին, էկաւ.
Գնաց իր տուն, ձիանից իջաւ։
Դաւիթ քամակից քշեց. գնաց հասաւ դարկեաճների վրայ.
Տեհաւ դռնապան կայնուկ ա։
Իրիշկաց, տեհաւ էդ դռնապանին.
Վերի պռունկ վերի չէմքի խետ բանցր ա.
Ներքին պռուկ ներքի չէմքի խետն ա։
Դաւիթ ը տեղ վախեցաւ ըղու բաց բերնից, ասաւ.
—Ես ձին քշեմ, էթամ. վայ թէ էս դռնապան ինձ ղուլ տայ։
Իր յախուն ը տեղ բարև տուեց դռնապանին։
Դռնապան իրիշկաց Դաւթին, իր յախուն բարևն առաւ։
Դաւիթ ասաւ.—Ես մօրուց որ էլեր իմ,
Ցէս օր իմ յախուն քեզ բարև տուի։
Դռնապան վերցեց.—Ես մօրուց էլերի,
Ջուր մկայ մարդու բարև չեմ առե.
Ցէս օր իմ յախուն քու բարևն առայ.
Արի, ձին քշի, գնա, Դաւիթ.
Թէ Աստուած յաջողեց, քու բան գլուխ գնաց, քու քաւոր ես էմ։
Դաւիթ ձին քշեց, էս խետին գնաց, հայարի մէջ ձիանից իջաւ.
Նօfար էկաւ, ձին ռնեց, Դաւիթ էլաւ վերև։
Քառսուն փայլեվաճ էն էկե.
Էն ասըմ ա, «ես առնեմ Խանտութ խաթուն, էն ասըմ ա «ես».
Քառսուն մարթ ուզում էր ինքը առնի։
Թըեր քաշին, դրին սուrֆի տակ.
Սուrֆէն իրեք գոմշի կաշի էր, ասին.
—Դաւթին ինչ կայ ըս տե, զարկինք, սպանինք.
Խանտութ խաթուն մենք առնենք։
Ամենք մէկ մէկ թաս գինի ցըրրին, ասին.
—Տանք Դաւթին, խմե, գինովնայ, զարկենք, սպանենք։
Քառսուն թասն էլ Դաւիթ առաւ, խմաւ։
Իրիշեց, տեհաւ մէկ խմորի տաշտ կայ ընտեղ, ասաւ.
—Էս գինին յ՞ուստ էք ցըրըմ։

Ասին.—Կարաս լիքն ա, հաստատ ըլլի Խանտութ խաթուն։
Քառսուն քաս էլ տաշտով խմաւ։
Տաշտը տարաւ էս խետին, կարասի կուշտ.
Լցըրեց կարասից, իրեք տաշտ խմաւ.
Բեղեր սրբեց, օքախի մէջ վոլթի էր տալըմ.
Ոտը ճակասցաճ կպաւ սուրֆին.
Սուրֆէն ոտի դէմից գնաց դեն.
Տեհաւ քառսուն տկլոզ թուր սուֆրի տակն ա։
Թրեր ժողուեց, փաթութեց, արաւ բիլազուկ. Ցօֆարին կանչեց.
—Արի՛, էս էրկաթ վերցրայ, տա՛ր, թալ մեր խուրճին.
Ինչ էթամ մեր տուն, Աստուած յաջողայ կը չինենք ճալ ու մրխ.
Կը չինենք պիզ, կտանք էրիխէքին, դաշտ գրգիկ կը խանեն։ .
Խանտութ խաթուն խաց ըռզկեց որ ուտեն.
Խաց կերան. ամենք մէկ հնգանոց ոսկի տուեց խաց բերողին.
Դաւթի կուշտ փող չի կար, տար, էն էլ տկլոր էր իմ նման.
Մէկ մատնիք կար ձկութ. հանեց թալեց սինճու մէջ։
Խաց բերող սինճին բռներ էր. չի կարաց զաւթեր.
Էդ սղի ծանրութունից սինճին ղարավաշի ձեռից ընկաւ.
Որ ընկաւ, զրնկոցն էլաւ, Խանտութ խաթուն լսաւ էդ ձէնը։
Դաւիթ սինճին վերցրեց, տուեց խաց բերողի ձեռ.
Մատնիք բերեց, դրեց խաց բերողի թև.
Էկաւ, խասաւ չուրի մզի կուշտ, ինչպէս սէլի տող.
Ասաւ.—Դե՛, տա՛ր, էդ քեզ փեշկեշ ըլլի։
Ղարավաշ մինչև գնաց Խանտութ խաթունի կուշտ, չատ նեղեցաւ.
Խանտութ խաթուն ասաւ.—Ախչի՛, էն ինչ զրնկոց էր.
Ասաւ.—Խանում, Աստըծու սիրուն ըլլի.
Արի էս սէլի տող իմ թևից խան դուս։
Ասաւ.—Էս ով ա տուե.
Ասաւ.—Էս էն նոր գալողն ա տուե.
«Փող չունիմ, տար փեշկեշ», ասաւ։
Ասաւ.—Ախչի՛, էդ փարէք քեզի ըլլի, մատնիք տո՛ւր ընձի։
Մատնիք սինճուց վերցրեց. մոցրեց իր բութը։
Ճուղաբ արաւ էն քառսունին.
—Էլէ՛ք, գնացէք. ձեզ չեմ առնի։
Դաւիթ ասաւ.—Խանտութ, մէ դուս արի, պօյդ տեսնեմ։
Ասաւ.—Էգուց ես դուս կուգամ քառսուն ճառխյի խետ.
Ամեն ճառխյի վրայ քառսուն անկունք քարցը էմ.
Իմացի որ ես էմ։
Խանտութ ճառխյէքին առաւ. գնաց սէյիր անելու.
Դաւիթ քամակից գնաց, տեհաւ ըդըրանց.

Տեհաւ քառասուն անկունք բարցր ա ղարավաճներրի վրէն։
Դաւիթ խասաւ, ձիու քցեց վզովը.
Մէկէլ ձեռ պարզեց դպա ծըծվերը.
Խանտութ խաթուն իր թևը դեմ բերեց.
Էս արմունկ դպաւ Դաւթի քթին.
Դաւիթի քիթը փլաւ, իրեք կաթ արուն կաթաց.
Խանտութ խաթուն տեհաւ Դաւիթ իր քթի արնի խետ, փախաւ։
Դաւիթ գնաց ջրի վրէն, իր քիթ ու բերան լուաց.
Էկաւ, քամակից խասաւ Խանտութ խաթունին.
Դարկեանի վրէն որ խասաւ, թուրը քաշեց.
Զարկեց, իրեք ճուղ ծամ Խանտութ խաթունի գլխից կտրեց։
Ասաւ.—Դաւիթ, ես գիտամ. արևիդ մեռնեմ.
Քու սիրտ էլած էր, ես քու յախուն փախայ։
Իրեք կաթ արուն որ քու դնչիցը կաթաց.
Դու ձեռ ինչ մտցըցիր իմ ծոցը.
Իմ ծծվերը որ դու բռնէիր.
Քու ղուվաթը գիտամ՝ ինչ ղցար ա.
Կը ճխտէիր, իմ մօր ծծած կաթ իմ պնչներից կգար տակ.
Ես յախու իմ թև վերցրի վրի.
Իմ արմունկ դպաւ քու պնչին, իրեք կաթ արուն կաթաց։
Ընձի ունեմ վեց ծամ, վեց էլ ախպէր ունեմ.
Ամեն ախպէր, հեռի էս օճախից, որ մեռնի,
Մէկ ծամ պտի կտրէի իմ ախպօր վրէն.
Մկայ իրեք կաթ արուն քու քթից կաթաց գետին.
Հըմի քամակից էկար, խասար ընձի.
Թրով զարկիր, իմ իրեք ծամ կտրիր.
Ամեկ ծամ քու մէկ կաթ արունի գին դուս գայ։
Երկսով էլ էկան տունը. Դաւիթ Խանտութ խաթուն պսակուան.
Նոր ըդ տեղ նստաւ, լացաւ. Աստըծուց կռիւ ուզեց.
Միտքը ընկաւ Խանտութ խաթունի էն խօսքը, «գլօխ էս բերեր».
Ասաւ խաղով.—Օրհնեալ բարերար Աստուած,
Եա մախ տուր մեռանիմ.
Եա կռիւ տուր, անեմ.
Էս օր կնկայ ահ տուած եմ,
Եա մախ տուր մեռանիմ.
Եա կռիւ տուր անեմ:
Խանտութ խաթունի մէ գլօխ բերեմ.
Դե, բերեմ, դե, բերեմ:
Օխտն օր թմաւ էդ խօսք.
Մէկ էլ տեհան Ճուղապ էկաւ.

(Օղան-տօղան կ'աքաւորից)․
—«Դաւիթ, չըլլեմ, չիմանամ թէ Խանտութ խաթուն տանիս.
Եան պտի գաս, ընձի խեռ կռուես.
Եան Աստուած ընձի կտայ, եան քեզի։
Դաւիթ իր բատարուկ տեհաւ որ էթար կռիւ․
Ցէլաւ Դաւիթ որ էթար, Խանտութ խաթուն վերցրեց.
—Դաւիթ, պտի էթաս, Աստուած յաջողայ.
Մէկ պողպատե սուն կայ իմ սրնոռի մէջ.
Քու թուր ճոպի վրէն, թէ կտռուեց, գնա կռիւ։
Սուն որ կընցնես. ընտե մէկ փոս կայ, ընտե քու ձին լցրայ.
Թէ թռաւ, ընցաւ, դու գնա կռիւ.
Թէ չի թռաւ, չընցաւ, դարցի, արի։
Ասաւ.—Խանտութ խաթուն,
Մէկ խօսք ասեցիր, իմ սիրտը դաղեցիր.
Էս էլ էլաւ երեք դաղ, թէ դառցայ էկայ. ես գիտամ։
Ձին քշեց որ էթայ, Խանտութ խաթուն էկաւ դէմ, ասաւ.
—Դաւիթ, դու կեթաս կռիւ, բալքի Աստուած չի յաջողայ.
Բալքի քեզի մի փորցանք գայ, պա ես քեզի ընչով ճանչնամ։
Ասաւ.—Ես էթըմեմ, օխտն աւուր վրայ թէ էկայ,
Վրայ ութին կգաս էն ջանդակների մէջ.
Իմ աջ թեւի վրայ բազպինդ կայ, էն իմ ջանդակն ա.
Չթողաս իմ խալալ ջանդակ էն խարամ ջանդակների մէջ։
Դաւիթ ձին քշեց, գնաց, խասաւ պողպատե սանը.

Կանչեց.—Մարութիկ Աստուածածին,
Խաչ պատրագին.
Թուր կայծակին,
Զարկեմ, կտրի պողպատե սին.
Զտանի՞ս իմ ձեռաց քամին:

Է՛նպէս դուվարով զարկեց ը տեղ էդ սանը, կտրեց.
Ղալամ ղալամի վրէն մնաց, չուր չէկաւ. ստ խապար չէլաւ.
Մէտք արաւ.—Ջանըմ, էս դըրպն որ ես զարկեմ,
Էդ սունը ընչի յիրար չէկաւ իր տեղից։

Ասաւ.—Սեւանաս, դու բեւիկ,
Ընչի դուվար չտո՛իր իմ բազկին.
Ես զարկի, կտրի պողպատե սին:

Թռաւ, սեացաւ, էլաւ քոմուր.
Էս եանից (աջ) մէ բարակ քամի էն տեխէն էկաւ.
Զարկեց, վերի ղալամ որ կտրեր էր, քամին քցեց, ներքին մնաց.

—Հայ գիտի, աստւ. բերիկ, կանանչես դու.
Դու ղուվաթ տուիր իմ բազկին.
Կտրիմ պողպատէ սին:

Ղալամ, ղալամի վրայ կայնաւ.
Քամին տուեց, չուռ տուաւ։
Թէնն էլի կանանչաւ Աստուծու հրամանքին։
Ձին քշեց, ընցաւ, գնաց. խասաւ խանդակիմ կուշտ.
Մէ էնպէսզ զանկու տուեց ձիան կուշտ ու կողին.
Կողրանք մտան փորը, ձին թռաւ առուն, ընցաւ.
Հասաւ Օղան-տօղան թաքաւորի ղօշունին։
Օղան-տօղան թաքաւոր օխտը գլխանի էր.
Էն էլ Մըսրայ Մելիքի նման պօլ ղօշուն ժողուեր էր։
Դաւիթ ձին քշեց մէջ, չորս օր կռուաւ.
Վրայ խնգին ղօշունի մարթիկ թուղթ բացին.
Իշկացին բուրմտարներ թէ «ըոզոնց այգ ջրից ա բահամ էկե.
Ըսդոնք Ֆէրզ են, բերէք, ջրի ճանբախ ըզրանց վրէն կտրենք։
Ջրի ճանբախ կտրին. չեն թողում էթայ դպա ջուր.
Զումփի չուր իրիկուն կռւում էր, էթըմ, ընկնըմ էր ջուրը.
Եարէք միաւորում էր, առաւօտ էլի գալըմ էր կռիւ։
Ջրի ճանբախ որ կտրին, գնաց, մտաւ մէկ մասուրի քօլի տակ։
Ղուշն իր թեւով գալըմ էր, եարէքի մէջով ընցնըմ էր.
Դաւիթ խապար չէր ըլլըմ:
Դաւիթ ըստեղ չատ նեղացաւ իր սրտի վրէն.
Կանչեց.—Աստուած, եան ընձի մախ տուր, եան մէ իմցաս տուր.
Ծար-ճանփէն իմ վրէն կտրեր են, խեղճացեր էմ:
Էդ ղօշումի մարթ վախենում էն, չեն քշըմ վրէն.
Ասըմ էն.—Էթանք, ըլի մեզի պիրաստի սպանի։
Համա էն գեխն ա ընկե Դաւիթ, մէկ էրախայ էլ կսպանի.
Էն իր ցաւով ա ըշկռե.
Էնդոնք վախենըմ էն, վրէն չեն քշըմ։
Խրօղըրտանք էլան իշկացին Դաւթի աստղն խաւար էր էրեւում.
Մէկ ձի ունէին, ասին.—Մուրատ Աստուած, Մուրատ ձի.
Մեզի եփ կը խասցնես Դաւթին։
—Մէկ հաց ուտելու ժամանակ ինչքան կը քաշի, ընքան ժամանակ։
Ասին,—Ինչպէս ամակ տուեր էնք քեզի, քու աչկեր բանի։
Ասին.—Մուրատ Աստուած, Մուրատ ձի.
Մեզ եփ կը տանես դէմ Դաւթին։
—Մէկ պապիրոս քաշելու վախտը ինչքան կը քաշի։
Ասին.—Հը, ինչքամ ամակ տուեր էմ քեզի քու աչկեր բանի։

—Մուրատ Աստուած, Մուրատ ձի.
Մեզ երբ կը տանես դէմ Դաւթին:

Ասաւ.—Էլէք. ձեզ ձիան վրայ պինդ բռնէք.
Էս սահաթին աչկեր խփէք, բացէք.
Ձեզի տանեմ, խասուցեմ Դաւթին:

Ձին խեծան, էկան հասան ղօշումի կուշտ.
Ձիանից իջան, չորեր փոխին, հարցրին.—Էդ ինչ պախս ա.
Ղօշումի մարդեր վերցրին.—Դաւիթ չկե, կռիւ ա անըմ.
Օղան-տօղան թագաւոր մեզի ժողուե, բերե. կռիւ անենք։
Ասին.—Պա որտի ա Դաւիթ։ Ասին.—Մասրրի քօլի տակն ա.
Մենք յախու չենք կարում էթանք վրէն կռիւ:
Ասին.—Ճանբախ տուէք մե, էթանք վրէն կռիւ.
Բռնենք, բերենք տանք ձեր թագաւորին.
Իջին տուին էդ էրկու մարդին. գնացին Դաւթի կուշտ.
Ըդըրանց բերնի բուղը. որ ըլլում էր,
Դաւթի բերնի բուղը քշեց տարաւ փորի մէջ.
Դաւիթ ը տեղ. լացաւ, ասաւ.

—Յես օր էրկու հոգի էկեր են.
Ես մօրուց էլեր ի,
Մոլերն ի տուեր.
Ծնկներս չէր տուեր ջուր.
Գետերն եմ զարկեր.
Ջաներս չէր թրչուեր:
Էս օր մէ փոքր առու եմ մտեր,
Ջուր ծնկվերս ա ծալվեր.
Էրկու խոքի էկեր ին.
Ձեմ գիտում, յես օր իմ խոքին պտի առնին.
Թէ չէ ընձի իմտաց պտի կայնին:

Արունի, բարութի մէջ թաղուէր էր. խօրօղբըրտանք չէր ճանաչում.
Խօրողբըրտանք խասան, վերցրին.
Մէկ չըլկեց, մէկ ընկաւ յառէջ, որ մէջի միջից խանին դուս.
Ղօշում ժողնուաւ վրէն.—Թող, սպանենք, ասին.
Մէկ խօրողբէր չլկեր էր, մէկ թուր բռներ ընկեր ղօշումի մէջ.
Չէր թողում Դաւթի մօտ գային։
Դաւիթ տարան, քցին ջրին մէջ.
Էդ էլ լեւացուաւ, ջրի մէջ լողացաւ, դինջացաւ։
Ջրից յէլան դուս. իրեքով էլ էկան ընկան ղօշումի մէջ.
Ջարդ ու բուրդ արին պիրասի.

Օղան-տօղան թագաւոր բռնեցին.
Թևեր կապից Դաւիթ, գրեց խըօղըրտանց կուչար,
Ասաւ.—Դե, կայնէք.
Ջուր ես էթամ առուի կուչտը, լուացուեմ, գամ։
Ջուր խասայ առուն, տեհաւ դալմաղալն էլաւ.
Էկաւ, տեհաւ, Օղան-Տօղանի օխտը գլուխն էլ կտրեր էն։
Խորողըրտանց վրէն նեղացաւ, ասաւ.
—Ընչի ըղըա գլօխ կտրեր էս.
Ըղի սաղ պտի տանէի Խանտութ խաթունին հաֆիյա։
Ասին.—Մարդ իր դուշման կը թողնի սա՞ղ.
Էդ տեղ մէկ խօսք Դաւթից էլաւ, մէկ խըօղպըրտանցից.
Կռուան. խըօղպըրտանք ինատ արին, թողին գնացին։
Դաւիթ թողեց, էկաւ որ առուն լուացուի։
Օխտն օր բմեր ա, վրայ ութ աւուր ա.
Խանտութ խաթուն տեհաւ որ Դաւիթ չէկաւ.
Ինքն էլաւ, ձին խեծաւ, էկաւ.
Մէկ տանին մզրախը զարկում ջանդակներին,
Գետնէն եռսուն ջանտակ բանցրացնում էր վիրև.
(Էյ գիտի ղուլաբ, տունդ չի քանդուի).
Իրեչկում էր Թևի վրէն, տեսնում բազպին չկայ.
Տփում դիտին եռսուն ջանդակն էլ.
Զարկում, եռսուն էլ ա վերցնում։
Դաւիթ առուից իրեչկաց, տեհաւ.
Խանտութ խանում դանին մզրախ զարկում,
Եռսուն ջանտակ վերցնում բանցր։
Ձէն տուեց Դաւիթ.—Է՛յ, էդ ինչ էս անըմ.
Քու սիրական ես եմ սպանել, քու դուշմանը ես էմ։
Խանտութ խաթունի աչքերի սևը, սիւտակ խառուաւ յիրար.
Ձին քշեց Դաւթի վրէն.
Ձէր ճանաչըմ իր սրտի հեռսից.
Էլ Դաւիթ որն ա, աչկեր կարմրեր ա.
Մէկ դըրպ զարկեց Դաւթին։
Դաւթի չոք առաւ գետին, էլաւ, կայնաւ, ասաւ.
—Թէ ընձի այան չանեմ, զարկե, ընձի կսպանայ։
Մէկ դըրպ զարկեց Դաւիթ Խանտութ խաթունին.
Խանտութ խաթուն ձիանից ընկաւ տակ.
Ասաւ Դաւիթ.—Ընչի ես զարկում, Դաւիթն եմ ես։
Նոր յիրար ճանաչան, մարդ, կնիկ էլան, էկան տուն։



## Գ.

# ԴԱՒԻԹ ԵՒ ՄՀԵՐ

Մէկ ժամանակ մնացին, Աստուած ըղըրանց մէ տղայ տուեց.
Անուն դրին Մհեր, Դաւթի խօր անուան վրէն.
Մհեր ջօջացաւ։
Ամեն օր Խանտութ խաթունի ախպըրտանք կեթային ավ-ղաւշ:
Էս խետին Մհերին էլ տարան իրանց խետ.
Իրանք կը նստին ուտել խմելու, Մհեր կերթար ավ անելու.
Իրիկուն ավը կտար. քեռիք կը տանին տուն.
Ինքը դատարկ կուգար տուն։
Մէ օր Դաւիթ վերցրեց, ասաւ.
—Որդի՛, երանի դու իմ տղէն չեղնէր։
Ասաւ.—Որդի, մէկ օր էլ մէ ճնճուղ դու բերէր, ես ուտէր.
Ասաւ.—Իմ խէրս. սուրդ տուր, էն ղդար բերեմ.
Մի ամիս ուտես, չի պրծնի։
Էլաւ, քեռիքների խետ գնաց, գնացին մեշի մէջ.
Ցէլաւ ինչ արաւ Մհեր.
Էրկու ծառ ծռացրեց, բերեց ցածր.
Էրկսի ծէր կպցրեց յիրար.
Իրեք քեռին մէ ծառի վրէն նստըցրեց,
Իրեք քեռին էլ մէ ծառի վրէն.
Ոտը ծառի վրից վերցրեց.
Ծառերը ղզուան, էն իրեքը տփին գեղի մէկ ղռաղը.
Ընդոնք ընտե մեռան, ընդոնք էլ ընտե։
Էլաւ, ինքը գնաց ավ անելու։
Մէ չինարի ծառ քոքխան արաւ, ավը չարեց վրէն.
Ցիրիկուան բերեց, տուեց խօրը. ասաւ.—Առ քե:
Ասաւ.—Քու քեռիքն ո՞ւր են.
Ասաւ.—Իրեքն նա մեշի գլուխն էն ծիծաղում,
Իրեքն էլ մեշի մէկէլ գլուխն էն ծիծաղում։
Ասաւ.—Չըլլի սպաներ ես:—Չէ, չեմ սպաներ, ասաւ.
—Բաս ինչ արիր ընդըրանց։
Ասաւ.—Ծառը բանցր, ցածր էնք խաղըմ.
Ոտս վերցրի վերև ծառի վրից.
Էն իրեք տփեց մեշի գլօխ, էն իրեք գեղի գլօխ:
Դաւիթ ասաւ.—Քու բաջարուկ տես.

Առաւօտ ես, դու պտի կռուենք։
Լուս բացուաւ, խէրն ու տղայ կպան իրար.
Խանտութ խաթուն տեհաւ խէրն ու տղայ զարկում են իրար.

Ասաւ.—Դաւիք, մը զարկի իմ տղին.
էն իմ կաքնակեր պալեն ա:
Դաւիթն ասաւ.—Պտի զարկեմ, Խանտուք խանում,
էն քու վեց, ախպօրն սպաներ ա,
Պտի զարկիմ, քու վեց ախպօրն փոխը առնիմ:

Խանտութ խանում դարձաւ, տղին ասաւ.

—Որդի, մի զարկ քու հօր.
էն սըւտակ մուրուս ա.
էն քու խերն ա:

Ասաւ.—Մերիկ մի ընկնիր արանք.
Պտի զարկիմ ես.
էն սըւտակ մուրուս
Գլխի վրայ բերեմ։

Զարկեց, խէրն ընկաւ.
Ցէլան, Թուրկին. էկան տուն, Դաւիթն իր կնիկ.
Ասաւ.—Կնիկ. ել էթանք մէ քաղաք.
Էլ էս տեղ նստելը հարամ ա մեզ վրայ.
Ցէլան, Մհերին թողին Կապուտ կող քաղաք.
Դաւիթն ու Խանտութ խանում էկան դպա Սասում։
Էկան Խլաթայ քաղաք, Խլաթցիք էկան դէմ, ասին.
—Դաւիթ, արի կռուենք, նոր էդ Խանտութ խանում տար։
Դաւիթն ասաւ.—Ինձ հետ օղուլ ուշախ կայ.
Լաւ չի մէկայ կռուեմ, ամօթ ա.
Էթամ տուն, յետոյ գամ. կռուենք։
Ասին.—Ձես գայ.
Ասաւ.—Աստուած վկայ ըլլի. գամ։
Գնաց տուն, մի ամիս մնաց. մտահան արաւ։
Մէկ օր Խանտութ խանում ասաւ.
—Շորերդ խան, լուամ.
Խանեց որ լուացին, տեհաւ աջ եան յըմեն սեցեր ա.
Իրիչկաց Խանտութ խանում, ասաւ.
—Ընչի եա քու մէկ եան սեցե.
Ասաւ.—Օրթում էմ կիրի, օրթում ընձի վերայ կոտրուեր ա.
Ուշացեր էմ. չեմ գնացի. չորեր տու խազնիմ:
Շորել խագաւ ու գնաց Խլաթայ քաղաք։

Գնաց ընտե, ղօշուն ժողնուան էկան որ կռուին։
Իրեք օր կռուան, տեհան չեն յաղթում.
Վրայ չորսին Դաւիթ իջնի էր ջրի վրայ վլացվում էր։
Վերեանց մէի գութանի խոփ կարմրցրին.
Էն տաք խոփը տփին Դաւթի դօշին. ընկաւ վէր։
Խօրողպրտանք իչկացին. տեհան Դաւթի աստղը խաւար ա.
Ջին խեծան, էկան. խասան Դաւթին.
Տեհան Դաւիթ պէյուշ ընկած ա, հալ չկայ վրէն։
Գլուխ վերցրին Դաւթի, դրին իրենց չօքի վրէն.
Դաւիթ արև տուեց քու որդուն։
Թապուր սև կապին, առան բերին դպա Սասուն.
Խանտուլթ խաթուն էլաւ, իրիշկաց բաշանից.
Տեհաւ Դաւթի թապուր սև էն բերըմ.
Իրան բաշանի գլխից տփեց գետին.
Էն էլ էն տեխ մեռաւ։
Էրկուս մէկ տեղ բերին, տարան խորին։
Էկան տուն, մինք արին էրկու ախպէրով,
Ասին.—Դաւիթ ասըմ էր, մեզի տղայ կայ Կապուտ կող։
Էկան Կապուտ կող քաղաք որ առնեն, բերեն.
Ձէն տուին.—Մհե՛ր, Մհե՞ր, արի, էթանք.
Քու խոր Խլաթայ քաղաք սպանիր էն,
Արուն փոխ առնենք։
Էլան, առան իրանց խօրողպօր տղէն.
Առան, բերին Խլաթայ քաղաք։
Մտան քաղքի մէջ.
Էգնղէն, որցեղէն չթողին, յըմեն փրթին։
Տեհան մէկ պառաւ տաք տաք ալուր խառնում,
Շերեփ միջից խանե, չերեփից բուղ ըլլում ա.
Ասին.—Պառաւ, էդ ուր էս էթում։
Ասաւ.—Ասըմին, «Դաւթի տղէն էկե»,
Էթամ, իմ չերեփ տփեմ գլխի մէջ. իմ սիրտ հովանայ։
Իմ վեց տղէն սպաներ ա։
Մհեր ասաւ.—Արի՛ մօտ, արի՛ մօտ.
Անկնջներից ծանտր էմ, բան չեմ լսում։
Ասաւ ու ձեռ տուեց պառուին, դրեց գետին.
Մէ ոտ դրեց ոտի վրէն, մէ ձեռ քցեց մէկէլ ոտ.
Քաշեց, ճղեց, թալեց ընտեն։
Էլան, թողին, քաղքից էլան դուս, էկան Սասուն։
Մհեր չատ սիրուն տղայ էր.
Ամեն օր կեթար ավ-ղուշ.

Ձէնով Յովանի կնիկ-Գոհար խաթունի աչկ ընկաւ Մհերին.
Մէ օր վերցրեց ասաւ.
—Յովան, դու գաս, էս որ էթաս ավ-ղուշ.
Մհեր մնայ տուն, չորեր լուանք։
Ձէնով Յովան գնաց ավ-ղուշ. Մհեր մնաց տունը։
Ջուր տաքացրեց կնիկ, ասաւ.
—Մհեր, արի. ջրից լից, ես իմ գլօխ լուամ։
Մհեր էկաւ, նստաւ ըղըրա քամակ,
Մէկ ձեռ դրեց աչկերին, մէկ ձեռով ջուր լցեց գլխին.
Խօրոզպօր կնիկ ասաւ.—Տեսնեմ ընձի բամաշա անըմ ա.
Գայ, ընձի խետ նստի, կաղնի։
Տեհաւ աչկեր խփուկ ա, ասաւ.
—Մհեր, ընչի քու աչկեր խփեր ես։
Ասաւ.—Խարս, չէ մեղք ա. ես քու ջանտակ տեսնեմ։
Գոհար խաթուն էլաւ, կայնաւ, իրա չորեր ճղրտեց.
Իր էրես ճանկռտեց, գնաց տուն, նստաւ։
Յիրկուն մարթ էկաւ, ինչ խլաճ արաց, չի խօսաւ.
Ասաւ.—Ջանըմ, ընչի՞ չես խօսում.
Ասաւ.—Էդ բէ մուրաց թողեր էս տունը բուլա.
Էս օր գնացեր ի լուացուելու,
Էկաւ, ընձի խայտառակ արաւ ջրի մէջ։
Ասաւ.—Կնի՛կ, ես ինչ անեմ, էն ճահիլ ա, ես ահիլ էմ.
Առաւօտ կը ղրկենք ավ-ղուշ ընդրան.
Ինչ իրեկուն գայ, դռներ կը փակենք, դարվեզաններ կը խողենք.
Կասենք. «օրգից էկեր էս. գնա էլի ընտի»։
Առաւօտ Մհերին ղրկին ավ-ղուշ.
Յիրկուն էկաւ, տեհաւ դռներ փակ ա, դարվեզաններ խողած ա.
Տեհաւ տեղ չիկայ էթայ ներս։

Նստաւ, լացաւ, կանչեց.

—Խերախոս խօրոզպեր,
Էս օր խեր չունեմ,
Արա խերուբեն.
Խերախոս խօրոզպեր.
Էս օր անտեր իմ մնացի.
Արա տերուբուն:
Խերախոս խօրոզպեր,
Էս օր երբըմ եմ մնացե.
Արա խերուբուն:
Անճար եմ մնացի.

Արա մէկ ճար.
Խէրախոտ խօրողպէր.

Խօրողպօր սիրտը լցուաւ.
Էլաւ, բատաճի գլօխ կայնաւ.
—Որդի, ասաւ, էդ բանը ի՛նչ դու ես բռնե.
Մեր ազգի մէջ մէկը չի բռնե.
Ո՛րտից էկեր էս, էլի գնա էն տեղ.
Մեր ազգի մէջ ըդենց բան չելե։

Մհեր կանչեց խօրողպօր.
—Քու կնիկ ինչպես իմ Խանտութ խաթուն մէրս,
Թէ ես էն բանից խապարութուն ունեմ.
Քու կնիկ իմ բէրնի սրբութուն ըլլի,
Թէ ես էն բանից խապարութուն ունեմ.
Քու կնիկ իմ ճակտի մեռօն ըլլի,
Թէ ես էն բանից խապարութուն ունեմ.
Խազար ափսոս, խազար ափսոս.
Խէրախոտ խօրողպէր, Խէրախոտ խօրողպէր.
Քու կնկան խափուած ես դու:
'Դե', կաց բարի, չուր խազար տարի.
Ես էմ էթալու, դու ես մնալու.
Ես էմ էթալու, դու ես մնալու,
Խէրախոտ խօրողպէր . . . . :

Խօրողպէր իջաւ, դուռ բացեց որ Մհերին բերի ներս.
Տեհաւ Մհեր օրթում ա ուտում.
Ինչ ղդար կանչեց, Մհեր չի դարցաւ։
Գնաց, ընկաւ խօր գերեզմանի արանք, մօր։
Պարկաւ, կանչեց, լացաւ էս խետին.

Խօրը ձէն տուեց. ասաւ.
—Հէրիկ, վեր էլի, յէս օր վեր էլի,
Քու տղէն անտէր մնացե, անտէր մնացե:
Քու տղէն դռներ աննար մնացե.
Ցէս օր վեր էլի, Մսըր տու, ծառայեմ.
Ցէս օր դռներ անտէր եթըմ էմ մնացե։

Գերեզմանից ձէն էկաւ դուս.
—Որդի, ես էմ մեծացեր.
Թափեր ա գլխիս մազեր
Մսըր Մսըրայ Մելիքին ա։

էն որ դու ինչ ծնար.
Քու գլօխ Հալապն ա գրուեր:

*Դարձաւ մօր*—Մերիկ, վեր ելի, յես որ վեր ելի,
Քու կարգնակեր պալեն անտեր մնացեր.
Էլի, Թեհրան սուր, երամ, ծառայեմ.
Էս որ եքլմ եմ մնացե,
Դուներ անտեր եմ մնացե:
—Որդի, ես որ ես եմ մեծացեր.
Թափեր ա գյխիս ծամեր.
Թեհրան Անմու շահին ա.
Քու գլօխ Հալապն ա գրուած.
Իմ կարգնակեր պալեն:
—*Խերիկ վեր էլի.*
Քու ամակն ընձի խալալի, (*կրկնել*)

*Խօր դերեզմանից ձէն չելաւ, դարձաւ մօր.*
—Մերիկ, վեր ելի,
Քու ծծի կաթ ընձի հալալի.

*Տեհաւ ձէն չի ըլլում, էդ տեղ նոր կանչեց. լացաւ, ասաւ.*
—Օրհնեալ բարերար,
Արարիչ, Տէր Աստուած,
Խնամքն էր շատ.
Օրհնութուն, բարերարութուն
Վըր անկանջ արողաց.
Վըր հազր նստողաց.

*Ըստեղ Դաւիթ վերջացաւ։*
*Մհեր թող էթայ դպա Հալապ։*
*Մհեր ընկաւ ճանրախ,* եալաշ-եալաշ *գնաց.*
*Միամիտ էր, չէր գիտըմ ճանրախ ինչպէսդ էր.*
*Գնաց, մէ* բաղ ըռաստ *էկաւ, ասաւ.*
—*Պ*եզրեր *էմ, գնամ էթամ, էդ* բաղի *մէջ ջուր կըլլի, խմեմ.*
*Գնաց, նստեր էր* հաւուզի *վրէն ջուր խմելու.*
*Բաղից հեռու բանցր* օքախ *կար.*
Փանճարից*, ախչիկ կար, իրիչեց.*
*Տեհաւ* բաղի *մէջ մէ մարթ ա նստի։*
Ղառավաշին *ըռղկեց, ասաւ.—Թօ ըլլի էթայ, մեղք ա.*
*Թէ իմ ախպէր տեհաւ, կսպանի:*
Ղառավաշն *էկաւ, ասաւ.—Այ տղա՛, էլի՛, գնա։*
*Ասաւ —Ես էկեր ի,* զարքի *պտի էթայի. մըկայ չեմ էթար,*
*Ով որ գալըմ ա, թօ գայ ըլպա ընձի։*

Ղառավաշ դարցաւ, էկաւ տունը, ասաւ.
—Էն մարդն՝ ասաւ.—Ես ղարիբ մարդ ի, պեզրած ի,
Ասի ջուր խմեմ, էթամ, որ էնպէսդ ա, ընդրա տէրը թո գայ։
Ես Աստուած ընդրա կտայ, եա ընձի։
—Ախչի, էն մարդ սրտով մարթ ա էրեւում.
Գնա՛. կանչի, թո գայ, հաց ուտի։
Ղառավաշ էկաւ, խասաւ Մհերին, ասաւ.
—Ախպէ՛ր, իմ խանըմ քեզ կանչըմ ա տուն. արի, էթանք։
Էլաւ, ընկաւ ղառավաշի քամակը, գնացին օթախը.
Խանըմ խաց բերել տուեց ընդրան, նստաւ. կերաւ։
Մնաց, իրիկուայ պահին էր.
Իրիշկաց տեհաւ մէկ մարդ ճանբախ գալըմ.
Մէկ չինարի ծառ դրե թեւին.
Վէրի ճղները վէրի օխչար վէրի դաւար չարե.
Ներքին ճղներ գետին քըրքաշ էթում ա.
Թօզ դումանն տուե վրէն։
Էդ խանըմ վերցրեց.—Ախպէ՛ր, դու գնա, քեզ պախեմ.
Իմ ախպէր կգայ, քեզ կսպաննի. Քուլընկի դեւն ա.
Դու ընդրա վրէն չես կարայ։ Ընդրան պախեց։
Ախպէր էկաւ տուն, չինարին դրեց գետին.
Ջանաւարներ որ չարեր էր վրէն. իջեցրեց ցածր.
Բերեց ներս, ասաւ.—Քուրիկ. մեր տունը մարդախոտ ա գալըմ։
Ասաւ.—Ախպէ՛ր, սարից, ձորից դու ես գալըմ.
Մարդախոտ էս տեղ ինչ ա անըմ։
Ասաւ,—Ջանըմ, դու ընձի մի՛ խափի,
Բաղի մէջ ոտատեղ կար, գնացել էր հավուզը.
Իզը բռներ էմ, խոտը առեր էմ, էկեր էմ մեր տունը.
Քուրիկ, աւաջի Աստըծու ուխտ ըլլի, էն մարդին չսպաննեմ։
—Ախպէր, ասաւ, մէկը էկաւ, չի դիմըցայ սպաննել տայի:
—Դե՛. եւ. գնա՛, ո՛ր տե պախեր էս, բեր։
Գնաց, Մհերին պախած տեղից խանեց, բերեց։
Դեւն իրիշկաց Մհերին, տեհաւ տեսակով տղամարդ ա.
Սիրուն ա, բօյ-բուսաթով ա.
—Պա՛. ասաւ դեւն, դու իմ անուն չե՞ս լսե.
Ես Քուլընկե դեւն էմ. ղուշն իր թեւով, օձն իր պորտով իմ սինօռի մէջ չկարայ գայ իմ յախու.
Դու ինչպէս սիրտ արիր. թող գիմ սինօռը, գնա.
Ասաւ.—Դեւ ախպէր, Աստըծու չնորքը չատ ըլլի.
Աստըծուց սավայ մենք, մեր ազգը մարդից չենք վախենայ։
Դեւն ասաւ.—Ղօչախ էս, բիրտան բիր չիմ զարկի.

Բերած ավերից կերակուր էփին, խաց քաշին, կերան։
Ասաւ.—Անբաղդութիւն չեմ անի. էլի, զուլաս կպինք.
Թէ ես տուի գետին, կսպաննեմ.
Թէ դո՛ւ տուիր, իմ քուրը կտամ քեզի։
Քնան, լուսը բացուեցաւ.—Խէրը բարին գայ ձեզ վրայ.
Երկսով հասան իրարի. Մհեր վերցրեց դևին, տուեց գետին։
Ասաւ.—Որ ուխտ էմ արե, իմ քուրը պտի տամ քեզի.
Ես էլ քեզի ախպէր ըլեմ։
Մհեր ասաւ.—Ես չեմ պսակուի. ես պտի էթամ Հալապ։
Էլաւ որ էթար, դևն ասաւ.—Դու մնակ մէթար.
Ես էլ պտի գամ քեզ հետ, օրթում էմ կերե, ախպէր ըլեմ։
Էլան, ընկան ճանբախ, գնացին.
Շատ ու քիչ Աստուած գիտայ, չուր խասան Հալապ.
Գնացին մէկ պառուի.—Նանէ՛, ասին. ղօնաղ չես ուզի.
Պառաւ վերցրեց.—Որդի՛, ղօնախ Աստըծու ղօնախն ա.
Նէ ուտելու ունիմ, նէ խմելու ունեմ։
Մհեր էլաւ, փող տուեց պառաւին.—Նանէ՛, ասաւ.
Ես էլ տեսնըմեմ քու տուն պաց չիկայ.
Տա՛ր, տուր խացի, եմակի. բե՛ր, ուտենք.
Էվելի փողն էլ տուր, մէ ձեռք չոր առ, մէջը քնենք.
Մենք որ էթանք, ուրիշ ղօնախ էլ կգայ, մէջը թո քնի։
Տեհան չորքաթը մէ անգամ թաքաւորը հրամայում ա.
Հալղը ժողովում ա, գալըմ, նստըմ, խօսում էն։
—Նանէ, մենք էլ էթանք ըն տե, մեզ խետ չեն կռուի։
Ասաւ.—Որդի՛, իրան վիճակի մարդն ա կանչըմ.
—Նանէ՛, ասաւ, ես էլ թաքաւորի որդի էմ.
Ասաւ.—Որ էդպէսող ա, իրաւունք ունես, էթաս։
Մհեր գնաց թաքաւորի գլօխ տուեց, օխտն անգամ.
Վրայ ութին ձեռ կապեց, կայնաւ։
Թաքաւորը իրչկաց, տեհաւ ըդըրան.
Սիրուն տղամարդ ա, լէքն ա, բօյով-բուսաթով ա.
Ասաւ.—Էսի կասես թաքաւորի ցիղ ըլի։
—Այ տղա՛, ասաւ. դու յո՞ւստ էս. ինչ ես ուզում.
Ասաւ.—Տէրութունը հաստատ ըլի, ես Սասմայ էմ։
—Սասմայ ումանից ես դու.—Դաւթի տղէն։
Ասաւ.—Էն Դաւիթ Մսըր քար ու քանդ արաւ.
Ընդրա ազգական էկան, գնացին Խլաթ քար ու քանդ արին.
Մէ նա դինջ մարդ էք դուք, քու անուն ինչ ա.—Մհեր.
—Դաւթի տղէն Մհեր դո՛ւ ես.
Թէ էկեր ես էս քաղաք. խելօք նստես, կայնես։

Ասաւ.—Դե՛, դարիպ մարդ եմ, ինչ գործ ունեմ խալխի խետ։
Տեղ չանց տուեց.—Դե՛, ասաւ. գնա, նստի, խօսանք։
Էդ Թաքաւորի սիրտը փոխուաւ Մհերի վրայ, սիրեց ըդըրան.
Ըլաւ մէկ կաթ արուն, ընկաւ Թաքաւորի սրտին մէջ։
Էն օր քիչ խօսացին. Մհեր ելաւ, շնորհակալ ելաւ, գնաց.
Մնաց մէկել օր, Թաքաւորը խացի վախք կանչեց ըդըրան.
Թէ.—Թաքաւորի ցեղ ա, մեղք ա, թո դայ, խաց ուտի.
Հաց քցին, նստան ուտելու. ծիրանի չիր ին էփեր,
Մհերը կերաւ, կռճերը ժողուեց ձեռի մէջ.
Էս խետին խաց վերցրին, սինօդապետներ էկան.
Կէս էս ճերկում. կէս էն ճերկում.
Ինքն էլ աթոռ դրեց, նստաւ ամենից բարցր։
Մհերն ամենից ցածր նստաւ.
Էդ կռճերը առաւ էրկու մատի մէջ.
Ընենց որ կռճերը մատների մէջ ճխտում էր.
Կոճը թռնըմ էր, դիպչում էր սինօդապետների կողքին.
Մէկէլ կողքից դուս տալըմ էր։
Մէկէլ տեսնըմ էր, էն մարթ թուալըմ էր ընտեղ.
Էս խետին մէկէլ խաճից բռնըցնըմ էր կոճը.
Էն ճէրկի մարթ թուալըմ ին գետին.
Ընկնըմին քամկի վրայ, կողքի վրայ, փորի վրայ.
—Ջանըմ էս ինչ էր, էս մարթիկ պեյուճ էլան.
Նա թուանճի ձէն կայ, ճա բան կայ, իրարու ասին.
—Էս տեղ մէ հնար կայ, էս մարթիկ էսպէսդ չրջան.
Էլան ձէն տուին. ընկնող մարթիկ էլ չի խօսացին.
Տնհան արուն էլաւ, էդ մարթիկ, չորեր ծածկեց։
Էլան, չորեր խանին, տեհան որի կողքից դպե,
Մէկէլ կողքից տուե դուս.
Որի սրտից դպե, քամկից տուե դուս։
—Ջանըմ, Մհեր, չըլնի քու բաներն ա.
Ըդըրան (Մհերի) ազգը սութ ասել չըն գիտայ.
Գողութուն, բօզութուն չըն գիտայ. դուզ կը խօսային.
Որ հարցրին ասաւ.—Վալլա, ծիրանի կտի խետ խաղըմ ի.
Իմ մատի միջից ինչ պրծաւ, դպաւ ըդըրանց.
Մէկէլ խաճից դուս տուեց. ես ինչ անեմ։
Ասաւ.—Ձեր ազգը, ես մէկէլ ուրը ասիմ.
Նա դիճճ մարթիկ էք դուք։
Էլ վախեցան ըտե Մհերից. չկարացին մօտանալ.
Կռուան խետը թէ.—Դու կը մնաս, էլ կը գորկես, կալաններ.
Էդ թաճար մարթիկ իմ քաղաքի մէջ չմնայ, էթայ։

Մհեր վերցրեց.—Ես եկեր եմ. պտի էթիմ զարթ.
Ես չեմ էթայ, դու ինչ կանես, արա ընձի.
Թաքաւոր ղօշուն ժողուեց, ասաւ.
—Մինակ վայ թէ չի յաղթենք ըդըրան։
Էկան որ քողքից խանէն, դրկեն ըդրան.
Մհեր ասաւ.—Ես չեմ էթայ։ Կռուան ըդ տեղ։
Ղօշուն ջարդ ու խուրտ արաւ Մհեր, սբար չի թողաց.
Ղօշունի մարթեր որ մնացեր ին, գնացին Թաքաւորի մօտ.
—Ջանըմ ասին, էդ էրկու օր էլ մնայ, քաղաքը կաւերի, կը թողե.
Իսկ որ ասըմ ին, Սասմայ ծռերիցն էն ըդոնք.
Կռուով ըսդըրան չենք կարայ յաղթի։ Ասին Մհերին.
—Մհեր, Թաքաւորի հրամանն ա. գուլած կպնենք.
Թէ դու տուիր գետին, Հալալ տրապըտես դու.
Թէ մեր գուլածչին տուեց գետին, քեզ կսպաննենք։
Էկան որ գուլած կպնեն. Քեամանց քցին, ըդըրան բռնեցին.
Հասկացրին Թաքաւորին.—Ըդըրա ղազայը ինչ ա.
Ասաւ.—Էդ Թաքաւորի ցեղ ա, սպանել մեղք ա.
Տարէք, թալէք էն քառասուն գազանոց խոր, թո մնայ ընտե։
Տարան, թալին խորին մէջ Մհերին։
Էդ քաղաքին մէջ մէ պառաւ, քառասուն խաս էծ ունէր.
Մէ ախչիկ էլ կար էդ պառուին, ասաւ.
—Ես գիտամ. էդի թալեր էն խոր, պտի մեռնի անօթի.
Ես պտի տանեմ խաց ըդըրան.
Թո չի մեռնի, մինչև քառասուն օր.
Իմ ախչիկ ըռղկեմ, էթայ կուշտը.
Բալի մէ ողայ ըլլի, ըլլի Սասմայ ծռերից։
Օրէն մէկ չալ խաց, մէ էծ մորթում էր.
Տանըմ էր, պարանով իջացնըմ էր ցած, ուտըմ էր.
Քառասուն օր որ բմաւ. քառասուն էծ մորթեց.
Քառասուն չալ խացի խիտ էդի կերաւ.
Ցետի օր ասաւ.—Մհեր, քու սիրտ օղուլ ուշախ չի ուզում։
Ասաւ.—Ընչի էս հարցընըմ։
Ասաւ.—Մէ ախչիկ ունիմ, թո գայ քու մօտ.
Միտք արաւ, ասաւ.—Գնա՛, ըռղկի, դայ.
Պառաւ բերեց, ախչկան կախեց. գնաց ցածր.
Մհեր էլաւ. սրարան արցկեց ախչկան մէչքից.
Ախչկան էրես իսկի չիրիչկաց, մէկ սահար ֆիմին մնաց.
Ասաւ.—Ախչի, քու մօրն ասա, ընձի քաշի դուս.
Թէ չէ, քեզ կսպաննեմ.
Ախչիկը ձէն տուեց իրա յախու.—Նանի, ընձի քաշի, ասաւ։

Էս խետին քաշեց, տեհաւ չմտ ծանար ա.
Ոտները տալըմ ա գետին, ճկռտըմ, քաշըմ ա.
Մհեր իր մէջքը տալըմ ա քարի էն դուալը, էն դուալը.
Ոտները ցայաղ անըմ մէկէլ պատերին.
Պառաւ հա քաշըմ ա. եավաշ հա ըլլում ա վիրև։
Պառաւ սաւաւ.—Փառք քեզի Աստուած.
Հալա չէր գնացե մօտ, մնաց էրկու հոգով.
Քաշեց չար խորի բերան, տեհաւ Մհերն ա.
Ասաւ.—Դու ախչիկ Թողիր խորի տակ. ես կարմամ էլ քաշի.
Դու ընձի Ֆէնց էկար.
Էս քառասուն օր ա. քառասուն էծ մորթեր էմ, քեզի պահերէմ.
Որ դու ընձի փեսայ ըլլեր։
Մհեր պարան վերցրեց, կախեց խորը, սաւաւ.
—Ես անքաղդութուն չեմ անի, մեր ազգի մէջ էդ բան չիլե.
Քու ախչիկ ըլլի իմ խանտում խաթուն մօր նման.
Ձէն տուեց.—Ախչի, պարան կապի քու մէչք.
Պարան կապեց մէչը. Մհեր քաշեց, խանեց դուս.
Ասաւ.—Նանէ, քու մուճճար քեզ վրայ ա։
Էլաւ, ընկաւ դպո քաղաք Մհեր.
Որցեղէն. էգեղէն չի Թողաց, յըմեն ջարդեց.
Էկաւ, գնաց Սասման կուշտ.
Տորեր փոխեց, էրես ուրիշ ըռանկ դարկեց։
Լսաւ Թէ Ձէնով Յովանի կնիկ Գոհար խաթուն խիւանդ ա.
Էկաւ, գնաց ընտեղ չորեր փոխուկ.
Թէ,—Ես հաւ դարվիշ էմ, Թէ հեքիմ էմ.
Որտե եարայու ըլլի, կը դեղեմ, կը սաղացնեմ։
Կանչին, Ձէնով Յովան էկաւ տունը, հարցրեց.
—Դարվիշ բաբա, բան գլօխ կը խանես.
Ասաւ։—Ընձի նման հեքիմ չիկայ աշխարք։
Ասաւ.—Դե, ուզի, Գոհար խաթունին լաւացնես եարէք-փարէք։
Քըքրուեր ա, Աստուած յետ ու հեռուն տանի։
Ասաւ.—Իմ ուզածն էդի կըլլի,
Ըդրա գլօխը. ինչ ա էկե, որ սաւաւ, ես կը դեղեմ.
Վերցրեց Ձէնով Յովանին.—Հայրիկ, հայրիկ, արի իմ կուշտը։
Էդ Գոհար խաթուն Ձէնով Յովանի կնիկն էր.
Ասաւ Մհեր.—Նանէ, ինչ ա մանկութունից պատահե.
Քու գլուխ ինչ ա էկե, տողրուճ սաս,
Որ դուզն սաես, ես կը դեղեմ, սաղացնեմ։
Ասաւ.—Մէ վախք իմ տէգոր տղէն շատ տեսակով էր.
Աչքս ընկաւ ընդրան, վայ ընձի։ Մէկ օր իմ մարդին սաի.

«Տնաշէն, էս Մհեր ինչ բերիր էք Կապուտ կող քաղաքից.
Էս մէկ ամիս կըլլի, ընդրա չորեր.անիուայ ա.
Դու գնա ավ-ղուշ, ըղրա չորերը համ լուանք, համ թափ տանք.
Իմ մարթը գնաց. ես ջուր տաքացրի. տարայ գոմը, ասի.
—Մհեր. արի՛, ջուր լից իմ գլխին, ես լողկընամ։
Մհերը լսաւ ընձի. էկանք, գնացինք գոմը.
Շորերս խանիմ, նստամ չօլի (դաշտ) մէջը.
Ասի.—Մհեր, ջուր լից իմ գլխին։
Տեհայ մէկ ձեռ դրե իրա աչկերին, աչկեր պինդ փակե.
Մէկ ձեռով էլ ջուր ա լցընըմ իմ գլխին։
Ասի.—Մհեր, քեզ բերի որ իմ ջանեակ տեսնես.
Քու սիրտ փոխուի, ընձի լեւս նստես, կայնես.
Մհեր ասաւ. «Իմ մէրս. չէ դու իմ մօրս տեղն էս.
Իմ խօրոզբօր կնիկն էս, մեր ազգի մէջ էդ բան չելեր ա.
Ես ի՞նչպէսոդ էդ բան անեմ։
Ես էլ էս խետին Մհերին խետ կռուայ.
Իմ չորեր ճղրտի, իմ էրես ճանկռտի։
Իրիկուն որ իմ մարթ ավ-ղուշի տեղից էկաւ.
Իմ մարթին գանգատուայ «ընդրան բուղայ ես բերե».
Իրիչկեց որ էրես մերես ճանկռտած՝ չորեր ճղրտուած:
Որ Դոհար խաթուն ասաւ յըմեն. Մհեր ասաւ.
—Խօրոզբէր, դու քու ակնջով լսա՛ր։
Ասաւ.—Մէ ջուր բերեք որ ես իմ ձեռներ լուամ.
Իմ ձեռներ թամըզի, դեղ թալեմ եարէքի վրէն։
Բերեց ձեռները լուաց, որ էրեսն էլ լուաց,
Դեղըունք, որ քսեր էր, էրեսից գնաց.
Իր վրի դարվիշի չորերը խանեց, դեն թալեց.
—Խօրոզբէր, ասաւ. չէ՛ ես Մհերն էմ.
Իրիչկացին, տեհան էսի Մհերն ա օղորթ որ.
Ասաւ.—Խօրոզպէր, դու քու անկընջով լսա՛ր.
Էլար, գռները չինիր, դարկեանները խողիր.
Ընձի չի թողիր, էն գշերով ես մնացիմ դուս։
Կնիկ կգուաւ, ընկաւ ոտը, Ձէնով Ցովան փաթթուաւ վիզը.
Կնիկն ասաւ.—Ես մեղա Աստըծու.
Ես բէբաղդութիւն արիմ, իմ հոգին կորցրիմ.
Դե՛, իսան ա, կը խափնուի. Ծառ չիկայ որ քամին չառնի.
Բաղշի քու Աստըծուն։
Ձէնով Ցովան նոր փաթթուաւ վիզը, էրեսներ պաչեց.
—Որդի, ասաւ. դու բարով էս էկե. էն օր իմ աչկեր քոռցաւ.
Ինչպէս Ադամ Նւային խափուաւ. ես էս դելին խափնուայ.

Արի, ես էլ. իմ կնիկն էլ ղուրբան ըլլենք քու ոտի խողին.
—Խօրոզպէր, ես կարամ քեզ էլ, քու կնկան էլ սպանեմ.
Ես ջահիլ էմ, դու ահիլ էք.
Համա, անբաղտութիւն չեմ անի, ես բատե չի մնամ.
Քու կնիկ պեքազգութիւն արաւ ինձ վրայ.
Իմ սիրտը ղապուլ չանի որ ըստե մնամ։
Ձէնով Ցովան ինչ դար աղաչեց, տեհաւ չի կայնըմ.
Ասաւ.—Որդի. Աստըծուց կը խնդրեմ,
Քու տեղ Վանայ քարն ըլլի։
Մհեր ձին խեծաւ, քշեց, գնաց Վան.
Հեր կար, մտաւ հերի մէջ. Հերի դուռն էկաւ, առաւ յիրար։
Ձին ինչ քշեց Սասմայ դըպա Վանայ բերդ.
Տեհաւ ձին ոտներ չում չոքեր թաղուում ա խողի մէջ.
Ասաւ.—Հայ գիտի ախչարք. խող խալխուրցե.
Մնաց էն քարի մէջ, չուր իրա մահուան օրը.
Համբարձումէ համբարձում հերի դուռը կը բացուի.
Կըլլի, ախչարք թամաշա կանի.
Մէ ախ կը քաշի, էլի կը քաշուի կը մտնի ներս,
Դուռը կգայ, էլի յիրար կառնի։

---

Սևան, Ջօրավանք, Ականց, Իշխանավանք. *
Սուրբ խէր Անտօն Ածմըցին.
Տղայ Սուրբ Գէորգ Կիւմանցին. Նարեկու Նալ եկածին.
Սուրբ Ալէքսիանոս Ստամբօլցին.
Սուրբ Ստեփաննոս Կոճղցին. Սօթ խորան Կճաւցին.
Պօղոս, Պետրոս Ֆրանկուստանցին.
Արծւոյ վանք. Ծաղկայ վանք. Թուամաղայ Կարմիր Աւետարան.
Ամբավանայ Սուրբ Խաչ. Արնթաթախ Գեղարթ.
Ամենայն Փրկիչ. Խոր Վիրապ. Ատխամանայ Սուրբ Գէորգ.
Նանէնից Աստուածածին. Քեալա Աստուածածին.
Մարմնոյ վանք. Հոգոց վանք. Անգղենց վանք.
Բաշ Աբարանայ Օճախ. Լուսապտուղ Սուրբ Սահակ.
Քեալա Սուրբ Գէորգ. Կամակատար Ղշլախեցին.

---

* Բարսամ Դուքի վէպն աւարտելուն պէս իբրեւ բարեխօս երգելով վերոյիշեալ սրբավայրերը կը յիշատակէր:

Սըփ Նշան Սանահնցին. Նորքայ Աստուածածին.
Նորագաւթայ Սըփ Գէորգ. Ջաղար Սըփ Նշան.
Մարմար քար, Մոխրու թափէն. Ուստի բաղչի խաչ.
Քեօրփալուայ Սըփ Կարապետ. Սուրբ Վարդան.
Տաթեւու վանք. Սըփ Գէորգ. Սըփ Սարգիս.
Քրիստոս, Երուսաղէմ, Սըփ Կարապետ, Կառավանք.
Սըփ Ստեփաննոս Աղբակցին. Տէր Յուսկան որդին.
Թուխ Մանուկ. Մեռել յարոյց Աւետարան.
Գրիգոր Լուսաւորիչ. Սըփ Էջմիածին. Կանանչ մեռօն.
Թաթոս Առաքեալ. Ջինաւոր Սըփ Գէորգ.
Սուրբ Յարութիւն. Սըփ Յակոբ. Ամենայն ժամ.
Սըփ Մկրտիչ. Տիրամէր. Գօշայ Սըփ Գէորգ.
Անավանքայ Սըփ Կարապետ. Ջէյրան Աւետարան.
Ծափանց Սըփ Գէորգ- Սըփ Սահակին.
Ղանտալենց Աստուածածին. Յիսուս Նազարեցին.
Մուղնուայ Սըփ Գէորգ. Ղալարակեաղայ Սըփ Խաչին.
Մարկոս Աւետարան. Մարութիկ Աստուածածին.
Ծառայ կըլլեմ Կարոս խաչին.
Գայիանէն, Շողակաթ, Հոռոմսիմէն.
Կարփուայ Սըփ Աւետիս. Դղրայ Աստուածածին.
Գորգոյի Շէկ Աւետարան. Ալակեաղայ Ջօրախաչ.
Պատէի տան Աւետարան. Թաքնարլուայ կարմիր Աւետարան.
Կարմրուոր, Երևանայ Պօղոս, Պետրոս.
Աստուած ընկալ. Ժամեր. Պատարագներ.
Խուտոյի տան Նարեկ. Բարի լուսու Քրիստոս Աստուած.
Կէս օրուան դիւան դարկեախ Աստուած.
Բարի կիրակմուտ. Ուրբաթմուտ, Չորեքշաբաթմուտ.
Իցցուն օրուայ ժամեր. Պատարագներ.
Իրեք հարիր վացցուն վեց հայրապետաց.
Ծգնաւորաց, Կուսանաց, Հրշտակաց, Սրբոց
Հազար ու մէկ Սըփ Աստուածածին.
Բարեխօս ըլլի առաջի մեր Տէր Յիսուսին.
Ձեզի ազատի դառ դժոխքից, կպրե կարասից.
Կրճել ատամից, մազե կարմնջից, չար սաթայելից.
Չար ճամբխից. Ըանձախ չաւից.
Ղասա բալից, ցաւից, չօռից.
Սասուն պատուխասից, իլահիմ ձեռն անօրից.
Տայ թագաւորնիրին դինճութուն
Երկրին խաղաղութուն. մահին թանկութուն.
Յաւին փարատութուն. իմ հօրն ու մօրը արքայութուն.

Կարմունջ կապողաց. ճանբախ շինողաց.
Բարի խրատ տուողաց.
Բարեպաշտ Թագաւորաց. Աստուածասէր իշխանաց.
Երմիշ իֆի միլլեթին դու օղորմանաս.
Ազատես, օձից, գործից, ջրից, քամուց, կրակից.
Կայծակից. Թուր ու սրից, գող աւազակից.
Ես մեղաւոր սրտով ղանչումեմ.
Ավալտան ասըմեմ, հոգիս աւ.
Հոգիս հոգու խառնի, տեղս դժոխք մի անի.
Ընձի մարթ անես, մարթամէջ տանես.
Դիւշմանարքիւմ չանես. Ամէն։



## Изданія Высочайше утвержденнаго фонда Н. О. ЭМИНА.

---

**Выпускъ I:** Исторія Арменіи Моисея Хоренскаго, *новый* переводъ Н. О. Эмина, съ примѣч. и приложеніями: (посмертное изданіе). Москва, 1893, стр. XXXVI+323. Цѣна **2** руб.

**Выпускъ II:** Изслѣдованія и статьи Н. О. Эмина по армянской миѳологіи, археологіи, исторіи и исторіи литературы (за 1858—1884 гг.), съ приложен. переводовъ изъ армянскихъ историковъ. Москва, 1896, стр. VII+431. Цѣна **2** руб.

**Выпускъ III:** Переводы и статьи Н. О. Эмина по духовной армянской литературѣ (за 1859—1882 гг.): апокрифы, житія, слова и др. Съ тремя приложеніями. М., 1897, стр. XXII+367. Ц. **2** р.

**Выпускъ IV:** Изслѣдованія Н. О. Эмина по армянскому языку, литературѣ и исторіи (за 1840—1855 гг.)—на *армянскомъ языкѣ*—съ портретомъ Эмина и матеріалами къ его біографіи. Москва, 1898, стр. VIII+272. Цѣна **1** руб. **50** коп.

Покупающіе **четыре выпуска** вмѣстѣ платятъ **6** руб.

---

ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽՆԵԱՑ ՄԵՐՈՑ

*գրեալ ՅԼԶ թ. Հայոց և յամի Տեառն* 887. *լուսատիպ հրատարակութիւն գրչագրի Լազարեան ճեմարանի արևել. լեզուաց. Մոսկուա, ՌՅԽԸ* — 1899, in 4°. *Գին ճանապարհածախսով* **20** *րուբլի* (**60** *ֆրանք*)։ (Евангеліе въ древне-арм. переводѣ, писанное въ 887 году. Фототипич. изданіе рукописи Лазаревскаго Института восточ. языковъ. Москва, 1899, in 4°. Цѣна **20** руб. съ пересылкой (**60** франковъ).

**Складъ изданій въ Правленіи Лазаревскаго Института В. Яз., въ Москвѣ.**

---

# „ԷՄԻՆԵԱՆ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ“

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ.

---

ՀԱՏՈՐ Ա. Փշրանքներ Շիրակի ամբարներից. մասն ա. Ժողովրդագրականութեան տեսակներ—հէքեաթ, առակ, առած, հանելուկ են: Մասն բ. հաւատք և սնոտիապաշտութիւն, ժողովրդական սովորոյթ, կենցաղ և զբաղմունք: Յաւելուած. Շիրակի բարբառի համառօտ բառարան: Հաւաքեց Աղ. Մխիթարեանց. Մոսկուա—Ալեքսանդրապօլ. 1901 Թ. էջ ԺԴ+338. Գինը 1 ռ. (2 ֆռ. 50 սանտ.).

ՀԱՏՈՐ Բ. Ժողովրդական վէպ (6 հատ) և հէքեաթ (42 հատ)—Տաճկահայ գաւառական բարբառներով: Հաւաքեց Ս. Հայկունի: Մասն առաջին: Մոսկուա—Վաղարշապատ. 1901 Թ. էջ Ժ+447. Գինը 1 ռ. 25 կ. (3 ֆռանք):

ՀԱՏՈՐ Գ. Թուրքերէնի ազդեցութիւնը հայերէնի վրայ և Թուրքերէնէ փոխառեալ բառերը Պոլսի հայ ժողովրդական լեզուին մէջ համեմատութեամբ Վանի, Ղարաբաղի և Նոր-Նախիջևանի բարբառներում. Գրեց Հ. Աճառեան. Մոսկուա—Վաղարշապատ. 1902 Թ. էջ Զ+381. Գինը 1 ռ. 50 կ.

---

ՆԵՐԿԱՅ ՀԱՏՈՐԻ ԳԻՆՆ Է

1 ռ. 25 կոպ. (3 ֆռանք).

---

ԴԻՄԵԼՈՒ Է—ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ. ՄՈՍԿՈՒԱ.
Institut Lazareff des langues orientales, Moscou (Russie).

ЭМИНСКІЙ ЭТНОГРАФИЧЕСКІЙ СБОРНИКЪ
издаваемый
при Лазаревскомъ Институтѣ Восточныхъ Языковъ
Выпускъ V.
Армено-курдскій эпосъ, собр. С. Айкуни.

---



# ԷՄԻՆԵԱՆ

## ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ.

---

ՀԱՏՈՐ Ե.

---

## ՀԱՅ-ՔՐԴԱԿԱՆ ՎԷՊ

*(Բազմաթիւ քրդական երգերով և 13 քրդական եղանակներով՝ ձայնագրութեամբ Հ. Կոմիտասի)*

ՀԱՒԱՔԵՑ

Ս. ՀԱՅԿՈՒՆԻ.

ՄՈՍԿՈՒԱ—ՎԱՂԱՐՇԱՊԱՏ.
ՌՅԾԳ—1904.

# „RECUEILE ETHNOGRAPHIQUE

# d'ÉMINE"

**publié par l'Institut Lazareff des langues orientales à Moscou, sous la direction du** *Prof. G. Khalathiantz.*

---

**Vol. I.** Matériaux ethnographiques, recueillis par. *A. Mkhithariantz* dans le district d'Alexandropol (ancien Chirak), gouvernement d'Erivan.

1-re partie: Littérature populaire arménienne, recueillie d'après la tradition: contes, récits, proverbes, dictons, énigmes, etc.

2-me partie: Croyances et superstitions, moeurs, coutumes et professions. Glossaire du dialecte de Chirak. Moscou—Alexandropol. XII + 338 p. in 8⁰. Prix **1** r. (**2** fr. **50** c.).

**Vol. II.** Epopées populaires et contes en différents dialectes, recueillis dans l'Arménie de Turquie par *S. Haïkouni*, 1-re partie: Moscou—Vagharchapat. X + 447 p. in 8⁰. Prix **1** r. **25** cop. (**3** fr.).

**Vol. III.** Mots turcs empruntés par l'arménien, étudiés et rangés dans l'ordre alphabétique par *H. Atcharian*. Moscou—Vagharchapat. IV + 381 p. in 8⁰. Prix **1** r. **50** cop. (**4** fr.).

En regard de chaque mot turc, imprimé en caractères turcs et en caractères arméniens, le glossaire donne la transcription en caractères latins et la traduction française, afin de rendre le travail accessible aux savants européens.

**Vol. IV.** Contes (48) arméniens populaires en différants dialectes, récueillis par *S. Haïkouni*. Supplément: Deux variantes de traditions héroïques arméniennes de *David de Sassoun et de Mher*. 2-me partie. Moscou—Vagharchapat. IV + 462 p. in 8⁰. Prix **1** r. **25** cop. (**3** fr.).

**Vol. V.** Epopée arméno-kurde, récueillie par *S. Haïkouni*. Moscou—Vagharchapat. 1904. VIII + 304 p. in 8⁰. Prix **1** r. **50** cop. (**4** fr.). Ce tome contient les traditions héroïques des Kurdes, telles qu'elles nous ont été transmises dans les différents dialectes arméniens du vilayet de Van; c'est pour cette raison que nous les avons nommées arméno-kurdes. Outre des éléments purement kurdes ces traditions renferment qu'on rencontre aussi dans les poésies des autres peuples iraniens, et qui rappellent d'une manière curieuse le Châh-Nâmeh de Ferdoucy, et présentent peut-être des variantes de l'épopée perse; tels sont les traditions de Roustem, de son père Zal, des héros Bedjan, Sam etc. En tout, ce tome contient 28 récits, dont 13 renferment des chants kurds; la musique de ces chants a été placée à la fin du volume, avec les transcriptions arménienne et européene du texte.

**Tous ces ouvrages se vendent à l'Institut Lazareff des langues orieantles, Moscou (Russie).**

---

ЭМИНСКІЙ ЭТНОГРАФИЧЕСКІЙ СБОРНИКЪ
издаваемый
при Лазаревскомъ Институтѣ Восточныхъ Языковъ
Выпускъ V.
Армено-Курдскій эпосъ, собр. С. Айкуни.



# ԷՄԻՆԵԱՆ

## ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ
ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ.

ՀԱՏՈՐ Ե.

ՀԱՅ-ՔՐԴԱԿԱՆ ՎԷՊ.

ՀԱՒԱՔԵՑ
Ս. ՀԱՅԿՈՒՆԻ.

ՄՈՍԿՈՒԱ—ՎԱՂԱՐՇԱՊԱՏ.
ՌՅԾԳ—1904.

ցանից ճշգրտութեամբ կատարուած իրողութիւններ են, ուստի և արժանի են առանձին ուշադրութեան՝ ինչպէս ճշգրիտ պատկերներ քրդերի նիստ ու կացի, սովորոյթների և հաւատալիքների։ Այս վէպերից մի քանիսը, ինչպէս երևում է համեմատութիւնից, վարիանտներ են՝ տարիներ առաջ յայտնի իրանագէտ Ա. Սօցինի խմբագրութեամբ Գիտութեանց Ճեմարանում հրատարակուած՝ քրդական պատմուածքների *). այսպէս են՝ Մամ ու Զին, Ռոստամ (Ա. և Բ.), Յուսէփ և Զուլէյխա, Ջանբըլի։ Բայց մեր ժողովածուն՝ համեմատութեան առնելով գէթ այս ընդհանուր նիւթերը և մանաւանդ Ռոստամի մասին երկու պատմուածքները, թէ՛ հարուստ է Սօցինի հրատարակածներից և թէ՛ բազմատեսակ, թէպէտ և քրդական վիպական նիւթերը անցել են հայ ժողովրդական միջավայրից։

Այստեղ իսկ նկատելու է, որ բացի իրանական վէպերի համեմատական ուսումնասիրութիւնից, ներկայ հատորը կարևորութիւն ունի և հայ բարբառագիտութեան տեսակէտից, որովհետև առաջարկուած պատմուածքները գրի են առնուած, ինչպէս յիշեցինք, Վանի բարբառի այլ և այլ գաւառաբարբառներով։

Ընդամէնը այս գիրքը պարունակում է իւր մէջ 28 վէպ կամ պատմուածք. դոցանից 13-ը ունին և քրդական երգեր՝ երբեմն բաւականին ընդարձակ (դոցա թվում 5 պատմուածք առաջ են բերուած ամբողջապէս քրդերէն). դոցա կցուած է և բնագրին շատ մօտ հայերէն թարգմանութիւն, որ կատարուած է նոյն անխոնջ բանահաւաք Ս. Հայկունու աշխատանքով՝ աջակցութեամբ քրդերէնին հմուտ անձինքների։ — «Էմինեան Ազգագրական Ժողովածուի» խմբագրութիւնը՝ քրդական երգերի եղանակների մասին որոշ մի գաղափար տալու դիտմամբ, յանձնեց ժողովրդական երգի մասնագէտ Արժ. Հ. Կոմիտաս վարդապետին ձայնագրելու այդ եղանակները եւրոպական երաժշտական խազերով. դոքա զետեղուած են ներկայ հատորիս վերջը՝ երգերի բնագրի հայ և եւրոպական տառադարձութեամբ։

Գր. Խ.

21 փետրուարի 1904 թ.
Մոսկուա.
Լազարեան Ճեմարան
Արևելեան Լեզուաց։

---

*) Kurdische Sammlungen, II Abt. Erzählungen und Lieder im Dialekte von Bohtan, gesammelt, herausgegeben und übersetzt von **A. Socin**, S. Petersburg, 1890. Համեմ. գերմաներէն թարգմանութեան 99, 126, 147, 153, 266 երեսներում զետեղուած պատմուածքները։

# ՆԻՒԹԵՐԻ ՑԱՆԿ.



## ՀԱՑ-ՔՐԴԱԿԱՆ ՎԷՊԵՐ



## ՑԱՒԵԼՈՒԱԾ.



---

*) Աստղանիշ վէպերը ունին քրդական երգեր, որոնք ձայնագրուած են եւրոպական խազերով Արժ. Հ. Կոմիտասի աշխատութեամբ և տեղաւորուած գրքիս վերջում։

# 1

# ՌՈՍՏԱՄ ՈՒ ԶԱԼ

**(Մոկաց Նորդուզայ Ցիմ գիւղի բարբառով *)**



Զալ խեծաւ ուր ձին, գնաց Կաֆկուֆայ սար Ճեճիր. տըսաւ ձիաւորմ' կեօ խեծեր, սարեմ պէս չոչ ի, միքանց' էդ սարեց իջաւ տակ, էկաւ մօ Զալ։

Զալին ասաց.—Դիւ ի՞նչ մարդ իս էսա տեղ։

Զալ ուր ախուն չըկարցաւ ասեր' ես Զալն իմ.—Ես մէ Ֆուդարայ մարդմեմ, ասաց. էկեր իմ, Ճեճիր կան կգեամ, բանմ ընկի եմ ձեռ, տանեմ եմ օղուլ ուշաղին, ուտենք։

Էդա ձիաւոր ինչ Զալին դէմ առեց, թողեց, գնաց։

Որ գնաց, Զալ ասաց.—Էսա երկիր յըմեն եմ ձեռն ի. էսա մարդ էկաւ. առանց տփել, առանց սպանել եմ ձեռնէն գնաց. պտի էրթամ խաե. զանեմ, սպանեմ։

Էլան ընկեան խաե, գնաց մէ գեօրզով զարկեց ուր համտով։

Ձիաւոր զըւրաւ,—Հա՛յ մարդ, ասաց. քե ի՞չ պտի, տամ քե, թող գնա՛ քու ճալին իչ ձընէ կուզես։

Իլաւ, Զալ զատացաւ, ուր մընէ հեռու-գնաց։

Դի մէլ ասաց.—Հա՛յ-հայ, ես Զալ ըլեմ, ղըրպ մը չը զարկեմ, ես էմէլ զըւրեմ, էրթամ ինե, մէկ դըրպ էլ զարկեմ։

Զըւրաւ գնաց ինե, մէկ դըրպ էլ զարկեց ինոր քեամկին.

Զըւրաւ էգ ձիաւոր ձիու քեամկի միջէն. Զա՛լին բռնեց, դրեց ուր ճաա՛ն տակ.

---

* Գրառած է ժողովարար Գէորգ Վ. Երզօեան Խոսրովի բերնէն, որ երկու տարի է Երեւանեան ճանապարհը կ'ապրի. իսկ սա սովորած է Զօլօ անունով մէկէն, որ նոյնպէս ժողովարար է։ Գէորգ գիտէ բազմաթիւ հէքիաթներ եւ բաղձական վէպեր։ Թէեւ քիչ տարի է երկրէն դուրս ելած է. սակայն իւր հայրենի բարբառի տեղ տեղ փոխած է. զուգէ ժողովարարութեան պատճառաւ։

—Այ մարդ, ասաց. ես գիտեմ, դու էկլար ձի տը՛սպանիս, բալի դու աղայ իս, խեղճ մարդ իս. ես քե չեմ սպանե, քե կը թողեմ. ես լսեր իմ, Ռոստամ կայ Իրանցոց մէջ, թի դու բերիս եմ ձեռ, գեայ իմ կռիւ, քե կը թողեմ։

Զալ ասաց.—Ես չըմ գիտի, դու ի՞նչ մարդ էս. քեօ անուն ինչ ի: Ասաց.—Իմ անուն Սալման Սնտի ի. Թիրանցի. ասա Ռոստամին գեայ իմ կռիւ։

Ասաց.—Թի ընձի թողնես, ահs ըլնի, իմ աչք ինի Ռոստամի աչից, ես քե խըմակ օրողկեմ, գեայ քիւ կռիւ։

Զալ գնաց, մտաւ յosէն, դիւռ վըր ուր չինեց, ասաց.—Ռոստամ մանտր, forփայ ի, չու հօթ-ութ տարի վրէն ընձի, զանմանայ. Նոր կօրողկեմ, կերթայ, երի ես տըրսայ, իչ իմ աչք ընկեաւ Ռոստամի աչից, կօրողկեմ, կերթայ։

Զալի եօթ տարին թըմըմաւ, Ռոստամ ջօջացաւ. էլաւ դիւռ ընկեաւ, ասեմ իչ Ռոստամ նստեր ի դալաfի դէմ ուր գլխօխ կը խաղցի, Զալի աչք ընկեաւ մըջ Ռոստամի իրիսին, ելաց. ասաց մըջ ուք մտին.—Ես ինչի օրողկեմ էդ fեօrփան էրթայ էն fեանֆիրին կռիւ.

Զալ որ ելաց, Ռոստամի աչք ընկեաւ ուր խօր աչից մէջ, տըսաւ ուր խէր, ասաց.—Ընչի՞ կըլաս։

Ասաց.—Ես էստ եօթ տարի մտեր իմ յosէն, որ քե չտըրանէր, ես ահs իմ սրեր Սալման Սնտու խըմայ, որ երի իմ աչք ընկի քեռ աչից, քե օրողկեմ կռիւ. ես կըլամ որ դու fեօrփայ իս, չես կռնայ կռիւ անի։

Իչ խէք ասաց. իմոր բուզրկեր (գայրողթը) ելաւ հայծեաւ, իմոր ձակտի փոնթեր ելաւ Սիպայ սարի դոլ ու ներքըչքեր, ձառ ու մառ, դամարfեր կայնեաւ, ասաց.—Որ դու ձի չառնիր, որ ասիր, ա՛նեմ Սալման Սնտու կռիւ։

Իլաւ խօր, մօր ասաց.—Ես ա՛երթամ Սալման Սնտու կռիւ. ես խեծել-մարդ չըմ տանի կռիւ։ Միմակ ա՛եհամ խօր ասաց.—Եա Աչխալի բալաքի (ձին) վրէն րօեաr կայ. ես չըմ տանի խօր ձի, երի իչ ես նեղ տեղ ընկեայ. իմ ձին կը [illegible] [illegible] ձեռով կը քանդի, իմոր ակնջքեր սաքիճզաrի (բարակ) պէս կը [illegible], կը ցցուի. որ էրթաս, տըրնաս, չիմեաս որ ես նեղ տեղ իմ, իմ գեօրգեմ մաrքալ, իմ fեղպերան[1] կապես վըր իմ ձիու քամակին, ձի խըմայ սղորկիս, գեայ. փախից խանիս գիւս, պիբրան կապիս վրէն ուր դասsիւr տաս, էն կգեայ, խանի ձի։

1 Բեղպերան եղբօրայ կեան է, որ [illegible] կը ձգե [illegible] միջոցին կը fւսes իrեն, կամ ձգուց կը ձգէ գետին։

Իլաւ, ձեռ թալեց, սպիճսար քեռկեց, չըլտից, ղրից մըր ուր թեաց.—Ես տեհամ Սալման Սնտու կուլ ւ, ասաց.

Իլաւ գնաց. որ իլաւ, գնաց. խօր սիրտ դrէr չուուեց, իլաւ ուր խorգէ Պէժան օրողկեց Ռոստամի խոն: Զալ պատուժանց իշկաց. Ռոստամ ասաց Պէժանին.—Պէժան, ընչի կգեստ իմ խոն, դարձի, գնա յետ:

—Չէ, ասաց. դիւ գոր էրթաս. ա՛գեամ:

Քեռի ու խorգէ յէլան, էրկուս գնացին. գնացին մըջ Իրանայ դաշտին մէկ աղբուր տըսան. Նստան վըր աղբրին, ինոնց խաց, ջիւր կերան [1]. դորխ Ռոստամ քնաւ. Պէժանին ասաց.

—Ինչ, մարդ էսա տըղըրանք կեռայ, կերեայ, ձի խանես վեր:

Պէժան տըսաւ էրկու դև, մէկ գեռմշու տիկ բռնած կգեան որ էն աղբրէն ջիւր տանէն. գնաց յառէջ, ասաց.

Է՛յ. աղէկ մարդեր, էգա տիկ տուէք, ես էրթամ վըր աղբրին, լցեմ, ձե խըմակ բէրեմ. մէկ մարդմ վըր աղբրին կեօ քնիր ի, forփայի, կը վախենայ, մի գնացէք:

Դևեր լաճկեով թալին թըխ Պէժան.—Դէ, գնա դեն, ասին, ինչխ կեղնի թըղ էղնի, վախենայ, թըղ վախենայ:

Պէժան ձեռ զարկեց մէկի փողպատ, մէկ մէկի փողպատ, էրկու դևերն էլ բռնեց, բիրեց զարկեց յիրար, ըսկուն ինչ որ դիւ մէկ ճնճղուկ զարկիս յիրար. զարկեց, ուր ձեռաց մէջ փլխըցուց: Ին տըսաւ էրկու դև էլ էկան տակ, ասին.—Հանք, իշկանք, ի՛չ գաւու մէջ ընկեան մեր աղբրքեր: Զօջ սեռըքներ, չորս կանթեն, բռնած՝ էկան ջրի: Պէժան էմէլ գնաց առէջ, ասաց.—Մե fեorփէն կեօ, վըր աղբրին քընէ, ձե տըսնոյ, կը վախենայ. տուէք, լցեմ, բերեմ. տուէք, գնացէք:

Իլան մե մէկու յիշունց տուին.—Ձեր fեorփէն կը վախենայ, գապլօտի, ինչ կելնի թըղ էլնի, ասին:

Պէժանի ըռիկ իլաւ, բռնեց էրկու զանեց յիրար, էլմէլ սպանեց:

Էդ դևեր քեառսուն աղբեր էն, ինոնց մէկ քեօր կայ, էդ քեօր թողած էն տեղ ուրանց տան մէջ. քսան մնացած տան մէջ, քսան գնացած ճեճիր:

Էդոնք աւիրուըթենի խըմայ դրած Կաֆկուֆայ սար:

Էդ տան մնացած քսան դիւուց Պէժան սպանեց չորս, տան մնացած տըսնըվեց՝ տըսնըվեցից չորսն էլ էկան ջրի:

—Էրթանք, իշկանք, մեր աղբէրքեր ի՛չ էլան, ասին:

1. Խմել բայ ընդհանրապէս գործածուած իր քրդերէնի մէջ, նոյնպէս հայերէնը չէր գործածէր Պետրոս:

Երկու տիկ էլ առան, էկան վըր աղբրին։

Պէժան յառէջ գնաց, ասաց.— Աղա տկնր տուէք ընձի, մե մարդ վըր աղբրին քընեք ի, ձե տըսնայ, կը վախենայ։

Էդա դևեր տըսան, կեօ ուրանց աղբըրքերաց չանգակ մըջ դաշտին, ասին.— Ը՛լի թի չըլնի մե աղբըրքեր էս ի սպանեն, էկան ինե-թըլս Պէժան, կռուան։ Էդա չորսին էլ սպանեց, թալեց էն տեղ։ Զորսն էլ էլան էկան, տըսան ուրանց աղբըրքերաց լեշեր կեօ մանչ դաշտին, էդա մէկ մարդ կայնե կեօ դայ։

Գաաց էդա մարդուն արին, խասան յիրար. Պէժան յըմենէ մէ տեղ տփեց գետին. էդա չորսն էլ սպանեց։

Խինգն էլ իլան էկան, տըսան ուրանց աղբըրքերու լեշեր կեօ նահան էն էն տեղն ի թալի, նահան էն տեղ։

Էն քսանից տըսնըրութ սպանեց. մնաց էրկու։

Էն էրկու ջոջեր իտին դումահից իկան, տըսան տըսնըրութ աղբերքեր սպանած ի, կեօ ինոնք էրկսով խասան դըըխ Պէժան։

Պէժան մէկ ձեռ թալեց մէկի փողպատ, մէկ ձեռ մէկի փողպատ. ուլըրից. մէկ մէկի կը պիղին, կը տանէն ասեմ չու Խոիր, էն տեղէն կը պիղեն, կը բերեն կդեան էս տեղ։

Պէժան նեղն ընկեաւ, յետևանց գնաց դըըխ Ռօստամ, որ Ռօստամ ակխաւ, գլտցաւ կեօ կռիւ ի. իլաւ վեր, էն էրկու դևեր զանեց գետին, սպանեց։ Ինչկաց տըսնըրութ մարդ էլ կեօ սպանած ի, ասաց.— Պէժա՛ն, դիւ ձի ընչի չը խանիր վեր։

Ասաց.— Ինոնք ճնճղուկ էն, տփերիմ գետին, պլաւան, ամօթ էր խանի վեր։

Ռօստամ ու Պէժան էլան, գընացին Կոֆկուֆայ սար, տըսան կեօ մէկ տուն մըջ սարին, էդա տան բիւլոր զըւրան. դիւ, բան չը տըսան։ Ռօստամ լսնկեմ՛ զարկեց պատին, պատ փլաւ. ինոնք գնացին մտան մըջ տան, տըսան դևերաց տունն ի։

Դևեր տըսան, ինոնց ֆուղարայ բռնին։

Ինոնք նստան դռան յիտև. դևեր յեվարին լցուան տուն, խաց կերան, գինի խման, բեյթ ուրախութեն արին։

Ռօստամ ասաց Պէժանին.— Գնա՛ էդա դևերաց մօտէն գինի, արաղ բեր, խմենք։

Պէժան որ գնաց, դևեր գինի չտուին, ղըւրաւ էկաւ, ասաց.— Զը տուին։

Ասաց. Գնա՛, դի մէլ ուզի. ասա՛, եմ աղէն պայ ի, խաց, գինի տուէք, եմ աղէն ուտի, խմի։

Ասին.— Մենք կըլենք, ջաղաց ալուր ինչխ կը մըրի, մենք էլ քիւ աղին տը մըրինք։

Ռօստամի ըռըկվեր իլաւ, գնաց քսան դեն էլ սպանից, էն քեօր մընակ թողեց։

Պէժան ասաց.—Քեռի՛, աղջիկ կենայ ընձի, ես անեմ կնիկ։

—Խա՛, թըղ կենայ, ասաց.

Իլաւ վեր տնէն, էրթան ի կռիւ, դիւս ընկեան. աղջիկ մնաց մըջ տան. մէկ ջոջ քեար Ռօստամ գլորեց, բերեց դէմ դռան զարկեց, դիւռ բռնեց։ Ռօստամ ու Պէժան թողին գնացին։

Շատ ու քիչ գնացին, գեղիմ բռասե էկան, գեղի եզր դրին։

Պէժան գնաց մըջ գեղին որ խաց, ջիւր բիրէ ուրանց։ Գնաց որ, Սալմանի Սնտրին կեօ խարճ ի թալի էն գեղի վրէն, չուրս խոզի օրողկեր ի, հա խարճ առնեն, գեան։

Պէժան էկաւ տըսաւ, վոյվոյոց իսկաց գեղականի, էն ինոր կը ափի, էն ինոր կը չարչըրի, էն ինոր փողպատ բռնած, էն ինոր թև կը քեչե դիւս. էն ինոր կը ջանջխի։ Զըրըաւ, գնաց մօ Ռօստամ։

Ռօստամ էկաւ մըջ էն գեղին, խարցուց.—Դիւ ինչ մարդ էք։

Ասին.—Մենք Սալման Սնտու մարդքիրնինք, էկերինք խարճ առնինք՝ տանենք Սալման Սնտու։

Ռօստամ էկաւ էրկըսի թև քեչեց, խանեց դիւս, սպանեց. մէկի լեզուն քեչեց, մէկի ձեռ կտրեց, օրողկեց Սալմանի Սնտու՝ ասաց.—ջուաբ տարէք Սալմանի Սնտուն. ինչ կանի, թըղ չխնայէ, թըղ գեայ Ռօստամի կռիւ։

Ինոնք էլան գնացին, ջուաբ տարան Սալմանի Սնտուն։

Էդա գեղականք ուրանց ախուն էլան յըմեն իւրեց դռներ չինեին, ինոնց գեղ խողին, տներ կուրիսցուցին, արին գետնի գեօն, ասին.—Սալմանի Սնտրին մեր գեղ կը տըսնայ, մե սպանի։ Ռօստամն ի արե, յինք գիտի, Սալմանի Սնտրին։

Սալմանի Սնտրին Թիրանցի խիծլիս առեց, էկաւ վըր Ռօստամի կռիւ։

Ռօստամ նստաւ ուր տեղ, Պէժան էլաւ, գնաց կռիւ։

Սալմանի Սնտու խօրոտ աղջիկմ էլ կայ, ուր աղջիկն էլ բիրե կռիւ։ Սալմանի Սնտրին ուր խեյվաք (սպիտակ վրան) ջոկ դրից, աղջկայ խեյվաք ուր մընէ զատն դրեց։

Մէկ մէկ ա փայլեվանքեր էկան թըղ Պէժան կռիւ, Պէժան որին ինչ կը խասնի, կը զանի գետին կսպանի, որին ինչ խասնի, կսպանի. ո՛ր ինչ կգեայ մեյցան կսպանի։

Դորիս չորս փայլեվան էկան դըխ Պէժան կռիւ, բռնին Պէժանին, տը զանին գետին, սպանին։ Հալա Ռօստամ զինք յիրար չառր։ Փայլեվանքտեր Պէժանին դրին գետին, տ՛ըսպանին. Սալմանի Սնտու աղջիկ կանչեց.—Էդա մարդ մ՞ըսպանէք, ընձի խըմակ օրողկէք, գեայ, ես սպանիմ։

Տարան, գնացին, տունին աղջկայ ձեռ. աղջիկ տարաւ, գնաց ուր խեյվաթի մէջ, որ տըսպանէր. աչք ընկեաւ Գէժան, սիրտ կպաւ ինե, չսպանեց. ձեռ թալին մէ մէկու վզով։ Ցերգքեր ասին.—Գէժան տանի, տապանի։

Ինօնք մընան մըջ էն կուռուն, մենք հանք (գնանք) մօ ձին։

Ձին փախին մէջ սալպընդքեր յըմին քանդեց ձեռքերով.[1] Զալ գնաց, տըսաւ, ասաց.—Ռօստամ նեղ տեղն ի ինկե, ձին օրտըկենք երթայ։

Իլան ձին փախից խանին. թամք դնին վըէն, ինոր գեօրզ կապին վըէն, ինոր մարդալ կապին վըէն, ինոր խանչալ, սուր կապին վըէն. ինոր հելպեքան, ինոր կապէն դըին վըր Աշխարի քեամկին, թողին գնաց։

Աշխարի բալաք մըջ մէկ սահարուն գնաց, խառաւ Ռօստամին. խըտ ճամրխին ինչ գնաց, Ռօստամի գեօրզ քեամկից պատաւ. Աշխարի բալաք բերան զարկեց, զգեօրզ վերուց, առեց. գնաց, խառաւ Ռօստամին։

Ռօստամ յէլաւ, սիլով զարկեց մըջ ձիու յերսին, քեամակ արաց ձին։ Ձին մէկ լանկի զարկից Ռօստամին, լեզու էկաւ խըտ Ռօստամին.—Ձէ՛, դու կեօ կը տըսնաս, գեօրզ խը ճամբխին պատաւ, եմ բերնով բռնի, բերի, էկայ։

Էլաւ ուր ձիու իրեն պագեց, էլաւ բիմարմ տուեց, իլաւ խեծաւ. ուր գեօրզ դրեց վըր ուր թիկին, գնաց, կայնաւ մէյդան։

Սալմանու Սնտու մարդքեր մէմէկա էկան ինե, որուն խառնեց, սպանեց, սպանեց էգա Ցերգքեր, չում եռսուն քառսուն խոզի սպանեց. ո՛վ կը կայնի Ռօստամի գեօրզի դէմ։

Մէկ Ցերգքերաց մընէ ջուար տարաւ Սալմանու Սնտուն. Սալմանի Սնտին զառամանց նստեր. կիչկէր։ Գնաց, ասաց.—Աստուած քիօ տուն աւիրի, դու նստերես դայ, մե յըմեն կտորեց Ռօստամ։

Նոր Սալմանի Սնտին իկաւ Ռօստամին կռիւ։
Էն խեծուկ ուր ձին, էն խեծուկ Աշխարի բալաք։
Զում յէվարին կռուան. մէկ մէկու զարկին գեօրզերով։
Ցէվարին էն գնաց ուր չատրին մէջ, էն ուր։
Առաւտուն էմէլ էկան կայնան, մէմէկու զարկին։

Ձին լեզու էկաւ խետ Ռօստամին.—Ռօստա՛մ, ինչ կանես. դէմ էտա մարդուն ճար չըս տանի, ես ինչ կասեմ, դու էն արա։

Ռօստամ Սալմանի Սնտուն ասաց.—Մենք իջնինք վեր. մե սիրտ տանք մէմէկու. քուշտի անենք (գօտեմարտինք)։

---

1 Առաջի ոտներով:

Սալմանի Սնոյին ասաց.—Չէ, յէս որ մենք գեօրզով ալ կռւի-անենք։

Ինոնք իրեք օր կռւի արին. ինոնք յէմալ դըրպ կը զարնէին, գեօրզեր բըին-ծակ կը բանէին, խաւք կընցնէր միջէն, Թիվքիներ չէր դաքնէր բրինքերաց կողրանք։

Ամէկ գնաց ուր խեփաք։

Ռօստամ նօժգարի դեզ Թալեց. եարեֆ ժրաւ։

Մէկէլ օր էլան գնացին մէյտան, կռւի արին։

Աշխարի բալաք ասաց.—Ձեր ճելպերանքեր Թալէք, մէ մէկել փակէք վըր ձիու քեամկին։

Էլան Թալին, մէմէկէլ կափանեա արին։

Դորիս Աշխար ասաց.—Ձի քեշի մէյտանից դիւս։

Աշխար քեշեց Սալմանի Սնոռւն մէյտանից դիւս։

Սալմանի Սնոյին ասաց.—Էսա չէլաւ, դիւ հիլա արիր, էսա լեպում դիւ եմ վիզ ու կառւ՝ մարիֆաթ քեօ ձիուն ի, մենք ուրջ-նենք վե՛ մեր սիրտ ու զարնենք յիրար. քիւ Աշխար զախմ ի վըր եմ ձին։

Իջան վէր, ինար սիրտ տուին մէմէկու. քուշդըրի բանին մըջ մէյդընին։ Էն ինոր պսկեց, էն ինոր պեղեց. ըսկուն արին, իշ դու-թան Թալին, խոզան քեակին, ըսկուն քեանդեցին։

Սալմանի Սնոռւ աղջկայ աչք վըր խօրն ի, վըր Ռօստամին է։ Աղջիկ Գեժանին ասաց.—Ես մկայ եմ խօր անուն տամ, քեօ քե-ռուն վիրուցի, տիփի գետին։

Գեժան ինչ ասաց.—Չէ, ես մըկայ կանչեմ եմ քեռուն, եմ քեռին գիտի Թէ ես մեռուկ իմ. որ յիմնայ Թի ես սաղ իմ. քեանի հարաֆեար կայ ուրին, ընցկուն քեառասուն հարաֆեար կըհայ։

Կանչեց Գեժան.—Քեռի. ինչ կանես, չես տիփի գետին։

Ռօստամ գիտցաւ օր Գեժան սաղ ի. քեանիմ (որչափ որ) հա-րաֆեար կէր, քեառասուն Ձերըզ փալեվանի հարաֆեար էկաւ վըր Ռօստամին, Սալմանի Սնոռւն ասաց.—Դու կասիր սպաներ իմ Գէ-ժանին, գիւ չես սաիր պուղա եմ արեր, ապրեր եմ մօ եմ աղջիկ։

Սալմանի Սնոռւ ղասալքեր կտրաւ. Ռօստամ վիրուց վըր ուք գլխուն, տիփեց գետին Սալմանի Սնոռւն. խնկլիզի մկրատ Թալեց. Սալմանի Սնոռւ վիզ կտրեց։ Որ Սալմանի Սնոռւ վիզ կտրեց, դո-րիս ընկեաւ էդա Ձերգքերաց մէջ, ոչ սպանեց, մէկէլ փախան, գնացին Թիրանցոց մէջ։

Էդա գեղական ինչ տներ հողեր էն, դռներ չիներ էն, պի-թուն Թալին, գնողեր տուին յետ, դռներ խանլին դիւս։

Ռօստամ գնաց Սալմանի Սնոռւ աղջկայ մօտ. Գէժանին ասաց. —Էսա աղջիկ կենայ ձիկ, անեմ ձի կնիկ։

Դորիս խորզէն ասաց.—Շնորխաւոր ըլնի քե խըմակ։

Ռօստամ յէլաւ, մէկ յօցայ տուեց չլնել մըջ էդա գեղին. էդա կնիկ դրեց ինե, ինք, կնիկ մնացին մըջ դայ յօցին։

Ռօստամ էրկու ամիս մնաց մօ կնիկ։ Իդա գեղի ռէսին ասաց Ռօստամ.—Կնիկ մնայ դայ, ինչ պինայ, տուէք. ձե ամանաթ։

Կնիկ էլաւ էրկու խոգիով, Ռօստամ ուր բազպանդքերաց մէկ տուեց կնկեան, ասաց.—Կնիկ. էստ բազպանդ կենայ մօ քե, թե որ ձի լաճ իլաւ, բազպանդ կապես ձեռ, անուն դնես Մհեր, ես կեօ գնացի եմ տեղն, եմ աչքը վըր քե ի։

Էլաւ. խեծաւ ուր Աշխար, Պէժան էլ խետ ընկեաւ. էկան մըջ Իրանցոց, Կաֆլուֆայ սար, դեերաց տան մօտ. էդա դեերաց քեօր խանեց, պսակեց վըր Պէժանին. առին, գնացին։

Ինոնք կենան դայ, մենք դառնանք վըր Ռօստամի կնկեան։ Ինը ամիս, ինը օր կըթմի կնկեան, Աստուած լաճ մը տուեց։

Բազպանդ կապեց ձեռ, անուն դրեց Մհեր։ [1]

Էդ լաճ որ կըլէր մէկ ամըրկան, մէկ տարեկան կը ջօջնէր. չուր իլաւ էրկու տարեկան, իլաւ տաս տարեկան։

Մըհեր մէջ տղեներաց ճան կը խաղէր, ինչ ըռըկվեր ըլնէր որ կը գանէր. որին վիզ քաշեր, որին թիվ քաշեր դիւս։

Էդա գեղի ճժեր ժողվըստան մօ մէ մէկ, ասին.—Դու հեքիմ էս, դու բինճ էս, մըջ մե մի խաղայ։

Մհեր գնաց մօ մեր, ասաց.—Նան եմ խօր սալդ տաս, եմ խօր անուն ինչ ի, ճժեր ձիկ կասեն «բինճ»։

—Քեօ խէր Ռօստամ ի, դու Ռօստամի լաճն իս։

—Որ Ռօստամի լաճն եմ, ես պտի խասնեմ Ռօստամին։

Իլաւ էդայ կնկուղի ձև ցցադրուց քաշեց վըր ուր, գնաց. դասս արաւ ուր խօր խէրանին դեխ։

Գնաց, չխասաւ ուր խօր խէրանին. գնաց մէկ կռուու մէջ բռասս էկաւ, ով գիտի ինչ կռիւ էր։

Ցխուրիչ ազգ մը էկած էր վըր Ռօստամին կռիւ։

Մհեր գնաց, զինք տուեց դեխ էն ազգ, ինչ էկերէր վըր Ռօստամին կռիւ. զինք տուեց ինե։

Էն մէկէլ՝ էկաւ կռիւ Ռօստամին։

Էլաւ Մհեր գնաց մօ թագաւոր, ասաց.—Մէկ ձի տու ընձիկ, խեծնեմ, ես էլ էրթամ կռիւ։

—Զիմ տուեր եմ քե, հայտե՛, գնա, ասաց։

---

1 Մհեր անուն ընդհանրապէս թէ հայերը եւ թէ քրդերը կը դնեն երախայոց վերայ:

Ձիմ առեց, գնաց, կայնաւ մըջ մէյտընին, կռիւ ուզեց։

Թագաւոր խապար ի, յըմա կռիւ արողքեր խապար չեն։

Ռօստամի մարդքեր ասին.—Էն ձիաւոր մըզնէ ըլնէր, մենք Թագաւորին մօնացուցինք։

Թագաւորի մարդքեր ասին.—Թի որ էն ձիաւոր մըզնէ ըլնէր, մենք Ռօստամի ճուն յըմեն սպանենք։ Չըն գիտի ձիաւոր վիր մէնէ ի, Թագաւոր կիմնայ. խեծել չիմնայ։

Իլաւ Ռօստամ, իջաւ, գնաց մէյտան կռիւ։

Էն լաճ, Ռօստամ մէմէկու զարկին, չեն գիտի խէր ու լաճ էն։

Մհեր գնաց մօ Թագաւոր, Ռօստամ էկաւ ուր տուն։

Թագաւոր ուրախացաւ, ասաց։—Էսա ձիաւոր Ռօստամի ճուն տը փըճըցուցի, աղէկ Աստուած տուեց ձիկ։

Մնաց մէկէլ օր, էլմէլ էկան կռիւ։

Դուրիս ձիանքներաց իջան վեր, ինոնց սիրտ տուին մէմէկու, քուշդրի բռնին Մհեր ու խէր։

Զուր կէս օրին ինոնք մէմէկու չյաղթին։

Կէս օրին Ռօստամ Աստըծու անուն տուեց, որ Աստըծու անուն տուեց, Մհերին օլըրեց, տուեց գետին։

Ռօստամ իլաւ, Ինկլիզի մկրատ խանեց, ուր լաճու վիզ տը կտռէր, լաճ ասաց.—Ես պստի մարդու տղայ չեմ, որ դիւ ընձի սպանես, եմ խօր ձեռնէն չես պրծնի։

Խարցնեց թի.—Տղա՛, դիւ վի՞ր լաճն էս։

Ասաց.—Ես Ռօստամի լաճն եմ։

Ասաց.—Որ դիւ Ռօստամի լաճն էս, բազպանդ չանց տուր։

Բազպանդ չանց լտուր խօր։

Մէմէկու ճանչցան, ասաց.—Կեախն ի եմ տուն աւիրի, եմ լաճ սպանիլ ի։

Ձեռ Թալեց վզնով. առեց, գնաց մըջ խեծլիս։

Իլաւ Ռօստամ խեծաւ Աշխար, լաճն էլ խեծաւ ուր ձին. քեշեցին, թառ ու մառ արեցին, գնաց։

Ինոնք էլ զըւրան, գնացին ուրանց տուն։

Գնացին վըր Թագաւորի ղօշունին յըմեն փախուցին։

Ծանպիլէ[1].— Ձէնոր լեշ խագլուստ, յըմեն պողվատ էր. զէնուաչքեր մընակ միս էր։

Էն, Ռօստամ կերթէն կռիւ. օրական իրեք խարիր վաթսուն ու վեց դիր (նետ) կը զանէր Ռօստամին. Ռօստամ պէ հալ կըլնէր, կըհեր նոժդարի դեղ կը թալեր ուր բրինքերաց, կը ժըեր։

1. Այս մի ընդարձակ ճուղ է, ,սակայն Պետրոս միայն այս չափը գիտէր:

Մէկ օր էկաւ, Նստաւ Ռօստամ, ուր ջոջեր ղանչեց, ասաց.— Էկէք, իչկացէք, ինոր ջան յըմեն պողվատ ի, իմ դիր սատ չանի մըջ ինոր լեշին։

Իլան ուր կարդացողքիր Սողոմոնին իչկացին, տըսան ինոր ջան յըմեն պողվատ ի, ասին.— Որ դիւ կեհաս կուիւ տուատուն, էրկու ճեօզ դիր չինես, դնես քեօ անեղան վրէն. կանչես, լեօյ տանես անեղան վրէն (հմայութիւն), ասես. «քեօ աչքեր ձի չանց տու, նոր կուիւ անենք»։

Գնաց կուիւ. կանչեց Ճանպիլին.— Ճանպիլմ[1], քեօ աչքեր ձի չանց տուր, նոր ձի զարկ։

Ցէլաւ, ուր աչքեր չանց տուեց։

Որ չանց տուեց, Ռօստամ դիւլպէն բռնեց, իչկաց. աչքեր տըսաւ. դիր թալեց դըլխ աչքեր, զանեց մըջ աչքերաց։

Գոռաց ինեն իլաւ, կանչեց.— Սաման. դիւ ընձի սպանիր։

Ասաց.— Ա՛յ քեաֆր, դիւ օրական իրեք խարիր վաթսուն ու վեց դիր ձիկ կը զարկէր, ձընէ ձէն չէր ըլէր. ես մէկ դիր եմ զարկեր։

## Ռօստամի մահը.

Ճղալ ուր մէջ դուշման էր Ռօստամին. մէկ օր Ռօստամին ասաց.— Ա՛խ, Աստըծու մէկիկ բարին, մէկ օր խեծնէր Աշխարի բալաք, ձի խըմակ մէյդան մը տէր գխմայ, եւ տըսնէր. իչ կըլէր, ըլէր։

Ճղալ իչ արեր էր. գեաղտիկ մէյդընի մէջ փորիր էր քեառասուն կեազ լէնք, քեառասուն կեազ էրկէն խոր, քեառասուն կեազ խորանդը, փէտ բիրէր, ծածկեր էր. օր Ռօստամ գեայ, ինի ինե։

Ռօստամ ասաց.— Ճղալ, ես քեօ խադրի խըմակ մէյդան մի տամ։

Իլաւ խեծաւ Աշխար, գնաց մէյդան, մէյդան տուեց, էն գեախ ինչ մէյդան տուեց, ձին գնաց, խասաւ ինչ խորի բերնին. ձին գիտցաւ թէ խոր էր, մէ ռաէֆ թալեց դըլխ Աշխար, որ էդա խոր թռաւ։ Որ էդա խոր թռաւ, Աշխարի նալ թռաւ ոտնեն, էկաւ դիւռ, գըլխուն ի վեր թռաւ, գնաց։

Ռօստամ գիտցաւ թի ձին ուր նալ թալեց։

Ձին զէդ խոր խըլացուց, գնաց մէյդընի գլուխ, գըւրաւ յետ, էմէլ էկաւ խորի վրէն, որ թռաւ, էսա գեախ չխըլացուց, ձիու առջի ոտքեր ընկեաւ խորի բերնին, յետի ոտքեր ընկեան մըջ խորին։ Ձը խըլացուց, փըթընան, գնացին մըջ խորին։

---

1. Պետրոս ճանպիլէն իբր միջանկեալ պատմած է, որ իբր գործ ունեցած է Ռօստամի հետ, սակայն շատ անգամ կը շփոթէր, Դաւթի անուն կտար. շատ անգամ եւ կասէր, «Դաւիթ ու Ռօստամ մէկ է, ճարղ չկայ ինծ»:

Դորխս, ճնանդ դիրգեվան (նետ ու աղեղ) կէր մօ Ռօստամ. դիր թալից ղըխ ծղալ, ծղալ գինք թալեց դ՚էմ, ճնարի ծառին. դիր զանեց, ճնարի ծառ ծակեց, կծղալն էլ ծակեց, ընցաւ. Կաֆկուֆայ սարն էլ ծակեց. գնաց Թիրանցոց հողի մէջ:

Ռօստամ ու Աշխալի բալաք ընկեան մըջ խոլուն, մըջ խորուն. ծղալ բեւեռքիր զարկած էր. չքուան էղա բեւեռքերուն:

Էկան պառաւան վըր Ռօստամին, որ խորից խանեն դիւս, ինչ-որին չկըցան խանէն:

Մէր էկաւ վըէն, Ռօստամ մօր ասաց.—Մէրիկ. ձիկ դիւ խանես, չէ քու մարդ չկռնայ խանի. քիւ ծամեր թալ տակ, ես ձի թալիմ քեօ ծամեր, ձի քէշէ դիւս:

Մէր ուր ծամեր կախից տակ, Ռօստամ թռաւ, մօր ծամեր բռնեց. մէր ծընայ գլուխ զախմով զանեց, որ քէշեց. Ռօստամ խորու բերնից թռաւ կեօ կէս սահարքայ ճանբախ գնաց, ընկեաւ դիւս:

Ռօստամ էն գեախ ուր դեօվլանք արաց:

Համ ճնար, համ ծղալ, համ զնար.—Թէ չինարը, թէ ծղալը և թէ ժայռը.
Չէ պու Ռօստամէ կոռւէ Զալ,—Ինչպէս էր Ռօստամի Զալը
Ամը կըր սէ սար շեշը օսօ ռալ.— Գետնք փորեց երեք հարիւր
փաթաւն և վեց տարի.
Հեծ պչուկ ա բըֆալ.—Դեռ փոքր է ինչպէս երեխայ
Դոզե հըմեղես կըր բրա մար:—Մայրը գրկեց, տարաւ տուն:



# 2

# ՌՕՍՏԱՄ
## ԵՒ
# ԱՏԱՄԲԺԻ ՈՒ ԴԻԻՐՕ

(Նարտուզայ բարբառով *)

Ժամանակով Ռօստամէ Զալ կըլլի, սաւեր կերթայ ավկուշ զարկել, Նէջիր անել:

Մէ ժամանակ վրէն կընցնի, նեղութիւնի մէջ կընկնի. կդեայ տունը: Աստուած հրաման կուտայ. էրազին մէջ կասի.—Ռօստամ. կեամ մը չինի, զարկ ծով, ձիմ, դիւս կգեայ:

Առաւօտ կելլի. կասի.—Էրազիմ տիսե. էրթամ ծովու կառզը. տիսնամ եմ էրազը կը կատարի՞ թէ չէ:

Կելլի վեր, կեամ կառնի. կերթայ ծովու կռաղը. կեամ կը զարկի ծովու մէջ. զարկելու բաշտան հրեղեն ձիմ դիւս կգեայ. որ դիւս կուգեայ, ճակատ կը պագի, խեծնի. կուգեայ տունե:

Էդ ձիու անուն Ռախշի բալաք կըլլի:

Էդ քաղքին մէջ Պամաթ շահ բենրան (անողորմ, անգութ) կըլլի, քեառասուն խատ կնիկ ունի:

Էդա քառասուն խատի պուճուր կնկեան մօտէն մէկ տղայ կըլլի, անուն Ասֆանտիյար:[1]

Էդ Պամաթ շահ իւր դիւնի մէջ կասի.—Ով էրթայ, Ռօստամի Զալի ձեռներ կապի. նզմէք լիք խող անի. վզից կախի, սար-քօլ, տաք բեօքիկ տանի. գայ, իմ թագաւորութեն տամ ինոր:

Իւր տղէն Ասֆանտիյար որ ջանփուլաշ էր, կասի.—Ես պտի էրթամ, պապօ:

Էն ժամանակ Ասֆանտիյար կըլլի, կերթայ. կը տիսնայ մէ բանձր

* Պատմած է, Նարտուզայ Սիքուեն գիւղացի Վարդան Մարտիրոսեան, որ երկար տարի Վան մնացած է. 2 տարի եւս տեղս կը բնակի. բարբառը շատ խառնած է: Սա լսած է իւր երկրի մէջ նոյ ասողներէն. կասէ թէ քրդերէն շատ լաւ կասեն հայեր եւ երգերով:

1 Մի քանի տեղ Աճրասիյար ասած էր Վարդան:

սար. կըլէ սարի վրէն կը կայնի. կը տեսնայ մէկ բարակ ծուխ մի կըլի, կեռ Ռոստամն Զալ ընտեղ։ Ռոստամի Զալ էն տեղ ճչ կանի. կը տեսնայ կեռ մէ վէրու եզ սպանիր ի, զարկիր ի սաղ եզը մէկ շիշի, մէկ ձեռքով բռներ ի վըր կրակին, կեփի, կուտի. մէկ ձեռքն էլ դրիր ի իրեսին։

Աւփանտիյար կասի.—Է՛, էսա ինչ զօռպայի. ես կասեմ ախշարքի մէջ ես զօռպայ եմ. էսայ ընձնից շատ զօռպայ ի։

Աւփանտիյարի աչք վախեցաւ, ասաց.—Ես ինչիս ինեմ։

Էլաւ մէկ ջաղչի քեար գլորեց պանկեավէր, որ քեարը գեայ, Ռոստամի Զալին փորձի, տեսնայ ճարպպար կը խանի—կուվարծ ի, թի չէ։

Էդա Ռոստամ կը տեսնի քեար գլորի, կուգեայ, ինք զինք կասի.—Էս օր գեարուն չի, որ գետին կակուղցիր ի, քեարեր պըծնի սարից կուգեայ. կայ-չկայ էդա փայլեվանի բան ի։

Ռոստամ ոտք կը զարկի, քեար կը բռնի, ուր տեղ կը գադըրցուցի։

Էդա Աւփանտիյար կասի.—Էյ-հէյ, էսա շատ զօրպայ փայլեվան ի. ըստուց ընձի զարար պտի գեայ։

Ուր նետ ու աղեղ կը թալի ուր թև, կուգեայ մօ Ռոստամ, բարև կուտան մէմէկու ու կը նստին։

Ռոստամ կը ճանչնայ Գամաթ-շահի լաճն ի Աւփանտիյար, կըլի վեր, շատ պատիւ կանի, կոճախըլըղ կանի։

Էդ տեղ Ռոստամ կը խարցու.—Աւփանտիյա՛ր, խէր ըլլի՝ ընչի՞ էս էկեր մօ ձի։

Ըն տի կասի.—Դտիս, ընչի էմ, էկեր էմ, էկերէմ որ քիւ ձեռք կապեմ. քիւ ճզմէէ լիք խող անեմ՝ քեօ վըղէն կախեմ. տանեմ. էրթամ եմ խօր խամար։

Ռոստամ կասի.—Ցըլէրի կըրաճ (մեծ Աստուած) ատճախս իմ ձեռքեր կը կապի, Աւփանտիյար՝ ձեռ կապել չէ, ամա քիւ խարրի խամար ճզմէք իլին խող կախեմ եմ վզից, կընկնեմ քիւ յէտչև։

—Չէ՛, կասի. բրխօ քիւ ձեռներ պտի կապեմ։

Էն ժամանակ խօսքմ ինօրից, խօսքմ ինօրից, խօսք իրարու վրայ չէրթայ. էն տեղ կռիւ կանեն։

Մէկ օր կռիւ, էրկու օր կռիւ, չուր եօթ օր կռիւ կանեն։

Ռոստամի Զալ սատըղ ունի. Ռոստամի խէր Զալ բումսար ի, կը տեսնայ Ռոստամի սատղ շատ մէդչուիր ի, կասի.—Էյվախ ճէյ վախ, Ռոստամ շատ նեղութենի մէջ ի։

Զալ կըլի վեր, կերթայ, կը հասնի Ռոստամին. կը տեսնայ էնքան եարալու սիր ի, փոկե մաղի տեսակ ծակծըկեր ի, կը զանչի.—Ռոստամ։

Էն էլ կասի.—Ջա՞ն, խէրիկ, մէկ էլ քիւ ձէն ընկաւ իմ ականջա։

Կասի.—Ռօստամ. դիւ իչխօ ինոր խեա կուիւ կանես, ինոր ջան պօղպատի. դիրկեվան (նեա աղեղ) չըանի։

—Պա, կասի, ինչխ անեմ, խէրիկ։

Կասի.—Գնա, դարե կեազի, հաչա փէտ կայ, էն. բալհի մէ կերպով ինոր աչքեր խանես։

Կերթայ, դարե կեազի կը բերի. կը դնի վըր նեա անեղան, կասի.—Ասֆանտիյար, քիս աչքեր խան դիւա, մէ խատ քի տեսնամ. դիւ ընձի որ բօշ տըեր իս, ես կը մեռնեմ, իմ սրտի վըէն չմնայ մրազ, մէկ խատ քե տեսնամ. չայնամ թի մեռնիմ։

Էն ժամանակ Ասֆանտիյարի ինձ կուգեայ, գլուխ չափարից կը խանի դիւա։

Որ գլուխ դուս կը խանի, Ռօստամ դիր կը զարկի։ Որ դիր կը զարկի, մէկ ծէր կը մանի մէկ աչք. մէկէլ ծէր մէկ աչք։

Էն ժամանակ ղուուց մընէն կերթայ։

Ռօստամ կը զանչի.—Ա՛յ կիօի, սեսաե կըրի։

Դիւ ընձի կը զարկէր խինգ խարիր դիր։

Ընձնից չէր էրթար հաւաւ դըր:

Էս օր ես քե զարկերէմ մէկ դարե կեազի (երկճիւղ փայտ)։

Քեզնից կերթայ խինգ խարիր հաւար կազի։

Էն ժամանակ կասի.—Ռօստամ. աչխարք աչքի լուսու վրայ ի, դիւ իմ աչքեր հանըցիր, ի՞չ անեմ էլ աշխըրքի վըէն։

Ռօստամ կասի.—Ասֆանտիյար, մը վախենայ, ես քե խամար սեւեր կը չնեմ, դնեմ ինե չուր օր մեռնելուն։

Ասֆանտիյար կասի.—Ընձի խամար մէկ տուն չինի, մէկ տան թող ինե։

Ռօստամ կըր մէկ տուն կը չինի, մէկ տուն կը թողի մէչ. էն տան ծածքն էլ կը բռնայ էգ տանէ։

Խէրիձալ կասի.—Ռօստամ. դիւ պըտիս Ասֆանտիյարի մեռա-իչի, քե պատի տանի տակ, սան փրցուցի. քե զաշ անիր ուր խեա-եղեր դունէն չինի, մէկ դունէն մտնէք. էն մէկէլ դռնով փախնես։

Ռօստամ տուն կը չնի. Ասֆանտիյար կը դնի մէջը։

Ասֆանտիյար որ կը մանի մէջը, քամակ կուլայ դռանը։

Ռօստամ կը փախնի մէ մէկէլ դռան, դիւս կըլլի։

Ասֆանտիյար կասի.—Ռօստամ. դիս տան մէջն իմ։

Կասի.—Խա, տան մէջն էմ. քիւ կող նստակ էմ։

Էն պեարի լախտով կը զարկի, տուն յետ չինեն կը փրցուցի։ Ընդի՛—Ռօստամին էլ ուր խեա մեռնի։

Ռօստամ կը փախնի. տուն կը տապղի վըէն, կը մնայ տակը։

Ասֆանտիյար կը մեռնի։

Էն գալս խապար կերթայ Ասֆանտիյարի խօր Պամաթ չահին խամար, Պամա՛թ չահ կասի.—Էյ վախ, ես էմ, էն լաճ, էլ ինչխ անեմ։

Կըլլի մէկ էրկու տարի միջոց վրէն կընցնի։

Էդ Ռոստամին մէկ աղբէր ունէր, անուն Ճղալ. սեեմ Ռոստամից մեծ էր. ձեռքէն բանըմ չգեայ, ընենց սարսախ մարդմ. Ռոստամ էրես չտայ ինոր։

Պամաթ չահ կասի.—Ճղալ. քու աղբէր քե էրես չտայ. արե, քե անեմ մէկ չայխուշ, մէկ ջոջմ, եա մէկ պիճ բաշի մը. գնա, մէկ կերպով քու աղբէր սպանիր։

Ճղալ կասի.—Լաւ, կը փչացուցեմ զՌոստամ։

Էն գեալս Ճղալ կերթայ մօ Ռոստամ, բարև կտայ։

Ռոստամ կասի։—Ճղալ. Աստուած խէր անի, դիւ ընչի էկար մօ ձի. քու իրես բարի իրես չէ էս օր։

Ճղալ կը վիրաւորուի, կասի.—Դիւ, խալղ տեեն մէկ սոխ տըրկի. կտրըկես, ես քու աղբէրն էմ. մէկ բան սեեմ չիս անի։ Կասի.– Քիւ Խաթրի խամար կանեմ, Ճղա՛լ։

Ճղալ Պամաթ չահին կիմցուցի։

Պամաթ չահ իչ կանի. կըլլի քեառսուն կազանոց մէկ խոր կը փորի, մէջը խըշտ կը զարկի, խորի բերնին խըշտ մըրշ կը թալի, կը ծածկի։

Էն գեալս Ճղալ կերթայ մօ Ռոստամ. կասի.—Աղբէր ջան՝ բարև քեզ։ Էմէլ Ռոստամ կասի.—Ճղալ, էս օր քու իրես բարի չէ՝ էս օր եմ մեռնելու օրն ի։

Կասի.—Ռոստամ, իչ կըլլի, ձի խամար մէկ ձի խաղցուցես. մեյտան մի տառ, էրթաս, գաս, ես տեսնամ։

Կասի.—Ճղալ, քու խաթրի խամար կը խաղցուցեմ։

Ռոստամի ձին ինչ ժամանակ ծովուց դուրս ընկաւ. խրխշտակ Ճայլիր, Ռոստամին սաիր ի, իչ գեալս քու ձիու Ճայլ. ձիու ոտքերուց ընկեաւ, էն օր քու մախն ի։

Ռոստամ կըլլի, կը խեծնի ձին. էրկու-իրեք գլուխ կերթայ, կուգեայ, կը խաղայ։ Խաղալու բաշտան, կուգեայ փուշ փալասի վրէն, որ խորի բերան սարքած ի։

Կը խասնի խորի բերնի մօտը, ձիու Ճայլը կը թռնի.

Ռոստամ կասի.—Էս օր եմ մեռնելու օրն ի, եմ ձիու Ճալլ տանէ՛ն էլաւ, եմ մախուան պատճառն էլ եմ աղբէր էղաւ։

Էն ժամանակ կինի խորի մէջ խըշտի վրէն. խըշտ քեամկից կը մտնի, դօշից կուտայ դուս։ Էն գալս ձին էլ կինի վրէն։ Ռոստամ կը կանչի.—Ճղա՛լ, Աստուած քու տուն աւըրի, դիւ ընձի տուիր սպանել. պտրուխ եմ նետ անեղ տու եմ ձեռ. ճնճղներ, իաւքեր

եմ աչքեր չխաննեն, մինչև կուգան մեզի խորէն կը խաննեն, կը տանեն։

Նետ անեղ կուտայ Ռոստամին, Ռոստամ զծղալ կը տեսնայ. կեօ նետ անեղը կը բռնայ, թալի ինե. Ծղալ զինք կը փախնի ճՃարի ծառի յէռջեր. էն ժամանակ կը կանչի Աստուած. Նետ անեղ կը քցի, կերթայ ճՃարին կը զարկի. ճՃար կը ծակի, կը զարկի Ծղալ կապանի. կեղլայ, կերթայ զնալրի մէջ։

Էն գախ Ռոստամ ուր անուն կուտայ, կասի.—Աֆարըմ ժպօ Ռոստամէ Զալ. ճամ ճնար, ճամ Ծղալ, ճամ զնար, Աֆարըմ ժպօ Ռոստամէ Զալ։

Էն գախ Ծղալ էն տեղ կապանի, Ռոստամ էլ խորի մէջ կը մնռնի։

Ծուար գնաց Պամաթ չահի խըմար.—Ռոստամ ընկեաւ խորի մէջ, մեռաւ. Ծղալն էլ ուր ձեռով սպանեց։

Էն գախ Պամաթ չահի ցեղի մէջ կըմ ուրախութեն, խաղալ, քէֆ անել- Ռոստամի ցեղի մէջ կըլի սև. սուգ, լալ, գոռալ։

Ռոստամի ցեղ մեծ ու պատիկ թըրի ու կրակի բերան կուտան. պիրուճ կապաննեն էգ ու որձ. մարդ չմնար։

Կը մնայ ինոր էրկու խալօ. էրկու խալըսն էլ էրկու խոգեով։

Էգ էրկու խալըսներաց մէկն էլ կը փախնի սարի մէջ. մէկն էլ ուրին կը թալի եօթ ծովու ացէն։

Զալն էլ չատ ծիրացիր-չատ իխտիյարցիր ի, հարաքիաթէ ընկերի, էլ չեն սպանիր. կը թալէն խորի մէջ. դանէ դան խաց ջուր կը քցին մօտը։

Էգ խալըսներէն մէկ՝ էն ինչ սարի մէջն ի, մէկ զաղէմ կը գնտըրնի, մտնի մէջը. ժամանակմ զաղի մէջ կապրի։ Էն իչ ժամանակ կուգեայ, Աստուած տղէմ կուտայ էղօր։ Էգ տղի անուն ուր մէր էլ դրեց Դիւրօ։

Ժամանակմ էգ տեղ մնաց էգ խալըս չուր Դիւրօն ջոջցաւ։

Էն իչ ծովու ացէճ ի, Աստըծու խըրամանքով պառկաւ. էն էլ մի տղայ բերեց, անուն դրեց Աստամբժի։

Էն ինչ սարի մէջն ի, Դիւրօն ճապաճ կառնի. կերթայ, խացբան կը ժողուի. կը բիրէ. զինք, մէր կուտեն։

Էն ինչ ացի մէջ ի, կերթայ ձիւկ կը բռնի, խաւը կը զարկի կը բիրէ. էն տեղ եօլա կը տանին, կուտեն։

Աստամբժին մէկ օր ծովուց դիւս կընկնի-չորան, կերթայ։

Շատ ու քիչ կերթայ, կերթայ կը հասնի ուր պապկէ քաղաք դիւս կըլի։

Որ կերթայ պապկէ քաղաք դիւս կըլի. խապար կերթայ Պամաթ չահի խամար.—Մ՛կ զօրպա փայլէվաճ էկեր ի քաղաք, իսկն Ռոստամի ցեղիցն ի։

Կասի.—Որ սկուն ի, գնացէք, բերէք տեսնամ։

Գնացին բերին, Գամաթ չահ տեսաւ.—Օ՜հ, ըսաց. խակն Ռօստամի ցեղից կըլի, ինոր թիկունքի լինք օխտը թիզ. ինոր ձեռաց համառութեն քընց մէկ գերան, ինոր մատներ կեօ եմ արմունկ։

Գամաթ չահ կասի ուր փայլեւանքերաց.- Մէ ճառապար խըքերէք յառէջ. տեսնանք, կանձայ խանի, թէ չէ։

Փայլեվանքեր կըյնեն յետեր, էսա տեղ, էնա տեղ չին զատանայ, կասի։—Ջանըմ, իչ գործ ունիք ընձի խետ. ընչի էք ընկե իմ յետեր։

Ասեցին.—գետեմ, ընչու ընկերենք քիւ խոեւ. ճառապար կայ. քցենք քիւ գէմը. որ խանիր, մեր ցեղից էս. որ չխանիր, Ռօստամի ցեղից էս, քե կը տանենք բռնատուն։

Կը բերեն, լաւ զնճիլփենչ կանեն, կայիմ կը կապեն, կասեն.
—Դէ, քեաշի, կասի։

Էն էլ թեւքեր չքացուի, զարկէ կոտրի. ոճ չյաղթէ։

Էնենց ձեռներ կապուկ տանեն քցեն բռնատուն Ջալի մօտ, ուր պապէն մօտ։

Գայն ի, գռնալ տանելու բացյան թեքի ինե, կասի.—Ամօթ չէ՞, զօրապա փայլեվան՝ էկեր էս. ես ծերացիր իմ, քի իչ ի՞յե. գիւ ահագին պապակիս փայլեվան։

—Ա՛յ պապա, կասի, ընձի լօխա մի դիր, մի մեղադրիր, ընձի խաբած. իմ գլխիւ գալած ճաղէ անեմ, որ դիւ իմանաս։

Իմ մէր Ռօստամի խարսն էր, Գամաթ չահ որ կտուեց Ռօստամի ցեղ. իմ մէր փախաւ, գնաց ծովու ափեն. էն տեղն իմ իլե. մարդ չեմ տեսե. էս օր քաղքի մէջ դիւս էլայ, իմ ձեռներ կապեցին, ձգեցին բռնատան մէջ։

Ջալ կըլի, Աստամբժու գլխօխ կը պագնի, կասի.—Այ որդի՛, դիւ որ կաս, իմ թոռն էս, ես քիւ պապն իմ։

Կմնայ մէ միջոց, էրկաւ միջոց բռնատան մէջ Ջալի մօտ։

Էդ Գամաթ չահին էլ մէ աղջիկ ունի ինչպէս Երեւանայ քաղաք՝ զատն ի ուր խօր մընէն։ Նամակ կը գրի ուր խօր խամար.—Գամաթ չահ, էդ բռնաւորն որ դիւ բռնիրէս. ընձի խամար օրողկէ, գեայ. ես ինու էրթուն խմեմ իմ աղբօր էրունի տեղ (Ասֆանտիյար էգ աղջկան աղբէրն ի)։

Գամաթ չահ կը խանի բռնատնից, չորս ձի կը լծի.—Տարէք, թալիմ արէք իմ աղջկան, ինչ կանի, թող անի։

Էն ժամանակ կերթան, կը խաանին գետի մօտ. կը նիղանան, ձիանք կը թունան։ Աստամբժին կը մնայ սէլի վրայ, արեգեական դէմ վառուի. իրենք կերթան գետի բերան, կը քընէն։

Թո Աստամբժին սէլի վրայ վառուի. տարողներն էլ քնէն. մենք դառնանք Դիւրօ վըէն։

Դիւրօն էլ ինչ ի արէ, մէկ խատ պալքեմ՝ չինէ, մէկ արշին ինոր բերնի լէնքն ի. պալքէն դնի ուր թևին, կերթայ. մարդ ընի, գեօղ ընի, բալճի, ճայի, բիրի զաղի մէջ գինքն ու մէրը կուտեն։ Էն մէկ օր էդ Դիւրօ աչք կինի մէկ սեութեն, կերթայ դղա էդ սեութենւ Կերթայ, կերթայ, կը մօտանայ, կը տեսնայ մէկ սէլ։ Կերթայ, կը մօտանայ սէլին, կը տեսնայ մէկ փայլեվան դրած կեօ սէլի վրայ, էլ էնենց զօրպա փայլեվան չկայ։ Խրա մօտանալու կը թքի ինև։

Էդ փայլեվան կասի.—Այ փայլեվան. դու ընչի՞ կը թքես. եավա՛ս. իմ գլխին գեալած ճալլ անեմ քե խամար, նորէն թքի։ Կասի.—Հալ էսենցն ի, իմ մէր եօթ ծովու մէջն ի. ես Աստամբժին էմ, ծնայ գնայի իմ խօր քաղաքը. ընձի խափեցըն. իմ ձեռներ ծնայ կապըցըն. հիմայ ճամբիլի ուր աղջկայ մօտը, ձը մորթի, իմ էլուն խմը։

Էն գեալս Դիւրօ կասի.—Վա՛յ, դու ոլ կաս, մէկ աղբօր տղայ ինք։

Դիւրօն կասի.—Համբերի, ես էրթամ մօ փայլեվանքեր, գեամ։

Կերթայ չայի ղուաղ մէկ մէկ ճանճախ կը զարկի գլխըներաց մէջ, չորսն էլ կսպանի։ Կուդայ, զնճիլ կը կտրի, կառնի Աստամբժուն, դուզ կերթայ մօր մօտ, էն իչ սարի մէջն ի։

Էն ժամանակ իչ կտանի մօր մօտ. մէր կըլի, դէմէն կը փախնի։

Փախնելու բաշտան Դիւրօն կասի.—Մէրի՛կ, ընչի կը փախնէս դէմէն, իմ խօրողբօր տղէն ի։

Էդ գեալս մէրն ի, կգեան, չատ մէմէկու կուրախանան։

Առաւօտ Դիւրօն կասի.—Աստամբժի՛, դու նստի դայ, ես էրթամ, մէրդ ատից խանեմ դուս։

Դիւրօն ի, կերթայ ածի մէջ, Աստամբժու մէր կը խանի, կը բիրի սարի մէջ մօ իւր մէր, կը մէտեղուին։

Մէ միջոց վրէն կընցնի, կասեն.—Մենք պտի էրթանք Պամաթ չահի վրէն կռիւ. մեր խօր բօլ խանինք։

Մէրեր կասեն.—Ձեր պապկե ինչքան որ ապրանք-մալ կայ, կեօ մօ Մըսըրայ լալատար ի։

Կըլեն վեր, կը ղանչեն Աստուած, որ էրթան Մըսըր, մօ լալատար։ ջխտով մէ տեղ կերթան։

Իչ որ Դիւրօ ձեռնի, մէկ ճանճախ, ինոր բերնի լէնք մէ արշին, իչ որ Աստամբժու ձեռնի. մէկ ղալամայ ի։ ինչպէս արև ուր ձեռափէտ։ Կըլեն վեր, կերթան, իչ որ մէկ ծաղկըներով, խոտով, ջրով, կանաչով տեղ։ Էդ տեղ կը նստէն, կուտեն, կը խմեն։ Կը տեսնան որ էդա նստած տեղ դևերաց տեղն ի. դևերն էլ իրեք աղբէր էն, նստած տեղն էլ էն պստիկ աղբօրն ի-սրուտակ դիւուն։ Կը տեսնան թոզ էլաւ իրա երկնուց։

Աստամբժին էսաց,—Դիւրօ́, մէ սա թօզ թօ բացուր՝ տեսնանք ի՞չ ի կուգիայ։

Աստամբժին տեսաւ թօզ բացուաւ, սըւտակ դև էկաւ, դալիւ բաշեան սկսեց կռիւ անել.—Ա՛յ փայլեվան, ասաց. խաւք ուր Թևով, օձ ուր պորտով չէր կարայ գեայ, ես կռիւ կուզէմ։

Էն տեղ ըռնեցին, կիւլաշ կպան, որ կիւլաշ կըպնելիւ ժամանակ Աստամբժին զդև խսկեց գետին. էն գախ որ կոխեց գետին, ցանակ թալեց, դևի վիզ կտռէր. դև ա՜խ քեաշեց.—Հէյ վա՛խ, ասաց։

Աստամբժին ասաց.—Դէ՛, էլի վեր, դիւ չամաչեցի՛ր մէ պուտ ջրունի աբդիլ ախ քեաշեցիր. էլի վեր, քեզի ազա արեցի։

Աստամբժուն դև ասաց.—Խօրհուրդմ կայ իմ սրտի մէջ, էն կատարէմ, իմ էրուն քեզ հալալ։

Ասաց.—Ցիւ սրտի խօրխուրդն ի՞չ ի, ընձի ասա։

Ասաց.—Ես Ռօստամի սըւտակ դևն էմ. Պամաթ չա՛հ որ Ռօստամ սպանեց, Ռօստամի թօլն խանէր, թօ դիւ ընձի սպանէր։

Որ դևն ըսենց ասաց, Աստամբժին ասաց.—Ես էլ Ռօստամի թոռն էմ։

Էն տև չատ ուրախ էլան։

Էլան վեր, քշեցին, գնացին։ Շատ-քիչ գնացին, էլմ ջրով, կանանչով, ծաղկով խոտով պատահան։

Աստամբժին ասաց.—Արև, նստենք էս տեղ, էսօր տէր կայ, թող գեայ. իմանանք ի՞չ մարդ ի։

Մէկ է՛լ տեսան կարմիր դև էկաւ. դալիւ բաշեան.—Ա՞յ խոզածին. էսա իմ տեղն ի, մէկէր անտէր ի, դիւ իկէր, նստեր իք վրէն։

Էն գախ կարմիր դևի խետ կիւլաշ կպան. Աստամբժին զկարմիր դև թալեց գետին. որ կոխեց գետին, դանակ քեաշեց, պտի սպանէր. կարմիր դև ախ քեաշեց։

Որ ախ քեաշեց, Աստամբժին ասաց.—Դիւ չամաչեցի՛ր պուտմ ջրունի աբով ախ քեաշեցիր. իլի վեր, քե ազա արի։

Ասաց.—Խօրխուրդ ունեմ իմ սրտի մէջ, մրազ ունեմ. իմ մրազ կատարէր, դիւ ընձի սպանէր։

Ասաց.—Կարմի՛ր դև, քիւ մրազ ասա։

—Ես Ռօստամի կարմիր դևն իմ. ես էրթէր, Ռօստամի թօլ Պամաթ չա՛հի մօտէն առնէր, թօ ընձի սպանէր։

Դէ՛, էլի՛, գնա՛, ասաց, ես Ռօստամի թոռն էմ, մինչև քսան աւուր գեաս, ղոշուն անինք, էրթանք Պամաթ չա՛հի վրէն։

Կարմիր դև գնաց խըտ ուր հալին, զինք, Դիւրօն ջլեով էլան, գնացին։

Շատ քիչ գնացին, էլմ ծաղկով, ջրով, խոտով տեղ ըւաշ էկան, գնացին, նստան վրէն։

Ատամրժին ասաց.—Արէ, Նստենք ըս տե, հալպար խոր ակր կայ. գեայ, տխնանք։

Նստելիւ բաշտան տխան դեերայ ջոչ աղբէր. սև դե էկաւ, գեօն գեչացե, աչքերաց էրուն կը թափի։

Էն գեախ Դիւրօ չատ երկուղ արաւ. չատ վախեցաւ մօտէն։

Ատամրժին ասաց.—Դիւրó, մը վախեցի։

Ատամրժին, սև դե կպան յիրար տուաւտուն ազօթարան դէլ չէր բացուև. ջլսով կողան յիրար, էնենց գետին կը ճղճղուի, ինոնց ոտաց դէմը ինչխ փուկի թալին, ճղճղին։ Աստուածութեն էնենց ղուվար խոռ Ատամրժուն. Ատամրժին սև դե կոխեց գետին. կոխելիւ ժամանակ վիզ պտի կոտէր, սև դե մէ ախ քեաշեց։

—Իլի վեր, ասաց. մէկ գգէլ էրունի սրով ախ քեաշեցիր. դիւ չես ամաչեր։

—Ա՛յ փայլեվան, ասաց. ես էրունի խամար ախ չի քեաշեցի. մենք իրեք աղբէր էնք, իրիքն էլ Ռօստամի դեերն էնք, մենք իրեքն էլ ահտ արուկ ինք Ռօստամի խամար, Պամաթ չա՜ն զՌօստամ սպանեց, գնաց կորաւ. մենք ինոր քօլ խանէնք, յետոյ դիւ ի՞չ կանէր, անէր։

—Որ էնենց ի, ես Ռօստամի թոռ Ատամրժին էմ, գնա՛, մինչեւ քան օր ժամանակ էմ տուև, քան աւուր վրէն դիւ իրեք դեն էլ դէքը։

Էն իլաւ. գնաց. էնոնք էլ ջլսով գնացին։

Գնացին չատ քիչ, գնացին Մըրրայ քաղաք։

Գնացին, սալրխով, սուլուխով լալասարի տունը գնան, խարցըցին. մէմէկու յայտնի էլան թի.—Մենք Ռօստամի թոռներն էնք. թի՝ իսն էլ լալասարն եմ։

Էլան վեր, էն ան խօսքերն մէկ արեցին-պայման արին.—Էրթանք մէ տեղ. մեռնինք մէ տեղ. էրթանք Պամաթ չա՜նի վրէն։

Լալասար ասաց.—Մէ քապուր ասկեար ընձի-եմ պարտք որ ես բերեմ, էրթանք Պամաթ չա՜նի վրէն։

Էլան վեր, էն քապուր ասկեար, լալասար. Ատամրժին, Դիւրօն մէկ տեղ էկան. խտաւան գեերաց բլանքեր, էզ իրեք դեերաց խետ մէկ տեղ ղօշուն արեցին, էկան։

Շատ-քիչ էկան, էկան, Պամաթ չա՜նի քաղքին մօտացան։

Ատամրժին ինոնց խօսող էր-ինոնց մեծը. ասաց.—Էս քաղքին օխտը խատ դարկեախ ունէր. սև դե՛, էս մէկը քեզի. մէկն էլ խոռ կարմիր դեին, մէյն էլ խոռ սըւտակ դեին. մէյն էլ խոռ լալասարին, մէյն էլ խոռ լալասարի քապուր ասկրին. մէյն էլ խոռ Դիւրօյին, մէյն էլ առեց իւր։

Ասաց.—Էս օխտը դարկեախն էլ բռնէք, բան ի, չէ Գամաթ չահ դարկեախներաց փախնի։

Ճամպ գնաց Գամաթ չահի խամար, ասին.—Աստուած քեօ տուն աւըրի, ի՞չ կանես. Ռօստամի թոռներ օխտը դարկեախներն էլ քեզ վրայ բռնած էն։

Ասաց.—Ինչխ անեմ, ի՞նչխ չանեմ։

Ինու աղջիկն էլաւ, տղայ մարդու դըլլըխ խագեաւ. գնաց կռիւ անել, մէկ հատ էլ դուլքի դարման լցեց, գրեց ուր միջաց տուջե. գնաց, խասաւ մօ Ատամբժին, ասաց.—Ա՛յ փայլեվան, առ էսա դուլքին, խոտըռամ, որ գիւ կռնաս եմ դըրալի յէոջև քե բռնես։

Ատամբժին դուլքին առեց, խոտխըտաց. որ խոտխըտալու ժամանակ խեղքը գլխուց գնաց, էն գեախ առեց. Ատամբժուն փախցուց, տարաւ. էննեց մեռուկ տարաւ, գնաց, էդիր օդի մէջ, դուռ վրէն չինեց։

Էն քաղքի մէջ էլ մէկ կնիկ կայ, Ռօստամի ցեղերացի ի, էդ կնկայ անուն Քեաչտաստավանուկ ի. էդ Քեաչտաստավանուկ կըլի վեր, ի՞չ կանի. կըլի վեր, քեանիմ տղայ մղայ կառնի, կերթայ, կերթայ Ատամբժու էղած օդի վրէն, կը կանչի.—Գամաթ չահի աղջիկ, գիւռ բաց, ես գեամ. մէկ կտոր տու էնու էրնից, ես խմեմ։

Աղջիկ կասի.—Արի՛, նստի էսա տեղ, ես էրթամ. մէկէլ աղբէր—Դիւրօն էլ բերեմ. մէկլին դիւ խմի, մէկին ես խմեմ։

Էն գեախ Քեաչտաստավանուկ կը մնայ էն տեղ, էն կելի, կերթայ կռիւ էնելիւ։

Էրթալիւ բացեան էդ Քեաչտաստավանուկ ջիւր կը զարկի Ատամբժու երեսները. խեյք կուգեայ գլեօխը, կասի.—Ատամբժէ՛. էլի՛, դնա. էն իչ որ կուգեայ, կռիւ կանի, էն աղջիկ ի, էն դեղ կուտայ. կը ընիք, ամօթ չի ձի զեօրայ։

Ատամբժու խելք կուգեայ գլեօխ. կըլի վազեվազ կերթայ. կերթայ, կը տեսնայ էն աղջիկ, Դիւրօն կանած մէմէկու դէմ, խաղար կուտան։

Ատամբժին կերթայ, դոր Դիւրօյից կառնի. առնելու բացեան էդ աղջիկ էլմ դուլքին կուտայ Ատամբժուն.—Ա՛ռ, փայլեվան, խոտխըտայ, որ յէռջև եմ դըրալին բռնես քե։

Էն ժամանակ ղուլթին կառնի, առնելու բացեան էլ չխոտխըտաց. կը ղանի ուր միջաց յէռջև։

Աղջկան կասի.—Դէ, քիւ դըրալըն զա՛րկ, ես եմ դըրալն յէռջև կուտամ եմ դուշմընին։

Էն ժամանակ աղջիկ ի՛չ դըրալ պտի զարկի, ի՛չ որ մարդ թօզ թողթըփի։

Դոր էկաւ Ատամբժուն, իչ որ Ատամբժին զարկեց. աղջիկ

ձիուց բիրեց տակ՝ էն գեախ դանակ թալեց, միվ կտրեր, աղջիկ ուր ծըծվեր չանց կուտայ։

Էն գեախ Աստամբժին կասի.—Քու խօր օճխի մէջ մարդ չկէր, քու խօր քաղաք ֆամբախ էր, դու կուգեաս կռիւ։

Էն ժամանակ ճապ կերթայ Պամաթ չաՙի խամար. Պամաթ չաՙ կըլլի, կը փախնի. փախնելու բաշտան կերթայ, ծովու ղաաս կանի՝ որ գինք քցի ծովը։

Աստամբժին կընի յետև.—Հա էսա տեղ զանի, սպանի, հա էնա տեղ զանի, սպանի. կերթայ, խասնի ծովու բիրան. որ կը խասնի ծովու բիրան. ղուլ (ջրչուն) ծովուց կըլլի դիւս. խըտ ընելուն դիւս, զՊամաթ չաՙ կը ղլի. ղլելու ժամանակ Աստամբժին թրով կը զարկի, ղուլ կսպանի։

Էն գեախ Աստամբժին ուր անուն կուտայ.

Աֆարիմ, կասի, Աստամբժու խամար։

Աստամբժի ղուլ սպանեց Պամաթ չաՙի խամար։

Պամաթ չաՙ սպանեց Ռօստամի տեղ։

Աֆարիմ Աստամբժու խամար։

Էն ժամանակ Աստամբժին դառնայ, կուգեայ մօ դեւր, մօ լալէն, մօ Դիւրօն՝ կինին քաղքի մէջ, ինչ տար Պամաթ չաՙի ցեղից մարդ կայ, պիրուն կսպանեն։

Կը դառնան, կերթան, ինոնց մէրէր ւն սարից կը բիրեն, կուգեան քաղքի մէջ։

Կերթան, ինոնց Պապ-Զալ խորից կը խանեն, կը բիրեն։

Էն ժամանակ ւն ջուխտ էլ կը փայլին.

Օխտը օր, օխտը գշեր խարսնիս կանեն։

Դեւրաց կասի.—Դնացէք դու ձեր խող ջրու վրայ։

Ինոնք խասան ուրանց մրազ, դուքն էլ ձեր։



# Ց

# ԸՌՕՍՏԱՄԻ ՋԱԼ



**Քաջբերունեաց Արծկէի Առընձկոյս գիւղի բարբառով ***

## Հայ Քրդական վէպ.

Վախտով մէկ փայլէվան կ'եղի Սալահանայ քաղքին մէջ։ Թագաւորին փէյլիվնութեն կենայ, ինչ դաս, ինչ իրաւունք էղի կուտայ էդ փէյլըվընին, էն փէյլիվան չատ ղոչախ կեղի։

Էդ փէյլըվընի անուն Զալ կեղի, տաս-քառան տարի Թագաւորի առէջ փէյլիվանութին կենայ։ Աստու խրամանքով էդ փէյլըվնին տղէմ' կեղի, էդ տղին անուն կը դնեն Ըռօստամ։

Իրեք, չորս տարի արանք կընցնի, էդ տղէն կը մեծանայ, դնայ վարժատուն, էրկու-իրեք տարի ուր խամար կը կարթայ։ Աւուր մէկին էդ տղէն վարժատունէն կելի, կուգեայ տուն որ խաց ուտայ, կուգեայ տեսի փողնի մէջ իրեք-չորս տղայ ուր ունքուֆիկն դըլուլ կը խաղան, էդ Ըռօստամ կը վերցու, տղէկներու գլուլ կը Թալայ. կը Թալայ կուրխայ։ Էդ տղէկներ չգիտեն Թէ էդ Ըռօստամն ա, բիրտէնբիր կասեն.—Քու մէր . . . դու յորին մեր դըլուլ Թալեցիր, կուրխեցիր։

Ըռօստամ կասայ, տղա, չանորթի, ես Ըռօստամն էղիմ, դու իմ ճակտի մէջ ընձի քուֆր տաս։ Ըռօստամ կը վերցնէ էդ քուֆր տուող տղէն, կը զանի ունթ, կը տանի պաղչի մէջ ձեռը կը Թալէ ծառ, զգնայ ձեռաց, բիրայ, տղի մէկ ոտ չըրտով կը կապայ էդ

---

* Ասած է Դաւօ մուխսի Յարութիւնեան, լսած է փոքր ժամանակին մի հայէ, սակայն ընդհանրապէս հայեր օրախներու մէջ կը պատմեն, որպէս եւ բազմաթիւ քրդական վէպեր։ Թէեւ քրդական վէպ է, քրդեր այնչափ չեն գիտեր, այլ ընդհանրապէս հայեր եւ քաւրդ քնչուներն եւս կը պատմեն։

ծառ, ձեռ կը Թալայ մէկէլ ծառն էլ կեռայ, բերայ. էն մէկէլ ոտն էլ չըռով կը կապայ մէկէլ ծառը։

Էդ էրկու ծառներն որ կը Թողայ, էդ ծառի զոպիճ տղէն կը կիսուի օրքայլըխէն, կէս կը մնայ էն ծառին, կէս կը մնայ էն ծառին։ Ըռօստամ Թողայ, կուգեայ տուն, խաց կուտայ։

Էրկու իրեք օր էդ տղի խէր կընկի խարց ու փորձ, վինից կը խարցուցայ, տղի սալղ չըն իտայ. տղի խէր դալալ կուտայ կանչել, կառայ.—Որն որ իմ տղին սաղ տուեց, ինչ որ ուզայ ախչըրքի էրես, կուտամ։ Ամենքը ուրին ընկհաւ պտոտեց։

Մարթու մէկ գնաց, տեսաւ որ պաղչիմ մէջ ջանղկիմ կէս մէկ ծառէն կախուկ ա, կէս մէկ ծառէն կախուկ ա, ասաց.—Կեղի-չեղի էդ մարթու տղէն էս ա։

Էլաւ, գնաց էդ տղի խօրն ասաց.—Վ․այա Ֆլան մարթու պաղչի մէջ կէս էն ծառէն, կէս էն ծառէն կախած ա, կօ չի գետեմ. քո տղէն ա, չէ՞, չէ։

Մարթն էլաւ, առաւ չորս խինգ մարթ որ պտի տեսնի. էկաւ տեսաւ ուր տղէն էր, հուքմարին ասաց.—Սա իմ տղէն էս Թաղից կուզեմ, տեսնամ որն ա էսքան չարչարանքով իմ տղէն սպաններ։

Էդ տղի ընկերտիք ղլուլ կը խաղէն, լսեցին էդոր ասած խսէն, ասին.—Ադմ՛, քո տղէն ծըն ա էդքան չարչարանքով սպաներ, հլխի եախեն մի բռներ, ճանց Ըռօստամից մարդ չսպանէր։

—Ցղմ՛, ասաց. դու տեսար Ըռօստամն ա սպանէր։

—Խա, ասաց, տեսայ։ Ասաց,—Իմա՛լ տեսար։

Ասաց.—Մենք ղըլուլ կը խաղէնք էսա տեղ, ես, քու տղէն, ուրիշ տղէք. Ըռօստամ վարժատնէն էկաւ, վերցուց մեր ղըլուլ Թալեց, մեք էլ չի գիտենք Թէ Ըռօստամն էր, քո տղէն էնոր ֆիրտեց, էն ա Ըռօստամ չԹողեց որ բերնէն էլլէր, ասաց. «ես Ըռօստամն էղիմ, դու մըջ իմ ճակտին ընձի ֆիրտես». վերցեց, զարկեց ուր ունԹ, մենք փախանք։

Էդ մարԹ չկանայ Ըռօստամին բան ասա, էլաւ գնաց ուր տուն. էլ աշկեարայ չենեց ուր տղի սպանել, էլաւ, ձեռաց տկով մազպաթա չքեց, չաբաԹմ՝ էրկու էդմալ էդ մարԹը ընկեաւ մըջ քաղքին. էնոր դանմիր էնեց, էնոր դանմիր էնեց.—Թէ էսօր իմ տղէն սպաներ վաղը ձիր տղէն կսպանայ, ճէ սուր կը բանի վրէն, ճէ Թուր, էսմլա էղի, մենք չենք կանայ դիմանանք։

—Ապա էդոր ճա՛րն ինչ ա, խարցուցին էդ մարԹիք։

—Ճա՛րն էն ա, մէկ մազպաթա տանք Թաքաւորին, ճան մեզնից ձեռ քաշայ, ճան քնաուց ձեռ քաշայ։

Էլան ֆօմով, պիրլըկով առան էդ մազպաթան գնացին, էն Թուղթ

տարան տուին Թագաւորին, Թագաւոր Թուղթ առաւ, կարթաց, ըսաց.—Իմձի կասէք, ձեր ասել ինչ ա։

Մեր աած էն ա, քու փեհլըվանի մէկ հաղ կեսամ թողեր եա, եղե չոր գլուխ ձի, էլ չլախուլի. մենք չենք կանայ գիմանանք, եան էնոր մօտէն ձեռ կը քաշես, եան մեր մօտէն. մենք կերթանք ուրիշ Թագաւորի խող։

Ըսաց.—Էնի մէկ մարթ ա, դուք խազար-խազար մարթ էք, ես ձեզնից ձեռ չիմ քաշեմ. դուք գնացէք, էս էն տղէն կը համբխեմ սուրկուն, էգ մարթիք էլան, էկան ուրանց տներ։

Թագաւոր Զալին ղանչեց, ըսաց.—Զա՛լ, էս ղնդար քեզի ամակ էմ տուեր իմ ձեռ չըռնէր ես քու տղին սպանեմ, քո տղէն համբխայ ուրիշ երկրներ, թո էրթայ ուրին ապրուի, դո՛ր էրթայ քու տղէն կապրուի։

Զալն ըսաց.—Թագաւոր սաղ մնայ, կերթամ, կը համբխեմ։

Սուգեայ տուն, ուր կնիկ տուն չիղի. կը տեսի ուր տղէն վարժառընէն կուգեայ։ Խաց կուտայ, կը պրծնի։ Կասայ.—Տղա՛, էլ պտի չմնաս էս քաղքի մէջ, Թագաւոր քե սուրկուն ա արե։

Ափո՛, ըսաց. ես էլ չկայնիմ, զաթի կերթամ, զաթի էն գախ որ իմ հերս կեղլի, իմ աչքեր կը մթնայ, սար իմ աչքին լուս կիրեայ։

Էլաւ տղին խարճլիս տուեց, համբխու դրեց. տղէն գնաց։

Տղէն քիչմ տեղ գնաց, դարձաւ ըսաց.—Նա՛, ես էս դարտակ ու ակլող դո՛ր կերթամ, իմ խօր էրկու Թուր կայ, չուր մկայ տուն խաց կուտէի, մկայ պտի էրթամ գողութենով, մարդասպանութենով պտի ապրուիմ, էրթամ մէկ Թուր առնեմ։

Դարձաւ, խօր ըսաց.—Ափո՛, քու էրկու Թրէն մէկ տո՛ւր ընձի, ես պտի էրթամ ջարտութենով ապրիմ, իմ տուն դան չէ։

Որդի՛. ըսաց. գնա՛, էրկու Թրէն ո՛ր մեկ կուզիս, էն տար։

Թուր Թալից էկաւ, խօր ձեռ պաքեց։

—Որդի՛, ըսաց. քե պախեցի, խասուցի, քո բար չկերայ։

—Ափո՛, ըսաց. ընչի ընձի կանիծես, ընձի օրհնայ։

—«Որդի՛, ըսաց. Աստուած քե յիմտաց էղի, քո Թալած Թուր կտուր էղի, քո Թալած Թրի դէմ մարդ չդիմանայ».

Տղէն էր ղանչեց ուր Աստուած, ընկեաւ ուր համբախ։

—Աստուած, ըսաց. դու ընձի ամօթալից չենէս, դուշմընի յառէջ սեւտակ էրես պախես։

Տղէն էր, կէս սհաթի չափ գնաց, չգնաց, մէրն էկաւ տուն. հարցուց Զալի մօտէն.—Դոր ա Ըռօստամ, յորի չեկեր ա խաց կերեր ա։ Խօր սիրտ դժարցաւ, արցունք պրծաւ, գըլգըլալէն աչքերուց էկաւ, ըսաց.—Քո աչքեր լոռնայ. Թագաւոր հիմր էնեց, տղէն համբխեցինք սուրկուն։

Ասաց.—Մարթ, ես կերթամ. իմ տղին կը խասիմ, եա էմ, էն մէկ տղէն. իմ տղէն մէկ սաճար չտեսիմ, կը պատռիմ, դուՆի մայիՆ բէՑա չկայ, մալ օ կայ, ձեռաց կեղտ ա, տղէն օ կայ չաքար ա. մէկ հաղ չաքար ուտես. բերանդ քաղցրնայ, մէկէլ հաղ չուտես, բերանդ ֆնչ տեսակ կեղի. տղէն օր կայ, անթառան ծաղիկ ա, իմ յառէջ պտի էղի օր ես խոտըռտամ։

Մէր էլաւ, խալալութեն առաւ իրկայ մօտէն, ընկաւ ճամբախ, գնաց, գնաց տղին խասաւ։ Տղէն իշկեց էտեանց, տեսաւ. ա՜հա, ուր մէրն ա կուգեայ: Նստաւ, մէրն գնաց խասաւ։

Տղէն վերցուց.—Մարէ, յորի՞ն էկար։

—Որդի՛, ասաց. ապա ես քե պախեր էմ, ջոջըցուցեր էմ, քե չի տեսիմ, կը պատռիմ, ես չգեամ. ո՞ն գեայ։

—Մարէ՛, ասաց, դու քո փափակ առար, եա դարձի, ես կերթամ խըտ իմ ճամբխուն, քո ծծի կաթ ընձի խալալ էնայ, էլ Ցայ-ցայ չէնայ, դարձի, գնա՛, իմ խօր անէծք մ' առնէ, ծնրացեր ա, ուրին չկարայ չախի, իմալ պտի էնայ։

Մէր վերուց.—Որդի, ասաց. ես «իմ վար վալեցի, վորոց թալեցի.» ես պտի դեամ խըտ քեզի, անկարելի գործ ա։

—Մարէ՛, ասաց. դարձի՛, խում կաթ ծծողին բաղթ չկայ, մի գալ, էղիր իմ գլխուն բալայ, կնկեան խետ էրթըցող դասի լռաւս կուդեայ։ Չարայ չէղաւ. մէրն ընկեաւ խետ, գնաց։

Օրմ' էրկու, իրեք օր գեացին, իսկի ՇեՆլիկ չընկեան. մէկ օր էլ դեացին օր սարիմ տկէն բալա՞կ մուխմ կելլի յերկնուց էրեա։

Ասաց.—Մարէ, ոտ վերցու (արագ քայլէ) էս օր մեր ղօՆախ էղ տեղ պտի էղի։

Գեացին, տեսան օ գետնի տկէն մուխ կելլի։

Ասաց.—Մարէ, կայնի դաղ, էս պատռեմ, տեսիմ էսոր դուռբան։

Գնաց ներքին դէՆ, տեսաւ ջաղչի ջոջ քար դրած դէմ, կօդուռն էլ էդ ա. քար գլորեց դէն, մտաւ մըջ մաղարին. տեսաւ Աստուածութեն ինչ ստեղծել ա, մըջ էդ մաղարին կայ, մէկ էլ իշկեց եօթ կանթեՆ բէարօշ օր օճխին դնուկ ա, կեփի։

Դարձաւ. էկաւ, մօրն ասաց.—Մարէ, կեօ դուռ գտայ՝ էրթանք, դուրմ նստենք, չում էս տան տէր գեայ. սբար էղինք։

Գեացին ներս, տղէն նստաւ օճախի կուշտ, մէրն՝ էնուր տեղ կուշտ ընկաւ, նստաւ էն մթան դեհէն, տղէն ասաց.—Ես իմ ուժ պտի փորձեմ էս բէարօշի վրէն, որ դրած ա օճխի վրէն։

Տղէն մէկ ձեռք զարկեց բէարօշի ոոք վերցեց, սարբմիշ հինէ։

Մէր վերցէց.—Լա օ՛, քու ձեռ էրեցաւ, դի՞ր գետին։

—Մարէ՛, ասաց. չում մկայ ես իմ ուժ ըսկի չփորձիմ, մկայ տի փորձեմ, ես գետեմ իրեք էպքան էլ էղի, ես չգիտեմ թէ իմ ձեռաց վրէն բան կայ։

Տղէն բէճարօճ դնեց վըր օճխին Նաստաւ ուրին ճղարա չըքեց. Ճաֆաս մը առաւ, տեսաւ որ քառասուն խստ դև մէկ մէկ լըցուան տուն, զոզին տեսան։—Եա՛, խողածին ասաց, խաւքն ուր թեւով, օձն ուր պորտով ըո տեղըանք չկանէր գէր, դու իմա՛լ էս էկերես։ Ասաց.—Ես իմ ջօջի խօսք չլսեցի, Աստուած ընձնէ առաւ, էկայ, ընկայ էս տեղ։

Էն մէկ դև իչկեց, զկնիկ մէլ էդա տեղ Նատուկ ա. էն մէկէլ դևեր ասեցին.—Աղէկ, էս տղէն էս կնիկ բերեր մեզի կնիկ, էլ ընչէ պտի տանք էս տղէն տանի։

Տղէն ասաց.—Թէ դուք ղոչախ էք, ձեր ղոչախութեն խըտ ընձի փորձէք, էս տեղ գալացող կնիկ չտար ձզիկ, ձեր աչք չիտակ բացէք, ձեր ոտ դնէք։

Տղէն տեսաւ որ անկեանձ չեննեն, ամեկը զմէր կը քաշայ ուրին, ղանչէց ուր Աստուած, լաց գինին. Տէր կենդանին, քեաշեց ուր թուր, ասաց.—Տէ՛ր Աստուած, ընձի ամօթալից չեննես էս մարթեկաց մօտէն. Թաւ. աչը զարկեց. ձախը զարկեց, քու էնեց ըոըչտայ։ Էդ տեղ էլաւ Ըռօստամ դաան առէջ քեառասուն կեազանոց խօր մի փորեց, բերեց էդ ջանիկներ սաղ լցեց մըջ էդ խորին. բերեց, ջացցիմ քար վերցեց դնեց էդ խորի բերան. մօր քամբխեց.—Ես կերթամ Ճէճիr. ժեխ. մոշի կաւիլես, լցես էդ քարի ծկէն էդ խորի մէջ, խոտ չտայ մաղարին։

Դևէքներուն իրեք օտնէն ձիմ կայ, խեծաւ ճաապէ սի փե' ճամ չալ, ճամ բաւ, գնաց։

Տարիմ' էրկու էդ տեղ Ճէճիրութեն էնեց, մնաց դադ.

Աւուր մէկին տղէն որ կերթայ Ճէճիրութեն, մէր տախտ, տուն կաւլայ, տանի, լցայ մըջ էդ խորին, խորից տեսի բարակ ձէնմ կուգեայ։ Կասայ.—Դու ո՛ն էս, մտերէս մըջ խորին։ Կասայ.—Բու աչքեր քօռնայ, չէ, ես իմ մըչ խորին։

Կասայ.—Գա իմա՞լ էնեմ ևս խըտ քեզի։

Կասայ.—Դու արի՛, խօսք տու ընձի, ես էդոր հնար կենեմ.

Կասայ.—Իմա՞լ խօսք տամ քեզի։

Կասայ.—Դու ընձի կնիկ, ևս քզի իրիկ. տղէն մօր չպախայ. էրիկ կնկան կը պախայ, քու տղէն ծռւուն մէկնա, կերթայ, դաշտ կը պտտայ, ինչ գիտէ քու ճալ ինչ ա։

Կասայ.—Իմ տղէն որ տեսաւ, ճամ ձիկ կսպանայ, ճամ քզիկ. իմա՞լ խօսք տամ ես։

Էդ տեղ կէս տարի ղաշար ցերեկ կուպեայ մըտ կնիկ, գիշեր կերթայ մըջ խորին։

Կնիկ տեսաւ կը մնայ ճժով, կերթայ գեղուն կառայ։

—Գեղես մացի ճժով, իմալ էնեմ, իմ տղէն տեսաւ, ընձի կսպանայ։

Ասաց.—Գնա՛, տեղ թալ, պարկի. քե դիր խիւանդութեն, օր քու տղէն Ճէճիրէց կուգեայ, կասայ.—Մարէ՛, քե ինչ եղեր ա, դու սասա. ես խիւանդ էմ, կը մեռնիմ, քզնէ կը խարցուցայ. էրթամ ինչ դեղ բերեմ քե, դու ասա թէ Սև սար կայ, էն տեղ անմախութենի ջուր կայ, խնձոր կայ. ինչ օր Աստուածութեն տեղծեր ա էն տեղ կայ. օ գնաց էն տեղ, մեր եօթ գլխէն դև էն տեղն ա, քու տղէն կսպանեայ. մենք կը մնանք էս տեղ, ճէյֆ կենենք։ Տղէն էկաւ տուն, տեսաւ ուր մէր պարկե, ծանտր կը տքայ, կասայ,—Մարէ՛, քեզ ինչ ա էղե։ Կասայ,—Լա՛ օ, ջրփոխուերէմ, ուռուցւողերէմ, կը մեռնիմ։

—Մարէ՛, ասաց. քե ինչ դեղ պէտք ա, դու ասա, ես բերեմ։

Կասայ.—Բա՛ն ընձի չի սաղցուցայ, ընձի օր սաղցուցայ Սև սար կայ, էնտեղ անմախութենի ջուր, խնձոր կայ. բերես, կը սաղնամ։

Թարի լուս բացուի հազրներուն հաւդեցիւ միլերին (եօթանասուն երկու ազգին), մէր էնոնց. խեծաւ ուր ձին, թուր թալեց թև, դանչեց ուր Աստուած, ընկեաւ ճանբախ. շատ գնաց, քիչ գնաց, Աստուած գիտայ. մէկ գեղիմ բուլաշ էկաւ, չխասաւ էգ սար։ Ձիու կեամ թալից ձիու վիզ, ասաց.—Ձին վին դուռ գնաց, կայնաւ, էն տեղ ղօնախ կեղիմ գիշեր. լուսուն կելիմ, կերթամ։ Աստուծոյ խրամանքով ձին գնաց կայնաւ խալիւորեմ դուռ. տղայ չկայ էգոր, եօթ խատ խուրնիկ խրեղէն աղջիկ կայ էգոր։ Աղջիկներ էլան դուռ, տեսան օր ձիաւոր դուռ կայնուկ ա։ Ձիաւոր խարցուց.—Աղջիկներ, ասաց. էս օր գշեր ընձի ղօնախ կը պախէք։

Ասին.—Կայնի դազ, մղի ջոջ կայ, խարցուցենք, կուգեանք, քեզի ջուաբ կուտանք։ Աղջիկներ գեացին մըտ խէր, ասին,—Մեր դուռ ղօնախ էկերա։

Խէրն ասաց.—Լա՛ օ, ղօնախ օր կայ Աստուծոյ ղօնախն ա, թօղ գեայ։

Մարթու ձին քեաշին, մարթ գնաց յօղէն, թաղիս, եաքախ բերին։

Մնաց իրիկուան դեախ. էգ տան տէր ասաց.—Քու անուն ինչ ա։

Ասաց.—Իմ անուն Ըռօստամ ա։

Ասաց.—Դու վին տղէն էս։ Ասաց. Զալի տղէն էմ։

Ասաց.—Սօրմաղ այիպ օլմասն, (հարցնել ամօթ չը լինի). խէր էղի, յո՞ւստ կուգեաս, դո՞ւր կերթաս։

Ասաց.—Կերթամ Սև սար, անմախութենի բան կայ, բերեմ իմ մոր։

Էխտիյար խմաստուն էր, գլուխ տարաւ, բերեց, ասաց.

—Տղա՛, բանըմ ասեմ, չէղի ըռըքէս։

Ասաց.—Ընչի ըռըքիմ, ախչըքի գործ ա։

Ասաց.—Տես, իմ աղջկայ որն սիրուն ա, տամ քե, իմ մալ խզայ էնեմ վըր քե, նստի, կեր, չում յօր մեռնելուն. արի, մէրթար էն տեղ, կսպանուխս, էն տեղ էրթըցող սաղ չ'դառնայ։

Ասաց.—Զում եռ իմ մուրազը չկատարեմ, կարգուելու անուն եռ իմ վրայ չի բերեմ։

Բարի լուս բացուի վըր ձեզի. լուս բացուաւ, էլաւ ընկաւ ճամբախ։

Գնաց, չում կէս օրին խասաւ Սև սար։

Գնաց, տեսաւ որ կարմիր բաօաՆ քաշուկ ա էգու չորս քոլոր, բիթուն խնի գլուխ ու խնի ալուն։

Գնաց, ձին կապեց ղարկեախ, զարկեց, ղարկեախ կոտրեց, մտաւ մըջ բաղին, կերաւ, խմեց, փարչըմ ջուր լցեց, դնեց մըջ խուրճինին. մէ բայն էլ եմիշ լցեց. բերեց, կապեց ձիու բարկ։

Ասաց.—Շատ անուշ ա էսա բաղ. քէչմըն էլ պտի պտտեմ։

Դարձաւ բաղիցը էկաւ օ կեամ զանի ձիու գլուխ, խեծի. տեսաւ եօթ գլխէն դև գեօրզ վըր թեին էն տախէն էկաւ։ Սա՛, խաղածին, ասաց. դու ըսկի իմ անուն չի լսեր էս. դու ղարկեախ կոտրերէս, մտերէս ներս։

Ասաց.—Ես քու անուն լսեր էմ, դուց էկայ, դու ինչ որ լսեմ՝ իմ աչից էրևաս, դու մարթ յոլին կեղիս, «զատանց էլի աչքն էս խանէ, մօտանց տիրոջ.» «էս օր եաՆ իմ մէր պտի լայ, եաՆ քու մէր»։

Դեն ասաց.—Որ դու ղօչախ էս, մէկ դըրպմ զարկ ընձի, տեսինք դու ճմալ մալըղմ էս որ քզի կը գովաս։

Ասաց.—Դև՛, որ ես իմ դըրպ զանիմ, դու սաղ չես մնա. տուլին դու զար։

Դեն ասաց.—Ըռօստամ, դէմ տուր, իմ գուրզ էկաւ։

Ըռօստամ ասաց.—Քու գուրզ կը լափի ճժերու քօփ, որ կըքա-քօփ խաղան։

Դև գուրզ զանեց, Ըռօստամ ինչ օր ճնճղկուն, գուրզ բռնեց։

Ասաց.—Դև՛, ես էրախայ էմ, ընձի խետ խանաք կենես դու. տղա մարթու դըրպ զարկ օր մարթու ջկըրից բռնայ։

Ասաց.—Դև՛, դօրն էկաւ ընձի, դայադ տուր, էկաւ դըրպ։

Ասաց ու զարկեց, յէմալ զանեց օր ջաՆդըրկի կէս գնաց, տեղա տեղ մնաց կայնուկ։ Էդ տեղ թուրը առաւ, պըծաւ վըր դիւուն, էնեց բռըցայ, փրթեց. թափեց ցած։

Էկաւ դշերը էդ եխտիյար մարթու տուն էլման ղօնախ էղաւ.

Եխտ՛յար էլման ասաց.—Ըռօստամ, արի՛, իմ աղջիկներէն մէկ առ, իմ մալ իպա էնեմ վըր քե. օրմ կը վնասուիս, մեղքիս դու, ինչ օր էնեց, չարա չիղաւ խըտ Ըռօստամի Զալին. Էտ իխդյար իմաստունէր, աղչիկներուն ասաց.—Խուրջին բացէք, ջուրն էլ եմիշն էլ փոխէք, պայ չէնէք, թը մնայ։

Փոխեցին, բարի լուս բացուաւ. էգի ընկաւ ճանբախ։

Գեն ու էգոր մէր կայնած էն տանիս. տեսան որ բարմ՛կ, թող մը կելլի ճամբխու խետ, մէր վերցուց.—Ըռօստամ եկաւ. հեմ ընձի կապանայ, հեմ քզիկ։

—Բու տուն ուլրի, ասաց. Ըռօստամ էննեց տեղ մէնք ճամբխե որ սկի՛ չգիայ, դու էդ ի՛նչ ա կասես։

Ելաւ մօտըցաւ, տեսան օր Ըռօստամն ա։

Գեր կնկեան ասաց.—Դու էլի պարկի, քզի դիր ծանոր խըւընդութեն, ես էլ մտիմ խոր, տեսինք ինչ կեղի։

Գեն մտաւ մըջ խորին, կնիկ էկաւ ծա՛նոր պարկաւ։

Ըռօստամ էկաւ իջաւ, տեսաւ ուր մէր հալաֆի գնացեր ա.—Մարէ, ասաց. քու ասած ջուր բան բերեր էմ, էլի, տես քու իշտահ չէրթայ, ուտես։

Ասաց.—Երկու խատ բեր, տեսինք։

Բերեց, կերաւ մէկ խատ, ասաց.—Լա՛ օ, դու ֆոռ օճախ էս իմ խէլք քզնէ չկտրէ ընձի անմահական եմիշ բերես, գնացեր էս Շէրվընու թթու խնձոր բերեր էս, ի՛նչ։

Տղէն կերդուի, խոզուց կելլի. կասայ.—Մարէ, վալա գնացիր էմ, զդի սալաներ էմ, դու էդ ինչ ու կասես։

Ըռօստամ օր էգլան կասայ, դե ականջ կենայ.—Վայ կասայ ինքն ուրին դե, էս անաստուած տղէն դեացեր մեր եօթ գլխէն դեն էլ սալաներ ա, ըա մենք իմալ պտի էնենք։

Կը մնայ, չանք լուսնայ. տղէն կելլի, կերթայ նեչիրութենի։

Գե կուգեայ, կասայ.—Իրիկունը քու տղէն կուգեայ, ասա. Ես խիւանդ էմ, մէջի կը վախնամ, էս տեղ մնացի, սարքին խաղանք, օր ընցուցենք։

Տղէն կուգեայ, խը լուսուն կելի օր էրթայ նեճիրութեն, մէր կը վերցու.—Լա՛ օ, ես էս տեղ մնակ, խեղճ, նէ ջուր տուող, նէ խաց տուող. ընձի կը թողես վե՛ն ումուտին անտէր, անտիրական։

—Ապա ես իմալ էնեմ, դու ասա, ես քու խօսք էնեմ։

Ասաց.—Մնացի էս տեղ, էրկու իրեք օր սարքին խաղանք։

Ինքն, ուր մէր կը նստին սարքինն կը խաղան։

Ինչ ղնդար կը խաղան, տղէն զըմէր կը տանի։

Մէրը կասայ.—Լա օ, հայպարա օր մը քզի ծիծ էմ տուեօյին մը թող, ես քե տանեմ։

Օյին մէկ մէր գը տղէն կը տանի։

Մէր կասայ.—Լա՛ օ, քու ուժ ինչ կը յաղթայ։

—Մարէ՛, կասայ. դու ինչ կուզես իմ ուժից։

—Լա օ, հալպար չապիկ մը վեր քի ջոջ իմ, կեղի օր քընէ էլ ուժով մարթ կայ։

Կասայ. Մարէ, ախշըրքի երես ընձի բան չզաւքայ, քեառասուն կեազ պնաղայ զնճիլ՝ որ կապեն սուն, կը զաւքայ. էլ բան չզաւքայ։

Մէր բերայ քեառասուն կեազ բնատայ զնճլով կը կապայ սուն։

Տղէն կասայ.—Մարէ՛, գնա ղէն։

Տղէն ջօր կը ձմըլկտայ, զնճիլի կտորներ ամեկը ախչար մը կերթայ։

—Լա՛ օ, ընձի սուրթ կասես, խա՛. հալա ուղիղն աստ, քղի ինչ կը զաւքայ:

Ասաց.—Ընձի քեառասուն գեազ կանփէ՛ ճոպան կը զաւքայ։

Մէրն ասաց.—Տղա՛, կանի, քու սուրթն՝ օղորդ ճրպեմ էգ խեռ էլ։

Տարաւ, էլման կապեց էղի սուն ճոպնով։

—Տղա՛, ասաց. մէկ իրար տուր, տեսնինք։

Իրար տալու բաշեաճ ճոպնի կտորներ ինչ որ ժաժկի թափաւ։

—Տեսա՛ր, տղա՛, որ դու սուրթ ասած էս։

—Մարէ՛, ասաց, ես սուրթ ասած չեմ ամա, խուրմ կաթ փծողին բաղդ չկայ. վախենամ դու իմ գլուխ մնաս մը բերես։

Ասաց.—Լա օ, ես քու մէր էղիմ, ընչի քու գլուխ մնաս բերեմ։

—Մարէ՛, ասաց, ախշըրքի մէջ ընձի փնդան լար, որ իմ էրկու բութ էռնէն կապես, էնի կը զաւքայ։

Կապեց ասաց.—Տղա, քե իրար տուր, տեսինք։

Տղէն ձեռներն յիրար տալու, բաշեաճ արուն պզզգալէն սամարներուց թալեց։

—Մարէ, ասաց. արև, իմ ձեռներ արձկայ, մըմուռ թալեց իմ սիրտ, իմ ջիհար կտրտաւ։

Մէրն ասաց.—Սութ կասես. ճոպան կտրող, զնճիլ կտրող էգ փնդան լար չի կնարնար կտրէր։

Տեսաւ չի կնարնայ կտրէր, կանչեց դիւուն, ասաց.

—Դե՛, քընէ կուզէմ, օռնէն փրթես մինչև գլուխ։

Փրթեցին, լցին մըջ մաղէ դարաքին. կապին մըր ձիուն, դոր էր, էկեր էր, էն քեղ գնաց։

Ասպուծոյ խրամանքով ձին տօ՛ղրու կերթայ էդ ճիւջիյար մարթու դուռ կը կայնի. էդ տեղ էդ մարթու հօթ ախչկէ մէկը կելլի դուրս, կու տեսնի, օհօ, Ըռօստամի Զալի ձին, կը մտի ներս, կասայ.—

Ափօ, չանցակ մը կապուկ վրը ձիուն, կասեն Ըռօստամի ձին ա՛ւ էխտիյար իմաստուն էր, էդ տեղ իմցաւ։

—Աղջի՛, ասաց. վազէք, չանցակ բերէք ներս։

Չորս-խինգ աղջիկ ժողուին վերէն։ Ըռօստամին կը վերցեն, կը տանեն օդէն։

—Աղջի կասայ. եմիշը ծեծէք, էնէք մինամ։

Բերայ տղի չանդակ, կը դնայ տախտկիմ վրէն, ձեռ ձեռաց տեղ, աչք աչքի տեղ կդնայ, ոտ ոտաց տեղ կը դնայ. էդ մինամ կը բերայ քաշայ տղի եարէճներու վրէն. կակուղ եօրղանմէյ կը թալայ վրը տղին, կը պարկին, քնին, կասայ.—Զանք լուս տեսինք Աստուած ինչ դուռ կը բանայ։

Բարի լուս կը բացուի հազրներուն, վրը էդ մարդեկաց. աղջկըներ կը լցուին յօդէն. Աստուծոյ խրամանքով էդ աղջկներու ձէն կընկի տղի անկաջ, տղէն բիրտէն չոկի նստի, կասայ.

—Պապէ, ես էրեկ էկայ քու տուն սաղ ի, ընձի սպանեցին. մկայ քու տուն սաղ իմ, էս իմալ բան ա։

Պապէն կասայ.—Տղա՛, զա էրազ էս տեսեր դու. տղա՛, կասայ, արե՛, իմ եօթ աղջկէն մէկ տամ քզի, իմ մալ իպայ էնեմ վրը քզի, օրմ քզի կսպանեն, մեղք էս։

Տղէն ասաց.—Պապէ՛, էն իմ ծնող մէրն էր, ես ինչ խասկացայ. քու աղջիկ էլ օղլու աղջիկ ա, ես ինչ պտի խասկընամ. խում կաթ ծծողին բաղդ չկայ, քեանի ես սաղ իմ, էրդում կուտամ, խում կաթ ծծող պտի չառիմ, իմ ձին քեաշեայ, ես էրթամ։

Տղի ձին կը քեաշէն դուս, բանայ էդ մարթու ձեռ տղէն կը պագայ, կասայ.—Պապէ՛, քու ամակ ընձի խալալ էնայ, քու սուրբ բերնով ընձի օրչնայ. ես էրթամ խըտ իմ ճամբխուն։

—Որդի՛, ասաց. Աստուծոյ օրչնիքը խըտ քզի էղի. գնա՛։

Տղէն գձին էմալ քշեց օր, իմալ օր կուլլէն թվընքի բերնէն կելլի։ Էկաւ մօտըցաւ մաղարին. դև ու մէր տեսան, էսի Ըռօստամի Զալի ձին էկաւ, ասեցին իրարու.—Էս ձին խեծնող ո՞ն պտի էղի, զախար ճամբխորթ-մամխորթ ա՛ւ Բիրտէն, օհ՛ո էսի Ըռօստամի Զալն ի։ Դև փախաւ, մտաւ մըջ խորին, մէր գնաց, պարկաւ։

Ըռօստամ էկաւ տուն, տեսաւ թուր պատից կախ ա՛ւ թուր թալեց վիզ, գնաց, կանաւ խորի վերէն, ասաց.—Դև՛, դև՛, էլի արե դուս, մը՛ վախենայ, քզի բան չեմ տսի։ Գնա էն քեառսուն կեազանոց ճոպան ու պալթէն առ, էրթանք մէճէն. փէտ բերենք։ Տարաւ մէճէն, ինչ ղատար ճոպան փէտ տարաւ, դև ճղճղտեց, չալակ դնեց, չալկեց. առաւ էկաւ տուն։

Դեւուն ասաց.—Քընէ կուզեմ, էդ խազան իլին ջուր լցի.

գնէս վրր օճախին, մէկ չխտիկ փէտ չմնայ, բիրուն վառէս օր իմ մէր գնեմ համամ։ Դէ վառեց. ջուր յէմալ կեռայ, թալայ որ էրկու մզրաղ բոյ կելի։

Ըռօստամ գնաց կայնաւ մօր գլխու վերէն, ասաց.—Մարէ, յէլի քե գնեմ համամ։—Լաօ, ասաց, էդա ջուրը յէմալ կը բղբղկայ, էդար ձէն իմ ականջներ կը խուլցուցայ, ընձի կը տանես կէրիցես։—Մարէ, քե չէրիցեմ, համամ կը գնեմ. մարէ, էն օր որ թուր տուիր գետը ձեռ, ընձի կը փրթեր, էն օր իմ ջանն իմա՛լ էր, քա՛ր էր. չէ «ամեկը ուր բըղած՝ կուգեայ ուր գղալ»։

Ելաւ էդա տեղ մօր ճիւ բռնեց, բերեց, դնեց մէջ բէարօշին։ Էդոր աղչիկմ էղիր էր, էն էլ թալեց մըջ բէարօշին, գեու ճիւն էլ բռնեց, դնեց մըջ բէարօշին, ասաց.

—Դէ՛, Քեֆով ձեզի ուրախութեն էնէք։

Ըռօստամ էլաւ ուր մօտի խալալ փարէն լցեց ուր քամարին մէջ, կապեց մէջք, թքեց վրր չեման, ասաց.—Էսա տեղաց խաց ու ջուր ընձի խարամ էղի, բերի դունեա էղաւ, գնաց։

Շատ գնաց-քիչ գնաց, Աստուած գիտայ, գնաց մէկ քաղքիմ ծախիլ էղաւ. որ տեղ դնաց՝ էդոր տեղ չի տուեցին, ասաց.—Ա՛ստուած, ես ինչ ղնդար քեաֆիր մարդ էմ, էս ղնդար շէնլիկին մէջ դոր գացի, ընձի տեղ չի տուին։ Գնաց, կայնաւ ժամտան դուռ. ոն էլաւ ժամէն, էդ մարդուն չի տարաւ տուն. յէտի խետ ժամխար ժամէն էլաւ. ասաց.—Ախպէր, չէլաւ, չէլաւ, դու տեղ մը տուր, էս օր սբար էղիմ, լուսուն կերթամ։

Ասաց.—Ախպէր, տեղ չունիմ, մէկ պզտիկ քողտիկմ ունիմ, քեզի կը տանիմ, քզնէ կեղիմ ամօթով։

Ասաց.—Ախպէր, յորին կեղիս ամօթով, սբար ա, սբռուինք լուսուն կերթամ։ Էդ մարթ առաւ, գնաց տուն։

Ձին քեաշեց բակի մէջ. բերեց, փօսմ թալեց, էդ մարդ նստաւ։

Մնաց չում կէս դշեր, Աստուծոյ խրամանքով ժամխրրի կնիկ պարկաւ, աղչիկմ բերեց։ Ըռօստամ վերցուց.—Ժամխար քեզի ինչ էղաւ։

Ասաց.—Ասելու չէր որ ես ասեմ, աղչիկըմ էղաւ։

Ասաց.—Ժամխար, իմ պատատածն էլ էդ էր, գտայ, Աստըծուց էդ կուգլի։ Գնա՛, ասա քո կնկան, թո ծիծ չտայ էդ աղչկէն, ես բերեմ ընձիկ։—Ըռօստամ, ասաց. էդ անասուն իմալ պտի տանես, պախես։ Ասաց.—Կը տանեմ, թէ մեռաւ Աստըծուն ա, թէ մնաց, ընձիկ ա։

Ելաւ էդա ժամխրրին էրկու-իրեք խարիր օսկի տուեց, աղչիկ առեց, ընկեաւ ճամբախ։ Շատ քիչ Աստուած գիտայ ինչ ղնսար գնաց, գնաց. գնաց մէկ բարձր սարիմ բռասօ էկաւ. չադր գարկեց

մնաց էդ սար. տասնը չորս տարի էդ աղջիկ պախեց, չոլըցուցեց՝ էղաւ խաւրնիկ խրեղէն։ Պարկաւ էդ աղչկայ ծոց, Աստըծոյ խըրամանքով տարին օր թմաւ, էդոր աղէմ տուեց Աստուած, էրկու իրեք տարի արանք անցաւ. էդ տղէն մեծացաւ։ Աւուր մէկին Ըռօստամ գնաց Սէջիրութենի, տեսաւ քառասուն խատ դև էկան, էդ կնկայ չաշրըի առէջով ընցան գնացին։ Իրիկունը Ըռօստամ Սէջիրութենից էկաւ տուն. կնիկ Ըռօստամին պախս չենեց, չասաց թէ քառասուն խատ դև մեր դռնով գնացին։ Լուսցաւ, էլման Ըռօստամ գնաց Սէջիրութեն, տեսաւ դևէք էլման էկան, գնացին. կնիկն էլաւ դուս, խարցուց.—Ախպըրտիք, դու ո՞ր տեղացի էք։ Ասին.—Մեզի մասի ախպէր։ Ապա, ասաց. ինչ ասեմ։

—Մենք էկեր ենք Ըռօստամ սպանենք, դու կանիս, քու գլխուն ճար էնես։ Ասաց.—Ինչ ճար էնեմ, իմ ձեռ ինչ կայ։

Ասաց.—Ա՛ռ էստ յեսան, իրիկուն Ըռօստամ կուգեայ, կը քնի, կընկկի խորունդ քուն, յեսան պռտայ վըր փորուն, ասա.—ամիս մը մեա քնուկ, ամիս օր կը թմի, էլիս վեր։

Իրիկուն Ըռօստամ էկաւ, կնիկ իսկի պախս չենեց։

Ասաց.—Կնիկ, խաց բեր ուտեմ, նեղացուկ էմ։

Խաց բերեց, կերաւ, քնաւ. օր ընկաւ խորունդ քուն, յեսան բերեց պռտեց էդոր փորուն, ասաց.—Ամիսմ մեա քնուկ. ամիս օր կը թմի էլիս վեր։

Առաւօտուն կնիկը—դեևներու տուն, դուր իս, էկայ քըզի։

Ամիսն օր թմաւ, կնիկն առաւ ուր տղէն, էկաւ ուր տուն —Կնիկ, ասաց. յէս օր գչիր ինչ ղնեար էրկէն էր, չմտ էմ քնէր յէլի, իմ ձին քաշայ, էրթամ Սէջիրութենի։

Ձին կը խեծի կընկկի ճանբախ. չատ կերթայ-քիչ կերթայ, խազալմ քարիմ տկէն յանկարծակի կը թռի. Ըռօստամ թռնելու բաշեան կընկկի էտև, խասպէխսս կեղի որ զանի. օր կը զանի, Ըռօստամ կուգեայ քիթ ու մըթի վրէն։ Ըռօստամ չուռ չտկաւ, խազալ տուեց. էլաւ դէ՛ սարի գլուխ։ Էդ տեղ Ըռօստամ կասայ.—Մենգիլի եախուն, ֆիրասի չօխ, պուրսայ պիր իշկիլիֆ վար. (երկարութիւնը չատ, վարձը քիչ, այս տեղ մի խարդախութիւն կայ)։ Էն տեղ խայլին մէջքէն կը խանայ, կիչկայ, կը տեսի, Էյ, ձեռաց գեացէ. էղե մեռնելու դուռ։ Էդ տեղէն կը խեծի ձին, քառ ու փռսման կու գեայ.—Վայ անաստուած կնիկ, կասայ. կնկեան անուն խոզի չկայ. էս ինչ փորձանք բերեց վըր ընձի։

Կուգեայ տուն կասայ.—Կնիկ, խիւանդ եմ ես, իմ տեղ թձըլես, քնիմ։ Ձինք կդնայ սութ-աղուէս քուէ։

Կնիկ կը բերայ յեսան կը պռտայ էդոր փորուն, կասայ.—Իրեք ամիս քնես, իրեք ամիս թմի, նոր էլիս վեր։

Կնիկ կառնի ուր տղէն, կերթայ դեւերներու տունը:

Ռոստամ կը շոկի, կը նայի, կըսայ.—Կնի՛կ, գնա՛ թէ ես քու հախեն էկա՛յ, զարբի Ռոստամն եմ, թէ չէկայ, քու լաչին խազար խեռ իմ գլխուն էգի: Ռոստամ մեզեց.—Թէ ես առիմ իմ թուր էրթամ, ղուվաթ չէ մացեր, չառիմ էս կնիկ ուր էրած պտի մառնայ ու էրթայ, ես խի՞միլ էնեմ:

Զարէն կտրաւ, Ռոստամ էլաւ շուն մարթեց, էրաւ տիկ, մտաւ մէջը, գնաց.—Էրթամ, իչկիմ, ասաց, չա՛տ էն, քի՛չ էն:

Գնաց, գնա՛ց, Աստըծոյ խըրամանքով էգ կնիկ որ մէկ տուն էր, գնաց էդ տուն: Կնկան աչքեր որ կառնի շան տիկ, կըսայ.—Եամա՛ն էդ շուն մէջք դրաւ, էդու աչքեր կը մանի Ռոստամի Զալի աչքեր: Փէտով կը զարնէն էդ շան. շուն չփախի, բռնեն, շան տկի միջէն կը խանէն, ծ, էս Ռոստամի Զալն ա Դեւ կըսայ.—Աղէկ էսի էկաւ, ընկաւ մըջ մեր լփին, կայնի, չարչարանքով էսի պտի սպանեմ: Բերայ, քառսուն գեազ գնճիլով կը կապայ ոտննուփ, եօթ կանթէն բէաւոց ջուր կը լցայ, կը դնայ Ռոստամի Զալի գլխու վրէն. ճրագն էլ կը դնայ վրը բէաւոցին կըսայ.—Չարչարանքով քու խոգին պտի խանեմ քու փորու միջէն:

Էդ Ռոստամ մնաց մըջ ուր հալին, էդոնք պառկան քնան, ուրենց քէֆ էնին: Դեւ Ռոստամի աչիչ յառէջ Ռոստամի կնիկ գրկեց պառկաւ:

Մնաց չուամ կէս գշերին, Ռոստամի տղէն էլաւ, ասաց.

—Մարէ՛, ընձի ջուր մը տո՛ւր, խմեմ:

Ասաց.—վարամ ընկի քո բերան, դուն էլ կենես քու խօր աչէս, էկե, ընկե մըջ գերութեն, չես կանաս ջուր առնես խմես:

Խօր սիրտ մըմըրաց վըր տղին, ասաց.—Կօ՛յա ջուր, էլի կոտէկ առ, լից ու խմայ:

Տղէն էկաւ առաւ կոտիկ, ջուր լցեց, խմեց:

—Տղա՛, ասաց. արե մըտ ձի, բան առեմ քե:

Տղէն էկաւ, Ռոստամ խարցուց.—Տղա՛, մեր տուն կը ճանչնա՞ս:

Ասաց.—Խա՛, կը ճանչնամ:

Ասաց.—Կանա՞ս էթաս, իմ թուր բերես:

—Ախօ՛, ասաց. մէ տախխա չքաշայ, քու թուր կը խասուցեմ. տո՛ւր Ճրւք, էրթամ, բերեմ:

Տղէն գնաց մըջ չաշըրին Ճրւք պանեց, ճրագ էնեց, տեսաւ թուր պատէն կախ ա. տղի ձեռ չխասաւ որ թուր բերէր, էլաց: Աստըծուն չարփին էկաւ. ինչ որ մէկ մէկու աւէ, տղա՛, ընչի՞ կուլաս, քուրսին բե՛ր, դի՛ր քու ոտներու տակ, էլի, թուր առ ու գնա՛:

Տղէն քուրսին դնեց ոտներու տակ, թուրն առաւ, էկաւ, տուեց խօր:

Տղա՛, ասաց, Թուր բէրէցի՛ր։—Բէրեցի, ասաց։

—Տղա՛, ասաց. Կանձս Թուր պռտեր, զճճիլ կտրես։

Բէրից պռտեց, զճճիլ կտրեց։

—Տղա՛, ասաց. առ զճճիլի ծօթ յուշիկ պտոտայ, ձէն չէլի մօտէնս Տղէն սլոտաւից, փաթ արձկեց։

Ասաց.—Տղա՛, դու գնա՛, քնի, չէղի՛ վախենաս։

Ասաց.—Ընչի՛ վախենամ, զահե ես քեզնից չեմ, դու սատ սպանես, խինգ էլ ես կըսպանեմ։

Ասաց.—Լա օ, դու դնա՛, քնի, էն պիթուճ քու խօր թուքուճ այթի չէղի։

Խէր գլխուց բէարօց գնեց տակ, քաշեց Թուր, ղանչեց ուր Աստըւած, ընկեաւ մըջ տներուն, եռսունը վինը գեն սպանեց, էկաւ տուն զճճիլ փաթից բոլոր, բէարօց գնեց վըր գլխուն, կայնաւ։ Քիչ մնաց, գլխանց բռռաց։

Բռռալուն պէս տուն, սներ ըռան պէս ինչ օր կը դողան։

Էղոր կնկան սիրող դե չտկաւ, Նստաւ, ասաց.

—Ինչ կը բռռաս, կանի՛, տես, քզի չարչարանքով սպանեմ։

Ասաց.—«Առսըր Ճէտէճ առլաճըր, չուլ տա կեյէր սալլաճըր» (անամօթը ինչ բանէ կամաչի, քուրչ ես հագնի, կը չարժի)։

Ասաց.—Դե, քե բանմ ասեմ, չես ըըքիս։ Ասաց.—Չէ։

Ասաց.—Իմ աչք կպաւ, էրազ տեսայ, քառսուն դե սպանեցի, մէքի դու մնացեր իս։

Ասաց.—Զարթի դու չես ամչընաս, Նոր էս ընկե իմ ձեռ։

Քիչմ մնաց, Ըռօստամ զճճիլ-մճճիլ արցըկեց, գնաց, կանաւ դիւու գլխու վրէն, բռռաց։

Որ բռռաց դե խինգ թիվ քնու միջէն Թռաւ վեր։

Դե բռռաց.—Տղէքներ, խասէք, Ըռօստամ փրցեր ա։

Ասաց.—Տղայ-մղայ չկայ. տղայ-մղայ պիթուճ մատղերէմ քզիկ, քզիկ էլ կը մատղեմ իմ կնկան, որ իմ կնիկ ընձնէ ազատեցիր։

Կնի՛կ, ասաց. կանի քզիկ էլ մատղիմ իմ տղին, որ պախեցիր, չսպանեցիր։

Էլաւ ուր տղի ձեռ բռնեց, Թալեց ուր թեւ առաւ էկաւ ուր չաշր, քաշեց ուր ձին, խեծաւ, տղէն Թալեց թարf ղանչեց ուր Աստուած, ընկաւ ճանրախ, ասաց.—Էստ տեղաց խաց ու ջուր ընձի խարամ էղի։ Ասաց.—Տղա՛, իմ խօր վաքաճ ընկեր ա իմ միտք, պտի էրթամ իմ խօր երկիր։ Շատ քիչ Աստուած գիտայ ինչ ղճղար էկան ճանբախ։ Էկաւ, տեսաւ մէկ լպուտ, սնատւկ մը չալկե. յինք ուր կնիկ. ուր տղէն ճամբխու խետ կերթան։ Ըռօստամ էկաւ, էղաւ լպուտին խասաւ, ասաց.—Բարև քե, ախպէր լպուտ։—Աստըծու բարին քէ, աղա՛, ասաց։

Ասաց.—Ախպէր լպուտ, էդ ինչ ա, քու չալկին։

Ասաց.—Աղա՛, չեմ գիտեմ, խելքի պակասութեն ա, էսա եօթ տարիյա սնտուկ իմ քամակն ա։ Ասաց.—Ընձի չես էնես, քե ախպէր։ Ասաց.—Աղա՛, ես դո՛ր, դու դո՛ր։ Ասաց.—Լպուտ, աղէն էլ Աստըծոյ տեղծածն ա, լպուտն էլ։ Եղան ախպէր էդա տեղ։

Քիչմ տեղ գեացին, աղբուրմ էդոնց ըռաստ էկաւ։

Ասաց.—Ախպէր, քու սնտուկ գիր տակ, քիչմ էսա տեղ Նըստինք. ըռահաթնանք, էրթանք։

Ասաց.—Ախպէր, թող քո խօսքն էղի, դնենք։

Ախպէ՛ր, ասաց. դու յէլի, ցան ժողուայ, թօ տղէկներն էլ էրթան ղըրշ ժողուլին, ես էլ օճախ կը դնեմ, քո կնիկն էլ ջուր բերայ, մ'ռիկ էփույ. ուտենք, էրթանք։

Բերեց մ'ռիկ էփեց, ճեաշէն լցեց, դնեց էդ չորսի յառէջ, մէկ էլ լցեց, դնեց ուր յառէջ։ Ըռոստամի յաչք մըր կնկան ա։

Տեսաւ, կնիկ գողտուկ ճաշեմ լցեց, սնդկի դուռ բացեց, դնեց մըջ սնդկին. Խաց կերան, պրծան։

Ըռոստամ ասաց.—Ախպէր, ես կը բաժնեմ, իմ մօտի փող կէս ընձի, կէս քի, քո սնտըկին որ կայ. կէս ընձի, կէս քի։

Կնիկն ասաց.—Ախպէ՛ր, ինչ կայ մըջ սնտըկին, պիքուճ քըրչ ու պըլընկ էն, քաք չոր էն։

Ասաց.—Ես քու քըրչ ու պըլընկին դայիլ էմ, դու իմ օսկուն դայիլ չես։

Տեսաւ որ կնիկ գլխացւանք կէնայ, յաճկէն զարկեց Ըռոստամ, սնտկի դուռ կոտրեց. տեսան բուղա մարդմ մըջ սնտկին. գդալ, պաղաւ, մնաց էդ մարթու բերան։

Լպուտ ասաց, թաժա քու կնիկ, էս մարթ պտի պահեմ մըր յիբարու թող խասին ուրենց մուրազին։

Բերեց էդ էրկուսն էլ դնեց գետին, խաւու պէս մորթեց։

Էդ լպուտ կեցաւ, Ըռոստամին օրհնեց, ասաց։

Էս եօթ տարիյա, էս սնտուկ իմ քամակն ա, իմալ որ դու ընձի ազատեցիր, Աստուած էլ քզի ազատայ։

Առաւ գլպուտ, էկաւ խօր էրկիր։

Էնոնք խասան ուրենց մուրազին, դուք էլ խասնիք ձեր մուրազին։



# Դ

# ԲԷՃԱՆ

Արծկէի Առընձկոյս գիւղի բարբառով*

Ռօստամ Քաջքաշխուզայ քաղքէն ա. Բէճան էլ էդիր խորդէն ա։ Էդ քաղքին մէջ պառաւ կեղի. էդ պառաւ ուրին բաղմ կը տնկէ, էրկու իրեք տարի էդ բաղ կը չախի, կը պախի։ Մէկ օր կերթայ բաղի եմիշ ժողուայ, բերայ. կու տեսի ծառի վրէն բան չթողածին, թափթըփած՝ տարած ա.

Պառաւն ա, խեղճ-խեղճ կուգեայ ուր տուն, կասայ.—Տարող քեալիմ էղի յԱստուած, տէր չունիմ, տիրական չունիմ։

Գուտայ կուգեայ վախտին (յաջորդ տարին) կերթայ. կու տեսնի էլման տարած ա, կասայ.—Երթամ մօտ թագաւորին գանգատ։

Կերթայ օր Բէճան դունից կելլի դուս։

Աստուծուց կեղի, Բէճան կը խարցուցայ էդ պառաւուց. կասայ.—Մամէ, դո՞ր կերթաս։

Կասայ.—Կերթամ մոտ թագաւոր գանգատ։

—Մամէ, ինչ ա քու դարտ օ կերթաս գանգատ։

Կասայ.—Օ ես ասեմ, դու ինչ պտի լնես։

Կասայ.—Դու ասա, մենք էլ մե կօրայի մարդ ենք։

Կասայ.—Բաղմ տնկեցի, չախեցի, մեկայ իմ բար տարած ա։

Կասայ.—Գնա մըտ Ռօստամ էնոր գանգատի, էն օր քեզնէ կը խարցուցայ. «քու գող որն ա, ընձի ասա, ես ինէն կէնեմ». դու էլ կասես՝ «իմ գող Բէճան ա»։

Պառաւն ա, էլաւ գնաց մըտ Ռօստամ, զինք թալեց Ռօստամի ոտաց, սաաց.—Վերին դէն Աստուած՝ ներքին դէն քեզի դաստ էնե-

---

* Գասմած է Դաւօ Մուխսի Ցարութիւնեան:

ըմ, էկերեմ. Եա՛ն դարդիս դարման; Եան գլխիս Ֆարման»։

Կոսայ.—Մամէ, քու դարդ ինչ ա, ասա անենինք։

Ասաց.—Տղայ չունիմ, խաթոր չունիմ, գութան չունիմ, տէր չունիմ, արխական չունիմ. ես էմ՝ էն մէկ բաղ, էն պատատ հաղակաճ պախեցի, չարխեցի, բերի խասուցի բար, յէլայ իմ ջուր ջաւալ ժաղուեցի; գնացի օր իմ բար թափթփուեմ, բերիմ. գնացի, տեսայ «ինչ օր տանեցին, արհ տար,» «էղեր ա՛ աշնան բաղ»։ Եե նմիծ Եե բար, Եե հայլ, էկերիմ մըտ քը գանգատ, ինչ գիտես էնալ էնաս։

—Է՛, ասաց. պառաւ, քու գող գիտես, ո՞րն ա։

Ասաց.—Չէ, չեմ գիտեր; վըր ընձի մութն ա։

Ասաց.—Որ չեմ գիտեր, ես իմալ ուրուն տանիմ; քախիմ չոր փէտ»։

—Ես էն գիտեմ, մէկ մարդ ընձի բուաստ էկաւ, անուն Բէժան էր ասաց. «պառաւ, ես էմ քու գող»։

Խըտ էդ ասելուն՝ Բէժան մտաւ ներս։

Ռօստամ Բէժանին ասաց.—Բէժան, դու իմ խօրզէն էղիս. ախչար մեր ձեռաց տակ զար ա, մեր ձեռաց մէջ կը դողայ. էն մարդ օր ընկի մեր ձեռաց մէջ, քամենք ձէթ կուգիայ էն մարդուց, դու պտի էրթաս էդ պառաւուն գողութեն էնես, կեղիմ վղէդ կը բանեմ, տփեմ էգա պատ, ամեն կտորն ախչար էրթայ։

—Քեռի, կասայ Բէժան, ես գող չիմ, դու ընձի դաստուր տուր, ես էրթամ էդ պառաւու գող բռնիմ. օր բռնեցի, բերեցի՝ բերեցի, օր չբերեցի՝ իմ կողեր ծակայ, իմ ձեռներ մտու լինե։

—Դէ, կասայ, քո իրաւունք ա, գնա։

—Դէ, կասայ, մարդմ էլ տու ընձի, օր էղի ընձի շհադ, որ ես էն գող բռնեմ, չէղի վաղն ասես «Բէժան սուտ ասաց»։

Կոսայ.—Մարդ ինձ կուզես, տամ քի։

Ասաց.—Ընձի տու Կիվ (Կիվ Ռօստամի մոզիկն ա)։

Տուեց, ասաց.—Դէ, գնացէք, ինչ կէնէք, էնէք։

Ելան էկան, իրանց նստ աներներ թալեցին թն ուրենց. թեդ-բիր տեսան, խեծան ձիանք, գնացին պատուաւ բաղի կուշտ, վըր նամրթուն կայնան։

Կիվ, ասաց Բէժան, դու իմ ձին բռնէ, կայնի, կերթամ բաղի մէջ, թի գող էկաւ, լաւեցի, չկարցայ բռնեցի, կուգեանք, ձիանք խեծինք, կընկինք յետև, կը բռնինք։

Ասաց.—Բէժան, դու գնա, ես էս տեղ ալասթա կը կայնեմ, որ քու ղալապալըխ էլաւ, ես կը խասնիմ։

Բէժան գնաց, մտաւ մըջ էգուն ծառին տակ, էրկու իրեք սահաթ ինչկեց, տեսաւ մարդ չկայ. մէկ էլ ինչկեց, տեսաւ ինչ մէկ խատ զինք պատէն թալեց տուկ քընց ամպրոյմ, Բէժանի գլխու մէկ

մազ էղաւ քընց գիրանի։ Տեսաւ էդ մարդ ճերկի գլխուց ծառեր, ճղեր ջարդելով՝ եմիշ կերելով՝ գնաց էն գլուխ. էն տեխէն էլ առաւ էն մէկէլ ճերկէն՝ կերելով ջարդելով էկաւ, խառաւ մէկէլ գլուխ. էն մէկէլ ճերկէն էլ առաւ, էկաւ, պտի դեայ Բէժանի վերէն. Բէժան էլ նստուկ էր էն ճերկի ծառի տակ. էկաւ, խառաւ, մէկ ծառ էր մնացեր՝ որ խասի Բէժանին.—Վա՜յ, ասաց. ես քու Ֆելան բէՖան էլան՝ էլան էնիմ, չէ՞ ես Բէժան էմ, Ռօստամի խօրզէն էմ. դո՛ւ իմ անուն չե՞ս լսերէս, քու փոր տասուերկու պլօճա՛կ կայ որ դու կուզես մըջ իմ էգուն ջարդիս, կուտես։

Բէժան որ կը խասի, էդի զի՛նք կը Թալի պատից, կը փախի.

Բէժան կը վազէ Կիլի մօտ, կիրԹայ, կը տեսի Կիլ չկայ, ձէն որ կեյլայ, Կիլ կը փախի։

Էն տեղ Բէժան կասայ.—Ախչար իմ էրես կը Թքեն, Թող իմ ճանտկին Թքին. խանդակտուր կը պառնայ, դեի էտև կընկի, չատքի՛չ՝ Աստուած գիտէ ինչ ղդար կերԹայ. տեսի մէկ էլ դև կը մտի մաղարիմ մէջ։ Էն տեղ Բէժան կասայ.—Պտի մտիմ ինե։

Մտաւ, ասաց.—Եան էնի ընձի պտի սպանայ, եան ես։

—Դէյլի, դև՛, պոռայ Բէժան. եան Աստուած ինձ կուտայ, քե կսպանեմ. եան քե կուտայ, ընձի պտի խորես, չէղի ասես «էսա մարդ գեապալիկ ընձի զարկեց։

Դև ասաց.—Բէժան, արի՛, նստենք, խաց կուշտ ուտենք, եան Աստուած ընձի կուտայ, եան քե։

Կասայ.—Դու քո՛ւ խաց կեր, ես իմ խաց ուտեմ, դու իմ բարեկամ չե՛ս, ես քու խաց ուտեմ, «խաց քընց ձի զօրպայ ա», օրական ես խազա՛ր մարդ կանամ սպանեմ, կտոր խաց չկանամ սպանեմ, ջրդուճմ դետին տեսիմ, վերցեմ, կը դնեմ իմ գլխուն, քընզէ բանձր կը բռնեմ էն խաց։

Էդ տեղ էն ուր խաց կերաւ, էն ուր խաց։

Կերան, պրծան, ուրենց ճղարէն քաշեցին։

Բէժան կասայ.—Դէ՛, էլի՛, դէ՛, էլի։

Դև կասայ.—Ընչի զանինք, իրարու եարալի էնինք, ջարչրենք, էլի՛, կիւլաշ կպինք, լաճար բանմ ա, Թը դո՛ւ ընձի կոխեցիր, իմ արուն ինչ որ քու մօր ծծի կաԹ քե խալալ էղի, Թը ե՛ս քե կոխեցի, քու արուն իմ մօր ծծի պէս ընձի խալալ էղի։

Էդա տեղ կիլին «գեարնան բօղա գմշու պէս կը դիպին յիրար, էն կը ճխտայ դէն, էն կը ճխտայ դէն, էն . . . իրար կը ջարդեն. էս խեա Բէժան կատաղոռա, կառնի վըր կռան, կը ծեփայ գետին, չոք կը զանի վըր սրտին, պնջներուց արուն կը Թալայ։

Էդ տեղ դև խորունք ախ քաշեց։

երջանիկ կը համարէին այդ ձիու տէրն, որ այդ ձիով կը փառաւորուէր. նաև չատերու մէջ նախանձ կը յարուցանէր. ամենն ևս կը փափաքէին ձեռք ձգել այդ ձին որպէս զի իրենք փառաւորուէին։

Արարակէ Կէս իր ջոլիրը յանձնած էր Սլիվի անունով մի մարդու. որ պահպանէ։ Սլիվին լաւ հովիւ էր. ամեն խնամ կը տանէր. ջոլիրն լեռ, դաշտ և ձոր տանելով կարածեցնէր. գիշեր, ցերեկ հոգ կը տանէր, կը մտածէր, ուր որ լաւ մարգագետին կար, հետեւեալ օր այն տեղ էր իր ջոլիրով։

Սլիվին մի օր ջոլիրը տարած էր ծովեզրը, հեռուն նստած ուշադրութեամբ կը դիտէր. տեսաւ յանկարծ-ինչ տեսնէ—ծովէն մի ծովաձի դուրս թռաւ. այդ հրեղէն ձին մերձեցաւ Կէսի Ալէքսանի Բէջանին (այդպէս էր նորա նժոյգ ձիուն անունը). որ անմիջապէս յղացաւ։ Սլիվին այս բան չը յայտնեց Կէսին, մտածեց որ յաջորդ տարին երբ հովիւ վարձուի՝ Ալէքսանի Բէջանէն ծնած քուռակը ստանայ իր վարձքի փոխարէն. այնպէս ևս արաւ. Նա ամենայն հաւատարմութեամբ Կէսի ջոլիրը պահպանեց.։ Յաջորդ տարին Կէս ուզեց որ Սլիվին դարձեալ վարձէ. Սլիվին պահանջեց իր վարձուց փոխարէն Բէջանի քուռակն որ նոր պիտի ծնէր. Թէև Կէս կրկին և եռապատիկ վարձք խոստացաւ միայն թէ քուռակն չուզէ. սակայն Սլիվին անդրդուելի մնաց. Կէս ևս անգէտ լինելով որ քուռակը հրեղէն ձիէն գոյացած է. նա մանաւանդ Սլիվու պէս հաւատարիմ հովիւ չպիտի գտնէր. խոստացաւ։

Սլիվին զայն (քուռակն) ստացաւ. խնամ տարաւ, մեծացուց. անուն Սոսըք դրաւ։

Վարժեցուց հեծնալ. արշաւել և ինչ որ կարևոր էր, Սոսըքն ամեն կերպ վարժեցուց, կրթեց։

Սլիվին մի գեղեցկադէմ երիտասարդ էր. երբ Սոսըքի վերան կը նստէր, կը կարծէր թէ Սոսըքի հրեղէն ուժը իր վրայ եկաւ։ Նա կը սիրէր ջոլիրի չուրջը ձիարշաւ տալ. տռուփ ու ժայռերու վրայէն զՍոսըք թռցնել. այնչափ սիրահարեցաւ ձիաւորութեան, որ չատ անգամ կը թողուր ջոլիրն անխնամ. որով ձիանք օր յօրէ սկսան նիհարանալ, յետ գնալ. որով Կէս երբեմն հարցում կուղղէր.—Սլիվի, կերևայ դու հին հովիւը չես. այս ինչ պատահած է քեզ որ մեր ձիանք յետ կը մնան։

—Աղա՛, բան չկայ. լաւ կը պահեմ, կասէր. սակայն ուշը-միտքը վրան չէր. երբ ժամանակ կգար որ ջոլիրը ջուր պիտի խմէ. նա կը մտածէր թէ երբ Սոսըք հեծնամ ու աւարի գնամ. քանի մարդու կարող եմ դիմադրել։

Նա երբ Սոսըքի վրայ ոտք դնէր, ձին պէտի խրխնջար, որով ամբողջ իր ցեղի վեց հազար վրաններու բնակիչներն վրաններէն

դուրս պիտի թափէին դիտելու Սլիվու ձիաւորութիւնը։ Սլիվուն հաճոյ թուեցաւ ձիաւոր կեանքը. մանաւանդ Սոսըքի յարմարութիւնները զինք ձիաւորութեան սիրահար արին, որով նա միշտ փարած ձիուն, նստած նորա վրան, կը շրջէր վեր ու վայր, լեռ, ձոր և դաշտ. այլ ևս թոյլ տուեց հովուութիւնը. սկսաւ աւազակութեամբ պարապիլ։

Սլիվին իր ցեղին մէջ տեսաւ Վորտէք անուն մի սիրուն աղջիկ, որ Հասօյի Տուտէի եօթ որդոց քոյրն էր. Սլիվին սիրահարեցաւ այս աղջկան ու իրեն կնութեան ուզեց։ Հասօյի Տուտէի եօթ որդոց աչք վաղուց ընկած էր Սոսըքի վրայ. յարմար առիթ գտան, դալանի փոխարէն Սոսըք պահանջեցին Սլիվուց։ Սլիվու համար այս խիստ ծանր պահանջ էր. նա որչափ Վորտէքի սիրահար, կրկնապատիկ սիրահար էր իր ձիուն. ձին իրեն համար կեանք էր, ձին էր, որով հռչակ պիտի ստանար։ Նա մերժեց. «չեմ տար», ասաց։ Սակայն սիրահարութեան բոցը քանի գնաց, իր մէջ վառեցաւ. կը մտածէր մի կերպով Վորտէք ձեռք ձգե, փախցնէ. սակայն երկիւղ կը կրէր Հասօյի Տուտէի եօթ որդիներէն, որք ամբողջ Արաքստանի մէջ հռչակուած քաջ պատերազմողներ էին և միրի Արաբանի զօրաց գլխաւորներն էին։

Սլիվին առ երես խոստացաւ Սոսըք Վորտէքի համար դալան տալ. մի առ ժամանակ միամտեցուց Հասօյի Տուտէի եօթ որդիներն. մի օր յարմար միջոց գտաւ. Վորտէք աղբիւր եկած էր ջուր տանելու, հեծաւ Սոսըք. սլացաւ աղբիւրի վրայ, Վորտէքը քաշեց առաւ գաւակը. քշեց, ընկաւ Արաքստանու դաշտը, մտաւ իր ծանօթ լեռներու ու կրճերու մէջ, անհետացաւ։ Հասօյի Տուտէի եօթ որդիներն կատաղած գայլի պէս ընկած Սլիվու ետևէն, ամեն կողմ խուզարկեցին, չգտան։

Սլիվին Վորտէքի հետ մի առ ժամանակ մնաց այդ լեռներու մէջ իրեն ծանօթ դարանամայրեր. տեսաւ որ Վորտէքի եղբայրներն հաւաքած քաջ քաջ մարդիկ՝ զինքը կորոնէին. այլ ևս մտածեց որ այդ երկրի մէջ մնալ անկարելի է. որոց վրիժառութեան պիտի ենթարկուի, առաւ իր գլուխն և Վորտէք. Սոսըքի գլուխը ուղղեց դէպի Վանայ կողմերը։ Նա Արաքստանէն դուրս ելաւ. հանգիստ շունչ քաշեց. այլ ևս երկիւղ չունէր Հասօյի Տուտէի եօթ որդիներէն. եկաւ—եկաւ, հասաւ մի էլ աղասու (ցեղապետ)—Ամարի Միլ մօտ. ապաւինեցաւ նորա որ զինք իր հովանաւորութեան ներքև առնէ։ Միլանցի Ամար տեսաւ որ Սլիվին լաւ ձիաւոր է, շատ սիրով ընդունեց. գրեց իր ցեղի վրայ։ Սլիվին այդ ցեղին մէջ յատուկ տուն մի եղաւ։

Անցան քանի տարիներ, Սլիվին որդի մի ունեցաւ, անունը

Քուլլըք դըրաւ. ապա մի որդի ևս ծնաւ, անունը Կեառօ դըրաւ։ Ինքը դեռ երիտասարդ էր. հայրենիքի ու ազգականի սէրն զինք կը մղէին որ գնայ ծնած ու սնած երկիրը, տեսնէ հին յիշատակարաններն, տեսնէ Սօսըքի գոյացած ծովակն։ Սակայն Հասոյի Տուտէի որդոց երկիւղէն ու սարսափէն Արտաքստանու հողն ու քարը անգամ իրեն դէմ ոխակալած էին։

Սլիվին մի բան մտածեց, գուգաեց Ամարի մլին որ պատերազմ բանայ Կէսի վերայ, անուանի Բէջանը բերէ՝ որպէս զի ինքն ևս միջոց գտնէ, հայրենիք տեսնէ, իր վրէժը լուծէ Հասոյի Տուտէի որդիներէն. սակայն Ամարի Մըլ թէև կը ցանկար Բէջան ունենալ. բայց նա ևս երկիւղ կրեց Տուտէի որդիներէն, որովհետև որոց քաջութեան համբաւը ամբողջ աշխարհը բռնած էր։

Սլիվու ցանկութիւնը չյաջողիր, իր փափաքը իր փորուն մէջ կը մնայ. օր յաւուր կը մաշի հայրենիքի փափաքով, կը հիւծի. երբ կը տեսնէ դեռ երիտասարդ, մեռնելու վրայ է. իր մօտ կը կանչէ իր Քուլլըք և Կեառըք որդիներն, որոց կերդուընցնէ, ու կը կտակէ որ իր վրէժն լուծեն իրենց քեռիներէն, եթէ թերանան յաւիտեան պարտաւոր մնան։

Սլիվին մեռաւ. Քուլլըք ու Կեառօն մեծացան. նոքա քանի կը մեծանային, վրէժխնդրութեան ոգին ևս կը զօրանար իրենց մէջ. իրենց խօստկցութեան առարկան միշտ իրենց հօր կտակն էր. վասն զի իրենց համար մեծ անպատուութիւն էր, երբ մէկը վրէժ ունենայ անկողնոյ մէջ մեռնի. որպէս իրենց հայրը մեռած էր հակառակ քըրդական սովորութեան։

Ուխտեցին անկողնի մէջ չմեռնիլ. սակայն դեռ փոքր էին. որով քանի տարի ևս ստիպուած էին իրենց փոքրիկ տունը կառավարել ընդ հոգացողութեամբ Ամարի Մլին. որ և իր բազմաթիւ հօտը յանձնած էր սոցա. սոքա ևս իրենց հօր նման հովուութեան արհեստին վարժ էին. իրենց պաշտօնը լաւ կառավարելուն սիրելի դարձան Ամարի Մլին, որով Ամարի Մըլ այդ տան վրայ ունեցած հոգացողութիւնը կրկնապատկեց։

Քուլլըք ու Կեառըք իրենց յարմար հասակին հասան. Քուլլըք իրեն համար ունէր Սօսըք ու լաւ զէնք. Կեառըք չունէր. վերջինս խնդրեց Ամարի Մլէն, որ իր վարձուց փոխարէն իրեն զէնք ու ձի տայ. Ամար սիրով յանձն առաւ, տուաւ նորա խնդրածը։

Երկու եղբայրներ սկսան Բէջանի հռչակը տարածել, այլ և այլ առասպելներ կը յօրինէին նորա վրայ.—«Ծովէն դուրս եկած հրեղէն ձի է, թևեր ունի, երկինքէն կը թռչի. ևն. ևն։

Ամբողջ հասարակութեան մէջ ուրիշ զրոյց չկար. միայն Բէջանի վրայ կը խօսուէր, ինչ մարդ որ կը ներկայանար Ամարի Մլի

տաեանը.—Բէջանը քեզ կը յարմարի, նա աշխարհի առաջին նժոյգն է. նրանից ծնածը հրեղէն է լինի։ Ամար աղան այս գովեստները լսելով Բէջանը ձեռք բերելու տենչով վառեցաւ. կը խորհէր ինչ հնարքով Բէջանը ձեռք բերէ. բայց Մըլի Ամար Միրի Արաբանի վրայ չէր կարող պատերազմ գնալ ու յաղթել. վասն զի Միրի Արաբան մեծ ցեղի վրայ կիշխէր. հարիւրապատիկ աւելի ձիաւորներ ունէր, նա մանաւանդ այդ անհաշիւ ձիաւորներու կառավարող Հասայի Տուտէի եօթ որդոց երկիւղէն այդպիսի քայլ չէր կարող անել, այլ մի ուրիշ ել ճանապարհ կը խորհէր, կամ գողութեամբ և կամ մի այլ եղանակաւ փախցնել տալ Բէջանը։

Ամարի Մըլ ունէր Ռեհան անունով մի սիրուն աղջիկ. որ քրդական ամեն բարի յատկութիւններով օժտուած էր. նա ամուսնութեան հասակի մէջ էր. շատ անուանի ու հարուստ մարդիկ իբենց որդւոց հարս բերելու համար Ամարի Մըլին դիմած՝ խնդրած էին Ռէհանը. սակայն նա չէր յօժարած. մինչև անգամ հազար ոչխար և հարիւր ձի ղալան տուած էին. նա առ ոչինչ համարած էր։ Մի օր Ամարի Մըլի կինը ասրպեց իր մարդուն.—Մինչև երբ պիտի պահես Ռէհան. հասակը առած՝ ժամանակը անցնելու վրայ է. տուր թող երթայ։

Ամարի Մըլի երեւակայութեան մէջ կը դառնար Բէջան. յանկարծ մի բան յղացաւ իւր մտքի մէջ։ Լուր յղեց. իր մօտ հաւաքեց իր ցեղի և տոհմի երևելի անձնաւորութիւնները. Նորա հրաւէրն անմիջապէս գործադրուեցաւ, նորա տաեանը ներկայացան աշիրաթի ճիւղաւորութիւններէն Բօղ ու Բարանան, Կիզան և Սարը Մըլանի ցեղէն քաջ-քաջ մարդիկ. այն մարդիկ որ իւրաքանչիւր ազգի[1] գլխաւորներն էին և այն մարդիկ որ ամեն ցեղի մէջ իբրև քաջ հռչակուած էին։ Առաջինները տաեանի մէջ բազմած՝ վերջինները բարև բռնած՝ կանգնած էին։

Ամար աղան երբ տեսաւ ամեն իր ուզած մարդիկ պատրաստ են. նա մի գաւաթ օշարակ լցուց իր ձեռքով և տաեանի մէջ դրուած եռոտանու վրայ դրաւ. դարձաւ բազմութեան, ասաց՝

—Ո՛վ իմ պատուաւոր ու կտրիճ հպատակներս. Բօղ ու Բարանան. Կիզան ու Շիկագան և Սարը Մըլանցիք. ձեզ յայտնի է որ ես ունիմ մի աղջիկ Ռէհան անունով. գիտէք նաև որ շատ շատեր ուզնկան եկան, անհաշիւ գանձեր, ձիեր ու հօտեր խոստացան տալ Ռէհանի ղալան. սակայն ես չյօժարեցայ. իսկ այս օր ձեզ հաւաքած եմ այստեղ, մի առաջարկութիւն պիտի անեմ. ձեզմէ ով որ քաջ է, տաեանի մէջ տեղ գայ. այս գաւաթ օշարակը խմէ. գնա Կէսի Բէջանը բերէ. Աստուածակոյս կողմանէ իմ աղջիկ Ռէհանը

առանց ո և է ղալանի նորան պիտի տամ, ով որ իրեն կը վստահի, թող առաջ գայ։

Այդ տեղ հաւաքուած մարդիկ ընկան խոր խորհրդածութեան մէջ. մէկը իր տեղէն չշարժեցաւ, մէկը չհամարձակեցաւ մի բան ասել։ Ամար ողան իր առաջարկութիւնը կրկնեց ու երեքնեց. սակայն ամենը նաև լուր ու մունջ մնացին։ Ամենը ևս կը մտածէին միրի առաջարկութեան անկարելիութեան վրայ։

—Աղա՛, ասացին միաբան. ո՛վ կարող է միրի Արաբանի երկիրն ու գնել. Հասոյի Տուտէի որդոց երկիւղէն քարերն անգամ կը սարսափին. եօթ գլխանի վիշապն անգամ այդ երկիրը չհամարձակիր մտնել. հնար Աստուծոյ չէ մէկը գնա. քառասուն հազար անձ կազմող էլի [1] մը մէջէն Բէջանը փախցնէ։

Ամարի Մըլ ճանապարհ դրաւ երևելիներն ու քաջերը. լուր յղեց հասարակ ժողովրդեան, որ ժողովեցան միրի չուրջը, որոց ևս առաջարկեց նոյն խոստումը. անոնք ևս իրենց գլուխը կախեցին, մէկը չհամարձակեցաւ օշարակը վերցնել ու խմել։

Այդ միջոցին Քուլլըք սարէն հօտը տուն բերաւ. տեսաւ ժողովրդեան բազմութիւնը, շատ զարմացաւ.—Կեառը՛ք, ասաց. այս ինչ բազմութիւն է։

—Մեր միրը, ասաց Կեառըք, առեան հրաւիրեց իր էլի ամեն երևելի ու քաջ մարդիկ. նաև հասարակութիւնը, որոց առաջարկեց, որ մէկը գնայ. Բէջան բերելու լինի իր աղջիկը Ուէհան կնութեան պիտի տայ իրեն, բայց մէկը չհամարձակեցաւ եառտանւոյն վրայ դրուած օշարակը վերցնել ու խմել։ Նա իր կշեռքով ևս ոսկի սատնար Ուէհանի հետ։

—Կեառը՛ք, ասաց Քուլլըք. չես ամաչէր, այդ խօսքերը անտարբերութեամբ կարտասանես. դու մեռնէիր, այդ խօսքերը չասէիր, ապա մենք մեր կեանքը չէ՛ նորան պարտական եմք. այլ ես որ աւուր համար մենք պէտք պիտի գանք նորան, նորա խօսքը գետին ձգելը, զայն սպանել սուտ է. ես կերթամ, Բէջան կը բերեմ։ Ուէհանն ևս կառնեմ։

Քուլլըք միրի առեանը շտապեց. բարև բռնեց, կանգնեցաւ.

—Հա, որդի՛, ասաց միրը. որպէս ամենուն ասած էր. կարո՛ղ ես այս գաւաթը խմել ու գնալ, Բէջան բերել։

Քուլլըք առանց ձայն հանելու վեր առաւ գաւաթն, օշարակը խմեց.—Միրս, ասաց. Աստուծոյ յաջողութեամբ պիտի գնամ, Բէջանը բերեմ։

Վորտէք լսեց Քուլլըքի բռնած գործը, ծնկները ծեծելով, մազերը փետելով և ղառնագին լալով հասաւ միրի տունը (վրան), երգելով ասաց.

Միրս, արդեօք այդպէս կը լինի՛,
Որ մեր ու մեր տան գլխուն կանես.
Չէ բօղ ու բարանան հաւաքեցիր,
Կիզան ու Շիկազան շուրջդ ժողվեցիր.
Սարի Մլանի քաջերն ալ բերիր,
Որոց մէկն ալ Բէջան բերել չհամարձակեցան:
Չէ՛, անոնցմէ վերջ ժողովուրդը եկաւ,
Մէկն ալ այդ գործը յանձն չառաւ.
Արդեօք այդպէ՞ս է, որ մեր գլխուն կանես,
Զգիտես որ իմ որդին փոքր եւ անփորձ է,
Այդ տեսակ գործերու մէջ մտած՝ եղած չէ։
Չէ քու հովանու տակ մի փոքրիկ տուն ունէինք,
Մեր տունը պիտի գլորէիր, զայն չգիտէինք.
Սլիվին մեռած ու մեր տուն քանդուած էր,
Ի՛նչ հարկ կար Ամար ապան մնացածն եւս քանդէր։

—Վարտէք, ասաց Ամար աղան. այս բանի չէ. եթէ կարող է, թող գնայ, կատարէ. իմ աղջիկն ու իր կշռանքով ոսկի ես տանէ, եթէ կարող չէ, թող չերթայ։

Քուլլըք մօր վրայ բարկանալով ասաց.—Մայր, ինչ անեմ, որ ինձ սպիտակ կաթ ես տուած, եթէ ոչ հիմայ իմ ճզմայի Նալչայի տակ գլուխդ պիտի ջախջախէի։ «Ինչ որ կանէ, Աստուած կանէ. մարդ կը մեռնի, անունը կը մնայ, եզը կը մեռնի, կաշին կը մնայ. զռամաթուռան (որկրամոլ) կը մեռնի, սպասի կճուճը կը մնայ. ձին կը մեռնի ասպարէզը կը մնայ»։ Աստուած եթէ ինձ կօգնէ, Սոսըք եթէ տակս է, իմ գործ յաջող է, դուն ես ուրախացիր. իսկ եթէ Աստուած ինձնէ երես դարձուց, Սոսըքս տակէս առաւ, ես արծիւի թեւերու վրայ ալ նստեմ, իմ գործ անյաջող պիտի լինի։

Ահա մայր իմ, ես պիտի գնամ,
Աստուծոյ կամքով պիտի վերադառնամ.
Ինձ հալալ արա քո սպիտակ կաթ,
Ուրախ պահէ սիրտդ խանդակաթ:

—Որդի՛, ասաց մայրը, որ պիտի գնաս՝ Աստուած հետդ լինի. կա՛ց, քեզ մի քանի պատուէր տամ, որ չվտանգուիս. դու քո գնալիք ճանապարհներուն հմուտ չես և ապագայ վտանգներուն անփորձ ես։ Քո ճանապարհն շատ երկար է, մինչև Արաբստան քարքարուտ ճանապարհներէ պիտի անցնիս. տեղ կայ որ արծիւի պէս կարող գայլախազի քարեր իրար վրայ կուտակուած են. Սոսըք շատ զգոյշ քշէ, որ իր ոտները չվնասէ. երբ այդ վտանգաւոր քարքարուտներէ

անցար, կը մնաս Տարըքայ կիրճն ուր գողեր ու աւազակներ պակաս չեն, զգոյշ կաց, որ Սօսըք ձեռքէդ չխլեն։ Տարըքայ կիրճն շատ բարձր է, այն տեղէն կը տեսնուի Արաքսանու ընդարձակ դաշտը. այն դաշտը շատ չոր, անջուր, աւազոտ անապատ է. եթէ տեղ տեղ բոյսեր կը տեսնուին, այն միայն եաւշան բոյսն է և բընակիչներն ալ միայն այծեամներ են, որոնք կը բնակին եաւշանի բուլքերու տակ և այդ բոյսով կը սնանին։ Որդի՛, պատուէրս այս է. ձեր ձիանք շատ մի՛ քշէք. այծեամ բռնելու փափաքէ հեռի կացէք. այդ անապատը լայն ու երկար է. դաշտի միջով հինգ օր պիտի գնաք. այդ անապատին մէջ միակ մի հատ լիճ կայ, որ ձեր ճանապարհի ձախ կողմը կընկնի. այդ լճի ջուրը չափազանց նեխած է, մեծ մասամբ ուղտի և կրիայի միզուածքէ կազմուած է. գորտերով լիքն է, չորս կողմ դարշահոտութիւն կը բուրէ։ Այդ լճի ջուրը խըմելը վնասակար է։ Սօսըք այդ վայրերուն ծանօթ է. զգոյշ կաց որդիս, որ Սօսըք այդ նեխած ջուրը չխմէ, եթէ խմէ, այլ ևս յոյսդ կտրէ Սօսըքէն, նա անմիջապէս կուռի ու կը մեռնի։

Վորտէք դարձեալ երգով շարունակեց.—

Որդի՛ Բուլլըք, ձեր եօթը քեռին միրի Արաբանի մօտ են,
Անոնք միմիայն արաբերէն լեզուով կը խօսին.
Եօթն եւս բարձրահասակ եւ կարմիր դէմքեր ունին,
Եօթն ալ մեծ ու կապոյտ աչքեր ունին.
Եօթին ձիերն ալ մոխրագոյն ու պլսակաւոր են,
Արագաքայլ, հսկայ եւ ուժեղ են.
Սիրուն, լայն եւ հաստ կուրծքեր ունին,
Իսկ ետեւի կողմերնին որսի շան պէս բարակ են,
Ազդրները նապաստակի պէս կախ ընկած են,
Ականջներնին խարազանի պէս դիւրաշարժ են,
Բաշի եւ պոչի ծայրերն ասեղի նման ցցուած են,
Սմբակներն ալ բոլորակ կոտի պէս են:
Թամքերուն նայեցէք, Համասանու թամք են.
Ձեր քեռիներու գլխու փատոցը Ահմէտի են,
Ահմէտի վրայի կրկին փատոցներ ունին, որ Հերաթի են,
Մեծամեծ դաշոյններ ունին, որոց բուռը սպիտակ են,
Դաշոյնի ծայրերը ձկան ատամի պէս կեռ են,
Ղալիօններու փայտը կարճ ու կեռասենիէ են,
Իսկ ղալիօններու ամեն մէկը մէկ թուղթ ծխախոտ կը պարունակեն.
Կռուի միջոցին երբ ղալիօնները կը ծխեն,
Եօթ անօթի գայլերու պէս իրար ձեռքէ կը փախցնեն՝

Ամպի պէս կոյտ-կոյտ ծուխ կարձակեն իրենց բերնէն.
Ամբողջ երկիրը այդ ծուխէն կարծես մութը պատած է:
Բէջանը որ կայ, միրի Արաբանի ձին է,
Լաւ ուշադիր եղիր, նորա նշանն է այս.
Բէջանի աջ քիթն ու ականջը ծակած է,
Ծակերէն ոսկեայ օղքայ մի կախուած է:
Ձեր քեռիներ արաբերէն կը խօսին, ձեր լեզուն չգիտեն.
Երբ զանոնք կը տեսնէք կամ երբ կը պատահիք անոնց
«Մենք ձեր քրոջ որդիներն ենք, ասացէք.
Վօրտէքի հարազատ որդիներն ենք, կրկնեցէք»։
Մի կերպով անոնց յայտնեցէք, որ վտանգի մէջ չընկնէք.
Եթէ մի ճար ճարակ անեն, ձեր քեռիներ պիտի անեն,
Կամ դրամով Բէջանը կը գնեն, կամ մի հնարով կը փախցնեն:

*Վօրտէք իր որդոց խրատներ տալէն վերջը դաղտնի մի նամակ գրեց իւր եղբայրներուն, տուաւ մի մօլլայի որ շուտ տանէ, հասցնէ իր եղբայրներուն. որ գիտնան թէ իր քրոջ որդիներն, վնաս չտան։ Նամակի մէջ գրած էր.—«Հասոյի Տուտէի օճախի պատւոյ համար, ձեր քուր Վօրտէքի սիրուն։ այդ կողմեր կգան Վօրտէքի երկու ուդիք—Քուլլէք ու Կեառօն, մի հնար գտէք. դրամով, կամ բռնի և կամ գողութեամբ Բէջանը ձեռք ձգեցէք, յանձնեցէք Քուլլէքին, որ բերէ Ամարէ Մլին, նորա աղջիկը կնութեան տանէ։»*

*Մօլլան նամակը առաւ, ճանապարհ ընկաւ։*

*Քուլլէք ու Կեառօն իրենց պատրաստութիւն տեսան։*

*Առին իրենց հետ երկու քաջ հայեր—Բուղդէի Փլէն (հայ Բաղտասարը), Ղուկէի Լեզկօն նաև Տուքէթի Հասանը. հինգ հոգով ճանապարհ ընկան. զինուած ու զրահաւորուած լաւ ձիերու վրայ նստած քշեցին, գնացին։ Հինգ օրէն հասան Վօրտէքի սուրհանդակին. սուրհանդակ մօլլան մեռել թաղելու և դրամ չահելու զբաղուած լինելուն ուշացած էր. Քուլլէք քննեց. իմացաւ որ մօր սուրհանդակն է, նամակը ձեռքէն առաւ, զինք յետ դարձուց։*

*Հինգ հոգիէ բաղկացած փոքրիկ աւազակային խումբը իրենց ճանապարհը շարունակեցին, աննման քարքարուտ վայրերէ. սուր և վտանգաւոր գայլախազէ քարերու կոյտերու վրայէն անցան, բարձրացան Տառըքայ կիրճը, գլխիվեր դէպի Աշտաբատանու դաշտն։ Այդ տեղ փոքր ինչ հանգստացան. հաց կերան, տիկերով իրենց հետ բերած ջրէն խմեցին. հեծան, քշեցին։ Շոգ անապատի մէջ շատ նեղուեցան. շատ քիչ տեղեր եաւշանի քօլեր կերևային։ Յանկարծ տեսան որ մի եաւշանի քօլի տակէն մի այծեամ դուրս թռաւ, փախաւ։ Քուլլէք մօրը տուած խրատը մոռացաւ. յաղնած և քրտինքի մէջ կո-*

րած Սուրբով արձակեցաւ այծեամի ետեւէն, հա այստեղ, հա այն տեղ բռնեմ ըսելով ձին արագ-արագ քշեց. երկու ժամու չափ հեռացաւ իր ընկերներէն. պատուախնդրութիւնը չտարաւ որ դատարկաձեռն յետ դառնայ. Սուրբին ուժով տապանդակից, պնդեց այծեամի ետեւէն. վերջապէս մի կերպով բռնեց, բերաւ եղբօր մօտ. ասաց.—Կեառօ, եթէ դու ինձ օգնէիր, կարող էինք այծեամը շուտ բռնել. Սուրբ այդչափ չէր չարչարուէր։

—Եղբայր, ասաց Կեառօն. երբ դու այծեամի ետեւէն ընկար, տեսայ այծեամի և Սուրբի փախչիլը. որ Սուրբ կէս աւելի կերթար այծեամին բաղդատելով. խորհեցայ անունը քուկը լինի, դորա համար չօգնեցի։

Քուլլըք յոգնած էր. արդէն երեկոյ էր, պատուիրեց Կեառօյին որ այծեամի մսէն խորոված չինէ. մինչև ինքը փոքր ինչ քնի ու զարթնի։ Պատուիրեց որ Սուրբի վրան ես հսկէ։ Ինքը զափուէթը վրան առաւ. ու քնեցաւ։ Կեառօն իր ընկերներով խորոված պատրաստելու հետ էր, ուշադրութիւն չի դարցուց Սուրբին, որու սանձը թամքի յոնքը ձգած էր, ոտքերն ես չիտարած։ Անցաւ բաւական ժամանակ, Կեառօյի միտքը ընկաւ. դարձաւ Սուրբին նայեցաւ, տեսաւ անյայտացած է. յանկարծակիի եկաւ. ընկերներին առնելով այս-այն կողմ որոնեցին, չգտան։ Զարթեցաւ Քուլլըք, իմացաւ եղածը, թոյլ տուեց խորովածը, ընկերներով որոնեցին Սուրբը. գտան Սուրբի ոտից հետքերու ուղղութիւնը, որ կը նշմարուէր աւազի մէջ. բռնեցին հետքերու ուղղութիւնը ու գնացին. պարզ լուսնկայ էր. շատ քիչ գնացին, Աստուած գիտէ. տեսան Սուրբ մի լճակի եզրն կանգնած է, այս լճակը իրենց մօր ասած նեխած, գորտի, կրիայի և աւղտի մէզէ կազմուած լիճ էր. տեսան Սուրբ սանձը կտրած, նեխած ջուրը խմած, ուռած, փորքաշն ես կտրած ու թամքը գետին ընկած էր. այլ ես Սուրբ շարժելու միջոց չունէր։

Քուլլըք և Կեառըք երբ տեսան Սուրբի վիճակը.

—Վայ մեզ, ասացին. իրենց գլխուն զարնելով. մենք ինչ պիտի անենք այս անապատի մէջ առանց Սուրբի. Սուրբով մեզ փառք ու պատիւ պիտի վաստակէինք, այժմ ամեն բան կորուսինք։ Քուլլըք վազեց, Սուրբի սանձէն բռնեց, քաշեց. սակայն նա չշարժիր, ետեւէն հրեց, խարազանով հարուածներ տուեց. սակայն դարձեալ անշարժ էր. որպէս թէ գամուած լինէր գետին։ Տեսաւ Սուրբի փոր հետզհետէ կուռի, պայթելու վրայ է. վերջին ճիգ մը ես արին, հրելով-հրելով ջրէն դուրս հանեցին. տակաւ առ տակաւ մինչև իջեանը հասուցին։ Քուլլըք Սուրբի դժուարին դրութեան վրայ շուարուեցաւ, իր մահը աւելի քաղցր էր իրեն համար, քան Սուրբի ցաւալի վիճակը. «Սուրբով էր որ անուն պիտի հանէի, այժմ ինչ քար ձգեմ իմ գլխին,

այլ ես ես մարդու երես չեմ կարող տեսնել. մէկ ձի ունէինք՝ դուրս տուեցինք. մնացինք մենք ու այն խօսքը որ մեր նախնիք տուած են. «Գնաց իր հօր վրէժը լուծելու, իր կարմիր արիւնն ալ վրայ տուեց»։

Ընկերներով հոգ տարին, դեղ ու դարման արին. ճանապարհէ հեռու քաշուեցան մի առանձին վայր, որ միջոց մի մնան, մինչև Սօսըք լաւանայ։

Չորս օր այդտեղ մնացին, դեղօրայք բաւական օգնեցին. Սօսըք կարող էր քայլերն փոխել. այդ տեղէն ևս բարձան, մի բարձր դարի ետև իջևանեցան, որ անցորդի աչքէ հեռու լինին։ Այդտեղ ևս չորս օր մնացին, մէկ օր Քուլլըք ասաց.—«Ձիաւորուեցէք. ազայք. Սօսըք միշտ իր պատիւը պահած է. այս անգամ ալ յուսամ եմ որ գլխ ամօթով պիտի չթողու, ինչ որ սրած է, Աստուած արած է»։

Հեծան, երկու օր, երկու գիշեր քշեցին, Սօսըք ճանապարհին լաւ չէր բանէր իր ընկերները թոյլ կը քշէին իրենց ձիանք, որ Սօսըք չվնասուի։

Հասան մի փոքր դար, ուր իջևանեցան ու հանգստացան։ Այս դարէն կը տեսնուէր Արաբստանայ միրի էլաթը, որք վրաններ զարկած էին նոյն տեղէն անցնող գետի մը երկու ափերու վրայ. գետի այն կողմ, հաստատուած 3000 սև վրաններու մէջ կերևէր մի մեծ սպիտակ վրան, որ Արաբստանայ միրին կը պատկանէր։ Գետի այս ափի վրայ ևս սև վրաններ զետեղուած էին։ Մեր խմբի իջևանած վայրէն, մինչև այդ վրանները 15 ժամ հեռաւորութիւն ունէր։

Քուլլըք իր խմբով գիշերը նոյն դարի վրայ անցուց, հանգստացան, վեր ի վերոյ իրենց անելիքը որոշեցին. գործի պիտի սկսէին, բայց Սօսըքի վիճակը չէր ներեր. երեք օր ևս սպասել որոշեցին։

Որոշուած էր, ամեն գիշեր ընկերներէն մէկը պահպանութիւն պիտի անէր, այս գիշերուայ պահպանութիւնը Կեառըքի յանձնուած էր։ Կեառըք այս անգամ զգոյշ էր, հեծած էր Սակլավին. խմբի չուրջը ման կգար. Ման գալու ժամանակ հեռուէն մի ձայն լսեց. Սակլավին քշեց ձայնի կողմը, տեսաւ եօթ զաթար ուղտերու խումբ, ձայն տուեց.—Լօ, լօ, լօ. դուք ինչ մարդ էք։ —Մենք Արաբստանայ էլիցն ենք.—Այդ ինչ բեռ է կը տանիք։

—Միրի աղջկայ օժիտը կը տանենք եուրտատեղ (հովտավայրը խումբ մը վրաններու զետեղուած տեղ). ու դառնանք, վաղը չէ միւս օրը միրը ևս պիտի գնա եուրտատեղ։

Կեառօն Սակլավին քշեց ուղտապաններու վրայ մէկին միւսին փայտի հարուածներ տուեց, շատերու գլխները ջարդեց, մնացած

մէկ քանին ալ փախան. ինքը ուղտերը իրենց բեռներով խառնեց իր առաջ, բերաւ իր խմբի չուրջը նստեցուց։ Քուլլըք զարթեցաւ, տեսաւ Կեառօյի արած քաջութիւնը, մի հառաչանք արձակեց, ասաց։

—Այս ինչ է, Կեառօն ինձմէ աւելի քաջ գտնուեցաւ. քաջութեան համար ես եկած եմ, Կեառըք կը գործէ, ինձ համար մեծ ամօթ էր որ ես քնէի։

Խումբը մտածեց որ առաւօտ խուզարկուներ զիրենք կը փնտռեն, երբ իրենց պառահին առանց Բէջան ձեռք ձգելու կռուի պիտի բռնուին, աւելի լաւ համարեցին մի ապահով և գաղտնի վայր քաշուիլ։ Այն տեղէն տեղափոխուեցան մի անմատչելի սարի կող

Դեռ արշալոյսը չէր բացուած.—Կեառօ, ասաց Քուլլըք. եա ես զիս մի անգամ ցոյց պիտի տաս այն էլաթի մէջ, եթէ յաջողութեամբ եկայ, Աստուծուն փառք կուտանք. իսկ եթէ վտանգուեցայ, վրէժս կը լուծէք. Սորքս չէք թոյլ տար որ արաբներու ձեռք անցնի, եթէ չի կարողացաք ազատել, սպանեցէք։ Քուլլըք գնաց։ Երեկոյն մօտ էր, գնաց վրաններու մօտեցաւ, մտաւ գետի եզրը բուսած ցախերու մէջ պահուեցաւ, որպէս զի գիտէ թէ գետի հունք ուստի է, որ տեղէն մարդիկ անց ու դարձ կանէին։ Կէս գիշեր մօտ էր, ձայն-ձուն դադրած էր, Քուլլըք անցաւ ջուրը, վրանի մի անկիւնից ներս սողաց, ձեռքը դրաւ թուրի բռնի վրան, մի անգամ կքնաւ որ միրը սպանէ. յանկարծ աչքը ընկաւ միրի գլխուն, որ դրած էր իր կնոջ թեւի վրան ու հանդարտ քնած. «քնած մարդը սպանել տմարդութիւն է մտածեց։ Քուլլըք քանդեց կնոջ վզի մարգարտեայ շարանը, առաւ, ելաւ դուրս. որան արեց Բէջանի վայրը, տեսաւ անկարելի է այն տեղէն դուրս հանել, հեռացաւ. ուրիշ ժամանակի թողնելով այդ գործը դարձաւ իր խմբի մէջ։

Արդէն բօթ հասած էր միրին թէ իր աղջկան օժիտն ու ուղտերը իրենց բեռներով տարած են։ Միր «տէֆի հաւարէն» զարկեց, հաւաքուեցան երկու հազար ձիաւոր Հասոյի Տուտէի եօթ որդիք ձիաւորներու առաջ անցան, իրենց երկրի չորս կողմ խուզարկեցին, չգտան։

Հետեւեալ օր արշալուսի հետ Քուլլըք գետեզրը ցախերու մէջ դարձեալ ի պահ մտած էր, եկած էր այս անգամ ո և է մի հնարքով Բէջանը ձեռք ձգէ, որ հեռանան այդ վտանգաւոր վայրէ։ Տեսաւ որ միր երկրորդ անգամ «տէֆի հաւարէն զարկեց, ինքն եւ երկու հազար ձիաւորի գլուխ անցաւ, հաւաքեց, պատուիրեց որ գընալու են գողերը որոնելու։ Այս միջոցին Բէջանը դուրս հանեց մի քրդուհի, տարաւ աղբիւրի վրան որ ջուր խմցնէ. ակի թասաք։ Քուլլըք ջրի ափը երեւցաւ, հարցուց թէ ջրի հունը որ տեղէն է։ Աղջիկը ցոյց տուեց։

Քուլլըք անցաւ այն կողմ. մօտեցաւ ձիուն, տեսաւ նշանները, որ մայրն ասած էր, նա Բէջանն էր. կասկածի տեղի չկար։

—Աղջիկ, այդ ձին ում կը պատկանի, հարցուց։

—Ինչու, միթէ դու օտարական ես, որ կը հարցնես. չես ճանաչեր Բէջանն է, միրի Արտաքանի ձին է. «Թէջֆի հաւարէն» զարկած է, կը ջրեմ որ միրը հեծնի, գնայ։

Աղջիկը դեռ խօսելու հետ էր, Քուլլըք յանկարծ յափշտակեց աղջկան ձեռքէն Բէջանի սանձը, թռաւ քամակը ու քշեց դէպի իր խմբի կողմ։

—Ո՞ւր կը տանես. դա Կէօր Բէջանն է, երկիւղ չունես միրէն. չէ քու կտորները երկինք կը հանէ, գոռաց աղջիկը։

—Ես ամարդութեամբ չեմ տաներ. լուր տուր միրին, որ մենք այն դէմի սարի մօտ սըրըլէքներու մէջ ենք. մինչև ինձ անուն չթողում, չեմ գնար, թող չասեն «Քուլլըք անմարդութիւնով Բէջանը տարաւ փախաւ»։

Միրը երբ այս լուրն ալ լսեց, կրկին և կրկին «Թէջֆի հաւարէն» զարկեց. իւրաքանչիւր տնէ մի մարդ հեծաւ, վեց հազար ձիաւոր կազմ և պատրաստ ձիաւորուած պատրաստ կանգնեցան միրի վրանի շուրջը. առաջնորդի կապասէին մեկնիլ։

Քուլլըք դեռ իր խմբին չէր հասած, Կնառըք հեռուէն նայեցաւ, տեսաւ միրի վրանի դուռը եւ ամպի կոյտի նման մի բան նշմարեց, այդ սեւութիւնը ծովի ալիքներու նման կը ծփծփար. զգաց որ այս շարժումը աննշան շարժում չէ, մի մեծ դէպք պատահած լինելու է, կամ Քուլլըք իրեն համար մի անուն առած է, կամ վտանգի մէջ ընկած կը լինի, ինչ և է. պէտք է պատրաստ կենալ մտածեց։

Ինք ու իր ընկերները ձիանք հեծան պատրաստ կանգնեցան, տեսան հեռուն մի անձ փոշիէ ամպի մէջ խառնուած կը գայ, առոնք առաջին անգամ թշնամի կարծեցին. Քուլլըքն էր այդ ամպի մէջէն դուրս թռաւ յաղթանակով, Բէջանի վրայ հեծած եկաւ, բարև տուեց իր ընկերներուն. քանի կարճ բառով բացատրեց անցքն ու միրի պատրաստութիւնը։

—Մեր և թշնամեաց մէջ տեղ երկար ճանապարհ կայ, ասաց Կնառօն. մենք կարող ենք խոյս տալ և մի ապահով տեղ պահուիլ։

—Չէ, ասաց Քուլլըք՝ այդ անկարելի բան է, ինձ անուն պիտի թողում. գողութեամբ, կամ փախցնելով տանիլ իմ պատւոյն ամօթ կը բերէ. եթէ փախչիմ, այլ ես որ կորիճի մօտ երես պիտի ունենամ։

Քուլլըք ձիէն իջաւ, իր խմբին հրամայեց. ամենք ալ իջան— թշնամին դեռ հեռու է, ասաց նա. նախ պէտք է մտածենք թէ ինչ

անելու ենք, ապա կռուենք։ Խորհուրդ կազմեցին որ նախ Քուլլըք պիտի սկսէր կռիւը. Կեառօն եւ Քուլլըքին պիտի օգնէր. միւս երեք ընկերները իրենց հետ ունեցած կողոպուտը պիտի պահէին. ի հարկին անոնք ալ պիտի մասնակցէին կռուի։

Սօսըք կազմ. պատրաստ էր, Քուլլըք Բէջանը յանձնեց ընկերնուն, ինքը թռաւ, Սօսըքի վրայ։

—Բէջանը հեծիր, Սօսըք հիւանդ է, ասաց Կեառօն.

—Այդ ինչ յիմար-յիմար կը խօսիս, ասաց Քուլլըք. Բէջան հեծնեմ որ ամբողջ Արաբստանայ էլը ասէ թէ ամէր ձիով քաջութիւն արաւ»։

—Ուրեմն իմ եղբայր. արի իմ Սակլաւին հեծիր. Սօսըք հիւանդ է, քու գլուխ վտանգ կը բերէ.

—Սակլաւին ինձմէ աւելի քեզ պէտք է. Կեառօ. աւելի լաւ է մարդ իր սովորած ձիու վրայ մեռնի, քան թէ անսովոր ձիու վրայ նստի, յաղթող հանդիսանայ. ես կը ճանաչեմ իմ Սօսըք, նորա ամեն յատկութիւնները ինձ ծանօթ են. նա գիս հազար վտանգներէ ազատած է. Սօսիքս միշտ պահած է իմ և իր պատիւը. նա մի օր վատանուն բերած չէ իր վրայ. կը յարգէ տէրը։

Միլլի Արաբանի բանակը վեց հազար ձիաւորէ կը բաղկանար, որք արաբական լաւ-լաւ նժոյգներու վրայ նստած կը խաղային յառաջ, դէպի Քուլլըքի խմբի վրայ, այդ բանակին կառաջնորդէին Հասոյի Տուտէի եօթ որդիք. Տուտէի կատաղած որդիք ամեն կողմէ պաշարեցին. Քուլլըքի խումբը մնաց մէջ տեղ։

Երկու եղբայրներ, Քուլլըք ու Կեառօն ելացան հրապարակի մէջ տեղ. սկսան ուշադրութիւն դարձնել թէ որ կողմի հետ պիտի կռուին։ Ըստ սովորութեան երկու կողմի գլխաւորներն պիտի սկսէին կռիւը. ապա հասարակ ձիաւորները։ Քուլլըք ձին քշեց առաջ, մեծ քեռին իր ձին խաղցուց Քուլլըքի վրայ, ու յետ դարձաւ. ապա միւս քեռին։ Այսպէս ձիերն առաջ ու յետ խաղացնելով տաքցան։

Այս կողմէն Քուլլըք ու Կեառօն. այն կողմէն եօթ քեռիները քանի անգամ քշեցին ու դարձան։

Կռիւը տաքացաւ, վեց հազար ձիաւոր այն կողմէ. Կեառօն ու Քուլլըք այս կողմէ մեծ գոռոցով ու աղմուկով իրար վրայ յարձակեցան ուղղակի։ Տուտէի եօթ որդիք ոչ լեզու գիտէին ոչ կարգ, աջ ձեռներուն բռնած էին մերկացած թրեր, իսկ ձախերնին վահան. ուսերէն կախ տուած էին երկար նիզակներ. ղալիօնները որ ամեն մէկը մէկ և կէս թուղթ ծխախոտ կը պարունակէր, մի կողմէն կը ծխէին, միւս կողմէն կը կռուէին։ Որ մէկին ղալիօնը սպառած լինէր. անօթի գայլի պէս միւսին ձեռքէն կը փախցնէր, այնպէս որ ամբողջ բանակը որոց ծխախոտի ծուխի մէջ կորած էր։

Եօթն եղբայրներ ծխախոտի ծխէն տաքցած՝ այս անգամ ուղղակի յարձակում գործեցին Քուլլըքի վրայ. սակայն Քուլլըք այնչափ արագաշարժ էր, եօթի թրերու հարուածը աննպատակ անցաւ. այս անգամ ինք ընկաւ իր քեռիներու ետևէն. բայց յանկարծ Սօսըք կանգնեցաւ այնտեղ, ուր Քուլլըք հարուած տալու վրայ էր. Սօսըքի ոտքերն բռնուեցան։ Քուլլըք որչափ ճիգ կը թափէր, կատաղանդակէր. վտանգէ հեռանալ կը ջանար, հնար Աստուծոյ չէղաւ։

Զայս որ տեսան իր եօթ քեռիներն իրարու ետևէն եկան, մի մի զարկս մխեցին նորա սիրտն ու կողերը։ Քուլլըք ձիու վրայէն գլորեցաւ, ընկաւ գետին։ Քուլլըքի ընկնիլը երբ տեսաւ Կեառօն, ձայն ձգեց իր ընկեր երկու հայերուն որ իրեն օգնեն.—Դուք ձիաւորներու առաջը կտրեցէք. մի թող տաք փախնելու, ես Քուլլըքի վրէժը պիտի լուծեմ։

Բաղտէի Ֆլէն, Ղուկէի Լեզկօն ամբողջ բանակի առաջը բռնեցին. սկսան վեց հազար ձիաւորի հետ կռիւ. իսկ Կեառօյի նպատակն էր իր քեռիներէն վրէժ առնել, ընկաւ քեռիներու հետ կռիւ, իր սուր նիզակով վեց քեռին ալ սպաննեց, հասաւ մնացած մէկին, նիզակը պատրաստեց որ նորա սիրտը մխէ, վեհանձնութիւնը բռնեց.—Գնա՛, ասաց. քեզ չեմ սպաններ, Գորտէքի պատուին համար որ նորա հօր տուն աւեր չդառնայ։ Քեռին քրդերէն չէր գիտէր, բան չհասկացաւ։

Կեառօն երբ իր քեռիները վերջացուց, կայծակի արագութեամբ յօգնութիւն հասաւ Բաղտէի Ֆլէին և Ղուկէի Լեզկոյին, երեքով սկսան ջարդել։ Ձիաւորները երբ տեսան իրենց գլխաւորները սպանուած սկսան կռուի դաշտէ փախչիլ, կարծելով թէ երկինքէն գրող մը մտած է իրենց մէջ. բոլորն ալ պիտի վերջացնէ։

Սարսափը այնչափ մեծ և փախչողները այնչափ շատ էին, շատեր ձիաններու ոտից կոխան դարձան, մեռան։

Կեառօն դարձաւ Քուլլըքի մօտ, ձեռքէն բռնեց որ բարձրացնէ, ձիու վրայ նստեցնէ։ Քուլլըք որ թէև մահուան ճգնաժամի մէջ՝ սակայն եղածը տեսնելով ուրախ-զուարթ ասաց.—Սօսըք բեր մօտս, ման ածէ, մէկ անգամ ևս տեսնեմ, ուրախանամ։

Կեառօն բերաւ, ման ածեց. մինչդեռ Քուլլըք մի թրի հարուած տուեց, Սօսըքի երկու ոտները կտրեց։

—Մեղք չէր, այդ ինչ արիր, անաչէն, ասաց Կեառօն.

—Կեառօ, ասաց Քուլլըք. դու չես գիտեր. Սօսըք չէ կարող քալել, որ հետդ տանես. նա երբ այստեղ մնայ, Արաբստանու էլը պիտի ասէ թէ «Քուլլըքի ձին գերի բռնինք. այս մէկ, երկրորդ՝ Սօսըքի յարգը չգիտեն, տանեն ջուր ու փայտ պիտի բառնան։

Քուլլըք սկսաւ հառաչել.

—Եղբայր, քեզ ինչ եղաւ, ասաց Կեառօն.

—Քո տուն շաւիրի, ասաց. արի, տես, ինչ եղաւ։

Կեառօն տեսաւ զարկսը մխուած է սիրտը, դուրս քաշեց. դուրս քաշածին պէս ընկաւ, մեռաւ Քուլլըք։

Կեառօն եղբօրը դիակը բարձաւ ուղտերէ մէկուն վրայ. Նոյն օրը ճանապարհ ընկաւ իրենց հայրենիք իրենց աւարով և ուղտերով։

Քուլլըքի դիակը ուղտի վրայ զետեղեցին այնպէս ինչպէս ողջ մարդը նստած լինի, ուղտի իւրաքանչիւր քայլուածքին Քուլլըքի ձեռքը յետ, առաջ կերթար, կգար։

Քիչ ու շատ գնացին, մօտեցան Ամարի Մլի երկրին։ Կեառօն իբրև աւետաւոր, առաջ յղեց Բաղտէի Ցլէին, որ գնա, աւետիս տայ միրին։

Աւետաւորը գնաց, միրի առեանը կանգնեցաւ, ասաց.—Ակնջ-կլէս, աղա, փառք Աստուծոյ. յաղթանակաւ վերադարձանք. վաղ Կեառօն իր աւարով և Բէջանով կը վերադառնայ։

Բաղտէի Ցլէին իբրև ակնջկըլայ թանկագին ընծաներ տուեց միր։

Վարտէք հետևեալ օր իր բարեկամներով գնաց դիմաւորելու իր որդոց։ Տեսաւ փոխանակ Քուլլըքի, աւարին կառաջնորդէր Կեառօն. համբուրեց Կեառօյին, հարցուց.—Կեառօ, որդեա. ուր է Քուլլըք, ձեր խմբի մէջ չերևար։

—Ետևի կարաւանի հետ կգայ, մայրիկ.

Մայրը անմիջապէս զգաց որ որդին սպանուած է. եթէ նա ողջ լինէր, աւարի կարաւանի առաջ ձի խաղցնելով պիտի մտնէր վարատեղին։ Նա շտապեց, արագաքայլ գնաց առաջ. ինչ տեսաւ. Քուլլըք նստած էր ուղտի վրայ, աջ ձեռքը կերթար ու կգար. ծնկներուն զարկեց. սկսաւ հեկեկալ, լալ ու երգել.

—Քուլլըք, մեռնեմ ձեռացդ որ կախեր ես,
Ետեւ ու առաջ շարժելով կը քարոզես.
Աշխար այսպես միշտ եղած է, կասես.
Այսպես ալ պիտի անցնի ձեռքով նշան կանես:
Չկայ Սուրբ. որդի, ո՞ւր են զէնքերդ
Ինչու պինդ փակած ես վառուրուն աչքերդ.
Սուրբ ինչու թողիր, ուղտի նստար,
Այս աշխարհէն ինչու այդպես շուտ հեռացար: *

* Այլ եւ այլ ճիւղերով կը պատմուի այս վէպը. ունի շատ երգեր, Վարսէք եւ Ռէհան երբ կերթան դիմաւորելու, մեռած կը տեսնեն. երկուքն եւս փոխ առ փոխ կերգեն: Այս երգերն գրի չեմ առած:

Վարտէք եօթ օր եօթ գիշեր սուգ արաւ, սև կապեց, լացաւ ու ծնկներուն ափեց:

Իսկ Ամարի Մըլ երբ Բէջանը տեսաւ, մեծ ուրախութիւն արաւ, եօթն օր, եօթը գիշեր դօհուլ զուռանք ածել տուեց, հարսանիք արաւ. մխիթարեց Քուլլըքի մօր, իր Ռէհան աղջիկը պսակեց Կեառոյի վրայ:



# 16

## ՔՈՒԼԼԸՔ ՈՒ ԿԵԱՌՕ

(Արճէշու բարբառով) *



Կեղի չեղի, Կիկանցոց, Մլանցոց էլ աղասին Ամար անունով դոլվաբւոր քուրդ մի կեղի. էդոր Փարիշտան անունով չատ խորօտիկ աղջիկմ կեղի, անունով, նշանով, յէրկէն բոկով. ջուր խմած տեղ բոկէն կերևէր: Ինչ կնտար դօլվաբւոր քուրդ կին էդոր էլի մէջ, էկան էդոր աղջկէն յուզնկան, մէկին էլ խոստ չէկաւ:

Մնաց օրմ, յինքն ուրին չմ՛տ մէզեց. ուր միզուածքով խորխուրդմ էրաց, յէլաւ ուր խորխուրդ ուր կնկան էլ աշկարա էրաց, ասաց.—Կնի՛կ, ես բամ մեմ մէզեր եմ:

Կնիկն ասաց.—Աստուած բարին կամենայ, խէրն էնայ քու միզուածք, ի՞նչ ես խորխուրդ էրեր:

Մարդն վերուց, ասաց.—Էս կնտար աղա, իշխաններ մեր էլի միջէն օրական մեր աղջկէն յուզնկան էկան, մենք էլ մէ խետ չիչկռանք, չի տուեցինք. մկայ ես լսեր եմ Արաբստանայ էլ աղասի Խդըր աղա—Բրայիմ աղա կան, էնդոնց մէկ խորօտ ձիմ կայ, ա-

*) Իմ առաջարկութեամբ գրի առած է Ալաշկերտի Խասուր գիւղացի Իսրայէլ Միրաքեանը: Ինչպէս կերեւի տաղը երգերը հայացուցած պատմած է, բայց թէ զրուածքի եւ թէ երգերու մէջ շատ թերութիւններ կային, կարգադրելու համար մեծ հոգ տարած եմ, եւ կարգի դրած:

Նուն Բէջան ու Բերենք մէկ ծանոր ազաթ-իֆրամ էնենք մեր աղա, իշխան մարդկանց, յետին դրուն էլ բերենք մէկ կթխէմ չարբաթ դնենք օսկի սաճարախի մրէն, բերենք դիվնի օրթալախ. Ես վերեւանց կը բռնամ, կասիմ.—Աղա, իշխաններ, դուք ջրմնքդ էլ էկաք իմ աղջկէն յուղնկան, ես մէկիդ էլ խօսք չտուեցի. յէսօր իմ աղջիկ Փարիշան խանըմ էկեր ա մայթրնի օրթալախ, որ մէկիդ կուվաթ օր կը խասի, ձեր մոքով, ձեր խելքով որ մէկդ որ միտք ունիք իմ աղջիկն յուզելու, էդ կթխայ չարբաթ վերուցէք, խմէք. գնացէք Արաբստանու Խդըր աղա, Բրայիմ աղի Բէջան անունով ձին բերէք, ես իմ աղջիկ—Փարիշան խանըմ՝ բերող տղին առանց դալնի տամ։

Կնիկն էլ ասաց.—Աստուած խէրն էնա, աղէկ խորխուրդ ես էրեր, էդ բան օր էդլա էնիս, չատ աղէկ ա, բալքի աղջիկ տանք իրկան, ուր կարդուելու վայգ էլ խասեր ա, մէկ օր մի եա մեր խովըւուն եա մեր մչկու խետ կը ճօչան (բանբասեն), մեր նամուսին ամօթ ա, մեր պատիւ ափսոս ա։

Էն մէկել օր Ամար աղէն յէլաւ, ձեռ էրաց, թասպիր տեսաւ, տուեց հաւարի, դումբ զարկից, էլի մէջ տղքատ, դօլվաթւոր ջրմեն ղանչեց, բերից տուն։

Դումբ զարկողից էկողները խարցուցին.—Ամար աղէն մզի ընչի՞ ա խանչեր, Աստուած խէրն էնա, ինչ յաղով ա։

Ասաց.—Ըսկի՛, էլման յէսօր ազաթ-իֆրամ պտի էնայ։

Գացին դիւանն նստան. Ամար աղէն ասաց.—Ինչ օր քեռուց կտրիճ ա, ինչ օր յինք ջասարաթով, ջնսով ա, ոն մնացեր ա, ոն չմնացեր, ջրմեն խանչէք։

Մչկներ ասեցին.—Աղա՛, ղըմեն խանչեցինք, մեր մէջի մեծնիր Սլէմանի էրկու Լամուկ—Քուլըրք ու Կեառօն մինակ չենք խանչեր։

Աղէն ասաց.—Գեացէք, էնոնց էլ ասէք, թօ գան, էնոնք էլ կտրիճ տղեկներմ կերևան։

Մչակներից մէկը գնաց էնոնց տուն, Կեառօն ու Քուլըրք բերելու, ներս մտաւ, բարև տուեց։

Կեառօն բարևն առաւ, ասաց.—Խե՞ր ա։

—Շուֆր, խեր ա, ասաց. յէլի էրթանք, աղէն քեզի ու քու աղբօր կը խանչայ ազաթ-իֆրամի։

Կեառօն ասաց.—Որ ջրմալ ա, աղբէրս Քուլըրք հալա քնած ա. գնա՛, նստի յոտներու մօտ, յոտներ մաժա՛։

Քուլըրք սովորեր էր, էդոր քնած տեղէն ձէն տալով չիմցուցին. պտի էնդոր ոտներ մաժելով քնած տեղից վեր խանեն։

Մչակ գնաց, Քուլըրքի ոտներ մաժեց, Քուլըրք զիմցաւ յելաւ, ասաց.—Խե՞ր ա. ինչ կայ։

Ասաց.—Շուֆրը, խեր ա, Ամար աղէն ձեզի կը խանչայ։

Կեառօն ասաց.—Դու գնա՛, ես ու Քուլլըք յետևանց կուգեանք։

Միակ յելաւ, գնաց: Կեառօն յելաւ, արվաճին Թալեց Քուլլըքի Թևերու վրէն, յելան էրկու ալբէր մէկտեղ գացին։

Կեառօն ասաց.—Դիտե՛ս, Ամար աղէն էս ծանար իրrում, ազապ ընդի՛ ա էրեր։ Քուլլըքն ասաց.—Չէ՛, չի զանեմ։

Ասաց.—Էսօր ելի միջի աղէք, իշխաններ որ էկան էսոր աղջըկան յուղնեկան, որ չառուեց, էլ մարդ գինք վրէն չեչեց, տեսու որ աղջիկ պտի մնայ ուր փէրէն. էս ազապ ու իրում որ էրեր ա, բաւէ մէկ կերպով տայ իրկայ։

Քուլլըք ասաց.—Ի՞մայ պտի տայ իրկան։

Կեառօն ասաց.—Իմ մէր քառուց քեռնիմ որ յառէջ գացեր ա Ամար աղի տուն, կնկանից ա լսեր Ամար աղէն էդ բան պտի էնայ։

Քուլլըքն ասաց.—Ի՞նչ բան պտի էնայ։

—Ամար աղէն ազապ-իրում պտի էնայ, յետին գրուն պտի բերայ կԹխէմ ծառբաք օսկի սանճարախ վրէն դիվճի յօրքալախ, ասա.—Ազմ, իշխաններ, դուք յըմնեքդ էլ էկաք իմ աղջկէ յուղնկան: Էնանք էլ պտի տանն.—Խա՛, մենք էկանք, բալէ դու չառուիր . . . .։ Կեառօն էս ասաց, սրծաւ, դարձաւ Քուլլըքին ասաց. — Քուլլըք, մեռնիմ քեզի. չէղի յէլիս մէկ բանմ էնիս. մեզի ինչ լաղա կայ յէմալ բանեռուց. մենք էրկու խոռ կարիպ-էբում տղայ ինք, յընկեր ինք յԱրաբստանու երկրից էստեղ, մեզի կառքինք։

Քուլլըքն վերցուց, ասաց.—Կեառօ, վալա իմ մէր Որտէն քեզի իմ խօրից չի բռներ ա, տէս, քեզի խուվըվուց ա, Նախըրորդից ա, յուցկա, յանկուց ա բռներ ա, որ դու յէմլա վախկոտ ըս. դու յէմալ է իմ խէր Սլէմանի աղէն չէղիս. միտդ չի գայ. իմ խէր մեռնելու վախք օսեար էրաց, ասաց.—Էն բան որ խարիր մարդ չի կեառնայ էնայ՝ դուք էրէք, որ խըլղ ահէն.—Տեսէք, հարծներ խուչ ին ու խաչի էլ գաւակ։ Միայ դու իմ գլխուն խուրճա՛ն կը կարգաա, կասես. չեմ մօտենա. ապա ես չմօտենամ, էլ ո՞ր մօտենայ. Ճազր Փարիշան խանըմի պէս աղջիկ կառիմ։

Էրկու ալբէր էսլա մուշաւրա էփին, գացին մտան Ամար աղի դիւաճ. բարև տուեցին ճազրներուն, բարև առան:

Ամար աղէն վերևանց ասաց.—Տեղ տուէք էդ էրկու ջահէլներուն։

Խաց բերին, խաց կերան. յըմեն բան խըլըսաւ, ճարէկոն ձեռ էրաց ուր խայլօճ, ճարգիլէճ չինել, ջղարա քաշել։

Տեսան որ Ամար աղի մչկու ձեռ օսկի սանճարախ, մէկ կըԹխէմ ծառբաք էլ վրէն գրած բերեց դիվճի յօրքալախ դրեց, յետ քաշուաւ:

. Էդ Նստող աղէք ու իշխաններ տեսցին յուրենց մեջով.—

Ջանըմ, ՜ակեր, չայ-ճարբաք էր, յառջին դրուն էկաւ, ղայֆայ էր էլմէն, մենք խաց կերանք, պըծանք, էս ինչ պտի էղնի։

Մէկ էլ տեսան Ամար աղէն վերուց. — Աղա-իշխաններ, դուք ըլմենդ էլ էկաք իմ աղջկէն յուղնկան, ես չտուեցի։

Ասեցին.—Խա, դու սաղ մնաս, դու չտուեցիր, մենք էլ գացինք ուրիշ տեղէ աղջիկ բերինք մեր տղին։

Ասաց. — Ցէսօր ես լէ իմ աղջիկ պտի կարգիմ, բանցա էրէք. էդ կթխէն իմ Փարիշան աղջիկն ա էկե, մեյտան կայներ ա. որն որ ընձի խեռ փափաք ունի բարեկամ դառնալու, պտի էդ կթխէն վերցու, խմայ, էրթայ Արաբստանայ էլի մէջ Խտըր աղա Բրայիմ աղի ձին — Բէջան բերէ ընձի, ես պտի իմ աղջիկ Փարիշան խանըմ առանց խալնի ջաղա էնիմ էնոր տղին։

Էդլա յոփոր ասաց, էդ աղա-իշխաններ մտածեցին օր Ամար աղի էդ ասած յառաջարկութեն իրենց կուվաքից դուրս ա, մէկից ձէն չէլաւ։

Մէկ էլ Ամար աղէն բոռաց, ասաց. — Աղա-իշխաններ, ձեզի ինչ էղաւ, խօ ես աղու չի թալիր իմ էդ շարբաթի մէջ, ըլնչի մարդութենէ ըլնկաք. թօ տաս մարդ, քան մարդ ձեզի չեղի, յառէջ արէք . . . ։

Էլման մէկից ձէն չէլաւ. վոր ճասըլ իրեք խեռ Ամար աղէն բոռաց, մէկից ձէն չէլաւ։

Քուլլըք տեսաւ մէկից ձէն չէլի, յինք մէկէնց մէկ յէլաւ, Աստուած խանչեց, զշարբար խմեց, կթխէն թալեց շլվըրի ջեպը։

Ցեփօր տեսան աղա-իշխաններ, Քուլլըք ջաշարաք էրեց, էդ կթխէն խմեց. ըլմեն ամօթէն կարմրան, յէլան ու յետ յոււի քաշուան, ամեն մէկ գնաց ուր տուն։

Քուլլըք ու Կեառօն ուրանց քապցիր տեսան օր էրթան դըխ Արաբստան։ Ամար աղից օգնութիւն յուզեցին. Ամար աղէն էլ յէլաւ, էդոնց խարճլըխ տուեց, պզտիկ ճարվան մի բռնեց. յետե Քուլլըք դարձաւ, Ամար աղին ըսեց. — Գիտես, քու էլից էլ մեզի խեռ պտի գնես խինդ մարդ. մէկ մեր խօրօղըէր Նամաթի Իսան, օր խալիւոր ա, Արաբստանու ճամբխներուն բալաց ա, մէկ էլ Հեսանէ Մուսօն, մէկ էլ Բղտօյէ Փլայ, Կըքօյէ Բակզատայ, մէկ էլ Դալուրաչա Ըռօմէ։

Քուլլըք ու Կեառօն էստ խինդ խողին վերուցին, չիտկան դըխ Արաբստան էրթըլու։

Ցեփօր յէդոնք յէլան, խեծան յուրենց ձիանք, յուրենց բազըրկեան քշեցին. ճամա յանկակըծի էդոնց մէր Որտէն փողնի մէջ էդոնց ըռասք էկաւ, ասաց.—Նա՜, օրդի՛, խե՞ր ա, էսլա դո՞ր կէրթաք։

Տղէկներ ասին.—Նանէ, փառք Աստու, խեր ա, մենք լսեցինք

գչերսի ջարտ պտի գայ Ամար աղի տան վրէն, կերթանք որ մու-ղաթ կենանք։

Որտէն ասաց. — Լաօ, յընչի՛, Ամար աղի տուն աւիրմը ա, չի կռնար ձեզի օրական էրկու դան խաց տայ որ դուք զէդա բեռ ու բազրկան խաց բառցեր էք։ Էդի ես չըմ հաւատամ. արէք, իմ ծծի կաթ ձեզի խալալ էրէք, ընձի չիտակ ջուհապ մի տուէք։

Տղէկներու ճար կտրաւ, ասեցին.

—Նանէ, անդառնալի ճամբէմ յընկեր ինք, կերթանք։

—Ցո՞ւր կերթաք, լաօ։—Կերթանք Արաբստան, Խդըր աղա Բրա-յիմ աղի Բէջան ձին բերենք Ամար աղին, որ Փարիշան խանըմ ա-ռանց խալնի ջապա էնա Քուլլըքին։

Ցեփօր տղէք էսլա ասեցին, կրակ էղաւ, ընկաւ մօր սիրտ վառաւ, ըսեց. — Լաօ, էդ մեռնելու կթխէն դո՞ւ պտի խմէր։ Էդ-տեղ էղօր մէկ յեօխմ էկաւ, յուրնից մէկ խաղմ ըսեց.

Ա՜խ, դէ՛, էօ՜յ, եօ՜յ օ՜ օ՜ օ՜ օ՜ օ՜
Ամար աղէն ծռեր ա, ծռեր ա . . .
Դէ՛, Կիքանցոց, Մլանցոց խռչն ու բուղէն, վի վի ..։
Վըր յիրար ժողվեր ա վի՛ վի՛ վի՛ . . .
Ֆնճնով շարբաթ վըր օսկի սանճարախին վի՛ վի՛ վի՛ . . .։
Դիվնի յորթալախ դրեր ա վի՛ վի՛ վի՛ . . . ։
Օրն օր ուր տղամարդութենի մէջ վի՛ վի՛ վի՛
Ուր հաքուածքի, սիլայի մէջ օր բերայ, վի՛ . . . ։
Էն երթայ Խդըր աղի Բրայիմ աղի Բէջան
Արաբստանու երկրի միջէն վի՛ վի՛ վի՛.
Մէջ խազար եօթ խարիր տնէն վի՛ . . .
Էն Աստուծոյ իզինով վի՛ . . .
Մարգարէի խօսքով վի՛ . . .
Էն Փարիշան խանըմ ընձնէ առնի վի՛ . . . . ։

Որտէն էս խաղն որ ասաց, Քուլլըք վըր մօրն ըռըքաւ, ա-սաց.—Ամօթ չէ՞, դու քու խաղով Ամար աղի պատուին քիսար։

Ամար աղէն էլ էն դիխէն յէլաւ, բօռաց, ասաց.—Որտէ՛, յընչի՞ ես կայներ տղէկներու ճամբխու վերէն, օղուրսուզի պէս բէյումու-թեն կենես. Թո՛ղ էօ էրթան, Աստուծով բան չիկայ, սաղ կերթան, սալամաթ կուգեան։

Ամար աղի էդ խօսքի վերէն Որտէի սիրտ յէլաւ, էլմէն ա-նէծքով խաղ մի ասեց.—

Դէ է՜օ է՜օ . . .
Ամար աղէն լէր չտեսնի, չտեսնի, վի՜ . . .
Քո իրեք տղէն մեռնի, մէկ տախտըկի վլացես,

Իմ էրկու էքում ցղէկներ խպրիպ էրկրներ չճամքխես. հա՜յ վի՜..:

Եփոր Որտէն էս խաղ ասաց, Քուլլըքի հերսն յէլաւ, ասաց. —Նանէ, որ էն սիւտակ կաթի խամար չէղէր, ես պտի մզրախ մի զանի քո սրտին օր քո քամկէն դուս յէլնէր. մենք կոյներ ինք օղուրի վըրէն, տեղ կերթանք, դուն էլ էկեր իս, կայներ իս ջատու-ֆար պառաւի պէս բէյուսութեն կէնիս։

Էս խօսքի վերէն Քուլլըքի հերս յէլաւ, մէկ զաթկուն զարկեց, ուր խեծած ճեահէլ ձիու—Սոսըքի կողերուն. քշեցին ուրենց բեռ ու բարխանէն, բռնեցին Արաբստանու ճանբէն ու գացին:

Էնդոնք որ գացին ղըխ Արաբստան, Որտէի սիրտ գարնան յէլման գետերու պէս բղտորաւ, կատղած արչու պէս գռալով՝ դարձաւ դէմի տուն էկաւ. լաց-լաց, նստաւ ու սւրին-սւրին դուսուրմիշ էղաւ, ասաց.—Վա՜յ լըմըն, էս իմալ բան էր էրեցի, ես մէկ խետ իմ տղէկներու հերսն խառնեցի, էնդոնք էլ ընկան ճանբախ գացին. Նա՛ ճամբխըներու սալըխ էղոնց էրեցի, նա յուրենց քեռիքներու սալըխ. էս իմալ բան էր էղաւ ու էկաւ վըր իմ գլխուն։

Սիրտ ցայանմիշ չէղաւ, դուրս յէլաւ փողնի մէջ մօլլիմ բռասք էկաւ. ասաց.—Մօլա, զաքի ես էլ մէկ մարդում կը պտոտի, օր ճամբխի տղէկներու յետևէն։

Մօլէն ասաց.—Ի՞նչ յապով կը ճամբխես։

Որտէն ասաց.—Չին խեծուցեմ, էրթաս, խասնիս տղէկներուն. ես քեզի իմալ քարիֆ կէնիմ, դու էլ յէմալ քարիֆ էնես։

—Ի՞նչ քարիֆ, ասաց մօլէն։

Որտէն ասաց.—Կը խասնիս տղէկներուն, կասես. ձեր մէրն կասէր. «ընկայ խըտ խալմախալին, չկըցայ յուրենց ճամբխըներու քարիֆ էնէնք. թըխ մուղաք կենան. առջև օր կերթան, Արաբըստան, յուրենց յառջև, ճամբխու վերէն Չախմըխու սար կայ, էդոր մէջ պզտիկ քօլեր կան, էդ քօլերու տկից խազալներ կը փախեն. չէղի՛ ջահէլութեն էնին, յուրենց խեծած ձիաններով յետևից յընկին. համա օր յընկան, փչում տեղ գացին, ձիաններու յոտներու ճալեր կըակ տալով կը մաշի, ձիաններն էլ կը յոտմչին, էլ չեն կըռնար յուրինք, զուրինք դուշմնի յառջևէն պըրծուն. մէկ էլ էնտեղ Հառայի դաշտ կայ, օր սատա աւազ ա, ջուր չիկայ, խըտ յուրենց ջուր վերցուն, օր յուրինք յուրենց ձիեր ծարաւ չմնան, հարի չորս օր գչեր, ցերեկ էրթան աննախ ուզոտ տեղից դուրս գան. յեփոր էլ դուրս էկան, ես գիտեմ, պտի յընկին կանանչ տեղ. յուրենց ձիեր պտի թողեն արծըլու. Խըրպէ-դարան դաշտն ա, խռոտած ջրի գօլեր շատ կան, մուղաք կենան, յուրենց ձիեր չի թողկեն անաէր, օր էրթան էդ խոռոտած ջրեր խմեն, համա խմեցին՝ ունուշէ գընկին, էլ կուլի դաշտի մէջ վիզ ուրանց ծռւռ կը մնայ դուշմնի յառջև,

յուրենց օսկի անուն փուչ կը դարձուցեն։ Մէկ ել կասես. — Խզըր աղա Բրայիմ աղին եօթ բախպուր ասկար կայ, եօթնի էլ գլխներ իմ ախպըրտանքն ին, եօթն էլ ասլանի ձագ են, մօրուց՝ մանկուց յուրենց ձեռներ մարդու արունով են լուացեր, յուրենց ծարաւ դուշմնի արուն խմելով են կոտրեր։ Հարի մկայ իմ տղէկներուն յուրենց քեռէքններուն բարիֆ չէրեր ի։ Մօլօ, հանդա քըք անեցի, որ դու էրթաս, իմ աամծներ իմ տղէկներուն աաեա՛ բան է, թէ որ չատ նեղ կընկըն, իմ ախպըրտոց ձեռաց մէջ թըրք քազպըր մի յայտնեն, որ յուրենց խարզէքն ին, բայխի Աստուած կամենայ աող էրթան, սալամաթ գան։

Մօլէն յէլաւ, խնծաւ ձին, քանկամ դուշուն էլ յուր ճախն առաւ ու գնաց։

Գնաց, ճամբխում վիրէն մէկ քրդում գեղի բռասր էկաւ. տեսաւ որ էդ գեղէն քուրդ մի խատեր ա, մօլա չկայ որ տանի, զռայ. Էդ գեղի քըրդեր որ զմօլէն տեսան, գացին, ձիու դիզկին բռնեցին, անեցին. — Չարքի մենք մօլի մի ժուռ գուկինք որ զէսա խատած տանէր գըռէր, արի, գըռմ։

—Ես բան ունիմ, վռազ կերթամ, ասաց մօլէն։

Քըրդեր ասին.—Բեզի գըռելէն ճախ չատ կուտանք, խատածի չորեր կուտանք։ Էղըա որ ասին, մօլէն տեսաւ որ էդտեղ ճախ չատ կառի, յիջաւ էդտեղ, խատած գըռեց։

Մօլէն էդտեղ խատած կը գըռէր, Որտէն կայներ էր ճամբխուն վերէն, կաչքէր որ մօլէն գիկայ, յուրին բաքի ջուխապմ բերայ։

Մէկ էլ տեսաւ ճամբխուց մէկ պայէմ էկաւ, Որտէն գնաց յառէջ, խարցուց.—Աղբէր, դու յմ՞ւստի գուկեաս։

Էն էլ ասաց.—Ես Արարատանայ ճամբխուց գուկեամ,

—Իմ տղէկներ տեսա՞ր, մօլէն խասե՞ր էր թէ չէ։

Քու տղէկներ տեսայ, կէրթէն յուրենց ճամբխով, հըմա մօլէն տեսայ Ֆլան գեղ, մեռել կը գըռէր։ Պայի էսա խօսքի վերէն Որտէն չատ դուշուրմիշ էղաւ, ասաց.—Կայ, չկայ, մօլէն ազան մարդմ էր, գնացի, խատածի ա բռասր էկի, իմ աամծներ չգնացի, չխասի, իմ տղէկներուն չասի. էրթամ խէծնիմ, յընկիմ յետևներ։

Էկաւ, ձին խնծաւ ու գնաց. որ մի չուրի յիրկուն խառտուեց, գնաց մօտխաս էղաւ տղէկներուն։ Կեառօն դարձաւ յետևից, աչքեց տեսաւ, ձիաւոր մի գուկեայ, որ բօզ ու դումանն յուրին փաթեր ա։ Կեառօն թախմին էրեց որ էս գալող ուրենց մէրն ա. դարձաւ Քուլլըքին անեց. — Քուլլըք, էս յետևից գալող մեր Որտէն կը մնի։

Քուլլըք դարձաւ աչքեց ու Կեառօյի վերէն հեռաստաւ, ասաց. —Մեր մէրը ի՞նչ բան ունի մեր խետ, որ յէլի, ընկի մեր յետևից.

ես մէկ հաղ տսեր եմ. «դու իմ խօր խալալ վաստակ չես, որ դոր-ծիմ մէջ մտիս, վասվասութեն կէնես»։

Երկու աղբէր էօլան կը ղրուցին, մէկ էլ աչքին յուրենց մէր
—Որտէն էկաւ, խասաւ։

Քուըրք ասաց.—Նանէ, խե՛ր ա, ըընչի՞ ես ըընկեր մեր յետեւէն, գուկեաս։

Որտէն ասաց.— Որդի՛, ախր ես ձեղի քաղցը կաթ եմ տուեր, ին ամիս իմ փորն եմ պախեր, քաղցը քուն եմ խըրտեցուցեր, կեղէ՞ որ ես մէնկենց մէկ մռանամ։

Ինչ որ յառջի դրուն մօլին տսեր էր, մէկիկ-մէկիկ տղէկնե-րուն ասեց ու դարձաւ. խաղով ուր աղբրտոց բարիֆն էրեց յուր տղէկներուն.—

Գէ՛, եօ՛, եօ՛ ....
Կեառօ՛, լաօ, մու մեռիմներ նշաններու ինչ ու ինչ են. վի՛վի՛ ....:
Քո մեռիմն օր կան, Հասօյէ Դուսէյի տղէկներն են, վի՛ վի՛ վի՛.
Կարմիր են, լաչմեր ուրենց կապուտ են, յերեսները մռնած, վի՛ ...
Զիեր յուրենց սպիտակ են, Արաբստանու են, վի՛ վի՛ վի՛ ....:
Մէջմեր յուրենց բարակ տաժի են, վի՛ ....
Ցանկչներ ուրենց խըրս են, պոչեր ուրենց խամչի են, վի՛ ....:
Սադրիմ ադվըրու են, պնդղեր կօտի խտըր են, վի՛ ....
Թամմեր ուրենց յԱնթափու են, զեամեր Դիարբամրու են, վի՛ ....:
Դիզգին ու սարմեալէն Համասու են, վի՛ ....:
Զանկուներ Հանիմոյին են, վի՛ ....:
Մըզրըխներ յուրենց դեղին են, վի՛ ....:
Մըզրըխներու զլուխ խամի պես են, վի՛ ....:
Ճոքեր յուրենց Զազայիր են, վի՛ ....:
Թեւերու ապէմ սիւտակ են, Բաղդըտու են, վի՛ ....:
Ճապվըներ կամանչ են ու նախշուն են, վի՛ ....:
Մէջմի գօտիմ միրմանն են, վի՛ ....:
Գյլխներու փուշիմ սեւ են, բոլոր նխշուն են, վի՛ ....:
Քօլզըներ յուրենց դեվի բրդից են, վի՛ ....:
Ջիզմէմ յուրենց Ֆանարի են, վի՛ ....:
Նալչէմ յուրենց բարակ են, վի՛ ....
Բեղեր յուրենց սեւ ու դեղին են, վի՛ ....:
Էնդոնց բեղերու յաջի մազեր օսկու պես են, վի՛ ....
Թրեր ուրենց Մըսըրու են, վի՛....:
Խարաքինէմ յուրենց Ֆարզի են, վի՛....
Զախմխմարեր կարմիր են, վի՛....:
Դամանչէմ ապրշումով, արծթով զարդարած են, վի՛....
Խայլուն ուրենց մեծ են, վի՛....

Խայլօն ու չպուխներ ներկած են, վի՛ …:
Խայլօնի գլխըներ Թօխաթի են, վի՛ …:
Մէկ ճաղ լցնելիս թուղթ ու կէս թութուն կը վերցնեն, վի՛ …:
Էն վախթ օր կռուի մայդան կը մտնեն, վի՛ …:
Կատղած գիլու պէս ճինած խայլօն յիրուր՝թեւի վերեւից կփախցնեն,
Ա՜յ, էդոնց էրկու աղբէր չարխըճի են, վի՛ …:
Խինգ աղբէր ուրենց մայրընի օրթալախ կը կայնեն, վի՛ ….
Էրկու աղբրտանք դուշմընի վերէն կը քշեն, վի՛ …:
Մարդ կըսպաննեն ջուխթ-ջուխթ, վի՛ …:
Թալան յուրենց աղբրտոց վերէն կը դարձուցեն, վի՛ …:

Որտէն որ էս խաղն ասաց, Քուլլըքի խուտում կոտրաւ, ուր մօրն ասաց.— Նանէ՛, խոզի դու չուտով էդ բաներ մեզի ասած էղիր, մենք մեր տեղից ճամբախ չէլինք, ու մընչ էդ հացարաթին զցարքաթն չի վերուցինք, չի խմինք. մկայ թօրկենք, ճամբխուց յետ դառնանք, մեր նամուսին մենծ պակասութեն ա։

Որտէն տեսաւ օր տղէկնիրու սիրտ թուլցաւ, դարձաւ սիրտ տուեց, ասաց.—Լա՛օ, մարդ մի յառջև պտի դուշուրմիշ էղի, բանմ չէնայ, օր էրեց՝ պըծաւ, էլ յետևից պտի չընկի։

Գեացէ՛ք, Աստուած ձեր խետն էղի, ուձ դառ մօրթելու համար ա, ձեր մախ ձեր յաչքի առջև առէք, զձեր նամուս պախէք։

Տղէկներ խանչեցին զուրենց Աստուած ու յընկեան ճամքախ, գացին դըլխ Արարատան. Որտէն էլ էդտեղից դարձաւ դէմի ուրենց տուն։

Գացին-գացին, չատ ու քիչ Աստուած գինայ, մէկ օր էլ խասան Զախմըխու սարը։ Զախմըխու սարը քէլած վաղթը մէկ էլ տեսան մէկ խազալմ հաւըրնի քօլի տկէն յէլաւ, փախաւ։ Եփօր Քուլլըք տեսաւ, Սօսըքի դիզկին թողեց, յընկաւ յետևէն։

Կեառօն յետևէն բոռաց.—Ցո՛ւր կերթաս, Քուլլըք, Աստուած քո տուն ակօլա, ախր մեր մէջ Որտէն մեր յետևէն էկաւ, բանմ թամբէխս էրաւ, միտդի չէ՞։ Քուլլըք Կեառօ խօսքին ականջ չէրաց. ուրենք էլ բոռացին.—Քուլլըք, յընչի՞ կընգիս հայվըններու մեղք ու սըրնքի տակ, էդոնց ահուզար քեզի չի մնայ, յետ դարձի։

Քուլլըք էդոնց էլ ականջ չէրաց, մէկ խետ ձին քշեց։ Քշելու վաղթ էդոնք տեսան օր Քուլլըքի ձիու ոտնելու տկից յէմալ կըրակ կը ցխի, օր Ֆըռֆըռոցի ձէն յուրենց կը խասի, նալի կտորներ յերկնուց յիրեսէն կուգէր, կը թափէր։ Էդոնք էլ յուրենց ձիեր ու բազրկեան քշեցին, Քուլլըքի յետևէն գացին։

Քուլլըք լարեց էդ խազալն տարաւ Հառայի դաշտ, Հառայի դաշտէց էլ խանեց Խըպէ-դալան. էդտեղ դէմ առեց ծառի մի քօքին, արծըթէ կօփալ թալեց, բօկից բռնեց, քաշեց. խանեց ձիու

վերէն, ուր առջև դրեց, առաւ, էկաւ համբխու վերէն կայնաւ, օր չուրմ բազրկեան գայ. խօսի։

Քուլլքն օր յընկաւ խազալի յետեւէն, Կեառօն ու ուրենց յընկերներ կը մոռնան, ջուր չի վերցին յուրենց խետ, էղքս ծառաւ յուրենք ու յերենց ձիանք Արտաքստանու չոքի դէմ ղառելով կուգին։ Ցեփօր Հառայի գաշտից գուս էլաւ, էկաւ Իբրայէ-գաքան, էղտեղ խասան Քուլլքին, որ խազալ բռներ ա, համբխուն վերէն կայներ ա, յուրենց կաչքայ, օր գան, խօսին։

Էղտեղ նոր հարէկե ձիանքներուց յիջան, բազրկեան Թափեցին. յըմեն էլ քնախառ էն, յընկեան ու քնան։

Քուլլրք դարձաւ, Կեառօյին սսաց.—Կեառօ, մենք կը քննենք, դու յիմաց մացի, ձիանքնիրուն մուխաթ կեցի. օր չի քաշուեն, էրթան խոտած գօլերու ջուր խմեն. խազալն մորթա, կըակ էրա, թալ վըր կըակին էփա, չուբի մենք քնուց յէլնինք, ուտենք, նոր դու քընի։

Էդոնք քնան, Կեառօն բերեց, խազալն մորթեց, քերթեց, միս թալեց կըակի վերէն, էփաւ. խետ կերաւ, խեան էլ քուն տարաւ, ննջաց, խետն էլ կը խըռէր, ձիանքներուն կաչքէր, օր չէղի միամըտի, քնի. ձիանք էրթան, խոտած գօլերու ջուր խմեն։ Մէկ էլ յանկըակծի քուն յիրան տարեր էր. մէկ էլ զարթաւ որ ձիանք չիկան. յինք վըր յուրին հերստաւ, սսաց.—Աստված իմ տուն աւիրայ. հալամ ես վըր էսոնց պախնորդ ի, քներ իմ, ձիանքն գնացած։ Ցելաւ, դէմի ձոր վազեց, տեսաւ որ յուրենց ձիանքն են, խամպրեց, տեսաւ, տեսաւ օր թամամ են, մենակ Սօսըք մըջ չիկայ. էստեխ, էնտեխ իրիչեց, չիկայ, իրիչեց զատանց ջրիմ գօլ կերեայ. տեսաւ օր գօլի ափ մէկ խարալթում կերեայ, վազեց. գնաց գըլխ էդ խարալթուն, տեսաւ Սօսքն ա։—Ջանըմ, սսաց, մեր Սօսք ճերմակ էր, մկայ յօրէն սեցեր ա։

Գնաց, տեսաւ որ խոտած ջուր խմէ, յէմալ ա ուռի, օր եօթ տեղով խոլան կտռեր ա, թամք վրեջէն յընկեր ա. յինք լէ յամալ սև քըտինք տուեր ա վերէն օր մարդ բռնայ, խասցի տանայ սև ներկայ։ Նոր Կեառօն փոր-փռսման ձևա թալեց էգոր դիզկին բըռնեց, տռաւ, էկաւ մըտ յուր յընկերտանք. դնաց բազրկնի մէկել ձիանքն էլ բերեց, դարձաւ, նստաւ։ Էլմէն կըակի վըրջէն միս վերցաց, կերաւ։ Աչքեց, տեսաւ օր Սօսք ուռեր ա, քիչ կը մնայ օր պատռի։ Էղտեղ սիրտ մըռմըռաց, խաղմ սսաց.—

Ա՜խ, դէ՜ եօ՜ ...
Ա՜յ Աստուծոյ շինած սիրտս, կը կտրի, կտրի, վի՜ ...
Ա՜յ էդ ի՞նչ սեւ բայրաղ ա, իմ խօր դուռ տնկուի, վի՜ ...
Ա՜խ, Քուլլրէկ Սլեմենից, Կեառօ աղբորից. վի՜ ...

Առաւ զբազրկեան բեռով, բարձով էկաւ, բերեց, յընկերութիւքոց բոլոր հաւը էրեց, բեռներ թափեց, յընկերներ քնած տեղէն խսկի չի զարթան. լուսու դէմ որ էղաւ, դեվէքներու բառնալու վաղթ էկաւ, դավէք ուրենց վաղթ իմցան, մէկ ուրենց ժամ տուեցին. էդոնց զանգուլըկներու ձէն յընկաւ Քուլլըքի, յընկերներու ականջ, քնուկ տեղէն իմցան։

Քուլլըքն ասաց.—Կեառօ, էսա ի՞նչ դեվա բերեր իս, մեր բոլոր հաւը ես էրեր։

Կեառօն ասաց. — Գնացի գիշերս բազրկեան թալնեցի, բերի, հալա դուք քնած էք։

Աղէկմ լուսցաւ. Քուլլըք էլաւ, դեվէններու մէջ ժուռ էկաւ, տեսաւ որ դեվէք աղէկ չեն. ըրի քամակն ա բրինդար, որը պառաւ ա. չի խաւնաւ, դարձաւ, Կեառօյին ասաց. — Էս բրինդար դեվէք յո՞ւստ ես բերեր, տո՛ր, թորկ էնտեղ։ Մենք էսոնք որ տարանք մեր էրկիր, խալխ պտի ասեն. — Տէսէք, Սլէմանի տղէկներ գացին ուրենց ջօջօյի պէս սախսան տարեկան դեվա բերին, նամուս էրեցին, պտի ծիծղան մեր վրէն։

Քուլլըքն որ Կեառօ բերած բալնին չխաւնաւ, Կեառօն էլ յըմեն դեվէք բարձաւ, տարաւ թորկեց էնտեղ յուստ որ բերեր էր ու դարձաւ, էկաւ։ Էն մէկել օր Քուլլըք ասաց.—Իմ ձին խազրէք յէսօր ես պտի էրթամ, բալնիմ:

Իրիկուան դէմ ձին բերեցին, Քուլլըքն խեծաւ, գնաց։

Գնաց, բազրկնի ճամբխուն վերէն էլմէն կայնաւ. զինք թալեց վըր մզրըխի ,,փէտին, տեսաւ օր ծանտր բազրկընիմ ձէն գուկեայ, քշեց, յառէջ կտրեց, ասաց.—Էս ի՞նչ բազրկան ա։

—Ախմա՛խ, յօրի՞ դու մեր էրկըրէն չե՞ս, չե՞ս գիտեր ի՞նչ բազըրկան ա, ասաց Քուլլըքին։

—Ցընչի՞ ըռըքար։

—Ես չըռըքիմ, ո՞ն ըռըքի, դու չե՞ս գիտեր, էսի Արաբստանայ տէր Խդըր աղա Բրայիմ աղի տղի խարսնիքի բասպիրն ա կը տանենք, մեր դեվէքներու բեռ յըմեն չաքար ու բրինձ ա։

Բազրկան բաշին օր էդլա ասաց, Քուլլըք ֆեֆեց, ասաց. — Ա՛րը, ապա յորի՞ն կըռըքիր իմ խարցուցելուց. էդի անճախ իմ խարսնիքի բասպիրն ա տեսըր իք, որ ես տանեմ Սլիվանայ էրկիր, Քուլլըքի ու Փարիշան խանըմի խարսնիք էնիմ։

—Քուլլըքի խէրն էլ անիծած, Փարիշան խանըմին էլ խեա... ասաց։

Բազրկան բաշու էդ խօսքի վերէն՝ Քուլլըք գուրզ մը զարկեց բազրկան բաշու քամկին, նետը սրտազոլէն դուրս տուեց։ բազրկան բաշին յընկաւ գետին, մէկիլ մշկըներ թորկին փախան։

Քուլլըք քշեց, զբազրկան առաւ, էկաւ, բերեց ընկերներու

մօտ բեռներ թափեց, դեվքըն էլ բոլոր հաւշ էրեց. յընկերներ քը-
նած տեղից չիմցան. Խըլուսուն յէլան, տեռան օր խարիր խատ սև
դօշ դեվա Քուլլըք բերեր ա, որ մէկ խատ կաժի խարիր օռկի.

Քանիմ օր յընցաւ, Կեառօն ասաց.—Քուլլըք, մենք չուրի յեփ
թալաճ-թռաց էնինք, ախր մենք բանի ենք էկեր, մեզնից մէկ էր-
թայ թառալին էնայ, տեռի թէ Խդըր աղա Բրայիմ աղի էլ ո՞րտեղն ա
դըրեր ա, էրթանք, բալքի թավուրմ Բէջան պըծունք բերինք.

Էն մէկել օր Կեառօն էլաւ գնաց բարձր դարի վերէն կայնաւ.
աչքեց, տեսաւ օր Խդըր աղա Բրայիմ աղի էլ էկի, մեծ գետով էն
դեխ դըրեր ա, յէմալ օր կօճ ա զարկեր էրկնուց աստղին խեսապ
կայ, էդ կօճերուն չկայ. Տեսաւ օր էդ էլի միջից մէկ պայեմ ձին
եուլըրից բռներ ա, դէմ գետ կը բերայ ջրելու. էդ ձին էդ պայի
ձեռաց մէջ յէմալ կը խաղայ՝ օր վերեփ ապրօմէ չապիկ Ֆռլամիշ
կեղի, համա էն կճդար խաղալու մէջ, էն կճդար խէռնս պայէր օր,
եուլար ձեռաց մէջ իսկի չի զլեր. Կեառօն օր էսլա տեսաւ, էկաւ
Քուլլըքին ասեց. Քուլլըքն ասաց.—Կայ, չկայ, էդի Բէջան ա.
խըլուսուն ես իմ ձին պտի սազիմ, էրթամ, Աստած կամենայ բալ-
քի բերիմ.

Էն մէկել օր խըլուսուն չուտ Քուլլըքն էլաւ, առաւ զուր նետ
ու անեղ, խեծաւ զուր ձին, խանչեց զուր Աստած, գնաց.

Արև նոր ծաղկեր էր, խասաւ էն դարի գլուխ կայնաւ, օր ուր
աղբէր կայներ էր. մէկ էլ տեսաւ Կեառօ ասածի պէս մէկ պայեմ
էլի միջէն ձին քաշելով բերեց գետ ջրելու. Քուլլըք գնաց գետի
ափ կայնաւ, ասաց ձին բերողին.—Աղբէր ջաճ, բրհօռ (ջրի անցք)
ո՞ր մէկն ա. Էն էլ ասաց.—Դու մեր էրկրից չես, չես գիտեր բհօռ
ո՞ր մէկն ա, ընձնէ կը խարցուս.

Քուլլըք ասաց.—Աղբէր, յէսօր էրկու օր ա, որ ես Խդըր աղա
Բրայիմ աղի թալաճ տարած դեվքըներու էտեն եմ ընկեր, գչեր,
ցերեկ չեմ քներ, խելքս գլուխս չէ, դուց բհօռ քենէ կը խարցում.
Էդ ձին ջրող պայէն նշանց տուեց բհօռն.

Գնաց Քուլլըք, գետն ընցաւ, էկաւ էդ ձի ջրողի մօտ կայ-
նաւ, խարցուց.—Աղբէ՛ր, էդ ի՞նչ ձի ա.—Աղբէ՛ր, վախենամ դու էս
էրկրից չես. դու չե՞ս ճանչնաս, էսի Խդըր աղա Բրայիմ աղի ձին ա.

—Աղբէ՛ր, ես քե յառջի դրուն ասի թէ քնազոխ իմ, խելքսի
վրէս չէ. էդ Խդըր աղա Բրայիմ աղի ո՞ր մէկ ձին ա.

Բէջան ա, դու չե՞ս ճանչնար:

—Հալա տեսնիմ, էգօր դիզկին տուր ընձի.—Ձիու դիզկին յընչի՞
տամ քո ձեռ.—Տուր, կասեմ, չա՞ն օրդի.

—Շան օրդի դո՞ւ ես.

Քուլլըք մէկ չափալեխմ էզարկ ականջկոթին, ձին ձեռնէն ա-

առաւ, ըսաց.—Կերթաս, հաւար կը տանես, կուտես. «Քուլլըքէ Սլէմին էկաւ, զարկեց, Բէջան առաւ, գնաց»:

Քուլլըք առաւ Բէջան, փախաւ: Ձի ջրողն դարձաւ, հաւար թալեց ելի մէջ, ըսաց.—Հայ հաւար, «Քուլլըքէ Սլէմին էկաւ զարկեց, զԲէջան տարաւ»:

Սփօր Խըդըր աղա Բրայիմ աղէն լսեցին ուրենց սայիս կը բօռայ. խանչին, հեռուսան. ասին.—Մի՛ ըսեր, «Քուլլըքէ Սլէմին ձին տարաւ», որ եղըա ըսեր, էլ էնդոր քեռիք էանէն չէրթան. էդ չան որդիք մեր ելից, մեր էրկրից լարեցին, էս քանի տարի կէր հանգիստ էնք, էդ օձու ձագեր էլմէն էս տեղեր փայտայ էղան:

Եղաւեղ դաֆե-հաւարե զարկեցին, ել յըմեն ժողվան վըր յիրար, Քուլլըքէ Սլէմինի քեռիք — Հասէ Դուսէ տղէկներ եօթն էլ խեծան, առան ուրենց խեռ խազար եօթ հարիր ձիաւոր, ընկան չարշի էանէն. եօթ տեղով օրդու բռնեցին, եօթ ճամբխու գլուխ կտրեցին: Քուլլըք ինչ էրեց.—Բէջան տարաւ, խառուց յուրենց բազրկըճի մօտ, դիզկին տուեց իր բարերի ձեռ. ըսաց.—Բարեր, էս Բէջանի դիզկին տուէցի քեզի, դուն էլ տար, տուր Ամար աղին, մեր մարգարէի օրհնութիւնով Փարիչան խանըմ առ, բեր ընձի: Եղաւեղից Կեառօն ու Քուլլըք բազրկան բարձան, ճամբխու դրեցին: Քուլլըք բերեց Սօսըք թամբեց որ խեծէր, Կեառօն ու յընկերակք ասեցին.—Քուլլըք, էդ ձին մի՛ խեծի, էդի խառսած գօլէ ջուր խմեր ա զաշալու ա, քեզի չկռնայ քու դուշմնի առջևէն ազըրծու. արի, որ մեզի ականջ կինիս՝ զԲէջան խեծի: Քուլլըք խեռառտաւ վըր Կեառօյին ու մէկել յընկերակաց, ըսաց.—Իմ օղորմած խէր վըր Սօսըքի քամկին կռիւ էրեր ա, ես էլ կէնիմ. ես Բէջան խեծիմ, օր ուրիշներ ասեն «Թէ որ Բէջանի քամկին չեղէր՝ էն կռնա՞ր կռիւ էնէլր», ես էդ ճամուսըղութեն կը բերեմ իմ վրէն:

Ցընկերներ տեսան որ Քուլլըք զուր ձին չի փոխեր, ասին.

—Բէջան չի խեծնիր՝ մեր ձիանքներուց թող խեծի:

Քուլլըք էլման չի խեծաւ. իր ձին Սօսըք խեծաւ, Կեառօն էլ իր ձին: Բազրկան ճամբխու դրին դըխ առին:

Ուրենք էրկու աղբրով գացին կայնան ճամբխու վըրէն. չատ սպասեցին, տեսան օր Խըդըր աղա Բրայիմ աղի ասկար չէկաւ, ուրենց չի զատաւ: Քուլլըք ասեց.—Կեառօ, արի, մենք փչենք յառէջ, էրթանք օր չէղի էղանք ըսեն թէ.—Էկան, ձին փախցուցին, գացին մէկ տեղմ տափան: Քշեցին, գացին ասկրի յառէջ կտրեցին: Տեսան օր եօթ թապուր ասկար էլ էկե, ջամ էղէ վըր իրաւր գուկեայ. տեսաւ որ ուրենց մօր աղըրխի աէս ուրենց եօթ քեռիք ընկած են ասկրի յառէջ. կօտի խսըր խայլօն թոփուն լցեր են. եօթն էլ իրարու թևի միրևէն յիրար ձեռնէն էդ մէկ խայլօն կը

խլեն, մէկ մէկ խուլյայ կը զարկեն, կուտան յիրար. մուխն ու դուման բռներ ու էդոնց վրրէն ու զուկեսան։ Էդտեղ Կեառօն ասաց.—Քուլլըք, մենք ճանչւորութեն չիտանք մեր քեռեցներուն։ Քուլլըքն ասաց.—Տուր։

Էդտեղ Կեառօն խաղով խասկայուց ուր քեռեցներուն թէ մենք ձեր խարզէքն ենք.—

Դէ, էօ ...
Ա՜յ, հակառակուհին-հակառակուհին, վի՜ վի՜ ...
Ա՜խ, յէսօր յիրար դէմ յէլած՝ քեռիք, խարզէք կռիւ կէնին, վի՜ ...
Քուլլըքէ Սլէմին անվախ առիւծ չի մեծնի քեռէքներու մայեցնին վի՜ ...
Թըխ իմ քեռիք դուրս զեան վի՜ վի՜ ...
Խազար էօք խարիր մարդու խեց կռիւ կէնիմ, հայ վի՜ ...:

Էս խաղն որ էդլա ասաց Կեառօն խասկըցուց ուր քեռէքներուն. էդանց ջօջ քեռին ուր աղբրտըքօց դարձաւ, ասաց.

—Աղբըրտիք, լսեցիք. էդ ձիաւոր ինչ ասեց ու խասկըցուց մեզի ուր խաղով. էսոնք մեր խարզէքն են, քիչ մնաց որ մենք մէկ ձիու համար մեր ձեռներ մեր խարզէքներու արիւնով լուայինք. արէք, յետ դառնանք, թօ էդոնք էլ առին ձին, էրթան։

Զզտիկ աղբէրն ասաց.—Աղբրտանք, ես որ մեռնիմ, էդլա բան չեմ էնիր. ես իմ Նամուս կուտամ խարզէն, իմ աղի ձին կը թօրկեմ տանեն. էս էդաւ խարիր տարի, իմ պապու վաղրից չուրի մկայ մենք խալալ աչքեր ենք մեր աղէքներուն. մեր խէր Հասէ Դուտէ օրից չուրի մկայ դըռ մեզէն բան տարող չեղի. մկայ օր թողենք էդ ձին տանին, ուրիշներ էլ չե՛ն ասի թէ ուրենց խարզէքներուն խաբր էրին. սրտի ասեն. «Խէրերն անիծած, վախեցան, չմօտեցան։ Իմ մեռնելու օրը յէսօր ա. որձ զառը դանակի համար ա». ըռեց ու arc էրեց. քշեց Քուլլըքէ Սլէմանի վրէն. մէկել աղբրտիք առւեցին էտեէն։ Էդ վաղթ Կեառօն Քուլլըքին ասաց.—Քուլլըք, արէք, փուչաւմ անց փախինք մեր քեռիքներու առջեէն։

Քուլլըք ասաց.—Փախինք։

Էդոնք որ փախան՝ ճղտուան, չորս քեռիք ընկան Կեառօյի էտեէն, իրեքն էլ Քուլլըքին։ Փչում անեղ որ փախան, խլեչտակէ Ամենակալին իջաւ Քուլլըքի առջե ու ասաց.—Քուլլըք, դու կառիր. «Ես խազար եօթ խարիր ձիաւորից չեմ փախիր, մկայ իրեք ձիաւորէց կը փախես»։ Քուլլըք էդտեղ դարձաւ քեռէքներու վըրէն։ Կեառօն տեսաւ օր Քուլլըք դարձաւ, յինք լէ դարձաւ, դօշ տուեցին քեռէքներուն ու ասկրին, քշեցին։ Իմալ օր էրկու դէլ ընկնի մըջ օչխրին ջարդայ, աջ թեկին՝ աջ ջարդեցին, ձախ՝ ձախ ջարդեցին, ու լորեցին, խէլի անեղ տարան։

Քուլլըքի ձին—Սոսըք, չէ՛ որ զատալու էր, էլ չկրցաւ էտևներէն խառցուցեր. էդտեղ մէկ ջոջ խեղեղի խանտակ ընկաւ էդանց ձիանքներու առջև, քեռէքներու ձիանքը Թռան ընցան. Քուլլըքին Թռաւ, յառջի ոտներ կախ մնաց խանտըկի փէչի վըրէն, յեաի ոտներ մնաց խանտըկի մէջ։ Էդտեղ քեռիք դարձան Քուլլըքի վերէն, ամեն մէկ իրեք խառ նետ ու անեղի չիչ զարկին Քուլլըքին, ինն տեղով բրինտար էրեցին։

Էդ կռւու մէջ Կեառոյի աչք Քուլլըքի վրէն էր. տեսաւ որ քեռիք զարկին Քուլլըքին բրինտար էրեցին, ինքն էլ զարկեց զուր քեռէցներու գերկուան սպանեց, քշեց, խառաւ ուր աղբոր մօտ.

—Քու հալ ինչ ա, ասաց Կեառոն։

Քուլլըք ուր ջանի միջի չիչեր ինչ որ էլաւ, Կեառոյէց դողտուկ քաշեց, խանեց. ինչ որ էլ չէլաւ՝ կտրեց, ջանի մէջ մնաց, որ Կեառոն չի տեսնէր, չի վախենէր։—Աղէկ իմ, Կեառո ջան, ասաց. ես ձիու վրեջէն ընկայ, գլուխս քիսաւ քարին, խելքս կերԹայ. դու կռուէ, առուծի պէս ջարդէ, խափլանի պէս առուծ լափէ, էլ կայնելու ժամանակ չէ։

Կեառոն գիտէր որ Քուլլըք ինը տեղով բրինտար ա, համա ուրնից կը պախայ, չըմէի զարկելու վաղըը տեսաւ։

Կեառոն էդտեղ մտաւ ասկըրի մէջ, ջարդեց, զարկեց զուր մէկ քեռին էլ սպանեց։

Էդտեղ էդանք կը կռուէն, Քուլլըքի բազրկընի խեռ էրԹըցող ընկերտիք տեսան որ Քուլլըքն ու Կեառոն յանգըըցան չէկան. Բըղդօյի Ֆլան դարձաւ Քուլլըքի բաբեր—Նամաթի Իսին ասաց.—Մեր յընկերներ յանգըըցան, արէք, մեզնէ էրկու խօզի դառնանք էդանց թասալին, մէկելդոնք Թող քարվան քշեն։ Էդտեղ Բըղդօյի Ֆլան, Նամաթի Իսան դարձան էդոնց հաւարին։ Էկան, Խըպէյի-դարան խառսան. Կեառոյին տեսան որ քրտնփչեր ա, կռիւ կէնայ, խարցուցին. — Քուլլըքն յո՞ւր ա։ Կեառոն էլ չըսեց Թէ բրինտար ա, որ չի վախենէն. էդտեղ խաղով խասկըցուց ուր բաբոր ու Բըղդօյի Ֆլային.

—Դէ, էօ ...
Խըպէ-դարան կը պտոտայ, կը պտոտայ, վի՛ ...
Քուլլըքէ Սլէմինի նընէր կռող առուծին խաչուփառ ա, վի՛...
Հակեար դու Քուլլըքէ Սլէմին կը խարցուս, վի՛ ...
Իմ ձիաւոր վեց կրակի տէր, հայ վի՛ ...
Չախմըխու սարի յետեւ էօք խազար էօք խարիր կրակով կը
վառայ, հայ վի՛ ...

Էս խաղն որ ասաց, էդոնց բաբէր դարձաւ Բըղդօյի Ֆլային

սաց. — Կեառօն օր էս կանցար մարդ սպաներ ա, մկայ Քուլլըք ըրմնու fof բերեց։

Էդտեղ Կեառօյի խեռ մէկտեղ մռան կռուի մայսան, ու կռուան. Բղդօյի Ֆլան էլ զարկեց Քուլլըքի մէկ քեռին սպանեց։ Ասկար տեսան օր ուրենց գլխաւորները սպանուան, Թուրկին փախան։ Էդ իրեք խօզին յընկան էտեններէն, չուր մի գետի բերան լարեցին։

Որը Թափաւ դետ, խեղդաւ, որը սպանեցին. Նամաթէ Խսան զարկեց Կեառօյի էրկու քեռին էլ սպանեց, մնաց ջօջ քեռին. քըշեց յետևէն, մզրախ պըտի զարկէր քամկին՝ Կեառօն Նամաթէ Խսին ձեռ բռնեց, սաց.—Էդ մէկն էլ բաշխմ իմ ծամկոբած մօր խաթրին, մի՛ սպաներ։

Կեառօն տեսաւ իր քեռիք վեցն էլ սպանած՝ սիրտ մռմռաց. էստեղ ուր քեռէքներու վերէն խաղ մը սաց.

—Դէ, kօ ...
Ա՛խ, խrպէ-դարաՆ մէկ բարակ ճամբախ կէr, վի՛ ...
Քեռուս ասկար ծաՆsr էr, վի՛ ...
Ճամբախ բռՆէr էr, մէr վէrէՆ գիկէr, վի՛ ...
Ա՛յ, իմ վեց fեռիf սպաՆէr էմ, վի՛ ...
Իմ ծամկsrած մօr խաթrիՆ իմ մեծ fեռիՆ բաշխէr էմ վի՛ ...

Կեառօն օր էս խաղն սաց, պրծաւ, բաբիր Կեառօյին սաց.—Քէլմ, էրթանք դըխ Քուլլըք, Քուլլըք մկայ էն մէկել մնացածներու fof բերեց։

Բաբօր էս խօսքի վրէն Կեառօյի սիրտ մռմռաց. Քուլլըքի վրէն մէկ խաղմ սաց.

—Դէ՛, kօ՛ ...
Դէ խrպէ-դարաՆ աՆsառի մէջՆ էr, մէջՆ էr, վի՛ ...
Քեռուս ասկար ծաՆsr էr, դարից գիջՆէr, վի՛ ...
Հակէr դու Քուլլըfէ ՍլէմիՆ կռուող առուծ կը խաrցուս, վի՛...
Դէ՛, խrպէ-դարաՆ իՆը sեղով բrիՆsար գբի մէջՆ էr, վի՛ ...։

Կեառօն օր էս խաղն սաց, ինչօր ջուր մաղես բաբօր ու Բղդօյի Ֆլայի վերէն. սսին. — Վա՛յ, լըմըՆ, մէկէr Քուլլըք զարկուե՞ր ա, Կեառօն մեզնից կը պախէր։

Նոր էդտեղ փէտ ժողվեցին, տարան Քուլլըքին մօտ օր թապուր շինեն, դնեն վերէն, տանին։ Գացին, Քուլլըքի վերէն կայնան։

Կեառօն խարցուց.—Քուլլըք, քո խալն ի՞նչ ա։

Ասաց.—Աստած քո տուն աւիրմ, աղէկ մըր ընձի կը խարցուցէք, ես ծառաւ մեռայ. կռնա՞ք ընձի փչում ջուր խասուցէք։

Նոր մտան, դբից Քուլլըքին չալկին, խանին, ձին էլ քաշին, դուրս խանին։ Բուլլըք էլմէն ասաց.—Ես ծառաէ մեռայ, Կեառօ։

Կեառօն ասաց.—Աղբէր ջան, էս մօտիկ տեղեր ջուր չկայ, թէ ջուր էլ էղի, աման չկայ օր լցում, բերեմ։

Քուլլըք ասաց.—Իմ գիզմի քայ իմ օտնէն քաշմ, խանմ, տարգետից ջուր բեր, ես խմեմ։

Կեառօն օր էկաւ օտայ մօտեցաւ, գիզմէն քաշելու համար, տեսաւ օր գիզմի մէջ լիք արուն էր լցուեր. քաշեց չքաշեց՝ էլ դուրս չէկաւ. յետին դրուն մէկել օտաց գիզմէն քաշեց խանեց, գնաց. բերեց ջուր տուեց Բուլլըքին, խմեց։

Էդ տեղէն Բուլլըքին դրիցին բապութ վերէն, բերին խառուցին բազրկըճին, մէկ ժիր դեվիմ վերէն բարձին Քուլլըքի բապութ։

Քուլլըք ասաց.—Իմ ձեռ բապութէց դուրս բաց թողէք, թող էրթայ գայ, օրօրուի. օր կը նշանակէ ախչար էսլա գիկայ, էսլա կերթայ. ձեռքով էկայ, դատարկ ձեռքով կերթամ։ Մէկ էլ ասաց.—Ես էս բըճերուց չմեռնիմ, հարի իմ մէր Որտէի ձէն իմ յականջ չընկի։

Էն տեղէն յընկան ճամբախ, էկան խասան Հառայի դաշտ. Քուլլըք տեսաւ բապուտից օր Սօսըք կը քէլայ, համա օտներ կը չքուի մըջ աւղին, էլ չկռնայ խանայ. ասաց.—Կեառօ, մեռնիմ քեզի, իմ թուր քաշմ բեր, տուր իմ ձեռ։ Կեառօն թուր քաշեց, բերեց տուեց ձեռ։

—Կեառօ, ասաց, դէ, գնա, Սօսըք բեր, իմ թրի տակով ընցու, համա ես իմ ձեռ խաղցում, տեսիմ Սօսըք առջեայ պէս կը խաղայ թէ չէ։

Կեառօն գնաց Սօսըք բերեց, իմալ օր թրի տկով յընցուց՝ Քուլլըք թուրմ զարկեց. վիզ կտրեց։ Կեառօն ասաց.—Տնաւեր, յընչի փեցուցիր ձիուն։ Քուլլըք ասաց.—Զը՞ տեսիր, մնացեր էր։

—Է՜, թօ չիգիր, կը թօրկէնք էստեղ սաղ, կերթէնք։

Ասաց.—Ես չուառով ըսեր եմ, կեղի օր իմ մէր Որտէն քե իմ խօրից չի բռնիր ա. ախր իմալ սաղ թօրկիլ տար, օր վաղուան օր Արաբստանայ էլեար դառնէր, էստեղ դտէր Սօսըքին տանէր, ասէր.—Քո տիրու խէրն անիծած, քենով էկաւ, կռիւ էրաց, քե էլ թողեց դասի ու գնաց։ Տանին Սօսըքին էնին բէրի ձի, կաթ բառնան, բերին գեղ։

Էդտեղից բազրկաճ քշեցին, էկան խասան յուրենց խաչըճին մօտ։ Գեղի դառնալած տեսաւ, հեռեվանց օր Քուլլըքի խարվաճ էկաւ, վազեց դեղ գնաց, յակընճկըլայ տարաւ Որտէին թէ.—Քուռողէկներ էկան։

Որտէն էլ Սօսըքից մէկ խուրախ քուռակմ կէր, տուեց բաօ-

ջնէ յանկընձկըլոյն թերոցին, որ կածէր խարիր խոտ գեղին օսկի։

Գառնարած քուռկոտ վերքէն ուրախացաւ, տարաւ։

Որտէն էլ խանքակտուր յէլաւ, վազեց տղէկներու յառաջև. յե-փոր մօսխաս էղաւ բազրկընին, խամբրեց, տեսաւ որ Քուլլըքն ու Սարըք չերևան, գիտցաւ որ սպանուեր են. էդտեղ սիրտ մըռմռաց խաղմ ըսեց.—

Դէ՛, էօ՛ ...
Ասծու ստեղծած սիրսցի մընեց ու ամպեց, վի՛...
Աչքերուս դէմ էկաւ մըժ ու դումանն բռներ, վի՛ ...
Ես յաչքսի ձիաւորներու մէջ զըրըցուցի, վի՛ ...
Քուլլըքն ու Սարըք մէջներ չէրևւեց, հայ վի՛ ...։

Որտէն որ էս խաղն ասաց, ձէն թապուցի մէջ յընկաւ Քուլլըքի յականջ. էդտեղ Քուլլըք գլոխին տուեց։

Կեառօն Քուլլըքի խօղին տալն որ յիմցաւ, էնդոր լալն էլ էկաւ. սիրտ մըռմռաց, մէկ խաղմ ասաց.—

Դէ՛ էօ՛ ...
Խրպէ-դարան կը պըրտէր, կը պըրտէր, վի՛ ...
Քեռուս ծանր ասկար վըր մեզի գուկէր, գուկէր, վի՛ ...
Հակէր դու կը խարցուս Քուլլըքէ Սէկմին, վի՛ ...
Կուող առուծ, վեց կրակի տէր, վի՛ ...
Սպանուած ջանդակ վըր բեռներուն դրուէր ա, վի՛ ...
Սարըքն էլ Հառայի դաշտ մըրնջ աւզըն մնացեր ա, հայ վի՛...։

Կեառօն որ էս խաղն ասաց, Որտէն խեկք գնաց. խասան պարթ օլըրեցին, խեկք էկաւ գլուխ, յէլաւ, խաղով Կեառօյին բէպատիւ էրաց.—

Դէ՛, էօ՛ ...
Խրպէ դարան փէս ու փսերով, փէս ու փսերով, վի՛ ...
Ա՛յ էն վարք որ քո էօր քեռիք, հայ վի՛ ...
Կընկէն մայսան գլխաբաց, բոբիկ ոտով, հայ վի՛ ...
Եամանն, յըմէն հայ, յըմէն հաղ, հայ վի՛ ...
Մարդ կսպանէն, ճանցըրցուած են անուն, վի՛ ...։

Մէրն որ էդլա ասաց, կեառօյին քիսաւ, եանէ թէ դուք ձեր քեռէքններու խետ չկռնէք կոխւ ինէք, յընչո՞ւ գնացիք։

Կեառօյի խէրսն էլաւ, մէկ խաղմ ասաց.—

Դէ՛ է՛օ ...
Դիսկի են Խրպէ-դարայի փէսեր, վի՛ ...
Քեռուս ասկար ծանր ծանր մեր վերէն գուկէր, վի՛ ...
Ա՛խ իմ վեց քեռին թամամ ապաներ եմ, հայ վի՛ ...

Մեծ fեռիս ծամ կցrած Որցէի խաբrին բաcխեr եմ, վի՛ ...։

*Կեառօն օր էս խաղն ասաց, Որտէն զարկեց վըր չոքերուն, ասաց. — Վայ լըմըն, համ իմ աղբըրտիք սպանած, համ իմ աղէն, համ էլ Սոուըք։*

*Էգտեղ խելք էլմէն յընցաւ, ջուր բերին, ցանին յերեսին, խելքն յէկաւ գլուխ։*

*Ցէլաւ, տեսաւ օր խալիւոր Նամաթէ Իսան—Քուլլըքի բաքէր բերեր ա Բէջանի դիզկին կիտայ Ամար աղի ձեռ, կըսայ. — Դու էրթըցած օր խոստ էկար, թէ ուն օր Բէջանի դիզկին ուր ձեռով բերայ, տայ իմ ձեռ, ես Փարիչան խանըմ էնդոր կուտամ։*

*Ամար աղէն ասաց.—Խօ, յէմալ ա, ես խոստ էկայ։*

*—Օր յէմալ ա, հանդա ես դիզկին տուեցի քո ձեռ, դու պէտք Փարիչան խանըմ տաս ընձի։*

*Էդ Նամաթէ Իսի խօսքի վերէն փչում Ամար աղէն փչամզաւ, ուր մոքի մէջ ասաց. — Զանըմ, ես ճմալ մէկ ձին յապով յէլիմ, իմ լուսու պէս աղջիկ տամ էստ խարբի տարեկան խալիւորին։*

*Էգտեղ Ամար աղէն Կեառօյի խաբrին էս խաղով քիսաւ.—*

Դէ է՛օ է՛օ ...
Կեառօ՛, որդի, fո խօufեr գէc ին, գէc ին, վի՛ ...
Իմալ or անգին fաr յըննկի fիսի ցըկէն, վի՛ ...
Էդ էrած կցըrճութեն ոչ fոն ա վի ...
Կցըrճութեն fո խալիւոr բաբorն ա, հայ վի՛ ...։

*Ամար աղէն էս խաղն օր ասաց, Կեառօն դարձաւ ուր մօր խաբցուց.—Նանէ, էս Ամար աղէն ծուռ ա, յարէն գիս բէպատէւ էրաց։*

*Մէրն ասաց.—Որդի՛, յընչի՛ ծուռ ա, չըս տեսնի, քո խալիւոր բաբէր ձիու դիզկին բերե, տուեր ա Ամար աղի ձեռ, կըսայ. «էղած կտըրճութեն իմն ա, պէտք ա դու Փարիչան խանըմ տաս ընձի»։*

*Մէրն օր էդլա ասաց, Կեառօյի յաչքեր թուաւ գազաթ. Որտէն էլ չի թօրկեց օր Կեառօն բան ըսէր. յինք էգտեղ Ամար աղին մէկ խաղմ ասաց.*

Դէ՛, է՛օ ...
Խrայէ-դաrան ձմեrուկ կայ, ձմեrուկ կայ, վի՛ ...
Ամաr աղէն իսկի խէr չի ցեսնայ, վի՛ ...
Կոrցուցեr եմ բիլբուլն ու ծաղիկ, վի՛ ...
Դօլ ու զուռնէն բեrէf, հայ վի՛ ...
Կուտղ առուծ Քուլլըrfէ Սլէմին բաղենf, վի՛ ...
Նոr զանf Կեառօյի խաrանիf, հայ վի՛ ...

Փարիշան խանըմի խեզ բունինք, վի՜ ...:

Որտէն որ էս խաղն ասաց պրծաւ, Ամար աղէն ասաց.

—Որտէ՛, ես իմ խօսքի տէրն եմ, որն որ ձիու դիզկին բերի, տուեր ա իմ ձեռ, ես էնդոր կուտամ Փարիշան խանըմ։

Ամար աղէն ու Որտէն իրարու խետ զրուցալու վաղք Փարիշան խանըմ խանչեց Կեառօյի մնացած յընկերտիք, գողտու խարցուց.—«Թէ էս նամուս ո՞րն ա էրեր ա։

Էդո՞նք էլ ըսին.—Կեառօն։

Փարիշան խանըմ որ սալըղ էրաց, դուս էկաւ, տեսաւ որ Կեառօն յէմա՛լ ա հեռատի որ քիչ մնացեր ա համ զարկայ ուր բարէր սպանայ, համ էլ զուր խէր ու համ էլ Փարիշան խանըմի սիրտ չըր յուզէր զէն խարիր տարեկան խալիւոր որ մեռլի խոտ բերնից զուկէր։ Էդտեղ յառէջ էկաւ, խաղմ ըսեց։—

Դէ՜, եօ՜ ...
Խրպէ-դարան կեռ ու մեռ ա, վի՜ ...
Քուլլըքէ Սլէմին կուռղ առուծի էրաց, անուն խանեց, վի՜ ...
Խրպէ-դարան խազար եօք խարիր մարդու խեց կռուեր ա, վի՜...
Դէ՜, քըլխ էնդոր տեղ սաղ մնայ Կեառօ, վի՜ ...:]

Աղջիկն որ էս խաղն առաց, Ամար աղէ խելք նոր էկաւ գըլուխ, ասաց.—Ջանըմ, ես իմ աղջիկ յընչի՞ տամ էս խարիր տարեկան խալիւորին. կուտամ Կեառօյին, որ ջահիլ են. յիրար հունֆուֆի են։

Տարան Քուլլըքին խորեցին։

Քառասուն յընցաւ, նոր բերին եօթ ձեռք դհօլ զուռնա զարկին, Կեառօն ու Փարիշան խանըմ խասան յիրար մուրազին:



17

# ՍԻՅԱՄԱՆՏ

(Նորտուզայ Ցիմ գիւղի բարբառով) *

Սիյամանտ Սլիվանցի, դաշտի (Մուսուլ) երկիր կէօ:

Էլաւ էկաւ մէ մարդու մօտ իլաւ մշակ:

Սիյամանտ տեհաւ, որ ասես ինոր աղին կը տփէր:

Էն մէկ օր ասաց.— Ահա ըլնի, մօ մէ ըսկոն մարդմ ըլնեմ Ծօ-ֆար, մարդ չըղէն զալմ չըլնի. մարդ չըղէն խայց տուող չըլնի, մըջ ըմենի գլխուն էն աղէն զանի:

Գնաց մօ Միրէլեվան, գնաց էլաւ մշակ էն տեղ:

Միրէլավանին կէր քառասուն մշակ. գնաց մօ քառասուն մշակ, ասաց.— Ես մօ ձե ըլնեմ մշակ:

Էդա մշակներ ասին.— Մե միրախոռ (ախոռապետ) կայ. գնա մօ միրախոռ. քե բռնի,

Գնաց մօ միրախոռ, միրախոռ ասաց.— Քեօ անուն ճշի:— Եմ անուն Սիյամանտ ի, ասաց:

Ասաց.— Դիւ կըլնի՞ս մշակ: Ասաց.— Խա՛, կըլնեմ:

Ասաց.— Արե՛, քանեմ, էրթամ մօ Միրէլաւան քե բռնի:

Տարաւ գնաց մօ Միրէլաւան. ասաց.— Աղա՛, էսա լաւ մարդ ի, պտի բռնենք մշակ.— Դիւ գիտես, գնա՛, բռնի, ասաց:

Տարաւ յեվարին մօ մշակներ, մշակներ ասին.— Դիւ օտար մարդ էս, գիշեր քեօ քիւն չտանի, մե չոտ խանես վեր, մենք ըլնենք դեխ մեր բան:

Մշակներ ընկեան պեհիւի քընան: Սիյամանտ չխանեց վեր, ճերկու սահար վրէն ընցաւ. զինք էլաւ վեր. ուր ճրագ կպուց. քառասուն ճրագ էր. քառասուն էլ կպուց. ուր ձիանքներաց տեղ ա-

---

* Ասած է Պետրոս Վէրսօեան:

Վէպիս ոմանք Սիյաբէնսօ, ոմանք Սիյա Ահմաթի, ոմանք Սիյամանս, ոմանք եւս Սիյաբէնսի եւյն. կասեն: Սորա մի տարբեր օրինակը հրատարակեց յիշատակի արժանի Սրուանձտեանց Գարեգին եպիսկոպոս իւր «Համով-Հոտով»-ի մէջ, Սիյամանսօ եւ Խճէ Ջարէ վերնագրով. սակայն աւելի համառօտ է քան ներկայ երկու ճիւղերը:

վեց։ Միրախոռ կեօ թամաշա կանի։ Սիյամանտ պիթուն ձիանքներաց տակ ալեց. յարդ տուեց. զըմենքն էլ նմ կախեց, ինոնց եմ կերան, պրծան։

Սիյամանտ ջեւր քիչեց խորից, յըմենն էլ ջրեց, յըմենն էլ քիմրեց, էլ մշկներաց բան չթողեց։

Սիյամանտ ի՞չ արեց, յըմեն ձիանուն քեամկին մէմէկ ձեռ դըրեց, կան տուեց, վար ձիու քեամկին ձեռ դրեց, փոր խասուց գետին, ըսկուն թափով կը դներ, յըմենն էլ փոր կը խասուցեն գետին։

Մէկ չէյ ձի, թառի տակ կապած էր, գնաց, ուր ձեռ դըրեց վըր էն ձիու քեամկին, էն ձին մէշքը ըսկուն վեր թալեց, Սիյամանտի ձեռ տարաւ, կպուց առիք։ Զըւրաւ Սիյամանտ, ձիու էրես պագեց։

Սիյամանտ էն ձիուն լաւ ականջ արաց.

Էկաւ, ճրագներ ընցոց, քնաւ։

Մէկէլ մշակներ քնած էն, էլ մարդ չակլաւ. քընան չում վուսյա։ Մշակներ ակխան, ասին. Աստուած քեօ տուն աւրի, լոս ի. էսա ի՞չ գեախ ի։

Գնացին որ Սիյամանտ ափին, ասին.—Մենք թողինք քեւ ճիւին, էդա իչ գեախ ի։

Միրախոռ կանչեց,—Ձեր քեառասունի գլոխ ղուրբան կանեմ Սիյամանտի գլխուն։

Մնաց ամիսմ, էրկու. եօլա գնացին մէմէկու։

Մէկ օր մէկ բազրկեան բերեց, դրեց ինոնց գեղի քեմակ, Միրէլավանի չայիրի մէջ։ Միրէլավան յըմեն օր ուր խեծել կորոզկէր, կասէր.—Գնացէք, իմ բան մընէն առէք. չլտէք, չալէք, առէք, էկէք։ Խիծել կըհեր դայ, բազրկեան բաշին կը թողնէր խոեքեր, կսպանէր. զըմեն կը ճանճըլխեր, զըմենն կը փախնէն, կդէն յետ։

Միրէլավան էրկու օր ուր խիծել էն լաւնով օրողկեց, ճար չտարին։

Մէկ օր Սիյամանտ կըլնի, կայնի, կեօղւով կեօն կը տանի. կռանակ կը տըռնայ խիծել դէն կեօ կդեայ. յետ պլաւան, էկան կոտրած խիծլի նման։

Դորխ Սիյամանտ էն մէկ մարդու մընէ խարցում արաց.— Էսա ի՞չ ի, դիւ կեհեք, կդէք՝ ձի էլ ասէք։

Էսա մարդիւ ըռըկլեր Սիյամանտից էլաւ.—Դիւ մէկ մշակ մարդ էս, քի ի՞չ կայ խըռ խարցման. գնա՛, քեօ մշկութենով նիստ ու ել։

Սիյամանտ ասաց.—Դիւ որ ձի չասես, ես իմ կեօղվի կապ թալեմ քեօ վիզ, քե քիշեմ, չում նիրքին պարխեր, (արտ) տանեմ.

Ասաց.—Կեօ մէկ բազրկեան դըռ էնա մեր դեղի քեառւչանի մէջ, մենք կեհանք ինե որ չալենք, բիրենք, մե կը տփի, մե կըսպանի. մենք ճար չընք տանի. մեկը բիրի դայ.

Ասաց Սիյամանտ.—Գնա՛ քեօ ճալին, ձընէ ընչի կը քըխէր.

Սիյամանտ ուր կեօղով շըկեց, էկաւ. էկաւ սկուն ծուռ մարդու պէտ, գնաց մօ միրախոռ. միրախոռի դէմ ուր կույի կեօղով տփեց գետին, ուր ճրսից կայիմ տփեց, ասաց.—Ես ասի տեհամ, սկուն մօ մէ մարդ մը որ նա մարդ չընգէն զախմ ըլնի, նա մարդ չըն զէն խայց տուաղ ըլնի. էսա մէկ բազրկեանի իկե, չկանայ վրէն. խօզի, ասաց. ես չէի իկե մօ սկուն մարդ, մկայ Միրքէլավան ընձի դաստուր տէր, ես էհե ինե։

Էդա միրախոռ գնաց Միրքէլավանին մօտ, ասաց.—Էն մշակ իշ նոր բռներէնք, ձի ծնայ կասէր. կանչի, բերը, խարցում արա մընէն, ըշկայ, իշ մարդ ի։

Ղանչեց, արաւ ուր իրես, ասաց.—Դիւ ծնայ կասես։

Ասաց.—Խա՛, էլաւ ուր Խայրի տէր։

Ասաց.—Էն չէյ օլախ տաս ձիկ, էն ճազարե ուրմ տաս ձիկ, ես տեհամ ինե։

Ասաց.—Գնա՛, ես տուերէմ քե։

Համա զանեց, ծռու ցեղ առեց ուրմ, գնաց։

Գնացին զըմեն քնան. մէկ սաճար գիշեր գնաց. Սիյամանտ էլաւ վեր, ուր չորիր խաքեաւ, ինոր չէյ օլախ քեշեց, բերեց, էկաւ դիւս մըջ հաւշին. դարկեաւան խանեց վեւ—Մէկ թաս պաղ ջիւր բե ձիկ, ասաց։

Թաս պաղ ջիւր խմեց, տարաւ ուր օլխու աչք, իրեն, բժիկ լուաց, մէկ թիմարմ տուեց, ինոր Թամք վիրուց դրեց վըր քեամկին, Թամքի ղայիշքեր պինդ ղըքեց, ելաւ ոտ դրեց ըռըքեպ. Աստըծու անուն տուեց, խեծաւ Թամքի մէջ. օլախ լազաւեց. օլխու ճլաւ բռնեց, յետի-յետի գնաց, դարկեավանին ասաց.—Մարդիւ չասես Սիյամանտ գնաց. նստես դռան ետև չում ես իգեամ։ Դարկեն տուեց յետ, դիւս ընկեաւ գնաց։

Գնաց, բազրկեանին ղանչեց.—Քիւ քալ արա՛, կեօ ես էկայ։

Բազրկեան ուր ընկերտեքաց ասաց,—Էն իշ մարդ ի, էսա գիշերով իկե, զինք վըր Աստըծու ղազապին բռներ ի։

Բազրկեան բաշին վախեցաւ. ինոր մօր խիժ իշ կերեր էր, ինոր ատմի տակ դոզաց։

Սիյամանտ էլաւ, քըշեց, գնաց վըրէնքիր։

Զանեց, բազրկեան բաշին սպանեց, ինոց բազրկեան մէմէկուց ըռըկով բժըգեց, տաս խոքի սպանեց, ասաց.—Էկէք խը ձիկ, էսա բազրկեան բռնանք։

Էկեան, բազրկեան զըմեն բարձին։

Որ բարձին պըծան, զըմենի դաստուր տուեց, սաց.—Գնացէք, էն իչ սպաներ իմ, սպաներիմ, մնացած գնացէք։

Բազրկեան բերեց էկաւ. դարկեավըներին սաց.—Դիւռ բաց։

Դարկեվան էլաւ, դիւռ բացեց ինոր, դավէք քեշեց մըչ հաւըին, «նըխ» տուեց ջորեքերաց բեռներ զըմեն առեց վեր յինի, դարկեվան մնակ, ձիանքերաց բեռներ առեց վեր, Թալեց մը մէմէկու. էդա հաւը յըմեն լցեց, գնաց, դպաւ յօղի պատ։

Ձիանքերաց լաղապքեր առեց, դրեց մէ չրտի վրէն, կապեց. էդա լաղապքեր. յըմեն տուեց դարկեվըրնի քեամակ, տարաւ մըջ փայնեին պախեց, սաց.—Մարդիւ չասես, գնա, քընի։

Իլաւ ուր գլօխ դրեց էդա լաղաւքերաց, փայնեի վրէն քնաւ։ Մնաց առաւտուն Միրէլաւան էլաւ վեր, որ տեհայ ուր նըվէժ. ինկաց չընկչընկոց ընկե մըջ հաւըին։ Միրէլաւան փախաւ էլաւ տանիս, սաց.—Բազրկեան կեօ իկե, ռընէ վըր դեղին. յըմեն տպանե, ես իմ մնացի, ձի էլ տըսպանի: Բեռներ որ տըսաւ մըջ հաւըին, սաց.—Իշկանք ով ի սկուն արե, կըլնի էն մարդնի արե։

Էկաւ, գնաց յօդէն նստաւ, ղանչեց գեղական.—Էկէք, իշկանք, սաց. ով է արե էսա Նամուս, ինոր իշ պտի, ես տամ։ Գեղական էկան, սուին.—Մենք ենք արե, Պօղոս սաց, «ես իմ արե», Պետրոս սաց. «ես իմ արե». էն մէկէլ սաց, «ես իմ արե»։

Միրէլավան սաց.—Ձե մի գիօվացէք, ով իչ արե, ինոր նշան կայ։

—Ինու նշան ի՞չ ի, սուին։

Ասաց.—Ինու լաղաւ կայ. լաղաւքեր ով բերեց, էնի արե։

Մարդ չբերեց լաղաւքեր։

Միրախոռ սաց.—Աղա, յէվարուան մշակ իչ քեօ ըըմ տարաւ. էն մարդ կանչի գեայ, կըլնի էն մարդնի արե։

Էրկու խօլամ օրողկեց. Գնացին, սուին.—Սիյամանտ, Սիյամանտ, սաց.—Ի՞չ ի։

Ասին.—Իլի վեր, Միրէլավան քե կը կանչի։

Ասաց.—Ճէյնըմէք. գնացէք, չըմ իգեայ։

Գնացին, սաին.—Աղա, չգեայ, մէ տապլոտ մարդ մի, մէ յիչունց կատայ։

Ասաց.—Զօրս խօքի գնացէք, չափռնէք, առէք, էկէք։

Գնացին լաւա ընկեան։—Սիյամանտ, Միրէլաւան քե կը կանչի, ծռուԹեն մի դնի վըր քե, արի։

Էլաւ վեր, էդա լաղաւքեր Թափ տուեց. տուեց մշկու քեամակ, առեց, գնաց. տարաւ տըփեց մըջ յօդին, սաց.—Առ քե։

Ասաց Միրէլավան.—Աֆարըմ քե խըմայ, Սիյամանտ։

Էմէլ դարձաւ, ասաց.—Սիյամանտ, դիւ անպատկել էս Ասաց. —Խամ։

Ասաց.—Այի՛, կայնի դիւռ, ես թաՑպի անիմ. գեղակնի աղ-ջիկներ, պատկուած խարսներ, կնկտիք, տըբեվէրիք, չաւմ հա պառ-ւըներ, յըմեն գեան, քիւ դէմէն յընցնին. դիւ մատ թըխ ոն պար-գես, ես էն բիրեմ, պակեմ վեր քե. դիւ տը կենաս մօ ձիկ։

Էղա չու պառւըներ ինանց աչքեր գեղին. ինոնց պակըներ թողին, ասին.—Սիյամանտ մե առնի։ Էկան, Սիյամանտի դէմէն ընցան. մէկ դալյօւլ չարաց, ասաց.—Մէկդէլ ձի չպինայ։

Միրքէլաւին ասաց.—Դիւ քիւ չէյ ուլախ տաս ձիկ, Ծազարի ուրմ տաս ձիկ՝ ես համ, եմ կնիկ տըսնամ։

—Սիյամանտ, ես յէվարին տուերէմ քե, քենէ չըմ առնի. պէլէ որ կեհաս քիւ կնիկ տըսնաս. գեաս մօ ձէկ. ես էհամ քիւ կնիկ բիրեմ։

Էլաւ գնաց, մէ թըքեայ ակլի լցեց ուր Ծեպ, գնաց թըխ ուր կնիկ։ Գնաց չոլ չոլստաՑ, պառին ու պ'առստաՑ.—կան էկաւ, գնաց վըր մէկ աղըրին կայնաւ, ասաց.—Եմ ուլախ պէԾՖ մը տայ, ջիւր մը տայ, ջիւր մը խմեմ, էհամ։

Իլաւ դիւլպիՑ տուեց յէռջև ուր աչից, դե մէկ սև վրան մը տըսաւ մըջ դաշտին։ Գաստ էն վրանին արաւ, խեծաւ գնաց։ Գնաց-գնաց մօ էն վրան, էն վրանի դիւռ էջաւ վեր, տեհաւ կեօ էն վրա-նի դիւռ մէկ կնիկ կայ. բարև տուեց, էն կնիկ բարև առեց. կնիկ վազաւ ինոր ձիու դլօխ բռնեց, ձին տարաւ, կապեց. տեղ թալեց, էն գնաց նստաւ վըր տեղաց։

Մէ պէԾՖ մնաց, ջիւր ուզեց մօտէն, ասաց.—Խօզի ես գիտէ թէ էն կնիկ ի, թի աղջիկ։ Ես ջի՛ւր ուզեմ մընէն, եմ մատնիք թա-լեմ ինէ, որ կնիկ ի, եմ մատնիք չվիրուցի, որ աղջիկ ի, եմ մատնիք կը վիրուցի։

Ջուր տուեց Սիյամանտի ձեռ, Սիյամանտ խմաւ, մատնիք թալեց մըջ ջըրուն տուեց բաս ձեռ, աղջիկ առաւ գնաց։ Գնաց, ուր մատնիք փոխեց, Սիյամանտի մատնիք մտուց ուր մատ, ուր մատնիք թալեց մըջ ջրուն, բիրեց, տուեց էմէլ Սիյամանտին։ Սի-յամանտ մատնիք առեց, մտուց ուր մատ, ասաց.—Էսա իչ վրանի. ի՞չ ապով էկերիք ըղայ՝ ո՛ր եկից էք, դիւ մնակ ընչի՞ էք էկե ըղայ։

Ասաց.—Վեց աղբէր ձի կայ, ես վեց աղբօր քիօրնեմ։

Ասաց.—Քեօ աղըրքեր յո՛ւր են։

Ասաց.—Գնացած Ծէջիր, մենք Արարատանայ էլի ջոջի տներ էնք մի կե՛ մէկ թախմ մենք էնք, մէկ Արարատանայ չէխն ի, չէ-խին լամուկ ընձիկ կուզէր, եմ աղըրքիր ձիկ չատուին, ձի առին, վէկան էսա տեղ։

Մնաց յէվարին, աղբրքեր էկան. զատամանց իջկացին, կեօ մէկ ուլախ մըջ մրանին. վախեցան, չէկան։ Մէկ էն աղբէրքերաց գեօղութենով էկաւ, խասաւ մրանին. քեօրը տեհաւ, խարցնեց.—Էսա ի՞նչ մարդ ի։

Ասաց.—Աւերութենի մարդ չի, էկէք։

Աղբէր գնաց յետ, ձեռնով արաց, էկան։

Էկան բարև տուին, բարև առեց։

Սիյամանտին խարցնին.—Դու ի՞նչ մարդ էս։

Ասաց.—Ես էլ մարդմեմ, ես գաաs Աստըծուն, ձե արեբէմ, էկերէմ ձեր մրայ. դու ձեր քեօր ընչի կը Թողնէք անտէր դայ, որ ես ձեր քեօր տանի, դու ի՞նչ գիտէք։

Ասին.—Վայա՛, քու խալպարն ի։

Խարցուցին.—Քեօ անուն ի՞նչ ի։—Իմ անուն Սիյամանտ ի։

Ասին.—Մենք վեց աղբէր ինք, դու էլար մի ջօջ աղբէր։

Առաւտուն էլան, գնացին Ճեջիր, ասին.—Սիյամանտ խուր ի, Թողինք աղայ։

Սիյամանտ Թողին մօ խանճէն, գնացին։

Սիյամանտ ու խանճէն կեր կերակուր չինին, կերան, իլան քէյֆն անել։

Երկու ձեռ. լխև ղօշակ չու յեվարին կտրտին։

Ցեվարին աղբրքեր էկան, Նստան. Խաճա զիրին ասաց.

—Աղբէրքեր, դու ախր տըտէք մէկ մարդիւմ, ձի էսա մարդ պինայ։

Ջօջ աղբէր ասաց.—Սիյամանտ, քե պինա մեր քեօր տանք քե։ Ասաց.—Խա.

—Էհաս, մե վեց աղբօր Ճաղդ բիրես, տանք քե։

Ասաց.—Դու տէք ձի, սուԹ չատէք, ես կեհամ կը բիրեմ։

Սիյամանտ խեծաւ ուր ուլախ ուր ռըմ դրեց ուլխու մըջ էրկու ականջ, Թողեց, գնաց Թըխ պանճա Խաճա զերին։

Գնաց, պառին էր, գնաց մէկ աղբրիմ վրէն պայյա իլաւ. ուր խաց կերաւ, ուր ձին ղայլեց. նստաւ, խաց կերաւ. տեհաւ կեօ մէկ բազրկաճ մը դեն կգեայ, էրկու սև ջորի բարցուկ, առեւ յառաջև բազրկեաճին, կեօ հգեայ, ասաց.—Վայա, Աստուած տուեց Խաճա զերինի Ճաղդ։ Գնաց ուր ուլախ Ուռումեանի քիմար մը զանեց, կեաւ զանեց բիրան. ոտ դրեց Թավքի՛ բըրքեպ. էլաւ, խեծաւ. Աստըծու անուն առեց։ գնաց Թըխ բազրկեաճ, կանչմ տուեց, ասաց.—Էդ բարանկու էրկու ջորին տուռ ձիկ։

Ասաց.—Դու մէկ մարդ, ես էդա բարանկու ընչի տամ քե, ես ընձի կտամ ողանել, չըմ խտայ։

Էն տեղէն զանչեց բազրկըճի վրէն. գնաց, զանեց, սպանեց. էրկու ջորին առեց, էկաւ։

Ջորիք առեց, գնաց մօ Խաճա գերին։

Մէմ մարդ եմ ցեղ դէմ առեց ինոր, Սիյամանտ խարցնեց.—Դիւ դորէն կգեաս, ախշար ի՞նչ կայ, ի՞նչ չկայ։

Էդա մարդ ասաց.—Վալա, մէկ տուն Արաբստանայ էլից օըլ իլաւ, գնաց պառսեանի մէջ գրեց։

—Ընչի գրեց, պատճառը ինչ էր։

—Արաբստանայ չեխի լաճ ինոր քեօր կուզէր, չին իտար. առին ինանց քեօր, փախան գնացին դայ. մըկայ մէ Մարդ-անուն Սիյամանտ, էկաւ ինանց քեօր կուզէր, տուին Սիյամանտին. Սիյամանտ գնաց ինոնց ճաղդ, Արաբստանցոց էլի լաճ քսան ձիաւոր առեց, էկաւ Թըլխ Խաճա գերին. ոլ տանին. մահրեն վրէն. Խաճա գերինի ջօջ աղբէր չըր իտայ, զանեց էն ջօջ աղբէր սպանեց. Խաճա գերին առին, գնացին։

Սիյամանտ ըռըկվեր իլաւ, մէկ սիլով զանեց էն պայիճ, երեք թախլ գլորաւ. գնաց, ասաց.—Սիյամանտ ես էմ, դիւ ընչի էն ակնջկըլէն տուիր ձիկ։

Էն մարդ գլորուաւ, դե զատն ընկեաւ։

Սիյամանտ ասաց.—Արի՛, արի՛, էսա մէկ բեռ ջօրին տուր քե։

Պայէն ասաց.—Խօզի մէկ սիլով էր տէր ձի, էն մէկէլ ջորին էլ տէր։—Գնա՛, ասաց. խէրիք ի։

Մէկէլ ջորին տուեց յէռջև ուր, գնաց վրանի Թեխ. գնաց, տըսաւ վրանի էն կչտէն ծալոց մը կգէր կը աքէր. էդա քար քո.էն տուեց յեա, էդա աղբէր խանեց դիւս, դըեց վըր ջուրուն, կքեց. առեց, գնաց, մօ ճեճիմ, ասաց.—Էսա մարդ ժըրցըցես, էսա ջորին բեռնով տուերէմ քեօ ճախին։

Ուր բաժին փառէն առեց, մըկէլ թալիմ ճաճիմ արեց։

Գնաց ընկեաւ պառսեան, մըջ Արաբստանայ ելին. ելի դիմաց ընկեաւ, վրան վրանի զարկած, թանաւ վըր թանաւի զարկած, խէյ-վաթ վըր խեյվաթի զարկած. էրկնուց աստղին ճսապ կայ, խեյվաթ ու չատըրին չկայ, ըսկուն խաթապանս արած՝ լու չկընայ եռայ մէշքեր։

Ձիւն ասաց։—Դիւ մըազ ճասըլ ձի՛, դիւ դօր կայնես, ես դայ պտի պայա ըլնեմ։

Էդա ձին, էդա վրանքեր յըմեն չենքեց, գնաց մէ պառաւու դիւռ կայնաւ. Սիյամանտ դայ պայա իլաւ։

Պառաւ ինոր ղաշր արաւ, տարաւ նատըցուց։

Պառուու իրեք լաճ ինոնց ակիշքերնէն, ինչ օր կայ, չկայ. ինոնց ճայեֆ, նայեք ինոնք էն։

Սիյամանտ էրկու ոսկի տուեց պառուուն, օղորկեց, կեր-եմակ ինչ որ պինայ բէրեց։

Ցէվարին պառւաւ լաճեր էկան։

Ուր ծծեր բռնեց պառւաւ, տարաւ ուր լաճերաց չանց տուեց, ասաց.—Էսա մարդիւ պեցըլ անէք եմ ծծի կաթ ձե խարամ ըլնի։

—Չէ, մարէ, ասին. դիւ ընչխ անես, սկուն անենք։

Էկան բարև տուին մէմէկու, նստան։

Ասին.—Դիւ մեր ջոջ աղբէր, ՝մենք պստիկ աղբէր, մեր մէր սկուն ասաց. մե մօր սիյանաք կը բռնենք. ինչխ դիւ հազ անես, մենք անենք։

Ասաց.—Մենք իլանք աղբէր. էսա Խաճին եմ նշանածն է, պտի բերիմ ընձի խըմայ,

Ասին.—Խաճէն մեր պսմամու խըմար է. չըմէի դիւ էլոր մե աղբէր, ինչխ դիւ հուզ անես, անենք։

Ինոնք էլան գնացին խարոնիս, չում լուսուն մնացին։

Սիյամանտ մնաց գայ, ղանչեց պառւուն, ասաց.

—Դիւ կանճս խասնես մօ Խաճա զերին։

Ասաց.—Հո՛ւ, ինչխ դիւ հազ անես, սկունեմ։

Սիյամանտ ուր մատնիք տուեց, օրողկեց մօ Խաճա զերին։

Պառւաւ գնաց որ մտեր ինե, չԹոզին. տուեց մէկ ոսկի դըռ-պասին, ըսկուն գոռաց, ասաց.—Թող, ես էհամ, եմ կակօ խարս տըսնամ։

Խաճէն ասաց.—Թու մարդ չգեայ եմ մօտ, որ իկաւ, ես ձը տըրպանեմ։

Պառւաւ ասաց էն իշ քեօ fեասար կը սիրիս, ես գեամ։

Ի Թող գնաց մօ Խաճա զերին, մատնիք տուեց։

Ասաց.—Պառւաւ, էսա մատնիքի տէր դո՞ր է։

—Կեօ, եմ տունն է, ասաց. ձի լաճ արերէմ։

Պառւաւ դորիս էկաւ մօ Սիյամանտ, Սիյամանտ խարցում արաց պառւաւ մօտէն, խանեց, իրեք ոսկի տուեց։

Պառւաւ էմլէ էլաւ ժաժիկ մաժիկ դրեց մըր խացին, փչում մատեց. պուԹիկ մուԹիկ, տափիկ մափիկ, դնաց մօ Խաճէն։

Խաճէն ասաց.—Իշ լաւնով ձի պի տանի։

—Դիւ գիտես, իշ ըուրզա տըսնաս, ասաց. էն կայնուկի։

—Առաւտուն ես թաճգի անեմ եկին, «էն իշ ջոջ, պստիկ, էն իշ զինք կանայ իշու քեամկին էլ բռնի, գեան եմ վրանի գիւ-մեյտան տան, եմ fեյֆ բացուի, էհամ պսակ»։

Պառւաւ գըւրաւ յետ, ասաց.—Ասաց Սիյամանտն էլ գեայ մեյ-տան fեյֆ խոռուԹեն։

Սիյամանտն էլ խեծաւ ուր չէյ ուլախ, գնաց։

Արաքստանցոց էլն է, ո՛ր եօԹ-ուԹ փէտ առեց ձեռ, որ չատ տաեց։ Խաճե կայնե թամաշա- էղտ փեսէն, իշ Խաճէն տը պըսակեն

մըշ մէյտնին։ Սիյամանտ լընկ իտու ինե. փէտով տուեց վըր տող. քիթ բերանով խսկեց մըջ խողին։ Սիյամանտ թողեց, գնաց, ուր կօճախի դիւռ պայա իլաւ։

Մարդ չդիտցաւ ով զարկեց. գաս մը կըսէն, խրիշտակն էր, դաս մը կըսէն ազրայիլն ի։

Խանէն սաաց.—Էս օր գիշեր զօմի մէջ անենք խարսնիս, ճէյֆ, խոշութեն. լուսուն էհանք պսակ։

Ցուխարին իչ արև մտաւ. սազ զարկին, գնացին խարսնիս։ Սիյամանտ իլաւ, թիմար մը տուեց ուր օլխուն. մէկ ճանկ ոսկի տուեց պառւուն, սաաց.—Էսա էլի էկիր քու լաճիրնէն՝ որ քու լաճեր եմ պէտքլ չանեն. չաւ մարդ չգեափինայ թըլս ընձիկ։

Էլաւ, խեծաւ ուր ձին, գնաց Խանէ վըրանի փէտեկը ճղեց, տուեց յետ. Խանէն բիրեց. էկաւ. խիծուց ուր քեամակ, մէչկաղ թալեց ուր քեամակ, Խանէին կապեց յիրար, իլաւ, գնաց մըշ խարսնըսին. մէկ ճանկմ ոսկի տուեց սազ արող բեօշիւն, սաաց.—Արա ճապաճ. ես գեաղտիկ մարդ չըմ տանի, կուռով տը տանեմ։

—Հայ ճապա՛ճ, մալի ապա՛ճ. Սիյամանտ խանձա զիրին տարաւ, ճանկ մը ոսկի խոսր մրդրըպիւն։

Որ սաաց. «Խանէն տարան, յըմեն տուին մըշ գլխուն. ես տուի մըշ գլխուն, դիւ տուիր մըշ գլխուն, ասին։

—Ձէն մի տուր, սուք ի. Արաբանցոց էլի լամուկ լինայ, քե կապանի։

Ասաց.—Աստուած ձեր տուն աւիրի, տարաւ գնաց, ես ինչ անեմ։

Սիյամանտ Խանէն բերեց, եկաւ պառին, խլացուց, էկաւ Սարճաշի սինոռ, (արևելեան հիւսիս),

Որ լուցաւ, ճաւար ընկեաւ իւև. չոլ, պատիկ ընկեան իտև. պառւու լաճիրն էլ էկան, գնացին, խասան Սիյամանտին։

Ասեմ, պառւու լաճեր խիծլի պառաճիֆ բռնած չըն թողնի մարդ էհոյ. փեսէն մընակ կեհայ։

Ասեմ Սիյամանտ զառնի, Խանէն կեօ դըռ, նստի։

Փեսէն գնաց, մօտացաւ, գեախն է խասնին մօ մէմէկ։

Սիյամանտ իլաւ, դաստըմալ տուեց Խանէ ձեռ, սաաց.—Սղայ դու խաղայ, ես տեհամ ինոր յառաջ։

Գնաց ինոր յառաջ։ Էդա պառւու լաճեր խիծլի պառաճիֆ բռնած չըն թողնի մարդ գեայ, կասին.—Խանէն էրկըսից մէկ տառնի. մենք առնող չընք, մի գնացէք։

Էրկուս խասան թըլս մէ մէկէլ. մէմէկաւ բիւլոր իյան պոտու. Սիյամանտ քեամակ մընէն առեց, մէկ թօփուզ զանեց մըջ գլխուն. ճանճղեց, բերեց տակ. պայա արեց գետին։

Խաճոյին ղանչեց.—Արի տղայ, քու պսմամու գլուխ դիր վրր քու չոքին. քեասար չմնայ մէջ սրտին. չու էնոր խոքին թանի։

Իկաւ, դրեց ուր չոքին, չու խոքին տուեց։

Խանճէն խեծաւ ղէնու պսմամու ձին, զինք խեծաւ ուր ձին. քշին, գնացին։

Խիծել էկաւ էն սղանուկին. տուին խնոնց մարդ, դնացին.

Սիյամանտ առեց Խանճէն, էկաւ։

Գնաց Սիփանայ քեամակ դաշտ կայ. գնաց, նստաւ։

Ասաց.—Քեօ չոք դիր, Խանճէ. ես գլուխ դնեմ վրէն քընիմ։

Գլուխ դրեց, քիւն տարաւ։

Մէկ վէրու կով էկաւ, խինք վեց ցլռոր լոռւ կովուն էր, մէկ մընէ ղոչախ էր, կով մէկնելանցմէ խոլեր էր Խանճէն ծծղաց, սաաց.—Էստ հաքի Սիյամանտն ի, կով զըմեկնելայմէ ինլե, կտռնէ կեհայ։

Որ ծծղաց, Սիյամանտ ակխաւ, սաաց.—Պեկաւի էկաւ վրր ձիկ որ դու կը ծծղաս։

Ասաց.—Չէ։—Պա ինչ իլաւ որ դու կը ծծղաս։

—Մէկ վերու ցլռոր էկաւ, գնաց. մէկ վերու զըմենայմէ դկոփ ինլէր էր, սափ.ձէսա եմ Սիյամանտ կը մանիս։

Ասաց.—Անօ ըղնի եմ խոքիւն, եան ես սաղ մնամ, եան էն, չասմրոս դու առիր Սիյամանտի ցեղն ի։

Ասաց.—Սիյամանտ, ես հիւրի կանեմ, մի դնա, ես կուրպան եմ քեօ դիրկեվանին, մի գնա։

Ասաց.—Չէ, ես պտի էհամ։

Էլաւ դիրկեվանն կապեց վրր ուր, գնաց։

Գնաց վէրու եղ կեօ դնացե, խասւ Սիփանայ գլուխ, կովն էլ կեօ կչափին. մէկ դիրկեվան թալեց ինե. զանեց, վէրու եղ սպանեց։

Գնաց, սա տուեց կօսերին, որ տը զինէր. ղանակ թալեց, վիզ կտրեց. էն ուր գլուխ թափ իտուր, կօսօռ զանից Սիյամանտի ռասցն տակ, թալեց։

Սիյամանտ գնաց, ընկեաւ Սիփանայ տակ։

Ընկեաւ վըր մէկ պալաղոնկի կոճին, վըր ուր քեամկին։

Կոճ մէկ թիզ ինոր սրտից տուեց դուս, սպանեց, պըծաւ։

Խանճէն իլաւ խըչ չսիրին գնաց. գնաց իլաւ Սիփանայ գլուխ, ինչ վերու եղ գայ մրռօրլե. ինկաց զաււ, մարդ տեղ չըտեհաւ. ինկաց մէկ Նոլոց էկաւ, գնաց քարի գլխուց ինկաց Սիյամանտն ի, ընկի, կը տքեայ։

Խանճէն իլաց Դորլիս խաղ՝ ասին՝ իլայոու։

Խանճէն ուրին իսկեց ցած։

Մկայ էրկուս էղած ի ծառ։

# 18

# ՍԻՅԱՐԷՆՏՕ ԵՒ ԽԱՃԷ ՋԷՈՒՆ

**(Խլաթայ բարբառով)***

---

Սլիվանայ էրկիր Սլիվանցիմ կեղէ. էդոր մէկ տղայ կեղէ, տղի անուն լէ Սիյարէնտի կեղի. չատ աղքատ կեղին։ Մէկ օր կելլին ինքն ու ուր խէր խորթեր կը տանին, արծան։ Խորթեր կը բերին, խէր կատայ.—Գնա՛, գեղէն խաց ժողվա՛ բե։

Սիյարէնտօն կերթայ մըջ գեղին, խաց կը ժողվայ, կելնի օր տուն բերայ, ճժեր կը ժողվին վրէն ձեռնէն կառնեն։ Սիյարէնտօն էսմալ ինչ խտըր խաց կը ժողվայ, գեղի ճժեր կը կըլեն մօտէն, էնի դարտակ կը թօրկայ կերթայ մըտ խէր։ Լուսուն լէ էլման գնաց, ժողվեց, էլման ճժեր առան մօտէն։ Մէկ օր լէ գնաց մըջ գեղին, տեսաւ օր, հեռի լողաց մօտէն, մէկ ջանդակմ կէր, չներ թափած էն վըր ջանդըրկին, կուտին. իչկեց պղտիկ բօճիմ էկաւ, ղէդ չներ դէն լարեց, դէն լարեց, ջանդակն ինքն զարքեց։—Վա՛յ, էստր լող իմ գլխուն էղի, ասաց Սիյարէնտի Սլիվին, ես ինչ խտըր խաց կը ժողվեմ, կուգեան ընձնէ կը լլեն, ես ձէն չըմ իտայ։

Սիյարէնտօն էլման գնաց խաց ժողվեց, ճժեր էլման թափան վերէն. Սիյարէնտօն ա, դարձաւ վըր ճժերուն, ամէկին դըրբ մը էզար, էնտեղ լարեց, էնտեղ. առաւ խաց, գնաց խօր կուչտ։—Սիյարէնտօ, ասաց խէր, ամեն օր խաց չըր բերէր, լալելին գիգէր, յէսօր իմալ էղաւ։

Ասաց.—Ափօ, յէսօր գացի, զաղար մի խամլա էրեց, ե լէ իչկեցի զաղարին, զարկեցի ճժերուն, լարեցի, խաց առայ, էկայ։

Սիյարէնտօն մէկ ամիս մնաց խօր կուշտ, մէկ օր ասաց.— Սլիվանայ խաց ընձի խարամ ա կեցի, ես թօրկիմ, էրթամ ուրիշ երկիր։ Թօրկեց էկաւ Էլ-աղաստ մը խող, տեսաւ ութ խողի մարդ

---

*) Պատմած է Տափավանք գիւղացի Պօղոսեան Սառաս: Վէպիս նիւղերը ցաս են, ունի ընդարձակ երգեր:
Ներկայ Սիյամանցի սոյն երկրորդ նիւղը ունի երգեր որ այլ եւ այլ քաղցր եղանակով կերգուին:

Նստած էն ղըսա կէնին. փշում կայնաւ, իշկեց էնոնց բերան։ Կանչեցին էդ մորղիկ.—Արի՛ էստեղ։

Սիյարէնտօն գնաց էդոնց մօտ, էդոնք ասին.—Գեացէք, խաց բերէք, թը ուտայ։

Խաց բերին, ասին.—Քու անուն ի՞նչ ա։ — Իմ անուն Սիյարէնտօ ա, ասաց։

—Ո՞րտեղացի ես։—Սլիվանայ երկրէն եմ։

—Դու ի՞նչ արով կը պտտես։—Կը պտտիմ իմ ապրուստի խամար։

Սիյարէնտօյին մշակ բռնեցին. թառի տակի ձին տուեցին ասին.—Էդ ձին աղէկ կը տիրես, կը չախես։

Սիյարէնտօն պղինձ մի ջուր լցեց, դրեց թօրուան վերէն, զէդ էրկու ձին խանեց դուս, ըրղի սապօճով լուաց. ինչ որ ուրիշ ձիանքներու եմ կուտէն, գողնէր, կը բերէր էդ էրկու ձիու առէջ կը ըըէր։ Մշկըներ էկան, մտան թաւլէն, իշկեցին օր ձիանք էրկու օխտայով կապեն, չզաւթուիր. իմ աղբօր ասեմ, տասուերկու խօգի էկան, էրկու-էրկու մաճիթիյա տուեցին Սիյարանտօյին։

Օրերուց մէկ օր Էլ-աղասին էկաւ, մտաւ ձիանքներու մէջ, տեսաւ ձիանք էղած ա ֆեաճիլ ձիու պէս հաճարի. կանչեց մըշկըներ էբեր, ասաց.—Էսա ձիանք ի՞նչ ձի են։—Թառի տըկի ձիանքն են, ասին մշկըներ։

—Էս ո՞րն ա տիրեր, կանչէք թը իգայ։

Սիյարէնտօն էկաւ. Էլ-աղասին խարցուց.—Անունդ ի՞նչ ա։

—Իմ անուն Սիյարէնտօ ա. ես Սլիվանայ երկրէն իմ։

Ասաց.—Իմ տկի ձին տուէք, թը տիրէ։

Սիյարէնտօն էր, ղէդօր ձին իմալ տիրեց, քու հունածի պէս, որ լեծնէր, ինչ որ խուզու կը թռնէր։ Էդ օրեր Էլ-աղասու խող քեառասուն խատ խարամի ընկեան. գոլացող թալնեցին, էրթըցող թալնեցին. ձէն գնաց, խասաւ էդ Էլ-աղասու թագաւորին։ Թագաւոր գիր դրեց.—Դու չկեառնա՞ս քու երկիր զաւթեր, օր դողութեն չէղնի։

Էլ-աղասին կանչեց, բերեց էրկու խարիր խատ մշակ, ասաց.—Կերթաք, զէն գողեր կը բերէք, օր չի բերէք. կը մլեմ դուա։

Սիյարէնտօն, իմ աղին ասեմ, էկաւ. տեսաւ մշկըներ ղըսա կենէն, ասաց.—Էդ ի՞նչ ղըսա կենէք, ի՞նչ դաւի ա։ Ասին.—Էլ-աղասին մըզի կանչեր ա գողերու արով, մենք կը վախենանք, ճմալ էրթանք, չընք կարայ ընդոնց վերէն։

Ասաց Սիյարէնտօն.—Դէ՛, գացէք, ձեր Էլ-աղասու ասէք. Սիյարէնտօն կասայ.—Էլ-աղասին ուր տըկի ձին թը տայ, ուր ճակեր թը տայ, որ ես էրթամ, բռնիմ, բերիմ։

Էն մարդոց մէկ՝ մէկ չափալեխ էզարկ Սիյարէնտօյի էրես. էն

մէկել տուաց.—Ցորե՛ն զարկիր, ափսոս չէր Սիյաբէնտօնէ։ Սիյաբէնտօն ասաց.—Կը զանի, զանի, զառառ չունի։

Ասաց էն չափալեխ զարկող.—Ըպա մենք երկու խալիր խոգի ենք, մենք յըրե՛ն չկրնանք երթար, էսի մնակ կերթայ։

Ասաց Սիյաբէնտօն.—Ես Աստուծոյ խրամանքով կերթամ։

Էն ութ խոգին գացին Էլ-աղասու մօտ, ասին.—Էլ-աղասին տնուչ մնայ, Սիյաբէնտօն կասայ.—Ուր տըկի ձին տայ ձի, ես մընակ երթամ, բռնիմ բերիմ։—Դէ, չուտ կանչէք թը գայ, ասաց։

Կանչեցին էկաւ.—Դու իս «ճառամիք կը բռնիմ, բերիմ» կասես։

—Աստուծոյ խրամանքով կը բերիմ, ասաց։

Էլ-աղասու ձին բերին, ճակեր կապեց վերէն, էնտեղ «Թաալան դլօ» մի կանչեց Սիյաբէնտօն.

| | |
|---|---|
| Եարի՛ յօ՜ յօ՜ յօ՛. Էլ-աղաար, kաղ րր ղորբաՑ՛ | ...Ես քեզ մատաղ, |
| Էաղի րր ղովարա խnsk ճkաnրմ. | Ես Աստուծոյ ուժով կերթամ. |
| Դրղաճ ղրրրմ ու բղ՛ճրմ Էլաղաաի: | Գողեր կը բռնեմ, բերեմ Էլ-աղասուն։ |

Էլ-աղասու ձին խեծաւ Սիյաբէնտօն, գնաց։ Աստուծոյ խրամանքով տեսաւ քեառասուն գող սարի գլօխ, ասաց.—

| | |
|---|---|
| Դեայի սուաաաճ, ռաքիւ ճասպաճ սուար րրքըճ, | Այ, ձիաւորներ, ելէք, ձիանքը հեծէք. |
| Նաքk րրքkժ Սիյաքkճsօ քkքաքեցի ճաք ու մա գրrք. | Զինի ասէք Սիյաբէնտօն ապերախտութեամբ եկաւ, բռնեց. |
| Դk՛ ռաքա՛ զիճ ու ճաաqk խո չkքրճ՛ շkրա խոsk բրkըճ։ | Դէ, եկի, քու ձիու թամբը չինէ, Աստուծոյ օրէնքով արէք։ |

Գողեր ասին.—

| | |
|---|---|
| Սիյաքkճsօ, դիr ու կiավաճ՛ qkռ ու փիփի մարրմ րը րրճiյk. | Սիյաբէնտօ, նետ ու աղեղ, ռակի, սրծաթ, մարդով մենակ ես. |
| Դիւ յամվաճ մkա րրկըրի՛ ըճըմ յըլ մարըմ ըճ: | Դու ինչպէս մեզ կը բռնես—քառասուն մարդըս։ |
| Բը դվաքա խոsk kաղի ռ րըkրըմ: | Աստուծոյ ուժով ես ձեզ կը բռնեմ։ |

Գողեր տուեցին վերէն, կոխ էրեցին. քեառասուն լէ Աստուծոյ խրամանքով բռնեց, զտներ կապեց ձիու փորու տակ ու, իմ աղբօր ասեմ, ձեռներ կապեց, առաւ էկաւ Էլ-աղասու մօտ.

| | |
|---|---|
| Եարի, sիւ ռաքա՛ Էլ-աղաաի, դk՛ sիւ ռաքա րըճkռ՛ | Դու ելիր, Էլ-աղասի, դէ, դու ելիր, տես. |
| Սիյաքkճsօ յի կըր՛ ճkյ վույի՛, ճkյ վույի՛. | Սիյաբէնտօն ինչ ըրաւ, հէյ վույ. |

Էլ-ադամի, դէ, սիւ ռաբա մեզա
բըկեւա բը կոմարա խսեկ.
Սիյաբէնծօ բըշեռա կը անիյեա.—
ջըւ դըզ մը բըշառա անի:

Էլ-ադամի, դէ, դու ելիր մտածէ, Աստուծոյ ուժով.
Սիյաբէնտօն քեզ համար ինչ է բերեր.—քառասուն գող եմ քեզ համար բերի։

Էլ-ադամին ասաց.—Բռնէք Սիյաբէնտօյի ձիու գլուխ։

Սիյաբէնտօն ձիուց թռաւ տակ, գնաց ձեռ էտուր Էլ-ադամու ձեռ. Էլ-ադամին բռնեց ճակատ պագեց. կանչեց, երկու խարիր խատ միշակ էկան. Էլ-ադամին ասաց.—Սիյաբէնտօն ձեր երկու խարիրին ջոջն ա. էնի իմ ջոջ տղէն ա, չըլլի Սիյաբէնտի խօսաց ելլէք։

Էլաւ, գըզողիր ճանփեց, գնաց թագաւորին։ Սիյաբէնտօն էկաւ, նստաւ Էլ-ադամու կշտին, մխ քաշեց։ Էլ-ադամին ասաց.—Սիյաբէնտօ, դու յօրին մխ քաշիր:

Ասաց.—Իմ խէր, իմ մէր Սլիվանայ երկրին են։

Ասաց.—Դը յելիր, լուսուն խուրճի մի օսկի կը լցեմ, կառնիս կերթաս քու հօրն ու մօր կը բերես. որ չէկան՝ օսկին թը տուրին մեռնելու ժամանակ։

Սիյաբէնտօն լուսուն ընկաւ ճանփախ, գնաց գնաց Միր Արաբու երին բռասք էկաւ. տեսաւ խազար կօճ մէկ բարաթ ա, մէկ կօճ մէկ բարաթ ա. ասաց.—Ես պտի էրթամ, իմանամ, էդոր էսութեն ինչ ա, որ զատանց դրեր ա: Գնաց կօճի մօտ, տեսաւ աղջիկ մի կօճէն էլաւ։ Սիյաբէնտօն ձիէն թռաւ տակ։ Աղջկայ աչք առաւ Սիյաբէնտօյին, խելք գնաց. ինկեց, Սիյաբէնտօն շատ խօլոտ ա, աշխարքի մէջ չի գտնուիր։

Սիյաբէնտօն ասաց.—Քու անուն ինչ ա։—Խաճա Ջէռին։

Ասաց.—Քեզի խէր ու մէր, պսմամ, ինչ ունես։

Ասաց.—Եօթն աղբէր ունեմ։—Ըսա քու անուն ինչ ա։

Ասաց.—Իմ անուն Սիյաբէնտօ Սլիվլի ա։

Խաճէ Ջէռին անց ու բարձ էրեր, մըջ կօճին դրեց. կօճ էլ էն պզար ջոջ ա, եօթ սուն ա։

—Քու աղբրտիք դո՞ր ա գացած. ասաց Սիյաբէնտօն։

Ասաց.—Իմ աղբրտիք գացած ըն ձի արով Կոնէ Միր Արաբու խետ կռիւ։ Ասաց.—Ցորին ա գացած:

Ասաց.—Ես Կոնէ Միր Արաբու խօրոզբօր աղջիկն իմ։

Ասաց.—Քու աղբրտիք յորին չի տան Կոնէ Միր Արաբուն։

—Իմ աղբրտիք կուտան, կասեն. «Գնա՛, մէկ ունէ եօթ խատ աղջիկ ըի մըզի, որ մեր քուր տանք. էն էլ չերթայ. բերայ։

—Է, ասաց, յէսօր քու աղբրտիք կըգա՞ն։—Խա՛, ասաց։

Ցիրկուն էկան. տեսան մէկ խուրնիկ խրեղէն մարդ մի չաթր նստեր ա։ Բուրև տունին։—Աստըծու բարին ձեզի ասաց:

Խանճէ Ջէռին ջուլ բերեց, աղբրտոց տակ դրեց, նստան։
—Աղբրտիք, դու դո՞ր իք գացէ, ասաց Սիյաբէնտօն։

Ասին.—Գեացեր էնք, կռիւ կենէնք Կոնէ Միր Արաբու խեռ. չէ էսա Խանճէ Ջէռին մեր քուրն ա. Կոնէ Միր Արաբու տղէն էկեր, մեր քուր կուզայ, մենք լէ մէկ անէ եօթ քուր կուզենք, որ մեր քուր տանք. էն լէ խօսք տուեց, մըկայ փոշմըճեր ա, չտար, կաասյ. «Ես չկարամ». մենք լէ մեր քուր չտանք։

Լուռացաւ. Սիյաբէնտօն էլաւ, ձին խեծաւ. էլաւ որ պտի էրթայ Սլիվան, աչքը ընկաւ Խանճէ Ջէռին, ուր էրթալ փօշմըճաւ։ Ջոջ աղբէր էն պզտիկ աղբօր ասաց.—Գնա՛, էն ձիաւոր դանչա՛ թը գայ։

Էկաւ ասաց.—Զի ընչի՞ կանչեցիք։ Ասին.—Մենք եօթ աղբէր ենք, մենք մեր խօսքեր էրեցինք մէկ. մէկ էլ դու կեղիս՝ կեղինք ութ. մինք մեր խօսքեր էրեցինք մէկ, որ Խանճէ Ջէռին տանք քեւ Ասաց.—Դու որ ձեր քուր տուեցիք, ես էլ կերթամ մէկ տընէ եօթ աղջիկ իմ փառով, իմ դալճով բերեմ ձեզի. յըմա բերէք, Աստըծու յառէջ վաղդա էրէք, օր չի փօշմըճիք. ասա՛, թը ձեր քուր բերայ, մատնիք փոխեմք։

Էն օր մնաց էնտեղ. լուսուն էլաւ, դարձաւ գնաց դըխ Էլ-աղասին, չգնաց Սլիվան։ Գեացին, Էլ-աղասուն ասին.—Աչքդ ի լուս, Սիյաբէնտօն էկաւ։ Էլ-աղասին կանչեց, խարցուց.—Դու յարի՞ն չգացիր Սլիվան։

Ասաց.—Ես գացի եօթ աղբօր ըռասք էկայ, Խանճէ Ջէռին տուին ձի. մէկ տնէ եօթ աղջիկ պըտի տանիմ էնոնց իմ փառով, իմ դալճով։ Ասաց Էլ-աղասին.—Ընձի աղբէր մի կայ, էնոր եօթ աղջիկ կայ։

Էլաւ խարիր յիսուն դեվարեռ մալ բռնեց, խազար ձիաւորով խեծաւ, առաւ Սիյաբէնտօն ու գնաց ուր աղբօր մօտ. էն մէկել աղբէր էլաւ յառէջ, տարաւ տուն, ձիաւորներ ցըվրեց. իրեք օր մնաց, ասաց.—Աղբէր, էս ի՞նչ բեռ ա։

—Ես էկեր եմ, քեօ եօթ աղջիկ կուզեմ, տանեմ Կոնէ Միր Արաբու աղբօր տղէկներուն. էսա յիսուն բեռն էլ քու աղջիկներու դալաճ։

Աղբէր ուր աղջըկներ տուեց. էլաւ աղջըկներու խետ խարիր բեռ ջըճեզ էդիր։ Էլ-աղասին առաւ, էկաւ ուր տուն իջուց աղջըկներ։ Օր մը մնաց, խըլուսուն խեծան, էրկու խարիր ձիաւորով գեացին. գեացին տեսան օր կօճ, մարդ չկայ. տեսան օր եօթ մարդ էնտեղ էկան. ասաց Սիյաբէնտօն.—Դու ի՞նչ մարդ էք։ Ասին.
—Կոնէ Միր Արաբու մարդիկն ինք։

—Ցո՛ւր ա էսա կօճի տէր։ — Կոնէ Միր Արաբու տղէք էկան, կռիւ էրեցին, Խաճէ Ջէռին տարան։

—Ասկեա՛ր, ասաց Սիյաբէնտօն, դու տուէք աղջըկներ գարձէք։

Ասաց,—Ընչի՞ տարան։ — Սիյաբէնտօ Սլիմի կէր, էդոնց քուր ուզեց. էդոնք էլ խօթ աղջիկ ուզեցին. էլան բէբախսութեն էրին. Թէ «մեր քուր չիք իտայ եյօղլուն, կուտանք մեր խօրօղբօր տղին»։

Սիյաբէնտօն մինակ խեծաւ, գնաց իջաւ Կոնէ Միր Արաբու էլին մէջ. գնաց իջաւ խօթ սուն կօճի մի դուռ. տեսաւ մէկ խանըմ մի նստեր, ղայլօն կը քաշայ. խարսին ասաց. — Ջուլ բեր, դի, իմ տղէն Թը նստի։

Տեսաւ չատ խօրոտիկ տղէմ ա, ասաց.—Նստի՛, որդի. իմ տըղին լաւց բերէք, Թը ուտայ։ Որ կերաւ, խանըմ ասաց. — Դու ո՞ր երկրէն ես։ Ասաց.—Ես խարիբ երկրէ եմ։

—Խանըմ, էգ ի՞նչ խարսնիս ա։—Խաճէ Ջէռինի խարսնիսն ա։

—Ջէ՞, ուրիչ մարդ էր ուզի։—Որդի՛, ասաց. դիւնեն բէբախս ա. Սիյաբէնտօին պըտի տէն, մըկայ Կոնէ Միր Արաբու տղէք տուած ա ուրանց խօրօղբօր տղին, ընդոր խարսնիսն ա բռնածը։—Մարէ, Սիյաբէնտօն ես եմ, ասաց։

Խանըմ ասաց. — Ես խօթ տղայ ունիմ. վաղդա դրար էղի, իմ խօթ տղէն դնիմ քու ուղուր։

Կանչեց զտղէկներ էրիր, ասաց.—Իմ ծծի կաթ ձըզի խարամ էղի, օր, էսի Սիյաբէնտօն ա. կերթայ Խաճէ Ջէռին կառնի, Կոնէ Միր Արարու տղէք որ կընկնին էտոր էտև, զարկէք։

Գնաց Սիյաբէնտօն Խաճէ Ջէռինի կօճի դուռ կայնաւ, ասաց.

—Խաճէ Ջէռին, արէ՛։

Ջեռ Թալեց ձեռ, քաշեց ձիու բարկ, էկու գովընդի օրթալաղ կայնաւ։—Դրճօլչի, զուռնաչի, ասաց. արէք էստեղ. «Ճաբաճ մալի աբաճ», Սիյաբէնտօ ու Խաճէ Ջեռինի գլխուն. ասաց ու օսկի մի էտուր։ Մէկ լէ էտուր, ասաց. — Էսա օսկին լէ էս խաղցողներուն գլխուն «ճաբաճ» էրա՛։ Մէկ օսկի լէ էտուր, ասաց. — Էսա օսկին լէ «Ճաբաճ մալի աբաճ, Սիյաբէնտօն առաւ զԽաճէ Ջէռին, գնաց» բալաճ (առանց դալանի)։

Բօշէն չուրի ճաբաճ կանչեց, բըմըմեց, ջըմեն դիաց չըչկռած կիշէին Սիյաբէնտօյին։ Սիյաբէնտօն զանկուն զարկեց ձիուն ու քըշեց ասկըրէն էլաւ դուս ու սահաթէն մի ճանփայ տարաւ զԽաճէ Ջէռին, իջուց, ասաց.—Խաճէ Ջէռին, էրկու խատ լայլուխ կառնիս քու ձեռ, էստեղ կը խաղաս։

Կոնէ Միր Արաբու տղէն ասաց. — Ձեր ձիանք խեծէք, ճակեր կապէք. Սիյաբէնտօն մէյտան կէնէ, ուր ձին կը խաղցուցայ. Խաճէ Ջէռին լէ էրկու խատ լայլուխ առեր, էնտեղ էլ էն կը խաղայ։

Սիյաբէնտօն դարձաւ վըր պակըրին. էն եօթ աղբէր ընկած էն Կոնէ Միր Արաբու տղի էտև. Սիյաբէնտօն նետ ու աննզմ էզար սպանեց զԿոնէ Միր Արաբու տղէն։

Ասկեար քշեցին վըր Սիյաբէնտօյին. էն եօթ աղբէր ասին.— Կայնէք, ինչու՞ փնասատուածութեն կենէք. մարդ էկաւ, զուր կնիկ տարաւ. յոր՞ն կը քշէք վըր էդա մարդուն. չատ աղէկ մարդ ա, օ սպանեց զԿոնէ Միր Արաբուն. տղէն մեզի զարար չէրաց. Թը Կոնէ Միր Արաբու տղէն զէնի զարկէր սպանէր, կնիկ էն առնէր, դարձէք, էրթանք։

Էնոնք դարձան. Էդի Սիյաբէնտօն առաւ զԽաճէ Ձէռին, էկաւ, էլաւ Սիփանայ գլօխ, ասաց. — Խաճէ Ձէռին, իջիր ձիուց։ Իջաւ. Սիյաբէնտօն ասաց,— Նստի՛, իմ գլուխ դնեմ քո չոքի վերէն։

Սիյաբէնտօն գլօխ դրեց վըր չոքին, պառկաւ. Խաճէ Ձէռին իշկեց Սիփանայ սար, տեսաւ վէրու կովեր ու բուղէք էկան։ Խաճէ Ձէռին իշկեց, որ մէկ պզտիկ աչառ մի կանեց բէդ-բէդ եզներուն, կովը ինքը զաւրեց։ Խաճէ Ձէռին դժարցաւ, էլաց. արցունք պըրծաւ, ընկեաւ Սիյաբէնտօյի յերսին։ Սիյաբէնտօն իմացաւ, ասաց.— Խաճէ Ձէռին, յոր՞ն լացիր դու։ Ասաց։— Բանի չէր։— Սուտ մ՛ասեր, սօղրու ստի ասեր։— Վէրու մէկ կով էրկու-իրեք խատ ցլվոր էտև էկան. էն մէկ պզտիկ զարկեց էն մէկել չորսին. ես էլ դժարցայ, լացի թէ «էստ աչառ կը մանի իմ Սիյաբէնտօն, օ Կոնէ Միր Արաբու տղէն ու ասկեար զմեն սպանեց, կիսի առաւ. էն սբով լացի. ասի «զալըմ սա ջարան ...»։

—Խաճէ Ձէռի, ասաց, դու էստեղ նստի, ես էրթամ, զէնի լաւքեմ, տանեմ սպանեմ, էնոր միս բերեմ, էնեմ քըզի քեապապ. ուտենք ու յէլլենք, էրթանք։

—Սիյաբէնտօ, ասաց. արե՛, մի՛ էրթար. ես կը խնդրեմ քըզնէ, էն էլ քե պէս վըր մուրազի ա, դու ալե՛ խըռ ձի էրթանք, էն լէ խըռ ուր էրթայ։

Սիյաբէնտօն էլաւ լարեց, լարեց, լարեց ձեռ թալեց յետին սոտ բռնեց, ըերեց դրեց վըր ղընալին. վիզ կօրեց, դրեց վըր չօքին, օր պտի կըտրէր՝ վէրու աչառ ցօնցաց, կոտոշ առաւ Սիյաբէնտօյի ղօշ, քարէն չպրտաւ ու ընկեաւ տակ. էնտեղն էլ բանձր էր, ընկեաւ վըր փետէ ղալմին. սրտէն ծակեց, մէջքէն էտաւ դուրս։

Խաճէն յէլաւ, ժուռ էկաւ, տեսաւ Սիյաբէնտօն չկայ. էկաւ, իշկեց օր վէրու աչըռու վիզ կտրուկ. իշկեց ցածր, պառեկ ընկէ վըր բըլալըկի թփի ղալմին, սրտէն տուեր ա դուրս. տեսաւ Սիյաբէնտօյին.—Վա՜յ, իմ արեւուն, ասաց. գնաց Սիյաբէնտօյի մօտ կայնաւ, ասաց. — Սիյաբէնտօ, չէ՞ ես քե ասի մի՛ էրթար, դու ընչի՞ իմ տուն աւրեցիր, իմ աչք fonցուցիր։

Խանճէ Ջէռինի էրկու աղբէր էկան, ասին.—Խանճէ Ջէռին, արի, էրթանք։

Ասաց.—Թողէք էրթանք, մեռաւ, էլ ես ինչ էնիմ։

Երկու սահարքէն ճանփախ գնացին. ասաց.—Կայնէք դա, չուր ես գնամ, բան մոռցեր եմ, առնեմ գնամ։

Էկաւ խասաւ Սիյաբէնտոյին, չոՒկրուն էզար, ասաց.—

| | |
|---|---|
| Սkwrk Սիփաճk խալարk բըլայիմ ա, | Խլաթայ Սիփանի գլուխ մացառուտ է, |
| Թալաճk բուղայk ճուվի պայիզա | Ցափշտակութիւնը վայրենի ցուլի աչունքը, |
| Տա չի անի սkwr զաւա բիւճա, | Դու ինչ բերիր փեսի ու հարսի վրայ, |
| Տա չի անի սkwr մkr ու ժըճա: | Դու ինչ բերեցիր մարդ ու կընկան վրայ։ |
| Սkwrk Սիփաճk մըժ, մուժաճ ա, | Սիփանայ գլուխ մառախլապատ է |
| Թալաճk բուղայk ճուվի սkwr kwվk պայիզա, | Ցափշտակութիւնը վայրենի ցուլի այս աշնան գլուխը |
| Ըռաշի սkwrk մա վառաճի, | Սեր որ բերեց մեր գլխին, |
| Նաճիչա պմ կաճաճk մըրազի: | Չթողեց մենք հասնէինք մուրազի։ |
| Սkwrk Սիփաճk խալարk ցաց ա, | Խլաթայ Սիփանի գլուխը, ... |
| Տիր կեավաճի Սիյամաճսի չkճս ցաց ա, | Սիյաբէնտոյի նետ ու աղեղը քանի կանգուն է. |
| Թալաճk բուղայk ճուվի սkwr kwվk պայիզա | Վայրենի ցուլի աւարը աշնան գլուխ, |
| Չի անի սkwr զաւա բիւճա բազա: | Ի՞նչ տարաւ նոր փեսայի ու հարսի գլուխ. |
| Սkwrk Սիփաճk խալարk գkղուկ ա, | Սիփանի գլուխը անցք է, |
| Մը կըրա կուշիճ պաշիւկ. | Ինձ արեց խեղճ ու անտէր։ |
| Բkwժճա Սիյաբkճսօ դայեկ ըռահաճ ա | Սիյաբէնտոյի հասակը մի ճիւղ ըռահան է։ |
| Թալաճk բուղայk ճուվի սkwr kwվk պայիզk, | Վայրենի ցուլի աւարը աշնան գլուխ, |
| Մը հըշղայ բk խույ, բk խուաճաճ: | Ես մնացուցի անտէր, անտիրական։ |
| Սkwrk Սիփաճk խալարk դըրkմ գոլ ա, | Սիփանի գլուխը կասեմ լիճ է. |
| Մը կըրա եղսիր, եխըստա ճաւա չօլ ա. | Ինձ արեց գերի ու ձգեց անապատի մէջ։ |
| Բահրk Վաճի բահրk ճուր ա, | Վանայ ծովը շատ խոր ծով է, |
| Տk դըրգkառըճ մասիյk հուր ա. | Մէջ մանր կգան մանր ձկներ։ |
| Խաճk Ջkռի, հարու մալա բաբk խոյա | Խանճէ Ջէռի, գնա քո հօր տունը, |
| Մը ըժskռա դայա դkասուրա: | Ես քեզ տուած եմ իրաւունք։ |

| | |
|---|---|
| Խաճա Չէօլի, էազ պր ղօրբան, | Խաճէ Չէօլի, ես քեզ մատաղ. |
| Նայանայ ճէարիյէ սէա: | Հեծկլտանք ընկեր է քու մէջ. |
| Ժը սէխոր ճէսըր Ժը ճաւկա մըճ, | Արտասուք աչքերէս կը թափի ցածր, |
| Բըխօ-բըխօ սէ խօրա: | Ինքն իրեն կըդայ ցածր. |
| Սիյարէճսօ, սիւ օարա բըմըռա, | Սիյարէնտօ, դու արի ինձ համար. |
| Գա ֆուվի ֆըռա, ճառա ըժխօըռա. | Վայրենի ցուլն ալ երթայ իր համար. |
| Գա ֆուվի դըգէաըճ, բէվախբ ա, | Վայրենի եզներ ման կըգան անժամանակ. |
| Էավ Ժի վոֆա սէա բաղդ ա, | Այն ալ քեզ պէս բաղդի վրայ է, |
| Տիւ օարճ բը մըռա: | Դու արի ինձ համար: |
| Սէարէ Սիփաճէ բը բախս ա, | Սիփանի գլուխը գահ է, |
| Գա ֆուվի դը գէաըճ, բէ վախբ ա, | Վայրենի եզներ ման կըգան անժամանակ. |
| Էավ Ժի միճէա սէա սէար բը բաղդա: | Այն ալ քու նման բաղդի վրայ է. |
| Վույի՛ դէավրի, վույի՛ զամանի, ֆէ՞ դիբիյա | Վա՛յ դարեր, վա՛յ ժամանակ, ամէն տեսած է. |
| Նէյիր, ճէյիրվաճ բըկուժա, | Որսը որսկանին սպաննէ. |
| Էավ Ժի բաղդ ու սայաճ ըժմըռայա: | Այն ալ իմ բաղդի դիպուածէն է. |
| Բճիյէ Սիփաճ բը բախս ա, | Սիփանայ ստորոտը գահ է. |
| Գա ֆուվի դըգէաըճ բէվախբ ա, | Վայրենի եզներ ման կըգան անժամանակ. |
| Գա ֆուվի սօրուկ ա բըլաչիֆ ա: | Վայրենու եղջիւրը ճիւղաւոր է: |
| Սէարէ Սիփաճէ Խայարէ դըբէմ բըմէշա, | Սիփանայ գլուխ կասեմ անտառոտ է. |
| Բըճէ Սիփաճէ Խայարէ դըբէմ բըմէշա, | Սիփանայ տակը կասեմ անտառոտ է. |
| Խաճէ Չէօլի, սիւ կէազիյէ խօ բըֆէա վօարիս ա, | Խաճէ Չէօլի, դու քու ծամերդ հիւսէ չուան, |
| Բաւէժա մըչ Ժօր բը ֆէշա: | Ձգէ մէջքս, վերև քաշէ: |
| —Զճէզա դարէ ապիճդարաճ դըէժ ա, | Բարտի ծառի ճիւղերը երկար է, |
| Էազէ սէխօ սէար Սիյարէճսօ կօռէ Սըխիվի, | Ես կըգամ ներքև Սլիվու տղայ Սիյարէնտօյի վրայ. |
| Կէազ գույիճ պապիֆ ճաբէժա: | Զասեն ծամ կտրած խեղճ անտէր: |

Սիյամանտի մի այլ ճիւղի վերջը կը պատմուի թէ Խաճէ Չէոու եղբայրներն ևս կընկնեն Սիյարէնտի ետևէն. կը պատերազմեն փեսայի հետ միացած. իսկ երբ փեսան կը մեռնի, կանգ կառնեն, ապա կը հետևեն Սիյարէնտօյին, որ սպանեն, իրենց քոյրը վերադարձնեն. Կերթան, կը տեսնեն որ Սիյարէնտօն քարեն ընկած կը հեծկլտայ. կառնեն իրենց քոյրը կը դարձնեն: Խաճէ Չէօին ճանապարհին կը

*տեսնէ իրենց եղբօր մէջ փափուկ ընկած է։ Երկու եղբայրներ կու-զեն սպանել իրենց քոյրը, իսկ փոքրը կասէ թէ.—Այս անմարդա-բնակ տեղը չեմ սպաներ, պէտի գնամ իմ ցեղի մէջ սպանեմ, որ վաղը չասեն թէ «սուտ կասէ. չեն կարողացած վերադարձնել, ամօթու կասեն թէ սպանած ենք»։ Այս խորհուրդը կզղայ Խաճէն, կասէ. —Ապարանջաններս մոռացած եմ տեղը, գնամ, բերեմ։ Կերթայ, վերև յիշուած երգերը կասէ. ու զի՛նք կը ձգէ Սիյաբէնտի վերան, ցիցը սրտէն կը մտնէ, կռնակէն կտայ դուրս. որով սերտ սրտի կտան, կը մեռնեն։*



# 19

# ՌՕՃՔ, ԱՊԸՋԷԹԻ ԺԸ ԱՊԸՋԷԹԱՆ

**Ոզմեցոց բարբառով** *

*Սօլթան Հասէն ու Ռօչք աղբէր ին, Սօլթան Հասէն մեծ աղբէր է, Ռօչք պզտիկ։*

*Ռօչք իր հասակին խասաւ, Սօլթան Հասէն ասաց,*

*—Կնիկմ կը բերեմ իմ աղբօր։*

*Գնաց Շէրեֆի Մէքէ կայ, էնոր աղջիկ ուր աղբօր խամար ուզեց։*

*Մէկ քեանի օր կմնայ, կերթայ բերելու։*

*Օր գնաց բերելու, էնոնց սովորութքն ա, մէկ մարդ խալըա-նաղբէր կգայ, մէ տարի կը մնայ. չուր աղջիկ ուր ազգական, ուր գերդաստան կը ճանչնայ, մարդ նոր կերթայ։*

*Բերին փակին, մնաց տարիմ քմու, Ռօչքին տղէմ էլաւ։*

*Էդոնց սովորութք էնպէս էր, էրկրի մէջ ինչ տղայ էլնէր, կը տանէն, դնէն Սօլթան Հասէնի առաջ. դիվնի մէջ, անուն կը դնէր։*

* Այս վէպը առած է Ոզմեցի Յովսէփ Մհ. Յովհաննէսեան, արհեստով գզրար. Տիգրանակերտ, Մուշ, Պուլանխ, Խնուս, Պարսկաստան, Թիֆլիս շրջած է, նաեւ 3 տարի է Էջմիածնայ գաւառին մէջ ման կգայ. 40 տարեկան, տիրացու է, լեզուն շատ խառնափնթոր եւ անճոռնի, մինչդեռ վէպը իսկական քրդու կեանքի պատկերն է: Սղերդի կողմերն այս հեքիաթը կասեն, ընդհանրապէս այս հեքիաթի պատմողներն են Ոզմեցիք, Մոկացիք եւ Սղերդցի հայեր. քրդեր եւս հայ ասողներէն սովորած են, կասէ: Այս անձն է նաեւ «Աքաքալաք» ասողն:

Սօլթան Հասէն որ էն գախ մտան պտի դնէր, ասաց.
—Տա՛տ կուչտս ա, պերճեկի ժէ կեռուվայս (փոքր ինչ Քասս)։
Որ էնպէս ասաց. աղբօր սիրտ պղտորաւ. եանի թէ իրնից չէ, մչկներուց—խարսնախպօրից ա։ (¹) Ապուզէթի բին կը դնեն անուն։

Թօչք ասաց.—Կը տանէք, էստ կնիկ, որ տղէն չօլի մէջ կապանէք. էդ կնիկ էգ'ոց մօտէն ազաչեց, թէ-ընչի ընձի կապանէք, ես Շէրէֆի Մէքեյու աղջիկնեմ, իմ արունք ձեզնէ կուզեն։
Էնոնք էլ սուրն.—Մենք քեզի չսպանենք, մեր աղէն մեր վրէն կուրքի- Էդ էլ ասեց.—Ընձի մի սպանէք, օր կը հարցնէ, կասէք. «սպանեցինք, Թողինք էկանք»։
Չեն սպաներ. կնիկ կառնէ զուր տղէն, կերթայ, կերթայ, կը մտի սազլըղի մէջ, մէկ սահաքմ, էրկու սահաք կը մնայ. մէկ մարդմ կուգեայ, կը տանայ, ձէն կուգեայ էդ սազլըղի միջէն կասայ.—Դու ինչ մարդ իս:
Էդա տեղ կասայ.—Ես քու աղջիկն իմ։
Էփի կը մեզէ, կասայ.—Ես էլ քու խէրն իմ։
Էկաւ, տեսաւ մէկ կնիկ, մէկ էրեխայ. առաւ, տարաւ ուրան տուն թէ.—Դու իմ աղջիկ, ես էլ քու խէր։
Մէկ խինգ-վեց տարի էդ տղէն կմնայ տան մէջ, կերթայ տղեկներու մէջ խաղ կը խաղայ, որ կը գալկայ, ուրին վիզ կը քեթրէ, ուրին թև կը կոտրէ, էկան էդ մարդու մօտ, ասին։
—Կազաչինք, մեզ տղայ չմնաց։
Էդ մարդ ասաց.—Ընձի էրկու էլախայ կայ, կերթան կարդլու, թո էդ էլ էրթայ։
Որ կերթան, մէ քնիմ օր կը կարդան, էդ մարդու տղէն ուր դաս կը կալտընի, էդ մօլէն էլ սիլէմ' էդ Ապուզէթին կը զարկայ, Ապուզէթն էլ կասի.—Մօլա, իս իմ դաս չիմ կալտընի, ընչի ընձի կը զարկիս. իմ քեռու տղէն կը կալտընի, ընձի կը զարկիս։
Մօլէն կասայ.—Տա՛ն տղա, իս քեզի չզարկեմ էնի մեծ մարդու տղայա, էնու ընչի պտի զարկեմ։
Ապուզէթ կասայ.—Էդա աջ ձեռն էր թէ ձախ, էն ձեռ պտի կտրիմ։
Ապուզէթի եօթ տարին կը թըմմայ, էդօր խըօխալէր Սօլթան Հասէն կուգեայ էդ Հոլայցոց (²) օխտը տարուան խարճ առնէ։
Էն ժամանակ որ էկան խարճ ժողուելու, տղեկներու քեռին

---

1 Կասեն, սորա վերայ խարսնտղբօր մի տարի մնալը արգելուեցաւ:
2) Այդ ցեղին պատկանող 4000 տուն բնխամելի. 4000 տուն բնմախելի: 4000 տուն բներաքի 4000 տուն բնտավագի Սուլթան հասէնի ձեռաց տակ էին

սամիրցուց.—Ապուղէթ տարէք Ճէջիր, չըմէի Սօլթան Հասէն կուղեայ, էսի չար աղայա, մեզի մնամ կուտայ.

Կերթան ուրենց խամար Ճէջիր, օրմ' չում յիրիկուն կան կուգեան։ Ապուղէթ կասայ.—Ցէս օր մեր ձեռ բան չընկեաւ։

Ասաեն.—Վնաս չկայ, աղբէր, գիշերս կը մնանք, լուսուն կերթանք, լաւ օր բացուաւ, էլմ կերթանք Ճէջիր։

Կը մնայ յիրիկուան, կասի,—Ես կերթամ տուն։

Էղոր քեռու աղէք կասին.—Էս օր մէրթայ, վաղ անպատճառ կերթանք։

Ապուղէթ կասի.—Դուք գաք էլ կերթամ, չգաք էլ կերթամ. չըմ կայնը։

Իրեք խըտ իրարու էլան, էկան տուն։

Դեղի կուչտ տըրան, ինչ տանան,—Ինչ կաՃsար մալ—sաւար, ոչխար կայ, տուած յառաջ, կը տանին։ Ասաց.—Տղէք, էնա մէկ ձին իմ ձին ա կը տանին։

Քեռու աղէկներ ասին.—Էնի դարիպ մարդ ին, քու ձին մեր տունն ա։

Ասաց,—Էն իմ ձին ա, ես կը ճանչնամ։

Էն մարդիրու ասաց.—Աղբէր, էղա ձին իմ ձին ա, ինչի կը տանիք։

Էն մէկն էլ ասաց.—Դէ, կորէր դէն, դու ինչ էս, էկեր ձի կուզես։

Էն մէկէլ ասաց.—Մէկ ձի է, տուէք, թօ տանը, սեր դաշէն սեր գլուխ։ Էնոր ձին տուեցին։

Աչքեց, մէկ պառաւու ձի էլ ճանչցաւ՝ ասաց.

—Աղբէր, էս մեր դրկեցի ձին ա, մեր պառաւու ձին ա, դո՛ր կը տանիք։ Ապուղէթի վրէն քըխան։

—Տօ, ասին, չա՛ն աղա, քու ձին տուեցինք, մէկայ պառաւու ձիու դաւի՝ կէնիս, գնացէք, խլեցէք սեր ձին էլ սեր մօռէն, ասին։

Ապուղէթ մէկ ձեռ թալեց մէկին, էն մէկ ձեռ թալեց մէկէլին, էրկուս զարկեց յիրուր, սպանեց. Էն մէկէլ բռնեց, էղոր առմներ քակեց. քաշեց ճակատ զարկեց, ասաց.

—Դէ, գնա՛, ես քզի լէ պտի սպանի, յըմա գնա՛, քու բէկին խաա էրայ, թօ էնի դեայ։

Գնաց. Սօլթան Հասէն տըսաւ, մէկ մարդ ծծղայ, կուգեայ։

Ասաց,—Ի՞նչ էլի.

Ասաց.—Ի՞նչ իլի՝ մեր վերկին մի ձեռնէն առաւ. մզի լէ խայտառակ արեցին։

Ապուղէթն էլ գնաց տուն, քեռին ասաց.

—Տնաւէր, էդ ինչ արեցիր, լուսուն Սօլթան Հասէն կուգեայ, մեր ծծի էրեխէն էլ կը կոտրայ։

Ասաց,—Քիռի՛, դիւ մի՛ վախենայ. ա՛ռ քիւ ժողովուրդ, գնա՛, մէ կրաղ կայնի. ես կերթամ կռիւ, ան ժամանակ ընձի սպանեցին, դիւ գիտես։

Սօլթան Հասէն էլաւ ուր փահլիվաններ ճամբեց էդոր կռիւ. խարբիր փահլիվան Սօլթան Հասէնից սպանեց. խապար տուեցին Սօլթան Հասէնին.—Էլ մեր կարողութեն էս մարդուն չխասնի, պտի աղբէր Ռօշք գեայ։

Ռօշքն էկաւ տղի կռիւ, մէրն ասաց.

—Ապուզէ՛թ, որդի՛, էս օր մէկ փահլիվան տը գեայ քիւ կռիւ, համա իմ ծծի կաթ քզի խարամ էղնը թէ դիւ ան մարդ սպանըս, տը բռնըս բիրես։

Ապուզէթ գնաց կռիւ, չում յիրիկուն ինչ էրաւ, չկեարցաւ առանց դըրպ զարնելու բռնէր, էն օր չկեարցաւ գլխէր բռնէր, մէկէլ օր գնաց, գլխէր բռնեց, բերեց։

Ծուաբ տարան Սօլթան Հասէնին.—Աղբէրդ էլ բռնից, սպանից չենք գիտէր, բռնից չենք գիտեր։

Սօլթան Հասէն ասաց.—Հա՛յ վախ, աղբերն էլ տարաւ, մենք էդոր ձեռ պարմիշ կեղնինք։

Ապուզէթ մէկէլ օր էլմէլ գնաց կռիւ։

Էնի թո էրթայ կռիւ, մենք դառնանք Ռօշքին։

Կնիկ ասաց.—Ռո՛շք, ընձի կը ճանչնա՞ս։

Ապուզէթ գլոխ տարաւ, բերեց։

Կնիկ ասաց.—Ես Մըկայու Շէրեֆի աղջիկն իմ։

Յիրկուն Ապուզէթ էկաւ, տեսաւ էդ բռնած մարդ, լաւ չորեր խազուցեր ա էդոր ուր մէր, պապիրոզ չիներ՝ դրեր ա էդոր ձեռ, ասաց.—Կանեղ, էսի քու սիրածն ա, էրեկ անճող բռնեցի. էնի մառամ էր ընձի սպանէր։

Էդի դոդղըք քեչեց, պտի գլխէրն սպանէր, մէրն ասաց.

—Որդի՛ մի՛ սպանիր, քիւ խէրն ի։

—Աղէ՛կ, օր իմ խէրն ի, հարի մկայ դո՞րն էր, չկար։

Մէրն էլ նստաւ, էնու խամար դսա էրաւ։

—«Էն ժամանակ որ դիւ էղար, տարայ, դըը դիւանի մէջ, քիւ խօրօխպէր անուն դրեց, ասաց,—խօս վէրխոալը պըչֆեկի ծը կեօրվայա Նավեվի Ապուզաքայ։

Էդու խամար քեօ խէր բռնեց քեզի էլ, ընձի էլ դիւս թալից։

Էդա տեղ որ Ռօշք խասկըցաւ, աղբօր թուղթմ գրեց, ասաց.—Էս կոչախ տղէն օր կայ, մեր տղէն, Ապուզէթն ա։

Սօլթան Հասէն լսաւ, ասաց. Աստըծուն փառք, մզի խարբիր փահլիվանն սպաներ ա, ամա զարար չկայ. գնացէ՛ք իմ աղբէր, ուր տղէն, ուր կնիկ առօք. փառօք առէք, էկէք ըս տեւ։

Էն գալս որ կերթան, Ապուզէթ ձին կը խեծնայ, կերթայ մօլի դռան վերէն կսայ.—Մօլա՜, մր մէկ ձեռնով ընձի զարկեցիր. էն ձեռ բեր, տեսնանք։

Մօլի էն մէկ ձեռ կը կտրայ, կը դառնայ, կերթայ տուն։

Մէկ ժամանակ կը մնայ. Սօլթան Հասէնին մէկ աղջիկմ կայ, կը կանչին Ապուզէթ ու աղջիկն, կը բերին մէկ տեղ, պսակեն։

Տղէն առջի գլխուց կուգեայ, կը պառկի։

Աղջիկն էլ կուգեայ, խօր պէս կեասի։

—Լաւ կտրիճ փահլիվան ի, ամա քիչմ սև ի։

Տղէն կասի.—Աղջի՛, գի՜ւ էլ քու խօր խօսք ասեցիր, վաղեէ՛ էգնի, դիւ մնաս քիւ խօր տան վերէն. ոչ ես քզի կառնիմ. ոչ էլ կը թողեմ ուրիշ առնէ։

Աղջիկն էլ կասայ.—Ապուզէթ, վաղեայ էգնի, որ դիւ ընձի չառնես, ես էլ պտի մնամ առանց իրիկ, չուր պքու տղէն առնեմ։

Էդ պայմանով աղջիկ կը մնայ։

Մէկ ժամանակ կը մնայ Ապուզէթու խէրն էլ կը մեռնի, Ապուզէթ կելնի ծռու պէս, կընկնի աշխար. կան կգեայ, չատ, քիչ, Աստուած գիտի, կերթայ մէկ քաղաքմ, էդ քաղաքի անուն էլ Պաժառա Բելնկերի կըլնը. էդ քաղաքին մէջ Սէայիթի կօռէ Սաուլթան անուն մեծ կեղնի. մէկ աղջիկմ, էլ կար էդ քաղաքի մէջ. էդ Սայիթէ կօռէ Սաուլթանի աչք վերէն կելնի։

Օրմ աղջիկ կերթայ պաղչային մէջ կլողկընայ, Ապուզէթն էլ ուր ձին տարեր՝ կապեր է էդ պաղչի կուշտ, ինքն էլ պառկեր է, խապար չունի բանից. էդ Սայիթի կօռէ Սաուլթան կուգեայ, էդ տեղ կը պախուի. աղջիկն որ կը լողկընայ, աղջկան եախէն կը բռնայ, կասայ.—Էս գործ . . . ։ Աղջիկն կասայ.—Ի սէր Աստուծոյ, իմ չորեր տո՜ւ, ես խագնեմ, ինչ գիտես, էնպէս արա։ Ինչ իլաճ կանէ, էնոր ձեռնէն չազատուիր, կասի.—«Ես ասի Ասու սիրուն,» չէլաւ, համա կասին, Ապուզէթ, ես չեմ տեսե, կասեն չատ կոչախ ի. էնաւ չոմախ առնէ քու գլխու վերէն։

Աեսլո՜ւ բաշեան, համա Ապուզէթ կը թոնը, կը զանէ Սայիթի Կօռէ Սաուլթանի գլխուն, կսպանայ: Աղջկ կասի.

—Ապուզէ՛թ, դիւ իմ հըմեաս խասար, ես քեզի կառնեմ, հըմա էս Սայիթի կօռէ Սաուլթանի տուն չատ զօռպա էն, իմ խօր տան կը կտրեն։

Ապուզէթ կասայ.—Մի՛ վախէնար, ես քեզի կառնեմ, քաղաքի մէջ կան կը լցեմ, կասեմ.—«Ես էմ սպաներ Սայիթի կօռէ Սաուլթան, ինչ կօչախ մարդ կայ, թո գայ ուր վրէժ ընձնից առնէ։

Ապուզէթ իրեք, չորս անգամ զաղջիկ կը թալէ ուր բարկ, կասէ.—Հէ՜յ, մա՞րդ մարդու մեղք չառնէ. ես էմ սպանէր Սայիթի

կուռէ Սաւութան, էս աղջիկն էլ ընձի համար կը տանեմ, ով որ կարող է, թո գիայ իմ առջև։

Մարդ չկարաց գայ էնոր յառջև։

Աղջիկ կառնայ, կերթայ, կը տանայ ուր էլեաքի մէջ կը պահկայ ուր վրէն։

Մէ ժամանակ կը մնայ, Ապուզէթ կերթայ էլեաքի մէջ կանգալու, թանկութին ի, կը տեսնայ մարդիր ասկուր կր դնեն քարի վերէն, կը սղկեն, կուտեն, կասէ.

Մարդիր, էդ ինչ իլաւ.

—Էստ ուխտը տարի իլաւ թանկութուն ի.

Է՞, կասայ. դու ընչի Սօլթան Հասէնին խնդիրքմ չէք իտայ։

Կասի.—Աստուած ուր տուն չէն պախի, էնոր մօտիկ մարդիր կուչտ կուտին, թանկութեն չին գիտի. մենք էստ հեռու մարդիր, ոչ ակէր ունինք, ոչ տիրական. մենք ապրուստ էլ չունինք, էկիրինք. էս օսկրնիր սղկէնք, կուտենք։

Ապուզէթն էլ կասի.—Երկուն յեմենն էլ ժողուէք, կգէք էնոր դռան վերէն՝ ես ձի համար կը խօսամ։

Երկուն մարդիր ժողուան, էկան էնոր դռան վերէն։

Սօլթան Հասէն տաաց.—Էս ինչ մարդին, էկածին դռան վերէն։

Ապուզէթ ասաց.—Սօլթան Հասէն, էստ ուխտ տարի ի թանկութեն ի ընկի, մէ իլաճ չնո անի։

Կասի.—Ես ինչ իլաճ անեմ։

Կասի.—Կասես, «ես ինչ իլաճ անեմ,» դու քու երկու աղէքն էլ—Ունէս, Մարէ թող գեան իմ խետ, որ մենք երթանք, էժնութեն բերինք, էդ մարդիկն էլ կաղաչեն, «մենք մեղք ինք, անօթի մեռանք։»

Էդ իրեք կըլեն, ուրանց բասարֆ կը տանան երթըլու։

Ապուզէթ մէկ ֆեամանճյամ ուր թև կը թալի, իրեքն էլ կերթան:

Շատ քիչ Աստուած գիտի քեանի օր կերթան. կերթան մէկ էլիաքիմ կը խառնուին: Մէկ բէֆ պառւի կօն ջոկ ի, մէկէլ յըմեն մէկ տեղ ին։ Էդ էլեաքի մէջ խալսնիք ա, էդ իրեքն էլ կերթան, պառւու դռան վերէն կէջնին, կասեն.—Պառաւ, մեզի չես չախէ։

Կասի.—Ընչի չեմ չախի, որդի.

—Է՛, ինչ տղայ ունիս; պառաւ։—Մէ՛ տղայ ունեմ:

Կասի.—Տղէդ դօ՞ր ի գացի։

Կասի.—Գնացեր ի խարսնիս։

Է՛, պառաւ, ինչ խարսնիս ա;

Կասի.—Որդի՛, մէք խարցնի, ես մէկ աղջիկ ուզերիմ իմ տղին, մեր աղէն զօռպա էր, ընձնէ խլեց. մէկայ էնոր տղի խարսնիսն ա.

Ասաց.—Ընչի, դու բարեկամ, ազգական չունե՞ս։

—Ես էս տեղ խըրօխայէր, բարեկամ չունեմ. ուրիշ տեղ կայ, հեռու է։

—Քու բարեկամ ո՞ր մէկն ա։

Ասաց.—Իմ բարեկամ Սօլթան Հասէն ու Ռօշքն ա, իմ աղբօր տղէքներընէն։

—Է՛, պառաւ. որ Սօլթան Հասէն, Ռօշք քո բարեկամներընէն, քու խարս ընչի խլած, դիւ ձէն չիս խանէ։

—Էնոնք հեռու են, ձեռս չհասնի, էնոնք էլ խապար չեն էսա բանից։

Կասին.—Էնոնք չատ հեռու են, մենք էնոնց տղէկներըննենք. ես Ռօշքի տղէն իմ. էս էրկուս լէ Սօլթան Հասէնին։

Կասի,—Խելքս չկտրէ, դիւ էնոնց տղէկներ էղնիք. ձեր մօտ զօրութեն պտի էլնի։

Մնաց յիրիկուն, ասաց,—Պառաւ, էլի՛, միզի կրակմ կպու։

Պառաւ ասաց,—Որդի՛, չէ՛ կը վախենամ։

Կասի.—Պառաւ, կրակմ կպու, ինչ ժամանակ էկան, մենք պատասխան կուտանք, սկի՛ դու մը վախենայ։

Կը զօռին պառւու վերէն, պառաւ կրակ կը կպուցէ։

Էն աղէն կը տեսնայ էդոնց կրակ, կասի.—Գացէք, էդոր կրակ ընցուցէք, կոն կտրտէք, տղէն էլ բերէք, սպաննենք։

Կուզեան պառւուն կասին.—Պառա՛ւ, դիւ քանի՛ գլխու տէր էս էդա կրակ կպուցիր։

Ապուզէթն կասի.—Էն կրակն մենք էնք կպուցիր։

Կասի,—Դիւ ինչ մարդ էք.

Կասի,—Մենք պէկզադէ (գնչու-բօշա) էնք։

Կասի.—Դիւ ընչի կպուցիք. դիւ չիք գիտէր եասախ ի։

Կասի.—Մենք բարխան ինք (ազատ)։

Կը դառնայ. կերթայ աղին կասայ.

—Պէկզադայ ին, պառաւ չէ կպուցիր։

Կասայ.—Որ պէկզադայ ին, ընչի չբերեցիր մեր խարսնիս։

Կասի.—Երթամ, բերեմ։

Կուգեայ էն տեղ, կասայ.—Պէկզադա՛, մեր աղէն կասայ. «Թո գեան»։

Կասի.—Ես կուգիամ, ձեր խետ պահման կը դրեմ, թէ փեսի աջ կողմն, ձախ կողմն տաք, մենք նստինք. կուգեանք, չէ՛ օր չընդունի, չգեանք։

Ապուզէթ կասի,—Ունը՛ս, Մէարէ, օր կերթանք, դու մէկ փեսի ձախ կողմ կը նստէք, մէկ աջ. ես էլ դըռան վերէն կը նստիմ. էն ժամանակ ես ծաւեր կը քաշեմ, ձիզի պտի ասեն. «Էլէք, խաղցէ՛ք.» դու մէ՛կ գեխէն, աղբէր մէլ մէկ գեխէն, ձեռ կը թալէք

փեսի կռներու վերէն, կը կտրէք, կըլէք էն տեղ կը խաղէք։ Օր դու էլաք, խաղցէք, էն ժամանակ կասեն. «փեսա՛, դու էլ էլի՛, խաղցի.» փեսէն էլ տ՚ասի, «ձեր տուն աւերի, իմ էրկու կռներն էլ կտրած ա, ես ինչխ տը խաղամ»։ Էնոնք տը գեան դըլխ մի. դու էն դեխէն, ես էն դեխէն զըմենն էլ ջարդ ու բուրդ կանենք. որ ազատեցինք, կը բերենք մեր հօր քըրոջ տղի վրէն կը պսակենք։

Էդ մարդ կուգեայ էղոնց կը ղանչայ, կը տանայ, մէկ աջ կողմ կը նստի, մէկ ձախ, Ապուզէթն էլ դռան վերէն ծաւեռ կը քաշայ։

Էդա տեղ կասեն.—Թօ գեան քու ընկերքն էլ խաղան։

—Դէ՛, կասայ։ Ունէս, Մարէ՛, ելէ՛ք։

Որ կելնեն, փեսի էրկու կռներն էլ կը կտռի, կեղէն կը խաղան։

Դէ՛, կասի, փեսա՛, դու էլ էլի, խաղա՛։

Կասի,—Ես ինչպէս խաղ անեմ, իմ էրկու կռներս էլ կտրած ա։

Կասեն,—Դէ՛, զարկէք էղոնց։

Ունէս, Մարէ էն դեխէն կուգեան. Ապուզէթ էն դեխէն կերթայ, կը զարկեն, էղա յըմեն ջարդ ու բուրդ կանեն, աղջիկ դաւօլ, զուռնէն քաշեն, տանին, էդ պառւու տղի վրէն կը պսակեն։

Ապուզէթ կանչեց, էն ինչ կանդար մարդ կայ մնացած, կասայ,

—Կուզէ՞ք որ մեր հօրքըրոջ տղէն ձեզի աղա էղնի, դուք էլ ըռայաթ։

Ասին.—Խա՛, մենք կուզենք։

—Մէյ ժամանակ էլ դու էդ մարդու խետ գէշ կայնէք, ձեր էրեխէն էլ կը կտրենք։

Էդ պայման դրեցին, գնացին։

Մէ քիանիմ՝ օր գնացին, մէ ջրի բերան խասան, ո՛չ կարմունջ կայ էդ ջրին, ոչ մէկ բօռ կայ անցնին, ուրանք էլ խեղճ էղան, մնացին էդ տեղ իրեք օր։ Էն մէկ գիշեր՝ մէկ գէլ գնաց ջուր անցնի. մէկ էլ էն խանէն էկաւ։ Նա խանի գէլն պոռաց, ասաց.

—Բօռ չեմ գիտէ։ Ապուզէթն էլ էղոնց լեզուն կը խասկնայ։

Էլաւ մէ քիչ քար ժողուեց, գիլու յետև գնաց ջրի վրէն։

Էն մէկէլ գէլ պոռաց.—Քեզի էդ տեղ կը թալես, կուգեաս կլես դուս։

Ապուզէթ էլ քարեր էդ տեղ կոլոնեց, զինք գիլու խետ թալեց ջուր, գնաց էն խան։ Էն խան էլ, էս խան էլ նշան դրեց, դարձաւ էկաւ։

Լուս օր բացուաւ, խըտ իրարու էլան, ջուր անցան, գնացին, Մոըրայ քաղաք դուս ընկան։

Էդ տեղ տեսան օր իրեք մարդ էկան, գնացին փաշային խապար տուին թէ ուրանից տեղ թանկութուն ա, էս տեղ էժնութուն ա. էկած բէւբիւ (քննելու)։

Փաշէն ասաց,—Գնացէք, իրեքն էլ բռնէք, բիրէք։ Բերին։

Փաշէն խարցուց.—Դու ինչ մարդ էք։

Ապուզէթն էլ ասաց.—Մենք պէկզադայ էնք։

Ասաց.—Պէկզադուն նշան կայ, կը տանէք, ռաաց ճանապարի միջով անցուցէք, թէ ոտքեր թալեցին ջրու ածքի մէջ Պէկզադային, թէ չթալեցին բռնէք։

Օր տարան փորձելու. Ապուզէթ ոլ տեղ չատ փսութուն կար, ոտ էն տեղ թալից, Ունէս, Մարէ, էդ էրկուս որ տեղ մաքուր էր, էն տեղ թալեցին։

Փաշային խապար տուեցին.—Էս մէկ Պէկզադայի, էս էրկուս չէ։

Ապուզէթ թողեցին, էն էրկուս բռնեցին։

Ապուզէթ էլաւ, ուր ձին խեծաւ. մէկ աւուր ճանբախ քանի կարցաւ, քշեց, գնաց յէժնութենի խամար, տեսաւ էն տեղ յէժնութենի, դարձաւ էկաւ քաղաքի կուշտ, մէկ բեւեռ զարկից ձիու ոտաց մէջ, ձին բուփլեց։

Փաշային խապար տուեցին,—«Պէկզադէն էլմ էկաւ։

Ասին.—Ցօրէ էկար. Ասաց.—Իմ ձին բոփալ ա. ընձի չտանի, իմ ձինս կտանէք, ընկէրոջս ձինը կը բերէք։

Էլան էնոր ձին փոխեցին. ընկէրոջ ձին խեծաւ, էրկու կողմերն կան իրի, էկաւ։ Ասին.—Էս օր ընչէ էկար։

Ասաց,—Էս օր էս էլ կը բոփլէ, մէկէլ տուէք։

Ունէս, Մարէ էլ կլեն թուղթմ կը գրեն իրանց խօր մօր, թէ «մենք Մսրայ քաղաք բռնուկ էնք, կառնէք, մեր վրէն դարձէք, չէք կառնէ, մեր բան բօշ ա, մենք չենք ազատուի»։

Էս թուղթը կը մտուցին Ապուզէթի ձիու թամքի մէջ։

Ձին կուտայ, Ապուզէթ կը խեծնի, կեթայ երկիր, գնաց տուն

Սօլթան Հասէն ասաց,—Ապուզէթ, ուր ա Ունէս, Մարէ։

Ասաց,—Ես չեմ գիտի։

Սօլթան Հասէն էլ վրէն բրխաւ, ասաց.

—Գնացէք, բիրէք ըստի։

Բերեցին, ան աե կապեցին, ոտներ էրկուսն էլ դայց դրեցին։

Մէկ ժամանակ մնաց խայտուկ, աւուրմ Սօլթան Հասէնին մէկ պզտիկ աղջիկմ կայ, կուղեայ, կը տեսնայ Ապուզէթի ձեռ փէյլրվնի ուլինք կայ,[1] կասի —Ապուզէ՛թ, տուր ընձի։ Կասի.—Աղէկ, ես

1 Ապուզէթ ուլինքը ձեռը բանած կը կենէր, որով զուսակութիւն կանէր թէ այդ ճաղափի մէջ եւէք փանիլիւան կան, ինքը երէ մի հնարքով ազատուի. փահլիւանները իւր վերան զան ո՛ր մէկին կարող է յաղթել։

կուտամ․ գնա՛, իմ խայտի բանլիս քու խօր ճէպն ա, ա՛ռ բէ՛, տամ։

Աղջիկ կերթայ, ձեռ կմտուցէ խօր ճէպ, զբանլիս կը խանայ, կը բերայ, կուտայ Ապուզէթին. Ապուզէթ զխայտ կը խանի, թալէ. ուրիշ ուլնիք կուտայ աղջկան, կերթայ։

Սօլթան Հասէն կը տեսնայ ատնէն խայտ հանած, կասի.

—Բանլիս ո՞ր տարաւ: Աղջիկ կասի.—Բանլիս ես տարայ, գացի տեսայ ձեռ ուլնիք կէր, բանլիս տարայ, ուլնիք առայ։

—Կնի՛կ, կասայ. էլ մենք չինք կարայ Ապուզէթի վրէն, ու մեր տղէկներ սաղ էղնեն, մկայ էնոնց նշանաբան էնոնց ձիու թամքի մէջ կայ:

Որ կաչքէն, թուխտմ կը տեսնան, որ Ունէս, Մարէ գրած ա։

«Մենք սաղ սէլիմ, Մըրրայ քաղքի մէջ բռնած էնք. կառնէք, մեր վրէն էկէք. չէ՛, չէք կառնէր, մենք էս դեխէն չենք կարնէր ազատուիլ»։

Սօլթան Հասէն բազաւան կը կանչէ Ապուզէթին, կասի.

—Որդի՛, արի տղրին ասա՛, եթէ էն տի յէժնութուն ա, էրթանք։

Կասի.—Յէժնութուն ա։—Է՛, կասի. ճամբխներ կարո՞ղ էնք էրթալ։

Կասի.—Ես ճամբախ աղէկ գիտեմ։

Էդ տասնը վեց խազար տուն կը բռնէն, կերթան ու կերթան, էն մէկ օր Սօլթան Հասէնի տան ջիւր կը պակսի, կասի.

—Մէկ թաս ջիւր բերէք, Աստուծոյ սիրուն ըլնը, կուզէք, մէկ օսկի տամ:

Ապուզէթ ուր կնկեան կասի.—Կնիկ, մէկ թաս ջիւր տար խրօխպէրս խմի։

Օր կը տանէ, կուտայ, խօրողբէր կաչքէ՛ Ապուզէթու կնիկ, օր կը տեսնայ, խելք գլխուց կերթայ. կը կանչայ: Ապուզէթ կը բերայ, կասայ.

—Ապուզէթ, էստ քու կնիկ վի՞ն աղջիկն ա։

Կասայ.—Իմ կնիկ Բաժառայ Բելնկրի իմ բիրի։

Կասայ.—Ինչքան ղարիպ աղջիկ մեր էլեարի մէջ կայ, թող ուրանց խօր տներ դառնան. չիմի էլ մենք մեր տներ չենք դառնար։

Ապուզէթի կնիկ գնաց խօր տուն.

Էդ էլեարը իրեք օր մնաց ջրի բերան։

Ապուզէթի կնիկ օր գնաց, Ծաղիյա, Սօլթան Հասէնի աղջիկ էկաւ, Ապուզէթու տղէկներու տէր էլաւ, էլաւ Ապուզէթու էրկու տղէք դրեց դեվու վրէն, թալեց ջիւր, որ թալեց ջիւր, Ապուզէթն տեսաւ տղէկներ դեվու վրէնէն, սիրտ վերէն էրեցաւ, ասաց.

—Պէ՛ խոյ անտէր դեվ.ա՛, մու խօրմ (գլխի վայր) մու սօում (չիտակ), գնաց գուս։

Էլեար էան գնաց, օր գնաց, մէկ աւուր ճանբախ գնացին. էդ տեղի Էլի աշիրաթ էկաւ յառաջեններ, ասին.—Նա տաս աղջկան տասնորդ տը տաս, եանն չընք թողնը էրթաս։

Ապուզէթ կայնաւ կռիւ, Սոլթան հասէն ասաց.—Ես կռիւ չեմ անի. ես կուտամ։

Ապուզէթ ըռըզաւ, գնաց, գնաց մէ քաղաքմ։

Ասին Ապուզէթին.—Քու անուն ինչ ի։

Ասաց.—Իմ անուն Կնդռ ի (Կոլոտ-կարճ հաստ կլոր մարդ)։

Կնդռ մնաց քաղքի մէջ, կնկանիրուն արկանք կաղէր։

Աւուր մէկ կուգեան, կը թալին քաղքի մալին վերէն, կը տանին. ինչքան մարդ կան. կերթան հաւարի, էն օր չեն իգեայ, էդ քաղաքի փաշէն կասի.—Մէկ մարդ բերէք, խաց տանի հաւարի մարդերուն։

Աչքեցին մարդ չկայ, Կնդըռն ա, Կնդըռ բերին էնտեղ։

Ասաց.—Կընդըռ, էլի, խաց տար։

Ասաց.—Ջիմ տուէք, ես տանիմ, թէ չէ, չեմ տանէր։

Փաշէն ասաց.—Ջէյնեմ, տուէք, թը տանի։

Կընդըռ գձին կը խեծնայ, ղողըրք ձեռ կը բռնայ, կերթայ էդ մարդերուն կը խասնի, կը տեսնայ-ինչ-էդ մարդեր մալ, թալան թողած՝ կը փախնին, ասաց.—Ընչի՞ կը փախնիք:

Ասին.—Էնոնք զոռչի էն, կը փախնինք:

Ասաց.—Էկէք, խաց կերէք։

Ջինքն քշեց, գնաց ղըխ գողեր, խասաւ, մէկ քանի մարդ սպանեց, զթալան յետ դարձուց, բերեց, էդ մարդերուն խասուց։

—Դէ՛, ասաց, ես ձեր թալան բերեցի, ըսդէպ դու գիտէք, ես գացի։

Ջինք թողեց, էկաւ գեղ. գնաց արկանք կաղայ։

Ասին.—Կնդը՛ռ, թալան ինչըխ էլաւ։

Ասաց.—Ինչխ էլաւ, չուր գացի, դարձուցեր ին։

Մարդեր թալան առին էկան քաղաքի մէջ։

Փաշէն կանչեց, խարցուց.—Ո՛ր մէկ կոչախ էր, որ դարցուց։

Ասին.—Մեր կոչախութին չի։

Ասաց.—Պա ո՞րն ի։

Ասին.—Կնդըռն ի, Ծամուս արայ։

Փաշէն զԿնդըռ կանչեց, բերեց, ասաց.

—Կընդը՛ռ, արէ տեսնանք, ինչ կուզես, տամ։

—Ես ինչ էմ արե որ ինչ ուզեմ, ասաց.

Ասաց.—Կընդը՛ռ, ես խասկացեր իմ, Ծամուս դիւ ես արէ, ուզէ՛, տամ։

Ասաց,—Որ ուզեմ, մէկ ձեռք չոր, մէկ ձեռք սիլախ, մէկ աղէկ ձիմ։

Աղէկ ձիմ տուեցին, էլաւ. թողեց, գնաց Կընդըռ։

Գնաց, խասաւ ելեաբի մէջ, տեսաւ էնոր խրօխպօր աղջիկ ծաղկյան տարած եղսիր (տասանորդ տրուած).

Էլաւ ինչ արաւ Ապուզէթ. էլաւ չարչի։

Ընկաւ երկիրներ կան գալու. չատ քիչ Աստուած գինայ, սալդ չառեց։

Մէկ ժամանակմ մնաց մանգալով, գնաց Գեւնա Կուսեան, էնտե ծաղկյու սալրխն առաւ, էլաւ գնաց բերգի մէջ, ուլնինք բանման խանեց, խանմներ առնին։

—Է՛, գին ինչ ա, ինչ չէ։ Մախսուս թանգ կասի, օր ընցուցի։

Դարձաւ ասաց.—Խանըում, կառնիք, առէք, թէ չէ, մուքթն ա, ես տեղ չեմ խասնըր։

Առին.—Ինչ հոգ ունես, գիշեր չես մնայ դիւս, տեղմ պտրտանք քե։

Ցիրկուն տարան դիւանխանէն. տեսաւ որ մէկ աղջիկ էդ տեղ կար, մէկ չալիկ վիրէն կար, էն էլ կարճ, ինչ մարդ կրակ ուզէր, կրակ կուտէր, որ կգուէր էտեանց կերեար, որ չտկուէր, առջեանց։ Գիտեն ինչ մարդու աղջիկ ա, ըդրա յապով տարան եղսիր, կարճ չալիկ խաղուցին առակուելու խամար։

Էն տեղէն գիշեր գողացաւ զաղջիկ, գնաց։

Մէկ ժամանակմ գնաց, խասաւ երկիր, տալաւ զաղջիկ ուրտուն որ ուր էրեխէք պախէ։

Մէկ ժամանակ մնաց, Սօլթան Հասէն մեռաւ։

Սօլթան Հասէն ու Դայաղ իրարու դուշմանէն, զ'Դայապն էլ Սօլթան Հասէն բերիր ա, իրան խամար իլիկ կը մանայ։

Էդա Դայապն էլ կերթայ Շէխի Հատատանի մօտ, կասայ.—Ընձի մէ քօփմ չինէ։

Շէխի Հատատան կասայ.—Ես չըմ կէրի չինիլ. ես Ապըզէթու մօտէն կը վախենամ։ Աւուր մէկ Ապուզէթ կգեայ, էն տեղով կընցնի։

Դայապ կասի,—Ապուզէթ, ես Շէխի Հատատանուն կասեմ. (ինքն կասէ քօփմ չինէ, ամա Ապուզէթու առջև կասի).—Ընձի մէկ ձներթ (արչկանի գլուխ) չինէ։

Ապուզէթ ձներթ կը խասկանայ, կասի.—Շինա։

Կը չինայ։

Դայապ էդ քօփ ուրան ծոց կը դնայ ամեն գախ։

Աւուր մէկ մէկ մարդ կը մեռնի, կերթան էնոր գերեզման կը փորեն, մէկ մեծ քարմ կընկի մէջ, կասեն.—Ապուզէթ չկայ, էս քար մարդ չկէրի խանայ։

Կը կանչեն, Ապուզէթ կուգեայ, կասեն.

—Ապուզէ՛թ, էս քարը դիւ պտի խանես։

Դայապն էլ էդ տեղ կայնէր է։

Ապուղէթ կը իջնայ գերեզմնի մէջ, կը կղայ, էդ քար կը խանի, Դայաղն էլ էդ բօփ կը զարկայ էգոր գլխու մէջ. Ապուղէթ կըսպանայ:

Դայաղ կասի.—Գնացէք, Ապուղէթի կրակ ընցուցէք, մեր կպուցէք.

Օր կերթան. կասեն. Ճագիյա կառնէ Ապուղէթի երկու աղէք, էդ երկրէց կը փախնի, մէ յուրիշ երկիրմ կերթայ.

Էն երկիրը մէ ժամանակմ կը մնայ. էն աղէկներ կելնին ճահնել, ուուր մէկ Ճագլյան Նախրորդին կասի.

—Քեզի մէկ ջուխտմ թաթ կուտամ, մէկ հաւարմ էրմ, տեսնենք, իմ աղէկներ զօռ էն թէ չէ.

Նախրորդ հաւար կենայ, կասի.—Նախիր տարմն.

Ճագիյա աղէկներուն կասի.—Դացէք հաւար:

Տղէկներ ձիանք կը քաշեն, ինչպէս չլուք կերթան, Նախրորդին կը խասնին, կասին.—Նախրորդ, դօ՛ր տարան:

Կասի.—Որ դու էկաք, էնոնք փախան, էլ չտարան.

Կը դառնան, կուգան տուն.

Մէկ տարիմ էլ կը մնան. Ճագիյա կը մտածէ, էլմէլ պտի փորձեմ:

Նախրորդին կասայ.—Քեզի մէկ ջուխտ չարոխ կուտամ, էս մէ անգամն էլ հաւար արա:

Էս մէ անգամն էլ Նախրորդ հաւար կանի:

Ապուղէթի աղէկներ էրկուս կելնին, ձիանք կը քաշեն, թամքեր կը դնեն, ձիանք կը չինեն, կը խեծնին, կերթան Նախրորդի հաւար.

Կասեն.—Դո՛ր ա տարած Նախիր:

Կասի.—Դու էկաք, էնոնք փախան:

Կը դառնան, կուգեան տուն:

Մէկ տարի էլ կը մնայ, Նախրորդին կասի.—Քեզի խինդ ղուռուշ փարայ կտամ. մէկ էլ հաւար էրա.

Նախրորդ մէկ էլ հաւար կենէ.

Ճագիյա կասայ.—Տղէկներ, ելէք, գնացէք հաւար, Նախիրտարան.

Տղէկներ կասին.—Ճագիյա, մեզի մէ դայֆայ չինէ, խաց բե՛, մենք ուտենք, նոր կերթանք հաւար.

Խաց կերան, խեծան գացին խասան Նախրորդին, ասին.

—Ջանըմ, էսա իրեք անգամ իլաւ, դու մեզի կը խափիս, յո՛ւր ա քու գողեր.

Ասաց.—Ջուր դու էկաք, էլմ փախան գեացըն.

Դարձան էկան տուն.

Ճագլյան ասաց.—Ապըղէթը ժը Ապըղէթան, պէտք ա դու պահկուիք.

Տղէկներ ասին.—Դիւ գնես։

Ծագիկյան ասաց.—Էնքան ժամանակ ես ձեզի չախերիմ, մէկ ընձի առէք, մէկ էլ յիւրիւչ աղջիկմ։

Ասին.—Դիւ գիտես։ Ասլըզէթի ժը Ասլըզէթան էնի զծագիկյան առից. պզտիկ ողբէրն էլ մէկ յիւրիւչ աղջիկմ առից։

Էն օր որ պտի էրթէն վըր ուրանց տեղաց, Ծաղիկյան էն աղջկան ասաց.—Բու իրկուն կառես, չուր դու քու խօր ճէյֆ չառնիս, չը գեաս մօտ ձի, ես էլ կասեմ։

Ասաց.—Աղէկ։

Որ գացին ուրանց տեղաց վերէն. Ծաղիկյան ասաց.—Դո՛ր կուգեաս, գնա, քու խօր ճէյֆն առ, նոր արի, ես քուն իմ։

Ասլըզէթի ժը Ասլըզէթան ի՞նչ ասաց.—Ասաց՝ «իմ տաչին դիւշման դիւ իս, ճալլաճ, ես քեզի մտահ անեմ, նոր ես կերթամ դեխ իմ խօր դիւշմանն: Էղիկ զծաղիկյան տեսաւ։

Պզտիկ տխպէր կնիկ օր էնպէս ասաց. էնիկ ուր տեղ չղնաց։

Ծաղիկյան էն պզտիկ կնկեան խարցուց.—Բու իրիկ էկա՞ւ քու մօտ։

Ասաց.—Ես ասի, «գնա քու խօր դիւշմանն սպանէ, նո՛ր արի», էլ չէկաւ։

Ծաղիկյան ասաց.—Սպուզէթ . . . քընց քու իրիկ կտրիճ ա։

Մէկ ժամանակ մնաց ասաց.—Դէ, կերթաք ձեր խօր ճէյֆ կառնէք։ Բերից էղոնց ձիանք ալաց նուանի, ասաց։—Ինչ ժամանակ ձեր ձիու ոտանջ քըանաւ, էն գախ դիւ կարող էք Դայապին սպանել, քանի որ չքըանի, առջևէն փախէք։

Տղէկներ իլան ձիու պուչքեր կտրեցին, արեցին նուանի. էրկուս խեծան գացին դեխ Դայապ, կանչեցին.

—Դայա՛պ, արի, մենք մեր խօր ճէյֆն կառնենք։

Դայապ խեծաւ, էկաւ, տեսաւ որ էրկուի ձիանքն էլ նուանի (քուռակ) էն, ասաց.—Մէրաքուն, դօ, դո՛ւ էկաք ընձի ըսպանէք, դու մէ մէկ բօռ (անվարժ) նուանի խեծերէք, ես ձի էրկան էլ կսպանեմ, ճանփու կղնեմ։

Ասլըզէթ ժը Ասլըզէթան ասաց.—Դու մէկ արճ մայտան։

Դայապի կոր (կոյր) էկաւ անոր, կռուան. քանի էղոնց նուվանիք չէր տաքցե, չէր քըտընի, էղոնք փախան. որ քըտնան, դարձան Դայապի վերէն, զարկեցին զԴայապ սպանեցին, գնացին ուրանց էլխաքի մէջ։

Դայապի թախում-կօրէ Վան Շամէն դէրպաղ կըրն, ուրանց կըակ վառեցին, Դայապուն ընցուցին, նոր թազատան դացին ուրանց տուն էն իրկըէն առան էկան։

Էկան էլխաքի մէջ նստան։

Դայապի դասը փչացըցին, ուրանք էլան աղա։

# 20

# ՄԱՄ ՈՒ ՋԻՆ

---

Վանայ Շամշադին գիւղի բարբառով *

Ալ փաչան տղէ մը ունէր, անուն Մամէ էր. չատ սիրուն տղայ էր, զինքն էր էդ մէկ տղէն։ Շատ հազ ունէր մօտէն, մէկ սահաթ օր չերևէր ուր աչին՝ օր օր չէր, չատ դէմ կլնէր։

Մէկ օր մէջ ուր յօտին պառկած էր, իրեք խատ եղունիկ էկան, Մամէի յօտին փէնջարէն կայնան։

Մեծ քուրը ասաց.—Աստուած, Մամէի պէս խօրոտ ըսկի կա՞յ։

Պստիկ քուրը ասաց.—Մէկ խատ կայ։

Էն ասաց.—Ո՞րտեղն ի։ Պստիկն ասաց.—Ջզիրն ի։

Ասաց.—Ի՞մալ ինոնք պտի խասնին ուրենց մուրազին։

Ասաց.—Էրթանք, էն էլ տեսնանք ինչպէս ի։

Գնացին էնտեղ, Ջինէի փէնջարէն կայնան։

Ասեցին.—Էս քընց Մամէն խօրոտ ի, Մամէն քընց Ջինէն խօրոտ ի, էրկուսն էլ իրար բաբաք են։

Ասեցին.—Բա ինչպէս աննք։

Ասաց.—Աստըծու դէմ պտի տուվա աննք:

| | |
|---|---|
| Արին.—Խօսք բր կրամ՛ր վուզարոյ, | Աստուած յաջողէր |
| Փոսք կեավորկայ ծորսա բրկրա խորայ | Աղաւնիի մորթը մէրևից գայ, |
| Խամ սրսկն ա, Ջինք ըժմառա բրբք չար ա: | Մենք երեք ենք, Ջինէն ևս մեզի հետ կը լինի չորս։ |

Աստըծու դէմ որ տուվա արեցին. Աստըծուց ինոնց լիբասին մէկ լբաս էկաւ Ջինէին. էն էլ արեցին ուրենց նման, բերեցին Մամօյի փէնջարից տարան դրեցին վեր Մամօյի լխև տօտակին:

Կէս գիշեր էր, Մամօն ակխաւ, տեսաւ մէկ կնիկ կայ ինոր ծոց, ասաց.—Ա՛յ կնիկ, դու առանց իմ իրաւունքին ընչի՞ ես ինկեր ըստեղ. ես Մամէն իմ, Ալ փաչի լամուկն իմ, էս երկրի մեծն ես իմ։

Ջինէն ասաց.—Ես չիմ ինկե վեր քու տեղաց, դո՛ւ ես ինկե:

Էն ասեց «դու ես ինկե», էն ասեց «դու ես ինկե»։ Էրկըսով արեցին կռիւ:

---

* Պատմած է Օսկան Օհանեան: Սոյն վէպը տարածուած է նաեւ ընդհանուր եզդի ժողովրդեան մէջ. որպէս նուիրական աւանդութիւն պարտաւոր են սովորելու, իւրաքանչիւր եզդի կը պնդէ թէ Մամ եւ Ջին եզդի եղած են. որով ամեն հոգեւորական պարտաւոր է գիտնալ ու երգել. սորա մէջ կը գտնէ ընթերցողը քուրդ ժողովրդեան յատուկ սովորութիւնները:

*Մամօն ասաց.—Ես որ իմ իկե, էլի՛ քու ճրագն արա՛։*

*Զինէն էլաւ.* ղարիբ *ի, չղիտցաւ ճրագի տեղ դո՛ր էր։*

*Մամօն էլաւ ճրագ կպուց. մէկ սրտով չէ, տաս սրտով աչք իցքին յիրար։*

*Զինէն ասաց.—Իմ բերողներ ընձի կը տաննեն։*

*Մամէն ասաց.—Քեզ ի՞նչպէս կը տաննեն։*

*Ասաց.—Ինչպէս ընձի բերած է, էմալ էլ կը տաննեն։*

*Ասաց.—Տնաւեր, քեզ ո՞րտեղ տաննեն. մէկ գիշեր չուր լուս չինք քընէ իրար մօտ, մնանք ակախ։*

*Ասաց.—Իմ բերողներ ընձի կը տաննեն, ես գիտնամ։*

*Ասաց. — Շատ չէլաւ, իրար կը գրկենք, ակախ կը նստինք. դո՞ր պտի տաննեն իմ ձեռաց մէջէն։*

*Շատ մնացին ակախ մինչև լուսուն դէմ։*

*Նղունիկներ ասին.—Աստուած, ինչպէս անենք, սև լրես իլանք քու դէմ. խոսք չեն քնի որ տաննենք։ Լուս բացուաւ։*

*Զինէն ասաց. — Ես կնիկ եմ, չեմ կանայ քու խաև կան գեայ, դու իմ խաև պիտի կան գաս։ Իմ տեղն Զգիրն ի, մեր Սևտինի աղջիկն եմ, Ղարաթաժաինի թոռն եմ, իմ անուն Զինէ ի։*

*Մամօն ու Զինէն ուրանց մատնիք փոխեցին։*

*Նղունիկներ* տուլա *արեցին. Աստըծուց քնու ուլնիք ընկաւ իղոնց ունկաջ, էրկուսով էլ քնան։*

*Էլի Զինէն կոխեցին ուրանց* լպասին, *առիցին գնացին։*

*Մնաց չուռ առաւօտ, լուս բացուաւ։ Մամօն իչկաց տեսաւ կնիկ չկայ մէջ ուր տեղաց, մարդ չկայ մօտին։ Շատ ծանար խէւըրնդցաւ. ասիցին.—Մամօ, դու ընչի՞ ես ընկեր պառկեր ես, էլիր, աղօթք ա՛րա, քու աղօթքի* վախըն *ի։*

*Արին չարին, չէլաւ կայնաւ, ասաց,—Ես անճար խիւանդ իմ։* Զուար *գնաց Ալ փաշին։—Մամօն շատ խիւանդ ի։ Ալ փաշէն էր մէ տղայ. որ ասիցին խիւանդ ի, խելք իր գլխէն գնաց, էլաւ էկաւ վերէն, ասաց. — Ա՛յ Մամէ, քու ո՞րտեղ կը ցաւայ, ո՞րտեղ չի ցաւայ. ընչի՞ էզպէս կանիս։ Ասաց.—Տեղ* սաղ *չունիմ, շատ անճար խիւանդ իմ։ Ալ փաշէն շատ նստաւ իղոր կողքին, շատ իղոր թէքիր մաժեց։* Զուար *գնաց իղոր մօր. մէրն առեց էրկու խատ կընիկ, էկաւ վերէն։ Մէկ կնիկ շատ մեծ կնիկ էր, ասաց. — Մամօ, դու խիւանդ չես։—*Բաս, *ինչ իմ, ասաց։*

*Ասաց.—Դու խիւանդ չես, դու կնիկ ես տեսե էրազ ինե։*

*Ասաց.—Բա որ դու գիտնաս, ընձնէ ընչի՞ կը խարցնիս։*

Զուար *գնաց Ալ փաշին. ասեցին.—Մամօն խիւանդ չի։*

*Ասաց.—Բա ինչ ի։—Կնկան* ցաւի *կանի, պտի փսակուի։*

*Ասաց.—Աստուած անի էնպէս* ըլլի, կըլլիմ *ինչքան կնիկ կայ։*

աղջիկ կայ, կը ժողվիմ, բերիմ, կը տանիմ Բաղէ Թոււկրի, թող գիայ, ուր խնձոր թալի, որ մէկին խնձոր թալից կուզիմ, Մամօյին։

Էդտեղ էլաւ Ալ փաշէն, բալալ աուեց կանչել, ասաց.—Որտեղ, որ մի կնիկ կայ, մի աղջիկ կայ, զարդարէք բերէք Բաղէ Թոււկրի։

Ինչքան կէր զարդըրեցին, ըերեցին Բաղէ Թոււկրի։

Մամօն ասաց.—Աստուած, ես ինչ անեմ, ես գիտեմ, իմ ուզած ՙէնտեղ չի. ես իմ խօր խաբր չիմ կոտրիր, կըլիմ կերթամ, իմ խօր քաղաք մեծ քաղաք ի, բալէի մէ եան Զզիր ըլի. ես չը գիտնամ։ Կըլնի կերթայ Բաղէ Թոււկրի։ Ինչքան կնիկ կայ, աղջիկ կայ, կիցկին բռեզ իդոր դէմէն կընցուցեն, որ էդի խաւանի, մէկն ուզեն ինոր խամար։ Ինչքան կայ, կուգան կընցնին, կիրթան, մէկին էլ փարսանեա չանի, խնձոր չի թալի։ Մի խատ աղջիկ կը մընայ յետ, ուր մի աղլախ կարձկի, մէկ ուրիշ կը կապի, կասի.— Մամօն աչք կիցկի ընձի, ես պլտի էրթամ, խնձոր թալի ընձի։

Էն էլ ընցաւ գնաց, խնձոր չի թալեց։

Աղջիկն ասեց.— Մենք ընցկընէ մը աղջիկ fուլֆար էկանք ըառեղ մէկ չուզեց ուր խամար. ես պտի մի խաղ ասեմ, տեսնամ Մամօյից ինչ ձեռ կուտայ։ Մէկ խաղ կասի.—

| | |
|---|---|
| Տու տայրա տայրk բազի, | Դու թռչուն, բազէ թռչուն, |
| Դեւ բավk խո դընազի․ | Քու մօր, հօր վրայ նազ կանես. |
| Էամ հանայ դիզա բkզ բkզլkրիյան, | Մենք որ կանք, իշխան իշխանուհի աղջիկ ենք, |
| Տու չմա եկի ըժխապրա նախուազի։ | Դու ինչու մէկը քեզ համար չես ուզի. |
| —Եա կու kազ դըխուազմ նա չըվրա. | —Նա, որին ես կուզեմ, այստեղ չէ. |
| Նավk վի Զինkf, դիզա Միr Սեւօինk, | Նորա անունն է Զինէ, դուստր Միր Սեւտինի. |
| Նաւkա Միr Աղլասայ, վkլը Զզիր Բօթանայ, | |
| Տանայ շինk ռանցինայ։ | |

Զուարէ տարան Ալ փաշին.—Մամօն մէկիմ աղջիկ ըսկի բակեամ չարաց, մէկին էլ խնձոր չթալեց. մի աղջիկ կէր, խաղով էսպէստ ասաց Մամօյին, Մամէն էլ էդպէստ ասաց.— Իմ ուզած Զըզիր Բօթան ի, կը բերէք բերէք։

Ալ փաշէն ասաց.—Ելէք վեր, օրողկէք աբչըներ, ինչքան ման գեացող մարդ կայ, կանչէք բերէք, թո գեայ, տեսնանք իդա տեղ որ մէկ սալըղ կըտայ։

Օրողկից ինչքան խալիւոր կէր, ըերեց, խարցում արաց.— Զզիր չէք գիտեր որտեղն ի։ Ասին.—Չէ, չինք գիտեր։

Զուարէ գնաց Մամօյին, ասին.—Մարդ չի գիտեր որտեղն ի.

Ասաց. — Ձըլլի էսենց պառկելով. էն սասաց ինձի. «ես կնիկ եմ, չիմ կանայ քու իտեւ կան գեայ, դու իմ իտեւ պտի կան գիաս». ես պիտի ըլլիմ էրթամ։

Մամօն չատ խիւանդացաւ. էրկու չաբաթ պառկաւ։

Էլաւ, գնաց մէջ ուր խօր ձիանքներաց, սասաց.—Ես որ մէկի վերէն ձեռ տիփիմ, ձեռ դիպուց յառիք՝ էն պտի խեծնիմ։

Գնաց մէկ ծառտօ, ոչինչ ձիմ կէր էնտեղ կապուկ, ձեռն պալնեց վեր քեամկին, ձեռն վիրուց զանեց յառքին:

Ասաց.—Էս ձին ընձի պիտի խանի Չզիր Բօթան, թէ քու ձի չկայ ընձի խանի։

Գնաց մէյքարներաց քամբխեց.—Մէյքարչիք, էս ձին լաւ կը պախէք, լաւ գեարի, խօճա կը կերցըցէք։

Գարի, խօճա չիկէր Ալ փաշին. չմտ։

Տուեցին, պախեցին. ըսկուն չաղացաւ որ սանել չէր իգայ։

Գնաց, քեաչից դուս Մամօն, տարաւ ուր խօր խիզիճի դէմը, մի խօրոտ թամք զարկեց ձիուն, ձիու ոտքեր ջիտարեց, գնաց ուր խօր խիզիճէն, մէկ խուրջին ըլին ոսկի առեց, էկաւ խեծաւ ձին։ Դայեի բանլիս թողեց խիզիճէն, խեծաւ ջիտարով քշեց։

Ջուաբ գնաց Ալ փաշին.—Մամօն խիծաւ ձին, գնաց։

Ալ փաշան սասաց.—Աստըծու սիրուն, հօ էլ մեզի խէր չկայ Մամօյի մօտէն, մեր ձեռնէն գնաց։

Էլաւ խառ ձիաւոր օրողկեց Մամօյի ճամբխի վերէն, որ էրթան յառէջ, վախցնեն, Մամօն բալքի դառնայ դեայ։

Մամօն էն ճամբխով չի գնաց, ուրիշ ճամբխով գնաց։

Բաղաք ըսկնայ մեծ քաղաք ի. իրեք օր իրեք գիշեր կը քշի, քաղըքի մէջէն չըլնի դուս. չատ կաջըզի, էգտեղ խաղ կասի.—

| | |
|---|---|
| Հարկ Բորկ, Բորկ մըճի ճար ա, | Ա՛յ Բօրօ, իմ Նիհար Բօրօ, |
| Իրօ ակ ա, ըրպա ճար ա. | Այսօր երեք է, առաւօտչօրս է, |
| Տիւ մըճի ղըզհաշիճի ղիվար ղիվարա, ճուշա քը ճուշա, | Դու գիս կը պտըտցնես պատէ ի պատ, փողոցէ փողոց. |
| Եա քըմքարկ ակկի քըճա՛ա տկտա ճաշի խաարա: | Ճանապարհ մը չկայ որ միջով գնաս Ներքև: |

Էնտեղ Աստըծու խըրամանքով ճամբախ մը կընկնի յառջև կը քշի. չատ քիչ Աստուած գիտի, քեանի օրուայ ճամբախ կերթայ. ջիտար ձիու ոտք չատ կը կտրի։ Գիշեր ցերէկ կանի վրէն կը քշի, չէղնի։ Աստըծու խըրամանքով լիզու կըլնի ձին, կասի.—

| | |
|---|---|
| Բաս կա մըճի քաժօյի, բաս կա, | Բաւական է գիս քշես, բաւական է, |
| Մըճի պայմըկ կարտա. | Իմ վրայէն գետին իջիր. |
| Ավա բըյկա մըճի քը ղատա. | Ջուր տուր ինձ քո ձեռքերով. |

| | |
|---|---|
| Էավ ճաղայ խոսք դա բրգիժրմ Ջր-գիր Բօրաճայ: | Աստուծոյ կամքով քեզ կը հասցնեմ Ջզիր Բօթան։ |

Մամօն ըսկի ականջ չանի թէ ձին ինչ կասի. գիշեր ցերեկ ձին քշի կերթայ։

Էլի ձին շատ կպչըրգի, էլի խաղ կասի.—

| | |
|---|---|
| Էարք Մամօ, մալ խըրապ, | Ա՛յ Մամօ, տնաւեր Մամօ, |
| Տու կօնք սքարմաս ի. | Դու յիմար տղայ ես. |
| Տու բիւ չիյա նա վռսհի: | Դու մի տեղից չես նեղանար, |
| Ղա նա բքժի ճիարի չըճիկ Բօր դը բըռի, | Սրբէք չես առեր չիտալը Բօրի ոտքը կտրեց, |
| Գեան գիշաճսք ճասսի: | Հասցրեց ոսկոր։ |

Էլման անկաջ չանի կը քշի. կերթայ մէկ խօրոտ խօրոտ. յաղբրի վրէն, չօլ-չիմաճ տեղ. շատ լաւ ծաղկունքով յաղբուր ա, արքաութենի յաղբուր ա, իւսաճ կերթայ ջրին, կասի.—Շատ իմ նեղացիր, պտի իջնեմ մէկ քիչ ջոր խմեմ, խաց ուտեմ, էլի խեծնեմ, քըշեմ։

Կիջնի յաղբրի վերէն, ուր ձին կը թողնի խոտի մէջ, պինք կը նստի վըր յաղբրին, խաց կուտի, վռազ-վռազ կըլնի որ խեծնի ձին, ձին ձեռ չինայ, կը փախնի դէմէն. կանի չանի, ձեռ չիտայ։ Էնքան լաւա կըյնի ձիան, ձին չի կայնի։ Ջին կասի.—Ես բա ինչ անեմ, էս տնաւեր չիմանայ որ ղայց իմ ոտքերս ի։ Ջին ուրին կը թալի գետին, ուր ոտքեր կը վիրուցի դարըվեր, կը պռտուի, նոր Մամօն չիսար կը տեսնայ, կասի.—Վա՛յ, իմ վիզ կոտրուի, ըսկնէմ օր ես կը քշեմ, ճալա չեմ իմանայ օր իմ ձին ղայցուկ ա. իմ ձին ուր լեզուով կասէր, ես չեմ իմացի։

Կերթայ որ ձիուն ղայց արձկի՝ կիչկայ ղայցի բանլիս մօտ չի.—Վա՛յ իմ վիզ կոտրուի, ղայցի բանլիսն էլ թողեր եմ խիզճի մէջ։ Խանճալ կարձկի, կը գանի ղայց կը կտրի, ձիու ոտ կիչկայ, էրակներ բիրադի կտրի, մնացէ ոսկոր։ Բերի քաշի յաղբիրի վերէն, խօրոտ քամիզ կը լուայ, կասի.—Բէ, քու տիրու խէր անիծած կէնայ, գնա. մինք մընացինք չօլ-չիմաճի մէջ, քեզ էլ գէլեր կուտին, ընձի էլ։

Ջին թողեց չիմանի մէջ. զին̃ք պառկաւ. մի սաճար. երկու սաճար քնաւ։ Ջին էկաւ էտոր Ֆարաջէճ ուրից. թալեց դէն: Մամօն ակխաւ. տեսաւ ձին ա, ասաց.—Քիւ տիրու խէր անիծած կենայ. ինչ կուզես ընձնէ, քու ոտք բազա չի սաղնայ որ ես խեծնիմ էրթամ։

Էլման կը պառկի. քնի. մի սաճար էրկու կը մնայ, էլման կուգայ, Ֆարաջէն կը թալի դէն, Մամօն կակխի, կասի.—էրթամ, իմ ձին բռնիմ. տեսնամ ընչի իմ Ֆարաջէն կը թալի։

Գնրթայ. ուր ձին կը բանի, կաշկի, ձիու ոտք կը բացի. Կիչ-կայ. կը տեսնայ Աստըծու խըրամանքով քանց տաշնէ լաւ իլէ։

Աստուծոյ փառք կուտայ.—«փառք քեզ Աստուած, առըւնս էլ իմ ձիու ոտք սաղացաւ»։ Կըքաշի բիրի թիմարմ կընայ, կը խեծնի քշի էլի։ Ձին Աստըծու խըրամանքով լէզու կըլնի, կասի.—Մամօ, քու աչքեր խփի, Աստըծու խըրամանքով տանեմ, Ջզիրա խանեմ դուս։

Ջզիրա Բէքիրի Ավանի քեօր մը կըլնի, անուն Զինէ կըլնի. ռամեար կըլնի, ռամ կը թալի. կասի.—Քեառասուն աւուր մէջ Մամօն պիտի գեայ, ըստե ըլնի դուս։

Քեառասուն կանձ բանբակ կառնի, կերթայ վեր յաղբրին, օր մէկ կանձ կը մանի, կը կծկի, իրիկուն կուգեայ տուն։ Քեառասուն օր էդտեղ յաղբրի վերէն բալլամիս կանի ինոր։

Էդ թօ մնայ էդտեղ։ Մամօն շատ քիչ Աստուած գիտի, քեանիմ կը քշի կերթայ մըջ մէ դաշտի. կիչկայ մէկ լապստրակ դէմէն կը փախնի. լապստըրակ կը վազնի, ձին ուր ճէֆով կը քշի, ձեռ կը թալի, լապստրակ կը բռնի դնի ուր գոդ։ Շատ բամաէա կանի. մէկ քիչ տեղ, Աստուած գիտի քեանիմ կերթայ, էդ ճայվան շատ կը բէզրի էդուր ձեռ։ Մամօն կասի.—Էս ճայվան շուտ թալիմ էրթայ, մեղք ի։

Բիրի ուր ձեռաց ալճախ էդ ճայվնի չէօիս կը չինի, կը դնի ուր ծոց. կը քշի, կինի մէջ մէ դուրան մեծ դաշտի, մէջ խաճ չէրևայ, վիրև մէկ Աստուած կերևայ։

Էդտեղ խաղ կասի.—

| | |
|---|---|
| Խոզk խրապ կեա, չի դաշտկի խըրա խալի, | Աստուած աւիրէ, ինչ դաշտ է անբնակ, |
| Նա չօրկարիկ, նա ճավար, նա գազի. | Ո՛չ լծքուոր կայ, ոչ օգնութիւն, ոչ ձայն մը, |
| Մըն բըգրա պըրսփեարի, | Ես տնէի հարցում. |
| Ջզիրի Բօթան մա ֆի յալի: | Ջզիր ու Բօթան ո՞ր կողմ մնաց։ |

Քշի, կերթայ մէկ վեցքաւորի ըռասք կուգեայ, բարև կանի, կասի.—Վեցքաւոր, քեզնից բան մը պիտի խարցնեմ։

Վեցքաւոր կասի.—Սամ տեսնամ ինչ ի կը խարցնես։

—Ջզիր որտեղն ի գեալօ, չեմ գիտնայ։

Կասի.—Ընչի, դու մեր երկրէն չես։ Կասի.—Ես ղարիբ եմ։

Կասի.—Ջզիր կեօ ես նոր ակռաստ կերայ, մի ցանք էլ վարեր եմ. էս դար ընցնիս, Ջզիրն ա։

Բէքրի Ավանի քեօր քեառասուն օր բմըմաւ, սաաց ուր ռամին.—Ռամ, ինչու սուտ սասացիր. չէ՞ դու կասիր, քեառասուն օր բմըմի Մամօն պտի գեայ, ըստի ըլնի դուս։

Կը բռնի ռամ կը կտրի։

Ռահիմ օղորթ էր, ինքան վաղք սուտ կը խօսայ, էնքան վաղք որ Մամէն վեցքաւորի մօտ կը կայնի կը խօսա։

Կը բռնի ռամ կը կտրի թալի ջուր։

Կեսնի որ էրթայ թեխ ուր տուն, Մամօն էդ դարից կըլնի դուս. Ջինէն կիչկայ որ Մամէն էլաւ դուս, կասի. — Վա՛յ, Մամօն էկաւ, ես իմ ռամ կտրեցի, ես մկայ ի՞նչ անեմ։

Դարձաւ գնաց վեր յաղբրին նստաւ, մահանայ արեց, վըր յաղբրին ձեռքեր լուաց։

Մամօն էկաւ, բարև տուեց։ Բարև վերցըրց. ասաց.—

| | |
|---|---|
| Մամó, կոռk Ալ փաշայ — փաշայk | Մամօն Ալ փաշայի տղէն է,— |
| Մուխիր Զkմրնk, | Մուխիր Զէմինի փաշային, |
| Ukar ukarkմրն ukar ճաւk մրն pk: | Իմ գլխուն, իմ աչքին եկար։ |

Էնտեղ Մամօն մնաց չուար, ասաց. — Ջանըմ, էս ինչպէս գիտէր իմ անուն Մամօ էր, իմ խօր անուն Ալ փաշա էր:

Ջինէն ասաց. — Ի՞նչ իս կայներ էս, մնացեր իս չուար. չէ՞ ես Ջինէն եմ, դու ընձի չե՞ս ճանչնար, քեառասուն օր էսա տեղքե խամար արևու դէմ սևացիր եմ, քե կիչկամ:

Մամօն էդտեղ ասաց. — Որ Ջինէն էս ըլնի, էս ընձի պէտք չի. ես էսի ոչ կը տանեմ։

—Մամó, ասաց. դու բեբաղդ ես, չէ՞ ես Ջինէն եմ, ես ու դու գիշեր չէկա՞նք մօտ յիրար, մատնիք մէկ մէկի հետ չի փոխե՞նք։

Մամօն ասաց.—Էսոր նման աղջիկ չիկէ՞ր, որ իմ խէր ժողվեց բիրեց, ես չհաւնայ. ընձի պէտք չի, ես պտի դառնամ։

Դարձաւ յետ, էկաւ մէքիչ տեղ, Աստըծու խրամանքով ձիւն լիզու էլաւ, խաղով ասաց Մամօյին.—

| | |
|---|---|
| Հkark Մամо, sիւ շաւի դին ի, | Ա՛յ Մամօ, դու խենթ տղայ ես, |
| Ukarmaush, kav Նա kav Զին ա. | Խեկք չունիս, այս այն Ջինը չէ. |
| Ճավա խուշկա Բkքիրի Ավան ա. | Բէքիրի Ավանի քոյրն է այս, |
| Գkալըf շարան ռkվի ukar ռիյա | Շատ անգամ ճամբորդը ճամբի վրայէն |
| Վաջkառանեիյա բkմըրագա: | Վերադարձուցեր է անմուրազ։ |

Մէկ էլ կը դառնայ յետ Մամօն, կը քշի ձին, կը լցի ձին որ մօտէն ընցնի սաfի, Ջինէն կերթայ, զինք կը թալի էդոր ձիու վիզ ղայիմ կը բռնի։ Մամօն կասի.—Աստըծու սիրուն, ընձի թո՛ղ, ես էրթամ, ինչ կուզես ընձանից, ամօթ ա, քաղքից կիրևայ, մկայ կասեն թէ «էգա fուլՖար ինչո՞ւ ա զինք թալէ ձիու վիզ»։

Ասաց.—Չէ՛, չիմ թողի, արի, Աստըծու դէմ ղrար արա՛, սաս որ Ջինէն բիրի ըստեղէն տարայ, ես քե կանեմ ճարի։ Ես Ջինէի ճարին եմ,

ընձի ճարութիւնից խանեւր ա. թէ ընձի տանես կանես ճարի, քու ձին կը թողեմ։

Ասաց.—Աստըծու դէմ ղրար ըլնի, քե անեմ ճարի:

Ձին կը թողի. էնի կը քշի չատ քիչ Աստուած գիտի, քեանի կուգեայ, կասի.—Ի՞նչխ ես էն աղջկից չի խարցուցի ինոնց քաղքի Նստիլ ի՞նչխ էր, կայնիլ ի՞նչխ էր. որտեղ էղնի, որտեղ չեղնի։ Կը քշեմ Աստըծու դէմ ղրար ըլնի, իմ ձին ուրտեղ կայնաւ, էնտեղ կիջնեմ։

Կը քշի, ձին կիրթայ Արֆօ ճագօ, Ղարաթաժտինի դուռ կը կայնի։ Ղարաթաժտինի քօշկուսարէն ինչխ որ մէ օրօրոց կօրօրուէր ինոր ձիու ոտքի դէմ կերթայ, կուգեայ:

Ձինէի մեծ քեօր Սըթին—Ղարաթաժտինի կնիկ ասաց.—Զավուշ Մէրտին, էլի դուս, տես, ի՞նչ մարդ ա:

Զավուշ գնաց. իչկաց մէ ձիաւոր ինչօր ճրագի փէլքս կըտայ, շըչկռաւ, մնաց. կայնաւ էլ չի գնաց։ 1—2 սահաթ մնաց վըր ձիուն Մամէն. Սըթին մէ չավուշ էլ օրողկեց, ասաց. — Տեօէք, ի՞նչ էլաւ չէկաւ։

Էն էլ գնաց, ձիաւորին իչկաց. կայնաւ, մնաց։

Սըթին զինք էլաւ գնաց. իչկաց, կեօ. մէկ ձիաւոր կայներ ա, չուտես, չի խմես թամաշա անես ձիաւորին։

Գնաց։ յիջուց տակ, տարաւ յիւր յօսէն, Նստաւ մի եան:

Սըթին ձեռ կապեց, կայնաւ դէմ։

Ասաց.—Ընչի՞ չիս գեայ Նստի։

Ասաց. — Ես ի՞նչպէս գեամ Նստիմ. ես խըրղի կնիկ. դու էլի տղայ, ես ի՞նչ գիտեմ, բալքի իմ իրիկ ղայիլ ըլնի, բալքի իմ տէգր ղայիլ չէլաւ։

Ասաց. — Է՞դ էլ կայ ձեր երկիրը. իմ ձին դուս քեաշի, ես կերթամ։

Սըթին էկաւ, Նստաւ մի եան, էն Նստաւ մի եան, չայ դրին։

Արֆան ճագօն, Ղարաթաժտին տուն չին. Միր Սեւոյնի դիւանն ին. մի սահաթ որ ինոնք դայ չէլնին, իրար կըսպանեն։ Սըթին էլաւ ջուղաբ օրողկեց. ասաց.—Արֆան ճագօն, Ղարաթաժտին թող չի դադրին, գեան, ղօնախ ունինք, տխնան, էրթան։

Զավուշ գնաց դիւնի դուռ կայնաւ։

Ղարաթաժտին ասաց.—Ա՛յ չավուշ, Աստուած խէրն անի։

Ասաց.—Փառք Աստծու խէրն ի, Սուին ընձի օրօղկեց ձիրիուն հալ հալ-բաթ չղադրին գեան. ինոնց մէ ղօնախ իկե տեսնին, էրթան.

Ասաց.—Զավուշ, ընկնայ ղօնախ կըգէր՝ Սըթին կը համբխէր, էդ մէկ ղօնախ իկե՝ չի կծնայ համբխի, օղորկէ միր խուն, չի գիտէ

որ մենք չենք կարայ դիվճից գեայ. գնա՛ ասա. թէ պարտքըտէր ա՝ փող կուզի, թօ տայ, ճամբխի։ Զավուc դարձաւ, գնաց։

Սըթին ասաց.—Ա՛յ չավուc, ինչո՞ւ չեկան։

Զավուc ասաց.—Չէկան։

Ասաց.—Զավուc, ինչ կասես, ես չեմ լսնայ, արի՛ մօտ, ասա՛։

Խաբեց, բերից մօտ, մէկ փէտ տուեց մէջ գլխուն։

Ասաց.—Գնա՛, ասա. Արֆան Ճագան, Ղարաթաժարին հալ-հալբաբ թօ գեան, չի դադրին. Յա ըսկոն կօնախ ինոնց տուն էկե, Յա Միր Սետինի տուն իկե, Յա էլ ինոնց փողին հաւջա ի. չի դադրին, հալ-հալբաբ գեան։

Զավուc մէկ էլ գնաց. Ղարաթաժարին տեսաւ չավուcի գլուխ արուն ի, ասաց. —Ա՛յ չավուc, Աստուած խէրն անի, ինչ ա քու գլուխ։

Ասաց. — Աստուած ձեր տուն աւիրի, ձեր Սըթուն էլ. գարկե իմ գլօխ կոտրե, կասի. «Գնա՛ Ղարաթաժարինին ասա, Յա պարտքըտէր ա, Յա փող կուզի, Յա էլ ինոնց բանէն մալխըէջ ի, Յա ինոնց տուն ըսկուն կօնախ իկե, Յա էլ Միր Սետինի տուն։

Ղարաթաժարին ասաց.—Հալբաբ մի բան կայ, էթանք գեանք։

Միր Սետին ասաց.—Չի՛ հանգըստնաք, չուտ դըրվէք, գեաք, որ դու չըլնէք, իմ դիւան յերար կոպանին, ձեռնով իմ դիվան կայնե։

Էլան, խաբր ուղեցին, էկան թեխ ուրենց տունը։

Բարև տուեցին, բարև առեց Մամէն, էլաւ կայնաւ ցէմներ։

Մամօն չատ սիրուն էր, էղոնք չատ հազ էրին մօտէն. էրեք օր, էրեք գիշեր քշիկ դրեցին Լնոր աcխից, ոչ գիտցան գիշեր էր, ոչ գիտցան ցերէկ էր. իրեք օր մնացին սոված, խաց չէկաւ դիվան։

Սըթին խաց կը չինէր, խա մկայ կդան, կտանին, չէին գեար։

Մամօն ասաց.—Չի գլնամ, ձեր երկրի տաբն ի թէ չէ։

Ասաց.—Ի՞նչպէսդ։

Մենք իրեք օր սոված-անօթի, խաց չի գեայ դիվան։

Ասաց. —Ինչո՞ւ, մենք գիտենք դու նոր նատեր ես, ջիկարա կպուցեր ինք, հալա չենք քեաշեր։

Ասաց.—Չէ՛, յէսօր իրեք օր, իրեք գիշեր սոված ենք։

Ասաց —Գեացէք, Սըթու մօտէն խարցուցէք։

Սըթին ասաց. — Խա՛, յէսօր իրեք օր է, ես խաց կը չինեմ, դու խաց չէք տանիր դիվան։

Խայ քեաշիցին, խայ կերան, էլան քշիքն առեցին, գեացին fbocկի տանիր։ Զէնձնոց գնաց ըռեւաւ Ձինէի տէրանջ. առեցին.— Գիտես, ինչ կայ. մէկ կօնախ էկեր ա Արֆանի Ճագանի, Ղարաթաժարինի տուն, էնոնք fooկի տանիս քշիկ խաղցին։

Ձինէի, ասեմ. fooկ բանձր ի, Ղարաթաժարինի չածրը Ձինէն

փանճջարից կիչկայ, կը տեռնայ չորսով քչիկ կը խաղան։ Մամօյի քեամակ ինե էր, չի ճանչցաւ, ասաց.—Ես ինչ անեմ, կըլնի որ Մամօն ըլնի, քեամակ թեխ ընձի ի. ես պտի մէկ խաղ ասեմ, Մամօն ըլնի՝ ընձի ջուաբ կըտայ։

| | |
|---|---|
| Արծօ, ճագօ՝ Ղարաբաժօիճ հaruk բruճ ա՝ | Արֆօն, Ճագօն, Ղարաթաժաին երեք եղբայր են, |
| Դarfեarըճ fօչկ սarա խաճըմաճ ա՝ | Նլան քօշկ ու սարի տանիքը, |
| Ջավk ըը օrpk Մամk մըճի Աչաճ ա: | Այն մէջտեղին իմ Ալանի Մամէն է։ |

Որ կասի, Մամէն կը դառնայ, կիչկայ. Ջինէն գլուխ թալի դուս, քամաշայ կանի. որ տեսաւ խելքը գլխէն գնաց, առեց խաղ ասել.—

| | |
|---|---|
| Դեarfեarի ըը փkաճչkurk՝ Ջիճա pաsկu ա՝ | Դուրս եկաւ լուսամուտը, իմ փարթամ Ջինէն է, |
| Դայըր սkarի չaf fեամar ա՝ | Գլխին փուշի, մէջքին քամար է. |
| Ճավk Մամօ pու օarի՝ եfը մա հավա՝ եfը մա karskյա: | Մամօյի աչքեր մթնեցաւ, մէկը մնաց երկինք, միւսը գետին։ |

Աղբէրներ իչկացին իրարու էրես, ասեցին. — Ջանըմ, իսանք իրար ինչ կը ճանչնային, իրար խաղ ասեցին։

Ջինէն տեսաւ որ Մամօն էր, գնաց, ընկեաւ ուր խօր քաշ քեփսիներ ժողվեց, ինչքան ալիճօյիճ կէր ժողվեց, գնաց, առեց մշակներաց յառէջ, գնաց վեր յաղբրին, էկաւ իզոնց fօcկի դէմէն ընցաւ:

Մամօն տեսաւ առաւ խաղ ասել.—

| | |
|---|---|
| Հark pրաճօ՝ ռա դիր դարբազ pու pազրկեաճըf միrաճk. | Ա՛յ եղբայրներ, դուք տեսա՞ք իշխանի կարաւանն անցաւ, |
| Բեaւըfի ռա pըճճա pու՝ pը չուրյա պkչիյա pազրկաճի pաsիճա փաչ ա: | Ձեզնից մէկը չկա՞ր, որ գնար կարաւանի դէմ՝ և առնէր մի նշանաքան։ |

Էնտեղ Ճաղօն կը նեղանայ, կասի.—

| | |
|---|---|
| Ջավ հայա pազրկաճk միrաճ ա՝ | Այն որ կայ իշխանի կարավանն է, |
| Դեաւk pու fեասի pիւճիճ ա՝ | Երբեք մէկու բերանը չէ, |
| Հառայ պkչիյա վի pազրկաճk՝ pըսաիճայ փաչա: | Երթայ դէմ այն կարավանի և առնի նշանաքան։ |

Մամօն կասի. — Ի՞նչ կուտաք, ես էրթամ. իմ ձիուց չիջնեմ տակ, խառնեմ աղբըրի վերէն, մի նշան առնեմ, դառնամ։

Կասեն. — Գնա՛, ինչ ուզես, կուտանք, որ մի նշան բերես։ Կասին մաքի մէջ թ». էրթայ, Ջինէն խայտառակ կանի:

Մամօն կըլնի, կերթայ թեխ ուր Բօրը, կասի.—

| | |
|---|---|
| Հkurk չավուշօ, Bork մըն դարինմ դkարա, | Ա՛յ չաւուշ, իմ Բօրը հանէ դուրս, |
| Ձk բրխա զինա զարա, | Վրան դիր ոսկի թամբը, |
| Մըն հաքա սkար կանիյա Զամրիկ սkանkարա: | Ես գնամ կռուի մինչև Զամպիլի աղբիւրի գլուխ։ |

Էնտեղ ձին քաշին դուս. կը խեծնի, կը քշի կերթայ վեր կաղըրին, էնտեղ խաղ կասի.—

| | |
|---|---|
| Էավk զաւա Մամօ Զինk կրի սլավա, | Այն ժամանակ որ Մամօն Զինէին բարև տուեց, |
| Զինk լkարամարա ալkլըմ սալամ վա դայա: | Զինէն շնորհքով անոր բարևը առաւ. |
| —Մամօ, կոռk Ալ փաշայ, փաշայk Մուխիր Զkմինի, | — Մամօ, Ալ փաշայի տղայ, Մուխիր Զէմինի փաշային, |
| Սkար սkարk մըն բk, սkար դու. նաւան: | Իմ գլխուս վրան եկար և երկու աչքերուս։ |

Զինէն կասի.—Զիուց իջի՛ տակ, իրար տեսանք։

Կասի.—Չէ, ես Աստըծու դէմ դրար եմ որ Ղարաթաժարինի համար, ես քեզնից կուզեմ մի փաչ. դառնամ յետ։

Էնտեղ խաղով կասի Զինէն,—

| | |
|---|---|
| Գավա Զինk դkասբ բրի չkբա, | Այն ժամանակ Զինէն ձեռ տարաւ գրպանը, |
| Դkարխըսօըբու օըլըամ զkռինա, | Հանեց հմայող ոսկին, |
| Հանk նշանա դա ժը մըն դավիյա: | Առ այն նշան, որ դու ինձմէ կը պահանջես։ |

Կառնի, կը դառնայ յետ. կուգեայ տանի դնի Արֆօ, Ճագօ, Ղարաթաժարինի առջև. որ կը դնի առջևնիր, ինոնց կը զարմանան, կասին.—Խօնք ինչպէս իրար կը ճանչնան. բան չիկէր. համա ոսկէք պըտի տէր։

Բերին իրեք ախպէրով ռեվր արեցին խըտ իրար. ինչպէստ անենք, ինչպէստ չանենք։ Մեծ ախպէր ասեց.—Խաղմ պտի ասեմ, որ իմ ախպէրներ ասըլգադա էլնին, իմ իտև կուգեան։

| | |
|---|---|
| Էամ հար սk բրան ա հասսկ քումkր, | Մենք երեք եղբայր մեր ձիերը կարմիր. |
| Էամ նավա դընk դը ցkառըն դուրkր, | Մենք աշխարհի մէջ ման կը գանք մէկ. |
| Էամk Մամk Ալան ըռա բինն դըվkր: | Մենք Մամէի Ալանի համար սրտի ուզածը բերենք։ |

Արֆօն ասաց.—

| | |
|---|---|
| Էամ հանայ հասիկ բրայ, | Մենք ունինք սև ձիեր, |
| Նաւա դընէ դը գեառն դիր բարնաշ, | Աշխարհի մէջ ման կըգանք տըղամայդութիւնով. |
| Մամէ Ալյան բռա թիճըն եա ճնայաշ։ | Մամէի Ալանի համար կը բերինք շատ լաւ ափրանքը. |

Ճաղօն, որ Զինէի նշանածն էր, ասաց.—

| | |
|---|---|
| Էամ հանա հասիկ բօզ, | Մենք ունինք բօզ ձիեր, |
| Էամ դը գեառըն նաւա դընէ դիր ու բր բօզ, | Աշխարհի մէջ ման կը գանք ամպէ փոշիով. |
| Մալխըրապ, հուն չմա դիյար նակըն, | Տնաւերներ, ինչո՞ւ արդար չէք ասեր, |
| Զինը, Մամօ բռա բրընն մըրբարէ պիրօզ: | Զինէն Մամօյի համար անենք շնորհաւոր. |

Նոր էնտեղ իրեք ախպէրով իրենց սրտով տուեցին Զինէն Մամօյին։ Քօշկի տանից ուրենց այինօյին վերցին,, գնացին տուն։

Ղարաթաժարին ասաց. — Էս ինչ էլաւ, էս տաս տասաւերկու օր է, Միր Սեւտինի դիվնից եկեր ենք, էլնինք էրթանք, տեսնանք ինչպէստ էլաւ. մկայ իրար սպանած ա:

Իրեք ախպէրով էլան, գնացին դիւան, Մամօն թողեցին տուն։ Միր Սեւտին խնտնիր շատ կոռւաւ, ասաց.

—Ղարաթաժարին, էլ էդպէստ կնախ չէր ելի, խըրչտակ էր, ինչ էր, ուշացաք էսքան։

—Ջանըմ, ասաց. էնպէս կնախ նա՛ մեր տուն էր եկե, նա՛ քու խոր տուն. եսկի էնպէս կնախ աշխրքի մէջ չիկայ։

Ասաց.—Որ էդպէստ ի, օրողկէք որ գեայ, տեսնամ ինչ բավուր մարդ ա։

Ասաց.—Չավուշ, գնա, տաս Աըթուն, որ Մամօն ընի գեայ Միր Սեւտինի դիվան, Միր Սեւտին ինոր տեսնայ։

Չավուշ գնաց.—Չավուշ, Աստուած խեր անի, ինչի՞ ես եկեր։

—Աըթի, Ղարաթաժարին ասեր ա, թող ընի գեայ Միր Սեւտինի դիւան, Միր Սեւտին ինոր տեսնայ։

Ասաց.—Ի՞նչ կասես, արև մօտ, ասա, ես չեմ լնայ։

Աըթին մէ փէտ պանից մէջ գլխուն, գլօխ կոտրեց, ասաց.

—Գէ, գնա, Ղարաթաժարինին կասես, Միր Սեւտինին կասես, որ Մամօն քու լայիղ չի, որ ըսկնայ ընի, գեայ. գնա, տաս որ, ըլնին ձի-ձիաւորով, ղօշունով, դօճուլով, ճէծ աներով գեան իմ դուռն դէմ, որ Մամօն ընի, խեծնի, ինի մէջքընիր, էրթայ Միր Սեւտինի դիվան, թօ Միր Սեւտին տեսնայ։

Չավուշ գնաց. դռան դէմ կայնաւ։

Ասաց.—Ա՛յ չավուշ, էդ ինչ արուն ա քու գլխէն հուգեայ։

Ասաց.— Սըթլին զարկեր ա, կասի. «Մամօն լայիղ չէ քու խետ գեայ» ասաց. ասա, Ճոզօն, Արֆօն, Ղարաթաժարին իրեքավ խեծնին խետ Միր Սևտինին, ղօշումով, զրհօլով, ճէֆ անելով գեան, դռան դէմ կայնին, Մամօն խեծնի, ինի մէջքներ. էրթայ Միր Սևտինի դիվան, թօ տեսնայ:

Ղարաթաժարին ասաց.— Միր Սևտին, Սըթու խօսքն ի. էլ՛, խեծնենք ձի-ձիաւորով, էրթանք դռան դէմ.

Էլան. ղօշում արեցին, ղօճուլ բերեցին, գնացին Ղարաթաժարինի դուռ կայնան: Մամօն Բօրը հանեց դուս, խեծաւ ընկեաւ մէջքըներ, խուրջի ոսկին թալեց բարկ, կնոեղէն ոսկի ցըռւեց, ջուր գնաց Միր Սևտինի դռան դէմ. իջաւ, գնաց դիվան:

Գնացին էգտեղ նստան. րեըին էլի քշիկ դրեցին, խաղցին.

Իրեք օր, իրեք գիշեր էլի սոված խաղցին.

Մամօն ասաց.— Միր Սևտին, չեմ գիտեր ձեր երկրի տապն ի.

Ասաց.— Ընչի՞. Ասաց.— Մենք իրեք օր սոված մնանք.

Ասաց.— Ընչի՞. էսա մի սահար ի կը խաղանք.

Ասաց.— Չէ: Ասաց.— Գնացէք, Զինէից հարցուցէք.

Զինէն ասաց.— Խա՛, իրեք օր է հաց կը չինեմ, դիվան չեք տանեն:

Ասաց.— Դէ՛, հաց քաշէք, ուտենք.

Հաց քաշեցին, կերան, պրծան. խաղ վերցըցին:

Միր Սևտին ասաց.— Գնացէք, Զինէին ասէք. թօ գեայ չայ չինի, խմենք. Զինէն էկաւ չայ դրեց.

Ինչ որ դեղ-դեղրունք կէր՝ սզկեց, վերցուց մօ զինք. Էկաւ չայ ցրուեց դիվանին. չայ դիվնի գլխէն տուեց, ջուր սրէն էկաւ Մամօյին: հարիքեան լցեց տուեց Մամօյին. Զինէն իշկաց Մամօյին, Մամօն իշկաց Զինէին, երկսով ծծղացին:

Բաքօն ասաց.— Միր Սևտին, տեսա՞ր Զինէն, իշկաց Մամօյի էրես, ծծղաց. Բաքօն դահա ուր խօսք չէր թմիրէ, Մամօն հանեց աղըրխէ ջանավարն, որ մըջ ճամբուն չինեեր էր լապտարակի նման, թալեց դիվնի մէջ, ամեն ծծղացին.

Միր Սևտին ասաց.— Տնաւեր Բաքօ, Մամօն ու Զինէն վեր էն ճայվրնին ծծղացին, վեր իրարու չի ծծղացին.

Բաքօն ասաց.— Միր Սևտին, ես ինոնց փանթ կը հանեմ, մըկայ որ Զինէն բաս կը լցի, կտայ Մամօյին, դու ձեռնէն առ, խմի:

Զինէն, սրէն էկաւ որ տէր Մամօյին.

Ասաց.— Մամօ՛, էդ կթխէն տուր ձի, մի՛ խմեր. Զեռնէն առեց, խմեց.

Արցունք աչքերէն թալեց. լակուն թեզ էր.

Բաքօն ասաց.— Միր Սևտին, ինչպէս էր, իմ խօսքն էր թէ չէ.

Միր Սևտին իմացաւ որ դեղ-դեղրուն-ք լցեր ա մէջ. բա ուր քուրոջ փոնթ չի խանեց դուս. ասաց. — Ի՞նչ կէր մէջ, էն էլ ինոր նման չայ:

Բաքօն ասաց.—Դէ՛, կայնի, ես ինոնց փութ կը խանեմ մէկայ:

—Միր Սևտին, ասաց Բաքօն էլման. կայնենք կեալա լավըժ, դիվնի տըկէն սըրով խաղ ասենք. չու գեայ դիվնից ըլնի դուս:

Ամեկ վեր ուր եարոջ խաղ կասի:

Միր Սևտին ասաց.—Բաքօ, ՔԷՖ-ուրախութեն արէք, խաղ ասէք:

Դիվան յըմեն խաղ ասեցին, սըրէն էկաւ Մամոյին. ինչ արեցին չարեցին Մամօն չասաց: Բաքօն ասաց. — Մի՛ զօռէք Մամոյին, ես Մամոյի տեղ կասեմ:

Մամօն ասաց. — Բաքօ, քու գլխուն մեռնեմ, սամ, բալքի իմ եախեն փրցուցես իդոնց մօտէն:

Բաքօն առեց խաղ ասել.—

| | |
|---|---|
| Հkարk միrk մըն, kարա Մամk kաւ kար ա, | Ա՛յ իշխանս, Մամոյի սիրական այն սիրականն է, |
| Արաբkալ kա, լեւ ըռաշ ա. | Արաբ է, չըթունքները սև է. |
| Մըն բը ճաւk խոա դիբը բու՝ | Ես իմ աչքով տեսած եմ. |
| Նավա բաղա Ենգիլարիյա դkաւ լըվան դըպու: | Գնչուներու թաղի մէջ թան կը ժողվէր: |
| Որ էդպէս ասաց, Մամոյից | Շատ բռնեց, վրուց խաղ ասել. |
| —Բkիրօ՝ Տkա դըրաւk կըր նավա ըռkյա. | —Ով՛ Բէքիր, դու սուտ ասեցիր քու մօրուքի մէջ. |
| Եարա Մամk kավ kարա, | Մամոյի սիրականը այն սիրականն է, |
| Եարա Մամk ճուրիյա. | Մամոյի սիրականը դրախտի հրեշտակ է. |
| Հուրի նաբու՝ ճուսնի չամաշ ա. | Հուրի չէր, շատ սիրուն է. |
| Մըն բըժարըր բու նավա սkան սի ճուրիյան ա, | Ես ջոկած եմ հարիւր երեսուն հուրիի մէջէն. |
| Տkա դրավk կըրը բու նավա ռու ըըմբkյան ա: | Դու սուտ ասացիր քու մօրուքի և պեխերու մէջ: |
| Եարա Մամk kավ kար ա, | Մամոյի սիրականը այն սիրականն է. |
| Եարա Մամk խաբուն Ջին ա. | Մամոյի սիրականը խաթուն Ջինէն է, |
| Խուշկա Միր Սևեյին ա, դիզա Միր Թաժեյին ա, | Միր Սևտինի քույրն է,—Միր Թաժտինի աղջիկն է, |
| Նաւիա Միր Աղըլաս ա, | Միր Աղլասի թոռն է. |
| Վkըլը շանա շինա ըռkնգին ա: | Անտ քօշկ ու պալատի մէջն է: |

Էնտեղ որ էգենց տսաց, Միր Սևտինից չատ բաներ, արայց խաղ ասել.

Գեալի Զյօեաճ, ն ծիր,
Էավի Ճակեաւի չի զօր, չի Ճա զօր.
Խաճչալըկի Ճիրզդայի Ճաւ դըլ Ճը-
Ճաւk մըճ դա:

Ո՛վ ծէլօներ, դուք տեսաք,
Նա ինչ տսաց, ինչ չասաց.
Մի ջահվարով դաչոյն դարկեց
իմ սրտի մէջ, իմ թոքի մէջ։

Որ էղենց կասի Միր Սևտին, ըղոնք խաճչալներ կը քեաչին կայնեն. Մամօն կը վերցի խաղ ասել.

Գավա Միr Սեւցիճ զօ թըմամ խա-
pkar ա,
Մամk pkarի Ճամիյա ռաբու փkյա.
Խաճչալ լը դkաup ա,
Մըճ մըճճապեկ խոsk Ճայա,
Հաr թու fեասի թիւճիճ ա:

Այն ժամանակ որ Միր Սևտին
այդ խօսքն տսաց,
Ամենից առաջ Մամօն ելաւ,
կանգնեց.
Դաչոյնը ձեռքին է.
—Ես մէկ Աստուծուց երկիւղ
ունիմ,
Այլ ոչ ոքից չունիմ։

Նոր նստան, Ղորսիթամտին խաղ տսաց.

Միrk մըճօ, Ճաթա Ճուճ Մամk բը-
rայk մա բըկոժըճ,
Էամk ukաsk ռա բըկոժըճ:

Իմ միրս, մինչև դու իմ եղբայր
Մամօն սպանէք,
Մենք ձեզնէ հարիւր կսպանենք։

Էս խետ Արֆօն կասի.—

Հkաrk միrk մըճ, Ճուճ Ճաթա Մա-
մk թըմամ կըճ,
Էամk ukաsk ռա բըկոժըճ, ukաsk
ռա բըկըrըճ,
Օkաsk ռա pkմամ կըճ.
Հkօմkըի կrաճ դkաup մա բը
թիճըճ:

Ա՛յ իմ միրս, մինչև դու Մամօն
վերջացնէք,
Մենք ձեզմէ հարիւրը պիտի
սպանենք, հարիւրն ալ բռնենք,
Հարիւրն ալ կը վերջացնենք։
Աստուծոյ մեծ շնորհքը մեր
ձեռքով կը տեսնէք։

Ծոզօն կասի.—

Հkաrk Միrk մըճ, Ճուճ Ճաթա Մա-
մk թrիճsաr կըճ,
Էամk ukաsk ռա բըկոժըճ, ukաsk
ռա բըկըrըճ,

Ա՛յ Միրս, մինչև դու Մամօն
վիրաւորէք,
Մենք ձեզմէ հարիւրը պիտի
սպանենք, հարիւրն ալ բռնենք։

Ընդոնք ըսգըռւնս Ճաrfաu ուր տեղ պաղան, նստան։

Էլան իրեք ախպէրով Մամօյի թևէն քեաշեցին. — Բօլ էլաւ, տսեցին. էրթանք, Բաքօն ընկև քիւ իտև, դուն էլ քիւ խելք թողեր ես, չես գիտեր, ինչ կասես, ինչ չես ասիր։

Էլան կայնան որ էրթան տուն, Միր Սևտին չի թողեց, դի-վաճ լըմեն ցըվըրան. մնացին իդոնք չորսով։

Ղարաթաժալին վըրուց. — Միր Սեւոյին, դիւանս, ինչ կայ մէջ մեզի. մինք յօժար կամքով Զինէն տուեր ենք Մամոյին։

Ասաց. — Ինչպէս դու տուեր էք, դու տուեր էք, ես չեմ ի-տամ. ես ձեր մարդութին, ձեր ակիդութեն տեսայ, էն աքօմ տը-ւեցի ձեզի. որ էնպէս ա՝ էն էլ թօ գեայ. էթանք ռավէ խազալա, ինոր մարդութեն տեսնամ. դու տուեր էք, ես էլ կըտամ։

Ասեցին.—Առաւօտուն բասալիր տես, էթանք ինչ էն քեանց մեզի էլ մարդ ա։

Միր Սեւոյին առեց ճեվըր անել, ասաց. Էնոր լայեղին բան չի կայ որ տամ, առաւօտուն կը կանչեմ, իմ միրութեն կուտամ։

Զէն գնաց, ընկաւ Զինէի ոտանջ, ասաց.—Մամօ ես գիտեմ, իմ խէր քեզ կը կանչի, կը տանի դիւան. ինչ կուտայ՝ չես առնի. ուր միրութին էլ կուտայ, չես առնի, մի չավուշութեն կառնիս, ես դու իրար տեսնանք բօլ ի։

Միր Սեւոյին կանչեց առաւօտ տարաւ ուր դիւան, ասաց.

—Մամօ, ես կիչկամ, քու լայեղին բան չի կայ տամ, ոսկի տամ. դու էն տեղէն ոսկի ես ցրվե, չուր ինկե իմ տուն, արե իմ միրութեն կուտամ՝ նստի իմ տեղ միրութեն արա։

Ասաց.—Զէ քու միրութեն քե մըմբարաք ըլնի. քու ամէն բան էլ քե մըմբարաք ըլնի. ես, չավուշութեն կուզեմ։

Ղարաթաժոյինի, Արֆան, Հագանին չառ բռնեց, ասին.—Տնա-ւէրին քեանի կը մեծացնենք. էնի հա ուր կը բուճուրացըցի, էնի միրութեն կուտա, էնի արաց ուր չավուշ։

Ասաց Ղարաթաժոյին.—Միր, գիտես Մամէն ինչ ապով ասաց, «ես կըլնեմ չավուշ. կասի ես կըլնեմ չավուշներաց գլխաւոր-բաշ չավուշ։

Բերին, արին բաշ չավուշ։

Ուրենց բաքշիր արեցին, առաւօտուն էրթան ռավայ խա-զալայ. Զինէն գեաղոյիկ Մամօյի տեսաւ.—Մամօ, ասաց. առաւօ-տուն քեզի կը տանեն ռավա խազալա. ինչ կանեն, չանեն, քեզի կը թալեն խնամողութեն, չես էրթայ, դու էրթաս եօթն օր եօթն գիշեր կը մնաս էնտեղ, չես իգեայ, ես քո ապով խելք կը թալեմ, խելք չի մնա իմ գլօխ։

Առաւօտուն, ասին.—Մամօ, Միր Սեւոյին օրողկերի քու խետ. կասի. «թօ գեայ էթանք ռավա խազալայ»։

Ասաց.—Ես անճար խիւանդ եմ, չեմ կանայ։

Աղբէրներ ինչ ճար արեցին, չի գնաց։

Ղարաթաժոյին ասաց.—Միր Սեւոյին. զարար չիկայ, սըրուն չէլաւ, մէկէլ դըրուն կէրթանք. մինք մեր թաւալը արերենք. մինք էրթանք։

Դօշում արեցին. ասկեար արեցին, յետոյ գնացին։ Մամօն մնաց դիւանխանէն պարիսպի։ Զինէն էկաւ մօ Մամօն, ձեռ թալին երար վզով. ուրախութեն արին։

Զինէն ասաց.—Մամօ, էստեղ խոլվաթ չի, կուգեան, մե կը տեսնան. ամօթ ա, էթանք բաղէ թօւկրի. էնտեղ եօթն օր չը գեանք, մե ուրախութեն քէֆ կանենք։

Էնոնք գնացին ռավէ խազալայ:

Զինէն ինան Մամօն գնացին Բաղէ Թօւկրի։

Ցատ բէզրան, լեռ դօշակ թալեցին, քնան։

Մէկ չատ կարկուտ անձրև էկաւ, որ էն անձրև էկաւ, Միր Սևարին ինան ուր մարդեր դարձան յետ. էկան Բաղէ Թօւկրի մօտ, Միր Սևարին ասաց.—Զավուշ Մէրարին, կերթաս Բաղէ Թօւկրէ դուռ կը բացես, մի լաւ կրակ կանես. մենք մրսեցինք, մի լաւ տաքնանք կերթանք մեր տներ։

Զավուշ Մերարին էկաւ դռան դէմ. տեսաւ դուռ բաց ա, մտաւ ներս. տեսաւ մէկ ձեռք լեռ դօշակ թալուկ, մի մարդ, մի կնիկ մէջ պառկուկ, ասաց ուրին.—Էսի կըլնի, չըլնի. Մամէն ինան Զինէն ի, ինչ անեմ. խաղով պտի խանեմ վեր.

| | |
|---|---|
| Êw'ê kri Zawîrê Mirzayê, ko Zînê rabe. | . . Զավուշ Միրարին ասաց. Զինէ, ելիր. |
| Mîr Sêvdîn hapyk hayt-hayt | Միր Սևարին եկաւ մեծ աղմուկով, |
| Kaqî hawar u qîr dkin a | Զայն ձգելով. կանչելով. |
| Pêş mal Zînê pêrî hamîyay narnî fîkya: | Տնաւէր Զինէն ամենէն առաջ ելաւ կայնաւ։ |

Զինէն կայնաւ, տեսաւ ուր խօր չավուշ կայներ ա գլխու վերև. ասաց.—

| | |
|---|---|
| Zawîrçk malya bûk mrê. tamalisar o amak halal o. | Իմ հօր տան աշխատաւոր չավուշ, աշխատանքդ հալալ լինի, |
| Amakê nûnê dkusa sa halal o. | Ձեռքերուս աշխատանքը քեզ հալալ լինի. |
| Aw Mamê Zînê dkarnahî yar a. | Մամէի, իմ դաղտնիքը դուրս չհանես։ |
| —Zînê, hapk Mîr Sêvdîn kaw ycan Cawkû kkarkkar a. | — Զինէ, մինչև միր Սևարին իմ անձ չանէ կտոր կտոր. |
| Ĵaw sra yar ba fêwka yar a: | Այն դաղտնիք ինձմէ դուրս չը պիտի ելլէ։ |

Էրկուսով կը նային, կը տեսնան չավուշ կայնե դռան դէմ. կըլնին որ փախնին, կը տեսնան Միր Սևարին ձիաւորներով դռան դէմն ի։ Մամօն կասի.—Ինչ անեմ, ինչ չանեմ։

Կառնի Ցարաջի տակ. Ջինէն կը նստի բուխերկի ոտք։

Սգրուևս Միր Սևտին դռնէն կը մտնի, կը տեսնայ Մամոն նստած ի. բարև կուտայ։ Մամոն էլ չի կայնի. նստմանց բարև կառնի, Միր Սևտինի մօտէն չաա կը բռնի որ Մամոն բարև գետին առեց. չէլաւ կայնաւ։

Մտնողներ ար կուգեան, ամեն մէկ հունթ ցախ կը բերեն, կոխեն բուխերիկ, կը վառեն։

Մամոն նստած ի կրակի դէմ, ոչ կանայ ըլնի վեր կայնի, սևանայ կրակի դէմ, կը մնայ։

Աղբէրներ Ղարաթաժտին յըմէնից յետ կուգեան, դռնէն կը մտնեն, կը տեսնան Մամոն կեօ նստիր ի բուխերկի մօտ, կը տեսնան Մամոն սկռն ի սեցեր. էլեր ի ղացաբի (կապոյտ) նման, խառնին, կրակ կընցոցին. կասին Միր Սևտինի.—Դու խըտ մեզի խնային էս, մեր ախպէր խիւանդ ի. դու կրակի դէմ յիրիցեր ես ակախ չունի։

Մամոն Ղարաթաժտինի ձեռ կը բռնի, տանի, կողի խետ կը նստացնի. յետեանց Ջինէնի ծամեր կը կոխի ախպօր ձեռաց մէջ. Բէքիր կիմանայ ինոր Ցարաճի տակ բան կայ. կասի.—

| | |
|---|---|
| *Միrk մլՃ, kամ համու ռապՃ փkյա,* | Միրս, մենք բոլորս կայնենք, աղօթք անենք. |
| *Բերի բըղըՃ ղըլպեյա,* | Դառնանք դէպի աղօթարան. |
| *Ապաբkp բկըՃ բր խnskյա:* | Աղօթք անենք Աստուծոյ դէմ։ |

Ղարաթաշտին կասի.—

| | |
|---|---|
| *Ամե համու ռաբՃ փեյա,* | Մենք բոլորս ոտքի կանգնենք, |
| *Բերի բըղՃ ղըլպkյա.* | Դառնանք դէպի աղօթարան, |
| *Ապարkp բրկըՃ բo խnskյա.* | Աղօթք անենք Աստուծոյ, |
| *Մամo միՃա մահphկի. բը միՃայ urskյա.* | Մամոն մեռելի նման մնայ գետին։ |

Սդրուս ամենով կըլլին կայնին. Մամո մնակ կը մնայ գետին. ուրենք աղօթք կասին, կընստեն։

Աղբէր կը տեսնայ. այ հօ, Ջինէի ծամերն ի։

Ղարաթաժտին Արֆօ, Ճագոյին կասի.—Ես գնացի դեխ տուն. դուք աչք վեր ձի չը ռնէք։ Զավուշին էլ կասի։—Զավուշ, քու աչք վեր ձըկ ըլնի, որ չէլաւ կուգեամ, քու մէջք կը կտրեմ։ Դնաց դեխ ուր տուն. կնկան խաղով ասաց։

| | |
|---|---|
| *—Ախ Ղարաթաժտին օրkdա.* | Ա՛խ, Ղարաթաժտին կասէ. |
| *Ախ Օրթի, բրճիկk հաruk,* | Ախ, Սըթի, հանէ երեքը |
| *ՄաաՃk մա մալ, լաՃոըկյայ կօnիՃ.* | Մեր էգ լաւ ձիանք, տղի օրօրոցը, |

| | |
|---|---|
| *Ա՛խ Ղարաբաժsին կօբ·* | Ղարաբաթաժաւին կասէ,— |
| *—Սըրի ռաբա, բըլյիենայ,* | Սրթի գնա, քաշէ. |
| *Հaruk Հաupk մայի Ճայ ա·* | Մեր երեք լաւ էգ ձին. |
| *Կուշմայ յանsըկոյ կօնին ա.* | Տնաւէ՛ր տղի օրօրոցը. |
| *Ազր ակըrակի բkarsըմ,* | Նա կրակ կը ձգեմ. |
| *Քօշկու սարա խանըմանն ա:* | Քօշկ ու պալատին, տուն տեղ. |

Սրթին կասի.

| | |
|---|---|
| *Սըրի sը բkժի,—Ղարաբաժsին sիւ,* | Սթին կասէ-Ղարաթաժաւին, դու |
| *Բեռա դաւի դօզի.* | Ում հետ կռուի բռնուած ես. |
| *—Բաբա, sիւ ժընի, բաս ա.* | —Նլիր վեր, դու կնիկ, Բաւական |
| *Խաբար բըsի բkar խաբարան.* | Խօսիս իմ խօսքի դէմ. |
| *Մամ Զին հարըրնայ բkar sաւ sարան,* | Մամօն, Զինէն եկած են սպանելու դուռ. |
| *Վախտա սar չնագk ուան.* | Ժամանակ է անոնց սառն դիակը. |
| *Տըբայ խrփայ խrփայ խանզայան:* | Տան դաշոյնի բերան։ |
| *Սըրի sըբk.—Միrk մըն ոզի ոյա sk չմայ.* | Սրթին կասէ.—Միրս, որ այդպէս |
| *Դարխինի հaruk մանինա մայ Ճայ ա* | Հան երեք էգ նժոյգ ձիանք, |
| *Լանsըխա կօնինk հաupk մայի Ճայ ա.* | Տղի օրօրոցը, էգ ձիանքը, |
| *Բյա սsաբիկի sընk մա միsk հաբայ:* | Աշխարքի մէջ մենք ևս վարձք ունենանք։ |

Սզրունս կրակ թողեց ուր տուն ու տեղ վառեց։
Զավուշ Միրտին հա էլաւ, հա մտաւ. հա էլաւ, հա մտաւ։
Տեսաւ մուխ էլաւ Ղարաթաժաւինի տուն տեղից. գնաց դիւան.
Միր Սևտին խարցուց.—Զավուշ ինչ կայ, ինչ չկայ։

| | |
|---|---|
| *Զավուշ sըբk.—Միrk մըն օ* | Զավուշ կասէ.—Միրս, |
| *Դարա մանsանի դարակի դարա.* | Քօշկու սարի փայտերն թաց է. |
| *Անըr ակե sըկk ֆkան սօr հեշինայ:* | Մի բոց կը բարձրանայ, կարմիր և կապոյտ է. |
| *Զավուշ sըբk.—Հaրk միrk մնե.* | Զավուշ կասէ.—Այ իմ միրս, |
| *Խօsk այան ա.* | Աստուծոյն յայտնի է. |
| *Դըկk կազի sե ըրշաւsայ Գուrգինk.* | Կը կանչեն մէջն այրեցաւ, Գուրգէնը։ |
| *Խօrգիյk միr Սևsինk.* | Միր Սևտինի թոռ. |

Որ էնենց կասի, Միր Սևտինի սիրտ, թոք կիրիցի. սզրունս դիւան խանից կըլնեն, կերթան դեխ Ղարաթաժաւինի հաւարին։

| | |
|---|---|
| *Օմ էark Զավուշ Մkrsին,* | Օֆ, այ, Զավուշ Մերտինի |
| *Կօրի բամամ ա խաբար ա.* | Խօսքը սասց վերջացաւ |
| *Տը հնաւk Միr Սևsին, sը բին կեառ բը կեառ ա:* | Սիրտն ու թոք Միր Սևտինի կտրտաւ. |

Դիւան էլաւ գնաց դեխ հաւարին:

Գնացին կէս ճանփան, Բէքիր ասաց.—Միր, քիչ առաջ գնա, ես էրթամ ջրուածք, գեամ, խասիմ քեզ:

Ինոնք գնացին, էնի յետ դարձաւ, էկաւ փենջարի դէմ կայնաւ, ականջ դրեց Մամէին, Զինէին, տեսաւ Զինէն Մամէյի Ֆարաջի օրկէն էլաւ դուս, մէկ բուխարկի ոտք Զինէն նստաւ, մէկ Մամէն նստաւ: Զինէն առեց խաղ ասիլ.

| | |
|---|---|
| —Օմ, kurk, Զինk կօ. | . . Զինէն կասէ.— |
| Մամօ կույ մայk դա ցիր. | Մամօ, անուէր. դու տեսար, |
| Լավk աղրղացոյ չի կըր, չինա կըր. | Հալալ կաթնակերնիր ինչ արին, ինչ չարին. |
| Ark Մամk, մալ խrաբ, դայ ցիր. | Այ Մամէ անուէր, դու տեսար. |
| Հարայ նինա ցռոk չըմա pkar բանր բու, | Մինչև հիմայ աշխարհ մեր առաջ ծով էր |
| Աւլ վաղայ շագըմ լէդայ չը նա կըr: | Հալալայն կաթնակերներ ական բացին չորցուցին: |

Էն տեղ էլան, գնացին մէ ֆուչով, էն գնաց մէկ ֆուչով, էն գնաց մէ ֆուչով. ուրենց տեղ կլի:

Բէքիր գնաց դեխ Միր Սևօին, ասաց.—Միր Սևօին, տեսար Զինէն Մամօյի Ֆարաջի տակն էր:

Ասաց.—Ինչ անեմ որ մեր ձեռնէն գնաց, պրծաւ. Ղարաթաժօին, Ճաքօն Արֆաւի տուն տեղ յըմեն վառուաւ, բան չի մնաց. մէկ լաճ՝ իրեք ձին խանեցին:

Բէքիր, ասաց.—Միր Սևօին, իտոնց տուն տեղ վառուաւ. ինչխ անենք, ինչխ չանենք:

Բերեցին, ընկեան գեղի մէջ. մէկից էրկու ոսկի, մէկից մէկ ոսկի առեցին, լցեցին լայլուղի մէջ, տարան տուին Ղարաթաժօինին, սաին:—Առ քե, տուր տուն-տեղ չինել. նստի ինե:

Տուեցին մէկ ֆօսկու սարեմ չինել. քան ցաւուանն էլ խօրոտ, նստան ինե:

Շատ-քիչ Աստուած գիտի, քեանի օր մնաց. բաբարները էկան Ղարաթաժօինի իտեւ. սաին.—Թագաւոր ձեզի կուզի որ գեաք սակեար:

Էն տեղէն Բէքիր խեռն Միր Սևօին լաճն, Բէքիր ասաց.—Միր Սևօին. բաբարնիր էկած էն Ղարաթաժօին, Ճագօն, Արֆանին էտեւ, որ տանին սակեար, ինչպէս անենք. մարդ չի կայ մեզի ջօջուեթին անի. էրթանք. խնդրենք մի աղրէր թողին ըստեղ:

Գնացին, սաեցին.—Իրիքով էլ էրթաք չըլնի, ձեր մէկ աղրէր մնայ ըստեղ:

Ասին—Չըլնի, իրեքիս էլ ուզեր ա թագաւոր. Մամօն էլ պտի տանինք փեսա մեզի։ Նաս խնդրուան մօտէն։

—Որ դու կերթաք, ասին. Մամօն մնայ, մեզի ադութեն անի. չոր դաշ գնաք։

Ասին.—Մենք կերթանք, Մամօն կը ժողնենք. կուզեանք, որ Մամօյին բան ասիր էք, ձեզի տնով, տեղով կիրիցենք։

Էգօնք իրեքով գնացին. Մամօն թողին։

Մամօն տարան—գնացին Միր Սևտինի գիւան:

Տասը-տասնուերկու օր մնաց. մէկ օր Բէքիր էլաւ, գնաց գիղ-րանք, որ սուտ խանի ուրնից, գեա. ասի։

Գնաց. էկաւ ասաց.—Միր Սևտին, նէ դու ըլնիս, նէ քու բե-կութեն, նէ քու միրութեն ըլնի։

—Ընչի՞, Բէքիր, դիւանհարար-կատղար, ինչ իլե։

Ի՛նչ իլե, գնացի ինա գեղ. ամեն մարդ ուր խամար կը կան-չի, կասի. «Զինէն Մամոյի խարն ի»։

Բէքիր, ինչխ անենք, չենք կանա Մամօյի դէմ բան ասե. մենք Աստուծոյ դէմ դրար ենք արե։

Ասաց.—Դու իկէք էրկսով սարրինչ խաղցէք, ես ինչ կը խա-նեմ, կը խանեմ ինոր գլօխ։

Մամօ, ասաց Միր Սևտին. արի, ես դու սարրինճ խաղանք, դու որ ընձնից տարար, ես Զինէն տամ քեզի. որ ես քեզնից տա-րայ՝ ինչ խանեմ քու գլօխ, կը խանեմ։

Մամէն ուրին կը մտածի,—ինչ ալտի անի, իմ ձին ընձնէ պտի առնի, թո առնի։

Կը դնեն սարրինչ, կը խաղան, էրկու անգամ Մամօն կը տանի մօտէն, կը մնայ մէկ օյին որ տանի մօտէն։

Բէքիր ասաց.—Այ հօ. Զինէն տարաւ Մամօն, ինչ պէտ անեմ.

Զինէն բերեմ, կայնեցնեմ ըստե. բոլէի աչք իցքի Զինէին, տարուի։

Էլաւ դնաց թեխ Զինէն, ասաց.—Զինէ. Միր Սևտին ինան Մամօն վէր քեզի սարրինջ կը խաղան, էրկու օյին տարեր ա. մնա-ցեր ա մէկ օյին որ քեզի առնի. որ դու հազր ըլնես. կը գայի ձեռ. կը տանի քեզի:

Տանի, կայնըցուցի Մամօյի քամակ ինե, ինք խաղ կասի.

| | |
|---|---|
| *Բեժիր կօր.—Հոռն հեմա հարռու Մի-րըն բեկրն։* | Բէքիր կասէ.—Դու որ կաք, էր կարմ միր ու բեկ էր, |
| *Մեր խօռանն ռայքն ձիա հառա փակօ հեուն:* | Լաւ մարդ էք, հէլէք, տեղրանք փոխէք։ |

Էն կերթայ ինոր տեղ կը նստի, էն ինոր տեղ. տեղ կը փո-

խեն. Մամոն Զինէն որ կտխնայ, խելք գլխից կէրթայ. ինչքան քար կը դնի, էնի կը տանի, չի գինայ ինչ կը խաղայ։ Իրեք օյին կը դնի, իրեքն էլ կը տանի։

Բէքիր կուզեայ ձեռքեր իտեւանց կը կապի, կասի.—Իմ բըռնաւորն էս։ Էն տեղ էլի Մամոն խաղ կասի։

Մամէ ցը բէ.—Ծիւ դը բոհի հար դը բըռի մըն.
Մըն ցիւ մալէ չհու աւէ կըրի:

Մամէն կասի.—Սա քեզ կտանէի,
հա կը տանէի.
Սա կը կոխէի հրէայի տունը։

Էնտեղ ձեռք ոտք, կը բռնեն Թալեն բանտ, մէ քանի օր, եռսուն օր կը մնայ մըջ բանտին։

Զինէն կըլնի ինչ կանի, լաղամչի կը բերի որ լաղամ զարկի, փող կուտայ, կասի. կանաք լաղամ զարկէք իմ օրղից տանէք չում Մամոյի մօտ։

Կասեն.—Կը զարկենք. ընչի չենք զարկե։

Բիրեց լաղմ զարկեց, ուր օրխից չում գնաց բանտան մէջ։

Գիշեր կէթէր մօտ, էլի ցերէկ կուգեր ուր տեղ։

Զինէն էդոր խալաւ-մալաւ կը լուար, լաւ կը պախէր։

—Բէքիր ասաց.—Միր Սևտին, էսօր էղեր ի քանի օր Մամէն Թալերենք բանտոտուն. մէ էրթաս, իշկաս, ինչ էլեր ի, մենք վաղ չենք կանա աղբերններաց ջուղաբ տայ։

Բաքօն էլաւ գնաց հէրտիսի վըրէն. ասաց.—Մամօ, իշկայ ընձի, ես էկեր իմ, քեզի Թողեմ։

Մամօն սիասիրտ էր, իշկաց վիրև. Բէքիր իշկաց վըրէն, ուր գլօխ կընտուկ, ուր չորեր լուացուկ բամիզ ի։

Ասաց.—Մարդ բանաւոր բռնի, ախր ուրին բօզմիշ պտի ըլնի. էս ինչ պէսա է։

Դարձաւ էկաւ, Միր Սևտինին ասաց.—Մարդ որ բանաւոր բռնի ուրին պտի բօզմիշ էղնի, Թէ վրա գլօխ բամիզ ճեֆով կեղնի։

—Բանաւոր մարդ կեղտոտ ոձլոտ խիւանդ կեղնի։

—Ես գնացիր էմ. Մամոն տէսեր եմ, կասեմ Մամոն նոր գնացե բարբարխանեն. գլօխ կընտե, լուացե. բամիզ էկե նստե։ Ասաց.

—Էթանք, խըտրաց տեսնանք։

Գնացին վէր յերդուին, Միր Սևտին ասաց.—Մամօ, իշկայ. ես էկեր եմ, քե Թօղնեմ։

Մամօն իշկաց վիրև, տեսաւ ինչպէս որ Բէքիր ասեր էր էնպէսա ի։

Ասաց.—Էս բանտանից խանէք, տարէք քցէք քարէ բանտուն.

Տարան, քցին, քարէ բանտուն։

Զինէն ինչ ճար արաց, չէլաւ. էլ լաղմ զարկել չէլաւ։

Մնաց մէ ամիս, էրկու ամիս բանտան մէջ, խեղճ շատ խիւանդացաւ, շատ ընկաւ։

Մէկ օր դաւրէշ մի էկաւ. Զինէն տեսաւ դաւրէշին, ասաց.

—Դաւրէշ, դոր կերթաս։

Ասաց.—Կերթամ քաղքներ պտտելու—ման գալու։

Ասաց.—Որ կերթաս, կեղնի Արֆան, Ճագօն Ղարաթաժ-տին տեսնաս։

Ասաց.—Ես կերթամ որ տեսնամ։

—Որ կերթաս, առ իմ ոսկիք, իմ չորեր, ինչ ուզես կուտամ. թաֆլաճ գիր մի գրեմ. տանես տաս Ղարաթաժտինի ձեռ։

Դաւրէշ աչք իցկեց ինե. ասաց.—Ես մէկ բան չեմ ուզե. մի պաք կուզեմ որ մէ պաք տուեցիր, քու Թուղթ տանեմ, կուտամ։

—Դաւրէշ, ասաց. քու լաղէն ինչ է պաքի խեռ, արի, անաստ-ուածութեն մի անի. մալ դաֆինա կուտամ։

Ասաց.—Չէ, չեմ գինայ, մի պաք կուզեմ։

Ճար վրէն կտրաւ, չի կրցաւ ճար խանէր ուրին. ուր լայլոխ արաց չորս տակ, տուից ուր էրեսին, ասաց.—Դաւրէշ, դու ընես քու Աստուած, արի, պաքի։

Դաւրէշ էտոր էրես պագեց։

Զինէն Թուղթմ գրեց գեապտիկ տեղ, զինք-զինք. «Ղարաթաժ-տին. Միր Սետին Մամօյին բռնեց, հալ հէֆիաք էօպէստ, ես դաւ-րիշին ինչ արի, Թուղթ չը բերեց քեզ խամար, ինչքան իմ վրէքի-ոսկիք՝ մալ դաֆինա տուի, չի բերեց. ասաց. «պաքմ պաի տաս,» իմ ճար կտրուեց, պաքմ տուեր եմ, Նոր Թուղթ բէրեց. կընի Մա-մօն մեռնի, չի խասնէք, այբեալ էկէք, չի դադրէք»։

Թուղթ տուեց դաւրէշ տարաւ, քաղքներ չատ պտտեց, տարաւ տուեց Ղարաթաժտինի ձեռ։

Ղարաթաժտին Թուղթ առեց, կարդաց, ասաց.—Այ հօ, աղ-ղէրներ, Մամօն բռնած էն. կընի որ չի խասնինք։ Զինէն ինչ արե-չարե, դաւրէշ Թուղթ չի բերեր, ճար կտրուեր ի, պաքմ տուեր ի, Նոր բերեր ա։

Դարձան դաւրէշին.—Դաւրէշ, Աստուած քու տուն աւիրայ, էնքան մալ տուեր ա, ոսկի տուեր ա, դու պաքմ չառնէր էն դար-տի մէջ, չէր ընի։

Թուր Թալեցին, դաւրէշի վիզ կտրեցին. իրեք ախպէրով դար-ձան էկան գեխ տուն։

Զինէն ինան Սըթին ու խաքան Մամօյի վրէն։

Զէն գնաց Միր Սեդինին. Արֆօն, Ճագօն, Ղարաթաժտին փրեքով էլ դարձած՝ էկած՝ մօտացած էն։

Միր Սետին կանչեց Բաքօյին. ասաց.—Գնա՛, Մամօյին իչկայ, տես ինչպէստ ա. Արֆօն, Ճագօն Ղարաթաժտին էկած էն, գնայ իչկայ էթանք թողենք։ Որ էկան, մեզի տնով տեղով կը մնասեն։

Բեքիր գնաց վեր յիրգսին, սաաց.—Մամօ. իշկայ ընձի. ես էկիր եմ, քեզի թողեմ։

Մամօն նուաղուկ, չի կարցաւ գլօխ վերցրցէր դարի վէր։

Բեքիր դարձաւ, էկաւ միր Սեւոյին սաաց.—Մամօն ձեռաց գացեր ա։

Սաաց.—Բա ինչպէստ անենք։

—Օրողկենք Ջինէն սանի քեռաւրուն ճաւրին, էրթայ, թողի։

Միր Սեւոյին սաաց.—Ջինէ. Մամօն սուփ քե, գնա, թող.

Ջինէն վերցուց ուր քառւրուն ճաւրին, գնաց ուրախ-ուրախ որ թողօւ. սաւէի գինայ սաղ ի։

Բեքիրի քար մէջն էր. անուն Ջինէ, սաաց.—Ջինէ մենք չէթանք, չարխիֆալակ կայ, օրոզկենք. խփենենք, որ մենք էթանք, աչք կը գիպնի մեզի. կը մեռնի բռնատան մէջ։

Ջինէն Բաքօյի քուրոջ սաինց.—Դու էլ Բաքօյի քուրն էս. կուզես որ Մամօն թողնեմ, բռնատան մէջ մեռնի։

Ականջ չարաց, գնաց վէր յիրգսին կայնաւ, սաաց.—Մամօ, ես Ջինէն էմ, իշկայ ընձի, էկեր էմ, քե թողեմ։

Մամօն Ջինէի ձէն լսաւ, իշկաց, սաաց.—Ջինէ, դու չես իկե ընձի թողես. էկէրես իմ խոգին առնես. նոր—բազա ես կը պըրծնեմ էս անգքցը։

Ջինէն գրկեց կախեց տակ, սաաց.—Մամօ, կապի մէջքդ, ես քիպչեմ, խանեմ։

Մամօն արաց որ կայնէր, ոտքերաց դուդում կտրեր էր. էրակները կտրեր էր, չատ մայիֆցեր էր. քեաշին, փանեցին։

Մամօն սաաց.—Ջինէ, քու չոք դիր, ես գլօխ դնեմ, պառկեմ։

Սատծու խրամանքով էն էր, մեռաւ։

Ջինէն առեց խաղ առեր։

| | |
|---|---|
| Վեռլա բաւէ մըրի կեամըռ. | Իմ հօր բռնատուն քար է, |
| Lonsk խռաբ րկա սարի հաքա բրինյա. | Սատուած աեր դարձնէ գըլխանց մինչև էրթայ տակը. |
| Fk շիրինյա կըրրիա հառա բառցայ ժրնայ. | Որն է անեւր որ բռնաւորին կնիկ էրթայ թող է։ |

Ջուղաբ կերթայ Միր Սեւոյինին, Բաքօյին.—Ջինէն Մամօն թողեց. ամա մեռաւ։

Տարան Մամօն խորեցին։

Էն օր չատ անձրև էկաւ, Ջինէն կերթէր ուր փէշերով խող կը բերէր, լցէր Մամօյի գերեզմնի վրէն,

Բեքիրի աչք կար վըր Ջինէի. խաղ սաաց.

| | |
|---|---|
| Ջինէ բաս ս դաւ մըբի, | Ջինէ, բառակրան է, դու կնիկ. |

| | |
|---|---|
| րաս ա ուան մաfrանայ. | բաւական է այդ կախարդու-թիւն անես. |
| Ազր սորա հոյակե յանըմ fաշայ. | Առաւօտուն ես հրապարակի մէջ ձի թող կռուեմ. |
| Տու դարօա մkrան մkr խաս ա հյի-րմխոռայ. | Դու ուժով, լաւ մարդ վերջուր քեզ համար. |
| —Հարk Բkքիr, բըլայ հայ հօրk: | —Այ Բէքիր, թող այդպէս լինի. |
| Բլա Բkfիr միr Սիւsիճ բլա դիr ու բաrfkաշ pk. | Թող Բէքիր ու միր Սևտին աշ-խարհի մէջ ողջ առողջ ման գայ. |
| Բլա Մամk Ալան բkար մաrակաճ ռա pk: | Թող Մամէի Ալան հողի մէջ սևանայ: |

Զինէն դառնա, խազով ուրին կանչեց.

| | |
|---|---|
| —Մրճk հաւարա խօ կkհիշօաճի շախ-uk բասօմա | Սա իմ ձայն ձգած եմ արևին իր զօրութեան, |
| Մամօ մրի յաճk ճաւ սօմ ա. | Մամօն մեռաւ կէս օրին, |
| Զինk ճա՝ կkամա դաճk ճա kվարա: | Զինէն չի հասնի մինչև երեկոյ. |
| Մճk հաւարա խո հkաճիշդաճեի շախ-uk ճզար ա. | Իմ հաւար ձգած եմ Նազարենե-րու զօրութեան: |
| Մամօ մրի դաճի kվարա. | Մամօն մեռաւ երեկոյին, |
| Զինk ճա կkամա դաճk ճաւ սօմա. | Զինէն չի հասնի մինչև կէս օր. |

Զինէն էն տեղ շատ խիւանդացաւ, առին գնացին. տունը անկեղու ընկեաւ. չուր լիրկուն չի քաշից, մեռաւ:

Էն էլ տարան խորեցին մօ Մամօն.

Սգլուեն ջուաբ էկաւ. առեցին Արֆան Ճագօն Ղարաթաժ-ախն էկան.

Սըթին Զինէի քորն էր, ուր չորեր, ուր fօcկու սաrkն բի-rաsի սև ա քաշէ,

Բէքիր ասաց.—Միր Սևտին, ես լսեր էմ. էս օր Արֆան, Ճա-գօն ու Ղարաթաժախն կուգեան. էլէք էրթանք դէմներ, քեանի Սթին չի գնացե. խաս՛լըցուցե ինոնց.

Արֆան, Ճաքօն, Ղարաթաժախն մօտացան ուրինց տներ.

Ղարաթաժախն դուլբինs դրեց աչէչ, ասաց.—Ախպէրներ, մեր տուն բիrաsի սև ին քաշած, եա Մամօն ա մեռե, եա իմ լաճ Գուրկին ա մեռե.

Սթին էլաւ, գնաց յառջևներ ամենից շուտ. իդոնց հաւա-լուբեն ասաց. ինչ էկե գլխներ.

Միր Սևտին ինաճ Բէքիր գնացին ու էթան դէմներ. տեսան Սըթին քիանք ինոնք շատ ա գեացե. փախան պախկուան քիադքի մէջ, ասին.—Կուգեան, մե կսպանեն, ճար չիկայ էր.

Ղարաթաժարին ախպէրներաց ասաց.—Թրեր չըլտէք, ընկնենք քեաղքի մէջ, ման գեանք. միր Սեւոին, Բէքիր տեսնանք, սպաննենք. մեր սիրտ թող խովանայ։

Թրեր չըլտին ընկեան քաղքին մէջ. էնքան կան էկան քեաղքի մէջ, չի կարցան գտնեն. գնացին ուրենց տուն իջան. ասաց Ղարաթաժարին.—Զարար չիկայ. որ դու մարդ էք, էսօր չէլաւ, առաւօտուն կինի մեր ձեռը։

Գնացին թէ լացին թէ ինչ արեցին։

Բէքիր ասաց.—Միր Սեւոին, բա մենք ինչ անենք, ճար չըկայ էն քաֆրները մեզի անով-տեղով կը վառեն։

Աստըծով իլաճ մը կանեմ. մեզի բան էլ չասեն։

—Ինչ իլաճ պտի անես, Բէքիր ասաց, միր Սեւոին։

Էթանք բազարը, ամենը մէ թօփ կտաւ առնենք մեզի, մեր թրեր թալինք մեր վիզ. թօփ կտաւ զարնենք մեր հունթ. էթանք Ղարաթաժանի տուն ճրաքի դէմ, ինոր տղի օրօրոցի դէմ ասենք. «էստ մեր վիզ, էս էլ մեր թուր. էս էլ մեր պատանք. կսպանես, ինչ կանես, էլի, արա»։

Ինպէս որ արեցին, առեցին գնացին Ղարաթաժարինի տուն, օրօրոցի դէմ կաղնեցին, ինպէս ասեցին։

Արֆան, Ճագօն, էլան կայնեան որ սպանեն։

Ղարաթաժարին չի թողեց, ասաց.—Մարդ արունք մէջ ուր տան չանի. որ դու մարդ ընէք, չատ տեղ կայ։

Ազատեցին։

Ելան ուրախ ուրախ տնէն գնացին։

Բէքիր ասաց.—Միր Սեւոին, տեսար: ես ինչխ արեցի. բան չարեցին։

Բէքիր մի քանի օր մնաց. մէկ օր գնաց վէր ինոնց գերեզմնին. ծակից բամաճա արաց, տեսաւ քի Ջինէն ինաճ Մամօն ձեռթալած են իրար վզով, նստած՝ ուրախութեն կանեն։

Դարձաւ էկաւ, ուրախ ուրախ Միր Սեւոինին ասաց.

—Միր Սեւոին. Ջինէն էլ, Մամօն էլ սաղ նստած, ուրանց գերեզմնի մէջ ուրախութեն կանեն:

—Բէքիր. էլի, էթանք, տեսնանք, որ սաղ էն, առնենք գեանք։

Էլաւ միր Սեւոին գեաղտիկ թուր կապեց մէջք, ուր Ֆարաջի տակով. գնաց Բէքիրի խետն գերեզմնի վրէն:

—Բէքիր, իչկայ խինք. որտեղ կերեւան, ասաց:

—Միր Սեւոին, ահա, նստած ա. կուզես դու էլ արի, բամաճա արա, սաղ նստած ա։

Միր Սեւոին իչկաց որ սուտ ա, աչքի դէմ զատ չէրեւայ։

Բէքիր ասաց.—Ուր ա. ես զատ չեմ տեսնայ:

Բէքիր էկաւ. էլի թամաշա արեց:
Միր Սետին մի թուր տուեց էդոր վըզին, կտրեց:
Արուն թռաւ երկինք:
Միր Սետին ասաց.— Իմ Ֆարաջէն բռնեմ արունի դէմ. Թօ-չի կաթի վըր գերեզմանին:
Արուն կաթաց էրկըսի գերեզմնի արանք:
Մկայ էն արուն էլե մեջի ծառ:
Ամեն տարի էդ ծառ կը կտրեն, էլի կը բուսնի:

# 21

# ՄԱՄԱԶԻՆ*

Հին ժամանակներու մէջ մի քաղցր գիշեր,
Մամէի Ալան իւր սենեկին մէջ կը քնէր.
Նոյնպէս քնած էր նազելի խաթուն Զին,
Ընդհանուր աշխարհի գեղեցկուհին:
Երեք քոյր աղաւնի միասին երկինքէն իջան,
Խաթուն Զինի լուսամուտի վերան նստան.
Փոքրը ասաց.—«տեսած էք սիրունատես,
Աշխարհի մէջ՝ խաթուն Զինէի պէս»:
—Այո, ասաց մեծ քոյրը, Ալփաշայի տնէն,
Բաջանց Թագաւորի որդին—կտրիճ Մամէն
Առաւել եւ գեղեցիկ է քան Զինէն.
Արդեօք կա՞յ հնար, որ իրար առնեն:

* Մամ-Զին կամ Մամազին եւ կամ Մամոզին քրդական վէպը քրդերէն պատմած է Տանկաոտանցի Եզտի—Օնպաշի Մինօ. որ Վանայ կողմերէն էր, մի ժամանակ Պայազիտ ոստիկան, ապա Բագրեւանդայ առաջնորդի մօտ քաւանքճի, եւ քանի տարիներէ ի վեր եւս Սինեկայ լեռներու մէջ (ռուսաց սահման) Ալաճալու Եզտիներու գիւղը կը բնակի: Սա լաւ հայերէն գիտէր, որոյ եւ Գիտակ Նալպանտեանի օգնութեամբ վէպս հայերէնի վերածած եմ. ապա փորձ արած եմ քրդերէնի նման ոտանաւորի վերածել՝ հետեւելով իւրաքանչիւր նախադասութեան, սակայն հարկ եղածին չափ չեմ յաջողած: Որով այլ եւս չուզեցի փոփոխել, յղկեցի. արձակ ոտանաւորի վերածելով՝ անփոփոխ պահելով քրդական իւրաքանչիւր նախադասութեան իմաստը. վասն զի այնպիսի բառեր կային որ հազիւ քանի նախադասութիւններով կարող էի հասկացնել:

—Արդեօք չէ՞ կարելի սրանց իրար կապել.
Օրերէն մէկ օր իրենց փափաքին հասցնել։
Ասաց մէկը քոյրերնին խիստ յուզուած,
Մամ Զինի երջանկութեան յոյսով լցուած։
—Այո, ասաց մեծն, Աստուած որ յաջողէ,
Մամէն ու Զին իրար կապել դիւրին է.
Շիփ շիտակ Խաթուն Զինի կառաջնորդենք,
Մուխիս Զեմին—Մամէի մօտը կը տանենք։
Երեքն իրենց բազուկները պարզեցին,
Միասին առ Աստուած խնդրեցին.
«Ո՜վ Աստուած. ասացին, դու յաջողես,
Մի աղաւնու մորթ ցած իջեցնես»:
Անոնց աղօթքը Աստուած բարին լսեց,
Աղաւնու մորթը երկինքէն իջեցուց.
Խաթուն զին զարթեցաւ, տեսաւ.
Շտապեց, զայն վեր առաւ, հագաւ։
Խաթուն Զին եղաւ աղաւնի, թեւ առաւ,
Երեք աղաւնիներու հետ, ուրախ թռաւ.
Եղան չորս աղաւնի, շատ երկար թռան,
Մամէի լուսամուտի վրան թառեցան։
Մամէն ի խոր քնոյ մէջ էր ընկղմած,
Աչքերը բացաւ, տեսաւ Զինը զարմացած.
Զին որ ոչ միայն գեղեցիկ իբրև լուսին կը փայլէր,
Այլ խելքի, հեզութեան, համեստութեան միացումն էր,*
Մամէն յափշտակուեցաւ գեղեցկուհւոյս սիրոյն,
Երեք օր, երեք գիշեր ոչ քուն էր, ոչ արթուն.
Աչքերն ի նա յառած՝ լեզուն կապուած,
Կարծէր միայն սուտ երազ է իր տեսած։
Քոյր աղաւնիք, Խաթուն Զին եւ իրենց հետ
Թռ՜ռ, թռան, գնացին կորան աչքից անհետ.
Չորրորդ գիշեր կրկին վերադարձան, եկան.
Մամէն նոյն յափշտակուած վիճակի մէջ տեսան։
Մամէն զգաստացաւ. ուշադիր դիտեց Զինէն,
Մտածեց—ինչպէս անէ, որ չհանէ իր ձեռնէն.
Ակնապիշ նայեց նրա կերպարանքին, զմայլեցաւ.
Միմիայն մի խօսք արտասանել հազիւ կարողացաւ։
—Գեղեցկուհիդ հուրի, դու դարձեալ հօրս քաղաքը.
—Գեղեցկադէմդ կորիճ, դու եկար հօրս աշխարհը.

* Սոյն նախադասութիւնը բղեր.ն մի բառով կասուի:

—Ոչ, ասաց Մամէն. եթէ հօրդ աշխարհը ես եկած եմ,
Քանի մինարայ կայ այս քաղաքը, ասա որ համրեմ։
—Հօրս քաղաքը հարիւր վաթսուն և մեկ կայ,
Իսկ ասա, քո հօր քաղաքը որչափ կըլլայ։
—Հօրս քաղաքն երեք հարիւր վաթսուն և մեկ.
Կուզես բարձրանանք տանիս—, համարեմ, տես։
Պայման կապեցին, ի տանիս բարձրացան.
Մի առ մի մինարէները համարեցին, տեսան.
Մամէն արդար էր, յաղթանակը տարաւ.
Ջինէն խոստումը կատարել յօժարեցաւ:
Մատանիներ միմեանց հետ փոխեցին.
Իրենց աշխարհ, ազգ ու անուն յայտնեցին.
Ջին ասաց.—Ես Ջին եմ, Խաթուն Ջին,
Դուստրն եմ Ճզիր ու Բոդանի թագաւորին։
Եթէ հայրս հարցնես—է Միր Սեւդին.
Հօրեղբօրս որդու անուն ես Միր Թաժդին.
Քաջերու սիրունդ է. քաջատոհմիկ մարդ,
Մեծ քաղաքէ, սիրուն աշխարհքէ։
Ահա վերջինն է գալս, կորիճ Մամէս.
Այլ գիս հօրդ աշխարհը պիտի չտեսնես.
Դու կը կարծես, քեզ տեսնելով յանցաւոր եմ ես.
Այնպէս անեմ որ գիս որոնելով հազիւ գտնես։
Մամէն զգաստացաւ, Ջինէի ձեռք բռնեց.
Ձեռքը իւր ձեռաց մէջ առաւ, պինդ սեղմեց.
—Թող չեմ տար, ասաց, դու այս տեղէն գնաս.
Մի՛ գուցէ երթաս, այլ ես չվերադառնաս։
Սակայն Խաթուն Ջինի գնալու ժամը հասաւ.
Շտապեց, քնոյ ուլինքը Մամէի ականջը դրաւ.
Մամէն էր, երբ ի խոր քուն ընկըղմեցաւ.
Խաթուն Ջինն էր, փը՛ռռ արաւ, թռաւ։
Չէ որ Մամէն իւր հուժկու բազուկն էր ձգած,
Խաթուն Ջինի փափկասուն ձեռքը բռնած.
Զարթեցաւ. աչքերն մաժելով ելաւ, նստաւ.
Աչքերն այս այն կողմ յառեց, ոչինչ չտեսաւ։
Ցափշտակուած էր, սկսաւ իրմէ դուրս ասել.
—Ա՛խ, ինչպէս մի աղջիկ չկարողացայ բռնել,
Այլ ես նա հեռու գնաց, չեմ կարող գտնել.
Նորա քաղցր նայուածքը, գեղեցիկ դէմքը տեսնել։
Ո՛վ Աստուած իմ, այս տեսիլն ինչ էր,

Նա հուրիներից աւելի գեղեցիկ էր.[1]
Մամէն դարձեալ ի խոր մտածման մէջ ընկաւ,
Իւր յուզեալ սրտին համբերութիւն տուաւ։
—Կարելի է, ասաց, Նա մի օր մօտս գայ,
Իմ բոցավառ սրտիս մխիթարութիւն տայ.
Սակայն անընդհատ սպասեց տաս-քսան օր,
Չերևաց գեղեցկատեսիլ օրիորդն փառաւոր։

* * *

Նա իւր դառն վիճակին մէջ վառուեցաւ.
Օրերն հեծեծանօք, հառաչանօք անցաւ.
Օր յաւուր, հիւծեցաւ, մաշեցաւ, մնաց,
Երեսի գոյնը, անդամներու կորովը գնաց։
Մամէի մայրը զաւակին վիճակը կը տեսնէ,
Խղճահարուելով իւր ամուսնուն կը յայտնէ.
—Այ մարդ, չես գիտեր Մամէդ ինչ վիճակի մէջ է,
Նա շատ ցաւ ունի. կենաց վերջի շունչը կը շնչէ։
Մամէի հայրն երբ կը լսէ, որդւոյն մօտ կը վազէ,
Ցաւելով կասէ.—Սիրելի որդիս, քո վիճակն ինչ է.
Հառաչանօք կը խնդրեմ, ինձ արդարն ասես,
Թէ չէ խելքս ու կեանքս կը կորսնցունեմ ես։
—Ո՜հ ինչ ասեմ, սիրելի և բարերար հայրս,
Անճար հիւանդ եմ, թուլցած են անդամներս.
—Որդեակ իմ Մամէ. ինչ է պատահած, ինձ ասա.
Աստուած յաջողէ, դարման կը գնեմ քո ցաւի վերայ,
Եթէ ամուսնանալ կը ցանկաս, դորա ճարը կը գտնեմ.
Քեզի Ստամբօլայ թագաւորի դուստրը կը բերեմ։
—Հայրիկս, ինչ ասեմ, ուշաթափուած եմ, ընկած,
Միմիայն այս գիտեմ, անճար եմ ու պառկած,
Մամէի հայրը վերադարձաւ տուն մտամոլոր.
Տխուր դնաց իւր դատարան հասաւ սգաւոր.
Տեսաւ ղաթին ու դատաւորներ են բազմած,
Մամէի մայրն ու ժողովականք հաւաքուած։
Որդու վիճակի վերայ դառն հեկեկաց,
Բազմականաց առջև մի երգ ասաց։
—Ո՛վ պատուաւոր բազմականներ,
Մամէս հիւանդ է կարեվէր,
Կարի տկար է ամբողջ մարմնով.
Գլուխն կարող չէ դնել մի բարձով.

1 Սոյն երկու տողերը քրդերէն մի բառով կասուի:

Անգամները կը դողդողան բնի վերայ,
Գլուխը բռանի վերայ կերերայ:
Բազմականք որ գայս լսեցին,
Խառն ի խուռն սար կանգնեցին,
Խիստ մեծ աղմուկ մ՚էր բարձրացաւ.
Մամէն գնալ, տեսնել որոշուեցաւ:
Մամէի մայրը շտապից, առաջ անցաւ.
Հառաչելով գնաց, բնակարանի դուռը բացաւ.
Տեսաւ դուռը փակ.—Մամէ՛. բա՛ց, ասաց.
Տեսնեմ ինչ է վիճակդ, քեզ ինչ է պատահած.
Տեսաւ որդին հիւծեալ, ալ տասուեց.
Նորա վզին փարելով արտասանեց,
—Որդե՛ս, դու որ կը սիրես այն Աստուածը,
Դու որ կը սիրես այն Աստուծոյ մարդը, [1]
Անհրաժեշտ է ինձ ասես չիտակը,
Գիտնամ ինչ է արդեօք քո դարտը:
—Ախ մայրի՛կ, հիւանդ եմ, ինչ ասեմ.
Աստուծոյ կամքն է, միայն այն գիտեմ:
—Կրծիս կաթը քեզ հալալ[2] լինի, Մամէ,
Քո ցաւը ներքէն է, քեզ կը տանջէ,
Սակայն երբ կը տեսնեմ քո երեսի գոյն
Չեմ նշմարեր վերայդ հիւանդութիւն:
—Ես այլ ինչ ասեմ, մայրիկ բարեբար.
Կասեմ—չասեմ, ինձ չէք հաւատար,
Հաւատացէք խօսքիս, որ է արդար.
Ծանր հիւանդ եմ և խիստ դժար:
Ժողովականք որ այն տեղ եկած՝
Մամէի շուրջն էին բոլորած նստած,
Մի խոհեմ մարդ որոց մէջէ՝
Մամէի մօր դառնայ, կասէ:
—Դու որ այն Աստուածը կը սիրես.
Այն Աստուծոյ մարդը որ կը յարգես,
Մամէի շունչը ինչու՞ կորգիլես.

1 Եզդիներ «Աստուծոյ մարդը» սոյն վէպի մէջ քանի տեղ գործածած են: Հետաքրքիր եղայ թէ ում համար կասեն. թէ եւ ոմանք առ երեսս Քրիստոսի համար է, կասեն, երբ հայերու հետ են. իսկ երբ քրդերու հետ են, Մահմետին կը վերագրեն. սակայն աւելի հաւանականն այն է որ Մելէքի թաւուզին (սադայել) կասեն. վասն զի ահէն նորա յարգանք կը մատուցանեն:

2 Հալալ բառը կը նշանակէ ծանր եւ շատ մեծ երախտեաց տակ գտնուող մէկուն ներել. անուշ անել եւլն. Հայերէն չլինելուն՝ հալալ բառը գործածեցի:

Թոյլ տուէք, առանձին խօսիմ ես.
Ունիմ երկու խօսք նորա ասելու,
Որոյ դիտաւորութիւն հասկանալու։
Մամէն ու այն մարդ առանձնացան,
Իրարու հետ յուշիկ—յուշիկ խօսեցան.
—Մամէ, ասաց. դու որ Աստուած կը սիրես,
Որդիս, դու որ Աստուծոյ մարդը կը պատուես,
Եթէ դու քո հօրդ սանը կամաչես.
Ի սէր Աստուծոյ, կաղաչեմ, ինձ ասես.
—Դու որ Աստուած և նորա մարդը կը յիշես.
Ինչ ես լինի, պարտաւոր եմ ասել քեզ.
—Դէ, քաջդ Մամէ, ասա քո ցաւը,
Թերևս գտնեմ դարցիդ դարմանը.
—Խաթուն Զինն է իմ ցաւը,
Մամէն ասաց ու արտասուեց,
«Խաթուն Զինն է ցաւս», դարձեալ կրկնեց.
Մի կողմէն ես հառաչանքներ արձակեց։
—Մամէի Ալան, Խաթուն Զին որ կասես,
Նորա ազգը, տունը, աշխարհը գիտես.
Ունի՞ հայր ու մայր, լաւ տոհմ է,
Նորա հայրը քո հօր հաւասար է.
—Զինէս Ճզիր ու Բօգան աշխարհէն է
Նա նոյն երկրի թագաւորին դուստրն է,
Հայրն է հզօր իշխան Միր Սեւտին,
Զինէս աշխարհիս գեղեցկուհին.
Այս մարդը դարձաւ Միրի առաջը.
Տեղն ու տեղը պատմեց լսած բանը։
Միրը երբ լսեց, երկար բարակ մտածեց.
—Երբէք սասծներդ չգիտեմ, մրմնջեց,
Ճզիր ու Բօղան երկրիս որ կողմն է.
Միր Սեւտին արդեօք ինչ թագաւոր է։
Խնդրեմ, ժողովականք, չապեցէք,
Յղէք երկու աշխարհատես մարդ բերէք,
Հարց ու փորձ անենք, նայենք, գիտե՞ն.
Ճզիր ու Բօղան ասած ինչ քաղաքներ են.
Երկու ծերունի աշխարհատեսներ եկան,
Միրի առաջը բարև բռնեցին, կանգնեան.
Միրը յուզուած սրտով մէկին ասաց.
—Դու Ճզիր-Բօղան տեսած ես, կամ լսած.
—Չէ, ասաց, երբէք չեմ տեսած և ոչ լսած,

Իմ հաւերս անգամ այդ անուններ չեն յիշած։
Միրը յափշտակուած միւսին հարցուց.
—Դու Ծըլիր-Բօղան ո՞ր կողմն է, տեսած ես,
Ինչ ձեռաց վերայ կընկնի, արդեօք գիտե՞ս.
—Այո՛, գիտեմ ես, ազնիւ միրս ու տէրս։
—Դու քանի՞ տարեկան ես ծերունի աշխարհատես,
—Հարիւր երեսուն տարեկան կը լինիմ ես.
—Ծերունի, արդեօք կարո՞ղ ես ձի նստիլ,
Որդւոյս հետ Ծըլիր ու Բօղան մեկնիլ:
—Շատ ծերացած եմ, կը դողդողան անդամներս,
Ես զիս ձիու վերայ չեմ կարող բռնել, միրս։
—Մի մեծ պատգարակով յղեմ, գնա՛,
Որդւոյս ցաւին մի դարման արա՛։
—Անդամներս բոլորովին են քայքայուած,
Շարժելու կարողութենէ եմ զրկուած։
Միրը երկար, բարակ հարցուց, փորձեց.
Մի հնար չգտաւ, գլուխն ու չոքին տփեց,
—Հայ վա՛խ-հայ վա՛խ, ի՞նչ պտի լինի որդիս,
Հիւծեցաւ, այլ եւ ձեռքէս գնաց սիրելիս։
Լուր հասաւ, գնաց Մամէի Ալանի,
—Քեզ համար մի ճար, հնար չլինի,
Չկայ մէկը ծանօթ Ծըլիր ու Բօղանին,
Որ Մամէդ չթողեր կորոտ Խաթուն Ջինին։
Մամէն երբ այդ լուր լսեց, շատ յուզուեցաւ
Ցմիշտ իւր վիճակին մէջ վառեցաւ,
Կեանքը եւ օր օրի վրայ դառնացաւ.
Խելըթափ այս, այն տեղ դեգերիլ սկսաւ։
Մի օր մտածեց-մտածեց, ապա որոշեց.
Իւր խանդակաթ մօր մի մարդ ղըկեց,
Ասաց.—Մայր իմ սիրելի և խանդակաթ,
Ինձ հալալ արա՛ քո ծծի անուշ կաթ:
Ասաց.—Հայր իմ յարգելի և պատուական,
Ինձ հալալ արա՛ խնամքդ հայրական.
Մնաք բարեաւ, հայր և մայր գթոտ,
Թերեւս մի օր դառնամ, գամ ձեր մօտ։
—Որդի՛ս, հալալ լինի. իսկ ասա մեզ դու.
Ինչո՞ւ շտապեցար, շուտ ընկար ճանփու։
Դէպի ո՞ւր կը գնաս, դէպ ո՞ւմ դուռ,
Գուցէ անծանօթ վայր կորսուիս ի զուր։
—Վճռած եմ գնալ, ո՛վ հայրիկ բարձր,

*Վշտերուս դարման գտնիլ, մայրիկ քաղցր.*
*Միր տեսաւ Մամէն չհամոզուիր,*
*Որոշած նպատակէն յետ չկանգնիր.*
*Ինչ որ պէտք էր, պատրաստեց,*
*Եօթ-ութ ձիաւոր հետը դրեց։* [1]

* * *

*Ընկան ճանապարհ, չատ-քիչ գնացին,*
*Մի ընդարձակ մարգիմ քով կանգ առին.*
*Այն տեղ աղբիւր մի կար, զուլալ ու յստակ,*
*Նստան աղբիւրի մօտ բուսած ծառի տակ։*
*Ջուր խմեցին, հաց կերան, հանգստացան,*
*Վեր բարձրացան, ձիանք հեծնելին, գնան.*
*Մամէն էր, իւր ուղեկիցներուն նայեցաւ,*
*Որոց դէմքը սաստիկ տխուր տեսաւ։*
*—Ծառայք և ընկերք, ասաց, ինչո՞ւ էք տխուր։*
*Ասացէ՛ք, խնդրեմ, ես ձեզ կը բանամ մի դուռ։*
*—Եթէ մենք պահել ուզենք քեզնէ.*
*Ինչ կարող ենք պահել Աստուծմէ.*
*Չէ, մենք ընտանիք ու զաւակ ունենք,*
*Տուն ու տեղ կեր-կերակուր չունենք,*
*Մենք չենք համարձակիր մի բան խօսել,*
*Կը խնդրեմք, շնորհ անէք մեզ արձակել։*
*—Ցանուն Աստուծոյ կերդնում, ձեզ հրաման է.*
*Գնացէք ձեր տուն, ինչպէս ձեր, իմ կամքն է.*
*Ես երբէք պատճառ չեմ լինիր զձեզ պահել*
*Ձեր ընտանեաց անէծք վիզս փաթթուել.*
*—Մամէ, դու Աստուծով յաջողիս, ասացին.*
*Ուրախ զուարթ միաբերան օրհնեցին։*
*—Գնացէ՛ք, համայն ծառայք սիրելի,*
*Կրկնեց—արտօնութիւն տուած եմ ձեզի։*
*—Քո հօր երկիւղէն տուն գնալ կարելի չէ,*
*Չհաւատար մեզ.—Մամէն կորուսած էք. կասէ.*

---

1 Մամէի տնէն մեկնիլը Խաչի տեսակ կը պատմեն. որպէս թէ միր հրաման կարձակէ աշխարհի գեղեցկուհիներն կը հաւաքէ. Մամէն անոնց մէջ կը յղէ, որ մին նաւանի. վազիրի ու վաքիլի աղջիկներուն եւս կը պատուիրէ որ իրենց քողոց երգերով Մամէի սիրտն գրաւեն. ամեն կողմէն ընդարձակ երգեր կերգուին. Մամէն անոնց վերայ չնայիր: Երեք անգամ կը կրկնուի: Մամէն Բօրի վերայ կը նստի, կերթայ: Մի այլ նուղի մէջ եւս որպէս թէ հայրն պարսպի դռներն կը փակէ, Բօրի ոտքն եւս փականք կը զարնէ. նա ձին նստելով ձիու ոտներն այնպէս փականքով պարսպէն կը թռչի, կերթայ:

Քեզնէ կը խնդրենք, շնոր՞ անես, գիր մի գրես.
Միրի պատիժը մեր ընտանեաց վերայ չբերես։
Մամէն նստաւ, նամակ մի գրեց,
Ձիաւորներուն յանձնեց, իր հօր ղրկեց.
Ասաց.—Գնացէք, ինձ համար աղօթեցէք։
Ծառաներն օրհնեցին, ձիանք հեծան,
Ուրախ-ուրախ տներնին վերադարձան։
Մամէն շուարեցաւ. անելիքը մոռացաւ.
Բորը հեծաւ, ասպանդակեց ու քշեց.
Երեք օր, երեք գիշեր սար ու ձոր անցաւ,
Ձին սաստիկ կը կաղար, ինչ բան է, չմտածեց։
Ցաւը Բորին հոգւոյն որ հասաւ.
Երգով իւր վիճակը յայտնեց—ըսաւ.
—Վա՜յ Մամէս, իմ անխոհեմ Մամէս.
Ինչ երախայական խելք ունես։
Այդ չարունակ ղիս կը հարուածես,
Երեք օր է անընդհատ կը քշես.
Այ աւաղ, մոռացկոտ Մամէս.
Չիտարը կղպած՝ ոտս թողած ես։
Չես ասեր՝ չիտարը Բորիս ձեռքն է կորած,
Ցաւն ու մրմուռը նորա սիրտը հասուցած.
Ա՜խ անխոհեմ, երախայամիտ Մամէս.
Ինչու այդպէս չոր գլուխ կը քալես։
Իսկի մտքէդ չես անցներ ու ասեր.
Չիտարը Բորիս ձեռքն [1]) է զարկեր, կերեր.
Միայն ոսկորն է մնացեր եարալու.
Այլ ես կարող չէ մի քայլ-առնելու։
Տեղ որ զառիվայր է, տեղ որ կող.
Չես նայեր ոչ խոր և ոչ առնկող.
Ժայռ, սար ու ձոր և առու, առուակ,
Առջեւդ կարծես դարձած՝ են տափարակ։
Բնաւ չես ասեր չիտարն է զարկել.
Բորիս սիրուն ձեռները վիրաւորեր։
Մամէն երբ ղայս լսեց, զղաստացաւ.
Մի ակնթարթի մէջ թռաւ, ցած իջաւ.
Հուժկու բազկով քաշեց սուր թուրը.
Մի հարուածով կտրեց փակուած չիտարը։
Տեսաւ Բորի խատուտիկ աչքերէն,

1 Ձիու առաջի ոտներուն «ձեռք» կասեն Քրդեր:

Պտուղ-պտուղ արտասուք կը հոսէն.
Աչերը ցաւեցաւ, խիստ յուզուեցաւ,
Ուշաթափ Բորի առաջ ընկաւ, լաց եղաւ։
 Ասաց.—ոչ ես լինէի և ոչ այսպէս վիճակ,
 Մնայի այս տեղ չուար, խեղճ ու կրակ,
 Ով տէր, լսէ աղաչանքս, ինձ մի ճար արա,
 Մի դուռ բաց, ապեղանի դիր վէրքիս վերայ։
Եղուկ ինձ՝ որ կարի մոռացկոտ եմ,
Ափսոս ինձ՝ անզգոյշ՝ կորած եմ.
Վա՜յ ինձ՝ որ անփորձ ու մոլորեալ եմ,
Ջիտարն Բորիս ձեռքերն կերեր, ոսկորը մնացել։
 Հազար վայ ինձ՝ որ մնացի վերս օզոր.
 Իմ սիրական Բորն է եղած վիրաւոր,
 Ո՛վ տէր, դարման արա դու զօրաւոր.
 Մի թողուր Մամէ ծառադ ոտաւոր։
Մամէն գետին ընկած՝ կը մտածէ, կը մտածէ.
—Ճղիր ու Բօղան ինչ ձեռաց վերայ է, կըսէ.
Աջ թէ ձախ թեւ՝ հիւսիս թէ հարաւ.
Նպատակիս կարող եմ հասնիլ, ըսաւ։
 Երեք քոյր աղաւնի դարձեալ յերկնից իջան.
 Մամէի գլխու ծառի ճիւղի վերան թառեցան.
 Մամէի վիճակի վերան ցաւեցան.
 Իրարու հետ խօսիլ սկսան։
Մին սասաց.—Մամէն եթէ լինի զգաստ,
Նորա վիճակը կը լինի լաւ և հաստատ.
Երբ մենք թռչինք, դնանք այս տեղէն,
Մի փետուր կընկնի մեր թեւի վրայէն։
 Մամէն եթէ պարթուն-զգոյշ մնայ.
 Փետուրն առնէ, քիչ ինչ ցած գնայ,
 Այն տեղ աղբիւր մի կայ քաղցր-համեղ.
 Որի ջուրըն պիտի լինի Բորի ոտաց դեղ։
 Փետուրն եբր ջրին զարկէ, ոտաց քսէ,
 Երեք ժամէն անհրաժեշտ առողջ է։
Մամէն իսկոյն ելաւ չոկուեց, նստեց.
Փետուրը ջուրը թաթխեց, Բորի ոտաց քսեց.
Բորը տեսաւ Մամէի չարչարանք,
Տեսաւ դառնազէտ հեծեծանք,
Նորա վերան գթաց, քաջալերեց.
Երգեց ու իր անելիքը յայտնեց։
 —Քաջ Մամէս, եւկի հոգ չքաշես.

Երկու ձեռներս թաշկինակով կապեմ,
Ես քեզի քառասուն (աւուր) մէկի վերան՝
Կը հասցնեմ երկիրը՝ Ճզիր ու Բօղան։
Գեղեցիկ սեւին մէջ կը շրջագայիս,
Սիրունատես երկարավիզներով կզբաղուիս։
Քաջ Մամէս, դու խելք հոգ մի՛ քաշեր.
Չես արձակէ թոյլ տուր լաւ-լաւ մարդեր,
Զքեզ քո բաղձին կը տիրացնեմ,
Ճզիր ու Բօղան աշխարհը կը հասցնեմ։
Կը տեսնես սիրուններ անգնահատելի,
Գեղեցիկ հասակաւորներ զմայլելի։
Զրէ զիս զուլալ աղբիւրներու ակից,
Ինձ ազատէ երկաթեայ կապանքից,
Որ քառասուն և մէկ աւուր վերան,
Ուղղակի հասցնեմ Ճզիր ու Բօղան։

* * *

Մամէն հեծաւ, գիշեր-ցերեկ անընդհատ քշեց,
Քառասուն օր անտեր դաշտեր անցաւ,
Քառասուն մէկ երրորդին բերրի երկիր մտաւ։
Ճանապարհի վերան լծքուոր մի տեսաւ,
Դիմեց նորա մօտ բարև տուեց,
Վաղուց փակուած լեզուն բացուաւ,
Քաղցրալուր հրգ մի առաւ, երգեց.
—Այ լծքուոր, լծքուոր, քեզ բարի օր,
Խնդրեմ, ինձ ասես, Աստուած որ սիրես,
Այդ ինչ երկրի լուծք է փառաւոր.
Դու ո՞ր երկրի թագաւորի ժողովուրդ ես։
—Աստուծոյ բարին գլխիս աչքիս վերան,
Դու բարի հիւր մ'ես պատուական,
Մատաղ քեզ, ինձ ուղիղն ասես,
Դու որ այն Աստուածը կը սիրես.
Կերևի շատ հեռու երկրէն եկած ես,
Լուծքն ու այս աշխարհը կը հարցնես.
—Այո, ժիր լծքուոր, մարդ պատուական,
Անապատներ անցայ, ես եմ օտարական։
—Ուրեմն այս Ճզիրն, ասաց լծքուոր,
Ցոյց տալով նաև Բօղան փառաւոր.
Ճզիր, Բօղան մեծ քաղաք աննման՝
Բարձր տներ, սիրունատեսներ հոն կան,

Կամարակապ ու սև ունքեր ունին.
Իբրև Թագուհի դռներու առջև . .
Այնտեղ երեկոյին երբ մութը վրայ հասաւ,
Տեսար յանկարծ մեծ դուռը փակուեցաւ,
Եղբայրն եղբօր երեսն անգամ չնայիր,
Նաև ոչ մի խնամ կամ հոգ վրան տանիր։
Ճանապարհը շատ երկար, հազիւ կերևէր,
Մամէն ձին քշեց. քշեց քաղաք հասաւ,
Քաղաքի մօտ մի առատ աղբիւր կը վազէր,
Աղբիւրի վերան մի սիրուն նստած տեսաւ։
—Բարի օր, ասաց, ո՜վ սև ու տգեղ խաթուն,
Աղբիւրի վերան ինչ կանգնած ես այս մութուն։
—Աստուծոյ բարին, գլխի, աչքի վերան՝
Քաջատոհմիկ, կտրիճ Մամէդ Ալանեան։
—Դու Աստուած, Աստուծոյ մարդը կը սիրես,
Արդեօք կարելի չէ՞ ինձ ճշմարիտն ասես,
Ի՞նչ գիտես, որ ես եմ Ալանեան տոհմից,
Քաջ և զօրաւոր Թագաւորներու անից։
—Այո՛, քաջ գիտեմ, դու ես Մամէն,
Անուանի Ալ փաշայի սերունդէն.
Մուխիր զէմին աշխարհէն ես ելած,
Քառասուն մէկի վերան հոս հասած։
Եկած ես այս Զինէխս սև աչքերուն,
Կամարակապ ու գեղեցիկ ունքերուն,
Գիտեմ, վառուած ես ու սիրահարուած,
Դորա համար այսչափ լեռ, ձոր չափած։
—Եթէ արդարև, ասաց, դու այն Զինէն ես,
Մի յիշատակ ունեմ մօտդ, այն գիտես։
—Քո նշանն էր մատանի մի սիրուն,
Անգին քարերով գեղեցիկ զարդարուն.
Քառասուն օր է, նստած եմ այստեղ,
Միշտ կսպասէի ճանապարհիդ անշեղ։
Մատանին հանեցի մատէս, դրի գոգս,
Որ վերան նայեմ, քեզնից առնեմ կարօտս.
Իսկ երբ քեզ տեսայ, ուրախացայ,
Թռչնոյ պէս վեր թռայ, մատանին մոռացայ.
Մատանին գլորեցաւ, գնաց դէպի ջուր,
Շատ որոնեցի, գնաց ընկաւ չգիտեմ ո՞ւր։
Մամէն աղբիւրին վերայ կանգ առաւ,
Աջ և ձախ, ետև և առաջ նայեցաւ։

Ինքն լրին խոր-խոր կը մտածէր,
—Այս իմ տեսած սիրուն Ջինէն չէ, կասէր։
Եթէ երազի մէջ տեսած Ջինէս է,
Ուրեմն այլ ևս իմ չարչարանքս զուր է.
Ջին աապանդակեց, գնաց ու եկաւ յուզեալ.
Ցուսահատ մտածեց, յետ դառնալ, գնալ.
Հասկացաւ Բոր Մամէի մտատանջութիւնը,
Ուզեց մի երգով յայտնել նորա յիմարութիւնը։
—«Մամէ, գլուխս դարձուր, զիս..
Ինչու անխոհեմ ընթացք բռնած ես,
Ի զուր քո սիրտն ու հոգին կը մաշես։
Բաւական է այսչափ անփորձ մնաս,
Դատարկ խօսքերու դու ականջ տաս.
Այս աղբիւրին վերան որ կը տեսնես,
Դու Խաթուն Ջինէն է կը կարծես։
Այս ալ է Բաքոյի աղջիկը Ջին,
Հմուտ է կախարդութեան արհեստին 1)։
Եղած-չեղածը օր օրին կը գուշակէր.
Ճանապարհներու գլուխը կանգնած կսպասէր.
Արարածներու գործերը կը խանգարէր։
Շուտ արա, զիս սապանդակէ, Մամէ,
Այս տեղ Ճզիր ու Բոտան քաղաքն է,
Երբ իրիկուն հասնի, մութը պատէ.
Եղբայր եղբօր անպատասպար կը թողնէ։
Մամէ, զիս սանձարձակ թոյլ տուր,
Որ քեզ տանեմ մի fncf, սarի դուռ։
Զգաստ ձին առաւ զՄամէն, տարաւ.
Ղարա Թաժտինի դուռ կանգ առաւ.
Դուրս եկաւ Խաթուն Գիւլ փերին,
Զմայլեցաւ նայելով հիւրի երեսին։
Իջաւ ցած. առաջ վազեց, ձին բռնեց.
Տարաւ ներս, շատ սիրով հիւրընկալեց։
Երկու եղբայր ունէր Ղարաթաժտին,
Որոց անունները Ճագան, Աֆան էր միւսին,
Երեքն ևս եղբօրորդիքներ էին Միրին,
Երեքն միասին Միրի ատեանը կը բազմէին։
Խաթուն Գիւլ Փէրին նրանց մարդ յղեց,

1) Ոմանք կասեն թէ Աւանի Բաքոյի աղջիկը կախարդութեամբ ամեն բան կը գուշակէր. ոմանք եւս կասեն թէ Բաքոն ինքը կախարդութիւն կանէր, իր աղջկան կը յայտնէր գաղտնիքը։

—Մեր տուն փառաւոր հիւր եկած է, յայտնեց.
Ինչ կանէք, շուտ արէք, տուն դարձէք,
Ինչ որ արժան է, այնպէս հիւրասիրեցէք:
Երեք եղբայր շուտ տուն վերադարձան,
Տեսան, յարգեցին փառաւոր հիւրին.
Երեք օր Միրի ատեանը չներկայացան։
Միրը մարդ յղեց Դարաթաժտինին,
—Դարաթաժտին, յարգելի բազմականս,
Քանի օր է ինչու չես գար ատեանս։
—Պատուաւոր հիւր ունիմ, Միր,
Չեմ կարող քո ատեանն գտնուիլ:
Միր դարձեալ լուր յղեց Դարաթաժտինին,
Հիւրն ալ իրենց հետ առնեն, տանին:
Խաթուն Դիւլ Փէրին ձեռք ձգեց ունելուն,
Սատիկ հարուած մի տուեց Քանչօղի գլխուն:
—Խաթուն Փէրի, ինչու այդպէս զարկեցիր,
Գլուխս արիւնլուայ վիրաւորեցիր:
—Կորիր, գնա, խոլամ, քո Միրին խօսէ,
Եօթ ձեռք նուագածուներ թող հանէ,
Իւր դռնէն իմ դուռ խալիչա փռէ.
Ատեանն ալ որպէս վայել է, զարդարէ,
Որ իմ հիւրը գայ նազելով, օրօրուելով.
Միրի ատեանը բարձրանայ զբօսնելով:
Դու ինչ ես որ իմ հիւրը առնես, տանես;
Այդպէս անվայելուչ Միրի երես հանես:
Ծառան շտապաւ դարձաւ Միրի դիւան,
Միր ասաց.—Ո՞ւր է Թաժտին, Ճագան, Արֆան,
Նաև հիւր մը ունէին պատուաւոր,
Ո՞ւր են, ինչու չեկան նորա այսօր:
—Միր, քո քոյր գլուխս վիրաւորեց,
Խնձիս արիւնի մէջ շաղախեց:
—Քոյրս յիմար թէ դիւահարած էր,
Պատճառ ինչ էր որ քո գլուխը կոտրէր:
—Ասաց «Թող փռէ խալի ու խալիչայ,
Իմ հիւրը վերան օրօրուի ու գայ»:
Միր ասաց.—Հոգ մի քաշեր, աղաս.
Անմիջապէս բժշկէն դարման կստանաս:
Միր կանչեց, հրաման արձակեց,
Մինչև Թաժտինի դուռ գորգ փռեց,
Դուրս հանեցին պատուաւոր հիւրին.

Գրպանն լիքն էր արծաթն ու ոսկին:
Որչափ մարդ կար Ծզիր ու Բօղան,
Առ հասարակ եկան, թամաշա եկան.
Ոսկին ցանելով, սփռելով կերթար Մամէն,
Ղարաթաժարին ևս կը գնար առջևէն:
Մամէն չհասած՝ Թաժարին մօտ նորա,
Միրի հետ խօսեցան երես առ երես.
—Որչափ ծանր հիւր ունիս, Թաժարին, ասաց Միր,
Հազիւ լուրերով ատեանս երևացիր:
—Հիւրս շատ ծանր է ու պատուաւոր.
Նորա կերպարանքն է շատ փառաւոր,
Երբ նա ներկայանայ առանց Միրիս,
Դու պէտք է նորա առջևը կանգնիս։
—Ասա ինձ դու, ով Ղարաթաժարին,
Եղած—չեղածը ինչ է քո հիւրին,
Որ ստիպուիմ նորա առաջ կանգնել
Իր չափէն ու պատուէն աւելի յարգել:
—Այժմ չգիտեմ թէ ինչ պիտի անես,
Յայտնի կանէ երբ դռնէն մտաւ ներս:
Միր երբ տեսաւ Մամէի դէմքը, հիացաւ,
Անապարեց, բարձրացաւ, բարև տուաւ,
Բռնեց ձեռքէն, դէպի աջ կողմը տարաւ:
Միրը երբ յանկարծ վեր էր բարձրացած,
Մամէի ձեռքն էր ձեռաց մէջ պինդ բռնած,
Ղարաթաժարին մի հնար մտածեց.
Իւր թաշկինակը Միրի տակը ձգեց:
Միր Մամէի տեսքին յափշտակուեցաւ.
Երեք օր, երեք գիշեր նորա հետ խօսեցաւ:
Խաթուն Գիւլ Փէրի խանում եկաւ.
Բարկացած Միրի առաջը կանգնեցաւ:
—Միրս, ասաց, այս ինչ ընթացք է.
Երեք օր է հիւրս զրկեցէք հացէ, ջրէ.
Միթէ այս տեղ հիւրս բանտարկուած,
Ձեր անկարգ հաճոյքին է զոհուած.
Միրին դպաւ այս ծանր խօսքը,
Դարձաւ, խօժոռելով ասաց քրոջը.

1 Մամէն կանեն շատ գեղեցիկ էր, որու այլ նորա ատէր, կկմայլէր նորա վերան. երեք օր երեք գիշեր ցերեկը յայտնուած անօրի ծարաւ, անհուն կանչեր:

—Եթէ բազուկս հասնէր, գիտե՞ս, ես
Դաշոյնովս կը վերջացնէի գլեզ։
Միրը ժողովականաց ասաց.—արէ՛ք,
Արդեօք կարելի չէ ինձ ճիշտն ասէք.
Չէ այս օր այս տեղ նոր եկած եմք,
Միմեանց հետ խօսք ու զրոյցք կանենք։
Ասաց Գիւլ Փերին.—Ժողովականք, ասէք,
Այս երեք օր չէ՞, դուք նստած կը խօսէք։
—Այո՛, ասացին, Գիւլ Փերի, քո խօսքն է,
Մեր կարողութենէ այդ զրոյցք դուրս է.
Մենք չենք կարող միրին սուտ հանել.
Նորա առաջ գիտողութիւն անել։
Միրը յանկարծ զգաստացաւ.
Իւր արած սխալը հասկացաւ.
Ասաց.—Աստուած վկայ, կը կարծէի,
Երեք ժամ է նստած՝ կը խօսէի։
Ծառաներուն հրաման արձակեց միրը.
Քաշեցին, պարզեցին հացն ու կերակուրը.
Ամէն նստաւ, կերաւ, կշտացաւ.
Միրէն հրաման առաւ, տուն դարձաւ։
Ամէն երբ գնաց, ասաց միրը.—Թաժտին,
Չէ՞ ասիր, «պտի կանգնես հիւրի առջին»։
—Այո՛, դու կանգնեցար. ձեռքէն բռնեցիր.
Հիւրասիրելով քո աջ կողմդ նստեցուցիր.
Եթէ չես հաւատար, վեր կանգնէ, տե՛ս.
Թաշկինակս քո տակ ձգուած կը գտնես։
Միրը բարձրացաւ, տակը նայեցաւ.
Իրաւ, թաշկինակը տակը ձգուած տեսաւ.[1]
—Աստուած վկայ, ասաց, ես չի գիտցայ.
Թէ ինչ ժամանակ ելայ, կանգնեցայ։
Թաժտին հրաման առաւ ու մեկնեցաւ.
Երեք օր դարձեալ ատեանը չերեւեցաւ։
Միրը այս անգամ ևս լուր յղեց.
Թաժտին իւր ատեանը բերել տուեց.
Մի քանի խօսք հարցուց Ամէնի վերայ.
—Ինչ երկրէն է, նորա հայր և մայր կա՞յ։
—Զգիտեմ, ասաց, նորա վերան բան չխօսեց.

1 Թաշկինակը տակը ձգեց որպէս զի երբ ուրանայ կանգնիլը, Թաժտին թաշկինակով ճանաչէ թէ կանգնեցաւ:

Լուր յղեց միր, զՄամէն բերել տուեց։
Միրը ասաց.—Մամէ, ինձ պէտք է ասես.
Ո՛ր Թագաւորի, որ վազիրի տղան ես.
—Միրս. ինչ է, ձեր ասածները չգիտեմ.
Այլ հասարակ մի խեղճ մարդ եմ։
Այս տեղ Միրը բարկացաւ, Թաժտինին կատիպէր,
—Հիւրդ լաւ չանէր, ճիչդն չասէր, կըսէր,[1]
Ձայն առ, տար, լաւ տեղեկութիւն քաղէ.
Առաւօտեան վաղ արի, ինձ յայտնէ։
Երեք եղբայրներ, Մամէն եւ միասին՝
Գնացին դէպի ապարանքն Շահնաշին.
Իրենց հայրենական մեծ քօշքն։
Շահնաշին էր մի ապարանք փառաւոր,[2]
Չորս կողմն ունէր այգեստան յարմարաւոր.
Շահնաշինն էր խիստ բարձր շինութիւն,
Շուրջն ունէր քաղաք, գիւղ, բնակութիւն։
Ղարաթաժտին և իւր եղբայրներ,
Մամէի Ալան եւ իրենց հետներ.
Շահնաշի տանիս բարձրացան,
Գորգերու վերան բազմեցան։
Սաթրիճ դրին մէջ տեղ, խաղացին.
Մինչև կէս օր ժամանակ անցուցին։
Մամէն ու Թաժտին այդ տեղ թող խաղան.
Մենք դառնանք Խաթուն Զինի վերան։

***

—Զինէ, ո՜վ Զինէ, կաստ Խաթո՛ւն Զինէ.
Համայն ծառաներս, աղախիններս հաւաքէ,
Տաս-քսան ձի ու ջորի առնեն, գան.
Ինչ որ տան մէջ կահ-կարասիք կան.
Բառնան, զընկզընկոցով աղբիւրը գնան։
Աղախինները շտապեցան, բարձան.
Խաթուն Զին առին, ճանապարհ ընկան՝
Կարաւանը սիրուններու խմբով նազելով անցաւ.
Աղբիւրի վերան բեռներ արձակեց, իջաւ։

1 Մամէի դէմքէն կը գուշակէին որ նա ազնուական սերունդէ է, իսկ երբ նա ուրացաւ,, միր բարկացաւ:

2 Շահնաշին այդ ցեղի հնաւանդ ապարանքն էր. կասեն թէ եղբայր Միրզորդիք բաժանուելու միջոցին, երկու բաժին արած են. միրութիւնը մի բաժին և ապարանքը մի բաժին. Թաժոյին Շահնաշին բաժին վերուցած է:

Մամէն բարձրէն դէպ ի ցած նայեցաւ.
Օրիօրդաց սիրուն կարաւանը տեսաւ.
Գեղեցկուհին Զին էր կարաւանապետը.
Օրիորդաց սիգաճեմ առաջնորդը։
Մամէն Խաթուն Զին երբ տեսաւ,
Ուշաթափ եղաւ, գետին գլորեցաւ։
Երեք եղբայրներ երբ զայս տեսան.
—Այս ինչ օյին, ասացին, եկաւ քո վերան։
Մամէն զգաստացաւ երդեց սիրուն,
—Ահա կարաւան մի յոյժ զարդարուն,
Կարաւանապետ մի գեղեցկուհի.
Ընդհանուր աշխարհի տիրուհի։
Քաջ մարդ պէտք է առաջը գնայ.
Հարկ ու գրաւ ստանայ, գայ։
Զինէն նշանուած էր Ճագանին,
Ուշադրութեամբ կը լսէր Մամէին,
Նորա երգէն շատ ու շատ զայրացաւ.
Որ նշանածին համար խօսք բացաւ։
Ղարաթաժաին երբ զայս զգաց.
Եղբօր պայրոյթ երգով մի մեղմացոյց։
—Մամէս, ինչ է լսաս բերնէդ դուրս,
Դու իմ բարի ու յարգելի հիւրս.
Այն որ կը տեսնես չէ կարաւան,
Ոչ ոք չէ կարող պահանջել գրաւական։
Ոչ ոք չէ կարող նորա առաջ կտրել,
Գրաւական ու հարկ ստանալ.
Այն կարաւանապետն է Խաթուն Զինը,
Է Միր Սևաինի չքնաղ աղջիկը.
Միր Թաժաինի համեստափայլ քոյրը,
Ճագան եղբօրս սիրուն նշանածը։
—Երեք եղբայրներ, ամեն մարդ կերթայ,
Քրդու կարաւանէն հարկ կառնէ, կգայ.
Իսկ բուն կարեւոր պայմանն այն է,
Մարդ մըրէ ու իշխանէ գրաւ առնէ:
Լսող եղբայրներ, գրաւ կը դնեմ,
Երթամ, գրաւական առնեմ, բերեմ։
Երեք եղբայրներ կը ասդեն—չէ կարելի,
Այդ անհնարին է և անգործադրելի։ 1

1 Չինէն Թաժէինի եղբօր նշանուած էր. լեթէ մի ուրիշը Չինէի վերայ խօսէր, մինչեւ անգամ մտադրութիւն կը ծագէր այս իսկ պատճառաւ

Մամէն պայման կը դնէ, վնր կը թռնի.
Բոլի անխնամ վիճակը միտքը կընկնի.
Կը մոածէ.—Երկու տարին վերջացաւ.
Չեմ գիտեր Բորիս վիճակն ինչ եղաւ։
Այժմ Մամէն զգաց ձիու պէտքը.
Նոր միտքը ձգեց նորա կեանքը։
Ցուցուեցաւ, երդեց ինքը-Մամէ.
—Մամէիս վիճակն միշտ այսպէս է,
Ես իմ Բորս պէտք է դուրս հանեմ,
Ոսկեզօծեալ թամքը վերան զարնեմ.
Մինչև աղբիւրի գլուխը հասնեմ.
Խաթուն Զինէյն հարկ ու դրաւ առնեմ։
Մամէն դարձաւ ու դնաց ձիանոց.
Ձին, տեսաւ, խառնուած է աղբանոց,
Կեղտ ու ժպռի մէջ անհետ կորած.
Կերակուր բերանը բնաւ չէ մտած.
—Մամէ. ասաց ձին. դու ես ինչ մարդ,
Անխոհեմ երախայ՝ ու ապերախտ
Երբ որ պէտք եղայ, մօտս կը վազես,
«Հեծնամ ու գործիս գնամ», կասես։
Մամէն հառաչելով աչքերը կը սրբէր.
—Բարի Բորս ինձնէ դանգատ մնէր, կասէր
Սիրահարութեան կրակն եմ ընկեր.
Մի ճար՝ ճարակ չեմ կարող գտնէր։
Զգուշութիւն ինչ է ես մոռացայ.
Բորիս պէտքերը հոգալ չկրցայ։
Մամէն Բորը քիմարեց ու սրբեց.
Աչքերն ու սմբակները համբուրեց,
—Իմաստուն Բորս, ասաց, ես արի, դու մի՛ աներ,
Զիս մի ձգէր, բոցերու մէջ ու վառեր.
Երգեց ձին.—Արի՛, իմ կտրիճ Մամէս.
Ուր որ կը ցանկաս, տանեմ քեզ։
Մամէն ոտք ձգեց սապանդակը.
Ցաթքեց, ելաւ Բորին կռնակը,
Արշաւեց, աղբիւրի վերան գնաց,
Ձին կանգնեցուց, երգեց ու ասաց.
—Ես Մամէն եմ, Ալփաշայի տղան.

Թամժիկն զգուշացուց զՄամէն որ եղբայրն չզրգռուի. սակայն Մամէն իրենց հիւրն էր, ներելի էր նորան. հիւրը մարդու կինն եւս խնդրէ, (թէեւ չպատահիր) չպիտի մերժէն ըստ հնաւանդ սովորութեան:

Արշաւեցի, եկայ աղբիւրի վրան.
Աստուած սիրող՝ ինձ մի ջուր տուէք.
Լսող գեղեցկուհիք, խօսքերուս ականջ դրէք։
Խաթուն Զին Մամէն որ տեսաւ,
Աղախիններու ձեռնէ բաժակը առաւ.
Շտապաւ կզեցաւ, ջուր մի լեցուց,
Բարձրացաւ, Մամէի երկարացուց։
—Խաթուն Զին, ով խաթուն Զին,
Ասաց Մամէն յոյժ սրտագին,
Կարող ես դլըմսազեռին[1] ինձ յանձնել.
Զիս աշխարհի մէջ բաղդաւորեցնել։
Զին երբ գայս լսեց, ձեռ ձգեց,
Վզի չարանի մէջ տեղի ոսկին կտրեց.
Ջրի բաժակի մէջ գրընկ գցեց.
Առաւ, ձեռ պարզեց, Մամէին տուեց։
Մամէն էր, փափաքով ջուրը խմեց,
Ետ դարձաւ, Բորը սալանդակեց,
Գնաց, հասաւ իւր եղբայրներու մօտ,
Ոսկին ձգեց Ղարաթաժտինի ոտ:
Մամէն ձին առաւ, դնաց ձիանոց,
Բարձրացաւ տանեաց վերայ—հովանոց։
Ղարաթաժտին երբ գայս տեսաւ,
Մամէի վիճակին հասու եղաւ։
Իւր եղբարց դարձաւ, ուշիւ՝ նայեց,
Մամէի վիճակին վերայ այսպէս երգեց։
—Ինձ լսող եղբայրներ, մենք ենք չորս,
Մեր բոզ ձիանքն ևս են չորս,
Ժամանակ մի ծղիր ու Բօղան շրջենք,
Մամէն իւր սրտի փափաքին հասցնենք։
Բերենք գայն որ աչքը խայտ, սիրուն է,
Ունքը թուխ աղեղնաձև ու կամար է,
Վիզն ու հասակը երկար և բարակ է,
Նորա տեսքը յարմար ու շնորհաւոր է։
Ծագան տեղէն վեր թռաւ բարկացած,
Թաժտինի մի երգ ասաց, զայրացած։
—Այդ խօսքդ ինձ մեծ ցաւ տուեց,

1 «Դլըմսազեռին» կը նշանակէ քիւդուած ոսկի, որ է վզի շարանի միջի մեծ ոսկին. Երբ Զինէն գայն տար, այլ եւս քիւդուած վերջացած էր Զինի եւ Մամէի գործը այլ եւս յուսերնին պիտի կտրէին Թաժտին եւ նորա եղբայրները Զինէն:

Սիրտս կտոր—կտոր արաւ ու փուշթեց,
Իմ նշանածը որո՞ւն դու կը կամենաս,
Ինչու եղբայրական սէրը կը մոռանաս.
—Մամէն մեր հիւրն է փառաւոր,
Նա մեր եղբայրն է արժանաւոր:
Աֆան երգեց.—Թաժտին, մեծ եղբայր,
Մինչև ցարդ եղած ես մեզ որպէս հայր.
Այնպէս կարգադրէ, ինչպէս կուզես,
Մամէն իւր սրտի փափաքին հասցնես։
Ճագան երգեց.—Համայն եղբայրներ,
Երեք են մեր կարմիր ձիաններ.
Մի առ ժամանակ շրջենք, որոնենք,
Մամէ եղբօր սրտի ուզածը բերենք,
Այն որ ինքը կը սիրէ և կուզէ,
Այն որ աշխարհիս գեղեցկուհին է։[1]
Աֆան երգեց.—Համայն եղբայրներ,
Չորս են մեր սև ձիաններ,
Միջոց մի չարաչար տանջուենք,
Մինչև Զինը Մամէ եղբօր բերենք.
Այն որ աչքն ու ունքըն է սիրուն,
Անուն հռչակուած ի մէջ թագաւորներուն։
Երեք եղբայրներ միասին երդուեցան,
Իրարու հետ հաստատուն խոստացան,
—Ինչ արգելքներ ևս պատահելու լինի,
Մամէ եղբօր փափաքը կատարենք պիտի։

***

Միր, Ղարաթաժտինի լուր կը ղրկէ.
Որ Մամէն վերցնէ, իւր հետը բերէ։
Մամէն ու Թաժտին ելան, գնացին առեան,
Միր զԹաժտին հրաւիրեց գաղտնի խորհրդեան.
—Իմ սիրելի Թաժտին, ասաց, ուղիղն ասա՛,
Մամէն թագաւորի՞, թէ փաշայի է տղայ։
—Միրս, այն է, ինչ որ դու ասացիր,
Թագաւորի տղայ է, լա՛ւ գիտցիր։
—Ղարաթաժտին սիրելիդ իմ,
Մամէդ գլխուս վերայ կընդունիմ,
Աշխարհնհրէն որ քեզ դիմած՝ եկած է,

1 Ակամայ կը համաձայնի Ճագան, որով սիրտ չտանէր Ջինէի անունը տալ, այլ նորա յաջողութիւնները կը յիշէ:

Քեզ հիւրասիրելու պարտաւորեցուցած է։[1]
Միր Մամէին կանչեց, հանեց իւր առեան,
Խաթուն Զին մի օր առաջ լսած էր մի բան,
Թէ իւր հայրը Մամէին լաւութիւն պիտի անէր,
Զայն մի կարևոր պաշտօնի-գործի հրաւիրէր։
Զին Ավանի Բաքօյի աղջկան կը կանչէ,
—Զինէ, տեսնամ զքեզ. ով ժիր Զինէ,[2]
Հայրս, Մամէն իւր դիւանը տարած է,
Մի հասկացիր. տես, ինչ պիտի անէ։
—Հասկացայ, Խաթուն Զինս, ասաց Զին,
Ստամբօլ քաղաքը պիտի տայ Մամէին,
Որ այն երկրին իշխէ, այն տեղ մնա,
Կեանք վարէ, ուտէ. խմէ, ուրախանայ:
—Զին, ով Զին, հասիր Մամէին, թող չգնայ,
Մի ճար ու հնար գտնէ, այս տեղ մնայ.
Հօրս պալատին մէջ մի պաշտօն առանայ։
Մամէն էր, ներկայացաւ Միրի առնին,
—Չեմ կարող Ստամբօլ գնալ, ասաց Միրին։
—Որդիս. ասաց, փափաքս է քեզ մեծացնել.
Ուրեմն դու ինչ կուզես այս տեղ գործել։
—Միրս, քեզ սրտով սիրած եմ ու հոգւով,
Ձեր առեանի մէջ ծառայել կուզեմ գործով։
Միր զՄամէն իւր ապարանք յղեց,
Իւր խոհանոցին վերատեսուչ կարգեց։
Այնտեղ ծառայող մէկը Նախկին՝
—Տնաւեր Մամէ, ասաց Մամէին.
Ինչու իմ հացի առաջ բռնեցիր,
Զիս իմ երեխաներով սպանեցիր։
—Մեծ են դիպուածներ, ասաց, իմ վիճակիս,
Քեզ եւ Աստուած ողորմած է, հոգիս.
Իմ թոշակս կը նուիրեմ քեզ,
Ասաց Մամէն սրտագին ու հեզ։
Պէտք է լաւ ճանաչես քո գործը.
Ոչ մէկի չը յայտնես այս խօսքը:
—Հոգիս դուրս գայ այս կաղապարէս,
Այն գաղտնիքը որ դու կասես, ես

1 Միր կը կարծէր թէ Մամէն Թաժտինի նաչակը լսած ու եկած է դորա փառքը ու պատիւր տեսնելու միայն:

2 Ավանի Բաւնոյի աղջիկն եւս Զին է, ւր Զինէի մօտ աղախին է. Մամէն զայն տեսած էր դեռ Բաղաւ չմտած աղբիւրի վերան:

Դուրս չպիտի հանեմ կոկորդէս։
Մամէն վերուց, տարաւ Խաթուն Ջինը.
Միասին մտան գաղտնի խորհրդարանը.
Որտեղ երկար-բարակ խօսեցան,
Իրարու քաղցր արեւով երդուեցան։
Տարիմ-երկուք այդպէս էր Մամէն,
Ուշադիր առարկան էր միայն Ջինէն.
Ինքզինք մոռացած՝ անօթի կանցնէր,
Միրի սեղանի ժամանակը մտքէն կը հանէր։
Միրին որ նախաճաշ պիտի տանէր,
Ընթրեաց ժամուն միտքը կընկնէր։
Բաքոյի Ավանը քսու մի անձ էր,
Միրի մօտ մեծ-մեծ պաշտօն կը վարէր.
Առիթ կորոնէ, որ Մամէն հեռացնէ,
Իւր պաշտած սիրելի Ջինէէն զրկէ 1)։
Գնաց Միրի մօտ, յուզուած ասաց.
—Մամէն է մի անհոդ մարդ արարած,
Նորա գործերն որ յայտնի կերեւան,
Ցոյց կըտան՝ նա մի անէ է աննշան։
Ապարանքի մէջ լսելացնոր կը թափառի,
Մարդ չգիտէր, մէկի՝ միւսին ինչ կը խօսի։
—Բաքօ, ասաց Միր, ինչ քսութիւն է կանես.
Չէ՞ Մամէն իմ մարդն է, այդ չգիտե՞ս.
Ես նորա արածներուն կը խնայեմ,
Նորա սխալմունքին միշտ կը ներեմ։
Բաքօն քսութիւնը շարունակեց, մնաց.
Ջինէն այդ ամենը նշմարեց, ասաց.
—Մամէ, մենք խայտառակ կըլլանք,
Եթէ այսպէս շարունակենք, գնանք։
Մամէն Միրի առեանը դիմեց,
Արձակման հրաման խնդրեց։
—Քեզ հրաման է, եթէ գնալ կուզես,
Ինչ որ կը ցանկաս, արա այնպէս.
Բայց ուշադիր եղիր, չմոռանաս,
Որը երեք անգամ առեանս ներկայանաս։

*
* *

Միր մի օր կանչեց Ղարաթաժտինի,

1) Կախարդութեամբ կուզէր իւր Ջին աղջիկը Մամէին տալ, երբ չյաջողեցաւ, սկսաւ բռնամութեան:

Ասաց.—Ցարմար օր է ձիաթողսի, ջրինդի.
Շտապէ՛, պատրաստութիւն տե՛ս,
Զէով, ձիաւորով, գնանք հանդէս։
Ղարաթաժտին տուն վերադարձաւ,
Մամէին ինչ որ հարկն էր, խօսեցաւ.
Խաղացող ձիաւորներուն ազդարարեց,
Ջրինդ խաղալու հանդէսը պատրաստեց։
Մամէն ևս հրաւիրուած էր խաղալու,
Հրապարակ գալ, հունարը ցոյց տալու.
Բայց նա վաղուց իւր Բորէն լուր չունէր,
Անօթի, ծարաւ, անխնամ մնացեր էր։
Շատ մտածեց ու ձիանոց մտաւ,
Բորը բոլորովին անխնամ գտաւ.
Բոր աչքերը դարձուց, Մամէն տեսաւ,
Բարկանալով դառն-դառն խօսեցաւ.
—Հեռացիր աչքէս, Մամէդ անխոհեմ,
Աչքացու առջև զքեզ կը փարատեմ։
Մամէն լալով, հառաչելով դուրս ելաւ,
Ձեռքը ծոցին՝ պատի մի տակ նստաւ.
Նա իւր փառք ու պատիւը մտաբերեց,
Խեղճ—խեղճ Բորի երեսը դիտեց։
—Իմ Բորը շատ պատուական է, երգեց.
Անչափելի ու շատ է Բորիս գութը,
Պէտի ներէ յանցանքներուս եօթը-ութը։
Բորն ի գութ շարժեցաւ, ասաց.—Թող ներս գայ։
Կահաւորուած թամքը գարնէ մէջքիս վերայ։
Մամէն սրտապնդած շուտ մի հեծաւ.
Քշեց, հրապարակի գլուխ կանգնեցաւ։
Միրը չորս հարիւր ձիաւորով եկաւ,
Հրապարակի միւս եզրն կանգնեցաւ։
Այնտեղ երկար-բարակ մտածեց Մամէն,
—Շատուրի կողմ գնամ՝ երկչոտ է կասեն.
Զին քշեց, երեք եղբայրներու կողմն անցաւ.
Հրապարակի վրան պատրաստ կանգնեցաւ։
Միր մի նշանաւոր կտրիճի այնպէս հրամայեց,
—Գնա՛, Մամէին մի ջրինդ զարկ, պատուիրեց,
Տեսնենք, նա ինչպէս կարող է համբերել,
Հակառակորդի հարուածը տանել։
Քաջ ձիաւորը ջրինդը ձեռքի մէջ առաւ,
Զին խաղցուց, քանի անգամ գնաց, դարձաւ.

Նա ուշով ջրինդի ուղղութիւնը կը դիտէր,
Որ Մամէին մի հարուածով ցած գլորէր։
Թորը ասաց.—Մամէ, ո՜վ անուեր Մամէ,
Սանձարձակ լեցուած՝ անձիղ վնասը կորոնէ.
Նա վարժ, հմուտ ձիաւոր և կտրիճ է,
Իւր մրցակիցը շատ լաւ կը ճանաչէ։
Ասպանդակները դատարկէ, ո՜վ Մամէ,
Զքեզ Թորի մի կողի կողմի վրայ ձգէ.
Քեզ տուր իմ ընդարձակ փորի տակ,
Որ հարուածները անցնին դատարկ։
Եթէ հարուածներէն մին ինձ առնէ,
Այն հարուածը թող իմ անձիս վնասէ։
Ձիաւորը մի անգամ ևս լեցուց իւր ձին,
Ուղղահայեաց 1) ջրինդ մի ձգեց Մամէին։
—Մամէ՛, ասաց Թոր, ասպանդակէ երկու կողմէն,
Որ ասպանդակներ փորիս մէջ իրար դիպչեն.
Դու ևս բարձրէն ուղիղ ջրինդ մի ձգէ,
Որ հարուածը նորա աջ բազկին բռնէ։
Մամէն ձին լեցուց, ուժգին ջրինդ մի ձգեց,
Հարուածք հակառակորդի ձեռքը կտրեց,
Իսկոյն ձիու վզի վրայէն գլխիվայր ձգեց։
Միր ասաց.—Գնանք, այլ ևս է բաւ,
Տարածուեցաւ Մամէի համբաւ։
Այն օր ուրախ զուարթ յետ դարձան,
Մամէի հետ պատկառանօք խօսեցան։
Անցան օրեր. Միր դարձեալ լուր յղեց.
Թաժտին—հօրեղբօրորդին բերել տուեց.
Նստաւ, հետը քաղցր-քաղցր կը խօսէր,
—Այլ ևս երբ որսի պիտի գնանք, կը հարցնէր։
Մամէն որ լաւ է ջրինդ խաղալու,
Տեսնենք, ինչպէս է որս անելու։
Մի օր Զին կը լսէ. Միր որսի գնալու է.
Աղախնոյն կը կանչէ.—Զինէ, ո՜վ Զինէ.
Շտապէ, գնա՛, հասի՛ր, Մամէին խօսէ,
Որսի չերթայ.—Ես հիւանդ եմ, թող ասէ։
Առաւօտեան հեծան, գնացին որսալու.
Մամէն,—հիւանդ եմ, ասաց, մնաց խօսելու։

1) «Ուղղահայեաց» դրած եմ Քրդերէն այն բառի տեղ, որ կը նշանակէ ջրինդը ոչ գլխէն բարձր անցնէր եւ ոչ ցածէն անցնէր, այլ ուղղակի նպատակին։

Հարցուց Միր.—Ո՞ւր է Մամէն, Թաժտին։
Ասաց.—Հիւանդ է, Միրս, իմ հիւր անգին։
Միր իր մարդերով ելան որսի գնացին։
—Ջի՛ն, ո՛վ Ջին, կանչեց Խաթուն Ջին,
Շուտ գնա, հասիր, ասա՛ Մամէին.
Գնանք, զբօսնենք պարսպապատ այգին։
Ջինէն մինակ ճանապարհ ընկաւ. այգին հասաւ,
Մամէն ալ զգոյշ-զգոյշ նորա հետևեցաւ.
Հասան իրար, մտան այգին, շրջեցան,
Իրարու երես նայելով ուրախացան։

* * *

Նոքա այդտեղ շրջեն, ուրախանան,
Մենք դառնանք որսորդներու վերան։
Մտան անտառը ու որսալ սկսան,
Ձոր ու ձորակ մտան ու զբաղուեցան։
Անցաւ քանի ժամ ու ժամանակ,
Սաստիկ կարկուտ եկաւ մի մեծ երակ։
—Թրջուանք, ասաց Միր, յետ դառնանք,
Գնանք ուղղակի տուն, հանգստանանք։
Միր իւր տուն դառնալ կշտապէր,
Քաւ Բաքօն մի այլ բան կը խորհէր.
—Միրս, ասաց նա, ճանապարհէն դուրս ելլենք,
Միասին գնանք, պարսպապատ այգին մտնենք։
Այնտեղ երկու որսորդ գնացին,
Տեսնենք մի ինչ բան որսացին։
Ամբողջ որսկանք ճանապարհէն շեղուեցան,
Ուղղակի գնացին Սուրկըրի այգին մտան։
Այնտեղ ուրախ կզբօսնէին Մամ ու Ջին,
Չգիտէին գլխներէն ինչեր պիտի անցնէին։
Միրը ձայն ձգեց.—Չավուշ, հա չավուշ, գոռաց.
Պարտիզպանը թռաւ վեր, Միրի մօտ գնաց։
—Չավուշ, ասաց Միրը, չորերս թաց են։
—Միրս, հրամանդ ի՞նչ է, ասա, կատարեմ։
—Գնա՛, այգւոյն սենեկին մէջ կրակ վառէ։
Չավուշ չտապեց, գնաց, այգու օդան մտաւ,
Ջին ու Մամ իրար փարած՝ քնած տեսաւ,
Ուզեց զարթեցնել, խղճահարեցաւ, մնաց.
Որչափ մտածեց, մի ճար չըգտաւ, եղաւ լաց։
—Ես, մտածեց. Աստուածմէ երկիւղ կը կրեմ,

Այս աստիճան սիրահարներն ինչպէս բաժանեմ։
Արագ գնաց-էկաւ, ձայն ալ չէր ուզեր,
Սակայն ուշացնելու ես երկիւղ կը կրէր.
Փայտերու կապոցներ կոխեց ի բուրակ,
Ճարճատիւն ընկաւ երկար ու բարակ։
Մամ ու Զին, յանկարծ աչքերնին բացին,
Տեսան բոցի ճթատոց ընկած է բուխերին։
Նայեցան տեսան չավուշ իրենց մօտ կանգնած,
Աչքերը իրենց աչքերուն մէջ յառած։
—Չավուշ, ասաց Մամէն, դու որ կաս,
Աստուած ու նորա մարդուն կը հաւատաս.
Այս ինչ պատահար է ու դիպուած,
Որ զքեզ այդպէս շուարեցուցած։
—Մամէ՛, տնաւեր Մամէ՛, շուտ արա՛, շտապէ՛,
Ահա Միրը դռնէն ներս մտնելու վրայ է։
—Զինէ՛, ով Զինէ, շուարած կասէ Մամէ.
Մեր վիճակը սաստիկ վտանգաւոր է.
Դու այլ ևս մի ճար, հնար չունիս,
Պէտք է վերարկուիս ներքև պահուիս։
Մամ սրտատրոփ բուրակի մօտ նստաւ,
Զինէն իւր վերարկուին ներքև առաւ.
Բաւական ձայնով դողեցիկ երգեց,
Լաղներու սիրան ու դութ չարժեց։
—«Բաքօն երբ մտնէ սենեակը Միրին,
Մամէս կը լինի նորա գերին.
Աչքերէս արտասուք է որ կը վազէ,
Ո՛վ կասէ Մամ դառն կարտասուէ»։
Միր ուրախ զուարթ դռնէն ներս մտաւ,
Բարձր ու խրոխտ ձայնով բարև տուաւ.
Մամ գունատ, ծանր-ծանր կանգնեցաւ,
Խոնարհեցաւ Միրի առաջը, բարև առաւ։
Բաքօն կասկած ունէր վերան արդէն,
Գիտէր շուար վիճակի մէջ էր Մամէն։
Առիթ գտաւ, քսութիւնը շարունակեց,
Մամէի սիրտն ու հոգին ի կրակ վառեց։
—Միրս, ասաց. երբ դրսէն ներս մտար,
Մամօյի անկարգ վարքը հասկցա՞ր.
Բարձր բարևեցիր, նա որպէս չլսեց,
Ծանր-ծանր առաջդ ելաւ, կանգնեց։
Բաքօն որ այդ ասաց, Միր վիրաւորեցաւ,

Խոժոռ դէմքով Մամէի երեսին նայեցաւ.
Ժողովականք լուռ ու մունջ կանգնած էին,
Միրի ու Մամէի երեսները կը նայէին։
Մամ տխուր ձայնով երգեց.
—«Միրս, ես շատ հիւանդ եմ,
Ամբողջ մարմնիս մէջ ցաւ ունեմ.
Գլուխս կը շարժի մշտական,
Զդադարիր մի բարձի վերան.
Հազիւ եկած եմ այս այգեստան,
Խնդրեմ, ցաւիս արա մի դարման։
Բաքօն գիտէր որ Մամ սիրահար էր,
Խաթուն Զինի կըրակով կը վառուէր.
Մի յուզիչ երգ ձեռք կառնէ, կերգէ.
Որ Մամէի սիրտ յուզէ ու գրգռէ,
Բերնէն մի անկարգ գրոյց դուրս հանէ 1)։
—«Միրս, այն՝ որ Մամէն կը սիրէ,
Շրթունքը պիստակաւոր, երեսը արաբ,
Բնաւ հարկ չկայ անունը տալու պարապ.
Յարմար չէ նաև վերան իսկ խօսելու,
Պատուաւորներու առեանը յուզելու։
Մամէն գրգռեցաւ, երգեց.
—«Բաքօն պատուաւորներու մէջ սուտ ասաց,
Ազատներու մէջ ես գեղեցիկ եմ սիրած.
Եթէ անունը հարցնես, է Զին,
Հօր անունն է Միր Սեւտին,
Եղբօր անուն Միր Թաժտին»։
Մամէի այս վտանգաւոր երգի վրան,
Ղարաթաժտին և Ճագան ու Աֆան
Աչքերնին նորա յառած՝ կակնարկեն,
Ցած ու մեղմ ձայնով կըզգուշացնեն։
—Այ Մամէ, դու այդ ինչ է, կասես.
Զգոյշ կաց, գլխուդ փորձանք կը բերես:
Մամէի ուշն էր լարուած, չլսեց.
Նոյն խօսքերը կրկին Մամէ երգեց։
Զայրացաւ Միր, գորգոռոց մի արձակեց.
—Համայն ծառաներս և սպասաւորներս,

---

1) Բաքօն զգացած էր որ Մամէն Զինէի հետ Սուրկի այգին գնացած են, կարծէր թէ միասին պիտի զենէ ու խայտառակէ զՄամէն, երբ Զինէն չտեսաւ, զայն գրգռելու համար երգ ասաց:

Հարամ լինի ձեզ անհաչիւ երախտիքը հօրս.
Ձեր դաշտյնները մերկացուցէք դուրս,
Հազար հարուած համրէք այս ժամուս։
Մէրի հետեւորդք դաշոյնները մերկացուցին,
Որ հարուածի առաջ յօշոտեն Մամէին։
Ղարաթաժտին, Ճազան ու Աֆան,
Ցանկարծ սաստիկ դրդռուեցան,
Իրար մօտ հաւաքուելով սպառնացան.
—Եթէ մին չարժի, ասացին, կտանք որի բերան։
Համայն պատուակնանք, ասացին, զգոյշ կացէք,
Անվրդով՝ որպէս բարեկամ ձեր տեղը կանգնեցէք.
Եթէ փոքր ինչ շարժիք, դուք ողջ չէք,
Եթէ անխոհեմ շարժիք, կեանք չունէք։
Եթէ արև ու կեանք տեսնել կուզէք,
Բարեկամութեան կապը պինդ բռնեցէք։
Մինչև դուք Մամէն ընկճելու լինէք,
Մենք ձեր հազարը մի անգամէն կսպաննենք,
Ո՛վ կը համարձակի, թող գայ առաջ, տեսնենք։
Թաժտին տեսաւ ազմուկը կը սաստկանար,
Մամէին մեծ վտանգ մի կսպառնար.
Շուտով ձեռաց տակէն իւր տուն լուր յղեց,
Խաթուն Գիւլփէրուն եղածը յայտնեց 1)։
—Մամէն ու Զին վտանգի մէջ են, ինչ կանես,
Շտապէ, մեր յարգելի հիւրի կեանքը փրկես.
Շնւս՝ օրօրոցն ու Բոր և մոհաֆ դուրս հանէ,
Շահնաշին—ապարանքը հրոյ ճարակ արա ու վառէ։
Մի վայրկեանէն ճարճատիւն ընկաւ Շահնաշին,
Բոցեր այդ մեծ ապարանքը շրջապատեցին.
Անմիջապէս հաւար հասաւ ամեն կողմեր,
—Ինչ կը կանգնիք, Շահնաշինն է կրակ ընկեր։
Միր Սևտին յանկարծակի երբ հրդեհը լսեց.
Ամեն բան մոռացաւ, դէպի Շահնաշին վազեց.
Մամէն այլ ևս ազատ էր, Զինը տուն յղեց,
Ինքն ալ դէպի հրդեհի կողմը շտապեց։
Տեսաւ Շահնաշին պարսպով պատած.

1) Ոմանք կասեն Ղարաթաժտին ապտյի սակեն տեսաւ Զինի ծամերը, հասկացաւ որ վտանգը մեծ է. ոմանք եւս կասեն թէ ծամերը Մամէն ինքը ցոյց տուած է Ղարաթաժտինի, որով Թաժտին ստիպուած է Միրի եւ ամբոխի ուշը այլ կողմ դարձնելու համար իւր նուիրական տունը հրդեհել: Այս ամենը Թաժտին յանձն առած է մի միայն հիւրասիրութեան աւանդութիւնը հաստատուն պահելու համար։

Կատաղի բոցեր զայն են շրջապատած,
Տեսաւ այդ մեծ ապարանք հնաւանդ,
Նախնիք թողած էին անգին աւանդ.
Նորա աչքերէն արտասուք վազեց.
Հառաչելով տխուր-տխուր երգեց:
—Ա՛խ Ջինէ, գիտեմ, քո անունը Ջին է.
Չգիտեմ ինչու աչքերէս արցունք կը հոսէ,
Արտասուք կը վազէ դառն ու լեղի.
Մեր մեղքէն օր չտեսնէ Բաքօյի Ավանի։
Կրակ ընկեր է, սաստիկ կը վառի Շահնաշին,
Մեր մեծ եղբօր Ղարաթաժտինի քօշկին,
Նորա չմնաց և ոչ իսկ մի ձեռք անկողին.
Վառուած ու խառնուած է մոխրին։

***

Միր և Թաժտին Մամէի վրայ թշնամացան,
Երեք և չորս ամիս իրար հետ գժտած կեցան,
Վճռեցին իրարու տուն երբէք չմտնել.
Նաև իրարու երես չտեսնել. բարև չտալ։
Մի օր թշնամի մեծ բանակ մի եկաւ.
Յանկարծ Միրի երկիրն պաշարեց, կայնաւ։
Միր թև ու թիկունք չունէր որ ելնէր.
Այդ ահեղ բանակի դէմ կռուել կարող լինէր։
—Աստուած տունդ քանդէ, սաաց, Բաքօյի Ավան.
Դու պատճառ եղար, ազգականներս հեռացան.
Արդ, զօրք կգայ, կը գրաւէ,
Գիտես, մեր վիճակը ո՞ւր կը հասցնէ,
Գիշեր-ցերեկ կտրուեցաւ Միրի քունը,
Ելաւ ինք գինքը, ձգեց Թաժտինի տունը։
—Միրս, գալդ բարի, յանկարծ այս ինչպէս,
Ծառայիդ տունը բարի ոտքդ կոխես։
Թաժտի՛ն, սիրելի արենակիցս, քաջ ու արի՛,
Ես քեզ չար արի, իսկ դու ինձ արա բարի։
—Միրս, հրաման տուր, ինչ որ դու կասես,
Ամեն պատուէրներուդ պատրաստ եմ ես։
Թաժտին, յարգելիս, եթէ գիս կը սիրես,
Բանակին հրամանատար պիտի կարգեմ քեզ.
Որ արիւնարբու թշնամին երկրէս հանես,
Մեր ազգականները գդուելիներէն ազատես։
—Միրս, կատարեմ այդ պաշտօնը դու որ կասես.

Մամէի-Ալան հիւրս աւանդ կտամ քեզ,
Մինչև իմ վերադառնալը լաւ կը պահես.
Այնպէս ինձ յանձնես, որպէս յանձնեցի ես։
Հաւաքուեցան հինգ հազար արի քաջ զինուոր,
Թաժտին որոց առաջ անցաւ փառաւոր,
Ղարաթաժտին, Ճագոն Աֆոն ևս գնացին.
Միրը, Մամէն ու Բաքօյի Ավան մնացին։
Քոռ Բաքօն դարձեալ Միրի մօտ գնաց.
—Բան մի կայ, միրս, ես չընդունիմ, ասաց։
—Հա՛, ի՞նչ կայ, ասաց, Բաքօյի Ավան,
Դու մարդոց մէջ ամենաանպիտան։
Կուզէի Մամի արարքը չը մոռանաս.
Այժմ ես արածը ինչ է, հասկանաս։
Այ Ավան, Մամէի արածը գիտեմ ես,
Սակայն նա աւանդ է, յանձնուած մեզ։
—Այո՛, միրս, Մամէն աւանդ է կարևոր,
Պատժելու ճանապարհն է հնարաւոր.
Իրարու հետ սաթրինճ խաղացէք,
Որն որ տարուեցաւ, պատժեցէք։
—Արի՛, սաթրինճ խաղանք, Մամէս.
Որ տարուեցայ տամ քեզ Զինէս,
Իսկ երբ տարի, գիտես, ինչ կանեմ.
Մութ բանտին մէջ կը բանտարկեմ։
Պայման դրին. ելան, պալատ գնացին.
Զինի քոշկի առաջ սաթրինճ խաղացին;
Պայմանը երեք ձեռք էին խօսած,
Մամէն երկու ձեռք էր միրին տարած։
Խարթախ Բաքօն Զինի մօտ վազեց—գնաց.
—Խաթուն Զին, իմ մուժտէն տուր, ասաց.
Միր ու Մամէն սաթրինճ կը խաղան,
Պայման են դրած իսկ քո վերան.
Երկու ձեռք Մամէն Միրին տարած է,
Մէկ ձեռք կը մնայ որ քեզ առնէ։
—Բաքօ՛, քո բաղդն եմ ապաւինած,
Արդեօք սուտ չէ այդ քո խօսուած։
—Սուտ չէ. Աստուծոյ մարդը վկայ վրան,
Տե՛ս, ո՛ր տեղ և ի՞նչպէս կը խաղան։
Զինէն առջի, յետի զգեստը հագաւ,
Ոսկեղէն գկոտվ զարդարուեցաւ,
Եկաւ, լուսամուտի փայտին յենաւ,

—Դէպի ցած՝ խաղացողներուն նայեցաւ։
Ավանի Բաքօն Միրի առաջը կանգնեց,
Նորա ակնարկեց, անուշ երգ մի սկսեց։
Կերևի, Միր, դուք դեռ անփորձ էք.
Ինչու այդպէս պզզած՝ նստած էք.
Չէ՞ քաջերու հոտն իրար եռանդ կը բերեն.
Եթէ իրենց նստած տեղերը փոփոխեն։
Մամէն ընաց, Միրի տեղ նստաւ.
Միր եւ Մամէի տեղ փոխուեցաւ։
Մամէի երես դարձաւ դէպի արևմուտը,
Ուղղակի Զինէի եղած լուսամուտը,
Միր Սանթրինի վերայ դարձուցած էր ուշքը,
Մամէն ուշադիր Զինէին էր յառած իւր աչքը։
Շուարեցաւ, խաղըն չկարողացաւ. մնաց.
Միր Նորանից երեք ձեռք տարաւ, առաջ.
—Մամէ՛, ես քեզ տարայ, այնպէս տարայ.
Մի ձեռք ես աւել տարայ քո վերայ.
Քո խօսքով քո տուն աւեր դարձուցի.
Քեզ աշխարհի մէջ խայտառակեցի։
—Համայն ծառաներ, ասաց Միր, երկուք-երեք արէք,
Մամէի ձեռներ ու ոտներ, բռնեցէք, կապեցէք։
Հինգ ծառաներ շտապաւ ներկայացան,
Մամէն բռնեցին, ձգեցին մութ զնդան։
Մամէն երբ դէպի զնդան տարան.
Մի անգամ եւ նայեցաւ Զինի վերան.
Ասաց.—Դու ինչ կասես, Խաթուն Զին,
Թշուառ Մամէն կորուս իւր հոգին։
—Ինչ միտի անեմ, ասաց, ամէն գուրս,
Հողեր պիտի թափեմ իմ սև գլխուս։
Զինէն յանկարծ խելքի եկաւ, մտածեց
Երբ Մամէի մեծ ցաւ տեսաւ. կրկնեց
Քաջալերեց, երկու խօսք խօսեցաւ.
Տակն ու վերայ եղաւ, խիստ յուզուեցաւ.
—Մամէս, ինկի հոգ դու մի քաշեր,
Կը հսկեմ վրադ ցորեկ և գիշեր։
Մամէն մտուցին բանտը նեղ և մութ.
Բանտապետները կը չարչարէին անգութ։
Զինէն երեք ականահատ բերել տուեց.
—Գաղտնապահութեան մէջ ինչպէս էք.
Ասացին-այնպէս՝ ինչպէս որ կուզէք.

—Անձ, մամայ. ձեզի տամ ոսկի, առէք.
Ջնտանի տանկէն իմ սենեակս ական բացէք:
Ականահատները ներքնուցի մի բացին.
Խաթուն Ջինի սենեակէն դուրս հանեցին։
Երկու սիրեկիններ իրար տեսան.
Իրարու հետ դարձեալ ուրախացան.
Այսպէս իրարու հետ կեանք վարեցին,
Դառն ժամերն ուրախ անցուցին։
Քոու Բաքօն մի օր կը հարցնէ,
—Ջին, սիրելի դուստր իմ Ջին.
Գիտես, ինչ կանէ Խաթուն Ջին.
Մի անգամ իմացիր, դուստր իմ Ջին։
—Անկողին փռած՝ միշտ վրան է նստած.
Նա բան գործ արած է չարունակ լաց,
Երեկոյին երբ ճրագ վառել պիտի սկսէ.
«Գնացէք, այլ նա ձեզի գործ չկայ», կասէ։
Քոու Բաքօն դայս խօսքը որ լսեց, զգաց.
—Այս վարմունքի ներքև մի բան կայ, ասաց.
Երկու երեք անգամ հարցուց, փորձեց.
Ուղղակի Միրի մօտ չտապեց, յայտնեց։
—Միրս, ասաց. դու այդ որչափ անհոգ ես,
Ջին ու Մամ իրենց գլխուն ազատ կը թողես։
—Այ Բաքօ, դու խարդախ ու չար ես.
Ինչ գիտես, անտարբեր, անհոգ եմ ես։
—Միրս, երբ կը նայանաս, չունիմ ինչ ասելու,
Որուն արտածները մի օր մի քեզ յայտնելու:
—Հասուած կը տիրես. այլ բան չեմ ասեր,
Ասմ, ինչու կասես դու ես անտարբեր»:
Դարձեալ եղելութիւնն է քո առջևան,
Ականահատներ բերած՝ բացած է ական,
Մամ ու Ջին իրար հետ կը տեսնուեն,
Գիշեր ու ցերեկ իրարու մօտ կը քնեն:
—Բաքօյի ասած, չհաւատամ քո խօսքին.
Կարելի է այդչափ բան գործեն միասին։
—Ձեռք երկայն է, հրամայէ, գնանք,
Մեր աչքով որոնց արարքները տեսնանք։
Միր ու Բաքօն երկուսով երան եկան,
Ջին անկողնի վերան նստած տեսան։
Խաթուն Ջին երբ Միր հայրը տեսաւ,
Վեր թռաւ, սիրտ վրայ կանգնեցաւ.

Նա չէր գիտէր Բաքօն քուլթիւն արած,
Գաղտնիքը իւր հօրն է յայտարարած։
—Միրս, ասաց Բաքօ, ձեռքդ երկարացուր,
Ջինի անկողինը մի կողմ բարձրացուր.
Պիտի տեսնես զարմանալի տեսարան,
Մամ ու Ջինի գործած գաղտնի դարան։
Ջինի գոյնը իսկոյն ևեթ փոխուեցաւ,
Երկիւղէն ու ամօթէն ուշագնաց եղաւ։
—Ջին, ասաց Միր, այս ինչ տեսարան՝
Մեր պատիւ ու տուն արիր դու վերան:
Ջինէի սիրտ կը դողար, լեզուն բռնուած էր,
Խելաթափ եղած չէր գիտէր, ինչ էր կը խօսէր։
—Բաքօ, ասաց Միր, ասա՛, տորա ինչ անեմ,
Դուստրս ինչ տեսակ տանջանքի մատնեմ։
—Աստուծոյ ու մօր պատուոյն ներէ Ջինէին,
Իսկ քարքարօտ ու խոչնդոտ բանտը ձգէ Մամէին։
Միր չորս ծառայ կանչեց, իր մօտ բերեց,
—Մամէն բռնէք, տարէք, հրաման արձակեց,
Տարէք, ասաց, մութ խոր հորի մէջ ձգեցէք,

***

Մամէն տարի և կէս այնտեղ կեցաւ,
Շատ չարչարանք քաշեց, շատ նեղացաւ։
Երեք տարի Թաժտինի զօրքերը կռուեցան,
Փառաւոր յաղթութեամբ յետ դարձան, եկան։
—«Կուգան, աւետեցին, Թաժտին, Ճագան, Աֆան,
Փառքով ու պատուով տեղս պիտի երևան»։
Միր երբ լսեց՝ չուարեցաւ, մնաց,
Բաքօյի Աւան բերել տուաւ, ասաց.
—Ա՛յ անիրաւ, դուքսու Բաքօյի Աւան,
Քեզ պիտի գլխատեմ, տամ սրի բերան.
Այժմ ինչ պատասխանեմ Թաժտինին,
Ի՞նչ կերպ յայտնեմ արարքը Մամէին։
—Միրս, ներէ, ես շատ խեղճ մարդ եմ,
Քո դէմ երբէք յանցանք գործած չեմ։
—Բաքօ, պէտք է հնար ու ճար գտնես,
Որ անհաշիւ արած մեղքերդ քաւես։
Բաքօյի Աւան վազելով Ջինի մօտ գնաց,
Հևալով՝ ծիծաղելով քաղցր-քաղցր ասաց.
—Խաթուն Ջին, աւետիս ունեմ կարևոր,

Մամէին հետ պիտի պսակուիք այս օր։
Քեզ հրաման է, արձակէ ինչպէս կուզես,
Մի վայրկեան շուտ Մամէն զնդանէն հանես։
Ցասահատ Զինէն երբ զայս լսեց,
Հառաչանք արձակեց ու արտասուեց.
Ասաց։—Աւերակ դառնայ հօրս տունը,
Որ Մամէն պիտի ազատուի կնոջ ձեռքովը.
Կորսուի հօրս այնչափ անուն ու շան.
Որ նա լսեց Բաքօ կոչուած քսու շան։
Զինէն աճապարեց, ոտկի կանգնեց,
Քառասուն աղախինները հետը բերեց,
Իր խմբով գնաց դէպի զնդանի գլուխ,
Երգեց տխուր արտասուեց սրտաբուղխ.
—Մամէս, եկած եմ քեզ պիտի թողեմ,
Քո դառն տանջանքներէդ կազատեմ։
Ասաց.—Ա՜խ սիրելիդ իմ Խաթուն Զին,
Ինչու չարաչար կը տանջես իմ հոգին.
Դու եկած չես թշուառիս ազատելու,
Այլ դառն չարչարանքով զիս սպանելու։
Միս և ոսկորներս են քայքայուած,
Միջոց չունեմ չարժելու ինչպէս մեռած,
Խնդրեմ, մի քիչ անուշ-անուշ երգես,
Մեռած ոսկերքս, հոգիս կենդանացնես,
Տրտմող հոգիս ոսկորներէս ազատես։
Դու, Զինէս, եկած չես զիս ազատելու,
Այլ խոր չարչարանքով զիս սպաննելու։
Քառասուն աղախիններ չուան ձգեցին,
Մամէն քաշեցին, դուրս զնդանէն հանեցին։
Նա աչք դարձուց, Զինէն տեսաւ, հառաչեց
Քթէն կաթիլ մի արիւն վայր կաթեց,
Արեան հետ հոգին բերնէն դուրս թռաւ,
Սիրուն տեսքով գետնի վրայ տարածուեցաւ։
Զինէն երբ տեսաւ Մամէն մեռած,
Կսկծաց ու լացաւ սարսափով պատած.
Ձեռ ձգեց, ծամերն արմատէն փետտեց,
Հառաչելով նորա վերան մեղմ երգեց.
—«Ես կը կանչեմ այն Աստուածը,
Արեգիի ուխտավայրի մեծ սուրբը,
Մամէն մեռաւ առաւօտեան ժամուն,
Ես չը հասնեմ իրեկոյեան պահուն։

Աստուծոյ Բէյարի սուրբին կը կանչեմ,
Որ ես ալ Մամէի հետ գերեզման մտնեմ։
Կայլակնաձև քրտինքն է գոհար,
Մամէս մեռաւ անմեղ ու արդար.
Մեռաւ նա կէսաւուր պահուն,
Ես չը հասնեմ երեկոյեան ժամուն։
Միր տեսաւ զօքքերը վերադարձան,
Ղարաթաժտին, եղբայրներն ալ եկան.
Միր Թաժտինի երկխուղէն կալափած,
Ավանի Բաքոյին երկու խօսք ասաց.
—Տունդ աւերի, չուն Բաքօ, փախինենք,
Կանանոցը մտնենք, մեր գլուխ պահենք.
Երկաթեայ դռները կապանքներով փակենք,
Գոցենք, չուտ արա, մեր վրայ ամրացնենք։

***

Ղարաթաժտին լսեց ինչ էր պատահած,
Ծնկներուն հարուածեց, մեծ ցաւով ասաց.
—Միրն ու Բաքօն ուր պիտի փախնին,
Մկան ծակը մտնեն, չպիտի ազատին։
Միրն ու Բաքօն Բերդ ապաւինեցան,
Կանացի զգեստով պատսպարուեցան։
Երեք եղբայրներ բերդը շրջապատեցին,
Յարձակում գործեցին, պարիսպը քանդեցին։
Միր ներքնաբերդն էր մտած, ամրացած՝
Երկաթեայ դռներն էր փակած, կղպած։
Տեսաւ վտանգը հետզհետէ կը մօտենար,
Իրեն ու գերդաստանին մահ կսպառնար։
Աղաչեց պատուաւոր ժողովականներէն,
Որ Ղարա Թաժտինէն ներում խնդրեն։
Որչափ դատաւոր, դեմպետ կար, դիմաւորեցին,
Թաժտինի առաջ ելան, ներում խնդրեցին։
Թաժտին նկրեց եկող պատգամաւորներուն,
Երկրի մէջ գտնուող մեծամեծներուն.
Ասաց.—Ձեր խնդիրքը ընդունուած է, գնացէք,
Մամէիս ու Զինէիս տանէն մարդ ճամրեցէք,
Ուսերու վրայ քարձէք, գերեզմանի գլուխ բերէք.
Երկուսի գերեզմանը մի տեղ փորեցէք,
Երկու սիրահարներու կռնակը իրար դարձուցէք,
Դրախտի հարսն ու փեսան հողով ծածկեցէք։

***

Ութ օր անցաւ, Թաժտին ասաց.
—Գնանք, տեսնենք, ինչ են եղած.
Կռնակնե՞ն թէ երեսներն են իրար տուած,
Դրկախառնուա՞ծ են թէ իրար թողած։
    Բաքօն լսեց, գիշերով վեր կացաւ,
    Ուղղակի գնաց, գերեզմանը բացաւ,
    Տեսաւ երկու սիրեկիները մուչ-մուչ,
    Կարծես քնած են անուշ-անուշ։
Տեսաւ երես առ երես են դարձուցած,
Կայլակնաձև քրտինքի մէջ են ընկղմած,
Ուրախ-ուրախ Բաքօն հասաւ Թաժտինի,
Ասաց.—Թաժտին, իմ աւետիս քեզի,
Մամ ու Զին ողջ, առողջ իրար են դարձած,
Ոլոռ-ոլոռ քրտանց մէջ են ընկղմած։
    Առաւօտ վաղ քնէ զարթեցան, ելան
    Ճանապարհ ընկան, գնացին գերեզման.
    Բաքօն ևս իրենց հետ վերուցին, բերին.
    Գերեզմանը բացին, նորա ասացին.
—Ա՛յ անիրաւ, Բաքօյի Ավան,
Դու վատաբարոյ սուտասան,
Ո՞ւր են Մամէն ու Զինէն,
Չէ՛, կասէիր թէ ողջ են։
    Բաքօն դէպի գերեզմանը կռուաւ որ չոչափէր,
    Թաժտին թրի երախակալը բռնած կը պահէր.
    Թուրը յանկարծ մերկացուց, ուժով չարժեց,
    Բաքօյի վզին մի սաստիկ հարուած տուեց։
Իսկոյն գլուխն այս, մարմինն այն կողմ ընկաւ
Հառաչեց, թպրտաց, չանսատակ եղաւ։
    Թաժտինի թուրը զայն քուրթենէ պրծուց.
    Բաքոյի աւանի հոգին դժոխքը ուրախացուց։
Բաքոյի վզէն մի կաթիլ արիւն ցատկեց,
Երկու սիրելիներու մէջտեղ կաթեց,
    Այդ արիւնը չիչխան փուշ դարձաւ,
    Երկու ողորմածներու մէջ բուսաւ.
    Ողորմած հոգիներն երկու վարդ դարձան,
    Երկու կողմէն բուսան, վեր բարձրացան։
Կանաչեցան, բոյլք ու բողբոջ արձակեցին,
Ծիւղեր տարածեցին, արին որ իրար փաթաթուին.
Իսկ չիչխանը—այն անպիտան փուշ,
Չթողեց գիրար փարին, գրկին անուշ։

Բարձրացաւ երկուսի մէջ, բաժանեց.
Երկու սիրականներ իրար կարօտ թողեց։
Այն չիչխաններբը թոյլ չեն տար իրար հասնին,
Ցյաւիտեան ենթարկուած են այդ վիճակին։
Ամեն տարի կանչին, կը զօրանան,
Չիչխան փուշն արգելք կը դառնայ։
Հարսն ու փեսան դրախտ գնացին։
Քոու Բաքօն դժոխքի կրակի մէջ վառի,
Նորա մարմինը գերեզմանի մէջ չդադարի։

# 22

# ԵՋՏԻ ԴԵՐՎԻՇԻ ԱՎԴԻ*

Ավտի աղի տղէն կըլլի Դերվիշ. Ճատղըեանցի ազգից կըլլի։ Դերվիշի աչքը կընկնի Ջօր Թեմիր փաշի աղջկան, աղջիկն էլ ընդըրա կը սիրէ:

Ջօր Թեմիր փաշի տան մէ ղոնախ կըլլի, կասայ.—Էդի մէ Եզտի ըլլի, դու մէ միւսլիւման ըլլիս. էն էլ Ջօր Թեմիր փաշէն. քու պըյրեք ինչպէս կը տանէ որ Եզտու լամկու աչք ընկնի քու աղջկայ վրէն:

—Ըպա ինչխ անեմ, ըսդըրա գլօխ ինչ օյին խանեմ. ասաց փաշէն։

—Ըսդըրա սըպանել տուր, դու փաշայ իս, էնի եզտի ա։

—Ըսդըրա չատ ղոչաղութեն կասեն. ինչխ անենք։

—Ղանչայ, խարցրայ, քանի մարդի պարա ղոչաղութեն ունի.

Ջօր Թեմիր փաշէն կը ղանչայ, բերայ ուր դիւան. պատիւ կանէ. կը խարցնէ.—Գինմա, ընչի իմ կանչիր։—Փաշէն սաղ ըլլի, ես քու ղուլլուխին էկեր էմ։—Օղորթն ասա. դու քանի մարդի խեռ կանաս կռիւ անիս։—Է՛, ինչ հօլարտութեն անեմ. ես էլ մէ մարդ էմ։

—Չէ՛, դու ըլլիս, իմ խայ, օղորթն ասա։

—Դո՛ւ չիւնքի խաց ասիր, Աստուծոյ իզնով էրկու խարիր ձիաւոր ըլլնի, իմ առջև մէ ճանճի նման ա, ըսկի չի գինամ ինչ ա։

Փաշէն ըսդըրա պատիւ էրաց. խարցրից.—Դերվիշի Ավտի,

* Պատմած է Մամազին պատմող Օնբաշի Եզտի Միշօն։

եփ պտի էթաս տունս։—Աստուած որ յաջողայ, փաշէն իմ բռու-խսաք տայ. լուսուն կերթամ։—Բեզի իզին ա, գնա։

Զօր Թեմիր փաշէն բասարիֆ կանէ. խինդ խարիր ձիաւոր խըլուսուն կողորկէ, կասայ.—Գացէք, Դերվիշի Ավտուն սպանէք։

Դերվիշի Ավտուն երկու ձիաւոր կըար, ինքն էլ բանից խապար չունի. կը խեծնի, կերթայ, խինդ խարիր ձիաւորի բռասց կգայ, որ Ղարադաղայ սար պահուած էն։ Դերվիշի Ավտին խասաւ Կրէ կաւկաւէն. ձիաւորտանք էլան առջևը, կռիւ արին։ Երկու բարաֆէն իրար վրայ կրակ թափին։ Դերվիշի Ավտու Ցօֆարները փախան. էդի ղանչեց ընդոնց.—«Մրրն հայեա, բռա գօ ուան Ճեա»։ (մեռնիլ կայ, փախնիլ չկայ)։ Դերվիշի Ավտին Աստուած ղանչեց, ընկաւ մէջները. էս տեղէն ջարդեց, էն տեղէն էլաւ դուս. էն տեղից ջարդեց, էս տեղ էլաւ դուս. էն տեղից ջարդեց. էն մէկէլ տեղից էլաւ դուս. բամամ երեք խարիր խոգի ջարդեց չուր իրիկուան գախին։ Երկու խարիր խոգին փախան, կայնան, ջուղաբ տուեցին.—Մենք Թեմիր փաշի մարդիկն ենք. ախր մեզի ջարդեցիր. էս Նամուս քեզի բօլ ա, մնացողն բաշխայ։

—Բախշեցի Աստըծուն, դը, գնացէք, ձեր փաշին խապար տարէք, իմացէք որ աշխարք էդպէսդ մարդ էլ կայ։

Ընդոնք յօրդում արեցին որ էլ կռիւ չանէն, ինքն էլ յօրդում արաց։ Ըսդըրան արխային էցգեցին, էտևից զարկեցին, սըպանեցին։

Ջուաբ տարան, գլուխ լէ առան, տարան Զօր Թեմիր փաշին. էլած ջարդը ասացին։ Թեմիր փաշի աղջիկն Մէյրան, լսեց Դերվիշի Ավտու սըպանուիլը. ինչ դար զուսկ, ոսկի, արծաթ կայ, կը կըտռայ, կը թափայ, սև չոր կը խագնի. կուլայ ու խաղ կասայ։ Աղջկայ խէր մարդ կորողկի մօտ, կասայ.—Դու ինչու էդենց կանես, էդի մէ Եզտի լամուկ էր. մեր Ցամուս ափսոս էր։ մեզի էսքան մարդ սըպանեց, ափսոս չես գալըմ. ընդոր էս ափսոս գալըմ։ Մէյրան չուր էն վախց չէր դիտում սըպանուած ա, որ հաստատուաւ, խեղքը թռցրեց։

Փաշի Ճկեարն էր, էսի որ տեսաւ, չոքերուն զարկից.—Վայ վաւելեր, ես չգինէնք, ասաց. որ իմ աղջիկ էդքան սիրով էր. էդպէսդ կտրիճ սըպանել արժան չէր, էդոր ղօշաղութեն մէ երկրի բարա էր։

Մարդ օրողկեց աղջկայ կուչա, ասաց.—Արի, ծուռ-ծուռ մեղնի, մարդ ա, սըպանուեր գացեր ա։

—Խինդ խազար մարդ էղնի, ընձի պէտք չէ, ուչքիս չերևար, ասաց Մէյրան։

Ծուաւ, գլուխը ինելք չի մնաց. խօր խեռ առաջ չէր խօսար.

մկայ կը խօսայ, շատ դալ մունջ-անխօս կենայ. էս գալուն կընկնէ խաղ ասել.

| | |
|---|---|
| —Զօւլանk, խօշ Զուլանk. | Զուլանէն հիանալի վայր է, |
| Խոdk խrաբ բըկա qrk Գkաւ-գալւանk | Աստուած աւեր դարձնէ մեծ բլուրը. |
| Ասւ հայkա դոնզդkհ մանհ ա. | Տարի որ կայ, տասներկու ամիս է. |
| Ըժ չարդkան չարշkան խայի նա բkա. | Գողէն ու աւազակէն երբէք պակաս չէ. |
| Բըլա սոնդk մkrkա բkար բըբkա. | Թող առաջի մարդոց երդում լինի. |
| Բըլա fkս սkար մkամըfk մըն չահ-նաբkա. | Թող մէկը իմ սանրներու վրայ չուրախանայ, |
| Գkօշդkա պազkննkr յը մըն հkարամ բkա. | Արու ոչխարի միսը իմ համար արգելուած լինի. |
| Կkազkկի խո եկ ըռաշ, kակը սը-պի վակըրըմ, դիզ բը սաfինըմ. | Իմ ծամերու մէկ սպիտակ, մէկ սև հիւսեմ, աղջիկ մնամ. |
| Զօւ մkա դիւան k, դիւանk բըժի, | Գնացի աւեանը, աւեանը լից. |
| Խոdk խըrաբ կըա դիւանk բաւk մըն | Աստուած քանդէ իմ հօր աւեանը |
| Մըսիfնkա դանվkա սkար ակըrkա դարաւ. | Սուրճի ամանը կրակի վրայէն վերցուցի, |
| Թըլի, բkհk kա Մkյrkամի դըfkա-յըժի մարմոււ ադի. | Մէյրամի ձեռք ու եղունգ կը նմանի ինչպէս մերղէ մոմ. |
| Ղահվkա rkժըյա սkար աբայkա Բասrայkա. | Սուրճը Թափիցաւ Բասրայի աբայի վրայ. |
| Էազը հառըմ, frkդակի frkfըմ. | Ես էրթամ, մի վարձկան վարձեմ |
| Սkաց ու սի զkոը ըժ սkարի խո ժըկըմ | Հարիւր ոռեսուն ոսկի էլ իմ գլխէն կտրեմ. |
| Հkաշ դkհ կkարի սաբոււն k արախգի | Տանը ութը կտոր ըռաղի օճառ. (գնեմ.) |
| Ժը վոշարն Հkամմայի, Հkազգայի ժը բազարk | Համայի, Հաղայի երկրի չուկաներէն |
| Աբա հըլինըմ սkար Ֆrաթk բիրայk | Աբան կը տանեմ Եփրատի ական վրայ. |
| Ֆrաթյըմըն մը անիզ կkա, սաբոււն ժը մըն խլաս բու | Եփրատ վերջացաւ ես ձանձրացայ. օճառն ալ ինձմէ վերջացաւ. |
| Զաւk մըն մkահուզ բու, աբա բը fkյմա դըk մըն նա բու. | Աչքերս ալ խաւարեց, աբան իմ սրտի ուզածի պէս չէղաւ՝ |
| Բըռակ մkայk մkա շիխան ու փի-rան. | Մեր տան դէմ մի խումբ չէյլս ու փիրեր՝ |

Դանիյk կըrk Կաւկաւա բասու թիրա
Օkապ խապrk . - .
Ֆազը ճkառըմ սkար դինk վուանն
Ճաղգըրան,
Բիրայk մըն ճkայkա pkար մըrընk

Բուճար k չաղա դարմkապինk,
Խանը մանը Դkrվըշի Այսի կkն մk-
րինk,
Կալա բաւkկի մը ճkայkա pkար
շաւշդըկk.
Հkամբ կօռk ափk մըն ճkպյkա
pkար կըռոբընk,
Դոնզդk բըզմանk մըն ճkպյkպ անk-
յk բըար խանադանըդընի
Դkպ վպrk ճայk վըն դը մkպk
ճաւk Դkrվkշի Այսի.
Համու ժը խօշk սkար ռուկk դընk,

Դաւրիշու մըն նա լը մալա, մըն
նա մkրա,
Մալ թարիյk բարk վըն pkար կրըն,
փաւա սուարk հապըk նkրա.
Դkպ վա վօյյk, վայյk Դkrվիշի Այսի,
Հաւթի մալա բաւk մըն մkյkվանի
շաւk:
Ֆազի նաւա կոնk չարդkն բասիրի
օը կkարkան
Մընի դըշդkկի նա սիբ լայըդի Դkr-
վիշի Այսի,
Մընի դանն բըընձի, սkար դkա
կkավա:

Դրեց մեծ բլուրի հոլի բերան
. . . . .
Ես պիտի էրթամ այն խեղճե-
րու հաւաքի վրայ
Եղբայր ունիմ, մեռնելու ա-
ռաջ է.
Գարուն դուրս գալու ժամանակ
Տէրվիշի Ավտու տներ լու ըն-
կած է.
Ծերունի հայր ունիմ, լուացուե-
լու դուռն է.
Եօթ հօրեղբօր տղայ ունիմ
բռնուելու դուռն է.
Տանուորկու ազգական ունեմ
բերած են խեղդելու առաջ.
Ինչ ափեն որ իմ աչք կառնէ
Դարվիշի Ավտուն,
Ամեն ալ տնաւչ է աշխարքի
երեսի վրայ.
Իմ գաւթիլը տանը չէր, ինձ մարդ
չէր,
Իմ հօր տան իրեղեններ բար-
ձան մի խումբ որձ ձիերու վրայ,
. . . . .
Եկաւ իմ հօր տուն գիշերուայ
հիւրը.
Ես տանըչորս սիւնի վրանի
տակ ման կգայի.
Ես ոչինչ չկարողացայ գտնել
Դերվիշի Ավդուն արժան.
Ես դրի բրինձ, վրէն ալ կա-
քաւ.

* Սոյն Դարվիշի Այսին աւելի ընդարձակ երգեր ունի, պատմող Եզդի Միրօն չէր յիշեր: Քրդական վէպերն որք մեծաւ մասամբ իրական անցքեր են, շատեր ճշտութեամբ կատարուած են. եւ անհաճիւ են, որպէս մեր հեքիաթներն: Սի-յամէնտօն, Դերվիշի Այսին, Մամէն, Քալլըք ու Կեառօն, եւն. եւն. ցոյց կուտան առողներ թէ կատարուած բաներ են. Մամէի անցքը շատ սրտաճմլիկ է: Եօթ տարի պանդխտութենէ վերջ տուն կը դառնայ, կէս գիշերին չուզեր մօրը զարթեցնել. կը քէք կենայ դուռ, մայրը ընդ պատուհանէն կը տեսնէ հարսի ծոց մէկը պառկեր է, իր որդուն տեղը կառնէ, կարգ մը խարհրդակցութենէ վերջ կը սպանէ տղուն. որու երբ կիմանայ տղան է. կսկսի սրտամորմոք երգ առել:

# 23

# ՍԵԽԱՅԱԶԷ[1]

Հեարե դայե մընե, իշաւ խաւնակե
խոժի դիրու, խոզի մընե բըզանիա,

Ոեյա բաժառե Թըլըսխամսե վրյ չը
ճույա:

—Հեարե շաճ, խաւնա ցայե դիրի,
Հաճ խաւնա ցայա.

Իսաշ սաց ուի սաշ ամրե մընե չույա,

Հե մընե նավե բաժառե Թըլըսխամսե
նա բիսբիյա.

Հեարե շաճ, դայե ցեա եվարե
մսհաճ նա խոնդիյա,

Կօրա չեյրանե հարիյա՝ ցեա ճեանիյա.

—Հեարե դայե մընե, իշաւ հարայ
Պաշե նիվա շաւե բռունըշդըմայ,

Մընե սե ճըշամա մըսհաւ սե խո
խոնդայա,

Մընե սեաց ուի չարան նաւե խո-
ցեյե խո հըշդայա.

Էազե պաշե ճեարբըմա նավա չի ու
նըվինե խո ռազամայ.

—Հեարե դայե, հահեար ցիւ բա-
վար նանկի,

Բընեռ, զոսցիշե խովա զահըռայա:

—Ա՛յ մայրիկս, այս գիշեր ինձ
համար երազ եմ տեսած,
երանի՜ թէ ես իմանայի,
Թըլըսխամսէ քաղաքի ճանա-
պարհը ո՞ր տեղն է:

—Ա՛յ որդիս, այդ երազը որ դու
տեսած ես, քո երազը չէ.

Այս տարի հարիւր երեսուն
տարի իմ կեանքս անցած է,

Դեռ Թըլըսխամսէ քաղաքի ա-
նունն լսած չեմ։

—Ով տղա՛յ, կարելի է երեկոյին
սուրբ գիրք չես կարդացած.

Կոյր սատանան եկած՝ քո վը-
րան ծիծաղած է։

—Ով իմ մայրիկ, մինչ այս գիշեր,
Կէս գիշերուան դէմ նստեր եմ,

Ես երեք գլուխ մըսհաւս կար-
դացած եմ,

Ես հարիւր երեսուն անգամ Աս-
տուծոյ անունն տուած եմ.

Ես վերջը ընկայ տեղաշորերիս
մէջ ու քնեցայ.

Ա՛յ մայրիկ, եթէ դու չես հա-
ւատար,

Նայիր, մատնիքս փոխած իմ։

---

[1]) Պատմած եւ երգած է Ազիզ Թումասեան, Մոկաց Կարկրճանց գիւղը ծնած, Մէհամտրնայ զաւառի Շամշադին գիւղը մեծացած. 28 տարեկան է. 6 տարի է Ռուսաստան կապրի. Վան ունի երկու քոյր, մի եղբայր, որք դպրոց կերթան: Ազիզ քրդերէն շատ լաւ գիտեր. աղար համար ներկայ վէպս թէ լաւ գրի առած եմ եւ թէ լաւ թարգմանած իր օգնութեամբ:

Էս խետին ձին քշեց դուս, մէկ խուրճին օսկի թալեց ձիու թարկ, թարկա-դըճեա էլաւ, գնաց։ Գնաց-գնաց պատախաւ մէկ խոպվըվու. կը տեսնայ էդ խոպըվու կըլլըխ, խազուստներ շատ մաքուր, ազնուական շորերով, մի խրեղէն ձի տակ. չօպանութեն կանի. էդի կիչկայ, կը շուարի, կը մտածի, կասի. «Իսոր թաքաւորական խազուստ-կապուստ, զարդարանք դօր, խոր չօպանութեն դոր. մէկ խաղ քցեմ, տըսնանք ինչ մարդ ի, ճախ ինչ ի»

—Գօ, hkark ղըվանօ, ղըվանօ,
pkar nւան միանօ,
Բըռրէ կափուրիյk ekա յը մըլյանօ.

Խօզի մընk րըզանիյա նավա վի
պkազի չի հախմը ծայօ:

—Հkark uուարօ, uուարk, n րը
րըննk,

Հակkար ծիւ պըռu դըլի, քըննk դա-
փուրիյk մըն համու ֆիuk մըն ա,

Հակkար ծիւ պըռu դըլի, nօժk ukաօ
վի դուռուշ մաարածk մըն ա.

Հkark uուարօ, հակkար ծիւ պըռu
դըլի, նավա վի պkազի դkար
զորհk կարkաֆ նմ խմընի.

Խօժk դանաֆի Սեւահաչk չարիավան
ek փիյk pkrիյk, pkաuku
մըն hkաձp րաւk մըննk:

Ասաց.—Այ հովիւ, հովիւ, այդ
մազիններու առաջ,
Մուշտակ ու կափութդ այդ ու-
սերուդ վրայ,
Ըրանի ես գիտնայի, այդ ոչխարի
մէջ քո իրաւունքը ինչ էր։
—Այ ձիաւոր, մենակ ձիաւոր,
Եթէ դու կը հարցնես, հագուստս,
ղափութս բոլորը քաակէս է.
Եթէ դու կը հարցնես, օրական
130 դուռուշ իմ ծախքն է.
Այ ձիաւոր, եթէ կը հարցնես,
այդ ոչխարի մէջ մի ուլի
ականջն էլ իմը չէ.
Օրը մի անգամ Սեւահաջէն իրեն
աղախիններով կգայ բէրը. բա-
ւական է ինձ, իմ եօթ հօրը։

Ձիաւոր կը մտածի, կը մտածի, կը տխնայ, մի դետ կուգեայ. կասի.

—Հարk ղըվանօ, նավk վի ճkամի
նավk չի ա։
—Հkark uուարօ, հակkար ծիւ պըռu
դըլի, նավk nօժա իրօ nօժ ինիյա,
Նավk վի ճkամի ճkամի Թըլըսխամuku,
Իրօ Սեւահաչk րը չարիավա ek ukար
ճkամk Թըլըսխամuk, զkաշօ
ու ukյրանա:

—Այ հովիւ, այս գետի անունն
ինչ է։
Այ ձիաւոր, եթէ դու կհարցնես,
այս աւուր անուն ուրբաթ է.
Գետի անուն Թըլըսխաաէ գետ է.
Այսօր Սեւահաջէն աղախիններով
կըգայ Թըլըսխամաէ գետի վը-
րայ զըօսնելու։

Էդի կը կայնի, կը տխնայ Սեւահաջէն իրան ջարիներով էկաւ գետի վրէն քէֆ էնելու։ Ձիաւոր էն դեախ խաղ մը կը թալի.

—Հkark չիմա pkar րը չիմա,
Ջարիյk Սեւահաչk ekն, pkաւ փօռ
սըպյին kա,

Այ մարդ, մարդի դիմաց,
Սեւահաջիի աղախինները բոլորը
սպիտակ վարսով են։

Սեւահայէն ծիւ վոնարա, խանա ա-
վա սար բրդան եազ բիմնա:
—Հեարk սուարօ, ճեանk Թշխ-
խամեk վուչk սե չեանա չեանա.
Դա նիւ վյարա դեավk խո սեկեա
Նօյա ֆեարk մեայk նեkրա,
Թեսաաֆի մեյրարk սեա, բարk նեա
բրնիհայ:

Սեւահաջէ, գնա արի, մի թաս
ջուր առուր, ես ծարաւ եմ։
—Այ ձիաւոր, Թըրքմանի գետը
կըղայ լիք-լիք.
Գնա արի, քո բերան մոցուր
ջուրը, ինչպէս մեր որձ էշը,
Ոչ որ քեզի ու քո հօր ծա-
ռան չէ։

Էդ որ ըսկնա ասաց, Միրզա Մէհմէտ ասաց.—Աստուած իմ տուն աւերայ. իմ տուն, իմ տեղ, իմ էլած, չէլած թողեցի, իմ էրկիր ըսկնայ աղջիկ էլչիկար։ Վոյա, էն աղջիկ ընձի հարկաւոր չի։ Ձիու գլուխ կը դարձուցի, դէ ուր խոր էրկիր գայ։ Աղջիկն կիրիչկայ ձիաւորի մոտ, մատնիք մոտ կը ճանաչի, էն գեախ խաղ կը թալի.

—Հեարk սուարօ, սուարk բօզ ա,
Տիւ խնսk դրգի, սիւ խնսk դրճարինի,
Դիզինա բօզk չա ռա վասայ.
Էազk բասաֆի ավա սար բր դասրk
ռասրk ավ բրդըմ,
Թր դkասրk ճkայk րշօսռա բր
ֆեամար բkասա:

—Այ ձիաւոր, բօզ ձիաւոր,
Դու Աստուած կը սիրես, Աս-
տուած կը ճանաչես,
Բօզի սանձը մէկ մը բռնէ,
Ես մի թաս սառը ջուր աջ ձեռ-
քով տամ,
Ձախ ձեռքով քեզ համար բարև
բռնեմ։

Միրզա Մէհմէտ տեսաւ աղջիկ խաղ ասելէն ընկեաւ քեամակ, ասաց.—Նալլէք գայ էառը, կայնեմ, տեսնամ ինչ կասայ։

Կայնի, կը խասնի. ջուր կուտայ։ Որ ջուր կը խմի՝ կասի.

—Ես քեզի համար էկայ, դու ինչ կասես։

Էս խետ էդի կասի.—Տնաւեր, Միր Մահմուտէ Միրի Բոտա. զան էս վեց տարի կայ որ իմ խօր խոմըլուռթուն կանի. մնացեր է էրկու տարի որ ժամանակ թըմի. իսկ իմ խէրս ինչ կասի. ինչ մարդ որ մի արշին կայթանէ Համուտի բերէ, Սեահաջէն կըտամ ընդըրան. առ քեզ խինգ զուռռուռ, գնա, գնտի բեր, որ քնձի տանես։

—Ա՛յ տնաւեր չէլած, կասի. իմ խուրձին լիք ոսկի ի, ինչ անեմ խինգ դուռռուըը։

Ասաց.—Ա՛ռ, որ իմ խօսք տեղ բռնէ։

Առաւ, քցեց ջիբին, ասաց.—Ո՞ր երկիր էրթամ։

—Ասըմ ին Մուխուր Ջէմինայ քաղաք կայ, չըմ գիտեր, ասըմ ին։

Առաւ, թարկը-դրնեայ էլաւ, քշեց իր ձին, գնաց. գնաց մի քաղաք դուս էլաւ. տեսաւ էնտեղ լիք միլլաթ էն, գնաց մէյտանի մէջտեղ կայնաւ, մզրախ զարկեց գետին, ձիու դարփուզի վրայ թեք ընկաւ, մտածեց ուր խամար։ Միլլէթ բոլոր կը քաշուին, էդ

Էդի որ ասաց խէր, աղջիկ խանեց ջէբից գցեց խօր առաջ. խէրն որ տեսաւ, էգսր պատասխանեց.—Աղջի՛, էդի ով բերեր ի, քեզ սամ էն մարդուն, ես դիտեմ, քու սիրտ էն մարդուն ի։

Աղջիկ կերթայ Միրզա Մէհմէտին կը բերի, կուգեայ աղջկայ խօր ձեռ կը համբուրի. խէր աղջիկ կուտայ Միրզա Մէհմէտին։

Լաճն կը խնդրուի խօր մօտէն.—Մեզի պատրաստի որ էրթանք։

Խէրն կասի.—Խա՛, չուտ առ գնա՛, որ մեր խովիւ չակլսի, էսքան տարի մեզ խովւութեն արե, որ ակխաւ, կռիւ կանի։

Խեծան ձիանք գնացին. գնացին խասան խովւու մօտ. կը տեսնտն խովիւ քներ ա։ Աղջիկն կասի.—Միրզա Մէհմէտ, դու էս տեղ կաց, ես մի խաղ ասեմ խովիւու վրէն։

Միրզա Մէհմէտ ասաց.—Քներ ա, Սեահաջէ, գործ չունիս խովիւու մօտէն, անցնինք։

*Բըսյըրիմ՝ հա բըսյըրիմ՝ խօ շը-*
*վանի բռաբան բռւմըշիյա,*
*Հայկ խո դըգրի·*
*Խայ ճամբ սալ ա շըվանի Սևա-*
*ճայկ ըժխոռա դկասա կըրի·*
*Սուրա խայ խայկ դկայայի բկչի*
*ճարի չկայ ըժխոռա բըրի·*
*Ա՜խ բկայկամօ դըլօ,խարիբօ դըլօ:*

Խաղ ասող, հա խաղ ասող, այսօր խեղճ հովիւը նստեր է.
Իր վիճակին վրայ կողբայ։
Այս տարի եօթը տարի է հովիւը
Սեահաջէն ուզեր է իր համար.
Այս տարուան տարին աշխարհի
գեղեցկագոյնը եկաւ, զարկեց, իր համար տարաւ.
Վա՜խ սպառուած սիրտ, վա՜խ
պանդուխտ սիրտ։

Խովիւ կը զարթնի, կը տեսի Սեահաջէն, Միրզա Մէհմէտ ձիով գլխու վերև կանգնած. տեսնել ու անցնիլ մէկ կըլնի։

Միր Մահմուտ Միրի Բարազան ինչ որ կը տեսնայ էդոնք պատրաստուած անցան, գնացին, էլաւ ինչ արաւ։ Ձին էլաւ մէկ տեղ չտկեց, ոչխար մէկ տեղ չտկից, ինչ որ ունէր, թողեց, գնաց Բարազցոց մէջ ուր երկիր։

Էդ Միրի Բարազան եօթ տարի ձիաւոր կը ժողվի։

Միրզա Մէհմէտ Սեահաջէն կը բերի. քանի տարի կը մնայ Սեահաջէն մէկ աղջիկ կը բերի։

Աւուր մէկ Միրզա Մէհմէտ առաւօտուն չուտ կելլէ որ ճըմէժ անի. կըլլի կը տեսնայ իրենց տան բոլոր բռներ են, չաւշներ զարկեր են, նստեր են. կը դառնայ տուն, Սեահաջէին կասի. — Սեահաջէ՛, էս ինչ ձիաւոր ա, մե դուշման չկայ։

Կասի.—Էսի անպատճառ Միր Մահմուտ Միրի Բարազան կըլլի։
—Գա ինչ անենք։—Գնա՛, կանչէ, բեր տուն պատիւ։

Միրզա Մէհմէտ կելլի. գիշերուան հագուստով, առանց սիլահի դուզ կերթայ ձիաւորներաց մէջէն կընցնի, Միր Մահմուտ Միրի

Բարազանի մօտ, բարև կուտայ, կասի.—Արի՛, էրթանք մեր տուն։

Կասի.— Ես ինկեր եմ խետ քե կռիւ, ես չըմ իգեայ, ես, դու դուշման ենք։

Ասաց.—Խնդրեմ, դուշման թող դուշման ըլլենք. արի՛ գնանք, մեր տան մէ խաց ուտենք, մի կայֆա խմենք, նորէն գեանք, կըռիւ անենք, թող քու ձիաւորներ ըստե նստեն։

Միր Մահմուտ Ցամարցութեն չանի, կըլլի, կերթայ։

Որ կերթայ, խաց կը պատրաստեն, բերեն, խաց կուտեն, կեչեն որ լուացուին՝ աղջիկ կուգեայ. ջուր կը լըցի Միր Մահմուտի Միրի Բարազանի ձեռաց։

Միր Մահմուտ չուարած կիրեչկայ աղջկայ էրեսին մէջ, կը մնայ մտածելով։ Միրզա Մէհմէտ կը պատասխանէ.—Միրի՛ Բարազան, ինչո՞ւ չուարած կիրիչկաս աղջկայ էրեսին մէջ։

Կասի.— Միրզա Մէհմէտ, քու տուն աւեր ըլլի, դու մարդ չես, թէ որ դու մարդ ես, կեցցես դու ու քու մարդութեն. մինչև էսօր դու Սիահաջէն հալա աղջիկ ես պահեր, կիրիչկամ հալա աղջըկայ գեօն ի։

Կասի.—Դու հաւանեցի՞ր ինոր։

Կասի.—Ի՞նչ չեմ հաւանիր, Սեահաջէն ի։

Կասի.—Չէ՛, Սեահաջէն չի, ինոր աղջիկն ի։

Կասի.—Ջեմ հաւատար, Սեահաջէն կանչէ, տեսնամ։

Կը կանչէ բերէ, կուգեայ էնտեղ, կը տեսնայ Սեահաջէն էն չի, չըմէի աղջիկն էլ Սեահաջէի կըլլըղին էր։

Միրի Բարազան ասաց.—Կը հաւանիմ Սեահաջէի աղջկան։

Էնտեղ կը բարբըին, դուշմանութեն մէջտեղից կը խանեն, էլ կռիւ չէղնի։ Միրի Բարազան Սեահաջէի աղջիկ կառնի, կերթայ իւր երկիր։



# ՀԱՄՈՒՏԷ ՇԱՆԿԷ*

Համուսէ Շանէկ ըժմամ պամամ է
խո դըլ մա բու. (կըրկնել)։
Վույ սըպէ կոնէ խո բար կըրի,
Նա Վույա, դանի բու բըխուրէ դը
նէ էարանէ։
Սըպէյա, սըպէկի զուսայ, չուապէկի
նախէր է ժը մըռա հարիյա,

Դը բէժըրը, բայանէ Համուսէ Շանէկ
դը ճըլնըրն բէ խոյ բէ խոսանայ։

Հէար դայէ, էավ խամ ըժխոռա
նակէա, նա բէօ խամայ.
Հարչի կէաս դանէկ կոռէ սա բը
հիսիյա։
Թէօնար սար բայանէ սայ նայէ.
Սըպէյա, սըպէկի զուս ա Դայէկայ
Համուսէ Շանէկ բաշիյէ խո հըլանի,

Դէարֆէարփի սէրի բանի բաշիկէ խո
հուրիկ-մուրիկ սըռէսի։
Դէնայ խո սայ ճէանէկ ժօրին շուա–
նէ Համուսէ Շանէկ ժօր դայ դէ հա-
ւար ու գազիա։
Գազի դըլէա, հէարէ շուանօ, շուա-
նօ, սէիպանօ։
Ջար կէ բըլէա պըրշազինայ ֆանէ էավ
չի հաւար էա.

Համուտի Շանկէի սիրտ իր ազ-
գականներէն պաղեր է.
Այս առաւօտ իր վրանը բար-
ձաւ, չէ Աստուած վկայ, դըրեց
ոչ բարեկամի դէմը.
Առաւօտէ, առաւօտ մը շուտ,
անբաղդ լուր մը ինձ համար
եկաւ.
Կ'ասեն, Համուտի Շանկի աւա-
րը կը քաշին, տանին անտէր ու
անտիրական.
Ա՛յ մայրիկ, այս քեզ համար
հոգ մի՛ աներ՝ մի հոգ չէ.
Ամեն ով որ քու որդու ձայն
լսած է,
Երբէք քուաւարի վրայ չի գար.
Առաւօտ է, առաւօտ շուտ Հա-
մուտէ Շանկէի մայրիկը իր առ-
ջկանը առաւ.
Ելաւ տանիքի վրայ, իր առ-
ջկանը մանտր-մանտր կը մանէ.
Նայեց, տեսաւ. վերին սարերէ
Համուտէ Շանկէի հովիւը կը
գոռար, օգնութիւն կը պոռար։
Կը կանչէ.—Այ հովիւ, հովիւ,
շանորդի.
Անգամ մի շտապէ, տես այդ
ինչ օգնութիւն կանչել է.

---

*) Պատմած է Ազիզ Թումասեան

Հովիւ կուգայ Համուտէ Շանկէի մօր մօտ մէր կասի.—Էդ ինչ պախտ է. կասի.—

| | |
|---|---|
| Իրօ սէ ռօժա, սէ շաւ ա, | Այս օր երիք օր է ու երեք գիշեր, |
| Թալանէ Համուդէ Շանկէ դը ֆշինըն պէ խոյ. պէ խօսանան: | Համուտէ Շանկի աւարը կը տանեն անտէր, անտիրական. |
| Ժնեայ Համուդի Շանկի կօր.—Հարէ | Համուտէ Շանկէի կնիկը ասաց. |
| Դայէ, բըլա հեօկնէ Համուդէ Շանկէ պը ֆըշկենըն, սէ պայիզէ ջունեայ հեօկնէ Համուդէ Շանկէ բըկըրըն կօշդ ու դաշիյա. | —Այ մէրս, Համուտէ Շանկէի ոչխարը թող քաշին, տանեն, մենք աշունքը ոչխարի տեղ Համուտէ Շանկէն կաննենք մէս ու խորոված. |

Համուտէ Շանկէն էդ խօսաց վրէն կը զարթնի, կասի.

| | |
|---|---|
| —Հարէ դայէ, բըկէա բլազինա. | —Ով մայրիկ, չուտ արա, |
| Լայլէ թաւլախանէ պը ֆշինայ. | Լայլէն ախոռից քաշիր. |
| Դանէ ու սար դու դանէ պը շըղինայ. | Մի փորքաշ երկուսի վրայ պընդացուր. |
| Ըռամէ նազարի օրթայ մըլ պը ճըկինայ. | Նավարի տէգը ուսերու մէջ տեղ մխէ. |
| Տուրէ ֆօսա Մըրրի մըն հազր կէա. | Իմ քօսա Մըրրի թուրս պատրաստէ |
| Կըրասէ զըխի սէար զին վօրկէա. | Ձրահե չապիկը թամքի վրայ հագու, |
| Ազը սուար բըմ, ֆանէ էավ չի հավալ կա, | Ես հեծնեմ, տեսնեմ այս ինչ եղելութիւն է. |
| —Հէարէ շաօ, մա շազըմի վուշի թալանէ նինէա. | —Այ որդի, մեզ այլ ևս այն աւարը պէտք չէ, |
| Հառա բաշ խալէ խօ մըճըրաքի[1] բըկէա. | Գնա քու քեռու մօտ հանգստութիւն արա. |
| Զանօ պազանի ըժխոռա բինա շունայ պազէ դայա. | Քանի մը ոչխար քեզ համար բեր քու ոչխարներու տեղ. |
| —Հէարէ դայէ. էազ կարա խոյի գոռէ նասըմ կէարի պազէ խալէ խոռա վա նան կօ հեռըմ. | —Այ մայրիկ, ես իմ բոլոր ուլի ականջը չեմ փոխէր քեռու ոչխարի հօտի հետ. |
| Սուար դըբէ, դըշկա նիվա ըռէյա. | Կը հեծնի, կերթայ ճանապարհի կէսը. |
| Կըրասէ զըխի բիր օըկէա. | Ձրահե չապիկը կը մոռանայ. |

1 Քրդական սովորութիւն է մրճիրին, երբ մի երեւելի մարդի փորձանք պատահի, վնասուի (իր ցեղի մէջ) առաջի վիճակին կր հասցնեն.

# „RECUEIL ETHNOGRAPHIQUE
# d'ÉMINE"

**publié par l'Institut Lazareff des langues orientales à Moscou, sous la direction du** *Prof. G. Khalathiantz.*

---

**Vol. I.** Matériaux ethnographiques, recueillis par *A. Mkhithariantz* dans le district d'Alexandropol (ancien Chirak), gouvernement d'Erivan.

1-re partie: Littérature populaire arménienne, recueillie d'après la tradition: contes, récits, proverbes, dictons, énigmes, etc.

2-me partie: Croyances et superstitions, moeurs, coutumes et professions. Glossaire du dialecte de Chirak. Moscou—Alexandropol. XII+338 p. in 8°. Prix **1** r. (**2** fr. **50** c.).

**Vol. II.** Epopées populaires et contes en différents dialectes, recueillis dans l'Arménie de Turquie par *S. Haïkouni*, 1-re partie: Moscou—Vagharchapat. X+448 p. in 8°. Prix **1** r. **25** cop. (**3** fr.).

**Vol. III.** Mots turcs empruntés par l'arménien, étudiés et rangés dans l'ordre alphabétique par *H. Atcharian*. Moscou—Vagharchapat. IV+381 p. in 8°. Prix **1** r. **50** cop. (**4** fr.).

En regard de chaque mot turc, imprimé en caractères turcs et en caractères arméniens, le glossaire donne la transcription en caractères latins et la traduction française, afin de rendre le travail accessible aux savants européens.

**Vol. IV.** Contes (48) arméniens populaires en différents dialectes, recueillis par *S. Haïkouni*. Supplément: Deux variantes de traditions héroïques arméniennes de *David de Sassoun et de Mher*. 2-me partie. Moscou — Vagharchapat. IV+462 p. in 8°. Prix **1** r. **25** cop. (**3** fr.).

**Vol. V.** Epopée arméno-kurde, recueillie par *S. Haïkouni*. Moscou—Vagharchapat. 1904. VIII+304 p. in 8°. Prix **1** r. **50** cop. (**4** fr.). Ce tome contient les traditions héroïques des kurdes, telles qu'elles nous ont été transmises dans les différents dialectes arméniens du vilayet de Van; c'est pour cette raison que nous les avons nommées arméno-kurdes. En tout, ce tome contient 28 récits, dont 13 renferment des chants kurdes; la musique de ces chants a été placée à la fin du volume, avec les transcriptions arménienne et européenne du texte.

**Vol. VI. Folk-lore Arménien:** les *chants* (chants religieux, nuptiaux, d'amour, noëls, facétieux, berceuses etc), *proverbes*, *adages*, conjurations, exorcismes, énigmes etc., en differents dialectes, recueillis par *S. Haïkouni*. Appendice: „Les noces de Khlath". Moscou—Vagharchapat, 1906, (XXVI+415 p.) in 8°. Prix **1** r. **25** cop. (**3** fr.).

**Tous ces ouvrages se vendent à l'Institut Lazareff des langues orieantales, Moscou (Russie).**

---

**ЭМИНСКІЙ ЭТНОГРАФИЧЕСКІЙ СБОРНИКЪ**

ИЗДАВАЕМЫЙ

при Лазаревскомъ Институтѣ Восточныхъ Языковъ

**Выпускъ VI.**

**Народныя армянскія пѣсни, пословицы, поговорки заклинанія и проч., собранныя С. Айкуни.**



# ԷՄԻՆԵԱՆ

## ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

**ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ**

---

*ՀԱՏՈՐ Զ.*

---

***ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳ, ԱՌԱԾ, ԱՍԱԾ, ՀԱՆԵԼՈՒԿ, ԵՐԴՈՒՄ, ՕՐՀՆԱՆՔ, ԱՆԷԾՔ ԵՒ ԱՅԼՆ.***

ՀԱՒԱՔԵՑ

**Ս. ՀԱՅԿՈՒՆԻ.**

ՄՈՍԿՈՒԱ—ՎԱՂԱՐՇԱՊԱՏ.
*ՌՅԾԵ—1906.*

# Отъ редакціи.

Изданіемъ въ свѣтъ настоящаго выпуска завершается серія этнографическихъ трудовъ С. Айкуни. Редакція „Эминскаго этнографическаго сборника", въ распоряженіе которой были представлены эти обширные матеріалы въ рукописи еще въ 1900 году, по разсмотрѣніи и разборкѣ ихъ, рѣшила напечатать ихъ въ извѣстномъ порядкѣ въ четырехъ выпускахъ. Въ *Первый* изъ нихъ (Вып. II „Эмин. этнограф. сборн.") вошли Народный армянскій эпосъ (6) и народныя сказки (ч. 1-я, 42 сказки), во *Второй* (Вып. IV „Эм. этн. сб.")—Народныя армянскія сказки (ч. 2-ая, 48 сказокъ), въ *Третій* (Вып. V „Эм. этн. сб.")—Армено-Курдскій эпосъ (28) и, наконецъ, въ настоящій, *Четвертый* (Вып. VI. „Эм. этн. сб.")—Народныя армянскія пѣсни, пословицы, поговорки, загадки, заклинанія и т. п.

Всѣ перечисленные матеріалы по армянскому фольклору были собраны С. Айкуни въ различныхъ областяхъ Турецкой и Русской Арменіи въ продолженіе многихъ лѣтъ и записаны непосредственно изъ устъ народа на многочисленныхъ армянскихъ нарѣчіяхъ и говорахъ, нерѣдко довольно рѣзко отличающихся другъ отъ друга. Ни эпосъ, ни сказки армянскія не были до сихъ поръ представлены въ такомъ количествѣ, какъ въ сборникахъ С. Айкуни. Но настоящій выпускъ, по богатству и разнообразію матеріала, превосходитъ всѣ подобные сборники, которые до сего времени появлялись въ армянской литературѣ: однихъ нарѣчій, поднарѣчій и говоровъ, на которыхъ приведены въ немъ тѣ или другіе виды народной поэзіи,—до пятидесяти!

Въ самомъ дѣлѣ, мы имѣемъ въ этой книгѣ записанными на многочисленныхъ армянскихъ нарѣчіяхъ, поднарѣчіяхъ и говорахъ: народныя армянскія *пѣсни* почти всѣхъ родовъ—духовныя, колядскія, свадебныя, любовныя, колыбельныя, хороводныя, подблюдныя, шуточныя—всего болѣе 260 пѣсенъ (стр. 3—165), до 3200

*пословицъ* (стр. 166—276), 500 *поговорокъ* (стр. 277—296), 550 *заговоровъ и заклинаній* (стр. 297—323), болѣе 300 *пожеланій* (стр. 324—336) и 160 *заклятій* (стр. 337—343), около 300 *загадокъ* (стр. 344—357),—все это, кромѣ пѣсенъ, расположено въ алфавитномъ порядкѣ, а также *условныя слова* (142) и выраженія, болѣе 70-и *скороговорокъ* и 170-и *присказокъ* (стр. 358—384). Въ Приложеніи же къ настоящему выпуску помѣщено любопытное описаніе „Хлатской свадьбы", на Хлатскомъ же нарѣчіи,—съ пѣснями, величаніями жениха и невѣсты и прочими подробностями свадебнаго ритуала*) (стр. 384—415).

Заслуживаетъ вниманія и то, что рядомъ съ различными видами народной армянской поэзіи, вошедшими въ этотъ сборникъ, приведены въ соотвѣтствующихъ мѣстахъ и нѣкоторые виды поэзіи *курдской*. Такъ у Айкуни записаны курдскія *пословицы* (240 штукъ), *заклинанія* (62), *пожеланія* (21), *заклятія* (53), *скороговорки* (4), при чемъ весь этотъ матеріалъ, а равно и шесть *заклятій іезидскихъ*, представлены въ курдскихъ *оригиналахъ* (на нарѣчіяхъ алашкертскомъ, гайдаранлы и др.), въ армянской транскрипціи и въ армянскомъ переводѣ.

Въ слѣдующемъ за симъ предисловіи на армянскомъ языкѣ мы подробнѣе останавливаемся на различныхъ отдѣлахъ предлагаемаго выпуска. Въ заключеніе мы считаемъ нелишнимъ для армянскихъ читателей дать краткія біографическія свѣдѣнія о С. Айкуни, а въ началѣ книги помѣщаемъ и портретъ этого замѣчательнаго работника, такъ много потрудившагося въ области армянскаго фольклора.

*Г. Х.*

**27 Апрѣля 1906 г.**
**Москва,**
**Лазаревскій Институтъ**
**восточныхъ языковъ.**

---

*) Собственно „Хлатская свадьба" была записана еще въ 1880 г. по моему порученію Мушехомъ Халатовымъ и Александромъ Априковымъ († 1892) со словъ извѣстнаго въ г. Александрополѣ сказителя, переселенца изъ Турецкой Арменіи, Хлхата Бишаряна († 1895), и вошла въ настоящій сборникъ вмѣстѣ съ матеріалами С. Айкуни.

# ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ.

---

Ներկայ հատորիս հրատարակութեամբ բոլորվում է Ս. Հայկունու ազգագրական աշխատութիւնների մի շարք։ «Էմինեան Ազգագրական Ժողովածուի» խմբագրութիւնը, որի տրամադրութեան տակ էին գրուած այս ընդարձակ նիւթերը ձեռագիր տետրներով դեռ 1900 թուականին՝ աչքի անցնելուց յետոյ, վճռեց ընտրանօք և որոշ կարգով տպագրել նրանց չորս գրքում։ Դոցանից Առաջինում (Հատոր Բ. «Էմին. Ազգագր. Ժողովածուի») լոյս տեսան Հայ ժողովրդական վէպը (6 հատ) և հէքեաթները (Մասն ա. 42 հէքեաթ), Երկրորդում (Հ. Դ. «Էմ. Ազգ. Ժող.»)—Հայ ժողովրդական հէքեաթները (Մասն բ. 48 հէքեաթ և Յաւելուածում՝ 2 վէպ), Երրորդում (Հ. Ե. «Էմ. Ազգ. Ժող.»)—Հայ-քրդական վէպը (28 վէպ) և, վերջապէս, ներկայ՝ Չորրորդ գրքում—Հայ ժողովրդական երգ, առած, առակ, հանելուկ, երդումն և այլն։

Հայ ժողովրդական բանահիւսութեան վերոյիշեալ բոլոր նիւթերը հաւաքել է Ս. Հայկունին Թիւրքահայ և Ռուսահայ այլ և այլ գաւառներում՝ երկար տարիների ընթացքում, և գրի է առել անմիջապէս ժողովրդի բերանից բազմաթիւ հայ բարբառներով, որոնք յաճախ բաւական տարբեր են միմեանցից։ Թէ հայ վէպը և թէ հէքեաթը մինչև այժմ այնպիսի ընդարձակ ծաւալով ներկայացուած չեն մեզանում, ինչպէս Հայկունու հաւաքուածների մէջ. իսկ ներկայ հատորը նիւթերի ճոխութեամբ և բազմատեսակութեամբ գերազանցում է բոլոր նման ժողովածուները, որոնք լոյս են տեսել մինչև այսօր հայ գրականութեան մէջ. միայն բարբառների և գաւառաբանութիւնների թիւը, որոնցով յառաջ են բերուած ժողովրդական բանաստեղծութեան այս կամ այն տեսակները, հասնում է յիսունի *)։

---

*) Այդ բարբառներն՝ իրանց ստորաբաժանումներով՝ են. Ալաշկերտի (առանձին) և Ալաշկերտի Խասսուր, Խումլիպուճաղ և Մանկասար

Արդարև, այս գրքի մէջ մենք ունինք ամփոփած բազմաթիւ հայ բարբառներով հայ ժողովրդական երգերի համարեա բոլոր տեսակնե՛րը — կրօնական, հարսանեաց, սիրահարական և գովասանական, օրօրոցի, պարի, վիճակի, զուեշտական՝ ընդամենը 260-ի չափ — 3200 առած. 500 ասած, 550 աղօթք և անէծք, 335 օրհնանք, 167 երդում, 282 հանելուկ (այս բոլորը՝ բացի երգերից, դասաւորած են այբբենական կարգով), — նոյնպէս՝ ծածկախօսութիւն կամ պայմանական բառեր (142) և խօսակցութիւններ, 72 շուտասելուկ և 170 ասելուկ։

Ս. Հայկունու հաւաքած նիւթերին՝ գրքի վերջին, առանձին յաւելուածով, մենք կցեցինք ուրիշ բանահաւաքների ձեռքով գրի առած և «Խլաթցոց հարսանիքը», որի մասին կը խօսենք ներքև։

Արժանի է ուշադրութեան և այն, որ մեր բանահաւաքը հայ ժողովրդական բանահիւսութեան այլ և այլ տեսակների հետ զուգընթացաբար մէջ է բերում և քրդականները։ Այսպէս՝ նա զետեղել է քրդական առածներ (240 հատ), անէծք (62), օրհնանք (21), երդում (53), շուտասելուկ (4) — այս բոլորը, որպէս և եզդիների 6 հատ երդումը, իսկական քուրդ լեզուով (Ալաշկերտի, Հայդարանցոց և այլ բարբառներով)՝ հայ տա-

---

գիւղերի, Ալիբէկլի գ., Ակնայ, Արծկէի (շր.) և Արծկէի Ցանձկոյս գ., Արճէշի (շր.) և Արճէշի Գանձակ գ., Բաբերդի, Բագրան գ., Բագրեւանդի, Բայազէդի, Բաղէշի, Բասէնի, Բուլանխի, Գեաւաշի (շր.) և Գեաւաշի Նարեկ գ., Դերջանի (շր.) և Դերջանի Հողիկ գ., Թաւրիզի, Թալինի, Թիմարայ Կիւանենց գ., Լօռեցոց, Խլաթայ, Խնուսի Չէվիրմէ գ., Խոյեցոց, Կարսայ (շր.) և Կարսայ Նախիջեւան գ., Կարինի, Մանազկերտի, Մշոյ, Մոկաց (շր.) և Մոկաց Սպկանց գ., Նանըկանց Կարճկանայ գ., Նորդուզի, Շատախի, Շիրակայ Դուշլիճայ և Գըմըլու գգ., Ոշաունցոց, Սոնկիւլու գ., Սուրմալուայ Կուլպ գ., Վաղարշապատի (զուտ և խառն), Վանայ (շր.) և Վանայ Աւանց և Գործօթ գգ., Տիրամոր գ., Տիվրիկցոց, Տրապիզոնի, Քղիի, Օշական գ. — Հարկաւ, դժուար է ապահովել՝ թէ ամբողջ ճըշգրտութեամբ են ամեն տեղ պահպանուած ամեն մի բարբառի նրբութիւնները և մի անգամ ընդունուած տառադարձութիւնը, որովհետև յաճախ տարբեր անձինքների բերանից՝ ուրեմն հաւանականօրէն և տարբեր հնչմամբ, են գրի առնուած միևնոյն բարբառի նիւթերը. դորանից զատ՝ երբեմն նիւթ հաղորդել են մեր բանահաւաքին այնպիսի գաղթականներ, որոնք երկար ապրելով մի այլ գաւառում՝ փոխել են իրանց ծննդավայր բարբառի հնչիւնները։ Այսու ամենայնիւ բարբառների ընդհանուր բնաւորութիւնը յառաջ է բերուած Հայկունու նիւթերի մէջ ըստ երևութին բաւականին ստոյգ։

ռադարձութեամբ և Հայ Թարգմանութեամբ, որոնք սակայն տեղ-տեղ կարօտ են թվում աւելի ճշդութեան։

Կանգ առնելով աւելի մանրամասնօրէն ժողովրդական բանաստեղծութեան յիշեալ ամեն մի տեսակի վրայ, պէտք է դիտել, որ ե ր գ ե ր ի ց Կրծունկաննէրը, օր. Էլէքսիանոսինը և այլն (էջ 3,10), երգվում են սովորաբար շատ տխուր եղանակով և օրօրուելով։ «Ալէլուիա» և «Աւետիք» (էջ 25 և 27) երգվում են Ծննդեան երեկոյին. Թիւրքահայ գաւառներում (Վան, Ուշտաւնիք և այլն) սովորութիւն կայ, որ գիւղի պատանիները՝ երգելիս, դուրպայ կամ ծղոտից գործած փոքրիկ զամբիւղ են կախում թելով տան երդիկից և տանտիկինը այդ զամբիւղի մէջ քաղցրաւենիք կամ ձու, իւղ, բրինձ և այլն է դնում երգողների համար։ — Հորոտնէտոյ երգերից հետաքրքրական է Հարսի ու փեսայի գովքը (էջ 30—39), որ երգում են շատ ծանր և քաղցր՝ ամեն մի տողը կրկնելով։ Հարսի գովքը կոչվում է «Մաղկոց». Ալաշկերտ, ասում է Հայկունին, հարսնացուի ծամերը քսան և չորսի են բաժանում և ամեն մի ծամ հիւսելիս՝ մի երգ է ասում հաւաքուած աղջկներից ամեն մէկը. առաջին երգը ասում է աղջկների «ագապբաշին» (պարագլուխը)՝ հ ա յ ե ր է ն, երկրորդ ծամի հիւսը երգում են ք ր դ ե ր է ն, և այսպէս փոխէփոխ հայերէն և քրդերէն։ Երբ ծամերը հիւսուեցին՝ սկսում են պարել։

Բազմաթիւ են և Սէյրանհոյրոյական ու Գոհշատանական երգերը (էջ 49—63), որոնք սակայն բաւական միօրինակ են շատ բարբառներում։ Հետաքրքրական է «Մոկաց Միրզէն» կոչուած եղերերգութիւնը, ուր Մոկաց այդ հայ իշխանը զոհ է գնում մի ուրիշ հայ՝ Կոլոտ Խոճի (վաճառականի) կրքերին. սա սիրահարուած է Միրզի հարսի վրայ և իր նպատակին հասնելու համար թունաւորում է Միրզին նենգութեամբ՝ ձմերուկի միջոցով։ Սիրուն է և Վանեցի աղջկայ արած իր սիրահարի նկարագիրը (էջ 53).

«Քեա՛, սև սեւուոր աղջիկ,
Քե կուտամ Վանայ խօճին.»
—Քեա՛, սև սեւուոր մարէ,
Ցորի՞ եմ տուն դու կաւիրես,

Եմ կարիճ եմ ձեռնէն կը խլես…
Խազար Վանայ խօճէն
Կուրպան կանեմ եմ Սախոյին—
Թուխ կօտըկին… Սըւտակ քօլօզին,
Բեօզ բեղերաց, Թուխ աչքերաց…
Բոչամ ծամերաց… Կարմիր թշին,
Թուխ ընքուերաց, Ղումաշ բաժին։
Նարափէտին Որ առաւօտուն
Կան գալ կերթէր Ուր օխչըրին,
Արօտ կուտէր Էլմ հէվարին.
Հօ՛, հօ՛, անէր Դառնէր տուն գէր,
Ուր սաղէ տին Սրտին գրկէր։

Ցատուկ Օրօրոցի երգերը (էջ 64—72), ինչպէս նկատում է մեր բանահաւաքը, սակաւաթիւ են. մայրը, ասում է նա, երեւակայելով իր զաւակի ապագան, ինքնաբերաբար՝ իր ցանկութեամբ, նախադասութիւններ է յօրինում և երգում այլ և այլ եղանակներով։ Դրանք երկու տեսակի են. աւելի երկար նախադասութիւններով երգում է մայրը, երբ երեխան օրօրոցի մէջն է, և կարճ, երբ իր ձեռքերի մէջ վեր-վեր է թռցնում և խաղացնում երեխային։—Պարի երգերի միջոցին (էջ 73—120) պարի գլուխն է անցնում սովորաբար երգ իմացողներից մէկը՝ աջ ձեռքը թաշկինակ բռնած, որը շարժելով, երգում է նա և խաղում, իսկ միւսները հետեւում են նրան՝ խմբով կրկնելով նրա երգածը։ Շատ անգամ էլ, ասում է Հայկունին, պարողները մրցմամբ են երգում՝ երկու խմբի բաժանուելով և փոխէփոխ հարց ու պատասխան տալով մէկմէկու, մինչև որ մի կողմը յաղթուի։—Վիճակի երգերը (էջ 121—134), ինչպէս երևում է մեր ժողովածուից, չորս կարգի են լինում. առաջինը կոչվում է «ծաղկաքաղ», այսինքն այն, որ երգում են վիճակի համար ծաղիկներ քաղելիս՝ համբարձման տօնից մի շաբաթ առաջ. երկրորդ՝ վիճակի համար փարչի գովք. երրորդ՝ այն, որ երգում է աղջիկների խումբը՝ փարչով տնէտուն շրջելիս և վիճակներ հաւաքելիս՝ մինչև համբարձման հինգշաբթին. և չորրորդ՝ «ծաղկահան» կամ «վիճակահան», որ՝ հանդիսաւոր կերպով ժողովուած, երգում են առաջիկայ Կիւրակին։ Մեր ժողովածուի մէջ այդ երգերը խառն են յառաջ

բերուած։— Գողթան երգերի մէջ՝ բացի բուն գութանին վերաբերեալներից, որ սովորաբար «Հառաւե՜լ» են կոչվում (կամ (գործ) «առա՜ւ ե՛լ»), խառն են լինում և կրօնական, սիրահարական, զուարճական և այլ երգեր։ Հետաքրքրական են եզներին և գոմէշներին տուած փաղաքշական կոչումները։ Բնորոշ է մանաւանդ Ալաշկերտցոց հետեւեալ երգը, ուր զուարճալի ձևով յիշվում են գութանի այլ և այլ մասերի վարիչները.

Գութան գիլեր ուր գին կուզէր,
Գութնի բուղէն կռիւ կուզէր,
Շէկիկ կոտան կնճակ կուզէր
Վըր արտանին, վըր կոտընին.
Ջուաղ տարէք Խաչնատարին,
Տեղին պարկող Կիրակմուրին,
Ծիծ վաստկող Ուրբաթմուրին,
Գիրկ դրեց Հորեւորին.
Հորեւորին—կարմիր գլուխ,
Մ՚կնտան—մուկն ի բերան,
Փոշետուն—փոշին ի յաչք,
Խարզնտան—խարզան ի ձեռ,
Խնձորտան—խնձոր գօտին.
Աղաւ աղջիկ Ուժտնուորին,
Մուտըլտան—մուտըլ բերան.
Հացն ու պանիր Ցամըլուորին,
Խէրն ու բարին մեր Մաճկալին,
Գործ առաւ ել (էջ 136)։

Վերջապէս Զուարճական երգերը երգում են անխտիր՝ պարի, վիճակի, հարսանեաց և այլ հանդէսների մէջ։ Սրանց կարգից են և Ծաղրի երգերը (պարսաւական կամ նախատական), որոնք, Հայկունու ասելով, բազմաթիւ են մեր ժողովրդի մէջ, շատ անգամ համեմած լինելով անբարոյական նախադասութիւններով՝ անպատշաճ գրի առնելու։ Զուարճականներից բաւական սրամիտ են տղայ կամ աղջիկ բերող կանանց վրա երգածները, Զառօլօճիկի, Լուի և Մկան Թագաւորի երգերը (էջ 154, 155, 163)։

Անցնելով Առածներին (էջ 167—276)՝ պէտք է նկատել, որ դրանք իսկապէս մի-մի կրճատուած զրոյցներ են՝ դարաւոր ժամանակներով կոկուած և կատարելութեան հասցրած. տեղ-տեղ նրանք կոչվում են «Մեծանաց (և «Մեծարանց») խօսք», որ ցոյց է տալիս, թէ ժողովուրդը որչափ գին է դընում իր նախնիքներից՝ ինչպէս հեղինակաւոր աւանդ մնացած ճշմարտութիւններին, առաջնորդուելով այդ խօսքերով իր կեանքի ամեն մի պարագայում։ Հարկաւ, առածներից շատերը ինքնուրոյն են՝ հայ մտքի, փորձառութեան և սրամտութեան արդիւնք, այսպէս ասած՝ հայ ժողովրդի փիլիսոփայութիւնը.

բայց նրանց մէջ պակաս չեն և այնպիսիները, որոնք ընդհանուր են արևելցոց՝ թիւրքերին, քրդերին և պարսիկներին։ Հայկական անելով՝ մօտ են հայ առածներին մանաւանդ քրդականները։ Եւ այս նմանութիւնները բնականաբար առածների իմաստին են վերաբերվում և ոչ նրանց գեղարուեստական արտադրութեան, որ ամբողջապէս հայ հանճարի արգասիքն է։ Նոյնը դիտելու է և հայ ժողովրդական՝ բանաստեղծութեան միւս նման տեսակների մասին։ Նմանութեան առիթով մի ընդհանուր նկատողութիւն էլ պէտք է անենք այստեղ. նոյնիմաստ ասոյթներ, որպէս և առածներ, հանելուկներ և այլն շատ անգամ կրկնվում են այլ և այլ բարբառներում. օրինակները շատ են մեր ժողովածուի մէջ. բայց հետաքրքրականը այն է, որ ամեն մի բարբառ իր կերպ է մշակել միևնոյն իմաստը — մէկը՝ աւելի սեղմ ու կոկ, միւսը՝ աւելի ճապաղ, երրորդը՝ աւելի սրամիտ և այլն։ Օրինակ՝ Վանեցին ասում է.—«Ցրմենին ծովի, վրր ձիկ ստվի». — Վաղարշապատցին՝ «Աշխար ասրօտ՝ մենք մէջը կարօտ». — Տրապիզոնցին՝ «Մեզիկի նեղ, ձեզիկի տեղ»։—Ահա և այլ մի քանի նմուշներ գաւառական առածներից։

Ալաշկերտի (էջ 167 — 175). — Թաժէն մա՛շ, հին արևաբաշխ. (Նորը մաշի՛ր, հինը արևիդ բաշխ՛իր).

—Կնկայ փէլ (խարդաւանք) չըտանի սէլ.

—Ջուրի (մինչև որ) չընմանի, չի խնամի.

Վանայ (186—191).—Բարտի ծառ կերթայ գիւգեայ՝ սիրոյ տէր ի,

Ուռի ծառ կերթայ գիւգեայ՝ դարդի տէր ի.

—Խացը դրած՝ բանն անիծած.

—Խաց վեր ծնկեան՝ աչք վեր կնգեան.

—Մտի՛ տուն, իրիշկի՛ սուն, տաշ կայ սուն, ծուռ կայ տուն.

—Սուտ սրտացաւ, սոված փորացաւ.

Քարքաշեկ՝ աղքամաշեկ ուշեկ - ուշեկ.

Արծկէի (էջ 192).—Մօր անէծք չըռնայ՝ ծծի կաթ դէմ կառնայ.

Վաղարշապատի (էջ 220).—Ես գանձ կասեմ՝ նա տանձ կասի.

Ասոյթները նոյն առածներն են, բայց աւելի ամփոփ ձևով. յաճախ դրանք առածի մի մասն են կամ նրա ակնարկութիւնը։ Օրինակ՝ գէլ էղե մուխսի։—Կատուընեբ աչքեր լզած է։ —

Կուտեմ՝ եղն էլ վրէն։— Տլէն ելանք՝ մտանք թրլթրլնոց։ (Բուլանխի բարբ. էջ 277—281).— Եղիր էնք ճէնճէ ճմուռ։ — Ծուլ մարդ իշուն քեռի կը խանչայ (կը կոչէ)։— Նըվժրուկ նըվժրուկ կը վառի ծրագ։— Օրէ մալէզ՝ օրէ խլէզ։ (Ալաշկերտի բ. էջ 282—285։)— Չընտոր բերնի գօլ կը հասկը-նամ։— Հարքէ ժաժէ՝ կաժէ։— Ռապ բերան չի թրջի։ (Մշոյ բ. էջ 286.)— Չխարք զօրէնք կը բթլայ (Հարկ զօրէնս լուծանէ)։ — Ցընկեաւ սիրու, ինչ բլբուլն ի վարդի (Խլաթ. բ. էջ 288)։ — Ահը սրտիս՝ մահը մտիս։— Ընդրի ընդրի՝ ընդրուշք ընկ-նիս։— Ցանովի ու բուսնովի, տեսնովի ու սովրովի։ (Վաղարշապատ. բ. էջ 292—296)։

Աղօթքը (էջ 297—306) ասում են այլ և այլ հիւանդութիւնների վրա կամ բնութեան վնասաբեր երևոյթներից, գազաններից, թշնամուց, չար աչքից և այլն ազատ պահելու համար։ Ժողովրդի կարծիքով՝ աղօթելու ընդունակութեամբ օժտուած են Աստծուց յատուկ անձինք, որոնք՝ իբրև գաղտնիք, պահում են ուրիշներից իրանց արուեստը։ Զարմանալի չէ, որ աղօթքների մէջ քրիստոնէական հաւատալիքների հետ խառնուած են լինում և հին հեթանոսական աւանդութիւնները։ Հետաքրքրական են. Ծննդկանի վրա ասած աղօթքը.

— Սև դարն եմ գացե, սև օձն եմ կթե, Պանիրն եմ դեղե չար աչքին եմ կերցրե. Չար աչքը՝ չար փուշ, չար փուշը՝ կրակ, կը-րակն անտակ ծովեր. Չար սհաթից, չար էքից, չար որձից... (Բայազիդի բ. էջ 304։) Կոծոծը լաւացնելու.— Նոր-նոր նոր ազիզ,— կոծոծ յէլե կուտայ գլխ,— կորայ թա՛լ չուտայ գլխ։— Աչքից շիւղը հանելու.— Խալ էս՝ խալի՛, խիլ էս՝ էլի, Աստուածածնայ ճկութն ի նե։ (Վան. բ. էջ 301)։

Անէծքները (էջ 307—323), որ հայհոյութեան մեղմ տեսակն են, շատ բազմաթիւ են հայ բարբառներում. երբեմն նրանք յիշեցնում են վերոբերեալ աղօթքները։ Օրինակ.

Խղճուց խանկուցելուց,
Քառսուն շուն՝ կէս նխշուն,
Պալաք կատուն ճլպտուն,
Կոռտոռ ճրագուն
Խալէ՛ երթայ վեր քեօ խեօգիւն։ (Վան. բ. էջ 311.)

Ուշադրաւ են սեղմ կազմուած անէծքները, որոնք հնութեան

նշան են կրում իրանց վրա. օր.—ժուռումուռամեռ (մատաղ մեռնի՛ս), ժուռկուձապամեռ, ումուտապատխոր (ումուտապաէնի թաղեմ), մրմռախոր։ (Վան. բ.)։

Օրհնանքը (էջ 324—336) իսկապէս բարեմաղթութիւն է՝ համառօտած, երբեմն կոկ և յաջող ձևով։ Օր. նորածին երեխային տաշտի մէջ լողացնելիս՝ Ալաշկերտցիք ասում են (էջ 325).

Ցերկնավզիկ,
Թեթուայրիկ,
Ջաղամաթի քունը քզիկ.

(որ վիզը երկար լինի, ջուրը՝ թեթև, քունը՝ երկարատև։)

Երդումն (էջ 337—343)։ Ամեն մի գաւառացի Հայ, ասում է Հայկունին, սովորաբար իր մօտ գտնուած ուխտավայրի կամ իր գիւղի և կամ մօտակայ գիւղի մէջ գտնուած գրչագիր Աւետարանի կամ որ և է հրաշագործ իրի վրա է երդվում։ Ուստի ամեն մի գաւառ իր սիրած երդումները ունի. օր. մի տեղ տարածուած է «Սուրբ Կարապետ», ուրիշ տեղ՝ «Սուրբ Մատնավանք», «Սուրբ Աղբրիկ», «Խլիճ Աւետարան» և այլն։ Կան և այլ տեսակ երդումներ. օր.—Իմ աղբոր կանանչ արև։—Ջըրի խէր գինայ։—Իդա կրակի խէր։—Իդա թնդրի հալալ հաց։ (Մշեց. բ.)։

Հարուստ է մեր ժողովածուի մէջ մանաւանդ Հանելուկներ*) բաժինը (էջ 344—359)—15 բարբառով։ Ի հարկէ, չէ կարելի պնդել, որ բոլոր յառաջ բերածները հաւասարապէս աջող են ու սրամիտ. կան և բաւականաչափ կրկնութիւններ նոյն հանելուկների այլ և այլ բարբառներով։ Բերենք մի երկու օրինակ։

—Ըսդին սար, ընտին դար
Մէջն անդադար (Օրօրոց, Ալաշկ. բ.)։
—Մութ փողան,
Ցերկէն օղան,
Սարկաւագներ մէջ կը ղըղան.
(Փեթակ, Ալաշկ. բ.)։

*) Դոցանից մի քանիսի նշանակութիւնը Ս. Հայկունին մոռացմամբ, թէ այլ պատճառով չէ գրել։

—Պտտաւ նստաւ յառուի պռունկ
Քը՛րչ վեր քըրչին, քը՛րչ վեր քըրչին։
(Կաղամբ, Ալաշկ. բ.)։
—Պապս հագէ հազար քիրք,
հալա կսէ կմսիմ։ (Կաղամբ, Բասենի բ.)։
—Փետ փետին աղքէր, ջրին հօրօղքէր,
Աւագ սարկաւագ չի մտնում քաղաք։
(Նաւ, Վաղարշապ. բ.)

Ծածկաբանութիւն (էջ 360—364) է անուանում Հայկունին պայմանական խօսքերը, որ տեղային բարբառով «Տփողքերէն» էլ է կոչվում։ «Տփողք» բուրդ ու բամբակ գզողներն են կամ դղարներ, որոնք թաղիք էլ են շինում և իրանց արհեստով շրջում են զանազան գաւառներ. սրանք ունին կազմած իրանց համար պայմանական կամ գաղտնի լեզու—բառեր և նախադասութիւններ։ Ահա մի քանի օրինակ.—Առնկ (ականջ), բազարջ (լուսին), բաշօ (արեգակ), գընձըկ (աղջիկ), կանթ (կին), կեռ (քուրդ), կունկ (գլուխ), մատ (եղբայր), մէր (հող), սև (եզդի), վանք (գող), տափակ (ռուս), ցռուկ (տղայ), փէկուռ (հարս)։

Շուտասելուկ (էջ 365—370)—12 բարբառով. այս խօսքը գործ են ածում Վանեցիք. Մշեցիք շուտասելուկին «շուշուկ» են ասում, Օշականցիք՝ «չալանկ ասել», Ալաշկերտ, Էրզրում և այլ տեղեր՝ «վռազ ասել»։ Շուտասելուկները՝ Հայկունու ասելով, բաժանվում են մի քանի տեսակի. 1, այն՝ որ կոչվում է «արարագ»—արագ ասել. 2, որ կազմուած է դըժուարահնչիւն բառերից, և, 3, անպարոյական բառերից՝ որպէսզի ասողին սխալեցնեն։ Ահա մի երկու օրինակ.

—Թեղի թիակ, թըրփ փեթակ։ (Վան)։
—Լուսնկին քեռին մեռաւ տլի կրելով. (Մուշ)։
—Խաչըրկաթ խաթրճու տուն։ »
—Ձթի տիկ, ծակ-ծակ տկճոր։ »

Ասելուկը (էջ 371—384) սովորաբար ծաղրական կամ երգիծական բովանդակութեամբ 2—4 և աւելի տողերով չափական կոկ ասացուած է՝ հիմնուած բառախաղութեան կամ նոյնաձայնութեան վրա։ Երբեմն մէկի ասած խօսքի վրա միւսը

աւելացնում է յանգով իրը և այսպէս յառաջ է գալիս առեղծուկը։ Այսպիսի ընդունակութեամբ գաւառականներից՝ Հայկունու ասելով, հռչակուած են մանաւանդ Սուրմալու գաւառի Կուլպայ գիւղացիք։ Ահա մի երկու օրինակ.

—Կարապե՛տ,
Ինքն ու ուր բազրիկ ճետ,
Էն լէ խորուեց, տարաւ հետ,
Տարաւ թաղեց Մուրատ գետ։
—Աղջի Վարդե՛ր,
Քու ընքներ քարդումարդ էր,
Քու աչքեր մարդ կը ջարդէր։
—Արօրիկ,
Աստ Նուարիկ,
Էրթաս ու գաս,
Մէկ խապար տաս։ (Ալաշկ. բ.)։
—Հանդա՛, էկաւ մեծ պաս,
Մէ աղջիկ ուզեցինք չխաս,
Կոտրի ընդու էրկըթէ թաս,
Ցորին չէկաւ եզներ մզի խարս։ (Կուլապ. գ.)։

Մի բան մանաւանդ պէտք է շեշտել Ս. Հայկունու՝ իբրև բանահաւաքի, գործունէութեան մէջ. այդ նրա զարմանալի բարեխղճութիւնն է։ Թէ՛ իր նախկին հատորների մէջ, որոնք վէպերին և հէքեաթներին էին նուիրած, և թէ մանաւանդ ներկայ հատորի մէջ, ուր այնքան բազմատեսակ և մանր նիւթեր կան, նա միշտ ցոյց է տալիս իր աղբիւրները — այն անձինքներին, որոնցից լսել է նա կամ որոնց ասել ու երգել է տուել այս կամ այն վէպը, հէքեաթը, երգը և այլն։ Դրանց մէջ կան յիշուած և բաւական թւով կանայք և օրիորդներ։ Բացի, այսպէս ասած, կենդանի աղբիւրներից՝ Հայկունին օգտուել է երբեմն և իր ձեռքի տակ եղած պատահական գրաւոր ժողովածուներից և կամ իր յանձնարարութեամբ գրի առնուած նիւթերից, որոնց հեղինակների մասին դարձեալ չէ զըլանում նա՝ ուր հարկն է, անհրաժեշտ տեղեկութիւններ հաղորդելու։ Հայկունու այսպիսի աշխատակիցներից առաւելապէս արժանի է յիշելու՝ տխուր վախճանի վիճակուած՝ իր վաղաթառամ Աչօ—ռէօհ դուստրը, որ այնպէս խնամքով հաւաքել

է իր հասակին այնքան սիրելի՝ դուրէ (էջ 105—118) և վէ-ճոկէ (էջ 128—134) բազմաթիւ երգերը, որպէս և Վաղարշապատի խառն բարբառով տռանձները (էջ 209—216)։ Թող շնորհալի դստեր այս համակրելի աշխատութիւնը մասամբ սփոփանք լինի անմխիթար հօր անհուն վշտին։

Մեզ մնում է մի քանի խօսք ասել և Ցաւելուածում տեղաւորած «Խլաթցոց հարսանիքի» մասին։ «Հարսանիքի» պատմողն է Խլղաթ Բէշարբեանց. սա մի շատ հետաքրքրական անձնաւորութիւն էր և յայտնի ամբողջ Ալէքսանդրապոլի գաւառում «Սանահէր Հըլէ» կոչումով։ Ինքը ծննդեամբ Ալաշկերտցի էր՝ Զրկան գիւղից. 1830 թ. միւս գաղթականների հետ նորա ծնողներն էլ գաղթում են Ալաշկերտից Երևանեան նահանգը և բնակվում Ալէքսանդրապոլի մօտ գտնուած Հոռոմ գիւղը, ուր՝ բացի Ալաշկերտցիներից, հաւաքվում են գաղթականներ և Խլաթից ու նորա շրջակայքից։ 1860 թ. Բէշարբեանցը տեղափոխուեց Ալէքսանդրապոլ, իսկ 80-ական թուերին՝ Կաղզուան, ուր և վախճանուեց 1895 թ. ծեր հասակում։ Հմուտ ժողովրդական բարբառներին և սովորոյթներին, իբրև սրամիտ անձնաւորութիւն և միևնոյն ժամանակ տաղանդաւոր պատմող ու առակախօս՝ նա ամէն ընկերութեան մէջ ցանկալի հիւր էր—պատմութիւններ անելու, զուարճացնելու։ Ափսոս որ նորա բազմաթիւ սրամիտ պատմուածքներից յաջողուել է պահպանել միայն այս ժողովրդական պատկերը, որ գրի առնուեց իմ խնդրանքով դեռ 1880 թ. աշխատութեամբ Մուշեղ Խալուբեանցի և Ալէքսանդր *) Աֆրիկեանցի († 1892), և միայն այժմ՝ մի քառորդ դար անցնելուց յետոյ, է լոյս տեսնում Հայկական ժողովածուի մէջ։ Բացի «Խլաթցոց հարսանիքի» բնորոշ ժողովրդական սովորութիւնների նկարագրից, ուշադրաւ են նորա մէջ բերուած երգերը և ուրիշ ասացուածքներ **). Թէև զուտ լեզուի տեսակէտից պէտք է

*) Սրա մասին, որպէս և նրա հաւաքած ազգագրական այլ նիւթերի մասին, տես „Էմին. Ազգ. Ժող.“, հատոր Ա. Յառաջաբան։

**) Նման մի պատկեր՝ „Նոր-Բայազիտու գաղթական Մշեցոց նշանդրէքն ու հարսանիքը“, հրատարակեց „Կռունկի“ մէջ 1863 թ. Սենեքերիմ Արծրունին։

նկատել, որ խառն բարբառով է նա գրի առնուած, որպէս և պէտք էր սպասել՝ պատմողի՝ Հոռոմ գիւղում այլ և այլ գաղթականների հետ համաբնակութիւնից։

---

Ի վերջոյ՝ դնում ենք այստեղ Ս. Հայկունու կենսագրութեան համառօտ նկարագիրը, որ մեր խնդրանքով ինքը հաղորդել է մեզ, իսկ գրքի սկզբում տեղաւորում ենք բազմաշխատ բանահաւաքի պատկերը։

Սարգիս Հայկունին ծնուել է Տրապիզոնի Զեֆանոս (Ստեփանոս) գիւղում 1838 թ.։ 3—4 տարեկան հասակում նա զրկվում է հօրից, իսկ մայրը շուտով ամուսնանում է, և որբ Սարգիսը մնում է հօրեղբօր խնամքին՝ մատաղ հասակից պարապելով գիւղական աշխատանքով։ 1856 թ. նրան յաջողում է գիւղից Տրապիզոն քաղաքը տեղափոխուելու, ուր մի առ ժամանակ աշխատում է նա երկրագործութեամբ և յետոյ աշակերտութիւն է անում պղնձագործի մօտ։ Բայց երիտասարդը, ինչպէս երևում է, բոլորովին այլ ձգտումներ ունէր. նա ջերմ ցանկանում էր գրել-կարդալ սովորելու, ուստի մտնում է ծառայութեան մասնաւոր անձերի մօտ՝ որպէս զի աւելի ազատ միջոց ունենայ շուտով իր նպատակին հասնելու։ Արդարև՝ նա ուսանում է կարճ միջոցում գրել-կարդալ և հաշիւ և մի և նոյն ժամանակ եռանդով պարապում է ընթերցանութեամբ թէ՛ տանը և թէ՛ յաճախելով երեկոները «Խորէնեան» կոչուած քաղաքային ընթերցարանը, որով ընդարձակում է իր կրթութիւնը և զարգացումը այնչափ, որ 1864 թ. նրան առաջարկում են արդէն ուսուցչի պաշտօն Շանայ Թլքախոս Հայ գիւղում։ Այստեղ ամուսնանում է Հայկունին և ինքը իր կնոջը գրել-կարդալ սովորեցնում. նա վարում է իր պաշտօնը 7 տարի և՝ ի միջի այլոց, երկյարկանի շէնութիւն է շինում դպրոցի համար։ 1872 թ. տեղափոխուելով Տրապիզոն՝ նա բացում է կնոջ հետ իր սեփհական դպրոցը և բացի դրանից՝ դպրոցի մէջ ընթերցարան, իբրև ծանօթ Մ. Փորթուգալեանի հիմնած «Վարապդատեան ընթերցասիրաց ընկերութեան» մի ճիւղ, ուր նա երեկոները ձրի դասեր է տալիս։

Նոյն «Ընթերցասիրաց ընկերութեան» համար, որ նպատակ էր դրած ժողովրդի կրթական գործը Հայաստանում, Հայկունին գնում է Պոլիս, ծանօթանում է անձամբ Փորթուգալեանի հետ և նրանից գրքեր և պարտուպատշած հրահանգներ է ստանում։ Տրապիզոն վերադառնալուց փոքր ինչ յետոյ՝ 1877 թ. նա զրկուեց իր կնոջից, բայց ինքը եռանդով շարունակեց դպրոցական գործը մենակ։ Նոյն թուին Շանայ գիւղի մէջ թուրք հարկահանների գործած բռնութիւնները տեղիք տուին Հայկունուն թղթակցութիւններ գրել պօլսական հայ թերթերում, որոնց պատճառով կառավարութեան հրամանով Պոլսից Տրապիզոն կոչուեցին այդ լրագիրների խմբագիրները՝ իրանց հետ ունենալով՝ մի թուրք փաշայ՝ քննութեան ենթարկելու Շանայի դէպքը, որը յաջող անցաւ։ Բայց յետոյ տեղացի հայ ունևոր դասակարգը՝ ոչ առանց հոգևորականների մասնակցութեան, երկիւղ կրելով թուրք պաշտօնեաների վրէժխնդրութիւնից, մեղադրեցին Հայկունուն նրա անզգոյշ ընթացքի համար, որը նոյն քննութեան առիթով ազգային մի մեծ գումարի ծախսելուն էլ պատճառ եղաւ, և բանդ դնել տուին նրան։ Բանդից ազատուեց նա միայն ստորագրութիւն տալով, որ այլ ևս այդ տեսակ թղթակցութիւններ չի գրի։ Այդ բաւական չէր. փոքր ինչ յետոյ մի թուրքի զրպարտութեամբ Հայկունին մեղաւոր ճանաչուեց դատարանով իբրև պարտապան նոյն թուրքի և ազատուեց պատժից անգլիական հիւպատոսի թարգմանի միջնորդութեամբ։ Նոյն այդ 1877 թուին էր, որ Արդուինի հայերի մէջ անկարգութիւններ եղան մի ուսուցչի պատճառով և շատերը բանտարկուեցին. Հայկունին կոչուեց առաջնորդի կողմից այնտեղի դպրոցը կարգի դնելու, որի պատճառով և մնաց 7—8 ամիս և յետոյ վերադարձաւ իր տեղը։ 1879 թ. պէտք է բացուէր «Դպրոցասիրաց ընկերութեան» առաջին դպրոցը Ալաշկերտ. Հայկունին հեռագրով հրաւիրուեց այնտեղ և բանալով դպրոցը՝ 3—4 տարի շարունակեց գործը երկու ուրիշ ընկերների հետ. դպրոցը յետոյ աւելի ընդարձակուեց։ Այդ միջոցները նա զբաղուած էր նոյն Ալաշկերտում թէ՛ ուսուցչութեամբ, թէ՛ սովի տարին սովեալների խնամատարութեամբ՝ շրջելով գիւղերը և նպաստ բա-

ժանելով. նոյն նպատակով նա թղթակցութիւններ է գրում Պոլսի թերթերին ժամանակի պատրիարք Ներսէս Վարժապետեանի միջոցով և նրանից անօրինութիւններ ստանում նպաստների բաշխման վերաբերեալ: Բացի դրանից՝ Դօքտոր Ռափայէլեանից Պոլսից ուղարկուած մեծ քանակութեամբ դեղերը բաժանում է բազմաթիւ հիւանդներին՝ նրանց գործածութեան եղանակը բացատրելով: 1885 թ. մի դէպքի պատճառով Հայկունին ստիպուած է թողնել պաշտօնը և թէպէտ երկու տարուց նա դարձեալ ուսուցիչ է նշանակվում «Հայուհեաց» օրիորդաց դպրոցի, բայց այստեղ էլ երկար չի մնում և 1890 թ. ստիպուած է խոյս տալ Թիւրքիայից Ռուսաց սահմանները՝ Կաղզուան և Կարս, իսկ ձմեռը անց է կացնում Կողբ գիւղում: Այնուհետև 1891—1892 թթ. նա անցնում է Պարսկաստան՝ այցելելով Մակու, Սալմաստ, Խոյ և յետոյ Թաւրիզ՝ այդ կողմերը զբաղմունք գտնելու յուսով. բայց անյաջողութեան հանդիպելով՝ նա վերադառնում է Ռուսաստան և մի ժամանակ մնում է Սուրմալու գաւառը՝ ցանքսով պարապելով: 1893 թ. Հայկունին գալիս է Էջմիածին և նշանակվում սրբագրիչ «Արարատ» ամսագրի. մի և նոյն ժամանակ նա հրատարակում է իր «Բագրեւանդ» ընդարձակ ազգագրական աշխատութիւնը և մի քանի մանր երկեր: 1896—1899 թ.թ. նա կատարում է վանքի այլ և այլ տնտեսական յանձնարարութիւններ, որոնց թվում և Թադէոս Առաքելոց վանքի ժամանակաւոր կառավարչութիւնը: Նոյն այդ միջոցները նա սկսում է կարգի բերել այլ և այլ տեղերում և այլ և այլ ժամանակ հաւաքած իր ընդարձակ ազգագրական նիւթերը՝ սրանց տպագրելու մասին հոգալով. իսկ 1898—1900 թ.թ.՝ բացի դրանից ձեռք է զարկում մի նոր խոշոր աշխատութեան այդ ժամանակ յայտարարած «Դանիէլ Քանանեանի մրցանակի» համար՝ այն է «Նիւթեր ժամանակակից Հայոց սովորութեան իրաւունքի», որը և ներկայացրեց Լազարեան Ճեմարանի Մասնագիտական Դասարանների Խորհրդին 1900 թ.: Մրցանակը վճռվում է Հայկունու օգտին *): Դրանից յետոյ՝ 1901—1905 թուերի ընթացքում, Հայկունին անդադար

*) Այդ աշխատութիւնը լոյս կտեսնի «Էմինեան Ազգագրական Ժողովածուի» առաջիկայ հատորներից մէկում:

*զբաղուած է իր նիւթերի տպագրութեամբ «Էմինեան Ազգագրական Ժողովածուի» մէջ, տեղաւորելով նրա երկրորդ, չորրորդ, հինգերորդ և վեցերորդ հատորներում վերը յիշուած ժողովրդական գրականութեան այլ և այլ տեսակները։* 1903 *թ. Հայկունին բանտարկվում է Երևանում իբր քաղաքական յանցաւոր և՝ իր ասելով՝ բոլորովին անմեղ ինն ամիս տանջվում է բանտում՝ առանց մէկի հետ տեսակցութիւն ունենալու՝ բացի Թուրք բանտապետից և Թուրք սպասաւորներից։ Յուսահատութեան մէջ՝ նա փորձում է ինքնասպանութիւն գործել, բայց անհետևանք են անցնում նրա ձեռք առած միջոցները։ Անցեալ տարի մեր ծերունի բանահաւաքի գլխին մի սոսկալի դժբախտութիւն էլ եկաւ. ինքնասպանութեամբ վերջ դրեց՝ ամուսնութեան մէջ անբախտ՝ նրա մատաղահաս Արուսեակ դուստրը, որ այնքան ժամանակ անբաժան է եղել իր հօր չարքաշ կեանքին և օգնական եղած նրան՝ նիւթեր գրի առնելով։ Յիշելու է բացի սրանցից, որ Հայկունին այլ և այլ ժամանակ աշխատակցել է և «Արարատ» ամսագրին։*

*Սակայն Հայկունու աշխատութիւնները չեն սպառվում վերը յիշուածներով. նա ունի դեռ բազմաթիւ* **անտիպ նիւթեր — առածներ և զրոյցներ** *(շատ ընդարձակ),* **առասպելներ, կենդանական վէպեր, ընտանեկան ծէսեր ու սովորոյթ, հանաք, խաղեր** *և այլն, ևս՝* **Գութան** *կոչուած նկարագիրը, ուր ամփոփուած է Հայ երկրագործի կեանքը իր բոլոր պարագաներով, և, վերջապէս, ընդարձակ* **Բառարան** *Հայ բարբառների։*

*Մաղթենք առողջութիւն դեռ երկար տարիներ մեր ալեզարդ ազգագրին՝ ցանկալով նրան իր մատուցած ծառայութիւնների փոխարէն խաղաղ և աւելի նպաստաւոր կենսական պայմաններ, քան որոնց մէջ գտնվում է նա այժմ, որպէս զի կարողանայ նա աջողութեամբ լոյս ընծայել անտիպ մնացած իր հետաքրքրական նիւթերը յօգուտ Հայ գրականութեան։*

Գր. Խ.

27 Ապրիլի 1906 թ.
Մոսկուա.
Լազարեան Ճեմարան
Արևելեան Լեզուաց։

# ՆԻՒԹԵՐԻ ՑԱՆԿ.



*) Հարսանեաց երգերից սկսած՝ բնագրում տպագրութեան ժամանակ սխալմամբ շարունակուած են երգերի բաժինների (Սիրահար., Օրօրոցի, Պարի ... Զաւեշտական) համարաթուերը Բ, Գ, Դ... Ը—փոխանակ արաբական 2, 3, 4 ... 8 թուերի՝ ամեն մի բաժնի ճակատին. ուստի երգերից յետոյ՝ միւս նիւթերի գլուխները (Առած, Առած, Աղօթք... Առեղծուկ) ոչ թէ Թ, Ժ, ԺԱ... ԺԸ, այլ Բ, Գ, Դ... ԺԱ պէտք է լինին։

---

*) Տես նախընթաց ծանօթութիւնը.

Երես

Երես

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ.



*Պատմեց Խլղաթ Բիշարեան* († 1895), *գրի առան* 1880 *թ. Մուշեղ Խալաթեանց և Ալէքսանդր Ափրիկեանց* († 1892).

---

ԷՄԻՆԵԱՆ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ. ԹԻՒ Զ.

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ

# ԵՐԳ, ԱՌԱԾ, ՀԱՆԵԼՈՒԿ

## ԵՒ ԱՅԼՆ

## ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ԲԱՐԲԱՌՆԵՐՈՎ

ՀԱՒԱՔԵՑ

Ս. ՅԱՅԿՈՒՆԻ.

ՅԱՒԵԼՈՒԱԾ

*ԽԼԱԹՑՈՑ ՀԱՐՍԱՆԻՔԸ*

Типографія Эчміадзинскаго монастыря. Вагаршапатъ.

*Տպարան Մայր Աթոռոյ Ս. Էջմիածնի. Վաղարշապատ.*

1906.

# Ա.

# ԵՐԳԵՐ

## ԿՐՕՆԱԿԱՆ ԵՐԳԵՐ

### ՅԵԼԷՔՍԱՆՈՍ

**Նարճկանայ Նանիկանց գիւղի բարբառով** *

Թուրն մի թամամ ոսկի ունեմ,
Մէօկ էլ թամամ արծաթ ունեմ.
Փառք եմ փառւօք ստեղծողին:
Գաբրէլ խրէշտակ իջաւ, ասաց.
— Եփրեմաց Թագւոր,
Անանեաց Թագւորի կին,
Քեօ բուրն բացան էզար գետին.
Աղքատներաց ցրուէ.
Աստուած քե տայ միջաց որդիմ.
Անուն դնես յէլէքսանին.
Եփրեմաց Թագւոր հաւատարիմ չերայ.
Անանեաց Թագւորի կին հաւատարիմ էրաց.
Էլաւ բուրն բացան էզարկ գետին.
Քաղաք քաղքով ժողուել էտու.
Աղքատներաց ցրուեց:

---

* Տաս ոտանաւոր եւ նորութեամբ երկու եղանակով երգած է Արմաղան Մարտիրոսեան 65 տարեկան:

Ին օր ին ամիս պա՛հեց փորին.
Աստուած էրեց ին օր բմաւ.
Անաննեաց Թագւորի կին
Զոք եզար գետին,
Բերեց յէլէքեան որդին։
Գաբրէլ խրէշտակ ասաց.
—Ով Անաննեաց Թագւորի կին,
Քեաւոր կանես Ոսկեբերան սուրբ Օվանէսին.
Ծառայ կելնիմ առեղծողին։
Եօթ օր բմաւ Սուրբ Օվանէս,
Ոսկեբերան քեաւոր արին՝
Անուն դրին յէլէքեանին։
Ցէլէքեան մէկ տարեկան,
Այս Սոֆի պիր եաշնտան.
Ցէլէքեան երկու տարեկան,
Այս Սոֆի իքի եաշնտան.
Ցէլէքեան երեք տարեկան,
Այս Սոֆի իւչ եաշնտան.
Ցէլէքեան չորս տարեկան,
Այս Սոֆի բէշ եաշնտան,
Ցէլէքեան խինգ տարեկան,
Այս Սոֆի ալթի եաշնտան.
Ցէլէքեան էղաւ եօթ տարեկան.
Տարան մըտ Սուրբ Օվանէս Ոսկեբերան աշկերտութեան.
Էնի էրաց վարպետութեն։
Տասնուխինգ աւուր վերէն
Ջուապ էրաց Եփրեմաց Թագւորին.
Ասաց.—Էն օր Աստուած քե տուեր ա,
Ծառայ կելնիմ առեղծողին.
Մենք չանց կտանք քրէական,
Էնի կառնի պշարական.
Մենք չանց կտանք պշարական,
Էնի կառնի կտակարան.
Մենք չանց կտանք կտակարան,
Էնի գլխեց չորս գլուխ աւետարան։
Ջուապ տարին Անաննեաց Թագւորին.
— Քիօ յէլէքեան խասեր՝ էղե խաւսարակնե։
Անաննեաց Թագւորի կին.
Քեաղաք քաղքով ժողուել էտուր.
Կոյս Մարգրիտ Նշան էդիր։

Մի չար դիւցմաճ էրի, դէմ առաւ.
Ասաց.—յէլէքսան, մէկիկ որդին,
Դուի չունես խըտ չար բանին.
Ականջ մէներ քեօ ծնողին։
Ջուապ գնաց Ոսկեբերան Սուրբ Օվանէսին,
— Ոսկեբերան Սուրբ Օվանէս,
Ականջ չէնայ ուր ծնողին.
Ականջ կէնայ ֆոռ դիւցմըճին,
Օճախ ընկնի ձեռ դիւցմճին։
Ասաց.—Ո՛վ յէլէքսան մէկիկ որդին,
Ականջ մէներ ֆոռ դիւօմճին.
Էրտ կեանք աստնուորին։
Ասաց.—Ես դաւի չունեմ չար բանին,
Չեմ մնար մըտ ծնողին:
Անանեաց Թագուորի կին
Զոք էղար գետին.
Ասաց Ոսկեբերան Սուրբ Օվանէսին.
—Ծառայ կըլնիմ քեօ ստեղծողին.
Հետմ կանանչ մեռօն էս.
Հետմ մըտ Աստուած փառաւորես.
Տիւ խրատմ տաս յէլէքսանին,
Օճախ չընկի ձեռն օտարին։
Ասաց.—յէլէքսան, մէկիկ որդին.
Ականջ էրտ քեօ ծնողին։
Բերին եօթ օր, եօթ գիշեր խարսնիս արին.
Տարան եօթ դարկեախ գեցեցին.
Մէջ սենեկին կոյս Մարգրիտ դրին։
Խասաւ կէս գիշեր, յէլէքսան
Ասաց.—Կոյս Մարգրիտ.
Իմ մատնիք առ մըջ քեօ ճկտին,
Ես կայնեմ իմ եղեկեցին.
Շատ կը խասնենք էն չար բանին։
Խաւ խօռայրին Կոյս Մարգրտի
Քեօն տարեր էր, գաչք բացեց.
Կորուսեր էր մէկիկ որդին։
Առաւօտուն ժամ ձէնէցին.
Անանեաց Թագաւորի կին
Ելաւ չարազ էլից քաս ու քեփսին.
Ասաց.—Էրթամ, տեսնիմ խարս ու փեսին։
Եկաւ—կայնաւ չէմաց վերէն, բան չկէր.

Կերթայ մըջ դըարկըլխին՝ բան չկայ.
Կերթայ մըջ սենեկին,
Կոյս Մարգրիտ չեփոր կենէ մըջ սենեկին։
Ասաց.—Աւեր խօր տուն.
Տիւ խաւան չես իմ բուրճ բաշճին.
Տիւ խաւան չես իմ կոչխարայուն.
Թէ խաւան չես իմ մէկիկ որդուն.
Որ չեփոր կէնես մըջ սենեկին։
Ասաց.—Խաքուճ կխուր, տիւ մեր արի.
Ասաց «Կոյս Մարգրիտ.
Իմ մատնիք առ քեօ ճկթին
Ես կայնեմ իմ եղեկեցին,
Շուտ կը խասնենք էն չար բանտին»։
Քունս տարաւ անուշ բարձին.
Կորուսեր ի քեօ մէկ որդին։
Մօր ծծեր լացին մըջ ծոցին.
Ծնկներ առին չուր փետին.
Ասաց.—Ինչ անեմ.
Կորուսեր է իմ մէկ որդին։
Եռասունուերկու տարի
Կուս Մարգրիտ մնաց մըջ սենեկին։
Անանեաց Թագւորու կին
Ուր բուռճ բաշաճ էզար գետին.
Աղքատներաց ցրուել էտու.
Որ կնօրնի ուր մէկ որդին։
Ցէլէքանոս յէլաւ ճամբախ.
Դեմ առեց նոքովըրին.
Ասաց. —Նովոմոր, եօթ օր կա բմի,
Մէկ աման ջիւր կարմիր փարչով՝
Մէկ գարէ խաց ձի խառուցես.
Էրթամ, աղօթք անեմ,
Կէս քե, կէս իմ ուստին (չասաց ձի խօսմար)։
Ցէլաւ, եօթ օր էզաւ եռասունուերկու տարին
Առաւօտուն խաչկան ծունկոր էդիր.
Ասաց.—Ինչ ջուապ տամ պանծողին.
Աղքատ մնացեր եմ կէս ծովայուն։
Կառնի փառչմ,—պակ ջուր.
Մէկ գարեխաց
Կերթայ Ծովու կողին.
Դեմ կառնի ձէլէքրանին։

Ասաց.—Աղքատ, մոռցերեմ քե
Կէս ծովային,
Ինչ ջուապ տամ ստեղծողին։
Ասաց.—Բան չկայ.
Անօթցեր իմ, խողն էմ կերեր.
Ծարաւցեր իմ, չաղն իմ լեզեր.
Աղօթք իմ արեր կէս քե,
Կէս իմ վարպետին։
Ասաց.—Ո՛վ Նովովոր (Նովովոր էնոր վարպետն էր),
Ծառայ կելնիմ քեօ Նովին,
Սօթ օր ձի մօհլաք տաս.
Երթամ, տեսիմ իմ խօր բուռն քաօանցին,
Քեոչք ու սարին,
Նոր խալալ սրտով
Իմ քեասար պարզեմ, խօզիս տամ։
Էրի եօթ օր ման էրի.
Եռատնուերկու տարի ոչ լուացուեր էր.
Ոչ թախթրփեր էր.
Առջեւու մազեր էրկնցեր էր.
Զոմ ոտաց իրխոն էր խասեր.
Իտիւու մազիր չոմ կրնկներ էր խասեր;
Էրի եփ, Անանեաց Թագւորի կին նստեր կուլայ.
Աղքատներ կուշտ աղօթք կանեն.
Կասի.—Անանեաց Թագւորի կին.
Քեօ խալայեղներաց մէջ աղօթք անեմ,
Բալքի գտնիս քեօ մէկիկ որդին.
Ասաց.—Եռատնուերկու տարի աղօթք կանեմ
Տեղմ տուէք, էն էլ թօ անի։
Ցէլաւ գնաց,
Ինչ ծունար կը դներ.
Խաչ կը հաներ,
Բերնէն լոյս կը թափեր։
Խալայեղներ էկան գանգատ
Անանեաց Թագւորի կնկան.
Ասացին.—Անանեաց Թագւորի կին.
Էն ինչ կրակ բերան էր,
Բերեր ջնջեր մրնջ մէ.
Բերան կը բանայ, կը խփայ,
Քեօ մէկիկ որդուն կանիծայ։
Անուն էրաց խալայեղներուն,

Տարան, էջքին տակ սալերուն.
Ծեծին տփին.
Տարան Թողին տակ փողոցին.
Զասաց՝ ես իմ քեօ մէկիկ որդին։
Խաց կուտին, կը լուին ժանդոտ թեփսին,
Տանին լակեր կուտին, կասին.
— Անանեաց Թագւորի կին
Քի զատի խրկեր.
Գլոխ ինչ վիր վիրուցեր,
Կը լցին գլխուն.
Կիգեր խօրոտ մազերաց տակ։
Գերնաց գեանդատ
Անանեաց Թագւորի կնկան.
Ասաց.—Անանեաց Թագւորի կին,
Խրատմ տուր քեօ խալայեղներուն.
Կը լուան խօրոտ թեփսին,
Կը բերին լցին խօրոտ մուրսին։
Անանեաց Թագւորի կին.
Գերլեօխ կը վերու.
Օրան կենայ, կասի.
— Քեալա օղեր, քեալա բոկեր.
Ցիւ էր կը լուաք խօրօտ թեփսին.
Տանէք. լցէք ինոր մուրսին.
Բէժ ու բէժլէխ յէլէքսանին,
Զէ ծիրանին յէլէքսանին։
Էլման գերնաց. դէմ փողոցին աղօթք էրաց.
Էլման պիրեցին, լակ լցին գլխին.
Էլ չգերնաց գեանդատ.
Եօթ օր որ բմաւ.
Էլման պիրեցին լակ լցին գերլխին։
Տեսան, աղքատ խանդեր ա մըջ փողոցին.
Ջուապ տարին Անանեաց Թագւորի կնկան.
Ասին.—Աղքատ մեռեր մըջ փողոցին.
Լուս կամար ա կապեր վեր ինոր։
Էլաւ էկաւ Սփրեմաց Թագւոր,
Անանեաց Թագւորի կին.
Քեաղաք քեաղքով թօփ էլան, Թափան գլխին.
Տեսան աչ ձեռ խփուցեր ա։
Ինչ էրեցին, ձեռ չբացուաւ։
Սփրեմաց Թագւոր ասաց.

— Բիրէք Fեալփարին, ձեռ բռնանք։
Անանեաց Թագւորի կին ասաց.
— Ամա՛ն, Fեալփարին մի թալէք ինոր ձեռ.
Էնի կը մանի իմ յէլէքսանին։
Գնացին Ոսկեբերան Սուրբ Օվանէս բերին.
Ջալալոց հեքիմ բերին.
Ասաց.—Անանեաց Թագւորի կին,
Խապար չունիմ էսա բանին.
Խապար էրեք Սօղոմոն իմաստունին։
Գնացին Սօղոմոն Իմաստուն բերին.
Սօղոմոն Իմաստուն ասաց.
— Թէ բանայ ինոր ձեռ.
Մէ կուս կը բանայ։
Մեզեցին, մեղեցին ...
Կուս Մարգրիտն ի էռսունվերկու տարի
Մէջ սեննկին. գնացին բերին.
Մե փէշ ոսկի լցին.
Մե փէշ խունկ, մոմ կպուցին.
Ձեռ տուեցին.
Ծռացուցին մէջ խալայեղներաց.
Որ գտնին մէկիկ որդին։
Կուս Մարգրիտ ցրուեց ոսկին.
Գնընաց ինոր մօտ, չոք ըզար գետին.
Ձեռ բացուաւ, Թուղթ ինաւ փր՛ռ՛ մէջ գեոզին։
Սօղոմոն Իմաստուն Թուղթ առաւ, կարդաց.
— «Էրանէկ, իմ մօր անուն Անանիա.
Ձերանէկ իմ խօր անուն Եփրեմիա.
Իմ աներոջ՝ Զաքարիա.
Իմ զօքնչիս՝ Խոռոմսիմա.
Իմ քեաւորոջ՝ Ոսկեբերան Սուրբ Օվանէս.
Իմ Նշանած՝ Կուս Մարգրիտ.
Զէքէհաւատար, ես ձեր յէլէքսանն եմ մէկիկ որդին»
Կուս Մարգրիտ ասաց.
Ծառայ կըլլեմ քեօ գերեզմնին.
Եօթ օր թմաւ, ձի կը տանին խետ քեօ կշտին։
Անանեաց Թագւորի կին ասաց.
— Ջազայի խալաւ կտուէք իմ յէլէքսանին։
Սօղոմոն Իմաստուն ասաց.
— Ինոր մազեր խորենք ինե.
Էնի ընդունելի ա մըտ Աստուած։

Եփրեմաց Թագաւորի կին ականջ չէրաց·
Ջազայի խալաւ կտրել էտու
Կտրողի ձեռքիր չորցաւ·
Կարողի աչքիր կուրցաւ·
Մաչէ չորեր փաթթուեցին, էրին պատանք·
Խրեշտակ Աստծուն էկաւ, ասաց·
— Քե ոտով, գլխով տանեմ դըքախտ:
Եօթ օր լուսարարութեն էրեց կուս Մարգրիտ·
Ցելէքսանոս մէկիկ որդու գերեզմնին·
Եօթ օր բմաւ, մեռաւ·
Խորեցին խըտ ինոր:

—⁂—

# ԱԼԷՔՍԱՆ

## Բ. Ճիւղ.

**Թաւրիզի բարբառով** *).

Եփրեմ Թագաւոր չատ ունէր մալ ու մալ խազնա,
Չունէր մին պտուղ.
Ասաւ. «Ո՛վ Քեյվանի Աննայի·
Արի զօր ու գիշեր աղօթք անենք,
Աստուած տայ մեզի մին պտուղ»:
Օխտը զօր ու գիշեր ժամ ու աղօթք արան,
Աստուած տուաւ ըկոնց մին պտուղ.
Դրան լալը դունճաղը:
Լալը դունճաղից փախնում էր խարաբաներն մէջը.
Ցեխէ տաճար էր շինում, փէտէ նալ:
Լալէն էկաւ ասաւ. «Ո՛վ Եփրեմ Թագաւոր.
Քո Ալէքսան չատ գիժ ա, չատ անխելք ա.
Դունճաղեց փախնում խարաբաներն մէջը,
Ցեխէ տաճար ա շինում, փէտէ նալ»:
Ասաւ. «Ո՛վ լալա, ով ունի իմ Ալէքսանին բարը».
Ասաւ. «Մէ Ջուլհակ ունի քո Ալէքսանի բարը».
Եփրեմ Թագաւորն ասաւ.—Խաչնի դուռը բաց արէք.
Մէ խուրճին ոսկի լցաւ, գնաց Ջուլհակի դուռը:
Ջուլհակն ասաւ. «Ո՛վ Եփրեմ Թագաւոր,

* Առած է Համասփիւռ Նիկողոսեան 50 տարեկանէ:

Սիւտակ միրուքը դուրս տուաւ, կիտաւ առաջը.
Կալի դռները կապել տուաւ,
Ժողովուրդը կիտուաւ առաջը, ասաւ.
—Ո՛վ Եփրեմ Թագաւոր.
Քո վախէդ ով կարա, քո որդիդ պահէ.
Դուս գանք, էլի քո որդիդ կը ճարուի։
Խազճի դուռը բաց արան,
Մի խուրճին ոսկի լցան. գնացին տեսան,
Ճանապարհին մի աղքատ ա նստած, ասաւ.
—Ո՛վ Աղքատ, ասաւ, ըստեղից էկաւ իմ Ալէքսանիս հոտը.
Դու իմ Ալէքսանիս տեսա՞ր։
Էդ աղքատը Ալէքսանն էր. աղքատն ասաւ.
—Ալէքսան ըստեղէն անցաւ, ասաւ,
«Իմ խէր Թող էթայ օխտը աղքատատուն շինի.
Օխտը տարուց ետոյ Ալէքսանը քննա, դու Ալէքսանին»։
Եփրեմ Թագաւոր ոսկին թողաւ աղքատին.
Էկաւ աղքատատուն շինաւ,
Աղքատներուն հաց տուաւ, չոր տուաւ,
Մութը կոխեց, Ալէքսանը գնաց մէ ղույկարի մօտ, ասաւ.
—Ինձի համար մի նով շինի.
Ասաւ.—Մութնա։ Ոսկին կիտաւ առաջը,
Ասաւ.—Էս խազճէ սոյյովը շինի։
Ալէքսան մտաւ նովի մէջը, ընկաւ ծովի մէջը.
Օխտը տարի մնաց էդ ծովի մէջը.
Սատանէն էկաւ, սատանութիւն արաւ, ասաւ.
—Ո՛վ Ալէքսան, ու՞ր ես մնացէ, ու ջուրն էկաւ,
Քո խօր տունը տարաւ։
Ալէքսան էկաւ, խօր դռնիցը անցաւ,
Տեսաւ մեծ բեյվանի Աննան,
Գլուխը դրեր ա Նէս Մարգրտի ծնկան.
Նէս Մարգրիտն ասաւ.—Մե՛ծ բեյվանի Աննա.
Ըստեղից էկաւ իմ Ալէքսանիս հոտը.
Ասաւ,—Մէրդ մեռնի, Ալէքսան յո՞ւր ա.
Օխտը տարուայ յետև դու Ալէքսանին ես.
(Չին իմանում օխտը տարին բամամեր ա).
Ալէքսանը գնաց, նստաւ աղքատատնումը,
Հաց բերան չկերաւ, չոր բերան չխագաւ.
Ասաւ.—Տէր դու ընձի ազատես էս մեղքիցը։
Աղքատներ էկան, ասին. «Ո՛վ Եփրեմ Թագաւոր,
Մէկ աղքատ ա էկե, ոչ ուտում, ոչ խմում,

Աստծուն ֆիւֆուր ա տալի։ Ասաւ.—գնացէք,
Կալի դուռը խանէք, դրէք ականջի մէջը։
Տարան դրին անկաճի մէջը. Ալէքսան էլի ասաւ.
—Տէ՛ր, դու ազատես ընձի էս մեղքիցը.
Էկան ասին, ընդուց բերար ա առում.
Ասաւ՝ խանէք, դրէք աչքի մէջը։ Էլ նա ասաւ.
—Տէր դու ազատես ընձի էս մեղքիցը.
Էկան ասին. «Ո՛վ Եփրեմ Թագաւոր,
Ընդուց բերարն ա առում։
Ասաւ.—Գնացէք, ֆիւլիկը քանդէք,
Դրէք ֆիւլիւկի մէջը։
Թաֆի կէս քչեր սաղ ա մնացեր.
Կէս քչերից ետոյ մեռեր էր.
Սաղ ձեռքը մնացեր դուս, ձեռի մէջը գիր կար,
Էկան խապար բերին,—Եփրեմ Թագաւոր.
Աղքատը մեռէր ա, ձեռքին մի գիր կայ.
Ինչ անում են չի բացւում։
Եփրեմ Թագաւոր էլաւ գնաց.
Ինչքան ժողովուրդ կար էլան գնացին,
Չկարցան ընտուր ձեռի մէջի էն Թուղթը հանին։
Եփրեմ Թագաւորն ասաւ.
—Ընձի ունեմ Նէս Մարգրիտ,
Կարելի ա էն արդար էլնի».
Նէս Մարգրտին կանչին՝ էկաւ,
Ձեռքը բացաւ, Թուղթը ընկաւ,
Թուղթը կարդացին, Նոր իմացան
Որ իրանց Ալէքսանն ա։
Թուղթը որ կարդացին,
Նէս Մարգրիտ ընտէ մեռաւ.
Ջուխտին խորան աղքատատանը,
Վրաները լուս կամար տուաւ։

## ԿԱԳՈՒԱՆ ԱՍԼԱՆ*

Կագուան Ասլան քան մէկ տարեկան,
Ունէր իրեք խարիր վացցուն վեց աղքատ մըջ տասնուարիս.

* Մոկաց ու Վ.աղարշապատի խառն բարբառով ասած է Մկրտիչ Կալյան (ծայացած ֆուրդ)։

Կը խմէր նաւան գինի. էնք խօսութեն կանէր,
Չի գիտէր մեռնիլ կայ մէջ աստնուորիս։
Օրերաց մէկ օրը՝ մէկ աղքատ էկաւ, ասաց.
—Կաղուան Ասլան, քու աղքատն ի մեռնիր մանչ փողուցըներ։
Կագուան Ասլան թուղից խաց, թուղկից նաւան գինին.
Ասաց.—Ո՛վ ի առնր իմ աղքըտի դառնիկ խագին։
Խեծաւ Բօզըէկին. քշեց գինաց մանչ դաշտին։
Ասաց.—Ո՛վ ի առնր իմ աղքըտի դառնիկ խագին։
Առածուն չատ դժար էկաւ. Գաբրիէլ խրիշտակ ժողրկից
էկաւ, ասաց.—Կագուան Ասլան, քիւր կերթաս։
Ասաց.—Կերթամ. չըմ գիտի, ով ի առնիր իմ աղքըտի դառնիկ խագին։
Ասաց.—Ես իմ առնիր քու աղքըտի դառնիկ խագին.
Ասաց.—Ինչու առնիր իմ աղքըտի դառնիկ խագին.
Արի մայդանը. Ես գիւ, կռըւ էնինք։
Տուեցին, կռիւ արեցին մինչև յիրկուն.
Գաբրիէլ խրիշտակ չի խմըէր որ զարկէր,
Կագուան Ասլան սրտէն կը զարկէր։
Էկաւ մինչև յիրիկուն, Գաբրիէլ խրիշտակ չատ նեղացաւ.
Ցանքիր չուռ առուեց, ոտքիր ռանից. մինչև գլխի գագաթը մզաց։
Գլուխը ցաւաց. սիրտը ցնւաց. չուքեր թուլցաւ,
Ձիւր մշակներ մտան թիւքիր. տարան թալըըն մանչ ուր տեղաց։
Գաբրիէլ խրիշտակ խեծաւ իրա ձին, խազեաւ իրան չորիր.
Զեռ առաւ իրան կրապոյտ վարուցը.
Կագուան Ասլանի գլխի վիրև կանգնաւ։
Ասաց.—Պտի աւանդեմ քիւ քեաղցրիկ խոգին։
Խուգին քաղուից մինչիւ չուքիրը.
Կագուան Ասլան չի գիտէր մեռնիլ կայ մանչ աստնուորիս,
Ասաց.—Կանչիմ իմ մէր գայ,
Բալքի յիւր խուգին տայ իմ խուգու փոխանին։
Մէր իկաւ. ասաց.—Մէրիկ,
Գաբրիէլ խրիշտակ կուզի իմ քեաղցրիկ խուգին.
Արի. քիւ խուգին տուր իմ քեաղցրիկ խուգիւ փուխանին։
Էսաց.—Ես ինչ անիմ, ուրդի.
Իրեք խարիր վացցունմեց տարի ունր արեր իմ.
Մանչ աստնուորիս նիւլ հարսն իմ, քուղ իրիսիս ի.
Իմ քեաղցրիկ խուգին չըմ ըտամ քիւ խուգիւ փոխանին։
Մէրը թուղից գինաց։
Կագուան Ասլանի խուգին քաղուից, էլաւ պուրտը.
Էսաց.—Կանչըրցէք իմ խէր գայ,

Բալքի յէւր խուզին տայ իմ քեաղցրիկ խուզիւ փոխանին։
Թէր էկաւ. էսաց.—Ուրդի, յի՞նչ կուզիս։
Կասի.—Գաբրիէլ խրէշտակ կուզի իմ քեաղցրիկ խուզիս։
Արի՛, քիւ խուզին տուր իմ քեաղցրիկ խուզիւ փոխանին։
Է՛, ուրդի՛ս,
Իրէք խարիր վացցուն վից տարը ումր իմ արեր մանչ աստնու-
րիս.

Թագ գլխիս ի.
Ես չըմ իտայ իմ քեաղցրիկ խուզիս քիւ խուզիւ փոխանին.
Նիւր կեանք տ'անիմ մանչ աստնուորիս։
Թէր Թուղից, գինաց:
Կազուան Ասլանի խուզին քաղուաւ.
Իլաւ մինչիւ դօշը։
Իրա ճար-իլաճը կտրաւ.
Բարեկամ չունէր աշխրքի էրեսին.
Մարգըրիտ անուն Նշանլու ունէր.
—Կանչէք, ասաց, Մարգըրտին գեայ.
Բալքի յիւր խուզին տայ իմ քեաղցրիկ խուզիւ փուխանին։
Ես կեանք ինիմ մանչ աստնուորիս։
Կանչըցըն, յիւր Նշանլու—աղջիկ Մարգրիտ էկաւ.
Տըսաւ Կազուան Ասլան դառ վիճակի մէջ ի.
Սիրտ փլաւ, Աստուած կանչըց, էսաց.
—Կազուան Ասլան, էրկինք, գետին, Աստուած վկայ ըլնը.
Ես իմ խուզըն տամ քիւ քեաղցրիկ խուզիւ փուխանին։
Մարգրտի խուզըն քաղուից.
Կազուան Ասլան յիտ դարձաւ։
Գաբրիէլ խրիշտակ էլմ էսաց.—Մարգըրիտ,
Ձիկա՛յ աստնուորիս լաւ լաւ տղէք, մէկը բռնը.
Քիւ խուզըն մը՛ տա՛յ Կազուան Ասլանի խուզիւ փուխանըն.
Էսաց.—Ոչ, Կազուան Ասլանի դարտ իմն ի.
Լիւսնակ, էրեգակ, Աստուած վկա՛յ ըլնի.
Ես իմ խուզըն տամ Կազուան Ասլանի խուզիւ փոխանըն.
Էգուան օր չասըն, «դառնիկ ոքքեմրի Մարգրիտ».
Աստըծուն չատ դժար էկաւ.
Իրէք խարիր վացցուն ու վից տարը ումր տուեց.
Նշանլու Մարգրտին ու Կազուան Ասլանին.
Խօր—մօր խուզըն առաւ յիւր խուզիւ փոխանըն.
Նուրէն կեանք սրտաւ մանչ աստնուորիս.
Կազուան Ասլան ու Մարգրիտ.
Օղորմի իրանց։

# ԿԱՐՈՍ ԽԱՉ

### Ալաշկերտի բարբառով.

Խօտաղներ ժողուան վըր յիրալու,
Մէկ միտք մի էրեցին.
Իրանք իրանց խաչ մի տուքեցին.
Գզի Թփով փաթթութեցին.
Էլան, ծառի գլօխ դրեցին,
Բօբկըրցան, գլօխ բացին,
Էլան ծառի գլօխ մէկ մէկ համբուրեցին։
Էրեցօվ, սարկաւագօվ գացին,
Կարոս խաչին բերեցին.
Բերեցին. մըջ ժամուն դրեցին.
Գիշեր լուս կիտէր տաճարին,
Ցերեկ հօվ կենէր տաճարին։
Մէկ խօմսիմ էլաւ հայոց ազգին,
Գնաց. ասաց քուրդ պարոնին.
Քուրդ պարօն ժողուեց քառասուն մօլլա,
Քառասուն Ֆախի էրաց ասկեար.
Գնաց վըր Կարօս խաչին։
Էկաւ, մտաւ Եղեկեցին,
Կայնաւ դէմ տաճարին.
Իրան ձեռ Թալից Կարօս խաչին,
Բերան ծռուաւ դէմ ականջին։
Կատղաւ Ալին, կատղաւ ուր ձին,
Ուրանք զուրանք սուր քաշեցին։
Քուրդ պարօն ասաց.
—Ծառայ կեղնիմ Կարոս խաչին,
Քառասուն շիշակ, քառասուն անծին,
Շիշակ մատաղ կանի սուրբ Կարոս խաչին։

* *
*

### Մոկաց Սեպ գիւղի բարբառով *.

Ջաբաթ օր լոս կիրակին,
Խօտղներ բեարհաւան (հաւաքուեցան) մէջ էն դաշտին.
Բերին բոխէ խաչ մը շինեցին
Ջորս գըլեօխ խնձուրիցըն.
Թզի Թուփով փաթութիցըն,

* Առած է կոյր Մանիշակ Մելքոնեան 58 տարեկան:

Երկնուց մաստւնք իջուցըն,
Մէկ մէկ բերան ծծէր օղորմեայ կանչիցըն,
Ծառայ կըլնեմ Կարոս խաչին։
Թապար տարան քիւրդ Օմարին,
Թայու խամա խաչ մի կլեր ի.
Էն բաբար չի խոյու խաւտին,
Էն բաբար ի քեօ դիվներին.
Գիշեր լոս տայ վեր քեօ ք'րաշներին,
Ցերեկ խով անի վեր քեօ բրադշին։
Կանչեց Ալին, կանչեց, Մանսուր.
—Խաչմ ելեր ի խայու ազգին.
Էն բաբար չի խայու խաւտին.
Էն բաբար ի իմ դիվներին։
Գեացին խասան մինչ կէս ճամբերին,
Կատղաւ Ալին, կատղաւ ուր ձին.
Ճուն կատղաւ մինչ թրի կէծակին.
Ասաւ էտու թիւի կաշին,
Երէրաց ըանու աղէն մինչ ուրուրուցըն,
Երէրաց ըանու բերդ վրար դիվներն.
Ասաց,—Ծառայ կէլնեմ Կարոս խաչին.
Կըտամ քե քառասուն ջորի մատաղ,
Կըտամ քե քառասուն եբեակ մատաղ,
Կըտամ քե քառասուն էրինջ մատաղ,
Կըտամ քե քառասուն խոչ մատաղ,
Կըտամ քե քառասուն մաքի մատաղ,
Տուէք, տանեն ընեն ուր թախտին.
Տիւ չերէրուցեա իմ բերդ վրար դիվներն.
Տիւ չերէրուցեա իմ աղէն մրանջ ուրուրուցըն,
Ծառայ կէլնեմ Կարոս խաչին։

---

## ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏ

Դու ալմ ես, դու փաշա ես.
Էմեն ուրբոց դու գլխաւոր ես,
Մաքուր քեաւոր սուրբ Կարապետ։
Քե շինած կամար-կամար.
Լուսն էր դադրած չուր ազմար·
Քրիստոսի խաբրի խամար։

Քեօ լուսամուտ խըտ սուազան.
Ոսկի բուռ, ոսկի գաւազան.
Թուխ մանուկ առջև զանազան։
Քե շինած է մէջ պըրակին,
Քեօ տօնն էր կանանչ կիրակին,
Դարցին դարման սուրբ Կարապետ։
Քեօ ճամբխըներ օլոր-մոլոր,
Քեօ դուռ կիգէր չառ ըխտաւոր.
Ձիաւորին ոսկի խնձոր.
Պայաւորին մուրացատուր սուրբ Կարապետ։
Դեօ նստիմ քե գօվամ,
Ձորքեր բռնից, մլեց զնցան.
Մէկ թօփալ կեօնդրիկ (կծկած) կէր.
Ասաց.—Քե կեղնիմ մուխրախան,
Տանեմ Թափեմ Փըռ Պաթման,
Ձուր Քրիստոս գայ դատաստան։

* *
*

## Ս. ՏԻՐԱՄԷՐ.

**Տիրամօր գիւղի բարբառով *).**

Տիրամօր ըխտաւորներ կըգեան Մշու,
Շուշպայ կը բերեն Բաղըշու.
Ով էկաւ ձիով, գնաց ոտով,
Ուր մուրազ առեց։
Տիրամօր կող-բոլոր բազում խաչեր,
Գիւկան իրեն դեխ բոլ-բոլ լաճեր,
Կը բերեն Թուխ-Թուխ քոչեր։
Գիշերն էր հովեր, վրէն էր ծովեր,
Աշխրէ աշխար գիւկէն Տիրամօր ուխտըւորներ.
Ջուխտ մի էրկանք մէ կնիկ չըկեց,
Տիրամօր դիւռ խանգ դրեց.
Ուր մուրաց առեց, ետ դարձաւ։
Վարդիվրայ լոս կիրակին,
Տիրամօր վրէն լոս կաթաց.
Օգ Տիրամէր, մէկ Տիրամէր։

* Առած է Շողան Մարտիրոսեան:

Կիւռենց գիւղի բարբառով *).

Քեօ դուռ ու դուս քեար ու քռայ.
Գեառն ու մաքրին դան կը բռայ։
Խղճու խարէն կը մռմռայ:
Քիւ եռքն ի ծով. առջեն ի խով.
Քիւ մատաղն ի անծին կով.
Անուշախոտ լոս գերեզման,

Խաթուն Տիրամէր.

Քեօ դիւռ կը գէր շատ ըխթաւոր,
Համ տառւոր, համ ձիաւոր.
Ձիաւորին ջուապ կը տաս,
Ոտաւորին մուրազ կը տաս.
Բէ մուրազ իկերեմ,
Ձի մուրազես:

## ԱՂՕԹՔՆԵՐ

Կարսի բարբառով.

Ուսին ուսին՝ սուրբ կուսին 1).
Գնացինք, հասանք Քրիստոսին.
Վերնաժամ պատարագին ի մէջ դաշտին,
Գղծաւորներ երևացին.
Գեղծ Թշնամիք երևացին,
Ոտուէն գետին պիպռեցին,
Գլուխ էրկինք պատռուեցին.
Սիրտը փորը սուս էրին.
Աչքը էրեսին կուր էրին.
Կապած մնայ, կապած մնայ.
Մինչ ի գալոց Քրիստոսին։

* * *

Լուսացաւ, լաւն ի բարին՝
Ես հաւատամ Տէր կենդանին.
Մարիամ Նաւէ սուրբ սեղանին.

* Առած է Խոռոմսիմա Սարգսեան:
1) Առած է Աչի Մրոյեան 80 տարեկան:

Աղօթք կէնէր սուրբ տաճարին.
Օրըն երեք տարուայ գիշեր,
Մեղքը չյիշուէր դատաստանին։
Հայր Ցովսէփ, կոյս Մարիամ,
Գառ կեցեր, երազ տեսար, ելար նստար.
Խանձարուրք խանձարուրեցիր,
Խանձաձարով փաթութեցեր.
Սուրբ Ոհաննու գիրքը դրիր,
Անունն Ցիսուս մկրտեցիր,
Մկրտիչ սուրբ Կարապետ
Սուրբ Կարապետ քանդը տեղ է,
Ջորս բոլորը սար ու ճեղ է.
Մշու Սուլթան սուրբ Կարապետ։

*
* *

Աշխարքի չորս կողմ՝
Լուս անող Աստուած.
Բանաս աղօթարան,
Հետ բարի լուսուն.
Չի մռնաս ղուլդ,
Չի թողնիս Խռուաց.
Այնի դու օղորմանաս,
Հետ բարի լուսուն.
Հրեշտակներ փառաբանեն.
Հալածեն
Վերունաց, Թռնաց։

Աստուած ճանաչեն,
Բարեպաշտ մարդիկը
Կուլան, կաղաչեն,
Այնի դու օղորմանաս՝
Հետ բարի լուսուէն.
Հրեշտակներ կայներ,
Կըսեն դասէ ի դաս,
Սաղմոս ու շարական,
Հետ բարի լուսուն,
Այնի դու օղորմանաս.
Հետ բարի լուսուն։

*
* *

Ճրագ - ճրագ ճշմարիտ,

Ծիչնի խափան Մարտըլըս.
Աղէ վկայ Քրիստոս.
Էրնեկ էրնեկ էն տարին.
Երուսաղէմ չինեցին.
Գողածառը տնկեցին.
Էն մօրն ըսէք դուս գայ,
Աչքերը բեռով լուս գայ։

*
* *

Սուսամբօլու մէջ մէկ վարդմ բուսաւ,
Գնաց Երուսաղէմ, տուրք լուսը տեսաւ.
Սատանէն եռեէն մանճգզիլով հասաւ.
Կուլար, կերերար. վայ մեղաւորին.
Էրնեկ արդարաց, վայ մեղաւորաց։

*
* *

Աստուածածին տուր մուրազս,
Բարի կալօտս առնէի.
Ծոցուէի գիւլ, մանամօայ վարդը,
Հետը խառնէի ...։

*
* *

Խաչագողի բարբառով.

Տէ՛ր իմ, ընձի ինչ կասես,
—Զիս բռնեցին, չարչարեցին,
Ասող փշով 1) գլխս ծեծեցին.
Քաղցրիկ մօրս լացուցին,
Արուն քրտինք կոխեցին,
Երկինք, գետինք ցնծացին,
Լուսաւորչու կանթեղ վառեցին,
Արնլուայ գլխս կոխեցին։

1) Երկար, մի գոտունի ծայրը գնդակի նման բոլորովին կլոր ծաղիկ. խիտ երշապատած մանրիկ կապոյտ ծաղիկներով, որ յետոյ մանրիկ փշեր կը դառնան ծաղիկներու վայրը:

**Վանայ բարբառով.**

Խորն ընկայ, խոր չտարաւ.
Գետն ընկայ, գետ չտարաւ.
Եկեղեցին՝ ես քահանայ՝
Փող փչեցին յարութենայ։
Խորամախմէն խաբանացուցին,
Լուսեղէն խանդերձ խագուցին.
Օսկի քամար կապեցին.
Խնկան ծառեր տնկեցին.
Մազէ. կարմունջ կապեցին.
Արդարներ թռան, գացին.
Մեղաւորներ նստան, լացին։

*
* *

Պատի - պատի հկեղեցի
Դանկով զարկի, դուռը բացի,
Մտայ ինէ, աղօթք կացի.
Ելայ դիւս, մեղայ տուի։
Մեղմ - մեղմ, խազար բերան,
Խոստովանիմ էրկու խազար՝
Կաթնով աղբուր, քարէ տաճար՝
Խետ Աստըծիւն անենք վաճար,
Աստուած անի մեր խոգիւ ճար։
Իմ անուն Սուրբ Ցակոբ՝
Իմ խոր անուն սուրբ Մարտիրոս՝
Ծառին զարնեմ, ծառ կը խչայ,
Ճեօղին զարնեմ, արուն կը խչայ.
Որ ձիկ իրեք բերան յիշայ,
Աստուած ուր խոր - մօր մեղք չյիշայ։

*
* *

Մէյ կէճլատիկ խայիկմ կէր.
Անապատայ վանքը կը մնէր.
Օր կօրեկե խաց մը կուտէր.
Կէսն աղքատներաց բաժին կը խանէր.
Բեօքիկ ոտնով կեազ կը քաղէր.

Ձլուտ քեամկով կեազ կը կրէր·
Ինքը կը դրէր, ինքը կը կարդէր·
Աստուած խոգին լուսաւորէր։

*
* *

Իմ մեղք չատ ի քընց աւազ ծովու.
Քընց գետնի գնեն.
Վայ ինձ, վայ ինձ, վայ ինձ,
Ձօրն ասեմ, զօրն խոստովանեմ։
Խացնի ի խաւաց խորմեղէն.
Աստուած ունենք մե ապաւէն.
Աստուածասէր մայր կոյս,
Ինչ որ գիտես, մե ուսու,
Դառնի դժողքից մե ընցու.
Մեղաց տոպրակ խլացու.
Խոգիս խրչտակ ուրախցու։

* *
*

Կիւանենց գիւղի բարբառով *

Աւսին - ուսին
Սուրբ կուսին
Սուրբ կոյս Նատե վեր սեղանին.
Չէն կուտայ աշակերտին,
Պետրոս, ելի.—Պօղոս, ելի·
Խոռոմսիմէն խարսնացաւ։
Գաբրէլական փող փչեցին.
Մազէ կարմունջ կապեցին.
Խնկեան ծառ տնկեցին.
Արդար-մեղաւոր ջոկեցին։
Արդարներ ընցան մազէ կարմունջ.
Վեր խնկեան ծառին ճլվըլացին.
Մեղաւորներ չոքան, լացին։
Թամա խացի խոտ իկեաւ.
Իլէք, տեսէք, վօվ իկեաւ.
Բօզ-բօզ ձիաւոր իկեաւ.

*) Վանայ Թիմարայ Խուռօ Սարգսեան երգած է:

Մէյ Քրիստոս.
Մէյ Կեն դանանից Աստուածածին։
Իլաւ սարով, իջաւ ձորով.
Քուրդ հնուորին դէմ առից.
Աչքեր էրկինք խաւարից.
Ոտքեր գետին բիբեռից։
Իմ տէր իլաւ, ամպեր խապգաց.
Զորեքզիմաց աշխարհ դնդաց.
Տէր, մեղաւորիս Աստուած

* * *

Օլալոց-ալալոց,
Թալալոց Սուրբ Կիրակոս,
Գիրէք, տուէք իմ ձիանոց։
Խայնեմ, էրթամ դէմ տաճարին։
Քուրդ հնուորին դէմ առից
Աչքեր էրկինք խաւարից.
Ոտքը գետին բիբեռից. ելն (ԵոյԵր)։

---

## Երեկոյեան աղօթք.

**Դամզլու գիւղի բարբառով *)**

Ճրագ չնցաւ, չարն ընցաւ.
Սուրբ Գրիգորն յնցաւ։
Մեր դուռը ծիրանի,
Սողոմոն տաճարի,
Գողոս Պետրոս հրեշտակք,
Օրհնալ տէր մեր Յիսուս,
Քրիստոս Աստուած։



---

*) Առած է Խանում Գրիգուեան:

# ԱՒԵՏԻՔ *)

**Խարձկանայ Նանկանց գիւղի բարբառով.**

Յէսօր տուն ա Մարիամուն. աւետիք.
Մարիամ գնաց դուռն յէրին. »
Քամակն էզար Սուրբ սեղանին. »
Ծնցաւ իրեր Յիսուս որդին. »
Մեռնիմ քե Սուրբ Յովանէս. »
Քի Քրիստոսին քեաւոր էրին. »
Բիւրդ հանձարուն փըաթութեցին. »
Փըառքն ի բարձուն օրօր ասին. »
Ծիւղ օրօրոց օրօրըցին: »
—Ձեր տղի անուն ինչ ի.
—Յէկոբ քե ծառէ.
—Սեղան յըառջև խազոր բըարին. »
Կթխէն ի ձեռն նուան գինին. »
Յէկոբ նստէ ծառի տըկին. »
Մազեր թալե ծառի ճեօղին. »
Յէկոբ խեծեր կապուտ քուռակ. »
Մէջքն ա զարկեր պողպատ-ուըագ. »
Տօն տիկին, սուր տու կըտրին. »
Գնա, խառիր դուռն մառանին. »
Քընէ չըմ ուզեր ձիմ ու ջորիմ. »
Քընէ կուզիմ իմ օսաց դին. »
Տուն եմ չիներ աչնան գինով. »
Չըարդ եմ դըրեք գեարնան ծաղկով. »
Գերներ վըրէն ծառ խնկենի. »
Ուճախ վերէն ծալ-ծալ ոսկի. »
Յըարդն ի վերէն դեղին Դուքթ. »
Խողն ա վերէն սիս մաքդըբիտ. »
Սներն իննե ամպըաւենի. »
Տախտն ա իննե քընջ ապըկէն. »
Աւել իննե փունջ մանիշակ. »
Թոնիր իննե եկեղեցին. »

*) Ծննդեան երեկոյին գիւղի պատանիները ծղօտից գործած փոքրիկ պայուսակից թել կը կապեն եւ կը կախեն տան երդիկից ու կասեն այս երգը. տան տիկինը նրանց պայուսակի մէջ ձու, եղ. բրինձ եւլն, կը դնէ: Առած է Արմենակ Մարտիրոսեան:

Գուտուկ վերէն քընջ աղուընի. ալելուիա.
Խուփն ա վերէն պտրի լուսին. »
Ակն ա ինէ Ակնայ գիւհար։ »

---

# ԱԼԷԼՈՒ

**Մոկաց բարբառով.**

Ցնծացէք, ուրախացէք. ալելուեա.
Սօր ի տօն է Մայրամու. »
Մայրամ գնաց դուռն յէրին. »
Քեամակ իտու մարմար քեարին. »
Շնչաւ իբի Յիսուս որդին. »
Գետ Յորդանան մկրտեցին. »
Սուրբ Յովհաննէս քաւոր արին. »
Բիւրդ խանձարուր փաթըթեցին. »
Շուշ ուրուրուց ուրուրուցըն. »
Նրանի քի չուշ ուրուրուց. »
Քրիստոս քիւ մէջ ուրուրուցըն. »
Նրանի քի բիւրդ խանձարուր. »
Քրիստոս քիւ մէջ էն փաթըթած. »
Նրանի քի գետ Յորդանան. »
Քրիստոս քիւ մէջն էն մկրտած. »
Նրանի քի սուրբ Յովանէս. »
Քրիստոսին քաւոր արին. »
Աստուն չինած գարնան գեալով. »
Փռուած ծալ ծալ ծաղկերով. »
Գերան վերան ամպըրու վերէն. »
Ալաշ վերէն ծալ ծալ ոսկի. »
Խողն վերէն սոս մարգրիտ. »
Սնիր ինի ծառ խնկինի. »
Թոնիր ինի քեան գեկեղեցի. »
Գտուկ վերէն չիւրջ եղուընի. »
Տախտակ վերէն բիմու ծածկոց. »
Ձի լաճ Նատի ծառի տակին. »
Բրչեամ Թալէ ծառի ծեռքին. »
ՍուՖրեն յեռջև խազար բարին. »
Կթխէն ի ձեռ Նռան գինին. »
Հայ տանտըրկին սօլեր խագի ճըռվըլալէն.»
Գնա՛, խասի դիւռ մառանին. »

Քինէ չըմ ուզե ձիմ ու ջորին. »
Կամ տարեկան գեառն ու մաքին.»
Քինէ կուզիմ մաղմ կեօքով. »
Գաթէն էլ վերէն։ »

*
* *

### Գեաւառի բարբառով *)

Ցնծացէք, ուրախացէք, ալէլուիա.
Էս օր տօն ի Մարիամին։
Մարիամ գնաց դուռն էրին.
Անկսաւ իքե Աստուածորդին։
Էրնեկագին սուրբ Յովանէս,
Քրիստոս քեօ գիրկ մկրտեցին.
Քրիստոսի քեաւոր էրին։
Թունի էնի էղաւ եկեղեցի.
Գաթէն ցինի պտրի լուսին։
Ղուկաս նստի ծառի ճեօղին,
Բռչեամ թալի վարդի փշին։
Տó, տանտկին. տըկին-տըկին.
Սօլեր խագի չըխչըխկալին.
Խասի դուռը մառանին.
Քենէ չուզիմ գեառն ու մաքին
Քենէ չուզիմ ձին ու ջորին.
Քենէ կուզեմ կեօզ ու չամիչ։
Օձու լեզուն էրկու ճղեն՝
Մէյնի բարոց. մէլնի չարոց,
Բարոց գեայ էստ տան.
Զարոց էրթայ վեր սարերաց։

*
* *

### Կիւսնենց գիւղի բարբառով.

Ձեր տղի անուն ինչ ի.—Վոհան ալն.
—Վոհան ճուժ՝ ճժացաւ.
Քեանց բարձի ծառ էրկնցաւ։ Ալէլուիա։

*) Ծննդեան երեկոյին երդիքէն գուլպայ կը կախեն ու կերգեն. ամեն մի տողին «Ալէլուիա» կը կրկնեն: Առած է Խոռոմսիմա Սարգսեան:

Ճեօզիր իթալ քեաղքէ քեաղաք,
Ցըմեն ճեօղէն ջուխտմ ճրագ.
Վերէն ի թառի սինամահաւք, ալէլուլիա
Օձու լեզուն երկու ճղակ՝
Մէյնի չալով, մէյնի բարով, ալէլուլիա
Չարին էրթայ վեր սարելուն.
Բարին գեայ վեր էսա տուն, ալէլուլիա
Մամիկ, մամիկ, եռ քթ ծառայ՝
Սօլեր խագի, թող ճըռռըռայ.
Ջուր մառնի դիւռ մէ՛ջ գնա. ալէլուլիա
Քիզնէ չինք ուզի ձէն ինան ջորին.
Քինէ կուզինք էրկու կուրուշ, խարէբ փարայ։

*
* *

**Վանայ բարբառով** *).

Ըեօ, Նոր իկաւ Նխշիւն դդիւմ,
Բարով ուտիք ձեր խթում։
(տան աղի անուն կը հարցնեն ապա)
Արմենակ ճութ էք, ճթացաւ. ալէլուլ 1)
Ջանչ ամպրուին (արմաւենին) ամպրաւացաւ.
Խէր կերաւ անմախացաւ.
Մէր կերաւ ուրախացաւ,
Քեօք կերաւ, գլօրեցաւ.
Աղբէր կերաւ, վեր - վեր թռաւ։
Արմենակ Նստի ծառի տակին,
Տամեր թալի ծառի ճեօղին.
Առջև դրի Նռան գինին.
Էրանեկ էն տարին.
Ինչ Երուսաղէմ քեաղաք շինեցին։
Շինեցին, բմըմեցին.
Գնացին, խասան ծառ խնկան.
Գայլեն զանէն, ծառ կը ճղեր.
Սղոց քեաշին, արուն կը վզէր։

*
* *

*) Վան քաղաքի մէջ պատանիներ դատարկ դդում կր կախեն երդիքէն, կերգեն:

1) Ամեն տողի վերջ «ալէլուիա» պիտի կրկնուի:

Մարիամ գնաց դուռն էրին.
Քեամակ ի գար խաչաքեարին.
Ծնաւ, իբի Յիսուս որդին։
Էրանեկ քեզ պիւրթ խանձարուր,
Որ Քրիստոս մէջ քե փաթիւթեցին.
Էրանեկ քե, Խոռոմսիմէ,
Որ քրիստոսին տատմէր էղար,
Էրանեկ քե, գետ Յորդանան,
Որ Քրիստոս մէջ քե մկրտեցին.
Էրանեկ քե, Սուրբ Յովանէս,
Որ Քրիստոսին քեաւոր էղար։

*
* *

Գեաւաճի Նարեկ գիւղի բարբառով *).

Յըս օր տօն էրի Մարիամուն
Մայրամ գնաց դուռն յէրին.
Քամակ էգար խաչափէտին.
Ծնաւ էրի Յիսուս որդին։
Նը՛ սուն եմ, նը՛ գերան եմ,
Քրիստոսին խաչափէտ եմ։
Մամիկ, մամիկ ես քե ծառայ՝
Սոլեր խագի ճռուըռ արա.
Ջուր մառնի դուռ մէկ գեաւ արա.
Էգ յէգմներ ճամխու արա:
—Ձեր տղի անուն ինչ ի.—Աւետիս։
—Աւետիս նստէ ծառի տկին,
Բռչամ թալե ծառի ճղին
Կթխէն առջև նռան փինին
Սուֆրէն առջև խապար բօրին։



*) Առած է Թաճիկօ Գաճկեան:

# Բ.

# ԵՐԳԵՐ

—⁂—

## ՀԱՐՍԱՆԵԱՑ ԵՐԳԵՐ

---

### ԹԱԳԻՈՐԻ ԳՈՎՔ*)

**Վանայ բարբառով**

Էգ բարև, էգ բարև 1)
Էգն արևուն ալէր բարև.
Էգ բարև, էգ բարև
Աստուածածնայ տունք բարև.
Թագաւորին չատ բարև
Էգ բարև, էգ բարև,
Մարգարէից տանք բարև.
Թագաւորին չատ արև.
(Ծնաւորաց, մարտիրոսաց ևլն).
Արև նոր թագաւոր,
Թագուհիդ չնորհաւոր.
Թագաւոր, ինչ պիրեմ քե նման.

---

*) Սովորական հարսանեաց մէջ ամեն պարի երգեր կերգուին. այս գլխուն մէջ առնուածը միայն թագւորի ու հարսի «գովք» են:

1) Առտամէջ հարսանեաց երկրորդ առաւօտ կերգեն սոյն երգը:

Քեօ կանանչ արև՝ դու նման.
Ճերմակ վարդ որ կը բացուէր.
Բացուէր քեօ արև, դու նման։
Թագուհի, ինչ պիրեմ քե նման՝
Քեօ կանանչ արև՝ դու նման.
Կարմիր վարդ որ կը բացուէր.
Բացուէր քեօ արև, դու նման,
Ազպըներ, ինչ պիրեմ ձեզ նման.
Ձեր եօթնի արև՝ դու նման,
Եօթը գոյն վարդ որ կը բացուէր,
Բացուէր ձեր արև, դու նման։

---

**Եարձկանեայ Նանկանց գիւղի բարբառով.**

Թագուոր, ինչ պիրեմ քե նման,
Քեօ կանանչ արևն ի նման.
Նարեկացու դէմ կայներես,
Նարեկացին պահի քե պարզ իրես.
Բարով զքու թագն վէյելես։
Հայ սուռ. վայ սուռ,
Թագուոր, ինչ պիրեմ քե նման,
Քեօ կանանչ արևն ի նման։
Սուրբ Յակոբու դէմ կայներես,
Սուրբ Յակոբ պահի քե պարզ իրես.
Բարով զքու թագն վէյելես։
Հայ սուռ, վայ սուրռ, .....
Թագուոր, ինչ պիրեմ քե նման,
Քեօ կանանչ արևն ի նման.
Էջմիածին պահի քե պարզ իրես.
Բարով զքու թագն վէյելես:
Հայ սուռ, ....
Անթառամ ծաղիկն օր կը պացուէր,
Ծաղիկ քու արեու նման էր։
Հայ սուռ, ....
Բալասան ծաղիկն օր կը պացուէր
Ծաղիկ քու արեու նման էր։
Հայ սուռ, վայ սուռ են ....
Թագաւոր ինչ պիրեմ քե նման
Քեօ կանանչ արևն ի նման։

Թագուորի մէջ կայնած պիտէր
Մաղով չամիչ առնէր ի գէր։

*
* *

**Մոկաց բարբառով.**

Էջք արև, էջ արևու տանք բարև,
Հարս ու փեսին չատ արև.
—Էսա Թագուոր միր Թագ նմանի.
Պալասան ծաղիկ որ կը ծաղկէր՝
Կուրխանևաս ծաղիկ նման ի։
Էսա Թաուոր Թագ նման ի,
Ջուխտ Վարագայ Թագ նման ի
Սարի լալէն որ կը բացուէր,
Բացուաւ, քո կանանչ արևի նման ի։
Էսա Թագուոր Թագ նման ի,
Սուրբ խողևանից Թագ նման ի։
Էսա Թագուոր Թագ նման ի,
Բարդղոմոսա Թագ նման ի։
Թագուորն էր խալ, խալ,
Սոլերն էր կարմիր, արևդ կանաչ.
Թագուոր, ինչ պիրեմ քի նման,
Սարի սրբ Գէորգու Թաղն ի նման,
Քո կանանչ արևն ի նման։

* *
*

**Մոկաց Սեպ գիւղի բարբառով *.**

Ղա ինչ Թագ էր, Թագ նման էր.
Թագիկ դիւ չուա գէր,
Շուռ ու մուռ գէր,
Կանաչ կարմրով էսա տուն գէր,
Էս ինչ Թագ էր, Թագ նման էր.
Թագիկ դիւ չուա գէր,
Շուռ ու մուռ գէր,
Բարով էսա տուն գէր,
Սրպ Կարապետու օխնէք առնէր.
Նարեկացու օխնէք առնէր,
Սրպ Գէորգու օխնէք առնէր,
Աղթամարայ Սրպ Խէչու օխնէք առնէր,
Լիմ անապատու օխնէք փոխն էլնէր։

### Նփունենց փոքր թագաւորով *).

Էգ բարև, բարև հա էգ բարև,
Թագաւորու շատ արև.
Սարի լալէն, որ կը բացուի.
Բացուի քեօ արև քեօ նման։
Թագուոր ինչ սիրտի քե նման,
Գիւ կանաչ արև քե նման.
Սարի լալէն, որ կը բացուի,
Բացուի քեօ արև դու նման։

*
* *

## Ալաշկերտի թագաւորի գովքը 1).

Թագւոր բարով, հազար բարով,
Դու վարդ ես կանանչ տերևով.
Սուրբ Էջմիածին զարևդ օրհնէ,
Մէկ Աստուծու զօրութենով։
Թագւոր բարով, հազար բարով,
Դու վարդ ես կանանչ թևերով.
Սուրբ Էջմիածին զարևդ օրհնէ,
Մէկ Աստուծու զօրութենով։
Թագւոր, բարով, հազար բարով,
Դու վարդ ես կանանչ տերևով.
Սուրբ Վարդիճեր զարևդ օրհնէ,
Մէկ Աստուծու զօրութենով։
Թագւոր, բարով, հազար բարով,
Դու վարդ ես կանանչ տերևով.
Սուրբ Կարապետ զարևդ օրհնէ,
Մէկ Աստուծու զօրութենով։
Թագւոր, բարով, հազար բարով,
Դու վարդ ես կանանչ թևերով.
Սուրբ Թուքթառանք զարևդ օրհնէ,
Մէկ Աստուծու զօրութենով։

### Եղանակը փոխուած եւ ձայնը

Թագւոր, ինչ բերեմ քե նման,
Քու կանանչ արև քե նման.
Էն աղօթրան որ կը բացուէր,
Բացուէր արևիդ ի նման։
Թագւոր, ինչ բերեմ քե նման,
Քու կանանչ արև քե նման.
Էն Խնածուր վարդն որ կը բա-
ցուէր,
Բացուէր արևիդ ի նման։
Թագւոր, ինչ բերեմ քե նման.
Քու կանանչ արև քե նման.
Էն Ցուցուցարն որ կը բացուէր,
Բացուէր արևիդ նման 2)։

### Փոխուած եղանակով.

Գացէք, կանչէք, թագուորա հէր,—
Ցիգայ նստի դարբաս էնայ.
Ձնգլիկ (ծնտրիկ) զարկայ սուրբ
սեղանին,
Խերն ու բարին մեր թագուորին։
Գացէք, կանչէք, թագուորամէր,
Ցիգայ նստի դարբաս էնայ.
Ծնտրիկ զարկայ սուրբ սեղանին,
Խերն ու բարին մեր թագուորին։
Գացէք, կանչէք, թագուորաղբէր,
Ցիգայ նստի դարբաս էնայ.
Ձնգլիկ զարկայ սուրբ սեղանին,
Խերն ու բարին մեր թագուորին։

---

*) Երգած է Խուռօ Մարգարեան:

1) Տաս ձայնը եւ հօգը Պերտէն Ադամ չաւուշ. խումբանչիւր սող կը կրկնեն: երրորդ սողի վրայ ձայներնին կը բարձրացնեն. ձեերը վերջանալուն՝ միա-ռին կասեն.—«Ասուած ընորհաւոր էնայ»: Ապա կը կրկնեն.—«Մէկ մէ յէվերի»։

2) Խումբանչիւր զոյգ եօթը ձեից բաղկացած պիտի լինի:

Միջակ—արագ եղանակով,

Թագուոր Թագն ի գլօխ Թագն ի գլօխ.
Առ ժուռ ու մուռ տի.
Սուրբ Սուքեասանք Ալաշկերտցի,
Ջուր մուրասն տի (տայ)։
Թագուոր Թագն ի գլօխ Թագն ի գլօխ,
Առ ժուռ ու մուռ տի.
Սուրբ Էջմիածին Երևնցի,
Ջուր մուրասն տի։
Թագուոր Թագն ի գլօխ Թագն ի գլօխ,
Առ ժուռ ու մուռ տի.
Սուրբ Վարդիճեր կաղզուընցի,
Ջուր մուրասն տի։

Թեթեւ (արագ) եղանակով.

Մեր Թագուորին ծաղիկ պիտէր ծաղկունաց,
Ծաղիկն էլ ինչենի պիտէր ծաղկունաց,
Որ կը ճթռէր՝ ճուԹն ու տերև խըտ իրաց,
Չէն քաղէք, բերէք Թագուորին պարտունաց։
Մեր Թագուորին ծաղիկ պիտէր ծաղկունաց,
Ծաղիկն էլ ինչենի պիտէր ծաղկունաց.
Ծաղիկն էլ պալասօն պիտէր ծաղկունաց,
Չէն քաղէք, բերէք Թագուորին պարունաց 1)։

Տարբեր եղանակով.

Մեր Թագուորն էր խաչ, խաչ կոթ, խաչ ու մաչ,
Բիճիշն էր կարմիր, արևն էր կանանչ։
Մեր Թագուորն էր խաչ, խաչ կոթ, խաչ ու մաչ,
Գոտկն էր կարմիր, արևը կանանչ։
Մեր Թագուորն էր խաչ, խաչ կոթ, խաչ ու մաչ,
Խնձորն էր կարմիր, արևն էր կանանչ։

Շատ արագ եղանակով.

—Բէտ դիզան, բէտ բէտ դիզան, տեսէք էն որն ա 2).
—Բէտ դիզան, բէտ բէտ դիզան, էն գեղի ուէսն ա։
Խարխուներ խըլխուալին՝ տեսէք էն որն ա.
Խարխուներ խըլխուալին վարդապետներն ա.

1) Երգերու մէջ միայն երրորդ տողը կը փոխուի շատ մը ծաղիկներ յիշելով:
2) Ամեն տողի սկիզբը պիտի կրկնուի «բէտ դիզան» եւլն:

Կաղուններ գվգվալին՝ տեսէք էն ծ՞րն ա.
Կաղուններ գվգվալին գեղի հարսներն ա։
Ճնճղներ ճլվլալին տեսէք էն ծ՞րն ա.
Ճնճղներ ճլվլալին գեղի աղջիկներն ա։
Շուն էկաւ պարկն ի բերան, տեսէք էն ծ՞րն ա,
Շուն էկաւ պարկն ի բերան, գեղի դզիրն ա ելն։

* * *

Ե՛կ բարև, եկ բարև,
Թագուորին շատ արև։
Թագուորի մէր, դուս արի,
Դուռ դուան դէմ արի.
Քե ինչ ու ինչ եմ բերե,
Քե տախտ աւլող եմ բերե.
Քե կար կարող եմ բերե.
Քե գլօխ դմրող եմ բերե.
Քե թունտիր վառող եմ բերե.
Քե ծամ փետող եմ բերե.
Քե կուժ կոտրող եմ բերե.
Քե ծաշ էփող եմ բերե.
Քե հէր մէր էրվող եմ բերե.
Ե՛կ բարև, հա եկ բարև.
Մեր թագուորին շատ արև։

* * *

Թագուոր, ինչ բերեմ քե նման,
Քու կանանչ արև, դու նման.
Ճերմակ վարդն օր կը բացուէր,
Բացուէր քո արև, դու նման։
Թագուհի, ինչ բերեմ քե նման,
Քու կանանչ արև դու նման.
Կարմիր վարդն օր կը բացուէր,
Բացուէր քու արև. դու նման։
Ազպներ, ինչ բերեմ ձե նման,
Ձեր եօթնի արև, դուք նման.
Եօթ գուն վարդն օր կը բացուէր,
Բացուէր ձեր արև, դուք նման։

# ՀԱՐՍԻ ԳՈՎՔ

(Ծաղկոց)

Խարձկանայ Նաճրկանց գիւղի բարբառով.

Մէրիկ, դիւ մի լար, լալելիւ ես եմ *).
Քուրիկ, դիւ մի լար, լալէլիւն ես եմ.
Կոյիկ, դիւ մէրթար, էրթալիւն ես եմ.
Զրիկ, մի խոշար, խըշալիւն ես եմ.
Շէմիկ մի դնդար, դնդալիւն ես եմ։

Առաւօտման ժամ ձէնեցին 1),
Քեանեղ ձիանք դիւս քաշեցին,
Զիմ աղջիկ վերէն խէծուցին։
Առաւօտման ճրագն էր վառ,

*) Հարսը հօր տանից դուրս հանելու ժամանակ ընկերուհիները կերգեն հարսի կողմէն:

1) Ընկերուհիները մօր կողմէն կերգեն:

Դու կը մանէր զօգանի գառ։
Առաւօտման ժամ ձէնեցին,
Կանաչ մօմեր որ կպուցին,
Իմ Նազլիկ դուս քաշեցին.
Մէրիկ խափըցին մէկ լաճով,
Աղբէր խափըցին Սղերտու ապով
Խէրիկ խափըցին ամակաշաղի ծաղկով։

* *
*

**Մոկաց Սեպ գիւղի բարբառով.**

Խօսքս, որ է վեր քու բախտէն,
Գեանդղատ մանէր քու բախտէն.
Խօսքս որ է վեր, Եազ մ' անէր.
Ձիւպէն տուր վեր, բոզ մանէր.
Ձեր կանձ կուրէր, ու տաղ քիւրէն
Խալխաղ Թափեր պստիկ խարսին,
Ձեր կանձ կուարէր ուտաց քեարին
Մառնիք չինէր պստիկ խարսին։
Խօրս, որէ վէր քեօ բախտէն,
Գեանկատ մ' անէր քեօ բախտէն.
Խօրս, քեօ ճիւճէն կը դնգընգայ,
Ես քեօ սիրուն խիւանց ընկայ.
Խօրս, որե վէր, Եազ մ' անէր,
Ձիւպէն տուր վեր բոզ մ' անէր.

*
* *

**Ճիտակայ Դաօլիջայ գիւղի բարբառով.**

Ճէմիկ, մի դնտայ, դնգալու ես իմ
Խարիպ խուրպաք կորելու ես իմ,
Աղջի մի լայ, լալելու ես իմ,
Խարիպ խուրպաք կորելու ես իմ.
Հարսնած էկաւ վէրին կալերով,
Խինէն բէրին Թղթի ծալերով.
Աղբէր չունիմ, ձիու դիզկին խաղցնայ
Տանի ճամբէն բարով դառձնայ

* *
*

**Ալաօկերտի բարբառով *).**

Ըռուռնակ, մի ցոլա, ցոլալու ես իմ.
Մերիկ, դու մի լայ. լալելու ես իմ.
Աղբէր, մի բաժտափ, բաժնելու ես իմ,
Շէմքիկ, մի դնտայ. գնտալու ես իմ.
Դռնիկ, մի ժաժա, ժաժալու ես իմ.

*) Հարսնացուի ժամերն խաղն եւ չորսի կը բաժանեն. առնեն մի ժամ միջեկ միջոցին մի երգ պիտի առեն հաւաքուած աղջիկներէն իւրաքանչիւրը, երբ խաղն եւ չորս ժամերը նուիրուեցան, կսկսեն պարերգեր եւ պարեր: Առաջին երգը կառնէ աղջիկներու Ազգայ բաշին: Երկրորդ ժամի նիւթը քրդերէն երգած կերկեն եւ այսպէս փոխն ի փոխ հայերէն եւ քրդերէն կերգեն:

Օ՜յ օ՜յ լըմըն խարիպօ.
Խարիպըմ, խարիպէ խօշէօ.
Դարեւ մալա բավէ բուլէ ֆերքա.
Բուլէ մադըրի գալա խոշքա։
(Ասոնք հեգ պանդխտերէն,
Պանդուխտ եմ, պանդխտական Աստուծոյ.
Հարսի հօրը զուռնը խփաւ փոխ է.
Հայրս, տուն մի՛ լայ, փեսան երկաթագործ է)։

*
* *

Գնուռ ու դրկեց, մաշէք բարով,
Կերթամ կը մնամ տարով.
Իմ հէր խաղած կըթխէմ՝ գինով,
Իմ մէր խաղած բօփ մի չիլով։
Չըմ էրթայ մէրիկ, չըմ էրթայ,
Էկած ա զօռով կը տանին։
Պազըրկեան էկաւ լցուաւ էդ գեամիթ,
Մէրիկ մեռնէր քու խարիպ ջանին.
Էկած՝ ջոկած կը տանին,
Վոյ լըմըն խարիպօ,
Խարիպէ խօշէ մէ,
Բէկար բուլէ սըպէմըն։
Գիշերուայ ժամեր ձէնեցին,
Անծիկ մամուց ջոկեցին.
Վուն հալալ մէրիկ, դուն հալալ,
Տարան թըլխ տանին.
Տարան Ջաւակին լէ կը բէրին։
Հարոր պապու թալէն էր սալերով.
Բօզ ձին կապած էր նալերով.
Անծիկ տարած էն կալերով։
Մը՛ թափի ծառնուկ, մը՛ թափի,—
Թափելու ես իմ.
Մը՛ թափի թփուկ, մը՛ թափի,
Թափելու ես իմ.
Հարսնածը էկաւ վերի կալերով,
Հինէն բերին քըղի, թղթի ծալերով.
Վոյ լըմըն խարիպօ ելն.։
Անծկայ ձեռներ հինեցին,
Անծիկ մամուց ջոկեցին.
Մէ՛ լայ մէրիկ, մէ՛ լայ,

Լալելու ես իմ.
Դու հալալ մէրիկ, դու հալալ,
Ծծիդ կաթն ընծի հալալ.
Ախճիկ դուն խօրոտ, քու ախպէր զանկին,
Գլօխտի կապեր իս, կարմիր գուլբանկին.
Խոյամ էլ կեղնիմ յէրտիդ բռանկին.
Աչքերդ ի Թուխ ա քընց լօղակ,
Կաժա զԱգրակն ու Կօղակ:
Ցէրիկուարէ ճրագն էր վառ,
Դու կմնէր զօզանի գառ:

*
* *

**Շիրակայ Ղամզլու գիւղի բարբառով *)**

Յղլամա մարիկ, աղլամա=Մի լար մայրէ՛կ, մի լար.
Ուշակին, բաշի բաղլամա=Վարպետ կին գլուխ մի կապեր.
Շէն անա, շէն բաբա=Առատաբեր հայր, մայր
Ըավրըն շէն օլսուն,=Տներնիդ չէն լինի,
Ման գեդարամ=Ահա ես կերթամ
Երըն գէն օլսուն.=Տեղերնիդ լայն լինի.

Ընկել ա իրիկուայ հովը,
Բազրկեան իջել ա ծովը:
Շէն անա շէն բաբա
Տունըդ չէն էղնի,
Ես կերթամ, տեղըդ լէն էղնի.
Ընկել էր իրիկուայ քամին,
Բազրկեան իջել էր գետամին.
Շէն անա շէն բաբա
Ըավրըն շէն օլսուն,
Իրան յեօլի գեալ երն գէն օլսուն.
Չարչին ա ծախում ֆեաքան,
Աղջկան չկայ վաքան,
Շէն անա շէն բաբա տունդ շէն էղնի:
Աղջի՛ էն օրը մեռնէր,
Օր կը տանէին աւազան,

Շէն անա էլնէ.
Հարսնառն էկաւ վերին կալերով.
Հինէն բերին Թղթի ծալերով:
Աղջի՛կ, մի լայ, լալելու ես եմ,
Ղարիպ ղուրպաթ կորելու ես եմ:
Ծառեր մի Թափիք, Թափելու ես եմ,
Ղարիպ ղուրպաթ կորելու ես եմ.
Իրիկուայ զանկեր զարկեցին,
Աղջկան հօրից, մօրից ջոկեցին.
Գողնոցս ներկեր եմ Գեանջա տարոնով.
Սիրտս լցեր եմ գունդ գունդ արունով.
Շէն անա էլնէ:
Մի՛ Թափիր Թերեր Թափելու ես եմ,

*) Այս երգը երգում են պսակից մի օր առաջ. հարսնացուին իւր ընկերուհիներով տանում են վարպետ կնոջ տունը գլուխը լուանալու. «Ուշակինը» հարսի գլուխը լուանալուց յետոյ մազերը մանր-մանր հիւսում է. ընկերուհիները ամէն մի հիւսին մի տուն տխուր եղանակով երգում են, եւ հարսի հետ լաց լինում:

Ղարիպ օտար երկիր կորելուն ես եմ։
Ճէն անա ըեն բաբա, տունդ չէն էղնի,
Ես կերթամ, տեղդ լէն էղնի։

*
* *

**Կիւռճենց գիւղի բարբառով *)**

Թարս վէր էլի.
Դադէ, վեր էլի.
Ջատու ճամբախ ի.
Քեօ ձին թամքիւկ ի։
Քեօ աչիչ արցունք
Գեարնան լուլախ ի։
Աղբէր, դիւ մի բաժուիր,
Բաժուելուն ես եմ,
Մէրիկ դիւ մի լար,
Լալելուն ես եմ.
Ճէմիկ մի դնդայ,
Դնդալուն ես եմ,
Իմ աչիչ արցունք գեարնան լուլախ ի։

*
* *

Հարսը դռան առաջ.

Թագուորի մէր դիւս էրի, հէյ դիւս էրի 1)
Քե գլեօխ դմփող եմ պերի,
Թագուորի մէր դիւս էրի, հէյ դիւս էրէ՝
Քե տախտ ալող եմ պէրի.
Թագուորի մէր դիւս էրի, հէյ դիւս էրի,
Քե խարս դրող եմ պէրի։

*
* *

**Ալաշկերտի Խումլիպուճախ գիւղի բարբառով.**

Թագուորի մէր դուս արի
Քե գեօլի խազ եմ բերե.
Թագուորի մէր, դուս արի,
Լեզուն տաս գեազ եմ բերե,
Թագուորի մէր, դուս արի,
Քե ծամ պճնող եմ բերե.
Թագուորի մէր, դուս արի,
Տախտ աւելող եմ բերե.
Թագուորի մէր, դուս արի,
Խմոր չաղող եմ բերե.
Թագուորի մէր, դուս արի,
Գրտնակ քաշող եմ բերե.
Թագուորի մէր, դուս արի,
Գունտ էնող եմ բերե.
Թագուորի մէր, դուս արի,
Քուֆտայ ծէծող եմ բերե.
Թագուորի մէր, դուս արի,
Աման լուող եմ բերե.
Թագուորի մէր, դուս արի,
Թումպնի քթուող եմ բերե։



*) Առած է Խոռոմսխիմս Սարգսեան։
1) Հարսը եկեղեցուց տուն բերելիս, տան դռան առաջ կանգնած կերգեն.

## Գ.

# ԵՐԳԵՐ



# ԳՈՎԱՍԱՆԱԿԱՆ
## ԵՒ
# ՍԻՐԱՀԱՐԱԿԱՆ ԵՐԳԵՐ



## ՄՈԿԱՑ ՄԻՐԶԷՆ

**Մոկաց բարբառով *).**

Օրն էր ուրբաթ լուսու չաբաթ,
Թղթիկմ բերըն ծզիրու խիտ.
Առըն, բերին Մոկաց չուկէն.
Տարան, տուըն ձեռ, Մոկաց Միրզին:

Մոկաց միրզէն առըց, կարդաց քեաղցրիկ լեզուէն,
Էրաւ մաղդեն, կախեց ուր մրզինք,
Իմ սաֆիրէն, չուր ծզիրէն՝
Խէր չտեսնիր Կօլտո խօճէն 1).
Բաժն էր Կօլտո, բրչամ էրկէն.
Քեչեցէք դիւս բօզ բատըլէն.

---

*) Երգած է Մոկաց բարբառով Ձատիկ Խէպոյեան:

1) Միրզէն Մոկաց տէրն էր եւ հայ, Կօլոտ Խոճէն եւս հայ տանուտրական էր, սիրահարուած էր Միրզի հարսի վերայ, իւր նպատակին հասնելու համար չքն-ծու նամակ կը գրէ. զՄիրզէն խափելով ծզիրէ կը տանէ, ճանապարհին դանակի մի հարուած կը թաւնուռէ. ապա ձմեռոյն մի հրկու ատրս կանէ. դանակի թունաւոր կողմի ըերսը կըսայ Միրզին, որ կուտէ, կը մեռնի:

Վերայ դրէք զին պաստաւէն.
Իմ սաֆարէն չուր ծծիրէն։
Քեչեցին դիւս բոզ պատըլէն.
Վերայ դրըն զին սաստաւէն,
Էլաւ, խէծաւ Մոկաց Միրզէն.
Խեր չտեսնէր կոլոտ Խոճէն։
—Մնէք բարով, ես տերթամ չուր ծծիրէն։
Գեացընք, խասանք չուր Զամպարէն,
Խաբունքտիր էլան, Թափան փանջարէն,
Խեր չտեսներ կոլոտ Խոճէն,
Խազար ափսոս Մոկաց Միրզէն՝
Չկէր քիւ նման հընկի դիւնէն։
Գեացընք, խասանք չուր Ծզիրէն.
Խաբունքտիր Թափան Մոկաց Միրզի բամաճէն,
Խեր չտեսներ կոլոտ Խոճէն.
Բաժնէր կոլոտ, բըչամ էրկէն.
Խազար ափսոս Մոկաց Միրզէն
Չըկէր քիւ նման հընկի դիւնէն։
Կանչից Մոկաց Միրզին Կոլոտ Խոճէն.
Առից, տարաւ յիւր յօտէն.
Առից փարէն, էջաւ չուկէն.
Առից բոզ բաչըլէն,
Դանակ դեղից մէկն իրեսէն,
Կաժըց բոզ բաչիլէն.
Կաժմ էն կերաւ, մէկ Մոկաց Միրզէն.
Խեր չը տեսներ Կոլոտ Խոճէն,
Խազար ափսոս Մոկաց Միրզէն,
Չըկէր քեօ նման հընկի դիւնէն։
Թափաւ դեղին ջուր, սըպտակ լըճէն,
Թափաւ մազիր կարմիր իրեսէն.
Թափաւ պեղիր Նազուկ պըռկէն՝
Թափաւ լամէն 1), կախուաւ չանէն,
Խեր չտեսնէր Կոլոտ Խոճէն,
Բաժն էր կոլոտ, բռչամ էրկէն,
Խազար ափսոս Մոկաց Միրզէն,
Չըկէր քիւ նման հընկի դիւնէն.
Էսաց.—Քեչեցէք դիւս բոզ բաղըլէն.
Վերայ դրէք զին սաստաւէն.
Էլնը, խեծնէ Մոկաց Միրզէն,
Խեր չը տեսնէր Կոլոտ Խոճէն,
Չըկէր քիւ նման հընկի դիւնէն։
Քեչեցին դիւս ... (Նոյն վերը).
Իկինք, խասանք չիւր Խնկու դարէն՝
Բարով խանք չիւր Խնկու դարէն.
Ծեսանք ժուռ-ժուռ նաչմ ներքուց բիրըն.
Խեր չըտեսնէր Կոլոտ Խոճէն,
Խազար ափսոս Մոկաց Միրզէն,
Չըկէր քիւ նման հընկի դիւնէն։
Էկընք, խասանք չիւր Բռնաչէն 2),
Բարով խասանք չիւր Բռնաչէն.
Կուժ կթխէն կախած նաչէն՝
Պուտ պուտ էրուն կաթէր դետըն,
Խեր չըտեսնէր Կոլոտ Խոճէն
Խազար ափսոս Մոկաց Միրզէն։
Խապար տարէք իմ բերդի խաբունին,
Ըսէք, թըլս գեայ վէար ուր բախցին.
Խանէ բաժէն, խաքնի գլխին.
Էլ նա չի, ան բերդի խաբուն.
(Մինչև էկաւ Մալաքեռի, մեռաւ, սաղ չխասաւ տուն)։

1) Ծնոտի մասը. կաշին.

2) Բռնաշէն Մոկաց հին քաղաքն էր հարաւային կողմ. մեծ գետ մի մօտէն կանցնի.

**Թիմարայ Նիւսենց գիւղի բարբառով *)։**

Ես վիրու ոչխար մէջ տալան քեարին՝
Թուանքով գարկին բրինեար եարին,
Խապրիկմ օրօղկէք իմ Նազլի եարին.
Առնի դեղ դարման, գայ վեր ուր եարին։
Դաստէմ ռեհանով խաբրըս կը գնես,
Ալմաստ խանձրով եարէս (վէրքս), կը քուէս։
Արե եար, արե. խռով մի մնայ
Խօր տուս աստուրի, քե ձի չի մնայ։
Բուլում խաւք էկաւ անու միրաւոր,
Վզիկ յէրկէն՝ ռռտիկ սիաւոր.
Թալեմ բե չարեն, էրթամ խեա ինոր,
Էն իմ դարդն էր գիցէ, եա՝ ինոր։
Արե եար, արե՛, արե ջան, արե՛, խռով մի մնայ,
Խօր տուս աստուրի, քե ձի չի մնայ։
Բաղչէմ եմ դրեր, թուրէն ուր մօտէն՝
Աստուած ձի չիտուր, շուֆր եմ ուր մօտէն։
Արե եար արե՛, արե ջան արե՛. ևլն։
Բաղչէմ եմ դրէ վարդ խազար թաւուր,
Մէջ էն վարդերաց իմ վարդն էր ճեաֆուր,
Էն չանի բլբուլ իջաւ իմ վարդի խուր՝
Արե եար, արե, խռով մի մնայ. ևլն։
Բաղչեմ եմ դրե, սատա սխտոր ի,
Մեռնեմ իմ եարոչ ռռսէ պխտոր ի.
Բաղչէմ եմ դրե սատա ասմայի,
Մեռնեմ իմ աղբօր՝ կապած եազմա ի։
Բաղչէմ եմ դրե սատա բիբար ի,
Մեռնիմ իմ աղբօր, թազա նուպար ի։
Արե եար, արե՛, խռով մի մնայ,
Խօր տուս աստուրի, քե, ձի չի մնայ.
Իմ խէրանց յէգլին կամարով աղբուր,
Էրթամ պագեմ, թալեմ խաչ խամբուր։
Արե, եար, արե՛, խռով մի մնայ. ևլն։
Օլիւկմ եմ տնկե խեա ուռուի ափան,
Իլաւ, բանձրցաւ խեա արեգական.
Նրա՛ բայրիկ կերայ, Նրա՛ տկիկ պառկայ.
Արի, ախ. ախ ձի սիրեց,

*) Առած է Խուռօ Սարգսեանը։

Ասի.—բարկի. Ֆալաֆ ձի կռուեց:
Արե, եար, արե, խռով մի մնայ.
Խօր տուս աստուար ի, ձի, քե չի մնայ,
Երկին ի ամպեր, գիւգայ մարմար ձուն,
Գիւգայ, թափի վեր մալուլ մարդուն.
Մէյ ես ի մալուլ, չէ աշխար բիթուն:
Արե եար արե, արե ջան արե,
Խռով մի մնայ.
Խօր տուս աստուարի,
Ձի քե չի մնայ:

*
* *

**Վանայ եւ Վաղարշապատի խառն բարբառով.**

(Ջուտըման կեաքուս նման 1)
Ջէնիկդ կուգէր սարէն անուշ,
Ջէնիկդ կուգէր լեռնէն անուշ.
Անուշ-անուշ խոտ կէր քեօ ծոց,
Կրակն ինկաւ, սիրտս էլաւ բեօց.
Եղնիկ, քեօ դարդէն, քեօ դարդէն.
Դիւ կտրեցիր սրտիս փարդէն.
Խօրոտ, քեօ դարդէն, քեօ դարդէն.
Դիւ կտրեցիր սրտիս փարդէն.
Անգին քեօ դարդէն, քեօ դարդէն,
Դիւ կտրեցիր սրտիս փարդէն:
Կանչեմ գիշեր, կանչեմ ցերեկ,
Էս օր աղէկ էր քան դերեկ,
Իմ սրտի ուզած եարն ձիկ բիրէք.
Բիրէք, տեսնեմ, էլմ տարէք:
Աղջիկ, էս ինչ բան էլերէս,
Ծաղկեալ բուրաստան դարձերէս.
Արշալուսին դիւս կիւգեաս.
Աստղ առաւօտեան դարձերես:
Իրաւն աստ, ծանր կանես.
Թէ սաղ սրտով ձիկ կը խաւնես.

1) Սոյն երգերն երգած է Կարապետեանց անէն Եղիսաբէդ անուն մի պառաւ. այս Եղիսաբէդ ինքը բնիկ Աւանցի է եւ երկար միջոց Վան եւ քսան տարիէն աւելի տեղս (Վաղարշապատ) հաստատուած լինելուն հայրենական հնչիւնները փոխած է.

Մէ պաչիկմ կուզեմ.
Վախենամ պռաճռաճակցի մեռնեմ։
Տարեր քու էրեսիս ճայէն.
Կասեր քու սրտիս փառսէն.
Թուղթմ գրեմ Կիւրճի կալամ.
Որ պտտուեմ աշխար-ալամ.
Քե կորոխկեմ դաւա-ռալամ։
Արեն առեց ալ Ցարբենի.
Հերկը, ձիկ կանեա գարնանի
Արեն առեց ամառ-կամար.
Քե պախերեմ չանրա խամար։
Ջուր կուգէր վերին սարէն.
Կուգէր. Թափէր մարմար քարէն.
Եարսի դարձեր ուր կրարէն.
Առարծուց առնէր ուր պայէն։
Սարերն իլին ասեղ էր.
Իմ եար նոր խասեր էր.
Սարերն իլին աւազ էր.
Իմ եար փաշին գաւազ էր։
Ջաղչի դռներ տաշած էր.
Եարիկս սրտիս խասած էր.
Ջաղչի առուն ջուր կուգէր.
Աղջիկ լաճուն դուր կուգէր։
Ցեվարին պէրի գալս ի.
Կարմիր խնձոր ծառէն կախ ի.
Աչքերս կուլայ, սիրտս ուրախ ի։
Գեղի միջին սրտին նուշ ի.
Կարիպութեն աչիչ փուշ ի։
Կարիպ եմ խետ կարիպներաց.
Էլայ, իրիշկեցի քեօշկի ճաղերաց.
Իմ կարիպի սուֆարն էրեաց
Իմ տղայ ումրիկ քիւլ արաց.
Ուրախ սրտիկս արուն արաց։
Խարաւ քամին, դիւ գնա, արե.
Կարիպիս տես, խաբրիկմ առ, արե.
Արե եար, արե, խռով մի կենար.
Սուտ ու փուտ դիւնի մալ մարդու չմնար։
Երեկ յեվարին, վեր պերու քարին.
Զրինդով գարկին բրինդար եարին.
Խապրիկ տարէք իմ Ցագլու եարին.

Առնէ դէղ-դալուկած գայ իմ եարքին։
Քամբախու Բուլանըխ, փլէր Իւսկիւտար.
Իմ կարիդ չէրթէր, ձիկ անէր եէրդեսար.
Արի, եա՛ր, արի, խռով մի մնար,
Աստնուորի ճամ ձիկ ու ջուր չմնար։
Ցաւուկիմ եմ անկի խեռ տաւուր աւխին.
Էլաւ ճեօղ քշեց խեւս արեգակին.
Պաղչեմ եմ անկէ վարդ հազար բալլուր.
Ամեն վարդի մէջ իմ վարդն է նմանուր.
Շահ բլբուլ իջաւ վեր իմ փարդին թուր.
Աղջի՛, դու քէրն փոզանիդ ի.
Մէջ քեօ էրկու ծիծ քնելու տեղ ի.
Արի. քե պաղնեմ, անմահութեան մեղր ի.
Էն մեղրն որ խալի, իմ խոցին դեղ ի.
Էրեկ խմեր իս. էս որ խումար իս.
Անգին մարգրիտ խըտ օսկուն շարիս.
Անթել անասեզ մըր խոգիւս կարիս։
Գնացիր էգին, խաղող կը քաղես.
Շամամ ծծերով չաքար կը մաղես.
Ալմաս խանճալով արտիկս կը տաղես.
Թաւքիկ վեր ծովուն, անուն էր արօր.
Վ՛գիկն էր էրկէն, սեաւոր.
Գլուխ կարմրուոր։
Կապեմ պեճեօշարեն, էլնեմ վեր ծովուն.
Էն դեօր կերթայ. ես էլ խըտ ինոր.
Էն իմ դարե գինայ, կեօ ես էլ ինոր։
Աղջի՛, արե ճամբերով, ժալար ծամերով.
Ծամերդ սորկեմ գեօհար պաղերով։
Պաղչեմ անկէ պիրուզ նուանծար վարդ.
Էլայ քաղելու չելաւ ձի կամար.
Պաղչեմ անկիցի պիրուզ դանդալ.
Աստուած մինակ փամիր ընթաղեռ դարեր
Կեաքեաւ բուն է դրեր վիր էնա սարին,
Կեաքեաւն է կերեր ....

* *
*

Վանայ բարբառով.

Ղանչեմ—եա՛ր, արե՛ հարբեր լացուցեմ:
Կանչեմ ջան, արե՛, քարեր կացուցեմ.

Շատ կարիք կուրպէք ճամբխից դարձուցեմ.
Որ ձեռնէս գայ, զարպապ խաղուցեմ։
Աղջի՛, դու քէլիս, ես կանիմ ոտին.
Երկուս դիրկ ու ծոց մէջ փալախոտին.
Արև՛, եար, արև՛, խռով մի մնար,
Աստնուորի մալ ձի ու քե չմնար։
Խոյա սելկեիլ, Պէտատայ չամամ.
Գէ մուրաց կենամ, Թէ քենէ դառնամ։
Գիշեր ասին «քեզ եար էկաւ».
Ցերեկ ասին «քեզ եար էկաւ».
Էկաւ, էկաւ, մեր տուն չէկաւ.
Գիշեր ջուր լուս ձիկ քուն չէկաւ։
Աշխար ասին «քեզ եար ծուռ ի».
Թաղով ասին «քեզ եար ծուռ ի».
Մէջ իմ սրտին լալ ու դուր ի.
Էկաւ էկաւ ...
Ես աղբուր եմ, դու ջուր էս.
Դառնամ գինի դուն էլ խմես,
Վախնամ խմես, ծուխ ինես։
Ծո՛, տղա՛, տղա՛, դու ալ կապող.
Ներիք կան գետս մեր պատով.
Մեր խօրոտիկ խաբան ապով.
Կերթամ կասեմ իմ ախպօրս.
Գիւգեայ զարնէ քե խանջալով։

Տուտին ասաց Կումրիկ խաւքան.
Ընչի՛ կուլաս կուց-կուց արուն.
Կեօ նոր իրե բարի գարուն.
Քե առնեմ վեր իմ Եղօուն Թևերուն,
Տանեմ, դնեմ, մէջ զօզանքտերուն.
Դուռ բանամ դէմ հարաւ քամուն.
Երդիս բանամ դէմ աստղերուն.
Երդիս բանամ դէմ ծաղկներուն։

*
* *

Բլբուլ էսաց ղումրիկ խաւքին.
—Հէր կլաս, դառնիկ էրերին։
Էսաց.—Էկաւ վերէս դառնիկ աշուն.
Ինչ տեսնեմ էնա ձէթիկ ճժերուն.
Ցէ՛ր տը չըլամ գառնիկ յերերին։

—Վաղ կը գեայ պօծառ գեարուն.
Քի կառնեմ, կելեմ ...
Կը թռնինք խըտ բանցրիկ սարիրուն.
Բեօն կը չընինք մանչ բեօղերուն.
Դիւռ կը թողնընք խարաւ քեամուն։

*
* *

**Մոկաց բարբառով.**

Յռնոսն էր բանցրիկ սարերաց.
Քեամիմ էլաւ, իդոր չող բաժնիկ էրերաց.
Քիւ սըրտն զօզան քիւ ծըծվեր պաղ աղբուր.
Պաղ աղբուր բարակ առուն էն կապած.
Մարդ չը գըտէր, կերթէր դ՛ուր։
Մէկ դօսք կերթէր քիւ խերանց պաղչէն,
Ան վարդերաց բիւլուր.
Շատ վարդ կէր ինի. ան մէկն էր ճեաֆուր.
Ձեռ տուը, տակմ ու կտռէր.
Թուփ իլի յիրար. չէտաւ դաստուր.
Տանէր, պարկեր մանչ եարօջ քնարին.
Քնարն էր քրտընի,
Խալ ընքէր էր, կարմիր իրիս։

*
* *

**Կարճկանայ Նաճկանց գիւղի բարբառով.**

Ծաւքուկ վըր ծովուն՝ անուն էր արուօր,
Վզիկն էր յէրկէն, սըտիկ սեաւօր,
Արմ, եար արմ, խռով մի կենար,
Աստուօրի մալ մեզի չի մնար։
Ես խիւանդ եմ արի ձի տես,
Տիւ քեօ անխուն Աստուած սիրես,
Թէ մեռնելու եմ, դիւ ձի ասես,
Թէ ապրելու եմ, դիւ դեղմ էնես։
Բոստան եմ դըրեր, վըր էն մէկ դարին,
Աստուած աւիրէր ըստարուան տարին.
Ձխասաւ մէկ չամամ ճամբխէնք իմ եարին։

Դիւ կու քէլես եանա, եանա,
Մարդուն սամ դռնիկ բանա,
Օք մը՛նջ ձի մընջ քե դիւշման ա.
Տարիմ պօլոր խիւանդանայ։

Դիւ կու քէլես դամով-դռամով՝
Ընձկում սալամ կուքաւ ուր էրամով,
Խէրիք դիւ ընձի անես դարտով, վարամով։
Բրանց մի կանչեմ, մէկ խոյերէն,
Մէկ մի տը կանչեմ Թիւրքերէն.
Շիլա չապիկ գեօ քիւ վերէն,
Որ քե կորեց խմունէն.
Աստու կրակ ուր վերէն։
Տնէն էլար կայներ փս դուռ,
Մէջքատիս զարկեր ջուխտակ փնոռ.
Ես քեօ սիրուն տուտարը ծուռ։
Բածդ էր բարակ ծովէն քաշած,
Ես քեօ սիրուն խաշած, մաշած.
Տնէն յէլար կէրթաս լէգին,
Դիւն ու քեօ ջուխտակ տէգէրկին.
Իմ սէր դառաւ վէր էն մէկին։

Առնօս, բանջրիկ սար, չկէր քիւ նման,
Էրկիւ պաղ յախբուր քեօ կողէն յէլան.
Մէկն էր խըտ բառին, մէկն էր խըտ զօզան.
Որն օր խըմեր բառին՝ խառիպ խաւբերաց,
Որն օր խըմէչ զօզան՝ սուսուռ մաքերաց.
Ցորեն իմ ցաներ խըտ գուլթնի ական՛
Ցերէ ծով առեւ խըտ առեղարկան.
Կաքուիկն ա կերեր տուեր ձկական,
Կեաքաւ խըռովեր ուր խէրկան, մերկան.
Գեացեր խռովեր խըտ անօրէն,
Նրա քրուու դին ա, նրա խայու թօրէն։

Նախիր տարան, Ֆիտան կորուս. աղջի Նանայ
Քերնիմ քեօ ծոց գիշեր չոր լուս, քեալայ Նանայ.
Ջեայնամ ու գեոռ քեառաւուն ղուռուչ. աղջիկ Նանայ.
Վարագայ սար բուսէ ըրհնձ,
Իմ սիրտ ու քեօն բռնէ կռինջ.
Վարագայ սար բացուէ կանկաչ,
Աստուած պախէր Թումայի լաճ.
Զուխեն էրկէն. կայէն էր կարճ։

*
* *

Անթառան ծաղիկ կը սիրեմ,
Որ խոսան անուշ ի։

* * *

Ա՛յ տնաւեր, սարի սիրած՝ քեարի պիլած.
Մէջ տեղ զարկէ պողպատ ուրագ,
Ձիկ իցկիրես եաճկուճ կրակ,
Ես իրիցայ քեօ դարդէն, fեարամ սաւդէն։
Քեարք գլօխ ծարուըցայ,
Տնաւեր, ես քեօ դարթէն իրիցայ.
Իրիկուայ բէրի գեախ ի,
Դառատակ բըառդօս Թիւէս կախ ի.
Լաեր եմ եարօջ մախ ի,
Աչքիկըս կուլայ, սիրտս ուրախ ի։
Տղա՛, տղա հիլ արա,
Վեր քեօ մատին գիր արա.
Իմ խէր քե աղջիկ չի տայ.
Գնա քեօ գլխու ճար արա:

* * *

Կարիպ, արի էրթանք սըպ Նշան,
Քեօ պռչամ կորեմ, դնեմ քեօ ճամբխու նըշան.
Կելնեմ կիչկամ fեօօfի ճաղերաց.
Իմ Կարիպի սուրաթ կերեայ.
Առջեն էր բարցայ,
Իտեն էր բացաճ.
Գերմա կարիպ, գերմա։
Կարիպ եմ ճամբխէ իտե սարերաց,
Կարիպին մեռնեմ ուր ճամբխընէրաց.
Քեամբախ Սոտամբոլ, աեր Աքեանտար,
Տարաւ իմ կարիպ չիբե մէյ խապար.
Գերմա կարիպ, գերմա.
Ա՛խ արի, սարեր լացուցի,
Իմ կարիպ ճամբխուց դարձուցի
Բանձրիկ սարեր, բէդ բէդ քեարեր,
Իմ կարիպ մէջ ձե ի կորուսեր.
Գերմա կարիպ, գերմա։

* * *

Ինչ անեմ իմ խօր գեղերաց,
Ձիկ չիտուր սինամ խաւքերաց.
Իտուր բիւլ կվերաց.
Տարաւ հատեցուց կալամ կեադերաց։

Ջիտուր Սինամ խաւքերաց,
Որ առնէր վեր ուր Թեքերաց.
Տանեի դնէր վեր ծառի ճղքերաց,
Տանէր դնէր բանձրիկ տարերաց։
Դիւռ եմ բացէ խարաւ քամուն,
Իմ իդարէն վեր Աստըծուն։
Ցանեցի ցորեն, քեաղեցի բռիկ,
Սիրեցի Սինամ, Թարկեցի Կռիկ։
Քեօ տկէն փիւկէր ջուխտմ պաղ աղբուր,
Մէյ տեղ զօզան, մէյ տեղ բառն,
Էն բառի տեխաց բուլի մաքերաց,
Էն զօզան տեխաց կարիպ խաւքերաց։
Էսա խինէն ալ խինայ չէր,
Խինայ գեացող իմ սած չէր.
Էրթանք դէնայ, կառնեմ խինայ,
Դնեմ ձեռքեր թո կարմրնայ։
Արև արևմտոց, գրող մանէր տապիպի ծոց,
Որ հիկ չանէր սիրած եարէն,
Աստուած առնի սէպիպի բալէն։
Եարն էր դարձէ ուր կրարէն,
Վրէն թալէր կնոլի եարէն։
Էրկու խօրօտ չինարի ծառ ի,
Մառքերդ բարակ խունար ի.
Տիւն էլ չընէր՝ մէկ էլ կը ճարի։
Քեարուան էկաւ քեար իբե,
Էրկու խօրօտ եար իբե.
Մէյն ի Ֆալաք զարկե տարե,
Մէկի ձեռն եմ չիւարե։
Ծղօրի մազէ լարան,
Բքուն տարան ձի չտարան.
Հանօր հանանօր,
Ես մեռնեմ խաքուն տիրամօր։

* * *

Բանձրիկ սարեր կոտա ի.
Մէջլի մարդեր բոշայ ի.
Ձեռաց կթխէն տուտայ ի.
Որ ձի չանեն բոշայ ի։
Վայ սարեր, բանձրիկ սարեր։
Արե էրթանք սարեր սէյրան,

Սարից պէրին ջուխտմ ջէյրան,
Կարմիր խրխս պուճուր բերան,
Քեզ տարողի տնէկ վէրան։
Երմ տղա, օտար տղճիկ.
Արև ձիկ առ, ընկնինք տուն տեղ.
Մե խօր աշխար գտտա տեղ։

*
* *

**[illegible] գիւղի բարբառով *).**

—Դու չայո՛վ աղջիկ, Տայպաքի թոռ,
Ձծմէն դիւս արև, քեզ ծամեր տըրնամ։
—«Տօ չըմն տղայ չան որդի։
Սըլուոր չը՞ս իղի, ճոպան չը՞ս տիսնի»։
—Դու չայով աղջիկ, Տայպաքի թոռ,
Ձծմէն դիւս արև, քեզ աչքեր տըրնամ։
—«Տօ չըմն տղայ, չան որդի։
Տուկան չը՞ս գացի, կթխայ չը՞ս տիսնէ»։
— Դու չայո՛վ աղջիկ, Տայպաքի թոռ,
Ձծմէն դիւս արև, քեզ բերան տըրնամ։
—«Տօ չըմն տղայ, չան որդի։
Տուկէն չը՞ս գացե, մատնոց չը՞ս տիսնէ»։
—Դու չայո՛վ աղջիկ, Տայպաքի թոռ,
Ձծմէն դիւս արև, քեզ ճակատ տըրնամ։
—«Տօ չըմն տղայ, չան որդի։
Տուկէն չը՞ս մտե, մէյտան չը՞ս տիսնէ»։
—Դու չայո՛վ աղջիկ, Տայպաքի թոռ.
Ձծմէն դիւս արև, քեզ իրես տըրնամ։
—«Տօ չըմն տղայ, չան որդի։
Բաղչէն չը՞ս գացե, խնձոր չը՞ս տիսնէ»։
— Դու չայո՛վ աղջիկ, Տայպաքի թոռ,
Ձծմէն դիւս արև, քեզ բած տըրնամ։
—«Տօ չըմն տղայ, չան որդի։
Ցէգին չը՞ս գացե, չինար չը՞ս տիսնէ»։
—Դու չայո՛վ աղջիկ, Տայպաքի թոռ,
Ձծմէն դիւս արև, քեզ ծծեր տըրնամ։
—«Տօ չըմն տղայ, չան որդի։
Բոստան չը՞ս գացե, չամամ չը՞ս տիսնէ»։
Տօ չըմն տղայ, չան որդի։

*) Ասած է Տողան Մարտիրոսեանի։

Հօրս պարտէն չիւռ մի գեայ,
Հէրս քե աղջիկ չի տայ.
Քեօ վիզ կը կտրիմ, քեօ արուն կը հմիմ,
Քեօ կաշին քիւրք կանիմ, կը խաքնիմ:
—Դու ըսյո՛վ աղջիկն, Շայպազի Թոռ,
Քե ես եմ սիրե, ես կառնեմ,
Քեօ մօր վիզ կը կտրեմ, քեօ խօր միզ կը կտրեմ,
Իմ մուրազին կը խասնեմ։

*
* *

Վարդիվեցայ լուս կիրակին՝
Սարեր ջօյուած, գացին յէգին,
Իմ աչք ընկաւ մօրէ մէկին,
Մարե, ինձ որ չտաս մօրէ մէկին,
Ես կերթամ խըռո խօրօտկին։
Սամաճ մարե, Վարդիվըրայ չօք կիրակին,
Սարեր ջօյուած գնացէն յէգին,
Իմ աչք ընկաւ Նազարին,
Որ չիտաս ձիկ Նազարին,
Փախնիմ կէրթամ խինգ խազարին։

*
* *

Արեն առեց կամար, կամար,
Քեօ մէջք կապիր ոսկի քամար.
Արեն առեց կամար կամար,
Քե սիրեցի ջանիս խամար։
Լուսնակ գիշեր հովն անուշ,
Ես իմ սիրած կառնեմ, պաղն անուշ:

*
* *

**Վանայ բարբառով**

Ջեա՛մ, սև, սևաւոր աղջիկ.
Քե կուտամ Վանայ խօճին։
—Քեա՛մ, սև, սևաւոր մարէ.
Ցօրէ եմ տուն դու կաւիրես,
Եմ կօրիճ եմ ձեռնէն կը խլես,
—Քեա՛մ, սև, սևաւոր աղջիկ,
Քե կուտամ Վանայ խօճին,
Էրկէն ճուպին.
Սաճար ճօսերկին։
—Քեա՛մ, սև, սևաւոր մարէ,
Ցօրէ եմ տուն կաւիրես.

Խազար Վանայ խօճէն,
Կուրպան կանեմ եմ Սախոյին.
Թուխ կօտըկին.
Ջուռ ճեազախկին.
Սըւտակ քեօլըգէն.
Ճեօզ բերերաց,
Թուխ աչքերաց.
Սիւսլի չէպրին,
Վըրդ կեբրաց,
Բոչամ ծամերաց,
Արպըչմէ փօչուն,

Կարմիր թշին,
Թուխ ընգուերաց,
Ղումաշ բաժին,
Նարափէտին.
Որ առաւատուն
Կան գալ կէրթէր,
Ուր օխչըրին
Արօտ կուտէր,
Էլմ ճեվարին.
Հճ, հճ, աներ.
Դառնէր տուն գէր.
Ուր աղէ տին
Սրտին գրկէր։
—

Դու կը քելես, ճամբախդ փուշ ի,
Ճապիկդ մաշի, կապէդ ճաղարա.
Կարմիր իրես՝ պաք քե խոռմա։
Դիւ կը քելես փէլի Ֆանոսով,
Քո թէքերն ի բաղի բանդով,
Քեն կը պախեմ չաքար կանդով.
Հետ արե եղնէկ, հետ արե,
Դարդ չունեմ, դարդին տէր արե։
Դու կը քելես ծովի ափան,
Քեզ սիրուն խաւքիր թափան.
Նու ու կը ճամբխի, ես ինչ անեմ,
Քեզ չորոքած գեալ ինչ անեմ,
Հետ արե եղնէկ, հետ արե,
Դարդ չունեմ, դարդին տէր արե։

* *
*

Եարձկանեայ Նանկանց գիւղի բարբառով *)

Քեամին քեաշեր դէմ Ճուխուրայ,
Օվան բարձեր բեռմ խինայ.
Օվան գեացեր՝ խարանիս կու ձէնայ,
—Ջուապ տարէք խէրկան, մէրկան,
Իմ ճշանլուն առնին, թըխ տուն յիգան.
Օրօրա, գեամին, օրօրա,
Լօշկէն ինե կ՚օրօրայ։
Արեն առեր գեամու մառան,
Ղարիպ խաւքեր սիրու թափան.
Արչկու լեշ առան տարան,
Ճօրօրա, գեամին, չօրօրա,
Լօշկէն ի մէջ կ՚օրօրայ։
Արչակ տարան մըջ խաչերաց,
Սալաթ կայներ՝ վըր քարերաց,
Գուտ պուտ արուն թուխ աչքերաց.
Օրօրա, գեամին, օրօրա,
Լօշկէն ինե կ՚օրօրայ։

* *
*

Ջուլօն կայներ մըջ գեառներուն,
Իրես կարմիր՝ Աղբրանց արուն.

*) Ասած է Արմաղան Մարտիրոսեան։

Կաթ կրթէր վեր ծըծերուն,
Եանըմ, եանըմ, եանըմ, Ջուլօ,
Սէնը գեօրդմ եանդըմ Ջուլօ։
Ապսպրեմ խայլի պիրես.
Թէ չը պիրես, ձի չը վէյլես.
Եանար, եանար, վավիլէր Ջուլօ, վավիլէր,
Քեօ տանօղի տուն աւիրէր.
Շէկ ծամեր տախտն կաւիլէր։
Ջուրն ա էլեր լուլայ, լուլայ.
Ջուլոյ օտքեր բամպկի քուլայ.
Ջուլոն տարան, Մուքեօն կուլայ։
Վերև մեր տան արտ կէր եօնջայ,
Ներքև ձեր տան արտ կէր եօնջայ,
Ջուլոն առնեմ՝ էրթըամ Գեանջա,
Կեատըա թխեմ, էնեմ բեօղչայ
Աստուած օր տայ կլնիմ խօճայ։
Վերև մեր տան արտ աչնցան.
Ներքև ձեր տան արտ աչնցան.
Էրկու պուրակ ջէյրան ընցան,
Ջուլոն մէջքեր, չճանչցան։
Ես Ջուլօն էմ Մաստարեցի,
Քեստասուն տարի քե սիրեցի,
Օրիկմ քեօ ծոց չքնեցի.
Իմ չէն անուն չաւիրեցի։
Ես Մուքեօն եմ բըալաf ապով.
Ես չէնք կտուի դրակմա կապով.
Ես խեղտուայ Ջուլօն ապով։

*
* *

**Մոկաց Սեպ գիւղի բարբառով** *)

Վերև մեր տան արտ կորընգիան.
Ներքև մեր տան արտ կորնգեան.
Ջիանք ինէ կը խրխնջեան.
Եապար տարէք Մէլքի կնկեան.
Քեօ fումերի (լաչակ) կայթան դնտան,
Հաւար Ջուլօ, հաւար Ջուլօ.
Սանա գեօրդմ, եանմաճ Ջուլօ։
Վերև մեր տան ծառ կէր պնդուկ,

*) Ասած է կոյր Մանիշակ Մելքոնեան։

Ներքև ձեր տան ծառ կեր պնճուկ,
Քեալաշն իկե մօրդու կնգուկ։
Վերև մեր տան սար կէր չամամ,
Ներքև մեր տան այտ կէր չամամ,
Քեալաշն իկէ մօրդուց քյամյամ։
Վերև մեր տան թութ կայ մարուք,
Ներքև ձեր տան թափ կայ մարուք,
Առնեմ Զուլօն մտնեմ մառքը։
Մե տան պնակ, ձե տան պնակ,
Մրանց հապամուն Զուլօն մէնակ։
Զուլօն կըգեպ Երեւանայ,
Քեամին իտայ ծոց կը բանայ.
Որ խալ ի, խետ կը զարմանայ,
Որ թիլւք ի, խետ կը խաղանայ։

*
* *

**Բաղէշի բարբառով** *).

Քաղէշ կը գովեն չորս դեղ քըթանոց,
Ես քզի սիրեցի, դըռ դուն օրօրոց.
Խանչեմ եար արե, պաշեր լացընեմ,
Շատ դարիպ դուրպաք ճամբիից դարձնեմ։
Խաւկունք մըր ծովուն անուն պրոր էր.
Սրտիկ սեաւոր, գլխիկ կարմրուոր.
Կապեմ բէ չարեն, էրթամ լըցը ինար,
Որ զիմ դարս գիտէր, որ գէնաւ գէնար։
Դալալ, ուստ գուգաս,—Այար՝ Իլաթայ.
Գագիկմի տամ քե տաւր ընձի զղաքայ։
Խաւկունկ կը քելէր խըտ ծովու ափան,
Էն խարիպ խաւկունք, լն ծովէն թափան։
Զըրցեր փ գեալեր, կայնէր ա գեաղին,
Խաղտեր ա անկեր, մըջնեն ա քամին:
Գիշերուան լուսին, ցերեկուան արև,
Ընցար ու դարձար՝ չը տուիր ընձի բարև.
Ա՛յ եար արե,
Խռով մի մնայ.
Դունիեն աստուոր,
Ինձ քե չի մնայ։
Բաղչեմ տնկեցի խասուցի ճեամամ,

*) Ասած է Ալթուն Ասպածատրեան:

Ցրտու օր ջոջրցար, փոխեցիր քու պռինկը
Ցեւար ա յէւար արեն ա դառցեր,
Մեր խայոց ազգին մէկ Աստուած մացեր։
Եղնկներ սատափ, մատներ խաղալիք
Դու կածիր Բաղէշ, մայլէն Թրապիզոն.
Փոցեր սարէն կու գլաւ պաղ ջուր.
Կուզեայ Թափի մեջ ժամու դուռ.
Տէր Խաչատուրին ու պատիւ բերը.
Լանջին Թալեր ա ծոցա ու մուռ.
Ցակոք աղի Նխչուան յօղէն,
Նոր եմ էլեր եարոչ մօտէն.
Գեյիլ սեւան գիւզալ օլուր,
Հեչ բիրիսի տողրի դայիլ։
Թազա պաղեր Թափեր խոա,
Ես քո սիրուն ընկայ, ծռայ։
Դու յէլեր իր, կէրթեր յէգին,
Կը չորորէր գետան ու մաքին.
Կը խանիր տեսնողի խոգին։
Դու յէլեր իր, կէրթիր կուլի.
Սօլեր պատիկ, յատնիր մաւի։
Լողկցար, ծովից դուս էլար.
Դէմ ամրոցին դու կայնար։
Մեր տան էտև փուլ մի գլնի.
Ձեր տան էտև փուլ մի գինի.
Մեր տուն ձեր տուն խալա խալա.
Աստուած վեր մէր աղեկէն դուռ մի բանայ։
Մեր տուն, ձեր տուն դիմաց դիմաց.
Թերիք ընձի անես իմաց.
Իմ էրէսի հայեն գնաց,
Մխօն էլ էլաւ, Սօկոն գնաց։
Մեր տուն, ձեր տուն պատ պիտէր.
Ցերար սիրէնք, մարդ չգիտէր։

Ջուխտ սարի խաչին մեռնեմ,
Թուխ տղի բոյին մեռնեմ.
Ըսօր խինգ օր չըմ տեսեր,
Տեսնողի աչին մեռնեմ։

* *
*

## ՍԱՆՏԻ ԵՐԳ [1]

**Մոկաց Սեպ գիւղի բարբառով.** *)

—Լէն ով իկէ սանտի վերայ.
Խազար բարին բաժն ի վերայ.
Լաճին վուի, նաքի վերայ։
Տակդ բուսի դաստէմ ռէհան.
Ջուր եփի, Խանէ; չուր եփի, Շանէ,
Աման պիրէք, խուս խանէք։
Դեղ ու դեղլանք վիրէն ցանենք։

* *
*

Ըսս ինչ տեղ էր, ըսս ինչ գեղ էր,
Բաղէչ քեաղաք անուշ տեղ էր,
Կարմիր սօլեր օտաց նեղ էր,
Բրալաճ աչքեր խոցուն դեղ էր։
Սալչու փաշին՝ ծանտր ամիրէն,
Դիւ քեօ ասկեար բըարճաւ էրա,
Ջուր ծգիրէն սաւֆայ էրա,
Ջուր Մամռտանք թալան էրա։
Սարի սուրբ Գէորգ, դու ճար էրա,
Անծին չիչակ մատաղ էրա։
Հրատամ աղէն դիւ ծիւռ իս (չխօ ծուռ ի).
Խազար աչխէն կըոի ծուռ ի,
Մրաջ իմ սրտին լալ ու դիւռ ի։
Գեղով ըռըցին քեօ եար իրի,
Թաղով ըռըցին քեօ եար իրի.
Խազար իրի, մեր տուն չիրի,
Գեարնան գիշեր ձի քուն չիրի։
Սանտիկ կէլի, կէրթայ խռով,
Ես չեմ կէրի պախէ զոռով,
Գազմ տիւ ղիկ, գնայ բարով։
Սանտիկ ուռ ի, ծէծող ծուռ ի,
Սանտիկ դուզ ի, ծէծող պեոզ ի,
Սանտիկ խօխ էր, ծէծող չոխ էր,

---

1) Սանտի վրայ ձաւար ծեծելու միջոցին իւրաքանչիւր տողն փոխն ի փոխ կերգեն կանայք։ Խաղն որ վերջացաւ, ուրիշ խաղ մը երկրորդը կսկսի։ Շատ անգամ մրցմամբ ծաղրաշարժ նախադասութիւններ ինքնաբերաբար հարց ու պատասխանի ձեւով կերգեն ու կասեն։

*) Երգած է կոյր Մանիշակ Մելոնեան։

Սանտիկ փշատ էր, ծեծող չմշատ էր։
Ցուշմկ էրի, էմուր քէշի։
Իմ քար էրի. քիոն փէշի։
Տակն ի բիւսիր դըասըմ աիհան,
Տանիմ Թըլիմ շահու դիւանն,
Շահու մարդիկ զքի զովան։

*
* *

Ջաղջի զռնով ես ընցայ.
Անուշ խատէն ես լցուայ.
Ջաղջի տանիս գժուրայ էր.
Իմ եար քեանց քոն բժորայ էր։
Ջաղջի տանիս աշուշ էր,
Իմ եար քեանց քոն բեալաշ էր։
Ջաղաց կու կանի, մանի,
Իմ անուշ քուն կը տանի.
Իմ եար իմ ծոցէն կը խանի։
Սարէն կը գիամ, սեյրան կանեմ,
Ձորէն կը դեամ, էրան կանեմ,
Խորոտ կնկեան աչքով կանեմ,
Պազմ կուզեմ, դիւ նազ կանես։
Սարերաց սուսան բիւսեր ի,
Ձորերաց քեղեր իլեր ի.
Խարսներ էկան քըանց եղուընեկ,
Իրիշկեցիմ, եարս մէջ չէր։
Սարէն էկըն, խապար պիրըն,
Ձորէն էկըն, խապար պիրըն.
Իմ եար մէջէն գեօ խանըցին,
Ձի խափըցըն, խելքէ խանըն։
Կարիպմ ունեմ դաստա գիւլ ի,
Աչքեր մոթ, լոս չկայ տեսնի.
Իմ մարդ գացե, թաւ կը կոի,
Մատնիք էլէր մատէն թուի։
Աղաւօտման լուս ատոդն ի էլի,
Ես կէրթամ, դիւ մնաս բարի,
Իրիք աւուր մէջ նստեր էմ քեօ ումուտով,
Որ կէրթէր խըտ ինոր,
Ինչի՞ ձի խափըցիր։

*
* *

Սինամ խիւանդ էր, խըտ բարի լուսուն,
Սինամ, քեօ սրտի կօճակն էր խարիր իսսուն։

Էս օր ինչ օրի, իմ սիրտ փուիր էր,
Սինամ ձի խափիր, խաւտէ խանիր էր։
Վո՛յ հաւար, վո՛յ հաւար Սինամ,
Հաւսալեր Սինամ։
Ջեօլ գեղի ջաղջրներաց վերէն
Դարս կայ դարման չկայ։

*
* *

Դըա չի լուացիր, արև առիր,
Մոկաց սարիր, բիդ—բիդ քաղիր.
Երկու պաղ աղբուր մէջ կը թալին.
Մէկ թախ զոզան ի, մէկ թախ բառիշ.
Անիկ ինչ թախ զոզան ի, արտոսք մաքերուն ի.
Անիկ ինչ թախ բառին ի, կարիպ խաւերուն ի.
Սուտիկ, ինչ էնկմ. խըտ քեօ հալին,
Սուտիկ, դիւ չլնես բարխուհար,
Դոմ (եըրեմն( կլնես շիւար, սալխճար,
Դոմ կլնես չանոտ խոնրքեար։
Անձրև, անձրև վէր սարերաց,
Զգեստ լցուես վէր կարիպներաց,
Կարիպներ, ես կը մեռնիմ ձեր համբերներաց։

*
* *

Լուսնակն էլեր՝ վեր մեր դռան,
Ջեպմ որ կէր վիր իմ ճռան.
—Ինչ կայ ինե.—Վարդ ու ռէհան,
Գուկմ կոռեմ սիրու նշան։
Ասին.—Ինչ կեղի ուր ի,
Բաղէչ քեաղաք ամուչ տեղ ի.
Կարմիր սոլիր ոտքերուն նեղ ի.
Ալի լաչին գիրմոուն էղի,
Կանաչ կապէն վերէն էղի.
Մեր թիւին օձղաքարին,
Օձղաքարին որ պտտքարուն.
Խաղար բարին վեր մե թաղէն.
Քար ու քռէն նեղքի թալին։

*
* *

—Էս օր ինչ օր ի.
—«Ուրբաթ ու պաս ի.
Աղջի՛ քեօ գլօխ արծաթու թասի.
Տղա՛ քեօ գլօխ սուրայ ու Յաս ի,
Խոլած վարդապետ կասի.—Ձխաս ի։

*
* *

Եar մէGդիլ, մէGդիլ, մէGդիլ,
Գous մէGդիլ, մէGդիլ, մէGդիլ։
Բաւ կor բու դarըf լէ դա Gաւ sէ դէա,
Գօus մէGդիլ դarըf սէ դա Gաւ sէ դէա.
Եar մէGդիլ, *կէրԹաս* ...
*Բարակ մէջքիդ զարկերիս* fամar.
*Կտրեցիր սրտիս ի ճար։*
Եar մէGդիլ, *կերԹաս յողբուր.*
*Գազ մը կուզեմ, էրկուս տուր.*
*Աւրեցիր սրտիս ի դուռ.*
Բաւ կօr բու, դarըf ոէդա Gաւ օէ դա։
Եar մէGդիլ, *կերԹաս ի յարտ.*
*Աշխարք մացեր քե* մաք.
*Ոսկի մատնիք մարմնի (փափուկ) մատ։*
Եar մէGդիլ, *կայնար մըջ պարին.*
Բաժդ *բարակ ինչ օ ծառին.*
*Ես քե առնեմ օլոր տարին։*
Եar մեGդիլ, *դու կերԹէր մառան.*
Բաժդի *բարակ ինչ օ ըռահան.*
*Դու խանիր իմ գլխու* ՑarմaG։
Եar մէGդիլ, սամarղaGsեr.
Բաժդի *բարակ չաքրի* դaGs *էր.*
Մ*էջքդ ի զարկիր նշշուն միզար,*
*Ես քե ասի, արի ձի առ։*
... բալաf Ցուքա.
*Ես կը սիրի, աշխար կասի սուԹ ա։*

*
* *

**Շիrakայ Ցaօլիչայ գիւղի բarբառով *).**

Աղրկու *ճամբէն* fեarփիGջ *չարած էն,*
Մ*արօյի* ջGեզի *առէջ կապած էն։*
Գ*լաւնու կորան* դաusա ղcեrը,
Մ*արօյին տարան լուսնակ գշերը։*
*Ես վերէն էկայ, դու դուռը բացիր,*
*Ձեռքդ ծոցդ տարար, ... էրէր լացիր,*
*Զանքի որ չէր առնի, ընչի՞ խափեցիր։*
Մ*ազերիդ հուսերը* դաusա *խսիլ էր,*
ՋaGեlները *յետևէդ* դաusօվ յէsիr *էր։*

*) *Ասած է Մարգարիտ Պետրոսեան։*

—Բըլբիւլ, բըլբիւլ, բըլբիւլ.
Աչլ թազա կիւլ, կիւլ.
Արի, քեզի տեսնամ, կարօտ չմնամ.
Իսկը պէտք է ճանապարհ գնամ։
—Դուն գնա, ես կը մնամ լալով.
Բըլբիւլ, բըլբիւլ, բըլբիւլ
Արի, էրթանք քու ման էկած սրտերը.
Թող ցվրուի մեր ջխտի դաշտերը.
—Սարիցը վեր էկամ, դուռը բաց արիր.
Ձեռքդ քցիր վզովս թուչդ համբուրիմ։

*
* *

## ՔԱՂՀԱՆԻ ԵՐԳ *)

**Խոյեցւոց բարբառով.**

Քախան կանէմ Ճուբարով, նանայ, նանայ, նանայ.
Դոլման կէփէմ բիբարով, սոճամ նանայ, նանայ։
Թաքիւջակիս խլաւա, նանայ. ...
Գօ պէրէսէն փլաւա, սոճամ նան. ...
Թաքիւջակիս կեռ կոթա, նան. ...
Գօ պէրէսէն կորկոտա, սոճամ նան. ...
Մաճիճա պամբակ ցանէմ, նան. ...
Լեյլի ջաճ քախան կանէմ, սոճամ նան. ...
Տըսնամ թէ բէզըրանք, նան. ...
Մարփաշա չարդաղ կանէմ, սոճ. ...

Թէ ճաշը վատ է.—

Քախան կանէմ էդ խող ին, նանայ, նանայ, նանայ,
. . . տիրոջ խօր կողին, սոճամ նան, ...

Թէ ճաշը լաւ է.—

Քախան կանէմ էդ խողին, նանայ. ...
Ղուրբաճ տիրոջ խօր կողին, սոճամ եւն.։



*) Առնուած է «Նիստ ու կաց Խոյեցւոց» Գրաշար Յարութիւն Ալչեանի անտիպ ուսումնասիրութենէն։

## Դ.

# ԵՐԳԵՐ

---

## ՕՐՕՐՈՑԻ ԵՐԳԵՐ

---

**Սուրճկանեայ Նախիջեւանց գիւղի բարբառով *).**

Հայ Լուրիկս լուրիկ, լուրիկ, լուրիկ.
Բաղչէմ եմ դրեր յառջև ճրագին,
Թուխ անհաս ջէլեր՝ հով էրեր վըր բաշուր վարդին.
Երթամ ու ակ տամ կանուխն էվարին.
Լուրիկ, լուրիկ, լուրիկ, հայ լուրիկ։
Ա՜յ դիլպար, էրեկ քու տապով ընձկում ձիկ էն ծեծած,
Երթամ Հալապու չաքար ալիրեմ, քու ալընքանեըն էր քաւած,
Լուրիկ, լուրիկ, լուրիկ, հայ լուրիկ։
Այ անուշ խուս. էմծը դիմ ակջը ասէս քու ջէրես.
Իմ խաւլամ Ֆեաթուշ վարդն էր վըր քեզի շամաց,
Լուրիկ, լուրիկ, ելնս։

---

*) Ասած է Արմաղան Մարտիրոսեան։ Ինչպէս օրօրոցի յատուկ երգերը շատ քիչ են. մայրը երեւակայելով զաւակին ապագան, ինքնաբերաբար ըստ իւր ցանկութեան նախադասութիւններ կը յօրինէ ու կերգէ այլ եւ այլ եղանակներով, որ երկու տեսակ են. աւելի երկար նախադասութիւններով կերգէ օրօրոցի մէջ եւ կարճ կերգէ երբ ծնկաց մէջ վեր-վեր կը թռցնէ։

Ա՛յ մարդ, դու Նարքուց իր գեամ, խըռ կէնէր գանգատ,
Ձեռ մէկ բռնիր էր ռէհան, մէկն էր ֆաթուր վարդ
Լուրէ՛կ, լուրէ՛կ, լուրէ՛կ, հա՛յ լուրիկ։

*
* *

Օրըլի քնի քեօ քուն անուշ 1)
Վերին քե ծիծ տայ, Աստուած քե պահի,
Քեամին քե տանի, բերի,
Ջուր քու մէրիկ դառնայ, գեայ։

*
* *

**Մոկաց Սեպ գիւղի բարբառով *)**

Ըսկնամ տ'էնիմ օրօր, օրօր.
Իմ գրկանոցին օրօր տ'էնիմ.
Իմ պստի ջպլիկ տ'քնացուցեմ,
Իմ ջեօջ ջպրիկ տը փախցուցեմ։
Ալայ օզեր. քեալայ պօզեր,
Իմ պստի ջպրիկն եմ քնացուցեր.
Առու կըրակ թափի վէր իմ կէսեր
Ծրագն ընցուց վեր իմ ջհէլին,
Իմ չհեյ մըանջ ծոլիւն խեղդեցին։

**Թաւրիզի բարբառով.**

Նաննի, նանի, օրօր բալիս, նաննի
Իմ Վարդուհին քուն ունի,
Նաննի, նաննի, օրօր բալիս,
Նաննի 2).
Երծաթած տուն տուն ունի,
Մովիցը ծածկոց ունի,
Ոսկուցը սփռոց ունի։
Նաննի ասեմ, քունդ տանի
Քու դուշմանիդ լիզուն կապուի։

*
* *

**Բայբուրդի բարբառով.**

Վերի քամին զարնէ քեզ օրօրցնէ,
Վարի քամի զարնէ չորերդ չորցնէ,
Դշխուն Հեզին անուն քեզի ծծցնէ։
Նըանիկ ըսեմ քնանաս,
Վարդի ջրով լողանաս,
Շատ ապրիկ եւ մեծանաս:

---

1) Մի գիւղացի հարսի՝ հօր տունը դարձ են տանում. հարսը հօր տունը մի ամիս մնալուց յետոյ. սկեսրայրը գալիս է եւ վերադարձնում. ճանապարհին հարսի երկունքը սկսւում է, նա սկեսրայրին հասկացնում է թէ՝ իբր ծարաւ է, ուզում է ջուր խմել. իջնում է ձիուց եւ մի քարի տակ ծնում է երեխային. փաթաթում. թողնում այն տեղ. ճանապարհը շարունակում, տուն հասնում եւ վերոյիշեալ երգը ամեն անգամ կրկնում է. Մի տարի յետոյ, երբ նորից վերադառնում է հօր տունը, երեխային ողջ եւ մեծացած է գտնում. Այդ դէպքը որ լսում սկեսուրը համբուրում է հարսի երեսները. որ մայրական սիրտը զոհել է ա. ազնւութեան համար.

*) Առած է կոյր Մանիշակ Մելքոնեան։

2) Ամեն տողի վերջը կրկնելու է «նանի բալէս նանի» եւլն.

**Խոյեցւոց բարբառով Հայրապ գիւղի երգերէն *).**

Պոնէկ 1) աւէմ քիւնդ տանի,
Ձար կամարա ճիւրտ տանի.
Նանէկ Նանիկ բալա ջան,
Իմ թև թիկունք Կալօ ջան.
Լանդիկ էմ կապի ծառի ճօղերէն,
Քամին թօ փչի սարի խոտերէն,
Նանիկ աւէմ տիւ քնէս,
Ծառկիր էմ քեզի որ քունէս,
Քնի որ շատ ճոչանես,
Ջուրը պորին խասկընես,
Ձամպխէմ էթոս խերանցես,
Գորի խոտքոր խառկնես,
Աղջ, էրամիդ իմաս տաս։
Օրօր բալաս Նոնիկ տնի,
Ձար կամարա ճիւրտ տանի։ էլնէ
Քեօ մօր կաթա հալալ ի,
Կէ, կչտացի նոր քնի,
Հոլբո՞ք խօ մէ օր կսաէս—
Էտ իմ կաթնըտու մէրն ի։

—

Օրորոցի մանճիկներ գովքը,
Իմ բալային քիւն բեճի 2),
Արծթէ ղրփլ իւնի,
Ոսկիէ պոլիս իւնի,
Սոդոփէ կամար իւնի,
Ինգեօզէ լիւլիկ իւնի,
Վսկոռէ օրօրան իւնի,
Ջորխով քետշուկ ճաղերն ի,
Շիրմաճի չլ լուծ իւնի.
Արփչուռէ խուճկուռ իւնի,
Տակս պիւրթ խոդլո ի,
Փիտուռէ պոռոցէր իւնի,
Ալ դանձուրուզ լըհէփ իւնի,
Խլղիւդի չէթ չորէրն ի,
Ալ մոմմոռով բոճդերն ի,
Սերճդիւր ճոճի չեօրն ի,
Քնփ պարով ճեօչանաս,
Խօրն-մօրդ ումոգս իմանաս.
Օրօր բալաս Նանիկ տնի,
Ձար կամարա ճիւրտ տանի։

*
* *

Թիմարայ Ներսիսենց գիւղի բարբառով 3)։

Սիփանայ սարի տակ, Մասիմսա քարի տակ,
Քե դնեմ վուռկի օրօրոց, բալիկ ջան,
Վրեդ քաշեմ ամփէ ծածկոց.
Վերին քե ծիծ տայ, ուրուր, ուրուր.
Լուսին քե պախապան կոյնի,
Արեգակ քե ծծղացուցի.
Իմ ապքոր տղէն տան տղէն
Քրօջ տղէն չան տղէն։

*
* *

---

*) Առնուած է «Նիւս ու Կաց Խոյեցւոց» Գրաշար Յարութիւն Աւչեանի անտիպ ուսումնասիրութենէն։

1) Գլխիվայր գարձած ա-երը արաբական ع տառի հնչումն ունեն։

2) «իւ»-ը Խոյեցւոց բարբառի մէջ ֆրանսերէն u տառի հնչումն ունի օր. «տu=տիւ=դու» «uնի=իւնի=ունի» «ur=իւր=իւր». սակայն այսպիսի դէպքերում իւր-ը մնում է պարզ գրականական հնչմամբ. որ բացառութիւն է կազմում միայն տեղը որոշելում. օր. «ի՛ւրի ի երոլի, իՙւր պերեց», «տիւ ի՞ւր ես երոլի», եւլն բառերը։ գ. Յ. Ա.

3) Ասած է Խոռօ Սարգսեան։

Էրնէկ յէն օր՝ ինչ դիւ էզար,
Ցէն օր վարդէր ու վարդէվար՝
Աւագ զատիկ՝ ճրագն էր վառ.
Ճուն ի դիւս շիւէր կտէր,
Կեաքաւ էրդիս՝ մօրն աւետիս։

* * *

Երև դիւ, արև քեօ խէր,
Արևու ջեոջ խօրոդրէր.
Սթլիկ, Ճողիկ քեօ խօրքրներ,
Թուխ աչք քեօ մօրքրներ,
Ես քե մեռնեմ մամու դամ,
Ամռան օբերն ես էղեր,
Խաչկայ թփեր գալնցան
Գոօտն էկեր աշնցան։

* * *

**Բաղէշի բարբառով *).**

Գէ՜ Թռի, Թռի, Թռզընեկ,
Ծղեկեցի՛ եղուընեկ.
Խաչ պատուխան կուտ ուտես,
Աւազանի ջուր խմես։
Բող բող ձիանք խեծուցեմ,
Խով խով ուեղրանք քնցուցեմ,
Սիւտակ խայեր կերցուցեմ,
Կարմիր գինին խմցուցիմ։

* * *

**Մոկաց Սեպ գիւղի բարբառով **)**

Աղջիկ, աղջիկ, ոզրի աղջիկ.
Աղջիկ, աղջիկ, գընգրի աղջիկ.
Էլեր սարեր կը սըղըրղայ.
Մատնիք մատքեր կը պպղայ.
Թռի, Թռի, Թռուցեմ.
Սև խաւեր կերուցեմ,
Արաղ գինին խմացուցեմ։

**Թիմարայ Նիւանեց գիւղի բարբառով.**

Ես քե մեռնիմ գեօլի բադ,
Գեօլից ելար, նստար ափ։
Ես քե մեռնմ գեօլի կազ,
Ես քե մեռնեմ խորոտ մազ։
Ես քե մեռնեմ, որ ախ կաս,
Նրա՛ խիւնտնաս, Երա՛ տքառ-
Ըխթատեղրանք էրնեսս,
Խառսնատեղրանք տռանկաս.
Հալալա հալկներով՝
Գաս կփեմ պուտկներով.
Խէրքիւրն էկաւ, համ կտելով՝
համ չերփոփ
Գրողի մախ Միւքոն տանի,
Թէ ես ասի մուկն սպանի.
Մուկն ինկե կալսս խարամ ի.
Ով հալհալա, հալհալաս

* * *

**Թաւրիզի բարբառով.**

Թռի, Թռի, Թռցնեմ,
Ծառի տակը քնցնեմ,
Պաղ պաղ ջուրը խմցնեմ:
Աղջիկ ունենք համանի,
Զենք տայ խազար թումանի.
Օխտը ձի, օխտը ջորի,
Ով կը բերի, կը տանի,
Ով չի բերի, կա կանի։

Վարդուհի խանում դուն էլնիս.
Թըախտ Էրևան քուն էլնիս,
Նրա՛ րախփ անես, Երա՛ չայի,
Բալա, փուշդ խաքայի։

* * *

*) Ասած է Ալթուն Աստուածատուրեան որ բնակած է Արճէշ-Բաղէշ եւ Վաղարշապատ։

**) Ասած է կոյր Մանիշակ Մելքոնեան։

Ալաշկերտի բարբառով. *)

Հա թուի թուի թոցնիմ,
Սև հաւի միս կերցնեմ.
Կարմիր բուրուշ հաղցնեմ.
Ծառի տակը քնցնեմ։
Քեռին էկաւ բեռներով,
Բեռներ յըմէն խարուպար,
Գրկոն վրէն սարուպար։
Նաման, նաման ես քեզի ղաման,
Քու ծծեր հաղորդ ամոն.
Քու բերան խնկի աման։
Արի էրթանք սարի սէյրան,
Քաղենք ղասնա մանիշակ.
Բերենք, թալենք նորղան դոշակ,
Դու մէջ քնես, էզնիս գարնան ծիծակ։

Ա պզան մեղու, ա պզան մեղու,
Քու մանրիկ թևեր վերու,
Բոնձրիկ սարերն էս էրթալու,
Սուսան, սումբուլ ես քաղելու,
Քաղցրիկ մեղրն ես կրելու։

Հա թուի թուի թուցնեմ,
Սև հաւու միս կերցնեմ,
Հով ծառի տակ քնցնեմ.
Հա թուի թուի չուր ի լուս,
Պաղէն գիգայ կէնայ դուռ։

Հա կճատ մեղու, հա կճատ մեղու,
Թափ տու քու կճատ թևերուն.
Սարէ սար էս էրթլու,
Ծուշան ծաղիկ էս բերելու։
Թառ ես դու, թառ քու քաւոր,
Եօթ էրեց քղի կնքեր ա,
Եօթ սարկաւագ մոմեր բռներ ա,
Կը աւանեմ քու առեղծաղին,
Քղի չալկե, տուն բերեր ա,
Զթորկեր ա, կատուն կերեր ա։

* * *

Գացինք Քօլի գեղ 1)
Բերինք տիկ մի եղ,
Էրինք ձուաձեղ,
Կերանք միատեղ։
Տարանք հովըվուն,
Առնէնք կաթ մածուն.
Կրթոց գըլորաւ,
Հովիւ խըռովաւ,
Օխչար մօլըրաւ,
Բէրուոր չիւարաւ։

* * *

Թարայ (դալար) թաթիկ ջուր բեր.
Ես չբերիմ դու բեր.
Փլաւ էփիմ դու կեր.
Ես չուտեմ դու կեր։

—

Աղբէր, աղբէր ես քու չուն
Ինչ ես բարձե քու իշուն
Խունկն ու հինէն աղրչում,
—Դէր կը տանես—գղեղին,
—Դղեղ յետև սարերուն,
Արջկան կը մանայ սըքերուն,
Ճախրակ կը մանայ արջերուն,
Բուն կը գործայ թաթերուն։

* * *

*) Ասած է Արշալոյս Աւետիսեան։

1) Մշեցիք, Պուլանխցիք. «էրթանք Սասմօյ, բերինք փարա բոյ» կերգեն, իսկ Ալաշկերտցին պանդխտութիւն չեն սիրեր, որով չունին եւս նոյն երկու տողը։

Անջիւղ ճեանճիւր իմ Արան.
Դաստա ճեանճիւր իմ Արան,
Սարեր չուռ գաց իմ Արան.
Բարով տուն գայ իմ Արան
Մայրքս ձորն ամպելա,
Արօն ձենը թամքեքա,
Անձրև էկէ՝ թաչեր ա.
Արև դարկէ չորցեր ա։

*
* *

Բայբուրդի բարբառով.

Մանչս կայնե կարմնէին,
Մանգիւն օղերն անկէին,
Խապար տարէք ղոչնիին,
Մատաղ կարէ էշակը կոչձին.

Տան, տան ու տան, տան չանմէնչա,
[illegible]
Տան, տան ու տան, տամաքի վար,
Բիր ճիւչիւկ ճանճաղի վար,
Իւմաց բաշի, դոխմաց սաչի
Նամռի, իւմռի գէտանաք վար։

*
* *

Ակնայ բարբառով *).

Օրօր, օրօր իմ որդիս,
Քունը տանի սիրականիս,
Քուն չունիս, արթուն կը կենաս,
Ո՛չ ցերեկը քուն ունիս,
Ոչ ցերեկուան ինչուան իրկուն։
Քնանաս ու մեծանաս,
Հազար բարու տիրանաս.
Օրօր, օրօր, քուն ունիս,
Բէշիկտաշը տուն ունիս.
Մարգրտէ խօրղան ունիս,
Ջաւահիրէն բարձ ունիս։
Եկուր քեզ բաղչան տանեմ,

*) Ասած է Մարիցա Մաքսուտեան, որ բնիկ Ակնցի եւ տասերկու տարի Կ. Պոլիս բնակած է. գիտէ շատ երգեր եւ կերգէ քաղցր եղանակով.

Ծառէ ի ծառ կապեմ կախ ուրան:
Հովնուկն անուշ քունդ անուշ
Կարմիր վարդերն է բացուեր,
Վարդերուն հոտն ալ անուշ.
Քնացիր սիրուն որդիս,
Քու քունդ ալ ըլլի անուշ:
Ա՜յ էնեմ որ քնանաս,
Գզալիկ ես մեծանաս.
Մեծանաս ու մեծ մը ըլլիս,
Բոլըրիս, գեղ մը ըլլիս:
Քներես. քնկրեր ես,
Ծածկերեմ քրտներես.
Գամ չալդ դան տանեմ
Վարդի նման բացուեր ես.
Վարդերը սիրուն հոտն անուշ.
Սիրականիս քունն անուշ:
Քնացիր որդիս, ու մեծ մը ըլլիս,
Դուն աս քաղքին վրայ խօսաց տէր ու իշխան ըլլիս:
Օրօր օրօր, դուն մեծնաս նօրով.
Սնանիս մօրով,
Դնեմ ուրան կանչեմ օրօր,
Քաղցր կաթնով քի կշտացնեմ
Բազկիս վրայ տի մեծցնեմ.



## Ե.

# ԵՐԳԵՐ

## ՊԱՐԻ ԵՐԳԵՐ

**Ալաօկերտի բարբառով** *).

Ծամերու ծանօթութենէն՝
Ծամթել կտրաւ պատառ ի ծով.
Ծամերու ծանօթութենէն՝
Կոքաւ մէջը բուն ա դրէ։
Սաչբաղու չնգչնկոլէն՝
Կոքաւ տաւ ձգեր, թաւ,
Քու եարն եմ ես, քու եարն եմ ես,
Ա՛ռ խնձոր, արի, գիս տես։

*) Պարի գլուխը երգ գիտցող մէկը կանգնի. աջ ձեռքը Թաշկինակ մի բռնած ձախով բոլորշի պարողներէ մէկին ձեռքը բռնած՝ Թաշկինակը շարժելով կերգէ ու կը խաղայ. պարողներէն մի խումբ, որք լաւ ձայն ունին, կը հետեւեն առաջնոյն. նորա ասած մի տողը խմբով կերգեն. եթէ այն պար բաշին չկարողացաւ երգը շարունակել, խմբի միջէն մին կը շարունակէ. պարտաւորեցնէ պար բաշու կողմէն մի խմբի որ կրկնեն երգողի ասածները տող առ տող. Շատ անգամ եւս միաժամամբ կերգեն. երկու խմբի կը բաժանուեն. մի երգի մի տողը մի խումբը պիտի երգէ. երկրորդ տողը ուրիշ խումբ. երբ վերջացաւ հարց ու պատասխանի ձեւով ինքնահնար կերգեն փոխ առ փոխ. մինչեւ մի կողմ յաղթուի.

Ծամերու ծանուրութենէն՝
Դէպ հանեմ ծամթելն ի ծովէն։
Քե կիտամ լուծք ու գութան,
Դէպ հանեմ ծամթել ի ծովէն։
—Ինչ էնիմ լուծք ու գութան,
Զըմ հանի ծամթել ի ծովէն։
—Քե կիտամ իմ գլխու մախչէն,
Դէպ հանեմ ծամթել ի ծովէն։
—Ինչ էնիմ գլխու մախչէն,
Զըմ հանի ծամթել ի ծովէն։
Քե կիտամ իմ չամամ ծծեր.
Դէպ հանեմ ծամթել ի ծովէն։
Ինչ էնիմ քու չամամ ծծեր.
Զըմ հանի ծամթել ի ծովէն։
—Քե կիտամ բալաք ընքներս,
Դէպ հանեմ ծամթել ի ծովէն։
—Ինչ էնիմ քու բալաք ընքներ.
Զըմ հանի ծամթել ի ծովէն։
—Քե կիտամ իմ ջանի կէս,
Դէպ հանեմ ծամթել ի ծովէն։
—Ինչ էնիմ քու ջանի կէս,
Զըմ հանի ծամթել ի ծովէն։
—Քե մատաղ հոգուս ջանով,
Դէպ հանեմ ծամթել ի ծովէն։
Դու ըսիր ճիալալ մատաղը.
Ըլէ հանիմ ծամթել ի ծովէն։
Քու խարն իմ ես
Քու խաչն իմ ես
Հիւանդ իմ ես
Առ խնձոր, արի, գիս առ։

---

Սև օձ խարըդան էնեցի.
Ծնծուղ հատող դրեցի
Սարոյ ցորեն ցանեցի
Ցանեցի բմբռեցի
Եկաւ ցաքելու (տափանել), ճըխալ (մամանալ).
Գայք ցաքեց, ցաք չեղաւ.
Բոչխամակ (գիտակ), ցաք էնեցի.
Սարոյ ցորեն ցանեցի

Ցաքեցի թմրմեցի.
Էկաւ կորատելու 1) հրեամ,
Դոր գացի. կորատեղ չեղաւ,
Բոյլիկս կորատեղ էնեցի,
Եարոչ ցորեն կորատեցի.
Կորատեցի թմրմեցի.
Էկաւ ջրելու հրեամ,
Դորմի գացի բահ չեղաւ,
Ձեռքուկս բահ էնեցի,
Առուն բացի, ջուր թողի,
Եարոչ ցորեն ջրեցի.
Ջրեցի թմրմեցի.
Էկաւ քաղելու հրեամ,
Դոր գացի գերնդի չեղաւ.
Ակռէքս գերնդի էնեցի
Եարոչ ցորեն քաղեցի.
Քաղեցի թմրմեցի.
Էկաւ փոցխելու հրեամ,
Դորմի գացի փոցխ չեղաւ,
Մատներս [illegible] փոցխ էնեցի
Եարոչ ցորեն փոցխեցի
Փոցխեցի թմրմեցի.
Էկաւ կապելու հրեամ
Դորմի գացի բանդքի 2) չեղաւ,
Ձեռներսի բանդքի էնեցի.
Բոչամսի կեմ էնեցի,
Եարոչ ցորեն կապեցի,
Կապեցի թմրմեցի.
Էկաւ կրելու հրեամ,
Դոր օր գացի [illegible] չեղաւ.
Մէջկուկս ուէլ [illegible]
Եարոչ ցորեն [illegible] եկի.
Էկաւ ծեծելու հրեամ.
Դորմի գացի կամ չեղաւ.
Ցոտներսի կամ էնեցի,
Եարոչ ցորեն ծեծեցի եկի.

---

1) Սերմանած արտը ակոսներով մաս—մաս անել՝ այդ ակոսներով արտը ջրել։

2) Կեռ փայտ մը, որով խոտը գետնէն կը հաւաքեն՝ խրձեր կը [illegible]

Էկաւ թեղելու հրեամ,
Դորվի գացի հալ չեղաւ,
Բոյիկս հալ էնեցի.
Եարոչ ցորեն թեղեցի. ևլն։
Էկաւ էրնելու հրեամ,
Դորվի գացի հորսելի չեղաւ.
Մատներսի հորսելի էնեցի
Եարոչ ցորեն էրնեցի՝ ևլն։
Էկաւ մաղելու հրեամ,
Դորվի գացի մաղ չեղաւ,
Ձեռներսի մաղ էնեցի,
Եարոչ ցորեն մաղեցի։ ևլն։
Էկաւ չափելու հրեամ,
Դորվի գացի չափ չեղաւ
Բերանսի չափ էնեցի
Եարոչ ցորեն չափեցի։ ևլն։
Էկաւ կրելու հրեամ,
Դորվի գացի թեռ չեղաւ,
Ջեպերսի թեռ էնեցի
Եարոչ ցորեն կրեցի։ ևլն։
Էկաւ հորելու հրեամ,
Դորվի գացի փետատ չեղաւ,
Ըղնկներսի փետատ էնեցի,
Եարոչ ցորեն հորեցի,
Հորեցի բմրմեցի։

* *
*

Ալուծն ու սամին սարէն գիգայ լօրի լոր 1).
Վերցէք խուրճին, էրթանք քաղեին.
Դիլպար նստէ մուխտու ցւքին,
Դիլպար մնէր Վանայ Գուրճին,
Արէք էրթանք մըտ դաշտի մուշթին,
Ցիգան կտրեն դիլպարի գին,
Դիլպարի գին՝ էրկու մաքին,
Էրկու մաքին խաւուրմայ,
Ուտայ դիլպար խըմենայ,
Գաց մի իտայ կշտանայ։

*
* *

1) Ամէն տողի վերջը «լօրի լոր» պիտի կրկնուեն։

Աամար 1) ըման, ըման,
Դիլպար 2) դալալէ եըման
Աամար ելէ, կերթայ ի բէր
Ոչ բէր էղներ ոչ բերատէր
Սև մի կապէն քու հէրն ու մէր
Ընձի չէնէն էօ դարտի տէր,
Աամար ըման, ըման,
Դիլպար դալալէ եըման։

*
* *

Ըընամի ջան, լինամի,
Արի, երթանք խումլի—պուճախ աղջիկ ու տես.
Մաղ մի օսկի տու, բարըշի, տու բարըշի. տու բարըշի.
Չը՛մ բարըշի, չը՛մ բարըշի, չը՛մ բարըշի.
Թալա մի գմիշ տու, բարըշի, տու բարըշի, տու բարըշի
Չըմ բարըշի, չըմ բարըշի, չըմ բարըշի.
Գոմ մի ոչխար տու բարըշի, տու բարըշի, տու բարըշի
Չըմ բարըշի էլն։
Թալէ մի ձի տու բարըշի, տու բարըշի, տու բարըշի,
Չըմ բարըշի էլն.
Գութան լծուկ տու բարըշի, տու բարըշի, տու բարըշի.
Չըմ բարըշի էլն.
Ջուխտ մի ջաղաց տու բարըշի, տու բարըշի, տու բարըշի.
Չըմ բարըշի էլն։
Մաղ մի հաղող տու բարըշի, տու բարըշի, տու բարըշի.
Կը բարըշիմ, կը բարըշիմ, կը բարըշիմ։

*
* *

Խանիմօ ջան, խանիմօ,
Ծաղիկ ունի, ծակ—ծակ քարեր 3),
Դըռ չը լուացի, արև առնի,
Էրկու պզտիկ եար էմ ճարեր,
Քամին էլաւ, զէն մէկ տարաւ.
Էն մէկել լէ տամ չար գլողին,
Էլնիմ, էրթամ հըտ սիրողին։
Եազան առի գացի լուացք,
Տաշտեր կոտրաւ, ջուրը գնաց,
Իմ եարոջս չորերը մնաց։

1) Ցորենագոյն։ 2) Դեղեցկագոյն՝ սրտագրաւ։
3) Ամէն տողի սկիզբը «Խանիմօ ջա՛ն, խանիմօ» պիտի կրկնուի։

Ալաշկերտու Թոփրախկալէն
Գլուխս ի կապեր Մէյու փոլէն,
Պագիկմ տուր ճակատիս խալէն,
Էրեցայ դիլպար էրեցայ։
Աղօթարան օր՝ նոր բացուեր էր։
Իմ եարս անուշ անուշ քներ էր,
Զիմծայ որ յիմցուցէնք.
Վախենէնք սիրտ յընճնէ մնէր։
Եարս քնած էրազ տեսաւ,
Կաքուի նման անուշ խօսաւ.
Մըջ ուր քնուն ախ մի քաշեց.
Արտըսուք սեւտակ յերսին Թափեց։

*
* *

Բօստան իմ ցանէ վըր փնա զալըքն,
Աստուած անիծէր ըրա տարրուայ տարին,
Տամառ մի չերաւ, ճանաչէնք փոմ ծառին։
Բօստան իմ ցանէ անտէր դաշտի կող,
Աստուած անիծէր իդմըր յարտատ հող.
Աղջիկ ծաղեռով, տարան սազերով
Ճամերըն փմ հաւսեր ոսկի թելերով։

* *
*

Արազ պարի երգ.

Գիւլ, գիւլ, Գիւլիզար 1),
Շէկիկ ծամեր նշչուն մըդար,
Գիւլ, գիւլ, Գիւլիզար,
Դարսըմ պիր սըր, օլդի հազար.
Գիւլ, կիւլ, Գիւլիզար,
Նշչուն մըդար, օրսու բօզար։

Հարս մի բերէնք, չախ էր.
Դուռ ու դրկեց ուրախ էր.
Հարսի հօր տուն ֆամբախ էր.
Զօրեք դիմաց ճամբախ էր։

---

1) Թուրք մի սիրահարուած էր հայ Գիւլիզարի վրայ. իսկ երբ Թուրք պատերազմի գնաց հայերն երգած են, որք կը շարունակեն ու երկար Սերգէն։

Գացինք քուրդ Նորշէն,
Բլղուր կը խաշէն.
Թափած էն թամաշէն,
Ակիշն էր կորէ,
Քզիրին կը գաշէն (կորոնէին)։

*
* *

—Մեր տուն, ձեր տուն, մօտիկ-մօտիկ,
Էրթանք, քաղենք հազթկայ խոտիկ.
Բերենք, դնենք մարայ մօտիկ.
Տեսնենք մէր Խաչօ խորօտիկ
Իմ Խաչ քընց քումն էլ խորօտիկ.
Խաչիկ, Խաչիկ, իմ Վարդանիկ.
Բեղերդի կակուղ՝ կըմանի դֆցիկ։
Քօսատապա 1) գլխու մամեր,
Ծօղէի հագած կարմիր սօլեր,
Ասօ Խաչիս դռան սալեր։
Լուսնակ յելաւ լուսէ լուս,
Խանչէք, Ասօյին հանէք դուս.
Թափի ընդրայ ջուխտակ լուս,
Օսկում տալով չիտէր զիսի դուս։
Ես Օսկան եմ բալաբաշի.
Աղէ արցունք ես թափեցի,
Արտասունք դարձաւ պուտ պուտ արուն,
Պուտ պուտ արուն մըջ քարերուն։
Դաշտ ու դուրան, քար ու քռայ.
Օսկանի սիրտ կը մռմռայ.
Ջմօյի թամաշին կը ֆըֆռայ։
Մեր տան յէտև քաշած գերան,
Ձեր տան յէտև քաշած գերան.
Կարմիր յէրես, պզտիկ բերան,
Որ կը մնէր ժամտան խորան։
Մօլէսըլէման բոզ ու ղումաճ.
Սերօբ կորեր ա անգումաճ.
Մշու հաւքեր թեաւարան.
Արօն Եաւէին դրին, տարան։

Տղէն կայներ վըր կտրմնջին,
Խալ-խալ գնդեր վըր յակնջին.

1) Սուկաւէտ։

Ջուապ տարէք զոքնչին.
Ուր աղջիկ իտայ էդ կտրճին։
Ջաղջի առուն ջուր գիգէր.
Աղջիկ տղին դուր գիգէր։
Ջաղջի քարը տաշուկ էր
Աղջիկ տղին մաշուկ էր։
Էրկու հարս դաւոյի գեղէն
Գատած են գետ, կը լողէն.
Ցէլած են ափ կը դողէն,
Ինչ օր Նուան կը շողէն,
Համ գիւլ, համ վարդ, համ Նարկիզ,
Զօլի կռունկ յերկէն վիզ։
Ես աղբուր իմ, դու ջուր իս,
Ես էղզզգամ, դու խմիս,
Խմիս-խմիս վախինամ սուրխօշ էղնիս։
Վարդէվրի երկուշաբթին
Առայ փոյխն ու դերնդին.
Ընկայ ծորն ու ծոր ափին,
Հա ծորեցի, հա ծորթփեցի,
Մանտրիկ-մանտրիկ խոռմեցի,
Բառեխ թելով 1) կապեցի,
Քառսուն բարդոց դրեցի,
Ցեռսուն սիլիկ լծեցի.
Ծնճուղ հոտաղ դրեցի.
Օձիկ խարզան էրեցի.
Սարոչ դունով լընցուցի.
Ջարկի գըմէշ պատուցի.
Մէկ մէկ եարոչ ցըվրեցի,
Մէկ եարոչ չըքիսաւ.
Ծռաւ 2) չոլեր ընկաւ,
Նանիկ, Նանիկ, հանանի 3) . . ։

* * *

Տարին տըսուերկու ամիս,
Ինձոր թոռմեր ա գօտիս,
Խնձորի կէս խածուկ էր,
Զորս գօշէն արծըթուկ էր,

1) Սոյն պարի երգն եւս երկար կը շարունակուին։

2) Ոմանք «խռոմաւ» կերգեն: 3) Ոմանք «ուէհի ճօվով» կերգեն։

Պապս էկաւ, չտուի.
Մամս էկաւ, չտուի.
Ախպէրս էկաւ, խաբեցի.
Եարս էկաւ բաշխեցի ելն։

*
* *

Ջան մարալ ջան, *)
Գացի գացի հեռացայ,
Հեռուն սարին մօտեցայ,
Էնտեղ իմ եարին կարօտցայ,
Կէս ճամբուն թորկի, դարձայ։
Ջաղջի դռներ տաշած էր,
Դռան վրէն ներկով նըշած էր.
Եարիս անուն վրէն գրած էր։
Էն սարը բանձր սար ա,
Տակը զնջիլած քար ա,
Աստուած սիրէք, եարս չանէք,
Իմ եարս մէկ ու ճար ա։
Գացի—գացի ճամբու կէս.
Շալս կապի ճալպու պէս։
Աղջի, ծամերդ ջուխտ էրինք,
Սուրբ Օվանէս ուխտ էրինք։
Ես ինչ էնեմ, սաւցէն էրեց,
Կլոր փաչա Մաքոն էրեց.
Կանկուռ քիթ Նարգիզ էլեց։
Տառի տկուն մացեր իմ,
Սէլ ու սաւցով խամցեր իմ,
Գացէք ըսէք զիմ մամուն,
Ջուր ամակ լէ մոռցեր իմ։
Նառի տկի քուղէն իմ,
Իմ հօրն ու մօր պահողն իմ։

*
* *

**Բաղէշի բարբառով.**

Ելէ խանոր խանձանոր,
Տնէն յէլար կայծառ ի դուռ,
Քու ձեռ. իդէր ջոխտակ ի ծուռ,
ՁԱստուած սիրես, ձի պարգ մի տար։

*) Ամէն տողի սկիզբը «Ջան մարալ ջան» պիտի կրկնուի։

Ուլէ, խանոր խանանոր,
Մոկանց սարերն էն քարերով.
Մոկանց լանճերն էն խաճջալով.
Մոկանց խարսներն էն ճամարով:
Ուլէ, խանոր խանանոր,
Մոկանց սարեր, բէդ-բէդ քարեր,
Դըռ չը լուսցէ, արև առեր.
Էրկու պզտիկ եար էմ ճարեր.
Մէկը գարկեր՝ չար գրողը տարեր,
Էն մէկելի դարձն էմ ընկեր.
Ուլէ ևլն.
—Իրիկ մ'ունիմ, կը թուի ի ծայ,
Քէնի խօսիմ, կելնի ծեծայ.
Իրիկ մ'ունիմ, կը թուի մազի.
Քէնի խօսիմ, կէլնի պազի.
Գլխուս վերև կելնի քիամի.
—Վայ գէշ կնիկ գքու խէր քինես.
Մածուն կուզիմ, թան կու բերես,
Թիզ մի բորբոս մուկն ի յերիս,
Առաւ գքաքչոր սրբեց ի ներս,
Վա՜յ, գէշ կնիկ, գքու խէր քինես,
Պատեր յըմէն խլինք կեննես. ևլն,
—Քօ՛փակ, մը՛սի—հիւանդ էմ.
Կելնիմ մուրուսղի կը քանգիմ:

*
* *

Նուլապ գիւղի բարբառով.

Աճ բաճի ճաճ բաճի
Քաղանքւորի բոլուճ բաճի.
Ես ի՞նչ անեմ, դու արիցիր,
Քու ձեռնով քու տուն քանդեցիր.
Ալ բաճմաղն, գիւլ բաճմաղն.
Ճիրին ճիրին դաճճմաղն
(Վարդ ու վարդագոյն աչերդ,
Քաղցր—քաղցր գրոյցներդ).
—Աղջի Մաթան, դո՞ր ես էթում,
Տուն տնաւեր, տուն եմ էթում.
—Տղա Խէչօ, դո՞ր ես էթում,
Բախը ուսին տուն եմ էթում,
Ջուրը ջրեցի, տուն են էթում:

**Խարնեցոց բարբառով.**

Այններ եա պատատակը,
Ցօլակը մատնուտ ակը.
Իմ կարած արախչինս,
Դրեր ես Փեսիդ տակը։
Նախիրն էլեր է բօզը,
Կայներ է ղարագեօզը,
Դրկէ մահրամադ լուամ,
Առնեմ բեաբիւլիդ բօզը։
Կայներ ես, մարդ կը նմանիս,
Բացուեր ես, վարդ կը նմանիս.
Հայլին առ, երեսդ աչէ,
Չլումի խաղք կը նմանիս։

Կանայ եայլան փլեր է,
Եարս մէջը քներ է.
Ձայն կուտամ, ձայն չ'հանէ,
Մեկէր ինձմէ ջօրեր է։
Սարէն բոչ կանցնի,
Քոչ կուգայ, բոչ կանցնի.
Սիրտս կրակ մի ձգեր,
Ոչ կէրի, ոչ կանցնի։
Ելեր ես երդիկէն կաչես,
Ալ դօտամադ բարով մաչես.
Պագ մը կուզեմ, քար կը քաչես։

*
* *

**Տրապիզոնի գիւղերու բարբառով,**

Ջօբօր գարունը գայ, կուկուն կու կօնչէ *).
Կօնչէ, կուկուս, կօչէ, քու բօնը բօն չէ.
Օտքս փուշ պատեցաւ, սիյաս կու խօնչէ,
Կօնչէ կուկուս կօնչէ, քու բօնը բօն չէ։
Կօնչէ, կուկուս, բայձրի լեռներուն
Էչտօմ ղարիպութիւն, վախ իմ մեռնելուն
Կուկուն էլ թառեցաւ ածուքի պատին,
Աստուած հոգիս առնուր Մայրօմի գօգին։
Կուկուն ու մեղուընին կօմակ կու բերին,
Մում կնին, Զաքարի հօգուն կու կօլին։
Զաքար, կու կրակնէլ չատ մաչդիկ կերեր,
Ոչ էլ Աստուած կուտէր, օչ մէր կու բերէր,
Էկէք, լոլով ճելալ էրէք Զաքարին։
Էլուարի, էլուարի, էլ քանի քանի,
Սէրս քամի էղաւ, քունս կու տօնի,
Արի, էչտօնք, սարի սեյրօն, քա Մայրօմ.
Առնունք գիրար, օնցնինք դիմաց, քա Մայրօմ։
Օսկօ էկին Օսկիատին կօվիրը,
Էկին ու էկին, փչօն հիմի փօսիրը.
Օկօնջուընուն կախ ին օսկի օղիրը,
Տուէք պաչայս եիս էլ էչտօմ քօվիրը։

*) Տրապիզոնի Սեւ գետացոց հայ Մահմետականներէ առնուած է այն պարի երգերն, որ Սեւ գետացի աշղ Վարդան յօրինած է։

Արզուին ճեճեզը հէնց ձէ թայձուցին,
Մակարն էրի գուռը, դայաակ դայցուցին,
Գնա, Արզու, գնա, մէմէլ հիտ աչէ,
Էրեսիդ մազիրը քովէ քով քաշէ։

* * *

Գեղին վերդին այս մը գայի
Քանի քաղեմ, քամին տանի.
Երկու BIIBIL մէջը բանի,
Մէկը հէյս, մէկը մէյս,
Մէկն էր սիրելի Եաւրս
Քու Մայրամ, քու Մայրոմ.
Հայդէ էչտօնք տարի akjroG,
Խնձոր քաղիմ, գտիդ չարիմ։
Խնձոր մը ունիմ անուշ հօտիկ,
Հայսներ կուգօն կարմիր տոտիկ,
Բեր պաչ ընիմ քնդիդ մօտիկ։
Ուտենք հացը, գայնենք պարը,
Ծերմակ էր էլլէնուն քարը.
Դոս կոփիկս ծիծիկ կընէ,
Սարերն ի վեր տուտիկ կնէ.
Ալէքսն էլ հայսնիք կնէ։
Էկէք հարսներ. պար մը չփինք,
Քիչ մը բօզէն էլ թափթփինք.
Մեղաւընին էլօն չեղչէն,
Առնունք գիլար մանուկ fաչէն

Դիմացն ի վեր կուգաս գուն խլուըլալով,
Հագած կապածէիյդ կարմրով ալով.
Իս քե տեսնող աcուղն ժուռ կուգէր լալով
Օզօնը կօղնած էիյդ. գիտիմ թէ մէն իս
Հիտս չը խօքաթիր, գիտիմ թէ քէն իս,
Մտնելով էլլելով փէշիյդ կու մաչիս։

* * *

Եարը էգար Արնէժէն քարիր 1),
Աղջիկնիր միջուընին զարկին ծոփիր։
Էս էլ պար է, էս էլ խաղ է.

1) Այս երգի շարունակութիւնը շատ էր. երգողը՝ այսչափը միայն միտը պահած էր։

Էս էլ տարուն դարդամն է.
Արեը ելար ծառնէ ի ծառ,
Ծառի տերևը օսկի հօծառ.
Քարի վրայ քար մը ունիմ,
Եարին էլ աղբէր մը ունիմ
Մայրոմ էրա պատին վրայ,
Աղլուխ չինեց մառին վրայ.

Ոււօկդ միջուդ է, մատմոնդ կորած՝
Նիս խօջի (գջեզ) մոն կուզէի էրած պոպկած.
Էրած ու պոպկած, վա՜խ գեարինը ծնցած.
Խաչին օղոնը էրկէն լօրին՝
Մեր Մախթեցուն կարմիր ջորին՝
Գնաց մնաց գոյծել հարին.
Պէտքին, (գեղեցիկ) տէրը էղաւ, ծնցաւ արևգին՝
Գէչին տէրը զահրոպետ է ծածկին.
Աղջիկ Մայրոմ, դուռը բաց.
Աղլուխս նիյսը մնաց.
Օվանէսը ձգած էր կարմին գոնջուլր,
Քեզի մատաղ ըլլի ներման բամբուլը.
Փողու ձորին, էկէն լօրին՝
Մեր Մախթեցուն կարմիր ջորին՝
Գնաց, մնաց գոյծել հարին.
Հայս թիթեռմօնին թեւիրը (թել)
Էնիւ էրած քիւալի բանիրը.

* * *

Վանայ բարբառով

Սօնայար, սօնայար 1)
Ըլան ինչ աղէկ գլդին էր,
Տարին ձեռք մի չիւղ կը չինէր,
Ին սանամօր թըթէ գին էր.
Ըլօն ասաց պապօր ծնկեան.
Ինչի ծծիկ տուկր խընկեան,
Խապար տարէք տէկեր կնկեան,
Թո ձեռք ղանի վէր ուր ծնկեան.
Պաղտուաւ ձեռաց մըաջըն
Ցմէն մըաջն ջանիկ պատաըջըն.

1) Ամէն տողի սկզբին կրկնելու է «Սօնայար, սօնայար».

Ջան մարալ ջան 1),
Եղբուն արօր Եղբուն բլադ,
Ով կիմիչէր սաէր վրատ.
Նղբուն արօր Եղբուն բլադ,
Թլինք խուրճին, տանինք արտ
Խաց ես ուտեմ, օղես դիւ.
Սեր ես ուտեմ, մածուն դիւ
Տուն ես քնիմ, տանիս դիւ։
Ցախ ես չկիմ, քեակոռ դիւ։
Արտօրրայ սար ամպեր ա,
Սև լաճու ձին թամքեր ա,
Մէջ խիծեղին կայներ ա,
Խիծել կուտոր արեր ա։
Լուսնակն անուչ պիւլոր ա.
Սըլմ ինք նստեր ա.
Ծամերն իսև կամ կանի,
Խօսք կը թլիմ, նազ կանի։
Աղջի Սըլը՛մ, դիւ հիւր ես.
Ես աղբիւր եմ, դիւ ճիւր ես.
Ես գզզղան դիւ խմես։
Ես վախենամ, դիւ ծուխս։

*
* *

Թչու մօրուս էրկու պիւթէյ
Խանամիր Խանամիր 2).
Մէյ կանաչիլ, մէյ կասիթա.
Էչ քեաշիցին վերին կօսէն,
Ծուեր ժողուան ինոր վէրէն.
Էչ քիաշիցին տախտի պէրան,
Քեաղցը պապարշ դրին պէրան,
Կլաւցուցին, դլոռցան կերան.
Կողրանք արին կողուի սէրան.
Ոտքերն արին սուն ու գերան.
Կլօխն արին փըչը, կերան։

*
* *

Պէօպիկ մի քելէ Լալուխան 3),
Փուչ կէլնի տատիկ,
Էրթըանք Ստամբոլ,
Գիրենք ոսկի բոլ,
Էրթանք Առզռում,
Առնենք ջուխտ տոլ.
Խայնինք դէօր է դէօր.
Էրթանք պատի գեղ,
Առնենք նուկիմ եղ.
Անենք ծուածեղ,
Դնենք վէր եզան,
Էրթանք թեխ զոզան:
Էրթանք էրերին,
Ոչխար վէր բէրին,
Կթենք թուխ մաքին,
Լցենք սուրահին,
Տանինք մեր նարոջ։

*
* *

Քեարվան էկաւ ընկընկալէն,
Մաքրուհի ջան, Մաքրուհի 4).
Մէջ քեարվնին ջորի մը կէր.
Վեր ջորուն սնտուկ մը կէր.

1) Ամէն տողի սկզբին կրկնելու է «Ջան մարալ ջան»։
2) Ամէն տողից յետոյ կրկնելու է «Խանամիր—Խանամիր»։
3) Ամէն տողից յետոյ կրկնելու է «Լալուխան»։
4) Ամէն տողից յետոյ կրկնելու է «Մաքրուհի ջան, Մաքրուհի»։

Մէջ էն անտկին ծուծկմը կէր·
Մէջ էն ծուծին չուչպէմը կէր·
Մէչ էն չուչպին աղջիկ մը կէր.
—Աղջի՛կ, աղջիկ, անունդ ինչ ի.
—Խոռած, խեղտած, դաւիտ ինչ ի.
Իմ խէր քեզնից կտոր կը խանի։

*
* *

**Կիւսննեց գիւղի բարբառով *).**

Կրմզի դոնա, դոնա,
Նօթ խատ ֆեօփակ չուն ունեմ.
Նօթն էլ մէկն չեն աժե.
Կրմզի հայ կրմզի, կրմզի դոնա.
դոնա 1)·
Մէյ պուճուրիկ տուն ունիմ,
Ինե ոսկի սուն ունեմ.
Ա՛յ տղա, բոլի խօսաս,
Խազար քեզ պէս չուն ունեմ։
Ջատր եմ զարկե սարին,
Մոլլաք եմ տուե եարին։
Սարի տկի պտըտոր,
Իմ եար քեան քե խըտուըտոր·
Շերեփն ընկե մէջ եղին,
Քուր մեռնի աղբօր բեղին։
Գեօ նոր իկաւ մուլթն իրիկուն,
Ջը տանի իմ աչիչ քեօն.
Կտռուերի իմ սուտի սուն։
Ցարին տասուերկու ամիս,
Քեօ սիրուն զնճիլն իմ վիզ·
Քեաչէ տարին մէկ օր ըլնէր,
Խինդ օր ամիս գչեր ըլնէր.
Արե, ես դու ըլնենք գիրկն ծոց.
Որ խաանի մեր սուտի խոց։

*
* *

Զնկլիկ ածիկ մածածիկ,
Զնկլիկ Ս. Աստուածածին.
Զնկլիկ մեր պատ ծակածեն,
Զնկլիկ մեր խարս տարածեն,
Զնկլիկ տարան, թող տանեն,
Զնկլիկ զատկին կը բերեն.
Զնկլիկ դեղին սօլերով
Զնկլիկ կանաչ մօմերով
Զնկլիկ կարմիր մօմերով
Զնկլօ ալօճ եմ քաղէ,
Զնկլօ գոտիս եմ չարէ.
Զնկլօ տանին թո՛ղ տանե՛ն.
Զնկլօ զատկին կը բերեն։

*
* *

Ախպէրմ ունիմ Շահստան,
Համ արող ա, համ կարող.
Շիլս չաղիկ հագնող ա,
Կարմիր գօտիկ կապող ա,
Օսկի ղնդեր յանկնջին,
Էկաւ կայնաւ կտրմնջին,
Ընկաւ գետին պըլըթաց,
Օսկէ ջրեր կթկթաց.
Դըարէ դըկնա, դըարէ դըկնա,
Գումի-գոմի կոնդ ա դու կոնդ ա։
Նանէն մածուն ա մէրեր,
Ջոջ փէսի փայ պախեր ա.
Անաէր մեար չալ կատուն,
Ջոջ փեսի փայ կերեր ա։
Դըարէ դըկնա ելնի։
Պատիկ-պատիկ առուըներ,
Գրող տանի սպառուըներ,
Ջոր կնձներ պառուըներ,
Կանաչ վարոց տղէկներ,
Վարդ մանուշակ աղջկներ
Դըարէ դըկնա ելնի։
Ամպիլ ա ամպի նման,
Շաքար ա խանձի նման.
Իմ մէր ինձ ո՛նց ա պախե.

*) Ասած է Խուումսիմա Սարգսեան։

1) Ամէն տունէ վերջ կրկնելու է։

—Ծալած դոլպանձի նման.
Դըրաբէ դըկնա եյն։

*
* *

Թուլանմխայ բարբառով.

Մուսօ ժանուկ ջհել էր,
Ինչ օր հագէր՝ կը վէլէր.
Հայ լօ լօ լօ քօչարի
Հայ լօ լօ լօ քօչարի։
Թերմշի արջ լէ բաց էր,
Կայնել սարին կիչկէր։
Հայ լօ լօ եյն ...։
Պառաւ ճնճղներ քչէր՝
Կըսէր գըլ-գըլ անուշ էր.
Հայ եյն ...։
Աներւի բուլէն քոսքսի՝
Պառի թունտոք երէսի՝
Պոչն էր կէռի յակ յնձի.
Մսից դնենք վըր կօճին,
Կտրենք ժամբենք ճամկոչին,
Հայ լօ լօ լօ քօչարի

* *
*

Ջօսսան իմ գըրի վըր իդա դարին.
Շամամ մի չեղաւ համբէնք իմ եարին,
Հան օր հանանօր, ճան օր ճանանօր։
Եարիկ, գիս վառեց քու պզտի բէրան
Քու տանօղի տուն էղի կալ վերան.
Նխշուն քու միզար, անուն Գուլիզար՝
Արի, ես ու դու չկլինք խաղանք պար։
Շէկ-չէկ քու մազեր,
Քեաշեմ քու ճազեր,
Ջամիչ իմ բերի.
Արի, նստի, կեր։
Հանօր հանանօր, ճանօր ճանանօր։

*
* *

Հա ջումլամայ ջումլամայ,
Արէք, քէլէք էրթանք ջումլամէն։
Ջումլամէն բարձր տեղ ա.
Համբարձման էրկուշաբթին
Քէլէք, առէք գերնդին.
Էրթանք կայնինք մըջ չայիրին։
Արէք եյն ...
Խօտեր յըմէն քաղեցինք,
Ձորեցինք, ձոր թփեցինք,
Մանտրիկ, մանտրիկ խորմեցինք,
Դասսա դասսա դըրեցինք.
Խօրօտ եարին համբեցինք
Քէլէք, էրթանք հա ջումլամայ
ջումլամայ։

*
* *

Տօ տղա, ալ կապով
Հէքիք քընցնես մեր պատով.
Պատի չքեր կոտրտան,
Քու ալ ջուպէք կտրտան։
Կայներ ես պատի տակէկ,
Ցերեսդ նման հատիկ
Եարիդ յէրեն օր տէսնես,
Համ Համբարձում, համ զատիկ։

*
* *

Զօզան, զօզան Զիարաթցիք 1),
Էլմէ զօզան Զիարաթցիք.
Կռոնի ուտող էդ Կառնէցիք,
Օսկոռ կռծող էդ Զրեցիք,
Մէռել քրուոխ Ցառջուանցիք,
Պառի ուտող Ցառնջեցիք.
Թութուն ցանող էդ Մօկունցիք
Խաղող ուտող Դէրկէվնցիք.
Վանքի շներ էդ Ցառխցիք.
Շատ կարիճ են էն Հաւատորկցիք,
Շատ ազգասէր էգ Բէրդակցիք,
Գմշու պահող էդ Նորշէնցիք.
Պաղ ջուր խմող Ալիզռնանցիք.
Մռսպ պահող էդ Սախգոմցիք.
Սիրող կէնեն էդ Կօղունցիք.
Ծառ ու ճղոտ էդ Ցափնենցիք.
Շատ վախկոտ էն էդ Բգլցիք.
Էրկրի անօթին էն Խօքերցիք.
Շատ քֆրկան էդ Սուլուխցիք.
Շատ ձիաւոր էն Ցախջնցիք.
Գէժ ու բլել Շէխ ուսուֆցիք.
Շատ կղտոտ էն Ցալխճանցիք.
Աղի (աղայի) պահող Շէխբրմցիք.
Հարօրի գող էդ Խարդոսցիք.
Ցէրկէն չոքեր էն Ցրօնցիք.
Ձմերկի ուտող Ծորկնոցիք.
Շատ խարօտիկ էդ Ցունանցիք.
Քուրդ ու քւա Քրդագոմցիք.
Բէկի պահող էդ Դանկցիք.
Խօճախ պահող Ալլբուհարցիք.
Շատ գող ու գէշ Զօրաւցիք,
Շատ խօտավ էն էդ Հացկցիք,
Ժաժկի գող էն Բլաթուխցիք.
Գոշտ ու կոտլիտ Խրիզակցիք.
Հայվնի նման Մկրագոմցիք.
Օխչրի պահող Ալիգլբունցիք.
Զոր ու ցամաք էդ Բարդկցիք.
Շէյխի պահող էն Բլէցիք.
Մուտուռ պահող Աւզաղբրցիք.
Զիրար մատնող էդ Դրմերացիք.
Աղի կրող էդ Ցուշտամցիք.
Մեռել քրֆող Ցարդաւնցիք.
Շուտ տաճկցող էն Ցարգցիք.
Դլգլի ուտող քուրդ Ցուշտամցիք.
Կամպետ ծախող էդ Նորգեցիք.
Փալխի քաղող էն Մառնկցիք.
Դօլ զուռնաչի էդ Ցառնխացիք.
Խռայ ցանող էդ Խարսեցիք.
Խալի գործող Վարդենոցիք.
Քալամ ցանող Ցաղբենոցիք.
Քոռ ու քեաչալ էդ Մօզակցիք.
Շատ դօլուաբւոր Մուշախընցիք.
Մատաղ պահող էդ Ցօտեցիք.
Կարաս շինող էն Ցաւզուտցիք.
Շատ յաշխիեա էդ Խվեանցիք.
Բարդոց վառող էդ Ծակեցիք.
Զիրար սպանող էդ Վարդխաղցիք.
Փէտի ծախող էն Ծղակցիք.
Ճամբու կտրող Դիղկմերցիք.
Խեղճ ու ճեսիր Ցէրշտերցիք.
Սուտուռ լաճի էդ Խառքեղցիք.
Օխչրի գող էն Քօլ[illegible]ցիք.
Սուտ լոող էն Շմլակցիք.
Գուտկի շինող Ցառաւառնցիք.
Զօզան քէլնող էդ Մառնիկցիք.
Կլուլկի ուտող էդ Մշեցիք.

* * *

Ճղջի, քու աչքեր կուէն,
Գօծառ կանթեղի նման է:
Քու չեկլիկ ծամեր կուէն,
Ծալ ծալ տաղըշուամի նման է.
Քու խաքօտ քթիկ կուէն,
Բիլօռ շուշայի նման է.
Քու կլօր չանեն կուէն,
Կարմիր խնձորի նման է.

1) Բուլանիխցիք Մշոյ դաշտի գիւղօրէից վրայ կերգեն.

Քու չամամ ծծեր կուէն,
Բաղ ու բօստանի նման է.
Քու մանտրիկ ակռէք կուէն,
Սռսուռ ռաշֆի նման է։
Քու ընքներ խալմով քաշած,
Ճակտիտ մէյտնի նման է.
Քու սիրտ ու սրտեր կուէն,
Բինգեօլ զօզներու նման է.
Քու բարակ բաժնուկ կուէն,
Մէկ տակ բռեհան նման է,
Աղջիկ, քու բօխ ու բօխախ,
Ճուլթ ճուլթ հայողի նման է.
Աղջի, քու տափակ սուրաք,
Ամէն թաքախչէմ նման է.
Քու ցիցալ մատներ կուէն,
Մէկ մէկ մօմեղէն նման է։
Աղջի, քու նխշուն չորեր
Կակաչ ու վարդի նման է.
Աղջի, իմ ու քու սատցէն
Կրակ ու բոցի նման է։

*
* *

Թրիկուորէ ծրագնիր վառ՝
Դու կը մանէր զօզանի գառ՝
Օրբէվէրցի արի, գիս առ։
Մշու դաշտեր մշուշ էր,
Ուր հող ու ջուր անուշ էր.
Աղջի, քու պագն անուշ էր։
Աղջի, քու գլխու փուշին.
Իմ դօշ զարկէնք քու դօշին.
Ինչ օր հայուէն մըջ լօշին,
Էրկուս իմալ կուրմշին։
Նխշուն միզարով աղջիկ,
Քու աէր հազարով աղջիկ.
Նխշուն միզար ալ բնդեր.
Ջիտի վառեց քու գնդեր.
Նխշուն միզար խումգի
Գառուխս չըմ առնի քղի։

Ջինդ մի գնիմ, գինով աղջիկ.
Քընց բլբուլներ ձէնով աղջիկ։
Աղջի, մի գայ մեր տուն, ծուխէ.
Վըր չորիրուն հագի չուխէ.
Աչքեր թուխ էր ընքեր պուխ էր։
Աղջի Գուլէ, ջան Գուլէ,
Էռեհան անուշ չատ յէշ է.
Գոգդ ընձի հալալ էրէ։
Բօստնիր յմէն դամիս էր,
Միջու միջու եմիշ էր.
Մարէ մը մէղդրի սրտի սիրած ա-
նուշ էր։

*
* *

Գռունկ-կռունկ էրկէն վիզ,
Համ գուլ, համ վարդ, համ նար-
կիզ.
Գապով, մամով կարգէք գիս.
Զոպան մարդու մըտաք գիս։
Հա գնա պէրվոր, ծեծէ գիս։
Կռունկ-կռունկ էրկէն վիզ,
Սաման ափօ, մը՛ կարգէ գիս,
Ըռնճալի տղին մը տայ գիս.
Հելնայ ի դաշտ, մռնայ յիս։
Կռունկ-կռունկ էրկէն վիզ,
Զոլի կռունկ էրկէն վիզ,
Նալպնտի տղին մը տայ գիս,
Կը նալէ զձին, մոռնայ յիս։
Կռունկ-կռունկ էրկէն վիզ,
Զոլի կռունկ էրկէն վիզ 1).
Ջաղջպնի տղին մըտայ գիս,
Կուտէ տըմուղ (բաղարջ), ծեծէ
գիս.
Աղճամեյլիք դու խէրխիս,
Դարբնի տղին մը տայ գիս.
Զարկէ կռան, մոռնայ յիս։

*) Սոյն երկու տողերն ամեն տան սկիզբը պիտի կրկնուի։

Աղճամելիք դու խէրխիս,
Ջիտուորին մը՛ տայ գիս.
Կը հեծնայ գձին, մոռնալ յիս։
Աղճամելիք դու խէրխիս,
Կարդցուորին մը տայ գիս.
Կնկնայ կարդըլուն մոռնայ յիս։
Երկէն մարգուն մը տաք գիս,
Խելքը չոքեր ծեծէ գիս.
Կարճուկ մարդուն մը տաք գիս,
Խելքը գլուխ ծեծէ զիս։
Աղճամելիք դու խէրխիս,
Կունկու տղին մը տայ գիս.
Կը կուկուայ կիգայ յիս.
Աղճամելիք դու խէրխիս,
Օսկերչու տղին մը տայ գիս,
Կնկնայ ուր բանին, մոռնայ յիս.
Աղճամելիք դու խէրխիս,
Նաճրի տղին մը տայ գիս.
Կը զարկէ ուրագ, մոռնայ յիս.
Աղճամելիք դու խէրխիս,
Ջուլկի տղին տուր գիս,
Թալէ մագուգ, իշկէ յիս։

*
* *

Մուշու դաշտ կըսէն խօրօտկի տեղ էր,
Երկուս մէկ չապիկ, փողպտներ նեղ էր,
Քու չունչն օր կը չնչէր, իմ լոցին դեղ էր։
Բօստան եմ ցանե վէր էսա դարին,
Շամամ էլ չեղաւ ճանբէնք իմ եարին,
Աստուած աւիրայ էս տարուայ տարին։
Բօստան եմ ցանե յըմեն էր դդում,
Քու մէրիկ մեռնէր, ես գէնք երում.
Քղի չտուեց, տանենք ի մեր տուն։
Բօստան եմ ցանե յըմէն էր խռա,
Ցելմ, քրքչնի հըտ եարոջ դռան.
Որն օր խամսի էր, սրտեր մռմռան։
Էվար բը եվար, արեն էր դարցիս,
Աղջի, քու պապու դռներ չբացուի,
Իմ ումուտն ու քում Աստուածն է մացի։

*
* *

Էրկինք ամպի՝ կիտուռ Թափի,
Ցորեն չեղի սայենն չափի.
Ջաւար չեզի տանտկին մաղի։
Կիտուռն էկաւ մեր բոլորիկ,
Պապէն ըսեց հօրմի փորինք.
Կիտուռն ըսեց.—դ'արէք զռինք.
Թրթուռն ըսեց՝ չտանին հարին,
Կիտուռն էկե էդ մարգի դուռ,
Աստուած զարկէ, կոտրէ զուր ճուռ.

Ձիափ չինէ սաւտայու ծուռ,
Իրեք ապտէն կէս ֆիլա տուր։
Կիտուռն էկաւ ըռէսի արտ,
Իսօն ըսեց.—ափսոս զիմ արտ,
Մուխսու Մխէին չատ էղաւ դարդ։
Ելէք էրթանք չուր մի Լաթար,
Կիտուռն էղէ խաքար, խաքար.
Զը Թորկեց դօր մը մնէնք գադար։
Հաւար կիտուռ, եաման կիտուռ,
Էդ կիտուռի դարդն է մամուռ։
Կիտուռն էյաւ էկաւ Խոփեր,
Կտրեց ցորեն, Թափեց չոփեր.
Կէս կոտ չեղաւ գօթենք խափեր։
Մաղեր գործէք յէրդկներուն,
Կիտուռ չը Թափի մըջ ապրներուն.
Հաւար կիտուռ, մադադ կիտուռ,
Ձիափ էրեց յէշխլու ծուռ։
Ծժեր չը Թորկեց դադրէն ի տուն,
Աստուած կտրէ կիտուռի բուն,
Աստուած խտայ ճժերու քուն։
Կիտուռն էկէ Մուրատի դուռ,
Ծժեր կեչկին մանջկալի բուռ.
Աստուած կտրէ զույ երկու ճուռ։
Կիտուռ էկաւ ըերան էր սուր,
Էկաւ քշեց էլաւ մսուր։
Կիտուռ էկաւ մնաց ի դուս,
Կորեկ Թալեց զուր ականձ փուս
Ինատ էրեց կտրեց գրուս։
Եաման կիտուռ դու գէդ մէնի.
Ծժերու տնիկ աւեր մէնի,
Տանտկին տուն չիւար մէնի։
Ցէլէք էրթանք չուր Ջիարար.
Կոտ մի կորեկ էնինք խերեար.
Ջէնիկ ըլնայ առ Աստուած
Կիտուռ էնէ բնաւեր հաւք։
Մեռնիմ քզի Սուրբ Ցավանէս,
Մատաղ կտրէնք, քու հող տարէնք.
Բուս բուս կորեկ Թորկիս կանեակ։
Ջէն ցրուաւ բոլոր գեղեր.
Քօմին կիտուռ, չէն բեռներ.

Տարէք, կիտառ զմէն հորէք.
Խանչէք Աստուած, համբէ զուզուռ,
Կերաւ կիտառ, թորկեց թրթուռ։
Խոր մի նստինք, զոր մի կանեինք,
Աստուած օրրող ակամպ էնինք.
Էլնանք կանինք. կիտառ գոլինք։
Էլնանք էրթանք չուր Նորաշէն,
Աշխարհ թափի մեր բամաշէն,
Կիտառ աւրեց էգ Մշու դաշտ.
Մշեցիք էնէց բնաւեր հաւք։

*
* *

Ջաղջի միջաւ պաղ աղբուր,
Տղա արքի, տար զքու քուր.
Հաւար մազար Սարնգուլ
Առ ընծնէ, ուրիշիմ տուր.
Գիշեր խալսայ դուռ էլայ.
Բարեկ հետիկ մի գտայ.
Առայ հետքէն ու գացի,
Գացի բաղչէն դուռ էլայ.
Խորոտիկ մէջ քնեբ էր,
Քնեբ էր, քրտնեբ էր.
Իջայ չէ պագիկմ առծէնք,
Ըսեց.—Տղա՛, բեխախիք է։
Գիշեր խալսաց դուռ էլայ,
Թուխ ամպն անուշ կը ցոլայ,
Աշնան գիշեր՝ հով գիշեր,
Շաղն իջի՝ գետին Ենսեր.
Խանչիմ.—լուսնակ դո՛ր կերթաս,
—Կերթամ գիշերին ու ցերեկ.
Կէրթամ վըր Ալու սարին,
Շատ բարև խորոտ եարին.
Եա՛ր ջան, արի ու գնա,
Շալիկ իշլիկ հան գնա.
Լուսամ—լուսամ, չիմտկի,
Բուք տանի, փոշին կիստկի.
Առայ չրջայ պէտուկ մի,
Ազպայ լուածցք էն էրած,
Պազրի փշին էն փռած,
Ոսկին ճակտին էն դրած.

*
* *

Թրիկւորէ ջուր մկայ,
Քու սազբեշի ձէն գիկայ.
Քու սազբեշի թել կտրաւ,
Քու յուռ ընձի դուր էկաւ։
Ցօ տղայ, տղայ ալ կատղով,
Ջուր եփ ընցնաս մեր սրտով,
Պատի չքեր կլոթտաւ,
Քու ալ ջուրէն կառտաւ
Կէրթամ քոփմ իմ աղբօր,
Իգայ, զորկայ խանչլուր։
Նխշուն բոպիկ ալտաւտիկ,
Իգամ ձիր տուն զաղատիկ.
Կապիմ քու բարակ գօտիկ,
Կարմիր տօտիկ արտտիկ,
Մը՛ քէլէ բոբիկ խորոտիկ,
Փուշ կէլնայ տօտիկ ոտատիկ։

*
* *

Ջարաւ քամին չնկրչեկեր, լօրիլօր,
Լուծն ու քամին առրէն գլգէր, լօրիլօր,
Վերցէք խուրձիկն, էրթանք քարփին, լօրիլօր,

Դիլպար մնէր Վանայ կիւրջին, լօրիլօր։
Դիլպար նստի Մուխսու ցվքին, լօրիլօր,
Երթանք մըտ խաթի մաւզքին, լօրիլօր.
Իգան կտրին Դիլպարի գին, լօրիլօր,
Դիլպարի գին էրկու մաջին, լօրիլօր։

*
* *

Ցանուկ մանտրուկ ըռեհան,
Գացինք բաղերու սեյրան.
Գացինք Բաղշու Ս. Նշան,
Էկանք Բաղշու Ս. Նշան.
Օսկի մատնիք քու Նշան,
Երթանք պագինք Ս. Նշան։

—

Գիշեր խալթա դուս էլայ,
Ջաղջի դռներով ընցայ.
Անձրև էկաւ, ես ողկայ,
Արև առաւ, ես չորցայ։

*
* *

Մարալ ու ջեյրան,
Պզտի աղջիկ՝ լէն բերան,
Գեամ զարկեմ քու բերան,
Հեծնեմ էրթամ հարի Վան։
Աղջի անաւնդ, է Թագուն,
Նստեր ես քու հօր սաճուն.
Էդ ինչ բարակ բոյ ունիս,
Էրանի մարդուդ հոգուն։
Շէկ աղջիկ հաց կը տանի,
Մէկ կը քելայ. մէկ կը կանի.
Ջուխտ գումթան սար կը բանի,
Աչքողի խելք կը տանի։

Կայներ ես բարձր սարին,
Ջուխտ է մարմար քարին.
Հեռու սարէն տուն էկար.
Ցու՛ր ա քու բուռք ու բարին։

—

Դու կայներ ես քու պապու փողան,
Ցերսիդ խալեր կը շողմղան.
Զարմանուկ դէմ կը դողդղան։
Դու կայներ ես վըր էդ աէլին,
Թզիմ ճամբեմ մըջ քու գեղին։
Դու կանէրիս դուռն ի լուսցք,
Սապոն ի ձեռ օսկէջրած։
Դու յէլէր էր, կէրթեր ի բէր,
Ոչ բէր էղնի, ոչ բէրա տէր.
Խեր չը տեսնէր քու հէրն ու մէր,
Ձիսի չէնէր էս դարդի տէր։
Դու յէլեր էր կէրթէր կաւի.
Մաշիկ նեղ էր, օտներ ցաւի.
Էդ Լզեցիք կանան դաւի։
Դու կանիր էր դէմ ամրոցին,
Դու կը խաղեր խըտ վզնոցին.
Ես խոլամին չամամ ծոցին,
Ես քէ սիրէնք, թըխ գիս քերթին։

*
* *

Մեռնիմ քզի սուրբ Կարապետ.
Երկու երեց, մէկ վարդապետ։
Ժողուայ գկիտուռ, լից Մուրատ գետ.
Հաւար, կիտմուռ, եամանն թըթուռ.
Աստուած զարկայ, կոտռայ գքու ճուռ։
Եամանն, կիտմուռ, եամանն, կիտուռ.
Անտրի կիտուռ, ճվերն ա ծուռ.

Էդ կիտուռի դարդն է մումուռ։
Կիտուռ յէլաւ, գնաց խոփեր,
Կոտրեց կորեկ, Թորկեց չոփեր.
Կուտ մի կորեկ չէղաւ՝ խոփ տէնք զօթեր։
Տօ, տղա Ամիր, տօ, տղա՛ Ամիր,
Քոպու 1) բռներ, կիտուռ քամիր,
Կտամ կորեկ չէղաւ՝ էնինք սամիր 2)։

*
* *

Երէք էրթանք մանդկի.
Սև սարի տակ խանդկի.
Օձ մի տեսանք ճլպտուն,
Փախանք մտանք Սայլու տուն,
Սայլին նստե, Երդը կէնայ,
Իրիկ մեռե—վուշ կենայ,
Սիրող էկե, ջան կենայ,
Հաւեր էկան—քըշ, կենայ։

*
* *

Ցարտեր խռզաճ էր, քեռեկին *).
Գլուխդ ի զօզաճ էր,
Ցարտեր զիւաճ էր,
Քզի տարան դիւաճ էր,
Ցարտեր գռնուկ էր,
Ցերեսդ ի քռնուկ էր,
Ցէս օր ինի էր.
Ցաչքերդ ի չիճի էր,
Էկար հըտ ձորուն,
Ընցար մըջ հորուն,
Ցէս օր ուրբաթ էր,
Քու ձեռ խոռպաք էր,
Հազրօն ջրչուն էր,
Ցերեսներդ Ճղճուն էր,
Հազրօն բուլայ էր,
Քիթդ յուլա էր,
Ցէս օր յէս օր էր,
Էկայ քու սիրուն,
Ապրիմ քու խերուն։

*
* *

Ընդրի բուլէն քաղքըցի,
Մեր տան ճանբէն չը գիցի.
Պատէ Թոնդիր կըռնծի.
Գոչն յակնուվի գայցի։
Փշուր մի դնինք վըր կոճին.
Էն լէ ճամբինք ժամկոչին։
Փշուր մի դնինք վըր խփան,
Էն լէ ճամբինք Ջուլօյի տան։
Փշուր մի դնինք վըր fասին,
Էն լէ ճամբինք ըռեսին։
Փշուր մի դնինք վըր ակըշին,
Էն լէ ճամբինք մըր փաշին։
Փշուր մի դնինք վըր խալին,
Էն լէ ճամբինք մաճլիսին։
Փշուր մի դնինք վըր փարչուն,
Էն լէ ճամբինք մըր չարչուն։
Փշուր մի դնինք վըր գօբլին,
Էն լէ ճամբինք էդ բօփլին։
Փշուր մի դնինք վըր մաղին,
Էն լէ ճամբինք մըր տղին։
Փշուր մի դնինք վըր քարին,
Էն լէ ճամբինք Զաքարին։

---

1) Կրից։ 2) Սամիրն կորեկի ալիւրն ու կաթը իրար խառնած՝ եփած ճաշն է, որ շատ համեղ կլինի, որ ընդհանրապէս Զատկի երեկոյին սովորութիւն է եփել։

*) Ամէն տողէ վերջ կրկնելու է «Քեռեկին»։

Երկինք անպեր էր, ինչ անուշ թօն էր.
Կոյնայ, մայիլ էղայ, ջանանը հոն էր.
Ցօ եա՛ր, Աստուածդ սիրես, դօշդ մի բանայ,
Սիրով սովցարեար եմ, ես չեմ դիմանայ։
Ծամերդ համրեցի, տասներկու հիւս էր,
Ինչպէս Ճազանի աչքերդ ղուա էր.
Գնա՛, խալպ ու խայրին, եար չեղար ընձի։
Ցրսօր ուրբաթ պիտէր, վաղ կիրակի,
Սարոջ դռնով ընցայ, կերթեր կրակի,
Հագեր, կապեր էր խաճվայ լռանկի,
Լեզուն բանիրք պէտէր, ծոցը Ֆռանկի.
Գնա՛, խալպ ու խայրին, եար չեղար ընձի։

*
* *

Քեաչալ գացեր ա սախի,
Վախենամ գլօխ սըխօխի.
Քեաչալ գացեր է բընձի.
Վախենամ գլօխ կռընձի.
Քեաչալ գացեր է բօղկի,
Վախենամ գլօխ բըօխի.
Քեաչալ գացեր է չօրթնի,
Վախենամ գլօխ օրդնի։
Քեաչալ գացեր մանդըրկի.
Վախենամ աղէն խանդըրկի.
Քեաչալ գացի գարին,
Վախենամ ճանճեր քաչքեր հանին.
Քեաչալ նստէ վըր տփին,
Շներ գլօխ կը լիզին։

---

## ՊԱՐ ԵՐԵԽԱՅԱԿԱՆ.

Ղու կու կու կուրմանջի
Աղբէր ղարաճաճնճի։
Ճանճա մանուկ դռան էր,
Աղբէրը քու կռանն էր,
Ջամիչ դուռը չոր անէր,
Հատեր տունը գըժժ անէր,
Ջամիչ տուք հաւերուն,
Հաւերը ընձի հաւկիթ տուին,
Հաւկիթը տարայ չօպանին,
Չօպան ընձի գառ տուեց,
Գառը տարայ Աստըծուն,
Աստուած ընձի աղբէր տուեց,
Աղբերս բերգի գլխին,
Աղբեր, ես բերգի տակին:

---

Ջոջ տան կոժեր տուն էկան,
Մատիկ-մատիկ կաթ տուին,
Մատ հազարին տուեցի,
Մատ հազար ինձ ումր ուզեց։
Ոսկէ սնտուկն եմ դրէ՝
Ոսկէ կատուն ա կերէ։
Ոսկէ ճօկանով զարկի՝
Ճօկան ընկաւ կորսուաւ։
Նանէ նանէ մի անիծի.
Քուրի տղին մի Fռուի՝
Բալfի ես եմ տըէ,
Առուէ առու եմ թռէ,
Քառսուն կաքաւ եմ բռնէ,
Համպըրով թառն եմ դրէ,
Լուսուն էլայ մէկը պակաս։

---

Լեզուս տուի աղի էր.
Փորս թափի գինի էր.
Գինի գինի գինատան

Մէկ քուր ունեմ Շահրիսւան.
Անող ա, քզող ա.
Ճիլա չափիկ կարող ա.
Մանտր ուլինկ չարող ա.
Չրթուրին հաց տանող ա։
Փետէ—փետէ մարդիք

Պոլսու թիակ հալւորներ,
Ցուռու ցախ ական պաուրներ,
Ջինի չինի հարմներ.
Փունջ մանիչակ աղջիկներ,
Վարած ցանած հաւսողներ,
Ուտին չուտին կը կուռին։

*
* *

Խլաթայ բարբառով.

Դոն հայ դան *),
Իրիկուանէ դուս յէլայ.
Թաթախմ ձուն էր թալէ,
Բորիկ խետիկմ էր գացէ,
Խրտ էն խետքին փացի.
Գացի բաղչէն իջայ.
Բաղչէն էր ազպայ լուացք.
Սիւսակ լուացք էն էրած՝
Գորպար դալմով էն բացած.
Սարի ուսին բլիր էր,
Ծարս տկին քնիր էր,
Քներ էր քրանըր էր.
Վախնամ թարկո առնիր էր.
Սարերն ամպեր ձուն չի գայ,
Ծար խուոլէ տուն չի գայ:
Սարի ուսին բլեր էր,
Ծարս թալս թուխ բեխ էր.
Դոն ջան ...

*
* *

Նանէր, նանէր. նանէր Զուլօ
Ո՛չ բէր էղնէր, ո՛չ բէրի տէր,
Ընձի չէնէր էս դուրդի տէր։
Զուլօն յէլաւ, գնաց լուացք,
Տաշտը կոտրաւ, ջուրը գնաց,
Ցակոբ աղի խաբբր մնաց։
Ցիրիկուն թունտիր մուխ,
Աչքերը բալաֆ՝ ընքնիր թուխ,
Թալեր լաճի, կոխեր պուխ,
Աժեր Մուշն ու Բուլանուխ։

*) Այդ երգը սկսած «Դոն հայ դան» կրկնելով է։

Առաւօտ թափեր փոշին,
Իմ դօշն առնէր քօ դօշին,
Ինչ որ հալուէն մըջ լօշին.
Աղջի՛, հաց կտանէր յարտ,
Դու կը մանէր fաՖուր վարդ:

*
* *

Դիլպար. քո cուcէն կը գնկայ.
Էմար, քո cուcէն կը գնկայ.
Ես քո դարցէն խիւանդ ընկայ.
Էմար, եամաՆ, եամաՆ, եամաՆ,
Դիլպար, դելալօ եամաՆ 1).
Էմար կայներ դէմ ամրոցին.
Դիլպար կայներ դէմ ամրոցին.
Կը խաղէր խըտ ուր վկնոցին.
Կրակ թողե իմ սրտի խոցին.
Էմար էլե, կերթայ ի ջուր.
Դիլպար էլե, կերթայ ի ջուր.
Սանճպաղին թալէ ճռնէ պը ճուռ.
Գագիկմ կուզեմ, դու էրկու տուր.
Էմար էլէ, կերթայ ի մալ.ագ.
Դիլպար էլե, կերթայ ի մարագ.
Քո ուտելիս միղր ու կարագ.
Քո խաղնելիս լէ քե մումպարագ.
Էմար էլե. կերթայ յէգին.
Դիլպար էլե, կերթայ յէգին.
Ինքն ա ուր ջուխտակ տէգէրկին.
Իմ աչք ընկաւ քո սօլի խէչին.
Բաժդի բարակ Ֆիտան ա.
Քթի օղ ոսկի մատան ա.
Բալաf աչքեր մարդ կպանայ.
Ծակատդի բաց ինչ օ մայտան ա.
Ցեռաք թղեր ջուխտ բուչամ ա.
Կարմիր էրես խոգիս կը խանայ.
Էմար էլե, կերթայ խոտի.
Մեղր ու կարագ լեզուէն կաթի,
Ես քո դարտէն կը վառիմ զաքի.

---

1) Սոյն վերջի երկու տողն ամէն տան վերջ պիտի կրկնուի.

Նամար կայնիր է մըջ բակին.
Օսկի բլազուկ քշտեր բլակին.
Ջիս ի Թողեց մըջ էս կրակին։
Նամար էլե, կերթայ ի պէր.
Դիլպար էլե, կերթայ ի պէր.
Ջիս ի չէներ էս դարցի տէր։
Նամար էլե, կերթայ ի չայիր.
Ես քո բաժին էղայ դայիլ։
Նամար էլե, կերթայ ի Ղարս.
Դիլպար էլե, կերթայ ի Ղարս.
Գլօխ զարկէ փուսկուլ ֆաս.
Պազմ կուզեմ, էրկուս տաս։
Նամար էլի, կերթայ ի գեղ.
Ջուխտակ յաչքիր քաշեր ա գեղ.
Կամար ընքներ բռներ ա գեղ։
Նամար պռչօք Թողե ալկընէրուն.
Քո քաշած ղացէն դրկեցնէրուն։

*
* *

Գիշեր էլեր իմ խէրանց 1)
Կարծէր գաւն ու մաքին.
Էլանք էկանք Պիրկներ,
Ծար չռուեցին քարս տներ։
Մրսաւ մեր մատներ,
Թափաւ մեր խաղեր,
Ծար տու, ճար տու ֆեար
Ընցնինք Զարտախան։
Գուգուրնիս հաստ քու կող,
Ամառ քուրդ ու գող՝
Ձմեռ բուքն ու քամին՝
Ծար տու ճար տու ֆեար
Ընցնինք Զարտախան։

1) Արտօնից մի աղջիկ կուզեն Սօխորդ հարս տանելու. աղջկա հայրն նախ կը խօստանայ. ապա խոստմնազանց կը լինի. կուտայ մի այլ խլաթեցու։ Աղջիկը տանելու ժամանակ բքի բռնուեցան. հարսնեւորներն ցրուեցան. ծին եւս հարսը տարաւ նախկին նշանածի դուռը. կեսուրն կը տեսնէ. կը հարցնէ. կիմանայ որ իւր նախկին հարսնացուն է. կասէ.— «Ղուրպան էլնեմ բքան. բերեց աարցուց մեր դռան» եւ պսակեց իւր որդու վրայ.

Հացնի կողիմ, յէնձամ էգամ.
Ախոր աւլիմ, յէնձամ էգամ.
Թրիք թափիմ, յէլնամ էգամ.
Դուար դարմնիմ, յէնձամ էգամ.
Դուար ջրիմ, յէլնամ էգամ.
Ցերդկներ կալսիմ, յէնձամ էգամ.
Կովնի կթիմ, յէլնամ էգամ.
Տորերս հաւաքիմ, յէլնամ էգամ.
Քածը կթիմ, յէնձամ էգամ.
Քօփակ քնցում, յէնձամ էգամ.
Զաւկներս հանիմ, յէլնամ էգամ.
Քօլոզ դնիմ, յէնձամ էգամ.

* *

Գաղեմի ջան պարեմի,
Մայլա բաշի Կակոյի տուն,
Տաս նըւնըւան Ակէի տուն,
Ծուռուտ թոնդիր Մնդրէի տուն,
Տաս դամէր կէր Փուրկոյի տուն,
Էրկէն սոխադմ Մուշոյի տուն
Օչլի հանգուբց Մլէի տուն,
Տաս fօսա կէր Տօնէի տուն,
Տաս արաբ կէր Կագոյի տուն,
Դուֆի սիրող Ալուէի տուն.
Աղա մշակ Ցաւհայթի տուն,
Իշաւ ... Գէորգի տուն,
Մասալ ըսող Պերխէի տուն,
Տաս թալխանի Քուչուկի տուն,
Ըռէս մենլիս Սրգէի տուն,
Հաւար տանող Մնէի տուն,
Թազու պայող Օվարկայ տուն,
Տաս փլփլան Արթոյի տուն,
Տաս ճնկօ էր Թօրէի տուն,
Զխալ-մխալ Մաթոյի տուն,
Տաս fաչալ կէր Գնգոյի տուն,
Տաս թօփալ կէր Մլքոյի տուն,
Կաստու ուտող Աւէի տուն,
Տաս չանորդի Գրկէի տուն,
Զոլախ օտներ Հերանի տուն,
Տաս խօրոտիկ Մէյրոյի տուն.

Քիչ խօրոտիկ ժամկոչի տուն,
Հաստուկ մըթուի Հեպոյի տուն,
Իշու քշող Ակոյի տուն,
Դօլ զարկող Գրգոյի տուն,
Թրքի թափող Խաչոյի տուն,
Շատ ուտատամ կոյ Մկրէի տուն,
Իրեք հողի Տօնէի տուն,
Իրեք կարտօ ու կէս Շարխօչի տուն,
Գուլթնի լծող Մելքոնի տուն,
Ճիտու պայող Ըռքոյի տուն,
Խարթու մօրուք Գէւոյի տուն,
Գոմշու թողող Մալոյի տուն,
Սուտմա ճեճիմ Մնոյի տուն,
Ջանկալ բեխեր Գոտէի տուն,
Շատ անհրավ Սրդէի տուն։

*
* *

Ի՞մալ էնիմ ծանրիկ դարտեր.
Ջուն ա դրեր աշնան յարտեր.
Գլընց Ֆուրմ, աղջանո ճիբըմ.
Շախօ դապուլ է դիւանէ
Ով որ դառնայ խաւրու խրարէն,
Բերան դառնայ ֆօրի եարէն։
Ի՞մալ էնիմ ծանրիկ դարտեր.
Ջուն ա դրեր աշնան յարտեր։
Ի՞մալ էնիմ ծանրիկ դարտեր.
Մկներ կերան աշնան յարտեր.
Ի՞մալ էնիմ ծանրիկ դարտեր,
Ջուն ա դրե բանձրիկ սարեր.
Ի՞մալ էնիմ ծանրիկ դարտեր,
Հալեր թափեր մարմար քարեր։

*
* *

Ջենդիլ զեար, դուշման մեզար,
Ի սաւսաւե, սիլի Ն...
Ջենդիլ զեար, դուշման մեզար.
Կէս գիշերին գնաց էլայ,
Եարուկ մէջ քնուն ահպայ,
Քներ էր, քրանիր էր,
Վարդն երեսին փռուեր էր։

* *
*

Դէ՛ կիսի—կիսի, դէ կիսի—կիսի,
Դէ՛ կիսի մարէ, իմ թումպան,
Տաս դուռուս ու իմ խունջան.
Թումպան թալիմ վըր պանցրին,
Թումպնի գողցող ախանցրին·
Դէ կիսի—կիսի, դէ կիսի—կիսի,
Դէ կիսի—կիսի Փափուռայ,
Փափուռի չապիկ շիլայ.
Տէրպիքիր չէվուրմայ,
Էրկու մաքի խաւուրմայ,
Ջուլօն ուտայ, կշտանայ։
Դէ՛. կիսի—կիսի Փափուռայ,
Փափուռ ճեարամի ծիծայ,
Փափուռ ճեար ու Անամ ա։

*
* *

Վաղոս Պետրոս դաշտ կը քանէն,
Նազութ Զմրութ հաց կը տանէն,
Հետ կը քելէն, հետ կանէն,
Աչքով ընքով մարդ կապանէն։

Տղէն կանէ վըր ջմին,
Օսկի գնտեր ակնճին,
Խապար տարէք զօքնչին.
Զաղջիկն իտայ կտրճին։

*
* *

Ջաւար Խօլօ, դու դէդ մէնի *)
Մադար Խօլօ դու դէդ մէնի,
Ումրօն ճանքախ չիւար մէնի։
Խօլոյի քիռ էրկու չնիկ.
Գարկաւ, աւիրեց Ջումրոյի անիկ,
Դօրմ քէլենք, դօրմ կայնինք,
Էլնանք կանինք, Խօլոն գովինք։
Էդ Խօլոյի գովքն անուշ էր,
Էդ վէրանի գովքն անուշ էր։
Խօլոն փառաց պատաւ ալին.
Ընկած է մէջ, կը չմլին,

*) Ումրօ անունով մի Մշեցի միմիայն մի եզ ունէր, որով իւր զաւակաց ապրուստը կը հոգար. մի օր կարաւան գնալու միջոցին եզը կնկնի, որոյ վերայ կը յօրինեն սոյն ոտանաւորը։

Մշեցիք թափած է բամաքին
Թորկին պոչից, քաշին կօզքին։
Հաւար Խօլօ, դօւ գէդ մէնի,
Մաղաք Խօլօ, դօւ գէդ մէնի,
Ընծի ճանբախ չիւար մէնի,
Ծժերն ի տաւն անօթի մէնի։
Խօլոյի բեռ էրկու ճիլայ,
Խօլոն Նատի՝ Ումրէն գիլայ։

*
* *

Երիկուընէ ճրագն ի վառ 1),
Ղօլ աքլոր թռաւ, էլաւ թառ,
Ղօլ աքլոր կը մանէր զօզանի գառ,
Ափսոս իմ ղօլ աքլոր, ափսոս։
Ասսուած սիրող ականջ էրէք,
Ղօլ աքլորիս բարիզ անեմ.
Ղօլ աքլորիս գլխի բոքբօւչ,
Հարուր թուման էր էն մէկ դրւօ,
Իմ սրտին մէջ չատ ափուչ։
Ափսոս ... (ամէն տան վերջ կը կրկնուի)։
Իրիկուն ա, եանա եպենկուն ա,
Առանց աքլոր քուն չտանկայ,
Երկէն գիշեր կարճ կդնկայ,
Անուշ քնից վեր կը հանկայ։
Ես ինչ անեմ գօմշատաններուն,
Ղօլ աքլոր էցգին վըր սալերուն,
Բաքար չեղար դիւնի մային,
Նա չուալայ մըջ իմ հային.
Ափսոս էկաւ բըրկընելուն.
Ղումաք էրին էդ չներուն,
Ղանչէք զասպեկններ բերէք,
Ղօլ աքլորին դուրսան էրէք։
Իմ ղօլ աքլորի գլխի ճղէն.
Իմ ղօլ աքլոր կարժէր մէկ տղէն.
Ելէք վեր, զնարին աչէք,
Ուրազ բերէք, մոմուճներ (ճիրաններ) տաչէք,
Ձուխս մը գամէշ՝ ղօլ աքլորին քաշէք։

*
* *

1) Խնուսցի է ասած. բայց չնմանիր Խնուսայ բարբառին։

# † ԱՐՈՒՍԵԱԿ ՀԱՅԿՈՒՆԻ

## ՀԱՒԱՔԱԾՈՅՆԵՐԷՆ *)

**Ակնայ բարբառով 1).**

*Ջա՛յ տաք ու բեր, տա՛ր ու բեր,*
*Գէշը տար, աղուոր մը բեր։*
*—Գիշուն ո՞վ ուղուոր կուտայ որ բերեմ.*
*Գէշն ալ կշկուրին նման,*
*Անի մեր պատերն է կոզման.*
*Աղուորն ալ զըտ ջուր նման*
*Անի իր եարին բաղջան կը վազէ։*
*Վարդ ու նուռ ունի ջրելու.*
*Վարդ ու նուռս է ջրելու,*
*Ըռէհանս է կող կապելու։*
*Քաղեմ ու դաստա ընեմ,*
*Ու ղրկիմ դարիպիս։*
*Առնէ ու քնդլին դնէ,*
*Տարէ թուլբնդին քաթիրը։*
*Ան բարձր սարերն ի վար*
*Բարկուկիկ հովիկմ իջայ,*
*Հարսնուկ, խալզուտիկ հարսնուկ,*
*Սլըրեր դռնակն է բացեր։*
*Տեսեր ևուր իր եարը չէ,*
*Մըռլուրեր ու ներս է եկեր,*
*Կիրնակն ալ հարսմունք ըրեր։*
*—Հարսնուկ. քու սրտեդ է ցաւերը։*

---

*) Դուստրս Արուսեակ հետեւեալ Ակնայ, Թլկէնի, Ղզմզլուի, Սոնկիւռլուի եւլն. երգերը գրի առած է ընտրութեամբ։ Նաեւ առանձին գրի առած ունի կանանց հիւանդութեան մասին ընդարձակ գրուած եւ այլ եւ այլ նկարագրութիւններ, թէ նա ինչու անձնասպանութեան դիմեց ներկայ 1905 հոկտեմբեր 3-ին, այդ կը պարզուի առանձին յատուկ տետրակով. հանգերձ իւր գլխին եկած անտանելի սրտաճմլիկ կենսագրութեամբ։

1) Ասել է մարիցա Մարգարեան

—Քու օրդուդ խաթերին համար,
Իմ ամէն տեղուկս ալ է ցաւեր.
—Գիր անեմ, օրդիս բերեմ,
Քու ամէն ցաւուկդ անցնի։
—Գիր անես, օրդիդ բերես,
Աստծու լուսին տիրանաս,
Գիր չանես ու չի բերես,
Կանիծեմ սուր քար կը դառնաս։
Ան բարձր սարին վրայ կաքաւուկ մէ նստեր,
Կուտ կուտէ, արցունք կու թափէ.
—Կաքաւուկ, դուն ինչու կուլաս.
Թող. էրթայ ղարիպին տէրը լայ.
—Դուռը չեմ գիտեր Ղարիպին։
—Էկուր նշանով ցուց տամ։
—Քու ղարիպը սուլտեղ կը կենայ։
—Դռնուկն է բոյախանայ,
Նուշ տռէ, ամրակ կը ծաղկէ,
Ամենուն արժան, արժան,
Ինձ տեսնր սուղ կը ծախէ.
Թուխ աչքեր կէշեոք ըրեր,
Ունքերով վեր կը քաշէ։

* * *

Լուսիկ մի փոթաւ քարեր,
Կէսը խոռ, կէսը բոլոր։
Լուսիկ, դու լուսով կենաս,
Թէ կենաս բան մի ուխտան,
Երկու խօսք գանգատ ունեմ,
Գամ գոյըմ. դուն ձիլփի ու գնայ։
Գնա, ըռէ ղարիպիս,
Զկենայ, էլլէ ու գայ։
Ան կողմէն մարըմ էկաւ ու ըսաւ.
—Ես քու ղարիպէտ խապար ունենամ,
Դուն ինծի պագմ կուտա՞ս,
—Դուն իմ ղարիպէս խապար ունեցիր,
Պագմ չէ, երկուք կուտամ։
—Ես ղարիպէդ խապար ունիմ,
Թէզ գալու, ուշ գնալու։
Ծարղի քեղի նուռ ղրկեց,
Կարէ տես. քանի հատ ունի,

Հատին ալ պագմը տու,
Աւելին ճարամ ըլլի։
—Նուռ կայ հազար հատ ունի,
Հազար պագ ւուր տեղ կու ըլլի,
—Երկու աչքը ւուր մէկ ըլլի,
Հազար պագ քեզ կու ըլլի։

*
* *

Եկին ու բերին խապար.
—Թունդ էլեր քու եարգի կուգայ։
Ամէն բանի դան գրի,
Ջուր բերի, մազի լուացի.
Հագայ սերեսեր լաթերըսի.
Կապեցի լաճորս ցալ գօտի,
Դըմակ մալ նռան գինի,
Ես առի ու դէմ գնացի։
Դուշմանն ալ էրեսս էլաւ.
—Ուր կէրթաս, ան քու եարը չէ, ըսաւ,
Թուլցաւ չահինն ի բազկէս,
Թափեցաւ նռան հատ գինիս։
Դուշմանս ւուր ատէնիմ,
Ջախուկսի չեպէս տի հանիմ,
Տի մօրթեմ սե օխչարի պէս,
Արունն ալ Ֆինճան տի առնեմ,
Տի խմեմ նռան գինու պէս.
Միսն ալ քեապապ տի էնեմ,
Տի ուտիմ կաքւու մսի պէս։
Դուշման, աչքդ քոռնայ,
Նէգուար լեզուդ չորանայ,
Որ մէջմ ալ դուն ինձ չտեսնես,
Նեգուար լեզուդ չի խօսի։

*
* *

Ա՜խ, զալում, զա՜լում.
Ես ատ գիշեր դուրս էլայ,
Մութ գիշեր, չկար լուսնկայ,
Իմ եարս ալ ետեէս դուս էլաւ,
Թեէս բռնեց, տուն տարաւ,
Դուռ դրաւ, սխիկն ի վրայ։
Ձգեր էր եպիրցում խալին,
Խուցսույի դօշակն ի վրան,

Սեւեւեր բարձերն էրկըքն.
Սազեր էր օսկու սեղան,
Հաւ, խորոված կաքաւսկն ի վրան։
Դրեր էր Նորդքի գինին,
Բոլանցի ղատեղն էր պինին.
—Խմէ, որ ըսիմ պեղուչ.
Անտունիմալ ըսեմ ուչէ ուչ.
Ինչեղ անտունիմալ ըսեմ,
Որ Թնդայ ղասեխն ի սիրին.
Ղադեխն սպ տպիքն Թնդայ,
Սրմայ Թել բոյուխն էրկըքդ։
Վաղուց գնացող գզրխալ,
Ինչէխ իմ կարօտացէր.
Էրեսիդ սաարն իմ մոքցէր,
Ծրբ գաս ու բաղնիքն էրթաս,
Մոլըրխս ու մերը գաս։
Աղբուր մի Մրգա լեռը,
Կը վազէ Փաթոյուան տալնը.
Օլուխն արծաթէն գերած,
Ջուրն օսկուն բակը կը վազէ։
Էրկու Թուխ աղուոր աղջիկ,
Նոճիպայով ջուրն էն էկեր.
Էրկու փեյլուան կարիճ.
Զին հեծեր, ալյս էն էկեր։
—Աղջիկ, աղբօրդ պահպան,
Նոճիպայովը ջուր տուր, խմինք։
—Ջուրս տաք է, չէ սարեր,
Մեր սիրուն չատ մաքուր է մերինքս։
—Ջուր տուր, Թող մեծ բոլ մեռնինք։
Հաչուլիք Թէ մայր չէ բերեր,
Թերեր է Մրգա Սուլթան,
Բացուեր է վարդ մանուշակ.
Հոտն անուշ չունէր ժամանակ։

Թիֆլիսի բարբառով *).

Ղալխանի մերիքը փուշ ա.
Սրտով սիրածն անուշ ա,
Ալամ աշխարն էլ գինա,
Աղջիկն անխաբարն դուռն ա։
Հանդովը սէլ ա էթում,
Մարկովը ջուր ա էթում.
Գացէք, ասէք մայրաքին,
Ինձ թողէ, ուր ա էթում։
Նոննէքը եար եմ էկէ,
Նարոյիս ման եմ էկէ.
Գինամ եարոս փալմ ա,
Խելուած տուն եմ էկէ:
Թագաւորը բախտով ա,
Իմ եարը չատ բախտով ա.
Կանաչ կարմիր խագնող ա,
Նամեսնիկի կայնող ա։
Ես ու եարս ջահիլ էնք,
Թուղտ ու պայման արէլ էնք.
Թագ ... չխէրի,
Չը թոնեց մենք վայելէնք։
Աղբէր բաղդ անուշ ա,
Բաղիդ մէջը եմիշ ա.
Աղբէր, խաբրդ չը մնայ,
Եարոն քեզնէն անուշ ա։
Նստայ ջունէն կար արի
Դոշերըդ կանաչ արի,
Եարոյս նամակն էկաւ
Վարդերը թառամ արի։
Լուսնկի լուսը տեսայ,
Իմ եարս դուռը տեսայ,
Եկնայած տեղը տեսայ.
Թուանքը ուսը տեսայ.
Արեր դարի վերէն.
Մախմուրը քարի վերէն.
Մէ դասսա վարդ եմ քաղէ,
Աղբօրս եարոյի սրտէն։
Դէյրէն խաղայ տպուրկով,
Սայդաք տարան աչխրքով,
Սայդաք էթալն հաստատ էր,
Գործցնողն Աստուած ա։
Ամպերը կամար կապեց,
Սև մազերն սպիտակեց.
Էտ էլօթլու վատ խօսքը,
Ինձ բերանիցս չը ջոկեց։
Էրնէկ քեզի դարս չունես,
Կազարմէն եար չունես,
Ընէպ եարս համանչէր,
Գիւլալի թելեր կանանչ էր։
Խոլ այվանը քնեն ես;
Ամպխոփային բռնեն ես,
Վարդաջուր կաթաց վրէդ,
Իմացայ քրանիր ես։

—

Սիրել ես, մոռանալ մի,
Մեր դռնէն հեռանալ մի;
Շեկո ջան, Աստուած սիրես,
Սիրել ես, մոռանալ մի։
Սարիցը էկար քարիմ,
Խետ տուրը մըրգուխի քարով.
Խռովիր եմ քեզանէն,

*) Սոյն երգերը գիր առած է Արուսեակ Հայրիւնի. Վաղարշապատ ուխտի օրը. երգած են՝ օր. օր. Հայկանուշ Յովհաննէսեան. Անահիտ Գէորգեան. Մանս Պետրոսեան (15 տարեկան). Թագուհի Միխիթարեան. Անուշ Ցախորեան (18 տարեկան). Բոլոր սա ալ մի մասէլով. առաջին երեքը մի խումբ էին եւ հիանալի ձայն ունէին. Սրանք եաչքի պարերգեր են որ զանազան եղանակով երգում պարում են. մանկոյն միւմնոյն երգերը յօղանկոյն մէջ նստած քաղցր ձայնով եւս կերգեն.

Բոլորի օխտը տարով.
Բամպակ եմ ցանէ խօզան.
Մի եար եմ բռնէ թազա,
Խին եար, աչքերդ ֆոռնայ,
Մինն էլ բռնէ թազա.
Բարակ առուն զուլալ ջուր,
Տղա, արի՛ տար քո քուր,
Թէ ընծի խաւան չես,
Տար ընծէն լաւին տուր։
Բարակ առուն մտեր ես՝
Եարօ, պստկդ չը վէյէլես.
Պանիր կուտամ մի սաս,
Դու իմ ջանի խարազը,
Մենծ առուի ջուրը կտրայ,
Ես դուն էրթանք Արազը.
Գնացի Բողազքեասան,
Էկան, էտևէս խասան.
Էկան տեսան, յետ դառան,
Խալտնս կտրին քսան։
Ցրասդ գլխիտ ծռեր ես,
Փիւսֆիւլ վրէն փռեր ես.
Ինչ արաւ, փիւսֆիւլն արաւ
Ջոռով սաւցի տէր արաւ.
Էդ յուստ էկաւ էդ քամին,
Առաւ խս կանաչ ծառին.
Ծառ ջան, քու բարին մեռնիմ,
Թազա Ճուպարին մեռնիմ։
Քարը կըրի, լցի կալ,
Եարօխս ընկաւ մի սև սալ,
Փառք քեզանէն բարերար,
Իմալ կըլլէր Դոլօ եար։
Սիրտ, ինչ էնիմ քու խեար,
Զոր առուն կապիր գետը,
Որդին մեռնելով յետը,
Թող խէրը չէրթայ խետը.
Ժամի դռնէն դուս կուգէր,
Ֆրանարի պէս լուս կուտէր,
Ես իրղարի կայնած ի,
Դու իրղարէն դուս կիգէր.
Այվան կը տաչա եարս,
Խալամ կը քաշա եարս.
Քու Ցիսան բոյին մեռնեմ,
Տան դոյրը քաշա եարս.
Գընացի, բաղը մտայ,
Ման էկայ, եարս չգտայ.
Բէ գիւման տեղ կորցրի,
Ողբալով էրկու մտայ.
Ասա, կայնեի իր պատին,
Աչմ իր արեգակին,
Աչքս թողնիր ետես,
Արժան չըլնես պսակին.
Շըապկիտ ծալին մեռնիմ,
Երեսիդ խալին մեռնիմ.
Մենակ քեզի չեմ ասում,
Եարան—եօլդաշիդ մեռնիմ։
Նորա տնկի ա ջանս,
Նոր բարտի ա ջանս,
Մի անգէտի ձեռ ընկայ,
Բարաթափ էլաւ ջանս։
Նուռն կլիպ պռօշդ՝
Խնձորի կլեպ թուշդ,
Շէկօ, քու խոգին ուտեմ,
Սիւտակ ու մարմառ դօշդ։
Մատխս մաննիկքը լախ ա,
Տուի թէ նանս պախա,
Կէրթամ, կասեմ իմ աղբօր,
Կուգայ զանա խանչալով.
Արուն թափի թևերով։
Ջուր կուգայ բանձր տարէն,
Կը թափիր սառմառ քարէն
Ով որ դառնայ իր դարիպէն.
Թող խանա գորու եարէն։
Էկար, ընցար մըր բակով,
Կէրթամ, կասեմ իմ աղբօր,
Կուգայ զանա խանչալով.
Կանաչ թեպուր մէյսան ա,
Տեսէք իմ եարը դան ա,
Նոր գալած բեղին մեռնիմ,
Օսկէ թելի նման ա։
Էլնիմ սարը ոնց անեմ,

Քարը գլխիս բարձ անեմ,
Նա էթող գայ, Եա դալող
Ղարիպ եարին խարցնեմ։
Ընցա պատի օլորը,
Բռնեցի Եխճուն լորը.
Աղջիկները խաղում են.
Տաչքուռռունա բոլորը։
Արան տեղը խաւայ ա,
Քախան անել ջաֆայ ա,
Մեր գեղի տղերքը
Ամէքը մէ թայֆայ ա։
Ջուրն էկաւ էրես բէրես,
Բազրկեան Աստուած սիրես,
Որ կերթաս ղարիպ քաղաք.
Իմ եարը խետդ բերես։
Կայներ իր դարկայի դուռ,
Ձեռդ թալիր ղամի բուռ,
Կանչէ՛ սիրիր ու չառար,
Արեգ ըլնի ժուռ ու մուռ։
Օխտը զօր կայնար չաչէն,
Ալի թափ տանք էս ֆեչէն,
Էդ քու արած ղարցերը,
Խապար առ սրտիս մէջէն:
Ասղ չեմ, ասղի ծուտեմ,
Հաց ու պանիր բեր ուտեմ.
Տղա չեմ որ ամաչեմ,
Աղջիկ եմ, խաղ կը կանչեմ։
Մեր այվան սիվտակ այվան,
Շան տղէն իշուց հայվան,
Ինչ անեմ սիվտակ այվան,
Շան տղէն իշուց հայվան։
Փոցխս ծիրանու կոթան,
Սիրտս եարալու խոցա ա՝
Սիրտս դնեմ սրտումդ,
Իմանաս ղարցը ոնց ա։

* * *

Թազեր ունիմ իլուանի 1),
Քամին թել թել կը տանի,
Կը տանի ալուան քարին,
Շատ բարև հեռու եարին։
Կարմիր քարը տաշած ա.
Բոյըս ղալմով քաշած ա.
Ինչ անեմ ղալմով քաշած ա,
Սիրտս հալած մաշած ա։
Կարմիր չորը դաւ կլնի,
Ղարիպութեն ցաւ կլնի.
Քու մէր որ քեզի ուզայ,
Դրկցի հետ լաւ կլնի։
Ա՛յ տղա, ալ կապաւոր,
Խի՞ չէլար կարդացաւոր.
Ընչի սիրիր ու չառար,
Դատաստանիս պարտաւոր։
Այ տղայ գիր անել տուր,
Մի մատմ գիր անել տուր,
Իմ հէր քե աղջիկ չի տայ.
Թուխ քեանֆուլդ վեր անել տուր։
Կանաչ յարտը հաց տարայ.
Եարս տեսայ, յետ դառայ,
Խնձոր տուեց, ես չառայ,
Էս ինչ բէբախտ եար դառայ։
Արան տեղը չայիր ա,
Չայիր չէ ամայիլ ա՝
Ղարիպ գեացին սիրել եմ,
Եարա՛պ նանս ղայիլ ա։
Այ տղայ, դու դէսն աշա,
Շլապն աչքերդ քաշա,
Ընձնէն քեզի խեր չկայ,
Խողերը գլխիդ քաշա։
Մեր կալի տեղ խան ա,
Թուրքի գալող կը խանա.
Աստուած սիրող բան մասէք,
Հայրիկս դիւանն անայ։
Ծիրան եմ ծառի ծէրին,
Աղջի՛ էկայ քու սէրին.

1) Ասել է Սիմիզար Տէր Կարապետեան։

Էկան քամիներն տարիան;
Ծախեցին դոլմաչիներին:
Կաքաւ եմ հաւքայի գունով,
Իջա կալերն Երոտով
Խափեցիլ խնկես առմարի:
Ծառ խաւթիլով Երամով.
Իմ եարը դիւրեան բաշի;
Սապոկներն բորկ կաչի;
Էկաւ, դունով անց կացաւ,
Զարեցի՝ բարով մաչի:
Քեաւկայ հա Եալլալանց ըլի՝
Վերի Փուչէն բալեն ըլնի,
Տենի եարս դալիս ա,
Զոքի չաւմէքը քաչի:
Ղուշը վերեւով ընցաւ,
Սիրին խնձորով լցուաւ.
Սիրու միջի բուն եմ,
Մուսէս անդի հաւքն եմ:
Այ տղայ, էրտմն անի,
Օչխարի բերիմն արի;
Իմ հէլ քո աղջիկն չի տայ,
Աղբօրս թեւոմն արի:
Ատա մալը մի տանի,
Մեր սիրուէն մի հանի.
Սիրեր ենք իրուր կանուխէնց.
Իքբախտութիւն մի անի.
Լուսնակն էլաւ, լուս գնաց;
Իմ եարը Թիֆլիզ գնաց.
Թիֆլիզ էթայ վանքայ էր,
Զոլաը տարի վանքայ էր.

* * *

Ղումկլու գիւղի պարերում *)

Խնձոր ունիմ ալայ ա;
Ալայ չի, ալուալայ ա.
Սիրտս քանում եարայ ա,
Թաքուն չի աշխարայ ա:
Խնձոր ունիմ կծած ա,
Անուշ եարի դրկած ա;
Աղբէրս ուղին չտուի,
Անուշ եարի դրկած ա:
Մազը վերուցի գացի ցան,
Ձեպիցս խնձոր հանի.
Տեսայ իմ եարը դան չէր,
Սրտիցս հոգոց հանի:
Նարնջի թել—թել մանած,
Իմ տեսած քու հաւանած,
Էս օր իրիք օր չեմ տեսէ,
Ինչ օր Լանկու բալանած:
Իմ եարը գնացը դրեց.
Գոտիկը նուշը դրեց.
Մեռնիմ քոյոր եանճիլիդ,
Ծլապէն ծուռ ես դրէ:
Ղալամի կոթը ոսկի,
Մայրիկս չեկաւ խոսքի.

*) Սոյն երգերը գրի եմ առել Ղումկլուի յայտնի երգող եւ պարող երեք աղջիկներից. եթէ սրանք մի պարի մէջ չգտնուեն, ոչ մի մեծ աղջիկ չի խաղայ եւ գիւղի երիտասարդները չեն գնայ պարողներին նայելու. Այս գիւղում սովորութիւն կայ բացի տօն օրերից եւ կիւրակի օրերը աղջիկները հաւաքուում են մէկի կալը կամ դուռն եւ կամ ամբարը, որ 1/2 վերստ հեռաւորութիւն ունի գիւղից, եւ պարում են զանազան եղանակներով. կանայք, հարսներ ու երիտասարդներ հաւաքուում են միայն լսելու եւ տեսնելու. եթէ պարը տաքանում է եւ աղջկերքը շատ ոգեւորուած են երգում, այն ժամանակ գիւղի ջահելները մասնակցում են պարին.

Արուսեակ Հայկունի.

Ինձ համար անուն էղաւ,
Իմ անտէր բաղդս բռնի։
Զանկիլ քարը դոռուղ ա,
Եայղաղն ճամայիլ ա.
Ես էն գեաղին աչք ունեմ,
Տեսէք նանս դայիլ ա։
Ալագեազու ճաչէքը
Քրտու կնկայ փաչէքը
Ափսոս էր սլաղ աղբրներ.
Որ կը խմեն կեաչէքը։
Արագն ա տուե գեամին,
Քեզ քաշա կարմիր քամին.
Ով որ յենի իրղարէն,
Հանա գորուլթեն եարէն։
Ղարաֆիլ փառչա միջու.
Ել նստի մարդա միջու.
Ես իմ եար կը ճանչնամ,
Օխտը բոլուկ մարդա միջու։
Ել նստի մարդա միջու.
Ես իմ եար կը ճանչնամ
Օխտը բոլուկ մարդա միջու։
Ղոփ քարը տափակ էր,
Էդ չան գեաւէն ճափակ էր,
Մէր ու քուր, մի մեղդրէք.
Աղջկութեն փափակ էր։
Լչակ եմ գցե պաղը.
Ինչ եմ անում անպաշը,
Ես եմ սիրե, ես կպռնիմ,
Ինչ է էս դալմադալը,
Սճաքը լալս ա,
Բալնիսը կախս ա,
Աղբէրս էկաւ,
Սիրտս ուրախ ա։
Ղարիպ եմ ... չունեմ,
Ես հիւանդ եմ, ճար չունիմ,
Վախենամ ղարիպ մեռնեմ,
Վրէս էլ ուզէլ չունեմ։
Էս ինչ բան էր էրեցի,
Իմ սալ դէյրէն կարեցի.
Դակմա մարդու հաւան չի,
Դեանի Կողին բարեցի.
Իմ դոշին ա ֆիշանգը.
Ես ինչ յէրաւ յէլնեմ գեաղ.
Սապիտ քու բայէն մեռնի,
Կորաւ իմ յէրեսատեղ։
Զարքիր ընձի խափեցին;
Բազում ապուռս թափեցին.
Քահանայ բոլէդ մեռնի,
Ընձի զոռով պսակին։

—

—Բոստան եմ դրե համեմ,
Լեզուդ դիր բերանիս մէջ, ծամեմ,
Հոգիս հոգուդ մէջ քամեմ,
Խարեխդ սրտէս հանեմ։
—Կայնի, սէյր անեմ, սէյր անեմ։
Թառլան բոյիդ սէյր անեմ։
Բոստան եմ ցանե բազուկ,
Տան տղի խօսքը նազուկ.
Բոստան դրի լախանայ,
Տան տղայ նալախանայ.
Բոստան ունեմ հապիպի,
Տունն աւիքէ սապիպի։

—

Արև դիպաւ գերանին.
Մեռնեմ Տէկ աւերանին,
Ջուխտակ կաքաւ դուրս էկաւ,
Կանաչ խոտը բերանին։
Արև դիպաւ կանաչոց,
Մանտր թիթեր երեսոց.
Բաց քու դուկմէն, ցամ քու ծոց,
Ազապ տղին դառց ու խոց
Հաց եմ թխէ փուփուլի,
Դէչ կիսուրը քըռըրի.
Անեմ, չանեմ, չիմանայ,
Էրթայ Աստուած քընընայ։
Օսկին չարիքն մրանք արանք,
Մուրազդ տայ Ղզլչաղայ վանք.
Օխտը տարի քանտերիմ կեանք,
Արե, արէ, դու իմ եարն ես։

Մատիս մատնիք արծաթ ա,
Կերածս հալալ կաթ ա.
Սարօ, ընծի բռն մասա,
Դոստ ու դուշմանս չատ ա։
Սարի ջուրը սառել ա,
Ղամէն ձեռս տարել ա,
Բաղի միջի չէկ աղջիկ,
Ուշքս միտքս տարել ա։
Ալագեազու կող ձունը,
Եարս Գիրգորու տունը,
Դէ հարցրէք հալն ինչ ա,
Պուճուր աչքեր Սկունը։
Իմ եարը հանեցին տեսայ,
Ջրերի բանեցին տեսայ.
Իմ եարի կայնած տեղը
Թոփ չինարի ծառ տեսայ։
Բոստան դրի դարի կող,
Պրկէր էդ Մասսարի հող
Էրկու բէբախտ քուր անէի,
Կասէր՝ գնա, եարիդ ջող։

—

Կապուտ քուռակ տակիս ա,
Ալ բաղդասին բոկիս ա.
Կգա ծովը, ջուր խմի.
Շէկ ճեանճիլ Թիկնքիս ա։
Արագ, ճամբէդ ղաչաղ ա.
Գառի ոտներ շաչալ ա.
Հրեղէն ձին հեծնելուց,
Աստուած բանդ յաջողա։
Արագը հեչտացեր ա.
Ճամբէքը կոչտացեր ա,
Արագ, մոհլաթ տուր, անցնեմ,
Մուշտարին շատացեր ա։
Բաղի միջի սէրն անուշ,
Աղբօր պահած քուրն անուշ.
Մէրիկ ջան, միք մեղդրէ,
Սրտով սիրածն էր անուշ։

—

Լուսնկի բակը, մեր օճլէ ակը.
Ըս օր կազմեցինք եարիս պսակը։
Մատնիք մաղազէն բոլորը պուգ ա,
Հայի սալդասը Թագաւոր կուզա.
Հագներիմ լաթը, ծոցիս սհաթը,
Սիրեր եմ, կառնեմ թաւասը,
Լուսէ հաւատը։
Արի, խնձոր դու արի.
Զամչի խնձոր, դու արի,
Իմանամ եարս ա ղրկե,
Կը պահեմ հազար տարի։
Ծառի տակի խովն անուշ,
Աղբուր կէլնէր խումն անուշ,
Այ նանի, քե եմ ասում,
Սիրած եարի ձէնն անուշ։
Արնքոտէր էր ծով գեօլն,
Ընկերտիք. Աստուած խանչէք,
Աղբէր խառնէլ մուրազին,
Արնքոտէր անտէր գեամին։
Էս օր ծոմ ու պախս եմ.
Ազիզ աղբօրս խամար.
Էս ինչ բէբախտ ծով գեօլ էր։

—

Էս օր գութանը մերն ա,
Դէրի զընգ զընգ, դէրի ջան.
Գեարտանի մառճան.
Մաճ բռնողը իմ հէրն ա,
Դէրի զընգ, դէրի ջան,
Գեարտանի մառճան։
Չատր եմ դրե սարին.
Թո՛յ տօղլի մեր Թագի դիլպար.
Վատա եմ կտրե ղարիպ եարին.
Դէրի զընգ զընգ, դէրի ջան
Գեարտանի մառճան։

—

Լայլուղս կոլաւ ձեր դուռը,
Ձի կտրի սրտիս մռմուռը,
Բրադլըս ընձի գցեց Քիւռը,
Սիրուն տղայ, տուր լայլուղս։
Քու բոլորը դու քեզ նայիր,
Լայլուղդ մտիցդ հանիր,
Հարցնելուց ընձի նայիր,
Սիրուն աղջիկ, քու լայլուղը։
Քու հէրանց տուն վերցրին սուր,
Քու խնդիրքդ դարձնեմ զուր,
Քեզի կու տամ իմ պզտի քուր,
Սիրուն տղայ, լայլուղս տուր։
Քու լայլուղը իմ մօտ չը կայ,
Օրդում կուտեմ, Աստուած վկայ,
Ով որ գտե, թող բերայ, տայ,
Սիրուն աղջիկ, քու լայլուղը։
Գնացի բաղը լուացք,
Լայլուղս տեղպատեղ մնաց,
Սիրուն տղայ, դու քու Աստուած,
Քոփակ օղլի իմ լայլուղս։
Ինչքան կանաչ էր քու ճիտդ,
Ինչքան բարձր էր քու քիթդ
Հերիք փառես դու իմ սիրտը,
Սիրուն աղջիկ, քու լայլուղը։
Լայլուղս նարի բաշխած էր,
Պատկերքս վրէն քաշած էր,
Ալ ապրշումով նախշած էր,
Սիրուն տղայ, իմ լայլուղս։

*
* *

Սարերը սռսռում ա։
Էրկանքը գռգռում ա,
Ես իմ սիրածը չառա,
Իմ սիրտը մռմռում ա։
Կաքաւ եմ քարի միջի,
Կարգում եմ քարա միջի,
Աստուած ջան, մուրազս տաս,
Էս գալող ձմրան միջի։
Ջաղաջի դուռը չիմանն,
Աղբօրը չկայ իմանն,
Քուրը քաշեցին տարան,
Մէ բերան չասեց նամանն։
Մեր կալի տեղը փուս ա,
Քար կը թալեմ կը սօսա,
Իմ գինը հազար մանէթ,
Որ կանայ ընձի ուզայ։
Ես ղուշ իմ թեւս դեղին,
Մտն կը գամ նանիս գեղին,
Նանս տեղակս չէրաւ,
Ցետ դառնամ համբալս գեղին։

Ալագեազը ամպել ա,
Գիրգոր ձինը թամքել ա,
Գիրգորի ձեռ ճայեր,
Տիրունի ծծի խայեր։
Մէջքիս քեամարը ծուռն ա,
Աչքս զարգեարի դուռն ա,
Զարգեարը չատ փարալու,
Սիրտս թողեց եարալու։
Ծառի տակիս մանիշակ,
Նմանիս գարնան ծիծակ,

Եօթը քոմաճ պարտք ունեմ,
Կը ղրկեմ եարիս մչակ։
Աղջի, ճրագը լուս տու,
Ջեպիս մէյտէքը դուս տու.
Հալալ կաթնանկեր ես դու.
Պագմ կուզեմ, իրիկուս տու։
Ծառի տակին մաջեր եմ,
Լաչակս լուացեր եմ.
Ջուաղ արէք իմ Նանին։
Ամանը մնացեր եմ։

*
* *

Սաճկիւղյալ գիւղի բարբառով *)

Թելլի, բելլի եարս
Սալղաք չէլնի եարս 1)։
Արեը տարին, կաքաւը քարին
Ծատ բարև տարէք իմ ղարիպ եարին,

Բարխուտար էլնի եարս 2),
Խի կուգայ կելնի եարս։
Ալագեազ բանձր սար է.
Ոչ եղներ էման մարիկը
Սիրած սիրածին չեն տալ։
Ղարիպ եմ տեղս քարէ,
Հիւանտ եմ, չատ անճար եմ.
Հեռու տեղ մարիկմ ունեմ,
Թե չունիմ որ հասնէի։
Աղջի, կայներ ես քուչէն,
Թափ տուեր ճխտուն քեչէն,
Էդ քու էրած ղարղիրը,
Խապար տուր սրտիս մէջէն։
Սուրբ Ակոբ Համբու վրայ,
Էրթող գալողն է մէ սրայ.
Ես մէ պուճուր եար ունեմ,
Հրեղէն ձիու վրայ։
Իմ եարն էլաւ ու գնաց,
Դէմ տաւու սարերուն, մնաց.

Հալալ թողութեն չառաւ,
Դարտ էլաւ սրտիս, մնաց։

—

Թէլլօ ու թէլլօ ճիրին թէլլօ,
Աղջի, ես չարմաղ ունեմ,
Մեղանիս սարուպ ունեմ.
Մեղանս փայրեզով է,
Իմ դէյրէս անդաղով է։

—

Եար ջան 3), ես ղարիպ էի,
Ձիտէի վեր մայլէն է ձեր տունը։
Գնացել իր էկել իր.
Ձարուխ գիւլպէն խագել իր.
Ո՛չ էրնէկ քեզի եար ջան,
Քարը մօրէն ջոկել իր։
Իմ նան ընձի դակել էր.
Դուռն էրեսիս փակել էր.
Էրնէկ աւազանին մեռնէի.
Մարիկիս մօտէն էլնէի։
Իմ նան ընձի բերել է.
Նխտուն բալալ էրեր է.
Ընձի մոռանալու իր.
Ով մոռանայ, կը քոռանայ։
Ընչի գրիր էգ դուռը.

*) Ասել է Ջանաղեան Խաչատրեան։ 1) Ամէն տան սկզբին կրկնել։
2) Ամեն տան վերջին կրկնել. 3) Ամեն տողի սկզբում կրկնել։

Գոտիկդ դրիր նուռը,
Ես կայնայ ջախջի դուռը,
Ընչի կայնար կտուրը։
Եար ջան, ջաղջի կտուրը տարթ էր,
Գոտիկս լէքը վարդ էր,
Թէլիկ մէլիկ ադրէրս,
Գոտիկս չարած վարդ էր։
Էս օր նորել է,
Ձեռնէս բանմ կորել է,
Առաւօտ դրաւ դաւ,
Սիրել ի, ձեռնէս թռաւ։
Ընչի սիրեցիր. չառար,
Կրակ թափի քու գլխին.
Ես ի սիրե ես կառնի,
Չէյ թողնէ հալղը տանին։
Ես սիրի հալղը տարան.
Լացաւ, գիչերը տարան։
Գնացի Ղարսայ վաքան,
Բերեցի քոփով քեամթան.
Որ իմ բասս էլաւ.
Էնէ ազիզին պատան։
Հաւը թռաւ, թառն էղաւ,
Իմ բանը դաւով էղաւ.
Մեռնէ սապիպի բալէն,
Եարօ, դուշմնի սրտովն էլաւ։
Հաւը թռաւ, թառն էլաւ,
Իմ ձեռը բանըմ չէլաւ.
Էդ դուռը դնելու չիր,
Էդ նուռը ուտելու չէր։
Գիւլպէն գցի. յընչի գցի,
Ես քեզի միտս էյ գցի.
Էս կրակը սիրտս լցի։
Գնացի չայը լուացք,
Մատնիքս օսկէ ջրած.
Փալխ ընձի ճոմար պիտէլին,
Եարաբ, ես ումն եմ գրած։
Ննոպ, ընչի հեռացար,
Փեչքդ գլխիդ, մոռացար.
Փեչքդ գլխէդ կորել էր,
Ճարդ քեզնէն հորել էր։

Ընչի նստար դօշակին,
Ուչքդ ու միտքդ փէշակին։
Քնայ, էրազ տեսայ,
Չայիրը ջոկած տեսայ,

—

Ջուարի ամպի հովը,
Ուխտ էթալուս հագար մովը,
Բռնած խաղցած խաղիդ ղուրպանն,
Ապրու զամանն չպրմայ եաբճ
Ի՞նչ սիրուն քու սրտայէն.
Դեղիլար ֆի, քոֆմա պւըն,
Ընքներուդ կամարին ղուրպանն։
Հուրի մալաք ես դու զաքի,
Ումրդ բալան էրկր զաքի,
Գռնկներէդ մեղր կաթի,
Խառ ու մառ եամըղիդ մեռնեմ

—

Այ հովն ընկաւ, հովն ընկաւ,
Ջուխտմ մարալ ծովն ընկաւ.
Կաքաւը կանէ քարին,
Կտուցը լէքը արին.
Մէ լայլուղ վարդ եմ քաղէ,
Կը ղրկեմ իմ եարին։

—

Արեգակն թև ադրէր,
Շաքար մաղեմ, կեր, աղբէր,
Շաքարը մաղած պիտի,
Ղանդով չաղախած պիտի։

### Բագրան գիւղի բարբառով *)

Ծովէն էկաւ հով քամին,
Ձանձաղը ծովի գեամին,
Հեռու տեղ մը եար ունիմ,
Հասրաթ եմ ծոցի համին։
Սարերի սինձն ինչ է,
Կաթն ու բրինձն ինչ է.
Սիրել ենք յիրաւ կռանինք.
Քու մօր պատռելիքն ինչ է:
Սարէն էկաւ ձիաւոր,
Սաղմոսը ծոցին սավոր,
Սաղմոսը գիւլ էր դառէ,
Լեզուդ բիլբուլ էր դառէ։
Սարերի հովին մեռնիմ,
Շէկ եարի բոյին մեռնիմ,
Իրեք օր ա չեմ տեսէ,
Տեսնող, աչքերիդ մեռնիմ։

* * *

Արօտի ջրէն անցնիս,
Նխշուն մուրազիդ հասնիս,
Խօսքս լսի, չէրեցիր,
Անէծքով տուն չհասնիս։
Օխչարների բոկը,
Դէմ արիր սէլի ակը.
Վեց որ իմ սիրածն առնի,
Ձվելէ գլխու թագը։

* * *

Էշխունածդ չատ չատ է, 1)
Հեռու մնալդ վատ է.
Քեզ համար է օր ու գիշեր,
Վառուող տղէն մի հատ է։
Էկաւ սալդըի թուղթը,
Սուրբ Գէորգի լաւ ուխտը.
Մենք ենք էրկու ջուխտը,
Գնա բարով, յետ արի։
Բագրնու տեղն արան,
Վեց տղայ ջոկին տարան.
Տէրերը կապին վարան,
Գնա բարով, յետ արի։
Ղարաբինա չի ծալուի,
Ջաբախանէն չի պարպի,
Բագրնու սալդաթներ,
Հէչ մի քաղաք չի ճարուի։
Աչքերդ խաժ ու մաժ է.
Մէկ մէկ մեծ աշխարհ կաժէ.
Սև աղեղնակ ունքերդ,
Բեռով մարգրիտ կաժէ։

* * *

### Ղարսայ Նախիջևան գիւղի բարբառով 2)

Հայլուս յետևը մոռ է (կապոյտ),
Տեռէքս եարս Տիկնոռ է.
Եարիս հենա գործ ունիմ,
Շալկովնին իրա քամն է։
Լուսնակը լուս է տալում,
Բոլորը բաց է տալում.
Զօպան օխչարդ մորթէ,
Քանի չուն գեաղէն հոս է։
Կուրսուչկէն դէյրես լաւ է,
Աղջի քեաբիպդ ծալէ,
Ջայիրները չափել եմ,
Հայի տղին խափել եմ.

---

*) Գրի է առել Գուրգէն Հայկունի. Ասել նաչատուր Ցարութիւնեան Բագրան գիւղացի.

1) Ասել է Գէորգ Ղազարեան Բագրան գիւղացի.

2) Ասել է Հայկանուշ Միրաքեան. 9 տարեկան.

Տուէ, գարը էլիլ եմ,
Բուրսոյ դեյրեն ձևել եմ։

*
* *

Մազերս համբա համբա,
Աղբօրս ղըկի համբա.
Ճամբէն օգնութեն չէրաւ,
Սուրբ Կարապետ պահապան։
Ցուս ունիմ կարմիր վանքէն,
Եարս պըծնի չարքէն։
Քաղքէն էկաւ սէլերը.
Եարիս չուլխու թելերը.
Ցուչիկ քչէք սելիրը,
Կապիմ չուլխուս թիլերը։
Բուխարիկի կողքի ձունը,
Անուշ էր հօր տան քունը.
Բարով կուգար աչունքը,
Քեզի տանեմ մեր տունը։
Լուսու աստղն յելել է,
Նանի, եարս քնել է.
Ձէն մի տաք, քըռնել է։
Աղջի. ճրագը լուս տուր,
Ջեբիդ մեվէքը գաւս տուր։
Մեռայ բաղէն էրթլէն,
Ջրերու հետ խաղալէն։
Կայնել ես բաղի մէջը,
Ոտներդ ցաղի մէջը.
Կանչէ, կանչելուդ մեռնիմ,
Գնացի սարը անձի,
Ոտս ընկաւ օձի լեղի.
Ի՞նչ անեմ հօրն ու մօրը,
Ինձ տուին եբում գեաղին:

*
* *

Պզտի դուռն՝ յէրկէն դարէք,
Մենծ աղբօրս տուն տարէք.
Օրբանճիին քուն դրէք,
Ջիբզ պզտիկին տարէք:

Ընձի տուէք սև տղին,
Շէկի ճենճա կը փոխեմ։
Պիջի աղջի, զալմ ես,
Մազերդ սխալըմ ես։
Կորի՛, գնա՛, չուն գեաղա,
Ես աշխատեմ, եարս ուտէ,
Քանի որ ջանս սաղ է.
Ա՛յ տղայ, կորի գնայ,
Ամպերու հովին գնա։
Տղա, սև ես սևաւոր,
Դու ես մեր մայլին սավոր։
Ամպել է ամպի վրէն,
Ամպ է եայլեցոց վրէն.
Թո՛ն, Աստուածդ սիրես,
Թո՛ն, մի գայ եարիս վրէն։

*
* *

Ծիրան եմ ծառի ծէրին *),
Աղջի, վառայ քու սէրին.
Երնէկ ծոցդ մտնողին,
Դաստա ծամեր բռնողին.
Արի, էրթանք էս վանքը,
Վանքը քանդէ քու կեանքը։
Բաղ ու բոստան եմ ցանէ,
Գութան վարենք պտերը.
Զթացնենք ճաները։
Ընձի քեզէն ջոկողը,
Ձեանգեալ ընկնի ծծերը։
Կաղզւնու ձորէն եմ,
Մեծ բաղի խնձորէն եմ.
Քամին զարկեց, վեր գցեց,
Անգէտ մարդը վերցրեց։

*
* *

Կաղզուան ձորի մէջ է,
Պաղ աղբուր հորի մէջ է.
Էդ քու չամամ ծծերը,
Ախլա խնձորի մէջ է։

*) Ասել է Գրիգոր Աւոեան Ղարսա Նախիչեւան գիւղացի.

## Զ.

# ԵՐԳԵՐ.

## ՎԻՃԱԿԻ ԵՐԳԵՐ.*)

**Սուրմալուայ Կուլփ գիւղի բարբառով 1).**

Ծաղիկ եմ քո ծառէն եմ,
Վիճակի մէջի թառէն եմ.
Քամին վէր քցից,
Վարանս մօլլեր եմ,
Այ օրան—օրան ծաղիկ՝
Կարմիր ու տորան ծաղիկ՝

Տարին մէ խեռ ես գալմ,
Գամ քեզի գովամ ծաղիկս
Ծաղիկ, ծաղկավանայ եմ.
Ասըլ Էրեւանայ եմ,
Տարին մէ խեռ ես գալմ
Թազա Նուպարխանայ եմ։

*) Վիճակի երգերը չորս կարգի կը բաժանուին. որպէս հասւ. ամեն երգեր իրենց բաժանմունքներն ունեն. Առաջինն է «Ծաղկաքաղը», որ հարսներ ու աղջկունք գոյնզգոյն ծաղիկները գտնելու համար մարգագետիններու մէջ կերգեն ու կցցանեն. Երկրորդ՝ «վիճակի կամ փարչի ռովքը» փունջերը, որ փարչի մէջ դնտեղած են. մի յարմար վայր կը ժնեն, շրջապատեն. պարեն ու կերգեն. Երրորդ՝ աղջկանց խումբը փարչով միասին ամեն տուն կայցելեն. իւրաքանչիւր տան յաջողութեան համար յարմար երգեր կասեն ու նուէր կը հաւաքեն. Չորրորդ՝ «Ծաղկահան» կամ «Վիճակահան», որ փարչի բոլորը կը շրջապատեն. պարեն ու կերգեն։ Ափսոս որ տեղ տեղ խառնուած են իրար. իսկ կան կողքիպած (քիչ) տեղեր. ամեն երգ իր յարմար տեղը կերգեն. Եթէ յատուկ ուշադրութիւն չդարձուի, այն եւս պիտի յաճախուի կամ անհետ կորսուի.

1) Գրի առնուած է 1891 թուին.

Անձրև էկաւ չաղալէն՝
Ուռի ծառը դողալէն՝
Հորէս էկաւ իմ աղբէր,
Ալ ձին տակին խաղալէն․
Ագռաւ վերև ամպեր ա,
Իմ աղբէր ուր ձին թամքեր ա,
Գացեր մեյտան կռուեր ա,
Անձվեր էկեր թրչեր ա,
Արև առեր չորցեր ա,
Քանց ճաֆուր վարդ բացուեր ա։
Ծաղիկ ասեմ ու զատեմ,
Լցեմ տոպրակ ու խցեմ,
Առնեմ ընկնեմ գեղէ գեղ,
Բալճի մէ խատ ճարեմ։
Կողբայ բերդը բլեր ա,
Սարս տակին քներ ա,
Ձէն տուր, ձէնս չառաւ,
Մեկեր բարկս տուեր ա։
Կողբայ քարը ղոշայ ա,
Միջի մարդը բօշայ ա,
Մաշիկ դրէք, դուս ընեմ,
Ինձ էլ չասեն բօշայ ա։
Կողբայ քարեր ղօշայ ա,
Սարերին շուշայ կասեն.
Քօլերը բանաւշայա։
Իմ նանը մածուն ա մէրեր,
Փէսիկին կանչեր բերեր,
Անտէր մնայ սև կատուն,
Փէսիկին փայն ա կերեր․
Խնձոր ունիմ կծած ա,
Ջուրս բոլոր արծթած ա,
Սարս ուզեց, չատուի
Անուշ աղբօր տուած ա։
Աղբէր ունիմ անուշ ա,
Խալած արծաթէ շուշա,
Ծառի գլխին կայնած ա,
Ես ասի բառյան ղուշ ա։
Օխչարն արեր եմ դէզը,
Ջոկեր եմ ալագեօզը
Լայլուխ օղորկայ նիշեմ,
Թափ տու ճեանճիւլիդ բօզը։
Ալ տղա, յէրավ նի արի,
Օխչարի բէրոմնի արի,
Խէրս քե աղջիկ չի տայ,
Վերին կալերովն արի։
Ալ տղա․ արի խօսա,
Բկիդ բաղդաշին խասս ա.
Խէրս քե աղջիկ չի տայ,
Աղբօրս արաղ ասա․
Բօզ ձին ինչ անըմ նալը,
Խօրօտն ինչ անմ խալը,
Ես սիրեր եմ, ես կառնեմ,
Ինչ անեմ դալմաղալը․
Ղազէի բաղչէն ուռի ծառ,
Էղայ, արի, ընծի առ,
Պալապանչու բարկը տուր.
Խռովեր եմ խաբրս առ։
Ջայիրին միջի ծիլ խոտը՝
Պալոյի անուշ խօտը՝
Կոտռի դիւշմնի օտը.
Ձը թողեց գէր իմ մօտը։
Էրևան ձորի մէջ ա,
Սառն աղբուր մէջն ա,
Ալէքի թուխ ճեաճուլը.
Դրաֆ շլապկի մէջն ա։
Ցովէկի դուպան բանձր ա,
Էղայ, Պոլոն քաղցր ա,
Շաչոյ Գէւորին ապրի,
Մին օր չասիր փախցրայ․
Առաւօտ բարի լուսուն,
Քո գինը խարիր իցցուն
Խամրի դիրի վեր ճուրաուն։
Գացի արամր, բռնի լոր,
Աղջիկ առնա Լայլի ձոր.
Կը մանէր կարմիր խնձոր․
Առաւօտ թափեր փոշին,
Իմ դօշ զանեմ քո դօշին,
Ինչպէս նալուէն մըջ լօշին․
Առաւօտ թուտիր մուխ.
Թալեց սարփէն, կախեց պուխ.

Աչքեր բադամ, ընքեր Թուխ
Առէր Մուշն ու Բուլանուխ։
Ծաղիկ տամ ու ամաչեմ,
Ծլեմ ծաղկեմ ու կանաչեմ,
Մէյդան բացէք, դաւս ըլնեմ,
Թազա եարին ճանաչեմ
Օլոր մոլոր ճամփներ,
Մչքակոտոր ազպներ,
Կանանչ կենան աղջկներ,
Չէկան տարան վիճկըներ։
Բաղչի միջի վարդ ա,
Բաղչի չունը սարբ ա,
Աղջի, դու կամաց խօսա,
Տալյա տեղ կլլի մարդ ա։
Քարափի գլուխ տղ ա,
Բոլորը խուրմա բաղ ա,
Աղջի, մուրատէտ կտրի
Հալա սիրածդ սաղ ա։
Սևահողի քամին ա,
Սիւտակ ծովի գեամին ա,
Որին սիրես, բաց Թողես,
Էն էլ ընդրա համին ա։
Աստղներ ցերեկ ցերեկ,
Կիւմրուց Նուպար բերէք,
Լայլուխս տամ մուշտուլուխս,
Եարիցս խապար բերէք։
Մանիքը մատիս լախ ա,
Տուներեմ եարիս, պախայ,
Իրեք օր իրեք գիշեր՝
Իմ եան ընձի դոնախ ա։
Կապուտ քուռակ խէծեր եմ,
Կեսուկին մօտացեր եմ,
Կեսուկ, ինձ մէ ճանփայ տուր,
Իմ նանին կարօտցեր եմ։
Մանիքը մատովս չի,
Սիրածս սրտովս չի,
Սապիպ, քո բալէն մեռնի,
Ես ընդու լայեղին չի։
Էս գիշեր լուսնակ գիշեր,
Կեռ ընքեր, կարմիր Թշեր,
Աստուած պախայ քու աղբեր,
Տասնուր տու, գամ էս գիշեր,
Ջայի ափին սազ պիտէր,
Միջին օրսէֆ, ղազ պիտէր,
Ինչ անեմ կեսէ կիւսէ,
Իմ եարը շապազ պիտէր։
Ջայի ափը մանտր ուռ,
Սիրած բռնելը չատ մռմռուռ,
Աչխար ասաց—տղէն ծուռ,
Իմ սրտի մէջ նուր ու դուռ։
Կայներէս, մի կռանայ,
Մեր դռնեն մի հեռանայ,
Եար, Աստուածդ կը սիրես,
Սիրեր ես մի մոռանայ։
Բաղչի բոլոր դամիռ ա,
Բաղչէն լիքը եմիշ ա,
Նանի ջան, մեղ մի դնէ,
Որտի սիրածն անուշ ա։
Տամբուլի կոԹը քերեմ,
Կայնի, քե գինի բերեմ,
Ձեռս վզովդ քցեմ,
Գնացած խեյքդ բերեմ։
Տամբուլի կոԹը ԹԹի,
Օխտը կով ունեմ կԹի,
Ո՛վ որ իմ սիրած սիրայ,
Խօքին դժոխքին փԹի։
Էս սարը բանձր սար ա,
Տակը զննլած քար ա,
Ես քե Թազուն սիրեցի,
Էս ով խանեց աւֆարայ։
Սարն ընցի էն եանը,
Ինչ անեմ դիւնի մալը,
Տղէն տես, աղջիկը տու,
Ջեյնեմ Թէ չլի հալը։
Աղջի, ինչ լաւ մազ ունես,
Սուխարի փարվազ ունես,
Տղէն աղջիկ տեսնելուս՝
Ինչ չատ եռխին նազ ունես։
Ինչ լաւ ա մեր բամպակը,
Խով ա կանափի տակը,

Ղարաֆիլը կեզլին է,
Իմ եարը ձէր գեղին է.
Մէ դաստա վարդ եմ քաղէ,
(Հրէս) Հորէ եարիս ձեռին է։
Գիշերը դուռ էլայ,
Լուսնեակն անուշ կը ցոլայ.
Կը ցոլայ Այմա սիրին,
Լաւ բարի անուշ եարին։
Կայնել ես բոխա բախա,
Ջանմանիդ թեւը կախ ա.
Ճէկ աղայ, սիրուն աղջիկ,
Կպել են իրար եախայ։
Կայնել ես վանքի հողին,
Քամին տայ դուշիդ մազին.
Էրնէկ քու ծոց քնողին,
Դաստա մազեր բռնողին:
Կանանչ արտի ճեանմարը,
Ո՞վ է տեսէ իմ եարը,
Ցորեկ տունին իրղարը,
Գիշեր ճոչեցին սարը։
Ջուխտ գութան սար կը բանի,
Ճէկ աղջիկ հաց կը տանի.
Մէկ կերթայ մէկ կը կայնի,
Ախ ու իման կը տանի։
Էշմանը մէ ճոչ անցաւ,
Քոչը տուաւ մէջ անցաւ,
Սիրտս մէ կրակ ընկաւ,
Ոչ էրեցաւ, ոչ անցաւ։
Կայնել ես պատի տակը,
Գրել ես մանուտ ակը.
Եարիս զրկած բալիկը.
Դրել ես Յաֆիզ տակը։
Արխալուղդ կարել եմ,
Դօշդ կոճակ շարել եմ,
Ճան աղայ, կուրի գնա,
Քեզեն լաւը ճարել եմ։
Ջուրն էկաւ չողալէն,
Ուռի եափրաղ դողալէն.
Տիա եարս զալմ է,
Ալ ձին տակին խաղալէն։
Կայնել ենք յիլդուզ դիմաց,
Եայլուղով կէնենք իմաց.
Եայլուղը տար տու տէրը,
Տեսնես արևուդ ճիկրը։
Աղջիկ, ինչ է դիլակդ,
Օղուն կոճակ բիլակդ,
Մի բանայ բայազ կեօզդ,
Օրտս քցիր կլոկը։
Խնձոր ունիմ խածած է,
Ջորս բոլորն արծաթած է.
Աղբէրս ուկեց չտուի,
Քեալաւ եարիս զրկած է։
Էս ճամբէն օլոր կերթար.
Իւզբաշին օլոր կերթար.
Բաղիս չկայ բաղմանչի,
Ջրուիլ էր, մոլոր կէրթար։
Էս անիր, կամար տներ,
Միջին էր ոսկէ սներ.
Ոսկէ սներ վարդ պլտէր,
Օրտալ սիրած եար պիտէր։

⁂

(Մանի ըսելու էկայ. *)
Ղայմախ ուտելու էկայ.
Մարամըս ղայմաղը չէր
Եարիս տեսնելու էկայ։
Մեր բաղչի ճերմակ դուռը,
Իմ եարի գոլած թուշը.
Նա իրանէն վարդը ուզէ,
Ինձնի ընձի տուաւ փուշը։
Ճղա անուն Թոփանենէս,
Բաղչէճուն աէյրան կանես.
Պարի մէջ խաղալուց,
Խե աչքով ունքով կանես։

1) Ասել է Ջօյրա Գրիգորեան Ղարսա Նախիչեւան գիւղացի։ Սա ասում են վիճակը հանելու ժամանակ առանց «ջան գիւլումի»։

Ծամի տկի մարմար քար,
Ես չեմ առնի ղարիբ եար.
Թէ որ առնեմ ղարիբ եար,
Ոսկին գուրկեմ սարէ սար։
Տղա, փափախդ դուման,
Վէրման կորար բեզիւման.
Հորս դուռը սալած է,
Ձին այարած, կայնած է։
Չափուկ էրա, ընձի տար,
Դուշմաններս կայնած է.
Կարմիր քարը տաշած է,
Բոյս ղալամ քաշած է։
Ի՞նչ էնեմ որ քաշած է,
Սիրտս հալած, մաշած է,
Գիջի պարը բոլըրաւ,
Եարս մէջը մոլըրաւ։
Հարանքի ճամբէն քարոտ,
Սերգոն գոքնչէն կարօտ.
Քնայ, մէ էրազ տեսայ,
Սև հերկը ցանած տեսայ։
Այ ադէք—ադէքը,
Կողբայ լոթի գեադէքը.
Նստել են դիւֆանները,
Կանչում են լաւ ղայդէքը.

*
* *

Մազիր ունեմ ծիրանի, 1)
Քամին թել թել կը տանի,
Սիրականս սարին, ձորին,
Իմ քունս ինց կը տանի։
Աղջի անունդ Շուշան,
Սիւտակ բոխաղ թուխ նշան.
Արի, էրթանք սուրբ Նշան,
Վալա մատնիս քեզ նշան։
Մեր բաղին կայ շլորի,
Մազերդ եա օլորի.
Ցըմէն միտքդ ընկնելուս,
Սիրտդ փորիդ մոլըրի։
Սարէն յէլաւ էրկու մուխ,
Մինը հանգաւ, մինը ծուխ.
Սիրականս կորցրի,
Քիթը կալնած, հարսը թուխ։
Հանդէն գաս, գեղը մտնես,
Իմ գցած տեղը մտնես.
Ինձնէն այրի եար բռնես,
Բեմուրաց հողը մտնես։
Աղջի, անունդ Մա՞նի,
Ծակատդ բոլոր չանի.
Թուշդ դէս արա, պագեմ,
Աստուած քու աղբէր պահի։

---

Վանայ Աւանց գիւղի բարբառով *)

Նստեր ես վեր տախտին,
Թռեր ես վեր բախցին.
Եարան·էլխան վիճայն ի բարին 2)։
Մէր կերաւ խուրծիլ,
Տղէն իբե օսկի ծիլ։
Մէր կերաւ թանխուա։

Տղէն իբե բամբուա։
Մէր կերաւ կեադի տակ,
Տղէն իբե պատի տակ։
Խին չոմբար,
Ծաթ փողկեատար.
Խիւընդցար,
Է՞ր չի խատար։

---

1) Ասել է Մարան Մկրտչեան Ղարսա Նախիջեւան գիւղացի։

*) Երգած եւ պատմած է Եղիսաբէթ Կափանճեանց։

2) Ամեն տան վերջը պիտի կրկնուի։

Ոտան ձիկ ոսկի կուտայ,
Թանձրաչէն արեն ի վրայ.
Իմ խացն Աստծուց կուզեայ,
Սեղան հայր Աբրհամայ,
Լցուաւ կարմիր խնձորով՝
Կարմիր խնձոր կլոր—մլոր,
Էկաւ լցուաւ միջաց բոլոր՝
Նռան գինի խետ քե խմեմ,
Սարխօշնամ քեօ ծոց քնեմ՝
Ղուբնի բարձ, Շամայ դոշակ,
Վրէն պառկի տաճկի մշակ։
Էրզրումայ քարվան էկաւ,
Քարվանի մէջ մէյ ձի կէր,
Վեր էն ձիուն սնդուկ մի կէր,
Սնդուկի մէջ աղջիկ մը կէր.
Աղջկան անուն Դաչին փաշա՝
Պարի լուսին,
Քե մեռնիմ, քեօ էրեսին՝

Աղբէր, աղբէր, ես քե չուն,
Խունկն ու հինէն ապրշում,
Ինչ ես բարձէ քու իշուն.
Տանենք, տանք բզէզին,
Բզէզ ձիկ աղբէր մը տուր՝
Արտամէջ իմ Նստելա տեղ,
Ծոլն ձիկ գինի պիտի.
Կեամին ձի կթխայ պիտի,
Կեամիջին իմ դոլուղ բաշին՝
Սուրբ Վարդան եաւպաղ կերեր
եմ,

Վեր ծովուն անուշ քներ եմ՝
Էրթանք Էրերին,
Ոչխար վեր բերին,
Կթենք թուխ մաքին,
Լցինք սուրախին։

*
* *

**Արծկէի բարբառով.**

Վիճակ Նստե վըր պատին,
Ազապ աղէկներ վըր լակին։
Վիճակ գնած ա վըր իշուն,
Թումպանի փողեր ապրշում,
Ազապ աղէկներ վիճկի չուն՝
Վիճակ Նստե փլի բերան,
Շեռ.ն էլեր մածնի մէջրան,

Քրդեր էկան, տարան, կէրան՝
Առաւօտուն թոնտիր վառ
Վիճակ կը մանէր զօզանի գառ,
Օր կ'օրբներնաա, արի՛, գիս առ՝
Առաւօտ թոնտիր մուխ,
Փուշին կապէ, թողէ պուխ,
Ձեռ բռնեց, տարաւ Բուլանուխ։

Գնացինք Բուլանուխ, ինչ անուշ գեղ էր,
Էրկուս մէկ չապիկ՝ փողպատ նեղ էր,
Ասին, Ալաշկերտ խինգ խազար տուն էր.
Գնացինք, տեսանք մէ խաւքու բուն էր՝
Խաւքուկ վըր ծովուն, անուն Արուոր էր,
Անուն Արօր էր, աստուոր կանաչ տերեւուոր.
Կարմիր գլօխ՝ սրտիկ սեւուոր՝
Առու տեսայ խընց գետմ էր,
Քեարվան էկաւ իմ եար խետն էր.
Իշկեցի, իմ եար խընց յըմէն յետն էր.

Արի եար. արի, խռով մի կենայ,
Դիւնեի մալ քեզի չի մնայ։
Իմ ումռից յէմալ ումր էնեմ,
Գէղաճ խնձնիմ, էլլիմ աւղուս էնիմ։
Մանտրիկ Թվեր երկնոց,
Ազատ տղէկներ անեն դարց ու խոց։
Գեղի բոլոր չառուման,
Ղարդաշ օխչար խաւուրման,
Վրճակն ուտոյ, խղանայ։
Աշխարք տաքն, վրճակ ծուռ էր,
Մէջ իմ սրտին լալ ու դուր էր.
Պեյղանն էր ալմնայ, Թևեր մաղի,
Գնա ժամ, արի, քեօ մեղքեր քեաւի,
Գրկեմ, պառկեմ քե, տեղ չի ցաւի։
Նախրագնէն ուռի ծառ։
Խնձոր կը Թալեմ, արի առ,
Խնձորի կէս կծուկ էր,
Զորս գլուխ արծԹուկ էր։

Անձրեն էկաւ բէգ բէգ.
Պոյեդ մեռնեմ Զէբեդ։
Թղթի միջի գիրն եմ,
Սարգիս աղի քուրն եմ։
Ջաղջի գանիր ջուր կուգոյ,
Աղջիկ տղին տուր կուգոյ։
Ջաղջի դանիր կանանչ էր,
Աղջիկ տղին ճանանչ էր։

Անձրեն էկաւ կալ կալայ,
Բոժիդ մեռնիմ Մարգարայ,
Էրկու դուռուց, տասը փարայ։
Օձ մի տեսանք ճլպտուն,
Փախաւ մտաւ Սալւու տակն.
Սոնամ նստէ Ցախս կենայ,
Մամիր էտև գեաղ կենայ։

Եարձկանայ Նաճրկանց գիւղի բարբառով։

Պինտ պախեցէք վիճկներ, 1)
Զգան կտորեն ագապներ.
Խարս, խան վիճակն ի բարի։
Վիճկի ճլոր վրր պառմն,
Ազապ լաճեր վրր պակին։
Խարս, խան վիճակն ի բարին։
Ինչքան սարեր կան բող,
Դառնան քո տիրօջն պող.
Խարս, խան վիճակն բայլին։

Քեօ մէր կերեր խաւրծիլ.
Քե բերէր ռակեծիլ.
Խարս. խան վիճակն բարին։
Ինչքան դիւնիէն կայ մալ,
Դառնայ քեօ տիրոջ մալ ու քամալ։
Խարս, խան վիճակն ի բարին։
Քեօ մէր կերեր ծուլածեղ,
Քե բերէր կար անծեղ
Խարս, խան վիճակն ի բարին։

1) Դրի է առած Ա. Հ.

**Մոկաց Սպկանց գիւղի բարբառով *).**

Քեօ մէր կիրեր էղեղէն,
Քե պիրեր խրեղէն.
Խարս, խան վիճանն ի բարի 1)։
Քեօ մէր կիրեր խաւրծիլ,
Քե պիրեր ոսկեծիլ։
Քեօ մէր կիրեր ձուածեղ,
Քե պիրեր կօր անծեղ։
Քեօ մէր կիրեր էղէջ,
Քե պիրեր բըռէջ,
Քեօ մէր կիրեր պատըրտակ,
Քե պիրեր պատի տակ։
Քեօ մէր կիրեր ...
Քե պիրեր ... պըռպըռան։
Քեօ մէր կիրեր մանանայ,
Քե պիրեր սատանայ։

*
* *

**Նիւսնենց գիւղի բարբառով **).**

Վիճայնի հոլա, հոլա,
Ազապ տղէն ի ֆեօլայ.
Վիճայ նստէ չեռուպեչեռ,
Շեռ իլե ակի տաչեղ,
Ազապ լաճու պուկի տեղ։
Ջան վիճայ ջան—ջան.
Դաստայ գիւլիւմ ջան ջան 1)։
Էսա վիճայն ինչ կուզէր.
Խօրերով ցորեն կուզէր։
Էսա վիճայն ինչ կուզէր,
Բեակերով օխչար կուզէր։
Վիճկի անուն Ալթուն ի,
Ձեպեր եկին կթուն ի.
Վիճկի անուն Վարգիկ ի,
Ոտով օչխար որգիկ ի։
Վիճայ նստե վեր պատին,
Ազապ լաճեր վեր լակին։
Վիճայ նստե վեր իչուն,
Թումպնի փողերն ի ճխտուն։
Խամբարձում եկաւ,
Իլերենք սարեր, ծաղիկ կը քաղենք,
Գիրենք, փառչի պէրան կըզաննենք։
Ալճախ կը ժողուենք.
Դիւզիւր կը պիրենք.
Փառջի գըլօխ կը կապենք։

*
* *

**Բագրեւանդայ Վանքի գիւղի բարբառով 2).**

Թամեանց սարեր ամպեր ա,
Աղբերս ձին թամքեր ա,
Ջան ծաղիկ ջան ջան 3)։
Գնացեր մէյտան՝ խաղցեր ա,

---

*) Գրի առած է Ա. Հ.։ 1) Ամեն երկտողից յետոյ կրկնել։

**) Գրի է առած Ա. Հ. երգած է Վանի Թիմարայ Կիւսնենց գիւղացի Խոռո Սարգսեան։ 1) Ամեն երկտողից յետոյ կրկնել։

2) Ասած է Յակոբ Համազասպեան։

3) Ամեն տնից յետոյ կրկնելու է։

Անձրև էկեր թուչեր ա.
Ջան միճակ ջան։
Քներ ա քրտներ ա.
Վարդն յէրեսին փռուեր ա.
Ջան, ջան ծաղիկ ջան։
Մեր քուչան ջրով ա,
Մեր ռէս թրով ա,
Ամէնք էրթան ռէս խանի դուռ,
Խօսք ոսկի ջրով ա։
Անձրև էկաւ շաղալէն,
Այվանի պատ դողալէն.
Դէն գացէք, աղբէրս էկաւ,
Թող ձին տակ խաղալէն։
Վիճակ, էկան քեզ կը տանին,
Տնէն տանիս քեզ կը հանին.
Ամէն աղջիկ մէ ցաւ է,
Քեզ կը խաբէն, բանէ հանէն։
Ծառ մի ունիմ կեռաս ա,
Գիշեր քնա էրազ ա,
Լուսուն յէլայ մուրազ ա.
Քուրուրտիք, Աստուած խանչէք,
Աղբէրս հասնի, մուրազ ա։
Ծառ մի ունիմ Հնտա քաղաք,
Ծուղ տանէր քաղքէ քաղաք,
Ամէն ճուղին քառսուն ճրագ,
Մէջ նստեր սինամահաւք։
Ծառի տակ արօտ ա,
Քուր աղբօր կարօտ ա։
Վիճակ դրի վրր իշուն,
Վիճկի փողերը նխշուն.
Վիճակ դրի վրր փլին,
Գրծաւ, ընկաւ մըջ տլին։
Գետը կուգայ ֆխշխշալէն,
Շամշան դրած շողշողալէն,
Խարսիկ, խառնախան վիճակն ի բարին։
Կոխերիս փշին, խլերիս թախտափշին.
Աշխար կը ցանկայ քու խօրոտ բոժին։
Ծրագ չէնքին կը վառի.
Գութան ի դաշտ կը բանի,
Ձալ կամի դուռն կը պտառի։
Նստէր ես յէգին. վիլակ կէնես,
Մէկ Աստծուց դիլակ կէնես,
Օսկի օրօրոց կօրօրես,
Մարգրտէ ծածկոց ի վրէն։
Մանի ըսեմ ու չարեմ,
Լցեմ տոպրակ ու կարեմ.
Խրկեմ, էրթայ քաղկէ քաղաք,
Սրտիս սիրածը ճարեմ։
Ձօշ տուն ջուխտակ գերան,
Խորատ պառկաւ գէշի ծոցան.
Հէյ վախ ու հազար բերան։
Ժողուած ա մանուկ ու կտրիճ,
Կանէր քար ու խիջ.
Կը հանէր աղբուրն ի սարից։
Հագեր ես կանաչ,
Կերթաս սուրբ խաչ,
Աստուած քեզի տայ ջուխտ լաճ։
Իմ մէր կերեր թթու թան,
Ընձի բերեր վթվթան։
Իմ մէր կերեր ձուածեղ,
Ինձի բերեր քոռ անձեղ։
Իմ մեր կերեր խաւրծիլ,
Ինձի բերեր ոսկի ծիլ։

**Շիրակայ Դաօլիչայ գիւղի բարբառով *)**

Ծաղկի անուն Անթառան,
Գեացէք էկան, յետ դառան.
Ջան ծաղիկ, ջան ջան։
Ջաղջի դուռը չաւռմայ,
Սև չունը ղաւռւմայ.
Կանչէք թող գայ ռէսին,
Գեացէք բերայ վըր մսին։
Ջան ծաղիկ, ջան ջան։
Գութանը մանի —մանի,
Շէկ աղջիկ հաց կը տանի,
Մէկ կը քելայ, մէկ կայնի.
Ջան ծաղիկ, ջան ջան։
Օխտը դուռը թամամ ա,
Ծոցդ մտնիմ համամ ա.
Ծոցումդ բոստան դրի.
Ծծերդ ինձի չամամ ա,
Ջան ծաղիկ, ջան ջան։
Այ արփին, արփին, արփին,
Ցէրկէն առուն քար ափին,
Քուր կը մեռներ էն աղբօր,
Համ գլաւին, համ դարքին։

*
* *

**Ղըմզլու գիւղի բարբառով 1)**

Ծաղիկ եմ քաղէ, էս ա,
Ջանիդ մեռնեմ, ջան փեսա։
Ծաղիկ քաղի մաղերով,

---

(*) Ասել է Ալաշկերտցի Մաքօ Պետրոսեան, որ փոքր ժամանակ ապրել է Տաշլիչայ գիւղը։

1) Ղըմզլու գիւղի աղջիկները Համբարձման տօնից մի շաբաթ առաջ սկսում են ծաղիկ քաղել, թեւ թեւի տուած եւ երգել. «Ծաղկի գովքը» տեւում է մինչեւ համբարձման—հինգշաբթի. այդ օրը վերջանում է վիճակի փարչի ու ծաղկի գովեստը. իսկ հետեւեալ կիրակին վիճակ են հանում. այդ օրը աղջիկները չեն երգում, այլ մեծ կանայք Թուրքերէն

Վեր դրեցի շաղերով.
Հրէն իմ աղբէրն էկաւ,
Բոզ ձին տակը խաղալով։
Ծաղիկ, ծաղկեվանայ եմ,
Ասլ յՆրևանայ եմ.
Տարին մէ խետ ես գալմ.
Թազա ճուպարխաճայ եմ։
Մեր հանդերը ջրով ա,
Մաշին թրով ա.
Ամէն մէճլիս մտնելու,
Խօսքերն օսկի ջրով ա։
Ծաղկի անուն Անթառւան,
Տղէքն էկան, յետ դառան։
Ծաղկիս անուն Աղասի,
Ճակատէ ճակատ ապասի։
Ջորս ընկանի ծափ ունեմ,
Մէջը լիքը լափ ունեմ։
Այ հէքեարի, հէքեարի,
Միսսար միսսար չաքարի։
Թոնն էկաւ շաղերով,
Վարդ քաղեցի մաղերով։
Սև ա չոպաճի շունը՝
Կը տանի եարիս քունը։
Թազա եօճչէք ջրեցի,
Պանկները սրեցի.
Առաւօտ դիշերհանայ
Վիճկիս մատաղ կտրեցի։
Էնտու կաքաւ ան ծեփրտկեխ,
Աղբէր, էրթանք միատեղ։
Էս սարը ծաղիկ չկայ,
Արի, էրթանք գիւղի բաղ։

*
* *

---

«մէնի» են ասում. Ամեն մինը իր վիճակը միջից հանելիս՝ մի տուն մանի է ասում առանց եղանակի. Այս ամառ նոյն գիւղը լինելով ուզեցի գրի առնել, սակայն կանայք չափազանց զբաղուած լինելով չկարողացայ «մէ-նի»-ները հաւաքելը, այլ աղջիկներից ծաղիկի երգերը միայն գրի առի։
Ա. Հ.

Մեր հայաքը բաղչայ կայ,
Բաղչի մէջը ռեհան կայ.
Ռեհանը քաղող պիտի,
Ծոցումը պահող պիտի.
Անձրևը գալիս ա,
Կարմիր վարդը լալիս ա,
Ճանբախ արէք, անց կէնայ,
Կարօտ եարս գալիս ա։
Կանաչ տեփուր մեյտան ա,
Գնացէք, տեսէք եարս գան ա,
Նոր բռնած բեղերը,
Ոսկի թելի նման ա։
Գեանջա քամին գալիս ա,
Թիկնոց մէջքս տալիս ա,
Աղջիկ, վեր կաց, դուռը բաց,
Գլխիդ տէրը գալիս ա։
Նախորաջորա խնկի ծառ,
Խնձոր թալեմ, առ՛ տար,
Ուրբաթ, չարաթ քե մոհլաթ,
Լուս կիրակի արի տար.
Արեգակը ամպի տակը,
Ես եմ քո գնդի փակը,
Ես քեզի սրտե սիրեցի.
Մեխակի քոլի տակը.
Արեգակը կամար, կամար,
Մէջքումդ ոսկի քամար,
Ես մեռնեմ, աչք ունքիդ խամար.
Ցիցցուն օր պաս եմ պահէ,
Քո ազիզ ջանիդ խամար։
Լոյանակը անդին գիշեր,
Սև աչքը, կարմիր թշեր,
Իմ եարը ընձի տուէք,
Ձեր խերը բարի գիշեր։
Ձու եմ դրէ թաւէն, խաշեմ,
Էլնեմ կտուրը, քե աչեմ,
Տեսնեմ եարս գալիս ա,
Զոքեմ, չախմէքը քաշեմ։

* * *

Ես աղջիկ եմ ալ կուզեմ.
Ալս ծալպածալ կուզեմ.
Ես էն տունը հարս պիտի,
Ոսկի սարէ սար կուզեմ։
Սարիցն էլաւ էրկու ծուխ,
Մէկը հանկաւ, մէկէ մուխ,
Էրկու զեօզալ եմ սիրէ,
Մէկը չէկ ա, մէկը թուխ։
Լոյանակը ցերեկ, ցերեկ,
Գեամրայ խապար բերէք,
Այլուխս տամ մուշտուլուխ,
Եարիցս նուպար բերէք։

* * *

**Թաւրիզի բարբառով** *)

Համբարձում զեալաջախ սըր, — Համբարձումը գալու է,
Ջան գիւյում, ջան ջան 1). — Ջան վարդս, ջան, ջան,
Սուրֆանի սալանախ սըր. — Սեղանը պարզելու է.
Նոբեարի եօլի հիւպըր, — Սպասաւորի ճանապարհին կապածէ,
Օզի սա զեալանախ սըր։ — Ինքն էլ գալու է։
Համբարձում աբլու զեալըր, — Համբարձում, ձիաւոր կգայ,
Աբլու վար, աբլու զեալըր, — Ձիաւոր կայ, ձիաւոր կգայ։

---

*) Գրի է առել Արուսեակ Հայկունի. ասել Համասփիւռ Նաւասարդեան. 1) Ամեն տողի վերջը կրկնելու է սոյն տողը.

Ինջի գեալան Համբարձում, — Այժմ եկող Համբարձումը,
Բաշի դոլվաքլի գեալան։ — Գլուխը բաղդաւոր կգայ։

Ես մի կանաչ խիար եմ,
Քո ջանին եխսիար եմ,
Կերթամ, կերթամ, յետ կը գամ,
Ես մէ բախալու եար եմ։
Ջաղաչիս գուռը փոս ա,
Քար կը թալեմ, կը խօսայ,
Կեռ կեռ ունքերիդ մեռնեմ,
Ոսկէ ղալամով քաշած ա։
Դուռը դռան վերէն ա,
Հեյվէն նռան վերէն ա.
Հորէն էկաւ իմ եարս,
Ղալխան ձիէն վէրէն ա:
Ծրագ դրած լուսացու,
Կարմիր խառէն քիտացու,
Ես քո մօրը հարսնացու,
Դու իմ մօրը փեսացու։
Ծառի տակը խով կանի,
Թելերգ քամին տանի,

Երես էրեսի դնենք,
Անուշ քուններս տանի։
Խնձոր ունեմ կծած ա,
Կծած չի, էրծաթած ա,
Աղբէր ուզացա չու տուայ,
Ասում. «Ազիզ եարի զըկած ա»։
Աղբէր, հանաճիդ մեռնեմ.
Ջուխտ ջուխտ դանակիդ մեռնեմ։
Գթակդ եան ես դրէ,
Արած դիւանիդ մեռնեմ։
Հաց եմ թխէ գաթացու,
Իմ եարը մէլիքացու.
Գեղումն օխտը տղայ ա,
Իմ եարին նոքարացու։
Ջուր է գալի առխըմը,
Ապրեմէ չարխմը.
Էս էն քաւաթ եար կուզեմ,
Ջումաք էլնի խալխըմը։

Փեշիր, փեշիր ուստիունսայ, — Սփռոց սփռոցի վրայ,
Փեշիր դիւզիւմ ուստիունայ. — Սփռոց ծնկիս վրայ.
Օքքըպ քեաղազ եազիպ, — Նստած գիր կը գրէ,
Քրիստոսն եօխնայ։ — — Քրիստոսին սիրուն վրայ։



# Է.

# ԵՐԳԵՐ.

## ԳՈՒԹԱՆԻ, ՀՈՒՆՁՔԻ ԵՒ ՍԱՑԼԻ ԵՐԳԵՐ.

### I.

### ԳՈՒԹԱՆԻ ԵՐԳԵՐ *)

**Ալաշկերտի բարբառով 1)**

Մեր գութան էկաւ բարով.
Ձեր գութան էկաւ բարով.
Դուշմնի գութան կոտրի,
Ջաղջի հազար տարով։
Գործ առաւ ճլ։
Մեր գութնի սազն ա չատ.

Ձեր գութնի սազն ա չատ.
Մեր յարտ կեղնի չատ բարդ,
Կեղնի ձգի կըօլ ու դարս։
Գործ առաւ ճլ։
Մեր գութան հասաւ յառուն,
Ձեր գութան հասաւ առուն.

---

*) Գութանի երգերու մէջ, բացի բուն գութանի երգերէն, կը խառնուին կրօնական, սիրահարական, պարի, զաւեշտական եւլն. երգեր, զորս փոքր թուով գրի առած եմ:

Գութանի երգերը ընդհանրապէս Բուլանխ, Արճէշ, Արծկէ, Խնուս եւլն. վայրեր կերգեն։

1) Գրի առնուած է 1888 թուին յԱլաշկերտ։

Մենք յէլնինք չուր ի գարուն,
Ձեր բերնէն գայ լերդ արուն։
Գործ առաւ ե՜լ։
Մեր յարտն ա փխրիկ,
Ձեր յարտն ա փխրիկ,
Դու պտի ցանիք
Մենք պտի քաղինք։
Գործ առաւ ե՜լ։
Մեր գութան գէլնի, դառնայ.
Ձեր գութան գէլնի, դառնայ.
Ախր սող մեր մաճկալ,
Պտի բառնայ ձեր մաճկալ։
Գործ առաւ ե՜լ։
Հալալ կէնիմ մեր գութնին,
Զ՚հալալ կէնիմ ձեր գութնին,
Վըր արտանին, վըր կռտանին,
Շէկնա կոտրէ ներսի սամին,
Ջուապ տարէք խազնատարին,
Ծիժ չվաստկի կիրակմտին,
Կնունք չէնայ ուրբթմտին,
Գործ առաւ ե՜լ։

Մաճկալ կայնաւ վըր մաճին,
Օսկի բռչամ վըր ակնջին,
Ձէն տուեց յամըլտուորին,
Ցամլուոր ըսեց ուժտնուորին.
Ձէն հասաւ հօրիքւորին,
Ձէն տուէք հօրևորին,
Օր դուշմնի արևն հօրին.
Գործ առաւ ե՜լ։
Գործ, գործ, ղուրպան գործ.
Գործ առաւ ե՜լ։
Ջան, ջան, ջան.
Ջան, ջան, ջան։

Գութան գիլեր, ուր գին կուզէր,
Գութնի բուղէն կռիւ գուզէր,
Շէկիկ կռտան կնճակ գուզէր,
Վըր արտանին, վըր կռտնին,
Ջուապ տարէք խազնատարին,
Տեղին պարկող կիրակմտին,
Ծիժ վաստկող ուրբթմտին,
Գիրկ դրեց հօրևորին։
Հօրևորին—կարմիր գլոխ,
Մկնտան—մուկն ի բերան,
Փոշետուն—փոշին ի յաչք.
Խարզնտան—խարզան ի ձեռ.
Խնձորտան—խնձոր գօտին։
Ազապ աղջիկ ուժտնուորին,
Մռտըլ տան—մռտըլ բերան.
Հացն ու պանիր յամլտուորին,
Խէրն ու բարին մեր մաճկալին,
Գործ առաւ ե՜լ։

Ցամլուոր կերգէ.

Գութան գիգայ մոլրուկ,
Դուշման մէջ օլրվուկ.
(Դօր էկաւ ուժտնուորին)
Առաւ գխուևկն ու ապրշում,
Խունկ տուեց պառաւընևերուն.
Ապրշում տուեց աղջկներուն։
Աղջի՜, աղջի՜, չա՛ն աղջի,
Բե՛ր՝ ապրշում տուր ընծի,
Թէ եար չեմ էղնի քզի։

Մկնեան հօտաղ կերգէ

Էչ մի էկաւ խլաթայ.
Բշկուլ ուռէն կը կաթայ
Ո՛րն օր չբռնայ, չքշայ,
Էնինք էնդոր հալվա, գաթայ.
Քառասուն տարով ախ քաշայ։

Փոշեան հօտաղ կերգէ.

Հիվա, հիվա, հիվական
Բռէճ գլօխ դիւական.
Դևն յէլաւ սար ու սէյրան,
Ձգեր յէտն էրան, էրան,
Որն օր չբօռայ, չքշայ,
Էրթայ լցուէ ընտոր բերան։
Գործ առաւ ե՜լ։

Գութան գիգայ ճռուըռալէն.
Կոռւան գիգայ մռմռալէն,
Յաչքեր լցէ կուց կուց արուն,
Կռիւ կուզայ հըտ պոլ Սարուն։
Գործ առաւել ե՛լ։
Այն առէ սարի դօշին,
Շիրին, դուրպան քու Նմուշին.
Գլօխ կապէ ինչ օր փուշին,
Մարալ, մեռնիմ քու բուքուշին,
Գործ առաւ ե՛լ։

Էկաւ հասաւ ամրան ամիս.
Կոռւան կոտրէր ջուխտակ սամիս.
Գործ առաւ ե՛լ։
Արև առաւ վեր խաչերաց,
Թառօ, դուրպան քու աչերաց.
Գործ առաւ ե՛լ։
Յարտեր յափան,
Ձարոց խափան,
Տէր պահապան,
Ու օգնական։
Գործ առաւել ե՛լ։

Քամին էկաւ հուսիսու,
Դումանն բռնէ հարաւու,
Հացուոր յնկերա ճամբախ.
Եզն ա յառէջ, գլոխ կախ։
Գործ առաւ ե՛լ։
Գառաւ էկաւ կուզ է գուզ,
Շալակ գրուկ չափուկ մի գուզ.
Յմեուն տուեց մէկ ու էրկուս։
Յամլուորին տասուերկուս։
Գործ առաւ ե՛լ։
Վըր հնգին ա, վըր մնկին,
Վայ լընցնողի հօր գանկին,
Շներ վրէն առճկին,
Որ չբարենի մանճկլին։
Գործ առաւ ե՛լ։
Դաշտ ու դուրան քար ու քըռա
Գութան միջուն կը փռփռայ.
Ո՛ր չքշայ, ո՛ր չբոռա,
Ուր մամ էղնի քըրգու գռայ (կին)։
Գործ առաւ ե՛լ։
Գութան յէլեր ա սազին,
Գառաւ պարկէ վըր գազին.
Փուշ չքուեր ա վըր վզին։
Թազիք յէրես կը լիգին։
Գործ առաւ ե՛լ։
Մեր գութան յէլաւ դարձաւ,
Ձեր գութան յէլաւ դարձաւ.
Ու ժիկ, Լուսիկ եզ ու գմշին.
Խեր բարաճեաք ափոյի մալին.
Գործ առաւ ե՛լ։
Հարս ա, ու հարս ա.
Սարէն գիգա, հարս ա.
Իեռ մի ծաղիկ վըր փիճին,
Օսկի օղեր ակնճին։
Գործ առաւ ե՛լ։
Գործ բոլրաւ,
Դուսման մէջ մոլրաւ։
Գործ առաւ ե՛լ։
Գութան գիգէր ճռուըռալէն,
Շիրին գիգէր կըռկըռալէն,
Կոսոս Թալէր յարտի յափներ,
Համ կը չինէր, համ կը քանդէր։
Գործ առաւ ե՛լ։
Շաղն ա տուե վըր յարտերուն,
Սարտար դուրպան քու յաչքերուն.
Յնչի՞ ա լցուե կուց կուց արուն,
Չէ էլի գիգայ բաքի գարուն։
Գործ առաւ ե՛լ։
Էնդին լուծ, էնդին լուծ.
Որ չբոռայ մտնի ... :
Գործ առաւ ե՛լ։
Խերն ու բարին վըր մաճկլին,
Ջուն ու գաթան յամլուկրին,
Հացն ու տուն ուժտնուորին.
Յաւն ու չոռ հորիքուորին։
Գործ առաւ ե՛լ։
Օծնին էկաւ կուզէ կուզ,
Դեվէն էկաւ կուզէ կուզ.

Պառաւ մլին ջաղջից դուս.
Էփին պուտուկ մի ջրխուս.
Տուին, ճամբին դէմ Փրխուս։
Գործ առաւ ելː
Արև գնաց, ցածրցաւ,
Կորեկահաց բանձրցաւ,
Մաճկալի սիրտ քաղցրցաւ.
Թողեց, գութան յարձկուաւ.
Տղէկներ, դիտա իշկէք.
Ճաշ իմ էփէ, արէք, կէրէք.
Աւտալ աղէն հետ ձի բէրէք.
Գդալ չկայ, մատով կէրէք.
Կէրէք, կէրէք փորմի պնտինք,
Յուշիկ, յուշիկ յէլնինք վարինք։
Գործ առաւ ելː
Գութան, գութան.
Հետ վըր ափան.
Զարկեց հորուն,
Հանեց տորուն։
Գործ առաւ ելː
Որն օր չի քշայ հորեք տուն.
Ըսկի չեղնի քուն ու դատրում.
Գործ առաւ ելː

Ծաղկաւ արև վըր մեր դաշտին.
Փիլաց ճակատ Քոսա—դաղին.
Ջաւ ու հաւքեր կը ճրլվըլան.
Ծմեր ցրտու կը լըկլըկան:
Գութան գութան, ջան գութան,
Առանց քզի մենք փարիշան.
Հորունդ բանի, կոշտեր հան,
Ղուրպան էղնինք քու խոփտան։
Աործ առաւ ելː

Շիլէն ծալ, չիլէն ծալ *),
Շիլէն ծալ ու մալ էրինք,
Շիլէն ծալ ու մալ էրինք,
Պագ մ' ընծի հալալ էրինք։
Ջուր պըծէ՝ գիգայ սարէն,
Կը թափի մարմար քարէն.
Շատ բարև պզտի եարէն:
Աղջի, աղջի, ջան աղջի,
Սանամ արջկան **) կը մտնի,
Մարդ չկայ իմ քարաֆէն,
Խապար մի ըստոր տանի։
Շիլէն ծալ, չիլէն,
Շիլէն ծալ ու մալ էրէք,
Շիլէն ծալ ու մալ էրէք,
Պագ մ' ընծի հալալ էրէք, ևլն.

Եաման սարեր, հով էրէք,
Իմ դարտին դարման էրէք,
Հաւար սարեր, հով էրէք,
Մալուլ իմ, չարա էրէք։
Գիշերսի ես դուրս յէլայ.
Թուխ ամպն անուշ կը ցօլէր.
Դէ ցօլա, ցօլա, ցօլա,
Դէ ցօլա, հալուայ հարին։
Ցօլա, ցօլալուդ դուրպան,
Փիլա, փիլալուդ հայրան:
Հաւար սարեր, հով էրէք,
Դարդլի իմ. չարա էրէք։
Լուսնակ գիշերն հոլն անուշ,
Սրտի սիրածն էր անուշ,
Սէր ու սաւտից մալուլայ.
Նիկեար տեսայ, չիւարայ։
Ես գիշերսի դուս յէլա,
Թաթախ ձնիկ թալեր էր,
Բոբիկ հետիկ գացեր էր,
Բռնի հետիկն ու գացի,
Իմ եար մէջն էրի չտեսի։
Գացի—գացի դռնիկ բաց,

*) Այս տեղից սկսած պարի եւլն. երգեր. որ դութան վարելու միջոցին եւս կերգեն։

**) Իրիկ. բուրդ մանելու գործիք։

Մտայ, առնէնք թաժայ հաց.
Անտրի քուլէն գիս ի խած։
Հա հանտ իմ, ձանտ իմ, հանտ իմ,
Քոփակ՝ մա՛ւ հիւանդ իմ,
Բռնիմ, մուրաւատի կնտիմ։

Ցղէն կանէ կարմնճին,
Դօլապ գնտեր յակնճին.
Խապար տարէք գոնքճին,
Աղջիկ տայ էտ կտրճին։
Խարսա բերդը բլեր էր,
Նարս տակը քներ էր.
Քներ էր քրտներ էր,
Վարդը յէրսին թփռեր էր։
Կաղզուանու ձորէն եմ,
Մեծ բաղի խնձորէն եմ.
Խնձոր թալեմ, արի՛ տար։
Խնձորի կէս խածուկ էր,
Ջորս գոշէն արծթուկ էր.
Նարոջ գոտին դրուկ էր։
Կանանչ յարտի ճնարին,
Շատ քարև հեռու եարին.
Դարման չէղաւ իմ դարդին,
Վարամ ուտայ հինգ տարին։

*
* *

**Մաճազկերցի բարբառով**

Հառաւել—հառաւել, յէշ 1),
Հառաւել Մուսլո գոմէշ.
Ջեռսի թալեմ Աստծու փէշ.
Մզի ցորեն տայ փէշփէշ.
Ծախենք առնք մեր ռէսի բէշ,
Ջեզնի ծախին բոզ գմէշ։
Հելել, մելել Շէկ Կռտան,
Հողներ, քշէք գէդ գութան.
Օրթա հանինք Բրէ տան,
Հա՛, մեռնիմ քզի Շէկօ, Կռտան։
Ցղա՛, Մանուկ քշա գէդ եղ,
Գութան բանի քանդի սէղ.
Ցորեն էղնի դէզ դէզ,
Հա՛ մեռնիմ Մանուկին ես։
Քշա՛ Լաւանդն ու Խնձորօն,
Հանդա փոխդ բէրեց Կարօն,
Մկա լծինք Շաղազն ու Խէրօն։
Օր դմահնայ մզի ռէս Միրօն։
Ցղէք, ձէն հանէք գութնէն,
Տաս տուն ա մեր բնատէն.
Գութնի ակեր ճըռուըռան,
Ծռուըռայ, ձէնիդ խուրպան.
Հան, Խազօն, Ջմօն էկան,
Բերին մածնախառ թան,
Իդ հաղսի կարձկինք գութան,
Հա բապեմն, հառաւել։
Մատաղ ձզի գմըշտան,
Կըսեմ հողներ էրթան,
Պաղպաղ ջըով աղէկ հովցան,
Լուան, գըւըռցուն՝ արծան։
Տաւար էկաւ, քնուց յէլան.
Գութան լծին, խառզան առան։

Մեր գութան ա ծուռ ու մուռ,
Ըըս տարուան տարին չատ մռմուռ,
Ըռճճպար տանին խազու դուռ,
Խարաճ կուզին, տո՛ւր, հա տո՛ւր։
Բրսօն յէլաւ, բռնեց մանճ.
Ցարտ կեղնի աղէկ կանանչ,
Կռուθն ուտայ ճանաչ.
Աստուած օրթնէ գութնի մաճ։
Փաղաք գնաց Բրսօ պապ,
Գմշտանուն բերեց զճնկապ,
Օր ըսկի չմնան պարապ,

1) Ամեն տան գլուխ «հառաւելի» երկու տողը կրկնելու է։

Դուշմնի տուն եղնի խարապ։
Քաղքցի Ապօ ձեռ կէր փարչ.
Էրես փրչոտ կը մանէր աւչ,
Ջաւրիյէն կուգայ խարաճ,
Աղբօն քեզ էկաւ առաջ։
Աղբօ մազերն ա խառ,
Էն դհէն էկաւ բարբառ,
Դու կը մանէր Նոյա դառդառ,
Գնաց, չեկաւ, ըսեց ա՛ռ, առ։
Ջիյալ, Շէկօ վրէն կռնա՜ս,
Չէ յմնօր Կէնինք գքու բահս,
Հարսի գլխուն օսկի թաս,
Գութան, ակօս կը բանա՜ս։
Մկա լուս ա ու աղօթրան,
Գմշըրաանուն քսենք խարրաճ.
Օր բռհարին, չի խամնան,

Աստուած օրթնէ գութնի բան։
Ցէս օր բերին տուն աղ,
Ձմեռ օր էղաւ կը բռնայ պաղ,
Մեր մանճկլի ջաճ էղնի սաղ,
Աստուած օրթնէ մեր հաստաղ։
Կը համպըռւի Մուսլօ կողեր,
Շատ ունինք վարի կռթեր.
Մ՜խ, էտ անաստուած գողեր,
Զթորկին վարենք մեր հողեր։
Մեծ պապէն դռնէն բռռաց,
—Տղա՛, հօրու բերան բաց.
Հասօն ու Խալօն ա էկած՝
Սև ջուր գայ ուրանց աչաց։
Դո՞ր փախնինք, դո՛ր հեռենանք,
Մեր արտ ու ափ մոռնա՛նք.
Ցորեն կուգլին, դէ՛, չտանք։

*
* *

### Արճէշի բարբառով

Արև առե վեր սարերաց,
Ղուրպաճ եմ, Մարալ, էդ թուխ աչերաց,
Շարից էկաւ չարմարական,
Թալան թալեց ծաղկան պիար.
Կօ սկօ էկաւ ամլուարի գնդերով։
Թալան էթալ արտի պիար,
Կը սըռսըռեր գնտերով եար։
Թալան էթալ արտի բաղչէն,
Կը սըռսըռէր եարոչ մախչէն։
    Թալիկ կուգայ, որ թալալի,
    Ցորեն էլնի, ծուալի։
Շուռ կը տայ որ չռնէ չուռ,
Կռիկ, Կռան ընկէ ճռնէ ճուռ։
Թալան թալէ արտի պերիճէք,
Շուռ կու տայ ... ։
Գութան թալի արտի պիար,
Կոր մուկ ընկէ մաճկլին խակառ,
Ջորա գմէչ,
Ձեռներս թալեմ Աստծու փէշ։
Մարալ, Կորեկ ու Մարալ,

Դիւ չորորայ կեաքւու Նման։
Թալան Թալի արտի բանին,
Կօ սկօ էկաւ բարի խնամին։
Դուման, Տուման,
Դիւ կը չորորաս կեաքւու Նման.
Թալիկ կուգեայ Թալոալական,
Կռէթներ չուռ կուտայ խաչմարական։
Արև առեց վեր պեսենին,
Ղուրպան ըլլեմ Զարա գմշուն
Թուխ գեարսնին։

*
* *

Ղարսայ Նախիջևան գիւղի բարբառով *)

Ցորիկն էլաւ,
Արտը կերաւ.
Շող է չարուրէ,
Ակօսը հարուր է,
Թէլլի գոմէշ,
Ասլան գոմէշ։
Գործը բարի է,
Տարոց տարի է,
Միջակը լաղառ է,
Առջի հոտաղը զաղառ է,
Մաճը մաճին է,
Ջեռն ակնջին է.
Վայ ուչտան հոտաղ,
. . . խան բաշին է։
Հօվդըր, սարին դըր,
Ալլահ քեարիմ դըր։
Վարենք, արտ էնենք,
Դուշմնին դարզ էնենք.
Վարենք վարելով,
Ակօսը չարելով,
Ելնենք դուս առաւել,
Առաւելի գոմէշ

Ամակիդ ղուրպան,
Ասլան գոմէշ.
Արևը գնաց,
Մարալը մընաց։

*
* *

Սև ամպը չադր է 1),
Դուշմնի ղադր է.
Թէլլի գոմէշ։
Շալակդ ծանր է,
Սրիշդ մանր է.
Թէլլի գոմէշ։
Ակը խորին է,
Դուշմնի փորին է.
Թէլլի գոմէշ։
Շոգ է, մեզար է,
Ակօսներդ հազար է։
Թէլլի գոմէշ։
Վարենք, սև անենք.
Սևլանք գոմէշ,
Ջանս քե ղուրպան է,
Սէյրան գոմէշ։

*
* *

*) Ասել է Անտոն Խաչատրեան Ղարս. Նախիջեւան գիւղացի.

1) Ասել է Գէորգ Ներսէսեան Ղարս. Նախիջեւանցի.

Հարս եմ ու հարս 1),
Կարմիր ու ճերմակ հարս.
Առնեմ պառկեմ ակօսդ,
Էդ է թազա ճաւասր:
Մանի ըսեմ ու չարեմ,
Լրցեմ տոպրակն ու կարեմ.

Առնեմ, քաղքէ քաղաքամ կըգամ,
Քեզէն լաւը կը ճարեմ:
Գուլթան, գուլթան, ալ գուլթան,
Խոփդ քարէ քար գուլթան.
Էկան քովէդ անց կեցան,
Հոտող մաճկալ լալ կեցան:

*
* *

**Վաղարշապատի բարբառով**

Գուղանս հաց եմ տանում,
Եար Նայ Նայ Նայ, Նայ Նայ Նայ 2.
Բերանը բաց եմ տանում,
Մեխակով, դարչինով իմ եարը:
Մաճկալին չատ եմ ուզում,
Ձուկը տապկած եմ տանում,
Մեխակով, դարչինով իմ եարը:
Ամպել է ամպի տակին,
Ծունկս ծնկանդ տակին,
Ես քեզ որտե սիրեցի,
Միխակի ծառի տակին:
Բոզ ձին ձեծել եմ,
Արագին մօտեցել եմ,
Արագ, ճանբայ տուր անցնեմ,
Իմ եարին կարօտցել եմ.
Էս Արագի ատէքը,
Կողքայ պիանճ կեաթէքը,
Նստել են դուքաններին,
Ասում են լաւ ղայցէքը:
Ինձ մի պուճուր տուն ունեմ,
Մէջը ոսկէ սուն ունեմ,
Գաջն ու գերան պար պիտէր,
Սրտով սիրած եար պիտէր.
Քարի տակը քոլոտ ա,
Կարմիր ձիուն արօտ ա.
Բօլօլիկ օխտը տարի,
Քիրն աղբօրը կարօտ ա:

1) Ասել է Լեւոն Ներաջսեան Ղարս. Նախիջ. գիւղացի:
2) Սոյն «նայնայ»-ը իւրաքանչիւր տողին կրկնելու է:

Արագը հեչտացել ա,
Ճանփէքը կօչտացել ա,
Խաբար տարէք իմ Նանին.
Մուշտարին չատացել ա։
Բաղումս կայ բաղվանչի,
Շիւ կայ չուի նման չի,
Բոլուք-բոլուք դուս Թափան,
Մինն իմ Եարին նման չի։

*
* *

**Վանայ Գործոթ գիւղի բարբառով *)**

Գիշերուայ խաւ խուսացին՝
Սարուացք դէհեն լէծեցին,
Արտի հար արձեկեցին,
Ջէնջիլներ պատրաստեցին։
Մանճկալ իր գլուխ պացեց,
Խաչեալ Յիսուս աղաչեց,
—Տէր իմ, օգնական, կանչեց,
Գոմշուկներ բէրեց, լծեց.
Բարով ասին, գործ դրին,
Խորոտ հորորներ էրգին,
Մանջկալ կանչեց ամօլին,
Ամօլ կանչեց սժտունվարին,
Գործ չիտակ դիր ի բարին։
Նօրօրայ, դէհ Մարալ, չօրօրայ,
Գութան ակօսան կօրօրայ.
Իւսմէնի տնիկն աւիրայ,
Նէպէթ ակօսներ կը չինայ։
Բացուիր աղօթրան—բարի լուս.
Դէհ ձուռ ջէհիրան մտիր ակօս.
Էկաւ մեր սան տէր Կիրակոս.
Ջանի կռվիռ, մեզի ափսոս։
Զորս գոմէշ ակօսին,
Արև առեր կօտուրին,
Բարև տաս Ոժտան վարին,
Բարով դարձիր վեր գործին։

*) Գործոթ գիւղի տէր Դաւթի Ասածը որ ինքը գրի առած է. կը Թողում. Թէ եւ շատ սխալներ կան՝ բնագրին համեմատ։

Անուշ խով ի, Մարալ գմէչ.
Ձեռ թալէրեմ Աստուծոյ փէշ,
Էն մոռնամ, հալս կէլի գէչ.
Քաշի, քեզի կուրպան, գմէչ.
Գութան ընկէ արտի քոլեր,
Կը ճէռվեռա սիրուն ակներ,
Առավել սաս. դէհ Ուժտուն,
Սիրտ սաղ տրա խետ Աստըծուն։
Գութնի փէտեր ամէն թեղի,
Շուռ կուտայ, հողեր կը թէղի,
Տուշմէնի գլուխ կը թաղի,
Դէհ Շէկօ, Աստուած քե պախի։
Ձէն տուր, ձօ, տնաւեր մանճկալ,
Իսկի չեմ անէ կալմակալ·
Ասա, հօրոր, կանչի պարով,
Քէրթիր, թափիր խալալ զուլալ։
Անուշ դուգա հարաւ քամին,
Մանջկալ կանչից Ամոլվարին։
Ձէն տուր Ուժտան տնաւերին,
Թող կանչի հօրօրն ի … ։
Դէհ արա, Շէկօ, ասեմ բարով,
Գործ բոլորինք Աստուածն ապով,
Մանճկալ, դու կութան թև արա,
Որ ժողուենք մէջնակ Աստուծով։
Վառէրի չուքեր վառէրի,
Պարով գործեր պոլորեր ի,
Մանջկալ մանջին թոռեր ի,
Ջիտէմ տնաւեր քէնմր ի։
Բարով սաս, Ամօլ, չանուորդի,
Դու չես գիտէ արտն կորդի,
Խողն ակօսից կը խօրդի,
Մանճկալի աչքեր կը ճորթի։
Մի նեղացի սիրուն մանճկալ,
Շատ մի էներ կալմակալ,
Զօրս լուծք ունենք, ուդը մալ,
Աշխատինք ուտենք խալալ զուլալ։
Կութան ինկէ արտի ափեր,
Քաշէք իմ սիրուն գոմշուկներ,
Վարենք, ցանենք սիրուն հատիկներ,
Աստուած տայ լը բարիքներ։

Ցիրիկուն ի միջնակ կը խանեմ,
Խէտ իմ Կռուանի էրքեր կասեմ.
Իմ եար իլէ՝ կայնէ տանիս,
Մէջքը բարակ ացի կամիշ.
Ծոցդ էր յէգի, ծծերդ եմիշ.
Ասի.—կը Թողեմ, չիլա գեմիշ,
Ցեղիմ եմ ես, տէրը քազա
Սիրող անեմ, ծծերդ մազա
Ընքերդ Թուխ, աչերդ խաժ ա,
Կը գովամ իմ Շէկոն, կաժա.
Եար մը ունիմ անուն Շուշան.
Իմ մատիս մատնիք քե նշան.
Ունեմ մոնեմ մէջ ակօսան,
Մանջկալ քեզի կլնեմ հայրան:
Ա՜խ երկինք, ամպեր կը գռգռան,
Քո ոտքերաց կուրպան Կռուան.
Շիրին, դու լոզա մէջ ակօսան,
Բարև տանիք էս քոփակ Ոժտան.
Բարև էկաւ, գոմէշ, խամբարձում,
Դաշտերն ի խերկ, սարերն ի ձուն.
Աստուած քակի կամսի մարդու տուն.
Մարալ, ես կուրպան քո հոգուն.
Էրկինք կը խաղայ Թուխ ամպեր,
Ամպեր կը Թափին վարդի ջրեր,
Ձէ կուրպան, սիրուն կռուաններ,
Ես ձեզի կառնեմ, կէլլեմ սարեր:
Ձեզի կուրպան, Շէկօ, Շիրին, Ջէյրան.
Վարէնք, քակենք չայիր չիման.
Տանտէր մէռնի քզի, Կռուան.
Մէկ օր չիկայ մօտ՞ իր կուԹան.
Որ դուԹէնվարներ իմանան:
Կռուան, դէ կուրբան, վարենք մենք.
Շուշուտ մեր գործեր պըրծենք,
Տէր Աստուած, միջնակներ ժողուենք.
Բարով արտ մէլ Նորէն խերկենք:
Կեախ, կռուան, կեախ ի,
Մարալ, կուրպան, վերապախի,
Խարիկվար, Աստուած քե պախէ,
Աչքս կուլայ, սիրտս ուրախ ի:
Տօ, համոլվար, չատ մի ուռէ.

Ամէն մարդու ... միր ձեռն է,
Կասես Ոժտուն, կասես Ոժտուն,
Բէրան կը թալես ամէն մարդուն։
Մանջկալ ասաց.—Համոլ, Ոժտուն,
Սիրտ սաղ արէք խեա Աստըծուն,
Քէլէք իմ. գոմէշներ սիրուն.
Մատաղ կլնեմ ես ձեր հոգուն։
Ցէւար ի, արևմտոց, սիրուն Նազլի,
Ոժանվարի սիրտ եարալու
էն համոլվարն էլի չատ դարցլու։
Մանջկալ կանչեց, ոժտուն—Պետրոս,
Քոռնա քու երկու աչից լուս,
Մէկ չիտակ իրիշկայ ակոս,
Որքան խոբան տրի և փոս։
Ոժտան կանչեց—Մանջկալ ադա',
Ձէվինք ակոսան կը պապղա,
Կռուան մէջ ակոսան կը խաղա։
Մանջկալ ասաց—Ամոլ տարցի տէր.
Աստուած առնէ քիւ խէր ու մէր,
Որ մանջկալ եղնէր քեզի խէր,
Սիրող քեզի կը խասուցեր։
Զորա, կուրբանն, հառաւել տուր,
Սիրող իլերի կայնէ ի դուռ,
Մէջք բարակ խանչլի բուռ,
Գոտին զարկէ Շէրվանի նուռ։
Ես Տէր Դաւիթն կաղտական,
Փախամ, էկամ, խասան, Իրան,
Մէջ իմ ճալին չիւարամ։
Ես Տէր Դաւիթն եմ Գոքծոթեցի,
Շատ ինչերաց ես զուրկ մացի,
Տիրուխնիս Կուրխեցի։
Գործոթ ըսուած բանձր տեղ ա,
Զօրս բոլոր ծառ և ճիւղ ա.
Երբ միտքս գինի սիրտս կը մըռմռա:
Կութնի բառեր կասես գրի.
Տէր Դաւիթ կութան տեսէ՞ր ի.
Ոչ գոմէշ տեսած եմ, ո՛չ լուծ,
Քէր չտեսնի Համիտ իրա հոգուց։
Ե՞րբ լծեր եմ Չէյրան, վարած եմ խողան.
Երբ ուէսեր եմ Շրին, Կռուան,

Դրե՛ր եմ գլուխս վէր գութան։
Երբ վար էրած էմ Գործոթա փոս,
Քոռնայ Շաղոյի էրկու աչից լոս,
Իսկի հայուն չասաց ափսոս.
Որ մենք տէսնէնք կութանի ակոս։
Երբ մենք կութան կանենք.
Դաշտ, սարեր կը խէրկենք.
Բարի—բարի սերմեր կը ցանէնք
Հոգով մարմնով կը փառաւորուէնք։
Գործոթ լռուած տեղը յարմար,
Ցառջենի դուզ, յէտև սար.
Աստուած կտրի Համիտի ճար,
Չի խլէր մեր մալ, մնէնք անճար։
Լծէրինք կութան, վար կանենք.
Մէկիկ Աստուած կապաւինենք։
Մէկէլ չասեն գրի կութան
Հիմա էղած եմ կաղթական
Կութան էրածեն ցէր ու ջան,
Աստուած անի վասա ազգի դիւան։
Իննսունվեց թիւ յունիս մեջին
. . . . Հայերաց մթնցուցին,
Տղան իր մօրից զատեցին։

---

## 2.

# ՀՈՒՆՁՔԻ ԵՐԳԵՐ.

### Ալաշկերտի բարբառով

Ցաներ իք սէլի վրէն 1),
Կը մանիք կոտ կիրիրէն.
Արի՛, տես լուսուն ձեր ջանին,
Գէլնդուորներ ինչ պտի հանին.
Զգի քշինք, դուս հանինք խարմէն,
Որ սկի չզրուցիք մեր դարցէն։

---

1) Քաղուորներ խուրձ կապողներ եւ սայլապաններ փոխ առ փոխ կերգեն։

Ձեր աղէկներուն խանչէք, որ կը մանին նեռ,
Դուք չը կրնաք տանիք մեր ծանօր բեռ։
Հերիք ա, էլ կեռացանք ձեր օրու ճազից·
Շիտակ ամէ էկաւ ձյի վերեւուց.
Էլ կանել չեղի ձղի խոտ տեղ,
Վրռազով յէլէք, փախէք յէնի գեղ։
—Էրկուտղ լէ էղերեք, ինչ որ օխտանոց 1).
Զ'ջօկէք յիրարուց տասնոցն ու քսանոց 2).
Լաճր էք մեր դերընդու ղնգուն ու ղնգոց,
Գընկնի մըջ յարտին խմալ կրակ ու բոց։
Գէրընդէք Թըլխ քխնին քարէն չըխչըխկան,
Էդ սուս ճնանով խըլդ ինչ հասկնան.
Կրնաք դու մեր պէս խօլ ու խաւվարով,
Բէդ խըռձեր կապել հազար դուպարով։
Շատ զրուցեցիք, էլ աղբէր, հէրք ա,
Աստուած էրկսըդ բանիկ լէ յաջողա.
Կանչինք եօթն—անուն. էղնինք մեր բանին,
Դուռ ու դըրկեցին, չընկնինք նեղ օրին։
—Ա՜խ, գէրընդուար, գէրընդուար,
Մուկն ու կատուն պոչաւոր,
Թըրբան ձղի յէտիր ա,
Իլան 3) ձղի կորեր ա։
Մկայ դիգայ հացի զօր,
Հըռ ճաշ փլաւին սխտոր
Ինչ որ տամու հէռէւանց.
Կանիք էչկէք դէմի հաց։
Ուրէշ ումուտ չը մնաց.
Վէրև անձրև՝ ներքև թաց,
Կանչէք դուռս գոյ արևուն,
Բալքիմ չորցու յարտերուն։
—Շատ բլըրել (չատախօսել), աղէկ չէ,
Ցըսօր ճաճաքի վախտ չէ.
Մկայ յարտեր կը չորնան.
Նոր գիդանք դէմ ու դիման։
Շէնք ու չնալք քաղի մէջ.
Ջուր չարչարանք խըձան մէջ։

1) Ինեսուն տարեկան։ 2) Տանկական փողեր։ 3) Փրկութիւն

# 3.

# ՍԱՅԼԻ ԵՐԳ.

**Գործօր գիւղի բարբառով *).**

Մարտօն կանչեց—Մարկոս, որդի,
Կանչիր Թող, գայ խօսս չանորդի,
Թող գայ մեր սէլեր չինի։
Գնաց Մարկոս, խօսուն կանչեց,
Խօս իր քախում—մախում առեց,
Էլաւ էկաւ, Մարտոյի սէլ չինեց։
Խօս ուրագ ուր ձեռ առեց,
Վէր Աստուած աղաւինեց,
Մինչ իրիկուն սէլ չինեց։
Մարտօն վէր սէլին ուրախացաւ,
Երբ սէլը ուր դուան չինած տեսաւ։
Ուրախութենից չքնեցաւ։
Խօս առեց սէլի տիրոջ.—Աղա,
Արի, սէլի կչտին կայնի, խաղա,
Ձայնեա՝ խառն հախի գախ ա։
Կանչեց.—Խօստաղ, դոմէչ խան դուս,
Քոռնա քու աչից էրկու լուս,
Ձեռ լաէ, ինչ կասի իմ խուս (հիւսն)։
Էրթանք, դաշտէն ցորէն պիրենք,
Լծենք եզներ, ցորեն ցանենք.
Խառն ձէն մեր ակնճէն կարենք։
Լծին սէլ, Զէյրան ու Շէկօն.
Խուտաղի անուն էր Մէկօն.
Տունդ աւրրի, տանտէր Հակօն։
Սէլ կոյնաւ դէմ բարդոցին,
Վէրին Աստուած աղաչեցին,
Նար իրենց սէլ բալ.ձեցին։
Շէրին, Զէյրան բերին լէծին.
Սէլ պէրին վէր աղուրին.
Մէկօն էրքեց սէլի էրքեր.

1) Ասել է Գործոթ գիւղացի Տէր Դաւիթ.

Չէն ընկաւ դաշտ ու ձորեր,
Կը խաղին աղուորին գոմշուկներ.
Բարև անեմ իմ Հակոբ աղին,
Սէլն ընկեր խեա աղուրին.
Քէշեց գնաց մէնջ կալին.
Երբ սէլ մէնջ կոլին տեսան,
Տնով—տեղով ուրախացան.
Տօ, Շէկօ, Ջէյրան, ձեզի կուրպան.
Ձեր խոզ վէկ իմ ղուրպին տամ.
Էրոջ տզեր կը ճեռվերայ.
Սէլի ակներ կը փէռփէտա.
Գոմսի մարդու, տան աղբրայ:
Հէ, էլ Կառուտն քեզ ճարան,
Սիրող կայնէքիս կանի մուն,
Սիրող սիրեր էի, կառեմ ջան.
Դու կայներ էս, կովսր կամաց.
Աչքով ինծի կանես իմաց.
Միջէս խալաւ, ուսկոռս մնաց.
Իմ եար կայներ ի մոզ կոնի,
Մէկ մառ կանի, մէկ ճախ կանէ,
Իմ մրազ խեռ քէփէկ Աստուած անիր.
Սէլ բարձեր էն կոռգալ դաշտէն,
Ծիւարեր էմ քու դարեէն,
Գառուեր իմ էրեւէ պտուտէն,
Կը ճէռճէռա սէլի ակներ,
Կը փէղփէլոյ որօրի բառերցներ,
Կուրպան եմ ձեզի գոմշուկներ.

# Ը.

# ԵՐԳԵՐ.

## ԶԱՒԵՇՏԱԿԱՆ ԵՐԳԵՐ *).

### Ա.

**Խլաթայ բարբառով 1)**

Քաւորոյ օլվարն էր ծղոտէն,
Սանամօր միզարն էր պղպջուն.
Ողէ աման կուրիային պիսպիքուն։

---

*) Զաւեշտական երգերն բազմաթիւ են, ընդհանրապէս գութան վարելու միջոցին կերգեն, շատ անգամ եւս պարի՝ հանդէսներու մէջ։ Սոյն երգերը, որ ամեն գաւառ ունի իրեն յատուկ զաւեշտական երգերը, նաեւ օր յօրի կաւելանան ու կը կոկուին։ Շատ տեղեր կարծես հայ ժողովրդեան բնական սովորութիւն դարձած է իրար պարսաւել, նա շատ անգամ միակողմանի կը տեսնէ. հանդէպինի աւելի վատ կողմերը կը տեսնէ. առաւելութիւնները առ ոտն կը կոխէ. բաւական է ամենափոքր թերութիւն մի տեսաւ, մանաւանդ եթէ ցեղական պակսութիւնն եւս ունեցաւ, հետեւեալ օր զաւեշտական ոտանաւոր մի կը հնարէ ու կերգէ։ Առ այս անհաշիւ են ծաղրի երգերն, շատ անգամ անբարոյական. նախադասութիւններով յերիւրուած, որ գրի առնել ամօթ կը բերէ. սակայն կարծես թէ այդ տեսակ երգերն աւելի հռութեան կնիք կը կրեն։ Գիւղացին մի ուրիշ գիւղացւոյ վրայ, գաւառացին մի գաւառացւոյ վրայ կը յերիւրէ. եթէ մին դանուած է մի ուրիշ գիւղ կամ գաւառ, այդ տեղ մի անձէ յարգ չէ գտած, ամբողջ գիւղը կամ գաւառը կը պախարակէ։

1) Հաւաքողներն առած է Բրաբցի Վարդիրէն (Ալաշկերտ)։

—Քաւոր աղա՛, եղ տարան.
—Սանամէր ջան գո՛րուեր տարան.
—Զըմ գիտէր գորուեր տարան 1)։
Քաւորոջ ջալալիքն էր թոռ.
Սանամօր լաչիկն էր ճառ ու մառ.
Սանամօր եղ տարան, խանին ի Բոռ։
Քաւորոջ ճզման էր ղումայ,
Սանամօր պօկերն էր պուռմայ.
Եղ տարան, առան խուրմայ։
Քաւորոջ սլուարն էր թուխ,
Սանամօր ծամերն էր բուխ,
Կտրեցին սանամօր խացն ու ծուխ։
Մառնի վրէն թալած գերան,
Խանին, եղի ճռէն տարան,
Տարան, խասուցին Բաղչու բերան։
Մառան քակեցին, էրին բակ.
Շներ էկած՝ կուտեն լակ.
Եղի ճռէն տարին, խանին քաղաք։
Սանամօր դռներն էր Սալըկուն.
Քաւորոջ ճզմաքն էր խըրախըրտուն,
Սանամէր եղաւ իմաստուն.
Թէ «Քաւոր եղ տարեր ա ուր տուն»։

*
* *

## ԶԱՐԲՕԼՕՃԻԿ.

Դու զա՛ր. բօլօճիկ 2), զա՛ր,
Տղէն տուն կուլայ.
Կիլայ, թըխ լայ.
Կը մեռնի, թըխ մեռնի.
Դու զար ու ես խաղամ.
Իմ կուլ ու fbabrիմ։

Զա՛րկ, բօլօճիկ, զա՛րկ.
Դար մի խաղամ ես.
Ճաշիկ, դու պաղի.
Մինաս, դու քաղի.
Մարան, դու լացի,
Խմոր, դու քացխի։

---

1) Սոյն երեք տողերն ամեն տան վերջ պիտի կրկնուի։

2) Զարբօլօճիկ ճանճի նման միջատը, որ օդի մէջ կը բզզայ մի տեղ եւ յանկարծ մի ուրիշ տեղ փոխուելով կը բզզայ, այսպէս շարունակ. այս բզեզին կը վերագրեն խլաթեցիք ճպուռին ու մրջիւնին առակը։ Խաղալու եւ շատախօսութեան սովոր կինն ճնծուոր Մինասին պաշար տարած միջոցին կը տեսնէ զարբօլօճն, հացը կը դնէ գետին, կը խաղայ։

Բօլօճիկ, դու զարկ,
Սարակ, դու ռոված կաց,
Արև մտաւ,
Մինչև իրկուն դմնմնմ։

* * *

## ՄԿՆԵՐՈՒ ԹԱԳԱՒՈՐ.

Բարեկամներ մեր քէֆ խաբցուցին,
Քէֆ չկէր, ճժեր նստան, լացին.
Խաց չկէր, Թունիր վառեցին.
Պառւկ դրին, խարճկաթ կուրխեցին։
Գացինք, դուռ ու գրկեց ժողուեցինք,
Խարճկաթ գտանք, խոփ մը չքեցինք.
Էն խոփէն խերկ մը չրջեցինք,
Էն խերկի մէջ ցորեն ցանեցինք.
Ցորնի յաքով ամպար մը չիքեցինք։
Մկներ լսեցին, ամպարը ծակեցին.
Մէջի ցորենը տարմատաղան էնեցին,
Գացինք. իրեք Թագաւոր ասկար բերինք.
Մկներու մեծ Թագաւոր բռնեցինք։
Դանակ սրեցինք, զԹագաւոր մորԹեցինք.
Կացին բերինք ու ջարդեցինք.
Կշեռք դրինք ու բաժնեցինք.
Գլուխ ու գագաԹ— ճամբխինք հուքմաք.
Ինչ օ քաահին—տուինք հարսին.
Վզի կաշին, ճամբխինք փաշէն.
Ինչ օ պլօրէն, տուինք մոլլին.
Ինչ օ վզին՝—տուինք դազին.
Ինչ օ դրէժ—տուինք դաճկբէժ.
Ինչ օ կողին—տուինք աղի տղին.
Ինչ օ շիշին, տուինք քէշիշին.
Ցնին ու մննին (աղէք ևլն)—տուինք խպքուճին.
Ինչ օ բլին—տուինք բուլին.
Ինչ օ փէճին—տուինք Մկրտչին.
Ինչ օ փորին—տուինք Միրախորին.
Ինչ օ միջաց—տուինք Խեչաց.
Ինչ օ յետին- մնաց ի քետին.
Բերինք, բաժինք բալաք ճաշին.
Ուր ու փզուր (աղէք մաղէք) փորա խզուք,

Ինչ օ յակնձիներ—տուինք կարմունջին.
Ինչ օ դօշին—տուինք Սիամուշին.
Ինչ օ ոտներուն—տուինք խաղներուն,
Ենոր սրտիկ—տուինք Արտիկ.
Ենոր ճիկար—տուինք Ծիկեար.
Ճամբխինք Բոհդանայ քրտին.
Բաժնեցին ուրանց մանար, բէնտին.
Բրդուճ մը էեկլցաւ, ընկաւ գետին,
Մկներու ձգեր միջէն յելան.
Վըր քրդերու գանգառ կէրթան.
Փաշի մօտ գանգատ էրեցին.
Քրդերու մէկ բերին, բռնեցին.
Փոր ու փորոտը բերին, ձգեցին.
Մկներու թագաւոր միջէն խանեցին.
Մկներ բաժա տօկաւ էրեցին.
Մկներ ու քրդեր իրար զարկեցին.
Քրդեր զօռավկան իրար բերեցին.
Չը մկներ լարկեցին, հնա լալեցին.
Չը կարցան որ մկներ բռնեցին;
Մկներուն յաղթով վիրայեր բաղեցին.

*
* *

Քաչալ էլե կերթայ կանկառ,
Ծամ կուղայ խանկալ—մանկալ,
Քաչլու գլօխ մանկալ։
  Քաչալօ ճաչալամըն.
  Քաչալօ խազալամըն 1)։
Քաչալ էլե, կերթայ մանտանկ,
Գացէ, պրծե ընկե խանդակ,
Գառաայ, չգտայ ջանեակ։
Քաչալ յէլաւ ի տանիս.
Քաչալ, վախենամ մրսիս,
Օսկոր թափեր, մնցեր միս։
Քաչալ գացե կըրակի,
Վախենամ գլուխ բռնկի,
Քաչլու գլուխ դունկի։

Քաչալ յէլաւ գնաց ի յարտ,
Ընդըրա յաղօլ աշխար մնաց մարք.
Գլուխ թափեր մացեր ա գագաթ։
Քաչալ յելեր գացե բանջար,
Գլուխ չկայ մացեր ա ճաչար,
Հէքիմ չկայ, էնայ մէկ ճար։
Քաչալ յելեր, կերթայ ի պըակ.
Գլօխ չկայ, մացեր ա թագ.
Մէջ խլխին ձղեր ա տաակ։
Քաչալ յելեր, կերթայ ժախի.
Ուրին դեռ—դեռ կը ծախի,
Վախենամ խըռ մէկին փախի։
  Քաչալօ ճաչալամըն,
  Քաչալօ խազալամըն։

*
* *

1) Սոյն երգը մինչև յաւէժ տան վերջ պիտի կրկնուի։

Էսա լաճուն ճզմայ պիրէք, խէրն իմանայ,
Էն աղջկան լակաշ պիրէք, իրեն պակաս։
  Էսա լաճուն ալ կարիցէք, փլեր արծաթ,
Էն աղջկան ծալ կարիցէք, թուքեր պակաս։
Էսա լաճուն գըտար պիրէք խաւ, խարուած՝
Էն աղջկան ագռաւակօս, սև գարէ խաց,
    Էրկնքեով աղած,
    Խլոյենց խով թոնէր թխած,
    Աղջկայ մօր կիրիցուցած։
Խաց գեարնցան, մաքուց թացան
Պիրէք ուտեմ, լաճ եմ պիրե, լաճ։

*
* *

Լաճու մօր տարէք արտեր, ռէհան քեաղի, վարդ խատուտայ,
լաճի պիրե, լաճ.
Աղջկայ մօր տարէք արտեր սոխ քեալխնքի քիթ կծկծայ,
քեած ի պիրե քեած։
Լաճու մօր քեահլան ձիանք, խեան էլ ջօրէ, էրթայ խէրանց,
լաճ ի պիրէ լաճ։
Աղջկայ մօր գռոտ իշանք, թող պոչ չընի, վրէն ծծղանք,
քեած ի պիրե քեած։
Լաճու մօր չաքըրէ շարպաթ տուէք, խմի, սիրտ քեաղցրանայ,
լաճ ի պիրե լաճ։
Աղջկայ մօր սիմնդէ վռիկ էփէք, ուտի, թող համ չընի, թող
հոտ չընի,
քեած ի պիրե, քեած։
Լաճու մօր այվան, օթախ, պատեր չինի, թող մէջ քընենի թող
խով ըլնի,
լաճ ի պիրե լաճ։
Աղջկայ մօր տարէք փակիախ, պատեր կու ի, թող մէջ քընենի,
քեած ի պիրե քեած։

## Յ.

### Մոկաց բարբառով *)

Էրանեկ էն օր ինչ քեազախի ապէն վըր ձի էր 1),
Գլխերով ուչքներ օտքերս էր,

*) Գրի առել է Ա. Հայկունի։ Ասել է Խումլիպաւճախցի Քոչոն. բայց սովորած է Մոկացիներից եւ բարբառն էլ Մոկացիների նման բառական լաւ հնչում է։

Մազէ cլուար վրէս էր,
Թrեժ քեօլոզ գլօխս էր.
Դիարպաքրու եազմներ պոլոր փաթերի,
Մուկան մախաթ, ասեղ փողպատոփ կը պլպտէր.
Զանթէն թալերիմ թև,
Խէծայ պիրիակայպուճ (չորի),
Գեացի իմ անըրոջ դուռ,
Ձուլսեմ ի զաճկու գըարկի.
Իմ աներ առաց.
—«Տնաւեր, քեանիմ գեօրով, գեառաֆով իս իկի իմ դիւռ»։
Գեացի Նառոյ մըջ քինի, մըջ քինիկալ,
Դեխ—գեխանց պիրած էն կոըեկէ խաց.
Կը լցին իմ չանթէն.
Ես քեանիմ կը խոռանի.
Էս օր խալխուրցեր իմ
Մարդ իմ իրիս չիքիչկայ։

*
* *

Էրեւանա գուգեամ. հօ՛յ Նարմնայ,
Նախcուն ապէն թեքերս էր. հօ՛յ Նար, Նարմնայ
Մխած չոմախ ձեռքս էր. հօ՛յ Նարմնայ
Դուժ fոլոզ գըլօխս էր. » »
Բըալաf փուշին կապած էր, » »
Կարմիր ջզմէք ոտքերս էր, » »
Պարակայպուչ տակս էր, » »
Գեացի, կայնայ եարոջ դուռ, » »
Եար ձի տաւ թռաւ, դիւս, » »
Իմ կարիպ խօքին խմրցուց, » »
Իմ չեղնի քնիմ քեօ ծուց, » »
Իմ պարակապուջ քաշցը բալւըն,
Մէյ խուրձ եօճջայ թըցի ըառչիւ,
Գընացի անիրոջս տուն.
Բարըւ տուըցը, պարիւս առըցն.
Ջանքաչս թռաւ, կայնից.
Փաթուաւ վզուխ, ասաց.—Օհա՛ն ջաճ,
Քեօ գեալած համբխներին մեռնիմ,
Քեօ բեաճճազրաւ բոյին մեռնիմ,
Քեանիմ գեաւ ու գըեռան իս էկի։

*
* *

# 4.

### Վանայ առանց գիւղի բարբառով 1)

(Մանկալ իր սիրահար Գուլտանին վրայ երգելու միջոցին հացավաճառ Զմօն եկաւ. երգը դարձուց Զմօյի վրայ առ ի ծաղր.)

—Էլեխ մելէխ Մուշլի զամէչ,
Զեռս Թալիմ Աստծոյ փեշ.
ԳուլԹան Թալիմ արտի բիար,
Ձիկան եկաւ, գնդերով հար.
Խաց կը Թխի Թոնրան պրկով,
Գուլտանէն չկայ ասպիկի գրկով.
ԿուէԹաշար բանձրացուցին.
Փուտ փէտերով խեշրանցուցին.
Զմօն ունէր մէկ կոտ էշ.
Էն ով կասի Զմօն ի գէշ.
Քար, կշիռ պատէն ի կախ.
Փլիթ կանի, Թոնիր կանի.

Սոխոթան Սոխոթան չէր,
Սոխոթան պինթան էր.
Աստուած խօզաց չինանէր.
Սոխոթան պինթան էր.

ԳոզԹնի չէմաչէր այնի կաշի,
Նարօզ աչքեր զաւթ գաց ի.

Զմօն դայրացած կը պատասխանէ.

—Սարրակոտա շայիր—չիմաց.
Գարեխաց Թարեցին մէյտան,
Թամբուրի Մանուկ Աւանցի,
Աղ չկէր, բորակ Թալեցի.
Նան չանկանան ծածիկ լցի.
Զում Սարրակայ մէկ դնացի,
ԳուԹնվրներաց կիրիցուցի.

Ծծխոթան լցին պտուկ.
Գինել էլան քանց տըտուկ,
Սոխոթան պիթան անլի էր.
Սօխոթան օրհներ էր 2).

* * *

—Աղջի, արե, քե օսկի առնեմ.
—Զեմ ուզեր բարօ, չեմ ուզեր խէրօ.
—Աղջի, արե, քե ատլաս առնեմ.
—Զեմ ուզեր բարօ, չեմ ուզեր խէրօ.
—Աղջի, արե, քե տամ իրկան,
—Խա բարօ, ջան բարօ, օզարմի քեօ խօրկան.
—Աղջի, արե, քե չամիչ առնեմ,
—Զեմ ուզեր բարօ, չեմ ուզեր խէրօ.
—Աղջի, արե, քե խնձոր առնեմ.
—Զեմ ուզեր բարօ, չեմ ուզեր խէրօ.
—Աղջի, արե, քե բառ առնեմ.
—Զեմ ուզեր բարօ, չեմ ուզեր խէրօ.
—Աղջի, արե, քե տամ իրկան.

1) Ասած է Եղիսաբէթ Կափանճեանց.
2) Այս երգը շատ երկար է. լսած եմ պարելու միջոցին.

—Խա՛, բարօ՛, ջանՑ բարօ՛, օղորմի քեզ խօրկան,
—Աղջի՛, արև՛, էրթանք գիւղի քաղենք.
—Չեմ ուզեր բարօ, չեմ ուզեր խէրօ։
—Աղջի՛, արև՛, էրթանք ցորեն քաղենք։
—Չեմ ուզեր բարօ, չեմ ուզեր խէրօ։
—Աղջի՛, արև՛, քե նշանեմ.
—Խա բարօ, ջան բարօ, օղորմի քեզ խօրկան։
—Աղջի՛, արև՛, քե կարգեմ,
—Խա բարօ, ջան բարօ, օղորմի քեզ խօրկան։

*
* *

Էլայ, գացի ջուր մեր Փրխուս
Լուսր թափեցան գլխուս.
Լարեցին զիս, մի՛նցին ի՛խուս.
Զթուրկեցին գիշեր ընկլի լուս
Ելայ, գացի ջուր մեր Ախլաթ.
Լուսեր էկան օլաթ կօլաթ,
Վեցն էր պոչով. մէկը պծլատ.
Վա՛յ զէն լուսի, մեծեղ լուսր.
Փերեքինտու կարմիր լուսր։
Լուսր էկան կաքար—կաքար.
Կը խարցուցին փաշի քաքար·
Վայ զէն լուսր, մեծեղ լուսր.
Փերեքինտու կարմիր լուսր։
Գիշեր էլան ճըղտւմին ի վեր.
Ցերեկն էլան սնիրն ի վեր. վայ զէն լուսր նլն։
Լուսրն էկան կոխրխնճան.
Լարեցին ձի, կոխեցին մութ քնձան. վայ նլն։
Լուսերն էկան սև ու դեղին.
Էկան, մտան մէջ քեզ բեկլին,
Լուն ու ճանճ, օչիլն ու անիծ. վայ. նլն։
Լուսրն էկան իմալ—իմալ.
Օչիլ քակեց կնկոյ թամալ.
Լուն ու ճանճ, օչիլն ու անիծ։

*
* *

Թէ կուզ իմ նը՝ կաքաւ իմ.
Թէ չէկ իմ նը՝ ծիրին իմ.
Թէ քոնած իմ նը՝ ձըրով չինած իմ.

Թէ սև իմ նը՝ կռուզ իմ.
Թէ կօլօտ իմ նը՝ խօրոտ իմ.
Թէ կէչ իմ նը՝ ատլասի փէշ իմ։
Էրիկ մ'ունիմ չորէ չինած՝
Մէջ պատանին կանի խինած.
Էրիկ մ'ունիմ կուզիկ մուզիկ՝
Բամ՝ էլ ունի չանց մօղօզիկ.
Կուզեմ էն էլ տամ գրողին,
Թոնեմ էթըամ խըատ սիրողին։

## 5.

### Ալաշկերտի բարբառով

Ալիչաքչաքն ու դիռլուլուն,
Խօճա կիվիւն 1) ու fօռ պուպուն.
Էլան գացին վըր խառքըլուն.
Խառքալ թափ էտուր ուր թևերուն.
Ըսեց.—Նամա՛ճ, չզանիկ իմ ձգերուն.
Կեղնիմ քաքար խօճա կիվըւուն։
Ալիչաքչաքն ու դուռլուլուն.
Էլան գացին վըր լակլըկուն.
Լակլակ թափ էտուր ուր թևերուն.
Ասաց.—Նամա՛ճ, չզանիք իմ ձգերուն.
Կեղնիմ ջըտըքուր Խօճա կիվըւուն։
Ալիչաքչաքն ու դուռլուլուն.
Էլան գացին վըր սարեկուն
Սարեկ թափ էտուր ուր թևերուն։
Ասաց.—Նամա՛ճ, չզանիք իմ ձգերուն.
Կեղնիմ վարդապետ Խօճա կիվըւուն։
Ալիչաքչաքն ու դուռլուլուն.
Խօճա կիվիւն ու fօռ պուպուն.
Էլան գացին վըր ճնճըղուն,
Ճնճուղ թափ էտուր ու թևերուն.

1) Կիվիւը մարգագետիններու մէջ բոյն կը շինէ· կեռ ու սուր կտուց ունի յոպոպի մեծութեամբ· գիշերը անցորդի գլխի վերեւը սուր ճիչ հանելով կը դառնայ օդի մէջ հետեւելով նմա, որպէս զի անցորդը չիմանայ բոյնի տեղը, Թռչելու միջոցին (ցերեկը) կը մտնէ մեծ Թռչնոց թեւերու տակ, կտցահարելով թեւերը կը կտորէ, կսպանէ, կասեն։

Ասաց.—Եամա՛ն, չգանիք իմ ձգերուն.
Կեղնիմ սարկաւագ Խօճա կիվըրուն.
Ալիչաքչաքն ու դուռլուլուն.
Խօճա կիվիւն ու ֆօռ պուպուն.
Էլան գացին վէր խռնկուն.
Խռուռնկ թափ էտուր ուր թևերուն.
Ասաց.—Եամա՛ն, չգանիք իմ ձգերուն.
Կեղնիմ աջըղ Խօճա կիվըրուն.

## 6.

**Մօեցոց բարբառով**

### ԼՈՒԻ ԵՐԳ

Ցէլանք գացինք ջուր մի Մըռճան 1),
Լուեր կայնած կը խըրխընջան.
Ձէդ անտէրտանք չեն թորկէ,
Դար մի Նընջամ.
Հաւար լուեր, մաղաք լուեր։
Ցէլանք գացինք ջուր Ձարբաշին,
Դէմ առանք լուանու փաշին.
Փախանք մտանք գոմշու կաշին.
Բռնին կոտուխս ու քաշին.
Հաւար լուեր, մաղաք լուեր։
Ցէլանք գացինք ջուր մի Լաթար,
Լուեր էղած դաքար—դաքար.
Դըր մի մըտնեմ սըքար.
Հաւար լուեր, մաղաք լուեր։
Լուն առաց օչլու թռռին,
Կէս գիշերին լըծեց կոռին.
Առաւ, ընկաւ մէջ ախոռին.
Հաւար լուեր, մաղաք լուեր։
Լուն էլաց համալ—համալ,
Օչիլ չառաւ փիլ ու ֆամար.
Անիծ չըռջեց կընկտոց բամալ,
Հաւար լուեր, մաղաք լուեր։

1) Գրի է առել Գ. Հ., Ասել է Թորոս Անուշեան, որն էլ սովորած է Մշու Սոխկոմ գիւղացի Խաչօ Մելոեանից.

## 7.

### Ղարսի Նախիջեւանի գիւղի բարբառով 1)

Ջուր ու թրվաՃ բերին Ղափլուեցիք.
Թողին փախան Բայնդուրցիք.
Քաբէ քաքող Ղոչալանքցիք.
Ջամբ (չրաղացքի փոչի) ուտող Տիկոռցիք.
Ձուկ ուտող Մաւրդցիք.
Եղ ու պանիր էնող Ազրկցիք.
Աղուէս բռնող Ջալալցիք.
Շուն . . . Ծպնեցիք.
Լոշ հաց ուտող Նախչենցիք 2),
Գաղ ջուր խմող Զրուչեցիք.
Կոտ—կոտ ուտող Բրռկցիք.
Ծառ ուտող Քեքսիցիք.
Կախ չալուար Խարեցիք.
Իշու աղբէր Կաղզուրնցիք.
Մուրազատուր Բագրնցիք,
Արընքոտէր Մաստարեցիք.

## 8.

### Ղումզլու գիւղի բարբառով *)

Ապարանու կալերն հով ա,
Իշուանք տեսանք գիցանք կով ա,
Թան ու մածուն միջուանք ծով ա,
Շէնիկ մնաս, դու Ապարան:
Ապարանու մէկ բան գովանք,
Փէտ ու փտրոց, ամրոց ցան ա,
Ինչ որ ցան ու. մկներ տան ա,

1) Ասել է Գէորգ Ներսէսեան Ղարսի Նախիջեւան գիւղացի. գրի է առել Գ. Հ.

2) Շիրակայ գիւղացիք էլ Ղարսի Նախիջեւանցոց համար ասում են՝ «Քաք ջուր խմող Նախչեւնցիք». որովհետեւ մի փոքրիկ առու կայ որը գալիս է Տիկոռից. ջուրը կեղտոտ. բայց առողջարար. որի ջուրն էլ խմում են տեղացիք, ուր լուանում են շոր, անասուններ ու երեխաներ.

*) Գրի է առել Ա. Հայկունի.

Շէնիկ մնաս, դու Ապարան.
Ջրի տեղ կը խմին եղ,
Ցորեն ընկել ա նեղ տեղ.
Ծմով շինած է գեղ·
Շէնիկ մնաս, դու Ապարան։
Ապարանու Մամար Թաւար,
Երկու աչքից մէկն ա խաւար,
Ոչ հաց ունի, ոչ էլ ձաւար,
Շէնիկ մնաս, դու Ապարան։
Ապարանու կովն ու կթան,
Իշուանք կը լծեն գութան,
Աղջիկ, տղա, բարև կուտան,
Շէնիկ մնաս, դու Ապարան։



# Թ.

# ԱՌԱԾՆԵՐ.

## „ՄԵԾԱՆԱՑ ԽՕՍՔԵՐ“

### I.

**Ալաշկերտի բարբառով** *)

*Աղէկ մըր կտոր ա, ինչ էնիմ չան բերանն ա։*
*Աղուէսներու հարի հրաման էլաւ. փօսք չուկէն ծախեցին։*

---

*) Առածները կոկուած ու զտուած կարճ զրոյցներ են. հայ ժողովուրդը՝ աւելի նուիրական դարձնելու համար «Մեծանաց (Նախահարց) խօսքը»-ով կը կնքէ. մէջ բերելով խօսակցութեան մի յարմար առած. հայ ժողովրդեան մեծ մասն ունին անհաշիւ առածներ. պատահած եմ Մշեցոց ու Բուլանխցոց, որք իրենց վէճը կամ խօսակցութեան մեծ մասը առածներով կը վերջացնեն. երբեմն եւս այնպիսի փաստացի սուր առած մի կասէ, որ հանդէպինը վէճի թելը կը կորսնցնէ. նոյն իսկ եթէ լինէր զարգացեալ եւս։

Բաւական հոգ տարի առածները այստեղ բացատրութեամբ ներկայացնել. սակայն տեսայ իւրաքանչիւր առած բազմակողմանի մտքեր կը պարունակէ. ամեն մարդ տարբեր կերպով կըմբռնէ. որով առածի բուն ոգին պիտի նսեմանար. այն համոզման եկայ որ մեծ ուժեր պէտք են այդպիսի խիստ դժուարին գործ մի գլուխ բերելու համար։

Ինչպէս երգերն, այնպէս եւս անբարոյական առածներ բազմաթիւ են եւ կը պարունակեն ընտիր մտքեր. եթէ բաղդատութեան դնենք հայ առածները քրդերէն առածներու հետ, քիչ տարբերութիւն կը գտնենք. իսկ թուրք պարսիկներու հետ չէ կարելի համեմատել. նոցա առածները բոլորովին անբարոյական խօսքերով կասուեն, քիչ բացառութեամբ։

Ամպ որ պտուտուն առաւօտ ա։
Անալուր խախք էր, մնաց որ ալըրոտաւ։
Անթառամ ծաղիկն որ թոռմաւ, բոզն էլ կը պառուի։
Անուշ էղաւ անուշ մարդուն, յինք քնուկ էր, ուր բաղդ արթուն։
Անուշիկ հնդիկ էր, դիդ մօտիկ։
Ապրայ առ կնճան, մեռայ, մինն էժան։
Առուն չուրի ջուր գայ, գորտան յաչքեր գուս գիգայ։
Աստուած որ fon անծղուն ականջ էնայ, վարդըվրին ձուն կը դնայ։
Աստըծուն Աստօ կը խանչայ։
Արուն ջուր չը դառնայ։

Բան բանտուն, բոյն ի հանար։
Բերանը տոպրակ չէ, որ կապեմ։
Բերանս արնոտ, փորս դարտակ։
Բրդի չուն, տարան, տալան, քչիկ ինչ։

Գացիր էկար, Ճախիրի մէջ քու էչ հեծար։
Գեղի օսկոր գեղի չան կը հասնի։
Գէլը անօթնէ յէլ չէլնի. կըսին.—հա, միրաք իմալ ա կերէ։
Գէշ օրեր էնքան աղէկցած ա, դու գէշ մարդու աղէկիկայ ըսա։
Գիւղը վզէն ճիկեար ին կախած։
Գլխին զարկեցին, ըսեց.—Վայ պառեկս.
Գնա, արի, գինդ էրկու փարայ։
Գովացին Լալիխան, յէլաւ, քաշեց պատուհան։
Գորտան յերես թքուցին, ըսեց.—Օրհնեալ է Աստուած, անձրեւ գեգայ։
Գրմխած նստած ին։

Դատին բոզեր, ուտին խոզեր։
Դարբինը փէտէ փէտատով հորեցին։
Դու լէ քու լեզուներ խառներ ես իւղի եամանճեներուն։
Դոր օր էրկու չուն լծին, յինք կերթայ նստի հոգեր։
Դրկեց ղրկեցին կէչկայ, հոգին կրակ կեցգայ։

Եղ պատաւ, դանակ չատցաւ։
Ես իմ զուռնէն չփչիմ, ինչ ա քու էչ չխրտի։
Ես կուտիմ ղազու պէս, դու կիչկիս բազու պէս։
Ես քղնով, դու ընձնով, էրկուսս էլ Աստըծով։

Ձիս ի բալլին բալլին, ուժէն լէ կոխին։

Հարսնցուն չմտնողը պարմ լէ յէվնլ կը խաղայ։
Հաւ գըռ նոր ա էգե, դագու հաւկիթ կածայ։
Հաւկիթ ուր ծէրի վրէն չկայնի։
Հաւքերու մէջ ֆօռ անծղուն ա հաւնեւ։
Հին հաւերուն «քչա—քչա», նոր հաւերուն «ճու—ճու—ճուա»։

Ձէթ որ կայ գումչու հոգին ա։
Ձին ի ձին կողին, եա կծան կիգայ, եա ագցան։
Ձի չկայ, մաուր կը կապայ։
Ձուկ բռնողի ոռ կը ողկի։

Ղասաբ հրապուն գիլա, էծ պարեւ։
Ղիրէն ա չիքե միճնրէն, բի Ղիրէն քաշա հոգն ի վրէն։

Ճանճի էղած բան մի չէ, ճըմա օր պառի ֆասի մէջ, ֆաշէն կը լաւոթայ։
Ճաշ չէփեր ա, ող կը հալայ։
Ճգտիկ կէնայ մարդու պգտիկ։
Ճըլթաս, յընկնիս մէջ. կը մանիս բօստըճի պլէճ։
Ճրագով կօլորտէնք. տռանց ճրագի գտայ։
Ճրագով մարգու կօլորտի։
Ճրագ ուր բոլոր լուս կիտայ, ուր տակ չի տայ։

Մալին տէր օրդուն հէր։
Մարդ տարի մի ճալի ու մխի օրքալախ կը մնայ։
Մարմանդ գետէն վախեցի, գըմպըլմբան գետէն մի վախեցիր։
Մեր դուռ կուտայ, խլխի դուռ կը հաչայ։
Մէկի յաչքն ա յելէ. մէկել կըսայ.—տուր տանիմ կատուիս։
Մէկ իշով ֆարվաճճութեն պաի էնայ։
Մէկ հաղ ըստ իմ քեռու եղան գեղէն ա։
Մէկ հաւկիթ կէնիմ, յըմեն կը զարկիմ պատ։
Մէկ մէկով. էրկուս Աստըծով. իրեք զօռով։
Մէկ մէկին բաղ մի կիտայ, մէկէլ ճութ մի խաղող չիտայ։
Մէրը տես՝ աղջիկը առ, եղրը տես՝ կտաւն առ։

Ցըմեն հաւք ուր էրամի հետ։
Ցըմեն մարդ կըտակ ուր բաղրճի տակ կը քաշայ։
Ցըմէն մէկ եզան ջվլի դուզ։
Ցըմեն ուր նմանին, ստտանէն ուր խնամին։
Ցըտի չունը վազկան կեղնի։
Ցուշիկ քէլիմ, կուին թուլ ա, շուշուտ քէլիմ, կուին ծուռ ա։

Նաչարն ա խմեր բանճրի ջրեր։

Նա խաչ ու խաչ Նապի (ս. Սարգիս)․ վայ ծր վիռա կօ մաղճատպի։

Նոր օրէնք հին գեղին, որն ա ըլնկե էս օրին։

Շան պոչ քառասուն տարի կաղպար դարկես, էլման էն ա։

Շատ արագին չալե չապիկ։

Շատ հաւուռ Թառ տեսեր էնք, ըրմլա կատար կախ չըրնք տեսե․

Շաքար ըլնկեր ա չան բերան։

Շէն կէնայ մեր տնիկ, տնուշ կենայ մեր կնիկ։

Շունը չնէն, երկուս լէ մէկ տնէն։

Շուն յատ մի փախցուց․—դու ու էդ մէկ դա, պապց տէրը։

Շուն սղանողին քաշել կիտան։

Ո՛ր կերաւ եղե ճմուռ, որ զարկեց գլօխ ի պատ։

Որ տեղ գինի, էն տեղ ջնի,

Որ տեղ էղնի միս ու մոլախ․ կասուն էն տեղ կեղնի ռըսլախ․

Ուլ կողուի տակ չմնայ։

Ունիս կին բարի․ ինչ ունիս հարսնցտուն․ օր ունիս կին չար, ինչ ունիս սգի տուն։

Ուտող չգինայ, բրդող գինայ։

Ունք չինելու տեղ յաչք լէ վրէն տուեց։

Չամչից հաս-հաս, մեղրից մառ-մառ․ չուբի հասանք՝ տեղը դարատկ։

Չը գինայ ծրն ա մեռե, վայ վավիլեր կէնայ։

Չուրի Շուշան զարդրուի, պատարագ լէ կը յարձկուի։

Չուրի չը նմանի, չի խնամի։

Պաղի սիրուն, պաղչի պատեր կը պագայ,

Պապդ մեռաւ, ամօթ վերցաւ:

Պիտունի ի հող․ անպէտքն հողի յերես։

—Ջուր յորէն կը խշաա․—տեղս քարոտ ա։

Ջուր ջաղացքն ա տարե, ըլնկե չըխչըխիկ ժուռ գիգայ։

Սատանից փախայ, գիվու բռաս էկայ։

Սար ու ձոր, իրեցու փար։

Սէրը տուր, արունը ջուր։

Սինամահաւք ըլմեն տեղաց կիչկայ, կուքախանայ, յանեքուն-կիչկայ, կը տրտմի։

## 2.

### Ալաշկերտի Խասաուր գիւղի բարբառով. *)

Անիկն ա տարեր մահիկ։
Աղն ա պակաս թէ մաղը։
Անալուր խաղք, էր, մնաց օր ալրտաու։
Առուտուր էն մարդու մօտից էրայ օր հէրը բազայ ա մեռե, ես աղբօր մօտից, օր բազայ ա բաժնուե։
Աստըծու պահած գառ գէլ չուտայ։
Աստուած օր լսայ ագռաւու ձէն, մարդեվրին ձուն կը գնայ։
Արջն ու գոյլընդ, հովիւն ու դիւանն. որն ա տեսե։

Բանբաղ չեղնի, քախան չիրթայ։
Բօզ չուն ուր վրէն չքով ա։

Գերին գնօջ էղնի, տիրուն կը հասնի։
Գէլ դումաՆ օրուայ ժուռ գիկայ։
Գիքօ ջաղաց էս ա, թեփ ալրի հետ կէս ա. կաղաս էլ էս ա, չաղաս էլ էս ա։
Գույը անէն էղնի, եզը յերդիկէն կելնի։
Գորտն որ գորտ ա, մէկ հաղ թքուս յերսին, կը փախնի մըջ ջրին։

Ես ուրին բան կըսեմ, էնի ընձի պանձ կըսայ։

Էղեր ա ճըմա չուն տոով, կատուն թաթով։
Էն ա ժըժի, օր էստ կըտժի։
Էրթաս էն մեշեն, օր սորուխ էն փեշէն։

Ըհը՛ն, գիւլ էր, դարձաւ բուլբուլ։
յԸնկնել կայ, ուրանալ չկայ։
Ըռհաբ պարկայ քարի հով որ (եթէ) օձ չեղնի։

Թէ էնի պընձի տակն ա, ես յերեսն իմ։
Թթու թան, կեր ու գնա գուլթան։

---

*) Գրի առած է Հմայեակ Բասմաճեան. ուսեալ զարգացեալ. սա սպանուած է Խասաուրայ վերջին դէպքի միջոցին.

Թունդիր հով ա, վրէջին բով ա. տասուերկու ջան ենք. մէկ տերջ կով ա։
Իշու եօթ լողն ա, ջրի մօտ օր գնաց, յրմեն լէ կը մոռնայ։
Իշուն լսեցին մարիֆաթ մի խրճայ, ականջներ տնկեց՝ գռաց։

Լալուան ջորի, տամ խնձորի, մու ու կորի։

Խամար ուր խօսքեր գինայ, օր քար ա, ոտնտի ու կը ծակայ։
Խիրաք չան թալեցին, չուն չկերաւ։
Խռովերիս խեռն ի եռ, եւ անթրոցի մուրը կեր։
Խրատ, խրատ գարնուվի. ես կերթամ ձորնուվի։

Ծոցդ ի առնիս կարճ կնիկ օր Ֆըլեար չէղնի։

Կնքողն իմ, խօ ապրեցնողը չիմ։
Կոտ կիլիրէն կոտից յելեր ա, կը թքու վըր կոտին։
Կուշտ գնաց, անօթի դարձաւ, լիք լիք գնաց դատարկ դարձաւ։

Հայ—տաճիկ եարամազ կեղնի։
Հաւ տուն մնայ, օր կուտ ուտայ։
Հեծնիս նաբընջի ձին օր թա սաղրին նեղ չեղնի։
Հեռու դօլի ձէն անուշ կիգայ։

Ճուճուն կածայ, պուպուն կը գողնայ, էլ ինչ կիմելնայ։

Մալխօն օ Խլօն էղնի, իմ ուտելիքն էլ ճլօն կեղնի։
Մարդ աղբրից օր ջուր խմեց, պէտք չէ ընդոր քար թալայ։
Մարդա մէջ մարդ ունենամ, հազար ոսկի պարտք ունենամ։
Մեծանաց խօսք ա,—էլար որ պոտի fօչիս, համ ճամփու վրէն, համ ճանփու տակ ցանիս։
Մէկի յաչքն ա սուր, մէկի մանկաղը կտուր։
Մէկ Աստուած, հազարաստեղծ։
Մկան ըսին.—յընչի էդ դեար պզտիկ էս.—Կատուի ահից։
Մկան պոչ ուր տուն չալըրոտի. մէջքը կապեր ա չարղաք գօտի։

Ցելնի սիրտ, կորայ գլուխ, յիջնի սիրտ, չգտնի գլուխ։

Նա՛ սառ խեր խիյարնոցէն, Նա բարաֆեաք ձմերկնոցէն։

Շան մամուն, պիաՆ պապուն։
Շուն ապարեցին պանրի տիկ։
Շուն չան միս չուտէր։
Շուն վի՛ր տուն լակ լկայ, էն տեղ կը հաչայ։

Շուռ եկող ոտ քարին կը քինայ։

Ջամչե մէհաճայ կը չիքեռ:
Զկերանք մօտէն, խելրանք հոտէն·
Զխողայ կարմիր չորիկ, խաղայ կշտափորիկ·
Զոր աղբ մարդու փեշեր չկպնի·

Վարս վարեցի, վարոց թալեցի·

Տնից բառնաս տուն կը քանդուի, գեղից բառնաս գեղ կաւիրէ։
Տուր ընձի կարմիր հաւկիթ, առ քղի կարմիր օրեր·

Ցաւն կով Ճախիրի անուն կաւիրի·

Քար գքար կուտայ, ջաղցպան զուր միտ·

Օձ վըր ջրին մարդու չխեթայ·
Օսմանցին լապտարակը սէլով կը տանի·



## Յ.

### Բուլանըխայ բարբառով *)

Ածան հաւը կրկչան կեղնի։
Ահա՛ն, եա գըղուն էս, եա էրգիք։
Աղբուր բըպէն պղտոր է։
Աղուէս ուր պոչ վկայ կը բռնէ։
Աման կը չինէ, կանթ կը դնէ։
Ամեկ հաւք ուր երամի հետ։
Անզգամը գերեզմնի մէջ կը ոքլի։
Անծղու հետ ընկեր էղնող քաք կտուցն է։
Անօթի փորուն, ջուր տուր օռուն։
Անէծք էրկու բերնէն սուր է։
Անուն կայ, անկուն չկայ։
Անցաւ գլուխդ տակ աւեարնի մի գնի։
Առանց ճիտու լէ կը լուսնայ։
Աստուած բոր տայ, էղունգ չտայ։
Աստուած տայ լազուն, որ տայ ձըգուն, չտայ ձգուն, որ չտայ լազուն։
Արուն ջուր չ'դառնայ։

Բաժան հաց մարդու փոր չմնայ։
Բերան ցաւալուն՝ թը յոտներ ցաւայ։

Գիժ քար մը էցվեց հոր, հարիր խելքով չկեարցան հանին։
Գէլ ուր հոգէառ գինայ:
Գէլ ձիաւոր կը ճանչնայ։
Գէշ աղջիկ էս, հաց էրսին կուտուի։
Գէշ խօսք ոիրուն չուտ կը հասնի։
Գիլու բնից օսկոր պակաս չէղնի։
Գիլու ձագ դամազլղ չէղնի։
Գիլուց գէլ կեղնի, կատուից կատու:
Գլուխ էկած գործ չեն աւրեր։
Գողուն, բոզուն քառսուն օր է։

Դեվէն ընկնայ, կաշին գնոչ է։
Դեվի կաշին խշու մի բեռ է, ինչ խտըր լէ ընկնայ։

Խմոր ջուր չառ կը վերու։
Խնամու համար եա բեռ մի սուտ, եա բեռ մի փարայ։
Խնամու սուտ ալ մի չքաշէ։
Խօ մարդ չէ, փողցի մարդ է։
Խօսք գայ, խօսք կը բերէ։

Կով Ալաշկերտու, հորթ Մանծկերտու։
Կուժ քիանի փարչին, փարչն ալ կը քիանի կժան։
Կուտիմ, եղն ալ ի վրէն։
Կրունկ կը խեթէ, պուճուճակ (ծոծրակ) կուռի։
Հազր տղի տատմէր։
Հարամ գիգայ, հալալ կը տանէ։
Հասկցողին դոհուլ զուսանք (մեծ թմբուկ) հերիք է։
Հաց տնէն, թաց տնէն։
Հերնի գլխին գամբոց չկարկին։
Հօր, մօր գովացած թորկ թըղ կորի, խըլըլի գովացած առ ու փախի։

Ձեռաց հանգուրձ ընկաւ ակուէք։
Ձիր տախտակ մըխ կը վերցու։
Ձին օր ձի է, կեմ կը զաւբէ, դու քու բերան չզաւբէս։
Ձուկը գլխիցն է հոտած։

Ճանկ մի ցորեն տեսար, հզար ճանկ լէ գինաս։
Ճանճը բան մի չէ, որ պատի աղբի մէջ, կը լաւոթէ։
Ճաշի էրես, փլաւի տակ, կռուա վերջ.
Ճարիմ, մուրիմ, քըզի՛ պահիմ։
Ճզտիկն է էրեր պզտիկ։
Ճիտուն յիսուն կնիկ կայ, մարդուն մէկ կնիկ։
Ճնճուղն օր ճնճուղ է, էլման ուրին կը թալէ փշի հով։

Մանտր կը կոխէ, բէդ կը բըրտճէ։
Մարդ կայ, մարդակ լէ կայ։
Մարդ մը, որ իրեն չեղաւ, խրատն ինչ կնէ։
Մարդու կնիկ աղէկ էղնի, թըխ օրական տաս գամբոց (մը ատանցք) զարկէ մարդու։
Մացեր է օղակը։
Մեծ գետի ճանբէն մեծ կեղնի։
Մեծարանց խօսք է. լծէ զքու մոզին, մը կանի ի դուռ բազին։
Մեծէ ըսած՝ պզտըկի լած։
Մեղր ծախող մատներ կը լիզէ։

Մզրախ պարկ չմանի։
Մէկ իծու պանիր էր։
Մէկ մէկի դարտից խապար չէ, կէս գիշերին ժամ կկանչէ։
Մէկ չէն, կարժէ տաս աւեր՝
Միս ուտող հաւքու կտուց կեռ է։
Մողոզիկներուց փախայ, օձի բռանը էկայ։
Մոմ էղանք վառանք, էլման չէղաւ։
Մուկ մտնի ձեր ամբար, ուր պոչ չալրոտի։
Մուկն ու կատուն կռուեցան, ձեր տուն թունդիր պատին։
Մուկն ուր գուռ առած է։

Յիրկուայ խօսք լուսուն չընկնայ։

Ներսին ու դըսին մէկ խելք ինչ պտի էնեն։
Նէ՛ թքելու է, նէ՛ կլուցելու։
Նէ՛ ուրին է, նէ՛ ելուն։

Շուն հաչալով ժամ չմտցըլի։
Շատ խաղ գինամ, ձէնս չգար։
Շուն ինչ ուտէ, էն կը փսխէ։
Շուն կը թորկէ զքար թալող, զքար կը խածէ։
Շուն շուն է, ինչ Ալշուն, ինչ Բալաք։
Շուն ուր տէր չճանչնար։

Ոչ կուտեմ քու վռիկ, ոչ կը քշեմ քու հորթը։
Ոչ տեսանես Եգիպտոս։
Ուրիշի հաց մարդու փոր չը մնայ։
Ուրիշի ձեռքով հաց մուտի։
Ուրիշի հոր փորես, դու կընգնաս։
Ուր հոր ժամ չէնէ, խղղի պատարագ կէնէ։
Ո՞ւր օր էղնի, իշու փալան չալակն է։

Ջար կատուն չորս ոտով կընկնա յակնատ։
Ջգոլացած տուն է մանցի։
Ջըմ հոգայ դէգնի չալակս, կը հոգամ դդարըպիչ նի էտեւ։
Ջորի հետ թայն էլ կը կպի։
Ջուրի խելօք մտածէ. ծուռ հարսնիք կենէ։
Ջցանած կը քաղիմ։

Պզտիկ կապով չխեղդուիմ։
Պզտիկն որ քար կիտայ, մեծ չկեռանայ վերցու։

Ջաղաց վերնական, դեեր օգնական։
Ջուր ընկէ առուըներ, ոէր ընկէ պառուըներ։
Ջուր չառուտինէ կը ճապղի։

Սոլանդըստկի (սարդ) պէս դատող էղիր։
Սապախսան չուտ էլլող, չուտ ակռատտ ուտող, չուտ կար-գուող չը փօշմընի։
Սապախսան քուն անուշ է, սատանէք ոտքեր կը մաժին. ենա էլլամ, հա էլլամ, կէղնի կէս օր։
Սէրը խսէրն է կպի, ոէրն աթարն է կպի. աթարն ի պառ։
Սէրը սովորն ա կերե, ծուածեղ քաւոր։
Սորմուկ ձեռ չկայնի։
Սուլուկ փարէն տիրոջն է։

Վայ քզի գեղ, որ ըռէս Գապոն է։
Վանից Ֆոռն, ինչ ղդըր չատ էղնի, կըսէ.—քիչ է։

Տէրտըրոջ գալ, սանամօր պարկիլ։
Տիւճիկն պառուեր է, գնացիր է գետնի խեր. ամօթնի կնկայ երեսէն, խիրաքճի մարդու սրտէն։

Փարէն փըկէ ամենայն չարէն։
Փարչիկ, քեզ ասեմ, կժիկ, դու լսե։
Փշի հով, փեսի հով մէկ է։

Քաշէ կաղնի փէտ, ընկի կնկայ կչտներ։
Քարոտ ջրի ձէն գիգայ։
Քար ուր տեղ ծանր է։
Քընց քար մազան. չնէն չատ հաչան։
Քիչ բարձի, վռազ դարձի։
Քու քաք, դու որ կըսես, ոնծղներ էն տեղ չտանին։
Քոռ իշուն Ֆոռ Ճալպանը։

Օլորտման կատում, կաժէ նաստըման առուծ։
Օձ աճճալ գլուխ պահէ։
Օձ է, ոտներ փորն է։
Օձու կծած կըսաղնայ, լեզուի կծած չը սաղնայ։
Օձու ձագ հաւու ձագ չեղնի։
Օտաց սլած կը կանի, լեզուի սլած չը կանի։
Օտարին մաշակալ, ինքը բոբիկ։
Օր էղնի, աղէկ էղնի։



# Գ.

### Մշոյ բարբառով *)

Աղուէս չհասաւ միսին, ըսեց.—Փթիւ, հոտած է։
Աղջկայ ղալաճ մամուն կը հասնի. աղջկայ մամու ամանչ չատ է։
Աման չինող, կանթ կը դնէ։
Անամօթ էրես թքուցին, ըսեց,—Երկնական անձրեւ է։
Անթառան ծաղիկ չի թոռմի. բոզ կնիկ չը պառուի։
Անխելքի չմնայ հոր մը՝ մանէք։
Անուն կայ, անկուն չկայ։
Աչուներ որ կը լծին հորէք, կըսին.—հօ, հօ, քու մամ ու պապ դէզ է էրած, դու լէ դէզ էրէ։
Աստուած տայ մամուն, որ տայ տղին.
Արջու ձեռ չհասաւ խնձորին, ըսեց.—Թթու է։
Աւզի վրէն հիմ դնել կեղնի։

Բոբիկ ոտք յըմըն օր կօշկրի դուռն է։
Բռնէ գդու միս, խղճայ գդու ընկեր։
Բռնիմ պոչէն, թալիմ ձորէն։

Գետ չըմ խեղդուեցի, յառուն պտի խեղդուիմ։
Գիլու գլխին աւետրան կարդացին, ըսեց,—Թող, օչխար սարէն գնաց։
Գացի պըրակ, ընկայ կըրակ։
Գող կըսէ.—Աշխար գող է։
Գող, սիրտը դող։

Դանակ զուր կոթ չքերէ։
Դանակ ոսկըռին հասեր է։
Դարտակ գացիր՝ յըլնին էկար, յըլնին գացիր, դարտակ էկար։

Երդում երկու բերնէն սուր է։

Զօղն է պակաս, խաճ զմաղը։

Էդի բերան չէր, աւերան էր։
Էծը ուր ոտքէն կը կախէն, մաքին ուր ոտքէն։
Էշը չեղնիր մատաղ, ուր գին ինչ ա։

*) Ասած է Սմբատ Տէր Ղեւոնդեան։ Ներկայ առածները ամբողջապէս գործածուած են «Մշոյ հարսանիք»ը գրքւածի մէջ այլ բազմաթիւ ասածներով ու գրոյցներով եւ բուն իսկ Մշոյ բարբառով։

Էն խօսքր չոր չիմ որ կպիմ մարդու պօկ. էն խօսքր լէ կա-
կակուղ չիմ որ գնձի կլուն։

Էն ձեռքը որ չի կտրուիր, պագիր, դնէս գլխուդ։

Թը տանձ էնք՝ հասանք, թը խնձոր էնք, կարմրեցանք, թը թթու էր թթուանք։

Թէր, գդալ մը ջուր պակսի ծովէն։

Թունդ քացախը դուր աման կը կտրէ։

Ինչ տեսերինք, տեսերինք. հըմայ դանակ դուր կոթ քերէ չըրնք տեսի։

Ինչքան որ քացախ սուրբ է, իրեն պլիկ կը պատռէ։

Ինչ որ ըսին կը վելէ, իտանք, չարչին թը բերէ։

Իշու հեծնալ մէկ, իջնալ հզար։

Խև գնաց ուրիշ տուն, ըսեց.—ըդի աղէկ էր քընց մըր տուն։

Խևին խրատ ինչ կէնե, սևին սապօն։

Ծանար նստի, կչեռ քաշիս։

Ծանար նստի, խիտր գաս։

Ծառ քօքից փտած է, ճուղն ինչ էնե։

Ծուածըղի յապով քալի պոչ կը լիզիս։

Ծուռ մարդու ջաղացք Աստուած կաղայ։

Ծուռ նստինք, շիտակ գըուցինք։

Ծուռ տօղախին ճզմայ, խնլոտ քթին խզմայ։

Կը ժաժէ, կաժէ։

Կիսուր մեռաւ, տեղը լէնցաւ։

Կնկայ մազեր էրկէն, խելքը կարճ։

Կովն գողտուկ եզին գիկայ, ալկնին կը ծնի։

Կոտ կիրիրի սերման բերողն է։

Հա Եալին կը զարնի, հա մխին։

Հարի չի գինամ ցամարը, տրունը չըմ տանիմ։

Հարուստի սուտը աղքըտի օղորթէն աղէկ է։

Հացն էզէ ձիաւոր, մենք տտաւոր, չընք հասնի։

Հացն է պակաս, թացն է պակաս, աղն է պակաս թէ մաղն է պակաս։

Հաւ խաչած դարի կուտէ։

Հաւորքներու մէջ fon անծղուն հաւնար, ինչ է Եղօւն է։ —

Հերիք է էրկէն ալէլույա։

Հովըւու սիրտ ուզէ, ներուց կաթ կը հանէ։

Ձուկ բռնողի ոռ կը թրջի։
Ճետ չիս էղի, թառ կը թռնիս։
Ճնճղու ոտներ մրսան, ըսեց.—Գարուն էլնիմ, գուրպայ գործիմ։ Գարուն էկաւ, ըսեց.—Ես դո՛ր, գուրպան դո՛ր։

Մարդ մը ուր ուժ չգինայ, կուլաշչու հետ կուլաճ չի կպիր։
Մեռնելէն բռնէ, որ դողի ըռազի էղնի։
Մէկի մուր քսենք մէկէլի յերես։
Մէկ ձեռքի փէշկիր տուած են մզի, բերած բոլոր սարթ թելերով կը կարին։
Մէկ մէկով, էրկուս Աստըծով։
Մըր սիրտ չաթալ է։
Մկայ քամին ձերն է, էրնէք, եր մզի կընգնայ, մենք դգում կխտանք քամու։
Մշեցիք կարմիր պուտուկ քաքնող ին. ընդոնք կեղնին գեղացու պարա։
Մուկ լէ զաղանձ կուտէ։
Մուկ ուր դուռ ասլան կը դառնայ։

Ցեխելի բրդուճ մարդու աչք չը հանէր։
Ցըմալ կենիմ օր ըսելիք էղնի։

Նազ կենիս, ճազ կենիս։

Շան պոչ կաղպար դրին, եփոր թորկին, էլման էն է։
Շատ դատողին չալէ չապիկ, քիչ դատողին ապրշըմէ չապիկ։
Շատ խօսողի գլուխ ծակ է։
Շար լը ծովէ, ճա լը բէդարէ.—կռիվը սրտի մէջ, այլ ոչ կալին։
Շուն կը հաչայ, քարւան կընցնայ։

Ո՛ր կերաւ եղն ու ճմուռ, ո՛ր զարկեց գլուխ դուռ։
Ո՛ր կերաւ ծուածեղ, ո՛ր զարկեց գլուխ պատ։
Ո՛ր տուն օր մեծ չկայ, մեծ քար մի դրէք։
Որն օր էրթայ մէշէն, կը սորվի զուր փէշէն։
Ուրիշ տեղ մէկ մէկ ծուռ, մշեցիք մեծ ու պզտիկ ծուռ։

Ձոր տեղ էրթանք, կը կանչըցունք։

Պզտիկ տղին ըսին.—Ցորէն դիլաս.—Իմ ճազ կընցնի։
Պէտքն ի հող, անպէտքն ի յալե։
Պլեկ փարայ է, խօսք բեռան պարայ է։
Պուտուկ եռայ, թափի բոլոր։

Պօլ է փարէն, կը սաղցու ըզ եարէն։
Ջաղացք ինչ մտքի է, ջաղջպան ինչ մտքի։

Սև եզ, սև տալուն։

Տաս չափէ, մէկ կտրէ։
Տէրտէր քէնի անօթնայ, բարեկիննդնի քաթէն միտք կընկնայ։
Ցղան մհաճայ, մամ կչտանայ։
Տղի տուն խապար չին, աղջկայ տուն դօռւլ զօռնայ։

Ցուրտը խլլոտին մահաճայ։

Փէտէ մաշա, քրդու փաշայ։։
Փչում դու ցածցի, փչում չէ էն բանցընայ, փոշք հանկիք իրար։

Քեշիշ, պէյէ իշ՝ պէյէ փորցան քիմ կեօրմիշ·
Քթէն լուն պատի հզար փչուր կեղնի։
Քիթս առ գայ, ինչ օր ըսիմ, վրէս գիգայ։
Քիչ զրուցէ, շատ հասկցի։
Քու մամ կերաւ ծուածեղ, քզի բերեց քօռ անծեղ։
Քօռի պէտքն է, մոմ թանկ է։

Օլորտող աղուէս պառկած ասլանէն շատ բան գինայ։
Օձի խեթած չուանի հետից կը վախենայ։
Օղորթ խօսողի գլուխ ծակ է։
Օղորթ խօսողի ձին դուռն է։
Օսկրի դանին է։
Օտինայ (անջուր վայր) մարդ գինի օր խմէ, կը ծռի։



# 5.

**Խլաթայ բարբառով** *)

Ամրան պարկիմ խոտեր, ձմրան խառին կովեր։
Ապա չէ, իմ քիթ կը քորի քե ապով։

Գիլու բնի բոլոր օսկոր իսկի կեղծնայ։
Գիլու ձագ իսկի դամազըղ կընի։

Դէ, արև էառ գէչ, էառ գլէն խանայ։
Դեվին ասին.—Քու վիզ ծուռն ա, ասաց.—Իմ որ տեղը շիտակ ա։
Դիզըանք դէզ ա, խոզեր էրդիսնուվի կիջին։

Ես զաքի քանը չորս մխի վրէն կը խաղամ։

Էն էլ նեպօ պարանցյար կը մեռնի։
Էշը ընկաւ գարու փոր.—լաւ ա, ասաց խըրճ իմ ախոռ։

Իշըրտուկ էղեր ա էս տեղ մանիչակ։

Խուն օ խաշի, խատիկ չուտայ։

Կախմխին կանչայ.—Իմ ետք իր ձի փեսայ, ես ճնիտու քեարեր վըր ճղիմ։

Հալալ զաեէն կը չինայ, հարամ զաեէն կաւիրայ։

Ծեռ կասա.—Ծար տէւ, ատէնեմ իմ կխոռկը ընցնեմ։

Մըր դօլված փախեր ա, օ դառնայ ոյիգոյ, ճեռ լէ ծուկիթ կածայ։
Մինակ մարդ ուր ախուն աւրջուն պապէր կասայ։

Ցըմալ ընկէ, էղև եօթ իշու մաուր։
Ցուշիկ կուրթայ, մուխբեամ կը կոխայ, գետնի ծամարը կը կտրայ։

Նա տուն ունինք տուն ի վրէն, եա թունտիր ունինք խուփն ի վրէն։

Ուր թասին ընկե, ուր դարաղին իսկի չընկի։

Պապէն էլաւ լէն, ընկհաւ մըջ դըլին։

Տղէկներ վազան դըխ իշուանք, աղջկներ ասին.—Մեր տէրն Աստուած։

---

*) Ասած է Խլաթայ Քըրս գիւղացի Մարիբէկ (Արեւշատ)։

# Ե.

### Վանայ բարբառով

Ա՛խ կիրիբայ. գեամ խելացդ վրայ. դու արիր որ ես քե կերայ
Ակռի կեղտ, փորի դեղ։
Ախբէրը սաաց.—ձիկ քեոր չկայ, քեոր սաաց.—Իմ ախբօր արեւ
Աղէկ մանած էլնէր, ուր լօր պատից կախած կելնէր։
Աղէկ օր առաւօտընէ, աղէկ տարին գարունէ։
Աղէկութեն արա, թալ թող ջուրը տանէ։
Անխամ խալս խէրանց, անխամ փեսէն աներանց։
Անպ օրուայ առաւօտ, մօն կնկայ լիրիկուն։
Աչքս ընկաւ դդում, սիրտ էլաւ տրտում։
Աւեց կուտը, մաաւ մութը։
Աստուած որ կուկան ձէն լսի, վարդեվրին ձուն կը տնի։
Աստըւորիս խաց Աստուած ձիկ չի կերիցուցէ տանը։
Արծուու չինած՝ մկան աւիրած։

Բանի գլուղ, խօսքի դլուղ։
Բարի ես, բար կացի. չար ես՝ հու դարձի։
Բարտի ծառը կերթայ գիւգհայ, սիրոյ տէր ի. ուռի ծառը կերթայ գիւգեայ դարդի տէր ի։

Գարեխաց ցածրացաւ, կորեկ խաց բանցրացաւ.
Գեղ կայնի, գերան կը կոտրի։
Գէլ չուզէր անպ օր։
Գէշ օր կաղէկնայ, գէշ մարդ չաղէկնայ։

Դանկով զարկիմ, բամբկով կալիմ։
Դիւուն չուր պժոխք չանց չիտաս, արքայութինին չի տեսանայ։
Դու սաս, ես կը լսեմ... ծէրը կը քսեմ։

Ես քե մեռնեմ Վանայ լուսին, համ բոլոր ի, համ բէդբէգ ի, Համբաղ էղնի Շատխու լուսիկ, համ պզտիկ ի, համ ճլըթիկ ի, համ տնլուսիկ ի։

Երեսդ չանց պուտկի տակ սիվտակ ի։

Զարկինք լաճկայ, ընկանք կասայ։

Էժան միս, պտույն ի մաչե։

Էն ալրից, էն եղից, էն դաւըշ տանտիկնից։
Էն աղուէս ի, ես էլ ինոր պոչն իմ։
Էնպէս կուգեամ՝ զարմանաս, էնպէս էրթամ՝ չիմանաս։
Էշը մեր էշն ի, փալանն փոխուեր ի։
Էշ ինչ գիտի նուշ ինչ ի. չինական ինչ գիտի եօթ բուռլու ճաշ ինչ ի։
Էօ չտնի. էս չարական չատ ի։

Ըղտու խաղ վեր կարմնջին։
Էմեն խաւուն խորոված, կոր անծղուն էլ քըճըճած։
Ընտրտի, ընտրտոց կինի։

Թան—թանանայ, պապէս ուտի զուարթանայ։
Թաց ու չոր մէջ տեղ կը վառուին։
Թէ կուզես շուն չտեսնես. Աստուած կանչի չոտ բայրամ գեայ։

Իմ խէրանց տուն չէն էլնի, կեր ու կործ. Ճեամբախ էլնի կէսրանց տուն, կեր ու լուայ։
Իմ կնիկ սուտ մուղտուսի, ուր կը պախի, ելին կասի։
Ինաց էրաց էլերուն, ոռը տուեց գէլէրուն։
Ինը կէր, մէկ էլ տաս, կեօ նոր էկաւ մեր ծուռ խալաս։
Իրիկ, կնիկ կռուան, անխմաք մարդեր գիտցան բաժնուան։
Իրիշկէ գլխաւորիդ բրդուճդի ջոջ արա, իրիշկէ որդուդ բրդուճդ պստիկ արա։

Լուսնակ գիշեր բալաֆ չուանն, թէ չտանի խուրձ քսան. դոտխ կեանեմ կցան։

Խազար կը մեռնի, մէկ չի շուարի. մէկ կը մեռնի խազար կը շուարի։
Խաղայ կչտափորիկ, չի խաղայ կարմրատոտիկ։
Խաղողի սիրուն ճիրախանի պատեր կը լկոթի։
Խասա, բարակ մէկ դին ի, վայ բարակ մանողին։
Խաց մը տուր խացարարին, մէկ էլ աւէլի տուր։
—Խարս, կար կարի.—Կեօ իմ խօր տան ասեղ բիրէք, կարեմ, տաաց։
Խարսն ի գեղէն, խացն ի գեղէն. եղն ի գեղէն, ջուրն ի անէն. ակա Օխան քեռ տունը չէն։
Խապար կիւղեայ. խապար կը տանի դիւա։
Խարսնիս ձիկ պիտի, խաչ օխնէն իմ եօթ մօրին։
Խացը դրած՝ բանը անիծած։

Խաց մեր ծնկեան, աչք մեր կծկեան։

Խաւից, խաւլաւիծ, պապիկ ուտի, ինի ոտից։

Խու քեանի կլաւնայ, ու կը ննջնայ։

Խմէ մէկ խատիկ, կեր անուշ գատիկ. խմես էրկու խատիկ, կելնիս խաղք ու խատիկ. խմեցիր չորս հինգ խատիկ, գլեօխդ կը գանես պատէ պատիկ. կը կոտրի քու ճակատն ու քու ընքիկ։

Խնամի, խօս իս իկե, դարդակ ու բօս իս իկե, չուխա մը բլօճ իս բիրե, ինոր մէկ դիւ իս կիրե։

Խոր փորող խոր կինի։

Խուփ գլորուաւ գնտաւ պտուկ։

Խպարտացողի տակ փուտ ի։

Ծառ կըյնի, ճեօղ կը կայնի։

Ծիծեռնակը տանը շինութեն ի. ծիտը տանը աւերութեն ի։

Ծուռ գնաց խարանատուն.—ըսաւ աղէկ ի չանց մեր տուն, տնացք։

Կայ աշխարհի, չկայ անապատի։

Կայ կլէզիդ, որ զանիս մեր վզին, որ չկայ, որ տէ կը զարկես վեր վզին։

Կատուէին խաղ, մկան մահ։

Կարգ վերցաւ, խարկն էլ վերցաւ։

Կարդցւոր դանձի տաճիյ ի։

Կեող կը բռնի տանտէր, որ տան տէր չի բռնի կնող։

Կեօ նոր էկան իմ խրեր խին շորերով, իմ խրեր մօմ շորերով իմ խրեր։

Կեօղ ուր մաքով սըլ ի (կասկածաւոր)։

Կերաւ հուղ, կթրաւ աղուէս, աչք էխան տատրըկան։

Կիրեր իս մածուն, թռեր իս ածուն։

Կիրակին, ոչ կիրակմտին։

Կնկեան մարդ սեղան, մարդու մարդ փողան։

Կովը մեռաւ, կաթը ցամքեաւ։

Կուզեաս պառուն տէր օղորմին»։

Կուշտն ինչ գիտի անօթու հալ։

Կուժթ անձրեւու տակ քարի դառը կուլայ։

Կուփկ ուզեց կեաքեու քէշը քշեր, կաղան էլ մոռցաւ։

—Կուփկ ինչի կը չորորաս,—կաքեաւ եմ.—Ինչի քեամք կուտես, —Նաչար էմ։

Կտել—կտել ժողուեցի. չերեփ—չերեփ թըռուեցի։

Համ խղան, համ դըղալըղան։

Հայ Նաւսիկ, հոյ Նաւսիկ. չուն ու գէլ Նաւսիկ. ես էլ էն չեմ որ դու գէկ գիտես:
Համ էլայ Սարփայ տանձից, համ Կլաթ խնձորից.
Համ տուն ի, համ տանիս, համ բեպաշանակ, համ Թաղիս.
Հըմենին ծով ի, վըր ձկկ սով ի.

Չի տար քու խօր տուն կաքրճի, կափուճի, դուռն եճրըճի:
Ձուն գլխից, խող՝ գլխից:

Ճարտար մուկ ջուխտ ոտնով կլնի ակնատ:

Մանէն մանած ի, պատէն կախած ի:
Մասխարայ—մասխարայ, անծեղններաց էլ մասխարայ:
Մարդ մարդու դուրս չգիտի, կէս գիշերին ժամ կը կանչի:
Մեծախօսի ձեռքէն բան չգեայ:
Մեծ գլխու դովլաթ ի, պստիկ գլխու ցոլլաթ ի:
Մեղաւոր Նստաւ լուացք, ձէնն էտուր ամպերաց:
Մենք գիտենք մեր դաշտի պիւպիւն:
Մենք պսայուանք՝ մեր գլուխ եղոտաւ, էն էլ թող պսայուի՝ ուր գլուխ մեղրոտի:
Մեռել ուտի կը յարի, կենդանին տանեք կը լարի:
Մեռնիմ էն տաշտին, որ տաշտամ էլ կախէ կշտին:
Մէկ կայ, խազար կաժի, խազար կայ մէկ չաժի:
Մէկ մի տար, երկուս կուզի:
Մէկով տունը չէն, երկրով կիպաշէն, իրեքով խըմնով աւեր:
Մէկ օր կանի քարոց քարկենդան, մէկէլ օր կը նստի սկստայ:
Մէջ Արարք, մէջ Վարագ, ես մացի անկարգ:
Մէջ ծաղկներաց խռնգած, մէջ խաւքերաց դարդարէն էս խաւնէ:
Մկան չեռ ծակուն օգուտ ի:
Մնջիկ—մնջիկ, սև էրնջիկ:
Մշակ աղէկ էլնէր, ուր տուն մշակ կէլնէր:
Մոնութեն արող ուր կանի:
Մտի տուն, իբեշկի տուն, տաշ կայ տուն. ծուռ կայ տուն:
Մօր կայ, մօրդ աման չը կայ:

Ցէրդ ու դարդ, իմ խռնցաւ վեր քե քարի. չուր խազար տարի:

Նա՛ դաշտի մրգին ի, Նա սարի թըքին ի, Նա՛ տանի, Նապանի:
Նա՛ կնիկ ունիմ կծան, Նա՛ խէր ծեծան:

Նալլաք գէր Յաւսին. Թուք չքիւէր էրախին։

Նախիր էկաւ վէր դարին, Յախրդու կնիկ կոյնաւ վէր բանին։

Նանէն մատաղ քեզ սիպտակ ոտներաց, տասց անծեղ ուր ծագերաց։

Նա՛ վէր գդլին կը դագրի. Յա՛ վէր չերփին,։

Նորու տղէն ծամ ուշ սիպտըկի, փլիճ չոտ։

Նստած մարդ թախտափուշ կը գեօրծի։

Նստեր պաղ սրախին. կը ծեծէ բուքն ու քամին։

Շախլախուն բերեմ թէ մախլախուն։

Շան ոտ՝ Մշու դաշտ։

Շապիկ կարեր, պըծեր իմ. մացեր ի չորս կարնէ ի կարին, փողպատն ու ագին։

Շատ անօթնալ տաշտին՝ շատ կեղտանալ սապոնին գիան է։

Շատ արողին չալէ չապիկ, քիչ արողին չարէ չապիկ։

Շէն կենայ մեր տնիկ, անուշ կինայ մեր կնիկ։

Շէն տան տղայ, քաժայ խացի կարօտ։

Շինական օր չփօթի, չարուխ ոտներ դիւտի։

Շինական, վէր ական։

Շուն խան պատն ի վեր։

Շուն յիշացիր, փէտ խետ կշտիդ։

Ո՛չ կը կղայ, ոչ կը բղայ։

Ո՛չ խայի խունկ ի, ո՛չ Թուրքի ուզուրլուկ։

Ով կիրակին կիրակմուտ չպախի, մէջ կրակին մաշի։

Որ ունիս աղէկ կին. ինչ ունիս խարսնատուն։

Որ ունիս մեռել տուն, ինչ ունիս ժամ տուն։

Ուզից կաքւու քէլք քէլել, կոկան էլ մոռցաւ։

Ուռին ու բարտին, խետ ուր մարդին.

Ուսթա Խլղաթ խուր իկե, ուտել խմել դիւր իկե, ձեռնէն չի գեայ դո՛ր իկե։

Ջամչից լատ—խատ, մեղրից մատ—մատ, կիրիշկեմ տեղը դարտակ։

Ջարոց ճարտար, բարոց տխմար։

Ջեմ գեովար քեզ խօրտկութեն, կը գեովամ քեզ խօրորդութենէ։

Ջրթողի խև, որոճալ դև։

Ջում աղը խասնի, մատաղը կը խանգնի։

Պախս ուտեմ, ժաժիկ ուտեմ։

Գարկով լուս ի բերև։
Գղնձի եռ, աղբօր խէռ, պուտկլի եռ, տէգէրկնկեայ խէռ։
Գուտուկ տսաց.—Իմ տակ ոսկի ի,—ես որ տեղէն կուգեամ, տասց չիրէփ։

Ջաղացքի ոտն ի աւերկան, քիչ մէլ դներ օգնական։

Սազ դիւՖ ճննլներաց, ցաւ չոռ պառաւնիրաց։
Սև աէրակեր, քանց Վ՚անայ խաւքերն էլ վեր։
Սաւդեն, զարկե կեավցէն։
Սկուն կուտես ռանգ—ռանգ, ոչ Թիւրք կուտի, ոչ Ֆրանկ։
Սուտ որսացաւ, սոված փորացաւ։
Սրտի սիրած եար էլնի, գլուխ ճաչալ տազ էլնի։
Սօլկրի սօլ խին կելնի։

Վ՚այ խոգիս, որ ընկաւ ուրդիս։

Տափիկ մարդուց փախի։
Տղին բան դիր , խեան արա։
Տուն խախուտ, մհանէն կարկուտ։
Տուն չէն, դուռն վերէն։
Տուն չկայ Թան ու փօշի, գլուխ կը գանի քախքը փօշի։
Տուֆ—Նաղարայ, դառւլ—զուռնայ, կաց խաղ արա։

Ցուրտ ի, մոլէն քիւրդ ի, չանէն բիւրդ ի։

Փառք քե, փչրուկ, էր նռացիր կպար պուտուկ։

Քար քաչան տղէք խալան—մաչան։
Քար քաչեկ, աղքամաչիկ ուչիկ ուչեկ։
Քար քռէն վեր Քարավանից։
Քիչ կէր դինոց, մէկն էլ պատառ յերդկնոց,
Քիչ կէր ջաղացք, դուն էլ էկար ջրտուն ի վեր։
Քուրկան քուրիկ է։

Օղորմի Խանամիրին, կոթ էդիր ցախաւլին։



## 7.

### Արծկէի բարբառով.

Անօթի կատուի ձեռնէն մուկ չպրծնայ։
Առճին կնիկ տան կնիկ, յետին կնիկ իրկան կնիկ։

Բերք ու բարին ինչ ա։

Գեղացու աշխատանք քաքեր կուտեն։

Էդ հալինէք որ ընկերէք էդ դալին,
Էնի մեռեր ա հախ, մենք մացերինք նահախ։

Խաց բեր թլեմ, բուրդ բեր ճողեմ, գլօխդ խողեմ։
Խաւի երգումն ա, խոտ կը քցայ, կասի էլ չեմ անի։
Խաւ ձագուն ջուր չտայ։
Խելք վըր խելաց ուսեա ա։
Խօր անէծք կը բռնայ։

Գժի աղուն տանքի վրէն կը չորնայ։

Մօր անէծք չբռնայ, ծծի կաթ դէմ կառնայ։
Մահն էկաւ, վայ մէկի տէր, գէլն էկաւ, վայ մէկի տէր։

Ցըմին բան սուլթ ա, կարգուիլ մորուս թողել մեռնել օղորթ ա։

Նասանին (անբան) աշխատած, քարին կերած։

Շուտ պէ չուտ մը թեթըլնայ։

Որն օր քաւոր փախէ. մեռօն կը կոխէ։
Ջուր Աստուծոյ մօտ դօմըրճի մարդ պակաս չէ։
Սէլ էկեր, խասեր ա բարդոցին։

Տղուն բարեկամ, խօր դուշման չեղի։

«Փառք ի բարձունս» հայրի բեարխախուցէն գիտեմ։
Փէտի ցեց ուրնից չեղի, փէտին զաւալ չկայ։



# Տ.

**Տրապիզոնի հայաբարբառ գիւղացւոց բարբառով.**

Ակռէդ ցաւի կու, տատին խըլլառին, ճեօքը արխին էրեցուր. էն էլ բերոնը էբաց։

—Աղջիկ. քեզիկի կասիմ, հարս տուն օկոնջ էրէ։

Այջին կաշի տուրին ճասըլ ընուշի, կերաւ ուր եմեղին ճըսըպից։

Աչե եիզդ, էօր եիզդ էլ աչե քիցիկի։

—Աշխարքս ինցօ գիտիս.—Քեզիկի յօմօն։

Աչառը վիյ վեյցընին, ատկը հոշթ մօն կուգօն։

Աւեղը քեզիկի, մախաթը ինձիկի խոթէ։

Աստուած սարին կաշե, ձունը դնե կու։

Բարկենդօնք, պարկինք տօն։

Բեղեր սրած ունի եօր, հայնին տեսնուն։

Բերօնը տոպրակ չէ եօր կապիմ, ացգըրիմ։

Բէյնով կուգէ, ինչով ուտէ պիտի։

Բիյն առած ունի ձեռքը. էչտուշիլ ուշիցէք, չնիյն վախցնէ պիտի։

Բորկցաւ քեզ մը էօր, ջուլն օնցլի։

Բուլքի տակէն պլյափ թուցնէ պիտի։

Բուն, բունկալ չունի. կականիս կընէ։

Գարի ցօնեցի, բուսաւ լուզուտ։

Գզլով տուրին, պոչով հօնեցին։

Գեղացին մեռնի, կեճէ ուր եիզու կոշին մնակու. քաղքեցին էօր մեռնի, ինչ մնայ կու։

Գեղացիք էօր կողնեցօն, ֆիրիւ կու կոտուրին։

Գլխուն զայկին.—Վա՛յ կռնակս, ասաց։

Գէլը օմպ օրը սիրէ կու։

Գողն էօր տնէն էղաւ, հէգը ցլխիքէն հօնէ կու։

Գոյտն ասաց.—Խաղ չատ գիտիմ, ամա ինցօ էնիմ էօր քերօնս լիքն է։

Դօնակը առնուչ էկուշի, եիզը հօնլին կու դըրեկը։

Դօնկի կոռածը պէտքընայ կու, լեզուի կոռածը պէտքնալ չի։

Եարայի վրէն փուշ դնիլ չին։

Եաֆայի էշը քառասուն ճօնքայ Երուսաղէմ գնաց, կենէ մղդեսի եղաւ ուչ։

Եզը ուր պոչով կուտին, ուրիշի պող կասին։

Ես հասկնցայ fի տէրը էկաւ, դուն ասիլ մի գէլը էկած ունի։

Զեւզեղը դժոխք նետեցին, ասից.—Իդա փէտրյն գէճ ին։

Էզօնը խուլի համար չէ։

Էծը հոգուն, ղասապն էլ եղին ցաւնին։

Էծը նիւր էշտայ, օլախն էլ հիտը կեշտայ։

Էշը ինչ գիտէ նուշը ինչինէ. փուշ պէտք է էօր ուտէ։

Էշը ուր տոպրակին զուայ կու։

Էշդի տակէն ջուր քէլեցնէ կու։

Էմեն բօն բարկընալով կտուի կու. մաշղը հաստընալով։

Էմեն մաշղու պիրէմիով չափիլ չին։

Էմեն դարբայ տէրան գաթա ուտիլ չի։

Էմեն մաշղու դագրած տեղը խանն չինիլ չին։

Էն կատուն էօր քուն էղաւ, մուկ չի կոյնայ բռնիլ։

Էն ձեռքը էօր չկայնօմ կտռիլ, պագնիմ գլուխ դնիմիտէ։

Էն մաշղու քովը նստիլ մի, էօր քեզիկի խնդացնէ կու. ինուր քովը նիստ էօր քեզիկի լացընէ կու։

Էն էօր թալիկը կընէ, օչ հէյն, օչ մէյն կընէ։

Էս օրուան հաւկիթը, էգուցուօն հաւէն պէտք է։

Էրկէն լօրին, գոյծել հօրին, կարմիր փլօրին, նեն կլօրին, մեռնի կին, առնի քէնին։

—Էրկինքը խաւիծ կուտին.—Մեզիկի տօնիլ չին հօն։

Էփած ապուրին ջուր խառնիլ չին։

Ըղլիտ ունի, կած չունի։

Ըղրեի միղրը կերած ունի։

Ընկաւ ամա, չատ պէշ ընկաւ։

Թագաւորիս Ճէ (եթէ) գետնի վրայ խառնուէ, ինչ բօն ունի երկինքը։

Թաթաւէն փախաւ, ճօռը ընկաւ։

Թենպէլին աստին.—Գինդդ սըյբէ.—Աղքատ իմ ասից։

Թենպէլ մաշդը իշուն քեռի կասէ։

Թօլէն էլած. թօլին թքնէ կու։

Թօփալ տէրան էկաւ, ցոյնի հացն էլ պառ էդիր։

Իծուն կռնակը էօր քերուի, կեշտայ հովիւի փէտին քսուի կու։

Իմ լիքմէնը առնում, էշտօմ ուրիշի մեսել ասիմ։
Իմ «սիզն» էր էօր՝ քեզիկի խալըսից։
Իմօն էղած, լօմօնի կու բուշղ թափած ղըյափ։
Ինծիկի պիտու չէղած սույբը ինչ ընիմիդի։
Ինչաք աղը էկաւ, մատաղը թռաւ։
Ինչաք առուն ջոյ գայ, գոյտի աչքեր դուս դուգօն։
Ինչաք խելահառը կայգուեցաւ, խըլռին տղէյքը մեծըցօն։
Իշուն ասղին.—Քեզիկի քուռակ էղաւ.—Էղաւ չէղաւ սալակ– կռնակս է։
Իշու վրայէն ընկած է, «չու, չու», կընէ։
Իշու դատածը ձին կուտէ։

Լաթ էօր գոյծե, պիտի կտռէ։
Լեյլեղի լօմօն ագուընուն է խեյքը։
Լիզուն օսկոր չունի։
Լիմօն թող սրղմէ վըէն։
Լուի մը համար եօրղանը վառեց։

Խաղ մը գիտիմ «ախ ախ» է, բերզու մօնչուն տունը աւրի, Վրաբէս կարից, կօճակ չէդիր։
Խաղ շատ գիտիմ, ամա ձէնս չի գար։
Խելահաս մաշդու հիտ քար կրէ, խըլառին հիտ փիլաւ ուտիլ մի։
Խլառը հայսնիք գնաց.—Իսա տունը միր տնէն պէտք է, ասից։
Խլառի էրիսը թուքնեցին.—Վրայ կընէ, ասից։
Խլառին հացը խելահասին փոյն է։
Խըլռուն օռին գայկին.—Ձիյնի վիր դմդմրոց կուդայ, ասաց։
Խօզի գլուխը սեղօն էդիր, թռաւ ընկաւ կրնդուռը։
Խորաթայով փիլաւ էփին. ծովի չաք էղ ինձիկիմէնէ։
Խուփը գլորեցաւ, ծափը գտաւ։
Խունկդ քեզիկի ըլլի, խաչը մի հոտեցնիլ։
Խօձողատնին ծաղկին պիտի։

Ծառը ասաց.—Մեզիկի կոռին կունի։ Ցախուտը ասաց.—Պոչը միր մէնէ է։
Ծուազէղը վով էօր կերաւ, էն թող, պառկի հայսի քովը։
Ծուաղի թիր պէտք է ծուացնուշի համար։

Կաթը մածուն ընուշի համար մէյցու պէտք է։
—Կայճ մաշդ է, միծ—միծ խորաթէ կու։
—Կացին էլ պինիլիկ է, ցախուտը ջայդե կու։
Կատուին ասին.—Փինդ դեղ է, փնից ու օնթեղից։

Կատուին գարիթը էօր կուշտ էղաւ, մուկ բռնիլ չի։
Կենէ միծ (ծեր) շունը գէլ բռնէ կու։
Կռտոռը Սիվ ծոմը օնցաւ էօր ճերմակ հաւկիթ ածէ, անտառ կեճէ սիվ։

Հայս թիթեռմօնին թեռիրը, էնու էրած բիւլլի բօմիրը։
Հաց ու պօնիր կերօք հիտրալի։
Հաւը դազի հաւկիթ ածիր պիտի, օռը պատռեցաւ։
Հաւերուն, քշե, քշե, բուլբուլներուն ճու—ճու—ճու։
Հոգիս հաւսիր կուզէ. մեղքս ապօլ չընէր։
Հովիւը ուզէ, բեճճէն եղ հօնէ կու։

Ձիդ դայիմ կապէ, գէլը ուտէ նա թող ուտէ։
Ձուկը ջուրին մէջ մեծընայ կու։
Ձուածեղի համար բաւալի օռ լիզին կունի։
Ղարաբավուղը օնոթի մեռաւ, ամոթին.—կոռուղը ինչ կարմիր է։
Ղըյափը պոչը վկայ բռնից,

Ճերմակ շունը բօմբակ ծախողին զարար է։
Ճօմի մինարէի վրան մօլլան կօղնած է, ամկը էզօն կուտօմ։

Մաղը մաղեցի, պառէն կախեցի։
Մաշդը էշ ըլլի, իշու գինը ինչ կըլլի։
Մաշմուլքը օնթեղէ. կանչինը պօփրէ։
Մաշկու միտքը ջաղացքի լօմոնի կու, ինչ էօր լլմու, կողայ։
Մէկին միրուքը վառեցաւ,—Կեցիր սաքնօմ ասից մէկէլը։
Մէկ փարաղ տուի. խորամբեցուցի, էլկու փարայ կուտամ, կօղնիլ չի։
Մէկ օնթին էրկու դարիհից հանքիլ չի։
Մըյչիմն էօր գուս տօնի, էն տունը կը քանդուի։
Մի բօպկընալ, ջըրին հասած չիս։
Միծ էշը գումը մոռցայ։
Միր մեռնիլը մինք լօնք պիտի։
Մէր մէջ տեղէն սիվ կատու օնցաւ։
Մի վռչիլ, մօյդ էփած ապուրը չէ։
Մուկը իր ծակը հաւքիլ չի. ցախաւիլը պոչը կապած ունի։
Մուկի շեռը ջաղցի օլուխին խեր է։
Մօլ կտրած շունի, ամէն գնալին, կընէ։
Մօղի գնաց, հոշթը օնօթի մնաց։

Շիտակ խօրաթա նա խլառէն, նա պզտիկէն։

Շունը շատ հաչէ, օչխարին դէլ բերէ կու։
Շունը չոն միսը ուտիլ չի։
Շունը ուր տեղ ճօնչիլ չի։
Շօնը սատիճան վօվ էրիդ էօր խալօն էլած ունի։
Շօնը հիտ մօն էկողը բիրը ձեռքէն չթողու պիտի։
Շօնը սատկուշն էօր էկաւ, կեչտոյ ճօմու դուռ փնէ կու։
Շօնը քար նետիս, տէյն միտքդ բէր։
Շօնը օնուն էօր տուիր, քօմդ բռնի կու։
Շօն օնոթի թողուն, տօնը պէտքը կաչէ։

Ոտքդ օմուր կոխէ էօր մտր գայ։
Որ կընիս ուզածդ, գտնուս կու չուզածդ։
Ունք չնէր պիտի, աչքն էլ էրեդ վրէն։
Պառտօն վէյից, չարողնիյդ դայձու։
Պատիհավայ քացախը մեղրէն օնուշ է։
Պէհէ էթումը, էօր քակէ քու տունը։
Պէտքին տէրը էղառ, օնցաւ արեգին, գէշին տէրը զարուպեղ է ծօմակէն։
Պրճիլիկ գլօխ, միծ ձերագ.
Պուծէկի բունը խառնըթիլ մի։

Ջորին թօնկ ըլլուշը, գիլուն պիտու չէ։
Ջորիին սատին.—Վոմ է հէյդ.—Մէյս ձին է, սսաց։
Ջույն լցածին սանտը, ծեծին կունի։
Ջոյն ուր ճօնքէն գտնու կու։

Սիվ մաշտուն սապուն. խլաւին խրատ ինչ կընէ։
Սիյտը ջիջէի յօմօնի կու, էօր կոտրեցաւ, էլ չի շինուիր։
Սուլբ Սէրգիսի պասին հօւոմը նետեցին դուլին. պապը ուտուշի հօմար ինչիկ մը գտաւ ուչ. չարոխնին հօնից, կերաւ։
Վէրը միրուքս՝ վիրը բեղս, նի՞ւր թքնումիտի։
Վիրի դաքը էլաւ, վիրի փեռեկէն առաւ.
—Վի՞ւյ, ծո՛, տէրան էլ չաէ կունկի.
Վրայեկէն փախաւ, թաթուի բռյացս էկաւ։
Տէրան էմեն դարքա քաթա ուտիլ չի։
Տավուլը ճիտս օնցունց, չոմախը ինք զայնե կու։
Քարը իրեն տեղը ծանր է։
Քուն կըլլի իրեն հօմար, ներագ տեսնուկու ուրիշի հօմար։
Օձու սատկուշն էօր գայ, կիշտայ ճօնըու օրքան պարկի կու։
Օնչ խաչի խօստում, օնչ տղի փիփիլ։
Օտքը կուղոտ, բիրօնը եղոտ։

# Գ.

**Տրապիզոնի թուրքաբարբառ հայ գիւղացիներէն առնուած, թարգմանուած հայերէնի.**

Աղուէսի հնարագիտութիւնը հաւի գլխին է:

Աղուէսն որ կը շրջի, լաւ է այն առիւծը որ կը քնի։

Ամբարն դատարկ, չափն անյատակ, որչափ կուզես, չափէ։

Ամբողջ նախիրը յափշտակուած է. նա իր խայտ երինջը կը հարցնէ։

Ամեն բերան տոպրակ չէ, որ կապես։

Ամեն մօրուքէն մի մի մազ, քարցի մօրուքը սագ։

Ամեն տեսածդ բարեկամ մի կարծեր։

Ամեն տեսած մօրուքաւոր, կարծես քու հայրն է ալեւոր։

Այ ամպ, չես անձրեւէր, գոնէ մի գոռար։

Այլոց բերան տոպրակ լինէր, կարել պէտք էր։

Այլոց համար որ կուլայ, իր աչքերը դուրս կուայ։

Այլոց ձեռքով օձ բռնէ, այն ես սուտ բռնէ.

Այլոց ձին եթէ նստես, շուտով ցած կիջնես։

Այլոց յիշատակը քանդեցիր, տունը հանգիստ նստար։

Այն գիւղը որ չես կարող հասնիս, գտնուած տեղդ հանգստացիր։

Այն որ ամուսնացած է, ամուսնացածի վիճակը գիտէ։

Այն որ ապառիկ խմեց գինի, երկու անգամ կը հարբի։

Այն որ «Աստուած—Աստուած» կը կանչէ, երբէք անտես առնուած չէ:

Այն որ ծնած է մկէ, տիկ ու տոպրակ կը ծակէ։

Այն որ ձին գնել կուզէր, այժմ Իւսկիւտարը անցած է։

Այս իմ թանս է, կէսը ջուր է, կուտես այս, չուտես այս է։

Այրի կին փորձառու և հիւրասէր, կարժէ տասը հատ օրիորդներ։

Անամօթը բանէ չէր ամաչէր, քուրջ ես հագած կը չարժէր։

Անկրօնքը եթէ պատժել կուզես, պէտք է նորա դէմ անհաւատահանես։

Անհոգ գլուխս, աներկիւղ գործս։

Անձրեւը քարին, քարոզը գլխին։

Անդատել ուտել, անտեսնել ձեւել։

Անշուն գիւղ գտածես, անփայտ կը շրջիս։

Անպէտք որդին խուլը կը հաւաքէ, օտարի բուրակը կը վառէ, իսկ պիտանի որդին իր հօր տունը կը շէնցնէ։

Անպտուղ ծառը կը կտրեն, իսկ պտղատու ծառին քար կը ձգեն։

Աշխատաւոր ձին գարմանը կը շատացնէ։

Աշխարհ մի սանդուխ է, մին կը բարձրանայ, իսկ միւսը կիջնէ։

Աշխարք մի լուսամուտ է, ամեն եկող, կը տեսնէ, կը գնայ։

Աչքէ հեռու, սրտէ հեռու։

Ապրանքը ճանաչողին, մի հատ ես աւելի տուր։

Առիւծը խեղդել մի տար կատուին։

Առատաձեռնն մէկ կտայ, իսկ ժլատը երկու կը տուժէ։

Աստուած չէ կամեցած, մարդարէն ինչ կանէ։

Արագիլը իր կեանքը «լակլակ»ով կանցնէ։

Արջին կաշի տուին, որ տրորէ, կերաւ, իր աշխատանքի փոխարէն հաշուեց։

Արտաքինը գայլս կը հրապուրէ, իսկ ներքինը գիս կը խռովէ։

Աքաղաղն որ խօսի անժամանակ, իր կեանքին վերջ կը տայ մի սուր դանակ։

Բարեաց դէմ բարիք ամեն մարդու գործ, չարեաց դէմ բարիք քաջ մարդու գործ։

Բարեկամիդ հետ երբ կուտես ու կը խմես, յիշէ որ առեւտուր չանես։

Բարիքն որ դու արիր, չէր արժէր այն գորտը որ խրտեցուցիր։

Գայլի աղօթքը եթէ լսուի, երկինքէն ցորեն հաց կանձրեւէ։

Գայլի վատ անուն է ելած, իսկ աղուէսներ գլուխ կուտեն։

Գարի ցանեցի, բուսաւ լազուտ, աւաղ աշխատանացս, գնաց կորուստ։

Գդալն որ ետ դառնայ, նրա կոթը անիծած։

Գիշերը պարզ, ցերեկն անձրեւ, տարւոյ աւեր. մեծը կանգնած փոքրը կը խօսի, տան աւեր։

—Գիտես, ինչ արի.—Թշնամիս ընկուզի կեղեւի մէջ հաւաքեցի։

Գիտէիր փորիդ բնութիւնը, ինչու խմեցիր խաշի ջուրը։

Գիտեմ, յարդը քոնը չէ, բայց մարագը քոնն է։

Գլխարկը մեծ, բայց տակը մարդ չկայ։

Գլխին զարկին, գոռաց,—Վայ կռնակս։

Գլուխ, դու որ խելք չունիս. խեղճ ոտներ, ինչեր պիտի քաշես։

Գնացին Տիմեաթ բրինձի, տանը պուլղուրն ալ կորուսին։

Գործն որ «յետոյ» մնաց, սառեցաւ գնաց։

Գտաւ կոյր զկոյրը, ջուրը իր հունը։

Դատաւոր էիր քառասուն տարուան, երբ էիր տեսած այսպէս դատաստան։

Դեռ արեգակը չծագած մեծ մեծ շնորհներ պիտի ծագին։

Դերձակին ասացին.—Ձուէ.—Ահա, ասաց, ասեղը գլխիս պատրաստ է։

Դորա արժէքն է ոչնչէն պակաս։

Դու որ այդպէս կը շրջես, մորդ պատրաստած չուտանը կը կործես։

Դրկեցն որ քո մօտն է, հեռի գտնուած եղբօրմէ պատուական է։

Դրկից դրկիցէն վատ օրինակ կառնէ, հոգին տանջանքի մէջ կը վառէ։

Եթէ ասես «դու գիտես», ամեն փորձանք կը վերջացնես։

Եթէ ասացիր արդարն, փախես, երեսդ ետև, իշուն հեծնել աչքդ առնելու ես։

Եթէ ծեծես ուրիշներու դուռը մատով, ուրիշներն ալ քո դուռը կը ծեծեն թակով։

Եթէ մորուքին յարգանք լինէր, իծու գլխին լոյս կիջնէր։

Եթէ ուղտին փուշ հարկաւոր է, վիզը պարզել պարտաւոր է։

Եթէ մօրուքս լինէր, խօսքս կանցնէր։

Եթէ ուրին հզար պահապան, քեզ կանէ թափառական։

Եթէ սար սարին չպատահի, մարդ մարդու կը պատահի։

Եթէ քանդեցիր այլոց տուն, դու ալ պիտի չունենաս մի բոյն։

Եկաւ որ ջուր տանէր, յետ դարձաւ անջուր։

Եկեղեցին որ չէ օգնական, խունկ ու մոմ չեն տար նորան։

Եղնջէ արմատի վրան եղինջ կը բուսնի։

Երբ մէկը հասկացող չէ, նա անհոգ է։

Երբ պար մտնես, մտածէ որ պիտի շարժիս։

Երկիւղ կը կրէ մարդ անկէ, որ տեսած է։

Երեսը նոր, ներքեւը քուրջ։

Զիս սիրողին եմ ծառայ։

Ըմբիշ, տանէրէն բռնէ.—Եթէ յաջողութիւն գտնեմ, հոգէն ես կառնեմ։

Ընկերդ երբ ագռաւն է, թառդ թրքանոցն է։

Թան ունենամ, ճանճեր Բաղդատէն կգան։

Թշնամին թշնամուն դուռան չկորդար։

Թշնամին ոտքին, բարեկամը գլխին կը նայէ։

Թոյլ տուր հարբեալն իր վրայ թաւալի։

Ժամանակը՝ կը վաճառէ յարդը։

Ինձ նեղ, քեզ տեղ։
Ինչ անեմ որ աշխարհը լայն է, քանի որ նեղ կօշիկներս զիս կը տանջէ։
Ինչ որ ձեռքովդ տուիր, այն հետդ կը տանես։
Ինչ որ տուիր ձեռս, այն զարկի երեսդ։
Ինչ փրթեցիր սկաւառակդ, այն կը գտնես գդալիդ մէջ։
Ինքն իրեն ընկնողը չլար։
Ինք մէկ՝ մօրուք երկու թիզ։
Իշով ճանապարհ գնացիր, փորձանք կը բերէ գլխիդ, ջորիով թերես, բայց ձին է կտրիճ մարդու կեանքը։
Իշու վրայ նստելն է ամօթ. իջնելը երկու ամօթ։
Իշու վերևէն ընկած ես, դու դարձեալ, «չու—չու», կասես։

Լեռնէն իջնես, տեղացին վանես։
Լեռն որ շատ բարձր է, գլխէն սառնամանիք ու ձիւն պակաս չէ։
Լեռն որչափ բարձր լինի, մի օր գագաթէն ճանապարհ կանցնի։
Լուսնկայ գիշերով գողութիւն, որն է տեսած այգպիսի սովորութիւն։
Լցի մի աման չպարունակեց, միւս աման դատարկեցի, կիսատ մնաց։

Խնձորը կեղևէ ու տանձը համբէ, (կեր)։
Խուլի համար մոլան, երկու անգամ չկարդար էզան։
Խունկդ պէտք չէ, եկեղեցին մի պղծէր։
Խօսիլ մեծին, լսել փոքրին։

Ծառի մի կողմն է ուղիղ կանգած, իսկ միւս կողմն է փթած։
Ծիտը ինչ է, որ ճուռը ինչ լինի։
Ծուաղի լաւը կը գտնուի անտառը, բայց պտուղը կուտէ արջը։

Կաղ իշով կարաւանին խառնուեցաւ։
Կատուն զարմանալի է, կարծես լուացք կանէ։
Կացինը քարին զարկի։
Կերակուրը եթէ լաւ է, թող բերանս այրէ։
Կերանք, կշտացանք, Աստուծով յագեցանք։
Կեր, իմ ձի, քանի կուտես գարի, վաղը պարտատէր կամ քեզ կամ զիս կը տանի։
Կինդ ինչ գիւղացի, դու նոյն տեղացի։

Կիրքը հոգու տակն է, հոգին մինչև դուրս չգայ, կիրքը չգար դուրս։

Կոյրը թէև չտեսնէր, այլ կերևակայէ։

Կուզես ատամի ցաւէն ազատուիս, արմատը պէտք է արեգական ցոյց տաս։

Կուզես լաւ ձուածեղ ուտես, եօթ ձու ու լաւ իւղ պատրաստես։

Կարիճը հազար կապրի, սակայն մի անգամ կը յաջողի։

Կուզես շաղգամը մեծանայ, նաւրացուր, որ աճի, զօրանայ։

Կուզես որ բռնի, շունը տանես որսի։

Համբերես, ագոխը հալվա. իսկ թթի տերևն բեհեզ կը շինես։

Հասկացողէն եմ զոհ, չհասկացողէն շատ դժգոհ։

Հարսանիք առանց պարի։

Հարսը ձգես իր կամքին, կամ դավուլչին կառնէ կամ զուռնաչին։

Հարուստը իր ձայնը լեռնէ լեռ կը շրջեցնէ. իսկ աղքատը տափարակ դաշտի մէջ ճանապարհը կը կորսնցնէ։

Հաց տեսար մխուի, գործ տեսար, խոյս տուր։

Հիներուն պատիւ լինի, հնավաճառանոցը լոյս կիջնի։

Հիւրը եկաւ, գնաց. տեղը դատարկ չմնաց։

Հիւրը կը խորշի հիւրէն, տան տէրը երկուքէն։

Հովիւ առատ առատ գտաւ իւղին, տարաւ քսեց ոտին։

Ձին երբ ձիու մօտ կապես, կամ բարքէն, կամ մազէն։

Ձին ձի անողը տէրն է։

Ձին որ ձրի է, ատամը նայիլ ինչ հարկ է։

Ձին որ մենակ է, ասպարէզ ինչ կանէ։

Ձիու և շան հետք աննշմարելի դարձած են։

Ծանճը պիղծ չէ, սիրտ կը պղտորէ։

Մազը վայելչութենէ, իսկ եղունգը վատ կեանքէ կերկարին։

Մոխաթը մաշի, ասեղի չափ կը մնայ, ասեղը որ մաշի ո՞րչափ պիտի մնայ։

Մահն է սպարտք, խռխռոցի ինչ հարկ։

Մաշած թաս, հնացած բաղանիք։

Մարագ վառեցաւ գնաց, մկներուն ևս չմնաց։

Մարդ ուզէ համբերել, մի տարի կարող է պայտի. գամի մէջ մնալ։

Մարդ կամաչէ, երբ երես առ երես գայ։

Մեծ էշը զոմը մոռցանք։

Մեր տեղեր, մսի վրայ խաղող կուտենք։

Մեր հարսը մկնից փախաւ, գլուխ գոցեց, ետև բացեց։

Մէկի վրայ որ շատ խղճաս, յետոյ կը աեսնես մնաս։

Մի անցնիր ապաշնորհի կամրջէն, թող հեղեղը տանի քեզ, մի նստիր աղուէսի շուքը, թող առիւծը ուտէ քեզ։

Մի աչքով ինձ մի՛ նայիր։

Մի գլուխ հազար տոպրակ, հազար տոպրակ մի գլուխ։

Մի նայիր թէ ծխահանը չեղ է, այլ նայէ թէ ծուխը ուղիղ կգայ դուրս։

Մինարէն գողանալ կուզես, նախ պէտք է պատեանը պատրաստես։

Մի օգներ կատուին նենգաւոր, որ խեղդէ առիւծը հզօր։

Մինչև յաւիտեան բարձր է ձեռք ձեռաց վրայ։

Մի վախենար Մարտի ձմեռէն, վախցիր Ապրիլի հնգէն, եզը կը բաժանէ ընկերէն։

Մի մեռնիր, գարուն կգայ, իշուկս. առւոյտ կուտամ քեզ չու—չուչա։

Միսն էժանագին՝ կը վնասէ պատուկին։

Մոմը իր տակը չլուսաւորեր,

Մուկը մի անգամ բէղի տակէն անցաւ, ճանապարհ բացաւ։

Մրջիւնը երբ պիտի սատակի կը թեւաւորի։

—Մրջիւնը ինչո՞վ.—Իր կարողութեան չափով։

Մայրս է ի սրտէ կուլայ, իսկ օտարներ ի դուր կլան։

Մօրս ճաշը, բուրակի խաշը։

Մօլլա Նասրէտթին իր ապրանքը, կուզէ պահէ բարձի տակը։

Յամառին եթէ բան հասկացնել կուզես, աւելի լաւ կանես մի որբ պատսպարես։

Յարդի տակէն ջուր կը քայլեցնէ։

Յետ զատկին, հալվան էժանագին։

Յիմարին ամեն օր զատիկ է։

Յիմարին ձեռք պարզէ, ձեռքը բահ յանձնէ։

Նապաստակը ծնաւ, ձագին ասաց.—Ինձ կայ բէղ, քեզ կայ բէղ. գնա՛, գտիր փրծելու տեղ։

Շերտ լեզու, շերտ շերտ լինիս, որ այս փորձանքին չձգէիր զիս։

Շահէ—շահէ տո՛ւր պղնձի, որ աւելցուցիր տուր հողի։

Շան ոտքը քարէն կը խնայես։

Շան կաշիէն մորթ, յոյնը հային խորթ։

Շնորհքէ զրկուած, տէրտէրը երեսը մեռօն քսած չէ։

Շորերը դրսէն կը փայլին, փորը ներսէն կը գալարի։
Շունը որ չարունակ կը հաչէ, հօտին գայլ կը բերէ։

Ոսկի կոնքը ինչ անեմ, քանի որ մէջը արիւն պիտի փսխեմ։
Ով կիրք, գիտես ինչ կանեմ, գետնէ գետին կը զարնեմ։
Որ աղաչեմ քառասուն մարգարէի, կաղաչեմ մէկ Աստուծոյ։
Որ կերակրեցիր, կշտացուր, որ զարկիր, սպաննէ։
Որ կը համբերէ, լաւ կեանք կը վարէ։
Որչափ ես ինձ վնասեցի, ուրիշներ այնչափ չվնասեցին։
Որ տեղ բազմութիւն, այն տեղ խարդախութիւն:
—Ուզածդ ինչ էր.—Երկու աչք, մինը լաւ, միւսն չիլ։

Չառաւ իր գիւղի տգեղն, առաւ ուրիշ գիւղի անառակը։
Չեմ ցաւիր որ քառասուն բեռ ապուխտս գողցած են, կը ցաւիմ մանրել ուտել չգիտեին:
Չէ այն տեսակ սատանայ, որ անարգանքով հեռանայ։
Չընկ—չընկ կանէ Եալչան, գործ կը կատարէ փարան:

Պանդխտութեան մէջ զինք գովել, բաղանիսի մէջ երգել։
Պանդուխտ թռչնոյն նայէ, տես Աստուած նորա բոյնը ինչպէս կը շինէ։
Պնչատն ու քթէն խօսող, վատ տպաւորութիւն թողող։

Ջուրը կը գնայ, աւազը կը մնայ։
Ջուրը կը քնի, բայց ոխակալն արթուն կը հսկէ վրէժ լուծելու։

Սև ագռաւը ածեց ձու մը, ընցաւ ծովը Սև, տեսաւ դարձեալ սև։
Սև ձիւթը դարման է օգտակար, իսկ ոմանց ևս վնասակար:
Սխտոր ու քացախ հաշուի դնես, խաչ ուտել կարող չես։
Սնդուկի միջինը չալալակս, չալակինս փորս։
Սուտը անվերջ կը դառնայ, երբ սուտը յարմարեցնելու շնորք ունենայ։
Սուտ մի ասաց մին չուկայի ներքին գլուխն, իսկ վերին գլուխն ինքն ևս հաւատաց։
Սուտ չէ, դայեկս ասած է:
Սուրբ խաչ եկաւ, ապան առաւ ներս փախաւ։
Սրբիկան անկարգ, գլուխն է դատարկ։
Սոֆի է, սոխ չուտեր, որ գտաւ, կեղևը չըթողեր։

Վայր թքեմ մօրուքս, վեր թքեմ բեղս։

Վատ մարդն որ կայ, եօթ թաղի վնաս կը տայ։
Վարպետ է այն ուստա, որ կը ձուլէ անկաղապար կոճակ։
Վերմակդ հասակիդ յարմարցուր։
Վերջացաւ Մարտս, գնաց դարդս։

Տաղն ասաց.— Կուգենք, կոյրն՝ թէ բռնենք, կաղն՝ թէ փախնենք։
Տանտէրը մէկ տուն, իսկ վարձուորը ունի հազար տուն։
Տկարին ետէն շատ որ պնդես, քաջի պէս մի օր քու դէմ կը հանես։
Տղան կուլայ, ցաւն է գամթայ։
Տղան որ ջուրը յղես, ինքդ ալ ետեւէն գնալու ես։
Տնանկութեան մէջ՝ ոստայնանկութիւն։

Ցորեկը ուրպէս արդար, համբիչ կը դարձնէ, գիշերը գողերու հետ ոչխար կը խորովէ։
Ցիցն որ երկու ճիւղ է, գետին խրուելու հնարաւորութիւն չկայ։

Փայտէ մաշա, գնչուէ փաշա։

Քահանան ամէն առաւօտ, չուտէր գաթայ եղոտ։
Քամակս տեսար ալիւրոտ, կարծեցիր ջրաղացպանն էր փոշոտ։
Քաջը եթէ չէ չքաւոր, չի լինիր անհաւատարիմ։
Քարը իր տեղը ծանր է։
Քարն, որ է չինութեան յարմար, երբեք գետին չի մնար։
Քարը, որ չարունակ գլորուէր, մամուռ պիտի չբռնէր։
Քացախը երբ շատ բարկ է, իր ամանը կը ծակէ։
Քաք չէ, դայեկս պղծած է։
Քթէս արիւն եկաւ, ծոմը վերջացաւ։
Քուռակը ձի կը չինէ, տէրը կը հիացնէ։

Օդի մէջ կը բռնէ, սնդուկի մէջ կ'առնէ։
Օսմանցին նապաստակը սայլով կ'որսայ։
Օր որ կանցնի, գիտնես օրուայ հետ ինչ ան ճակատագիրներ կանցնի։



# IO.

### Տիվրիկի բարբառով.

Անգութը առաւ, մենք տուինք, անգութը մեռաւ, մենք մնացինք։

Աչքդ խփէ, ձեռքդ երկնցուր. Ղարայենց տնէն որը կուզէ թող ուլի։

Առաւօտնէ մինչև իրիկուն քառասուն մեղնեպի խզմեք կենէ։

Աստուած պօյ տուեր, քիթը ծակեր թողեր։

Արջէն փախնելնիքէն, արջի քաքին բռասս էկայ։

Արեը էլաւ Փալախենք, էշը կելան Չոլախենք, դայնան (աման լուալու ջնջոց) կըծող Մանանդենք։

Բարդին սերկեիլ չբերեր, ոչ ևս ուռի ծառը նուռ. տեսած ես անամօթին պատիւ, անառակին պատկառանք։

Բիրդէն ձկեռ, թամիրուն վրայ կը կայնի։

Գէղ գլուխ մէկ մէկ խենդ, Աքուչախէն որը կուզի թող ուլի։

Դու էր մեր պանդուխտ գնչուն, ինչ կենես արծթէ զուռնայ փայլուն։

Էշը որ խիարի դինով կառնես, մէկ օր ջրի մէջ խեղդուած կը տեսնես,

Երեսը անչափ պինդ է, որ չորոխ ընես, Պաղդատ էրթաս, չէ կըտորուիր։

Ինչ կանեմ գեղեցիկը—աշխարհաշըրջիկը. կուզեմ տգեղը—տնաչէնը։

Իրեն գլօխը չկապող հարսը, հարսնեւոուն կերթայ հարսի գլօխ կապելու,

Խարբերդու օվան, օսկի եուվան, Արաբկերու էրկիրը, լէյլէկի բնակարանը։

Խնլոտին ցուրտը մահանայ։

Կին կայ որ գարիէ ալուրէն կերակուր կը չինէ, կին ալ կայ պատրաստ կերակուրը կաւրէ։

Ձմերուկ կարելով սիրտ պիտի հովացնես։

Ծին չեղած կուզէ մարդ չարփմիշ ընէ։

Մանեմ—մանեմ գալին տամ, գալին աչքը հանել տամ։

Մօրուց խենդ ըաըցողին սուրբ Սարգիս ինչ ընէ։

Սերմնացանը թող սերմանէ. թուրքմանը թող չըջի. էշը ինչ ուտէ, այն կը թրքէ։

Քուռակ, ուր կը վազես, կուզես մօրմէդ առաջ ախոռը մանես։



# 11.

**Արծէօի Գաճճապ գիւղի բարբառով.**

Աղէկ ձիու մէկ զաճկու, աղէկ մարդու մէկ խապար:
Աստուած ղօռղռուն ձէն լսայ, վարդեվրին ձուն կուգայ:
Գիլու անուն էլիր ա, աղուէս տներ ա քակեր:
Գնացիր մըջ խաւքերուն, ղօռղօ՛ռ բռնեցիր:
Ես օր կամ, կռնի փուշ իմ, որ տեղ դիպնիմ, կը մաշիմ:
Լժան մսի ըռվէն չներ կուտեն:
Էնտեղ արանք, էնտեղ արանք, տէրտէր մնաց անպատարագ:
Էրթանք սար, վերցունք քար:
Ինչ էս մռթնիր կախե, Մըրրի խարմաճ կուզեն քեզնից:
Ինչ տեսայ, ինչ կուրիսի:
Խունկ ծխողին, fուՖr, քրւողին:
Կուզես կաքուռ քէլք քէլել, ղօռղռուն էլ կը մռռնաս:
Ծարպիկ մուկ էրկու ոտով կընկնի թալաֆ:
Մանէն մանած ա, պատէն կախած ա:
Մարդ մարդու ղարս չգիտէ, կէս գիշերին ժամ կը ձէնայ:
Մէկի ոռն էր դուս էկեր, մէկը կասէր.—Տո՛ւր, տանեմ կատուլիս:
Մուկ ծակ չմտի, ցախաւելը պոչից կը կախեն:
Ցըմեռուն ծով, վըր ընձիկ սով:
Շորերս խին ա, խօսքերս անգին ա:
Ուլ մկմըկալով ապրեր ա, գեառ առանց ձենի խատեր ա:
Ուրիշի լօմա էնեցի, իմ գլուխ էլաւ:
Ձամչիկ խատ խատ, միղրիկ մատ մատ, օլրուանք տեղը տաբ-տակ:
Ձուր Շուշան զարդրուաւ, պատարագ արձկուաւ:
Պուտուկ ասաւ.—Ես ոսկի եմ, չերեփ ասաւ.—Ես դո՛ւր էմ:
Պատիկ մուկ կարաս կուլիրայ:
Պատիկ քար թալեր ա խոր, ջոչ չկռնայ խանայ:
Ջուր էկեր ջաղացքն ա տարեր, չաղջպան չախչախ կը պտտայ:
Ջուր իրա առւով կերթայ:
Փալլեվան ոտքերից բռնայ.—Ձեռնէս գեայ խոզին էլ կը խանեմ:
Քար ուր տեղ ծանր ա:

*) Ասած է Յակոբ Ներսէսեան:

# 12.

**Ռզիի բարբառով.**

Անհամ հիւընդին, կանաչ խըյարը կաղնաբին։
Աղուէսը իրեն պոչը վկայ կը բռնէ։
Անուն իմացանք, անկուն չիմացանք։
Աշխար դմակ, մարդիկ դանակ, կարէ ու կեր։
Արտ խախուտ, մահանայ կարկուտ։

Գնացիր հորթերը, սև իշուն ճակատը պագիր։
Դավին խաղ մազէ կարմունչի վրան էր բռներ։

Դու մարդ ես, թէ դարտ ես։

Ըսեմ տեսերեմ, սուտ եմ, ըսեմ չեմ տեսեր, կենայ սուտ եմ։

Իշուն բռնհան երկնցույին. հոտ քաշելու տեղ վերուց կերաւ։

Լոխմայ մը մթան, կաժէ կով մը կթան։

Խեր գնէց հարսնատուն, ըսեց,—ըսի լաւ է, քընց մեր տուն։

Կնիկ պէտք է հալալի, որ տղայ բերէ չալալի։
Կնիկս որ մեռաւ, մէկ էլ կը բերեմ, մէրս որ մեռաւ, յուստէն բերեմ։
Կռիւ յարտն է թէ կուչոը։

Հին չվլին նոր կանթ պիտի։

Մարգու ոչխար օր էղաւ յիսուն, դանակ որէ, զարկէ տուն։
Մեր խօրոգը շատ կը կռուի. ամա տէր չունի։
Մեռելը լացող չունի։
Մեռելը լալ չուզէ։
Մինչև ատնմաններս չոկէ, կելնեմ կայնեմ։
Մութը փուչ է, պարը անուշ է։

Ուլութեան, չէ գըտաւ արքայութեան։

Վեվ ուտէ եղն ու ճմուռը. վոխ զարնէ գլուխը քարին ու դուռը։
Սոխին դէմ սխտոր ցանէք։
Օսկուլ (ձկնկուլ) էղեր է։



# ԺԳ.

## Վաղարշապատի խառն բարբառներով *).

Ագռաւին առաջարկին տուին որ սիրուն ճուտ բերի, գլխին դնեն. պտը-տեց—պտըտեց, բերեց իրա ճուտի գլխին դրեց։

Ազգի՝ Թշնամք—ցեղերի՛ փեսան՝ ա տալը

Ածան հաւը կրկչան կըլնի։

Աղբէր որ լաւ ըլնի, Աստուած էլ մի հատ կուննենայ։

Աղուէսի դունչը խաղողին չհասաւ, ասեց.—Թըթու ա։

Աղուէսի վկէն իրա պոչն ա։

Աղաք կէթամ, գլխիս կը տան, յետ կադնեմ ոտիս կտան։

Ամեն մարդ դիտայ իրա մարդի զորք։

Ամեն մարդ իրա մեռելը լաց կըլնի։

Ամեն օր ջուրը գերան չի բերի։

Ամպ օր գէլի համար հարսանիք ա։

Ամպ օր պառուին առաւօտ ա։

Անգէտ մարդին առաջ չաղակը, ասեց.—Վէ՛ դիր, տաքերն ցաւաց։

Անթառամ ծաղկին Թոռմել չը կայ, բոլխի պառաւել չկայ։

Անձրեւ ա գալի, կտուրը կաթում ա. կնիկն պառկեր, աղջիկ ա բերեր.

Անձրև ա գալի կոչտը քարի դարձել ա լաց ըլնում։

Անճարն ա կերէ բանջարը։

Անունում կայ, ամանում չկայ։

Անսէնը տուէր սուլթէնք գցայ։

Անջուր ջաղաց, անկրակ բաղարջ։

ԱՆՁ իշխ, խաբբիյա դուէսէն.

Աշխար արօտ, մենք մէջը կոյրօտ։

Աշխար դմակ ա, ինքը մէջը դանակ ա։

Ապրել կայ՝ դմակ ա, ապրել կայ, դանակ ա։

Առանց ի ձի առնել մսուրք ա շինում։

---

*) Գրի առած է Արուսեակ Հայկունի. Վաղարշապատի ժողովուրդը մեծաւ մասամբ հին ու նոր գաղԹականներ են զանազան տեղերէ հաւաքուած. որով ներկայ առածները խառն են եւ փոքր ինչ փոփոխուԹիւն գտած. իսկ կայ զուտ Վաղարշապատցիներէ առնուած առածներ. որ ներկայիս կը յաջորդէ եւ գրի առած է Վաղարշապատի մերձաւորներէն Հայթաղ գիւղացի. Վաղարշապատցին. որոնցմէ բուլանիկներն. ունին անոնք չեւ առածներու պէս չարի ընդհանրապէս բանաւոր ուրիշ միջոցին կը գործածէ։

Աստուած ագռաւի ձէն լսի, վարդիւարին ձին կը դնի։
Աստուած ապատ էնայ լապտորակի քացուց։
Աստըծու ճամբին չի գայ, սատանի ճանբէն չմտա։
Աստուած տայ լագուն, ու տայ ձագուն։
Ատըմիկ կանի անդըմիկ։
Արջն իրա զովընե։
Արտը խախուտ, մհանէն կարկուտ։
Արքայութիւնն եմ տասում, դժողխքն ձեռս չի ընկնի։
Աւեր քաղաքին, չէն անուն։

Բամբակը կտրանն են ցանէ։
Բանն ու կայ, էչ ա, քչես, կէթայ։
Բանն օրուան, հոգ տարուան։
Բանդի քանդած Աստուած չը քանդի։
Բեղ դրեց մուրքի վրէն։
Բրդի տանը կուլայ չի ըլնի։
Բրինձ փլաւը կուտէ ամնի մէջ։
Բօզից աղջիկ առ, բօզին աղջիկ մի տայ։

Գէլը սովածութիւնից չի կարում գարը նիլնել. տսում են, էնքան կերել ա, չի կարում նիլնի։
Գելը որ ամպ օրից վախենայ, մի չուշպայ կը կարի։
Գէլի հետ գառն ա ուտում, տիրոչ հետ վայվլուկ ա անում։
Գէլը ընկաւ օչխարի մէջ, վայ մէկի տիրոչ։
Գէլխեղդ չան գլուխը գէլի փորին ա։
Գիժը գժին տեսաւ, ճակատը մի թիզ լէնացաւ։
Գիժը քարը գցեց ֆորը, հարիր խելքով չկարացին հանեն։
Գիշերն ի ման դալի, դու ցերեկը ռաստ էկար։
Գիտուն աղուէսը չորս ոտով թալաք կընկնի։
Գոգդ նստեմ, մօրուքդ փէտեմ։
Գողն էկաւ, սև էրես գնաց։
Գողը, որ տանից էլաւ, եզ էրդիկով դուս կը դայ։

Դարտակ փէտին չուն չի հաչայ։
Դէ, արի, էշը ցխից հան։
Դիւլին դժոխք չանց չտաս, արքայութիւնի ճանփէն չիմանայ։
Դուզ խօսողի գտակը ծակ կըլնի։
Դրսև ըլնում ա քահանայ, տանը ըլլում ա սատանայ.

Եզը ինչքան ընկնի, կաշին մէ ձիաքեռ ա։
Եզն ընկաւ, դանակաւոր շատացաւ։
Եկող մօրս ճալն ա հարցնում, հօրս ճալը հարցնող չկայ։

Եղը ու մեղրը չան տկումը։
Ես ագռաւին հաւանեցի, ագռաւ ինձ չհաւանեց։
Ես ասում եմ ախպայ եմ, էն ասում ա, քանի՞ տղայ ունես։
Ես գանձ կասեմ, նա տանձ կասի։
Ես էկայ կուզէ կուզ, դու էլ էկար ապլապուզ։
Եօթ ծով մէ թել մանծով կը ներկի։
Ես եմ կուտ տալիս, խալխի դռանն ա ածում։

Էլը իմացաւ, երաք բէլը իմացաւ։
Էլ օղլու աչքը որ մարդի լիս տայ. իրանը կը հանի, դէն կը քցի։
Էծը իծի համար լաւ ա, քանց մի սուրու ոչխար։
Էծը իրա ջանի դարդին, ղասաբը ճրագուի ա ման գալի։
Էն ալուէշան էր, դու էլ պոչն իր։
Էն աչքը որ լիս չի տայ, թո քոռանայ։
Էշը էլի էն էշն ա, փալանն ա փոխուել։
Էշը ինչ գիտի նուշ ինչ ա։
Էշը իշի մօտ կապես. եա խուն կը սովորի եա խասաիաք։
Է՛շ, մի սատկի, գարուն կը գայ եօնջայ կը կանաչի։
Էրէխէն մահանայ, մէրը կչտանայ։
Էրէխէն պատճառ, մէրն օրաճար։
Էրեսդ սիպտակ, կըճըճի տակից։
Էրկու ձմերուկ մի ձեռքով չի բռնուի։
Էրես տուինք, աստառ ուզեց։
Էրկու ախպոր գլուխ մի գերեզման չի մտնի։
Էրկու դիմի թամասայ անողը չաշ կըլնի։
Էրկու կնիկ դիւան նստած էին. մէկի տղէն էկաւ.—Մուլքը քանդուեց, ասեց. մէկէլ կնիկ գնաց. ասեց—Մսըր քանդուեց, էրկու օր ետքը թուղթ էկաւ.—«Մսըր քանդուեց»։
Էրկու մեռել մի պատան չի դրուի։
Էրկու շուն մի տեղ գան, կը վազի, որ գութան լծի։
Էրկու ջուր մի առուով չի էթայ։

Ըստեղի չորթան գնացե ընտեղ էղելա Մարաֆաթի:

Թազա հաւեր դուս են ընկէ, էրկթէ ձու են ածում:
Թունա քացախը իրա ամանը կը ճաքացնի։
Թքեցին էրէսին, ասեց.—Անձրև ա գալի:

Իծին գինի էն տուեր, գնացեր գելի հետնայ կռիւ արեր։
Իմ անումը տուր, գլուխդ դէմ արա։
Իմ զուռնէն չփչեմ, ինչ ա քու էշը հուշտ չըլնի:

Գրանկի գէմը չախմախ կրակ չի տայ։
Հասկացողին մէկ ասա, չհասկացողին հա կրկնէ, կասեն։
Հայլին լաւ ա ծխոտը անէքոր կենդանուց։
Հանանը բարակի, բարակի Փոգին պուչն կը գայ։
Հասա ու բարակ մէկ գին ա։
Հա տաք ա փչում, հա պաղ։
Հացը ծնկան, աչքը կնկան։
Հացը ուտէր Նազարովին, մէկէլ էրէսի սարը։
Հաւը իրա կտից չի փախնի։
Հաւ չէլած՝ թառ ա թռնըմ։
Հաւը տանը մնայ, կուտը ուտի։
Հաւը քանի չաղանայ, ոտը կը նեղանայ։
Հաւը երազին՝ իրան կորեկի ջուրի միջին ա տեսնում։
Հեռացանք աչից, օտարացանք սրտից։
Հոգուն հանգուցելոց տուել ա։
Հպարտացողի տակ այազ ա։

Ձի չէլած մսուրք ա կապում։
Ձին ու ջորին կռուեին, մէջ անեղ էշին սպանեցին։
Ձին տիրոջը տակին հաղ կանի։
Ձուկ բռնողի ոտը կը թրջի։
Ձուկը գլխից կը փտի։

Ղասապխանեից շունը մի ոտ տարաւ, ասաց. —Ինչ արիր, քեզ արիր։

Ղուրպան էլնեմ էն շանը, որ տարի գլխին հաչում ա, գողը թողմ փախնըմ ա ...։

Ճանճը ինչ ա որ ճենճն ինչ ըլնի։
Ճղճղան մարդիցը խի ես վախում, վախեցի էն մարդիցը որ գլուխը քաշ ա էթում։
Ճրագն իրա տակին լիս չի տայ։
Ճուտը ձուի միջին բկլու կանի։

Մազաւորի մազն ա թափէ, անմազի մազն ա էկէ։
Մալը վանքերուց, կռիւը գէլերուց։
Մալ մագին, մուլք էգին, ուրախութիւն դուստր ու որդին։
Մանէն մանած ա, պատէն կախած ա։
Մաշակերին մաշիկ չի ըլնի։
Մարդամիջի մարդ ունենամ, հազար թումանի պարտք ունենամ։
Մարդ բան ունենայ, անի, որ բան չունենայ, թո մեռնի։

Մարդիս անունը չեմ իմանում, ախքարս անունը ոնց իմանամ։
Մարդ մարդի նման ըլնի, էշ չի ըլնի։
Մարմանդ գետիցը վախեցի, ղժման գետից մի վախի։
Մարօն հաւնաւ Կարոյին, Կարոն չը հաւնաւ մարոյին։
Մեզանից ասեղ ստողը մախաթ կը քաշի։
Մեր դռան կուտի, ուրիշի դռան կը հաջի։
Մէկի սուն ա գուս էկէ, մէկելն ասում ա, տուր տանեմ կատուէիս։
Մէկ կողեկ տուեցի, բերանդ բաց արի, քանի կողէկ տամ որ կալնես։
Մէկ եղնով քեարվանի մէջ ա մտնում։
Մէռելատունը չի գիտի որտի ա, քերզանը վերա կալնում վազում ա։
Մշակին մշակ, ծակ օւին եօրղան դոշակ։
Մի ծամելու էրծաթ ունենայ, Աստուն Աստուար կը կանչի։
Մինչի առուն ջուր կը գայ գորտան աչքեր դուս կը գայ։
Մինչի սատծդ կատարի, դավի պոչը գեննին կը հասնի։
Մինչի խելօքը պատկուի, գժին էրկու աղայ կըլնի։
Մինչի Շուշան զարդարի, պատարագը դուս կը գայ։
Մի ցռան կով Նախրի անունը կուերի։
Մի փութ բամբակ խրի ականջդ, անցի։
Մի մատ հաց ա, տասն բերան ա ընկե։
Մինաս գինայ Նախիր դուռը կը քշայ։

Նախրի միջին իշի ճակատը պոզիր։
Նախրի միջին սանամօր էշը հեծար։
Ներքև թքեմ միրուքս ա, վերև թքեմ ունքս ա։

Շահն ի շահոնց, քաջն ի պապոնց։
Շամօն ըմեն աղբուր կը քաշի, բա ջուր ծր տա կը խմի։
Շան սաին.—Ի՞ն ես հաջում. «մարդ եմ վախացնում».—Բա-խի ես տռում. «մարդից եմ վախում»։
Շան գլուխ ա թաղած, տեղը չի սատկում։
Շան փեշակը ինչ ա, ասկոր կրծել։
Շան պոչը մանկեանայ որ դնես չի դզուի։
Շատ համ ունէր խանձրամն էլ տուեց վրէն։
Շաքար չան բերան։
Շէմը չորի, ով գայ կը գլորի։
Շնից գութան չի լծուի։
Շունը ղասաբխանից ոտ գողացաւ, իրա ոտը կտրեց։
Շունը զօրովէն ավի տանես, կը դառնայ տիրաջը կը կծի։
Շունը էն չանից, էրկուս մէ տանից։

Շուն չան միս չի ծամի։

Ո՛չ էծ ունենք, ո՛չ ուլ, սատանի անկաջը խուլ։
Ոչ կնկան եհրիպար կայ, ոչ ձիան։
Ոտդ կարպետիդ գեօրայ մէկնի։
Ստներդ շուշտ, փորը կուշտ։
Որ դրախտից բաժին չունեմ, թող էշերը թաւալեն։
Որչափ մարդ չարանայ, կեանքը կը կարճանայ։
Ուզում ես կաքուի երիշ էթաս, ագռաւինն էլ ես մոռանում։
Ուզող ուզողից, բուրդը գզողից։
Ուլը քթոցի տակին չի մնայ։
Ուղտի խաղը կարմնճի վրէն էր բռնէ։
Ուղտին համեցէք արին հարսանիք, ասաց չնորհ չունեմ հաղալու, եա Կողբ ղրկեցէք աղի, եա Շարուր բրնձի։
Ուղտը նիլէ, կուզէ կուզ ա ման գալի։
Ուղտը բաղնիապան։
Ունեցողին ամեն օր բարիկենդան ա։
Ունքը շինելուն աչքն էլ հանեց։
Ուրագ իրա կոթը չի տաշի։

Չալ օձի կծածը չալ պարանից կը վախենայ։
Չամիչը որ չամիչ ա, պոչ ունի։
Չարշին իրա իշի խասիաթը գիտայ։
Չիմանում ով ա մեռէ.—վոյ վավիլէր ա կանչում։

Պղնձումը փլաւ չատ կայ, քիզ ինչ։

Ջահելի (կին) փեշը իրան դուշման ա։
Ջուրը ջաղացքն ա տարէ, նա չախչախին ա ման գալի։

Սանտ ծեծողին «դըլխկ» ա անում։
Սերը սաւօրն ա կիրէ, թանը մոլօրն ա կերէ։
Սև չանը դարաղուշ ա կանչում։
Սէլը չի գոռում, սէլւորն ա գոռում։
Սէրը կպաւ աթարից, աթարը կպաւ սլատից։
Սիպտակ չունը բամբակ ծախողին վնաս ա։
Սիրուն կընիկոյ ծոցը պառկի, դէչ կնիկոյ ձեռի հացը կեր։
Սոխն խառկեցի, տուլի ձեռը։
Սոխ չես կերէ, խի ա սոխաֆոտ գալի բերնէդ։
Սըրբին խունկ ու մոմ մի խոստանայ, էրէխին՛ բլիթ։

Վատ հարևանը մարդի մարդ կը շինի։
Վատ հարևանը մարդի հանաքատէր կանի։

Վատ օրը կը լուանայ, վատ մարդը չի լուանայ։

Վարդապետին ասին,—տղէդ մեռնի, ասեց.—Վարը վարի, վարոց գցի։

Վարդը մէ կայ. փուշը կըրակի։

Վարդի սիրուն բաղի պատերն ա պաշուած.

Տախտէն չես կերէ, փորդ խի ա կսկըծում։

Տանձ ինձ, խնձորն ինձ, սէրկեւիլն էլ սիրտս կուզի։

Տանուտէրի վզէն իրա գլխըն ա։

Տանու տիրոջ օրհնեա տէր չկայ։

Տնէ տուն, տուն կաւիրի, գեղէ գեղ, գեղ կաւիրի։

Տկլոր ջանըն կատու չլակելն էք պակաս։

Տուն ճեա, եկն ի վեր ճարոց։

Տուն չկայ ալլէ փոշի, գլուխ կը կապէ կարմիր փոշի։

Տուէն ընկէ, տածկէն չնկէ։

Ցորենը փորից պ·րի, որդին հօրից։

Փառք քեզ գարէ հաց։

Փող տուեցինք, խաբայ առանք։

Փոր ա, խոր չի։

Փուշը փուշ ա, մարիֆաթը անուշ ա։

Քամակդ ալրա աղիդ, հաց կե, էրեսդ աղա մարդից հաց կե։

Քանի կասի, իրա էշը կը քշի։

Քարը մէ կալ. տակը դիր։

Քարն իրա տեղ ծանր ա։

Ք. . . չեղած՝ աթար ա էլէ, պատին կպէ։

Քաւորի եզան գեղեցն ա։

Քեպչալ ոչ դեզ խռնեայ, իրա գլխին կանէր։

Քիրն ասեց, աղբէր ունեմ, աղբէրն ասեց՝ քիր չունեմ։

Քու պտղըրտուչ իմ չան խըլկինչ։

Քոռի չատ այնուամն ա, թէ մուխը թանկ ա։

Քոռ չարչին կը նստի, իրա էշը կը գովի։

Օձ ա խուզում։

Օխչարը գիլին ամանաթ ես տուէ։

Օձը մայրամաֆոտից կը փախնի, մայրամաֆոտը մինչի դուռը կը մնայ։

Օձը ջրի վրին մարդի չի խէթի։

Օսկոռ ապտաղ, օսկոռ կը բերի։

Օրը գնում ա, խաբէն չի գնում։

Ֆր ջոջութեն՝ առակութեն։



# I4.

**Վաղարշապատի գիւղ բարբառով *).**

Ալանի էր, խնձրհամեց էր։
Ախպէրն ախպօր բօրը չի ուզի, որ իրքն էլ չընգնի։
Ակռաւի ճուտը իր մօր հըմար ազիզ ա։
Ակռաւի տեսած սերմը չի կանանչի։
Ակռաւէ ձէնը որ Աստուծ լսի, Վարժթիփորին ձին կը գայ՝
Ահը (երկիւղը) շատ ա, քանց մահը։
Ածի տարին ինչ իր, որ մահի տարին ինչ ըլնա։
Աղուէսի ճաղն՝ իր պոչն ա։
Աղքատի ոտը դուս էր էկէ, մէկն էն դհիցն ասեց.—Տուր, տանեմ մեր կատուին։
Ախնճար ձի նստողը, թէզ վէ կը գայ։
Ամէն մարթ էլ մէկ չի ըլնի։
Ամէն վախտ տատը գաթա չի ուտի։
Ամէն օր իծի ուն ա բաց, մի օր էլ թող ոչխարին ըլնի։
Ամէն վախտ ջուրը գերան չի բերի։
Ամբ օրը գիլին հարսանիք ա։
Անալիր խաղք ա, մնաց որ ալրոտւում ա։
Անաստուծ տեղը կաց, անարխայ տեղը մի կենայ։
Անձրև օրը հաւերին ջուր տնող շատ կըլնի։
Անըմուսմը կայ, ամանումը չկայ։
Անըմը տուր, հայը քցայ։
Անչափն գեղ ա մտէ, անփնտ ման ա գալի։
Անողը արծել ա, ասողը չի արծել։
Աշխարքի սուտը շատ ա, քանց ըղուրթը։
Աշխարքը փիլաքեաճ ա, մինը նիլնըմ ա, մինը վէ գալի։
Աչքատեսուկ, բերնակարօտ։
Աչքը չինելաւ տեղ, ունքն էլ ծռեց։
Ապրել կայ դանակ ա, ապրել կայ դմակ ա։

---

*) Սոյն Վաղարշապատի բուն առածները գրի է առնուած գրաշար Յարութիւն Աւչեանի հաւաքածու. ցարդ անտիպ ուսումնասիրութենէն. Սա ոչ թէ նստակեաց ժողովածու է, այլ հատ-հատ հաւաքուած ժողովրդեան բերանից՝ որ բանաւորի միջոցին կը գործածեն. Յ. Աւչի.

Անջուր մի՛ բոբկացի։
Անջուր ջաղաց, անկրակ բաղարջ։
Ասեղը քեզ խրա, մախաթը հարևանիդ։
Աստոծ խառնած չի՝ իրար քցող ա։
Աստոծ ազադի ալափտորակի քացուց:
Աստոծ ազադի լուի քացուց։
Աստոծ սարը կը տեսնայ, ձինը կը դնի:
Աստըծու պահած գառը, գելը չի ուտի։
Արսըգը մեռաւ . . . ցից մնաց։
Արինը ջուր չի դառնայ։
Արչն էր անուն կը գոռայ։
Արտը խախուրթ էր, միաճէն կարկուտն էլաւ։
Առաչ էմ գնըմ, գլխիս էն տալիս. թէ եդ էմ մնըմ, ոտիս էն տալիս։
Առանց ձիու մաուրք ա կապում։
Առաչի թիֆէն համեղ կըլնի:
Առաչի խօսողը չի՛ գիդա, թէ եդի խօսողն ինչ կասի։
Առաչի կնգայ պագն անուշ, եդի կնգայ քաքն անուշ։
Առաւօդուայ արևից ինչ տաքացայ, որ իրիգնադըհին ինչ տաքանամ:
Առաւօդուայ շառը իրիգուայ խէրէցը լաւ ա։
Առել ա կուտը, մտել ա մութը։
Աւելի թիֆէն փոր չի՛ ծակի։
Ափսոս չաքար՝ չան բերան:

Բանը չուտ վերկենալը չի, Ասծու աչողալն ա։
Բանն ով անի՝ ես ու դու, հացն ով ուտի՝ ես ու դու։
Բարեկամը չէթալ չգալով եադացաւ, եադը էթալ ու գալով բարեկամացաւ։
Բարեկամի հետ կեր ու խում արա, առ ու տուր մի՛ անի։
Բերան, բերան, հազար բերան։
Բերնով ուզած, ոտով կերած:
Բզի գլխին բռնձքով տալ չի ըլնի։
Բոզ կնգայ գլխին հարիր լաչակ կայ քցած։
Բոզից ախչիկ առ, բոզին ախչիկ մի տայ։
Բողքը քանի սեհրագ ըլնի, գլուխը միմենձ կը քցի։
Բոչէն փաշայ չի դառնայ։
Բոչի եղը որ չատ ըլնի, կէօն էլ ոտին կը քսի։
Բըրդին կուլայ չի ըլնի։
Բոզ ձին գարի չի ուտի։

Գառը գիլին պահ տուին։

Գառիցը շուն, շանիցը գառ։

Գելը սովածութենից դուռը չէր կարըմ նիլնել, ասեցին.—Քու տէրտու հէրն անիծած, ընքամ կերել ա, որ դուռը չի կարըմ նիլնել։

Գելը տարածին ա փոշման, տէրը թողածին։

Գելն ընգաւ սուրըվի մէջը, վայն էկաւ մէկի տիրոջը։

Գեղ կաղնի, գերան կը կոդրի։

Գեղըցին որ ծիլ-ծիլ ոսկի դառնայ, ջէբդ մի քցի։

Գիդունի հետ քար քաշայ, անգեդի հետ փլաւ մի ուտի։

Գիդուն աղուէսը ջուխտ ոտով ա թալաք ընգէ։

Գիլի անըմն ա դուս էկէ, ամա աղուէսը ջաղդան ա կդըրուել։

Գիլին ասեցին.—Շլինքդ խի՛մ ա հաստ, ասեց.—Իմ բանը ես իմ ձեռով էմ տեսըմ։

Գիլիցը տամազլըղ չի ըլի։

Գիլի դլխին աւետարան կարթացին, ասեց.—Հարա՛յ, շո՛ւտ արէք, սուրուն գնաց։

Գիժը գնաց հարսնըքատուն, ասեց.—Ըսաէ լաւ ա, քանց մեր տունը։

Գիժը չամանչի, գժատէրը կամանչի։

Գիժը մի քար քցեց ծովը, հազար խիմաստուն չկարացին հանել։

Գիկօն գիդայ նախիրը դօր կը քշայ։

Գնա՛ մեռի, արէ՛ սիրեմ։

Գողը որ տանու ըլնի, եզը յերթոմը կհանի։

Գովացին Ալխանին, թաւու քաքեց պատըհանին։

Գորտի էլէսին թքեցին, ասեց.—Անձրև ա գալի։

Գոքիդ նստեմ, միրուքդ փետեմ։

Դարմանը քունը չի, դարմանանոցը հօ քո՛ւնն ա։

Դիւին դժողք չանց չտաս, արքայութենի ճանփէն չի ճանանչի։

Դու մի բանի գողին, որ գողը քեզ չը բռնի։

Դուզ խօսողի գլուխը ծակ ա։

Դուռդ փակ պըհի, որ հարևանիդ գող չբռնես։

Դուս գայ դուռը քըհանայ, ներս գայ տանը սատանայ։

Եարէն տիրոնչը ցաւ կը տայ։

Եաւշանը ռեհան չի՛ դառնայ։

Եզը որ վեր ընգնի, դանակաւորը կը շատանայ։

Եզը վեր էն ունում, տակիցը ֆորթ էն ուզում։

Եքըմին խըլատ ունօղ շատ կըլնի, հաց տուողը քիչ։

Եղ ու մեղր չան տկում։

Ողը թանգ ա, ճմբուռն էժան։
Ես ջաղացի ռուն էմ լիզում, դու ջաղացպանին։
Ես ասում էմ.—մի՛ տա՛, էշը քաձ ա, նա ասում ա.—քուռակն էլ ա քաձ։
Ես տանձ էմ ասում, նա գանձ ա ասում։
Երկար մարթու խելքը չօքերումն ա։
Երկար մարթը ախմախ կըլնի, կարճ մարթը չախմախ կըլնի։
Երուսաղէմ շուն չը կայ։

Զուռնէի հունարը պիպիչն ա։
Զոռով, զոռով շունը կապում էն պանրի տակից։

Էգցուայ բանին, ձին ա էկել։
Էլած սրտին, քար մխիթարանք։
Էլաւ սիրտ՝ կդրեց գլուխ, իջաւ սիրտ՝ չը քթաւ գլուխ։
Վլոնց հարսը սիրուն կերեւա։
Էժան մսի խաշուն շունը չի կերել։
Էծը որ էծ ա, տեղը քերում ա, նոր ա նստում։
Էծն իծի հրմար լաւ ա, քանց մի ուշտու ոչխարը։
Էն քանդած խոռը, էդ կոշտը չի չորի։
Էշ նստելը մի այիբ ա, վեր գալը էրկու։
Էշը մաստաղ չի ըլնի, ամա իշագինը մաստաղ ա։
Էշն էլի էն էշն ա, փալանն ա փոխած։
Էշը որ ինչի մօտ կապես, եա գռալը կը սովրի, եա տանելը։
Էշը պրծել ա, տընգին կրծել ա։
Էշն ինչ գիդա նուշն ինչ ա։
Էշն իր ախոռին չի գռայ։
Էշն աշխատի, ձին ուտի։
Էն վաղ էր, որ էշը կաղ էր։
Էնքան անբաւարքն ա, որ ծուխն էթայ ծարաւ կը գայ։
Էս օրուայ բանը, չեն թողայ էքուց։
Էրէս մի՛ տայ, սատառ էլ կուզի։
Էրէս տուինք, սատառ էլ ուզեց։
Էրէսը սատառից չեն կդրի։
Էրեխէն միանայ, մէրը կշտանայ։
Էրեխէն բանի գիր, հետը գնայ։
Էրկու գժին, մի խելօք կայ։
Էրկու լաւը, մի տեղ չի ընգնի։
Էրկուսն էլ մի սանդրի կտաւ էն։

Ընչանք օղը գայ, մատաղը կեթայ։
Ընչանք էրեխէն լաց չըլնի, մէրը ծիծ չի տայ։
Ընչանք խելօքը մտածի, գիժն իր բանը կը տենի։
Ընչանք Շուշան պարթարուի, ժամը կարցակուի։
Ընչանք չը պղտորուի, չի պարզուի։
Ընչանք չը գայ եղինը, չ'ինչուի առաչինը։
Ընքան կացար, որ ջուրը կարմունջը կոխեց։

Թազէն մաշ, հինն արխաբաշխ։
Թանը քունը չի, թանամանը հօ քունն ա։
Թասիբը քցել էն շանը, շունը չի կերել։
Թարխունը քօքին կը բուսի։
Թացը չորի հետնայ էրվում ա։
Թաքուն բանը քառասուն օր ա, բէլլու կանի։
Թէ անթառան ծաղիքը կը թոռմի, բոզն էլ կը պառաւի։
Թէ մօքումդ տեղ ըլնի, պուտուկումդ էլ եղ կըլնի։
Թթու ա՝ թան չի, ամեն մարթի բան չի։
Թող փորս սոված ըլնի, անգաջս դինջ ըլնի։
Թող ասեն գեչ ա, թող չասեն էչ ա։
Թողում էն որ աղէն հօրը քաշի։
Թքի ձեռքս, քսեմ էրեսիդ։

Ժամից ես եմ գալիս, «օղորմի Աստուածօ»ը դու ես ասում։
Ժամի դուռը բաց ա, շամն էլ էրէօ.
Ժամի դուռը չատ էլ բաց ա, ադբուռ հայրին ինչ ա էկէ։

Իծի կիճը քոր գալիս, չօբանի դագանագին ա քորում։
Իմ ասեղ ուտողը մախաթ կը քաշի։
Իշի պոզերը չէր դուս էկէ, ասեց.—Հըլա քոռակ էմ։
Իշին ասին մի մարիֆաթ խարջա, ոտը վէկալաւ, մի պինդ տուեց։
Ինադ արեց էլերին, ռաբ տուեց գէլերին։
Ինչ աղբրից մարթ ջուր խմի, էն աղբրին քար չի քցի։
Ինչ կուտի տանձիկը, թող ուտի խաչիկը։
Ինչ կուտեն բոզերը, թող ուտեն խոզերը։

Լացացնողիդ մօտը գնայ, ծիծաղացնողիդ մօտը մի՛ գնայ։
Լաւ ա մի պուտ բախտը, քանց թէ մի կարաս իմաստութիւն։
Լաւը թանը չի, թանսամանն ա։
Լիզուի տակին փուշ չը կայ, որ ծակի։
Լիզուի բոզը, կնգայ բոզից վատ ա։
Լեզուն լագ-լագ, գլուխը ծակ-ծակ։

Լիոր փուչ ա, մութն անուշ ա։
Լօլօ-լօլօ, քի՛դի աղչկան էլ լօլօ։

Խալխի ձեռով ձուկ չեն բռնի, փուչ կը բռնեն։
Խաչը խաչապաշտին խռով ա։
Խա՛չն ա տէրը զօրաւոր արէ։
Խելօք մանուկը օրօրոցում բէնլու կանի։
Խելքը մենձ ու պուճուրի չի, բանականութենումն ա։
Խիարը fofիցն ա ծուռը։
Խուրցը կեմն անջաղ աժէր։
Խուփը թօլ էլաւ, պուտուկը քթաւ։
Խօզի սուտը շատ ա, քանց ըղորթը։
Խօփդ սուր ա, ամա հանդը բաժանովի ա։

Ծանդր նստի, որ լի՛դր գայ։
Ծանդր քարը իր տեղումը կը մնայ։
Ծանդր տեղդ մի թեթևացնի։
Ծիծը ծոցին ժաժ կը գայ։

Կաթի հետ մտածը, հոգու հետ դուս կըլնի։
Կակուղ էրէս հրեշտակին, սատանէն բէզ-բէզ վրայ կտայ։
Կարըճին ասին.—Կինճդ դեղ ա, խոր խրեց։
Կարմիր կովն իր կաշուցը դուս չի գայ։
Կատուին հաղ ա, մկանը մահ ա։
Կատուին ասին.—Շեռդ դեղ ա, խոր թաղեց։
Կատուին ասին հէրդ ա լաւ, թէ մէրդ, ասեց.—Էրկուսն էլ Եա-օ, Եա-օ։
Կատուն որ կատու ա, շատ որ հետն էս ընգնում, թանթը քցում ա էրէսդ։
Կէսուրըս մեռաւ, տեղս լենացաւ։
Կը կակըղես, կուտես դիալլար։
Կծկըձու, քաքեմ խարոնցտուն։
Կծկըձու, փառք Աստըձու։
Կողնուն դրին խալէչին, թօլ էլաւ։
Կոշտը նստել ա քարի գլխին՝ լաց ա ըլնում։
Կովը մեռաւ, խաւը վերացաւ։
Կովը ֆորթին, ֆորթը կովին, գլուխը ցաւի Եախտարածին։
Կո՛ւժ քեզ ասեմ, կուլա դու լսի։
Կուշտը սովածին մանդր ա փըթում։
Կռուի մէջը չիր ու չամիչ չեն բաժանի։

Կատուրը քանդել ա, որ ձին քըրելու դարց չը քաշի։
Կրակի մօտ չախմախին չեն տայ։

Հալալը որ մազ դառնայ, չի կդրուի։
Հարամը որ գերան էլ դառնայ, էլի կը կողրուի։
Համ ճային ա տալի, համ մխին։
Համ էլայ խցից, համ էլայ դ...։
Հայլին առ երեսդ տես, որ ուրիշին փուլթ չդնես։
Հաչան շունը, մարթի չի կծի։
Հանաքի կէսը կալու ա։
Հանաքը կըլնի չհանաք։
Հարսի ոտով, փեսին լաւութեն ա անում։
Հարսի հէրն ու մէրը դռան տակին ա թաղած։
Հարսին հէրանց տուն ասա, տա բոբիկ էլ կէթայ։
Հարսին թէ լեզու չունի, կեսրոչն իմանէ։
Հարուստը որ չոր ա հաքնում, ասում են.—Բարով մաշես. ամա աղքատին,—Էդ ո՞րդիանա։
Հարստի սուտը, աղքատի ըղորթն ա։
Հասկացողին մին ասա, չհասկացողին հա՛ կաց՝ հա ասա։
Հաստ ու բարակ մի գին ա, վա՜յ բարակ մանողին։
Հարևանի շունն էլ լաւ պըտի ըլնի։
Հարևանիդ ուզա մի կով, որ Աստուձ քեզ տայ էրկու կով։
Հաց դնեմ, հասի, բան դնեմ փախի։
Հացը դրած, բանն անիծած։
Հացդ դիր հացիս կողքը, եա գլխից կեր, եա տակից։
Հացը ծնգանը, աչքը կնգանը։
Հացը հացարարին տուր, մինն էլ էվելի։
Հացն էրէսիցը կուտեն։
Հաւը տանը կենայ, կուտն ուտի։
Հաւը քանի չաղանայ, ուրին հուպ կը տայ։
Հաւը ջուր ա խմում, վերև ա մտիկ անում։
Հաւն իր կտին կեթայ։
Հաւն էրազում՝ կորկի ֆորումն ա ըլնում։
Հէ՛նց որ էշը տռում ա, ճեասըբի ճակտին ա դիբնում։
Հեռուանից եկլի աչքն ա հանում, մօտըկանց տիրանչը։
Հին ջվալին թազայ տա՛նգ։
Հըմի էկա՛ր պառուի տէր օղորմին։
Հիւանդին խնձոր հասցնող ա՛։
Հո՛ կայ՝ դուս կը տանի, հո՛ կայ ներս կըբերի։
Հօր փեշագը, տղին կնիգ ա։

Հօրս անունը տուող չը կայ, քամին էլ մօրս էն հարցնում

Ձեռը ձեռ կը լուանայ, եղն էլ երէսը.
Ձեր եղը ձեզ ըլնի, մեր չորթանին մեջ գլխին:
Ձին ձիու մօտ որ կապես, եա խուն կը առնի, եա խասեաթը.
Ձուաձղի սիրուն, բալի պոչ էն պաչում.
Ձու ածող հաւը, կչկըչան կըլնի.
Ձուի գողը, ձի էլ կը գողանայ.
Ձուկը գլխից կը փտի.
Ձուկ բռնողի ոտը կը թռչուի.
Ձուկը ծովում կը մնձանայ.
Ձուկը ծովում բազար չեն անի.

Ղարիբ շանը, պոչը ոտք կը կոխի.
Ղանճըրղը որ քոնթի գայ, Եօփաղը Բաղդադու կը գայ.
Ղրղին ծախս մաս դառդը չի՝ ծըլծըլացնելու դառդն ա:

Ճանճը մի բան չի, ամմա որ ընգնում ա թանի մէջ, մառսա-ռում ա.
Ճրագն իր տակը լոյս չի տայ.
Ճուտամէր կատուն, գող կըլնի.

Մալին տէր, որդուն հէր.
Մալը գնա՝ տէրը հետը, որթին գնա՝ հէրը հետը.
Մանքն մանած ա, պտտէն կախած ա:
Մաճին էս դուճիումն ա, էն դուճիումը չի.
Մամմադն էլ դժողքը չէր էթում, ամա գլխին տարով տարան.
Մարթ որ մարթի խօսք բանի տեղ դնի, քար քարի վրայ չի կենայ.
Մարթ որ մարթի դարս չիմանայ, կէս քչերին ժամ կտայ.
Մարթ մարթի բաղ կը տայ, մարթ մարթի պտուղ չի տայ.
Մարթ չուն ըլնի, տան պուճուր չըլնի.
Մարթ կայ՝ տէրտէրն ա սիրում, մարթ կայ՝ տէրտէրանկինը:
Մարթ կայ ոչ մարթանման, խօտկերքն էն մարթատարքան.
Մարթի աչքը դուռ գայ լաւ ա, քանց անըմը.
Մարթի չուապ, վարթի չուապ:
Մարթից որ էշ չըլնի, իշի գինը հազար թումանէ ա.
Մարթամիջի մարթս ըլնի, հազար թուման պարտքս ըլնի.
Մասի սազը մնատնիքն ա.
Մեծի սասած ա, պուճուրի լսած.

Մեղաւորին արքայութեան ով ա տուէ.
Մեր գռանը լաց ա լգում, գնըմ ա ուրըշի դուանն ա հաչում։
Մեր ըղունգը բաց անենք, մինչեն թքենք։
Մեռլի տեղն էլ մի քիչ լէն պըտի ըլնի։
Մեռլի ոտին չամիչ կայ, որ մեռնելիս սիրում են։
Մի ձեռ որ չես կարայ կըրես, պաչի դիր գլխիդ։
Մի անով չենք, մի հայով ենք։
Մի փորին էրկու մուննար չի ածի։
Մի տուն մտնում էս, տան էութենը էն տան պուճուրից հարցրա։
Մի հաց որ կէս էլաւ, էլ նոր չի սաղանայ։
Մի ձեռը ծափ չի տայ։
Մի ձեռով էրկու ձմերուկ չեն բռնի։
Մէին մի տայ, որ էրկու չուզի։
Մընչանք հասար բարակի, բարակի հոգին դուս կը գայ։
Մկան չեռը ջրագացին Փայլայ ա։
Մուկը ծակը չէր կըրըմ մտնել, ցախաւելն էլ պոչից կապեցին։
Մուկն էլ ա աղանձ ուտում։
Մութքա պառանի մեկնուղ ա։
Մրիցն էլաւ, մրամանն ընգաւ։
Մօդիկ հարեւանը լաւ ա, քանց հեռու բարեկամը։
Մօրը բաղդ, ախչկան բախտ։

Նալը մխին բանդ կըլնի։
Նիսիա գինի խմողը, էրկու անքամ կը հարփի։
Նօխուդն ըլել ա լաբլաբու։

Շաքաթը չուտ էկաւ, քան ուրբաթը։
Շանն ի մարմոնց, քաղն ի պալատոնց։
Շան հետանայ ընգերացի, փէտը ձեռւիցդ մի քցի։
Շան հետանայ ջուայ չեն մտնի։
Շան կծածը, շան մազը կը սաղացնի։
Շատ անողին շալ չապեն, քիչ անողին ալ չապեն։
Շանից մազ պոկելը խէր ա։
Շանը քարով կը տան, տիրոնչը խաբր կանէն։
Շատ հաց փիղար, ամա ձէնդ չի գալիս։
Շատ մի սիրիլ՝ ատիլ կայ, շատ մի ատիլ՝ սիրել կայ։
Շատ գիտես, քիչ խօսայ։
Շնոր գիդում ես, ամա փիմացածդ անգերմիցը հարցրա։
Շատը շատին, քիչ . . . ղաքարին։
Շէն անուն, աւեր քաղաք։
Շիղակ խօսքը համամբըլեր կտան։

Շիրվան դել քիչ կար, մինն էլ գեամով անց կացաւ։
Շարն ասեց.—Դու ինձ պըհա փողչամիչի, քեզ պըհեմ մարթամիչի։
Շունը, չան թաթլիկ չի ծամի։
Շունը, տէրը չի ճանանչում։
Շունը հաչալով կը սատկի։
Շունը դնըմ ա, սաղկէն ըռխին։
Շունը գնաց ղասաբխանէն՝ ոտ չը տարաւ, իր ոտը կդրեց։
Շո՛ւնն ինչ, բո՛ւնն ինչ։
Շունը պոչը պտըտում ա, ? բերնին ա դիբնում։
Շօզոնքով գառը, էրկու մօր ա ծծէ։

Ոչ կը խմեմ ձեր վուիկ, ոչ կը քշեմ ձեր հարեկ։
Ոչ դու արի, ոչ նա բարի, էրկուսդ էլ մի արդի գարի։
Ոչ հայի խունգ ա, ոչ Թուրքի ուզարլուգ։
Ոչ սրփին մում խոստացի, ոչ էրեխուն բլիթ։
Որ ատամդ որ ցաւում ա, հանա դէն քցի։
Ո՞ր մատդ կդրէս, որ արին չը գայ։
Ո՛րդի տանձ կայ, ընդի էլ պոչ կայ։
Ո՛րդի հաց, ընդէ կաց։
Ո՛րդի մթնի, ընդէ կութնի։
Ո՛րդի դինի, ընդի քնի։
Ո՛րդի պիպլիչ, ընդէ տմբտմբիչ։
Ոսկին էլ շատ պուճուր ա, ամա գինը թանդ ա։
Ոտդ կարպետովդ մեկնի, որ չմրսես։
Ոտին տեղ արեց, ուրին էլ ա տեղ անում։
Ուզող ուզողի, բուրթը գզողի։
Ուզում էս կաքաւաերից էթաս, ակռաւինն էլ էս մոռանում։
Ուլը քթոցի տակ չի կենայ։
Ուղդը քթալով էս ջրո՞ւմ։
Ուղդը նիլել էս, կուզեկուզ էս մտն գալիս։
Ուղդի հաղը կարմնջի վրէն կը բռնի։
Ուղդին ասին, չլինքդ խի՞ ա ծուռը, ասեց.—ի՞նչս ա դուզ, որ չլինքս դուզ ըլնի։
Ուղդին ասին աչքդ լիս, քեզ քոչադ ա էլէ, ասեց.—ինչ ուչքալխսէք, որ իմ բեռը էլի իմ սալագին ա։
Ուղդին ասին աչքդ լիս, Թաքաւորը քեզ կանչել ա, ասեց.—Ես գիդամ, ես Կողբ աղի պըտի ըղրգի, ես Տարուր բրնձի։
Ուղդը մեռնի, մեռնի, էլի կաշին մի իշաբեռն ա։
Ուրաքն իր կոթը չի տաշի։
Ուրաքը դըրայ իրան կը տաշի։

Մեռնիմ քզի, զքու զօրաց.
Իմալ յերես պահեց անօրաց։

Ցէս օր ինի է,
յԱչքեր չինի է։
Ցէս օր ուրբաթ է.
Բերանդի խոր պատ է։
Արտեր խոզան է,
Քու ջան զոզան է։
Ցիդամ քու սիրուն.
Հաց մը տամ քու խերուն։
Արտեր զիւան է.
Տունդի դիւան է։
Ցէս օր յէս օր է.
Ձուր վաղ կէս օր է։
Երթանք խըտ ձորուն,
Ո՛րի վըր ճամբխուն։
Տանեմ իմ մամուն։

Ջաղացք վէրինական,
Դիներ օգնական։

Դըու.
Ղռունկներ՝ Թէքան.



## Ե.

### Թաւէնի բարբառով.

Այբ—բեմ,
Բրդեմ,—ուտեմ.
Գեմ—գա,
Գդալ—չկայ.
Եչ—գա,
Վերայ պըծայ։
Այբ—ժէ—ձէ—ռա.
Ծոչի պուտուկ կեռայ.
Նանէ, լից՝ ուտեմ,
Քանի չի մեռայ։
—Ինչ էս էփեր, քաւոր կնիկ,
—Թանով ապուր.
—Մէջն ինչ ես ցըդէ,
—Կատուի դօշ։

Խաչագողի աւետարան

—Էգա կային, դռան տակին,
—Պոչն էրկեն է անիծածին,
Ձմեռտըկի մըջ տապրակին։
—Վեր առ, պարկ դռան քարին,
Թող կոտռի պոչն անիրաւին,
Ու պառտըկա մըջ տապրըկին։
Քուրըը գնաց աղը
Մնարուքը փախաւ պաղը։

Բուլդա..
Ականջդ բուրդը,
Ջաւոխ հագիր,
Երթանք ուխտ։

Բոչա, բոչա,
Թնդըրի քօչա,
Մէրդ մեռնի,
Գամ թամաշա։



## 7.

**Բազրան գիւղի բարբառով.**

Հեքեաթ, հեքեաթ պապա ա 1),
Ղաճխա քուռակ տակս ա.
Հեծնեմ էրթամ Երեւան,
յԷրեւնու չալցուկ բերեմ,
Չալցուկը տամ հաւերուն,
Հաւերս հաւկիթ ածեն,
Հաւկիթը տամ չօբըՑին,
Չօպան ընձի գառ տայ,
Գառը տամ Աստծուն,
Աստուած ընձի աղբէր տայ։
Աղբէր, աղբէր ջան աղբէր,
Բերդը փլաւ, թեղ կոռաւ։
Առու—առու եմ թռէ,
Քառասուն կաքաւ եմ բռնէ,
Համրեցի մէկն է պակաս։
Գինի գինի գինստան,
Քուրմ սունիմ Շահստան։

*
* *

—Բարև տանիս իմ հերկան, մէրկան,
Քաք հօր ուրանց էղնի հէրկան ու մէրկան.
Ցորին զխսի տուին Ավրան.
Լուսուն որ վեր կելլամ,
Գլխուս վերև չարոխ, տարան 2)։



1) Ասել է Գրիգոր Աւօեան Բազրան գիւղացի․ գրի է առել․ Գ. Հ.
2) Տրեխի ծակուած տեղը կարկատել սրեմով․

# Յ.

**Կուլապ գիւղի ասելուկներէն *).**

1.

—Տղէկներ, բերէք բախին,
—Եօթ բբուկ վըր մէ ստխին,
—Տարան մեր երդիսից կախին,
—Որ ճժերն էլ պաս պախին

2.

—Հանդմ, էկաւ մեծ պաս,
—Մէ աղջիկ ուզեցինք չխաս.
—Կտորի ընդու էրկըթէ քաս,
—Ցորին չէկաւ եղներ մըի խաբո,

3.

—Ադամամութ,
—Ծախէն զարկայ մէ կութ.
Օրթա սաս տուտ,
Կտորէ ընդու բուդ։

4.

—Ալէքօն ամառ պարկաւ հովեր,
—Ընդու ձմեռ սատկան կովեր։

5.

—Բալիք,
Ձեր յօդէն սալիք,
Ձեր ձին նալիք,
Ձեր եղ խալիք,
Ի՞նչ մացիք տալիք։

6.

—Ա՛խ քու ամին.
Ձեր գիժ խնամին,
Էկաւ վըր կամին,
Կայնաւ (փչեց) վերին քամին։

7.

—Տուէք չուխս մի թաթ,
—Խաղնիմ, էթամ յարտ,
Կթենք իծու կաթ,
Խաղանք ըն տե սաթ։

8.

—Ալէքօն Աստուած պախայ,
—Որ թա մեր օչխարներ չծախայ։

9.

—Նշան,
—Ցընչի զարկիր մեր չան,
Գողցար մեր կողով ցան,
Աստուած կտռայ ձեր թան։
Մնաք անկով, անկթան։

---

*) Կուլապ գիւղի մէջ նաեւ ընդհանրացած է ոտանաւոր զրոյցներ. երբ մին մի բառ կամ նախադասութիւն ասաց. հանդէպինը նորա ասածի վերջաւորութեան նման մի բառ կամ նախադասութիւն կարտասանէ իմաստով եւս շարունակութիւն առաջնոյն. Փոխ առ փոխ կը շարունակեն. մինչեւ որ մին յաղթուի.

Երբեմն եւս մի անձ. մի ուրիշի ասած նախադասութեան վրայ կը շարունակէ.

Այս մասին մեծ առաւելութիւն ունեն Կուլապցիք.

Կուլապցիներէն կարգ մի ասելուկներ կը ներկայացնեմ այս տեղ. որով ընթերցողը Կուլաբ գիւղի գաւառաբարբառէն իսկական նմուշ մի պիտի ունենայ իր առջեւ եւ թէ փոքրիկ ծանօթութիւն մի կունենայ ժողովրդեան յատկութեան.

10.

—Դուլին,
—Էկաւ, գանեց մեզ թուլին,
—Մօլա զամբրայ Սուլին,
—Էկաւ տարաւ մեր բուլին։

11.

—Աղջի՛, ձեռդ մանգաղ,
—Ելի յորտ կերթաս քաղ.
Արի, էթանք մեր բաղ,
Ինչ ձեռ, ոտք առաւ խաղ.
Կը խօսաս ախմախ—ախմախ։

12.

Աղջի՛, արի, էթանք մեր կալ,
Սալանոցից բերած էնք սալ,
Մէ ձմռուկ կէր, էն էլ քալ.
Կովեր ծնած էն, կուտենք գալ,
Ցըմեն կըլլեն քըզի մարալ։

13.

—Մուքէլ, յուսա կուգէր,
Ծամբախ բուք էր,
Արտակօլ սև ու սուգ էր։

14.

—Տի՛թ բռուք է քու մի՛ր չոր.
—Երեում էր բաձէն նոր,
—Ինչ էս կերէ. գացի քո փոր։

15.

—Օ՜խ—ա՛չ,
Ուտենք օչխրի խաչ.
Խմենք, էթանք Խոչբաչ.
Կտրիճ ընդունց գեղի ճաչ.

16.

—Աղջկայ անուն Վառվառ,
Խաւը վե կալաւ, գլից Թառ,
Մարթն ծնաւ, բերեց գառ.
Խոխոալէն էկաւ մէ խառխառ,
Զգինամ խեր ա թէ զառ։

17.

—Մեր կոմն ա խօլ,
—Մեր օխչարն ա բօլ,
—Ծըմէն մէ խոչի դօլ,
—Տուէք ջուխտ մի սօլ,
Խազնեմ էթամ, Արտակօլ։

18.

Թիակ բերէք, քերենք.
Սուռ Երեմին փայ պահենք.
Վեցկին լծենք ու տանենք,
Մեր յարտ վարենք։

19.

—Զարկրի Ասօն 1).
Ընդու քուր Սոսօն.
Մեզեբ Էլօսն.
Մելօյի Աօն.
Թօփալ Նասօն,
Զօպան Հասօն,
Խրօզրօյ տղայ Ուսօն.
Մօլլադէմու Կուսօն,
Մարգարի Սուսօն,
Զարկրի Լուսօն,
Ասլանի Պասօն։

20.

—Էթուս էս գո՛ր.
Դոր ա քո մրի չոր,
Օր կերթաս էն ձոր,
Պահի բռնես լոր։

21.

Գացիր տուն,
Թառի տակ զարկէր սուն.
Խաւեր ածէր բուն.

22.

Ցորեն օր փռիս Թաց ա Թա չոր,
Օր աղանք, ջաղացքը լաւ կը Թա-
լա սօրէ
Ալէխուրիս արէի.
Ոչ էրի (ոչխարի Թեր) կայ՝ ոչ մա-
Թի։

1) Իգոխը եւս մի առակախօս կը լինի։ Իզովրցին Կուլարցուն հետ վէճի կը մտնուի. հարսնեւորներր կառաջարկեն.—Այն պիրաի տանի, ով որ տաս հատ միանման վերջաւորութիւն ունեցող անուններ խրտասանէ առանց կանգ առնելու. Կուլարցին վերի անունները կը յիշէ։

# ԽԼԱԹԵՑՈՑ ՀԱՐՍԱՆԻՔԸ*)

## I.

## ՆՇԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ.

---

Խլաթայ յէրկրի Տափաւանք 1) գեղն Մուտօ—Մուրէն գիւղէր զԲուռկէ Աւէյի աղջիկ։

Աղջըկեայ անուն էր Դեղձուն, աղջըկեայ մօր անուն էր Համաօյ։ Տղի անուն էր Ըռքէ, տղի մօր անուն էր Գիւլէ։

Ըռքէն էր մէկ ու ճար տըսնուխինգ—տըսնուվեց տարեկան։

Դեղձուն էր տըսնուչորս—տըսնուխինգ տարեկան, ինքը խօրոտիկ էր. կը յըմանէր մըլըթի 2) խնձոր։

Տղէն կերթէր էտոնց դիւռ կիւ խաղէր։ Օր մի. կիւ խաղէր՝ տեսու օր աղջիկ մի յէլաւ դիւս, աճքարիճ 3) վերէն, միւչասըմճ 4) ի գլուխ, արծթէ խըզմէճ 5) ի քիթ, խալխալճ 6) ի ոտներ, Նշխուն մէզարն 7) ի վերէն։ Ըռքէյի զաչքն օր առաւ աղջիկ, գիցաւ զուր սիրտ պառուին զաղչիկ տրին ի նե 8). տղէն յէմալ յընկեաւ սիրու, յէմալ ըլըուլն ի վարթին, ինչ օր մեղրեմոմն ի դէմ զօլուն, յէմալ օր բզօր 9) կը խալէր ու կը մաչէր ըտրա սիրուն։

Օր մի մամ 10) խարցուց տղին. «Լեա՛օ 11), էտ ինչ ա խանդիպե քե, դու անօթի չես, ծառաւ չես, աշխարք քեօ պապու ձեռ կեաչկեն 12), յօրճ յէմլայ օր բզօր խալար ու մաչար, ինչ ա քեօ դարդ»։

—Տղէն ըսաց. Մա՛րէ. գընձի մը՛ գըլուցի, իմ դարդ յէմալ դարդ չէ, օր դու դըմաճ 13) էնես։—

---

*) Պատմեց Խլղաթ Բիշարեանց. գրի առան Մուշեղ Խալաթեանց եւ Աղէքսանդր Ափրիկեանց († 1892) Ալէքսանդրապօլ քաղաքում. 1880 Թուականին.

1) Բիթլիզու մօտ է՝ երկու օրուայ հեւաւորութեամբ. 2) Կարմրագոյն. 3) Կանանց մի տեսակ երկար արխալուղ. 4) Գլխու չիթ. շալի տեղ է գործածվում։ 5) Օղեր. որոնք կախում են քըթից. 6) Ոտների վերայ հլուներ են կապում թելի վերայ շարուած. 7) Գոգնոց շալից գործած. 8) Ներսը. մէջը. 9) Օր աւուր. 10) Մայրը. 11) Իմ որդի (քրդերէն). 12) Կը նայեն. 13) Դեղ.

Քեապապ օր նստաւ, մէկ լէ տեսան օր Մուրէն մտաւ նե-ղեկաւ օ քեապապ դուռն ա, ըսաւ. «վո՛յ քեապապ, բարով, վո՛յ դու եկեր խաղար բարով, դուն իմ գլխուն, վրը իմ յերէկուններ։ Նստան դօմի 1) դրուցցին։

Մուրէն ըսաց. «գինա՛ս, քեապապ, դեռ յորժ՞ եմ 2) խեանչես»:

Ըսաց քեապապ.—ես ինչ գինամ յորիս խեանչես, փառք Աս-տուծոյ, մեր տուն ա էկէրենք.—

—Դիւ գինա՛ս, քեապա՛պ, էտալ իմ լոյսք ու երէս փիլտկեր ա, էտալ մէկ տղէն ա, դանչք թալեր ա մըր Բուռկէ Աւէյի աղջկեան. մկեայ 3) քե պտի ճամբխեմ դեայ 4), էթաս տեսնես ինչ ջիւղաբ 5) կուտայ։

—Աղէկ կէղի, ըսաց քեապապ Ցարէն. Աստուծով զիմ ռո մանի դեայ, ես էտ բանն ի գլուխ կը բերեմ։

Ցէլաւ քեապապ Ցարէն գնաց զըռուսկէ Աւէյի տուն։ Էն օր մտաւ նե, Աւէն ըսաց.—Բարո՛վ, ռէս Ցարէ, խաղա՛ր բարի. տղա՛յ, ջիւլ տըր ռէս Ցարէն նստի—։ Ջիւլ դրին Ցարէն նստաւ։

—Աւէն ըսաց. «Տօ կնիկ, ինչ գթմը տուն»:

—Քեա՛, ինչ կիւզես, փա՛ռք Աստուծու, տուն յըմէն բարով յինա 6)։

—«Որ յըմալէ 7)», ըսաւ ռէս Աւէն, «յէլի՛, թավէն ա՛ն օճաղ, դղէկ գըմռով 8) չուրբաբ մի էրէ, տաքտեղ թալա՛ մէջ, աղէկ շինէ բե՛»։

Համսօն շուտ մի թըսաւ յէլաւ, զթէվիր բշտեց, գնաց զմառան 9) բացեց, խանեց զչոլ բղուղի միջից փղէկ դրմս, ծաքլի բիբարլի 10) ցայրքայքնի շինեց, առաւ էկեաւ՝ խմեցին։

—Ցարէն ըսաց. «ռէ՛ս Աւօ, գինա՛ս. յորին իմ էկեր»։

—Տօ բարո՛վ, խաղա՛ր բարի իս էկե, ես խաբրում թէ յորժ՞ իս էկէ:

—Ռէս Աւօ, գինա՛ս, ընձի ո՛ն ա ճամբխե, ըսաց Ցարէն. ընձի Մուսօ—Մուրէն ճամբխեց քեօ մօտ, ես լէ գինայի օր զէնի քեօ յաեղ մարդ չէ. չի գնայի քեօ մօտ»։

—Աւէն ըսաց.—Ինչ յաղօվ ա ճամբխե, ես չեմ գիտե:

—Նա, ըսաց, էկիրիմ օր Աստծու իզնօվ հուզինք զԴեղձուն Մուսօ Թոռուն։

—Աւէն ըսաց. ռէս Ցարէ, դէտ մէ բան դուն մը՛ զըրուցէ, դու գինաս, օր զիմ տուն, դօլվար ուզիս չըմ խընայէ, լէ բալէ 11) դէտ մէ բան մը զըրուցի. զըռ իմ աղջկեայ գեախ 12) չէ, զըռ ճըժիկ 13)

1) Քիչ ժամանակ։ 2) Ինչու համար։ 3) Հիմայ։ 4) Այն տեղ։ 5) Պատասխան։ 6) Լեցուն է։ 7) Թէ պղալէս է։ 8) Բուսը. (Բարմազ)։ 9) Պահարան։ 10) Քաղցր ու պղպեղայի։ 11) Լէ բալէ. միայն թէ։ 12) Ժամանակը չէ։ 13) Կրեխայ է։

տ, լըփ մի ջիւր ա 1)։

—Ուէս Աւծ, ըսաց Ցարէն, էտի գրիւց չէ, օր դու կը գրիւցես, փառք Աստծու, էնոր դօլվար քըղնէ պակաս չէ. ես օր գինայի էն քե լաեղի մարդ չէր, ես քեօ դիւռ չըմ չոքի։

—Քըղի շիտակն ըսիմ, ուէս Ցարէ, ընտրայ կեօրուստ իմ մօտ չէ։

Ցէլաւ ուէս Ցարէն փոռ ու փօշման 2) դնեաց Մուստօյի տաւն։

Էնդոնք կաչկին ճամբախ 3), օր խէր խաբար մի բերէ։ Ուէս Ցարէն օր մտաւ նե, սանամէրնի էկեաւ յառէջ, ըսաց. Վօյ քեապըմպ. քեօ օտներու տակ մըռիմ, ինչ խէր խարցում ի վրէտ 4)։ Ջիւլ տրին, քեապապ նստաւ։

Մամ ըսաց.—Ըռքէ, գնեա գքեօ պապ դիմ բե։

Տղէն չուտ մի վաղեց, գնաց գթաւ գլխէր, ըսաց. Ափօ 4), տըմ էրթանք, քեապապ էկե խեանչե գքե։

—Էկեաւ Մուրէն, տեսաւ քեապապ նստուկ էր, ըսաց. բարօվ քեապապ, բարօվ, ինչ խէր խարցում ի վրէտ, աղէկ խաբար մի տուր։

—Ըսաց Ցարէն. սանախէր, քե դրուսցն ըսիմ գիսի դայիմ կեապեց։

—«Ցօրի, ըսաց Մուրէն, յօրի, գիմ տղին չխաւնաւ, գձի 5) չը խաւնաւ, գիմ դօլվըրթի՞ն չը խաւնաւ, ղաղջիկ չեաուր 6)»։

—Սանախէր, ես գէնի չատ գրուցեցի, յէմա՛լ խօսքէր թեալի յառէջ, էնի գձի տսեց, թէ գիմ աղջկեայ գեախ ջէ, ո՛նչ քե, ո՛նչ տղին անուն տրեց, ո՛նչ ձէ դօլվըրթին։

«Լե յէմալայ 7). խեանչինք գտէրտէր, իտայ հախ լէ 8) գտէրտէրի խետ գնեա. յէմալ կեղի՝ աղջկեայ տէր ա, մէկ խնձորին խազար քեար կիւ թեալէն»։

Խեանչեցին գտէր Մլքէն, էկեաւ։ Ուէս Մուրէն յէլաւ գտէրտէրի գաչն առաւ, ըսաց՝ «տէրտէր, դինմա յօրին եմ խանչե գքե, ես լէ դագմա 9) կեապօվ չըմ խեխտուի, լէ բալէ յիտայ տղէն ա գիմ բէրան ծռի, յաչք թեալեր ա գեաայ Բուսկէ Աւէյի աղչկեան. գոր օր 10) կեասեմ, կեաայ՝ իմ կեայ էտ ա, չը կեայ էտ ա։ Քեապապ Ցարէին ճամբեխեր իմ ջիւղաբ մի չի տուած, սատծ ա՝ դըռ աղչկեայ գեախ չէ»։

—Տէ յէմալ է, ըսաց տէրտէրն, յելլ՛ ուէս կին, յէլլ՛ չարքաթ մի չինա խմէնք, էտ բանն իմ վիզն ա, եայ գէտ բան գլխուխ կը բերիմ, եայ գիտայ փիլոն կիւ դնեմ ցած։

Աղէկ չինած չարքաթն ի խմեցին, յէլան տէրտէրն ու ուէս Ցարէն։

———

1) Ափ մի ջուր։ 2) Փոշմանած։ 3) Ի՞նչ բարի պատասխան հարցնեմ քեզնից։ 4) Հայր։ 5) Ինձ։ 6) Չը տուեց։ 7) Թէ այդպէս է։ 8) Մի անգամ էլ։ 9) Ամեն մի կապով։ 10) Որտեղ որ։

գնացին զԹուակէ Աւէյի տուն: Տէրտէրն օր դունէն մտաւ, ըսաւ. «բարի օղջում գձզի»։

—Օխնեմյ ի տէր, ըսաց ուէս Աւէն, դու իմ գլխուն, վըր իմ յէրէսին. էկեաւ զտէրտէրի աչն առաւ։ Տեղ Թալեցին, տէրտէրն ու ուէս Ցարէն նստան։ Խաց բէրին արեցին։ Տէրտէրն ըսաց. «ուէ՛ս Աւէ, էս իմ տուն ա, գեաշիմի 1) գիւզեամ կէրԹամ, համա էսայ հախ չըռ գիտե ինչ յաղօվ իմ էկի»։

—«Տէրտէր», ըսաց ուէս Աւէն, դու խազար բարօվ իս էկի, քիւ տուն ա, ինչ օր գիւզես՝ զըռուցէ տեսնենք, ինչ է»։

. Տէրտէրն ըսաց. «ուէս Աւէ՛, զիմ կեամքն օր կեատարեցիր, զխացն էլ կիւտեմ, զջիւրն էլ կիւ խմեմ, մեր տունն ա»։

Ուէս Աւէն ըսաց.—քեօ միտքն ինչ ա, տէրտէր, ըսե տեսնեմ, յիմնամ քեօ խըռեն 2)։

Ըսաց տէրտէրն.—Աստծու կիւս կեօղմով էկեր եմ հիւզեմ 3) զ'Նեղձէն Մուսօ Թօռունն։

—«Տէրտէր», ըսաց չուտ մի ուէս Աւէն, «ես էտի ուէս Ցարէյին լէ ըսեր եմ, Թէ դըռ աղչիկ ճըժիւկեա, նշնելու գեախ չէ, ոնչ եա զէն մարդին անուն կիւ դնեմ, ոնչ զիւր տղին, ոնչ լէ զէնար դեօլվըթին, լէ բալէ զաղչիկ ճըժիւկեա, քեօ տուն ակեօլի 4). դըռ լըփ մի ջիւր ա։ «նեանչեմ դուէս կին գեայ, ըսաց տէրտէրն»։

Ուէս կին Համսօն էկաւ, զտէրտէրի զաչն առաւ։

Տէրտէրն ըսաց. «հասծ լեաօ՛, հասծ խեչս 5). լեաօ՛ Համսեծ, Դեզձէն ինչ գեախվան աղչիկեա»:

—Տէրտէր յօրճ, գիւ չըռ գինամ, ինչ գեախվան է, ես ու իրիցկին յիրարու խետ էրկիւ ապկենք 6)։

Տէրտէրն ըսաց. «յէմալ ա, մեր Ցագէյի յընգեբն ա։ էն տարի օր Բալուլ փաչէն 7) էկեաւ գնաց Սեօխ—Գեօմ 8), էն տարի մեր Ցագէն՝ իրեք տարի ընցաւ, էկեաւ Խամալ աղէն, խըռնց 9) էնի յեաե ան էր էկեաւ, խա, ԽուչրուԹ բէկն էր, եօԹ տարի ԽուչրուԹ. բէկ մնաց, խըռնց էնի յէաե ան էր, գեալօ 10) տեսիմ, գիւ այ միտս ի, խա, էնար յէաե էկեաւ ծուռ Բրայիմ—բէկ, չորս վըր խինգ տարուն էն նստաւ։ էս, լեաօ՛, էղաւ տըռնը չորս. վըր տըռնըխինգ տարի, զատ տրեր ա մըջ տըռնուխընգին, օր Թէ յէմալ է, լեաօ, աղէկ գեախն ա»։

«Տէ» ըսաց ուէս Ցարէն, «տէրտէր կեառայ զախչկեայ աղէկ

1) Միշտ. 2) Խօսքը. 3) Ուզիմ. 4) Քո տունը քանդուի. 5) Մօտս. 6) Ցրղի էինք. 7) Բալուլ փաշէն 1790 Թուականին նշանակուած էր այս երկիրը նահանգապետ. 8) Գիւղաքաղաք է Մշու մօտ. 9) Նորանից յետոյ. 10) Արդեօք.

գնախնա, դու ինչ կասես, ըսէ Աւէ, աղեկ ջիւղաբ մի չը՛ս ի տայ:

—Լէ ես լէ գինամ, ըսաւ ռէս Աւէն. որ օջաղմ ա, աղէկ մարդ ա, դուք դձի վատ չըք կհամենայ. ես լէ դեալս չունեմ, մեր աղէն լէ մըր ձեռաց է. աղէն թորկինք, գաղչիկ կհարքենք, էտ լէ չէգի:

—«Ջէ՛» ըսաց աէրաէրն, «յառաջ օրն որ խարկեաւոր ա. գէնք կեննեն. չե՛ լսաօ՛, գրիագեա, թէ գեարկ զօրէն կը բթլայ 1)»:

Ուէս Աւէյի ճար կտրաւ, էլ չը կհարցաւ գրեւցեր.—ըսաց, աէրաէր, օրինց մեր 2) գեմ գինգիս, կաղչիկ մի ջաքայ ըրեցի 3) ըրղե. դու չը պտի գոտ անէյեր յաւաայ աղջըկեայ գարօվ 4), համայ էտ յըմղայ կգաւ 5)»:

Ձէտ որ ըսաց, ռէս Ցարէն յէլաւ գաէս Աւէյի ձեռ պաչեց, ըսաւ. «յէմալ ա՛ քեօ աչքն էլ լուս էղի՛, մըր աչքն էլ լուս էղի՛»:

Ցէլան յըմէնքն էլ գաէրաէրի գաչն առան,—ըսեցին. «քաւրօմ տեանեն զթաքն ու պսակ»:

Աւէն ըսաց. «Համեօ՛յ, յէլէ՛ տես, ռաղի, գինի ինչ կիւ գթմի տանէ»:

—Քեմա՛յ, ըսաց, ինչ ուզես կեայ. ռաղի էլ կեայ, գինի էլ կեայ:

Ցէլաւ բերեց, խմեցին գաչքի լուս գրեւցեցին, Տէրաէրն ու ռէս Ցարէն ուրախ ինձօվ էկեան Մուսօյի տանէ:

Ցառաջուց գմշակ համբրխեցին Մուսօյի տան՝ յաչքըլլուս ուարաւ Միւժդէն օր բերեց, ագի մէրն յէլաւ հաց դրեց ուրախ ուրախ միւժ-գայ բէրօգի յառէջ. օր խաց կերաւ վրթաւ 6), Գիւլէն ջուխք մի բուլ էլ 7) ավեց էնոր տաւյ՝

«Փօր մի հաց կէրար,
Ջիւխք մի բուլ տաւր,
Տէ առջկեն ու գնեմ»:

Տէրաէրն ու ռէս Ցարէն որ էկեան տան Նաբան, խեանչէցին գաէս Մուրէն, ըսեցին. «ռէս Մուրէ՛, յուչա ի լուս էղի՛, խաւշէք գաէ կին գեայ, աչքներդ լուս, խըլըսանք մըկեայ ձըզնէ, ձըր որդի ըրէծանք 8) չէ կհատարեաս»:

Բերին խաց թալին, գըրաքեկմնիր ժողվին, ինձ ու կէրուխաւմ էրին չիամի 9) լուս: Իըլխուտան 10) յէլան առան գըրաքեկմներ գնացին զխնամու տանէ. Գնացին օր գանէն մտան նեւ, ռէս Աւէն կեանաւ ըսաւ.—վօյ դուք բարով, խազմր բարով, բարեկմներ. Նաբան յէրար բարօվեցին. ռէս Աւէն ըսաց. «ռէ՛ս Մուրէ, դըռ ըրղի խնամի չըմ առի, տեսիմ դու զիմ ջիւղաբ կհանես տայ»:

---

1) Հարկ զօրէնս լուծանէ. 2) Որ աւուրսն զէմ կընկնէ. 3) Բաշխել ընծայել. 4) Պատճառով. 5) Այլազէս էղաւ. 6) Վերջացաւ. պարծաւ. 7) Դուրպայ. 8) Մինչեւ. 9) Լուսաղէմին.

Ուէս Մուրէն ըսաց. տես քեզ լեզուն ինչ որ կըւ պատմայ, Նիգազմ, էտոր մօտէն մարդ չը վախենար, ինչ կեասես գձուկ բանացի գոռ կիւ տգկի 1)։

—«Տէօր յէմալ ա, քըզ՞ է կեառ ևմ թիֆիգ խայֆեր դրօշ 2) փու-րայ, քըղնե կեառիմ ճիանէլ 3) ձի մի, ըղմէ կեառիմ ազէկ խաբուր մի 4), Ցաս մի խըզգնի բոլոր 5), նոր բեայէ 6) կըծեմ, թէ գէտոնք կեառնաս տայ, յարի յառէջ, թէ չըս կեառնայ տայ, ոնց մէրիւ, ոնչ ամըր»։

—Ուէս Մուրէն ըսաց, էտոնք որ կեասես յըմէն խազըր ա, դըռ բամ էլ յաւել կիւտամ։

«Որ յէմալ ա», ըսաւ Ուէս Աւէն,—աղջիկ մի չարխ բերեցի քըզի»։

Տէրտէրն ըսաց. «Ուէս Աւէ, Ուէս Մուրէ, էս յըմէն կիւտանք իւ կեառինք, աղջիկ խնանչինք, տեսինք աղջիկն ինչ կեասայ»:

Խնանչեցին աղջիկ։ Տէրտէրն ըսաց. «Ինգձիկ, յեա՛օ, արի յուտայ. թուրքեվար կեասեն՝ թէ «քըզ ղարի եղլայ, գէլ սօղաներ», —որ խազար կնիկ ժողուի, զօրն տղա բէրօղին ա 7)»։ Ինգձուն, յեա՛օ, քեզի ավէր ենք Մուսօ Սօռ Ըռէքեին, թէ կեառիս՝ գլուխդ տըմըրցու 8), թէ չըս առի՝ լեղուդ ճոթցու 9), յեա՛օ»։

Աղջիկ գլուխ ցօնցեց՝ թէ կեառիմ: Ըստափ բերեցին պախիճ ու գինին։ Տէրտէրն ըսաց. «Թցէք գկթխեք 10)»։ Լցեցին գկթխեքներ. մէկ տվին Ուէս Աւէին, մէկ էլ տվին Ուէս Մուրէյին. կթխէմ էլ տէրտէրն առաւ իւր ձեռ, որ պտի օրհնայ. ըսաց. «Ուէ՛ս Մուրէ, Ուէ՛ս Աւէ, ձըր յաչք լիւս էղի՛, մըր աչքնէ լիւս էղի, բարեկմտիք ձեր յըմնու աչքնէ լիւս էղի՛, բարօվ գիրար վեյեն 11)»։

Ուէս Աւէն ու Ուէս Մուրէն էկեան, մէկմէկիւ բասեր զանեցին յիրար, պաքվռտան ու Ըսեցին. «Մեր բարեկմութեն Աստված ղա-դիմ*) էնայ, աչ մե լիւս էղի», ու յամէք էլ գէւր կթխեք խմեցին։

Ըստափ**) բէրեցին դըրեցին մաանիք աղջկեայ մառ, զգնտեր 12) էցկին յանգեաջ, գլխզմէն դրին քիթ, զզարըջան 13) դրին թեվեր. զըրըբուլին 14) թալին վըր գլխուն. բերեցին խարս՝ զտէրտէրի ձեռ պաքեցի. Տէրտէրն ըսաց. «Աստված չնախտուր էնայ». յըմէք մէկ դե-ղնէ 15) ուհմյեցին. Աստված բարի վերուն տայ, մէկ բարցի ծէրանանոս

---

1) Թոչի։ 2) Ղուռուշ—տաճկայ փող։ 3) Նժոյգ։ 4) Վերարկու. բաց կարմիր մահուդից կարած։ 5) Մէտաքսէ կտոր է. որ փասի բոլորը փաթաթում են։ 6) Կը համաձայնիմ։ 7) Երկունքի ցաւ կրող կնոջն է։ 8) Գլխով ցոյց տալ նշան համաձայնութեան։ 9) Լեզուով՝ «չէ» անել։ 10) Բաժակ։ 11) Վայելեն։ *) Յարատեւ։ **) Ցետոյ կամ զարանից յետոյ։ 12) Ականջի օղեր։ 13) Ապարանջան։ 14) Մետաքսեայ կանացի քող։ 15) Կողմից։

Խաչ կերան փրթան, յէլան բանեցին զգեօմնը 1), բերեցին զբազեայ խալս դրին ի պար. մէկայ ըստալս աղէքներ պար կետանե

«Խալս քեօ չիւչէն կիւ գլնգըլնգեայ,
«Ես քեօ սիրուն խիվանգ յընգեայ,
«Նշխուն տօտիկ վալտուտիկ 2),
«Ցէսենք վիր եար խօրօտիկ։
«Դիւռ. բաց վուարէ 3) մարդ եմ ես,
«Մէկ լանգեառի 4) վարդ եմ ես։
«Արեն առե կեամբնոց 5),
«Քեակեմ 6) զկեօճկներ։ գեամ ի ծոցտ։
«Արեն առե Խամուր բերթին 7),
«Քեօ սէր թալե մըջ իմ լերթին,
«Ես քե սիրենք թօ գձի քերթին»։
«Նշխուն մէզար խըրմրզի 8),
«Պատռիս չըմ առի դըըզի»։
«Դուն յէլեր ես կէթաս կանգեառ 9),
«Թուխ ծամ 10) յէտեւ խագեալ 11) խանգեալ,
«Ձիս քեօ սիրուն զանեն չանգեալ»։

Պարն օր փրթան, քեֆէր բրմաւ, յամէք իւր տուն գնացին. բեազայ խնամիքն էլ ուրախ, ուրախ, ուրախ էկեան ուրանց տուն.



## 2.

# ՀԱՐՍԱՆԻՔԻ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ.

Էկեաւ աշնան խարնիսի ժամանակ: Օր մի Մուտօ Մուրէյն կնիկն ըսաց. «քեայ մարթ, էկաւ օրիր լցուաւ, դիւ հէչ խարնիսի բըդըիր 12) չըս էներ, վաղ դիւգեայ ձուն զդիւռ կեառի. բըդըիր տէսինք. զխալս բէլինք թեալինք տուն, արխինք»։

—«Կնիկ, դիւ աղէկ կեասես, ըսկի ինչ ունես խօքեպախուած, բե տէսինք։

Կնիկն յէլաւ՝ քեանիմ ղուռուց ունէր պախուկ, բերեց տվեց մարդուն.

1) Քրտաց մի տեսակ ծանր պար։ 2) Արտուտիկ։ 3) Եւ ե՞կ։
4) Պղընձէ ափսէ։ 5) Բանջարանոց, որ կանեփ են հանում։ 6) Քակեմ։
7) Ամրոց՝ Ալաշկերտի եւ Մանազկերտի մէջ։ 8) Կարմիր։ 9) Բանջարքաղ։
10) Թուխ մազեր։ 11) Խօպօպիկ։ 12) Պատրաստութիւն։

մարդը թըդբրեց օր էրթայ Բաղէշ, խրիս էնայ խարանիսի խամար։
Խըլխուխուն զդախիւկ 1) խանեց դիւս, խաքեաւ գլաքեանէր 2). զդախիւկ քեաշեց յընդեաւ ճամբախ, իրեք օր ջօրօվ 3) խասաւ սալամաթ Բաղէշ, գնաց մէկէլ օրն ի չիւկէն, որ խարանիսի խամարբաներն ի առնե։ Խարսի խամար առաւ ջիւբայ 4), առաւ խալբու մանիւսայ անթարի 5), առաւ Բաղշու ղազան բալի ծիլլեայ 6) չաղկացու, առաւ ծաղլի չիթ 7) միզրցու, առաւ միւջառմ, չօմբար 8), սոլ 9), Մըխս 10)։

Տղին առաւ ծամ 11) անթարցու, առաւ չիւխայ 12), ջուխթ միջըզմայ 13), Ձինօ Ֆաս մի 14), թասթըմալ 15) գլխու կեապէլու։ Առաւ զխնամու բինիշ 16), Ֆառն ու խըզն, ու յըմէն խարանիսի թաղարուքն առաւ, բառցեց վըր դախիւկին, քեաշեց առաւ էկեաւ տուն։ Քեանիմ օր եա Մուշօ—Մուրէն խեանչեց զքեապայ Ցարէն, ըսաց՝ «Արի գնա խնամու տուն, տար զիւր թըդբիր տեսնի, գեանք զմե խախլուն 17) տաննենք»։

Ըոքէն դեայ կեայնիւկ էր, ըսաց. «ափօ, էս ինչ ա կը զրուցէք»։

—Ըսաց՝ լեա՛օ, մեր զդեօրծ կը զիւցենք, մըզի խարանիսի թըդբիր էնենք, զմե խախլու բէրենք, էտի մեր պարտքն ա, պտի փըրթինք մօտէն:

«Աղէկ կեասես, ափօ, ըսաց տղէն. լէ բալէ ես ըխտըմոր եմ, չիւմ զիմ յուխթ չէնեմ, էսայ բան չէղի։ Ես դըռ նշանուկ չէնք, խեանչեցի զՄառմառ գերեզման. օր էսայ աղջիկ զձի ճասիբ 18) էնես, գեամ զքե խամփուրեմ, նոր էրթամ զիմ խարնիս էնեմ. զիմ մուրազ կեատարաւ, պտի էրթամ զՄշու սուրբ Մառմառ գերեզման խամբուրեմ, նոր գեամ, զիմ խարանիս բռնեմ։

Պապն ըսաց. «լեաօ, դու օր էտ մըթքին ես, Աստուած զքեօ սրտի մուրազ կեատարայ, բարօվ էրթաս, լեաօ. բարօվ գեաս. Աստուած զքեօ ըխձանք կեատարայ»։

Տղէն զիւր թըդբիրն էրեց, յէլաւ ու գնաց Մուշ. խէծաւ վըր ջանօվ ուլախին 19) ու յընկեաւ ճամբախ, չօրս վըր խինգ օրուն.

---

1) Սանձանակ։ 2) Տախտակից պատրաստած կօշիկ։ 3) Հազիւ։ 4) Կանացի մի տեսակ երկարաձեւ հագուստ։ 5) Կանացի երկար Թեւերով հագուստ։ 6) Առաջի ներկով ներկուած կարմիր կտաւ։ 7) Իւղոտ փայլուն չիթ։ 8) Գլխու շոր շալից շինած եւ մետաքսեայ գոյնզգոյն Թելերով գործուած։ 9) Մաշիկ։ 10) Մաս։ կանանց կօշիկ։ 11) Դամասկոսի մետաքսէ շերտաւոր գոյնզգոյն կտոր։ 12) Մարդկանց երկար վերայի հագուստ։ 13) Քրտի կարմիր կօշիկ։ 14) Խաս ֆաս։ 15) Թաշկինակ։ 16) Խափուն որ է վերարկու։ 17) Հարսն։ 18) Արժանի։ 19) Աւանակ։

«Քեօ տէքըն էկեաւ, խօշ խամթուն։
«Ցէլի խաղմ, խօշ խամթուն,
«Կէարմրա էկեաւ, խօշ խամթուն.
«Ցէլի խաղմ, խօշ խամթուն,
«Չքնապայն էկեաւ, խօշ խամթուն։

Աղջիկ էլ չըր ժէլի կեայնի, մըր էտ խաղին էր, մէկ լէ տեսան օր միւժդայ բէրօղ մի էկեաւ, թէ՝ «Տըր յաչք լիս էզի, Ըռքէն էկեաւ». էնօնք էլ ըսին.

«Ցէլի խաղմ, խօշ խամթուն,
«Ը՛ռքէն էկեաւ, խօշ խամթուն»։

Ըռքէյի գեալն օր աղջիկ յիմցաւ, ուրխըցաւ, չուտ մի թռաւ պատեղէն գզեօմնդ բռնից, էնոնք էլ գկեօլնդ ջօջուցին ու գձէնօվ խաղ մի վէրուցին ըսին.

«Ա՛ծին մածածին, գը՛նկլիկ,
«Թացը Աստուածին 1), գը՛նկլիկ,
«Տարան թեօ տանէն, գը՛նկլիկ,
«Զատկին կու բէրեն, գը՛նկլիկ,
«Իեղին մոմերօվ, գը՛նկլիկ,
«Կնարմիր սօլերօվ, գը՛նկլիկ»։

Մէկէլգոնք էլ էն դէխէն ըսին.

«Խուկիկ 2) մըր ծօվուն,
«Անուն էր արօր,
«Գլխուն կեարմըրվոր 3),
«Ծրաիկ սեավոր 4),
«Լծեմք գրէչարէն, 5),
«Երթանք խըտ էտոր 6),
«Ցէնիս մեր դիտէր 7),
«Մենք լէ ըզէտոր 8)։

Մկեայ աղջիկ վէրուց զպար.

«Թեամու, թեամու թէլլենայ 9),
«Ալան դիվանն ու սէկինայ,
«Աղբէր ադի ու, գընեա,
«Զիւմ կէսիւրն ի տուն գեայ,
«Ջոջ խանըլին ի յիս տայ,
«Զարկեմ գլուխս ի լիւս տայ։

---

1) Խլաթի Տուրի Մարաթուկ սուրբ Աստուածածնայ վանքը, որ ուխտատեղի է։ 2) Թուչուն. Ճաւք։ 3) Կարմիրոտ։ 4) Սեւոտ։ 5) Գոմանու։ 6) Դորա նման։ 7) Նա մեր բնութիւնը գիտէր։ 8) Մենք էլ նորանը։ 9) Գեղեցիկ։

«Գինի, գինի լաճերուն 2).
«Աւնեմ բերանս գինի եա,
«Թափեմ գետին լեղի եա,
«Գինի, գինի լաճերուն.
«Լեաճեր բռնեմ մէ մշակ
«Էրթան քեաղեն մանիշակ,
«Բէրեն թեալեն տակ դեօշակ,
«Վերլէն նստենք խեաբիւնեաւ 2)
«Ծամ հիւստիկենք 3) գըրտընեաք 4)»։

Գարն օր պըծան, էկեան յըմէնք Ըռքէյին տեսան, բարօվեցին ու յամէք գեացին ուրենց տունը։

Ցիրկուն բարեկմներ ժօղվան էկեան ուէս Մուրէյի տուն, աչքի լիւս. ըսին. «ուէս Մուրէ, չիւ մկեայ 5) քեօ սիրտ կեօտօր էր, քեւ խանամք Աստծու, տղէն էկեաւ սաղ սալամաթ, յաչոի լիւս. յէմալ օր գեացէր էր, ուխտն օր էրաւ էկեաւ, գիւր ուխթ կեատարեց, Աստուած նասիբ էնայ, բարօվ խէրօվ զխարսնիսն էլ էնենք ուրխնանք»։

—Էն լէ ըսաց.—սաղ էղիք. յօր էղի ձըր տղէքնէրուն էղի էօսյ ուրախութին։ Բարեկմներ կէրան խմեցին ամէք ուրանց տուն գեացին։ Քեանիմ օր եա խարնիսի բըդբիր էրին։

Գիւլէն խարցուց մայրուն. «քեայ մարդ, ինչ պտի առնենք մսացու խարնիքին»։

—Տեօ կնիկ զաւակ, ինչ պտի առնենք, ըսաց մարդը, մըզի մալ չըկեայ մօրթենք։

«Քեայ մարդ, չէղի քեօ յաչք մեր կեօվերին ա. եա զԽազօն 6) չըմ թօրկի մօրթեն, զՂումաշ 7) չըմ թօրկի, զՋալօն 8) չըմ թօրկի. եա զիմ նըժերու բէրան չըմ ցամքցու»։

—Օր յըմալ ա, կնիկ, եա զջօջ կուտան 9) կը մօրթեմ. էօսյ գեղին յուրիշ բան չը խեմս 10), օր զկուտան չը մօրթենք։

—Քեայ, էտի աղէկ ա. էլի զկուտան մօրթա, էնի քընց յըմէն աղէկ ա, քեայ, բրինձ չը գը'թիլի, չէղի ըղուր 11) էնենք»։

—Ցօրէ չէղի ըղուր կէնենք, ժիմ էլ հէրխայ կիւտանք։

«Քեայ, էտ յըմէն էղաւ, ո՞ր պտի խեանչենք խարսնիս»։

—Կնիկ, մեր բարեկմներ յըմէն խեանչենք, մենք ենք մէ էօ տղէն. պտի խօրօտիկ 12) խարսնիս էնենք։ Խեանչա Ըռքէյին գեայ ճամբխենք զբարեկմներ, զգեղի զըրագրէք 13) քեօմէ 14)։

1) Մանուկներին։ 2) Տիկնանց պէս։ 3) Ծամ հիւսենք։ 4) Գրտընակի նման։ 5) Մինչեւ հիմայ։ 6) Գոմշի անունն է որ է՝ գեղեցիկ. սիրուն։ 7) Կովի անուն՝ որ է բարակ։ 8) Շէկ։ 9) Գոմէշ (կուտան)։ 10) Չի բաւականացնէ։ 11) Չաւար։ 12) Լաւ, գեղեցիկ։ 13) Գիտուններ, հասկացող դասը։ 14) Ժողովէ։

Ըռքէն օր էկեաւ, խէրն ըսաց. «լեա՛օ, վազ կերթաս զքեապառ Ցարէյի խեռ զբարեկմներ խեանչեսս։

—Տղէն ըսաց. ափօ, զո՞ր խեանչեմ։

—Խէրն ըսաց։

«Խեանչմ զՏէր Մլքէն գեայ.
Խեանչմ զուէս Ասլօն ու զիւր կնիկ Թավրէն,
Խեանչմ զգեազ խանօղ Մխթիկ,
Խեանչմ զսև չըլվար Միրզօն,
Խեանչմ զքաrաճչայ 1) Պապօն.
Խանչմ զփօղցին 2) Մնօն.
Խեանչմ զԲուղի վիզ Ցարօն.
Խեանչմ զպապանայ Մէարօն.
Խեանչմ զփօխցի Կակաչ 3).
Խեանչմ զյԱռջ Կիրակոս,
Խեանչմ զկեօլօտ 4) Գեասպար.
Խեանչմ զԱյվազի—Մուրէն.
Խեանչմ զՂալմուխի 5) Խըչօն.
Խեանչմ զքեապապ Ցագլօն.
Խեանչմ զիրից—փոխ Տօնէն.
Խեանչմ զտիրացու Բաքմազ,
Խեանչմ զխնամի Կիկէն։
Խեանչմ զխնամու կնիկ Նուբէն,—զիւր աղչիկ Զաբթէն»։
«Խեանչմ զմերոնց fիւլֆաբ՝ 6)
«ԶԸչիկն ու զՄըչիկ.
«զԳիւլբաշն ու զԽըչիկ.
«զԽնօսն ու զԳինոս.
«զՍարի Ծաղիկն ու զՑօլանէս.
«Զէն էրկիւ պզտի աղչիկ»։

Կը զընաք զԿօշտիանոյ 7) գեղի ջոջեր կիւ խեանչէք՝—
Խեանչէք զուէս Հախնէն,
Խեանչէք զտաքտեղի Պաջ 8),
Խեանչէք զՄաչուկ Սռնին.
Խեանչէք զՊընտըկի 9) Ցազէն,
Խեանչէք զԳըլըլանն 10).
Խեանչէք զԴալու—Ծախ 11).

1) Սանդուխ։ 2) Փողոցի՝ որ է աղբատեղի (չօփլիկ)։ 3) Դաշտային կարմրագոյն ծաղիկ։ 4) կարճահասակ։ 5) Ղալմուխ (ազգ)։ 6) Իւր եզբօր քերդաստանը։ 7) Տափաւանու մօտ հարեւան գիւղ է։ 8) Պոչ։ 9) Կաղին։ 10) Գունտ՝ կարճ ու հաստ։ 11) Խելառ ժախ (բոյս)։

# Յ.

## ՀԱՐՍԱՆԻՔ

Մէկէլ օր ազապներ ժողվան զԹաքավորի տուն. ջոջ դազնով ջիւր տվին Քօրվան 1) վերէն, տաքցուցին: ԶԹաքավորն ու ղազապբաշին տարան յախոռ, լօղկըցուցին, ու ըստակ էնոնց չորսընի խաքիւլին:

Մկռայ ազապներ էղան էկկիւ բքբուն 2) մէկը — գնացին ծառ չխելու ու Թախթ, կնայէլու. մէկէլ ազապներ խըռ Թաքաւորին գնացին տնիր պտօտելու: Ըստակ որ տուն օր կիրթան, չամիչ կուտան, փշատ, չիր կուտան, չրսեբմաչ, տըղաչի կուտան փինչկէս, ու զԹագաւորի յէրես կու պաքին, կեանեն. «Աստուած շնորհանոյ էնայ»:

Օր տները պտօտեցին փըԹան, էկկան գժամ խռամփուրին, ըստախուն 3) էկկան տուն:

Մէկիլ ազապներու բքբուն օր գնացին զԹաքաւորի ծառ չխելու. բէրեցին յէրկհան փէտ մի, ճիւքեր չխեցին ու ռանգ — ռանգ Թելերով վարԹեր սիքեցին 4) պռակ—պռակ 5) խնծօրով զարդրին յընկըզով, փըշատով, չամչով, Թզով, բաղոլըտու խուրմով, չըրով. նէրկեած խակըԹով 6) տղէկ սիքէցին. ազապըաշին տուտ չինած ծառն ուր ձեռ., տարան յըմնով 7) Թաքեավորին փէշկէշ:

Ըստակ ազապներ օր էկկան տուն, բէրէցին զԹաքեավորի Թախթ կնայեցին. կեալըակա մխեցին ի պատ, քամըըկեով, չըրով, փըշատով, չամիչով վըր քամըկին նշխեցին:

Թաքվորն օր էկկաւ ըստի նստէր վըր Թախթին, տեսաւ օր ազապբաշին նստեր էր վերէն՝ չըր յէլի:

Ազապներ ըսին՝ խեանչէք զՀաւպաց գնա Թախթ գընա:

Թեազապաշն էկեաւ, ըսաւ. «Էտ ինչ ա, ազապբաշի, յօրէ չըս յէլի Թախթի վըրանէն, քեօ յուզածն ինչ ա»:

—«Դու, ըսաց ազապբաշին, չըր կեանչայ զիմ Թախթի գին տայ. էտ յըմլայ Թախթ ջըրօվ Մուսթաֆա-Մուղդասի ուներ, ինչ Շէխօղլի-Շախբազն ուներ, ինչ Մըրըամէլիքեն ունէր, ինչ էլ Բաղտըրտու-Խալիֆն ունէր:

---

1) Թոնիր: 2) Խումբ: 3) Սեղան 4) Զուգել. կախկախեց. 5) Կլոր—կլոր. 6) Զուռով. 7) Բոլորէքեանք.

«Ցըպայ էտայ թախթ վ՛ըն ա լանղ, ըսաց քեապապ»։

—Մըր թաքեաւուրին ա լանղ ըսիցէն ազպներ։

«Տէ՛, ըսա՛ տեսնենք, էտայ թախթի գին», ըսաց քեապապ։

—Ազապբաշին ըսաց. էսօր գին խինգ խարէր ղըռօ՛ց ա, նախիր մի ճզ ա, իլխի մի 1) ձ՛ի ա, կեօտ մի ղըշի կեա՛թ ա. թէ կեանաս տայ՝ թաքվոր թեօ նստի վերէն, թէ չըս կեանայ տայ, գնեա՛ ձըզի յուրիշ թախթի աչկեա՛։

Քեապապ ըսաց. «զիմ թաքեաւորի խարջի խամար ինչ օր հ՛ուզէք՝ կիւտամ». քեապապ զէնոնց կեամքը կեատարեց։

Ըստախ ազպներ յէլան զթաքեաւորի յէրես պաքեցին, ըսին. «բարօվ վեյես զքեօ թախթ, ղադիմ էղի» ու զթաքւոր բէրին նստըցին վըր թախթին։

Մկ՛նայ էկեան թաքեավորի քիւրվորք, սանամըրտիք ու բարեկմներու կնկտիք, առան զխլղաթներ 2), բէրին օր մէկ—մէկ խաղցուն։

Ըստախ ազպներ քեօման թաքվորի չորս բոլոր, բէրէցին օր խնծոր պտի դնեն դաստըմըլի մէջ, տան թաքւորին, օր թաքւոր տայ քըթին, անուշ խոտ առէր մօտէն։

Խընծոր տուն չը գըթուաւ, ըսին՝ «չօրթան մի բէրէք»։

Չօրթան բէրին տրին մըջ դաստըմլին, տվին թաքւորի ձեռ, թաքվոր տարաւ տվեց քթին։

Ըստախ զմիւջասմ 3) կեապին թաքվորի բօգ, զըուջ գրին վըր ծնկեան. մկեայ զթաքւորի քիւր բէրեց զիւր փէշկշներ՝ զթաքվորի չապիկն, զթումբան, զզախեր 4) թեյերնի վերէն, զըուջ, զբօկի միւջասմ, օտնէն գլիւխ ինչ օր պէտկ էր, յըմէն բէրեր էր։

«Տէ՛, ըսաց բիւր. բունիկ 5) մի բերէք»։

Բունիկ բերին, քիւր տրեց զիւր խլղաթներ նե. բարեկմներն էլ ուրանց բերած խլղաթներ դրեցին մըջ բունկին, զգեաթէն, զխալվէն, զկիարմըցըրուկ խաւ, զձըվածեղ. մկեայ ըսին՝ «զզիւատն զա՛ն»։

Գիւատն զանեցին։ :

Ըստախ քիւր յէլաւ փէշփըշներով, բունիկ տրեց վըր գլխին ու խաղաց։

Ազպներ վէրուցին զպար.

«Արմ՛ էրթանք Գեօլայ—Սօր 6),
«Առնենք ջիւխք սօլ,

1) Ջիու նախիր։ 2) Ընծաներ։ 3) Մէտաքսեայ Թաշկինակ վիզը կապելու (քեապաեայի)։ 4) Երկարաբուկ պուրպայ որէ՝ պահեչ։ 5) Կողով. զամբիւղ։ 6) Մեծ գիւղ է Մշու դաշտում։

«Խեաքնենք դօր է դօր 1),
«Ցընկնենք չօլէ չօլ,
«Նըրգէ 2), քեօ դարդէն»։

***

«Արի էրթանք Խըարի գեղ 3),
«Առնենք Նուկիմ 4) եղ,
«Էնենք ձուածեղ,
«Տանենք խօվըվին,
«Խօվիւ խռօվաւ,
«Կըթոց 5) գլօրաւ,
«Օխչար մօլըրաւ,
«Նըրգէ, քեօ դարդէն».

***

«Արի էրթանք Ջաւուրմայ 6),
«Ցերեք օխչար ղաւուրմայ,
«Կըմայ 7) յէրես խօվ 8) յէրես,
«Աղծ 9), քեօ Աստած սիրես»։
«Կըմայ սարէն ջիւր գիւգեմ,
«Խըմօղ մարդուն տիւր գիւգեայ,
«Ցագօ աչկեր տիւս գիւգեայ,
«Նըրգէ, քեօ դարդէն»։

Գարն օր խըլըսան, քիւր բունիկ խըտ խլղաքՑեrուՑ բէրեց յերեք անգեամ պըտօտեց Թաքւորի գլխիւ վերէն ու ըստախ տրեց էնոր յառէջ։

Մկեայ ազպՑեr էղան էրկիւ քեօմ 10), օր զըէրած խըլղաքՑեr գեօվան։

Ծվմց մէկ քեօմ, «Թաքեաւորի մանկտիկ. չէն մնան Թաքեավորի քմ՛ւրն, մօրքմ՛ւրն, խօրքմ՛ւրն ու մէկէլ բարեկմՑերու կնկտիք. էկեր են Թաքեավորի յէրես 11)»։

«Ի՞նչ են բէրե, խարցուցին մէկէլ քեօմի ազպՑեr։
—Ըսին.

«Խաց խացէնի 12),
«Գտպտուն բաղըջէնի 13),

1) Հերթով։ 2) Աղջկայ անուն է (երգի մէջ)։ 3) Մշու մօտ է։ 4) Նուկի—ճօխայ—3 ֆունտ։ 5) Կաթ կթելու աման։ 6) Պարսպած գիւղ է Խնուսի մօտ։ 7) Լեառն Խնուսի մօտ։ 8) Հով։ 9) Հօրեղբայր։ 10) Խումբ։ 11) Թագաւորին ընծաներ են բերել։ 12) Հաց հացից։ 13) Վերան Նախշած բաղարջ։

«Օտօվ օխչոր 1),
«Տըկեօվ գինի»։

—Աստված չնախմուր՝ էնայ, ըսին մէկէլ քեօմի ազպճեր։

Էն մէկէլ քեօմ էլի ըսաց.

«Բազէն 2) էկեաւ վերի թաղէն,
«Զգեաթէն փախցուց մաղէն»։

Աստված չնախաւոր էնայ—։

Ըստախ բէրեցին, կթաքեաւորի յառէջ սեղան դրին՝ յերեք խաց, աման մի դոլմա ու աման մի կերակուր դրին վերէն։ Մէկեալ դրսէն գեալօղներուն կեասեն. «էկէք, զմիր թաքեաւորի խաց կուրէք»։

—Էնոնք էլ կեասեն. Աստված կորմ զթաքեաւորի խաց։

Ըստախ բերեցին զթաքեաւորի չօրեր պուր գեօվան ու խաւքիւն։

Ազպների մէկ քեօմ ըսաց. «զինա՞ց մեր թաքեաւոր ինչ ունի»։

«Ի՞նչ ունի, ճուաց մէկ դէլի քեօմ»։

—Ունի չամ ամբարի մի, օֆ 3) չալըք մի, նշխուն թումբան, տրապլիւզ 4) գեօտի մի, Ֆինչօ Ֆաս մի մինչափնի բալոր, օտնէն չունի գլուխ. դապ մի չոր ունի, կտոր հալբու ա, թել թարվըզու ա, կեարն Արզրումու ա.....

Շէն մնայ մեր թաքեաւորի խէրը, ըսեցին մէկէլ քեօմի ազպճեր։

Մէկայ ազպճեր քեօման օր զթաքեաւորի չօրերնի խաքէցին։

Ազապբաշին մէկ-մէկ չօրերնի կեառի ուր ձեռ, կը ցեօվայ յիրեք անգեամ կու ըլոռտայ զթաքւորի վըզօվն ու կու խաքիւցէ։

Էտ յըմկայ օր ազապբաշին չօրերնէ կը խաքիւցէր, մէկեայ ազպճեր էլի էղան էրկու քեօմ, օր գեօվան զթաքեաւոր։

Էն մէկ քեօմ կեասայ.

«Մեր թագւորն էր խաչ,
«Խաչ կոց 5) խաչ ու մաչ.
«Բինբաշ էր կեարմիր.
«Արեն էր կեանանչ»։

Էն մէկէլ քեօմ կեասայ.

«Թագւո՛ր, ինչ բէրէ՞նք քեզ նմա՞ն.
«էն պալասոնն 6) օր կու ծաղկի.
«Մաղկի՛ քեօ արեւ ի նմա՛ն»։

---

1) Ողջ ոչխար։ 2) Ազապներից մէկի անունն է։ 3) Քաթան օֆ գործած։ 4) Մետաքսէ կտոր է՝ Տրապիզոնից բերած։ 5) Ցորենի հասկերից շինած խաչաձեւ զարդ։ 6) Պալասան ծաղիկ։

Ցաւջի fbօմ կեսայ.

«Թաքւօր, ինչ բերենք քեզ նման,
«էն նունուֆարն, որ կիւ ծաղկի,
«Ծաղկի քեզ արևս ի նման»։

* * *

«Թաքւօր, ինչ բերենք քեզ նման,
«էն վարթն որ կիւ բացուի,
«Բացուի քեզ արևս ի նման»։

Որ թագաւորին յըմէն խաս խաքիցեն վըրթան, ըստաև էն մէկէլ քեօմի ազպՑbr էլ ըսին՝

Սուրբ Կարապետի զօրութենով
«Մասս ծաղկեցաւ,
«Մառ կայնեցաւ,
«Ծիւղ տուեց, ճիւղ կեայնեցաւ.
«Կեանանչ ու կեախմիր»։

Էն մէկելտոնք էլ կեասեն.

Սուրբ Սարգսայ զօրութենով
«Մասս ծաղկեցաւ,
«Մառ կեայնեցաւ,
«Ծիւղ տուեց, ճիւղ կեայնեցաւ
«Կեանանչ ու կեախմիր»։

Ըստաև ըսին թէ բերէք գլխարի չորերն ու գլխինէն համբխենք խնամքը տուն։

Բերեցին գլխարի չորերն ու գլխինէն տրին բունկի մէջ, գիւ-ղան զանեց. ազպՑbr տրին բունիկ մըր ուրանց գլխուն, զէեայլայ Ցարէյի խեա, խայլայով տան գնացին խնամու տունը.

Որ մօտացան խնամու դռանը, աղջկներ տնէն ելան յառէջ, առան բունիկ, դրին մըր ուրանց գլխուն ու սրօվ խաղցուցին զմիւր-զայի պարին 1)։

Մէկալ խառնին գիւղանչին օալմպազ 2) կիւճուայ ճայն ճա՛խաճ։

—Վէր ձեռնէն, ըսին ազպՑbr:

Քեալքեալու ձեռնէն, էրկիւ դուռուս օաքա՛ց։

Ազպներ ըսին.

«Խօսք՝ դօսք էղի 3),
«Իիւսմաճ՝ fbon էղի 4),
«Զէն՝ խուզուղ էղի 5)»։

---

1) Մի տեսակ ծանր պար, որ պարում են առանձին, առանձին։
2) Գուսան անողներին ընծայ, վարձատրութիւն փողով։ 3) Բարեկամը՝ բարեկամ լինի։ 4) Թշնամին՝ կոյր լինի։ 5) Զէն արագ գնացող լինի։

Ա՞յ սաքա՛ս. ըսաւ գիւղանչին։
«Վե՛ր ձեռնէն», խարցուցին ազպներ.
—Ուէս Գլէ ձեռնէն, յերկք ղուռուս սաքաս։
Ըսին ազպներ.

«Դօսթ՝ դօսթ էղի,
«Դիւշման՝ քեօռ. էղի,
«Ջին՝ իւզրիւզ էղի,
«Իւր Թուր՝ կարիւկ էղի»:

«Ա՞յ ճաւաշա՛ր1), ճաւաշա՛ր», ըսաւ գիւղանչին։

Որ յըմնօվ խաղցուցին փրթան, քեապաղն ըսաց. «խեանչէցէք զխնամու կնիկ գեայ»:

Համսոն որ էկեաւ, քեապաղն ըսաց. «արէ՛, սանամէր ջան, արի՛ վէրու զփեշկշներ, զխարսի չօրեր, զգեաթէն, զխնալվեն. զխօրվուն, իտա՛ լէ էս սալ անքարցուն, քեօ սուդ ճախին ա»։

—Շէն մնաք, չէն մնա՛ զիմ բարեկեամ, ձի խամար սաղ մնա՛, մէնք մէկ աւուր չենք, ըսաց Համսոն։

Ըսաախ ազպներ տղան զգիւղանչէն ու զզուռնաչին էկեան տուն։

Եր լիւսուն էն խեանչաց բարեկմներ յըմէն քեօման էկեան Մուտօյի տուն. խաց կերան, կեր ու խում էրին փրթան, յէլան տան զթաքւորն, գեացին խնամու տուն, որ էնդէխէն զխարս բե- րեն պռակ։

Գեացին որ խնամու տան մօտցան, տեսան որ զգիւղ փակեր են չըն բանայ, խարսի աղբէր կեայներայ դռան վերէն չըքանայ

Ըսին «յօ՞րի դուռ չըս բանար»։

Ըսեց էնի. չիւմի զիմ փեշկէս չառիմ, չըմ բանար։

Քեապաղն եկեաւ ըսաց.—մըռիմ քե սանախէր. ի՞նչ ա քեօ հիւզածն. վըր իմ էրկիւ աչից, ըսա՛ տեանեմ, քեօ հիւզածն ի՞նչ ա։

Ըսաց. չիւմի զյիթսուն դռօշ չառիմ, դուռ չըմ բանար։

Խանեց քեապաղն զյիթսուն դռօշ տուեց, խարսնէվոր գեացին ինե։

Ըսաախ քեապաղ Ցարէն ըսաց. խեանչէք զՏէր Մըքէն գեայ ձեռնարիւնք էնայ։

Տէրտէրն էկեաւ ըսաց. «բարի՛ օղջիւն ձի, Աստըծծ չնախաւար էնայ»:

Էնոնք էլ ըսին. օխնեա՛ ի տէր, դու փառաց մնաս։

Տէրտէրն ըսաց. «տէ՛, բերէք տեսնենք զնչնի մատնիք, զնչնի չօրեր»։

1) Ա՛յ օգնօղ. 2) Տուածղ կաթի փոխարէնն է։

Բերեցին զնչնի մատնիք, զմիւշասմ, զզարուջան, զօսկիք, զխըզմեճ, զխալխալ, զԹափալիկ 1), զզընտեր, բերեցին էտ զըմէն քեօմէցին տէրտէրի յառէջ։

Տէրտէր յէլաւ կեանաւ ու բացեց զմաշտոց. օխնեց զնշան, ըսաւ. «դէ տարէք զխարսի չօրեր խաքիւցէք»։

Տարան զչօրեր կը խաքիւցեն խարսին, մըկեայ էկերեն աղջկներ ու խարսներն զխարսի դլիւխ կը գեօվան. Իրիցկինն էլ էկերայ զգլիւխ կիւ կեապայ։ Աղջկներ խաղ կեասեն, օր զխարսի մէր ու խարը լացուցեն. Ըսին.

«Քեօ մէր յէլե սարեր կիւ պտտըպայ,
«Պաղ ջրիկ խըմայ սրտիկ խօվնայ,
«Իմ մօր յուրիչ աղջիկ էլ կեայ, ընձի ինչ պտի էնայ,
«Դու մի լա, խորոտիկ, դու մի լա.
«Իրիցկին դու զգլիւխ մը կեապեր»։

Խարս կիւլար, իրիցկին ըսաց. «մի լա, լեաօ՛, մի լա, լաւն է աղաք ա 2), էրԹալն էլ աղաք ա»։

Զխարս խաքիւցին փրԹան, մկեայ էկեաւ յուսօայ-կին 3), ըսաց. «զմըր ա քեապաղն, խանչեցէք զեայ զխարսի զեօտին կաղմ ու զյուսօայ-հախի տմյ»։ Խեանչէցին զքեապաղ, զեօտին կեապեց, ըսաց՝ Աստուած չնախանձր էնմյ. յիրեք դուռ ըռուսմ էլ տվեց գլիւխ կեապելու, ըսաց. «առէք էրԹանք զխարս». բերեցին տէրտէրի քօվ. օր զձեռընգրունք էնայ։

Տէրտէր բացեց զմաշտոց, ըսաց. «զխարս բէրէք մօտ»։

Խարսին զիւր բարեկմներ բռնած ա չըն Թօղկե, կեասեն՝ Թէ զոըղէն բերէք, տղէն ա էկե աղչկեայ տու։

Տէրտէրն ըսաց. «ոտ մի էրկիւ զէն բերէք»։

Բէրեցին երկիւ դեխէն մօտեցիւցին։ Տէրտէր ձեռն չտուր ի ձեռն, ըսաց. «Դեղձօ՛ն, լեա՛օ, զինմա. իտայ նշան օր կեայ՝ վիրնէ է մացե. Աստուած օր զԱԹամ ստեղծեց, բռնեց զէվի ձեռ, տարաւ տուեց զԱԹամայ ձեռ. օր զէվին ԱԹամ տեսաւ, ըսաւ. «Իտայ մարմին լէ իմ մարմնու պէս ա, ոսկոռ լէ իմ ոսկռու պէս ա», խաւնաւուրեն ու տռաւ, էն էրկիւսն էղան մէկ։ Մկայ, զինմա, Դեղօ՛, լեա՛օ, չիւր մկեայ քեօ մարմին ջօկ էր, Ըռքեօ մարմին լէ ջօկ էր, մկեայ քեօ մարմին էկեաւ կըպաւ Ըռքեօ մարմնին, էղաք էրկիւստ՝ մէկ, լեա՛օ. էտ յէմալ օր Աստուած սուքեր ա, մարդ չը կեանայ քեակայ,

1) Փայտից շինուած պսակաձեւ զարդ, որ դնում են կանայք գլխներին՝ զարդարուած ոսկէ, արծաԹէ շղԹաներով եւ ուլուններով եւ այդ շղԹաների ծայրից կախում են արծաԹէ փողեր կամ փուլեր։ 2) Սովորութիւն է: 3) Աղջկայ վարժուհին, կար եւ ձեւ սովորեցնողը:

դրին Թաքեաւորի բերան, չըմքի Թաքեավոր ժամ կիւ մնար. չէւմի զպստակէն յէլնել, էն յապօվ ըտ փէօկօներ կը բերեն յառէջ, ու մնացած փէօկօների ազպներ տարան ուրանց խամար։ Մկեայ տղէկներ օր քեօման էկեան, բռնէցին զպալ, խըտ ազպներուն ու Թեւ—խազ խաղալօվ, տռան գեացին խարսնիսի տիրոջ դուռ։ Օր մօտցան դռան, ճուացին ազպներ, ըսին. «զԹաքվորի խէր բերէնք, զԹավորի խէր բերէք»։

Զթաքվորի խէր բերին, քօռ են ալիւրն ի յէրեա, կեալխեր են օսկըներ ի վըրզէն, յէրկեն օսկօռ մի ի տեղ փեսօվի 1) զաներ են մէջը։ Թաքվորի խէրն էկեաւ պար խաղցաւ, օյինններ խանեց, փըսօվն ի կրակեց օր ծիծղան։

«Տօ́, ըսին, Թաքվորի մէր դեո̂ռ ա, զԹաքվորի մէր բերէք»։
Մկեայ գնացին զԹաքվորի մէր քեաշկռտելեօվ բերին։
Ազպներ ըսին.

«Թաքվորի մէ́ր, դէ́ւս արի,
«Տառւ դուան դէմ արի́,
«Գլխիւտ գըմրօղ ենք բերե,
«Ծամիտ փէտօղ 2) ենք բերե,
«Տախթ աւիլօղ ենք բերե,
«Քեւ Թունիր մըլօղ 3) ենք բերե»։

Թաքվորի մէրն յէլաւ դուս, զխաչրկաԹնի զանե գեօտին, անԹըռցն ի ձեռ, պար խաղալավ ու անԹըռցնի խաղցնելօվ գնաց խարսի յառէջ ըսաց.

«Ըրշտ 4) ունեմ,
«Ըրշտ ունեմ»։

Ախ 5) կիւտար խարսին։
Խարս օր էտի յիմցաւ, չարսըթի տկէն ըսաւ.

«Ըրշտըս խշտին դեմ կէնեմ,
«Խըրշտըս Խշտիտ դեմ կէնեմ 6)»։

Ըստախ Թաքվորի մէրն էրկիւ խաց ձեռ բռնած խաղալօվ տալաւ դըրեց վըր խարսի գլխուն, ըսաց. «քեօ սան ուղուրօվ էղի, ղըսմըթօվ, ղաղամօվ 7) էղիս»։

Ազպներ զԹաքվորի մէր քեաշէցին դըրին զԹաքվորի խօր չոլակ. էնէլ տռաւ զպստաւ խաղցաւ ու յըմնու խընդալ բերեց։

Մկեայ պառաւ վըր չոլակին խալիվորուն յէտեւեն բռքայ 8) կիւ չափէր։

Ըստախ բարեկմներ բերին։

1) Ատրճանակ։ 2) Պօկօղ։ 3) Զգող։ 4) Նիզակ։ 5) Ահ-երկիւղ։ 6) Իմաստը այն է՝ Թէ իրաւունքիդ դէմ ես էլ իմ իրաւունքս կը պահանջէմ։ 7) Ցաջողակ։ 8) Ձեռքով դրօղ չափել։

Ազպներ էլ ջրէրած փkcկcներ մէկ—մէկ կիւ խեանչեն, ըսին.

«Շէն կենայ ուէս Կիկէն, էկեր ա Թագաւորի յէրես։
Միւջասիմի փkcկkc:
«Շէն կենայ քեապապ Փուրթօն,
Բըլբուլի մի փkcկkc»։
«Շէն կենայ մերոնց Գիքէն,
Դագիրմի մի լաչակ»։
«Շէն կենայ Ռուռուսի Դըվէն,
Եօթ խուրց խոտ կեմրըն ի վրէն»։
«Շէն մընայ Թարանջայ Պապօն,
Աղէկ մաքի մի գառն ի յէտև»։
«Շէն մընայ խալսի խըօխպէր Մարտըկի Ցագէն, էկեր ա խալսի յէրես,
Աղէկ ցըլեկ 1) էրինջ մի փkcկkc»։
«Շէն կենայ ադչկեայ քեռի Խըչիկն.
Աղէկ փօրօվ աւարեկ մի 2) խարսին»։

Բարեկմներ գրեած փkcկcներ յըմէն տուլին ու առան գխարս. գեացին տուն։ Օր մտան դռնէն նև, գեացին զեղի զընդաՆ 3) բերին խարսի յառէջ, ըսին. «տեսենք չեօմարs եu 4), թը Ծամարs եu» 5)։

Խարս ջօջ տան աղչիկ էր՝ գԹև քչտեց, գանեց մըջ եղի զընդաՆիՆ, խանեց գիւնդ մի ու գրեց վըր խացին։ Տեառն օր խարս ջօմարs ա, ըսին. խազար չէղի ջօջ տան աղչիկ ա»։

Ըստախ էն կեայնօղ մարդիք գէն եղ կերան ու լեցին. Ասպած չնախուռը ևնայ։

Մկեայ զաւել ավեցին խարսի ձեռ, տեսնեն՝ թէ գինձյ տախթ աւելայ։

Խարս աւելն առաւ զտախթ աւիլեց ու զաւել դըրեց տան օրթէն, բստախուն նստաւ վերէն։

Ըսին խանչիցէք գքեապապ գեայ, խարս չը յէլի կեայնի, փkcfkc գիւզայ։

Քեապապ էկեաւ, խանեց զքսաննոց օսկի մի ավեց, ու էն մէկէլ բարեկմներ էկեան յըմէն էլ փkcկcներ ավին խարսին։

Մնաց կէսրեր։

Խեանչէցին զկեսրեր, ըսին. «արի, խարս չը յէլի կեայնի»։

Կէսրերն էկեաւ ըսաւ. «լեա՛օ, յօրի չըս յէլի կեայնի. յէլի՛ լեա՛օ»։

Խարս էլի չըր յէլի կեայնի։

1) Ցղացած։ 2) Էգ գոմշի ձագ։ 3) Առատս ծեռն։ 4) Ծլատ.

Կէմրեր ըսաց. քեօ փէշկէշ մըր իմ աչիչ. Օր մի գիւթան թեօքե քշայ *)։

Էտ օր ըսաց՝ խարս յէլաւ կեայնաւ ու գկէարեր ձեռ ղաքեց։ Ըստախ խարսին տարան փարեհ յէտև։

Խիստնչեցին խըլխ օր խաց ուտին։ Մկեայ բէրեցին գլոշ սուֆրէն փռեցին, խաց թալիցին, գեմակնիր չորեցին։

Մկիայ տէր Մըլքէնի էկեաւ նստաւ սուֆրի վերի գլուխ, աէնեբըն ու գրագրէք նստան ի մօտ տէրտէրի ու մէկիլտանք էլ նստան սուֆրի մէկէլ գլուխ։

Ըստախ տէրտէրն առաւ գիւր կըթխէն ձեռ, օխնեց գխաց, ըսաց. Աստած չնախատոր էնայ, բարի վեյում էղի, էսայ ուրախութեն յըմնու բարիկմներու տուն էղի, ոն որ գթվերայ էսայ ուրախութինին, Աստած էլ էնոնց ուրախութենին գըթիլի. ըստախ ըսաց. վեկէք յամէք գիւրենց կըթխէք։

Էնոնք էլ խմեցին ըսին. Աստած չնախատոր էնայ, ու ըստախ խաց կերան։ Հօնի 1) խաղար թիւրլու 2) նըմար 3) կեր, էղեր էր գօժան, ամէն ուրին կիւ բոռէր, կիւ խեանչէր, մէկ մէկիւ ձէն չըր լըսեր։

Օր կերան, խմեցին պրծան, գիւսան գանել տվին տուն գեօչայ քեօչար ղայլղեն 4). խըլխ յէլան ու ամէք ուրանց տուն գնացին։

Մկեայ ագայներ մայրին օր խաւ—թռունք էնեն, գգիւսան գանեցին, ագայներ քեօման էկեան տուն, մկեայ մէկ անդ տղէքներ գիւլաօ կիւ կըպէն, մէկէլ անդ գիւրար կիւ տրծին։

Բերեցին գթաքվորի դեք 5). թագվոր գանեց գգլուխ, ագայներն էլ յամէք յէլան գիւր խաւ էբերին 6), զանեցին գգլխներ, թալեցին մըջ գեօղմուն։

Թագվորն օր գուրք գանեց թալեց, տղէ մի առաւ գոնէք ու միմխաւ, էն մէկէլ ագայներ բարդան 7) էդան յէտէվէն, գիւզեն գիբարու ձեռնէ փախուցին, ու բռնեցին գիւարու գըմըզեցին 8)։

Մէկէլ մըջ գեօղմու խաւէր բերեցին ամէն ծանտրիկնոջ. խամբէցին ըսին. տանարկին, տես էղաւ քեանի խաւ, օր մէկը կիւրբետնեըայ, քեօ մօտէն կեառինք. գօ խամբրէցին, էղաւ տէսներօթ խաւ։

Ըստախ ագայներ թագվորն առան օր գեան տուն։

Թագվոր տեսաւ օր տուռ փակիւկ ա, ըսաց. տուռ յօրէ ին փակիծ։

---

*) Մէկ օր մէլ գուծանը բեզ համար. քո օգտին Թող վարէ։

1) Այստեղ։ 2) Տեսակ 3) Բարիք։ 4) Փոշէն կնայ՝ հրամանչաւի մի եղանակ։ 5) Արքաղաք։ 6) Բերին։ 7) Վազ տան իրար յետեւից։ 8) Խաղ անել. միմեանց գցել։

Ըսին. փեշկէշ գիւղին օր պտի խարսին տան։

Մկնայ Թագւոր ուզաւ, օր խինդ—վեց ձեռ սողնըկի ծըկէն խեռանին տիւս. էն լէ լեկանեց գփեշկէշ օսկի մի, ճանչըցաւ գնըշնածի ձեռ ու տրեց մըջ ձեռաց. ըստափ ատըռ բացին. առան զխարս գնացին ուր տեղ, Թագւորն էլ էկնալ նստաւ վըր Թախթին:

Ցիրկիւն խարսնէվոր յըմէն քեօման էկեան, պար բռնին ու խաղցան չիւմի զըրք յիրեք բերան խեանչեց։

Ըստափ սաեցին. բերէք զԹագւորն ու զխարս քեաշենք ի պար։

Ազապներ բերեցին զԹագւոր, աղջկներ բերին զխարս քեաշեցին ի պար։ Բերեցին վառեցին զմօմեր, տվեցին ազապներու ու աղջըկներու ձեռներ. էղաւ չամ չրաղ 1)։

Մկնայ գիւսանչին յընկեր պարի յառէջ, ծանոթ գեօվընդ կիզանայ, ըստափ ողէքնէր խըտ գիւանին վէրուցին զպար։

Մկնայ աղջկներ խաղ կեասեն.

«Քեօ բախտ վիլիս, տու քիւրէկ,
«Սրրտիկ նըշխուն արօրիկ,
«Քեօ կէօրգէ՛ ծամը կըտրիմ,
«Կըռ չը կիտըռ քեօ չօրիկ»։
«Այւն ու կերան, բար պէտէր,
«Սըրտով սիրով եար պիտէր,
Էս յըմէյ չոր խաքնօղին,
Խարզու ձեռօվ կեար պիտէր»։

Տղէքներ կասեն՝

«Դիւթան վարեմ գետ ափան 2),
«Վըզնոցի թէլեր Թափան,
«Վըզնոցն ի վիզ չընկչընկեայ,
«Սա քեօ սիրուն խնվանդ յընկեայ»։
«Ծառի տակը վար կենիմ,
«Աքռաւ գիւղիայ քեար 3) կէնեմ
«Սիրած սիրածին Թեօ տան,
«Քռուլթենաի 4) բարդ կենեմ»։

Տղէկը կասեն.

«Գըզալ աղջէկս խալն 5) ունիս,
«Ի՞նչ խօրօտիկ ծամ ունիս,
«Ճաո սամպայ 6) մի էնէք,
«Ջձի աղէկուց կեամ 7) ունիս»։

1) Կըլամալութիւն մոմերով. 2) Դետի ափը։ 3) Օգնել կը տեսնեմ։ 4) Գժութիւնս։ 5) Համ. ճաշակ։ 6) Ալմուկ։ 7) Ցանկութիւն։

Աղջկներ կերասեն.

«Մեր դեմնի բարձր սար ա,
«Սատներնի խըտ յիրար բարայ 1),
«Էտ ումուտով 2) մի մնար,
«Գնա քե եարիկ ճարա»։

Ցըմէքը մէկ տեղ կերասին.

«Խմըս խօրօտիկ խմըս պստիկ,
«Ջիւլ մի թալմ գեանք նստինք,
«Դէ գլորի վուարի 3) սիրուն,
«Խազար էրնէկ քեօ տիրուն»։

Գարն օր խաղցան փըրթան, թագվոր էկեաւ նստաւ ուր թախթին։

Բէրին խաց թալին, ազպներ քեօման նստան, օր խըտ թագեավորին. խաց ուտեն։

Մկեայ թագվորի խէրն խեանչեց տղացը ուրենց գեօղտուկ լեզուօվ. թէ՝ «Ցուռւկ 4), կօղած 5) ծվէք 6)»։

—Ըսին. ինչ ծվենք, ջեղուն ծըվենք 7), թէ ձիու ակռայ 8)։

—Խէրն ըսաց. «Ջեղուն ծըվէք, դեղուն ծըվէք 9), չարչրուկ չը ծըվէք 10)»։

Մկեայ տղէքնիր թագվորի խօր ըսածներ յըմէն բերին. օր էտի կերան փըրթան, ըստակ բերեցին գջօջ լանգեառօվ փլաւ, խըտ ազպներու խաւերին։

Խէրն ըսաց. «Էսայ գիզան այէկ դիպուն են, լեբալէ տրդար ռոխսայ 11)»։

Մկեայ բերեցին զրաղին ու զգինին, ազպներ խըտ թագեավորին կերան խմեցին։ Ըստակ յէլան մէկ մէկ խըտ թագեավորին չնօխկըլան 12), գյէրեւս պաքեցին ու ըսին. բարօվ վեյէք գիրար։

Էկեաւ սրէն խարսն—աղբօրըն։

Ըսեցին. «քեօմէք գլխուու օսկըռներ»։

Ազպներ զօսկռներ քեօմէցին, թէլօվ մէկ—մէկ զիրար կապէցին ու ըստակ կեախէցին խարսն-աղբօր վըզօվն, ըսեցին. տէ գնա, քեօ խըլղաթն էտ ա։

Խարս—աղբէրն օր գնաց, թագվորի մէրն էկեաւ ըսաւ՝ մեռիմ

---

1) Հաւասար։ 2) Ցոյսով։ 3) Գլորուն արի։ 4) Տղէք։ 5) Հաց։ 6) Բերէ՛ք։ 7) Ի՞նչ բերենք. ցորե՞ն հաց բերենք։ 8) Թէ կարի հաց։ 9) Եւ։ 10) Հայրն ասաց. ցորեն հաց բերէ՛ք, պանիր բերէ՛ք, շօռ պանիր չը բերէ՛ք։ 11) Այս փլաւը բաւական է. միայն իւղը քիչ է։ 12) Շնորհակալութիւն տուին։

